# ՅՈՒՇԻԿՔ

## ՀԱՅՐԵՆԵԱՑ ՀԱՅՈՑ

Ի Հ. ՂԵՒՈՆԴԷ Մ. ԱԼԻՇԱՆ

Վ. ՄԽԻԹԱՐԵԱՆ

---

ՀԱՏՈՐ Ա.

---



Ի Ս. ՂԱԶԱՐ ՎԵՆԵՏԿՈՅ

1869

# ՅՈՒՇԻԿՔ

# ՀԱՅՐԵՆԵԱՑ ՀԱՅՈՑ

Ի Հ. ՂԵՒՈՆԴԷ Մ. ԱԼԻՇԱՆ

Վ. ՄԽԻԹԱՐԵԱՆ

ՀԱՏՈՐ Ա.



Ի Ս. ՂԱԶԱՐ ՎԵՆԵՏԻԿՈՅ

1869



ԱՅՐԱՐԱՏԵԱՆ ԼԵՐԻՆՔ ԵՒ ԴԱՇՏ

# ՅՈՒՇԻԿՔ

# ՀԱՅՐԵՆԵԱՑ ՀԱՅՈՑ

---

## Ա

## ՆԱԽԱԲԱՆ

## ԱՌ ՀԱՅԿԱԿ

ՀԱՅՐԵՆԻ՛Ք... Այն քիչ անուններէն մէկն է այս՝ զոր գրեթէ ամօթ է բացատրել բարեկիրթ և զգօն անձի մը, թէ և չըլլայ շատագէտ կամ բանիբուն. գրեթէ մտքէն առաջ սիրան կու հանի, կ՚ըմբռնէ, կ՚իմանայ զայս. կ՚իմանայ զայն նաև երբ չիկրնար քիչ բառով կամ խօսքով բացատրել. մանաւանդ ուր քաղաքական և բարոյական ազատութիւնք՝ անոր իմաստն այլ այլայլած կամ զանազանուած ըլլան:

Արարածոց մէջ՝ որոնց հետ կ՚ապրի՝ մարդուս ամենէն յատուկ միանգամայն և ազնիւ ձիրքն է միտք կամ բանականութիւն, որ կ՚ուզէ ըմբռնել, ճանչնալ, դատել. իր ծանօթութեանց գլխաւոր առարկայն այլ է նախ ինքն և իր նմանիքը. — մարդկութիւնը: Եւ ինչպէս շուտով մը կ՚իմանայ որ ինքն իբրև մարդ ամեն մարդու հաւասարակից է, բայց ամենքն այլ իրմէ զատ զատ մարդիկ են, այս

պէս այլ շուտ մը կու ճանչնայ կ'ընտրէ կ'որոշէ անոնցմէ բազմութիւն մը մարդկան՝ որք նման են իրեն այն ամեն բաներով՝ որով որ ուրիշները չեն նմանիր։ Եւ ահա կու ճանչնայ զազգս. և անոնց մէջ իր համազգին. և երկրիս բնակութեան վըրայ ասոր բռնած տեղն այլ՝ Հայրենիք։ Բնական է մարդուս փնտռել և սիրել զՀայրենիս։

Ո՞ւր է հայրենիքն։ Կայ ազգ որ 'ի սկզբանէ պատմական ժամանակաց՝ երկրիս նոյն կողմը միացեր կեցեր է. այսինքն իր հարքն և նախահարքն որդւէ որդի միշտ նոյն երկրին վրայ ծներ սներ մեռեր են. անոնց ձեռագործ յիշատակաց մէջ և մարմնոց նշխարացը քով կու բնակին մինչև ցայսօր իրենց վերջին ծնունդքն այլ. — կան ալ՝ որ ուրիշ տեղ ծներ են, և հիմայ ուրիշ տեղ կ'ապրին, և գուցէ ուրիշ տեղ մ'այլ պիտի մեռնին. իրենց որրանքն և գերեզմանքն հեռաւոր լերանց և դաշտաց վրայ ձգուած են, որոց միջոց՝ ուրիշ ազգաց աւելի իրաւու մօտիկ որորոցք և գերեզմանք կան. նման մեր Եփրատ գետոյն՝ որ Սեւ ծովէն հազիւ ատաբճան մը հեռու Բարձր Հայոց գաղաթներէն կու բղխէ, դէպ յարևմուտք և հարաւ վազելով՝ գրեթէ նոյնչափ կու մօտենայ Միջերկրական ծովուն Հայոց ծոցը, և դարձեալ անկից այլ ճամբան փոխելով՝ դէպ յարևելս հարաւախառն՝ կ'երթայ կու թափի 'ի հեռաւոր ծոցն Պարսից 'ի ծով Հնդկաց։ Գուցէ այսպիսի ազգաց դժար ըլլայ հայրենիքը ճշդելը։

Սակայն ո՞վ կայ՝ որ որչափ այլ պանդուխտ տարագիր և թափառական ըլլայ՝ չունենայ իր սկզբանը հաստատուն կէտ մը։ Երկրիս ծայրէն 'ի ծայրը տեղափոխիկ օդաչու և ծովագնաց թռչունք անգամ, արագիլն և կռունկ և ծիծռունք և սագք, ունեցեր են տեղիկ մը բունիկ մը, թէ աշտարակի մը ծայր, թէ երդիքի մէկ խորշը, թէ

պատի մը ձեղքի մէջ, թէ բարձրածայր ծառոյ մը գագաթ, և թէ վազուկ կամ անշարժ ջրի մը եզերք. այն է իրենց հայրենիքն. ուր՝ յետ աշխարհաշրջիկ և օդաչափական տարագնացութեանց՝ կու դառնան նորածին ընտանեօք, և իրենց ախորժելի եղանակին մէջ երկրորդ անգամ ուրախ կեանք մը կ'անցընեն: Մարդս ալ՝ որ չիգիտեր իր կենաց վերջին կէտը, ուր դադրիլն և ուր ընկնալն, գիտէ գոնէ իր սկզբնաւորութիւնը: Կան որք դժբաղդաբար ծնողք ճանչցած չըլլան, բայց կու ճանչնան ծնելական տեղը, քաղաքը, գեղը. այն է իրենց հայրենիքը, և անոր հետ՝ նոյն օրէնքով վառուած տեղուանքն, եթէ ընդարձակ և եթէ ոչ: Կան, ո՜հ խեղճութիւն մարդկութեան, կան որ չեն իմացեր չեն զգացեր ի՛նչ է ծնողի մը ծոց, համբոյր և գգուանք, չեն մնած անոր կաթով՝ որոց արեամբն ծնած են, չեն ճաշակած մօր մը քաղցրութիւն. եղբայր մը իրենց ձեռքէն չէ բռնած, և քոյր մը զիրենք չէ գրկած. սակայն և այնպէսիք ճանչցած և զգացած են զսէր և զքաղցրութիւն հայրենեաց՝ որ համատարած և անյիշաչար ծնողքի պէս կ'ընդունի կու գգուէ ամեն համազգի և համալեզու: Տեսեր եմ իրեն ծառայման անծանօթ երիտասարդն ալ՝ որ իրեն փառք և հաճոյք կու սեպէր պաշտպանել և մեռնիլ իսկ պաշտպանելով այն երկիրը՝ ուր ծներ ուր մներ էր, և ուր իրեն լեզուակից և կրօնակից նմանեացն հետ կ'ապրէր:

Ո՛հ, ի՛նչպէս քաղցր եղած է անոր դարձը՝ յետ բազմամեայ զինուորութեան, հեռի և տարբեր քաղաքաց և բերդից մէջ, և երբեմն յետ օտար աշխարհներ ալ մտնելու բանակաց և պատերազմաց մէջ, յետ զանազան դիպուածներէ և վտանգներէ անցնելու. — կամ անոր՝ որ աւելի խաղաղական բաղդի հանդիպելով՝ կամ ուսմանց կամ վաճառաշահութեան կամ ծառայութեան պատ-

ծառաւ, կ՚երթայ հեռաւոր աշխարհներ և քաղաքներ, զանազան սովորութիւններ, բարքեր, լեզուներ կու տեսնէ և կու ստանայ, և թէ այսպիսի թէ նիւթական շահերու ծրարները կու բերէ այն քաղաքին կամ գեղին մէջ՝ ուր իր կենաց ամենէն առջի տարիները և դիպուածները անցած են: Ի՞նչ սքանչելի կ՚երևին այն քաղաքին այն գեղին հին և մեծ շէնքերը. իր զուարճութեան դաշտերը և բլրիկները. իր խաղուց և իր փոքրիկ հասակակցաց ընկերութեան տեղուանքը. այն սրբազան և հասարակաց ժողովարանները՝ ուր իր ծանօթից և ընկերաց հետ կ՚երթար՝ եկեղեցւոյ կամ քաղաքային տօն մը, հանդէս մը, պարտք մը կատարելու, և զուարճութեամբ ու մխիթարութեամբ դառնալու: Ի՞նչ ծանրագին շէնք է այն շէնքը, այն տունը՝ ուր սներ ու մեծցեր էր, և մանաւանդ այն՝ ուր որ ծներ էր:... Ո՛հ, աշխարհիս մէջ անկէ ցանկալի անկիւն կրնա՞յ ըլլալ. — Ես առաւել՝ եթէ ճանչցած այլ ըլլայ հոն իրեն ծնողք և հարազատներ. — և ևս առաւել՝ եթէ դեռ յոյս ունենայ զանոնք նորէն տեսնելու. — Հապա թէ և դեռ տունը չգտած՝ գտնէ այն հարազատները, այն ծնողքը՝ որ ելեր զինքը դիմաւորելու եկեր են, և իբրև զերար գրկերնուն վրայ առած՝ կու բերեն իրենց ընտանեկան վառարանին կամ սեղանին եզերքը:... Հոս միայն ընտանեկան և խնամական քաղցրութիւն մը չէ. հայրենեաց զգացումն և սէր այլ կայ հոս, որ գրեթէ ոչ պակաս զգալի և ախորժ կ՚ըլլայ՝ նաև եթէ կենդանի յիշատակաց տեղ՝ միայն անկենդան յիշատակարաններ գտնէր. մանաւանդ եթէ անոնց մէջ ըլլայ և այն յիշատակարանը՝ որ միջոց մ՚է կենաց և մահու և անմահութեան. — Գերեզման մը: — Անշուշտ, եթէ կորսուած կամ պահուած ըլլար, բայց և կարելի ըլլար սորկով գտնելու և

գնելու, բարեկիրթ սիրտն 'ի պանդխտութենէ դարձած՝ ստացուածքին կէսն այլ կու տար ստանալու համար սիրելւոյն և ընտանւոյն գերեզմանը։... Կրնա՞ր արդեօք այնպէս անկիրք անկրօնք կարծրակուռ սիրտ մը գտուիլ՝ որ ըսէ. Ի՞նչ կ'ընես, ով երիտասարդ, մինչդեռ բաղդ աշխարհիս իր զարմանալեաց և ակնկալեաց դուռը կու բանայ քեզի, դու այդ բաղդին օժանդակ ստակդ ա՞յդպէս զուր կու վատնես, երկու կանգուն կոշտ հող մը, և քանի մը չոր ու պժգալի ոսկորներ գնելու, որոց վրայ չի կրնար մէկն նայիլ առանց զզուանաց։... Ամօթենք, Հայկակ, որ այդպիսի ձայն մը քու և նմանեացդ ականջին երբեք չհասնի։ — Եղած անցած մարդկութեան ամենէն խըղճալի թողած յիշատակն և նշխարն՝ արդարև իր մարմնոյն մնացորդն է. սակայն և քան զայն անգին, ցանկալի և սրբազան բան չկայ երկրիս վրայ՝ այն մարմնոյն հաղորդակից կամ արենակից ներկայ մարդու մը համար. և որչափ սիրելի են այն նշխարքն՝ այնքան և զանոնք պահող տեղն, հողավայրն, գերեզմանն. ըլլայ հոյակապ մահարձանօք շիրիմ մը, ըլլայ պարզ քար մը, կամ թէ բնաւ անքար տափակ հողն, քանի մը ծաղկով, կամ լոկ կանաչ խոտով պատած, և երկճիւղիկ փայտով՝ սև խաչով մը նշանուած։ — Ծննդեան տեղն կամ տունն, և նախնեաց գերեզմանն՝ մարդուս երկու հաստիկ կէտերն են, որոց մէկուն վրայ պէտք է կեցընէ կարկինը՝ այն սիրտն՝ որ կ'ուզէ ծրագրել սահման մը իրեն հայրենեացը, եթէ չիգիտեր ուրիշ սահման։

Կեանքերնիս արդարև կարճ ընթացք մ'է երկու իջեւանատանց միջոց. առջինն՝ օրոց, երկրորդն հողոց. կամ թէ կրնայ ըսուիլ՝ Ծնարան և Քնարան։ Սակայն մարդ միթէ միայն ծնանելու և մեռնելու համար եկած է յաշխարհ։ — Ոչ. մարդս

խոհուն և գործուն էակ է. Թէ և քիչ բան կրնայ ընել և քիչ միջոցի մէջ, մէկ իջևան մը ընթանալու չափ. — բայց այդ միջոցն, այդ ընթացքըն, և մանաւանդ այդ գործքն է զհայրենիս բովանդակող: Եթէ գործն չըլլար՝ ոչ ծննդեան և ոչ մահու յիշատակք այնպէս սիրելի և սրտալի կ'ըլլային մարդկան. կամ ըրած գործքերնուն կամ յուսացուած ընելի գործոցն համար է՝ որ այնպէս սիրելի և ցանկալի են մեզ յիշատակք և գերեզմանք հանգուցելոց: Ուրեմն թէ և հայրենեաց կէտք և կենդրոնք կ'երևին այդ ծնարանքն և քնարանքն, սակայն անոնցմով կ'ենթադրուի գործոց յիշատակն, որ է բարոյական կեանք և մարդու և ազգի, որով և հայրենեաց իսկ: Ուրեմն աւելի կերպով մը հոն են հայրենիք՝ ուր որ մեր արենակիցք և ընդունակիցք գործեր են. եթէ ծննդեան և մահուան՝ գիպուածական և կերպով մ'ակամայ յիշատակարանքն իսկ այնքան սիրելի կ'ըլլան, որքան աւելի քննելի և փնտռելի են կենաց յիշատակարանքն՝ ուր ալ որ գործուած ըլլան, եթէ 'ի սեփական և եթէ յօտար երկրի: Վասն զի կրնայ ըլլալ որ մէկն քաղքի մը մէջ ծնած և մէկէն փոխադրուած ըլլայ ուրիշ տեղ մը, հոն ապրած և գործած. յետոյ ուրիշ քաղաք մ'երթալով՝ հոն ալ մեռած. այսպէս ալ կրնան գտուիլ ժողովուրդք՝ որ երկրէ մը ծագեր են, հիմայ ուրիշ երկրի մէջ կը բնակին. բայց իրենց և իրենց նախահարց միջին սերունդն ալ շատ երկայն ատեն՝ ուրիշ երկիր մը բնակած ըլլան. այս միջին երկիրս կրնայ աւելի իրաւամբք մ'իրենց հայրենիք ըսուիլ, կամ ինչպէս սովորութիւն է ասանկ առթից մէջ անուանել՝ Երկրորդ հայրենիք: Ստոյգ է որ ուր երկրորդ և երրորդ հայրենիք ըլլան՝ կրնայ սիրտն տարակուսիլ և տարուբերիլ. սակայն և այն ատեն հոն կը հանգչի՝ ուր որ աւելի գործոց յիշատակ գտնէ:

Ո՛րչափ փափագելի, ո՛րչափ բարեբաստիկ է անոնց վիճակն՝ որ մէկ աչքով կու տեսնեն իրենց իշխանին երկու հանգոյցներն ալ, ծնարանը և քընարանը, հանդերձ միջոցովն՝ որ կրնար ըսուիլ Գործարան։ Ո՛րչափ բարեբաղդ է, կ՚ըսեմ, այն ազգն՝ որ ՚ի սկզբանէ ՚ի վեր իր համալեզու նախնեաց երկրին մէջն է կեցեր. անկէց դուրս տեղ չփոխեր իր նահապետաց ծնարանը, և հոն կու տեսնէ անոնց քնարանը. ինչպէս առանձին մարդ մը՝ որ բնակի այն տունը՝ ուր իր հարքն և պապքն ալ բնակեր են, և պատրաստէ իր մարմնոյն վերջին հանգստարանը հոն՝ ուր որ այն հայրերն և պապերն ալ կու հանգչին դարերով. ուր իրենց վրայ հովանացեալ ծառոյն փոքրիկ տերևոց նման՝ որդիք զորդիս փոխանակելով՝ քանի մը կամ շատ ցեղեր իրարու ետևէ ընկեր մնացեր են։ Կրնանք նախանձելի սեպել երկրիս վրայ այդպիսի ազգի մը բաղդը, որ կու յայտնէ թէ կամ օտար բռնութիւններէ ազատ է մնացեր, կամ մանաւանդ՝ կրցեր է զինքը պաշտպանել անոնցմէ. իրեն նախնեաց աւանդը պահեր է անոնց նշխարացը քով։ Հայրենեաց զգացումն պէտք է որ շատ զօրաւոր ըլլայ այն ազգին վրայ, ինչու որ աչքովն ալ կու տեսնէ անոնց յիշատակարանները, կու պտըտի անոնց չափած ասպարիզին մէջ, կու գործէ հոն՝ ուր անոնք գործեցին.— իր կենդրոնն և սահմանքն յայտնի են. հայրենեաց ամեն տեսակ իմաստքն ալ ամփոփուած են մէկ գծով բոլորած սահմանի մէջ. գիծ մը՝ որ եռանկեան մը պէս կու միացընէ իր և իր նախնեաց ծնարանին, քնարանին և գործարանին կէտերը։ Կրնայ այնպիսին չգիտնալ իր ազգաբանութիւնը, իր հարց կարգաւ յաջորդութիւնը. բայց գիտէ որ հազար տարիով ալ առաջ իր նախահայրն՝ այն երկրին մէջ բնակեր է. հոն է եղեր իր բոլոր ազգատոհմին նահապետն կամ ազ-

պատկեան այլ. և ինչպէս հիմայ իր համազգի ըն-
կերներն են՝ որ այդ գետինը կու մշակեն, այսպէս
երկայն դարերով այլ աւաղ՝ նոյն արիւն և նոյն
լեզուն ունող ընկերակիցքն՝ նոյն հողէն նոյնպէս
իրենց սնունդ կու հանեն և 'ի նոյն հող կու դառ-
նան եղեր. — գիտէ որ այն մեծամեծ ծառերն՝ ո-
րոնց տակ քանի մը հասակ զիրար յաջորդելով
նստեր են, իրեն նախահարց տնկածներն են, ո-
րոնք նոյնպէս իրենց նախնեաց հինաւուրց ձեռա-
տընկաց տակ խաղցեր և հանգչեր են. — այն ապա-
ռաժ լեռներն՝ իրենց կողերէն ընծայեր են իր
քաղքին և աշխարհին ամենէն հին շէնքերուն նիւ-
թըն այլ, որոց ճարտարապետական ձևն և արձա-
նագրութիւնք՝ դեռ իր հիմակուան ոճն և լեզուն
կու յիշեցընեն. — այն հին կամուրջը՝ վայրենի ձո-
րակի մը վրայ ձգուած՝ իր գեղին քանի մը երկա-
նիկ նահապետաց ձգածն է. — այն մեծամեծ և հա-
սարակաց կրօնից շէնքերն՝ իր նախնեաց բարե-
պաշտութեան և մեծագործութեան յիշատակ-
ներն են. — այն բարձր և քանդակազարդ կամար-
քըն և կոթողքն՝ իրեն նախնեաց քաջութեան ցու-
ցակքն են և յորդորքն անոնց նմանելու. — այն
դաշտերն՝ ուր երբեմն պատերազմաց դրօշք բար-
ձրացան և երբեմն ընկան իրենց դրօշակրաց և ա-
նոնց ետևէն գացողաց հետ, ուր երբեմն յաղթու-
թեան թմբուկքն բոմբեցին, երբեմն յաղթուե-
լու և ետք քաշուելու սրտաւոր փողն հնչեց,
այն ամենն այլ իր նախնեաց թէ արեամբք թէ
քրտամբք ոռոգուեր են: Եթէ խնդայ հոն և եթէ
լայ՝ անցեալ յիշատակաց համեմատ, խնդումն
այլ՝ լացն այլ՝ ոչ միայն սիրով են, այլ և փառօք.
վասն զի քաջութեամբ կռուելն և պաշտպանելն
աւելի արժանաւոր է՝ քան յաղթող պտուելն.
միշտ փառք ու պարծանք է իր երկիրն և իր ազ-
գը սեփական լեզուաւ և օրինօք պահելն. — ու-

նենալ յատուկ և բնիկ լեզու մը, սահման մը, քաղաքավարութիւն մը, ծէս մը, և յիշատակարաններ, որոնց համար բարեկամ բարեկամի հետ խօսելով կարենան ըսել Մերը. այս կատարեալ հայրենիք է, երկրիս որ կողմն ալ որ ըլլայ, ինչ դիրք ալ որ ունենայ:

## Բ

Այս վերջի անդրադարձ մտածութիւնս ալ ըրի, Հայկակ, յիշեցընելու համար մեծ խնդիր մը կամ խմաստ մը, որ կու զանազանէ զհայրենիս, որով և զհայրենասէրս, ըստ բնական դրից երկրին: Իրաւ է որ ով որ վերը յիշած յատկութեանց համար կրնայ Իմ ըսել երկրին, անոր համար միշտ գեղեցիկ է հայրենիքն. սակայն երբ մէկն, մանաւանդ երրորդ անձ մը, երկու երկիր իրարու հետ բաղդատէ իբրև բնաշխին և բնաքննին, 'ի հարկէ կերպ կերպ զանազանութիւններ կու գտնէ անոնց մէջ, և ըստ այնմ անոնց բնակչաց բնաւորութիւնն ալ յարմարած. իրենց բնական կազմուածքէն սկսեալ մինչև 'ի բարոյական բերմունս. և ըստ կերպարանաց ու հանգամանաց երկրին՝ անոր վրայ ունեցած սէրն կամ համարումն ալ կը կերպաւորուին: Յայտնի է ամենուն թէ ինչ ազդեցութիւն ունին Կլիմայք՝ տեղացեաց վրայ. ինչպէս՝ սաստիկ տաք կամ ցուրտ երկրի բնակիչք՝ տկար և ջըլատեալ կ'ըլլան. ինչպէս՝ բարեխառն կլիմայից բնակիչք՝ աւելի բարեկեցիկք, բարեբնոյթք և կիրթք. չափաւոր ցրտութեան տակ եղողք՝ աւելի ժիր կ'ըլլան. չափաւոր տաքութեան տակ եղողքն ալ՝ աւելի զուարթ և ըղբօսասէր, ինչպէս Գաղղիացին. միգամած երկրի բնակիչք՝ իրենց վարուց վրայ ալ միգային քօղ

մը կ'երեւցընեն, մելամաղձ և ծանրաբարոյ կ'ըլ-լան, ինչպէս Անգղիացին և Հոլանտացին։ Այսպէս և դուցէ այլ ուրիշ, երկրին կազմուածքն և դիրքն ունին ազդեցութիւն 'ի վերայ բնակչացն։ Թաթարաստանի ծովանման չոր անապատաց բնակիչքն, և Եւրոպիոյ կամ Ամերիկոյ հարաւային կողմանց բարեբոյս դաշտաց բնակիչքն՝ հարկ է որ տարբեր բնաւորութիւն ունենան. մէկն միշտ տեղերը փոխելով հոն կենայ, մէկայլն անդադար լերկ ու մերկ երկրին վրայ սահելով անցնի կամ մանգայ իր հօտերով և երամակներով անոնց ճարակ գտնելու համար. մէկն անհաստատուն և չշինաւէր, մէկայլն հաստատուն և շինաւէր։ — Զուիցերացւոց լեռնաշատ և լճաշատ և նկարակերպ բարձանց և հովտաց բնակիչն՝ 'ի հարկէ պէտք է զմայլի իր հայրենեաց բնական գեղեցկութեան վրայ, որ անենէն օտար եղանակի մէջ այլ իր շնորհքն ունի, որչափ եւս աւելի լաւ եղանակին մէջ. զարմանք չէ ուրեմն որ երբ օտարութեան մէջ իր ազգային երգը լսէ և հայրենեաց պատկերը իր վառվռուն գոյներովը նկարուի մտացն առջև, բոլոր սրտով թունդ ելնէ և գրեթէ հիւանդանայ և հալի հայրենեացը կարօտով։ Ցունաց և Իտալացւոց այնչափ գեղազանցութեան 'ի գեղարուեստս՝ առաջին վարպետ եղած է իրենց հայրենի երկրին բնութիւնն. բարեխառն կլիմայն, դալար բուսաբերութիւնն, զանազանութիւն կամ ելևէջք դրից, և ծովն. — ծովն, այն ծեր և ալեզարդ մեծ վարժապետն՝ որ իր ահեղ ձայներէն աւելի՝ իր կերպ ու կերպ ծփանքն ցամաքին կերպ ու կերպ ափանց և ծոցից վրայ, շատ զարմանալի բաներ ազդած է և կ'ազդէ Ցունի մը, Վենետիկեցւոյ մը, Անգղիացւոյ մը, Բրետոնի մը, և որ և է ազգի՝ որոյ երկիրն բաղդաւոր եղեր է գտնէ իր եզերաց չափաւոր մաս մը մահկաձև կամ աղեղնաձև տարա-

ծելու 'ի խաղ ու 'ի կախ կապուտակ կոհակներուն : Ժողովուրդ մը որ ունի հրուանդաններ՝ դիտելու այն անապառ ալեաց զբօսանքը , և անոնց երեսէն հովով կամ հրով հրուած եկող և գացող քալուկ տուները՝ (նաւերը) աշխարհքէ աշխարհք հեռաւոր կողմերու լուրեր և բերքեր տարուբերելով, այնպիսի ժողովուրդ՝ չէկրնար ապուշ մէկ մ'ըլլալ: Բայց եթէ ծովն բոլորովին ծրագրելով զԱնգղիա՝ կու տայ անոր բնակչաց ծովապետութեան պատիւն և գոռոզութիւն, կամ Յունաստանի կղզեաց մէջ կոտրտուելով՝ կու տայ անոր բնակչաց աշխոյժ և ժրութիւն, միանգամայն և պարծիլ մը իրենց ափանց վրայ. գեղեցիկ և հովանաւոր դաշտերն այլ, բարձր բարձր և զով լեռներն այլ՝ կու տան իրենց բնակչաց ոչ պակաս զուարճութիւն և պարծանք: Ինչուան ժայռոտ տեղերու բնակիչքն՝ այն բնութեան ամենէն անարուեստ կերպարանաց վրայ այլ կու գտնեն զարմանալի ձևեր և տեսքեր, որով կու զմայլին և կու պարծին իրենց հայրենեաց վրայ:... Բայց գուցէ չէն այլ կրնար ծածկել՝ այն չոր ու խոժոռ արարածոց առթած կերպ մը չոր տպաւորութիւնն այլ՝ որ իրենց բարուց և շարժմանց վրայ կ'ազդուի:

Եթէ այսպիսի դիրք երկրի՝ զոր բնութիւնն միայն իր անզգայ ձեռքերով ձևացուցեր է, այսքան ազդեցութիւն ունին ազգաց բարուց և ըղգացման վրայ, ո՞րքան ևս առաւել զօրաւոր և զանազան կ'ըլլան հայրենեաց ազդեցութիւնք 'ի ժողովուրդս՝ որոց երկրին վրայ բնականին հետ ձեռագործ և պատմական յիշատակարանք այլ երևին ցեղուցեղ: Երբոր մէկն օրերով քալելով համազգեաց երկրի մը սահմանաց մէջ՝ տեսնէ լերանց և բլրոց վրայ հնացեալ և երբեմն կիսաւեր բերդեր և դղեակներ, հաստատամուր պարսպով քաղաքներ, հին և մեծ պալատներ, բանուկ ճամ-

թաներ և կամուրջներ, մեծամեծ հասարակաց շէնքեր, փայլուն կամ մամռապատ կամարներ, իրենց տակ թաղուածներուն պէս հնացեալ գերեզմաններ, հանդերձ նոր և պայծառ շէնքերով. և ժամանակին զարգացման համեմատ օգտակար և շահաւէտ գործարաններ, կրթարաններ, ժողովարաններ, հանդիսի և զբօսանաց տեղեր, քաղաքական և զինուորական հրապարակներ, և այլն, և այլն. և այս ամենուն համար կարենայ ըսել թէ իմ համարիւն և համալեզու նախնեացս ձեռագործք են, որոց ոմանց վրայէն երկայն դարեր այլ անցեր են, ու գուցէ հազարաւոր տարիներու յիշատակարանք այլ կան անոնց մէջ. ինչպէս սիրտն կ'ուռի կ'ընդլայնի, կու բարձրանայ, կու խաղայ և կու հանգչի ծոցին մէջ. ինչ օրինաւոր պարծանօք և գոհութեան հպարտութեամբ մը կրնայ ըսել՝ թէ ասոնք իմ հայրենեացս են, ասիկայ իմ հայրենիքս է. և թէ յանյիշատակ ժամանակաց հետէ միշտ մեր ազգն այս երկրիս և այս շէնքերուս տակ բնակեր է. ասիկայ մեր հայրենական կալուածն է, զոր սեփական օրէնօք և քաղաքավարութեամբ պահեր են նախնիքս իր հին սահմանաց մէջ, 'ի մէջի ուրիշ սահմանաց և ազգաց: — Ո՛հ, արդարև ասիկայ կատարեալ և նախանձելի հայրենիք է. ասիկայ ընդարձակ հասարակաց բնիկ տուն մ'է, որ ամեն համազգի մարդու մասնաւոր տուները իր մէջ կու բովանդակէ. ասիկայ ամեն կերպ զօրաւոր սէր և զմայլումն կ'ազդէ բնակչին վրայ. այդ է որ զգացուցեր և ազդեր է այն ամենայն հրաշալի հայրենասիրութեան կրքերը, այն աշխատութիւնները, համբերութիւնները, քաջութիւնները, և ինչուան կենսանուէր զոհերը, երբեմն միայնակ, երբեմն ընկերակցօք և երբեմն բովանդակ բանակներով. զոր հռչակեր են պատմիչք, քերդողք և ճարտար ա-

բուեստաւորք․ և որոց վրայ կու զարմանան ընթերցողք և լսողք՝ նաև յետ երկար դարուց անցնելու, և կու պարծին անոնց յետին համազգի Թոռանց Թոռունքն այլ։... Աշխարհք չիկրնար այսուհետև մոռնալ 3000 տարուան Տրոյիոյ առման դէպքը, և ոչ 2400 տարուան Սալամինայ և Թերմոպիլէի յիշատակները, որոց վրայ միշտ պիտի պարծի որչափ ատեն որ գտուի Յոյն մը։ Այսպիսի յիշատակք երկրաւոր յաւիտենականութիւն մ'են, ազգու և սիրուն։ Ասոնց նման քիչ շատ ուրիշ ազգեր այլ ունին իրենց սեփական և սիրուն յիշատակներ, որ իրենց տևողութեան հետ պիտի հնանան, և աւելի քան զգինի և զբարեկամութիւն հնացեալ՝ հին ախորժ յիշատակքն զօրաւոր և քաղցր են մարդկան, և հասարակաց հաւասար վայելելի ամեն ժամանակ։... Ո՛հ, երբ այսպիսի յիշատակաց վրայ շարժի գրիչն, չիկըրնար գոնէ կայծեր չցատքեցընել․ պատմիչն յանկարծ վիպասան կ'ըլլայ, բանադատն՝ բանաստեղծ։ Հայրենեաց հրեղէն հոսանքէն չհալող սիրտն՝ շատ ապառաժ շատ ապառուամ շատ այլանդակ և այլանիւթ պիտի ըլլայ։... Վա՜յ այդպիսի հրէշին․ երկիր կու հալածէ զանիկայ, երկինք չիկրնար ընդունիլ սիրտ մը՝ որ այնքան կարծր գտուած ըլլայ երկրի վրայ․ անհնար է որ հայրենատեաց մը և լոկ անհայրենասէր մը՝ առաքինի ըլլայ, Թող Թէ սուրբ։ Երկնից պատգամ է՝ Թէ ընկերը չսիրողն՝ չիկրնար զԱստուած սիրել․ հապա բոլոր ընկերները բովանդակող հայրենիքը չսիրողն՝ ինչպէս սիրէ ամեն սիրոյ կենդրոն և շտեմարան հանդերձեալ բնակարանն մաքուր հոգւոց։...

## Գ

Բայց թուական պարտեցանք կարծեմ, Հայկակ, հայրենիք քննելու և տեսնելու. դառնանք փընտռենք մեր սեփական հայրենիքն այլ: — Մինթէ չըկա՞յ մեկ Հայ հայրենիք մ'այլ. մինթէ չունի՞ Հայն իր Հայաստանը:... Ո՞ւր է այս հայրենիքս, ո՞ւր է այն աշխարհն:... Ի՜նչ դիւրին և ի՜նչ դժար պատասխանի. որչափ քաղցր և որչափ դառն յիշատակք: Եթէ առաջին տեսութեամբ ամեն մարդու ծընած, սնած, ապրած տեղն իրեն հայրենիք սեպեմք, որչափ օտար և իրարմէ հեռու տեղուանք պիտի ըլլան Հայոց հայրենիքն: Եւրոպայի արևելեան եզերքներէն մինչև յովկիական Ճեաւա կըղզին, Նեղոսի ափունքներէն մինչև 'ի Վոլկայի բերանը, անձմեռն Միջագետաց խորերէն մինչև յանամառն Ֆինլանտիոյ դաշտերը՝ կու գտուին, կու բնակին Հայ ընտանիք և ընկերութիւնք: — Ո՞ւր է անոնց հայրենիքն. մինթէ ամեն մէկուն իր ծնընդեան տեղն է՝ որ այնքան կու տարբերի մէկալներուն ծննդեան տեղէն՝ որչափ ամենէն աննման աշխարհք իրարմէ. Ինչպէս կրնան Հայք մէկ հայրենիք մ'ունենալ:... Պէտք է որ այդքան ցրուած և ցանուած համազգիքը միայն գաղթական սեպենք, օտարատունկ բոյսեր և ոչ բնիկ: Անդին հայրենիքը փնտռելու է այն տեղուանքը՝ ուր աւելի բազմութիւն և իրարու մօտ կու բնակին. Թէպէտ այս այլ մեր ազգին համար շատ դիւրին ճամբայ չէ. որովհետև թուական մօտիկ բնակութեամբ այլ՝ դեռ շատ ընդարձակ և անհուն երկրի երես սփռած կու տեսնեմք մեր ազգը, որ չէր կրնար այնքան տեղ բռնել իր համալեզու և համարիւն անհատներովը, բայց եթէ ըլլար Չինաց

պէս բազմածին անձեցեալ ազգ մը․ վասն զի դրեթէ Պարսից ծոցէն սկսեալ 'ի հարաւոյ արեւելից՝ 10—20 աստիճան աշխարհագրական լայնութեամբ իջնելով յԱգրիական ծով ձգուած երկիրներու մէջ դէպ 'ի հիւսիս արեւմտից՝ ցանցառ կամ խիտ բնակութեամբ կ'երեւին մեր համազգիք, երբեմն նեղ և երբեմն լայն՝ բայց գրեթէ անընդհատ գօտւոյ մը պէս։ Սակայն այս դեռ շատ ընդարձակ միջոցին երկու ծայրերն այլ թողլով, (ուր աւելի ցանցառ և ցրուած է հայութիւնն), պէտք է մէջտեղուանքն՝ (ուր աւելի խիտ և մօտիկ է բընակութիւններն) փնտռենք մեր հայրենիքը․ և յիրաւի կու տեսնեմք որ ազգերնուս բազմութիւնն կու բնակի վերին Եփրատ գետոյն երկու կողմերը․ աջ՝ կամ արեւմտեան կողմէն՝ մինչև Ալիս (Գըզըլըրմաք) գետոյն եզերքը, ձախ կողմէն՝ կամ արեւելքէն՝ մինչև 'ի Կուր գետ, կամ այլ անդին մինչև 'ի Կասպից ծով․ հիւսիսէն այլ մինչև 'ի Կովկաս, հարաւէն մինչև յանապատն Միջագետաց։ Այս վերջի միջոցս այլ դեռ բաւական ընդարձակ է մեր ազգին համար, ոչ միայն ըստ հիմակուան վիճակին, այլ և ըստ հին ատենի․ ուրեմն եթէ ասոր այլ չորս սահմաններն ամփոփեմք՝ կրնամք տեսնել չափաւոր երկիր մը՝ յիշեալ գետոյն (Եփրատայ) երկու կողմը, որոց մէկն (աջակողմեանն) ըլլայ Փոքր Հայք, միւսն Մեծ Հայք․ ասոնք, և մանաւանդ ետքինս այս է բուն Հայաստան․ հոն է մեր հայրենիքն․ թէ և այսօրուան օրս, աւաղ, ամեն աշխարհացոյցք այս մեզի ցանկալի անուամբ չեն նշանակեր այն երկիրը, այլ անոր քանի մը նահանգաց և գաւառաց անուամբք, կամ նոր և օտար անուններով։

Թողլով պատճառները և դէպքերը քննելու կամ յիշելու, վկայենք որ ազգերնուս մէկ մեծ մաս մը հիմայ իր բնիկ և սեփական հայրենեաց

սահմաններէն. դուրս տեղ կու բնակի կամ հաստատուած է. բայց դեռ մեծագոյն մաս մ'իր նախնեաց բնիկ երկրին մէջ է, որ է Մեծ Հայք, կամ անոր շատ մօտ տեղ, ինչպէս են Փոքր Հայք, Կովկաս և Կիւլիկիա. այս վերջինս թէ և հեռագոյն քան զբուն Փոքր Հայս, բայց աւելի Հայկական հայրենի երկիր դարձեր է. վասն զի հոս աւելի կեդրոնացեր է Հայութիւնն իր սեփական օրինօքն, տիրութեամբն, լեզուաւ և սեփական յատկութեամբք, որոց նշանք կու մնան իր ձեռագործ և ձեռագիր ազգային յիշատակարանօքն։

Դ.

Ազգային յիշատակարանք. ասոնք են բնիկ նշանք հայրենեաց. ասոնք են իւրաքանչիւր ազգի հայրենեաց ամենէն յայտնի, ամենէն ազդու և զօրաւոր արձանագրութիւնք, միանգամայն և ամենէն սիրելի և սրտառուչ բաներ երկրիս վրայ։ Կրնամք ուրեմն մենք Հայքս այլ, յետ արտասուելու մեր անցեալ կամ կորուսեալ երկայն ինքնակալութեանը և բազմակերպ յիշատակաց վրայ, (որք 3000 տարի մը հանդիպեցան այն մի և նոյն երկրին վրայ՝ զոր բնիկք և օտարք միշտ կ'անուանէին Հայաստան և Արմենիա), կրնամք, կ'ըսեմ, դեռ հիմայ այլ մխիթարուիլ՝ որ այս ցան և ցիր ազգերնուս գոնէ կէսն դեռ իր հին և ամենահին հարանց հողուն վրայ կու բնակի, կու բանի, և կու հանգչի, անոնց նշխարեալ ոսկերաց քով իրեններն այլ աւանդելով. — և կրնայ դեռ յետ այնքան ասպատակութեանց և աւերանաց՝ որ թերևս ամեն աշխարհէ աւելի իր երկրին վրայ եղան, կրնայ դեռ իր նախնի տիրագլուխ նախնեաց հնացեալ և կիսաքանդ յիշատակարանները տեսնել. — կրնայ ճանչնալ այն տեղուանքը՝ ուր

իր համարիւն և համալեզու առաքինեաց և քաջաց գործք և արդիւնքն կատարեցան, որք 'ի գիր անցան և դարուց 'ի դար կու պատմին և պիտի պատմին: Կրնամք և մենք հեռաւորքս և մերձաւորք՝ մխիթարուիլ և օգտուիլ այն յիշատակարաններով և յիշատակներով, զոր եթէ ժամանակն մէկ կողմէն կու ջանայ աւելի հնացընել և մոռացընել, մէկ այլ կողմէն դիւրութիւնք նոյն ժամանակի, արուեստք, գիտութիւնք, ջանք և կրթութիւն՝ աւելի կու յայտնեն, կու նորոգեն, կենդանացընեն: Ջանանք փնտռելով և քննելով՝ կու ստիպուինք անգամ մ'այլ վկայել մեր անաչառ պատմահօր հետ (Խորեն. Ա. գ.), որ թէպէտ և հիմայ փոքր ազգ մ'ենք, տկար և օտարի իշխանութեան տակ ընկած, «սակայն բազում » գործք արութեան գտանին գործեալ և 'ի մե- » րում աշխարհիս »: Գործք արութեան են՝ քաջութիւն հոգւոյ և սրտի և ձեռաց. արդիւնք առաքինութեան և կորճութեան:

Այո, այո. հայրենեաց ամենէն հզօր հրապոյրքն են այսպիսի գործոց յիշատակք, եթէ անոնց նիւթական յուշարարքն կամ արձանքն մնացած ըլլան և եթէ չըլլան. ասոնք են տեսարանին գըլխաւոր պատկերքն: Եւ եթէ այն պատկերաց հետ ենթակայքն և շրջանակքն այլ համեմատ և գեղեցիկ ըլլան՝ 'ի հարկէ բոլոր տեսարանն այլ աւելի գեղեցիկ կ'երևի. այսինքն, եթէ այն գործոց հետ՝ տեղն ու դիրքն այլ 'ի բնէ վայելուչ ըլլան՝ հայրենիք կրկին քաղցր և ցանկալի կ'ըլլայ: — Արդ այս տեսութեամբ այլ՝ մեր հայրենիքն Հայաստան՝ կրնայ շատ չնախանձիլ ուրիշ աշխարհաց, այլ և շատերու նախանձելի ըլլալ. վասն զի բնութիւնն կամ տէրն բնութեան՝ շատ գեղեցկութեամբ և հարստութեամբ զարդարեր է զայն. զոր օր մը յատուկ համառօտ բնագրութեամբ մը կ'ուզեմ

քեզի՝ նկարագրել, Հայկակ։ Իսկ եթէ այս բնական և ազգային տեսարանաց հետ նկատենք մեր հայրենեաց վրայ համաշխարհական երևոյթներ այլ, այսինքն անանկ դէպքեր, որ կամ բոլոր աշխարհիս կամ շատ ազգաց պատմութեանն այլ կու վերաբերին, կարծեմ թէ քիչ երկիր կրնայ մեր հայրենեաց հետ բաղդատուիլ, և կամ ոչ մէկն այլ հաւասարիլ այն երկրին, ուր հասարակաց կամ համանագոյն ծանօթութիւնն՝ կ'ընդունի զդրախտն, այսինքն մարդկութեան ծագումը. — Տապանին հանգստեան տեղը, այսինքն երկրորդ անգամ մարդկութեան ծագիլը և ծաւալիլը. — Աճեցեալ մարդկութեան առաջին անգամ ցրուելուն անկէց, և դարձեալ 'ի Բաբելոնէ ցրուելոց շատերուն նորէն կամ բնակարան կամ անցարան և իբրև կարաւանատուն մ'ըլլալը. կրնամք ըսել թէ հիմակուան զարմանալի Եւրոպիոյ մեծ մասն այլ Հայաստանէն անցեր է. անոր ազգաց շատ նախահայերուն կամ գաղթականաց գլխաւորը՝ մեր աշխարհքէն ելեր կամ անցեր են յարևմուտս և ոմանք դէպ 'ի հիւսիս։ Այո, Հայկակ, դարձեալ կու կրկնեմ, որ թէ բնական, թէ ազգային և թէ համաշխարհական տեսութեամբ՝ շատ նշանաւոր երկիր մ'է Հայաստան. և ըստ այսմ տեսութեան՝ կերպով մ'եռապատիկ կ'ընդարձակի մեր հայրենիքն, որ արդէն իսկ բաւական ընդարձակ էր թէ իր սահմաններովն և թէ մեր պատմական տևողութեամբն, որ կու սկսի ամենէն հին ազգաց պատմութեան հետ. և իր ինքնագլխութիւնը կամ երկրատիրութիւնը կորուսանելու երկար միջոցն այլ՝ դեռ փոքրագոյն մաս մ'է հայութեան կենաց 'ի վերայ երկրի։ Եւ արդ այս ամենս՝ անգամ մ'այլ կու հաստատեն՝ թէ շատ գործք եղած են 'ի Հայաստան, շատ յիշատակներ պիտի ունենայ մեր հայրենիքն։...

## Ե

Արդ ի՞նչ պիտի ըլլայ ուրեմն, ով Հայկակ, այնքան գործոց և յիշատակաց դիմաց այս իմ քեզի ընծայածս – ՅՈՒՇԻԿՔ ՀԱՅՐԵՆԵԱՑ ՀԱՅՈՑ:

Եթէ դիպուածոց բազմութեան հետ համեմատեմք, արդարև հազարէն մէկ բիւրէն երկուք են. եթէ գործոց գերազանցութեան հետ, կու փութամ վկայելու՝ որ և յայսմ մասին ամենէն ընտիր կամ ցանկալի բաները չեն այս քանի մը տասնեակ պատմածքս, զոր ըստ դիպաց իմն կամ ըստ աւուր պատշաճի՝ յիշեր եմ. և եթէ զրուցուածիս ոճոյն և ձևոյն նայիս, այն այլ շատ հեղ ըստ զանազան աւուրց կրից կամ ախորժից ըսած եմ, առանց աւելի արժանաւոր ոճի և ձևի մը մտցընելու ըսածս. մանաւանդ որ ՚ի սկզբան չէի մտածեր առանձին գրքով մ'ամփոփելու և հրատարակելու. ես առաւել որ մեր ռամկական լեզուով խօսած եմ, որ թէ և քեզի աւելի դիւրահասկանալի և ախորժելի է, Հայկակ, բայց ինծի՝ որ աւելի խոր զգացեր եմ հայրենեաց կիրքը՝ քան թէ բացատրեր,– ինծի՝ որ զպատմութիւն հնութեան մէջ յուզելով՝ մեր նախնիքը մեզմէ շատ աւելի մեծահասակ տեսեր եմ,– ինծի, իմ զգացմանս՝ արդարև այս աշխարհիկ լեզուս՝ շատ պզտիկ շատ ցած շատ անբաւական եկած է. ըսեմ նաև՝ թէ և շատ օտարացեալ և այլազգացեալ ՚ի բնիկ հայկական ոճոյ, որ ամենէն աւելի հաճոյն էր ինծի. այնպէս կ'երևի ինծի՝ թէ մեծ կրակ մը փտտած քուրջերով ծրարել կ'ուզեմ, երբ այն իմ հին և սրբազան հայրենեաց հրեղէն յիշատակները՝ այսպիսի խեղճուկ լեզուով կ'աւանդեմ, թողլով իր վսեմական գրոց լեզուն:

Սակայն այս խօսքերս իսկ կու յայտնեն՝ որ իմ սրտիս զուարճութենէն աւելի քու և քու նմանեացդ օգուտը դիտեր եմ, Հայկակ. եթէ կարենայի և ուզենայի Նարեկացւոյ Թռուցիկ և հրաթափ լեզուով մը վիպասանել, գուցէ քիչ մ'աւելի սիրտս կու զովանար կու հանգչէր. բայց անշուշտ առ այժմ քիչերու հասկանալի պիտի ըլլայի, և շատերու անօգուտ. եթէ կրնամ գէթ յուսալ՝ որ գոնէ քիչերու այլ օգտակար ըլլամ, ինչպէս որ փափագեցայ այս քանի մը պարապոյ ժամերուս զրոյցքը հրատարակելով. որով երբեմն ուզեր էի այն հայրենեաց սրբազան զգացման մեծ վառարանէն մէկ երկու կայծեր թափել 'ի սիրտ քո, Հայկակ, և քեզի նման հայազգի համբակաց: Եւ ասոր համար՝ որպէս զի չկարծուիմ թէ մեր հին և մեծ հայրենեաց զանազան անցքերը ուզած ըլլամ բովանդակել գրքուկով մը, չհամարձակեցայ զանունք յիշատակք անգամ անուանել, այլ միայն Յուշիկք: Յուշիկք միայն են ասոնք՝ համեմատութեամբ յիշատակաց շատութեան և մեծութեան. Յուշիկք են նաև նկատմամբ այն յուսոյ և փափագանաց՝ որ կու պահանջէին երկար և ճոխաբար խօսիլ և լսել անոնց վրայօք, որոցմէ՝ ժամանակն անստոյգ՝ և ինծի համար արդէն յառաջացեալ՝ թերևս պիտի չթողու որ քեզի կարենամ աւանդել աւելի կատարեալ բան մը՝ քան սոյն այս անկատար ՅՈՒՇԻԿՔ ՀԱՅՐԵՆԵԱՑ ՀԱՅՈՑ:

# Բ

## ԲՆԱԽՕՍՈՒԹԻՒՆ

## ՀԱՅԱՍՏԱՆ ԱՇԽԱՐՀԻ

Արդ որովհետեւ կ՚ուզես, Հայկակ, որ երբեմն ձմեռուան իրիկունները ախորժաբեր կարմիր կրակարանին քով, և երբեմն լաւ եղանակին՝ ցորեկը ժուռ գալով բաց օդոյ և բնութեան մէջ, մեր Հայ հայրենեաց դիպուածոց և հանգամանաց մէկ քանին յիշենք. երբեմն ըստ աւուր պատշաճի, այսինքն օրուան տարեդարձ յիշատակը պատմելով, և երբեմն ըստ կամաց և հաճոյից ընտրելով նիւթ մը. հարկաւոր կու սեպեմ այս առաջին անգամ մեր հայրենեաց բնախօսութիւն մ՚ընել. 'ի հարկէ մեր երեկոյեան ժամերուն համեմատ՝ համառօտելով և ամփոփելով անանկ նըկարագիր մը՝ որ կրնար շատ յերկարիլ, եթէ մենք այլ աւելի երկար ժամանակ ունենայինք՝ մեր աշխարհին անցեալ պատմութիւնը և ներկայ բնութիւնը քննելու:

## Ա.

Մեր Հայաստան աշխարհին ընդհանուր կերպարանքը շատ նշանաւոր երևոյթներ կ'ընծայեն մեզի, Հայկակ. և մէկ խօսքով ըսելով, Հայաստան ընդդիմակներու երկիր մ'է գերազանց ստիճանի, որք քիչ ազդեցութիւն չեն ըներ իր բնակչաց բարուցը վրայ: Աշխարհագրական դրիցը պատճառաւ՝ Հայաստանի կլիման է ամենաբարեխառն, ամենաքաղցր, հաւասար Իտալիոյ, Յունաստանի, Սպանիոյ, Ասորեան կղզեաց. բայց ունի խըստաշունչ ցուրտ՝ բևեռային շրջանակաց նման, և հեղձուցիչ տաք՝ արևադարձից: Եւ այս հակառակաց պատճառն է իր դրից բարձրութիւնը ծովու երեսէն: Վասն զի մինչ մէկ կողմանէ Եւրոպիոյ շատ լերանց բարձրաբերձ գագաթունքն չեն հասնիր այն բազմամարդ ու մշակեալ տափից բարձրութեանը, ուսկից Եփրատ, Տիգրիս, Կուր և Արածանի սկիզբն կ'առնուն իրենց արծաթափայլ ջրոցը. և մինչ Ցեմբլոնի, Կենիսոսի, Ս. Գոթարտոսի համբաւաւոր լեռնանցքն ստորև են Սևանայ լճին ջրոց կապուտակ երեսէն, որուն շրջակայքն հարիւրաւոր գիւղօրէք միշտ բազմամարդ բնակչօք լի են. միւս կողմանէ քանի մը մասունք մեր հայրենեաց՝ ոչ միայն կ'իջնեն հարթ հաւասար մինչև ծովուն մակերևոյթը, այլ նաև ստորև են քան զայն. ինչպէս Կասպից ծովուն ափունքն, ուր կը խառնուի Հայաստանի բնական մակարդակն՝ 23 մեդր ցած են քան զմակերևոյթ Սևու ծովու և Ովկիանու: Անկէ առաջ կու գան այն հակադիմութիւնքն և այն փոխադարձ խաղերն երկու հակառակ եղանակաց. որոնց մէկն՝ երբեմն կը հալեցունէ, կ'ըսեն, իր հրացայտ ճա-



ռազայթներովը Տիգրանակերտի գմբէթաց կապարը, մինչդեռ մեկալն վեց ամիս կը սփռէ իր սպիտակ պատանքը երկրին մեծագոյն մասին երեսը, և կ'իջեցունէ զուգախառնութիւնը 26° Ռ. զրոյէն վար: Այսպիսի ատեն կարաւաններն հետերնին կ'առնուն թանձր մուշտակներ, կարելու անցնելու համար ձեան ու սառուցի խաւերուն տակ պնդացած լճերը ու գետերը, որով չեն զանազանուիր ձորն 'ի դաշտէն: Երջանիկ են այն յանդուգն Ճանապարհորդներն՝ եթէ կարենան ազատիլ հիւսերէն և ձեան փոթորիկներէն, որ շատ անգամ կը թաղեն ամբողջ կարաւաններ: Այսպիսի դիպաց մէջ փրկութեան վերջին յոյսն, ըստ վկայութեան Սորաբօնի, էր երկայն ձող մը, զոր ձեան տակ թաղուող թշուառն կը ջանար ցըցելու իր սառնեղէն բանտին կամարէն դուրս՝ իբրև նշան բաբախուն կենացը, որ ազատարարի մը կը սպասէր: Այս կերպով ազատեցաւ արքայն Սանատրուկ երեխայութեան ատեն, յետ մնալու երեք օր սառնուտին գիրկը կապուած ձիւնեղէն բանտին մէջ. իր Թոռն, Տիրան, թշուառագոյն քան զինքն, հոն կորսնցուց կեանքը յետ թագաւորելու 20 տարի: Օգտակար ձիգն էր և պատուաւոր պաշտօն մը՝ մեր արշակունի թագաւորաց ատեն՝ արքունի ոստիկանութիւնն ձեանց, յորմէ կ'առնուր իր անունը մեր ազնուական ընտանեացը և կամ նախարարութեանց մէկն, և կ'ըսուէր Ձիւնական: Ճանապարհորդաց ապահովութեանն համար պանդոկներ կամ կայանք կը հաստատուէին յաճախեալ և վտանգաւոր Ճանապարհաց և անցից վրայ. ինչպէս են, բաց յայլոց, Ռահվայի ձորոյն Խանէրը, ընդ մէջ Բաղիշու և Խլաթայ: Այս հայկական յիշոն, ինչպէս կ'անուանէ մեծն Ոսկեբերան, որ անձամբ փորձեց անոր խստութիւնը, շատ անգամ ահ տուաւ աշ-

խարհակոյց. և առակ եղած է հին պատմչաց և քերդողաց մէջ, Քսենոփոնէն սկսեալ մինչև 'ի բիւզանդացի ժամանակագիրներն: Մեր օրերն բնապատում Ճանապարհորդք ստուգեցին որ Էրզրումի ձմեռն աւելի նուազ խիստ չէ՝ քան Մեծին Ս. Բեռնարդոսի լերան ձմեռը, թէպէտ և առաջնոյն աշխարհագրական լայնութիւնն 5 աստիճան նուազ է, և բացարձակ բարձրութիւնն ալ 500 մետր նուազ է քան զհռչակաւոր վանքն Ալպեայց: Դարձեալ Ակոռւոյ ձմեռն, 39 աստիճան լայնութեան տակ, և 1760 մետր բարձրութեամբ, հաւասար է Հիւսիսային-Գլխոյն ձմերան՝ սառուցեալ գօտւոյն տակ՝ Եւրոպայի ծայրը: Երևան, մայրաքաղաքն Ռուս Հայաստանի՝ ամառն ամսերի մէջ ջերմութիւնն ելեր է 30° Ռ. ձմեռն իջեր է անգամ մ'ինչուան 40" Ռ. զերոյէն վար. այսպիսի տարբերութիւն մը մը հազիւ թէ սառուցեալ գօտւոյն մէջ, Կրէնլանտի կղզին կը տեսնուի. ընդդիմակ մը որ դրեթէ ուրիշ տեղ չտեսնուիր:

Այս ընդդիմակութիւնս աւելի զգալի կ'ըլլայ երբ նկատենք մեր հայրենեաց երկրին ամայի երեսը՝ տարւոյն այն ժամանակը, երբ այն լեռներէն անդին՝ որ զինքը կը բաժնեն Պոնտոսէն, նարընջենիներն անուշահոտութեամբ կը բուրեն բաց օդուն մէջ 'ի Տրապիզոն, զոր արդէն ողջուներ է ծիծառնունքն, Հայաստանի վրայէն անցնելով՝ առանց հոն ոտք կոխելու. մինչդեռ ուրիշ կողմ մը՝ ցածագոյն լերանց ոտքը, Մուսուլ, սառոյց կը ծախեն, տաղտկացուցիչ ջերմութիւնը բարեխառնելու համար: Եւ սակայն Պոնտոսի մայրաքաղաքէն մինչև Ասորեստանի մայրաքաղաքը, Հայաստանի տարածութիւնն՝ ուղիղ գծով՝ չառաւելուր քան զ6-700 հազարամետր. այնպէս որ շոգեկառք մը կրնայ կտրել այս միջոցս արևուն ծա-

դուռմէն մինչև մուտքը, և կ՚ունենայ ճամբորդն առաւօտ մը գարնան, միջօրէ մը ձմերան և երեկոյ մ՚ամառան: Հաւանօրէն գուն այս զբօսական ճանապարհորդութեանս ձեռք չես զարներ, Հայկակ. չես ուզեր մի և նոյն օրուան մէջ իրեք այլ և այլ եղանակ ունենալ, մանաւանդ երկրորդը: Այդ ինչ խառնաշունչ երկիր է, պիտի ըսես, այդ ինչ թշուառ հայրենիք է եղեր մեր Հայաստանն: Ա՛հ, երբ սիրելի ըլլան հայրենիք, ամեն եղանակներն ալ գեղեցիկ կ՚ըլլան, և վայրենագոյն բնութիւնն անգամ կը քաղցրանայ բարեկիրթ սրտի մը: Ի վերայ այսր ամենայնի ես շատ եւրոպացի կը ճանչնամ՝ Բարիզու և Լոնտրայի բնակիչներէն, վաճառականներ և հիւպատոսներ, որ դժուարաւ կը թողուն Էրզրումի բնակութիւննին յեւրոպա վերադառնալու համար. Թէպէտ և կը տեսնեն որ ջուրը կը սառի հոն նոյն իսկ խեցգետնի արևադարձին գիշերը. բայց այն չորս կամ հինգ ամիսները, որ երկու ձմերանց մէջ կ՚ընկնին, վերադաս կը համարին քան զբոլոր տարին ուրիշ կլիմայի տակ:

Օդոյն առաձգութիւնն ու զտութիւնն և անոր հոսանաց զովութիւնն, ջրոց յստակութիւնն, բուսաբերութե առողջութիւնն ու պայծառութիւնն, և այս կերպով մը օդապարիկ երկրիս արգասեաց համեղութիւնն, կազմեցին զՀայաստան տեղի զբօսանաց և ամարաստուն աշխարհակալաց Ասիոյ և իրեն մերձաւոր Թագաւորաց, սկսեալ ՚ի Շամիրամայ մինչև ցկուսակալս անդրակովկասեան գաւառաց Ռուսաց: Վանայ բերդն, որ սեպացեալ ժայռի մը գլուխը կանգնուած է, հարիւրաւոր ոտք բարձր է ստորակայ լեռնադաշտակէն, ան ալ աւելի քան զ5100 ոտք բարձր է ծովու երեսէն, այն բնութեան և արուեստից հրաշալիքն, — առաջին հանգրուան հաճոյից և ա-

մարաստուն եղաւ այն աշխարհակալ Թագուհւոյն, որուն անունը ինչուան այս օրս կը կրէ, այն անունը[1] որ շատոնց մոռացութեան մէջ թաղուած է Բաբելոնի և Եկբատանայ աւերակացը տակ։

Իսկ մեր Թագաւորներն պէտք չունէին իրենց հմերոցն օտարներու քով փնտռելու։ Մուղանայ ընդարձակ դաշտն կամ անապատը, զոր կը կտրեն ու կ'անցնին Երասխ և Կուր, իրարու հետ խառնուելէն թէ առաջ և թէ ետև, ամեն ժամանակ հմեռը մեր հայրենեաց կենդանիներուն ապաստանարան եղեր է։ Ամառն խոպան անապատ մ'է, և արևէն այրած խոտերուն տակ կը պահէ խորամանկ օձեր, որոնցմէ Պոմպէի բանակն աւելի նեղութիւն կրեց՝ քան թէ Ասիոյ բոլոր թշնամիներէն. ամառուընէ դէպ 'ի հմեռն՝ արօտատեղի և ճշմարիտ ապաստան կը փոխուի։ Այն վերջին եղանակին մէջ՝ հազիւ թէ թափանցիկ բարակ ձիւն մը կը նստի, Մուղան կը շէննայ օդոց այն գեղեցիկ եպիկուրեաններէն, (թռչուններէ), որոնց տարեւոր տեղափոխութիւնքն կը հիացունեն զերկրագործ և զիմաստասէր։ Այս խաղաղասէր թռչնոց ցեղէն բոլորովին տարբեր և օտար ցեղ մը՝ միջին դարուն՝ այս ընդարձակ միայնութեանցս տիրելով, ծածկեց վրանօք պատերազմասէր հրոսներով, որ եկեր էին Ջիհունէ և Յաքսարտէ անդին եղած անապատներէն. Մողոլաց անհամար բանակներն, առաջնորդ ունենալով զՉուրմաղուն և Հուլաղուն, հոն հմեռն իրենց ձիերը ու բանակները կը վարժեցընէին արիւնհեղութեան և աւարառութեան, զոր 'ի գործ կը դնէին գարնան, բոլոր շրջակայ երկիրներուն մէջ։ Անոնց արիւնարբու գլխաւորներն, երբ տա-

1 Շամիրամակերտ աւ. կ'ըսուի Վան։

քերը կը հանէին, Ալատաղէ զովացնել բարձրերը կ՚ապաւինէին, որ Արարատայ պարուն լեռ մ՚է, և վրան Ապաղա-ղան մեծածախ դղեակ մը շինեց, քաղաքի մը չափ ընդարձակ, որուն աւերակներն ինչուան հիմա անայցելու մնացեր են Ճանապարհորդներէն, ինչպէս դիրքն ալ անծանօթ է հիմակուան անուանի արևելագէտներէն՝ որք Մողոլաց պատմութիւնը գրեցին։

## Բ

Արարատայ այն լերանց պարն՝ զոր հիմա յիշեցի, բոլոր Հայաստանը երկու կը բաժնէ, թափելով իր ջրերը մէկ կողմէն Եւքսինեան և Կասպիական ծովերուն, միւս կողմէն՝ Միջերկրական ծովը ու պարսկային ծոցը։ Այս շղթայն — կցուելով լերանց այն ընդարձակ գօտւոյն հետ՝ որ ծայրէ ծայր կը շրջապատէ հորիզոնաբար զբովանդակն Ասիա, սկսեալ Չինաց և Հնդկաց եզերքէն մինչև փոքր Ասիոյ եզերքը, ու կը ձգուի մինչև արևելեան Եւրոպա, — այս հայկական պարը կամ շղթայն, հանդերձ իր լեռնամոյթներովը, նոր ժամանակաց ստուգին բնապատումն Հումպոլտ կու սեպէ իբր կեդրոն ծանրութեան բոլոր հին աշխարհի։ Սակայն այս շղթայն, ինչպէս ուրիշ Հայաստանի շղթաներն ալ, որոշ չիծրագրուիր նման անթափանցելի պատուարացն Կովկասու, շարունակ կատարացն Անտեայց, Հիմալայայ, և Ապեննինեանց. և ոչ իսկ Տաւրոսի վեհ տեսքն ունի։ Հայաստան ունի շատ մը երկրորդական շըղթաներ Ճիւղեցն Կովկասու, Տաւրոսի և Արարատայ, որ կ՚ընդհատին շատ հեղ լեռնակոյտներէ, ցցուեալ առանձնակ սարերէ, որք շատ տարբեր կերպով վեհ են իրենց ձևովը, բացարձակ բարձրու-

թեւանցին և խրնոց տարածոցակը. և իրաւամբ է որ նոր աշխարհագրաց հայրն, Ռիդդեր, կը կոչէ մեր հայրենիքը Լեռնակղզի[1]: Արդարև ուրիշ կերպ չերևար Հայաստան եթէ դիտուի ընդ մէջ դաշտացն Միջագետաց, Ասորւոց և Վրաց, ընդ մէջ Սևու ծովուն և Կասպիական ծովուն. ուր լեռնադաշտն կ'ամբառնայ աւելի քան զ'2000 մետր հանդերձ լեռներով, որոնց բացարձակ բարձրութիւնն է մինչև 5000 մետր: Այս լեռնադաշտիս բարձրագոյն կէտն Մասիս, կամ Մեծն Այրարատ, կ'առաւելու բարձրութեամբ իւր 500 մետր քան զՍպիտակ լեառն[2], և երկք կողմանէ առանձնացեալ՝ կը բարձրանայ իբրև հսկայ լերանց 4000 մետր Երասխայ դաշտէն վեր, ցուցնելով փառաւորապէս մինչուան 50 փարսախ հեռուն իր ալեւոր գլուխը. սպիտակ քօղն՝ որ մշտնջենապէս կը ծածկէ զայն, ընդդիմակ երևոյթ մը կը ներկայացընէ իր սև կողերուն հետ՝ երբոր անոնք իրենց ձմեռնային ծածկոյթը ձգեն:

Դիտելու արժանի զարմանալիքներէն մէկն է դարձեալ մեր երկրին մէջ մշտնջենաւոր ձեանց բարձրութիւնն, որ բաց 'ի Մասիսէն և ուրիշ քանի մը բարձունքներէ, ամբողջ տարին չեն դիմանար: Այդ սառնեղէն գիծն հայկական լերանց առանձնակ սարերուն վրայ չիջնար 'ի վայր քան զ4000 մետր, և գօտիներուն վրայ քան զ3800: Իրաւունք ունէր ուրեմն լատին բանաստեղծն (Որատիոս) զարմանալու որ

Եւ ոչ 'ի սարս լերանց Հայոց
... Պաղ Թանձրացեալ կայ միշտ անլոյծ
Զհամաբոլոր ընթացս ամսոց: —

Ինչպիսի՜ զարմանալի ընդդիմակ երևոյթ կ'ըն-

1 Գերմ. Berg-insel. 2 Mont-Blanc.

ծայեն ուրեմն մեր հայրենիքն ընդ մէջ տարւոյն երկու ծայրերուն ու միջին ամիսներուն. ինչ զանազանութիւն ընդ մէջ համատարած սպիտակութեան և դեղապիտագոյն կանաչութեան՝ որ շուտով մը առջինին տեղ կը փոխուի։

Բայց ինչպէս կ՚անհետանան արդեօք այդ ձեան և սառուցի սարսափելի կոյտերն. ուր արդեօք կ՚ամփոփին այնքան անթիւ ջուրեր։ Անտարակոյս պէտք էին բոլոր մեր երկրին երեսը ողողել, աւերել ու փճացընել, եթէ նախախնամութիւնն առաջուց անոր կործանարար գիրք մը տուած չըլլար, կամբրաձև վահանի մը պէս զետեղելով չորս միջերկրական ծովուց միջոց. ուր կը թափին այդ ջրոց մեծամեծ քանակքն՝ և կը ձևացընեն առաջակողմեան Ասիոյ մեծագոյն գետերն։ Բայց 'ի երկրին դժալի կորութենէն՝ գետոց յատակքն ալ շատ խոր են, և ոմանք ինչուան հարիւրաւոր ոտք բարձր ափունք ունին իրենց թուխ ալիքներուն վերև. այս պատճառաւ է որ շատ մեծ ու փոքր գետեր Սև կը կոչուին։ Բայց այդ տարևոր ջրհեղեղը չէր բաւեր երկրին արբուցմանը, եթէ մշակողաց երկայնամիտ վաստակն բազմաթիւ ջրանցքներ և ջրոց ընդունարաններ չբանար, և շարժուն ցանց մը չձևացունէր իր մարգացն ու անդաստանացը եզերքը։ Պէտք է ճանչնանք ուրեմն որ մեր նախնիքն, տուանց ներկայ դարուս գիւտութիւններն ունենալու՝ շատ ճարտար էին ջրաբաշխական արուեստի մէջ։ Ջրոց խառոչներուն մէջ թմրած ջուրն՝ ոչ միայն նեղ ժայռերու միջէն ճամբայ բանալով կ՚ընթանար անխոնջ երկրագործին քըրտանց ձեռնատու ըլլալու, այլ և երբեմն տանելի դժուարին և օձապտոյտ ճամբաներով՝ սուր և սեպաձև բլուրներու և ժայռերու գագաթը կը բարձրանար, ձևացընելու աւազան մը ժայռերու մէջ փորուած՝ բնաւորի և կամ բնաւորէ. մը

ընկճուած հպատակի մը ամրոցին մէջ։ Ուրիշ տեղ ալ տարբեր վախճանի համար խոր գետերու տակէն գետնափոր ուղիներ կը բանային. օրինակի համար Անի, բուն Հայաստանի եօթը մայրաքաղաքն, Լոռուայէն 800 տարի առաջ ալ ունէր ստորերկեայ ջրանցք մը։ Այդ ջրաբաշխական մեծագործութիւնքն հաւաստիք մ'են թէ կարող էին ուրեմն զանոնք շինողներն նաև մեծամեծ ջրոց հոսանքները քարաշէն կամարներով ալ սանձել, կ'ուզեմ ըսել կամուրջներով. այնչափ բազմաթիւ էին կամուրջներն՝ որ մինչեւ դարու մեր ազգային երգիչներէն մէկն կ'երդնուր, « Այ՛ քարարաշէն կամուրջնի »։ Բայց սակայն շատ դիւրին գործ մը չէր ճարտարապետին՝ մէկմէկու միացընել անանկ երկթեւ ափունքը, որոնց մէջէն կ'արշաւէին սրընթաց և զայրագին գետեր. վկայ է Վիրգիլեայ գեղեցիկ տողն,

Ի կամրրջոց ըմբոստն Երասխ։

Փուճ տեղը ջանացին Աղեքսանդր և Օգոստոս ինքնակալներն սանձահարել այդ ամեհի գետը. ուրիշ ինքնակալ մը աւելի երջանիկ սեպեց զինքը՝ անոր վրայ դէթ առժամանակեայ կամուրջ մը ձգելով. և ահա մէկէն ուրիշ շողոքորդ բանաստեղծ մ'ալ ( Ստացիոս ) երգեց.

Լատինական կամրրջոց արդ հըլու Երասխ։

Բայց այդ զայրագին գետն, արհամարհելով կայսերական ձեռագործներն՝ իր ալեացը ներքև ընկճեց զանոնք, մինչդեռ հեզիկ և ուժաթափ եօթնակամար մեծ կամրջի մը կամարաց տակէն կ'անցնի, որոյ հիմունքը համեստ հովիւ մը ձգեց։ Հովուի կամուրջն ( Չօպան-քէօփրիւսիւ ) Հայաստանի և անոր շրջակայից մէջ առակ եղած է։ Թողլով ուրիշները, յիշեմ մէկ կամուրջ մ'ալ միայն,

Զորովոր գաւառին մէջ, միակամար քարաշէն. զոր այրի Թագուհի մը իր ծաղիկ հասակին մէջ կանգնել տուաւ 'ի յիշատակ իւր Թագաշուք փախճանեալ ամուսնոյն Աբասայ, խոր հեղեղատի մը վրայ ձգելով, իբրև խորհրդաւոր նշան միութեան երկուց սրտից, երկուց աշխարհաց և երկուց հանդիպակաց կենաց. կամրջոյն ստորոտը խաչարձանի մը վրայ գրոշմել տալով իր սիրոյն և կենդանի հաւատոց նշանակը: Չի կրնար հայրենասէր մը յանցանելն այս (կը համարձակիմ ըսելու) հրաշակերտ կամրջէն, չտալ տխուր աչք մը թէ այն սրարշաւ ալեացը վրայ՝ որ միշտ կը թողուն և միշտ կը ծածկեն իրենց հունը, թէ այգ արձանագրութեանը վրայ՝ որ քրիստոնէական յուսոյ նշանին տակ անեղծ պահուած է, և թէ այն մերձաւոր կրկին վանքերուն վրայ, Հաղբատայ և Սանահնի, Հայաստանին միջին դարուց Ս. Դիոնեսիոսն ու Ս. Պօղոսը[1], ուր կը հանգչին աւելի քան զ40 պսակազարդ գլուխք ընդ պարկեշտաստուն Թագուհւոյն Նանայի, որ է հիմնադիրն կամրջոյս. բարեբաղդաբար ժամանակն, որ մարդէս աւելի խնայել գիտէ, անարատ պահած է մեզի 700 տարուընէ 'ի վեր՝ այդ միանգամայն հայրենական և կրօնական յիշատակարանը[2]:... Բայց այս ի՞նչ է, մի՞թէ այդ փրփրադէզ

1 Saint-Denis Բարիզու և Saint-Paul Լոնտրայի:

2 Այս է արձանագիրն. « Կամաւն Աստուծոյ ես Նանա
» 'ի յազգէ Բագրատունեաց դուստր մեծին Սարգսի, քոյր
» Զաքարէի և Իվանէի, կին Աբասայ Թագաւորին՝ որ
» փախճանեցաւ կիսաւուրեայ, խաւարեցոյց զիս. կանգնե-
» ցի զխաչս, շինեցի զկամուրջս. յիշատակ նմա և մխի-
» թար ինձ, ծնողաց և եղբարց իմոց: Որք երկրպագէք՝
» յիշեցէք 'ի Քրիստոս »:

Խաչին վերևն այլ գրած էր. «Նշան Քրիստոսի, լեր
» բարեխաւս իշխանաց յազգէ Բագրատունեաց»: Աբաս

ալէկոց ներքև ծածկուած յուշկապարիկ մը կայ՝ որ կը հրապուրէ զիս նուէթես գուրս արշաւելու: Ա՛հ, Հայկակ, ինչ աւելի զօրաւոր, աւելի յափշտակիչ և աւելի սրբանուէր բան կայ, քան միութեան և կրօնից զուգայարմար ներդաշնակութիւնն, հանդերձ հայրենեաց յիշատակներուն և ցաւերուն:...

Հայաստանեայց Ջրաբաշխութեան վրայ խօսքս չկնքած՝ անշուշտ անդրադարձութիւն մ'ըրիր, որ երկրին զառիվայր դիրքն, լերանց բարձրութիւնն, ուղխից և հեղեղաց սաստկութիւնն, և համեմատաբար անոնց ընթացից կարճութիւնն՝ պէտք էին որ ջրվէժներ և հոսանքներ գործէին. և յիրաւի մեր գետոց անուններն իսկ, ինչպէս Երասխ, Տիգրիս, Ճորոխ՝ իրենց երագ ընթացքէն առնուած են. առաջինն՝ անուանի է իր վտանգներով քարավազ. թափուածքովը՝ ընթացիցը մերձերը, որ հեմայ. Ռուսիոյ ինքնակալութեան հարաւագոյն մասին վրայ է, և անոր ամենամեծ գետերն իսկ այդպիսի սքանչելի և միանգամայն զարհուրելի երևոյթ մը չունին. վասն զի այդ մէհերուն և մեծամեծ ժայռերուն մէջէն իրեն անցք մը բանալու համար, պէտք եղած է որ երկրաշարժն ամբողջ Մեծ լեռը հիմն 'ի վեր տապալէ, և թողու մեր ազգային գետոյն թաւալիլ գահավիժաբար, իբրև փրփրերախ և սանձարձակ երիվար մը: Այդ ժայռերուն յանդուգն դիմակալութիւնը ընդդէմ Երասխայ զայրացին յորձանաց՝ ատեններով մեծն Նահ-Արաս, կ'ըսէր քովինններուն. Ահա ձեզի օրինակ թշնամեաց դիմակալե-

պէս թագաւոր Հայաստանի արևմըլեան հիւսիսային կողմին գաւառի մը վրայ՝ մօտ 19 տարուան, երախայ զաւակ մը թողլով 'ի Նանայէ, որ իր անուն թագաւորէց յետոյ, և կոչուեր Աղարթան:

լու. որուն՝ Այո՛, պատասխանեցին, տէր աղբայ, երբոր այդպիսի զօրաւոր նեցուկներ ըլլան. ցուցնելով իրենն ապառաժ գետափունքը՝ զոր ջուրն կը ծեծէր։ — Եփրատէս, սուրբ գրոց գետերուն պարագլուխը, որուն ակունքը 9000 ոտք բարձր են, Կարնոյ Ծաղկի լեռնէն սկսելով, 300էն աւելի քարավազ ունի, 12 փարսախ միջոց Մեծ և Փոքր Հայոց մէջտեղ։ Ասոր արեւելեան օժանդակն՝ Արածանի, Մշոյ անուանի Ս. Կարապետ ուխտատեղւոյն մօտ՝ բոլորովին միաձոյլ կը թափի բարձրէն, և անկմանը ձայնէն տեղն ալ Կուրկուռ կը կոչուի։ — Վերջապէս Ճորոխ Հայաստանական գետն, քան զառաջիններն աւելի կարճ և երագ ընթացքով, լեռ մը կտրելով անցնելով՝ կատարեալ ջրվէժ մը կը ձեւանայ, և ինչպէս կը վկայէ գերմանացի բնագէտ մը, որ աշխարհիս երեք գլխաւոր մասերուն յայց եղած և զարմանալիքը դիտած է, բաց 'ի Նիակարայի ջրվէժէն՝ գեղեցկութեան կողմանէ ուրիշ մը մերինին չի հասնիր։ — Կ'ուզե՞ս հիմա այդպիսի գետոյ մը վրայ նաւարկութիւն փորձել. մտիր նաւակ մը Արդուինէն, որ Լազիստանի սահմանակից քաղաք է, ինչուան գետոյն բերանները՝ 'ի Պաթում, 6 կամ 7 ժամուան մէջ կրնաս իջնել. կ'ուզե՞ս դարձեալ Պաթումէն յԱրդուին դառնալ. նոյն եղանակով 6 կամ 7 օրուան մէջ կը հասնիս. — կը տեսնաս որ գետոյն յատակն շատ զառիվայր է, իսկ հոսանքն աւելի շատ երագ։ Ուստի մեծ բան մը պէտք չէ յուսալ Հայաստանի գետոց նաւարկութենէն. Թէպէտ և բաւական մեծութեամբ նաւակներ՝ Կուրը և Երասխը կտրելով անոնց խառնուրդէն վեր ալ կ'անցնին։

Սակայն Յունաց պատմահայրն մեզի կը ծանուցանէ, թէ իր ժամանակն Հայք՝ Եփրատայ վրայ կէս բարբարոս՝ բայց հանճարեղ նաւարկու-

թիւն մը կ՚ընէին. իրենց երկրին և օտարին բերքերը կը տանէին, մանաւանդ տեսակ մը արմաւի գինի, բոլորաձև նաւակներով, որոնց կմախքը կամ ներսի կողմը ուռենւոյ ճիւղերով և դուրսը մորթով պատած էր, և ինչուան 5000 տաղանդ[1] կրնային վերցընել: Գետոյն հոսանացը թողլով՝ շիտակ Բաբելոն կը հասնէին. իսկ դարձը ցամաքով կ՚ընէին, այս կերպով. նաւակաց հաստատուն մասերը կը ծախէին, իսկ մորթը՝ հետերնին նաւակով բերած իշոց վրայ դնելով, կը դառնային իրենց նաւահանգիստը, որ անշուշտ չէր նմանէր Մարսիլիոյ: Թերևս քեզի ծիծաղելի երևի այս բանս, բայց աղուաբանն Երոդոտ՝ այդ նաւարկութիւնը՝ Ասորեստանի մայրաքաղաքէն ետև՝ բոլոր այն աշխարհին զարմանալիքներէն վեր կը համարէր:

Գ

Հիմա ջրերը մէկդի թողլով՝ մօտենանք հողուն, փութանք հասնիլ անգործարան արարածոց. և երկրաբանական կազմութեանց բազմամանուած պատկերը ձգելով՝ ջանանք աւելի նշանաւոր ու օգտակարագոյն նիւթերը ու տարրերը քննել. և նախ սկսինք 'ի վաղուց ծանուցեալ ներկական ու հողային հանքերէն: Ո՞ր գեղագործ չյարգեր Հայկաւը, որ կարմրագոյն հող մ՚է, Լեմնոսի կաւուտ հողուն նման. և երկուքն ալ հիմա իր անուամբն կը կոչուին. որոյ նման կաւ մը կայ և 'ի Գաղղիա Լուառ գետոյն երկու ափանցը վրայ, 'ի Պլուա և 'ի Սոմիւր: Ո՞ր պատկերահանին ծանօթ չէ Հայոց հողը, այն կարմիր ներկը՝ որ որմնանկարուց խառնըրդոց մէջ կը մանէ: Թէ նկարիչք և թէ դեղա-

1 իբր 100,000 քիլոկրամ:

գործք կը յարգէին Հայոց քով՝ Թէոփրաստեայ օրերէն'ի վեր, իր գեղեցիկ կապոյտ գոյնովը ճանչցուած, և երբեմն գոճազմի հետ շփոթուած. որ և երբեմն խաղոտ և չիկակարմիր կ'ըլլայ: Դարձեալ հռովմայեցի նկարչաց ծանօթ էր Արմենիոն ըսուած հայկեան կապոյտ և ճերմակ ներկն, որով իրենց պալատներուն պատերը կը զարդարէին, և որոյ լիտրն վեց ֆրանգ կ'արժէր: Իրենց անուանի քանդակագործքն՝ Սուսերամարտիկը ու Պելվետէրէի Ապոլոնը յղկելու համար, Նաքսոսինէն աւելի Հայաստանի յղկաքարը (cotes) կը գործածէին, որ նաև մարգարիտներն ու ազնիւ քարերը յղկելու կը ծառայէր: Իսկ միւս կողմէն, այսինքն յեսանաքարն Հայոց՝ Նաքսոսինէն ստորին կը սեպուէր: — Հիներուն ծանօթ էր Հայաստանի ուրիշ կարծր քար մ'ալ, որ երկաթէն աւելի զօրաւոր նիւթերով՝ կնքոյ դրոշմը կ'ընդունէր: — Նախնիք կը գործածէին նաև հայկական Ոսկէսօսնձոյը Crysocolla armeniaca, որ Մակեդոնիոյ ու Կիպրոսի մէջ եղածէն աւելի ընտիր էր. բայց ափսոս որ հիմա անհետացած է, և չգիտցուիր ուր գտնուիլը. բայց կարծեմ թէ տեսակ մը արջասպ էր, և նոյնն՝ ինչ որ Արաբացիք մեր աշխարհին անուամբը Պուրէք-էրմինէ կ'ըսէին: Դարձեալ ուրիշ տեսակ մ'ալ կը հանէին, Պուրաք-էլէրմանի անուամբ, զոր մեր բժիշկներն հիմակուան Օլթիի վիճակին մէջ կը գտնեն, (Ոսխփէշի արջասպ): Մեր երկիրն այս տեսակ բերոց զանազանութեամբ այնչափ հարուստ է, որ շատ երկայն կ'ըլլայ մանրամասն խօսիլ անոնց վրայ. այս միայն բաւական կը սեպեմ ըսել որ Հայաստան ճոխ է նաև ամեն ազգ կաւերով, մետաղներով ու պաղլեղով, որ Դիոսկորիտեայ[1] ալ ծա-

[1] Բժիշկ և բնագէտ Անաւարզեցի՝ քիչ առաջ քան զժամանակ Քրիստոսի:

Արարատեանները յարգի կը համարին, առանց ու-րոշ տեղերը նշանակելու. այլ կը յիշատակեն յատկապէս, Թորդոմ գետոյն եզերքն, որ Կասպից ծո-վը կը թափի: Մովսէս՝ սուտակն և ակն զանգա-նակը կը յիշէ Եւիլատայ եդեմական երկիրը, Փի-սոնի եզերքը, որ ըստ մեզ է Ճորոխ, և Եւիլատն՝ Թաղաւիք մեր, ըստ Յունաց ընտիր մատենագրաց՝ Թայքէք: Զմռունանք նաև Արածանւոյ աղբերա-կանց մօտիկ Տիադինի վտակաց ձևացուցած գե-ղեցիկ և բոլորաձև ուլունքն այլ:

Իսկ հասարակ քարանց կողմանէ Հայոց լե-ռինքն անսպառելի հանքք են. նոյն ինքն մեծն Մասիս միակտուր սև պորփիւր քար մ՚է, կա-տարը ձերմակ փայլեթէ պատած, որ անշուշտ իր հնոց հրաբորմեգը ուղղահայեաց բարձրութեամ-բըն շատ աւելի վսեմութիւն մ՚ունի, քան Շամի-րամայ մեր լեռներէն կարած կոթողը, զոր Ասիոյ մայրաքաղաքին կեդրոնը կանգնեց, իբրև հին եօթն հրաշալեաց մէկը: Այս քարանց քանի մի կտոր կրնան տեսնուիլ և՛ի Բարիզ Լուվրի գեղա-նայարկ սրահներուն մէջ, զարմանալի քանդակ-ներով և աւելի զարմանալի արձանագրութեամբք ծածկուած: Բաբելոն և Նինուէ մեծաւ մասամբ մեր երկրին ընծայ հարստութիւններովը կանգ-նուեցան ու զարդարուեցան. յայտ է թէ ինքն ալ զուրկ չէր այդպիսի շինուածներէ: Թէ և ու-րիշներէն աւելի աւրըշտկուած ալ է, սակայն դեռ ինչուան երեք հազար մեդր բարձր լերանց գագաթան վրայ ալ բևեռագիր արձաններ ունի: Խօսքս՝ մեր երկրին քարահատից երկարապա-տում ցուցակովը չծանրաբեռնելու համար, այս-չափ միայն ըսեմ որ հայ հողուն տիրող քարերն են պորփիւր և պազալդ: Այս յետինս Սևանայ լճին մօտերը Գառնոյ խորաձորին մէջ հարիւր մեդր բարձրութեամբ կոթողներ ձևացուցած է,

որ կրաւցընէ մոգական և վսեմ տեսարան մը կ՚ընծայեն, արժանաւոր մեծոգի ախորժակաց հսկահասակ Թագաւորին Տրդատայ, որ վախից և անդընդոց վրայ երկընցած սարաստափի մը ծայրը շքեղ հովանոց մը կանգնեց, 'ի վայելս Հայոց Օրհորդին, իր սիրական քրոջը, « Ի համար քեռ իւրոյ Խոսրովիդխտոյ » [1]. վրան տասուերեք դար անցնելէն ետև գետնաշարժով մը կործանեցաւ. բայց իր մնացորդներն, գրեթէ ամբողջ կեցած՝ կը հաւաստեն մեզի՝ որ այդ դաստակերտն Յունաստանի և Հռովմայ ընտիր կերտուածոց վերջինն էր: — Այս բնութեան և միանգամայն արուեստի կառուցած հոյակապ արձաններուն անմիջապէս մօտ՝ ուրիշ մ՚ալ կայ, որ տաչիններուն այդ երկու գերազանց առաւելութիւններէն զատ, կրօնից յիշատակարանն ալ ունի վրան. և է մէկ, կամ թէ լաւ ևս ըսել եօթն եկեղեցի և ներքնափոր քարակոտուր մատուռներ. որոց խոր միայնութեան մէջ ծածկուած մնաց երկար դարեր այն յանգուգն գեղարդն, որ մեր Փրկչին կողը պատռեց [2]:

Կը գտնուին 'ի Հայաստան նաև, թէ և քիչ տեղ, մորմարիոն, ալապաստր և բիւրեղ: Բայց իր քարահատից բազմակերպ տեսակներն իր հըրաբըղխից բերքերն են, որոնք Այրարատայ հազարաւոր եկեղեցեաց շինութեանը գործածուած են, և որոնցմէ դեռ կանգուն են մնացած քանի մը հարիւր, ոմանք ամբողջ՝ ոմանք կիսակործան, տասն, տասնևերկուք դարերէ 'ի վեր. Ժամանակ՝ փոխանակ մաշելու այս գեղին, սև, գորշ և գոյնզգոյն քարերը, կարծես թէ ալ աւելի կարծրացուցեր է: Բոլոր Անիի և իրեն շրջակայիցը մեծա-

1 Խորենացի Բ. Ղ:

2 Այսօր համար կ՚ըսուի Գեղարդայ կամ Այրի վանք:

մեծ շէնքերը այս քարերէն շինուած են. կան այնպիսի եկեղեցիք, որոնց շինութեան մէջ ափ մը կիր գործածուած չէ. Թէպէտ և դիւրին էր այնքան կրային լեռներէն շաղախ շինել, բայց այսպիսի շինուածոց քարերը իրարու կապելու համար՝ երկաթի կամ կապարեայ ճանկեր և թիթեղներ կը գործածէին, և երբեմն զասոնք ալ զանց կ'ընէին:

Այս տեսակ քարերն բնականաբար իրենց ծընունդը մտքերնիս կը բերեն. այն սարսափելի տիտանները որոնք երկրիս կողերը պատռելով մէկմէկ ծխաշունչ լեռ ձեւանալով կանգնեցան կեցան: Այն մարած հրաբուղխներուն համար կ'ըսեմ, որոնց մնացորդներն, ինչպէս նաև հանքային ջրոց առատութիւնն, մեր երկրին բնական կազմութեան մէկ նշանաւոր կերպարանքը կ'ընծայեն. և չեմ գիտեր թէ կա՞յ արդեօք ուրիշ աշխարհք մը՝ որ մերոյն պէս տակն ու վրայ հերկուած ըլլայ այն պղուտոնական ուժէն՝ որ այդ վիթխարի և ահաւոր ելևէջները դրոշմած է իր վրայ: Գաղղիոյ Օվէռնեի մէջ Տօմի մարած հրաբուղխները, գաճաճներ են այն երեք չորս հազար մեդր բարձրութեամբ հսկաներուն քով, որոնք թէ և շիջած են՝ բայց զօրութիւննին աւելի թմրած է քան թէ կորած բոլորովին. և իրենց ըրած աւերմանց հետքը, որ շատ երկար ատենուան բան չեն, անարատ պահած են: Մեր աշխարհքին մէկ զարմանալի ընդդիմերևոյթն ալ այս է, որ եթէ պատմագրաբար նայելու ըլլանք՝ երկրիս ամենէն հին մասն է, և մարդուն բնիկ գաւառն. իսկ թէ որ երկրաբանօրէն քննենք՝ նորագոյն կազմուածներէն մէկն է. և վերջի ժամանակներուն մէջ շատ մեծ խլրտմունք և փոփոխութիւն կրած է: Հրաբուղխներէն բազմաց բռնկիլը պատմական դարէ վերջը հանգչած է, ինչուան կան ոմանք որ հա-

ղար հինգ հարիւրէն, երկու հազար տարիէ վեր չեն եղեր. և մինչև ցարդ յայտնի կը տեսնուին լաւայի գունագոյն հեղեղները, որոնք անճոռնի օձերու պէս ոլորուած են այն հրաբուղխէն բերանա-ցեալ վհին բոլորակը ու ստորոտներն: Նոյն իսկ իրենց վրայի թեփը, (եթէ ներեն ինծի երկրա-բանք այսպէս ըսելու), ամենևին կորուսած չէ իրեն հին փայլմունքը, և մամռուան դեռ վրան քա-չէ կպած: Մեր նախնիք աւանդութեամբ գի-տէին Մեծ լերան փլչիլը, և Աւագ Մասեաց կո-ղը մղոնաչափ մը երկայն բացուած խոր պատռ-ուածքը: Այն դժոխաձև վիհն չէ թէ միայն մեր ազգային քերթողները տաղերգեցուցեր էր իր ահար-կութեամբը, հապա Պայազիդի և Ռումէի նման-ներն ալ. վասն զի այս Ակոռիի որդւոց աչքերն, որ քան զերկրաբաններն աւելի թափանցանց ու-հետազօտս են, գուշակեցին թէ Մասեաց ծոցը դեռ մեծ եռացմունք կան. որ և յիրաւի իսկ 1840ին յանկարծ դուրս պոռթկաց արձըկելով ծուխի սև ալիքներ, շառախ, քարեր ու ջուր, և բոլոր Այրարատայ գաւառը դողացընելով: Ան-շուշտ այդ միջոցին այն սրբազան գագաթանց վե-րայէն հեռացեր էր հրեշտակին Քնոյ, ուր որ մեր դարուս արձակաբանից համերոսն, Մարտիրո-սաց երգիչն (Տաղոպրեան) աղուաբար հանդեր կեցուցեր էր զնա: Վանայ լճին արևմտեան գին-եղող լերանց մէկուն վերջին հրդեհումը 1441ին կը յիշատակուի. իսկ Սիփան, որ նոյն լճին հիւ-սիսակողմը վսեմ կոնաձևով գըրեթէ չորս հազար մեդրէ աւելի բարձր ցցուած է, դեռ ծծմբախառն թեթև շոգի մը կ՚արձակէ. — արևելեան կողմը Վարագ, օտար չէ պղուտոնական կազմուածքէ. իսկ լճին հարաւակողմը դեռ այս տեսակ նշան-ներ ստուգուած չեն ՚ի Ճանապարհորդաց. բայց ծ դարուն վերջերը այդ կողմերը բնակող Ճրդ:

նաւոր մը, Գրիգոր Նարեկացին, Հայաստանի Ս. Բեռնարդոսը, իր տաղերէն մէկուն մէջ հրաբըղխային բորբոքման աղօտ նկարագրութիւն մը կ'երեւցընէ. « Լեռնաթինք խոր վիհ 'ի վեր, ծածկեն » 'ի նոյն շտապ յորձանից. Հրակոծ լերանց ան» ձկին 'ի տապ բոցն 'ի ծաւալ ծով խոր հերձաւ. » Ճապաղ ձեպով դարձ նոյն 'ի դարձ խաղայր » փուլթայր 'ի տեսանել » [1]: Արդէն մեր նախնիք Քրիստոսի թուականին առաջին տարիները այս լերանց մէկուն վրայ կը ճանչնային « տուն կրա» կի, անյագ հրոյ, անդադար այրման աստուա» ծոցն, և քարինս հոսեալ յակն յորդաբուղխ » աղբերն... քանզի վառէին զկրակն՝ քոյրն, և » զաղբիւրն՝ եղբայրն ». Թերևս վասն պայծառութեանն կրակը այլաբանելով 'ի քոյր: Ուրիշ կողմանէ գիտենք որ աս ծովակիս ջրերը աւելի լեղի են քան թէ աղի. մանաւանդ եղերքները անանկ խառնուած են բորակային բաղադրութեամբ՝ որ կտաւները լուալու կը գործածեն: Իսկ Սեւանայ լճին՝ բնաւ տարակոյս չկայ հրաբըղխային կազմութեանը վրայ. կրնանք ըսել թէ հրաբըղխի խառնարանաց մեծագոյնն է, սեպացեալ և կոնաձև քարալեռներով շրջապատուած, որոնցմէ տասուերկուքէն աւելին իրենց առանձին բաժակներն ունին ջրով լեցուած կամ պարապ: Ասոնց ետին կը բարձրանայ դէպ 'ի արևմուտք վիթխարին Արագած (ռամկօրէն Ալակեզ), բոլորովին զատ առանձնակ, և Հայաստանի լեռներուն ամենէն լայնանիստը և ստոյգ չափուածներուն մէջ բարձրագոյնն՝ Մասիսէն վերջը, որուն հետ, ըստ Ռիտտերայ աշխարհագրին գեղեցիկ մտածութեանը, կը ձևացընէ մեծ դրան մը երկու կամարակալները, ուսկից կ'անցնին Գան

1 Տաղ Ջրօրհնեաց:

գիսի եզերքներէն դէպ 'ի Պոնտոս ու Կովկաս ճանապարհորդող ամենայն կարաւանք ։ Արագածու կատարը չորս գագաթ ճղքուած ու ցցուած է, որոնք իր խառնարանին եզերքը դիտակ կեցած են, և պայծառ ծծումբ ունին կողերնուն վրայ ։ Կ'երևի թէ Քրիստոսի թուականին առջի դարերուն մէջ դեռ ասոր պատառուածքներէն ծուխ կը ցնդէր. վասն զի ԺԴ դարու դիւրահաւատ մատենագիրներէն ոմանք կը պատմեն թէ լերան խորը քարանձաւ մը կայ, ուր մեր Լուսաւորիչն մատուռ մը շիներ ու կանթեղ մը կախած է, որ ինչուան 'ի կատարած աշխարհիս վառ պիտի մընայ ։ — Մօտերս բրուսիացի ճանապարհորդ մը Հայաստան հիւսիսէն հարաւ քալելու ատենը, երեք գիշեր ետևէ ետև տեսեր է Այրարատայ լերանց վրայ ցոլացեալ լոյս մը. տեղացիք ասիկայ սեպեր են հաւաստի նշան մը գետնաշարժի Պարսկահայոց մէջ, և յիրաւի նոյն օրերը Դավրէժ շարժ կ'ըլլայ ։ Այն նահանգը որուն շահաստանն է այս քաղաքս, մինչեւ Ատրպատական անունը կրած է, որ կը նշանակէ փեղի կամ տան-հրոյ, և ունի, ուրիշ լեռներէն զատ, Սաւալանի հրաբղխային սեպուհը, որ դրեթէ Սպիտակ-լերան չափ բարձր է ։ — Բայց Հայաստանի և բոլոր յառաջակողմն Ասիոյ մէջ ամենէն կենդանի հրաբըղխի զօրութիւն և նշան ունեցող լեռն է Թանտըրէկ (գուցէ Թոնրակ կամ Թոնդրակ ըստ Նախնեաց) իբր 10,000 ոտք բարձր, Պայէզիտ քաղքէն երեք կամ չորս փարսախ հեռի դէպ 'ի Վանայ ծովը. որուն գագաթը ամենևին նման է Վեսուվի, բաժակը շատ ընդարձակ և խոր, յատակը մեծամեծ քարինք և բիւրղացեալ ծծումբ, և շատ տեղէն անդադար ջրային և ծծմբային գոլորշիք կ'ելլան ։ Լերան մէկ կողմը կայ ուրիշ բաժակ մ'այլ ջրալից. և անոր մօտ տեղէ մը մեծ շըչմամբ աղբիւ-

ըաբար շոգի կ՚ելնէ, ուր կ՚երթան բժշկութեան համար։ Աւելի զարմանալի յատկութիւն մ՚ալ է (Նարեկացւոյն բառով ըսելով) Մերճնաբինդ որոտմունքը, որ լերան փորէն կու լսուի երբեմն երբեմն, և Ամերիկայի Անտեսայց հրաբղխից (պրա-միտօս, պոռոշիւն) ըսուած ձայներուն կու նմանի։ Ռուսք և Օսմանեանք իրենց վերջին պատերազմին ատեն՝ Պայէզիտու երկու կողմը բանակած, գիշեր մը յանկարծ որոտմունք լսելով՝ կարծեցին Թնթանօթից ձայն, և մէկէն զինուած իրարու դէմ ելան. ինչուան որ իմացան բնութեան դաղտնիքը։

Քանի՛ վսեմ և ահաւոր պէտք էր ըլլար Հայաստանի երևոյթը քանի մը հազար տարի առաջ, երբ ներքին ծովերով ակօսեալ, յառաջակողմեան Ասիոյ բարձրագոյն տափարակին վրայ տնկուած հուրհրատոր հսկայ հրաբուղխներէն, իբրև բնութեան լապտերներէ, բարկաճայթ բոցեր կը ծաւալէր այն նորածին ժողովուրդներուն վրայ, որ դեռ անստոյգ քայլերնին շարժել կու սկսէին դէպ 'ի անծանօթ երկիրներ։

Դ

Անցնինք հիմա այս կնճռոտ կերպարանքներէն՝ անոնց բուն ծոցը. բայց ես չեմ ուզեր, Հայկակ, Պոսիդոնի երեքժանեայն հարուածներովը քեզի Պլուտոնի մթին գաղտնիքները ցուցընել. չեմ ուզեր և ոչ իսկ կրնամ գիմացդ դնել ինչ որ բնութիւնն ծածկած է իրեն ալոյցը մէջ, ուսկից աշխատաւէր իմաստունն՝ հաւասար համբերութեամբ և ճարտարութեամբ ճոխացած՝ խողովակի մը ձեռքով խաւարային անդունդներէն դուրս կը հանէ կը մղէ պիտանի ջուրը։ Միայն Հայաստանի մե-

րի ոսկեհանքն կը բանէին, և եօթը ջրով լուացուելուն համար՝ հարկեցան թողուլ: Նոր ատեններս քանի մը երկրաբաններ ստուգեցին որ Կարնոյ լեռներուն կազմուածքն նման են Ալթայի լերանց, և չտարակուսեցան որ հանքեր ալ պիտի ունենան, բայց աւելի չփնտռեցին: Յիշելու է որ Կարնոյ գլխաւոր գեղերէն մէկն Արծաթի կ'ըսուի: — Մեր հինգերորդ դարու ազգային պատմիչք կը խօսին Արտաքատայ ոսկեհանքերուն վրայ, առանց տեղը ցուցընելու: — Հայաստանի Կուր գետով ոռոգուած հիւսիսային արևելեան կողմը, գաւառ էն Ուտիս վերաբերացուք թէ հանքաց և թէ գետոց մէջ ոսկւոյ քանակներ: Այս տեղերուն աշխարհագրական անուանց մէջ ալ շատ կան ոսկի նշանակողք: Նոյնը հաստատեցին նաև արևմտեան Հայաստանի հանքերն. զոր օրինակ, անցեալ դարուն սկիզբը, Ոգգէրի Ճանապարհորդութեան ժամանակ, Արղանայի մէջ ոսկի ալ կը հանէին: — Արդէն յիշած արծաթահանքներնուս վրայ աւելցընենք Ատրպատականի և Քիւրտիստանի մէջ յայտնուած հանքերը, որոնք բանուած չեն: Մահադի խալիֆային ատէն (775-785), ժամանակակից պատմագիր մը կը վկայէ որ Հայաստանի մէջ զուտ արծաթի լեռներ գտնուած են, բայց որոշ տեղը չի նշանակեր: — Աստ են 'ի Հայս ոչինչ հանքերն, մանաւանդ Գուգարաց աշխարհին մէջ, որ Գողայ և Մաղոզայ նախնական երկիրն է, վերին Կուրի հոսանաց վրայ. բովանդակ լերանց շարք մը Պղնձահանք անունը կը կրէն, և գործաւորներ միշտ կը բանին. նոյնպէս կը գըտնուի պղինձ 'ի Գարապաղ, Արղնի, Սպեր, և Մոկաց գաւառը 'ի հարաւակողմն Վանայ լճին: Երկաթն աւելի առատ է և զանազան տեսակ, մանաւանդ հարաւային Հայաստանի մէջ. յիշեալ լճին արևմտեան հարաւակողմը կայ Երկաթահանք և Կա-

պտղաբերապէս ըստուած լեռն : — Կապադարէն զատ Հայաստան կ'ընծայէ կամ կ'ընծայէր գինի, ձիթեղ, ոսկի, անագ, և այլն։

## Ե

Դառնանք հիմայ քննելու մեր երկրին երեսը և գործարանաւոր արարածները։ Երկրին ձեւակերպութիւնն և կլիմայն, ինչպէս որ տեսանք, մեզի բարգաւաճ բուսաբերութեան մը յոյս չեն տար, մանաւանդ մեծամեծ և թաւ ծառերու։ Պոնտոսէն 'ի Պարսկաստան գնացողն ճամբուն վըրայ գրեթէ բնաւ չի տեսներ անտառ մը կամ բարձր ծառեր, այլ թուփեր, մացառներ և հազիւ ուրեք քանի մը ծառ մեկտեղ։ Բասեն՝ Արարատայ մեծագոյն դաշտն՝ ուր Երասխ կը սկսի իր ընթացքը, 'ի հնուց Անփայտ կ'անուանէր. բնակիչք երկրին՝ փայտի տեղ իրենց տան վառելիքը անասնոց աւելորդքը կը հոգան. բայց տուներնին ալ սովորաբար կէս ստորերկրեայ ըլլալով՝ բլուր մը կամ բարձրադիր գետնի մը կող թաղուած, ցուրտէն կ'ապահովին։ Քսենոփոնի տուած նկարագրութիւնն այս տներուն վըրայ՝ յետ 23 դարուց հիմա ալ կը ստուգուի։ Շիտակը խոստովանելով, փայտի պակասութիւնն ոչ այնքան բնութեան՝ որքան բնակչաց անհոգութենէն է. վասն զի նոյն հեղինակն և Կ. Կուրտիոս և այլք կը յիշեն ծառոտ լեռներ և տափեր՝ նոյն Երասխայ գեղեցիկ հովտին մէջ, զոր Հռովմայեցիք հաւնելով կը կոչէին Երասխեան դաշտեր (Campi Araxeni) և անկէ բարեբոյս չէին գտներ Ասիոյ մէջ. այնչափ մըշակութիւնն մեր նախնեաց առեն կրնար կոկել շտկել զանհարթութիւնս բնութեան, եթէ այս գեղեցիկ դուստրս Արարչին՝ կրնայ անհարթու-

թիւն մ՚ունենալ։ Հիմա ալ կը գտնուին անտառք 'ի Հայաստան. և այդ Անփայտ Բասենոյ մօտ՝ Սօղանլու լեռներն 20-25 փարսախ երկայն տեղ ծածկուած են պէս պէս տեսակ եղևնեօք, սոճեօք և թեղօշիւք, յորոց ոչ միայն բնակիչք կողմանցն, այլ և պետութիւնք Օսմանեանց և Ռուսաց փայտ կը կտրեն 'ի պէտս շինութեան ամրոցաց, որ Հայաստանի մէջ իրարու դէմ կանգնած են. (վասն զի Դ դարէն 'ի վեր աշխարհնիս ողբալի բաղդ մը ունեցեր է՝ ըլլալու միջասահման, կռուատեղի և որս երկու նախանձորդ և դիմամարտ տիրապետաց)։ Այս լեռներէն կտրեց Հուլաղուղանի որդին իր Ապաղա բերդին հիմնարկութեան նիւթերը։ — Սօղանլուի արևմտեան կողմն են մայրևոր լերինքն Տայոց, (Դաօխի Հելլենաց) որք կռուեցան ընդ գնդին տասն հազար Յունաց, որոց առաջնորդ էր Սոկրատայ բարեկամն Քսենոփոն։ — Արևելեան կողմն, մեր Սիւական և Արցախ աշխարհներն մայրոտ և մացառոտ են, որոյ համար ալ հիմա Ղարա-պաղ կ'ըսուին. (Թերևս Ար-ցախ ալ նոյնպէս իմաստ մ'ընծայէ)։ Արևմտեան կողմն՝ Բարձր Հայոց և Ծոփաց միջոց շատ անտառներ կան, նաև կաղնեաց և ընկուզենեաց։ Իսկ հարաւակողմն մեր երկրին, Տիգրիսի հովտին և Վանայ պարապատին միջոց, մանաւանդ այս եզերքինիս հարաւային և արևմտեան կողմերն, այնքան անտառոտ է, մինչև մեր նախնիք Փայփի-աշխարհ կ'անուանէին Տիգրիսի և Վանայ անջրպետող լեռնավայր սահմանը։ Նոր ճանապարհորդք այդ անտառաց մէջ գտան տեսակ տեսակ կաղնի ծառեր, որ ինչուան հիմայ անծանօթ էին Եւրոպէացւոց, և բերին իրենց երկիրը տնկելու։ Այս անտառներէն կու գայ ազնուագոյն Գզբոռն և Գաղղէն, զոր օդոց մեղր կ'անուանեն կամ մանանայ. և անկէ՝ Տարօնոյ երկիրն, որ է այժմեան

Մշոյ գաւառն, Մեղրաբուղխ կ'ըսուէր: — Այրարատեան լերանց վրայ Թխածննեաց պուրակներ կան մինչուան 7800 ոտք բարձր տեղեր, և գինի ծառեր մինչուան 8200 ոտք բարձրութեան վրայ. իսկ Թփատեսակ ծառեր՝ ալ աւելի բարձր կը գըտնուին. մինչդեռ յԵւրոպէ որ և է սահմանի տակ՝ այդչափ բարձր տեղ ամենևին ծառ չգըտնուիր: — Գուգարաց երկիրն մեր նահանգաց ամենէն հիւսիսագոյնն, ամենէն ալ ծառոտ և շատաբոյսն է, իր խորանիստ դիրքին համար, Կուրայ գեղեցիկ պարահովտին մէջ. կարմիր և ճերմակ կնձնիք կ'աճեն հոն ընդ կաղնի, հացի, պողի, և պէսպէս եղևնի ծառոց: Մեր Ե դարու օրինակագիր հեղինակն աշխարհագրութեան՝ կը յիշէ հոն սօսափի ծառն և հաճարածառ ալ: Նոյն հեղինակն (Մովսէս Խորենացի) կը յիշէ Արարատայ մայրաքաղաքին, Արմաւրայ, վսեմական սօսիները, որոց տերևոց սօսաւիւնն՝ հմայից ազդուածն էր մեր նախահարց. մեր ատեններս կարծուեցաւ թէ այդ ծառերուն մեծամեծ կոճղերը յայտնուեցան հողուն տակ՝ այն տեղուանք, ուր երբեմն կը մտնէր Երասխ, որ աւելի յեղյեղուկ քան ըղձամանակն՝ յետ քառասուն դարուց փոխեր է իր ալեաց ընթացքը և հեռացեր 'ի բնակարանէ որդւոցն Հայկայ: Այս տեսակ սօսիներէն դեռ հատ մը կենդանի է և ամբողջ հրապարակի մը կէս կը ծածկէ յՕրդուատ, հին քաղաք՝ մօտ քարավազին Երասխայ. բունն գետնէն երկու մետր վեր տասն մետր շրջապատ ունի: Կրնայ կարծուիլ թէ արևելեան սօսին սեփհական ըլլայ Հայաստանի. յայտնի է որ Հռովմայեցիք մտուցին այս ծառը յարևմուտս:

Այս աշխարհակալ ազգին վրայ ընկնալով խօսքերնիս, յարմար կը սեպեմ յիշել հօս, որ իրենց աշխարհակալութեան լաւագոյն ապացուած-

ներէն մէկն էր օտար երկրի բերքերն ընտանեցընել: Հայաստան ընծայեց անոնց ուրիշ բոյսերէ զատ զԾիրանն, որ դեռ Իտալիոյ մէջ իր անուամբն արմենիագա կ'ըսուի. և լատիներէն malus armeniaca (մալուս արմենիագա), այսինքն հայկական խնձոր. որ կ'երևայ թէ նոյնն է զոր Պլինիոս սալորոց մէջ կը դասէ, և անուշահոտութեանը համար Նախագաս 'ի սալորս: Ի՞նչ ըսենք Հայոց Խնձորոյն համար, որ այնպէս անուանի էր Արաբացւոց մէջ, մինչև իրենց բանաստեղծներէն մէկն՝ արշալուսոյ մէկհատիկ նմանութիւն կը գտնէր օրիորդ մը՝ հայկական խնձոր խածած: — Ընդհանրապէս սովորական համեղ պտուղք առատ են մեր երկիրը, և ամեն տեսակն ալ կը գտնուի, բաց 'ի Թզոյ և 'ի ձիթապտղոյ. սակայն ասոնք այլ հարաւային և ցած կողմեր անծանօթ չեն:

Իսկ մահացուաց ամբրոսեան օշարակ տուող ծառն. — որթն՝ առաւել քան զհասարակաց կարծիս կը յաջողի 'ի Հայաստան. որովհետև բուսաբերութեան սահմանագիծն շատ բարձր է 'ի Հայս, երկիրն կը բերէ աղէկ խաղող, որոյ և առաջին հայրենիքն ալ եղաւ յետ ջրհեղեղին: Երասխայ պարահովտին մէջ ընտիր այգիներ կան. և Երևանայ գինին նարնջագոյն, քաղցր և միջահոտ՝ Սպանիոյ, Ունկարիոյ և Պորտուկալիոյ լաւագոյն գինեաց հաւասար կը սեպուի: Անվարժից խրատ կու տամ Գանձակայ գինին շատ չփորձել, որ թէ և անուշահամ՝ սաստիկ զօրաւոր և գլխահար է. իսկ Գարապաղի գինիներն անոյշ և գրեթէ եղոտ են: Տապանակիր լերան վրայ, յԱկոռի 4000 ոտք բարձր տեղ մը, յանյիշատակ ժամանակաց՝ այգի կը մշակէին 'ի յիշատակ այգեգործութեան Նոյի. այն լերան բլրոց մէկն հին ատեն Գինոյ Բլուր կ'անուանէր, վտակ մ'ալ Գինեգոյն Գետ: Վանայ պարտատափին ալ մինչուան 1700

մեդր բարձրութեան վրայ դեռ այգիներ ունի որ երկայնողկոյզ խաղող կու տան, բայց չեն համով ինչպէս Արարատայն։ Կարնոյ բարձրաւանդակին ոչ այգի ունի և ոչ պտուղ. որոնց պակասութիւնը կը լեցընէ իրեն Ծորոխայ հովտին Թորթում վիճակին. բայց անոնց փոխարէն կը բերէ ազնիւ-արմտիք. իսկ Սեւանայ պարտաստանին աւելի բարձրագոյն ըլլալով՝ ատոնցմէ ալ զուրկ է։ — Յորենն ընդհանրապէս ընտիր է, և կայ մեծահամ տեսակ մը, որ և շատ կոչուն կամ տաճիկ խըմոր կու տայ։ Ո՞ր ազգային պատմագէտ չէ յիշեր « արգաւանդ և բերրի... Շիրակայ ամբարքն »։ Ուրիշ տեսակ արմտիք ալ լաւ և առատ են։ Իսկ բանջարեղէնք և խաւարտք, Թերևս ամեն տեղէ աւելի պատուական և բազմատեսակ. 300 տեսակէն աւելի կը համրուին ընտիր տեղական անուանք։

Հայկական Փլորային շատ հոգ չունենալով պարտիզաց և ջերմանոցաց, աւելի վայրենի ու խոպան տեղուանք կը սիրէ. իր լեռնային բուսաբերութիւնն պէտք է բուսասիրաց համար շատ հետաքննելի ըլլայ։ Վերջին սահման բուսաբերութեան ՚ի Հայս 4000 մեդրէն աւելի վեր է. անկէց ալ բարձր՝ միայն մեծին Մասեաց վրայ կը գըտնուին գեղաստղիկ (aster pulchellus), մինամիրգ քնքուշ (astragalus mollis), կանթեղնիկ քարաբոյս (campanula saxatilis) և այլն։ Հռչակաւոր բուսաբանն Բիդոն Դուռնըֆոր՝ որ անցեալ դարուն սկիզբները կը ճանապարհորդէր ՚ի Հայաստան, չէր դժուարեր դրախտին նշանները տեսնել ՚ի Կարին և յԷջմիածին. այնքան զմայլած էր այն կողմերուն հարուստ և գեղեցիկ բուսաբերութեան վրայ։ Հիմակուան բուսաբանք և շրջագայիկք թէպէտ և այդչափ չեն զմայլիր, բայց դժգոհ ալ չեն։ Անոնց նշանակած ծաղկանց

մէջ, չեմ գիտեր որ ցեղին մէջ դասելու է Աղբե-րոց-ալին ըսուած գեղեցիկ ծաղիկն փոքր և փար-գաձև, և այնպիսի վառվռուն թանձր կարմիր գունով՝ որուն նման մը չեն գտած ականատես վկայք. Թերևս աւելի դիւրին հնարք մը գտած է մեր միջին դարու գուսանաց մէկն, իր սիրելւոյն նմանցընելով այդ ծաղիկը.

« Ա՜յ աղբերաց արուն՝
Որ բուսար մէջ քարերուն,
Աչուիդ 'ի նարկիզ նըման,
Մէկն 'ի քուն ու մէկն արթուն »։

Ինչպէս անունն և երգիչն կը յայտնեն՝ այս ծա-ղիկս սովորաբար կը գտնուի աղբերաց եզերք քա-րերու սորեր. և անշուշտ եթէ ծանօթ ըլլար հի-ներուն՝ Ովիդիոսի այլակերպութեանց գեղեցկա-գոյն նիւթ մը կ'աւելցընէր։

Պէտք չէ մոռնալ նաև խոտերը և բժշկական բոյսերը, զոր Հայաստան կ'ընծայէ, և հին ատեն աւելի ալ առատապէս կ'ընծայէր գեղագործաց. գրեթէ բոլոր Գալիենոսի և Էպուաքինայի գործոց մէջ յիշուած և հայերէն թարգմանուած բոյսերն՝ իրենց բնիկ ազգային անուններն ունին մեր լե-զուին մէջ. ըսել է որ մեր երկրին մէջ ալ ծանօթ էին։ Ի զբօսանս բանասիրաց յիշենք զՄանրագորն և զՓէնոնէա, որոնց՝ հայկական Եսկուլապեայ հե-տեւողքն՝ զարմանալի յատկութիւններ և կերպա-րանք կ'ընծայեն։ Չմոռնանք հռչակաւոր Համա-սպրամն կամ Համասփիւռն ալ[1], որոյ ցօղունն 12

1 Ըստ բժշկարանաց՝ Համասփիւռն կը գտնուի 'ի Բա-սեն՝ Հասանղալէի մօտ, և 'ի Սուրմառի։ Հոռի ամսոյն 23ին կը բուսնի և կթոց (քաղոց) ամսոյն 27ին կ'անցնի. որ ըստ անշարժ տարւոյ աշնան և ձմրան միջոց է. բայց որով-հետև ցուցի տանուտէրութեան ատեն փնտռել կը հրա-մայէ, մայիսի մէջ պիտի քաղել ծաղիկը։

ձիւղ կը բաժնուի կ՚ըսէին. և ծաղիկներն զանա-զան գոյն ունէին մէկմէկէ պայծառ. այս բոյսս քա-րատ լերանց ստորերը ծածկուիլ կը սիրէր, և որո-շեալ օր մը կը յայտնուէր գիշերանց լուսնի լու-սով. շատ տեսակ զօրութիւն ունէր, ինչուան սը-րամտութիւն ալ կը պարգևէր. և հեղինակ մը վկայեր է պարզմտութեամբ թէ այս բոյսս « գը-տայ, և չարին փորձեցի. երանի՜ է նմա որ զբարին գործէ »: — Հռովմայեցիք Հայաստանէն և Պարս-կաստանէն մեծ փափագով և ոսկւոյ կշռոքով կը գնէին լաշէրէշէլամ կոչած բոյսը, որ հաւանօ-րէն է ոդան ըստ մեզ, և անոր խէժն՝ անգուժափ, թէ և չարահոտ. գուցէ և հայկական ազնիւ խա-ւծդէղն ըլլայ:

Մեր երկրին անուանի և անծանօթ բուսոց մէջ յիշենք ազգայնոց՝ փնտռելու հոյնոյն ծնունդ ը-սուածը, որուն կուռքը Ղփանիներուն օրացու-ցին մէջ նշանակուած էր յունիս ամսուն, և կ՚ը-սուէր թէ ձիթապտղոյ նման է. (մի՞թէ փշատին է, որ շատ հասարակ և սեփհական է Հայաստանի, կամ ծուաղենին): — Ցեղին կարգ բուսեղինաց Խոտ և Սէզ անուանի են 'ի Հայս վասն ընդար-ձակ մարգաց և արօտից, որ տարուէ տարի կը նուացանեն միլիոնաւոր ոչխարներ, և կը զրկեն աւելի դէպ 'ի հարաւ և յարևմուտս մինչև 'ի Ստամպօլ: Այս մարմանդքս և արօտքս հազա-րաւոր տարիներէ 'ի վեր կը քաղեն կը բերեն 'ի Հայաստան բազմութիւն հովուաց շրջակայ կող-մերու և վրանաչու տոհմեր շատ հեռու աշ-խարհքներէ: — Խոտերու մէջ գտնենք տեսակ մը օէղ հայկական (բիմբրինելլա, pimprenelle), կամ մանաւանդ ձահձաց-մատնիկ (dactylus li-toralis) որ կը նուացանէ ամենէն ընտիր և ամե-նէն հին ձանչցուած որդն կարմրոյ, հռչակեալ իր շառափայլ գունովը, որով Թագաւորաց ծիրա-

նեք և հրովարտակք կը ներկուէին, զոր կը յիշէ և Դիոսկորիտէս։ Արաբացիք իրենց տիրապետութեան ատեն այս որդը կամ կարմիրը մտուցին յԵւրոպա. հիմա Ռուսք անկէ շա՜տ կը քաշեն. և դեռ Էջմիածնի կաթուղիկոսաց կոնդակներն կը գրուէին այս Արարատայ նշանաւոր բերքով, որուն նմանը յԵւրոպա կը գտնուի միայն 'ի Լեհս, և յԱմերիկա՝ 'ի Մեխիքոյ. ուրիշ ամեն ցեղ որդերն կարմրոյ (որոց յիսունի չափ տեսակ կայ) շատ արժէք չունին։

## Զ

Այս պզտիկ որդը մեզի առաջնորդ առնըլով՝ բուսական ցեղապետութենէն անցնելու 'ի կենդանականն, բնականապէս նախ իր կարգին կուգամք. և անտարակոյս կրնամք գտնել Հայաստանի մէջ քանի մը նորատեսակ միջատներ և մանաւանդ պատենաթև ցեղէն։ Գերմանացի բնագէտ ճանապարհորդ[1] մը հազարաւորներ ժողոված է ատոնցմէ և իր աշխարհէն զանազան բնապատմութեան հաւաքարաններու բաժներ է։ Իր՝ հայրենակցաց մէկն ալ[2] Հայոց արևելեան նահանգաց մէջ կը նշանակէ տեսակ մը մեծ ճպուան, որ իր ճռուողմամբը կրնար մրցիլ Թէոկրիտեայ սրնգափողից հետ։ — Այս կարգի կենդանեկաց թագուհին Մեղուն, կ'ընծայէ մանաւորապէս յԱյրարատ և 'ի հարաւակողման գաւառս՝ իր պատուական վաստակը, որ մեր երկրին գլխաւոր վաճառոց թուակից է։ — Շերամ որդոյ դարմանն

1 Վագներ։
2 Գոլենադի։

շատ հին չէ մեր երկրին մէջ. հիմա կը յաջողի Կապադովկիաներին մօտ գաւառաց մէջ։

Ուրիշ և բարձրագոյն կարգ մը կենդանեաց, Ձկանց, արժանի է մտադրութեան, թէ և մեր աշխարհն շատ քիչ կամ թէ բնաւ չունի ծովեղէնքը։ Լոսոսին (Saumon) մարդաչափ մեծութեամբ՝ Կասպից ծովէն գալով վեր կ'ելլէ Երասխայ և Կուրի մէջ, և այնքան առատ՝ որ միայն ձուերը կը հանեն աղնիւ աղկիթ (խաւիար) շինելու համար, և միսը կը թափեն։ Հայաստանի ամենէն հասարակ և ծանօթ ձուկն է Կարմրախայտ, որ ամեն գետոց աղբերակաց մէջ կը վխտայ, և խնչուան Եփրատայ 9000 ոտք բարձր ականց մէջ, 'ի Կարին։ Երասխ կը բերէ երկայնաձև Ճանարը, և թանձրամարմին Լոքը, որ Եփրատայ և մանաւանդ Արածանւոյ մէջ շատ վիթխարի մեծութեամբ կը գտուի և Նհանգ կ'անուանի, իբրև կէտ ձուկն։ Նոյն տեսակէն կարծուի թէ գտուին Հաւչակայ փոքր լճին մէջ, որ շատ ձկնոտ է. մինչդեռ անոր մօտ՝ Վանայ աղի ծովն՝ որ մեծագոյն է քան զամենայն ծովակս յառաջակողմեան Ասիոյ, և անոր համար կոչուի Ծով Աղթամարայ (յանուն գլխաւոր կղզւոյն), միայն մէկ տեսակ բնակիչ ունի, աղտի ձուկ մը, տառէխ. որ պատուական որսունդ կ'ըլլայ և շահաբեր վաճառ մը, վասն զի աղած և չորցուցած կը ղրկեն չորս կողմի գաւառները, 'ի Վրաստան և 'ի Պարսկաստան[1]։ Սեւանայ անոյշ ծովակն որ փոքր է քան զԱղթամարայն և բարձր քան զայն (6800 ոտք յերեսաց ծովու), ըստ աւանդութեան բնակչաց եզերացն՝ 12 տեսակ ձուկն ունի։ — Ուրիշ լճակ մը այրա-

1 Նշանելի է որ Յոյնք աղած ձկան (և մսի ալ) տառէխ անունը կուտան. τάριχος, տարիխոս. որ և է աղածն ալ տառէխխին կոչեն։

բառեան լերանց պարուն ստորոտը, Կոգայովտի շամբին, որ հիմա Գոլճք-կէօլ կը կոչուի ձկանց առատութեամբն, տարեկան միլիոն մը ֆրանգի շահ կընայ տալ. անոր համար Ռուսաց և Օսմանեանց յետին սահմանաչափութեան ատեն՝ վէճի առիթ մը եղաւ:

Հիմա Թողլով ձկնաւորաց քննել Հայաստանի գետերուն մէջ այն մահահամ սև ձուկը՝ զոր կը յիշէ հին պատմիչն Կտեսիաս, կ'ուզէի որ մեր տեղագրերնիս աչք մը տային 'ի վերայ բովանդակ լճոց՝ որ Հայաստանի մեծ և փոքր լճերը կը ձևացընեն, և իրեն նշանաւոր կերպարանք մ'այլ կու տան: Աղթամարայ ծովէն չհեռացած՝ պէտք է դիտել Որմեայ ըմպելի կամ Կապուտան ծովը, որ առաջինէն աւելի երկայն է, թերևս աւելի այլ ընդարձակ: Այս երեք յիշեալ մեծամեծ լճաց հետ չորրորդ մ'այլ՝ Ծովակն Հիւսիսոյ՝ որ հիմա Չըլդըր-կէօլ կ'ըսուի, յարևմտեան հիւսիսակողմն Հայոց, մեր երկրին երեսաց վրայ՝ տրամանկիւն մը կը ձևացընէ, և կենդրոննին կամ երկոտասնեակ մը մանր լճակաց: Յարևմտակողմն հարաւոյ՝ բաց 'ի Ծովք (Կէօլճիւկ) լճէն, կայ բազմութիւն լճակաց այն լեռներուն վրայ՝ որ ասոնց պատճառաւ Բին-կէօլ կը կոչուին: — Հայոց մեծ ու փոքր քառասնէ չափ լճերուն միահամուռ տարածութիւնն կրնայ 10,000 հեկտար համուիլ: Ընդհանրապէս այս լճերուն ափունքն նուազեալ բուսաբերութեամբ, գրեթէ զանազանութեամբն և վսեմական տեսարաններով գերազանցեն քան զլիճս Զուիցերեաց. բայց ամենէն գեղեցիկ և վառվռուն տեսարանն իրենց թևաւոր բնակիչներն են:

Թերևս չկայ երկիր մը որ այնքան բազմաթիւ և բազմազան ջրային թռչուններ ունենայ, ինչպէս Հայոց լճերն և մօրերն: Այս եղքի տեսակ ջըշեղջեց մէջ անուանի է Կարնոյ շամբն

կամ մօր և ծով (սողլըգ)․ որոյ Թռչնոց հաւ-կիթներն բաւական էին շրջակայ գեղերու բը-նակիչները կերակրելու, ըստ վկայութեան մեծի պատմչին մերոյ, որ կարծեմ քեզի չափազանցու-թիւն մը կ'երևնայ․ բայց ինչ պիտի ըսես տեղ-ւոյն անգղիական հիւպատոսարանին և վաճառա-կան գործատանց զբօսասէր պարոններուն վկայ-ութեանը, որք կը հաւաստեն թէ տարւոյն կեն-դանաբեր եղանակին մէջ՝ շամբին բոլորտիքն մին-չև բաւական հեռու միջոց՝ գրեթէ անընդհատ կը ծածկուին հաւեղնյաց երամներով․ մինչև համար-ձակ ձիագնացութեան արգել ըլլալ։ Այս դաշ-տիս մէջ (Կարնոյ) համրած են աւելի քան 200 տեսակ Թռչնոց, շատն ջրային։ Գրեթէ բովան-դակ Թռչնական ցեղից չորսին երկքն ճանչցուած են 'ի Հայս, մանաւանդ բարձրասարունք, մաշկո-տունք, ճնճղկաց ցեղքն, և գիշահաւք․ այս երկքի ցեղիս մէջ արժանի են յիշման լաշհաւն, որ է գառնակեր մեծ անգղն (գոնդոր), և Սպերոյ ու Արարատայ բազէք, որ շատ ճարտար են յոր-սալ իրենց դաստակիցները․ աղէկ վարժածներն ինչուան 200 ֆրանգ կ'արժեն։

Որսոյ կամ վայրի հաւուց մէջ նշանելի են մեծ կաքաւն՝ նման հնդկայնոյն, և ուրիշ տեսակք կաքաւուց․ սարսարեկք (bécasse, մեղլինփէկ), ա-քար (bécassine), աքլոր (râle), Թանձր (outarde), սալամբ (francolin), հասարակ փա-սիան և լոր։ Ջրահաւուց մէջ զանազան տեսակք վայրենի սագի, բադի և կարապի, հաւալուսն կամ չքխոթան, արօր (morillon), հողամաղ (harle), որոր (mouette), և չնորոր, լուզիկ (plongeon), տեսակ տեսակ տառեղանց (héron) և ծիծռանց ջրայնոց․ ցեծ կամ քաջահաւ կանաչ և սեաւ (ibis)․ և երկու աշխարհածանօթ պան-դուխտքն, կռունկ և արագիլ, որք ինչպէս առ օ-

տարս՝ այսպէս և 'ի Հայս մանաւոր պատիւ ու-նին[1]։

Մեր հին Թագաւորք բաց յընդհանուր որսա-պետէն (Որսապետն արքունի) ունէին և հաւոր-սութեան վերակացուս և Թռչնապահս, և Թերևս ասոնք էին Հաւնունիք. ոչ սակաւ տոհմք և ցե-ղապետք Թռչուններէ առած էին իրենց անունն, ինչպէս Արծրունիք, Բազէակալք, Կորապունիք, Աղաւնունիք, Կռունիք, և այլն. և այս Թռչուն-ները կամ ողջ և կամ պատկերնին դրօշներու վը-րայ կրէին ազգային տօնից մէջ, որոց սկիզբն շատ հին է, Թերևս ոմանցը ելնէ մինչև 'ի ջրհեղեղ։ Այս մեծ պատահարս երկրիս ուրիշ կողմը այն-քան զգալի այլայլութիւն և պատմութեան մէջ յիշատակ չէ Թողած՝ ինչպէս մեր աշխարհը. և արդեօք այս Թռչնոց հեղուկ բնակարաններէն ո-մանք՝ զոր յիշեցինք, մնացորդ չե՞ն այն մեծ հե-ղեղմանն, որ քիչ շատ հողագնային օրէնքները այ-լափոխեց։ Ստորին Կուրայ ողողակքն, Երասխայ հովտին մրրանիստ հողակարգքն՝ բաւականապէս չե՞ն ցուցըներ Թէ ատեն մը (որ երկրաբանօրէն շատ հին չէ) Ներէիդայց[2] իշխանութեան տակ էին. և իրենց բրածոյ ժամակաց մնացորդքն, որոց կեն-դանի նմանիքն դեռ գտուին կասպիական ծովու մէջ, չե՞ն կարծեցըներ արդեօք Թէ երբեմն ծով մը կ'երկընցըներ իր ծաւալծփիկ բազուկները առ ուրիշ ծով մը՝ այն երկրին վրայէն, որ յետոյ ե-ղաւ խանձարուրք մարդկութեան և հայրենիք

1 Քանի մը հայ ջրհաւուց անուանք որ յիշենք և խընդ-րենք որ գիտունք մեզի ծանուցանեն. Շեախ, Կլկատուկ, Արտաւազդահաւ, Ցոհաննահաւ. ուրիշ ցեղերէ, Դեղ-հուկ, Գարկօշ, Սանդրայապատ, Ձկնակուն, Խիւ, Ճղարդ, Կռոտ, Դռուն, Այրանեկ, Կուռար, Կատար, Կատակ, և այլն։

2 Ջրոց պահապան չաստուածք, կամ Ջուրք։

Հայութեան։ Հայկակ, եւ ոչ երկրագէտ եմ եւ ոչ հաւագէտ, բայց կը հաւանիմ թէ այդքան բազմութիւն երկակենցաղ կենդանեաց (Թռչնոց) որք մեր երկրին բարձրաւանդակ աւազանաց վրայ տիրեալ են, ոչ միայն բնապատմութեան ուսումնական պարագայ մ'են, այլ եւ յիշեցուցիչք ջրհեղեղի եւ ստեղծագործութեան։

# Է

Դառնանք առ ուրիշ դաս մը կենդանեաց։ Սեռք հայկական քառոտանեաց նախայիշեալ դասին պէս բազմատեսակ չեն. երկրին կլիմային ալ այս բանս կ'իմացընէ։ Բայց այնպէս ըլլալով՝ դեռ ոչ շատ հին ժամանակ գտուէին 'ի Հայս ամենէն կատաղի գազանք ալ. ո՞վ ոչ յիշէ Վիրգիլիոսի գեղեցիկ տողը[1],

> « Եւ վագերըս հայկականս՝ ուսոյց Դափնիս
> լծել կառաց »։

կամ Սիդոնիոսի ըսածը[2].

> « Ընդ վագրաբեր Նըփատայ կապարճաւոր
> արօտօրայս »։

Դուռնըֆօր այլ Մասիս լերանց պատառուած-

1 Ե. Հովուերգութիւն։
2 Բ. Երգ. Սիդոնիոսի եպիսկոպոսի Գովեստնեաց 'ի Ն Կայսրու.— Ընդ յոյն եւ լատին հեղինակաց Նիփատ լեառն ոչ է մեր բնիկ Նիփատն Բագրեւանդայ, այլ կամ Պինկիօլ լեռնիք եւ կամ Հայկական Տաւրոսի մասն. որոց բնակիչք բառ մնաց Սիդոնիոսի քաջ աղեղնաւորք՝ մէջը կապարճանին ուսերնին զարկած կը պտըտէին։

լածեալ յԱրտաւազդայ՝ յորդւոյն Արտաշիսի, զինքը ետևէն ձգեց ինչուան նոյն աշխարհածանօթ լերան վիհը. ուր, ըստ առասպելեաց, Թըշուառ Թագաւորն՝ Քաջաց ձեռքով կապկապած, կու ջանայ կտրելու իր երկաթի շղթաները, զոր անդադար լիզելով մաշեցընեն իր հաւատարիմ շուները. մազ կու մնայ որ բարկաճայթ Թագաւորն ազատած ցատքէ այդ մթագին քարայրէն դուրս՝ բոլոր աշխարհքս աւրելու. բայց դարբնաց կռաններուն և ուրիշ գործաւորաց գործեաց ձայնին՝ նորէն կու հաստըցընեն իր մաշած շղթաները։

Գրաստեղէն կենդանիք հռչակուած են նաև մարգարէի մը բերնով, իր Տիւրոսի դէմ ըրած սպառնալից ձայնարկութեանը մէջ. «Ի տանէ
» Թորգոմայ ձիովք և հեծելովք և ջորւովք լցին
» զվաճառս քո »։ Եզեկիէլ (ԻԷ. 14) չի յիշեր ուրիշ ցեղակից գրաստ մ'ալ, աւելի պզտիկ և աւելի անպարծ, բայց ոչ պակաս պիտանի, մանաւանդ 'ի լեռնոտ երկիրներ, ինչպէս է մեր Մոկաց աշխարհն, որոյ իրեք գաւառք Իշոց անուամբ կը կոչուէին։ Իսկ մէկալ կէս արուեստաւոր կենդանին, ջորին՝ բնականապէս աւելի յարգի էր. մանաւանդ ճերմակ ջորին, զոր արևու զոհ ընելու և Թագաւորաց ծառայութեան համար կ'ընտրէին. ինչուան նաև Թագաւորաց յուղարկաւորութեան համար այլ զայն գործածէին. մեծին Տրդատայ ոսկեզօծ դագաղը կրող կառքն՝ ճերմակ ջորիներէ լծուած էր։ (Ճերմակն, գերագոյն գունոց սեպուած, մեր Թագաւորաց մահուան հանդիսին մէջ այլ մտնէր. այս հանդէսներուն վերջինը տեսաւ Բարիզ՝ յամին 1393ին յետին Հայոց Թագաւորին, Զ Լևոնին մահուամբ և Թաղմամբը. իր դագաղաց մահիճն այլ ճերմակ բեհեզ էր, իր ծառաներն ալ ճերմակ հագուած,

տարին իջուցին զնա Կելեստինեանց եկեղեցւոյն ներքնայատակ տապանատունը)։

Բայց ահաւադիկ դրաստական ցեղին Թագաւորն, զոր ամենէն պերճախօս բնապատումն [1] անուանեց «գեղեցկագոյն 'ի ստացուածս մարդկան», և զոր մեր ագարակային արուեստին կամ Վաստակոց գրոց հեղինակն կոչէ, «Աթոռ Թա-
»գաւորաց և պարիսպ ամրութեան հեծելո-
»րաց, յաղթահարող Թշնամեաց և Նաւահան-
»գիստ ճանապարհորդաց, հալածիչ գաւառաց,
»դղրդեցուցիչ քաղաքաց և լայնացուցիչ սինո-
»ռաց»։ Բայց ով է առաջին կտրիճն՝ որ այդ գեղեցիկ ստացուածն ըրաւ։ Ջեմ հարցըներ Յովբայ, եթէ «Դու ազուցեր ձիոյ զօրութիւն, և
»զգեցուցեր զահ ընդ պարանոցաւ նորա»· այլ կու հարցընեմ, ոչ առանց քիչ մի պարծենալու· ով է որ ամենէն առաջ կրցաւ սանձ անցընել այն կենդանւոյն, որ երբեմն փորատող հրաբուխ կու դառնայ, երբեմն քծնող ընկերակից։ — Մեր պատմութիւնն, (եթէ կ'ուզես աւանդութիւն սեպել, եթէ կ'ուզես խորհրդաբանութիւն, ինչ այլ կ'ուզես սեպէ), մեր պատմութիւնն կ'ըսէ, թէ աշխարհքիս առաջին պատերազմին մէջ, յետ խառնակութեան լեզուաց, մեր ազգին նահապետն և զօրավարն, Հայկն, ձիաւոր պատերազմող այլ ունէր ընդդէմ Բելայ. ասիկայ այլ յաղթուած և մեռած՝ յաղթողին ձեռքը թողուց ձիոց, ջորեաց և ուղտուց երամակներ։ Ձին եղած է և է իսկ հիմա ալ Հայաստանի ամենէն նշանաւոր բերոց մէկն, և իր փառաց գործիք մը· մեր ազգային զինուորութեան ույժն գլխաւորապէս հեծելոցը վրայ էր։ Արամ Հայկայ սերնդոց մէջ ամենէն հըզօրն, ժամանակակից Նինոսի, 40,000 հետևա-

1 Պիւֆոն։

ընձայն, հին ատեն ամենէն աւելի ծանօթ եղած կ'երևի, յետ տաճիկ (արաբացի) ձիոյ. մէկ հին և անանուն յոյն հեղինակ մը՝ նկարագրութիւն մը ընելով ձիոց՝ ըստ աշխարհաց, նախ և առաջ կը յիշէ հայկական երիվարը, և կը ճանչնայ զայն բաւական յաղթանդամ և շատ ուժով, ողնալոյն և անդաւկող, և Յովբայ ձիոյն պէս սաստիկ խըր-խնջացող: Հայկական երիվարին հետ կը յիշէ զփռիւգացին. և այս երկու ձիոց ազգէն սերած կը համարի գաղմատացի երիվարը: Ինչուան հիմա այլ հայկական ձին թերևս նախապատիւն է յետ արաբացի և անգղիացի ձիոց. յիրաւի չունի ոչ անոնց հասակը և ոչ վայելչուչ ձևը, աւելի աղը-ափիկ և աւելի թանձրամիս է, բայց երագութեամբ անոնցմէ վար չի մնար, և անոնցմէ աւելի դա-տուական է վարժութեամբն ելևէլու և իջնելու լեռնոտ և անհարթ երկիրներ. պատերազմական դաշտին վրայ ալ և է ցեղ ձիու դէմ կրնայ ել-նել. և իր աչքերէն ցայտքած կրպրանման սա-ակը տեսնողն՝ կարծէ թէ կուսող կենդանեաց մէջ գազանագոյնն է: Բնիկ հայկական ցեղից մէջ Ինուսի ձին ամենէն գեղեցիկն է. կը կարծուի այլ որ Նիզէա անունն, որով կ'անուանեն Յոյնք լաւ ձիաբեր երկիր մը, այս տեղւոյս անունէն ծագած է, կամ Նժոյգ անունէն: — Հիւսիսային Հայոց երիվարքն ալ լաւ, ուժով և աղուոր են. այնպէս որ անոնց ամենէն հասարակներն այլ, կ'ըսէ գերմանացի բնագէտ ճանապարհորդ մը, կրնան Շդուդկարտի արքունի ախոռոց լաւագոյն ձիերուն կարգը դրուիլ, և խրատ այլ կու տայ յԵւրոպա մտցընելու Էրզրումի, Տրապիզոնի և և Պրեստի ճամբով:

Բնութիւնն որ այսպիսի գեղեցիկ կենդանի մը ընծայեր էր երկրին, անոր ստացողին այլ հան-ճար տուաւ զանիկայ աղէկ վարժեցընելու և ա-

ւելը աղէկ այլ 'ի գործ ածելու. ձիագարմանութեան արուեստն շատ կատարելագործած էր մեր նախնեաց օրերը. որուն կրնան վկայ ըլլալ քանի մը լատին հեղինակաց բանք, և մնացորդք ազգային ձիագարմանութեան գրուածոց, որոց մէջ մանրամասն անդամաքննութիւն կայ ձիոյ։ Իսկ ձիոյ գործածութիւնն, Հայոց ազնուականաց և պատանեաց զբօսանք, ցուցանք և պարծանք մ'էր. մեր իշխանաց կարիճ զօրավարաց մէկն, քաջակորովն Մուշեղ, հացկերութի մը ատեն դաւաճանութեամբ սպաննուելով, վերջի շունչը տալու ատեն կը ցաւէր կ'ողբար որ չկըրցաւ մեռնելու իր ճերմակ երիվարին վրայ, որ այնքան անգամ տարեր էր զինքը յաղթութեան. գոռոզ թագաւորին Շապուհ որ այս կարիճ զօրավարին ձեռքէն այլ սրտէն այլ յաղթուեր էր, հրամմեր էր որ քարի վրայ քանդակեն անոր պատկերը ճերմակին վրայ հեծած, և իր խնջոյից տաճարին մէջ կանգնեն, զոր տեսնալով՝ արևուն գինի խմէր, Ասպրի՛ ճերմակաձին, ըսելով։ Շատ ատեն չէ որ գտնուեցաւ ուրիշ քանդակ մ'այլ մեր երկրին վերջին սահմաններուն վրայ, նոյն քաջակորովը կերպարանելով իր ճերմակին վրայ, թէ և գտնող ճանապարհորդն չիճանչցաւ իր գիւտը։... Բայց մեր ճերմակն, մեր պիգասոսքն[1] ըղմեզ շատ հեռու կը թըռցընեն. բաւական ըլլայ այսչափ տեղեկութիւն թէ իրենց համար և թէ բոլոր մեր երկրին գործարանաւոր և անգործարան արարածոց։

1 Ըստ առասպելաց Յունաց թևաւոր ձի Պերսէոսի դիւցազին։

# Ը

Շնորհակալ ըլլանք ուրեմն բնութեան, որ այսքան պարգեւներով հարստացուցեր է մեր երկիրը. եւ առաւել փառք տանք տիրոջն բնութեան, որ այդ պարգեւները վայելել և յարգել տուաւ երկրին հանճարամիտ բնակչին, որ 'ի սկզբանց ժամանակի գիտցաւ ճարտարութեամբ օգուտ հանել անոնցմէ, և օտարաց այլ սփռել, հեռաւոր աշխարհքներու բերքերը իրարու պսակելով։ Հայն ամեն առեն եղած է վաստակաւէր մշակ իր երկրին մէջ, ժիր վաճառական դուրսի երկիրներ, զգօն գործակալ ազգաց՝ որ զիրար չէին ճանչնար. և փոխանակեր է զբնական և զարուեստական բերս աշխարհաց՝ որ իրարմէ հեռու էին շատ միջօրէական ժամերով։ Հայն բոլոր երկրիս երեսը կը պտըտէր, կը սորվէր զլեզուս ժողովրդոց՝ որոց թարգման կ'ըլլար, և ամեն տեղ միտ դնելով կը սորվէր շահ և ճարտարութիւն։ Իրեն համար օտար երկիր չկար և չկայ. և ամենայն ազգք իրմէ յիշատակ մ'ունին։ Թէ որ լաւ մտադրութեամբ քննուի ազգաց չուոց կամ բաժանման պատմութիւնն, ինչպէս որ Ս. Գիրք մեզի կը ներկայացընեն, յայտնապէս կ'երեւի որ Ասիոյ հիւսիսային և արեւմտեան կողմերն և բոլոր Եւրոպա իրենց բնակիչքն առած են այն գաղթականներէն որ ելան կամ անցան 'ի Հայաստանէ, յառաջ և յետ իր Հայաստան կոչուելուն։ Թէպէտ և հիմակուան քննադատութիւնն տարբեր կարծիք ունի լեզուաց ծագման և ածանցման վրայօք, սակայն արժան է յիշելու, որ թէ ժողովրդեանը համար, թէ անոր լեզուին համար չկայ երկիր մը՝ որ մեր երկրին հաւասար այնքան

բաղդատութեանց և նմանութեանց առիթ եղած ըլլայ։ Սկսեալ յԵրոդոտէ, 'ի Սարաբոնէ և յԵւստաթեայ՝ հարցուր ամեն լեզուագիտաց և բանասիրաց, որպիսիք են Աքոլութոս, Տուարց, Գոշար, Կալմէգ, Հերվաս, Լագրոզ, Վինդն, Լայպնից, Լըպլիկանս, Տրեառէր, Հեէրըն, Ճ. Ուփլքէմ, Անգըլդիլ, Բոլլաս, Գլաբրոթ, Սանելուձկ, Գոռ, Բոպ, Բեգէրման, Վինտիշման, Կարդերէր, Նիպուր, և այլք, թէ որ լեզուին նմանեկից է հայերէնն։ Ամենքն մէկմէկ կերպ պատասխան կու տան, հայերէնին մերձաւոր և ազգակից սեպելով զփռիւգացին, ասորին, բաբելոնացին, քաղդէացին, հրեայն, թաթարը, կովկասեանթուրքը, խազարը, պարթևը, փեհլեւին, զանդիկը, հնդկա-գերմանացին, մարապարսացին, հին յոյնը կամ պելասգեանը, եգիպտացին և ղպտին, կելտը և ուէլշը, մինչուան աբխազայացին, Ֆինը և սիպերիացին։ Արդ 'ի վերայ այս ամենայն խառնափնդորութեան մէջին՝ ուսկից կ'ուզեն հանել զհայերէնը, մանաւանդ թէ հայերէնէն հանել այս մէջը, 'ի վերայ այս ամենայն աւելի կամ պակաս ծուռ կարծեաց, պէտք է որ այդ մէջին խորը ճշմարիտ և սկզբնական բան մ'ըլլայ, ապա թէ ոչ անկարելի կ'ըլլայ հասկընալ՝ թէ ինչու և ինչպէս այդչափ ծանր և գիտուն անձանց գլուխք պարպեր են այդ մէջին վրայ։ Այս այլ պէտք է լաւ գիտնալ, որ եթէ Ս. Գիրք, պատմիչք և աւանդութիւնք կու ցուցընեն մեզի զՀայաստան իբրև ներքնաւորան մը ազգաց և ցեղից, նոյն Հայաստան զարմանալի ընդդիմակութեամբ մը հիւրընկալ և օթեւան եղած է զանազան ազգաց պանդխտականներու, մինչպէս են ասորեստանեայն, քաղդէացին, հնդիկն, հրեայն, քանանացի, սկիւթացի, կովկասեան, թեսաղացի, յոյն, մար, պարսիկ, և մինչուան չին այլ։ Այս ամեն առհմք

նախ քիչ կամ շատ ատեն մը իրենց օրէնքը և լեզուն զուտ պահելով, յետ քսան և հինգ դարուց խառնուեցան և ընկղմեցան տիրող ազգին և լեզուին մէջ, այսինքն հայերէնին, որ 'ի հարկէ ինքն ալ անոնցմէ փոփոխութիւն կրեց և անոնց բառքերովն հարստացաւ։

Քրիստոնէական կրօնքն սրբազան և անգործելի ըրաւ երկայն դարուց աշխատանքը. և այդքան տարբեր տարերքներէ ձևացուց մէկ ազգ մը, որ 'ի սկիզբն Դ դարու կը պարունակէր անընդմէջ երկիր մը հիմակուան Փռանկաստանի սահմաններէն ընդարձակ, և բաժանեալ 'ի 20 նախարարութիւնս կամ պայազատական աշխարհս, որք բաժանէին 'ի 620 գաւառս, և ասոնք այլ 'ի հարկէ 40,000 գեղ մ'ունէին, որոց պահպանութեան համար սովորաբար 120,000 զօրականք կային, և հոգևոր հսկողութեան համար աւելի քան 200 եպիսկոպոս։ Այս դարէս ետև՝ 1500 տարուան միջոց մը բոլորովին այլափոխեց մեր երկրին օրէնքը և երևոյթը, որ կրեց բաղդին ամեն հարուածքը և խաղերը։ Նոր ժողովուրդք եկան գրաւեցին զՀայաստան, ուր հիմա այլ կ'երևան որոշակի. վասն զի կրօնքն և լեզուն անթափանցելի պարիսպ մը ձգելով մէջերնին՝ օտարականին թողուցին Հայաստանին գետինը, պահելով միշտ տեղացւոյն՝ իր սիրելի հայրենիքը։ Ասանկով, թէ և հեռացեալ, թէ և հալածեալ իր բնիկ երկրէն, Հայն իրեն հետ կրէ իր թերափքը. և կը մշակէ զհայրենիս իր հարուստ լեզուին մէջ, կը յարգէ զայն իր կրօնից մէջ, կ'ուսանի՝ անոր յիշատակաց մէջ, և կը պաշտէ զայն իր սրտին մէջ։ Այս հայրենասիրութիւնս, 'ի բաց թողլով ոմանց մոլորիլը և ոմանց անհոգութիւնը, առաջնորդեց անցուց Հայոց ազգը 44 դարու միջոց՝ ամեն տեսակ դիպուածէ, բնութեան և քաղաքականութեան յե-

ղափոխութիւններէ, ընդ մէջ ազգաց՝ որ իրմէ վերջը ծնան և իրմէ առաջ մեռան։

Դարձուր դարձեալ անգամ մ՚այլ աչքդ այդ լեռնակղզի երկրին վրայ, որ կը բարձրանայ 'ի մէջոյ Եւքսինեան և Կասպիական ծովուց, Պարսկային ծոցոյն և Միջերկրականին, որոց մէջ թափէ ղալխ Փիսոնի, Ալիւսեայ և Իռիսայ, Կուրի և Երասխայ, Տիգրիսի և Եփրատայ, Պիւռամոսի և Կիւդնոսի. փնտռէ ատոնց ամայի աւերակ ափանց վրայ ազգաց և ազանց դոռոզ մայրաքաղաքները, և ըսէ ինձ. ո՞ւր են Նինուէ և Բաբելոն, Սելևկիա և Տիզբոն և Սամառա. մանաւանդ թէ ըսէ, ո՞ւր են ատոնց կանգնողքն, այն հզօր և անուանի ժողովուրդքն հին դարերու, Քաղդէացիք, Ասորեստանեայք, Մարք, Պարթևք, Կապադովկեցիք, Կիլիկիացիք, Լիւդացիք, Կարքեդոնացիք և ուրիշ շատեր։ Հարցու մէկ հինաւուրց մարդու մը, որ անոնց ամենէն ուժով, ծաղկեալ և յաջող ժամանակը ապրելով, կը նշմարէր անոնց կործանումն այլ. հարցու Եզեկիելի, ո՞ւր են այդ ազգերն «որք արկանէին զահ իւ-
»րեանց 'ի վերայ երկրին կենդանութեան»։ Աւա՜ղ. ահա կը ցուցընէ մեզի երկրիս խորը, անդունդը, ահաւոր լիճ մը, ոչնչութեան տեղ մը և կ՚ըսէ. «Անդ Ասուր և ամենայն ժողովք նորա,
» ամենեքին վիրաւորք... շուրջ գերեզմանք նորա...
» Անդ Ելամ և ամենայն զօրութիւն նորա շուրջ
» զգերեզմանաւ նորա... անդ առուան Մոսոք և
» Թոբէլ և ամենայն զօրութիւնք նոցա շուրջ զգե-
» րեզմանաւ նորա... անդ Եդովմ և ամենայն թա-
» գաւորք իւր և ամենայն իշխանք նորա... և նո-
» քա ընդ վիրաւորս ննջեցին ընդ իջելոցն 'ի խոր-
» խորատ»։... Դադրէ՛ 'ի սպառնալեացդ, գուժաւոր մարգարէ. միթէ պիտի յանդըգնի՞ս ըսելու այլ, թէ «Անդ ամենայն իշխանք հիւսիսոյ,

» և ամենեքեան նոքա զօրավարք Ասորեստանեայն ,
» իջեալք վիրաւորք հանդերձ ահիւն զօրութեամբ
» իւրեանց ... և տարան զատանջանս իւրեանց ընդ
» իջեալսն 'ի խորխորատ » ։ Զեւ տեսներ , որ ինչ-
պէս այն ալիքներն՝ որ տեսան այդ ազգերը իրենց
ափանց վրայ , կը կորսուէին խառնուէին անկուշտ
ծովուն մէջ , մինչդեռ իրենց աղբիւրներն անդա-
դար կը բղխեն նոյն բարձրաւանդակներէն , այս-
պէս և ազգն Հայոց , որ ունէր իր երկիրը այդ աղ-
բերականց մէջ , հոն կու կենայ դեռ , մինչդեռ մէկ-
այլ ազգերն ոչնչացեր են 'ի վերայն ժամանա-
կի ։ Հիմա սովրէ մեզմէ , ով մարգարէ , վասն զի
մենք առանց քօղոյ կը տեսնամք ինչ որ դու 24
դարու թանձրութենէն կը տեսնէիր . մեզմէ սո-
վրէ . այդ իշխանքդ հիւսիսոյ և արևելից , այդ զօ-
րավարքդ Ասորեստանեայն ոչ մեռան ինչպէս Ա-
սուրն և Ելամ . այլ ողջացան , ապրեցան սրոյ հա-
րուածներէն . գերեզմանն չկրցաւ կլանել իր ա-
մեն փափագածը . և Հայն մինակ մնացած քու
համրած ժամանակակից ազգերէդ , ինքնին կը
հակէ իր նախնեաց գերեզմանին և իր յեանոց օ-
րօրոցին քով ։ Հայն՝ ժողովուրդ աշխատասէր ,
ժողովուրդ հիւրընկալ , ժողովուրդ հաւատացեալ ,
շատ ժողովրդոց օգտակար եղաւ . և եթէ երբեմն
իբրև պատերազմող՝ նիզակակցելով Փուլայ և
Սաղմանասարայ 'ի գերութիւն քշեց զԻսրայէլ ,
զոնէ պաշտպանեց այլ զանոնք իր գետափանց
վրայ և 'ի բարձունս Արմոնայ (կամ Ռեմանայ[1]) .
և թէ գոշնակից ըլլալով Նաբուքոդոնոսորի , գե-
րի վարեց զիշխանս Յուդայ , սակայն պատուեց
այլ զանոնք իր իշխաններէն աւելի . վասն զի Ճանչ-
ցաւ թէ անոնք Դաւթի և Սողոմոնի որդիք են , և
անոնց ձեռքով կ'ընդունէր գլխին Ճառագայթա-

1 Ամովս , Դ . 3 ։

ձև Թագը, զոր յետոյ նոյն ինք իր գերւոյն գլուխը դրաւ. և եթէ ստիպեց երբեմն (ինքն այլ ընտիպեալ ընկալով) զորդիս և զդստերս Սաղէմայ՝ բաբելական ուռենեաց ներքև արտասուաթաց քնարներնիս վրայ երգել Սիոնի սաղմոսները, սակայն խուլ չեղաւ Աստուծոյ ձայնին՝ որ ուրիշ մարգարէի մը բերնով կ'ըսէր իրեն. «Պատուէր » տուք յինէն այրարատեան թագաւորութեան-» ցըն և աքքանազեան գնդին. կանգնեցէք զնովաւ » (զԲաբելոնիւ) նետակալս, ելէք 'ի վերայ... » երիվարք, իբրև զբազմութիւն մարախոյ[1] ». և փութաց վաղեց Աստուծոյ օծելոյն, և իր նիզակակցին Հեա (Կիւրոսի), և յետ եօթանասուն տարւոյ՝ իր գերեաց շղթաները քակելով, ինքնին առաջնորդեց տարաւ զՍաղաթիէլ և անոր ժողովուրդը և անցուց Հայաստանի և Միջագետաց սահմաններէն, և ողջ անվնաս պահելով թշնամի ժողովրդոց միջէն հասուց 'ի Պաղեստին[2]:

Հայաստան ինքնին նախախնամական երկիր մ'էր, և սիրելի բարձրելոյն, ուր շատ կանուխ յայտնեցաւ. և պէտք է որ ամենայն ազգ որ իր ծագումը փնտռէ՝ դառնայ այդ երկրին նայի: Եդեմայ հետքը գտնելու ապահովագոյն ճամբայն է Հայաստան: Ինքն ընծայեց Աստուծոյ իր օրհնեալ կաւը, և ընդունեցաւ անոր ձեռքէն զհայրն և զմայր մարդկութեան. ինքն ընծայեց ասոնց այլ ինչ որ պէտք էր իրենց պահպանութեան, իրենց սերոյն և զգլխանը համար. ինքն եղաւ խանձարուրք առաջին ծնածին և գերեզման առաջին մեռնողին. ինքն բարձրացուց Արարատայ գագաթը միւսանգամ ընդունելու ջրհեղեղէն ազատած մարդկութեան մէկ հատիկ տունը. և այդ

1 Երեմիա, ԾԱ, 27:
2 Թովմաս Արծրունի ըստ Մար Իբասայ:

իրեն հիւր եղած մեկին ընտանիքով երկրորդ անգամ բոլոր երկիրս մարդաբնակ ըրաւ։ Ինքն կերակրեց առաջին նահապետները, և անոնց հաւատքը անխառն պահեց երկար ատեն․ Աբրահամ ինքնին նոր հայրն հաւատոց՝ իրմէ ծագած է, վասն զի իր հայրենիքն՝ Ուր Քաղդէացւոց՝ հիմա կը ճանչցուի Հայոց յետին պատուարներուն մէջ, լերանցն Կորդուաց, որ Մեծ Հայոց տասն և հինգ աշխարհաց մէկն է։ Վերջապէս, ինքն, ըստ բարեպաշտիկ աւանդութեան, կ՚աղաչէր ըզՅիսուս՝ առաքելոց գլխաւորին հետ՝ որ զցուցանայ 'ի նենգութենէ Հրէից, և գայ իր Թագաւորին, Աբգարու հետ՝ ապաստանի յԵդեսիա։ Ինքն ընդունեցաւ ուրիշներէ աւելի առաքեալներ և աշակերտներ և ընծայեց անոնց զառաջին կոյս վըկայուհին, նոյն իսկ իր Թագաւորին դուստրը, զոր կ՚ախորժեմ անուանել քոյր Աբելի․ վասն զի ողջս են նախավկայք, մէկն նախնական աշխարհի, մէկայլն նորաստեղծեալ աշխարհի․ մէկն զոհեալ իր եղբօրմէն՝ մէկայլն իւր հօրմէն․ մի՛ աստուածային ողբերգութիւն։ Նոյն ինքն Հայաստան յետ իրեք դար անտանալու, դարձեալ յառաջ քան զուրիշ ազգեր՝ բոլոր ժողովուրդովք ընդունեցաւ զքրիստոնէական կրօնս և պահեց միշտ․ և որ զարմանալին է և ծանր ընդդիմարեալ մը, քրիստոնէութեան առաջին պատուարն ըլլալով՝ ամենէն ետքի պատուարն այլ է երկրիս արեւելակողմը․ վասն զի այդ կողմէն՝ Հայաստանի մէջօրէէն անդին քրիստոնեայ երկիր չկայ, բայց 'ի գաղթականներէ կամ քարոզչաց ձեռքով նորադարձներէ, որք կրնան նորատունկք ըսուիլ 'ի մէջ հեթանոսաց։ Ատեն մը իբրև կղզի մ՚էր, հիմայ իբրև Թերակղզի մը քրիստոնէութեան այլահաւատ կրօնից մէջ։

Այս ճշմարիտ կրօնից զգացմամբ, այս գերա-

գոյն զզացմամբն է՝ որ Հայաստան ոչ միայն կըրցաւ մնալ և գիմանալ իր ինքնագլխութիւնը կորսնցընելէն վերջն այլ, հապա նաև կըցաւ ամենէն դժուար գործ մ'այլ գործել. այսինքն համաձայնել իրարու զշահախնդրութիւն երկուց աշխարհաց՝ որոց մէջ դրեր է զինքը նախախնամութիւնն. և եթէ երբեմն այս բարակ և դժուարին պարտուց մէջ պակսած է, աւելի ինքզինքը խաբած է քան զուրիշները: Ապա և ոչ առանց արդեանց վաստըկեր է զյարգ և համարմունք և վստահութիւն տիրող և սահմանակից ազգերուն. ինքն տուեր է զօրք և կարիճ զօրավարներ Սասանեաց և Բիւզանդացւոց. և իր ճարտարագոյն որդիքները բազմեցուցեր է իբրև ինքնակալ Կոստանդիանոսի գահուն վրայ, և փոխարքայ Եգիպտոսի և Հնդկաստանի տիրապետաց քով. զանազան հնարքներով Արաբացւոյն սուրը բթացուցեր է, և իրեն սովրեցուցեր քանի մը օգտակար արուեստներ. որոնց հետ ճարտարապետութեան ոճ մ'այլ, որ քիչ մը ձևափոխել ուրիշ հեռաւոր աշխարհաց մէջ այլ մնաց. Եւրոպա անգամ առանց իմանալու առեր է զայն: Հայաստան Կոփրետոսի Խաչակրաց նիզակակից եղած զԵրուսաղէմ առաւ. Հուլաղունի Նեստորեաց դաշնակից՝ զՊաղտատ առաւ: Ոչ սակաւ պաշտօնեաներ և քաջանշան զօրավարներ ընծայեց օսմանեան, ռուս և պարսիկ տէրութեանց, որոց իշխանութեան տակ հիմայ բաժնուած է երկիրն: Իր ճարտարարուեստ գաղթականաց ձեռօք շատ օգտակար ծառայութիւն ըրած է Ռուսաց, Լեհաց, Աւստրիոյ և Դանուբեան իշխանութեանց, և իր վաճառականներովն՝ միջին դարու Իտալիոյ ամեն տէրութեանց, Սպանիոյ, Հոլանտիոյ և քանի մը տէրութեանց այլ՝ որ հիմա Փռանկաց մեծ տէրութեան մասն են: Այս եաքինիս մայրաքա-

ղաքն իսկ, արեւմըտից Բաբիլոնն, մէկ Հայու մը երախտապարտ է իր ամենէն շատ յաճախած ընկերութեան տեղւոյն սկզբնաւորութեանը համար. Բարիզու մէջ առաջին քաֆէարանը բացուեցաւ յամին 1672 Սէն-Ժէրմէնի տօնավաճառին մէջ և Դպրոցի ըսուած գետատափին վրայ (Quai de l' Ecole), 'ի ձեռն Յարութիւն կամ Բասգալ անուան, երկրորդն ալ Ստեփան անուն մէկէ մը, որք երկուքն ալ Հայ էին. անշուշտ իրենք չէին նախատեսած թէ իրենց ձեռնարկութիւնն զարգանալով՝ ո՛րչափ բարիք կամ չարիք կարենայ պիտի բերել. բայց մենք կրնանք յուսալու՝ որ այդ նորութեան համար իրենց շնորհակալութեան յիշատակարան մը ընծայեն զբօսասէրք:

Իսկ ինձի աւելի նախամեծար և ախորժելի է նկատել այն լուսաւոր նշանները՝ զորս Հայաստան իր հորիզոնէն դուրս այլ սփռած և գրած էր երկնից այն կողմերը՝ որոնց տակ իր որդիքն ապաստանարան մը կու բնտըռէին. և կու սիրեմ պատուել Օռլէանի սահմանին մէջ զՍ. Գրիգոր արքեպիսկոպոս Հայոց Նիկոպօլսոյ 'ի Ժ դարու, հիմայ պաշտպան Բիթիվիէի. — 'ի Գոմին՝ (Commines) զՍ. Խրիսոլ (Ոսկի, Chryseuil), տեղւոյն պաշտպանը, զոր աւանդութիւնն սեպէ աշակերտ Բարիզու Ս. Դիոնիսիոսին և կու ճանչնայ Հայ. — 'ի Ֆոնդէն՝ 'ի հայրենիս Ս. Բեռնարդոսի՝ պաշտպան տեղւոյն զՍ. Ամբրոսիանոս. — 'ի Կանա՝ (Պելճիոյ) զՍ. Մակար, պաշտպան տեղւոյն և Հայ եպիսկոպոս Ժ դարու. — 'ի Մանդուա՝ զՍ. Սիմէոն, վերնոյն ժամանակակից. — 'ի Լուգգա՝ զՍ. Ջաւէն կամ Դաւիթ (S. Davino). — յԱնգոնա՝ զՍ. Կիրակոս. — 'ի Պատուա՝ զՍ. Փիտենախոս եպիսկոպոս յ'Բ դարու, և այլն. որոց ամենքն այլ հայազգի կու ճանաչուին: ... Բայց, ափսո՜ս, որ

հոս չէ յարմար տեղ՝ հայկական Ոլիմպոսի սրբազան բարձունքը Թռչըտելու։

Փութամ ըսելու, Հայկակ, բովանդակելու այս հայկական բնագրութեան համառօտ պատկերը. յուսամ որ այս չափովս այլ իմացուի, որ մեր ազգն եթէ և քաղաքական պատմութեան մէջ առաջին գործերը չէ գործած, բայց և շատ մեծ գործոց մասնակից եղած է. ազգ մը՝ որ սկսեալ 'ի Նոյէ գրեթէ անընդհատ ինչուան հիմայ կը համրէ 250 ազգապետ, իբրև Նախարար, Թագաւոր կամ կաթողիկոս, որոց հետ կապուած են իւր աւանդութիւններն, և անով նաև բոլոր ժամանակագրութեան յիշատակք. այսպիսի ազգ՝ արժանի է մտադրութեան և քննութեան, թէ իր ընիկ որդւոցն և թէ ամէն մարդու՝ որ բարեկամ է ճշմարիտ փիլիսոփայութեան։ Ես չեմ վախնար ըսելու, թէ Հայաստան մէկ որոշեալ վիճակ կամ նպատակ մը ունեցեր է յառաջ քան զայլ ազգեր. և որ աւելի հարկաւոր է գիտնալու, դեռ այդ վիճակն լմնցած չէ։ Գաղտնիք մը չէ ըսածս, և ոչ խորհրդաւոր բան մը, այլ հնացեալ հաւանութիւն մը Հայ մտաց, թէ դեռ գործ մ'ունի կատարելու երկրիս վրայ. բարեբաստիկ գործ մը։ Ամեն բան լմնցած չէ իրեն համար. դուռ մը պիտի բացուի իրեն համար ատեն մը... որ շատ այլ հեռու չէ, ինչպէս որ կարծեմ. այդ դուռն երկար ժամանակ կրկին կրկին կղպած փակած չմնայ պիտի. արդէն զօրաւոր բանալիքներ կը տեսնեմ, և համարձակութեամբ կ'ուզեմ ցուցընել. չըլլայ թէ վախնաս,... մեր երջանկութեան ապագայ բանալիքն, այդ այնքան երկար ժամանակէ վեր բաղձացեալ բանալիքն՝ է դաստիարակութիւնն։ Դաստիարակութիւն հայրենասիրական. հայրենասիրութիւն յեցեալ 'ի վերայ իմաստասիրութեան, և սա հիմնեալ 'ի վերայ

*սուրբ կրօնից։ Առանց այս կապակցութեան չկայ կատարեալ կրթութիւն, չկայ քաղաքականութիւն, չկայ մարդ կատարեալ։ Ընկերական պարտքերը լաւ կատարելու համար՝ մարդս կարօտ է հայրենական ներշնչման մը. և որպէս զի հայրենասիրութիւնն չմոլորի և յետ չմնայ, պէտք է որ առաջնորդ ունենայ զիմաստութիւն, նեցուկ՝ ըղհաւատս, և պսակ՝ զյաւիտենականն ճշմարտութիւն։*

Թ.

*Ո՛վ Հայկակ, ո՛վ Հայ պատանիք, աղէկ քաղաքացի ըլլալու համար՝ պէտք է քննել և սովրիլ զհայրենիս։ Այս է առաջին ուսումն յետ ուսման հանդերձեալ կենաց։ Քննեցէք և սովրեցէք ուրեմն այդ ազնիւ և բարեբեր Հայաստանը, իբրև հայրենիք ձեր և գայեակ ամենայն աշխարհի. — քննեցէք այդոր բնակագմութիւնը, քննեցէք այդոր բարոյականը. քննեցէք այդոր բարգաւաճումը 'ի հարուստ լեզուին, որ ապահով գրաւական մ'է բազմատեսակ արկածներով հընձուած գրականութեանը. — քննեցէք զայն վերջապէս՝ իր կրօնից զըտութեանը, և իր ծիսից վայելչութէը մէջ։ Այդ քննութիւնքդ, այդ ուսմունքդ յորդոր ըլլան ձեզի աւելի քան զաւելի յարգելու զհայրենիս և մշակելու զայն՝ ըստ ամենայն նշանակութեան բանիս։ Վասն զի այս իսկ է առաջին պատուէր Արարչին՝ տրուած առ հայրն մարդկութեան, և տրուած բուն իսկ մեր երկրին մէջ.* ԳՈՐԾԵԼ ԶՆԱ ԵՒ ՊԱՀԵԼ[1]։

1 Ծննդ. Բ. 15։

# Գ

# ՀԱՅԿԱԶՆ ԾՐԶԱՆ

## ՏՕՄԱՐ ԵՒ ԹՈՒԱԿԱՆ ՀԻՆ ՀԱՅՈՑ

## ՀԱՅԱԴԻՐ

### Ա

Մեր հայրենեաց համառօտ բնախօսութիւնն ըրած ատենս՝ յիշեցի, Հայկակ, որ ամեն քննողի բնական և ախորժելի է գիտնալ պատմութեանց հանդիսարանը, այսինքն հանդիպած կամ պատմուած բաներուն ուր տեղ եղած ըլլալն. որ է ըսել՝ աշխարհագրական տեղեկութիւն մը, թէ բնական և թէ քաղաքական: Բանասէրին առաջին բնտռածն է ի՞նչը, ի՛նչ եղած ըլլալը, որ է լոկ Պատմութիւն. երկրորդ բնտռածն է ո՞ւրը, ո՛ր տեղ, աշխարհիս ո՛ր կողմն եղած ըլլալն, և այս է Աշխարհագրութիւն. երրորդ բնտռելիքն այլ է ե՞րբը, այսինքն պատմելոց ո՛ր ատեն, ո՛ր տարի հանդիպած ըլլալն. և այս է Ժամանակագրութիւն, զոր և աչք պատմութեան կ՚անուանեն գիտունք. առանց որոյ մութ կու մնայ պատմութիւնն: Եթէ երկրաբանութիւն և աշխարհագրութիւն կարևոր են պատմութեան նկարուց՝

իբրև ենթակայ և յատակ մը, ժամանակագրութիւնն այլ իբրև լոյս և պայծառութիւն տեսարանին՝ հարկաւոր է։ — Մեր ամենէն ցանկալի և պիտանի պատմիչն՝ Մովսէս Խորենացի՝ իրաւամբք կ'ըսէ. «Ոչ է պատմութիւն ճշմարիտ՝ առանց » ժամանակագրութեան ». բայց դժբաղդաբար ոչ ինքն և ոչ շատք 'ի պատմըչաց մերոց, մանաւանդ հիները, հաստատ և յայտնի ժամանակագրութիւն մը բռնած և յիշած չեն իրենց պատմութեան մէջ. միայն երբեմն այս կամ այն թագաւորի և կայսեր տէրութեան տարիներուն կու յարմարցընեն իրենց պատմած դիպուածները. և որովհետև այն թագաւորութեանց սկիզբն այլ ծանօթ թուականի մը վըայ չեն գրած՝ դարձեալ տարակուսելի կու մնայ ըսածնին. մանաւանդ որ թագաւորաց տէրութեան սկիզբն՝ շատ կու զանազանի ըստ այլևայլ հաշուոյ պատմըչաց. միով բանիւ բարեկարգ և հաստատուն ժամանակագրութիւն մը չկայ մեր հին պատմըչաց մէջ, որով պատմութեան դիպուածներն այլ անհաստատ կու մնան։

Ժամանակագրութեան պակասութիւնն կու յայտնէ տումարի այլ պակասութիւն կամ խառնակութիւն. և յիրաւի, ազգերնիս եթէ հնուց 'ի վեր ունեցած է իրեն յատուկ տումար՝ որով և ժամանակաչափութիւն մը, (ինչպէս վերջը պիտի տեսնես), սակայն դրացի և տիրող և զանազան ազգաց օրինաց և վարչութեան տակ ընկնալով, կամ գոնէ անոնց հետ սերտ յարաբերութիւն ունենալով՝ ստիպուեր է իր տումարը և տարիները անոնց յարմարցընել. երբեմն Բաբելացւոց կամ Նաբունասարայ թուականը վարելով, երբեմն Յունաց կամ Աղեքսանդրի կամ Ասորւոց ըսուածը, երբեմն Պարսիցը, երբեմն Հռովմայեցւոց, յետոյ Կ.Պօլսի կամ եկեղեցական թուա-

կանը, և այլն. մինչև որ այս ամեն ազգաց մեր-ձաւոր և հարկաւոր ազդեցութենէն քիչ շատ ազատելով, և բարեբաղդութեամբ յառաջ քան զծագումն Հագարացւոց թուականին (հիճրէթ), 'ի կէս Զ դարու՝ եկեղեցական տօնից կարգը հաս-տատելու ստիպուած՝ կարգաւորեց իր ընիկ տու-մարը, և անոր հետ մէկտեղ ժամանակաչափու-թիւնն ալ. տօմարին նորոգած տարիէն, կամ Քրիստոսի 552 տարիէն՝ սկսելով թուական մը, որ կ'ըսուի Հայոց Թուական կամ Մեծ Թուական, ևս և Խորոնջային Թուական կամ Պարզ. այս թուականս է որ անկէ ետև 'ի պատմըչաց և 'ի բոլոր ազգէն գործածուելով՝ կու շարունակուի մինչև հիմայ: Բայց այս ալ յայտնի է որ ետքի երկու դարե-րուս մէջ՝ ազգերնիս թէ բնակութեամբ և թէ ծանօթութեամբ աւելի մօտենալով արևմտեան ազգաց, ըստ հասարակաց սովորութեան՝ Քրիս-տոսի թուականը և յուլեան տումարը կու բա-նեցընէ, առանց թողլու իր եկեղեցական տումա-րը, և թուականին շարունակութիւնը յօրացոյցս, 'ի ճակատս գրոց և 'ի կոնդակս, և ասոնց նման առիթներու մէջ: Այս թուականիս սկիզբը գտ-նալէն ետև՝ դիւրին է անոր տարիներով պատ-մուած դէպքերը համեմատել Քրիստոսի կամ ու-րիշ թուականի հետ: Միայն թէ Քրիստոսի թը-ւականն յուլեան տումարաւ է յարևելս, յարև-մուտս՝ անոր նորոգութեամբն՝ որ կ'ըսուի Գրէգո-րեան կամ Նոր տօմար. հիմայ ասոնց զանազանու-թիւնն այս է՝ որ նորն (որ և Լատինաց կ'ըսուի) 12 օր կու կանխէ քան զյուլեանն (որ և հին կ'ը-սուի). ասոր յանուարի մէկն՝ Լատինաց կամ նորոյն 13 է:

Արդէն գիտես, Հայկակ, որ մեր Հայոց թը-ւականն ոչ նոր և ոչ հին տումարին տարին ու-նի (ոչ գրիգորեան և ոչ յուլեան), որք ստոյգ

արեգակնային տարիով են, այսինքն 365 օր 5 ժամ, 49'. ըսել է որ 365 օրէ զատ՝ տարւոյն վրայ վեց ժամի չափ յաւելուածն այլ 'ի հաշիւ կ'առնուն, որ և վրայէ վրայ՝ չորս տարւոյ միջոց 24 ժամի կու մօտենայ, որով օր մ'այլ կ'ու ձևանայ. և ահա յուլեան և նոր տումարն՝ իրենց Թըւականին ամէն չորրորդ տարին 366 օր կու համրեն, և նահանջ տարի կ'անուանեն, մէկայլ երեք տարիներն ալ 365 օր և հասարակ տարի: Իսկ Հայոց Թուականն նահանջ չունի, այլ ամէն տարիներն այլ հասարակ տարի են, բնական օրուան չափով, այսինքն տարին միշտ 365 օր կը համրէ. որով յայտնապէս ուրիշ հին ազգացնման՝ սխալ և շարժական է իր տարին և Թուականն ալ: Սխալ է, վասն զի արևուն կամ երկրիս շրջաններուն չի յարմարիր, պակաս կու գայ. ամէն տարիէն 5 ժամ 49' պակաս հաշուելով՝ դարերու մէջ արեգակնային շրջանը մեծապէս կարճեցուցած կ'ըլլայ. անանկ որ երբոր երկիրս 1460 անգամ արևուն վրայ կու պտտի տոուգիւ՝ ըստ յուլեան և նոր տումարի, հինն կամ հայն՝ 1461 պիտի համրէ. կամ Թէ ուրիշ կերպով ըսեմ, երբ հայն և լատինն այս տարիս մէկտեղ սկսելու ըլլան՝ իրենց տարեգլուխը նոյն ամսոյն նոյն օրը սկսելով, յետ 1460 անգամ երկրիս շրջապտոյտեան զարեգակամբ՝ լատինն կամ նոր տումարն նոյնքան տարի կ'ունենայ, իսկ հայն մէկ տարի մ'աւելի. որովհետև իրեն տարին քանի մը ժամ կարճ է. իւրաքանչիւր տարիէ Թողուած ժամերն՝ ամէն չորս տարուան մէջ օր մը կու կազմեն, 1460 տարուան մէջ ամբողջ 365 օր կու գումարեն. հայն այս 365 օրն ալ՝ (որ իր տարւոյն սովորական չափն է) կ'աւելցընէ Թուականին վրայ նոր Թուով մը. իսկ լատինացին այս 365 օրը ցրուած ըլլալով ամէն չորս տարուան վրայ (փետրուարի ետևը օր մ'ա-

ւելցընելով) 'ի հարկէ 1461 համրելու տեղ՝ 1460 պիտի համրէ: — Արդ յայտնի է որ այս հին տարւոյն կարճութիւնն՝ թուականին շարքը կ'աւելցընէ. որուն աւելի պայծառ օրինակ է մահմետականաց տարին՝ որ ա՛լ աւելի կարճ է, լուսնական ըլլալով, այսինքն լուսնի 12 անգամ փոփոխութիւնն համրելով, որ կու գումարէն 355 օր, և արեգակնային շրջանէն 10 կամ 11 օր պակաս տարի մը կ'ունենան, որով իրենց թուականն (հիճրէթն) շուտով կ'աճի. մեր 97 տարուան ծերն՝ ըստ Տաճկաց լման 100 տարուան կ'ըլլայ, և իրենց երկարակեացներն՝ մեր չափով քիչ մը կու կարճընան: — Արդ ինչպէս որ այս լուսնական տարին պակաս և յայտնի սխալ է՝ եթէ համեմատենք երկրիս բոլորմանը արեւուն վրայօք, այսպէս այլ Հայոց տումարին տարին (թէ և պակաս սխալ), վասն զի կ'ընդունի արեգակնային տարի՝ բայց ճիշդ չափովը չընդունիր, պակաս կու հաշուէ:

Ոչ միայն սխալ ըսի այլ և շփոթական կ'ըլլայ տարին: Ամեն քիչ շատ երկինքը և երկիրը դիտող ազգք և մարդիկ, երկրագործք անգամ, և մանաւանդ ատոնք, հնուց 'ի վեր ճանչցեր են արեւուն տարեկան շրջանը, և անոր երկու անգամ գիշերահաւասարը և երկու անգամ կայքը կամ դարձքը, ցորեկուան և գիշերուան ժամուց երկարութեամբը և կարճութեամբը. երբոր այս բաներս՝ որոնց նէփ կ'ըսեմք ուսումնական լեզուաւ՝ ուզենամք հաստատել ամսոց օրերուն վրայ (ինչպէս որ 'ի սկզբանէ հաստատուած են 'ի դիտողաց կամ յասողաբաշխից), յուլեան կամ Նոր տումար բանեցընողին՝ միշտ նոյն ամսոյն նոյն օրը կու հանդիպին այն կէտերն, իսկ Հայոց տումարին՝ չորս տարին հեղ մը օր մ'առաջ կու հանդիպին. ինչպէս, եթէ յամին Քրիստոսի (1870) գարնանամուան

կամ գարնանային գիշերահաւասարն իր մեհեկան ամսոյն 26ին կու հանդիպէր, ինչպէս որ նաև 1868ի, 1869ի, 1871ին, յամին 1872 մեհեկանի 25ին կը հանդիպի, 1876ին մեհեկանի 24ին, և այսպէս կարգաւ. վասն զի չորս տարին հեղ մը նահանջ չընելով, օր մը չաւելցընելով, իր ամիսներուն օրերն առաջ կ'անցնին, և չեն միաբանիր արեգակնային կէտերուն. այնպէս որ 1460 տարուան մէջ այս կէտերը Հայոց տարւոյն ամսոց ամեն մէկ օրերուն ալ հանդիպած կ'ըլլան կարգաւ. կէտերն տեղերնին կու մնան, բայց ամսուն օրերն անոնց վրայ կու փոփոխուին: Ահա այս է շարժական ըսուիլն մեր տումարին. և որովհետև մեր ամիսներն և տարին միշտ (չորս տարին հեղ մը) առաջ կ'անցնին քան զյուլեան կամ նոր տումարը, անոր համար այլ մեր տումարն կամ տարին կ'ըսուի յառաջխաղաց:

Բայց եթէ միայն այս փոփոխութիւնս ըլլար մեր և նոր տումարին տարբերութիւնն՝ վնաս կամ պակասութիւն մը չէր ըսելն, թէ գարնանամուտն մեհեկանի 25ին է կամ 30ին, կամ նաւասարդի 5ին, և այլն. անունն կը փոխուէր, իրն նոյն կու մնար: Սակայն մեծ վնաս և շփոթութիւն կ'ըլլայ այդով. վասն զի ամեն տումար հաստատուած է երկու մեծ և գլխաւոր բանի համար. մէկն երկրիս կու վերաբերի, մէկալն երկնից. ասիկայ մարդուս կրօնից կամ ապագայ կենաց, անիկայ՝ երկրաւոր կենաց և ապրուստին համար. մէկով երկրագործութիւն կու կանոնաւորի, մէկալով կրօնական պարտք և կարգք: Երկրագործին համար հարկ չէ որ ամիսն այսպէս կամ այնպէս անուանի, կամ այսչափ և այնչափ թուով օրեր ունենայ, այլ հարկաւոր է որ այն օրերն, կամ թէ տարւոյն իւրաքանչիւր օր այլ՝ արեգակնային շըրջանին մէկ որոշ կէտի մը վրայ հաստատուած ըլ-

լայ․ վարուցանելի, նաւարկութեան, և ուրիշ շատ բանի համար՝ հարկաւոր է արևուն շրջանը գիտնալ, թէ որ ամսոյն որ օրը կ՚ըլլայ գարնանամուտ, երբ հովոց և ձեան եղանակներն, երբ զով օրեր, և այլն․ որ ըստ այնմ իւրաքանչիւր բնական արուեստաւոր իրենց գործը շտկեն, և կատարուի կենցաղական տնտեսութիւնն՝ իր յարմար և հարկաւոր ժամանակին․ և ինչպէս մէկ օրուան գործոց տնտեսութիւնն կու չափուի ժամացուցի մը վրայ, այսպէս այլ ամբողջ տարեկան ժամացոյց կամ օրացոյց պէտք է։ Արդ այս ժամուց և ժամանակաց կէտերը՝ միայն երկինք նայելով չէի կըրնար գտնել ամեն արուեստաւոր․ շատ քիչերն կան որ կարենան արեգակնային շրջանին փոփոխութիւնները չափել և ճշդել․ հարկ էր որ հասարակաց համար այն փոփոխութիւններն, այն կէտերն՝ տումարի վրայ առնուին,․ այսինքն քաղաքական տարուոյ ամսոց օրերուն վրայ համրուին․ և ըսուի թէ այս ամսոյս այս օրս՝ արեգակն՝ երկնից (կամ կենդանակամարին) շրջանակին այս որոշեալ կէտն է, այն օր՝ այն կէտը․ և թէ՝ երբ արևն այն կէտին վրայն է՝ այն օր ցորեկն այսչափ ժամ, գիշերն այսչափ ժամ կ՚ըլլայ, և տաքութիւնն ու ցրտութիւնն (ընդհանրապէս) այսչափ աւելի կամ պակաս։ Արդ այսպէս ճանչնալու և ըսելու համար՝ հարկ է անշուշտ որ այս օրս կամ այն օրն այլ՝ իրենց յատուկ անուններն ունենան․ և ասոնք են ամիսն և իրենց (աւուրց) քանիերորդքն․ — ուրեմն հարկ ալ է որ ինչպէս իր արեգակնային շրջանին կէտերն հաստատուն են ('ի կենդանակամարին)՝ նոյնպէս տումարին վրայ այլ հաստատուն ըլլան․ այսինքն տումարին կամ ամսոց ամեն մէկ օրն՝ արևու շրջանին մէկ մէկ կէտին հետ հաստատ կապուած ըլլայ․ և այն ատեն հաստատուն և անշարժ կ՚ըլլայ և կ՚ըսուի տու-

մարն և օրերուն երկայնութիւնն. ապա թէ ոչ՝ ոչ միայն շարժուն այլ և շփոթ. եղանակք տարւոյ և օրերուն չափն (կարճութիւն կամ երկայնութիւն) որոշ անուն և նշանակ մը չեն ունենար. կամ աւելի պարզ ըսելով, ամիսներն և իրենց օրերն ամենևին բան մը չեն նշանակեր, բաց 'ի թուէն. վասն զի գարնանամուտն՝ որ հիմայ մեհեկանի կամ արեգի մէջ կու գայ, ատեն մ'ալ ահկի ամիսը կու գայ, ատեն մը քաղոցի, և այլն. ամեն կէտ ամեն ամսոյ ամեն օրուան կու հանդիպին զանազան տարիներ: Ասով երկրագործաց և նմանեաց արուեստից շփոթութիւն կ'ըլլայ, որ օր ընելիքնին չեն գիտնար. և ինքն իրեն հարկ կ'ըլլայ որ հաստատուն տումար կամ օրացոյց մը բնտուեն:

Նոյնպէս եկեղեցական տարին այլ հաստատուն տումար մը կ'ուզէ անհրաժեշտ. վասն զի ինքն այլ երկրագործի և աստեղաբաշխի պէս, և այլ աւելի, տարւոյն ամեն մէկ օրը իմանալի երկնից մէկ մէկ կէտին՝ այսինքն յիշատակի հետ՝ կապած է. և դարձեալ կ'ուզէ որ այն կէտերն այլ արեգակնային կէտերուն յարմարցընէ, որպէս զի անմոռաց և անշփոթ կարգաւ կատարէ իր գործը: Ասոր գլխաւոր պատճառն այլ բնական և յայտնի է. որովհետև իր յիշատակներն ըստ մեծի մասին երկրիս վրայ և որոշեալ օր մը հանդիպած են, կ'ուզէ որ ամեն տարի նոյն արեգակնային հաստատուն օրուան մէջ հանդիպածը՝ դարձեալ նոյն օրը՝ նոյն կէտին անփոփոխ կատարէ: Օրինակի համար. տեառն մերոյ Քրիստոսի մարդեղութե՟ օրը, կամ Ծնունդը, կամ Քառասնօրեայ 'ի տաճար գալը, կամ Տիրամօր ծնունդը, Ընծայումը, Վերափոխումը, կամ Առաքելոց և Լուսաւորչայ նահատակութեան և մահուան օրերը՝ ճիշդ նոյն եղանակին նոյն օրերուն կատարէ: Արդ եթէ այս

յիշատակներս մեր Հայոց անհաստատ տօմարին օրերուն վրայ հաստատէր և ըստ այնմ տօնէր, ի՞նչ կ'ըլլար. — օր մը Ծնունդը ձմեռուան խորը կու տօնէինք, օր մ'այլ ամառուան տաքերուն։ Վերափոխումը՝ մէկ մը շնկան օրերը, մէկ մը ձիւներու մէջ. ըստ այսմ ամեն տօներ և յիշատակներ այլ անդադար և անպատճառ կու փոփոխէին։

Ոչ ոք յանձն կ'առնու այս բանս. տեղ մը և եկեղեցի մ'այլ չկայ՝ որ յանձն առած ըլլան։ Ըսել է որ շարժուն և անհաստատ տումար ունեցողք այլ՝ այս բանիս համար հաստատուն կերպ մը տումար մը բռնած և ընդունած են. Նոյնպէս այլ երկրագործութեան և ուրիշ կարևոր արուեստից և քաղաքական կարգաց և հանդիսից համար՝ պէտք է որ հաստատուն տումար մ'այլ ունեցած ըլլան այն ամեն ազգք և ժողովուրդք՝ որք չափաւոր քաղաքականութիւն և կրթութիւն մ'ունեցեր են, ինչպէս մեր Հայոց ազգն այլ՝ շատ դարերէ առաջ։ Ուրեմն մեր ազգն այլ իր շարժուն քաղաքական տումարէն զատ՝ անշարժ, հաստատուն և հին տումար մ'ունեցեր է. տումար մը կրօնական, երկրագործական և քաղաքավարական, որով և հաստատ ժամանակագրութիւն մը։

Ահա այս տումարս և ասոր սկիզբը, և մեր ժամանակաչափութեան կամ Թուականին հաստատուն և հին կէտը՝ կ'ուզեմ գտնել և ցուցընել քեզի այսօր, Հայկակ։

## Բ

Եկեղեցական կարգաց նկատմամբ՝ հաստատուն տօմարի պէտքն միանգամայն հաստատութիւնն՝ արդէն ծանօթ էր քեզի, և գիտէիր որ մենք մեր շարժական տարիէն զատ՝ եկեղեցւոյ համար ունիմք անշարժ յուլեան տօմար մ'այլ՝ որ Յայսմ-

ասուրաց կ'ըսուի, այս տօնական կամ սրբագիր գրոց մէջ գործածուած ըլլալուն համար. հոն տարւոյն ամեն մէկ օրուան վրայ հաստատուած են տօնք սրբոց և տէրունականք, ըստ օրինակի Յունաց և Լատինաց, և միշտ անշարժ կու մնան տօնք, նահանջ այլ ընելով, աւելեաց 5 օրերուն վրայ վեցերորդ մ'այլ դնելով ամեն չորս տարի, (փոխանակ փետրուարի վերջը): Ահա ուրեմն ունինք եղեր հաստատուն տարի մ'այլ. սակայն այս Յայսմաւուրաց կարգաւորութիւնն շատ հին չերևիր. ԺԳ դարուն մէջ չինուած են մեր հիմայ ունեցած Յայսմաւուրքն: Բայց տօները այսպէս հաստատուն աւուրց վրայ բաժնող և կարգաւորողն՝ դար և կէս այլ առաջ եղած է, մեծ գիտնական և տոփեստէսն Յովհաննէս Սարկաւագ վարդապետն. որ յամին 1116 նորոգեց տումարը, և այս հաստատ կերպը դրաւ. Նոր Թուական մ'այլ սկսելով Քրիստոսի 1084 տարիէն, որ ըսուեցաւ Փոքր կամ Մտրուկ, և էր Հայոց Թուականին 533 տարին. վասն զի այն տարի՝ լմնցեր էր հինգհարիւրեակ ըսուած 532 տարուան շրջանն, սկսուած մեր մեծ Թուականին հետ (յամին Քրիստոսի 552). և երբ նորէն տօնից շփոթութիւն կ'ըլլար, Սարկաւագ՝ մանր և յստակ քննութեամբ տումար մը գրեց, ցուցուց սխալմանց պատճառը և հարկաւորութիւնը նոր և անփոփոխ դասաւորութեան տօնից, զոր և ըրաւ. և այնուհետև գործածելի եղաւ, և իր անուամբ կոչեցաւ Սարկաւագադիր կարգ: Իր, կամ Յայսմաւուրաց հաստատուն տարին կու սկսի 'ի 11 օգոստոսի (ըստ հին տումարի, ըստ նոր տումարի հիմայ 23ին). այս տարեգլխին օրուան պատճառը քիչ մը վերջը կու տեսնենք:

Յառաջ քան զՍարկաւագ ինչպէս կու վարէին եկեղեցականք. — յայտնի է որ հինգհարիւրեակ

կամ 532 տարուան շրջանով, որով ամեն եկեղեցիք այլ կու վարէին. — սակայն դիւրութեան համար, միշտ կու վայլէր պարզ հաստատուն տումար մ՚ունենալն, զոր մեր առաջին տումարագիրքն՝ Ներսէս կաթուղիկոսի ատեն, յամին 553, չէին դրած. բայց անկարելի էր որ իրենք այլ չունենային՝ թէ և անկատար՝ մէկ որոշ կանոն մը, կամ քանի մը հաստատուն տօներ. անկարելի էր որ իրենցմէ դար մ՚առաջ եղած թարգմանիչք մեր և անոնց աստուածաշնորհ առաջնորդքն Սահակ և Մեսրովպ, ամեն ազգաց գիտութեամբ հմտացեալքն՝ կարգաւոր տումար մը չունենային, գոնէ եկեղեցւոյ մէջ: Եւ յիրաւի կու գտնեմք որ, Ա. կան հին տօնացոյցներ կամ հին կարգաւորութիւն տօնից՝ զոր Ս. Սահակ դասաւորած է, ըստ վկայութեան նախնեաց, որոց մէջ երկու կերպ դասաւորութիւն կայ. մէկ մը ըստ ամսոց Յունաց կամ Լատինացւոց, այսինքն մասն մի տօնից՝ յուլեան տումարին ամսոց վրայ հաստատուած, մաս մ՚այլ հին Հայոց ամսոց վրայ. և ինչպէս առաջինք՝ այսպէս ասոնք այլ անշարժ են, և ասոնց տարեգլուխն (կամ առաջին ամսին նաւասարդ) այլ՝ Սարկաւագայ պէս օգոստոսէն կու սկսի. ըսել է որ Սարկաւագ այլ Ս. Սահակայ հետևեր է: — Բ. Ս. Սահակայ աշակերտաց թարգմանած գրոց մէջ քանի մը տեղ յոյն կամ եբրայեցի հաստատուն օրերուն դիմաց՝ Հայոց ամսոց օրեր գրուած են, ըսելով, «որ է հայերէն» այս ինչ ամիս և այս քանիններորդ օր ամսոյն: Արդ եթէ հաստատուն հայ տարի մը չենթադրէին՝ չէին կրնար այնպէս ըսել. և հաստատուն տարի մ՚ենթադրելնին յայտնի է անով՝ որ այն յուլեան տումարի պատշաճեցուցած օրերնին՝ կամ ճիշդ Սարկաւագադիր կարգին, կամ Յայսմաւուրաց տարւոյն օրերուն կու համաձայնին, կամ

անոնց մօտ ։ Անոնց մօտ ըստածս այս է․ մեր նախնիք երբեմն Յունաց կամ Ասորւոց գրքեր թարգմանելու ատեն՝ ամսոց օրերուն համեմատութիւթիւնը դիւրացընելու համար ուրիշ ճար չեն գըտած, բայց եթէ միացընել մեր և անոնց ամսոց սկիզբները, այսինքն առջի օրերը․ այսպէս, արեգի, մարտի և նիսանի մէկերը մէկտեղ սկսելով, նաւասարդի, օգոստոսի և ելուլի մէկերը մէկտեղ․ և այլն [1] ։ — Գ․ Երբեմն ալ մեր նախնիք փոխանակ արեգի՝ նաւասարդը զուգած են ընդ մարտի և նիսանի ։ Ըսել է ուրեմն՝ որ Սարկաւագէն 700 տարի առաջ այլ՝ մեր գրոց թարգմանութեան ատեն՝ նոյն օրինակով հաստատուն հայ տարի մը կու ճանչցուէր՝ շարժականէն կամ քաղաքականէն զատ ։

Կու մնայ գտնալ թէ հոպա յառաջ քան զՍ․ Սահակ՝ իր նախորդ և համարիւն հայրապետքն, մինչև 'ի Ս․ Լուսաւորիչն, ի՞նչ տումար կու բանեցընէին եկեղեցւոյ տօնից․ կամ անկէ առաջ՝ Տրդատ հայրենասէր մեծ թագաւորն, իր Արշակունի նախնիքն, և անոնցմէ առաջ մեր բընիկ Հայկազունքն՝ ի՞նչպէս կու տօնէին իրենց ազգային տօները, զոր 'ի հարկէ ունէին․ և արդէն գիտեմք անոնց մէկ քանին, ինչպէս Նաւասարդաց կամ Ամանորայ (Նոր տարւոյ) տօները, Աստղիկան տօնը, Վարդավառի տօնը, և այլն․ որոնք իրենց առաջին ամսոյն (Նաւասարդի) մէջ կու կատարուէին, ծառոց ծաղկանց և ջուր ցանելու

1 Օրինակ մը․ Յառաջաբանն Առաքելական կանոնաց կ՚ըսէ․ « Յամին 339 իշխանութեան Յունաց․․ որ օր չորս » էր մարգաց ամսոյ, յաւուր միաշաբաթոջ, որ է կատա- » րումն Պենտակոստէից » ։ Թուականն է Աղեքսանդրի, կամ Սելևկիացւոց 311 տարին, Քրիստոսի 30 թուականն․ Հոգեգալստեան կիրակին չորս յունիսի ։

կամ ջրոց մէջ լողալու խաղերով. — գիտենք այլ որ Հայաստանի մէջ այսպիսի խաղեր՝ տարւոյն միայն քանի մ՚ամսոց մէջ կրնան կատարուիլ, երկրին երկարատև ցրտութեանը համար. — անկարելի էր որ այն տօներն շարժական տարւոյ օրերու վրայ կապուէին, և յայտնի այլ է հաստատուն օրերու վրայ դրուած ըլլալնին. իրենց տարեգլուխն և Նաւասարդն այլ՝ յուլեան տարւոյ օգոստոսի 11ին էր: Եւ որովհետև անտարակոյս գիտենք որ քաղաքական շարժուն տարին այլ մի և նոյն հայկական 12 ամիսներով և աւելեաց հինգ օրերով կու բանէր, հարկ է ըսել թէ ուրիշ հին գիտուն ազգաց պէս երկու տարի ունէին, մէկն քաղաքական, միւսն սրբազան՝ որ էր հաստատուն. և անտարակոյս ասոր սկիզբն էր հինգ ամսով մ՚առաջ, արէգ ամսէն սկսելով, որուն անունն՝ կու նշանակէ զարև. և կու սկսի բուն արեգակնային ըսուելու վայելուչ օրէն, այսինքն գարնանամուտէն (յ՚9-21 մարտի). և ասով այլ նաւասարդի գլուխն կամ քաղաքական տարեմուտն՝ նոյնպէս ճիշդ օգոստոսի 11ին (23ի) կու հանդիպի:

## Գ

Տարին գարնանամուտին օրը սկսելն (ինչպէս որ Հրեայք և Պարսիկք այլ կ՚ընէին իրենց կրօնական կարգաց համար՝) շատ վայելուչ և բնական է, և մեծ պատիւ կ՚ընէ անոր՝ որ զայս նախ գըտաւ և դրաւ. եթէ ըլլայ Մովսէս մարգարէն՝ ըստ Հրէից, և եթէ ըլլայ իրմէ ալ հին մէկը՝ զոր Հայք իրենց ազգին այլ, տումարին այլ, ամենոյն պարծանաց. այլ հեղինակ և նահապետ կու ճանչնան: Բայց ինչու քաղաքական օրինօք նաւասարդն՝ օգոստոսի 11ին ըլլայ գլուխ տարւոյ և աշխարհաժողով տօնից. անանկ օր մը՝ յորում արեգակ-

նայլին շրջանին մէջ նշանաւոր կէտ և հանդիպում մը չկայ: Ո՞վ էր դրած այս կարգը, զոր մեր Ս. Թարգմանիչք այլ բաներ են, Սարկաւագն այլ, Յայսմաւուրք այլ պահեր են. և որ մեծն է՝ Հայոց մեծ Թուականը հաստատողքն այլ նոյնպէս անփոփոխ թողեր են. վասն զի՝ իրենց տումարը նորոգելուն և Թուականը կարգելու տարին՝ ամենևին չգպան տարեգլխոյն, որ այն տարի յուլիսի 11ին կու հանդիպէր, այսինքն Հայոց քաղաքական շարժուն տարւոյ գլուխն կամ նաւասարդն՝ Քրիստոսի 552 Թուականին՝ կու սկսէր 'ի 11 յուլիսի: — Արդ թէ որ իրենցմէ, և նաև մեր Թարգմանիչներէն առաջ Հայ տօմարադիր մը բնտռւենք, առնցմէ 300 տարի վեր ելնելու է, մեր բազմահանդէս Բ Արտաշիսի օրերը. վասն զի թէպէտ մեր Արշակունեաց նախահայրն Վաղարշակ՝ շատ գեղեցիկ կարգեր և սովորութիւններ հաստատեր էր 'ի Հայս, կ'ըսէ Խորենացին (Բ. ԾԹ.) բայց չէր դրած «զշաբաթուց և զամսոց » և զտարեաց բոլորմանց » գիտնական և օրինաւոր կարգ մը. այլ «այս ամենայն յօրինի յա» ւուրս Արտաշիսի»: Ասոր թոռն այլ Վաղարշ կարգեց նաւասարդի նոր տարւոյ տօները աշխարհախումբ հանդիսիւ կատարել 'ի Բագրեւանդ, իր հօրեղբօր Մաժան քրմապետին գերեզմանին և բագնին քովերը[1]. բայց ոչ սա և ոչ իր պապն Արտաշէս՝ չեն Հայոց բնիկ տումարը և ազգային տօնը կարգադրողքն. մանաւանդ թէ Արտաշէս կերպով մը խափանած կ'երևի Հայկազանց կարգադրութիւնը, թէ և աւելի կանոնաւոր տումար մը մտցընելով. որ էր անշուշտ յուլեան տումարը, առնելով 'ի Հռովմայեցւոց. վասն զի գիտեմք 'ի պատմութենէ՝ որ առաջին ինքն եղաւ Հռով-

1 Խորեն. Բ. ԿԶ:

մայեցւոց հարկատու․ իր ատեն կայսրն Տրայիա-
նոս՝ զՀայաստան Հռովմայեցւոց իշխանակալու-
թեան գաւառ սեպեց․ (թէ և քանի մը տարի ետ-
քը Ադրիանոս կայսր՝ նորէն կէս ազատ թողուց)․
այն ատեններն նաև Կապադովկացիք՝ (որոնց հին
տոմարն և ամսոց անուանքն մօտաւոր են Պարսից
և Հայոց) ընդուներ էին Հռովմայեցւոց տումա-
րը․ ըսել է որ Արտաշիսի ըրած տումարի կարգա-
դրութիւնն այլ, 'ի 122 թուին Քրիստոսի, էր
Հռովմայեցւոց տումարին համաձայնութիւն մը,
թողլով ըստ մասին հին Հայկազանց կարգը և ժա-
մանակաչափութիւնը։ Այս բանիս վկայ կ՚ըլլայ
հնախոյզ և բազմահմուտ Սարկաւագն մեր, որ
կ՚ըսէ, թէ « հաւաստապէս 'ի ՃԻԲ ամ Քրիստոսի
» աւարտ առ Թուականն Հայկայ »․ Թուականին ա-
ւարտին՝ ոչ լմըննալ՝ այլ 'ի հարկէ դադրիլ իմա-
նալու է․ իսկ Հայկայ թուական ըսածն այն է՝ զոր
աւելի յարմարապէս յետոյ կ՚անուանէ ՀԱՅԿԱՅ
ՇՐՋԱՆ․ որ և մեր անշարժ և շարժուն տարինե-
րուն և հին և հնագոյն տումարին ծանօթութեան
պատճառ և առիթ պիտի ըլլայ հոս։

Վերը յիշեցի որ մեր թէ շարժուն և թէ ան-
շարժ տարւոյն սկիզբն կամ նաւասարդի գլուխն
կ՚ընկնայ յուլեան տումարին օգոստոսի 11ին (նոր
տումարի 23)․ այս բանս մեկէն կ՚իմացընէ որ ա-
տեն մ՚եղած է որ երկու տեսակ տարիներն այլ
նոյն մէկ օրն սկսած են, երկուքին նաւասարդքն
այլ 'ի 11 օգոստոսի են եղեր, և երեք տարի միա-
բան երթալով՝ չորրորդ տարին շարժուն կամ
քաղաքական տարին՝ սկսեր է 'ի 10 օգոստ․ յետ
չորս տարւոյ այլ՝ յ՚9 օգոստ․ և այսպէս ամեն չորս
տարի օր մ՚առաջ սկսելով՝ հեռացեր և կանխեր
է քան զանշարժ տարին։ Արդ ըսինք որ Հայոց
տումարին սկզբնաւորութեան տարին (552 Քրիս-
տոսի) նաւասարդի մէկն 'ի յուլիսի 11ին էր, ճիշդ

ամիս մը կամ 31 օր առաջ քան զանշարժ տարին. ըսել է որ 31 անգամ նահանջ չընելով չորս տարին հեղ մը՝ այսպէս յառաջացեր էր քաղաքական տարին. արդ 4 անգամ 31 տարին կու գումարեն 124 տարի. ըսել է թէ տումարին նորոգութենէն 124 տարի առաջ թէ՛ կրօնական և թէ քաղաքական տարին նոյն օգոստոսի 11ին սկըսած են, որ էր Քրիստոսի 428 տարին. (վասն զի 124—552=428):

Ա՛լ աւելի վերը յիշեցի որ մի և նոյն ամսոյն օրն՝ արեգակնային կամ երկնից նոյն և մի որոշ կէտին հանդիպելու համար՝ պէտք է 1461 անհաստատ և 1460 հաստատ տարի. ուրեմն որպէս զի Հայոց երկու նաւասարդքն՝ կամ երկու տարեգլուխքն այլ իրարու հանդիպին, մի և նոյն օրը սկսին, պէտք է որ 1460 նահանջաւոր կամ 1461 աննահանջ տարի անցնի. կամ աւելի ուսումնապէս ըսելով 1460 տարեկան շրջան մը: Արդ ինչպէս քիչ մ'առաջ տեսանք՝ մեր այս երկու տեսակ տարիներուն զուգաւորութիւնն եղած էր 'ի թուին Քրիստոսի 428 (11 օգոստ.). անկէ ետև դեռ չէ հանդիպած, բայց մօտ է հանդիպելու՝ յամին 1888. որով կու լրանայ շրջան մ'այլ (1460 ամաց) մեր թարգմանչաց օրէն մինչև 'ի մեզ. իսկ անկէ (428էն) առջի 1460 ամայ շրջանն սկսած էր յամին 1032 նախ քան զթուականն Քրիստոսի. անկէ առջի շրջանն այլ բնականապէս (1460 տարի ալ առաջ) յամին 2492 նախ քան զթիւ Քրիստոսի: Ահա այս շրջանս է ՇՐՋԱՆ ՀԱՅԿԱՑ, և այն Քրիստոսի թուականէն առաջ 2492 տարին՝ է ԹՈՒԱԿԱՆՆ ՀԱՅԿԱՅ, որ և կրնայ ըսուիլ արժանապէս՝ ստուգագոյն և փառաւորագոյն ՀԻՆ ԹՈՒԱԿԱՆ ՀԱՅՈՑ, և սկիզբն ժամանակագրութեան. որոյ սկիզբէն մինչև հիմայ (Քրիստոսի 1870 թուականին) կ'ըլլայ 4362 տարի: Այս է

տարեք Հայոց ազգին մինչև հիմայ, որուն նման հաստատ Թուականով՝ բաց 'ի Հրէից, Չինաց և 'ի Հնդկաց՝ հիմայ չկայ ուրիշ հին ազգ մը։

Դ.

Բայց այս պարծանքս կամ դիտութիւնս ապահովելու համար նաև օտարաց առջև, պէտք է հաստատենք քանի մը փաստերով և աւանդութեամբք այլ, 'ի վերայ երկու փաստիցն զոր հիմայ յիշեցի. այսինքն, մէկ մ'որ մեր երկու տեսակ տարիներուն զուգաւորութեան սկիզբն՝ կու հանդիպէր 'ի 1032 ամի նախ քան զՔրիստոս. և զի ազգերնուս հնութիւնն՝ յայտնի է Թէ Քրիստոսէ 1032 տարիէն աւելի առաջ է, ապա անկէ առջի հանդիպութեանը տանելու է, որ է 2492ն։ Եւ երկրորդ՝ որ յայտնապէս Սարկաւագ վարդապետ հին տումարներէ և պատմութիւններէ քննելով ճանչցեր, վկայեր և յայտներ էր այս Հայկեայ Շրջանս։

Ուրեմն մեր Թուականին և շրջանին սկիզբը գտնելու համար, քննենք Թէ ինչու արդեօք Հայոց Նոր տարին 11–23 օգոստոսի հաստատուած է. և ինչու Հայկայ շրջանն սկսաւ 2492 տարի Քրիստոսէ առաջ. վասն զի ոչ աստեղաբաշխական պարագայ մը և ոչ Նոր եղանակ մը կու հանդիպին տարւոյն այն օրուանը վրայ. պէտք է ուրեմն ասոր պատճառը բնտռել պատմական դիպաց մէջ։ Եւ նախ օտարազգեաց մէջ բնտռելով 'ի հին պատմութեան, կու գտնենք իրաւցընէ Եգիպտացւոց մէջ (որ և միևնակ կրնան հնութեամբ Հայոց հետ մրցիլ, և որոնց հետ դեռ ուրիշ շատ նմանութիւններ ունին՝ որ դեռ լաւ ապացուցուած չեն), կու գտնենք որ այն Նեղոսի ափանց բնակիչքն՝

իրենց այն բարեբուղխ գետոյն հարսանեաց տարեկան հանդէսը՝ արդարև աշնանային գիշերահաւասարէն ամիս մը առաջ կու կատարէին, որ է ճիշդ 11–23 օգոստոսի, Հայոց տարեգլխին օրը։ Մեր ազգն ալ այս տարեգլխին հանդէսներուն մէջ, կու տօնախմբէր հեթանոսութեան դարերուն մէջ ջրհեղեղին յիշատակը, ինչպէս ինչուան մեր օրերն ալ կու կատարուին՝ ջրի խաղերով և աղաւնի թռցընելով 'ի տօնի Վարդավառին կամ այլակերպութեան Քրիստոսի. վասն զի մեր սուրբ հարք օգոստոս ամսոյն 6ին հաստատած էին այս տօնը, Նոր տարիէն հինգ օր ետև. և նոյն օրը մեր հեթանոս նախնիք նուիրած էին իրենց Աստղիկ դիցուհւոյն. իսկ տարւոյն սկիզբն՝ ունէր իր առանձին աստուածը։ Բայց թէպէտ և այս երկու տօներն՝ եգիպտական և հայկական՝ թէ օրերուն յարմարութեամբը և թէ յիշատակաց՝ յարաբերութիւն մ'ունէին իրարու հետ, 'ի վերոյ այսր ամենայնի այս երկու հին ազգաց շրջաններն մէկմէկու չէին համեմատիր, այսինքն նոյն օրը չէին սկսիր ու լմըննար։ Աւելի զատ՝ այն հանդիսից տօնախմբութիւններն չեն ապացուցաներ օրուան ընտրութեան պատճառը. վասն զի այն օրն չի միաբանիր ոչ ջրհեղեղին սկզբանը և ոչ վերջանալուն հետ, և ոչ Նեղոսին ջրոցն աճմանը կամ նուազմանը, և ոչ Շնիկ աստեղ արեգակնային ամբարձմանը հետ. ապա ուրեմն ուրիշ պատճառ պէտք է բնտռել, թէ մեր Հայկայ շրջանին և թէ իր առջի օրուան համար։

Բայց նախ կարճ մը պարզեմ, Հայկակ, այս աստեղաբաշխական յիշատակութիւնս. վասն զի ամեն ստոյգ տումար և ժամանակի չափ՝ աստեղաց շարժմամբք և շրջանօք կ'ըլլայ, Հայկայ շրջանն այլ ծանօթ՝ նաև ուրիշ ազգաց՝ ուսումնապէս կ'ըսուի Շնկան շրջան, կամ ըստ Եգիպտացւոց Սօթիա-

կան շրջան. իրենք Սոթիս կ՚անուանէին Շնիկ աստղը, որ Շուն համաստեղութեանց մէջ է և Փոքր Շան այլ կ՚ըսուի, և քան զամենայն աստեղս պայծառագոյն է։ Իրենց երկրագործութեան համար ամենահարկաւոր էր գիտնալ Նեղոս գետոյն աճելու և նուազելու օրերը, սկիզբը և վերջը. և գիտելով զայն՝ որ աճման սկիզբն կ՚ըլլար ամառնային արևադարձին ատեն, և գտած ատեններնին Շնիկ աստեղ երևնալն այլ արևուն ելնելէն առաջ, (որ ուսումնապէս արէգակնային ամբարձումն կ՚ըսուի) նոյն օրերուն հանդիպեցաւ. ուրեմն այն օրն իրենց տարեգլուխ դրին. բայց որովհետև իրենք ալ մեզի պէս քաղաքականօրէն շարժուն տարի կու գործածէին, որով ամենայն տօնք և երկրագործութեան կարգեր կու փոփոխուէին. հաստատ կրօնական և գիտնական տարի մ՚այլ դրին աստեղաբաշխական քննութեամբք, և ճանչցան 1460 տարուան շրջանը. իրենց երկու տեսակ տարիներուն սկիզբն այլ կու զուգաւորէր Շնկան երևնալուն, արևադարձին և Նեղոսի ամբարձման հանդիպած մի և նոյն օրը։ Այս է Սոթիական կամ Շնկան շրջանն։ — Դառնանք հիմայ մեր յիշատակաց։

Մեր հին տօմարագիրք և Ցայսմաւուրք կ՚ըսեն, թէ յետ խառնակութեան լեզուաց ամեն նահապետ կամ ազգապետ Բաբելոնէն դառնալով այն երկիրը ուսկից ելեր էր, կամ ուր որ կ՚երթար գրաւելու, պատուիրեց իր հետևողացը որ տօնախմբեն հայրենիքը մտնելնուն տարեդարձը։ Մեր Հայկ նահապետն ալ, կ՚ըսեն, մտաւ Արարատ աշխարհը կամ իր Թորգոմայ հօրը բնակած երկիրը՝ օգոստոսի 11–23ին, և հրամայեց որ նոյն օրը տարւոյն սկիզբն սեպուի։ Կու հաստատեն դարձեալ, թէ այս դիւցազնս առաջին եղաւ տարեցոյց տալու իր նորածին ազգին, զոր

և կու պահէ մեր ազգն մասամբ անփոփոխ, ինչպէս որ իրեն աւանդուեցաւ այն նախնական դարերուն մէջ։

Այս է ահա մեր մէջը օգոստոսի 11ին տօնին պատճառն։ Երկրորդ և աւելի ստոյգ պատճառն է՝ Հայկայ դարձէն քիչ տարի վերջը՝ Բելայ յաղթուիլն և սպանուիլն (որ եղաւ յամի 2492 Քրիստոսէ առաջ), ինչպէս որ ցուցուց հասարակ հայկական թուականին անընդհատ յաջորդութիւնն։ Մեր պատմութեան ժամանակագրութիւնն ալ (որ դժբաղդաբար բաւական ճոխ չէ այս հին ժամանակաց վրայ), կ'ընծայէ մեզի թուական մը՝ Հայկայ թուականին ցուցածին մօտ։ Յովհաննէս կաթուղիկոս 'ի Հայկայ ցՎաղարշակ 2295 տարի կու դնէ. անկէ այլ մինչև 'ի Քրիստոս 149 տարի. գումարն է 2444, որով միայն 48 տարի պակաս կ'ըլլայ քան զմեր թուականս (2492). բայց եթէ Հայկայ մահը սեպեմք կաթուղիկոսին յիշածը՝ կրնայ մերինին հետ ճիշդ համաձայնիլ։ Մեր խնդրոյն համար աւելի պիտանին այս է, որ հին օտար ժամանակագրութիւն ալ ամենայն ճշդութեամբ կու համաձայնի Հայկայ թուականին հետ. վասն զի Ափրիկանոս և Եւսեբիոս իրենց մանրամասն թիւերովը Բելայ թագաւորութեան վերջը կու նշանակեն վերոյիշեալ 2492 տարին Քրիստոսէ առաջ[1]։ Այս համաձայնութիւնքս Հայկական թըւականին՝ օտար ժամանակագրաց տուած թը-

1 Ասոնք Նինոսի թագաւորութեան տարին կու դնեն յ'2058 նախ քան զՔրիստոս. անկէ այլ առաջ մինչև 'ի մահ Բելայ երկու շար թագաւորաց կու դնեն՝ Արաբացւոց և Քաղդէացւոց, 440 տարի և 8 ամիս թագաւորած, իրենց տարիովը՝ որ էր 360 օր. որով 440 տարի և ութ ամիսն՝ կ'ըլլայ 435 տարի և 5 ամիս. արդ 435 + 2057 = 2492. որ է մեր Հայկայ թուականն։

ւականին հետ, և վկայութիւնք մեր տօմարագրաց և Յայսմաւուրաց, կարծեմ բաւականապէս իրաւունք կու տան մեզի առանց տարակուսի ընդունելու Հայկայ շրջանին և մեր ազգութեան սկիզբը՝ Քրիստոսէ առաջ 2492 տարին. և մեր ազգային գերագոյն տօնին համար՝ օգոստոսի 11-23ը. որ այդ Հայկայ Թուականին առաջին տարին՝ կու հանդիպի չորեքշաբթի օր մը. որ և հաւանօրէն տարուէ տարի տօնելի օր մ'եղաւ Հայկազանց. և կրնամք ընդունիլ մեր պատմըչաց երկիւղած աւանդութիւնը, որք Հայկայ գործոց մէջ դիւցազնական քաջութենէ վեր բան մ'ալ կու դիտեն, — կրօնական դիմադրութիւն մը, ազատութիւն մը 'ի բռնութենէ առաջին կռապաշտին, կամ անոր՝ որ Աստուծոյ վայլած պատիւը և պաշտօնն՝ իր անձին կու սեփականէր: Ասոր համար այս տօնական օրս և հանդէսս պէտք է մեզի կրկնապատիկ սըրբազան և սիրելի ըլլայ:

Առաջին շրջանն Հայկայ լրացաւ Դաւիթ մարգարէի Թագաւորութեան և մեր Պերճ (Բ) Հայկազին ազգապետութեանը ժամանակ, յամին (1032 նախ քան զՔրիստոս): Իսկ երկրորդ շըրջանն լրացաւ՝ զարմանալի հանդիպութեամբ՝ այն մեզի համար շատ ցաւալի տարին, յորում կերպով մը նաև ազգերնուս միանձնաբար ինքնակացութիւնն այլ լրացաւ լմնցաւ, — յամին Քրիստոսի 428, — ուրբաթ օր մը: Այն սև տարին (428) էր որ մեր վերջի Թագաւորն Արտաշէս Արշակունի՝ Թագէն զրկուեցաւ, և Հայք իրենց ազգային միապետէն. այն տարիէն 'ի վեր Հայաստան երկու մեծ տէրութեանց մէջ բաժնուեցաւ (Յունաց և Պարսից), և ազգն երկու տէրանց ծառայ կամ հպատակ եղաւ. և որ աւելի շատ զարմանալի է, անկէ վերջը ամբողջ Գ շրջան մ'այլ լրանալու մօտ է (վասն զի 1442 տարին անցեր է), և

տողերնիս միշտ նոյնպէս մնացեր է՝ երկու կամ իրեք մեծ տէրութեանց մէջ բաժնուած, թէպէտ և հազար ու մէկ քաղաքական փոփոխութիւնք և տիրապետութիւնք եղած են այս երկայն 14 ու կէս դարուց մէջ թէ 'ի Հայաստան, և թէ իր մօտ աշխարհաց մէջ։ Այս Գ շրջանս՝ յորում եմք, սկը-սած է շաբաթ օր մը. և պիտի լրանայ քիչ տա-րիներէ ետև՝ յամին 1888. յորում օգոստոսի 11-23ն հինգշաբթի օր մը պիտի սկսի Դ շրջանն. զոր ամենայն սրտով կու մաղթեմ քեզի, Հայկակ, և ամենայն քու ժամանակակից ազգայնոց՝ որ եր-ջանիկ սկզբնաւորութեամբ ըլլայ, և օգտակար միաւորութեամբ մը բոլոր Հայազգեացս։

Յետ այսչափ վկայութեանց աւանդութեան և պատմութեան և ազգային և օտար ժամանակա-գրութեան, զոր 40 դարէ 'ի վեր ամբողջ ազգ մը ընդուներ է, և հաստատեր են մեր հռչակաւոր մատենագիրներն և եկեղեցական Հարք, պէտք չէ՞ վայելուչ սեպել, ընդունիլ և տօնախմբել այս-պիսի յիշատակ մը, տօն մը, որ է Հայկայ. կամ յանդգնութիւն և անտեղութիւն չէ՞ առասպել սեպել այն ամեն բանը՝ որ պատմական ժամանա-կաց սովորական շրջանէն վեր կ'ելլէ. մանաւանդ երբ այնպիսի հին ժողովրդեան մը վրայ է խնդիրն՝ որուն պէտք է դիմէ ամեն ժողովուրդ որ իր ծա-գումը բնտռէ, այսինքն մարդկութեան հայրե-նիքը, Եդեմայ երկիրը։ Ծիծաղելէն, չհաւանելէն դիւրին բան չկայ. բայց չկայ նաև աւելի դժուա-րին բան մը՝ քան զերաւամբք ժխտելն։ Իսկ ես կու հաւանիմ տեսնել, (նաև յանձն առնլով ա-մենէն անաչառ քննութիւնն ալ) մեր հայրենեաց մէջ յետ Ադամայ և յետ Նոյի՝ Հայկ մը, և կ'ու-րախանամ իր հանդիսին վրայ, որուն չեմ ալ վախնար հրաւիրելու բոլոր յաբեթական ցեղին սերունդները, որոնք այն հին ժամանակը չունէին

այնպիսի երևելի գլուխ մը կամ ներկայացուցիչ մը՝ ինչպէս էր մեր Հայկն։

Սակայն մի՛ կարծեր, Հայկակ, թէ ինչ որ պատմութիւն կամ աւանդութիւն կու զրուցեն մեր Հայկայ վրայ, ամենն ալ կ՚ուզեմ հաւատալի սեպել։ Անտարակոյս է որ Հայոց ազգն ունէր գլուխ մը կամ նահապետ մը՝ ժամանակակից Բելայ, Բաբելոնի աշտարակին շինութեան ատեն, և այս շէնքին կործանմանէն վերջը՝ եկաւ ապաւինեցաւ Այրարատայ երկիրը, որ անկէ ետև իր անուամբը կոչուեցաւ։ Իր անունը, ըստ վրաց ՀԱՈՍ, մեր մէջ կ՚ըսուի ՀԱՅԿ, որ ըստ քերականական կանոնի լեզուիս՝ ՀԱ միավանկ բառին նուազական կրնայ սեպուիլ. այս անուամբ կը ճանչնանք մենք մեր ազգը, և ոչ Արմէն կամ Արամեան, ինչպէս որ օտարազգիք կ՚ըսեն։ Երբեմն մեր նահապետին անունն վերջադիր յօդով մը կը գրուի Հայկն, մանաւանդ երբոր զՈրիոն նշանակէ, վասն զի այսպէս կոչուած է այս համաստեղութիւնս՝ մեր սուրբ Գրոց և եկեղեցւոյ սուրբ և իմաստուն հարց գրուածոց մէջ. որք հարկաւ առած ազգային հին աւանդութեան մը կու հետևէին, ուսկից հաւանական է որ Յոյնք հնարած ըլլան իրենց Որիոնի առասպելները, եթէ հարկ սեպելու ըլլանք որ այս երկու ազգերէն (Հայք և Յոյնք) մէկը մէկալէն առած ըլլայ այդ աւանդութիւնը։ Եթէ կարծիք ժողովրդեան և եթէ Հայաստանի վիպասանից շողքորդութիւն, այս համաստեղութեան լոյսն նոր պայծառութիւն մը կու տայ Հայկայ իրական էութեանը վրայ. այս էութիւնս հաստատապէս կու ստուգուի շատ մը աշխարհագրական անուններով այլ, որոնց սկիզբն 'ի պատմութենէ և յաւանդութենէ կ՚ընծայուին մեր դիւցազին։

Մանաւորապէս Վանայ հուշակաւոր բարձրա-

ւանդակին վրայ կը գտնուին այս հին տեղուանքըս, պայծառացած Հայոց նահապետէն, որուն զաւակներն պահեցին երկայն ժամանակ, գրեթէ 120 ծնունդ որդւոց որդի յաջորդելով՝ այն անունները, և նաև երկրին առաջին շէնքերուն հնացորդները, որոնց մէջ հաստատած են ինչուան հիմայ իրենց ընտանի բնակութիւնները: Այս բարձրաւանդակս արուեստով և բնութեամբ զարմանալի, աւելի գեղեցկացած է յաւերժ յիշատակաց արժանի Հայկայ գործքերով, որ դեռ կը հնչեն պատմութեամբ և աւանդութեամբ անուանի եղած շէնքերու հնացորդաց մէջ. ինչպէս են Նախ և առաջ ամբողջ գաւառներ՝ որք լճին հիւսիսային և արևմտեան կողմը կը պատեն, որոց մէկն կ՚անուանի Հայկայ մէկ որդւոյն անուամբը (Խոռ) Խոռխոռունիք, և միւսն իր թոռանը անուամբ (Բազ) Բզնունիք, ուսկից և լիճն կոչուեցաւ ծով Բզնունեաց: Եզքը՝ Նէբրովթայ լեռն. տեղացիք կ՚աւանդեն թէ Նեբրովթ ուզեր է լերան գագաթը պալատ մը շինել, որ կործաներ է վրէժխնդիր կայծակներով, և ընկղմեր է լերան վրայ բացուած վիհերու մէջ: Այս լերան ոտքէն դէպ 'ի հարաւային կողմը կը տեսնուի երկայն շարք մը մեծամեծ ժայռերու զոր ռամիկն կ՚անուանէ Ողջու Քարեր. վասն զի կ՚ըսեն թէ Նեբրովթայ ուղտերն են ասոնք, որ լճին եզերքէն աւազ կը կրէին պալատին կամ բերդին շինութեանը համար, և Աստուծոյ բարկութիւնն զանոնք 'ի քար դարձուց. և հաւանօրէն լերան հրաբուղխի սաստկութենէն փրթած կամ ժայթքած քարեր են: Լճին հարաւային կողմը Կապուտկող բարձր լեռը կայ ջրերուն մէջ երկընցած, հին ատենէ 'ի վեր ճանչցուած իր երկաթի և կապարի հանքերովը. ասոր հարաւային կողմը մինչև հիմայ Բէլու, այսինքն Բելայ (որ է Նեբրովթ)

անուամբ գեղ մը կայ․ աւանդութիւնն կ'ըսէ թէ այս հսկային գլուխը հոն իջուցին։ Լճին նոյն կողմը, բայց աւելի դէպ յարեւելք Տող գեղը կայ, ուր ըստ տեղական աւանդութեան, հսկային մարմնոյն մէջէն Հայկայ արձակած նետը քաշեցին, և բացուած ծակէն արեան ճառագայթներն կողմէ կողմ շողալով կը թափանցէին։ Քառասունէն աւելի ջուրեր, առաւել կամ պակաս երկայն ընթացքով՝ կը թափին լճին մէջ․ ասոնց ամենէն մեծն է Հորգոմայ գետը, որ հիմայ Խօշապ կամ Անգղայ գետ (Էնճիլ-չայ) կ'ըսուի, որուն աղբիւրներն թէպէտ և գտնուած չեն, այլ յայտնի է որ արեւելեան կողմէն կու գայ և լճին հարաւային արեւելեան անկիւնը կը թափի, գեղի մը քովէն՝ ուսկից իր անունը կ'առնու՝ Հորգոմ։ Այս գետոյս լայն և ընդարձակ ձորը (որուն մէջ դեռ 40էն աւելի հայաբնակ գեղեր կան՝ հին Հայկական անուններին պահած են․ և քանի մը հաւին վրայ կ'երևան խոր հնութեան նշանք Հայկայ ժամանակէն 'ի վեր), այս ձորս կը կրէ ամենէն սիրելի և ամենէն սրբազան անունը բոլոր աշխարհի մը՝ որ գրեթէ Գաղղիոյ չափ ընդարձակ է, և կը կոչուի ՀԱՅՈՑ ՁՈՐ․ անուն պարզ, միանգամայն և այնչափ վսեմ՝ ուսկից աւելին չէր կրնար տալ նորածին ազգի մը առաջնորդն և հայրն, որ տեսաւ այն հեռաւոր սահմաններուն մէջ իր կըտրիճ զաւակները և թոռները պատերազմիլ իր քովը, աշխարհիս ամենէն ահարկու թշնամւոյն դէմ, պաշտպանել զնա և վաստըկիլ առաջին յաղթութիւնը, որ և միանգամայն ամենէն օրհնաւոր, ամենէն փառաւոր և ամենէն պիտանին եղաւ։ Այս զուտ հայկական ձորն 'ի վեր երթալով՝ պատերազմական դաշտին կեդրոնը կը հասնինք, և ամենէն պատուելի յիշատակարաններու՝ որ են իրեք տեղիք կամ իրեք չէնք ժամանակակիցք և համա-

նունք՝ հանդիպած գետակներուն. Նախ Հայք (Թէք) գետն՝ ուսկից որ ձորն ալ իր անունը կ'առնու, մեր յաղթող դիւցազն չինեց, նոյն իսկ պատերազմի ճակատին վրայ: Անկից քիչ մը հեռու, դէպ 'ի հարաւ՝ Աստուածածնի գետը, ուրուն համար աւանդութիւնն կ'ըսէ, թէ հոս տեղս Աստուած երեւցաւ Հայկայ, օրհնեց անոր աղեղը՝ որ եղաւ իրեն գործիք փառաց, իսկ իր հակառակորդին համար՝ զէնք մահու: Պատմութիւնն կը ճանչնայ զՀայկ առաջին և ամենէն քաջ աղեղնաւոր: Այս երկու գետերուն մէջ կը գտնուի գերագոյնն յիշատակարանաց, այսինքն ՀԱՅԿԱՅ ԲԵՐԴՆ. ամէն կողմէ զատուած բլուրի մը գագաթան վրայ, և իբր հրաշքով մը դաշտին մէջէն բարձրացած. այս բլրոյն բոլոր կատարին երկայնութեան վրայ կը տեսնուի կործանած բերդի մը պարիսպ, որուն դեռ իրեք կամ չորս կարգ մեծամեծ քարերն կը մնան, կիկլոպեան շինութեամբ մը, թէպէտ և կը գտնուին տաշածոյ քարեր այլ: Ծրջապատին մէջտեղը քարաժայռին մէջ խոռոչ մը կու տեսնուի, որ հաւանաբար ջրհորի տեղ փորուած է: Եւրոպացի ճանապարհորդներէն դեռ ոչ ոք մօտեցեր է այս հեռաւոր առանձին տեղւոյս՝ որ մարդկային յիշատակարանաց առաջին երեսին վրայ նշանուած է. օտարական մը չէ լսած այն խորհրդաւոր արձագանգքն՝ որ կը հնչէ Հայկայ դիւցազնական ձայնը մինչեւ յետին որդւոցը ականջը: Մարդ կը կարծէ թէ աստուածային արհաւիրք մը կը տարածուին հոն նախասահմանեալ ազգի մը որբացած ծագմանը վրայ, և հանդարտ հոգի մը կու պտըտի՝ այն ազգին նախահարցը ուրուականներուն հովանոցեալ հովտին մէջ: Բայց ինչ են այդ որոտոցին և այդ ազնիւ և կարիճ ժողովրդեան աղբերականց քով. — ԳԵՐԵԶՄԱՆՔ. և կրնամ ըսել մուտք և կորուստք խռովարար և

անդունդ ժողովրդեան մ'ալ։ Այն բլուրին ոտքը, ուր ինկաւ Բէլ իր ահեղ պատերազմողներովը, իր 60 հսկաներովը, հոն Հայկին իրենց վերջի բնակութիւնը փորեց, և անուանեց Գերեզմանք։

Իսկ ինքն կը կարծուի որ քիչ մը ժամանակ ալ բնակած ըլլայ Վան քաղքին քով. վասն զի այս քաղաքիս ընդարձակ պարտէզներուն և այգեստաններուն մէջ, որ դէպ 'ի արևելեան կողմը կը տարածուին, Հայկաշէնք անուամբ տեղ մը կայ, մօտ այն քարաժայռ բլրին՝ ուր շատոնց գտուած էին ձեռագործ այրեր և բևեռաքանդակ արձանագրութիւններ. իսկ նորերս այս բլուրին ոտքը փորելով գտան մեծայարգ հնութիւններ, մետաղէ ամաններ՝ նոյնպէս բևեռագիր ձևերով, ոսկեզօծ կուռքեր, և նաև ձոյլ ոսկիէ գործուածներ, խեցեղէն անօթներ՝ անսովոր բաղադրութեամբ, որոնց մէջ գտնուեցան սերմանիք սովորականէն աւելի մեծ հատերով, որոնց դպչելով փոշի դարձան։ Վանայ բարձրաւանդակին ծայրը, և իր արևելեան կողմը ձևացընող լերանց պատուարին մէջ՝ որ հին ատեն Զարասպ կամ Զակրոս լերինք կ'ըսուէին, կայ և Քէլիշին լեռը, որ պարսկերէն ըսել է կապոյտ սիւն կամ արձան, և 9,000 ոտք բարձր է, որուն քովէն հին ժամանակէ 'ի վեր ճամբայ մը բացուած է Հայաստանէն Պարսկաստան անցնելու. լերան գագաթը յիշատակարան մ'ալ կայ բևեռաքանդակ գրերով, և իր ոտքը կամ քովը գեղ մը՝ Հայք անուամբ, զոր ասորի մատենագիրք այլ յիշած են։

Բայց այս ամենայն տեղերս՝ որ մեր Դիւցազնին անունը կը կրեն, չէին իր հաստատուն բնակութիւնն, կամ սիրայօժար տեղերը և իր տէրական աթոռը. այս ետքինս ուրիշ բարձրաւանդակ երկրի մը վրայ հաստատեց Հայաստանի կեդրոնին մօտ, և ոչ հեռու Արածանիէն (այսինքն հիմա-

կուան Մուրատ չայ գետոյն աղբիւրներէն, որ է արեւելեան Եփրատ)։ Հայկ այս դաշտին այնպիսի անուն մը տուաւ, որ մէկալոնց պէս լաւ յարմարած է, այսինքն անուանեց ՀԱՐՔ. որպէս զի ցուցընէ թէ հոն հաստատեցան անոնք, որք Հայոց ազգին հայր եղան. հոն տեղս աւան մ'ալ շինեց, որուն հարկաւ իր անունը տուաւ, այսինքն է ՀԱՅԿԱՇԷՆ։ Քոխ գերմանացի ճանապարհորդը կը յիշէ այս դաշտիս մէջ (որ հիմայ Խնուս կը կոչուի) գեղ մը Հայկ կամ Փայք անուամբ։

Ե

Կարծեմ, թէ այսչափ նիւթական յիշատակարաններ բաւական են հաստատելու Հայկայ էութիւնը, և հաւաստելու իր շրջանը և թուականը, հանդերձ առաջ բռած պատճառներովս. որովք մեր մէկ հին հեղինակ մը կու համարձակի զՀայկն հնագոյն քան զՄովսէս մարգարէ՝ տումարագիր անուանել. աւանդութիւնն այլ կ'աւելցընէ թէ Հայոց ամսոց անուանքն իր որդւոց և դստերաց անուանքն ըլլան. — գուցէ ըլլան ոմանք, բայց յայտնապէս բոլորն այլ չէն։ Սակայն պարծանք է իրեն, կամ իրեն յաջորդաց՝ և այդ Հայկայ Շրջանը և Թուականը ճանչնալ, գնել և պահելը. — պարծանք և պատիւ է մեր իմաստասէր Սարկաւագայ այլ՝ այս հին յիշատակս յարուցանելը Հայկէն 3600 տարի ետև, և ցուցընել որ մեզի ծանօթագոյն Հայոց տումար և թուական ըսուածէն առաջ՝ կար հնագոյն տումար մը և հաստատ տարի մը Հայոց, որ կ'ըսուի հին տումար Հայոց. և այս բանիս համար Յովհաննէս Գառնեցի՝ մերձաւոր ժամանակաւ Սարկաւագայ՝ կ'ըսէ ասոր վրայօք. «Այն՝ որ զտումարն երևեցոյց զհին Հայոյն»։

Ահա այս հին Հայքին տումարին հաստատ ամսոցը վրայ էր որ շարեց մեր առաջին տօնակարգն՝ անմահանունն Ս. Սահակ՝ Հայոց եկեղեցւոյն սեփական տօները, զոր 'ի Յունաց տաւածներէն՝ զոր ըստ լատին ամսոց օրերուն դրաւ, անոր համար մեր ազգային ամսոց շարած տօներն ըսուեցան ՀԱՅԱԴԻՐ: Այս անունն է որ երբեմն ես այլ կու բանեցընեմ քեզի պատմելու ատենս մեր հին յիշատակները, զանոնք դնելով իրենց հանդիպած օրը ըստ հաստատուն տումարի: Այս հին հայ տումարս կամ Հայադիրն անշուշտ պահուած էր ազգերնուս կրօնական և գիտնական գործոց մէջ. բայց ժողովուրդն քաղաքականօրէն շարժուն հասարակ տարիով կ'երթար. զոր մեր Թարգմանիչք այլ 'ի հարկէ չէին կրնար փոխել. բայց Նորոգողքն տումարի յամին 552 կրնային գոնէ եկեղեցւոյ տօները անշարժ տումարի վրայ հաստատել, և չըրին, անոր համար յոմանց շատ կու մեղադրուին: Վերջապէս Սարկաւագ վարդապետ, ինչպէս 'ի սկզբան ըսի, այս հաստատուն կանոնը դրաւ սըրբոց տօնից համար, գոնէ յիշելու զանոնք այն օրերը՝ յորում հաստատուն տումար ունող ազգք կու յիշեն. այս իր Սարկաւագադիր կոչածը հրատարակեց յամին 1116, թէ և անկէ առաջ այլ տումարի վրայ բաներ գրեր էր:

Արդ այս է, Հայկակ, մեր նահապետին անուամբ յիշեալ և յիշելի Հայկեան Շրջանն, և Թուականն Հայկեան, զոր թերևս արժանի էր մեզի գործածել՝ աւելի քան զսովորական պակասաւոր թըւականն մեր. որով և ամեն ազգաց ժամանակագրութիւնն այլ դիւրաւ կրնայինք չափել և համեմատել մեր ազգին ժամանակաց հետ:

# Դ.

## ՅԱՆՈՒԱՐԻ 6 Ի ՀԱՅՍ

Տարւոյն առաջին ամիսն՝ մեր կիսագնտին վրայ, գրեթէ ամեն տեղ ըստ կերպարանաց բնութեան տխուր է, քիչ շատ ձմեռն ըլլալով. զոր միայն քաղաքական և եկեղեցական տօնք կու մխիթարեն և յիշատակք անցելոց կու զբօսեցընեն։ Այս ամիս մեր Հայաստան աշխարհէն երեւան այլ ամենէն սգակերպ և ծանր երեւոյթներէն մէկը կ'ընծայէ, գրեթէ բոլորովին ձիւնով և սառամանեօք ծածկուած. ձմեռն հոն իր աթոռոյն վրայ անշարժ կ'երեւի. կամ բուքերով երկինք երկիր մրրկելով, կամ թէ և պարզ ըլլէ՝ անանկ չոր և բարակ ցուրտ մը կու տարածէ օդուն մէջ, որ կարծես թէ արև՝ իր պայծառութիւնը միայն պահեր և կրակը մարեր է։ Հա՛պա գիշերը. երբ չորցած սառնապատ ծառոց միջէն սարսռալի օձասուլիկ պախրցին կամ արեւելեան հովը, գոգաւոր ձորակներու մէջ որոտալով այն երկայն վայերը վույերը լսեցընէ՛... Գոցեցէ՛ք գոցեցէ՛ք դուռն ու երդիք, ամեն ծերպք ու ծակտիք։ Ո՛հ, ի՛նչ քաղցր է, Հայկակ, շորուիլ նստիլ ամրածածուկ ձեղուան մը տակ, թէ և հողէ ըլլայ, կարմրաբոց փուռն կամ թոնրի մը եզերք, և 14-15 ժամ երկայն գիշերուան քառորդ մաս մը անցեալ դիպուածոց, և մնացածն հայրենեաց,

5*

ամսոյն նոյնաթիւ օրերուն մէջ հանդիպած բաները զբօսցնելով վիպասանելով անցընել: Ո՛րչափ ցանկալի էր մեզի այլ եկեղեցականին հետ քաղաքական և ազգային Ցոյսմաստուրէ կամ Հոյսադէր մ'ունենալ. առաւօտը զայն կարդալ, իրիկունը անով զբօսնուլ կրակին բոլորտիքը:

Յանուար ամսոյս մէջ գիշեր մը և օր մը կայ, զոր Հայն գրեթէ ամէն ազգէ աւելի մեծահանդէս կ'անցընէ, և չի կրնար տան մէջ արգիլեալ մնալ. այն օր ձմեռ չկայ. փոթորիկը կու թողու, ձիւն բուք կ'արհամարհէ, ցուրտ կ'ելլէ, կու փութայ յեկեղեցի, Աստուածայայտնութեան տօնը կատարելու. և եռանդեամբ ցատքըռտելով թղաչափ թանձր սառերն անգամ կու կոտրտէ, թմրած պաղած ջուրը կ'արթընցընէ, մէջը կու մտնէ՝ քրիստոսանիշ խաչին կնքահայր ըլլալու:

Այդ մեծ տօնին օրը սովորական հանդէսներէն զատ՝ շատ նշանաւոր դէպք այլ հանդիպած են մեր նախնեաց ատեն. որոց մէկ քանին յիշենք այս իրիկուն մեր ընտանի կրակարանին եզերքը բոլորած, թողլով վիպասանից զանոնք բանազարդելու, և գուսանաց՝ երգելու: Յիշելու դէպքերէս շատն հանդիպած է մեզմէ 800 և աւելի տարի առաջ, ԺԱ դարուն երկրորդ քառորդին, մեր Պետրոս կաթողիկոսին օրերը. որ այն դէպքերուն գլխաւորին պատճառաւ՝ Գետադարձ ըսուեցաւ. և թէպէտ քիչ մը չափէն աւելի ազգասէրք և չափէն պակաս յամառասէրք այլայլեր են եղածին պատմութիւնը, բայց անհիմն չերևիր իր պարզ և հին վկայութեանը մէջ: Եթէ Պետրոս կաթողիկոսի աջն հրաշագործ չէր, իր ձեռքը եղած խաչն իրմէ առաջ այլ շատ հրաշքներ ցուցեր էր. մենք կու սիրեմք Պետրոսի պերճախօսիկ շարականները, բայց չեմք կրնար գովել իր պերճասէր հնարքները, որովք եկեղեցիէն աւելի քա-

դամբարան տեսութեանց մէջ անունն թողած է։ Իր քառասնամեայ հոգևոր տիրութեան առաջին տարիները՝ Անի Թագաւորաբնակ քաղաքին մէջ կու նստէր, և երկրորդ Թագաւորի մը պէս փառօք կու փայլէր, 500 մեծ գեղերու տէր ըլլալով, և հայրապետանոցին մէջ կամ իր հետ քանի մը վարդապետ, 12 եպիսկոպոս, 60 կրօնաւոր քահանայ և 500 աշխարհիկ երէց պահելով. իսկ իշխանութեանը տակ կային 500 եպիսկոպոս կամ Թեմ, որ թէ և չափազանց երևի, գոնէ եղածին կրկինէն աւելի չէ։ Ընդդիմակ բանն այս է, որ որչափ այն Հայոց կաթուղիկոսն իշխանաւոր կ'երևար, ժամանակակից Թագաւորն այլ՝ Յովհաննէս–Սմբատ՝ իմաստասէր էր. երկուքն այլ խորագէտ, որով երբեմն համաձայն՝ երբեմն հակառակք իրարու։... Բայց ի՞նչ պէտք է մեզի հիմա ծաղկած և վաճառաշահ մայրաքաղաքի մը մեծերուն քաղաքական գաղտնիքը քննել. մինչդեռ չորս դին համբաւ կու հնչէ՝ թէ մեծազօր կայսրն Վասիլ Կ. Պոլսէն ելեր և շատ զօրօք կու գայ 'ի Պոնտոս. կ'անցնի 'ի Տայս, Վրաց Թագաւորէն պահանջելու այն երկիրները՝ զոր Դաւիթ կիւրապաղատն Տայոց՝ թողեր էր կայսեր, և Վրացին կորզեր էր։ Շրջակայ Թագաւորք և ազատագլուխ իշխանք վախով կամ պատուով կու փութան կայսեր առջև. մեր բագրատունի Թագաւորն Յովհաննէս-Սմբատ, ոչ այնքան Թանձրամտութեանն համար կու գանդաղի և չի շարժիր, որչափ մեծամտութեամբն չուզեր Հայոց իշխանութեանց մէջ իր նախապատիւ աթոռը նըւաստացընել, և իր դրացի մանրիկ Թագաւորաց նմանիլ. բայց՝ անոնցմէ, և ինչուան իր եղբօրմէն, և այլ աւելի կայսեր սպառնալեաց յոնից համբաւէն կասկածելով, իր տեղ անոր երեսը պատուելու կ'ուղարկէ զՊետրոս կաթողիկոս։ Սա իր ե-

կեղեցական հետևողաց և սպասաւորաց հետ՝ ար-
քունի դրան մարգիկ և զինուորական գունդ ա-
ռած, իբրև երկնթագեան իշխանապետ մը՝ կ՚ելլէ
կայսեր գիմաց, անոր ձմերոցը՝ 'ի Պոնտոս. և ըստ
արժանւոյն պատուելով և պատուըւելով, կու
հրաւիրուի մերձակայ Աստուածայայտնութեան
տօնին օր Ջրօրհնեաց հանդէսը կատարել. ըստ ո-
մանց Ճորոխ գետոյն վրայ, այլ հաւանօրէն ըստ
այլոց՝ Տրապիզոնի գետակին վրայ: Յետ աղօթից
և օրհնութեանց՝ երբ միւռոնը կու թափէ 'ի ջուրն՝
և մէջը կու ձգէ այն խաչը՝ որ մասն ունէր 'ի բուն
փրկչական խաչէն, և 'ի Ս. Սեղբեստրոսէ ընծա-
յուած էր առ Լուսաւորիչն մեր, յանկարծ չքեն
լուսոյ ցնցուղք կու ծագեն, 'ի զարմանս ամենե-
ցուն և 'ի մասնաւոր պարծանս Հայոց: Այս է
պարզ և առուգագոյն պատմութիւնն՝ զոր ժամա-
նակակիցն Արիստակէս Լաստիվերտեցի պատմէ,
և իրմէ առած Վարդան և այլք. որք ոչ քաղա-
քը յիշեն և ոչ գետոյն անունը, և ոչ ատոր ջրոց
յետս 'ի վեր դառնալը, ինչպէս կ՚ըսեն Կիրակոս
և այլք: Վանայ Վարագայ վանքը պահպանողն առ-
ած է հին Պետրոս կաթողիկոսի գերեզմանը այ-
սու արձանագրութեամբ. «Թ.ԻՆ ԴՃՀԱ. ԱՅՍ Է
» ՀԱՆԳԻՍՏ ՏԵԱՌՆ ՊԵՏՐՈՍԻ ԿԱԹՈՂԻԿՈՍԻՆ. ՈՐ
» Ի ՏՐԱՊԻԶՈՆ ԶԳԵՏՆ ՃՐՈՅ ԱՐԳԵԼԱՑ ԱՌԱՋԻ ՎԱ-
» ՍԻԼ ԱՐՔԱՅԻՆ »: Այս արձանագիրս կաթողի-
կոսին մահուան ժամանակակից չէ. վասն զի ինքն
այդ Թուականէն շատ տարի վերջը վախճանեցաւ
'ի Սեբաստիա, և հոն այլ 'ի Ս. Նշան վանս կայ
անոր գերեզմանն. ըսել է որ Նշխարաց մէկ մասն
փոխադրուեր է 'ի Վարագ, ուր երբեմն նստեր,
և գերեզմանին վրայ գրուեր է Ջրօրհնեաց հրա-
շքէն Թուականն, որ և է ստուգիւ 471 (ԴՃՀԱ)
Հայոց Թուականն (1022-23 ամ Քրիստոսի). Թը-
ւականը այսպէս կու համեմատեմք, բայց Ճորոխ

(կարգա՛ Ճորոխ) գետը չեմք կրնար Տրապիզոնի մօտեցընել, վասն զի լեռներով պատուած և շատ հեռու են իրարմէ. ուրեմն յայտնի սխալ կայ աստոր մէջ, և վերջին ժամանակի արձանագրութիւն մ'է: Զայն այլ թողլով հանդերձ յօդուածոյ պատմութեամբք, կարդամք գլխաւոր գիպուածին մէկ Ճոխաբան գրուած նկարագրութիւնը, որոյ հեղինակն մեր ծանօթ պատմիչներէն չէ, և քիչ մը Ճամարտակող և Ճակատամարտող է:

« Եւ զնոյնեալ կաթուղիկոսն առ կայսրն 'ի
» Տրապիզոն, ունելով ընդ իւր եպիսկոպոսունս
» երկոտասան և եօթանասուն քահանայս յարքե-
» պայից. և երկու բանիբուն վարդապետս, զբազմ-
» իմաստն զՅովսէփ Հընծուցն, և զքաջն և զան-
» յաղթն զԿողեան Յովհաննէս. այլ և 'ի զինուո-
» րական զասէն և յաւագաց արս երեք հարիւր:
» Եւ առեալ 'ի թագաւորական տանէն գանձս
» ոսկւոյ և արծաթոյ, ձիս և ջորիս: Զոր տեսեալ
» ինքնակալն Վասիլ զՏէր Պետրոս հայրապետն՝
» յոյժ ուրախացաւ. քանզի համբաւ առաքի-
» նութեան նորա և փառուց սրբութեան՝ հասեալ
» էր յառաջագոյն առ թագաւորն: Վասն զի էր
» սքանչելի այր, լի ամենայն բարի մասամբք, և ու-
» նէր շնորհ իմն աստուածական բժշկելոյ զախ-
» տաժէտս և հալածելոյ զդևս: Վասն որոյ և Վա-
» սիլ գերագոյն մեծարեաց զնա քան զամենայն
» պատրիարքունս Յունաց. և լրջմտութեամբ ըն-
» կալաւ զբերեալ ընծայս նորա. և մեծաշուք
» փառօք պատուել արարեալ եպիսկոպոսացն և
» ազատացն՝ որ ընդ նմա էին:... Եւ 'ի նոյն ա-
» ւուրսն եհաս տօնն ծննդեանն և յայտնութեան
» Քրիստոսի. և եղ ամենայն զօրօքն իւրովք և քա-
» հանայիւք յօրհնել զջուրսն: Կոչեաց և զկաթո-
» ղիկոսն Հայոց իւրայնովք 'ի յեզր գետոյն. և հրա-

» մայեաց զի նախ Տէր Պետրոս օրհնեաց զջուրն,
» և ապա Յոյնք: Եւ յորժամ օրհնեաց և էարկ
» Տէր Պետրոսն զմեռոնն 'ի ջուրն, և զկնի սուրբ
» խաղոյն հարկանէր երեք անգամ զսուրբ խաչն 'ի
» գետն. և ահա հուր սաստկապէս բոցագոյն ծի-
» րանածաւալ փայլատակեաց 'ի խաչէն, և ի-
» բրև զաղեղն որ յամպս գնի ցոլացեալ՝ խորան
» տանոյր 'ի վերայ գետոյն. և որպէս զորահա-
» տաճար Աստուծոյ 'ի մէջ առեալ ունէր զամե-
» նեսեան զօրս և զկանայս. և շող լուսոյն բակ
» առեալ պարփակէր զբազմութիւն ամբոխին
» ընդ ինքեամբ: Եւ լուսաւորեցան դէմք մարդ-
» կան առ հասարակ որպէս զվարդ կարմիր. և
» լոյս ելանէր 'ի խաչէն իբրև զյորդահոս ջուրս
» որ բղխեն յաղբերաց: Իսկ սուրբ խաչն երևէր
» 'ի ձեռն կաթողիկոսին որպէս բոց վառեալ լու-
» սով. և 'ի լուսոյ անտի երփին երփին հատանէր
» խաչաձև ըստ չափոյ խաչին, և խաղայր 'ի վե-
» րայ ջուրցն իբրև զթռչուն սլացեալ որեշ որեշ
» 'ի միմեանց. և հոտ անուշութեան լնոյր զամե-
» նեսեան: Իսկ բազմութեան ժողովրդոյն զահի հա-
» րեալ կային և աղաղակէին և ասէին, Տէր ողոր-
» մեա: Եւ մինչդեռ նոքա աղօթէին, ժողովեցաւ
» լոյսն միապագունդ, և երից անգամ եհար զջուր
» գետոյն և ամփոփեցաւ լոյսն 'ի ծոց խաչին. և
» ջուր գետոյն զետեղեալ 'ի կրունկն դառնայր և
» զառ 'ի կոյս արգելու վայր մի: Յայնժամ զար-
» հուրեալ ամբոխին և բազմութիւնն անկեալ
» յերկիր դողային: Եւ սուրբ խաչիւ տեառնա-
» գրեաց կաթողիկոսն երից անգամ զգետն և ա-
» սաց. Տեսին զքեզ ջուրք Աստուած, տեսին ըզ-
» քեզ ջուրք և երկեան, խորք խռովեցան. և տե-
» սին ամենայն ծագք երկրի զփրկութիւն քո, և
» ժողովուրդք զսքանչելիս սուրբ նշանի քո: Եւ
» արդ որպէս 'ի ձեռն սուրբ խաչիս քո եկաց

» ջուր գետոյս կանգուն, գնացէ դարձեալ յըն-
» թացս իւր որպէս յառաջն։ Եւ ապա դարձաւ
» գետն 'ի տեղի իւր, և խաղացեալ գնայր որպէս
» յերէկն և յեռանդն։ Յայնժամ Թագաւորն Վա-
» սիլ և ամենայն զօրք նորա անկան առ ոտս երա-
» նելի սուրբ կաթողիկոսին Պետրոսի. և մեծա-
» գոչ հառաչանօք համբուրէին զսուրբ նշանն և
» արկանէին զօրհնեալ ջուրն 'ի վերայ գագա-
» թանց իւրեանց։ Իսկ Թագաւորն Վասիլ դնէր
» զԹագն 'ի գետինն. և հրամայէր Տէր Պետրոսին
» արկանել ափով իւրով զջուրն օրհնեալ 'ի վե-
» րայ գլխոյն իւրոյ։ Եւ առեալ կայսրն զգետար-
» գել սուրբ նշանն 'ի ձեռս իւր և անյագաբար
» համբուրէր զնա, և նովաւ կնքէր զամենայն ըզ-
» գայարանս իւր. նոյնպէս և մետրապօլիտն և ա-
» մենայն ժողովուրդքն՝ եռափափաք համբուրիւ
» ողջագուրէին զամենայնաղթ սուրբ նշանն և զաջ
» կաթողիկոսին. և 'ի համբուրելն զսուրբ նշանն՝
» բազմաց լինէր առողջութիւն։ Եւ մինչև օրն տա-
» րաժամեցաւ՝ ոչ աւարտեցաւ համբոյրն ժողո-
» վըրդեանն 'ի բազմութենէ ամբոխին »։

Պետրոս կաթուղիկոս այս հանդէսը և դեսպանութիւնը կատարելէն ետև՝ դարձաւ յԱնի. բայց երկար ատեն հոն չմնաց. Թագաւորին և իր մէջ տարաձայնութիւն ընկաւ. Յովհաննէս մերժեց զնա 'ի կաթողիկոսական աթոռոյն, և տեղը դրաւ զԴիոսկորոս Սանահնի վանաց և Թեմին արքեպիսկոպոս առաջնորդը. որ հարկաւ քիչերուն ընդունելի եղաւ. անոր համար ստիպեցաւ Թագաւորն նորէն զՊետրոս դարձընել տալ յաթոռը, միջնորդութեամբ Յովսեփայ Աղուանից կաթողիկոսի. որուն հետ 4000 եկեղեցականք այլ ժողովքի եկան յԱնի, և Թագաւորն ու կաթողիկոս հաշտեցան։ Այս հանդէսն այլ մասամբ Աստուածայայտնութեան տօնին եղաւ. և երբ

հակաթոռ կամ բռնադատեալ կաթողիկոսն Դէոսկորոս՝ աւուր պատշաճ տօնը կու կատարէր, քանի մը յանդուգն անձինք գլխէն քօղը պատռեցին, որ կաթողիկոսութեան նշան էր, և դարձուցին զինքը իր վանքը, ուր և յօժարութեամբ գնաց. բայց այդ անարգանաց հարուածը շատ ծանր էր իրեն. քիչ ատենէն սրտառուած մեռաւ. յոմանց իբրև բռնաբարող՝ դատափետեալ, և յոմանց իբրև ակամայ յանձնառու՝ արդարացեալ, և իր ճըգնասէր բարուցը և գիտութեանը համար պատուեալ:

Դարձեալ յետ ինն տարւոյ (1045) նոյն ինքն Պետրոս կաթուղիկոս՝ Ջրօրհնեաց հանդէսը կատարեց ուրիշ խառն տեսարաններով 'ի Կարին գաւառի. որ հիմակուան Էրզրում քաղաքէն զատ՝ անուանի և հարուստ քաղաքաւան մ'այլ ունէր, Արծն ըսուած, Կարնոյ դաշտին մէջէն անցնող եփրատական Սև ջրոյն աջ կողմը, շամբին (Մողլըգ) մօտ, որ հարիւրաւոր եկեղեցիներ ունէր և վաճառականութեան բարեօք լցեալ էր. և մեր պատմելու գիտուածէն իրեք չորս տարի ետև այրելով և աւրելով 'ի Թուրքաց՝ հիմա թողած է իր անուան և նշխարաց յիշատակ՝ Գարաարզ և Վաղաւեր գեղերը. ուր Թերևս հնախոյզք դեռ կարենան գտնել հետաքննութեան արժանի բաներ։ Պետրոսի երկրորդ անգամ կաթողիկոս նստելէն մինչև այս նոր հանդիսին սակաւաթիւ տարիներուն միջոց՝ Հայաստան շատ յեղափոխութիւններ տեսեր էր. Յովհաննէս թագաւորն մեռած, որդին Գագիկ թագաւորութենէ զրկած, Անի մայրաքաղաքն 'ի ձեռս Յունաց անցեր, թագաւորազունք ելեր 'ի Փոքր Հայս գացեր էին. իսկ ինքն Պետրոս որ Անոյ վաճառման կամակից էր՝ նստեր էր հոն առաջին փառքն, և քաղքին նոր յոյն քաղաքապետէն այլ պատիւ կ'ընդու-

նէր։ Ասով բուն քաղաքացեաց այնչափ հաճոյ չէր ըլլար. քիչ ատենէն Յունաց այլ կասկածելի եղաւ. և երբ նոր քաղաքապետ եկաւ՝ կայսեր հրամանաւ զինքը քշեց անկէ և հրամեց երթալու նստելու յԱրծն Կարնոյ. ուր և վերը յիշեալ տարին մեծաւ հանդիսիւ կատարեց Ջրօրհնեաց հանդէսը Եփրատայ Նորընծայ վտակաց մէջ։ Երբ խաչալուայ ընելու պահն հասաւ և կորիճք պատրաստուէին նետուելու 'ի ջուր, տաճիկ մ'այլ ուզեց անոնց հետևիլ. կաթուղիկոսն հասկցընել տուաւ անոր՝ թէ այդ բանը քրիստոնէից միայն կու պատշաճի իբրև կրօնական հանդէս մը. տաճիկն այլ իմացուց որ ինքն այլ քրիստոնեայ ըլլալու և մկրտուելու համար կ'ուզէր մտնել 'ի ջուրն. և հաւանութեամբ կաթուղիկոսին մտաւ։ Այն ատեն միւռոնակիր փոքրաւորն՝ ապակեայ շիշը ձեռացը վրայ զարնելով կոտրեց և թափեց թէ՛ ջրին և թէ նորահաւատին վրայ, երկուքը մէկէն կնքելով. բայց շիշը կոտրելու ատեն ապակւոյ կտոր մը ձեռքը վիրաւորելով՝ իւղը, ջուրը և արիւնը մէկտեղ խառնեց։ Այս բանս, կ'ըսէ ժամանակագիրն, անյաջող դիպուածի մը գուշակութիւն սեպեց հանդիսատես ժողովուրդն. մանաւանդ երբ իրօք այլ հանդիպեցաւ։ Վասն զի երբ յետ հանդիսին կաթուղիկոսն նստեր էր 'ի սեղան, յանկարծ կայսերական հրամանաւ մարդիկ եկան զինքը վերուցին, տարին Խաղտոյ-առինճ ըսուած գիւղին բերդը, որ հիմա Գաղտառինճ կ'ըսուի, և երկու գեղ է, մեծ և փոքր, Կարնոյ և Խաղտեաց միջասահման։ Նոյնպէս քիչ ատենէն Պետրոսի քեռորդին և յաջորդը, Խաչիկն այլ՝ բռնեցին և ուրիշ բերդ մ'արգիլեցին. յետոյ զերկուքն ալ 'ի Կոստանդնուպօլիս խաւրեցին։

Այս դիպուածէս եօթն կամ ութ տարի ետև (1052)՝ նոյն կաթուղիկոսին օրը, բայց ոչ իր

ներկայութեանը, նոյն մեծ տօնին խթման գիշեր ցաւալի դիպուած մը հանդիպեցաւ 'ի Կարս քաղաքի, որ Արծին նման վաճառականութեամբ հարստացեր էր, և Անիի պէս առանձին թագաւորաց մայրաքաղաք էր քիչ մ'առաջ. մինչդեռ պաշտօնատէրք գիշերային ժամերգութիւնը կատարէին, և ամենևին թշնամւոյ կասկած մը չկար, և անոր համար քաղաքապահ զօրքն այլ անզգոյշ էին, տօնին զբաղած, Թուրքաց Տօղրուլ-բէկ սուլտանին հօրեղբօրորդւոյն ապստամբ Գուդուլմուշին թափառական աւազակներն՝ ձմերային սովալլուկ գայլոց պէս մտան 'ի քաղաք, և սրբազան ու ազգային հանդէսները յարցունք և յարիւն դարձուցին. տուն և եկեղեցի ողբոց և մահու տեղ եղան. ով որ կրցաւ քաղքին ամուր բերդը փախչիլ՝ ազատեցաւ. մնացելոց շատն ջարդուեցաւ, ամենքն կողոպտեցան իրենց ստացուածքներէն. հարստութեամբ լցուած քաղաքն աւեր դարձաւ. վասն զի անզգամ կողոպտիչքն ինչպէս աւազակորէն մտան՝ այնպէս ելլելն այլ բաւական չսեպելով՝ կրակ այլ տուին, և ետևնէն սև ծուխը վկայ թողուցին իրենց գազանութեանը: Բայց Կարս իր ամուր բերդին պատճառաւ բաղդաւոր գըտնուեցաւ քան զԱրծն, նորէն նորոգուելով. սակայն նոյն պատճառաւն այլ աւելի շատ անգամ պատերազմի հարուածներ և մեծ նեղութիւններ կրեց, մինչուան մեր օրերը, (1855):

Թշնամիք դիտելով և գիտնալով որ Հայք յանուարի վեցին մեծ տօնախմբութեան պատճառաւ տուներնէն տեղերնէն կը հեռանան, շատ անգամ նոյն օրը վազած են անոնց վրայ, և ազգերնուս մեծագոյն տօնն 'ի սուգ դարձուցեր են, օրհնեալ ջուրն այլ յարիւն. մինչև ազգային առակ եղեր է ըսել. «Աստուած պահէ

Յայտնութիւնի հեծելէն,
Վարդավառի հեղեղէն»:

Բայց մենք թողլով հիմա այս տխուր տեսարանները, քիչ մ'այլ ուրախ դիպուածներ տեսնենք. փոխադրենք ուրիշ հայ աշխարհք մը, անցնինք դարուկէս ժամանակ, երթանք 'ի Կիլիկիա, մեր վերջի թագակապ ցեղին հանդէսներուն ներկայ ըլլալու, նոյն այս սրբազան օրը, զոր թերևս աւելի քան զԲագրատունիս պայծառապէս տօնէին Ռուբինեանք. վասն զի առջիններուն կորուած թագը՝ իրենց գլուխը դրուեցաւ յետ իբր 160 ամաց՝ յայտնութեան տօնին օր, յամին 1198, 'ի ներկայութեան նուիրակաց զանազան ազգաց։ Այս ազգաշուք փառաց նորոգութիւնն՝ արդիւնք է քաջութեան, ճարտարութեան, նաև արդար փառասիրութեան Լևոնի, որ ըստ կարգի պայազատաց՝ Բ է այդ անուամբ, և ըստ կարգի թագաւորաց Ա կ'ըսուի։ Իր նախորդքը սովորաբար Պարոն և երբեմն սեբաստոս կամ մարզիզ կ'ըսուէին, կամ մեծ իշխանք, և Լերանց իշխեցող. որովհետև առաջ Փռիւգիոյ և Իսաւրիոյ լերանց, յետոյ Կիւլիկիոյ լերանց և դաշտաց սկսան տիրել. Լևոնի պապուն եղբօր և նախորդին՝ քաջին Բ Թորոսի անուամբ այլ՝ Թորոսի Երկիր կոչուեցաւ իր վիճակն. իսկ այս Լևոնս իր պապուն՝ Ա Լևոնի կործանած անունը կանգնելով՝ իր տիրած երկիրն ալ Լևոնի Երկիր անուանել տուաւ։ Քաջութեամբ և խորամանկութեամբ շրջակայ իշխանաց ահաւոր և պատկառելի ըլլալով և եւրոպացի մերձաւոր իշխանաց սիրելի և օգնական, համարձակեցաւ Ալեմանաց Փրետերիկոս կայսրէն թագաւորութեան թագ ուզել, երբ կայսրն իր երկիրը եկաւ 'ի Սելևկիա քաղաք, ուր փութացաւ Լևոն խաւրել ընդ առաջ նորա զկաթողիկոսն և զՍ. Ներսէս Լամբրոնացին. դժբաղդաբար ծերունի կայսրն հոն անզգուշաբար գետոյն մէջ լուացուելով խեղդեցաւ, և թագադրութեան խոստումը անկատար մնաց։

Բայց Լեւոն դարձեալ խնդրեց զնոյն անոր յաջորդող որդիէն, յՀենրիկոս կայսերէ, և նաև 'ի սըրբազան պապէն Կեղեստինոսէ. որք քանի մը պայման պահանջելով 'ի Լեւոնէ ('ի նշան հաւատակցութեան և միաբանութեան՝) խաւրեցին իրեն փափագած արքայական թագը, և առիւծանիշ դրօշ մը, յամին 1197, 'ի ձեռն Կոնրադոսի ծիրանազգեաց արքեպիսկոպոսին Մայենցայ. որոյ ընդ առաջ խաւրեց Լեւոն՝ իր խնամին և քարտուղարը՝ Յովհաննէս Սսոյ արքեպիսկոպոսը: Յաջորդ նոր տարին 'ի տօնի Աստուածայայտնութեան՝ ժողովեցան 'ի Ս. Սոփիա եկեղեցի Տարսոնի, և մեծաւ հանդիսիւ թագաւորեցուցին ըզԼեւոն 'ի վերայ Հայոց. օծողն էր Գրիգոր Աբիրատ կաթողիկոսն, թագաւորին՝ վերյիշեալ լատին եպիսկոպոսն՝ իսկ հանդիսատեսքն՝ զեսպանք կամ պայլք արևմտեան տէրութեանց և վաճառականաց հասարակապետութեանց, կրօնակարգապետք, պատրիարքն Ասորւոց Անտիոքայ, մետրապօլիտն Յունաց, Երուսաղեմի Հայոց եպիսկոպոսապետն, վեց մեծաթոռ արքեպիսկոպոսք, տասն եպիսկոպոսք Կիլիկիոյ, բազմաթիւ վանահայրք, վարդապետք և քահանայք. իսկ յաշխարհականաց յիսունի չափ թերգաւոր հայ իշխանք (որոնց անունը և թերգերը կու համրէ Սըմբատ գունդստապլ պատմիչ՝ Լեւոնի քեռայն որդին), և ուրիշ լատինացի իշխանք Անտիոքայ և Կիպրոսի տէրութեանց: Հանդիսին փառքն Լեւոնի համբաւն ընդարձակեց. Պաղտատայ խալիֆայն և Կոստանդնուպօլսոյ կայսրն իրենց կողմանէ այլ թագ խաւրեցին. իսկ Լեւոնի երկրին չորս կողմը եղող իշխանք, ըստ բանի Սմբատայ գունդստապլի՝ «անխուռն ճանապարհաւ հեռու »յիշէին զանուն թագաւորին Լեւոնի, և անոնց »դողային»:

Մեծին Լևոնի Թոռն Բ Լևոն Թագաւորն այլ, յետ 74 ամաց, նոյն քաղաքին և նոյն եկեղեցւոյն մէջ նոյն տօնին օրը յանձն առաւ Թագաւոր օծուելու. և հանդիսին հաշակող ատենաբան եղաւ իր քարտուղարն Վահրամ Րաբուն վարդապետ։ Թագաւորք մեր և ժողովուրդք՝ իրենց մեծագոյն հանդիսի օր սեպէին այն օրը՝ յորում Քրիստոսի երեք տնօրինական մեծ և փառաւոր յիշատակները տօնէին, թէ՛ սրբազան թէ արտաքին հանդիսիւ։

Անշուշտ ախորժելի պիտի ըլլայ այս հանդիսից մէկ նկարագիրը լսել ականատես օտարազգիէ մը, որ Ա Լևոնի Թագաւորութեան երեքտասաներորդ տարին հանդիպեցաւ իրեն և տօնին. այս անձս է Վիլլէպրանտ օլտէնպուրկեան, Հաննովէրի Հիլտեսհայմ քաղաքին կանոնիկոս վարդապետն, որ 1211 Թուականին Ճանապարհորդելով յարևելս՝ եկաւ 'ի Կիլիկիա, և երկու ամսոյ չափ հիւրընկալութիւն գտաւ մեր Թագաւորէն, զոր նախ տեսաւ 'ի Տարսոն, և յետոյ 'ի Սիս. որոյ համար կ'ըսէ. « Այս քաղաքս տէր Թագաւորին
» մայրաքաղաքն է. բնակիչքն անթիւ և հարուստ,
» բայց պարիսպ չունի, անոր համար կրնայի ա-
» ւելի քաղաքաւան կոչել քան թէ բուն քա-
» ղաք, թէ որ Հայոց արքեպիսկոպոսարանը չու-
» նենար. նաև Յոյնք հոն պատրիարք ունին։ Սա-
» կայն ունի ամուր բերդ մը լերան գագաթը, ո-
» րոյ ոտքէն կու սկսի քաղաքը աստիճանաբար
» գար 'ի վայր տարածուիլ...։ Ջրօրհնեաց հան-
» դէսը Հայք այս կերպով կատարեն. տօնէն 12
» օր առաջ, զոր մենք (լատինք) խնտումով և կե-
» րուխումով կ'անցունենք, անոնք 'ի պատիւ տօ-
» նին՝ ապաշխարութեամբ և պահօք անցուցին,
» հրաժարելով 'ի ձկանէ, 'ի գինւոյ և 'ի ձի-
» թոյ. իսկ բուն խթման օրը բոլորովին ծոմապա-

» հուլթեամբ կեցան, որպէս զի յետ վերջալու-
» սոյն պատարագը մատուցանեն. և բոլոր այն
» գիշերը աստուածային պաշտամամբք անցու-
» ցին: Իսկ երկրորդ օրը Քրիստոսի Ծննդեան տօ-
» նը կու կատարեն, ըսելով թէ Քրիստոս նոյն
» օրը ծնաւ, և յետ 30 տարւոյ դարձեալ նոյն
» օրը մկրտեցաւ: Առաւօտուն ամենքն փութային
» քաղաքին մօտ գետոյն եզերքը երթալու, ուր որ
» Թագաւոր տէրն այլ կ՚երթար, այսպիսի կար-
» գաւ: Ինքն Թագաւորն բարձրահասակ ձիու մը
» վրայ հեծած էր. իր քովէն կ՚երթային Ալեման
» ասպետաց կարգապետն, Սելևկիոյ Հիւրընկալ
» ասպետաց բերդապետն, իրենց կրօնակից հա-
» ղար ընկերներով. յետոյ գայր տէրն Ռուբէն,
» փոքր Թագաւորն, (Լեոնի եղբօր դստեր որ-
» դին), զոր ինքնակալն Օթոն՝ 'ի խնդրոյ մեծ
» Թագաւորին՝ Թագով պսակել տուեր էր: ասոր
» ետևէն կու գային իր երկրին ազնուականներն,
» և բազմութիւն զօրականաց գեղեցկազարդ հա-
» գուած. որոց ձորաներն ամեն մէկուն դրօշնե-
» րը և վահերը ձեռուընին բարձրացուցած, և
» անոնց սարած ձիերուն սանձէն բռնած՝ մեծ
» Թագաւորին առջևէն կ՚երթային: Իրեն և ա-
» սոնց խումբին մէջէն կու վազվառէին բազմու-
» թիւն զինակիր փայեկաց, իբրև անձնապահք
» Թագաւորին. իսկ բազմութիւն ժողովրդեանն
» չորս կողմէն կ՚ողջունէր զնա սաստկաձայն ա-
» ղաղակաւ, ՍՈ՛ՒՐԲ ԹԱԳԱՒՈՐ: Այսպիսի մեծ
» հանդիսիւ Թագաւորն կու գար իջնելու իրեն
» համար գետոյն եզերքը կանգնած վրանին տակ:
» Իրմէ ետև կու գային Յոյնք և իրենց պատրիար-
» քըն՝ հետևակք, շատ սրբազան սպասներով. և
» այնչափ փողերու և ուրիշ երաժշտական նուա-
» գարանաց ձայն ձգեր էին, որ աւելի հանդէս
» մը՝ քան Թափօր մը կու ձևանար: Ասոնք այլ

» իրենց որոշուած տեղը՝ գետեզերքը կու սպա-
» սէին ուխտաւորներուն։ Յետոյ գային Հայոց եկեղե-
» ցւոյն ուխտն, մկրտելու խաչը բերելով և վայել-
» չապէս յառաջելով՝ իրենց արքեպիսկոպոսին
» հետ. որոնց խոնարհական կերպը և վայելչա-
» կարգ Թափօրը՝ շատ աւելի պիտի գովէի, եթէ
» մէկ երկայնամօրուք քահանայ մը (ասով՝ նը-
» ման ուխտներուն), գժբաղդաբար շփոթութեան
» պատճառ չըլլար. վասն զի անիկայ վերոյիշեալ
» գետոյն խառնուող պզտիկ վտակէ մը անցնելու
» ատեն՝ ոտքին մէկ կօշիկը կորսնցուց, և ջրին ըն-
» թացքէն ազատելու համար անզգուշութեամբ
» աշխատելովը՝ եպիսկոպոսին և ուխտներու անց-
» նելուն արգելք եղաւ. Թէ որ մէկն այսպիսի
» անհոգութիւն մ'ընէր 'ի Հիւսէսհայոյ Թափօրի
» ատեն, սաստիկ յանդիմանութիւն կ'առնուր։
» Ասոնք այլ վերոյիշեալ գետոյն եզերքը՝ իրենց
» տեղը բռնեցին կեցան։ Երբոր բոլոր Թափօրն
» մէկտեղ եկաւ, սկսան աղւէն երգել. և ին-
» չուան կուրծքերնին իջած օդուառոյց կծկի[1] նը-
» ման երկայն մօրուքներնուն շարժելէն կ'իմա-
» ցուէր՝ որ աղէկ ույժ կու տային յունարէն և
» հայերէն աւետարաններ և ընթերցուածներ
» կարդալու ատեն. և այն կերպարանեալ Յոր-
» դանանը օրհնելով՝ բերած խաչերնին մէջը մկըր-
» տեցին, և աջ կողմէն աղաւնի մը թռուցին։
» Այն ատեն մէկն՝ իշու վրայ հեծած՝ գետոյն մէջ
» մտնալով և կանգուն կենալով՝ շաքարաձայն[2]

1 Այս արևելեան երկայն մօրուաց վերայ զարմացող անմօրուս վարդապետն՝ նմանեցընէ զանոնք plenaria ըռուած բանի մը, զոր ստուգիւ չեմ հասկընար ինչ է։

2 Հեղինակն կ'ըսէ՝ շաքարացեալ կոկորդով, zuccherato gurgite։ Մեր միջինդարեան գուսանաց մէկն կ'երգէ.

Բլբուլն ենհաս ղոմբարբերուն։ — Տես երես 200։

» կոկորդով կանչեց, Կեցցէ Թագաւոր Մեր յաւիտեան.
» և դարձեալ, Օրհնեցէ՛ Նախախնամեալ պահեցէ ա-
» ձնայն ունիփ փրխոփանէիր. և երբ ամենքն միաբե-
» րան անոր պատասխանելով՝ Ամէն կու կանչէին,
» ինչքն երգապետն ջրին մէջ կու թաթխէր.
» որ և ծիծաղելու պատճառ եղաւ շատերուն։ Յե-
» տոյ Թագաւորն և ուրիշներն այլ այն ջրով ի-
» րենք զիրենք ցօղեցին. իսկ Ասորիք մերկացած
» կու լուացուէին անոր մէջ։

» Այս արարողութիւնս լմննալէն ետև՝ եկե-
» ղեցականք իրենց վանքը քաշուեցան, իսկ Թա-
» գաւորն և զինուորականք փութացան դէպ՚ ի
» դաշտերը. և պալարակապ երիվարները վազցը-
» նելով և նիզակներ նետելով՝ զինուորական խա-
» ղեր ըրին. և բոլոր օրը մեծ ուրախութեամբ
» անցուցին։ Երկրորդ օրը ամենքն իրենց տեղը
» դարձան։

» Այս այլ գիտցէք, որ տէր Թագաւորն՝ այդ
» (Սիս) քաղքին քով իրեն զբօսանաց պարտէզ
» մը պատրաստեր է, որուն սքանչելի փափկու-
» թիւնները նկարագրելն՝ կու խոստովանիմ որ
» կարողութենէս վեր է։ Տօնը կատարելէն և տէր
» Թագաւորէն հրաման առնելէն ետև, որ զմեզ
» շատ մեծապէս պատուեց, եկանք Նաւարզա
» (Անաւարզա) ամուր բերդը... որոյ անուամբ
» Թագաւորն իր նշանը Նաւարզա կու հռչակէ»...։

Այսպիսի հանդէսներ՝ եթէ չկարենան այլ ձմե-
ռուան սառամանիքը բոլորովին հալեցընել, գոնէ
գունագոյն ծիածաններ կու ձգեն վրանին։

# Ե

## ԶԱՊԷԼ

† 22 Յունուարի, 1252.

Եւ դու զաչըս տակաւին, մատաղ բամբիշն, առ
քեզ գերես,
Նազելիդ Զապէլ, միայն Թագաւորեալ Հայոց
դշխոյդ,
Ոչ զերկրի սոսկ եւեթ, այլ եւ զերկնից աչս եւ
ըզսիրտ,
Խրատըղեալ ի գեղ ոգւոյդ եւ գիրգ մարմնոյդ.
եւ զքոյսըդ դու
Յերկրի՝ Հեթմոյ միայն, եւ ի յերկինս՝ Աստու-
ծոյ տաս։

ՀԱՑԿ. ԺԶ. 1069–73։

Զապէլ անուն՝ որ հիմայ շատ մերազգի ընտանեաց մէջ անուշութեամբ կու լսուի, աւելի անոյշ յիշատակներէ առաջ եկած է, և թերևս աւելի քան ուրիշ ազգաց՝ մեզի նուիրական եղած. կան անոնց մէջ այլ Իզապել թագուհիք, բայց գուցէ ոչ մի այնքան սիրելի և պաշտելի՝ որքան մերս Զապէլ, ժամանակակից և նման մաքրութեամբ վարուց՝ իր անուանակցին Ս. Իզապելի՝ քրոջ Ս. Լուդովիկ Թագաւորին Փռանկաց։ Զա-

պէլ առաջին է այս անուամբ[1] 'ի մէջ ազգակցացն. առաջին բարձր թագաւորական պատուովն, և առաջին գեղեցիկ վարուքն և սրբութեամբ. հրաչակաւոր՝ նաև քաղաքական կենաց դիպուածովք: Եւ ինչպէս մէկ հատիկ Տիգրանուհի 'ի մէջ հայկազուն թագուհեաց մերոց, մէկ հատիկ Սաթինիկ կամ Ս. Աշխէն Արշակունեաց մէջ, կամ Կատրամիդէ և Խոսրովանոյշ 'ի Բագրատունիս, Ռուբինեան հարստութեան մէջ այլ մէկ հատիկ Զապէլ թագուհի. մանաւանդ թէ բոլոր մեր ազգին պայազատաց մէջ՝ սա մէկիկ թագաժառանգ աշխարհատիկին եղաւ. ոչ թագաւորի կին ըլլալովն՝ կոչեցաւ թագուհի, այլ իր ամուսինն իրմէ կոչեցաւ թագաւոր: Իրմէ առաջ՝ օտար պատմիչք կու յիշեն, (և դրամն այլ կու վկայէ) որ Երատոյ անուամբ Հայոց իշխեցող թագուհի մը եղած է, Քրիստոսի յաշխարհ գալուն տարիները, իբրև կին և քոյր Տիգրանի, բայց անունն և համբաւն իսկ անծանօթ է մնացեր իր ազգին:

## Ա

Զապէլ իր տկար սեռով, փափուկ հասակուն, հեզուկ սրտովն, նոր թագաւորութեամբ ձևացեալ ազգի մը՝ կէս ինքնագլուխ և պայազատօրէն վարող բերդատէր իշխանները միացընելու, և Հայոց, մանաւանդ այնպիսի ժամանակի Հայոց ազգավար ըլլալու, գրեթէ անկարելի անձ մը և բան մը կ'երևէր. և սակայն վերին ազգախնամ տեսչութիւնն, փորձ և կորիճ իշխանի մը (Կոս-

1 Կայ մէր և Բ Զապէլ թագուհի, կին Օշնի թագաւորի, քոյր Ամաւրեայ Լուզինեան (Կիպրոսի թագաւորողին), որ վախճանեցաւ յամի 1310:

տանգնի) քաղաքագիտութիւն, և մեծ ու հասարակաց երախտաւոր ու պատկառելի Թագաւորի մը (Լևոնի) կամք, որ իր դեռաբոյս դաւրիկը կտակաւ տիկին կարգեց իր 34 տարի արեան քրտամբք խնամեալ ազգին և քանամեայ պայծառացեալ Թագաւորութեանն, կարողացուցին այս բանս. և եղաւ Զապել առիթ հանգստեան Հայոց նորաթագ հարստութեանը, որպէս և իր անարատ վարքովն՝ ըստ անուանն ստուգաբանութեան՝ Աստուծոյ հանգիստ (Էլի-սաբէթ՝ Եբրէարէն)։ Մեր պատմութեան, և մանաւորապէս Ռուբինեանց մէջոց, Զապել ազնիւ և գեղեցիկ գոհար մ'երևցաւ, բարձր գլխոյ և բարձր բաղդի մը սահմանուած. և իբրև այսպիսի գոհար, (եթէ կրնամ ըսել, լուսափայլ՝ դեռ չբանուած իսկ, դեռ նոր գտուած) անկարելի այլ էր որ բազմաց բաղձալի, ակնունելի և հակառակելի չըլլար. և կրնայ քաղաքական մտօք յարմարուիլ Զապելի վրայ՝ ինչ որ թէ նոյն թէ սրբազան մտօք ըսաւ մեր հոգերգակ հայրապետն՝ Հռիփսիմէի համար.

«Ի վերայ միոյ պատուական մարգարտի
Խաղացին ցընծալով ամենայն (հեթանոսք).
Արեւմուտք՝ յարևելս ընթացեալ հասին
Քարոզել յայտնապէս ըղձքնաղ տեսութիւնն։
Լըւան թագաւորք եւ լըցան խնդութեամբ.
Որսալ յանձն առին ըղձալւոյ մեծութիւնն.
Պարգեւել իբրեւ խոստանայն բանիւք,
Եւ ծածուկ հընարիւք՝ գողանալ ի միմեանց»։

Զապելի այսպիսի բաղդի ենթակայ ըլլալը իմանալու համար՝ բաւական չէ գիտնալը որ Հայոց առաջին և անուանի Թագաւորի մը դուստր է, և ոչ թէ միամօր դուստր այլ, կամ հրատարակեալ ժառանգ Լևոնի. այլ հարկաւոր է և գիտնալը թէ ինչպէս այսպիսի մեծ ժառանգութեան սահ-

մտնեցաւ, և ինչպէս հասաւ 'ի նոյն։ Իր մեծասիրտ հեռատես և խորագէտ հօրն գլխաւոր հոգոց և գործոց մեկն էր այս. Լեւոն՝ ոչ միայն Ռուբինեան Թագաւորութեան հեղինակն եղաւ, այլ և պահող, զօրացընող ու հաշտեցող Հայրենի տէրութեանը. յորում և յաջողեցաւ անհուն ջանքով, կորովութեամբ, երկայնմտութեամբ և բարակ քաղաքագիտութեամբ մը, որով գերազանցեց քան զամենայն Հայպետս. և քան զշատ յազգապետաց օտարաց։ Գիտես, Հայկակ, որ իր նախորդքն ամբողջ դար մը որչափ աշխատեցան իրենց բոյնը հաստատելու Տորոսի ժայռերուն վրայ, պաշտպանելով 'ի Յունաց և 'ի Սելջուկեանց. որչափ կռուեցան՝ յաղթուելով այլ՝ յաղթելով այլ. գիտես, որ իր հայրն՝ Ստեփանէ՝ Յունաց կրակով եռացուցած կաթսայի մը մէջ խաշեցաւ (յամի 1164-1165). գիտես, որ իր հօրեղբօր (Թորոսի) որդին՝ Բ. Ռուբէն մանուկը, տէրութեան օրինաւոր ժառանգը՝ չարաչար սպաննեցին՝ Հայոց տունը քանդել փափագողք. գիտես, որ իր միւս հօրեղբայրն Մլեհ՝ Հայոց նախատինք և աննման անզգամ մ'էր և բռնութեամբ յանիրաւի տիրեց կամ նուաճեց աշխարհքը, իբրև տասն տարի. մինչև յետ անոր մահուն կրցաւ Լեւոնի անդրանիկ եղբայրն՝ Ռուբէն Գ. պայազատել Հայոց պարոնութիւնը (1175). բայց ապահով մնալու համար կարօտ էր եղբօրը (Լեւոնի) օգնականութեան։ Սա ազատեց զՌուբէն Անտիոքայ դքսին ձեռքէն, որ խաբէութեամբ բռներ և բանտեր էր զնա. անոր համար Ռուբէն կրկին երախտապարտ առ Լեւոն, իր տարաժամ հիւանդութեամբ ծանրացած ատեն՝ կրօնաւորելով, անոր թողուց տիրական աթոռը (1186), և անոր հետ՝ արժանաւոր իրաւունք տուաւ՝ չվստահանալու մեծամտութեամբ իր քաջութեանը և հան-

ճարոյն վրայ, այլ և մեծ խոհեմութեամբ և բարեպաշտութեամբ քաղաքավարելու։ Ջանաց Լևոն այս ամեն ձիրքերը յարմարցընելու իրարու. և դժուար պարագայից մէջ շատ անգամ յաջողեցաւ քան թէ սխալեցաւ։

Բ

Առաջին դժուարութիւնն 'ի սկզբան տէրութեանն և գրեթէ մինչև 'ի վերջն այլ, իր գրակից և համազօր Անտիոքայ դքսին կողմէն էր, որ ինչպէս իր եղբայրը դաւաճանեց՝ այսպէս իրեն այլ կու դարանէր. երկայն խաղեր խաղաց Լևոն անոր հետ. և եթէ Եւրոպացւոց դաշնակցութեան ու երախտեաց պարտքը չունենար, և մանաւանդ պատկառանքն 'ի սրբազան գահէն Հռովմայ, որոյ միջնորդութեամբ այլ իր թագը և իր դրօշն ընդուներ էր, թերևս բոլորովին զինուորական ուժովը վարուէր Անտիոքացւոց հետ. բայց հարկ էր երբեմն ուժէն աւելի խորագիտութեամբ վարուիլ։ Այսու մտօք Լևոնի առաջին խաղն կամ հնարքն եղաւ խնամենալն իր նախանձորդին կամ թշնամւոյն հետ, որ էր դուքսն Պեմունդ Գ. որոյ աներձագին դուստրը՝ Իզապելը՝ առաւ 'ի կնութիւն (1189). իսկ անոր (Պեմունդի) անդրանիկ որդւոյն Ռայմոնտի կամ Ռեմունդի՝ կին առաւ (1195) իր եղբօր (Ռուբինի) դուստրը՝ Ալիծ, (որ այրի մնացեր էր 'ի Հեթմոյ Սասնեցւոյ), և ասոնցմէ (յԱլիծայ և 'ի Ռեմունդէ) ծնաւ (1196) Ռեմունտ—Ռուբէն Բըրինձն, որ պիտի ըլլար օրինաւորապէս ժառանգ դքսութեան Անտիոքայ. և մայրենի արեամբն՝ անկասկած և բարեկամ պիտի պահէր զՀայաստան։ Բայց երբ ասոր հայրն Ռայմոնտ տարաժամ մե-

ռաւ (1200) և իր հնգամեայ որդին անուանեցաւ կոմս, անոր հօրեղբայրն Պեմունդ Դ. յաջորդակեց՝ ոչ միայն անոր իշխանութիւնը, այլ և իր խաբած և ապշած հօրը աթոռը. (ապշութեանն համար le Bambe կ'անուանէին զնա): Բայց իրաւունքն և Լևոն՝ վռնտեցին զհայրանենգ զահապէրը, և դարձուցին ծերը յաթոռն. իսկ երբ սա քիչ ատենէն բնական մահուամբ մեռաւ (1201), որդին (Պեմունդ Դ) նորէն իշխանութիւնը ձեռք ձգեց ընդդէմ իրաւանց Ռուբէնի–Ռեմունդայ: Ահա այս բանիս համար գրեթէ քսան տարի հակառակութիւն և կռիւ էր Լևոնի և Պեմունդի մէջ, և Անտիոքայ դքսութիւնն տակն ու վրայ եղաւ. իրեք չորս անգամ առաւ Լևոն զԱնտիոք և նստուց իր եղբօր թոռը. Անտիոքացիք երկպառակած՝ ոմանք Լևոնի՝ ոմանք Պեմունդի կուսակից կ'ըլլային. Լատինք բնականապէս աւելի այս վերջինիս կողմն էին, վախնալով որ չըլլայ թէ բոլոր երկիրն այլ Հայոց թագաւորին իշխանութեան տակ անցնի. մանաւանդ որ Լևոն արու զաւակ չունենալով՝ զՌուբէն անուանել էր իրեն յաջորդ, և թագով այլ պսակեր էր զնա (1210): Լատինք մեծ օգնութիւն գտան իրենց Հռովմայ սրբազան քահանայապետը. և թէ անոր նամակօք ու նուիրակօք, թէ պատրիարգօք Անտիոքայ և Երուսաղեմի, թէ ժողովքով յԱնտիոք, և թէ բանադրանօք կու բանադրատէին զԼևոն թողլու զԱնտիոք 'ի Պեմունդ. Լևոն այլ դեսպաններով և նամակներով և իշխանական ուժով երկար տարիներ դիմացաւ, իր իրաւունքը և դաշնադրութիւնը պաշտպանելով. ինչուան որ ուրիշներն այլ ճանչցան զՌուբէն օրինաւոր ժառանգ դքսութեան, և բանադրանքը վերուցին 'ի Լևոնէ: Այս բաներս գոնէ համառօտիւ հարկ է գիտնալ, լաւ հասկընալու համար Զապէլի ապագայ բաղ-

դը, որ կերպով մը այս անախորժեան խնդիրներէն ծագեցաւ:

Լևոն թէ իր ըրած ամուսնութեամբն և թէ Ռուբէնը որդեգրելովը՝ որչափ որ Անտիոքայ մերձաւորեցաւ, այնչափ այլ ետքի տարիները իրեն զզուելի եղաւ այս մերձաւորութիւնը. և ամենէն աւելի իր կինն եղաւ իր սրտին վիշտ, զոր թերևս աւելի քաղաքական տեսութեամբք՝ քան սրտին փափագանօքն առեր էր. և չէր այլ ունեցած իրմէ իրեն նման կտրիճ զաւակ մը, ժառանգ իր այնքան աշխատանօք գտած և պահած թագին. բայց դեռ նախախնամութեան կամօք վարելով, և Ռուբէնը իրեն յաջորդ ընտրելով՝ գոհութեամբ կ՚ապրէր: Սակայն երբ յետ իբր քսան տարւոյ (1206) կենակցութեանն՝ ծանր ամբաստանութիւն լսեց թագուհւոյն վրայօք հաւատարիմ անձէ, թերևս իր ամուսնական չափէն այլ աւելի դուրս ելնելով և պատժելով զկինն՝ բանտարգել ըրաւ ՚ի Վահկա բերդի. և անկէ ունեցած մատղաշ աղջիկը՝ յանձնեց իր մօրը՝ Ռիթա անկնոջ, որ դեռ ողջ էր, և որոյ անուամբ կոչեր էր դուստրն այլ: Մեր պատմիչք զնա միայն յիշեն զաւակ Լևոնի. բայց օտարք անուանեն նաև զՍտեֆանիա՝ կամ Եսդեֆեմի (Estéphémie) դուստրն այլ զոր տուաւ ՚ի կնութիւն քաջին Յովհաննու Պրիենայ՝ Երուսաղեմի թագապահին կամ թագաւորին: Իզապելի վերջն ինչ եղաւ՝ անյայտ է. հաւանօրէն քանի մը տարիէն մեռաւ յարգելանին. և Լևոն երկրորդ ամուսնութիւն ըրաւ, երթալով ՚ի Կիպրոս առ (թագաւորն Հիւկ՝) որդին Ամաւրեայ, և առնելով (1210) ՚ի կնութիւն, հաւանութեամբ Ս. Պապին[1] ասոր մատաղ օրիորդը՝ Սիպիլ, որ էր

1 Բայնալտի: Ցորմէ յայտ է որ առաջին կինն մեռած էր, և ոչ որպէս մէկն ՚ի մերայոց կ՚ըսէ, զայն թողլով՝ զնա առաւ:

ըստ մեր ժամանակագրին (Սմբատայ) « Կին ի-մաստուն և համեստ » : Ասկէ՝ Լեւոնի ծերութեան ծիրանի ծաղիկ ընծայեցաւ մէկհատիկ աղջիկ մը, Զապէլ, յամի 1216 :

## Դ

Զապէլ իր ծերունի հօրը խոնարհած արևուն յանկարծափայլ լոյս մը, նոր յոյս մը բերաւ: Լեւոն նոյն տարին արդէն անգամ մ'այլ Անտիոքայ տէրեր և հաստատեր էր հոն զՌուբէն. բայց երբ նա նորէն հալածուած 'ի Պեմունդայ՝ դիմեց առ հայրապետ և պաշտպանն իւր, Լեւոն՝ արդէն ձանձրացեալ, ծերացեալ և հիւանդ, յայտնի տեսնելով որ եթէ Ռուբէն ինքն իրեն կարող չէ աթոռը պահելու, անով Հայոց գահուն այլ ապասաբեր պիտի ըլլայ, ոչ միայն վերջի անգամ (1219) չօգնեց անոր, այլ և մերժեց իր աթոռոյն յաջորդութենէն այլ. կտակը փոխեց, և իր ստացուածոց ու թագին ժառանգ անուանեց, (եւրոպական օրինաց հետևելով) իր նորընծայ Զապէլ դստրիկը, իբրև նախախնամութենէ պարգևեալ պայազատ մը: Իր վերջի տարիները՝ երբ ձեռքի և ոտքի յօդացաւութեամբ տանջուելով՝ չէր կըրնար կատարել իր քառասուն տարի ըրած առիւծական արշաւանքները, և ոչ արծուի պէս ճանկերը ձգել լեռնէ լեռ, բերդէ բերդ, իր ընդարձակած երկրին սահմանակից հակառակորդաց վրայ, դեռ երբեմն մռնչալովը կը վախցընէր զանոնք. զօրքն ու զօրավարները կու ղրկէր կամ յօգնութիւն նեղելոց և կարօտելոց, կամ 'ի հալածել զթշնամին. և եթէ սա զօրացեալ՝ զիրենները քշէր ու վտանգէր, Լեւոն երկաթի տեղ ոսկի սփռելով՝ կու հեռացընէր վտանգաւոր մերձաւորը և կ'ա-

զատէր իր գերեալ զօրքն և իշխանները ։ Այսպէս այլ ըրաւ յամի 1217, երբ Իկոնիոնի Ազզէտին Քէյքաուս սուլտանն պաշարեց զԿապան բերդն, և գերեց Լևոնի գլխաւոր զօրավարները, որ էին մեծ իշխանն և պայլն Սիր Ատան, և Կոստանդին գունդստապլ (սպարապետ), իր (Լևոնի) քեռւոյն որդին՝ Պապեռոն բերդին տէրն, 'ի ցեղէ Հեթմեանց [1] ։ Լևոն գերեթափ ընելով զԱտան և զԿոստանդին՝ բոլորովին երախտապարտ և անձնանուէր ըրաւ զանոնք. «զի լաւ է Թագաւորի » աղէկ ծորտ պահել՝ քան զայլ հարստութիւն»[2] ։

Այսպիսի աղէկ և հաւատարիմ ծորտերու վըրայ վստահացեալ և զանոնք իր զաւկին խնամակալ կարգելով՝ իր դեռակայծ գատեր լոյսը պայծառացեալ կու տեսնէր. և իր ծանրացած սևցած Թևերուն վրայ Թրթռացընելով այն ճերմակ փափուկ ձագը՝ կու յուսար Թէ անով նորոգուի իր արծուային մանկութիւնն այլ. անով կարենայ կամ նոր որսեր ընել կամ հինները պահել։ Միայն կու մնար անոր արժանաւոր վարուժնեակ մը գտնել, արժանաւոր լծակից մը. որ Թէ իր, Թէ անոր. և Թէ Հայոց թագը հաստատէ։ Բայց Զապէլ շատ դեռաբուսիկ էր. Լևոնի յօդացաւն այլ չէր յուսացըներ զանիկա չափահաս տեսնելու. սակայն անոր համար այլ աւելի կու հոգար կու մտածէր. և իր անգին գոհարը (դուստրը) գգուելով, միտքը պալատէ պալատ, արքունիքէ արքունիք կ'երԹար, Զապէլի փեսայ

1 Առաջին Հեթում Սևաստոսի որդին Սմբատ՝ պապ էր Թէ Լևոնի Թէ այս Կոստանդնիս, մէկուն՝ (Լևոնի) իր Ռիթա աղջկանն, մէկալին՝ (Կոստանդնի) իր Վասակ որդւոյն. ուրեմն Լևոն և Կոստանդին համշիրակք էին, իրենց զաւակքն այլ (Զապէլ և Հեթում) լծակիցք եղան յետոյ ։

2 Սմբատ Պատմիչ ։

մը, Հայոց իշխան և իրեն գահակալ մը գտնելու. Մինչդեռ այն հոգած մնաց վրայ և յօգնած ձեռաց մէջ՝ Զապէլ անհոգ և անգէտ կու ծաղկէր կու ծիծաղէր, կու բացուէր գոցուէր, ժայռերու և հեղեղաց եզերք բուսած նունուֆարի մը նման։

Սուլտանին 'ի Կիլիկիա տապաստակած տարին՝ (1217) յԵւրոպիոյ բազմութիւն Խաչակիր զօրաց եկան նորէն զԵրուսաղէմ ազատելու, յետ երեսնամեայ գերութեանն 'ի Սալահէտտինայ. Լեւոն անձամբ չկարենալով երթալ՝ զօրք տուաւ իր աներձագին՝ Կիպրոսի Հիւկ Թագաւորին, որ և գնաց 'ի Թափոր և 'ի Պաղոմայիս, և Խաչակրաց կանուխ հասած գնդից հետ քաջութեամբ գործ տեսաւ։ Այս յառաջապահ գնդից գլխաւորին և ամենէն կարիճ իշխանն՝ էր Մաճառաց Թագաւորն Անդրէաս Բ. որ մեծ համբաւ այլ հանեց. բայց իր երկրին շփոթութեանը համար՝ ստիպուեցաւ շուտով հոն փութալու. 'ի դարձին եկաւ յԱնտիոք, (որ այս ատենս այլ Ռուբենի ձեռքն եղած կ'երևի)։ Լեւոն՝ որ ամեն բան կու գիտէր կ'իմանար, հաւատարիմ դեսպան մը խաւրեց առ Անդրէաս, և զաշամբք խօսեցան որ անոր համանուն որդին Անդրէասը՝ պսակեն Զապէլի հետ. Թէպէտ և դեռ երկուքն այլ բաւական տարիք չունէին. վասն զի Անդրէաս այլ հազիւ 8 տարուան կրնար ըլլալ։ Ունկարաց հին արևելեան արիւնը յարմարագոյն սեպեց Լեւոն իրենին հետ խառնել. անոնց Թագաւորին այլ աւելի հաճոյ անակնկալ օժիտ չէր կրնար ըլլալ՝ իր որդւոյն համար, զոր յանկարծ Հայոց Թագաւոր պիտի տեսնէր։ Այս բանիս համար Անդրէաս գոհութեամբ Թուղթ մը գրեց ('ի մարտի 1219 տարւոյ) առ պապն Ոնորիոս, իմացընելով Լեւոնի հետ ըրած խնամախօսութիւնը, և անօրի-

նուէն խնդրելով որդւոյն համար, միանգամայն և աղաչելով որ ինքն քահանայապետն յանձնէ զնա Տաճարական և Հիւրընկալ ասպետաց՝ խընամակալ ըլլալու աղջկան՝ յետ մահուան Լևոնի։

Բայց այս գործս չյաջողեցաւ. վասն զի Լևոն շուտով մեռաւ նոյն տարին (1219). և Անդրէաս թագաւորն զբաղած էր 'ի Գալիցիա՝ հոն թագաւորեցընելու իր երկրորդ որդին. և ինչուան որ հոս բաները ուղղէց, Հայ.ք ուրիշ ընկեր գտան Զապէլի. մանաւանդ Անդրէաս այլ Վենետիկցի օրիորդ մ'առնելու բաղդ ունեցաւ։ Այսպէս զուր եղաւ Զապէլի առաջին փափագողին ակնկալութիւնը. թէպէտ և կ'երևի՝ թէ Լևոն այլ նոյ-յուսով մեռաւ, նորէն յանձնելով զԶապէլ՝ կաթուղիկոսին և իր հաւատարիմ իշխանաց, և գըլխաւորապէս Ադամին, զոր և պայլ դրեր էր. այսինքն իբր խնամակալ տէրութեանն և հայրագլուխ (աթաբէկ) իր գեռահասակ ժառանգին։

Դ

Զապէլի խնամակալութեան տակ եղած ժամանակն՝ որ եօթն ութ տարի քշեց, շատ դժուարակնճիռն եղաւ, և իրեն փոքրիկ սրտին այլ ոչ փոքր վախեր և ցաւեր բերաւ. որոց առաջինն եղաւ կորուսանելն իր հայրագիրը, որուն ձեռ.քէն հազիւ վարժեր էր ծնողական խնամք ընդունիլ։ Ատան պայլ օր մը Սսայ Ս. Գարսամ եկեղեցին երթալու ատեն շատ չբանուկ ճամբէ մը, Իսմայելացւոց կամ Հաշիշի աւազակաց սրի տակ ընկաւ. որոց սատանայական պաշտօնն էր յանկարծ հանիլ իշխողաց վրայ և սպաննել։ Ատան՝ Լևոնի հազարապետն և երբեմն սպարապետն ըլլալով՝ անշուշտ այլազգեաց ատելի էր։ Իշխանք

Հայոց անոր տեղ հաւանեցան պայլ ճանչնալու Լեւոնի համշիրակը, զԿոստանդին գունդստապլն, զոր արդէն երկրորդ խնամակալ դրեր էր Լեւոն. այս անձս որ 60 տարւոյ չափ Ռուբինեան տէրութեան նեցուկ և գրեթէ կառավար եղաւ, այս ժամանակիս ամենէն նշանաւոր անձն էր, ամենայն բարեմասնութեամբք. և յետ Լեւոնի մեծի՝ առաջին մեծ մարդ կրնայ ըսուիլ բոլոր մնացեալ տէրութեան ժամանակին. ցեղով, ինչպէս առաջ յիշեցի, ՚ի Հեթմեանց էր, որ թշնամիք էին Ռուբինեան տանը. բայց սա ցեղին կրսեր ճիւղէն էր, որոյ անդրանիկն՝ Տարսոնի և Լամբրոնի տէր ըլլալով՝ հակառակ էր Ռուբինեանց. իսկ այս ճիւղս Պապեռոնի և ուրիշ բերդերու ժառանգ՝ Լեւոնի հօր հետ խնամութեամբ՝ միաբան և հաւատարիմ եղաւ Ռուբինեանց. Կոստանդնի անձնական արդիւնքն այլ հասուց զինքը այս բարձր աստիճանին, ուր կրցաւ այլ ամուր և փառաւոր կենալ հնարագէտ խելքովը, զօրութեամբն և բարեկիրթ որդւոց օգնութեամբ։ Այսպիսի զօրաւոր և բանգէտ անձի մը դէմ կենալ կամ հնարել՝ շատ դժուար էր. և ով որ փորձեց՝ մեծապէս զղջացաւ. և նախ Բրինձն Ռուբէն-Ռեմունոս։

Սա հալածուած յԱնտիոքայ, մերժուած իր բազմերախտ մեծ քեռիէն, մինչդեռ տարակուսեալ կու մտածէր՝ վրայ հասաւ Լեւոնի և յետոյ Ատանայ մահն. Ռուբէն՝ մէկ իշխանութենէ զրկուած՝ աչքը երկուքի դարձուց, որոց առենօք իրաւունք այլ կրնար յուսալ. իսկ հիմայ թէ ոչ զօրութեամբ հին կտակին Լեւոնի՝ գոնէ ազգականութեամբն և խնամութեամբ, (վասն զի Զապելի մօրքոյրն էր իր կինն այլ) և Հայոց ու Լատինաց լեզուին և սովորութեան վարժութեամբն՝ վստահացաւ խնդրելու Հայոց Թագաւորութիւնը։ Բայց Լեւոնի կամքն և Կոստանդնի վախն հե-

ուացուցին զնա. սակայն տարաբաղդ երիտասարդըն՝ չէր կրնար շուտով մոռնալ որ տասն տարի առաջ Լեւոնի հետ Թագակից և Յիսկից՝ Հայոց հանդիսական տօնից հաղորդ կ՚ըլլար. և շատեր կային՝ որ ոչ միայն զինքը ճանչցեր էին յաջորդ Լեւոնի, այլ թերեւս և հիմայ այլ չհակառակէին. այն ատեն՝ դեռ պատանեակ, հիմայ իբր 25 տարուան կորիճ ասպետ մը, Հայոց և Անտիոքայ և Խաչակրաց նշաններով զարդարուած, իր ամենէն վառվռուն և յուսագին կենաց ատեն, չէր կրնար այնպիսի մեծ փափագէ մը յետ դարձընել սիրտը. խնդրանօք չկրցածը՝ ուզեց փորձել ուրիշ հնարքով, նաև զինուց զօրութեամբ:

Այն ատեն (1219-20) Խաչակիրք առաջնորդութեամբ Յովհաննու Պրիենայ՝ Երուսաղեմի Թագաւորին՝ եկեր պաշարեր և առեր էին զՏամիաթ. հոն էր Պապին նուիրակն այլ՝ Պելագիոս ծիրանաւորն, որ իբրև փոխանորդ քահանայապետին՝ կ՚ուզէր Խաչակրաց գլուխ այլ սեպուիլ և հրամայել: Ասոր դիմեց Ռուբէն, և գտաւ օգնութիւն սակի և զօրաց. Խաչակիրք Տամիադայ առմամբ հպարտացած և շփացած անհոգ կեցեր էին. դիւրին էր ասոնցմէ ժողովել գունդ մը բաղդախնդրաց, և նոր տեղի մը ձեռք ձգել: Այսպէս այլ եղաւ. Ռուբէն յանկարծուց գնդովն եկաւ 'ի Կիւլիկիա, մտաւ 'ի Տարսոն, և առանց ընդդիմութիւն գտնելու հոն, (ուր որ միշտ Լեւոնի ցեղին հետ սերտ բարեկամութիւն չէր եղած), իշխեց ինքզինքը Հայոց Թագաժառանգ անուանել, և գտաւ կուսակից այլ զինքն այնպէս ճանչցընելու: Աւելի քաջալերուած՝ առաջ անցաւ՝ ձեռք ձգելու ուրիշ քաղաքաց և Լեւոնի Թագին վրայ. բայց զգաստն Կոստանդին հաւատարիմ գնդով մը յանկարծ վրան հասաւ՝ Մամեստիոյ կողմերը. անոր կուսակիցները ջարդեց ցրուեց,

զինքն այլ բանից բերաւ իրեն ապաստան կարծած Տարսոն քաղաքը, և շղթայակապ բանտարգել ըրաւ։ Թշուառ երիտասարդն անյոյս 'ի Հայոց և յԱնտիոքայ, դեռ կու յուսար Խաչակրաց և Քահանայապետին օգնութեանը. և սա յիրաւի հայրաբար խնամելով և ճանչնալով զնա օրինաւոր տէր Անտիոքայ՝ գրով յանձնեց առ նախայիշեալ Նուիրակն, որ հոգ տանի անոր ազատութեան, և անօգնական չթողու անոր կինը և երկու աղջիկները. Նուիրակն կրցած ջանքն ըրաւ, նզովեց զԱնտիոքայ բանաւոր դուքսը, և Տաճարական ասպետաց յանձնեց առնուլ քաղաքը. որով թերևս յոյս ըլլար Ռուբենի գոնէ նորէն հոն դառնալու. բայց նա ողբերգական վախճան մ'ունեցաւ. բանտին, և աւելի սրտին նեղութենէն՝ երկու իրեք տարիէն՝ իր դալար արեւուն ու ամեն յոյսերուն մարեցաւ, մեռաւ[1]։— Հայոց թագն իրեն համար չէր, և ոչ այլ իրեն պէս ուրիշ մերձաժառանգ ակնկալուի մը, թէ և աւելի այլ արժանաւոր անձն։

Այս երկրորդ կամ երրորդ (յետ Անդրէի և Ռուբենի) ակնկալուն՝ եղաւ նախայիշեալ Թագաւորն Երուսաղէմի Յովհաննէս Պրիէն, պատճառաւ կնոջն խնամութեան. այս կարիճ, ըղձօն և արդէն տարիքն առած մարդն, որ մեծ անուն ունէր Եւրոպացւոց մէջ, և դեռ նոր Տամիաթն առնելով՝ այլ աւելի հռչակուած էր, իր ժամանակին բաղդախնդիր, նաև բաղդակորոյս և թափառագիւս գլխաւոր անձն այլ կրնայ ըսուիլ. և ըստ այսմ՝ քաջութիւնն և ուրիշ ձիրքերն կու մթանան։ Լսելով Լևոնի մահը և Ռու-

1 Ըստ ոմանց պատերազմի մէջ բանուած ատեն 'ի Տարսոն բերուելով՝ սպաննուեցաւ, կամ 'ի Բարձրբերդ բանտեալ մեռաւ։

բենի հանգիստածը, իրեն յարմար սեպեց ժառանգութիւնը. այս մտքով ելաւ Տամիատէն եկաւ 'ի Պտղոմայիս (Աքքեա), ու պահանջեց Հայոց Թագը: Այսպիսի մեծ և զօրաւոր անձի դէմ կենալն դիւրին չէր. բայց որովհետև կնոջն իրաւամբք եկեր էր, Կոստանդին այլ նովին իրաւամբ պահանջեց իրմէ՝ որ զկինը՝ (որ էր համահայր քոյր Զապելի) հետը բերէ: Յովհաննէս դարձաւ իր կարծեցեալ Թագաժառանգին, և հիւանդ գտաւ զնա, որ և քիչ ատենէ մեռաւ. 15 օր վերջը իր մեկհատիկ չորս տարուան մանչ զաւակն այլ մեռաւ: Սրբազան քահանայապետն Ոնորիոս այլ խրատ և բանադրանք գրեց Յովհաննու՝ եթէ Հայոց հետ պատերազմի անոնց Թագաւոր ըլլալու համար: Ամեն կողմէ Յովհաննիսի հայկական ակընկալութիւնն փճացաւ. անոր վրայ շատ չանցաւ՝ Երուսաղեմի Թագաւորութիւնն այլ կորուս, և անոնց տեղ գտաւ Կոստանդնուպօլսոյ կայսրութիւնը (1231), ու յունական Թագով մխիթարուած մեռաւ (1237):

## Ե

Զապէլ՝ առանց իր գիտնալուն այս յափշտակիչներէն ազատելով, պէտք էր որ շուտով ապահովուէր նոր ակնկալուներէ. և Թէպէտ Կոստանդին ամենայն արթնութեամբ կը հսկէր, բայց երկար տարիներ այլ անխռով մնալու չէր յուսար. ուստի Զապելի չափահաս տարիքին չկարենալով սպասել, գոնէ խելահասութիւնը ունենալով, երբ եօթն տարեկան եղաւ՝ 'ի ժողով կանչեց ազգին գլխաւոր իշխանները, պաշտօնեայքը, զօրապետները և եկեղեցականքը, և ըսաւ, (ըստ պատմելոյ իր որդւոյն՝ Սմբատայ սպարապետի

և ժամանակագրի) «Պարոնայք, դուք գիտէք թէ » յինչ նեղութեան գոլ զաշխարհս, ու զմեր » Պարոնին (Լևոնի) յետամնացքն. ու Աստու- » ծով ինչու 'ի յայս բերի. ու մեր Պարոնի դուստ- » րըս՝ կարգման եղաւ. ամենդ թատպիրութեցէք » (պատրաստութեցէք) որ մեզ Պարոն բերեմք. » զի ես ուզեմ որ իմ տան և իմ որդւոցն անդոր- » րութիւն առնեմ». այսինքն, Զապելի փեսայ մը բերեմք՝ որ ես պայլութեան հոգէն ազատած՝ իմ տունս հոգամ: «Նա ամենն թատպիրութեցան » շատ օրեր. և հայնց պատեհեցին (պատշաճե- » սան՝) որ քան յայլ տեղաց՝ բերեն պարոն Ա- » լողին զԱնտաքայ Բրենձին որդին՝ զՖիլիպն. զի 'ի » մօտս է, և լաւ կարէ օգնել մեզ 'ի մեր ամեն » կարիք»: — Այս Անտիոքայ Բրինձն կամ իշ- խանն էր Ծանօթ Պեմունդ (կամ ըստ ոմանց Բե- մունդ) Դ. Շիլ կամ միականի կոչուած[1] (Le Borgne), որ այնչափ վիճից պատճառ եղաւ ընդ Լևոնի և իր եղբօր Թոռին Ռուբենի. 'ի վերայ այսր ամենայնի մեր պարոնայքն շատ օրեր մտածելով՝ քան զամենքն պատեհ գտան իրենց պարոն բերե- լու անոր երրորդ որդին՝ Փիլիպպոսը, որ իբրև 17 տարուան պատանի մ'էր. և արդէն մօր կողմանէ խնամի էր Հայոց և տեղեակ անոնց սովորութեց. կու յուսային որ իր հօր և հանգուցեալ աներոջ մէջ անցածները գիտելով՝ իրենց վրայ երախտա- պարտ ըլլայ, և հլու հաւատարիմ մնայ իր նոր հայրենեաց օրինաց: Այս բանս ապահովելու հա- մար՝ հաւատարմութեան խօսք և երդումն այլ պահանջեցին իրմէ. «Բերին 'ի պոմման (պայման) » որ հայէնան կենայր, ու զէկէղէցին և զէնդանն հայե- » նան պահէր. և զամեն մարդ յիւր իրաւունքն

1 Արդեօք այս նշանակութեամբ Ալուղ կամ Ալօղ կո- չէ զնա մեր պատմիչն, թէ այլ պատճառաւ՝ չեմ գիտեր:

» պահէր »։ Այսինքն, եկեղեցական և արքունական հանդէսները՝ հայկական ծիսով վարէ, և զամենքն իրենց իշխանութեան և իրաւանց մէջ պահէ։ Ապա (1222) մեծ հանդիսիւ պսակեցին անոր հետ զօրիորդն Զապէլ, որ իբրև քոյրահարսն փեսային և Թագուհի Հայոց և միամիտ աղաւնի՝ չորս տարի այլ հօրը արքունի դարպասին և առագաստին մէջ կու ձեմէր, դեռ իր խնամակալ և հայրանախանձ Հայ իշխանաց հսկողութեան տակ. և շատ բարեբաղդ եղաւ ընտիր դաստիարակներ ունենալու թէ յիւրոցն և թէ 'ի Փռանկաց, միտքը և հոգին կրթելու. և իր բարձր վիճակին յարմար ստացաւ 'ի կուսական հասակին՝ սիրտ մայրենի, աղքատաց և կարօտելոց համար, ճաշակ և սէր իմաստութեան և գիտութեանց, և ամենէն աւելի՝ բարեպաշտութիւն, համեստութիւն և աստուածսիրութիւն։ Աշխարհն՝ իրեն տիկնութեան, փեսայն՝ հարսնութեան, երկինք՝ ազգին մայրութեան կու պատրաստէին զնա. ինքն դեռ արտաքին փառաց անհմուտ՝ միայն պարկեշտութիւնը գիտէր գեղեցկագոյն զարդ. և կարծէր թէ այնպէս կուսախառն կենակցութեամբ ապահով պիտի մնայ իր պսակակցին հետ։

Բայց թէ իր և թէ հասարակաց կարծիքն խաբուեցաւ։ Փեսայն Փիլիպ յառաջ քան առ հարսնն՝ անարժան գտուեցաւ առ աշխարհն՝ որոյ Թագովն պսակուեր էր։ Առջի իրեք տարին վախով և զգուշութեամբ քաղաքավարելով՝ երբ ուժովցաւ քըսանամեան եռանդով և համարձակութեամբ, սկսաւ ինքն իր խելքով վարուիլ, մանաւանդ թէ հօրը խելքովը. որ ոչ այնքան որդեսիրութեամբ՝ որքան շահասիրութեամբ՝ պղտորեց անոր միտքը. և սկսաւ սա պաղիլ Հայոց սովորութեննէն, և « իւր հօրն Թապորով կ՚ուզէր որ ձգէր զՀայոց » զամեն իշխանքն, և յիւրոցն դնէր »․ Հայ պաշ-

տօնէից տեղ՝ Փրանկ մացընել, եկեղեցւոյն և սե-
ղանին ծէսը փոխել, Սիսէն աւելի Անտիոքայ մօ-
տենալ: Իշխանք խրատեցին զնա, բայց նա իր հօր-
մէն մոլորած՝ ոչ միայն ճամբէն չդարձաւ, այլ և
գաղտուկ հօրը խաւրեց Հայոց արքունի զարդերը.
և մանաւանդ Լևոնի մեծածախ շինած պալատա-
ձև վրանը, զոր մեծ հանդիսի օրեր կու կանգնէին:
Եւ ոչ այնքան երդմունքէն՝ որքան Հայոց վրէժ-
խնդրութենէն վախելով՝ ուզեց ինք զինքն այլ
փախցընել իր հայրենիքը: Գաղտուկ զՋապել
ձեան առած ճամբայ ելեր և հասեր էր 'ի Թիլ
Համտընոյ՝ Ջահան կամ Ճիհուն գետոյն քով:
Կոստանդին կարիճ զինուորներով հասաւ ետևէն.
գիշերանց դարանելով պաշարեց զբերդը, և ներս
մտաւ անկարծելի ատեն. մինչդեռ յօգնութիւն,
քուն և սէր մեծագոյն խաղաղութեան և երջան-
կութեան մէջ կու կարծեցնէին ծաղկահասակ ա-
մուսինքը, յանկարծ զամենն այլ ընդհատեց,
խռովեց, հալածեց. — և ինչ անդարձական հա-
լածանք. — երկաթեղէն ձեռօք տուտապատաւորին մի-
ջէն յափշտակեց զՓիլիպ, երբ զարհուրեալ և
կիսամեռիկ կողակիցն Զապել՝ դողդըղալով լալով,
և երեսները ցլտելով՝ հոգիւ կրցաւ կանչել «Վա՜յ
» տէր, վա՜յ տէր ». Ձեռուըները դէպ 'ի գրկէն
փրթած փեսայն կարկառելով. մինչդեռ անգութ
յափշտակողքն՝ անոնց կաթոգին կապերը խզտա-
կտրելով՝ յանցաւորաց կապանօք պնդեցին ըզ-
Փիլիպ, և խուլ ականջով՝ ելան քշեցին զնա
մինչև 'ի Սիս, ուր և բերդարգել ըրին, իբրև մատ-
նիչ ազգային իրաւանց և երդմնազանց: Լուր
խաւրեցին Անտիոքայ Բոհեմին այլ՝ որ յետ դար-
ձընէ Հայոց գանձը, և զորդին ազատէ. իսկ չէր
և չուսար հայրն՝ Հայոց ոսկւոյ և արծաթին հետ
կու կշռէր որդւոյն սէրը: Առջի բերան, քիչ մ'այլ
վախէն լռեց, որ չըլլայ թէ Հայք դեռ կրից տա-

քութեան մէջ ըլլալով անոր կենացն այլ վնաս հասցընեն. ատեն անցնելէ ետև դեսպաններ ապաչաւորներ խաւրեց որ գոնէ միայն արձըկէն, իրեն խաւրէն որդւին, խոստանալով բոլորովին հրաժարելու յիրաւանց թագաւորութեանն Հայոց ։ Ի՛նչ դժուարակնճիռն և ողբերգական խնդիր. Թագէն հրաժարելն թերևս ըլլար դիւրին, բայց ի՛նչպէս հրաժարէր Զապէլի սրտէն, որ և անխարդախ սիրէր իր վարուժանը։ Երկու տարւոյ չափ տևեց այս խղճալի վիճակն. Պեմունդ տեսնելով որ դեսպանութեամբ բանն առաջ չ'երթար, անձամբ եկաւ 'ի Համտուն, աղաչելու զիշխանս Հայոց, զիջանելով զանոնք գոհ ընելու և փրկանաւորելու թշուառ զաւակը։ Հայք չկըրցան չէ ըսել՝ թող տուէն որ մարդ զրկէ իմացընելու որդւոյն։ Ափսո՛ս, շատ ուշ. կամ նենգութիւն[1] կամ սրտնեղութիւն արդէն ազատեր էին զՓիլիպ... 'ի կենաց։ Պատգամաւորքն լուր բերին թէ դեռ նոր՝ քանի մը (տասն) օր առաջ Փիլիպպոսի դալար արևն բանտին մթութեան և տխրութեան մէջ մարեր էր (1225). 'ի պատիժ՝ իրմէ առելն՝ իր անզգաստ հօրը, 'ի վրէժ ազգային հայենակ իրաւանց, բայց և 'ի փուշ փափուկ սրտին Զապէլի։ Զապէլ հիմայ զարգացեալ՝ սկըսեր էր զգալ իր վիճակը և պարաքերը. աչքին դիմաց սարսափելով տեսեր էր իր կողակիցը՝ զինեալ և զայրացեալ մարդկան ձեռք ընկած. եթէ ազգին իրաւանց դաշնոյն չէր կրնար պաշտպան կենալ, մինչ իր կենակցին և թագակցին բարեխօս ըլլալու իրաւունք չունէ՛ր։ Կ'իմանար՝ որ իր տկար հասակն խաղալիկ կ'ըլլայ բաղդին և չարերու բաղդի. բայց դեռ ամեն փափագուն այլ չկա-

1 Ոմանք ըսին թէ թունով եղեր էր մահն։

ընթանալով իր աղաւնոյ սահմանէն վեր թռչիլ՝ լռիկ սիրտը գրած կու գադրէր։

## Ջ

Աշխարհախումբ պարոնայքն Հայոց՝ երկրորդ անգամ այլ դրին զԿոստանդին, որ փութացաւ Փիլիպպոսի կողմնակից իշխանները ցրուել. և անոնցմէ 28, կամ ըստ ոմանց 70 հոգի բռնեց, կամ սպաննեց կամ վռնտեց կամ նուաճեց։ Տարի մ'այլ արթնութեամբ կառավարելէն ետև, իր անուանակից Կոստանդին կաթուղիկոսը և մեծ իշխաններէն մէկ քանին հաւանեցուց՝ որ Զապելը հարսնացընէ իր որդւոց մէկուն. որպէս զի ինքն այլ հայրաբար պաշտպանելով՝ ամեն փորձանքէ ազատ պահէ զԹագն և զԹագուհին Հայոց։ Եթէ փառասիրութենէ ազատ այլ չէր այս խորհուրդս, սակայն իրմէ արժանաւոր մարդ այլ չկար Զապելի սկեսրայր ըլլալու. ոչ ոք իշխեց ձայն հանելու, և ոչ ոք յետոյ զղջացաւ։ Ինքն Լևոնի համշիրակ, որդիքն այլ նոյնպէս էին Զապելի, և գրեթէ մէկտեղ մեծցած. ասոնցմէ փեսայացուն էր ՀԵԹՈՒՄ, երրորդ որդին Կոստանդնի, իբրև 15 տարեկան[1], «Մանուկ տիօք, առոյգ մարմնով և » գեղեցիկ տեսանելով». ըստ ասելոյ ժամանակակից պատմչին, (Կիրակոսի), և ըստ ականատեսին (Վարդանայ) «մեծահոգի և հանճարեղ » պատանեակ, որ էր անձնեայ և թիկնեղ և գե» ղեցկագիտակ երիտասարդ»։

Այս վայելուչ և հաճոյական ձիրքերն՝ եթէ օտարաց անտարակոյս գրաւ մ'էին աշխարհքին խաղաղութեանը և իրենց տիկնոջ երջանկութեա-

1 Իր անդրանիկ եղբայրն Սմբատ ծնած էր յամին 1208։

նը, սակայն Զապէլի մեծ և զգայուն սրտէն չէր կրցած խլել Փիլիպի փուշը. որչափ այլ երախտաւոր ճանչնար իր կրկին անգամ հայրագլուխ եղած Կոստանդինը՝ Զապէլ կ'իմանար որ ոչ միայն անոր թևոց տակն է՝ այլ կերպով մը և ճանկերուն. և այս ճանկերը շատ սուր և արիւնոտ կ'երևէին իրեն. Հեթում այլ սիրուն ձագ մ'էր, բայց բազէի կամ արծուոյ ձագ: Զապէլ՝ որսերէ զըզուած՝ անխռով խաղաղութեան բոյնի մը կու փափագէր. կ'ուզէր մէկ ուժով մը զինքը բազէի և արծուոյ չհասած բարձրութեան ծոցը ձգել, ու մնաք բարով ըսել թէ՛ հարստութեան և թէ թագաւորութեան պսակին. որոյ համար պատճառած կու սեպէր երկու կտրիճներուն (Ռուբէնի և Փիլիպի) իրեն մէկմէկէ մերձաւորներուն՝ կարճ օրով ու սև ազով ցաւալի մահերը: Մտածածը մեծ և յօժար, բայց 'ի գործ դնելն էր դժար. պայլ, պարոն, իշխանք և եպիսկոպոսք կու յորդորէին զնա 'ի կենակցութիւն Հեթմոյ և 'ի տիկնութիւն. ինքն իբրև անօգնական աղաւնեակ և որոջ՝ մնչէր մայէր, լայր ու լաէր: — Կամայ ակամայ նշանելով զնա ընդ պատանւոյն (1226), Թողուցին որ ժամանակն այլ յորդորէ զսիրտ դշխոյին, և ապա մեծահանդէս կատարեն թագօրհնէքը:

Այն միջոցին սրբասէր աղաւնին սրտին միամտութեան հետ հոգւոյ խորագիտութիւն միացընելով՝ ուզեց որ երթայ մայրը տեսնէ. Թողուցին իշխանքն. յուսալով որ սիրտն այլ հանգչի և մխիթարուած դառնայ: Մայրն՝ Իզապէլ՝ կամ իր կամօք, կամ Հայոց զգուշութեամբն քաշուեր էր 'ի Սելևկիա Իսաւրիոյ, և իր փրանկ ազգականաց քով կու կենար: Այս ամուր բերդաքաղաքն՝ որ Կիւլիկիոյ արևմտեան սահմանածայրն էր, Լևոն տուեր էր Լատինացի Հիւրընկալ ասպե-

տայ, որոնք մեծ պատուով և սպասաւորութ̃
ընդունէր և կու պահէին զայրն դշխոյն Լևոնի.
հիմայ անոր ժառանգ դուստրն այլ աւելի պա-
տուով ընդունեցան. մանաւանդ երբ իմացան որ
աղջիկ Թագուհին չուզէր անկէ և մօրմէն բաժ-
նուիլ, կամ՝ անոր և ազգականացը խրատովը,
կամ իր կամօքն. և աւելի կու փափագի վանք մը
քաշուիլ՝ քան արքունեաց մէջ նստել: Բերդին
դռները ամրացուցին: Կոստանդին զայս լսելուն՝
մէկէն զօրքերը ժողովեց, հասաւ պաշարեց քա-
ղաքը. քաղաքապետն կամ գլխաւորն ապստամբաց՝
Ցրէր (Եղբայր) Պերդրան՝ իր ապստամբաց կորը-
ծութեան և բերդին ամրութեան վրայ վստահա-
ցած՝ դէմ կեցաւ Հայոց. Կոստանդին չուզելով
երկայն պաշարմամբ վտանգի ձգել բաղդը, ըս-
պառնացաւ Պերդրանայ՝ որ եթէ շուտով չտայ
զՁապէլ, մէկէն պիտի երթայ Իկոնիոնի Ալայէտ-
տին սուլտանին հետ դաշնակցելու, և անոր զօր-
քերն այլ առած՝ գալ բնաջինջ ընելու ապստամբաց
տունը տեղը: Պերդրան մէկ կողմէ վախնալով
սպառնալիքէն, մէկալ կողմէն այլ իր և իրեննե-
րուն պատուոյն և քաջութեան նախատինք սե-
պելով քաղաքը մատնել հակառակորդին, և ան-
կէ աւելի՝ իր հիւրերը, հոն ապաւինեալ Թա-
գուհիները, ապստամբական հնարագիտութեամբ
մը պատասխանեց Կոստանդեայ, թէ մենք ոչ
կ՚ուզեմք ձեր դէմ կենալ ու քաղաքս պաշտպա-
նել, և ոչ այլ կրնամք մատնել. վասն զի բարեյի-
շատակ Լևոն Թագաւորն մեզի տուած է, և հոս
են իր կինն և դուստրն՝ ձեր Թագաժառանգն, և
հոս կ՚ուզեն մնալ. ինչպէս կրնամք մենք համար-
ձակիլ մեր բարերարները և մեզի դիմողները ձեր
ձեռքը տալ իրենց կամաց դէմ. ուրեմն թողու-
ցէք մեզի՝ որ մենք մեր կամօք դուրս ելլենք բեր-
դէն, և դուք դիւրացածնիդ ըրէք: Այս պայմանաւ

ապստամբքն իրենց պատուոյն ելան, Թողուցին ըզՍելևկիա. Կոստանդին նորէն ձեռք ձգեց մօրը բունէն բռնած ձագի պէս՝ Զապէլը, և հրաւիրեց 'ի տիկնութիւն և 'ի մայրութիւն Հայոց։

## Է

•

Այլ չկարացաւ Զապէլ ընդդիմանալ Հայոց, և Կոստանդնի ու Հեթմոյ խնդրածին. իմացաւ Աստուծոյ կամքը, և յանձնելով զինքը անոր նախախնամութեան, իր ազգին հաւատարմութեան, պայլին պաշտպանութեանը, և փեսային սիրոյն, պսակեցաւ 'ի հարսն Հեթմոյ և 'ի Թագուհի Հայոց, եկեղեցական և քաղաքական մեծ հանդիսով և հասարակաց հաճութեամբ և ուրախութեամբ. որոց մասնակից ըրաւ Կոստանդին՝ ('ի հաստատութիւն աշխարհին և իր զաւակին) այն ազգերը կամ այն Թագաւորները՝ որոնց հետ յարաբերութիւն մ'ունէին Հայք։ Գրեց առ սրբազան Քահանայապետն, առ կայսրն Ալամանաց, դաշնակցեցաւ ընդ սուլտանին Իկոնիոնի. աէրութեան պաշտօնները յանձնեց արժանաւորաց։ Իր անդրանիկը (Սմբատ) սպարապետ դրաւ, մէկ որդին այլ (Լևոն) Ճորաշխարհ կամ Իշխան Բագառուքեան, իսկ ինքն անուանեցաւ Արքահայր և Ասպետ. և Թէ իր Թագազարդ տանը և հարսին, Թէ բոլոր աշխարհին խորհրդատու, և ամենահաս օգնական ու կառավարիչ եղաւ քառասուն տարւոյ չափ՝ ցխոր ծերութիւնն (†·1263). Հեթմոյ և Զապէլի Թողլով աւելի փառք և վայելքը, իրեն վրայ առաւ հոգ և աշխատութիւնը. և այսպէս Ճշմարտեց իր որդւոյն ըսածը, Թէ հարիւրապատիկ փոխարինեց Լևոնի՝ զինքն ազատելուն 'ի կապանաց սուլտանին, անոր գանէր տասնկ

հայրութիւն և հայրապետութիւն ընկելով. և ճանչնալով միշտ զնա ժառանգ թագաւորութեան Հայոց և տիկին: Այսպէս այլ ազգն՝ թէ և թագաւոր կոչէր զՀեթում, բայց նախապատիւ կու ճանաչէր զթագուհին Զապէլ, նոյնպէս և յետագայք. գոնէ մինչ անոր մահը և Հեթմոյ մինակ մնալը. ինչպէս որ այն մօտ ատեններ գրուած յիշատակագիրք ոմանք առանց իսկ Հեթմոյ՝ կ՚ըսեն. «Ի թագաւորութեան Հայոց Լևոնի, որդւոյ » Զապէլ թագուհւոյն, դստեր Լևոնի թագաւո- » րի ». կամ ինչպէս Յովհան Երզնկացի, զատե- » լով կ՚ըսէ[1] վասն նոյն Լևոնի (Գ), « որդւոյ ի- » մաստուն արքային Հեթմոյ՝ հօր, և մօր՝ Զա- » պէլի ուղղոյ թագուհւոյ ». և Վահրամ 'ի շարս թագաւորաց զԶապէլ միայն յիշէ:

Նոյն ինքն Հեթում՝ ինչպէս որ կ՚երևի, իր անուամբ կտրած դրամներուն վրայ՝ Զապէլը իր աջակողմը կեցած կու գրոշմէր, բարձրաձող խաչ մը հաւասար բռնելով, և արքունի գաւազան. որ (եթէ չեմ սխալիր) երբեմն միայն Զապէլի ձեռքը կ՚երևի. (դրամին եզերքէն այլ գրուած է Կարողուելինեանն Սմբատայ է. միւս կողմն՝ առիւծ մը խաչակիր, նշան Լևոնի տան, զոր պահեց և Հեթում և իր պայազատքն, եզերքը իրենց անունը գրելով, ինչպէս ՀԵԹՈՒՄ ԹԱԳԱՒՈՐ ՀԱՅՈՑ:

Մեր երկայնաշար թագաւորաց պատմութեան մէջ ամենէն ցանկալի և գեղեցիկ մասերէն մէկն է Հեթմոյ թագաւորութիւնն, (որ մեծ մասամբ այս օրուան յիշատակէս դուրս է), և շատ երջանիկներէն մէկն, գոնէ երկու թագակցաց կենակցութեանն ատեն: Հեթում՝ որ երբեմն իբրև ըղձքոյր գգուեր էր զԶապէլ իր հօր պայլութեան ատեն, և հիմայ իբրև հարսն լծակից ունէր, պա-

1 Յիշատակարան Քերականին:

տուէր զինա և իբրև տիկին և իր Թագին պատճառ ։ Զապէլ որ իր առաջին տարաբաղդ ամուսնոյն կուսախառն սէրը և ցաւը չէր կրցած ջնջել իր փափուկ սրտէն, շատ տարիներ (իբրև 8 կամ 9) չուզեց նոր առագաստը վայելել. մինչև երկար փորձով տեսնելով Հեթմոյ զգաստութիւնը և բարեպաշտութիւնը, յօժարութեամբ կ'ուզէր անոր Թագաւոր հռչակուիլն ։ Կուսութիւն քան զամուսնութիւն նախապատիւ սիրելի էր իրեն, բայց վերջապէս հաւանեցաւ բոլոր տէրութեան մը փափագին և օգտին. սիրեց նոր ամուսինը. նախախնամութիւնն այլ օրհնեց իրենց սէրը և պտղաբեր ըրաւ ։ Զապէլ 11 ամեայ էր պսակուած ատեն և իբր 36 ամեայ բոլորեց կենաց պսակը. իրենց Թագակցութիւնն եղաւ յամին 1226, իսկ անդրանիկ որդին յիշուի իբրև տասն տարի վերջը ։ Ութ զաւակ ընծայեց, երեք մանչ և հինգ աղջիկ. առաջին՝ Լևոն (Գ) Թագաւոր. Բ, Թորոս. Գ, Ռուբէն որ շատ չապրեցաւ երկրիս վրայ. (դստերքն) Դ, Ֆիմի, որ Սիդոն քաղաքին գաղղիացի իշխանին՝ Յուլիանու Իպլինեան՝ կին եղաւ. Ե, Սիպիլ՝ կին Պեմունդայ Զ, Անտիոքայ բրնձին. Զ, Ռիթա՝ կին Սարուանդիքար բերդին տիրոջ, (զոր արևմըտեայք Sire de la Roche անուանեն). Է, Մարիամ՝ կին Կիտայ Իպլինեան (Guy d'Ibelin) գաղղիացի սենեշալին Կիպրոսի (sénéchal). Ը, Իզապէլ, իր մօր և մամուն անուանակից, որ շուտով Թռաւ յերկինք[1] ։

1 Վահրամ քարտուղար Լևոնի (Գ) որդւոյ Զապելի, և հին ցեղագիրն Փրանկ՝ երաշխաւոր են այս ութ զաւակաց. սխալին որք իններորդ մ'այլ աւելցընեն Օշին անուամբ. եւ առաւել որք տասներորդ դուստր մ'այլ անանուն ։

Ը

Զաւակաց զարգացման և դաստիարակութեան խնամքը չսկսած, Զապել իր տիկնութեան առաջին տարիներն, ինչպէս Ֆիլիպի ատեն այլ, իր անձնական կրթութեանը կու պարապէր, մասնաւոր սիրով և յօժարութեամբ բարեգործութեց և ուսման, հետևելով իր հօրը փափագանաց և օրինակին, և ջանակից գտնելով իր փեսայն. երկուքն այլ իրենց աստիճանին կարևոր փառք և պատշաճ կու սեպէին զգիտութիւնս, մանաւանդ սուրբ գրոց. գրասիրաց և գիտնոց ձեռնտու կ՚ըլլային. կու պատուէին, ընտանեբար կ՚ընդունէին, հարցընէին, և իրենց համար գրել տային:

Երբ մեծանուն վարդապետն (և պատմիչն) Վարդան Արևելցի եկաւ ՚ի Կիւլիկիա՝ կաթուղիկոսին քով, Հեթում և Զապել մեծ պատիւ ցուցին իրեն, և իբրև աշակերտք՝ ՚ի սուրբ գրոց և ՚ի քերականութենէ խնդիրներ կու հարցընէին. որոց պարզ և ժամանակին դիւրահասկանալի լեզուովն պատասխան և մեկնութիւն գրած է Վարդան. մէկուն մէջ կ՚ըսէ առ Հեթում, յիշելով զԹագուհին. « Այժմ հայնց արա՝ իմ Պարոն,
» սակաւ մի աշխատեա (՚ի կարդալն). քո սակաւ
» աշխատիլն՝ առաւել է քան զայլոց շատն... Եւ
» զոգի իմ տառապեալ և տկար յիշեսցես, որ
» զքեզ սիրէ առաւել քան զանձն... Բայց աղա-
» չեմ զպարզմիտ (ազէտ) մարդ և զառաքինի՝
» մի հարցանել (այս դժուար խնդիրները), որ
» չամաչեն. զի (և) ես նախահոգութեամբ գրե-
» ցի. և թէ առժամայն զիս հարցանեն՝ և ես գը-
» տանիմ տկարացեալ. վասն որոյ մի մեղադիր
» [illegible] ժմուն (առժամայն, մէկէն) չպատասխանողացն

» զտեսութիւն բանին: Եւ ես գիտեմ որ այս չէ
» Թագաւորական իրք, (գրած գիրքն) այլ ոս-
» կեգիր պիտէր և ճարտար գրչի. ես շատ պատ-
» ճառ ունէի՝ որ խափանէի զիս յայս ձեռնար-
» կութենէս... բայց սիրոյն հրաշագործիւ յաղ-
» թահարեալ եղէն պատճառքն. և որպէս տե-
» սանէք՝ եղև. Թէ կամիս՝ դիւրին է տալ փոխել
» յայլեկն (մաքուր օրինակել), որ հեշտ կար-
» դայք. և Թող Գրիգորէսն փոխէ, որ բան չկո-
» րնչի: Բայց իմ կամ է որ իմ մատանց սատարն՝
» մնայ առ ձեզ. ո՜ գիտէ Թէ աւելի շնորհաւոր[1] լի-
» նի ձեզ, վասն յուսոյն իմոյ որ առ Տէր, և սի-
» րոյն՝ որ առ ձեզ. զի այնց (այնպիսի) ճառ և
» պատմութիւն չէ՝ որ շատ աշխատանք տանին,
» և տապա բան գտանեն. Թէ Թուղթ մի կարդաս
» ժմուն կամ երկուք՝ գտանես յոլով խորհուր-
» դըս: Եւ Աստուծով՝ տղայահասակ և մտօք և
» աչօք զօրաւոր էք. և 'ի միանգամ կարդալն սա-
» կաւ ինչ աշխատիք, և յայլն՝ անհոգ լինիք: Եւ
» զի արքայ և արքայութիւնն 'ի միում մարմնի տեսանի,
» և հասարակ է հոգևորն և մարմնաւորն, Թէ
» Աստուծով իրք մի օգուտ լինի 'ի գրելոցդ կամ
» մխիթարութիւն՝ երկուցդ (այլ) լիցի: Եւ
» զակնդ բազմագոյն և պայծառ՝ որ պսակէ զձեզ
» յաւիտեան (գիրքն), Թող Թագուհին պահէ,
» և 'ի պիտոյ ժամու՝ առնոյք 'ի նմանէ. և նմա
» հրամայէ Պօղոս հարցանել զձեզ և զպատեհն
» ծանուցանել. և պարտական են, ասէ, ապրե-
» ցուցանել զիրեարս՝ այր և կին: Եւ զերկո-
» սինդ ապրեցուսցէ Տէր Յիսուս կենդանութիւնն
» ձեր՝ 'ի խնամս Հօր և 'ի գութ Հոգւոյն սրբոյ.
» յոռոգումն անդեան դալարաձակ անկաբող-
» բոջ շառաւեղեալ ոստոցդ, ծիրանածին փթթոցդ,

1 Շնորհաւոր, ողորմելի:

» 'ի գիրկս Սիոնի սրբոյ. 'ի կատարումն պսակ-
» ման հայակոյտ ազնուական ազգաց և ազանց,
» տոհմից ազատաց. ազատեցուցիչք' արեանա-
» ռու զարմից, ըծադիրք և բռնաբարձողք, կո-
» րացուցիչք օտար ազգաց. 'ի փառս փառաւոր
» և պաշտեցեալ Աստուածութեանն »:

Զապէլի ձեռնտուութեանն առ ուսումնասէրս' գեղեցիկ վկայ և պտուղ մ'այլ է իր որդւոյն (Գ. Լևոնի) քարտուղարն' Վահրամ վարդապետ. որ և ինքնին ըստ իր տիրոջ Թագաւոր օծման օրը ատենաբանելով մայր եկեղեցւոյն մէջ. « Երանե-
» լին Զապէլ Թագուհին, որոյ ողորմութեանն և ա-
» ռատ պարգևացն որ առ ուսումնականսն' պտուղ
» է մերս նուաստութիւն, և ևս վեհագունից քան
» զմեզ. ընդ որում' զանճառ բարութիւնսն ըն-
» կալցի փոխարէն »: Որով կ'իմացընէ Վահրամ թէ Զապէլ կամ իր մասնաւոր ծախքովն դաստիարակել տուեր էր զնա և անոր նմանները, կամ պատճառ եղեր' արքունեաց դպրութեան մէջ մտցընելու զնա:

Զապէլի աւելի ևս հռչակեալ, գովեալ և օրհնեալ արդիւնքն' իր գթած և կարեկից սրտին արգասիք' ողորմութեան գործքերն էին, որք և առանձնական բարեպաշտութեան գործոց քով' իր պայծառ հոգւոյն արտաքին ճառագայթներն կըրնային ըսուիլ: Ժամանակակից պատմիչ մը[1] կ'ըսէ. « Յոյժ բարեպաշտ էր կինն այն և ողջախոհ. սի-
» րող ամենայն երկիւղածաց Աստուծոյ, և աղ-
» քատասէր. պահօք և աղօթիւք հանապազ ճըգ-
» նէր »: Իսկ 'ի Թագուհւոյն բարերարեալ ատենադպիրն' իր ոտանաւոր գրած Ռուբինեանց պատմութեան մէջ այլ կու գրուատէ զնա այսպէս.

1 Կիրակոս:

«Սա առաւել բարեպաշտեալ
Եւ հաւատովըն բարձրացեալ.
Սիրով յԱստուած էր միացեալ
Եւ յերկիւղ Տեառըն խրատեալ.
Բարի գործովք էր զարդարեալ,
Եւ աղօթիւքըն միշտ մաքրեալ.
Զխոնարհութեան զարդ ըզգեցեալ,
Զպարկեշտութիւն նախապատուեալ»:

Ոչ միայն անթիւ ողորմութեան գործքեր լռիկ և անցողաբար ըրաւ Զապէլ, այլ և երկարատև մնայուն յիշատակներ թողուց. որոց գլխաւոր կարծեմք զյիշեալն 'ի գրոց Հիւանդանոցն Սսոյ, զոր կանգնեց յամին 1241. և իր ծիրանածին զաւկըներէն աւելի, եթէ կրնամ ըսել, գթով կու խնամէր զհիւանդս. ոչ միայն առատ ռոճկաւ՝ զոր իր զարդերէն և անցաւոր զբօսանքներէն կտրելով՝ կապեր էր անոնց; այլ և անձամբ այցելութեամբ և ձեռօք դարմանելով, ըստ Խորովանուշայ բարեպաշտ դշխոյի Բագրատունեաց: Այս բանիս ամենէն մերձաւոր և սրտակից վկայ է ինքնին իր փեսայն Հեթում թագաւոր, որ իր մէկ պարգևագրին մէջ՝ գրելթէ Զապէլի մահուան տարին գրած, այսպէս կ'ըսէ. «Եւ կողակիցս Զապէլ » թագուհի, որ առաւապանօք հոգայ կրօնաւորս » և հիւանդս »: Անշուշտ բոլոր Ռուբինեանց տէրութեան ատեն անջինջ մնացեր էր այս Զապէլի գթութեան յիշատակարանն, թէ և Սիս քաղաքն շատ հեղ թշնամեաց և կրակի մատնուեցաւ. իսկ յետ բոլորովին տէրութեան վերցուելուն և քաղաքին աւերման, և ամենայն ուրիշ յիշատակաց մոռացութեան, Զապէլի չքնաղ սըրտին յիշատակին այս մէկ փոքրիկ յայտարար նըշոյլն՝ յանկարծ յետ 600 բազմադէպ տարիներու՝ մեր օրերս յերևան ելաւ, (1833) Սսոյ հի-

մակուան կաթուղիկոսարանէն մղոն մը հեռու արեւելեան կողմէն, հողու տակ մնացած սրբատաշ վէմ մը. զոր Թէպէտ փճացուց մոլեռանդն նախանձ այլակրօնից, բայց բարեբաղդաբար վերայի արձանագիրն մնաց օրինակուած. և էր այսպիսի.

ԿԱՏԱՐԵՑԱՒ
ՑԱՐՄԱՐՈՒՄՆ ՇԻՆՈՒԱԾՈՑ ՀԻՒԱՆԴԱՆՈՑԻՍ
ՔՐԻՍՏՈՍԱՍԷՐ ԹԱԳՈՒՀԻՈՑ ԶԱՊԵԼԻ
Ի ԹՎԻՆ ՀԱՅՈՑ ՈՂ.

Յուսալի է որ ազգերնուս երախտագէտ պատկառանքն և սէրն առ յետին գերահռչակ մայրն և տիկին իւրեանց՝ Զապել, չուշանայ անոր ուրիշ յիշատակ այլ յերեւան հանել, 'ի փառս անցելոյն և 'ի մխիթար մնացելոյս:

Թ

Բայց Զապելի ամենէն մեծ և գովելի շնորհքն՝ իր սրբասէր և երկիւղած կենցաղավարութիւնն էր, զոր այնպէս զմայլելով յիշեն ամենայն ականատեսքն և մերձաւորք ժամանակաւ, ինչպէս քիչ մ'առաջ լսեցիր. որոց մէկն այլ համառօտիւ կոչէ զնա «Ամենագով Բագուհին Զապէլ». միւս մը՝ «զգուշակենցաղ Թագուհի և ըստ Աստուծոյ »քաղաքավարեալ». ուրիշ մ'այլ՝ Թէ «Աս-»տուածահաճոյ կենօք կային 'ի Քրիստոս» (ընդ Հեթմոյ): Իր բոլոր հոգն իրեքի դարձընելով՝ առանց իրարմէ բաժնելու, 'ի խնամս մայրական և տիկնական, (որոց համար իմացաւ իր կոչումը, և Թէ անկէ հրաժարելն՝ իր աշխարհքին մեծամեծ շփոթութեանց և կռուոց պատճառ պիտի ըլլար) 'ի խնամս աղքատաց և կարօտելոց, և 'ի

խնամս ներքին մարդոյն, իր հոգւոյն. զոր և յարքունիս և 'ի լծակցութեան առն Թագաւորի՝ իբրև 'ի կուսաստանի ամօթխածութեամբ և համեստութեամբ զարդարէր. և բազմաբոլբոջ պալատկացն՝ միանգամայն գորովի մայր և արթուն դաստիարակ էր: Եւ այնքան պարտուց և պատշաճից մէջ՝ երբ մինակ ըլլար յարքունիս (շատ հեղ Հեթմոյ պատերազմի կամ ուրիշ գործոց համար հեռանալովն), յառանձնութեան պալատանն ձգնէր պահօք և աղօթիւք: Բայց իր աստուածասէր և մարդասէր սրտին միշտ բաւական չէր ըլլար առանձնակեաց սրբութիւնն. շատ հեղ պալատէն դուրս կ'ելնէր՝ թէ իբրև յայտնի Թագուհի և թէ իբրև ծածկեալ անծանօթ անձ մը, երթալ վազել՝ ուր որ բարեպաշտութիւն և ողորմածութիւն կրնային տանիլ: Կ'երթար երբեմն իր սիրելի զբօսարանը, իր դաստակերտ Թէատրոնը՝ լսելու սրտառուչ ձայներ. կ'երթար իր Հիւանդանոցը և Աղքատանոցը. կամ ուրիշ հիւանդանոցներ և առանձին տուներ, ուր այլ որ լսէր թէ հիւանդ մը կամ երեսէ ընկած մը կայ, կամ կարօտ մը թէ մարմնաւոր թէ հոգևոր դարմաններու:....

Կու յիշեմ զմեծ և դիւցափառ կայսրն Օգոստոս, որ իմաստութեան այլ պատուով՝ շատ հեղ կու հրաւիրէր իր առանձին սեղանին կցորդ՝ իր ժամանակին երկու մեծ բանաստեղծքը, Վիրգիլիոս և Ովրատիոս. ասոնց մէկն, կ'ըսեն, շնչառութեան նեղութիւն ունենալով՝ ստէպ հեկեկալու ձայն կու հանէր. մէկայլն՝ աչքը ծպռոտ՝ ստէպ արտասունք կաթէր. Օգոստոս կու ծիծաղէր ու կ'ըսէր. «Նստեալ կամ ես ընդ մէջ արտասուաց և հառաչանաց»: — Վերցո՛ւր գըլուխդ, ո՛վ տիեզերակալ սեբաստոս Օգոստոս, որոյ մեծութեանդ արձաններն և կամարներն 'ի

Տիբերիսէ մինչեւ 'ի Սանգարիս [1] դեռ կանգուն են, որ Անկիւրիոյ յիշատակարանիդ մէջ յիշես Հայոց Թագաւոր մը գտնելդ այլ. տես, (եթէ կրնաս տեսնել այն աչքերն՝ որ 14 դարի մէկտեղ ապրելով՝ չտեսան զերկնից և զերկրի լոյսն՝ Քրիստոս) տես զՀայոց Թագուհիս այս, որ Քրիստոսի խաչին նըշանաւ Թագը կապեր և բարձրացուցեր է. տես ով մեծդ և ամենամեծդ յերկրի, տես այս փոքրիկ դշխոյս Կիւլիկիոյ, ինչպիսի արտասուաց և հառաչանաց մէջ նստեալ կայ, և կու սիրէ նըստիլ ընդ երկար. լսեցիր դու այլ այսպիսի հեկեկանք մը. սրբեցիր այսպիսի արտասուք մը. նըստա՞ր երբէք ընդ մէջ հեծութեան հիւանդաց և արտասուաց աղքատաց: Տես.— մենք տեսնենք հոս զՁապել. ինչպէս ոմանց առատապէս ստակ, ըղգեստ և դեղ բաշխէ. ոմանց անձամբ այլ ծառայէ, սփոփէ, մխիթարէ. – Ինչպէս, շատերը՝ աւելի առատ ու քաղցր սրտով և բերնով կու յորդորէ հոգինին հոգալու. հին եկեղեցւոյ զգաստ այրեաց և սարկաւագուհեաց նման՝ կու սովրեցնէ տգիտաց զկանոնս և հրամանս հաւատոց. կու սիրեցընէ անհոգներու՝ եկեղեցւոյ սուրբ խորհուրդները. կու յիշեցընէ իրենց անցեալ վարքը. 'ի զըղջումն կու շարժէ խիստ կամ աղտոտ սրտերը. խոստովանել կու տայ մեղքերնին և սուրբ հաղորդութեամբ զօրացընել հոգինին. և այսպէս զոմանս մարմնով բժշկէ, զոմանս այլ հոգւով յաւիտեան հանգչեցընէ: Իսկ այնպիսի տեղուանք՝ ուր որ պատշաճողութիւնն կամ ատենն չեն թողուր իրեն երթալ, իր հաւատարմաց մէկը կու ղրկէ՝ նոյն խնամք և հոգը մատուցանելու: Ձապել այս բաներուս մէջ կու ճանչնար զինքն՝ Թագուհի և մայր ազգի:

1 Զէքարիա-սու, Անկիւրիոյ քովէն անցնող գետն:

Երբեմն այլ իր սրտին վերաթռիչ կրակէն վառուած ու վարուած՝ կ'ելնէր գաղտուկ հաւատաւորի մը պէս, գլուխը քօղով ծածկած ու 'ի գետին խոնարհած, հոգւով քան թէ աչքով տեսնելով զճամբան. կու փութար կ'երթար ուխտատեղեաց և վանորէից դրանց քով աղօթքի կենալու. մանաւանդ ուր որ լսէր թէ սուրբ անձ մը կայ, ոչ միայն հոն անոր մօտ փափագէր հասնիլ, այլ և կ'ուզէր նոյն ճամբէն երթալ, նոյն հողն ու քարը կոխել՝ զոր սրբազանն կոխած էր։ Քանի՜ լուռ և անշփոթ ժամեր, քանի՜ մութ ու ցուրտ գիշերներ, լուսնկայ կամ անլուսին երկինք՝ տեսան մեր ջերմեռանդն ուխտաւորը՝ անծանօթ և անմարդաձայն ճամբուն վրայ. ոչ ձմրան ձիւն ու բուք, ոչ տօրոսական ցուրտ պախրցին, ոչ հողմակոծ ծառերուն և ջրերուն մրմռալն, գազանաց մռնչել ու կանչելն, և ոչ յանկարծ դարանողի մը և իր առաջին պսյլը սպաննող աւազակին պատահելու վախն, կրնան արգիլել զսրբասէր թագուհին։ Իբրև այն հրաշալի հարսն անեղերական փեսային խանդակաթ՝ կու լսէր անոր ծածուկ ձայնը. «Ե՛կ 'ի Լիբանանէ ('ի քո պալա-
» տանէ) հարսն. եկ այսր 'ի Լիբանանէ. եկեսցես
» և անցցես 'ի գլխոյ հաւատոյ, 'ի կատարէ Սա-
» նիրայ և Հերմոնի, 'ի մայրեաց առիւծուց և 'ի
» լերանց ընծուց ». և կ'անցնէր կ'երթար իբրև զաղաւնին միակ կատարեալ և գեղեցիկ՝ կենալու սրբութեան տաճարաց դրանդեաց ներքև. անձայն լռիկ աղօթքով՝ սրտանալու 'ի սէր հոգւոյն տիրոջը, և սրտացընելու զնա իր մաքուր սիրոյն։ Երբեմն այլ ճամբուն վրայ կանգ առնելով, հազիւ վանաց և եկեղեցեաց դրանց մօտեցած՝ կ'ընկնէր 'ի ծունկս, կու պագնէր սրբազանից կոխած գետինը, կու թրջէր մարգարտակաթ արտասուօքը, կու քսէր գալար դէմքերը այն կրկին սըր-

բեալ հողոյն ու կաւոյն վրայ․ անով կու շփէր շպարէր Թագուհին Հայոց իր պայծառ հոգւոյն դրան հայելին։ Այս էին սիրելագոյն զարդարանք և գեղերանք և զբօսանք Զապէլի։

Այսպիսի դէմք, այսպիսի սիրտ, այսպիսի հոգի՝ ի՞նչ կերպով կրնար երևիլ աշխարհային և Թագաւորական հանդիսից մէջ։ — Ինչպէս որ կու վայլէր սուրբ և զգաստ դշխոյի մը․ որ իր ամեն պարտքը և պատշաճը գիտելով՝ չէր պակսեր և 'ի տօնից և յընկերութեանց, առնոց նոր վայելչութիւն մ'աւելցընելով իր չափաւորութեամբ և պարկեշտութեամբը․ և ինչպէս արքունի ծիրանեաց վերարկուք չէին կրնար խափանել իրենց ներքևէն հագած խոշոր և խայթող զգեստը, և ոչ այլ շնորհագեղ Թափանցիկ ժպիտն՝ հոգւոյն զըւարթութեան ճառագայթը․ աս էր զինքը աւելի պատկառելի ընծայողը՝ քան իր ծաղկած հասակն և ծանրագին Թագն։ Ոչ ոք երբեք լսեց այն շրթունքներէն աւելորդ խօսք կամ կատակ մը, և ոչ ձայնով ծիծաղ մը փրթաւ բերնէն․ ծանրին լրջութիւնն՝ բնական ձև և գոյն կ'երևէին իր կերպարանացը։

Ժ

Բաներուս բարեբաղդաբար վկայ ունիմք, Հայկակ, ժամանակակից յիշատակագիրներ, բայց դժբաղդաբար՝ այսչափիս միայն․ ո՞ւր էր Թէ աւելի ըլլային կամ մեզի հասնէին այսպիսի յիշատակք, և այլ աւելի բաներ պատմած ըլլային Զապէլի վրայ․ գուցէ մեր միջէն այլ ելնէր Մոնգալանպէր մը մանրամասնաբար գրելու Հայոց սրբակենցաղ դշխոյին վարքը, որպէս նա Ունկարացի դշխոյին և Զապէլին (Եղիսաբեթի)։... Այս

յիշատակս՝ որ յանկարծ բերնէս ելաւ, կու ստի-
պէ զիս, Հայկակ, խորհրդածութիւն մ'այլ ընե-
լու և ցուցընելու զարմանալի և վերնախնամ հան-
դիպակցութիւններ այս երկու Թագուհեաց մէջ,
որ Թերևս դեռ դիտուած չեն և կ'արժեն մտադրու-
Թեան: — Երկուքն այլ համանուանք. երկուքն
այլ ժամանակակիցք, դշխոյն Կիւլիկիոյ և դշխոյն
Թուրինկիոյ. ասիկա՝ իբրև տասն տարի յառաջ
ծնած քան զմերն, 20 տարի այլ անկէ առաջ բո-
լորեց կեանքը. նա երկու երկվեցեակ տարի ապ-
րելով, մերս՝ երեք: Երկուքն այլ չորս տարեկան
էին՝ երբ իրենց վիճակին տիրուհի սահմանուե-
ցան. երկուքն այլ նոյն մէկ տարուան մէջ (1221-2)
պսակուեցան. Զապէլ ընդ Փիլիպի, Եղիսաբեթ
ընդ Լուդվիկ Հերմանայ գաւառապետեան (Լանտ-
կրավի): Բայց մեծագոյն և հրաշախառն հանդի-
պուածն այս է, որ ատեն մը՝ քանի մը տարի
սահմանուած էր՝ որ այս երկու լեռնաբնակ հաւ-
քաներս իրարու քոյր ըլլային. Թուրինկիա և
Կիւլիկիա սիրալի կերպով զիրար ողջունեցին: Ե-
ղիսաբեթ՝ դուստր է այն Անդրէասի և քոյր այն
Անդրէասի՝ որոց մէկն Զապէլի այր, միւսն սկեսր-
այր պիտի ըլլային. և եթէ անոնք չեղան, եթէ
Զապէլ չեղաւ կողակից կրսեր Անդրէի, և եթէ
երկու սրբաճեմ աղաւնիքն չեղան Թևակիցք մէկ
Թառի, մէկ սեղանի, մէկ խորանի քով, եթէ Ուն-
կարաց սուրբ օրիորդն երիցութեամբ հասակին
չգրկեց ու գգուեց զօրիորդն Հայոց, և ոչ սա բազ-
կիկ բոլորելով անոր նազելի վզէն կախուեցաւ.
սակայն երկնաւոր բաղդն զուգեց գրեց ըրաւ զա-
նոնք քոյրակից, գործակից, հոգեկից: Ինչ մաս-
նաւոր առաքինութիւն և գործ տեսանք Զապէլի
վրայ, զնոյն պատմեն և Եղիսաբեթի վրայ. եր-
կուքն այլ նոյնպէս սրբասէր, աշխարհատեաց,
պահեցող, աղօթող, աղքատասէր, հիւանդա-

պահ: Զապէլ վանաց և եկեղեցեաց դրանց քով կ'աղօթէր, Եղիսաբէթ երբ իր պալատին մատրան դուռը գոց գտնելու ըլլար՝ դուրսը ծունկ դրած կ'աղօթէր. — Զապէլ իր մայրաքաղաքին՝ Սսոյ մէջ՝ հիւանդանոցը շինեց, որ ուզած ատեն երթայ դարմանէ ցաւագարները. Եղիսաբէթ իր Մարպուրկի ապարանից ստորոտը շինեց հիւանդանոց մը, նոյնպէս խնամք տանելու: Երկուքին ամուսինքն ալ տեսնելով իրենց ընկերին բարեպաշտութիւնը՝ թողուցին համարձակ և գործակից ալ եղան անոնց առաքինի գործոց:—Երկուքն ալ գրեթէ նոյն մէկ տարուան միջոց (1225-6) իրենց երկրաւոր մեծ կորուստն ըրին, Զապէլ ըզՖիլիպ, Եղիսաբէթ զՀերման. սա 20 տարուան երեք զաւակօք այրի մնացած՝ իր աներձագին գրգռութեամբը՝ իբրև տէրութեան գանձը վատնող (առ աղքատս), հալածեցաւ յարքունեաց, և իբրև անաշխարհիկ պանդուխտ վարած մնաց մեծ չարաչարութեամբ և աւելի մեծ ու սրտառուչ համբերութեամբ. մինչև հալածողն անգամ զգաստանալով՝ նորէն դարձուց զտիկինն յարքունիս. բայց նա իր զաւակաց վիճակն ապահովացընելէն ետև՝ քաշուեցաւ պալատէն դուրս առանձին տնակի մը մէջ, և միանձնական զգեստ հագնելով (Ս. Փրանկիսկոսի երրորդական կարգին), քիչ ատենէն մեծ ճգնութեամբ և սրբութեամբ կնքեց կեանքը (19 Նոյեմբ. 1231), և քանի մը տարիէն (1235) դասեցաւ և յեկեղեցւոյ 'ի կարգս սրբոց: Այս վշտաց և հալածանաց՝ կերպով մը կրնայ համեմատուիլ նոյն ատեն Զապէլի ցաւը՝ Ֆիլիպի սպանման վրայ, առանձնանալն 'ի Սելեւկիա, և բռնի բերուիլն 'ի Սիս յընկերութիւն Հեթմոյ: Եւ եթէ սա ալ Հերմանայ պէս փաղաքուն ըլլար՝ անտարակոյս է որ Զապէլ ալ Եղիսաբէթի միանձնական կեանքն կ'ընտրէր, ո-

ռուն արդէն այնչափ փափագեր էր յառաջ քան զպսակին ընդ Հեթմոյ։ — Նախախնամութիւնն այսչափ սահմանեց երկրի վրայ նմանակցութիւն այս երկու Թագուհեաց, որոց անշուշտ աւելի մեծ է նմանութիւնն յերկինս․ ուր՝ Թէպէտ քանի մը տարի ուշ և աւելի ապրելով, բայց դեռ շուտ և անկատար կենօք՝ Թռաւ և Զապէլ առ զուգակից անուանն, բաղդին և հոգւոյն․ Թողլով անմխիթար յերկրի իր երկրաւոր զուգակից և Թագակիցը, անկէց ունեցած զաւակները, (որոնց ոմանք դեռ հազիւ իրենց մօր կաթը և սիրոյն մեղրը ճաշակեր էին) և բոլոր զինքը պատուող և պաշտող աշխարհը։

## ԺԱ

Արդեօք դիպուածական ցա՞ւ մը, Թէ իր փափուկ սրտին հին հարուածէն բուսած վէրքն, Թէ մանաւանդ սաստիկ փափագն առ լուսագոյն երանաւէտ կեանս, իր արդէն գեղեցիկ կեանքը փութացուցին 'ի գեղեցկագոյն վախճան, առ 'ի փոխել յամենագեղեցիկ կենդանութիւն։ — Ո՛հ․ քանի՜ քաղցր և անոյշ էր այն հոգւոյ հրաւէրքն՝ որ եկաւ իրեն ('ի 22 յունուարի 1252ի)․ — Ձայն ցանկալի երկնաւոր և անմահ փեսային, որուն հարսնացեալ է ամենայն մաքուր և մաքրասէր հոգի․ — վասն զի ինչո՞ւ է հոգին՝ եԹէ ոչ առ միանալ իր ստեղծողին հետ․ — Ձայն Քրիստոսի Աստուծոյ, զոր ոչ միայն հոգւոյն անշունչ անյօդ ականջովն իմացաւ Զապէլ, այլ և զգալի կերպով մը լսելով՝ անպատմելի ուրախութեամբ իմացուց իրեն քովն եղող և իբրև հիւանդի նայողներուն, Թէ ահա լսեմ ձայն՝ որ կանչէ զիս․ Ե՛կ աղաւնի իմ, Է՛կ կատարեալ իմ, Է՛կ սիրելի իմ․ և այս

խօսքս իբրև վերջին բարով մնաք ըսելով մերձակայից, հոգին՝ հոգւոյն փափագողաց հետ խառնուեցաւ, թողլով յերկրի քմծիծաղ ու պայծառ՝ այլ անշարժ մարմին մը, 'ի սուգ և 'ի սէր հասարակաց:...

« Իսկ Թագուհին զկեանս աւանդեալ
Ու 'ի կէտ կոչմանըն ժամանեալ.
Ձայն 'ի յերկնից ըզնա կոչեալ,
Զոր իւր ունկամբն յայտնի լըւեալ,
Ե՛կ աղաւնի՛ իմ, ասացեալ,
Ե՛կ սիրելի իմ կատարեալ:
Իսկ նա յորժամ զայս ձայն լըւեալ
Զըւարթագին սրտիւ բերկրեալ,
Տեսլեամբ կերպին զըւարճացեալ
Եւ 'ի հոգին իւր ցընծացեալ,
Մերձակայիցըն զայս ազդեալ,
Եւ ընդ պատմելըն՝ իսկոյն փոխեալ.
Զհոգին 'ի ձեռս Տեառն աւանդեալ,
Զխեցին ունայն՝ յերկրի թողեալ:
Զոր քահանայքըն ակումբ առեալ
Զնա օրհնութեան հողոյ տըւեալ:
Արդ Թագուհին յերկրէ ելեալ
Եւ առ Քրիստոս վերափոխեալ»:

Այսպիսւոյ բարւոյ և բարեբարի, սրբակեաց և սիրելւոյ Թագուհւոյ, հարսին և մօր մահ՝ որչափ ցաւալի և զգալի եղած է կենակցին, զաւակացն, մերձաւորաց, պաշտօնէից և բոլոր աշխարհին, ազատաց և ռամկաց, աղքատաց և հիւանդաց, կրօնաւորաց և զինաւորաց, քեզի դիւրագոյն է հասկանալ, ինծի աւելորդ ըսելն, Հայկակ. աւելորդ սեպեմ և խառնել զքեզ անոր երկարաշար յուղարկաւորաց մէջ, յոր կընամք եկած սեպել զբովանդակ Կիւլիկիա և զմասն Կիպրոսի և Անտիոքայ, եկեղեցական, քաղաքական

և զինուորական խմբերով. որոց մէջ չեմ այլ կըր-
նար գոնէ պալած պատկառանօք մասնանիշ չը-
նել՝ երկու զանազան ձևով բարձրապատիւ ա-
լևոր գլուխներ, երկու նահապետքն Հայոց, եր-
կու անուանակիցքն, Կոստանդին կաթուղիկոս և
Կոստանդին արքահայր, խնամակալք և դաստիա-
րակք Թագուհւոյն և հայրաբար սիրողք. որք
իբրև երկու մեծամեծ մայրիք մրրկաշարժ ան-
տառի մը՝ իրենց դիմաց իրենցմէ շատ դալար և
ծաղկաբողբոջ միջաբեկեալ ծառին վրայ ծռած՝
դողդոջուն ճիւղերով կ՚ոլորին կ՚երերան: Բայց
դարձընենք աչուընիս իրեն գիլ ու դալար բարակ
բարունակներէն, որոց անդրանիկն (Լևոն) դեռ
հազիւ 16 տարեկան է. դարձընենք մանաւանդ
այն փափուկ ոնկոյն նեցուկ ու նշդարիկ եղող
արքակալնոյ նման պանծալի՝ բայց հիմակ քա-
կեալ մենացեալ և կորացեալ Թագաւորէն...
Հեթում՝ այն օրերն մեծ պատրաստութեան մէջ
էր, հարկաւորաբար երթալու առ Մանգու խա-
քանն Թաթարայ՝ յաշխարհ հեռի: Զապելի յան-
կարծ յանդարձ աշխարհ երթալն՝ այնքան խոր
և արժանաւոր սգով պատեց զայրիացեալ Թա-
գաւորն, որ երկու տարի չկարցաւ հեռանալ սևու
սենեկէն, ապա թէ գնաց:

Հեթում՝ ոչ կենակից և Թագակից միայն էր
Զապելի, այլ և անարգել գործակից անոր սըր-
տին բարի բերմանց. և եթէ իր արքունի անհրա-
ժեշտ պարտքն և ՚ի մօրէ որբացեալ զաւակնե-
րուն հոգն՝ չպատուիրէր, թերևս աւելի շուտով
թողուր ինքն այլ թագը, և առանձնակեաց հո-
գեկեաց մ՚ըլլար. ինչպէս որ ըրաւ այլ վերջը,
յետ տեղաւորելու իր դստերքը՝ և թագը թող-
լու (յամին 1269) առ անդրանիկն Լևոն: Եւ սա
իր ցանկալի և ցաւալի մօրն անմոռաց յիշատակը
կերպով մը կենդանացընելու համար՝ իր իրեք ե-

րեց դստերքն անուանեց Զապլուն, Զապէլ, Սիպիլ:

Զապէլ թագուհւոյ մահացու նշխարքը անմահութեան մաղթանօք և անսուտ յուսովն պատելով ու կնքելով՝ հանգուցին 'ի տապանատունն Ռուբինեան պայազատաց, 'ի վանքն Դրազարկ, ուր նախ հանգչեր էր տեղւոյն շինողն Թորոս Ա, Թոռն Ա և Մեծ Ռուբինի. և իրմէ ետքն իրեն ցեղէն շատ պարոնայք և պարոնուհիք. և ուր յետ 19 տարւոյ (1270) հանգուցին թագուհւոյն քով իր թագակից և կողակիցն այլ, թէ՛ իբրև արքայ Հեթում և թէ իբրև Եղբայր—Մակար. որ և Զապէլի պէս բաղդ ունեցաւ օտար սուրբ թագաւորի մը հանդիպակից ըլլալու:

Իրենց երախտագէտ և սիրանուէր որդիքն և պայազատք՝ արքունի արքապատում Յայսմաւուրաց մէջ նշանակեցին Հեթմոյ հանգստեան օրը (28 հոկտեմբերի), և այս օրս (22 յանուարի) Զապէլի պաշտելի յիշատակը. զոր 'ի կեանս և 'ի մահուն՝ ճանաչողք և մերձագոյնք՝ սուրբ[1] անուանէին. ինչպէս որ Հեթմեանց[2] յիշատակն այլ՝ ոչ միայն մեր այլ և լատին միանձանց՝ հին ժամագրոց ոմանց մէջ անցած է երանելեաց կոչմամբ: Երանի՜ էր ազգիս այլ, եթէ՝ ինչպէս շատ արժանաւորաց յիշատակն անմահացուցեր է, զոմանցն այլ նորէն արթընցընէր: Իսկ քեզ, Հայկակ, անշուշտ ախորժելի կ՚ըլլայ, քու ընտանեաց և մեր-

1 Այսպէս գովութեամբ անուանէ զնա և ժամանակակից ու բարեկամ Հեթմոյ՝ Ասորի պատմիչն Ապուլֆարաճ:

2 Թէ Հեթում Ա, թէ իր թոռն Հեթում Բ, և թէ իր եղբօր որդին Հեթում Պատմիչ տէր Կոռիկոսոյ, իրեքն այլ կրօնաւորած են 'ի վանս Լատինաց՝ 'ի Հայս, 'ի Կիպրոս և 'ի Փրանկաստան. որոց վարքն քիչ մը կու շըփոթեն իրարու հետ արևմտեայ պատմիչք:

Ճաւորաց միջի մատաղաչ Զապելայ ծանօթացընել՝ իբրև իրենց նախընթաց օրինակ համեստութեան և իմաստութեան ու պաշտպան մեր ազգին վերջի պայազատութեան մէջ ամենէն անուանի, պատուելի, սիրելի և սրբենի եղած Թագուհին [1] Զապել:

1 Ցեա Զապէլի՝ նու նորա առաջին Թագուհին Հայոց՝ կին Գ Լևոնի՝ Կեռան՝ որ է Կիռ Աննա (Կիրիա-Աննա) դուստր Լամբրոնի տիրոջն, իր ակեարին բարեպաշտութեան ճամբան բռնեց, և աւելի բազմաթիւ զաւակաց մայր ըլլալէն ետև՝ կրօնաւորեալ մեռաւ (28 յուլիսի 1285), մեծ համբաւով սրբական վարուց. աս կոչուէր և Թէոանէ, այսինքն Թէոֆանիա: — Նոյնպէս գովութեամբ յիշատակուին՝ իր քոյրն Մարիւն (3 դեկտ.) — իր երեք վերոյիշեալ Զապիլ անուն դստերքն. իր տալն Ֆիմի. — Դ Կոստանդին Թագաւորի մայրն Մարիւն տիկինն (27 յուլիս). — և վերջին Թագուհին Հայոց Մարիւն, կին Զ Լևոնի, և իր դուստրն Փինա. — Նախ յիշուած Բ Զապէլ՝ կինն Օշին Թագաւորի (3 մայիս):

# Զ

## ԳԵՐԵԴԱՐՁ Գ ԼԵՒՈՆԻ

### 6 փետրուար — 1289*.

Վառենք երեկոյեան խարոյկը. բոլորինք հայրենի կրակարանին եզերքը, 'ի Կիւլիկիա, յարքունիս Թագաւորին Հեթմոյ: Հեթում (այս անունը կրողաց մէջ ամենէն անուանի և սիրելի անձն) Հեթում Ա, յաջորդ մեծին Լեւոնի, ինքնին հրաւէր կու տայ, և քան զուրիշ տարիներ աւելի արտորանօք, իր հաւատարիմ հպատակացն և պարոնայցն. գալու ժողովելու բազմութեամբ, և Աստուածայայտնութեան մեծ տօնը կատարելու: Կու փութան իշխանք և պարոնայք՝ ապահովցընել իրենց ամուր բերդերը և իջնել լեռներէն, ելլել պարսպապատ քաղաքներէն և ժողովիլ 'ի Սիս:... Եւ ինչո՞ւ ոչ 'ի Սիս, յաթոռն Թագաւորաց: — Մի հարցընէք: — Պարոնայքն գալու և անցնելու ատեն՝ կու նային մէկ մը այն մայրաքաղաքին կողմը, և դեռ եգիպտական սև ծխոյն նշանը տեսնելով, գլուխնին շարժե-

* Այս Թուականս է մահուան Լեւոնի. գերութիւնն ե-[illegible] 1266 տարւոյ, գերեդարձն 'ի 1268:

լով՝ Երեմնին խաչակնքելով կու փոխեն ճամ-
բանին. Թէ և շատ դժար կու գայ իրենց յառա-
ջելն, վախնալով Թագաւորին տխրամած դէմքը
տեսնել. սակայն մէկ մ՚այլ իրենց հրաւէրքի
Թուղթերուն վրայ նայելով, և տեսնելով անոնց
արքունի կարմիրկապ կնիքը՝ սիրտ կ՚առնուն, և
կու մտնեն՚ի Սիս. որոշեալ օրը՝ նախ քան զաօնն
կու ներկայանան միաբան, բարևել և շնորհաւո-
րել Թագաւորին զնոր տարին և զաւագ տօները:
Սիրով և պատուով կ՚ընդունի զնոսա Թագա-
ւորն. և փոխարէն ողջոյններ տալով՝ կու հրամմէ
որ նստին. և նախ ինքն կու բազմի ծանրութե՟ իր
գահը: Ո՛հ. որչափ այլափոխուեր է Թագաւորին
դէմքն քան զանցեալ տարին: Տարի մը միայն կըր-
նա՞ր այդքան աւելցընել հազիւ վաթսնամեայ դըլ-
խոյն ալիքը, որ ոսկի պսակին տակէն կախուած՝
իր սպիտակ արքունի բեհեզեայ քղամդին կու
խառնուին. և երկընցած դէմքն այլ այն գլխուն
դեղին Թագին կու նմանցընեն: Ո՜րչափ տարբեր
էր այդ դէմքն այն Հեթում Թագաւորի ոսկեհա-
տիկ վառվռուն կերպարանքէն, երբ այդպիսի հան-
դիսական օր մը բարձր գահուն վրայ ելած ատեն,
Կիւլիկիոյ ամենէն ազնիւ ծնունդն՝ տիկնաց տի-
կինն Զապէլ, դուստրն մեծին Լևոնի, անոր աջ
կողմը կու բազմէր, այն իր կենակից և Թագակից
դշխոյն. գահուն բոլորը բռնէին իր հինգ վեհա-
կերպ մեծապատիւ եղբարքն, Սմբատ գունդըս-
տապլն՝ հին Հայկազանց և Վարդանանց նախան-
ձորդ՝ սպարապետն Հայոց, Լևոն՝ մեծ մարաջախ-
տըն, Լիկոս՝ դպլանուն կորիճն, Բարսեղ՝ վսե-
մափայլ արքեպիսկոպոսն և առաջնորդ Դրազար-
կու, և Յովհաննէս՝ երիտասարդ արքեպիսկոպոսն
Մամեստիոյ և առաջնորդ Արքակաղնոյ. գահուն
ստորոտը Սողոմոնի սուտ առիւծներուն տեղ՝ եր-
կու եռանդուն կրակոտ կորիւնք կենային՝ Լևոն և

Թորոս Թագաւորորդիք. և իբրև ամենուն հովանի՝ Թագաւորին ձախ կողմը նստէր փառօք իր ջոջգլուխ արքայահայրն՝ Մոզոնն Կոստանդին, աբրահամեան ծերունին[1]։

Այդ յիշեալ մեծափայլ և մեծազօր արքունական սիւներն՝ այսօր խորտակած կ'երևէին ժամանակի օրէնքէն. միայն ամենէն կրտսեր արքայ-եղբայրն Յովհաննէս արքեպիսկոպոս՝ մեկդին բազմէր, մեկալ դին այլ ամենէն մեծն՝ ծերունազարդ սպարապետն Սմբատ, ոսկէկօթ թրին վրայ կռթընած, երբեմն երբեմն թաւ թաւ յունքերուն տակէն երկու խոր կայծակներ պտըտցընելով։ Թագաւորին գլուխն այլ ծանրացեալ կ'երևի գրեթէ կէս դար կրած թագէն. 43 երկայն և բազմափորձ տարիներ պէսպէս գոհար քարերու պէս շարուած էին անոր վրան. որչափ զանազան տեղուանք, որչափ զանազան անձանց մէջ կանգներ էր Հեթում այն գլուխը. որքան երկայն և տարօր ճամբաներ ընելով՝ Կիւլիկիոյ դռներէն մինչև Թաթարստանի խորագոյն անապատները՝ ազգին և տանը համար քրտնելով, կ'իմանայր հիմա պսակին ծանրութիւնը։ Եւ թերևս անկէ աւե փափագելի էր իրեն հանգչեցընել այն յոգնած գլուխը, ըլլայր նաև սև քարի մը վրայ։... Բայց սրտին վրայ այլ կայ ծանրութիւն մը, և շատ մեծ ծանրութիւն. ինչուան որ զայն չթեթևցընէ, իրեն համար մահն անգամ անհանգիստ է։...

Ասոնք մեր մտածութիւններն չեն. այլ այն բազմախումբ պարոններուն՝ որք բազմեր են Թագաւորին դիմաց։ Իսկ Հեթում իբրև թեթև քնէ մը թօթուելով գլուխը, և ծածուկ կրակով մը վառելով աչուըները՝ կու դարձընէ հօն եղող իշխանաց վրայ, և յետոյ կու հրամէ սենեկապան

1 Այսպէս կ'անուանէ զնա իր որդին Յովհաննէս։

սպասաւորաց՝ որ պակասներն այլ կանչեն և նըստեցընեն. իսկ սպասաւորք կարգէն պակաս չցըտնելով՝ կ'իմացընեն որ ամենքն այլ հոն են։ Թագաւորն նորէն աչք դարձընելով՝ կու տեսնէ, թէ ոչ շատ, այլ մեծ պակաս. կու հրամմէ կու ստիպէ որ զանոնք այլ կանչեն։ Սպասաւորք շփոթած կու նային կու համրեն, պակաս չեն գտներ, և վախով մօտենալով կ'ըսեն, Սուրբ Թագաւոր, ամենքն հոս են։ Թագաւորն նեղանայ. սպասաւորք իրար կ'անցնին, իշխանաց կու դառնան. ասոնք այլ կ'ապահովցնեն զԹագաւորը, թէ Սուրբ Թագաւոր, ամենքն այլ որոց հրաւէրք և պատուէր խաւրեցիք, հոս են, պակաս չկայ պարոններէս։ Այն ատեն Թագաւորն անգամ մ'այլ սրափայլ աչքերը չորս դին դարձընելով, և բարկացեալ՝ այլ մարմրած և հեծկլտած ձայնով կանչէ. Եթէ ամենքն հոս են, ո՞ւր են հապա պարոնաց պարոնքն, Լևո՛ն և Թորո՛ս....։

Լևո՛ն և Թորո՛ս. երկու կրակէ նետերու պէս թռան այս անուանքս Թագաւոր հօր մը բերնէն, և չմնաց ողջ սիրտ մը. իշխան, պարոն, եպիսկոպոս, ձիաւոր, սպասաւոր, ամենքն վիրաւորի հառաչանք մը փրցնելով կու սկսին լալ վայել, երկինք երկիր. նայիլ. բոլոր արքունական ատեանն նոր մեռած անդրանիկ զաւկի մը սգասենեակ դարձաւ. Թագաւորն ծածկեց հայրական դէմքն իր սպիտակ բեհեզին տակ. և մէկն չէր համարձակեր մօտենալ, բան մը ըսել, մխիթարանք մը տալ. պարոնաց գլուխն 'ի գետին կորացեալ, վարդապետաց և եպիսկոպոսաց շրթունքն դողով համրացեալ, կ'ուզէին որ եղածն երազ ըլլար. և թէ չէր կարելի անկէ հեռանալու՝ գոնէ անզգայ ըլլալու։ — Բայց ո՞վ կրնայ անզգայ ըլլալ, երբ ձիաւորաց պարծանքն՝ զուարթունն Թորոս՝ դեռ իր չորեքամեայ գերեզմանին մէջ սև սև վէրքերուն

նշաններով ահեղ դիւցազին նման պառկած կ'երեւէր դիմացնին... եւ երբ լուսադէմ Թագաժառանգն Լեւոն՝ բարբարոս Պեյպարս սուլտանին սեւ բերդին մէջ շղթայակապ տանջուէր։ Անվախ Սմբատն անգամ, հօրեղբայր սիրուն եւ կտրիճ կտրեանցն, ձեռքը Թրին, Թեւն 'ի գահ Թագաւորին կռթընած՝ արտասուաթաւ աչքերը վերուցած ատեն՝ կարծուէր թէ մէկէն պիտի ցատքէ եւ արքունի նիզակներէն մէկը կորզած՝ վազէ երթայ Մսրայ սուլդանին գահը կոխէ, եւ իր եղբօրորդին՝ պարոն Լեւոնը, յափշտակէ բերէ հօրը գիրկը. իսկ երբ գլուխը թօթուելով նորէն դէպ 'ի կուրծքը կ'իջեցընէր, կարծուէր թէ աշխարհք անցեր է Հայոց տանն համար. եւ ամենքն այլ գլխակոր մընային։... Թանձր սուգ մը պատեր էր Հեթմոյ արքունիքը. արեւելքէ եւ արեւմուտքէ, Թաթար ղանէն եւ սրբազան Պապէն եկած մխիթարութեան գրերն անգամ՝ չէին փարատած զայն։...

Ի՞նչպէս եկաւ այն սեւ սուգն, ի՞նչպէս եղաւ այս չար դիպուածն։ — Գիտես Հայկակ, որ Կիլիկիա թէ եւ ամուր երկիր, բայց այլազգի տէրութիւններու դրացի էր, որք կ'ուզէին յափշտակել այն պատուական աշխարհը։ Թագաւորք Հայոց երբեմն բարեկամութեամբ, երբեմն զէնքով կու զգուշանային անոնցմէ. որոց զօրաւորագոյնն՝ Իկոնիոյ սուլդանն, շատ հեղ Լեւոնի եւ Հեթմոյ հետ կռուեր էր, երբեմն մէկն երբեմն մէկայլն յաղթելով. բոլորովին ապահովութեան համար՝ Հեթում նախ իր եղբայրը՝ Սմբատը՝ ղրկեց առ ղանն Թաթարաց, յետոյ ինքնին գնաց առ Ապաղա ղան, եւ երեք չորս տարի ուշացաւ յօտարութեան. մեծազօր եւ ահարկու Հելակիւ ղանէն ստիպուեցաւ նիզակակից ըլլալ անոր, Արաբացւոց եւ Թուրքաց դէմ շատ պատերազմներ ընել, եւ Բաղդատ առնուլ, ու բոլոր Պարսից, Միջագե-

տաց, Ատրբատանի, Հայոց և Ատրուոց իշխանները նուաճել. որով իր սահմաններն այլ ազատ և հանգիստ մնացին շատ տարի. ուրիշ զօրաւոր թշնամի չկար, բայց միայն Մըրայ սուլդանն, որ հեռուէն կու սպառնար. իսկ Հեթում մէկ կողմէն երկիրը պարիսպներով և բերդով ամրացուցեր, մէկայլ կողմէն Թաթարաց օգնութեան վրայ վստահացեր էր, և այլ աւելի իր խորագէտ հօրը խրատուց և եղբօրը քաջակուռ բազկին վրայ։ Բաղդատ առնելու ատեն Եգիպտոսի սուլդանին կողմանէ այլ մարդ կար հոն, օգնական խալիֆային. աստնցմէ երկուքն կրցան փախչիլ. մէկն էր Ֆունտուքտար[1] Պիյպարս, չափաւոր տարիքը առած, մէկ այլն երիտասարդ մը Սօնգօր էլ-Աշքար (շէկ կամ կարմիր բաղպայ) անուամբ, որ իրեն պէս կարիճ վազուկ ձի մը ունէր. և տեսնելով ընկերին թէ հասակը թէ գէշ ձին՝ վախցաւ թէ գերի ընկնի սպաննուի. ստիպեց որ իր ձիուն վրայ հեծնի և փախչի։ Թէ որ ես գերի ընկնիմ, կ'ըսէր, տղայութեանս խնայելով՝ զիս չեն սպաններ. քու պարտքդ ըլլայ ազատել զիս։ Եւ նման այնպէս եղաւ. կարմիր բաղպայն բռնուեցաւ, Պիյպարս արծաւ և հասաւ յԵգիպտոս. յորդորեց [illegible]դդուզ սուլդանը՝ Թաթարաց դէմ պա[illegible]ռնալու. և պատերազմին մէջ այլ շատ քա[illegible]ն ըրաւ, անոր համար վարձք ուզեց Հալէպի կուսակալութիւնը. և երբ սուլդանն չտուաւ, Պիյպարս համախոհութեամբ քանի մը իշ-

[1] Մեր պատմիչք անուանեն զսա Պանդուխտար կամ Փնդուխտար. որ բնիկ անուն չէ, այլ մականուն է, առած իր տիրոջմէն. և տէրն այլ իր եղած արքունեաց մէջ պաշտօն ունէր իշխանին գնտակ տալու խաղի ատեն. այս պաշտօնէին կ'ըսէին Ֆունտուքտար։ Թերևս այս անուան համար Լևոնի գերութեան երգիչն, որ վերջը պիտի յիշենք, գնտակի խաղալը յիշէ։

խօսքս իբրև վերջին բառով մեռաք ըսելով Մերձա-կայից, հոգին՝ հոգւոյն փափագողաց հետ խառ-նուեցաւ, Թողլով յերկրի քմծիծաղ ու պայ-ծառ՝ այլ անշարժ մարմին մը, 'ի սուգ և 'ի սէր հասարակաց:...

« Իսկ Թագուհին զկեանս աւանդեալ
Ու 'ի կէտ կոչմանըն ժամանեալ.
Ձայն 'ի յերկնից ըղձա կոչեալ,
Զոր իւր ունկամբն յայտնի լըւեալ,
Ե՛կ աղաւնի՛ իմ, ասացեալ,
Ե՛կ սիրելի իմ կատարեալ:
Իսկ նա յորժամ զայս ձայն լըւեալ
Զըւարթագին սրտիւ բերկրեալ,
Տեսլեամբ կերպին զըւարճացեալ
Եւ 'ի հոգին իւր ցընծացեալ,
Մերձակայիցըն զայս ազդեալ,
Եւ ընդ պատմելըն՝ իսկոյն փոխեալ.
Զհոգին 'ի ձեռս Տեառն աւանդեալ,
Զխեցին ունայն՝ յերկրի Թողեալ:
Զոր քահանայքն ակումբ առեալ
Զնա օրհնութեան հողոյ տըւեալ:
Այդ Թագուհին յերկրէ ելեալ
Եւ առ Քրիստոս վերափոխեալ»:

Այսպիսւոյ բարւոյ և բարերարի, սրբակեաց և սիրելւոյ Թագուհւոյ, հարսին և մօր մահ՝ որ-չափ ցաւալի և սգալի եղած է կենակցին, զաւա-կացն, մերձաւորաց, պաշտօնէից և բոլոր աշ-խարհին, ազատաց և ռամկաց, աղքատաց և հի-ւանդաց, կրօնաւորաց և զինուորաց, քեզի դիւ-րագոյն է հասկանալ, ինծի աւելորդ ըսելը, Հայ-կակ. աւելորդ սեպեմ և խառնել զքեզ անոր եր-կարաշար յուղարկաւորաց մէջ, յոր կրնամք ե-կած սեպել զբովանդակ Կիւլիկիա և զմասն Կի-պրոսի և Անտիոքայ, եկեղեցական, քաղաքական

և զինուորական խմբերով. որոց մէջ չեմ այլ կըրնար գոնէ պաղած պատկառանօք մատնանիշ ընել՝ երկու զանազան ձևով բարձրապատիւ ալևոր գլուխներ, երկու նահապետքն Հայոց, երկու անուանակիցքն, Կոստանդին կաթուղիկոս և Կոստանդին արքահայր, խնամակալք և դաստիարակք Թագուհւոյն և հայրաբար սիրողք. որք իբրև երկու մեծամեծ մայրիք մրրկաշարժ անտառի մը՝ իրենց դիմաց իրենցմէ շատ դալար և ծաղկաբողբոջ միջաբեկեալ ծառին վրայ ծռած՝ դողդոջուն ճիւղերով կ'օրորին կ'երերան: Բայց դարձընենք աչուընիս իրեն գիլ ու դալար բարակ բարունակներէն, որոց անդրանիկն (Լևոն) դեռ հազիւ 16 տարեկան է. դարձընենք մանաւանդ այն փափուկ անկոյն նեցուկ ու նշդարիկ եղող արքականոյ նման պանծալի՝ բայց հիմակ քակեալ մենացեալ և կորացեալ Թագաւորէն... Հեթում՝ այն օրերն մեծ պատրաստութեան մէջ էր, հարկաւորաբար երթալու առ Մանգու խաքանն Թաթարաց՝ յաշխարհ հեռի: Զապէլի յանկարծ յանդարձ աշխարհ երթալն՝ այնքան խոր և արժանաւոր սգով պատեց զայրիացեալ Թագաւորն, որ երկու տարի չկարցաւ հեռանալ սևու սենեկէն, ապա թէ գնաց:

Հեթում՝ ոչ կենակից և Թագակից միայն էր Զապէլի, այլ և անարգել գործակից անոր սըրտին բարի բերմանց. և եթէ իր արքունի անհրաժեշտ պարտքն և 'ի մօրէ որբացեալ զաւակներուն հոգն՝ չպատուիրէր, թերևս աւելի շուտով թողուր ինքն այլ Թագը, և առանձնակեաց հոգեկեաց մ'ըլլար. ինչպէս որ ըրաւ այլ վերջը, յետ տեղաւորելու իր դստերքը՝ և Թագը թողլու (յամին 1269) առ անդրանիկն Լևոն: Եւ սա իր ցանկալի և ցաւալի մօրն անմոռաց յիշատակը կերպով մը կենդանացընելու համար՝ իր իրեք ե-

րեց դստերքն անուանեց Զապլուն, Զապէլ, Սիպիլ։

Զապէլ Թագուհւոյ մահացու նշխարքը անմահութեան մաղթանօք և անսուտ յուսովն պատելով ու կնքելով՝ հանգուցին 'ի տապանատուն Ռուբինեան պայազատաց, 'ի վանքն Դրազարկ, ուր նախ հանգչեր էր տեղւոյն շինողն Թորոս Ա, Թոռն Ա և մեծ Ռուբինի. և իրմէ ետքն իրեն ցեղէն շատ պարոնայք և պարոնուհիք. և ուր յետ 19 տարւոյ (1270) հանգուցին Թագուհւոյն քով իր Թագակից և կողակիցն այլ, թէ իբրև արքայ Հեթում և թէ իբրև Եղբայր–Մակար. որ և Զապէլի պէս բաղդ ունեցաւ օտար սուրբ Թագաւորի մը հանդիպակից ըլլալու։

Իրենց երախտագէտ և սիրանուէր որդիքն և պայազատք՝ արքունի սրբապատում Յայսմաւուրաց մէջ նշանակեցին Հեթմոյ հանգստեան օրը (28 հոկտեմբերի), և այս օրս (22 յանուարի) Զապէլի պաշտելի յիշատակը. զոր 'ի կեանս և 'ի մահուն՝ ճանաչողք և մերձագոյնք՝ սուրբ[1] անուանէին. ինչպէս որ Հեթմեանց[2] յիշատակն այլ՝ ոչ միայն մեր այլ և լատին միանձանց՝ հին ժամագրոց ոմանց մէջ անցած է երանելեաց կոչմամբ։ Երանի՜ էր ազգիս այլ, եթէ՝ ինչպէս շատ արժանաւորաց յիշատակն անմահացուցեր է, զոմանցն այլ նորէն արթընցընէր։ Իսկ քեզ, Հայկակ, անշուշտ ախորժելի կ'ըլլայ, քու ընտանեաց և մեր-

1 Այսպէս գովութեամբ անուանէ զնա և ժամանակակից ու բարեկամ Հեթմոյ՝ Ասորի պատմիչն Աբուլֆարաճ։

2 Թէ Հեթում Ա, թէ իր Թոռն Հեթում Բ, և թէ իր եղբօր որդին Հեթում Պատմիչ տէր Կոռիկոսոյ, իրեքն այլ կրօնաւորած են 'ի վանս Լատինաց՝ 'ի Հայս, 'ի Կիպրոս և 'ի Փրանկաստան. որոց վարքն քիչ մը կու շփոթեն իրարու հետ_արևմտեան պատմիչք։

ձաւորաց միջի մատղաշ Զապելայ ծանօթացը- նել՝ իբրև իրենց նախընթաց օրինակ համեստութեան և իմաստութեան ու պաշտպան մեր ազգին վերջի պայազատութեան մէջ ամենէն անուանի, պատուելի, սիրելի և սրբենի եղած թագուհին [1] ԶԱՊԷԼ։

1 Յետ Զապելի՝ նու նորա առաջին թագուհին Հայոց՝ կին Գ Լեւոնի՝ Կեռան՝ որ է Կիռ Աննա (Քիրիա-Աննա) դուստր Լամբրոնի տիրոջն, իր ակեսրին բարեպաշտութեան ճամբան բռնեց, և աւելի բազմաթիւ զաւակաց մայր ըլլալէն ետև՝ կրօնաւորեալ մեռաւ (28 յուլիսի 1285), մեծ համբաւով սրբական վարուց. սա կոչուէր և Թէ-անէ, այսինքն Թէոփանիա։ — Նմանպէս զովութեամբ յիշատակուին՝ իր քոյրն Մարի-ամ (3 դեկտ.) — իր երեք վերոյիշեալ Զապիլ անուն դստերքն. իր տալն Ֆիմի. — Դ Կոստանդին թագաւորի մայրն Մարի-ամ տիկինն (27 յուլիս). — և վերջին թագուհին Հայոց Մարի-ամ, կին Զ Լեւոնի, և իր դուստրն Փինա. — Նախ յիշուած Բ Զապէլ՝ կինն Օշին թագաւորի (3 մայիս)։

# Զ

## ԳԵՐԵԴԱՐՁ Գ ԼԵՒՈՆԻ

### 6 փետրուար — 1289 *.

Վառենք երեկոյեան խարոյկը. բոլորինք հայրենի կրակարանին եզերքը, 'ի Կիւլիկիա, յարքունիս Թագաւորին Հեթմոյ: Հեթում (այս անունը կրողաց մէջ ամենէն անուանի և սիրելի անձն) Հեթում Ա, յաջորդ մեծին Լևոնի, ինքնին հրաւէր կու տայ, և քան զուրիշ տարիներ աւելի արտորանօք, իր հաւատարիմ հպատակացն և պարոնայցն. գալու ժողովելու բազմութեամբ, և Աստուածայայտնութեան մեծ տօնը կատարելու: Կու փութան իշխանք և պարոնայք՝ ապահովցընել իրենց ամուր բերդերը և իջնել լեռներէն, ելլել պարսպապատ քաղաքներէն և ժողովիլ 'ի Մսիս:... Եւ ինչո՞ւ ոչ 'ի Սիս, յաթոռն Թագաւորաց: — Մի՛ հարցընէք: — Պարոնայքն գալու և ընծայելու ատեն՝ կու նային մէկ մը այն մայրաքաղաքին կողմը, և դեռ եգիպտական սև ծխոյն նշանը տեսնելով, գլուխնին շարժե-

* Այս թուականս է մահուան Լևոնի. գերութիւնն եղաւ յօգոստոսի 1266 տարւոյ, գերեդարձն 'ի 1268:

լով՝ Երեւանին խաչակնքելով կու փոխեն ճամբանին. Թէ և շատ դժար կու գայ իրենց յառաջելն, վախնալով Թագաւորին տխրամած դէմքը տեսնել. սակայն մէկ մ՚այլ իրենց հրաւէրքի Թուղթերուն վրայ նայելով, և տեսնելով անոնց արքունի կարմիրկապ կնիքը՝ սիրտ կ՚առնուն, և կու մտնեն ՚ի Մսիս. որոշեալ օրը՝ նախ քան զտօնն կու ներկայանան միաբան, բարևել և շնորհաւորել Թագաւորին զնոր տարին և զաւագ տօները։

Սիրով և պատուով կ՚ընդունի զնոսա Թագաւորն. և փոխարէն ողջոյններ տալով՝ կու հրամմէ որ նստին. և նախ ինքն կու բազմի ծանրութեամբ իր գահը։ Ո՜հ. ո՜րչափ այլափոխուեր է Թագաւորին դէմքն քան զանցեալ տարին։ Տարի մը միայն կըրնա՞ր այդքան աւելցընել հազիւ վաթսնամեայ գըլխոյն ալեքը, որ ոսկի պսակին տակէն կախուած՝ իր սպիտակ արքունի բեհեզեայ քղամիդին կու խառնուէին. և երկընցած դէմքն այլ այն գլխուն դեղին Թագին կու նմանցընէին։ Ո՜րչափ տարբեր էր այդ դէմքն այն Հեթում Թագաւորի ոսկեհատիկ վառվռուն կերպարանքէն, երբ այգպիսի հանդիսական օր մը բարձր գահուն վրայ ելած ատեն, Կիւլիկիոյ ամենէն ազնիւ ծնունդն՝ տիկնաց տիկինն Զապել, դուստրն մեծին Լևոնի, անոր աջ կողմը կու բազմէր, այն իր կենակից և Թագակից դշխոյն. գահուն բոլորը բռնէին իր հինգ վեհակերպ մեծապատիւ եղբարքն, Սմբատ գունդըստապլն՝ հին Հայկազանց և Վարդանանց նախանձորդ՝ սպարապետն Հայոց, Լևոն՝ մեծ մարաջախտըն, Լիկոս՝ գայլանուն կորիւն, Բարսեղ՝ վսեմափայլ արքեպիսկոպոսն և առաջնորդ Դրազարկու, և Յովհաննէս՝ երիտասարդ արքեպիսկոպոսն Մամեստիոյ և առաջնորդ Արքակաղնոյ. պահուն ստորոտը Սողոմոնի սուտ առիւծներուն տեղ՝ երկու եռանդուն կրակոտ կորիւնք կենդայէին՝ Լևոն և

Թորոս Թագաւորորդիք. և իբրև ամենուն հովա-
նի՝ Թագաւորին ձախ կողմը նստէր փառօք իր
ջոջգլուխ արքայահայրն՝ Մողոնն Կոստանդին,
աբրահամեան ծերունին[1]:

Այդ յիշեալ մեծափայլ և մեծազօր արքունա-
կան սիւներն՝ այսօր խորտակած կ'երևին ժամա-
նակի օրէնքէն. միայն ամենէն կրտսեր արքայ-եղ-
բայրն Յովհաննէս արքեպիսկոպոս՝ մէկդին բազ-
մեր, մէկալ դին այլ ամենէն մեծն՝ ծերունազարդ
սպարապետն Սմբատ, ոսկէկոթ Թրին վրայ կըռ-
թընած, երբեմն երբեմն թաւ թաւ յունքերուն
տակէն երկու խոր կայծակներ պտըտցընելով:
Թագաւորին գլուխն այլ ծանրացեալ կ'երևի գրե-
թէ կէս դար կրած թագէն. 43 երկայն և բազմա-
փորձ տարիներ պէսպէս գոհար քարերու պէս
շարուած էին անոր վրան. որչափ զանազան տե-
ղուանք, որչափ զանազան անձանց մէջ կանգներ
էր Հեթում այն գլուխը. որքան երկայն և տա-
րւոր Ճամբաներ ընելով՝ Կիւլիկիոյ դուներէն մին-
չև Թաթարստանի խորագոյն անապատները՝ ազ-
գին և տանը համար քրտնելով, կ'իմանայր հիմա
պսակին ծանրութիւնը: Եւ թերևս անկէ աւել
փափագելի էր իրեն հանգչեցընել այն յոգնած
գլուխը, ըլլար նաև սև քարի մը վրայ:... Բայց
սրտին վրայ այլ կայ ծանրութիւն մը, և շատ մեծ
ծանրութիւն. ինչուան որ զայն չթեթևցընէ, ի-
րեն համար մահն անգամ անհանգիստ է:...

Ասոնք մեր մտածութիւններն չեն. այլ այն
բազմախումբ պարոններուն՝ որք բազմեր են Թա-
գաւորին դիմաց: Իսկ Հեթում իբրև թեթև քնէ
մը թօթուելով գլուխը, և ծածուկ կրակով մը
վառելով աչուըները՝ կու դարձընէ հօն եղող իշ-
խանաց վրայ, և յետոյ կու հրամէ սենեկապան

1 Այսպէս կ'անուանէ զնա իր որդին Յովհաննէս:

սպասաւորաց՝ որ պակասներն այլ կանչեն և նըստեցընեն· իսկ սպասաւորք կարգէն պակաս չգըտնելով՝ կ'իմացընեն որ ամէնքն . այլ հոն են։ Թագաւորն նորէն աչք դարձընելով՝ կու տեսնէ, թէ ոչ շատ, այլ մեծ պակաս· կու հրամմէ կու ստիպէ որ զանոնք այլ կանչեն։ Սպասաւորք շփոթած կու նային կու համրեն, պակաս չեն գտներ, և վախով մօտենալով կ'ըսեն, Սուրբ Թագաւոր, ամէնքն հոս են։ Թագաւորն նեղանայ· սպասաւորք իրար կ'անցնին, իշխանաց կու դառնան· ասոնք այլ կ'ապահովցնեն զԹագաւորը, թէ Սուրբ Թագաւոր, ամէնքն այլ որոց հրաւէրք և պատուէր խաւրեցիք, հոս են, պակաս չկայ պարոններէս։ Այն ատեն Թագաւորն անգամ մ'այլ սրափայլ աչքերը չորս դին դարձընելով, և բարկացեալ՝ այլ մարմրած և հեծկլտած ձայնով կանչէ· Եթէ ամէնքն հոս են, ո՞ւր են հայրս պարոնաց պարոնքն, Լևո՛ն և Թորո՛ս...։

Լևո՛ն և Թորո՛ս· երկու կրակէ նետերու պէս Թռան այս անուանքս Թագաւոր հօր մը բերնէն, և չմնաց ողջ սիրտ մը· իշխան, պարոն, եպիսկոպոս, ձիաւոր, սպասաւոր, ամէնքն վիրաւորի հառաչանք մը փրցնելով կու սկսին լալ վայել, երկինք երկիր. նայիլ· բոլոր արքունական ատեանն նոր մեռած անդրանիկ զաւկի մը սգասենեակ դարձաւ· Թագաւորն ծածկեց հայրական դէմքն իր սպիտակ բեհեզին տակ· և մէկն չէր համարձակեր մօտենալ, բան մը ըսել, մխիթարանք մը տալ· պարոնաց գլուխն 'ի գետին կորացեալ, վարդապետաց և եպիսկոպոսաց շրթունքն դողով համրացեալ, կ'ուզէին որ եղածն երազ ըլլար· և թէ չէր կարելի անկէ հեռանալու՝ գոնէ անզգայ ըլլալու։ — Բայց ով կրնայ անզգայ ըլլալ, երբ ձիաւորաց պարծանքն՝ զուարթունն Թորոս՝ դեռ իր չորեքամսեայ գերեզմանին մէջ սև սև վէրքերուն

նշաններով ահեղ դիւցազին նման պառկած կ'երեւէր դիմացնին... և երբ լուսաղէմ Թագաժառանգն Լևոն՝ բարբարոս Պէյպարս սուլտանին սև բերդին մէջ շղթայակապ տանջուէր: Անվախ Սմբատն անգամ, հօրեղբայր սիրուն և կարիճ կորեանցն, ձեռքը Թրին, Թևն 'ի գահ Թագաւորին կոթընած՝ արտասուաթաթ աչքերը վերուցած առեն՝ կարծուէր թէ մէկէն պիտի ցատքէ և արքունի նիզակներէն մէկը կորզած՝ վազէ երթայ Մսրայ սուլթանին դահը կոխէ, և իր եղբօրորդին՝ պարոն Լևոնը, յափշտակէ բերէ հօրը գիրկը. իսկ երբ գլուխը Թօթուելով նորէն դէպ 'ի կուրծքը կ'իջեցընէր, կարծուէր թէ աշխարհք անցեր է Հայոց տանն համար. և ամենքն այլ գլխակոր մընային:... Թանձր սուգ մը պատեր էր Հեթմոյ արքունիքը. արևելքէ և արևմուտքէ, Թաթար ղանէն և սրբազան Պապէն եկած մխիթարութեան գրերն անգամ՝ չէին փարատած զայն:...

Ի՞նչպէս եկաւ այն սև սուգն, ի՞նչպէս եղաւ այս չար դիպուածն: — Գիտես Հայկակ, որ Կիւլիկիա թէ և ամուր երկիր, բայց այլազգի տէրութիւններու դրացի էր, որք կ'ուզէին յափշտակել այն պատուական աշխարհը: Թագաւորք Հայոց երբեմն բարեկամութեամբ, երբեմն զէնքով կու զգուշանային անոնցմէ. որոց զօրաւորագոյնն՝ Իկոնիոյ սուլթանն, շատ հեղ Լևոնի և Հեթմոյ հետ կռուեր էր, երբեմն մէկն երբեմն մէկայլն յաղթելով. բոլորովին ապահովութեան համար՝ Հեթում նախ իր եղբայրը՝ Սմբատը՝ ղրկեց առ ղանն Թաթարաց, յետոյ ինքնին գնաց առ Ապաղա ղան, և երեք չորս տարի ուշացաւ յօտարութեան. մեծազօր և ահարկու Հէլակիւ ղանէն ստիպուեցաւ նիզակակից ըլլալ անոր, Արաբացւոց և Թուրքաց դէմ շատ պատերազմներ ընել, և Բաղդատ առնուլ, ու բոլոր Պարսից, Միջագե-

տաց, Ասորեստանի, Հայոց և Ասորւոց իշխանները նուաճել. որով իր սահմանները այլ ազատ և հանդիստ մնացին շատ տարի. ուրիշ զօրաւոր թշնամի չկար, բայց միայն Մսրայ սուլթանն, որ հեռուէն կու սպառնար. իսկ Հեթում մէկ կողմէն երկիրը պարիսպներով և բերդով ամրացուցեր, մէկալ կողմէն Թաթարաց օգնութեան վրայ վստահացեր էր, և այլ աւելի իր խորագէտ հօրը խրատուց և եղբօրը քաջակռիւ բազկին վրայ:

Բաղդատ առնելու ատեն Եգիպտոսի սուլթանին կողմանէ այլ մարդ կար հոն, օգնական խալիֆային. ասոնցմէ երկուքն կրցան փախչիլ. մէկն էր Ֆունտուքտար[1] Պէյպարս, չափաւոր տարիքը առած, մէկ այլն երիտասարդ մը Սօնգօր էլ-Աշքար (շէկ կամ կարմիր բազայ) անուամբ, որ իրեն պէս կարիճ վազուկ ձի մը ունէր. և տեսնելով ընկերին թէ հասակը թէ գէշ ձին՝ վախցաւ թէ գերի ընկնի սպաննուի. ստիպեց որ իր ձիուն վրայ հեծնի և փախչի: Թէ որ ես գերի ընկնիմ, կ'ըսէր, տղայութեանս խնայելով՝ զիս չեն սպաններ. քու պարտքդ ըլլայ ազատել զիս: Եւ նման այնպէս եղաւ. կարմիր բազայն բռնուեցաւ, Պէյպարս պրծաւ և հասաւ յԵգիպտոս. յորդորեց անոր Քուդուզ սուլթանը՝ Թաթարաց դէմ պատերազմ բանալու. և պատերազմին մէջ այլ շատ քաջութիւն ըրաւ, անոր համար վարձք ուզեց Հալէպի կուսակալութիւնը. և երբ սուլթանն չտուաւ, Պէյպարս համախոհութեամբ քանի մը իշ-

1 Մեր պատմիչք անուանեն զսա Պանդուխտար կամ Փնդուխտար. որ բնիկ անուն չէ, այլ մականուն է, առած իր տիրոջմէն. և տէրն այլ իր եղած արքունեաց մէջ պաշտօն ունէր իշխանին գնտակ տալու խաղի ատեն. այս պաշտօնէին կ'ըսէին Ֆունտուքտար: Թերևս այս անուան համար Լևոնի գերութեան երգիչն, որ վերջը պիտի յիշենք, գնտակի խաղալը յիշէ:

խանաց սպաննեց զնա և տեղը անցաւ (1260ին)։ Անկէ ետև գլխաւոր մտածութիւնն էր վրէժ առնուլ ՚ի Թաթարաց և անոնց օգնականներէն. յարմար առիթ այլ գտաւ Հէլակիւ և Պէրքայի[1] մեծ ղաներուն ազգային կռիւները. որոնցմէ յաղթուող և փախչողները կ՚ընդունէր իր քով։ Անոր համար Հէլակիւ պատուիրեց Հեթմոյ՝ իր նիզակակցին, որ Եգիպտոսի սուլդանին վրայ յարձըկի։

Հեթում խորագիտութեամբ նախ Իկոնիոյ սուլդանին հետ դաշնադրութիւն ըրաւ (1262), յետոյ վազեց Այնթապայ վրայ. բայց Պիպարս առաջուց իմանալով ըլլալիքը՝ շատ զօրք խաւրեց խափանեց Հեթմոյ խորհուրդը. այն ատեն Հեթում քանի մը հարիւր մարդ այլ ՚ի Թաթարաց առնըլով և 150 ասպետ անտիոքացի, մտաւ Ասորւոց երկիրը, բայց ցուրտէն ստիպուեցաւ յետ քաշուիլ. մանաւանդ որ Պիպարս կուգար իր երկրին սահմանները կոխելու։ Անկէ ետև սկսան մէկմէկու դէմ պատրաստուիլ սուլդանն Մսրայ և թագաւորն Հայոց, և զիրար հնազանդութեան կանչել, թէ և իրարմէ կու վախէին. բայց երբ Հէլակիւ՝ պաշտպանն Հեթմոյ և քրիստոնէից՝ մեռաւ (՚ի սկիզբն 1265 տարւոյ), Պիպարս սկըսաւ համարձակ յառաջ գալ։ Նախ խաչակրաց ձեռքէն առաւ ամուր քաղաքները. վերջը պահանջեց ՚ի Հեթմոյ՝ որ Ասորւոց դռները ազատ թողու իր մարդկանց անցնելու, չարգիլէ իր երկրէն ցորեն բերելու, և նաև իրեն հարկ տայ։ Հեթում պատասխան չտուաւ անոր. թէ և դէմ կենալու չէր համարձակեր, բայց և ոչ այլ դաշնադրութիւն ընել, Թաթարներէն ակնածելով, վասն զի թշնամիք էին Եգիպտացւոց։ Ահա այս-

1 Երկուքն ալ Ճինկիզխանի թոռներէն են։

պլսի դժար դէպքեր կան վարչութեան մէջ, որ փոքր տէրութեանց (ինչպէս էր Կիլիկեցւոց) հնարքը անհնար կ'ընեն։ Պէյպարսայ ուզածն այլ այս էր. հրաման տուաւ Համադի էլ-Մանսուր իշխանին և Գալաւուն զօրավարին և ուրիշներու, (որոց մէկը Սմլմօթ կ'անուանեն մեր պատմիչք), յարձակիլ 'ի Կիլիկիա. ուր և մտան օգոստոս ամսոյն սկիզբները 1266ին։ Հեթում առաջուց լեռները բերդերով և պահապաններով ամրացուցեր էր. և Եգիպտացւոց շարժմունքը լսելուն պէս՝ ունեցած զօրքը տուաւ իր երկու կտրիճ կորիւններուն, Թագաժառանգ Լևոնի՝ որ այն ատեն երեսնամեայ էր, և քաջ ձիաթափ Թորոսի՝ որ աւելի ծաղկահասակ էր, և երկուքն միատեղ քանի մը տարի առաջ (1260) ասպետ կարգեր էր. պատուիրեց անոնց որ ծովեզերքի և լերանց միջոցը՝ Աղեքսանդրիոյ (Իսքէնտէրունի) քովի բռնակապանը պահեն։ Իսկ ինքն՝ իրմէ աղէկ դեսպան չգտնելով՝ սիրտ 'ի բերան առած փութացաւ պզտի գնդով մը գնաց Թաթարաց զօրապետին, որ Էլպօստանի և Կոկիսոնի մէջ տեղ բանակեր էր, և օգնութիւն խնդրեց շուտով. բայց որչափ աղաչեց, մօտակայ վտանգը առաջ դրաւ, որչափ որ իր անգին զաւակացը վրայ կասկածոտ հօր մը սիրտ կրնար խօսիլ և ջանալ, անօգուտ եղաւ. Թաթարն յամառեալ կ'ըսէր թէ առանց հրամանի Էլ-ղանին՝ Ապաղայի՝ չեմ կրնար մարդ տալ։ Ուրիշ ճար չկար, պէտք էր սուրհանդակ խաւրել ղանին՝ և խաւրեց. բայց սուրհանդակն այլ պէտք էր կամ հայր ըլլալ կամ թռչուն, որ քիչ օրուան մէջ կարենայ կտրել բոլոր Փոքր և Մեծ Հայոց լայնութիւնը, և սրանալ ինչուան Մազանդարանի մօտերը, ուր գըտուէր ղանն, հրամանն առնուլ և բերել Թաթար զօրապետին։ Արդեօք սպասէ՞ր Հեթում

սուրհանդակին դառնալուն. բայց մինչ անգութ և ճարտար թշնամին այլ անշարժ կու սպասէ իր տեղը. — արդեօք դառնա՞յ Թաչի՞. յօգնութիւն զաւկըներուն. — բայց եթէ ինքն անկէ հեռանայ՝ Թաթարներն թերևս տեղերնէն այլ չեն շարժիր օգնութեան գալու։ Այս դժուարութիւնս առջինէն ծանր էր. հարկ էր Հեթմոյ հոն սպասել 15 աւուր չափ. բայց իր քաշած երկայն համբերութիւնը՝ ո՞վ կրնայ չափել. ո՞վ կրնայ կշռել սրտին ալէկոծութիւնը այնպիսի ատեն, որ յիրաւի բաւական էր Հեթմոյ, թէ և սև այլ ըլլային՝ մազերը ճերմըկցընել, և օրուան տեղ՝ տարի մը ծանրացընել հասակին վրայ։

Իսկ թագուորորդիքն ի՞նչ կ'ընեն։ Ամառուան ամենէն տաք օրերուն, որ Կիւլիկիոյ քարուտ կողերէն կրակ կու բղխեն դաշտերուն վրայ, մինչդեռ մերձակայ վանքեր Ս. Աստուածածնի Վերափոխման տօնը հռչակէին լեռնէ լեռ ձորէ ձոր, իրենք հոն կեցեր այրելով մրկելով կու սպասէին հօրերնուն, և թշնամւոյն. և ետքինս աւելի շուտ հասաւ չկարծած կողմերէն։ Իրենց կռթընած լերանց վրայ Հեթում աշտարակներ կանգներ և պահապան դրեր էր զգուշութեան. և ոչ ոք կարծէր թէ մէկն այնպիսի տեղէ անցնելու փորձ փորձէ. բայց Պէյպարս իր զօրաց 15-20 օր միայն միջոց կտրեր էր Կիւլիկիա ասպատակելու և կրցածնուն չափ աւերելու. պէտք էր որ ամեն ջանք ընէին. և ահա յանկարծ Իսքէնտէրունի լեռներուն գլխէն, սև մրրկի պէս սկսան վար թափիլ Եգիպտոսի հնոցանման տաք օդուն վարժող Քէօլէմէններ, որ լցին վարի դաշտը։ Հայք (ինչպէս շատ հեղ այսպիսի ատեն կու հանդիպի) յանկարծութենէն շփոթած իրար անցան. տասն և երկու մեծ իշխան կար մէջերնին, ոմանք զարնուեցան, ոմանք փախան, ոմանք բռնուեցան. հոն էր և ար֊

քաջ-եղբայրը գունդստապլն Սմբատ և իր կտրիճ զաւկըներն Լևոն և Հեթում․ հոն իր մէկ եղբայրն այլ (Լիկոս), որ նոյնպէս իր Թագաւոր եղբօր որդւոյը պաշտպանութեան համար պատերազմելով՝ փառօք ընկաւ զէնքն 'ի ձեռքը․ իսկ Սմբատայ այս փառքս չտրուեցաւ այս անգամ, այլ պահուած էր ուրիշ պատերազմի․ իսկ հիմա պէտք էր Հայոց բանակին մնացորդը՝ բոլորովին կոտորածէն ապրեցընել: Ի՞նչ ջանք չըրաւ արդեօք այն առիւծ դարձած սոսկալի սպարապետն՝ իր եղբօր կորիւնները ազատելու, որոնք հոն իրմէ աւելի իրենց հօր պատուէրքին, և անկէ այլ աւելի՝ իրենց քաջասրտութեանը ուզեցին լսել: Սմբատ չէր գիտեր՝ մնացեալ զօրաց առաջնորդել, Թէ անոնց քովը կենալ․ եթէ անոնց յամառ քաջութեանը նայելով քովերնին կենար, անշուշտ Հայոց բանակէն մարդ մը պիտի չազատէր․ ապա՝ մէկ մը մնացեալ իշխանորդիները և զօրքը ապահովապէս ետ կու քաշէր, մէկ մ'այլ արքայորդւոց կու վազէր: — Բայց որո՞ւն հասնի․ Լևոն՝ Սարուանդի-քար բերդին ոտքը կեցեր, Թորոս իրմէ շատ հեռու կու կռուէր․ Լևոն կու ջանայ հօրեղբօրն հետ պաշտպանել իրեններուն, Թորոս անդադար առաջ առաջ կու նետուի իր բարձրապինչ բարձրափռինչ ձիովը, կու զարնէ կու կոտրէ զԹշնամին: Մենք Իլիոնի դաշտը չեմք տեսած, և ոչ զԵկտոր՝ Տրովայ պարիսպներէն դուրս Աքիլլէսի դէմ պատրաստուած, և ոչ անոր ծերունի հօրն և մօր և կնոջ աղաչանքը լսած, զինքը այն սոսկալի հսկային անյաղթելի զէնքերէն յետ կեցընելու․ բայց Թորոսի համար կրնա՞ր պակաս ըսել Հայ Հոմեր մը, եթէ Հոմերի կէս հոգին այլ ունենար: Քանի մը հաւատարիմ զինակիցներով միայն մահու շրջանակի մը մէջ ցատքըտելով իր բարձրավիզ ձիովը և սեաւ փոթորկի

պէս չորս դի մըրկելով՝ բոլոր ծաղկեալ երիտասարդութեան ուժովը, կէս գունդ մը ձեւացընէր. վահանը թողած՝ թուր ու նիզակ էր շարժածը, որոնց հարուածէն՝ անտառահար փայտից պէս անթիւք փռուեցան բոլորտիքը. ինչուան տասն հազար եգիպտացի սպաննեցին, կ'ըսեն, այն օր այդպիսի կտրիճ Հայք: Թորոս դեռ աչուըներն արիւն դարձած՝ ամեն դի արիւն կու տեսնէր, արիւն կու հանէր, տուած և առած վէրքը չիմանալով. շատերն իրեն յորդոր և ձայն տուեին. Հերիք է, թագւորորդի, յետ դարձիր. բայց ոչ մէկուն այլ չլսեց. չլսեց անշուշտ մերձաւոր ընտանեաց գթոյն, և ոչ իսկ հեռաւոր հօր մը ծածուկ ձայնին. «Շատ է ազնիւ որդեակ իմ Թորոս, Թո-
» րոս՝ դարձիր այս անգամ, մինչև գայ հայրդ այլ
» և մէկտեղ վրէժ առնուինք »: Չլսեց այն ձայներուն. այլ այն մարդակոտոր սև անտառին մէջ մինակ մնացած բարձրահասակ ծառոյ մը պէս՝ դեռ ճռնչալով չէր դադրեր իր հարուածներէն, մինչև բազմութիւն սուսերաւոր թշնամեաց երթալով մօտենային, և շատ անգամ հարցընէին. Սոսկալի կտրիճ, ով ես դու, ինչ կ'ուզես. քու բոլոր բանակիդ չըրածն՝ դուն միայն կ'ուզես ընել. ձգէ անկուշտ զէնքերդ և եկու ապրէ քաջի պէս մեր ձեռքը: Թորոս՝ միայն զանոնք զարնելով պատասխան կու տար. մինչև քանի մը անգամ անձնատուր ըլլալու յորդորելէն և օգուտ չըլլալէն ետև՝ կատղած սուսերաւորքն մօտեցան պատեցին այն մէկ հատիկ վարսաւոր ծառը, ձիաւոր նահատակը, որ դրեթէ անոնց բազմութենէն խղդուելով՝ և իրմէ առաջ վիրաւորած ձիուն կռնըկէն վայր ընկնալով՝ կոտրած նիզակին վրայ երես 'ի վայր փռուեցաւ երկայն, յետին անգամ հայրենեաց հողը համբուրելու շնչակտուր շրթունքովը:...
Կողոպտողք արիւնլուայ զըահիցն՝ իմացան, բայց

ափսոս, քիչ մ'ուշ, որ Հայոց Թագաւորին որդին է եղեր կարիճն այն. ապա Թէ ոչ՝ գուցէ աստուածորդի այլ կարծուէր դիւցատիպ Թորոսն այն։ Ոչ պակաս անկէ քաջութեամբ կռուէր և Լևոն. նոյնպէս կռուեցան և իրենց հօր եղբօրորդիքն, Սմբատայ կորիւնքն. որոնց մէկն այլ մեռաւ, մէկայլքն՝ Լևոնի և իր հաւատարիմ ճորտերուն հետ՝ գերի ընկան Թշնամեաց ձեռքը։

Ո՞վ կրնայ պատմել անգութ Պիպարսայ ուրախութիւնը՝ երբ դիմացը հանեցին զանոնք, յետ 20 օր Կիւլիկիոյ մէկ մասը աւրելէն և այրելէն և մայրաքաղաքն այլ կողոպտելէն, Թագաւորաց գերեզմանները քակելէն և գանձերը պարպելէն, (որոց միայն մէկ ամանէն 60,000 կարմիր (ոսկի) հաներ էին), դառնալով անբաւ աւարով, մինչև մէկ եզ մը երկու դրամի կու ծախէին։...

Իսկ Հեթում մինչև ցե՞րբ կ'ուշանայ. մանաւանդ Թէ մինչև ցերբ կու դանդաղին Թաթարք... Ահա կու դառնայ սուրհանդակն յԱպաղա ղանէն՝ բերելով առ զօրավարն Թաթարաց հրաման օգնելու Հայոց։ Հեթում Թաթար գունդը առած՝ գացածէն աւելի շուտով կու կարէ օրէցով երկայն ճամբան. կու մանէ իր երկիրը... Ընտանի լռութիւն և օտար աղաղակ. սև նշաններ, աւերակաց փոշի, այրածներու ծուխք, ամէն բան իրեն կ'իմացընեն. դեռ կու տեսնէ Եգիպտացւոց վերջամնացները՝ որք իրմէ երկու օր առաջ ելեր էին երկրէն, և դեռ կու լսէ անոնց քամահանքը և աշխարհին հառաչանքը. կ'իմանայ, կու զգայ Լևոնի գերութիւնը, Թորոսի մահը։...

Եթէ ամէն բանէ վեր կրօնքի ոյժը չզգար Հեթում, չեմ գիտեր արդեօք ի՞նչ կ'ըլլար կամ ի՞նչ կ'ընէր. բայց այս ուժով միայն սիրտը բռնելով, և այլ ամէն բան Թողլով, գլուխը կու դարձընէ դէպ իր քաջայիշատակ աներոջ շինած վան-

քը, և հոն այն մեծ Թագաւորին (Լևոնի) գերեզմանին վրայ ընկնալով և սուրբ վանականաց հոգեխօս մխիթարանքը լսելով՝ հազիւ կրնայ քիչ մը զսպել զինքը. « Բայց զխրատն (կ'ըսէ ականատես պատմիչն [1]) ինքն և Աստուած միայն գիտէին թէ որպիսի՞ կրակով լցեալ էր. զի ոչ տեսանէր զայնպիսի գեղեցկապատկեր և զծաղկալից որդին՝ իւր առաջի իւր. ոչ յերեկոյ և ոչ 'ի վաղիւն, և ոչ 'ի ժամ ճաշոյն՝ յուտել և ըմպել. և ընդ միտ ածեալ զանմխիթար աղէտս գեղեցիկ որդւոցն, զԹորոսի գեղեցիկ պատկերն և զվայելուչ հասակն՝ որ 'ի սրոյ բաժանեցաւ յանողորմ և արեանարբու անօրինացն, նոյնպէս և զԼևոնի ահիւ և անգոհիւ լինելն 'ի մէջ այլազգեացն 'ի ծառայութիւն. զայս ամենայն զմտաւ ածեալ բարեպաշտ Թագաւորն Հայոց, այրէր անհնարին կրակով, և գալարէր աղիքն յաղագս սիրոյ որդւոցն որ ոչ տեսանէր՝ և Թաւալէր ընդ երկիր անմխիթար սգով, բայց գաղտ և 'ի ծածուկ »: Ուրիշ ծեր պատմիչ մ'ալ [2], ծանօթ Հեթմոյ, իր համաշխարհական պատմութիւնը լմնցընելու ատեն՝ լսելով իր երբեմն հիւրընկալ իշխանազանց սև գոյժը, դողդոջուն գրչովը վերջին թղթոյն վրայ կ'աւելցընէ այս դէպքըս այլ. « Գլուխ և խոց անողջանալի կոտորելոցն՝ Թորոս արքայորդին, գեղեցիկ ծաղիկ, 'ի մատաղ հասակի մերձ 'ի փթիթս մօրուաց. վըկայեալ յամենայն բերանոյ՝ անպակաս 'ի բավանդակ բարոյ, և կուսութեամբ շտեմարանեալ 'ի ծրարս շնորհացն Աստուծոյ, որ յօժարութեամբ ևս դիմեալ 'ի պսակն արեան. քանզի հարցեալ զո՞վ՝ ոչ ետ զանուն հօրն, զի կենօքն գերեալ՝ մի՛ լիցի աւելի բեռն հօրն և աշ-

1 Մաղաքիա աբեղայ:   2 Վարդան:

» խարհին, ընդ անդրանիկ եղբօրն՝ Լևոնի, պսա-
» կելոյ և հրաւիրելոյ յաթոռ թագաւորութեանն
» առ կենօք հօրն։ Քանզի նա եղև գլուխ գերե-
» լոցն մեր, և հուր աղէկէզ լերդաշարշար և սըր-
» տակտուր աշխարհիս մեր և ազգիս, որ կամք
» չնչարգել և յերերման։ Հաստանէ ձեռն վերին՝
» որ եհարն ցասմամբ, նոյն բժշկէ ողորմութեամբ,
» ածելով զմեծաբաց խոցն, առնելով գերեդարձ՝
» (Լևոնի) զոր տարան ընդ այլսն, հնգետասան
» օր յամելով յաշխարհն, և ընլով աղէտիւք. ըզ-
» նոսա իրօք, և զմեզ խոցոտիչ համբաւովն»։
Եւ կու վերջացընէ պատմութիւնը յիշելով Կոս-
տանդին ծեր կաթուղիկոսին սգաւոր մահը, որ
գրեթէ 50 տարի նստաւ յաթոռն, և չպիմացաւ
Հեթմոյ որդւոց ցաւալից դիպուածին, որոց կըն-
քահայրն այլ էր. «Որ և ճաշակեաց իսկ և 'ի
» թանձրացեալ և զմռսեալ վերջնոյ լեղւոյ՝ մերձ
» 'ի կատար կենացն՝ տեառնաբար զդըրդումն թա-
» գաւորութեանն մերոյ. զսուր և զգերութիւն
» իւրական ծննդեան և սննդեան աշխարհին, մը-
» տեալ 'ի փորձ հնոցի գեհեննահոտ հրոյն բոր-
» բոքման. ձեռասուն արքայորդեացն կորստեան,
» որք մանաւանդ մերձ բերին զօրհաս նորա, և
» արարին տագնապել սախպման [1] շնչոյն, բորբո-
» քելով զծարաւ լուծման յօքնաթախիծ կեն-
» ցաղոյս։ Զոր տեսեալ Յիսուսին իւրոյ և Աս-
» տուծոյ, ընդ Ղազարու հանէ սրտաքոյ այսքան
» դժնդակ կրեցս՝ յանպատումն»։

Բայց Հեթմոյ դառնակսկիծ ծարաւը չկրցան բոլորովին մարել Սկանց անապատին բազմաբուղխ աղբիւրներն. այլ հազիւ զովացած՝ յիշեց միանգամայն թագաւորութիւնը և հայրութիւնը. ձեռքը սրտին վրայ դրաւ, և հետը բերած թաթար

1 Յօրինակին սփխղեան։

անօգուտ և անկիրթ զօրքերը արձըկելով՝ դարձուց աչուըները իր կէս անապատացեալ երկրէն. փութացաւ գնաց առ ղանն Ապաղա, պատմեց աշխարհքին և սրտին հարուածները. խնդրեց աւելի մեծ գունդ մը զօրաց օգնութեան, հաստակաց Թշնամւոյն (Եգիպտացւոց) վրէժը պահանջելու. բայց ղանն իր մերձաւոր Թշնամեաց հետ զբաղած՝ այս խնդիրքը անկատար Թողուց:

Անկէ անյոյս դարձած առենն էր՝ որ Հեթում ուրիշ ճար մը մտածելով կանչեց իշխանները Ջրօրհնեաց տունին առԹիւ, և որդւոցը յիշատակաւ՝ անոնց սիրտը և քիչ մ՚այլ խղճերնին ճըմլեց. վասն զի բաւական տիրասէր չգտնուեցան Թէ պատերազմին առեն և Թէ անկէ ետև[1]. անոր համար այլ հիմա չէին համարձակեր բան մը խօսիլ. մինչև Նախ Թագաւորին երեսը և բերանը բացաւ, և իշխանաց և վարդապետաց լուռ արտասուացն այլ շնորհակալելով՝ մխիԹարեց զանոնք որոցմէ պէտք էր ինքն մխիԹարուիլ. զԹորոս Վարդանանց պատկակից սեպելով, զԼևոն՝ համբերող Նախարարացն՝ 'ի դրան Ցազկերտի. և աւելի կ՚ընտրեմ, կ՚ըսէր, ատոնց այսպէս ըլլալն, քան Թէ անոնց ազատուԹեամբ ձեր և ձերիններուն կորըստեան պատճառ ըլլալն. «Ինձ լաւ է Լևոնի ծա-
» ռայուԹիւնն, և Թորոս իւր արեամբն 'ի վերայ
» քրիստոնէից սպանած, քան եւ այս ամէն եր-
» կրիս և ձեր արեանդ և խղճիդ տիրացած»:
Այս մեծահոգի խօսքերն սիրտ առուին վարդապետաց և իշխանաց՝ փոխադարձ մխիԹարուԹիւն տալու Թագաւորին, Թէ և անոր սուգն դրսէն ցուցածէն հազար անգամ աւելի էր: Եւ այսպէս կէս մխիԹարեալ կէս սգահար՝ կատարեցին յայտնուԹեան և ջրօրհնեաց հանդէսները, որչափ կա-

1 Այսպէս կու մեղադրէ զանոնք Մաղաքիա պատմիչ:

րեալ էր. և դարձան նորէն Թագաւորը բարեւելու, և մխիթարելու: Սակէ վստահութիւն առնելով Հեթում, յայտնեց բերնով այլ ինչ որ սիրտը կ'աղաղակէր, Լևոնի ազատութեան հնարքը. դեռ ողջ էր Լևոն, և գերութեան միջէն այլ հաւատարիմ ձեռքով ու զարմանալի սրտապնդութեամբ իմաց կու տար իրեններուն, որ ամուր կենան Եգիպտացւոյն դէմ: Իսկ խորագէտն Յունտուքտար ճարտար հաւորսի նման՝ այնպիսի շահաւոր որս մը ողջ կու պահէր, անով իր ուրիշ փափագածները որսալու համար. և յետ քիչ մը վախցընելու և յանդիմանելու, յիշեցընելով հօրը արհամարհական հրաւէրքը՝ որ զինքը 'ի ծառայութիւն կանչէր, հիմա տեսա՛ր, կ'ըսէր, ո՛վ որդի եղաւ ծառայ. հրամեց որ տանին Գահիրէ քաղաքին անուանի Լեռնաբերդին (Քալաադ-էլ-Ճէպէլ) մէջ բանտեն, բայց առանց շատ նեղելու. ինչուան հրաման այլ տուաւ անոր՝ Երուսաղէմ ուխտի երթալու. և երբեմն ազատութիւն այլ կու տար դուրս հանելու զգուշութեամբ: Ահա այս դէպքն է որ այն ժամանակներուն մօտ մեր բանաստեղծից մէկն երգեր է:

Աւա՜ղ ըզԼէոնն ասեմ,
Որ Տաճկաց դուռն ընկել գերի:
Իմ լուս, իմ լուս, ու սուրբ Կոյս,
Սուրբ խաչն օգնական Լէոնիս ու ամենուս:
Սուլթանն ի մօյտան[1] ելել
Իր ոսկի գունդան կու խաղայ: — Իմ լուս, և այլն:
Խաղաց ի Լէոնն երես.
«Ա՛ռ խաղա՛ ու տուր տատայիդ»:
«Լէոն, դու տաճիկ լինիս,
»Ես ու իմ տատաս քէ[2] գերի»:

1 Ի հրապարակ կամ խաղու տեղ: 2 Քեզ:

Լէոնն ի բերդին նըստել
Դաստառակն աչիցն ու կու լար.
«Քէրվա՛նտ՝ [1] որ ի Սիս կ'երթաս՝
«Դուռն խապար տանիս պապայիս»:
Ոնց որ պապն ալ զան լըսեց
Ծառ հեծել քաշեց երամով.
Եկաւ ի սուլթանին ելաւ,
Ծառ գետեր եհան արընեց.
Իառ [2] զիր Լեւոն որդին
Ու հասաւ սըրտին մուրատին:
Իմ լուս, իմ լուս, ու սուրբ Կոյս.
Սուրբ խաչն օգնական Լէոնիս ու ամենուս:

Ազնիւ և քաջ երգիչ, որ կու համարձակիս Թագաւորին պատերազմաւ շատ արեան գետեր հանել տալ, և յափշտակելով որդին՝ հանիլ ուրփին ձուլքափին. Իրաւ այս էր Հեթմոյ մտածութիւնն, բայց բաւական ոյժ չունէր այնպիսի Թշնամւոյ դէմ: Իշխանքն այլ աստ տեղ խորհրդակից կ'ըլլային՝ որ փրկանք տալով ազատէ զորդին, և իրենցմէ բան տալով կ'ուզէին խղճերնին սրբել: Բայց Հեթում երկու նախանձորդաց մէջ էր. մէկ կողմէն Եգիպտացւոց, մէկայլ կողմէն Թաթարաց. Թշնամութենէն աւելի դժար էր բարեկամութիւնն կամ դաշնադրութիւնն, կամ փըրկանք տալն. և եթէ այնպէս ազատէր որդին՝ կըրնար դարձեալ կորսնցընել բոլոր աշխարհովը՝ Թաթարաց ձեռքով: Նախանձն ի՛նչ չարիք չըներ. Հեթումի քսան տարուան համարձակութիւնն և խօսք անցընելն մեծ ղանից քով, շատ անհաւատ իշխանաց ծանր եկեր էր, և սկսեր էին համբաւել թէ Հեթմոյ բարեկամութիւնն կասկածելի է, անիկայ ծածուկ Մսրայ սուլթանին դաշնակից

1 Ո՛վ կարաւան: 2 Իառ. առաւ:

է։ Այս բանը իմանալով՝ ղանին քով գտնուած Մեծ Հայոց ազնիւ ճշմարիտ ազգասէր իշխանք՝ ծածուկ գրերով իմացուցին Հեթմոյ. և որչափ այլ եղած դիպուածոց համար ցաւակից կ'ըլլային, դեռ կու համարձակէին ըսելու, թէ Սուրբ Թագաւոր, աւելի լաւ է մէկ որդւոյդ մահն, և միւսոյն գերութիւնն, քան քու և բոլոր ազգիդ, զօրօք և եկեղեցեօք կոտորած և աւերածն. զգոյշ կեցիր, չըլլայ թէ Եգիպտացւոյն կէս աւերակ տուն մ'այլ տաս. ապա թէ ոչ՝ անհաւատից խօսքը ճշմարտած կ'երևիս, աշխարհքդ կու փճացընես, զմեզ այլ ամօթ և մահապարտ կ'ընես։

Այսպէս դժուարութեամբք պաշարեալ Հեթում, թէ թագաւորութիւնը կ'ուզէր ապրեցընել և թէ որդին. աւելի յայտնի թշնամւոյն վըրայ վստահացաւ, քան կասկածոտ բարեկամին (Թաթարին). և ծածուկ դեսպաններ ղրկելով Պիպարսայ՝ հարցուց թէ ի՞նչ կ'ուզէ Լևոնի ազատութեան փոխարէն։ Պիպարս պահանջեց անոր սիրելւոյն տեղ՝ իր սիրելւոյն ազատութիւնը, այն Կարմիր բաղայն՝ որ դեռ Թաթարաց քով էր. երկրորդ, այն բերդերը՝ զոր Թաթարաց օգնութեամբ իրմէ առեր էր Հեթում՝ ետ դարձընել։ Հեթում դարձեալ ծերութիւնը և յոգնութիւնը մոռնալով՝ գնաց Աբաղա ղանին, և գանգատելով Պիպարսայ վըրայ՝ իմացուց անոր պահանջմունքն այլ. Աբաղա մէկէն յանձն չառաւ թողուլ զՍօնգօրն. բայց Հեթում յետ դարձին 'ի Կիւլիկիա՝ եղբօրորդւոցը մէկը խպւրեց առ ղանն, և վերջապէս բերել տուաւ ղանիկայ. որ և ինքնին գրեց առ Պիպարս և իմացուց Հեթմոյ ձեռօք ազատիլն 'ի Թաթարաց։

Այս ժամանակներս Պիպարս ելեր եկեր էր Անտիոքը պաշարելու և քրիստոնէից ձեռքէն առնըլլու, և առաւ այլ։ Հոն իմացուց Հեթում որ

պատրաստ էր խաւրելու իրեն իր բարեկամը․ բայց անոր հետ ուզած բերդերը տալու կու դըժարէր։ Այն ատեն Պիպարս իրեն գրեց․ «Լաւ » մտածէ, Թագաւոր, թէ որ դու քու որդիդ և » Թագաժառանգդ ազատելու համար այդչափ » կու դժուարիս, մինչ ես այլ չե՞մ կրնար աւելի » խստանալ իմ բարեկամիս վրայ, որուն հետ ա» րենակցութիւն այլ չունիմ․ ինչ որ կ'ուզես ըրէ » Սոնգորը․ բայց գիտցիր որ մեր հաշտութիւնը » աւրող դու կ'ըլլաս, և ես ասկէ դառնալուս ա» տեն՝ կու գամ վրադ »։ Այս պատասխանէն ետև այլ ուշանալու և որոշելու բան չէր մնար․ Հեթում յանձն առաւ պայմանները, և Անտիոքայ մէջ դաշնադրութիւն մ'ըրին, և երկու կողմէն խաւրեցին խնդրուածները, հանդերձ ընծայիւք։

Յետ քսան և երկու ամսոց դարձաւ գերեալն Լևոն 'ի Կիլիկիա, և հետը իր հօրեղբօրորդին և իրենց ձորտերը։ Հեթում բոլոր իշխաններովն և աշխարհագումար հանդիսիւ՝ որով ճամբայ ընդառաջ գնաց որդւոյն, որ անկէ ետև իրեն քանի մը որդիէ աւելի կ'արժէր։ Արդեօք ծեր նահապետին Յակոբայ՝ Յովսեփայ ողջ ըլլալն լսելով Եգիպտոս երթալ և ուրախանա՞լն, թէ Հեթմոյ իր Եգիպտոսէ և նոյն իսկ Յովսեփայ գրուած բանտէն[1] ելած եկած որդւոյն տեսութեամբ՝ փոխադարձ ուրախութիւնն աւելի՞ էր․ ես չեմ գիտեր, և ոչ ոք գիտէ․ և ոչ իսկ այն իրարու պըլլուած երկու սրտերն, որ կու զգան և չափը չեն գիտեր։․․․ Երբ մտան 'ի Տարսոն Թագաւորական քաղաքն, ամէն կողմէ ժողոված վանականք և աշխարհականք եկան յուրախակցութիւն․ և երբ մտան յարքունիս, առաջին հանդիպողն եղաւ անշուշտ ծաղկահասակ պարկեշտ կին մը՝ ըն-

1 Այսպէս կ'աւանդեն պատմիչք մեր։

ծայելով իր հետ 'ի համբոյր Լեւոնի՝ իրենց բազմապատուղ սիրոյն երկու նախընծայ երախայրիքը՝ հեզանազիկ Զապլունը, և թագի պայազատ 3-4-ամեայ Հեթմիկը[1], զոր այն սև պատերազմէն քիչ առաջ 'ի լոյս ընծայեր էր մայրն, Կեռան՝ տիկնաց տիկին՝ դուստր իշխանին Լամբրոնի։

Այսպէս Հեթում հանելով ըստ երգչին՝ ոսկ-փին մուրտափին, տարիներով փափագած ուրիշ մէկ կամքն այլ ուզեց կատարել. 46 տարի գլուխը ծանրացած թագը՝ գնել 'ի գլուխ Լեւոնի, և երթալ հանգչիլ յաւիտենականութեն նախափոսնքը, միայնարան մը։ Լեւոն հրաժարեցաւ լալով, աղաչեց զհայրը, որ չստիպէ զինքն իր կենդանութեան ատենն անոր աթոռը նստիլ. բայց հօրը յօգնութիւնն և ներքին փափագն աւելի ստիպողական էր. անշուշտ հեռուէն ձայն մ'այլ կու լսէր սա փութալու, զոր ուրիշներն չէին հասկընար։

Յաջորդ տարին դարձեալ և վերջին անգամ երկայն ճանապարհորդութիւն մ'ըրաւ առ ղանն Ապաղա, նախ շնորհակալելով Լեւոնի ազատութեան պատճառ ըլլալուն. և երկրորդ իր հրաժարելու և անոր թագաւորութեան հրաման և հրովարտակ ուզելով. զոր և առաւ, փութացաւ եկաւ յարքունիս, ժողով ըրաւ և կամաց ակամայ բռնադատեց զԼեւոն յանձն առնուլ իշխանութիւնը, եթէ և իր թողած թագը գնել չէր ուզեր իր կենդանութեան ատեն։ Ծիրանեաց ու բեհեզին հետ թօթուելով ամեն աշխարհական հոգ և մտածմունք, անկէ ետև վանքեր և անապատներ կու պտըտէր, երկրորդ և անանց թագաւորութեան մը պատրաստուելու. որոյ համար ճգնողական զգեստով այլ զարդարուած և անունը Մակար դրած, կու սպասէր հանդերձեալ հրաւի-

1 Հեթում Բ թագաժառանգն. որ և կրօնաւոր եղաւ։

րակէն, որ և չուշացաւ. վէրք մը փութացուց ըզմահը (28 հոկտ. 1270), և հասուց զինքը իր փափագած և անխռով հանգստեանը. Թողլով զմարմինն իր սիրելի Դրազարկ վանաց մէջ՝ սիրելագոյն անձին քով, իր սրբակենցաղ կենակցին Զապէլ Թագուհւոյն, որ իբրև քսան տարի իրմէ առաջ հոն արդարոց քունը կու վայելէր։

Լևոն Բ յետ երկայն և ծանր սգոյ, աղաչելով և ստիպուելով իր բոլոր աշխարհքէն և յօտար Թագաւորաց և դրացեաց, հազիւ յանձն առաւ հօրը Թագն 'ի գլուխ դնել. և անոր նման պէսպէս դիպուածներու և կռուց մէջ Թագաւորելով, նոյնպէս սիրելի եղաւ ազգին և պատուելի օտարաց. մանաւանդ փոյթ և սէր ունելով եկեղեցեաց և վանաց և գրագիտաց, որոց առատապէս նուէրք կու տար, ոչ իր երկրին մէջ միայն, այլ և 'ի Մեծ Հայս և 'ի գաղթականս յԻտալիա. ուր և Բերուժիա քաղաքին Հայոց եկեղեցւոյն նուիրած Ճաշոց գիրքը՝ իր ընծայագրովը կայ մինչև ցայժմ։

Լևոնի Թագաւորութեանը հինգերորդ տարին՝ իր գերող Եգիպտացւոց հետ պատերազմելով և վռնտելով, վերջապէս յաղթական պատերազմէն դարձած՝ իրմէ երիտասարդ ձիէն վիրաւորուելով, մեծաւ փառօք մեռաւ ծերունի սպարապետն՝ հօրեղբայր Թագաւորին՝ Սմբատ (1276), յետ մահուան ամենայն համամայր եղբարցն, որոց անդրանիկն էր։ Իսկ Լևոն յետ քսանամեայ Թագաւորութեան վախճանեցաւ ('ի 6 փետր. 1289). որոյ քաղաքավարութեան ամենայն դիպուածները պատմելու համար՝ ինչուան 'ի լոյս հսկելն այլ չիբաւեր։... Բայց արդէն մեր հսկման կանթեղին կու կածկըտայ, և կրակարանս 'ի մոխիր կու դառնայ։ — Գիշեր բարի։...

# Է

# ՍԿԻԶԲՆ ՏԱՐՒՈՅ

## ԵՒ

# ՄԱՐԴԿՈՒԹԵԱՆ Ի ՀԱՅՍ

## *Մարտի 9–21*

*Ահաւասիկ Մարտ ամիս, որուն սպասեցինք չորս ցուրտ և երկայն ամիսներ. բոլոր բնութիւն կու հառաչէր կու կանչէր զՄարտ. ոչ իբրև տարւոյ գեղեցկագոյն ամիսը, այլ պատճառ մերձաւոր գեղեցկութեանց. ոչ իբրև զապրիլ գալար, կամ գունաւոր իբրև զմայիս, ծաղկազարդ և պտղացոյց, այլ այդ ամենայն շնորհաց նշան տուող. և ծնող մանկագոյն և զուարթագոյն եղանակի տարւոյն, — գարնան: Գարունն դեռ եկած տիրած չէ, այլ ահա կու դայ և յառաջէ, և ձմեռն երթայ և հեռանայ: Մեր կրակարանին ժամերն կու կարճընան. առաւօտն կու կանխէ, իրիկունն կ'ուշանայ: Ցորեկն աճելով՝ իր թագաւորին (արեգական) ճառագայթներովը կու զարդարի. օդն կու զգայ և կու պահէ զտաքութիւն. կու զգան ջուր և հող. ցամքած, սեցած, պնդացած երկիրն՝ ձմեռուան ձիւնը և եղեամը կու հալեցնէ և կակղանայ. և ահա հինգ վեց ամիս իր*

ծոցը թողեալ թաղեալ սերմանք, թմրեալ թոռ-մեալ տունկք՝ ծայր արձըկեն, կանաչն կ'ընծայուի, կարմիր կու գայ, ծաղիկ կ'երևի։

Իրաւ գեռ մեր բարձրագիր աշխարհին ամեն տափերն այլ իրենց կերպարանքը չեն փոխեր, և այս շնորհքներն չերևիր վրանին. գեռ ձիւն և սառն յամառեալ կու բռնեն զսար ու ձոր, բայց ամենևին անզգայ այլ չեն. ալևոր ժայռերն սկըսին սև խայծ առնուլ. հողն թէ և ոչ գալար՝ գոնէ կու յայտնէ զինքն և կու ջանայ թօթուել վըրայէն ճերմակ թանձրութիւնը։ Մեր հիւսիսային խորահովիտներն, ևս առաւել արևելեան և հարաւոյ եզերքն՝ կ'առնուն բարեխառն կլիմայից հաւասար գարնան գոյն և շնորհք. որք արդէն մեր դրացեաց և մեր դէպ 'ի հարաւ գաղթական եղբարց երկիրներուն վրայ համարձակ կու փայլին, և զուարթացեալ բնակիչքը 'ի գործ և 'ի ըզբօսանս հանեն։ Ահա Թադոս տիրոջ երգաձայնն այլ Երուսաղեմէն կու գայ.

Հա՛ մըտաք յամիս մարտին.
Ծառերն ամենայն ծաղկին.
Հաւըն գայր գարնանային
Լոյսն ելնէ Հայոց զատկին։....

Մենք՝ թէ ծաղիկը և թէ լոյսն ամենուն հաւասար մաղթելով՝ լսենք ուրիշ ճարտարագոյն երգչի և բազմարուեստ անձի մ'այլ որ Տիգրանակերտի կողմերէն կ'երգէ. նոյնպէս մարտի ծաղկանց հետ խառնելով զատկին յիշատակը.

Մարտըն կու գայր ծաղկըներով,
Երկնից հաւերըն կարգալով,
Հրեշտակապետք փառըս տալով.
Յորժամ Հայոց զատիկըն գայր։
Բարկ արեգակըն ծագեցաւ.
Սառնիկ ձըներըն հալեցաւ.

Գառն ու մաքին ընծայեցաւ.
Յորժամ Հայոց զատիկըն գայր։
  Ամպ ու երկինքըն խիստ գոռաց,
Ողորմութեան ցօղըն ցօղաց,
Ծով ու գետերըն խիստ ծըփաց.
Յորժամ Հայոց զատիկըն գայր։
  Աղբերակունքըն յորդորին
Ծառ ու ծըղերըն զարդարին.
Խոտ անասունքըն կերակրին.
Յորժամ Հայոց զատիկըն գայր։
  Մարգապէս է դատեր մեղուն,
Թողվեր ծաղիկն ի լեռներուն.
Ոչ վախենայ ի մեռելուն,
Յորժամ Հայոց զատիկըն գայր։
  Պիւլպիւլ զումրին՝ առաւօտուն
Եկեր դարձեր վարդին հոտուն,
Գանկատ կ'աներ նա ի հողմոյն,
Յորժամ Հայոց զատիկըն գայր։
  Կաքաւըն գայր սարէ ի սար
Կարկաչելով ի ձորն ի վայր,
ԶԱստուած օրհնէր ինքն անդադար,
Յորժամ Հայոց զատիկըն գայր։
  Հաւ ու ձագերն հաւասարական
Սաղմոս ասէն նոքա լըման,
Աղաղակէն առ տէր միայն.
Յորժամ Հայոց զատիկըն գայր։
  Դաշտ ու սարերըն նորոգին
Եւ զերդ նոր հարսըն զարդարին,
Ի յԱստուծոյ փառաւորին,
Յորժամ Հայոց զատիկըն գայր։
  Քար արտասուս բղխէ ըզջուր,
Որպէս ըզծով եղեւ աղբիւր.
Վարդ ու ծաղիկն է համասփիւռ.
Յորժամ Հայոց զատիկըն գայր։
  Երուսաղէմ քաղաքն այսօր,
Աշխարհս ի հոն երթան յուսով։

Սուրբ Յարութիւն լցվի լուսով,
Յորժամ Հայոց զատիկըն գայր:
Հայ ու Հոռոմըն խաչապաշտ
Ամեն բոպիկ ու գլխիբաց
Ուրախանան լուսոյն դիմաց.
Յորժամ Հայոց զատիկըն գայր:
Տէրըն տացէ խաղաղութիւն
Եւ աշխարհի ուրախութիւն.
Հոտըն կու գայ անմահութիւն,
Յորժամ Հայոց զատիկըն գայր:
Իմաստասէրք ուրախանան
Եւ աստընվորըս լխանան,
Ամեն մեղաց ձեռք լըւանան,
Յորժամ Հայոց զատիկըն գայր:

Եւրոպիոյ մէջ այլ կան աշխարհ.ք՝ ուր գարնան գալը հանդիսիւ կատարեն զատկի օրերը, բնութեան և շնորհաց հաճոյագոյն երկու յիշատակները յիրար զուգելով, զգարուն և զզատիկ. ինչպէս մեր երգիչն այլ, որ է ըստ ոմանց[1] արքեպիսկոպոսն Ամդայ, Մկրտիչ Նաղաշ, Թերևս մեր ամենէն նշանաւոր և ճարտար անձն ԺԵ դարուն մէջ: Ինքն հայկական Միջագետաց ծնունդ և հոգևոր տէր բազմաթիւ վիճակաց այն կողմերուն՝ Հայաստանի շատ գաւառներէն առաջ կու տեսնէր գարնան բերքը. և մեզի հետ կ'ողջունէր այս օրերս, և մեզմէ առաջ այլ՝ բաբելական կամ լալական ուռեննեաց երկայն երկայն խարտեաշ խոպոպները, լելակին տերևները, լորւոյն (tilleul) կարմիր բողբոջները. հոն արդէն պարկեշտ մանուշակն կապոյտ աչուըները բացեր է իր անխնամ մենարանէն, անուշիկ հոտ մը խառնելով

1 Աւելի հաւանական է թէ հեղինակն ըլլայ Մ[illegible] [illegible]:

անուշիկ հովի մը. և եթէ տապատակող գնդի մը վերջամնաց զօրաց նման՝ յանկարծ բարբարոս հով մը չփչէ, օրէ օր բուսաբերութիւնն կու յառաջէ, և գրեթէ դիտող աչք մը չիկրնար համնիլ անոր շուտ շուտ զարգանալուն։

Արդ անտարակոյս բնութիւնն կու նորոգուի, ծերացեալ տարին կու վերջանայ, կամ նորէն մանկանայ. եղանակաց և ժամանակաց սկիզբն դարձեր է։ Արժան էր որ այս բնութեան նորոգութեան եղանակին՝ սկսէին ժողովուրդք իրենց քաղաքական տարին, և գարնան գիշերահաւասարին կարգել իրենց կաղանդը կամ խնդարար նուիրամասակը։ Յայսմ մասին շատ խելօք և իրաւամբք գործէին հին ժողովուրդք, որոց առջև մեք ծաղկեալ նոր ժողովուրդքս՝ անտեղութեամբ անյարմար միջոցէ մը կու սկսիմք մեր տարին, (ձմեռնային արևադարձէն 10 կամ 20 օր վերջը, 1 յունուարի)։ Այն հին ազգերէն մինակ քիչ շատ անփոփոխ մնացած Հրեայն՝ մինչև ցայսօր իր սրբազան տարին կու սկսի գարնան հետ. միայն թէ տարին արևու հետ համեմատելու տեղն՝ ամիսներն այլ լուսնի հետ կ'ուզէ յարմարցընել, որով ոչ ճիշդ և ոչ միշտ գարնան հետ կու սկսի տարին։ Բարեբաղդաբար, յայսմ իր հետ և իրմէ հին ազգ մ'այլ կայ՝ որ նոյնպէս իր հին սրբազան տարեմուտը հաւատարմութեամբ կու նշանակէ իր տօմարին մէջ, և մինչև ցարդ միշտ արժանապէս կու սկսի այդ տարին՝ երբ արեւն անոր և իր սիրական Խոյ աստեղատունը մտնէ, որ է ըսել սոյն օրս գարնանամտի, (9 մարտի կամ 21 ըստ նոր տոմ.)։ Այս ազգս՝ որ յայսմ մասին աւելի քան զՀռոմս և զՀելլէնս՝ իմաստասէր մանաւանդ թէ ճշմարտասէր գտնուեր է, և այս գիտը պահեր է՝ թերևս յանգէտս օտարաց, Հայ ազգն է. որոյ համար իրաւամբ պարծելով իր հին հեղինակաց

մեկն, անոր աստուածատուր ձրից մեկը սեպելով իր տօմարն այլ, կ'ըսէ համարձակապէս, թէ Աստուածմէ առին «զտումարն, անդ. Մովսէս, աստ» ՀԱՅԿՆ յառաջ քան զնա»: Հայոց քաղաքական սովորական տարին ալ, ըստ ամենայն հին ազգաց (որոց ռամիկն ոչ երբէք աստեղաբաշխ կ'ըլլայ) շարժական և փոփոխական էր, նահանջ չըլնելով· այլ սրբազան տարին՝ հաստատուն է· որոյ սկիզբն ոչ ըստ քաղաքական տարւոյ, Նաւասարդ ամիսն է, լատինաց օգոստոսի 11-23ին հաստատեալ անշարժապէս, այլ բուն արեգ ամիսն, ԱՐԵԳ: Բայց օրացոյցդ և նայէ, կու տեսնես որ Արեգ ամիսն Խոյի տանուտէրութեան հետ կու սկսի, որ է կէտն գարնանային գիշերահաւասարի· և ուրախութեամբ պարծէ նախնեացդ վրայ, որ այս գեղեցիկ բնական ճշմարտութիւնը անփոփոխ պահելով յաւուրց ջրհեղեղին՝ հասուցեր են մինչև 'ի մեզ, և մեզմով օտարաց, առեալ իրենց գերադիւցազն նախահօրմէն, 'ի Հայկէն· որ ոչ միայն ճարտար շարժիչ էր աղեղան, այլ և թուոց և չափուց: Միանգամայն և ցաւէ որ չեմք կրնար դեռ 'ի գործ դնել և զուգել այս հին տօմարը նորոյն հետ և վարել: Քաղաքական տարւոյ սկզբան հանդիսից, այսինքն Նաւասարդին, փոքր 'ի շատէ տեղեկութիւն ունիմք· այլ կրօնական տարւոյն և Արեգին սկզբան հանդէսներն՝ Հայկազանց խորհրդապաշտ քրմարանաց հետ ծածկուած են մեզմէ: Շատ է դիտելն և տեսնելն՝ որ իմաստութեամբ գարնան սկզբան հետ Արեգին սկիզբն այլ զուգած և նշանակած է Հայադիրն:

## Բ

*Նոյն Հայադիրն յափշտակելով զմեզ 'ի հնութիւն ժամանակաց, ներելի կ'ընէ թողլու այսօր նորագոյն յիշատակները, և հնութենէ հնութիւն ելնել 'ի վեր քան զարեգն և զսկիզբն հայկական ամսոց, և կու նշանակէ այսօր յիշատակ մ'այլ, որ ոչ մեր հիմկու աշխարհիս դարուց մէջն է, և ոչ այլ անկէ առջինին, այլ երկու աշխարհաց միջոցն կրնայ ըսուիլ, նախաջրհեղեան և յետջրհեղեան աշխարհքները միացընող կամրջոյն վրայ. որ է ծեր նաւուղին՝ Նոյի՝ տապանն։ Սուրբ գրոց հետ հաշուելով անոր 'ի տապանը մտնելուն օրը, ըստ սրբազան ամսոց Եբրայեցւոց (և ոչ ըստ քաղաքականին՝ որպէս ոմանք կ'ընեն) ջրհեղեղին գալը և դադրիլը, տապանին նստիլը 'ի լերինս Արարատայ, պատուհանին բացուիլը, և այլն, այս օրուանս կու հանդիպի տապանին ձեղուան բացուիլն, այսինքն վրայի ծածքին։ Տապանին 'ի լերինս Հայոց նստելէն ինչուան լերանց գլուխներուն ջրէն դուրս ելնալը՝ երկու ամիս անցաւ, յորմէ գուշակուի տապանին մեծութիւնն և բարձրութիւնն. յետ 40 աւուրց բացուեցաւ անոր պատուհանն, վասն զի ջուրն անկէ այլ վայր իջեր էր. և իբր յետ ամսոյ մը, այս եղանակաց նորոգութեան օրը՝ բացին արգելականքն տապանին վերնածածքը, և իբրև տան դարպասներու կամ դիտանոցի վրայ ելնելով՝ տեսան «զի նուազեալ » էր ջուրն յերեսաց երկրի». Նուազեալ էր այլ ոչ ցամաքեալ բոլորովին. վասն զի առոր համար դեռ երկու ամիս այլ պէտք եղաւ։ Ի՞նչ հիանալի և սրտառուչ տեսարան։ Այն լերանց կողն՝ որոց տափի մը վրայ նստեր էր տապանն, կ'արգի-*

լէր համարձակ տեսութիւնը՝ 'ի պատուհանէն. անոր համար Նոյ կու ստիպուէր թռչուններ արձկելով անոնց դառնալ գալէն կամ չդառնալէն իմանալ ջրոց ցածութիւնը և երկրին ցամքելուն չափը։ Իսկ հիմա իր 30 – կանգնեայ նաւատան դիտանոցին վրայ ելած՝ իր համբերող ընտանեօքը, կու տեսնէ այն ամրակերտ ընդարձակ նաւը ծովային թերդի մը պէս ամենաբարձր լեռնատափից միջոց նստած. որոց ետեւէն՝ դէպ յարեւելս, յարեւմուտս և 'ի հիւսիս դառնալով՝ Հայաստանի աւելի կամ պակաս բարձր լեռներն կ'երեւին. ոմանք ամենեւին լերկ ու մերկ նոր ջրէ դուրս ելածի նման. ոմանք քանի մը ամսական արեւու տաքութեամբ սկսած իբր աղուամազով մը ծածկուիլ բարակ կանաչութեամբ, որոց վրայ ծիրանափայլ ծիծաղի արեգակն 'ի Խոյի աստեղատունէն. անոնց մէջ այլ կ'երեւին խորաձորք և հովիտք, և քանի մի դաշտք՝ իբրև աշնան վերջին տորած պատրաստած սերմնացան և անբոյս սևարտեր։ Իսկ հարաւային կողմէն կ'երեւին ծովածաւալ դաշտք և անապատք Միջագետաց և Ասորեստանի, որ յիրաւի դեռ, թէ ոչ ծովու՝ գոնէ ճահճի պէս կու ծածանին, և տեղ. տեղ ցամքած, տեղ տեղ ջրածածուկ, արևուն զարնուածքներէն իբրև փռած հայլիներ կու ցոլանան։ Երկու ամիս Նոյեանք տապանին երդիքէն կու դիտեն այս տեսարանը, մանաւանդ թէ միշտ փոփոխեալ տեսարան մը, ջրոյն օր ըստ օրէ քաշուելովը, և արևուն օր ըստ օրէ տաքնալով՝ և այն դաշտաց վրայ տեղ տեղ երևցած տխրալի դէմքերը, աւերեալ աշխարհի և խղդուած հասակաց և գեղեցկութեանց մնացորդները բոլորովին քայքայելով, ծածկելով, և թողլով միայն (տխրագոյն մնացորդ) չոր ու ճերմակ ոսկորներ, այն հեշտամոլ փափուկներուն, և այն յանդուգն հսկաներուն՝

որք կարծեցին թէ միայն երկրիս վրայ է մարդուս վիճակն. և անիծեալք յերկնից՝ երկրէս պլլտուրս 'ի ծոց անդնդացեալ ծովուն ծածկեցան, կերակուր կիտից և վիշապաց. հազիւ թողլով սակաւ ինչ նշխարքնին ծովէն փախած՝ իրենց հին բնակարանաց քով. որոց հիմունքն անգամ տակնուվրայ եղած հողուն հետ խառնուած կորած են։ Եւ երկիր երկրորդ անգամ կ'երևի «աներևոյթ և անպատրաստ» անապատ մը ամայի, անմարդաձայն, անկենդանի. յորոյ վրայ հազիւ իբրև պղտի շարժուն գծեր կամ բծեր՝ տապանին պատուհանէն արձըկուած թռչուններն թափառելով կ'անցնին՝ դադար կամ բոյն մը փնտռելու։...

## Գ

Որչափ տարբեր էր այս երևոյթս երկրի՝ այն առաջին սկզբնական անպատրաստ վիճակէն եղած և նորակերտ զարդարածէն. երբ ձայնին և մատին արարչապետին՝ հինգ աստուածային օրուան մէջ՝ գործելով և ներգործելով, փոխեց զտարերս երկրի 'ի բոյսս և 'ի կենդանիս, պատրաստելով 'ի վայելս գերագոյն արարածոյ մը՝ զոր անոնցմէ ետև պիտի ստեղծեր. և որոց այսօր իսկ յիշատակ է ըստ Հայադիր կարգի՝ գարնանամուտ և բացման տապանին հետ. այսինքն Արարչագործութեան, որոյ սկիզբն յ'17 ամսոյս նշանակի և վերջն 'ի 22, ստեղծմամբ մարդոյն։...

Ստեղծումն մարդոյ. — Ի՜նչ մեծ և արժանաւոր յիշատակ. ոչ այնքան հնութեամբ, որքան հիացմամբ մտաց և քննութեամբ։ Ո՞վ կրնայ անտարբեր կենալ երբ իրեն ծագմանը, և առաջին ծագման խնդիր մը ընկնայ 'ի միտքը։

Նաւ հեղ լեռնադաշտակի մը վրայ վայրի

կաղնին աճանալով ինչուան հարիւր ոտք բարձրութեամբ, որուն տերևազարդ թևերուն բոլորտիքն 5-600 և աւելի ոտք կը շրջապատեն, և շքին տակ հովիւ մը բոլոր իր հօտովն կ'ապաստանի, և որոյ կոթընած բունն՝ պապուն պապուն այլ յենարան և հովանի եղած է. Հիանալով այդ հին ու նոր հսկայ հասակին վրայ, որ ինչուան եօթ ութ հարիւր նոր գարնան ծիծաղեր և նոր ձմերանց դիմացեր է, զարմացմամբ հարցեր եմք. Ուսկից և ի՞նչպէս առաջ եկած է. — և աւելի զարմացմամբ լսեր եմք՝ թէ պզտի խողակէ մը, բթաչափ կաղինէ մը առաջ եկած է այդ ահեղ հսկահասակ բուսականն նահապետն: Հապա այդ կաղի՞նն. — այն այլ ասոր նման և ասկէ առաջ հսկայ ծառէ մը. — այն հի՞ն կորած վերցուած ծառն այլ ուրիշ խողակէ մը. և այսպէս մէկմէկէ: Վերջապէս, մանաւանդ թէ սկզբնապէս, ամենէն առաջ ո՞րն էր, կաղնի՞ն թէ կաղինն, ծա՞ռն թէ կուտն. կամ որ նոյն է՝ ըստ բիւրբայ փիլիսոփայից, հա՞ւն թէ հաւկիթն: Իրենց խնդիրքն և քննութիւնք դեռ այս մեծ հարցման պատասխանը չեն կրցած տալ. և դեռ հաւերը թուցընելով՝ հաւկիթները գլորցընելով առաջ կ'երթան: — Մենք հաւանեալ և հաստատեալ եմք մովսիսական աստուածաշունչ գրոց պատմութեան, որ ամենէն առաջ մեզի ցուցընէ զանեզերս՝ իբրև ամենածրար ձու մը ստեղծուած յանժամանակէն Աստուծոյ. որոյ Հոգին՝ իբրև հոլաթև համասփիւռ հաւ մը՝ գրգայր 'ի վերայ անդնդապատոյն տարուբերած տարերացն, իւր կամքով և հրամանաւ կոչելով և կոկելով 'ի զանազան ձև ու բնութիւն. որով միանգամայն կերպացաւ կաղնին առանց կաղինի և հաւն առանց հաւկըթի:

Մեր սկիզբն այլ այս կանոնով եղաւ, բայց

ազնուագոյն կերպով, մեր ազնիւ բնութեան համեմատ: Ո՞վ 'ի հաւատացելոց՝ իր կրօնական և պատմական ուսմանց սկիզբը չէ լսած չէ սորված. բայց անգամ մ'այլ հրաշալի Նախամարգարէին գլուխը, և կարդա քու սկզբանդ սկզբնաւորութիւնը, մարդոյն ստեղծագործութիւնը.

Եթէ ուզես, մտացդ վրայ հեծած՝ թռի՛ր մինչև քու հայրենիքդ, եդեմական սահմանները. և դեռ դրախտին մէջ չիմտած՝ անկէ դուրս և քիչ մը հեռու (բայց մի՛ մինչև 'ի Դամասկոս)[1], ընտրէ գարատափ կամ ձորավայր մը. դիցուք թէ ըլլայ մեր հին Արմանց, (թերևս և Սերմանց) լեռներուն մէջ, որ հիմա Պինկէօլ կ'ըսուին. և անկէ վերանալով պատմական ժամանակաց սկիզբը, տես նկատէ հոն իջած՝ յառաջ քան 'ի Սինա, և յառաջ քան 'ի Քորեբ՝ մէկ մեծ թեթև ու շարժուն բոցան պէս բան մը, իբրև ամպով, ծխով, լուսով, բիւրեղով շաղուած. որոյ միջէն կարծես տեսնել մարդկային կերպարանաց ուրուական մը, որ ծիրանի գօտւոյ նման ընդարձակ գիրկ ու թևեր շարժելով, և իր առջևը եղած կաւային հողի կոշտ մը քրքրելով յիրաւի քեզի մեզի նման նիւթական կերպարանք մը վեր կու կանգնէ: Առջի ստեղծուածներէն տարբեր և ազնուագոյն կենդանւոյ մը կաղապար կ'երևի ասիկայ. հազիւ երկու թաթով գետինը կոխած, ուղղաձիգ կու վերանայ երկնադիտակ բոլորակ գլխով. երկու կողմէն թևեր արձըկած, ոչ թռչելու յարմար, այլ իբրև փարելու իրեն նմանւոյ մը հետ, կամ թէ նոյն իսկ իրեն ստեղծողին՝ երբ ճանչնայ զայն: Տե-

1 Վասն զի ոմանք զԱդամ 'ի Դամասկոս ստեղծուած կ'ըսեն. և անկից, կ'ըսէ մէկն, Աստուած ձեռքը Ադամայ ճակտին վրայ դրած՝ քշեց քանի մը ժամուան մէջ հասուց յԱյրարատ:

սանձնիս դեռ անկատար կաղապար մ'է․ անշարժ, անյարդ, անզարդ պատկեր մը, բայց Աստուծոյ պատկեր ըլլալ գուշակուի․ կաւանկերտ կարմրակերտ արձան մը, որ կարծես թէ ներսէն կենդանանալու աշխատելով՝ մանր քրտան կայլակներ կու թորէ բոլոր զանգուածէն դուրս, զոր երեկոյեան զովացին հովմիկն կամաց կամաց ցամքեցընելով կու ճերմըկցընէ, կ'ամփոփէ․ և իբրև հեռուէն մօտեցընելով աչքիդ՝ հետզհետէ յայտնագոյն կու ցուցընէ մարդկային կերպարանք․ նախ եգիպտական արձան մը կարծես զայն, վերջը կովկասեան կերտուած մը, յետոյ մօտէ մարդ մը․ հիմա բուն մարդ ըսել չըսել չես գիտեր, վասն զի բան մ'է, բայց ոչ կենդանի և ոչ մեռեալ, ոչ 'ի քուն և ոչ արթուն․ այլ այնպիսի՝ որ ոչ անուն ունի և ոչ ճիշդ պատկեր մը՝ մեր հիմակուան գաղափարաց մէջ։ Իսկ հրաշագործ ճարտարապետն՝ իբր թէ պահ մը կիսկատար թողլով իր ամենէն զարմանալի շէնքը՝ կու դիտէ անոր չափակցութիւնը, և ծանրութեամբ ու մտածմամբ կ'ուզէ այդ կաւեղէն պատկերին ազդել ողորկութիւն, գոյն, շարժումն, շունչ, կեանք, զգացումն, բան և հոգի․ և այս ամէն ըսածներս՝ իր դիտելուն և հաճելուն տանն՝ կ'ազդէն, կ'երևին իր ձևակերտին վրայ։... Տես, ի՛նչ շուտ շուտ այդոր արտաքին երևոյթն կակղած կոկած սկսաւ փայլիլ, հետզհետէ մոմագոյն, մոխրագոյն, շուշանագոյն, ծիրանեգոյն, վերջապէս մարմնագոյն․ և այնքան բարակ ու փափուկ, որպէս թէ թափանցիկ մաշկ մը միայն ծածկէր ներքին զարմանալի մեքենայն, և իբրև ապակեայ մը տակէ ցուցընէր կապուտաթել ջղեր և երակներ։... Ահա յանկարծ բոլորակ գլխէն ինչուան ոտները ընձուեցան արձըկեցան գունդ գունդ խոպ խոպ փունջեր, բայց իբրև պղնձի անդրիի մը վրայ՝ անշարժ են․ աղօտ աղօտ

արշալուսէ մը ծագած առաւօտու պէս յանկարծ
կ'երևէին բարակ թարթափք և յունից կամարք,
որոց ներքևը երկու մարգարտափայլ գոգք կան,
մէջ տեղուանքն սև ագամանդ. — անշուշտ ճանչ-
ցար աչքերը. բայց անոնք զքեզ չեն ճանաչեր,
քեզի չեն նայիր, չեն շարժիր. սառնամած լը-
ճակներ են, ծածկուած ակունք են, որ կ'ուզեն
լոյս առնուլ և լոյս տալ:... Եղիցի՛ ուրեմն լոյսն,
անհամբերութեամբ կանչես. եղիցի՛ լոյս 'ի վերայ
այդ սքանչելի դաստակերտիդ. եղիցի՛ դա կեն-
դանի պատկեր Աստուծոյ:... Եւ ահա եղև լոյսն
կենդանի: — Կու տեսնես, անդրին մարդ կ'ըլ-
լայ. կ'ըլլայ ըսելու չմնար, կաւէ կաղապարն՝ Ա-
դամ եղաւ: Ի՞նչպէս եղաւ, ուսկի՞ց եկաւ այն
ճառագայթն, այն գոյներն, այն շարժումն....
Դեռ վայրկեան մը, րոպիկ մը, պիկ մ'առաջ
պատկեր էր, հիմա անձն է: Վասն զի հրաշա-
գործն՝ աստուածային երագութեամբը դպաւ
այդոր ճակտին, և մէկէն արձանին մեքենաներն
սկսան շարժիլ: Դիտէ՛ դա գանգուր գիսակներն՝
ի՛նչպէս բարդ բարդ կու ծփան. նայէ դա շիկը-
րակ շրթանց շարժմունքը, դա զմրուխտէ աչաց
հրեղէն թաւալմունքը, երկխորշեայ ռնգանց բա-
րակ շնչառութիւնը, դա գեղեցիկ գլխոյն հեզիկ
պտոյտքը, դա ջաջուռ թևոց թափ տալը. դա
դալոյթ տուող ոտից դոփիւնը, որ ոչ միայն ան-
դրին 'ի պատուանդանէն կտրեցին, այլ բոլոր ան-
ձին ներքին ազդուածքէն ուժ առած՝ այնպէս
սաստկութեամբ մը գետնին թունդ կու տան, որ
օդապարիկ գունտէն աւելի շուտ և բարձր պիտի
ցատքէր յերկնից միջոց, թէ որ դեռ ճակտին վը-
րայ դրուած չըլլար մասն աստուածային. որ իբ-
րև ամեհի երիվար մը՝ սանձով, կամ ծխով հող-
մով զինուած պատրաստ նաւ մը՝ խարսխով, դեռ
բռներ է զայն. բայց այնպէս մը կ'երևի՝ թէ հա-

զիւ և ոչ ընդ երկար կրնայ համբերել բռնուածն ։

Իսկ աստուածպետականն յետին հաճութեան ժայռը մ'այլ տալով, իր անքննելի ծոցէն կու փչէ նորաշէն պատկերին վրայ շունչ մ'այլ. շունչ բանական, աննիւթ և անապական, որով բոլորովին կ'ըլլայ կու կատարուի մարդն. և հաղորդ աստուածային զօրութեան, աստուածային երագութեամբ մը ճանչնալով ինք զինքը, ինչպէս և ուստի ըլլալն, միանգամայն աչքով և շրթամբք, թևօք և ծնգօք, սրտիւ և բանիւ և հոգւով կու կանչէ՝ ԱՍՏՈՒԱ՛Ծ ԻՄ ։

---

Ը

# ԲԱԳՐԵՒԱՆԴԱՅ ԿՌԻՒՆ

## 25 Ապրիլ 775.

« Յակոբա Եփրատայ, 'ի ծաղկազարդ վայել-
» չութիւնն », ըստ. սրբազան երգչին, 'ի ծմակս Ծաղկոտան և 'ի բարձրաւանդակն Բագրեւանդայ, հրաւիրեն զմեզ այսօր հայագիր յիշատակք։ Ի՞նչ գեղեցիկ հովիտ, մանաւանդ թէ ի՜նչ ընդարձակ դաշտ՝ լցեալ զարդուք բուսաբերութեան. զոր կու սնուցանեն հարիւրաւոր ականակիտ վտակք, իջնելով 'ի կողից այլարաբեան լեռնաշարից և Աղթամարայ պարսպափին. որք ամեն կողմանէ շրջապատեալ ձևացընեն այս ձուաձև և տաշտանման հովիտս, իբրև 90 մղոն երկայն արևելքէ յարևմուտք, և 30 մղոն լայն 'ի հիւսիսոյ ընդ հարաւ. և ժողովելով 'ի գոգավայրն և խառնելով ընդ գլխաւոր վտակին՝ կու գետանան կ'ըլլան պայծառն Արածանի, որ է արևելեան օժանդակ և զուգակից եգեմաբուղխն Եփրատայ, որ 'ի Բարձր Հայոց 'ի գագաթէն Կարնոյ կ'իջնէ, և երկուքն այլ 'ի համանուն Ծաղկի լեռներէ։ Եթէ այս մեծ. տաշտաձևիս հարաւային շրթունքն, այսինքն Ապահունեաց (Մէլազկերտ) և Ծաղկոտան (Խամուր, Տիատին) լերինքն՝ ձեղքուելով անցք մը չտային Արածանւոյ, անշուշտ գեղեցիկ և քան

զԱղթամար ընդարձակ ծովակին մը կ'ըլլար Բագրեւանդ. և թերևս երբեմն այնպէս այլ եղած ըլլալը ստուգեն մեզի երկրաբանք։ ... Բայց դու, Հայկակ, դու հոս գուցէ աւելի ծաղկահան կ'ուզես ըլլալ քան երկրաբան. այս հովիտներուս մէջ մնած ատենդ՝ Շահապիվանը կու փնտռես. մեր հին նախնեաց հետ կու փափագիս նաւասարդի աշխարհախումբ հանդէսները կատարել. բայց դեռ իրեք չորս ամիս կայ այն ատենէրուն. ուրիշ անգամ այլ կու գամք 'ի Բագրեւանդ, որ ոչ սակաւ յիշատակներ ունի։ ... Բայց քանի մը ամսէ ետև ամառուան տաքուն՝ հիմկու ծաղկանց գալարութիւնը չեմք գտներ. թէ և այն ատենն այլ ունի իր լեռնաբուսիկ գոյնզգոյն ծաղկներն։

Հիմայ գարնան ծաղկունքն ծածանին փնջիկ փընջիկ, թռչունք ձայնեն մանրամնչիկք, ջրերն կրկըջան զովիկ զովիկ. ո՜ւր էր թէ ազգային գուսանակ մ'այլ երգէր մեզի զգարուն։ — Ձեն պակսէր գարուն երգող Հայ գուսանք, ձեռնաւորք և մշակք, սըրբամօրուս պաշտօնեայք, պատրիարքք և կաթողիկոսք անգամ. այսքան զգալի և շօշափելի բնութեան և վայրաց գեղեցկութիւնն՝ գրեթէ հարկաւ երգիչ և բանաստեղծ ըրած է զանոնք, գոնէ գարուն գովելու համար. բայց Կոստանդին Երզընկացին, իսկաշնորհ, իսկատիպ գուսան 550 տարուան, յանձն չառնուր ասանկ դրսէն դրդեալ քերդող ըլլալն, այլ տեսիլք տեսնելով, լոյս տեսնելով առեր է այդ շնորհքը.

« Այնպէս որ, կ'ըսէ, ես ի յիմ խօսից շարելըն զարմացայ »։

Եւ այսպէս կ'երգէ զգարուն.

Մեծ գոհութիւն, հարիւր հազար,
Մեզ աւետիք է նոր հասել.

Եւ մեզ շնորհեք յերկնաւորէն
Յերկնից յերկիրս ի մեզ հոսել։
Երկիր էր լի մութն եւ մըլար,
Սառն էր կապել եւ պաղ ու քար.
Հանց որ չըկար բոյս մի դալար.
Հիմի՝ ինք նոր է զարդարել։
Ձըմեռըն բանդ էր եւ խաւար.
Գարուն եհաս ու նոր բահար [1],
Ի էառ ի մէնջ գիշերն աւար.
Զի արեգակն է մեզ ծագել։
Երկիրս է մայր անհըմանի,
Զինչ գեղեցիկ իւք՝ ծընանի,
Շատ բարութիւնք յինք սընանի.
Հանց որ փառն գեղեցկացել։
Երբոր հնչէց հողմըն հարաւ՝
Զինչ արտմութիւն՝ յերկրէ տարաւ.
Հանց որ չըկայ տեղ մի ծարաւ.
Ամենն են բարութեամբ լըցել։
Հեզ որոտաց ամբ ցօղաբեր.
Կամար կապի յերկինս ի վեր,
Հոսէ յերկիր ահեղ գետեր.
Հաւսար զերկիր են արբուցել։
Է հարսանիք տիեզերաց,
Է ցընծութիւն պտղաբերաց.
Գոյնըզգոյնով ցեղք ի ցեղաց
Ծաղկունք զերկիր են զարդարել։
Ծովըն դըրբուրդ առնու սիրով,
Խաղան զեռունք յերկիր ու ի ծով.
Ակունքս յորդոր գան պաղ ու հով՝
Եւ ի քարէն յառաջ բղխել։
Ահեղ գոչէն գետերս յոլով
Յորդ ի լերունքս ի վայր գալով,
Գան մին ի մին ծաւալելով,
Սիրով ի ծովն երեւս դըրել։

1 Եղանակ տարւոյ։

Խաղան եղունք եւ այծեմունք ,
Իջնուն ի դաշտ ու յաղբիւրակունք.
Երէվայրիք եւ անասունք
Ի կապանաց են արձակել:
Հաւերըրտ գան քաղցըր ձայնով
Ծիծեռան ի հետ սաղմոսելով.
Գայ արտուտիկըն կարդալով,
Ջառաւօտուն է բարբառել:
Աճումն առնուն եւ ծընանին
Հաւք ու գազանք ու երէվայրին:
Զագօք հաւերտ ելնեն պարին,
Ի են միաբան երամ կապել:
Ծաղկունքըն գան եւ ժողովին
Ի բուրաստան ու ի բաղչանին.
Մէկ մի մըտել ի մէջ ծովին [1],
Տեսն է դեղին պյերեր կացել:
Բլբուլն եհաս շոքարբերան,
Աւետաբեր մեծ յարութեան.
Վարդին եհար կանանչ վըրան
Որ գայ բազմի զերդ հուր վառել:....

Երբ բլբուլն և վարդի խօսք բացուի՝ երգն շատ կ'երկըննայ. ապրի Կոստանդին՝ մեր երգիչն. բայց հիմա հանգչի քնարն, հանգչին ծաղկունքն այլ. վասն զի յանկարծահաս հովու մը պէս օրուանս յիշատակն կ'անցնի հովաէս, և կ'այլագունէ զգարուն: Դաշտիս երկու ծայրերէն կու լսուի խոր դըրդիւն մը, տնաձայն մը, ահեղ շչնկոց մը. լերանց գլխէն փոշեխառն ամպեր կ'ելնեն, անոնց մէջէն ձերմակ փայլակներ. արեմուտքէն եկածն դիմացի արևուն ճառագայթներովը վառվըռած արծաթէ հեղեղ մը կու նմանի, որ Բարձր Հայոց գարերէն փութափոյթ թնդալով

1 Դեղին շուշան կամ Նունուֆար ջրային :

կու Թափի հոս. արեւելեան կողմէն եկածն աղիւ֊սագործաց հնոցէն ելած սեւ ծուխերու պէս կու ծառանայ ու կու ցածնայ... Ասոնք յիրար չմօ֊տեցած՝ մենք մօտենանք պատմութեան ճամբով. անցնինք հազարով տարիներ, այսօրուան ամսա֊կէտին հետ զուգենք տարեկէտն այլ, Քրիստո֊սի 775 Թուականն:

Այս Նշանակեալ տարիս՝ վերջին տարի է կե֊նաց և իշխանութեան երկու մեծ ինքնակալաց, որք մէջերնին բաժնած են արեւելքի բաղդը կամ դժբաղդութիւնը: Մէկն է Կոստանդին կայսրն, անուանի իր պատկերամարտութեամբ և մոլու֊թեամբ, որոց յարմար ստացած գարշելի անու֊նը՝ պահէ մինչև ցայսօր, Կոբրոնիմոս. (.......): Պուլկարաց և պատկերաց հետ կռուելէն՝ ատեն չունէր արևելք հոգալու և պաշտպանելու հպա֊տակները, որոց մէջ սեպուէին և մասն մի Հայոց: Իսկ մէկալն է Էպուսճաֆար Ապու-Ալլահ Էլ-Մանսուր, զոր պատմիչք մեր Ջափր անուանեն, խալէֆայ Արաբացւոց, որ ամիրապետութեան հին աթոռը փոխադրեց 'ի Նորօգեալն Բաղտատ (763), և Կոբրոնիմոսի Թուլութիւնը տեսնելով իր բռնութիւնը տարածեց մինչուան 'ի Կիւլիկիա, որով Մեծ և Փոքր-Հայք այլ ընկան իր ընչա֊քաղցութեան և անգթութեանց տակ. որոց հա֊մար շատ մեղադրուած է բնիկ և օտար պատմիչ֊ներէ. վասն զի համառօտ ըսելով, իր 21 տարուան ու 4 ամսուան իշխանութեան ատեն վեց հարիւր հազար մարդ ջարդել սպաննել տուաւ, կ'ըսեն. որոց մէջ անշուշտ քանի մը բիւր այլ ազգակից պէտք է ողբալ: Այդպիսի ամիրապետ մը ունող ամիրայք՝ անկէ գթասիրտ չէին կրնար ըլլալ: Իր իշխանութեան ատեն Հայաստանի ոստիկանաց մէջ (վասն զի այսպէս կ'անուանէին յԱրաբա֊ցւոց եկեալ կուսակալքն) ամենէն գլխաւորն է

Աբդլլա, եղբայր համանուն նախորդ ամիրապետին, որ ընդհանուր Պարսից և Հայոց կողմանց մեծ կողմնակալ էր. և ուրիշ կամահաճոյ հրամաններէն զատ՝ այս ալ դրաւ իր հպատակացը, որ մօրուքնին ածիլեն, և գլուխնին կանգուն ու կէս բարձր խոյր մը դնեն. այս և ասոր նման պատուէրքներով կու գային 'ի Հայս ոստիկանք և հարկահանք. (ինչպէս Սուլէման, Ջալէհ, Ռուհ, Մուսէ, Մուհամմէտ, Եզիտ, Պէքիր՝ Բաքար ըստ մեր պատմչաց). որք այնչափ կեղեքեցին աշխարհնիս, մինչև շատերն փախչելով գետնի տակ և քարայրներու մէջ պահուըտէին: Ժամանակին հոգևոր տէրն՝ Տրդատ կաթողիկոս, և Հայոց ազգային հոգաբարձուն Սահակ Բագրատունի՝ շատ անգամ բողոքեցին Աբդլլային. իսկ նա ոստիկանները կու փոխէր, բռնութիւնը կու թողուր: Այսպէս յետ վերոյիշեալ Եզիտայ և Պէքիրայ՝ խաւրեց (770) զՀասան-Իպն-Քահդապա (որդի Կահաղբայ՝ ըստ մերոցս), որ հետը բերաւ խորասան-պարսիկ անկարգ գունդ մը, որոյ ըրած չարութիւններէն քանի մը յիշելով ժամանակակից և ականատես պատմիչն (Ղևոնդ), զզուելով կ'ըսէ. «պատմել ոչ կարեմք զազէտիցն պատմութիւն». մեք ալ այնպէս ընեմք, որ արցունքով չիթօշնին արիւնի ծաղկըներն:... Բայց ի՞նչ ընէ խեղճ ժողովուրդն, որ ունեցածը բռնահան հարկահանաց տալէն ետև՝ չունեցածն ալ տալու համար կու ծեծուի, կու կախուի, սառուցեալ լճից մէջ կու ձգուի. ի՞նչ ընէ հին հայութեան մնացած զինուորութիւնն, որ իր եղբարց գառն հեծութիւնը կու լսէ. ի՞նչ ընեն Խրամի և Նախջուանի եկեղեցեաց մէջ այրած նախարարներէն մնացեալ ձիու իշխանները՝ որ իրենց սեփական պայազատութիւնը այսպէս տակն ու վրայ կու տեսնեն. ի՞նչ ընեն մանաւանդ մեծափառ Մա-

միկոնեանքն՝ Արտաւազդ և Մուշեղ, որդիք Հըմայեկայ և Հրահատայ. միթէ վիրաւորեալ առիւծուց նման միայն մռնչէ՞ն իրենց աչաց առջև անապատացեալ հայրենեաց վրայ: — Չէ, այսպէս չըրին. այլ յուսահատութեան մռունչ մը մռնչելով զայրագին սրտիւ, իրենց սրտակցաց ու պատուակցաց ձայն տուին. որք, ըստ ասելոյ պատմըչին, «եղին զոգի 'ի ձեռին իւրեանց, և ձեռնամուխ եղեն յիրս՝ զոր ոչ կարէին վճարել, վասն զի նուազունք էին. այլ սակայն լաւ համարեալ զմահ քաջութեամբ՝ քան զկեանս վտանգաւոր, ձեռնամուխ եղեն»: Նախ եռանդունն Արտաւազդ, անվախ, բայց և ոչ առանց խորամանկութեան իրեն հին նախնոյն՝ Գայլ-Վահանայ, յանդգնօրէն գնաց 'ի մայրաքաղաքն Հայոց՝ 'ի Դուին, ուր արաբացի ոստիկանին փոխանորդ զօրավար մը նստէր, և գրեթէ անոր աչաց առջև իր սակաւաթիւ գունդը ժողովելով՝ սկսաւ զինքը զրահել պատերազմական պատրաստութեամբ, համբաւելով՝ թէ թշնամեաց դէմ պիտի երթայ: Արաբացի զօրավարք՝ իրենցմէ հաւատարիմ կարծելով զնա, միանգամայն և չուզելով իրենք զիրենք վտանգել, թերևս օգնեցին այլ զինքը զինելու. և երբև յառաջամարտիկ գունդ բանակի՝ թողուցին իրենցմէ զատուելու: Արտաւազդ մէկ մ'որ խաբուած բանակին բազմութենէն դուրս ելաւ, մէկէն վազեց դէպ 'ի հիւսիս՝ Շիրակ գաւառ, անկէ. Վրաց ամուր և ապառ կողմերը երթալու. այն ատեն այս գաւառս դեռ իր Անի բերդը իշխանանիստ չէր ըրած, այլ կ'երևի թէ հէմակուան Ռուսաց իշխանանիստն և ամուր բերդաքաղաքն Կիւմրի՝ էր գլխաւոր աւան մը, ուր անիրաւ հարկահան մը նստէր: Արտաւազդ անոր շատ անիրաւութենէն թերևս ոչ շատ պակաս անիրաւութեամբ մը վրէժ պահանջեց. ըս-

պաննեց. և ժողոված ստակները յափշտակելով՝ գնաց Վրաց կողմը, միաբանեալ իշխանազանց հետ մեկտեղ: Արաբացւոց աչքերն բացուեցան. մեկէն Նախնի ոստիկաններէն մէկը զօրապետ ընելով և իրենց ծառայութեան մէջ եղող Հայոց սպարապետ Սմբատն այլ մէկ տեղ առած՝ Արտաւազդայ ետեւէն ընկան, ինչուան Ախլըցխայի կողմերը յարձըկելով. բայց հազիւ քանի մը կտոր բան կրցան աւարել, և յետ դարձան. վասն զի Արտաւազդեանք ինչուան Եգերացւոց երկիրը (Աճարա) գացին, և այն տեղւոյն ու մօտի Վրաց գաւառաց տիրեցին: Իսկ Իպն-Քահդաբա ոստիկանն՝ ուրիշ բան չկրցաւ ընել, բայց եթէ առջի անգութ հնարքը բանեցընել. այսինքն՝ դարձեալ ամեն դի հարկահաններ ղրկել. որք պժգալի պիծակներու պէս ելան ժողովրդեան մնացեալ վաստակը ուղեծուծը քամելու. բայց այս անգամ շատ չյաջողեցան: Վասն զի եթէ Արտաւազդ հեռու էր, մօտ էր Մուշեղ. որ նախ իր երկիրներուն մէջ մտածները հալածեց, և բռնութիւն ընողներն այլ բռնաբար սրով զարկեց. և պահ մը իր ընտանիքը Երասխաձորոյ մօտ Արտագերից ամուր բերդը ապահովցընելով, ելաւ անկէ 60 կըտրիճ առած հետը, մտաւ այս մեր եղած Բագրեւանդայ գաւառը, ուր Էպու-Մճուր՝ փոխանակ հեզաբար ծաղիկ քաղելու՝ բռնաբար հարկ կուպահանջէր. զնա այլ անոր մարդիկներն այլ կոտրելով՝ փոթորկի պէս յառաջ անցաւ. իսկ ծխահալած պիծակներն՝ ահով դողով սկսան ծակերու մէջ քաշուիլ. որով համարձակութիւն առին նեղեալ և լլկեալ փախստականք Հայոց՝ դալու և Մուշեղայ պզտիկ գնդին խառնուելու. որուն համբաւն և սարսափը չորս դի տարածեցաւ. բայց զօրաց քիչուորութիւնն այլ իմանալով՝ ոմանք 'ի Թշնամեաց սիրտ ըրին մէկէն վրան

հանելու և Թերեւս մէկ հարուածով վերցընելու իրենց արգելք և սատակիչ եղողը։ Բայց այնպէս գազանացեալ Մամիկոն մը բռնել՝ շատ դժար և վտանգաւոր փորձ էր։ Այսպէս փորձեցին նախ 200 արաբացի պատերազմողք, որք Կարնոյ քաղ-քէն (Էրզիրում) ելան, աղէկ զինուած և զրա-հուած, իջան 'ի Բասեն, գալու 'ի Բագրեւանդ. գիշերը վրայ հասնելով՝ մտան Խարս գիւղը, (Թե-րեւս Մժնկերտոյ մօտ), և անոր սպգեստաննեայց մէջ փռուեցան, այգեաց պատերը իրենց պատ-նէշ կարծելով։ Իմացաւ Մուշեղ, և հետը քանի մը կտրիճ առած՝ գիշերանց հասաւ հոն. և որով-հետև այդ պատերը հիւսած չէին՝ այլ միայն քար քարի վրայ դիզած՝ ցանկի մը պէս, անոնց տակ նստող և պառկողներուն վրայ փլուց. հոն կա-պուած ձիանին այլ խրտելով՝ սկսան իրենց տէ-րերը կոխկըռտել. գիշերուան, ձիերուն, պատին փլչելուն շփոթութեան հետ մէկտեղ՝ ներս Թա-փեցան Մուշեղեանք։ Եղածն յայտնի է. Թերեւս ոմանք յայլազգեաց կրցան՝ մերկ կողոպուտ փախ-չիլ ազատիլ, բայց շատերն այն քարերուն տակ քնացան, մնացին։

Հապա քիչ մ'ատեն կրցաւ Մուշեղ հանգիստ առնուլ իր ամրոցը, վասն զի այլազգեաց աղա-ղակն կու գուար. Դըւնայ կողմնակալ զօրավարն իր պահապան զօրաց մէջէն չորս հազար կտրիճ ձիաւոր ընտրեց և յանձնեց Էպու-Նէճիպ զօրա-պետին, որ երԹայ ջարդէ ջնջէ ապստամբները։ Նէճիպ իր գունդը անոնց երագընԹաց տաճիկ ձիերուն պէս Թռցընելով հասարակաց դուրան ճամբէն, յԱյրարատայ 'ի Կոգովիտ, անկէ 'ի Բագրեւանդ հանեց, և եկաւ անոր գլխաւոր շին-ուանին մօտ, որ է Բագաւան (Իւչ-կիլիսէ)։ Այս աւանին մօտ, այս Արածանւոյ նախընծայ վտակաց եզերք, այս մօտիկ Նպատ լերան շքին

տակ էր, որ անկէ 400 տարի առաջ ուրիշ Մուշեղ մը, Քաջակորովն Մուշեղ, Շապհոյ արքայից արքային ահեղ բանակը ցրուեց. բայց այն ատեն Հայ-Արշակունի Թագաւորի մը ամբողջ զօրաց սպարապետ էր, և յունական գունդ մ'այլ մարտակից ունէր, և Մեծ Ներսէս մը բազկատարած աղօթաւոր։ Անկէ 200 տարի վերջ՝ ուրիշ Մուշեղի մը վրայ գալով՝ անցաւ Բագրեւանդէն Խոսրով Անուշրեւան, և կոտորեցաւ 'ի Մուշեղայ Եփրատ գետոյն վրայ։ Իսկ այսօր ասանց Թոռանց Թոռան հրահատեանն Մուշեղ՝ 4000 արաբացի սպառազէն ձիաւորաց դէմ ունէր 200 Հայ. քըսանի դէմ մէկ միայն. տակայն ունեցածն բաւական եղաւ իրեն։ Ասոնք յարձակեցան եկողներուն վրայ, շփոթեցին, ցրուեցին, շատերը գետին փռեցին, աւելի շատերը փախուցին. փախստականաց ետեւէն ընկան, որով Ճամբայ հալածեցին դէպ 'ի հիւսիս, ինչուան Արածանի լերան ոտքը. շատերն այլ Ճամբուն վրայ փռելով, և անոնց հետ զօրավարնին ալ. և աւարներով ու ձիոց երամակով յաղթական դարձան։ Այլազգեաց մնացորդքն հասան 'ի Դուին. բոլոր քաղաքը 'ի դող, 'ի սուգ, անէծք և նզովք շարժեցին. և այնպէս ահ ընկաւ մէջերնին՝ որ կարծէին թէ ամեն գանէ Մուշեղը ներս կու մտնէ. և գրեթէ չվստահանալով քաղաքին ամրութեանը՝ ներքին ամրոցը քաշուած սմքեցան։

Այս անակնկալ և գրեթէ անհաւատալի յաղթութիւնն և յաջողութիւնն, և այն ահարկու Արաբացւոց ահաբեկ ըլլալն՝ կրնայ գուշակուիլ՝ թէ երկայն ատենէ 'ի վեր ընկճած ժողովրդեան մը ինչ ազդեցին. ինչպէս համբաւն հռչակուեցաւ. ինչպէս գլուխներ աւքցան՝ խելապատակէն այլ 'ի վեր, մինչև խոհեմութեան և նախահոգութեան ձայները չլսեցին. և զիրար գրգռելով պատ-

շանձէն վեր բաներ մտածեցին. մանաւանդ չափազանց բորբոքեալ ճգնաւոր մը, աւելի սրտին հարցընելով քան Աստուծոյ, զամենքը կու յորդորէր և քաջալերէր, և իբրև տեսիլք տեսած հաւանեցընէր, թէ արդարև ազգին բաղդն հասած է. մի՛ տարակուսիք կ'ըսէր, ձեր մէջէն մէկն բաւական է հազարի դէմ կենալու, երկուքն՝ բիւրուց դէմ։

Յիրաւի շատ դժար էր ռամկաց՝ (յետ տեսնելու որ 200 կտրիճ 4000 սպառազէն հեծեալները վանեց) այս դիպուածին մէջ՝ սրբութիւնը և ստութիւնը իրարմէ որոշել։ Բայց ոչ միայն ռամիկ մարդիկ և առանձին իշխանք միաբանեցան, այլ ինչուան Սմբատ բագրատունի սպարապետն այլ՝ հաւանեցաւ թողլու զԱրաբացիս և միաբանելու ընդ համազգեացն։ Այս բանս յաղթութեան մը չափ արժեց միաբանելոյ. բայց մեծագոյն յաղթութեան մ'այլ կու փափագէին. այսինքն հաւանեցընելու զԱշոտ, նախայիշեալ Սահակայ իշխանապետին որդին. որ չափաւոր տարւոյք, և տարիքէն աւելի փորձ հռչակեալ խելացի մարդ էր. որչափ այլ հայրենեաց փառքը փափաքէր, այլ աւելի անոր ապահովութիւնը կու պահանջէր. կ'իմանար կ'իմացընէր այն ճգնաւորին չափազանց նախանձաւորութիւնը, և կ'ըսէր իրեն եկող իշխանաց և յորդորչաց. «Ո՛վ հայրենասէրք, զգոյշ կեցէք. քաջ էք և եռանդուն, բայց աւելի լաւ է իմաստութեամբ գործել և ձեզմէ առջիններուն փորձը քննել. կամք և կարողութիւն միշտ չեն կրնար իրարու հաւասարիլ. մէկն 'ի ձեր ձեռքն է, մէկայլն ոչ. շուտ և անակնկալ յաջողութիւնք՝ երբեմն մեծագոյն անյաջողութեանց պատճառ կ'ըլլան։ Քանի մը հարկահան և զօրավար զարկիք, քիչով շատերու դէմ կեցաք, և երթալով կու յուսաք շատնալ. սակայն ինչուան ո՛րչափ կրնանք բազմանալ, ինչուան ե՛րբ

միագունդ մնալ։ Դեռ Արաբացւոց մեծ զօրավարն 'ի Դուին է. դեռ 'ի Կարին ուրիշ մեծ զօրավար մ'այլ կայ, դեռ շատ բերդեր անոնց ձեռքն են։ Եթէ բերդերն այլ առնուք, եթէ Հայաստանի մէջ եղած զօրքն այլ հալածէք, դեռ դժուարութիւնը քիչ մը կ'ուշացընէք, վտանգը կը մօտեցընէք։ Ի՞նչ պիտի ըլլայ ձեր բովանդակ գունդն Էմիր-էլ-Մումինեայ տէրութեան ծովածաւալ և ահաւոր զօրութեան դէմ։ Ո՞ր ազգ, ո՞ր տէրութիւն կրցաւ կամ կրնայ անոր դէմ կենալ. Յունաց տիեզերական ինքնակալութիւնն այսչափ անգամ կռուելով՝ չկրցաւ իր կորուսած երկիրներն 'ի ձեռք ձգել. ահա կայսրն Կոստանդին՝ որ մինակ առիւծներու դէմ ելլելով՝ սպաննեց, տեսէք ինչպէս սարսափած՝ թող կու տայ որ ամիրապետն կոխէ իր սահմանները։ Ինքն ծովն ու ցամաքը բաւական ամուր չիգտներ այնպիսի թշնամւոյ մը դէմ, դուք ինչ բանի վրայ դրած էք ձեր ապահովութիւնը։ Արդ եթէ կ'ուզէք ճշմարտապէս հայրենեաց օգուտը, ինչպէս և ես ամենայն սրտիւ, հանդարտօրէն մտածելով կեցէք տեղերնիդ. և ջանացէք իմաստութեամբ դարման տանիլ եղած և կրած չարեաց։ Ապա թէ ոչ, ինծի կ'երևի, թէ կամ յետ մնասակար փորձոյ՝ պիտի յանձն առնուք կորակոր նուաճիլ մնալ տեղերնիդ. կամ յուսահատած՝ միայն զձեզ ապրեցընել ջանալով՝ ինքնակամ թողուլ հայրենիք, տուն տեղ և վաստակ, ձեր հարց քրտինքով ժառանգած բարիքը, ձեր նախնեաց հաւատքով կանգնած եկեղեցիները, և ձեր ծնողաց գերեզմանները այլ՝ ատելեաց ոտից կոխան, և երթալ 'ի ծառայութիւն կայսեր Յունաց, և պանդխտութեամբ կեանքերնիդ մաշեցընել։ Եւ կամ, որ շատ վախնալի է, շուտ կամ ուշ՝ ձեր թշնամեաց ձեռքը ընկնալով՝ չարաչար մահուամբ պիտի [illegible]ուլիք »։

Այս և այսպիսի բանք բաւական չեղան այն տաքցած գլուխները զովացընելու. Թողին զԱշոտ, և եկան իրարու հետ դաշինք դնել, խորհուրդ ընել, հնարք մտածել. այլ ինչպէս շատ անգամ պատահած է և կու պատահի այսպիսի դիպուածոց մէջ, չկրցան միաբանիլ մէկ գործոյ վրայ. ոմանք իրենց երկիրը քաշուեցան, ոմանք ամուր բերդերու ապաւինեցան: Ամենէն տաք գլուխներն որ Մուշեղայ հետ միաբաներ էին՝ զինուոր և ռամիկ, 5000 հոգի գունդ մը եղան. Դուինը թողուցին, գնացին Կարնոյ քաղաքին վրայ, զոր քանի մը տարի առաջ Եզիտ ոստիկանն առեր էր 'ի Յունաց և լաւ ամրացուցեր. Թերևս հիմա մէջը բաւական զօրք չկար, չէ Հայոց Թուոյն՝ այլ օգնոյն դէմ կենալու. բայց պարիսպներն բաւական զօրաւոր էին. բոլոր այն տարի (774) ձմեռուան սաստիկ սառամանիքներէն այլ չձանձրանալով՝ Հայք պաշարեցին կեցան քաղքին քով. և մեծամեծ մեքենաներ կանգնելով՝ կու ծեծէին պատերը. և քանի մը ծակ բանալով՝ կրցան քիչ մը քար թափել 'ի ներս և քանի մը մարդ սպաննել. բայց աւելի սովով կու նեղէին քաղաքը, որ և անձնատուր ըլլալու վրայ էր, երբ յանկարծ մեծ մրրիկ և զօրաւոր հարկ մը հասաւ Հայոց վրայ: Ասոնց հեռանալը յԱյրարատայ, և ոմանց այլ իրենց բերդերը քաշուիլը տեսնելով Դրունեցի արաբացիք, սիրտ առին, չորս կողմէն այլ ժողովեցան, և սկսան այրած սրտով ու ծարաւած սրով մօտակայ գաւառաց մէջ պտըտիլ, և շատ արիւնահեղութիւն ընել. բայց ապստամբները նուաճելու համար ստիպուեցան ամօթով՝ եղածը իմացընել ամիրապետին: Սա վրէժխնդրութեան յարմար առիթ գտնելով, անթիւ զօրաց մինչէն ընտրեց Խորասանիկ կտրիճները, 30,000 հոգի, ձիով և զրահով աղէկ մը

պատրաստուած, և յանձնեց Էմիր Իպն-Իսմայիլ փորձ և հռչակաւոր զօրավարի մը ձեռք։ Որ և հարաւային հովերէն առաջ անցաւ Ասորեստան, և Աղձնեաց կողմերէն գալով մտաւ 'ի Խլաթ մեծ քաղաքն. ժողովելով հաւատարիմ մարդիկ՝ ազէկ մը քննեց տեղեկացաւ Հայոց պատրաստութիւնը, որչափ հոգի միաբան և ուր ըլլալնին, և ինչ ոյժ ունենալնին. զոր 'ի հարկէ շատ քիչ և իբրև ոչինչ գտաւ իր բանակին բազմութեան և կազմութեան համեմատելով։ Հոն 'ի Խլաթ էր այն ատեն խոհական իշխանն Աշոտ. և տեսնելով իր հայրենեաց վրայ եկած չարիքն, և իր խրատած իշխանաց անհաւանութիւնը, սիրտն կ'այրէր կու հալէր, առանց կրակը դուրս տալու. մանաւանդ որ պիտի ստիպուէր Արաբացւոց գործակից ըլլալու իրեն ազգայիններուն դէմ։ Անհնարին տագնապին մէջ առանց ատեն կորսնցընելու ամենայն ծածկութեամբ իմացուց իշխանակցացը՝ Էմիրի պատրաստութիւնը. և ահա ժամանակն է, կ'ըսէր, ցուցնելու ձեր խոստացած հաստատութիւնը, կամ իրարու պաշտպանութեամբ մեռնելու։ Առջի խրատուն մտիկ չըրին դաշնակիցք, ետքինէս կասկածեցան. կարծեցին որ Աշոտ Արաբացւոց հաւատարիմ մնալովն՝ զիրենք խաբել կ'ուզէ և հեռացընել 'ի Խլաթայ. և մաքերնին դրին Կարնոյ պաշարողաց նման՝ այս մեծ քաղաքս այլ առնուլ յայլազգեաց։ Համաձայն Արծրունեաց իշխանն գլուխ կեցաւ, հետն առաւ Վասպուրականի զօրքերէն զատ՝ Ամատունեաց դունդն այլ, Սմբատ սպարապետին Աշոտ եղբօր դունդն այլ, և ելաւ երթալ Վանայ ծովուն հիւսիսային արևելեան կողմը՝ Արծէշ բերդաւանին վրայ, ուզելով հիմնայատակ ընել. անցած տեղերէն ռամիկ հետևակ մարդիկ այլ կու ժողովէր կու խառնէր զօրքերուն։ Երբ հասան 'ի

Բերկրի, Խլաթէն Հայ մը եկաւ նորէն իմացընե-
լու թէ Էմիր զօրավարն մօտ է երեք բիւր և աւելի
զօրքով։ Համազասպ հպարտացեալ՝ զայս այլ
նենգութիւն կարծեց, և փոխանակ պարզևելու՝
պատժեց լրաբերը, և առաջ անցաւ հասնելու
յԱրճէշ։ Աստ բնակիչքն այլ իմաց տուեր էին
Էմրայ, որ բազմութեամբ զօրաց ծածուկ ճամ-
բաներով եկեր ապահով տեղ մը դարաներ էր.
և հազիւ թէ Հայք սկսան Արճէշի բերդը ծեծել,
Արաբացիք դարանէն ելլելով վրանին ընկան, և
անզէն անհնմուտ հետևակ գնդին մեծ մասը ջար-
դեցին, որոց ոմանք այլ փախչելու ատեն ծովը
թափեցան. և այսպէս անխոհեմութեան զոհ ե-
ղան 1500 անպարտ մարդիկ. անոնց հետ իրենց
առաջնորդ չորս ազնուական իշխանք այլ. մնա-
ցեալքն փախստեամբ ցրուեցան։ Այս պատա-
հարս եղաւ ապրիլի 16ին (775)։ Արաբացիք զա-
նոնք երկար միջոց հալածելէն ետև՝ դարձան ան-
կէ մեկայլ ապստամբները փնտռելու. և Խլաթու
և Մանազկերտի դաւառներէն վեր փութալով
թափեցան հոս, ՚ի Բագրևանդ։

Ահա այս էր այն հնոյանման սև ծուխն զոր
տեսանք յարևելից. որ և կոխելով այս ծաղկա-
զարդ վայելչութիւնները, գետոյս աղբերականց
քով՝ Արծնի ըսուած գիւղը իջան. և դադրեցան
զէնքերնին սրելու և մահու գործիքները պատ-
րաստելու։ Իսկ արևմուտքէն փրթած փոքր ար-
ծաթափայլ հեղեղն՝ էր Մուշեղեան գունդն Հա-
յոց, որ պաշարէր զքաղաքն Կարնոյ. և յանկարծ
լսեց Արճիշու կոտորածը։ Յետ այնչափ երկայն
համբերութեան, պզտի գնդով մը այնպիսի մեծ
քաղաք մը պաշարելու և վտանգելու, որսը բռնե-
նելու ատեն՝ սախպուիլ թողուլ, որքան ծանր,
որքան սրտակտուր էր։ Այլ ուրիշ հնար չկար.
ակռանին կրճտելով դարձուցին երեսնին ՚ի Կար-

նոյ. բայց ո՛ւր երթան։ — Երկու ճամբայ կար դիմացնին. մէկն և ապահովագոյնն էր՝ Արտաւազդայ բռնածն, անցնիլ երթալ յարևմուտք և 'ի հիւսիս, Յունաց կողմը մտնել, և յետ այնքան նեղութեանց՝ գոնէ ապրիլ և հանգչիլ։ Իսկ մէկայլն՝ կորիւնը կորուսած առիւծուն ճամբան էր. զօրաւոր թշնամեացը վրայ դառնալ և յուսահատ կատաղութեամբ զարնուիլ, ըլլայ ինչ որ ըլլայ։ Ու այս ետքինը ընտրեցին այն զայրասիրտ ընկերակորոյս առիւծքն։ Կարնոյ լերանց գարերէն թափուիլ 'ի Բասեն, և անկէ այլ Սուկաւ լերանց (Քէօսէ տաղ) կռնակէն ընկնիլ 'ի Բագրեւանդ, քիչ օրուան քիչ ժամուան գործ մը եղաւ իրենց. հոն այլ չգադրելով, ոչ թշնամւոյն բազմութիւնը ուզեցին քննել, ոչ անոր շարժելուն սպասել, այլ դարուդուր գետնի մը վրայ արձըկած հրագունոտ ալէս ցատքըռտելով առաջ եկան, և փոխանակ թշնամեաց սպասելու՝ իրենք անցան գետը։ Թշնամեաց ահեղ բազմութիւնն և աւելի ահարկու պատրաստութիւնն, արաբիկ երիվարաց վազն ու փռինչն, լուսանանիչ վրանաց և դրօշուց շարժիւնն, խառնալուր աղաղակն գոչումն, և պատերազմական գործեաց և թմբկաց որոտումն, փոխանակ զիրենք վախցընելու, այնքան աւելի կատղեցուցին բորբոքեցին, որ Արաբացւոց բանակէն քանի մը հարիւր քայլ հեռի՝ թողուցին ոչ միայն իրենց բեռները, այլ և ձիանքը. հետևակուց աւելի ազատ և համարձակ կրնային հայկական աղեղները քարշել հեռուէն, ու մօտանց թուր ու նիզակ շարժել։ Երկայն ճամբուն յոգնութիւնն այլ չէին ուզեր մտիկ ընել, եթէ գիշերուան սևաւ վարագոյրն երկու բանակաց մէջ չկախուէր։ Անոր մէկ կողմը 30,000 սպառազէն Արաբացիք, մէկայլ կողմն 5000 հետևակ թեթևազէն Հայք անցուցին, ինչ հոգւով, ինչ մը-

տածութեամբ՝ ապրիլի 24էն 25 մտնող միջոցը, կրնայ գուշակուիլ քան թէ գրուիլ: Առաւօտն հազիւ թէ ծագեց՝ Հայք անհամբերութեամբ նետուեցան բազմութեան մէջ, սաստիկ կոտորած մը ըրին, որընթաց հեծեալներուն մէկ մասը հալածեցին հեռացուցին. բայց վերջապէս իրենք այլ յոգնեցան: Արաբացիք սրտմտեալ և ղձահար յետ դարձան, Հայոց Նախարարներէն մէկ քանին՝ (որ ռամկին պէս հետեւակ չէին) քշեցին իրենց ձորտերովը. Հայոց ռամիկն այլ, յետ քաշուեցաւ. այն ատեն Արաբացի հեծելոց եկաւ վրէժխնդրութեան կարգն . . սկսան կոխկռտել դէմ դնող հետեւակ Հայերը: Ասոնք իբրև երկայնաշար ալիք՝ աւելի մեծ և երկայն ալիքէ մը ծածկուելու թաղուելու ատեն, վերջին անհնարին ճիգ մ՚այլ ըրին. յետին յուսահատութեան կամ յուսոյ ձայն մը վերուցին. իրար զիրար կանչելով և սիրտ տալով. « քանի որ Թևերնուս վրայ » դեռ քիչ մը ուժ կայ, կ՚ըսէին, պէտք է թա-» փենք մեր հայրենեաց և եկեղեցեաց վրայ. ողջ » ողջ երես դարձընել և յետ դառնալ՝ անկարելի » ըլլայ մեզի. մեռնինք զէնք 'ի ձեռին, քան փա-» խստեամբ ապրինք »: Եւ արիւնոտ աչուըններն մէկ մը երկինք տանելով, մէկ մը Բագրևանդայ պաշտպան Ս. Յովհաննիսի, կանչելով ու գոռալով՝ նորէն յարձըկեցան, և անգամ մ՚այլ՝ իրենցմէ մեծ և ուժով ալեաց վրայ ելան. միայն հազար հոգի մնացեր էին միագունդ՝ երկու երեք բիւրուց դէմ, զոր վերջին անգամ մ՚այլ քշեցին: Իսկ ասոնք այնպէս զարհուրեալ շփոթեալ էին, որ չէին գիտեր թէ մարդո՞ւ հետ, հրեշից հետ, թէ հրեշտակաց հետ կու պատերազմին. և իրաւ թէ սուտ՝ իրենց շփոթութիւնը ծածկելու համար, յետոյ կու պատմէին, թէ մենք Հայոց գընդին հետ կու տեսնէինք երկնաւոր զօրքեր, պա-

պաններ և երէցներ, որք ուխտաւորանօք և բուրվառօք կ'առաջնորդէին անոնց: Անշուշտ այսպէս տեսան ինչուան որ Հայոց վրայ զէնք շարժելու ոյժ չմնաց: Այն ատեն Թիւն յաղթեց. և երբոր դիմակաց չգտաւ՝ արաբացի գունդն յաղթական եղաւ: Տարիէ 'ի վեր անդադար կռուող և վազող՝ 3000 Հայք իրենց նիզակաց վրայ երես 'ի գետին Արածանւոյ ծաղկանց մէջ փռուելով՝ արիւնով ներկեցին ապրիլի երանգ երանգ փունջը: Հոն երկու բարձր ծառոց պէս ընկան պարագլուխք նահատակացն՝ ինչուան ետքը իրենց խոստմանն և քաջութեան հաւատարիմ մնալով, Մուշեղն Մամիկոնեան և սպարապետն Սմբատ. անոնց հետ նաև շատ մեծատոհմիկ նախարարներ, ինչպէս բագրատունին Սահակ, գնունին Վահան-Դաշնակ, և Սամուէլ մեծ նախարարն Մամիկոնէից, որ տարւօք դեռ երիտասարդ և գեղեցկութեամբ անուանի, ծաղկանց մէջ ծաղիկ, և իր ընկերակցացն հետ յիրաւի գարնան ամեն զարդերէն աւելի սրտառուչ կու փայլէր՝ իր վէրքերէն բղխած վարդերուն մէջ:

Եթէ այն ճգնաւորին քիչ մը արտօրնօք տեսած և շփոթած տեսլեանն համեմատ՝ փառաւոր վախճան մը չունեցաւ պատերազմն, սակայն և ոչ բոլորովին անօգուտ մնաց: Թէ և գործն քիչ շատ ստգտանելի ըլլայ անաչառ դատաստանի առջև, չիկրնար անտես ըլլալ այնքան քաջութիւն, հայրենասիրութիւն, կրօնասիրութիւն այլ: Բայց ազգանախանձ միաբանութիւններն աւելի գովելի կ'ըլլար՝ եթէ ըստ խրատուն Աշոտոյ շարժէին պատերազմէն առաջ, կամ պատերազմի ատեն. և կամ թէ յետ պատերազմին՝ Արծրունին Մեհրուժան չսպաններ քաջին Մուշեղայ երկու որդիքը (որք իրեն ապաւիններ էին), իբր թէ հայրերնին եղաւ պատճառ այնքան մարդկան

և իր հարազատաց կոտորածին։ Իսկ Արաբացիք որ այն գունդը կոտրեցին, և Բագրևանդայ դաշտաց վրայ անթաղ թողուցին, ու սկսան չորս դի աւրել և աւարել, իրենց կորուստներն այլ չէին կրնար ծածկել, և ոչ իշխել շատ հեղ այնպիսի փորձեր փորձելու։ Էմիր՝ իբրև յաղթական ամիրապետին երթալու ատեն՝ չարաչար ցաւերով բռնուած մեռաւ 'ի Պարսկաստան. քանի մը ամսէն իրեն ամիրապետն այլ նոյնպէս վերցուեցաւ. յաջորդ տարին՝ պատերազմին մէջ ընկնող Սըմբատ սպարապետին որդին Աշոտ, սկսաւ նորէն Արաբացւոց ետևէն ընկնիլ, և երկիրները ազատելով՝ Անի բերդը ամրցուց, որ յետոյ իր ցեղին թագաւորութեան աթոռ եղաւ. և օր մը աղօթք ընելու ատեն՝ թշնամիներէն պաշարուած, աղօթքը չթողուց, այլ լմնցընելէն ետև՝ ելաւ զարկաւ զանոնք, և գլխաւորնին՝ Լիտաւոն Աբդլլայն՝ երկու կտոր ըրաւ։ Ասկէ ետև եկող ոստիկանք սկսան զգուշութեամբ վարուիլ Հայոց հետ, մանաւանդ Հարուն Էլ-Րէշիտ, որ ամիրապետ ըլլալէն վեց տարի առաջ (780) Հայոց և Պարսից մեծ ոստիկան դրուած էր։

Այս է Բագրևանդայ ըսուած կռիւն. զոր կարմիր արձանագրութեամբ նշանակէ Հայադիրն յ'18 ահեկանի (25 ապրիլի) 775 թուին Քրիստոսի։

# Թ

# Ս. ԹԷՈԴՈՐՈՍ ՍԱԼՀՈՒՆԻ

## 11 Մայիս 296.

Ահաւասիկ հասաւ մեղրակաթն Մայիս, գեղեցկագոյնն յերկոտասան հարազատաց տարւոյ, գոնէ մեր հայրենեաց և անոր նման աշխարհի մէջ. ուր այս ամիս՝ հայադիմ հայկագիր՝ Մարերի անուամբ հեզիկ նազիկ կու պարէ 'ի բլուրս և 'ի բարձունս, բոլորովին կանաչ ու գալարազգեստ. ձեռքն ու ծոցն, գլուխն ու գօտին՝ փունջ փունջ գոյն գոյն ծաղկներով լցուած, որք իր թեթև գարշապարաց կոխած տեղէն կարծես դուրս բղխեն. արծաթալիք աղբերակունք կանչեն կըրկըջան. ծաղկափետուր թռչնիկք երգեն պարեն. թեթևաթաթիկ ուլք և այծեմունք սահին սուրան. հոտաւոր հովիկք և զով զեփիւռիկք ծուփ ծուփ ծամերնին ծածանեն, երբ հովտէ հովիտ ցածնալով բլրէ բլուր ցատքելով՝ անցնի վազէ բամբիշն բարձանց Հայոց՝ մրազարդն Մարերի: Անոր շողակաթ շոգոլի շնչէն՝ ծաղկըներն վառ վառ շողշողան, պտղունք խայծ խայծ խանձին կարմրին. և եթէ ձայնն անուշիկ հանէր ակընջիդ..., Ո՜հ, երգն հայկածնին Մարերեայ՝ Հայոց հովասուն բարձանց վրայ, հազար տարիներ առաջ, երբ իր ազգն տէր ու ժառանգ էր բոլոր իր ստացուածա-

պտուղն երկրին, այն առատութեան մրգազարդ մարե-
րեայ երգն այլ՝ իրեն նման անձնական էր. մեր նոր
լսած երգերն՝ ինչպէս չոր տերև մը փարգի գե-
մաց՝ չէին կրնար կենալ. ոչ մեր գուսանք և ոչ
օտար երգիչք կրնան անոր արձագանգներն ար-
թընցընել բարձր Հայոց պաղանձաւաց մէջ. և
թէ ճաշակիկ մը, ձայնիկ մ'ուզեմք երազել, թեր-
ևս միայն Բեթելայ բլուրներէն լսուածն վայելէ
մեղրաբերան մարերեայ. որ թուի՝ թէ դեռ Ե-
փրատայ երիտասարդ վտակներով ծաղկած ծա-
ծուկ ծմակէ մը կ'երգէ. « Ահա ձմեռն անց. ան-
» ձրևք անցին և գնացեալ մեկնեցան. ծաղիկք
» երևեցան յերկրի մերում. ժամանակ եհաս հա-
» տանելոյ. ձայն տատրակի լսելի եղև յերկրի մե-
» րում. թզենի արձակեաց զբողբոջ իւր. որթք
» մեր ծաղկեալք ետուն զհոտս իւրեանց »:....
Անշուշտ եռանդուն սիրտ մը հոս չդադրելով՝ ըղ-
ձայլած, հոգեշունչ երգչին հետ ուզէ հրաւիրել
անծանօթ մերձաւոր մը, որքան գեղեցիկ մը,
աղաւնակերպ հեզադէմ մը... « Ընդ հովանեաւ
» վիմին »: — Այո՛, Հայագիրն այսօր կու տեսնէ,
կու յայտնէ այդպիսի մը, անծանօթացեալ ա-
նուամբ և տեղեաւ, որ ահա հանդչի ընդ հովա-
նեաւ ծառոյն և 'ի վերայ վիմին. յետին և քաղ-
ցրագոյն հանգիստ, նախ զհանգիստն յաւիտե-
նից:....

Ահաւասիկ նա. նման որքան սքանչելի եղ-
բօրորդւոյն, արդարև սպիտակ ու կարմիր է. ե-
րիտասարդ մը կուռ և կատարեալ հասակաւ.
բնութիւնն առիւծու և կերպարանքն աղաւնոյ.
գիտէ մռնչել, բայց ընտրէ մնչել. իբրև մեծ աշ-
խատանքէ և յերկար վշտերէ եկած՝ անմարդա-
ձայն ձորակի մը մէջ՝ փռուած է մենաւոր ծառի մը
տակ, որ կարծես իր գետնամած ճիւղերովն իբրև
մայրենի թևօք կ'ուզէ պաշտպանել զանիկայ, որ

աջ թեւը ձորեզերէն ցցուած քարի մը վրայ դրած է ծառին ներքեւ, և յոգնած գլուխն այլ թեւին վրայ, ձախը՝ կուրծքին վրայ պարկեշտ պատմուճանին խորշերուն մէջ։ Կարծես ծաղկապաճոյճ մարերի 'ի հովիտ և 'ի բլուր թափառելով՝ կու փնտռէր այս երիտասարդը, որ ըստ երախտապարտ պատմչի մը թողած յիշատակին, «Էր ա-
» չօքն թուխ, և գանգրահեր, և երեսօքն խար-
» տեաշ, և անձամբն երկայն»։ (աչքերն սեւ, մազերն գռուզ ու գալար, երեսն դեղին ու կարմիր, հասակն ու կազմուածքն երկայնաձեւ)։ զգեստն պարզ մաքուր երկայն պատմուճան մը, վզէն ինչուան ծնկուըները և այլ վար։ մէջքը գօտւով զարդած։ սրունքն պարթեւական սանդալներով ծածկած։ դեղին դաստակներն կիսաբաց։ ուսին քով մէկդի ձգած հայկական եղջերաձեւ խոյրն։ Դրսուանց ամենեւին անհոգութեան կերպ, ներսուանց անհնարին հոգ մը, որ երբեմն երբեմն բացխըփիկ ըրած երկնէ սեւ աղամանդ պատուհաններէն կու յայտնուի։ պահ պահ յանկարծ սեւ ամպի շուքի պէս բան մը բոլոր երեսէն սահելով անանկ խեղճ ու ցաւագին երեւոյթ մը կու տայ, որ կարծես թէ քովի ձորակին վազած վտակին պէս՝ իրեն համար բոլոր աշխարհ կ'անցնի, և կրնայ ըսել ինքն այլ իբրեւ զԱյրն ցաւոց, թէ «Տրտում է
» անձն իմ մինչև ցմահ»։ այլ շուտով ամպի տակէ ելած բարկ արեւու ճառագայթի պէս լոյս մը կու ծագէ դէմքին վրայ, սքանչելի հանդարտութիւն մը բոլոր անձը կու պատէ։ կու խփէ երկայնաշար թարթափքը, և այնպէս անուշակ ու թեթեւ քունի մէջ կ'երեւայ, որ դարձեալ կարծես լսել իր մեղմիկ շրնչէն, թէ «Ես ննջեմ և
» սիրտ իմ արթուն կայ»։ Ո՛վ քուն ցանկալի քան զարթնութիւն։ ո՛վ հրաշալի հանդարտութիւն։ ո՛վ հանգիստ անբծութեան, ո՛վ տխրու-

թիւն անտրտում. զեփիւռ, ծործոր, բոլոր գարնան գեղեցկութիւնն կու թուի իրեն հետ լռել ու մրափել: — Ո՛հ, Հայկակ, թէ գիտէիր այս միայնութեան պատճառը, այս քնոյն պէտքը, թէ գիտէիր անոր յաջորդելու յետին արթնութիւնն, անշուշտ փափագէիր որ գոնէ Եփեսոսեան մանկանց չափ երկընար այդոր քունն, կամ թէ նոյն իսկ կենաց յետին քունն այլ հանէր շուտով խառնուէր անոր. անզգալի կերպով շունչը առնուր վեր քաշէր, և դիմացնիս թողուր անարիւն նահատակի շուշանագոյն մարմին մը, թաւալած 'ի մէջ մանուշակաց և աղբրանց-արեանց:...

## Բ

Բայց ո՞ւր եմք մեք. ո՞ւր է այս անծանօթ ձորակն, անծանօթ երկիրն, և ո՞վ այս աննման երիտասարդս: — Մի թէ կամա՞ւ մոռցան պատմիչք և զլացան աշխարհագիրք, (և մանաւանդ մեր բազմերախտ պատմահայրն և աշխարհագիրն Մովսէս Խորենացի, որ բոլոր Մեծ Հայոց 200ի չափ գաւառները մէկիկ մէկիկ համրեց) նշանակել մեզի Կոփէրոյ երկիրը, Սալահօնէաց գաւառը, Սարէնադլէն աւանը, Պարբէնիօ գղեակը, և այն սըրտառուչ Սեղէֆնուփ ձորակը՝ ուր այսօր կու հրաւիրէ զմեզ Հայադիրն, Եփրատայ բարձր հոսանաց եզերքը, որ Կարինէն իջնելով 'ի Դերջան գաւառ, անտի կ'երթայ յԵկեղեաց (Երզընկա). և այս երկու յետին գաւառաց միջոց դար-վար երկիրն է մեր փնտռածն, որ կերպով մը որչափ անծանօթ է՝ այնչափ այլ ծանօթանալու անուններ ունի. կ'ըսուի նաև Կորդուաց երկիր, Հայոց ուրիշ հեռու աշխարհի և գաւառներու անուանակից. թերևս անոնց նման կորդ, խորտուբորտ երկիր

մ'ըլլալուն համար, կամ բնակիչքն նոյն տեղէն եկած ըլլալուն համար. կ'ըսուի և Կոփէրոյ Երկիր՝ յանուն Կոլթեր աւանի. կ'ըսուի յառաջապէս և առաւել հայապէս Սալխունեաց (կամ Սալահու-նեաց, Սահլունեաց) գաւառ, որոյ մէջ էին մե-րոյիշեալ շէնք և տեղիք, և քանի մ'ուրիշ այլ, զոր յիշէ հայագիրն և լաւ հիմնու աշխարհագրու-թիւնն: Այս տեղերուս հնագոյն և մէկ հատուկ և մեզի հարկաւոր յիշատակն՝ տակէ 1500 և աւելի տարի առաջ կ'ելլէ. այն տարիներըն՝ որ քաղաքա-կան մթութիւն մ'այլ կու պատէր բոլոր մեր աշ-խարհը, երբ սասանեանն Արտաշիր պարսիկ՝ Ար-շակունեաց թագաւորները հալածեց 'ի Պար-թևաց և 'ի Հայոց և բռնաբար տիրեց մեր երկրին. ուսկից հեռացեալ պատանին Տրդատ՝ Հռոմա-յեցւոց քով կու մեծնար, և կու պատրաստուէր քաջութեամբ տիրելու հայրենեացը. իսկ նախա-րարք Հայոց՝ ոմանք հնազանդէին բռնաւորին, ո-մանք այլ իրենց երկիրներուն ամրութեանց մէջ ա-պաստանեալ՝ կու սպասէին իրենց օրինաւոր տի-րոջ: Ասոնցմէ մէկն էր Սալահունեաց գաւառին տէրն այլ՝ Սուրէն, որոյ ցեղաբանութիւնն ծանօ-ցած չէ, այլ այսչափ յիշուած՝ որ թագաւորա-կան ցեղէ էր կամ խնամի, ինչպէս անունէն ալ կրնայ գուշակուիլ. իր անուամբ աւան մը շի-ներ էր, Սուրէնաշէն, յետոյ Զուրէն կոչուած, մօտ 'ի հին բերդաշէնն կամ դղեակն Պարխէնիոյ, որ յետոյ Բերդատն ըսուեցաւ, և անունէն կ'երևի որ շինած էր լերան մը կող, որոյ վրայ կայր բերդն, և շինողքն էին Պարթևանք կամ Թերևս Պարթևք: Այս երկիրս գրեթէ Մեծ Հայոց արևմտեան սահ-մանածայրն է և մօտ Փոքուն Հայոց ու Յունաց բաժնին. ըսել է՝ Հռովմայեցւոց իշխանութեան, որք այն ատեն ինչուան այս կողմերը նուաճած էին: Յունաց սահմանակցութեամբ կ'երևի թէ

Սուրէն յունական ախորժակներ այլ ունէր, իր անուան համեմատ սուր բարքը կակղցընելու համար. և կ'երևի թէ տիկինն այլ յունազգի էր, Աղաւնիա[1] անուամբ որ է Անէնէ, (Աղաւնիթի ըստ յունաց), եթէ հայկական աղու կամ աղուանի անուանէն առած չէ, կամ Զարմաւհի անուան թարգմանութիւն մը չըլլայ (իբր յունարէն աղունի, զարմանալի). և այս թերևս իր ընաշխարհ գեղեցկութեանն համար կամ անոյշ բարուցը, որովք անուանի էր. իրենց սիրոյն պտուղն այլ վկայէ որ 'ի շնորհս մօրն և յունական մերձաւորութեանն՝ կոչուեցաւ Աթէնոդորոս, որ նշանակէ Տուրք Աթենասայ, իմաստութեան դիցուհւոյն. գեղեցիկ անուն, որ ոչ այնքան ծնողաց ընտիր ճաշակը կու ցուցընէ, որչափ ծածուկ շնորհաց ընտրութիւն մը. որ 'ի հեթանոսութենէ կանչելով զնա 'ի լոյս Քրիստոսի՝ ապա Աստուածատուր անուամբ կընքեց:

Գ

Պաղոց աստուածութեան ամսոց մէջ ընծայեցաւ Աթենոդոր յամին Քրիստոսի 269, կարիճ հօր արիասիրտ որդի, և գեղեցիկ ու գարաղի մօր՝ գեղեցիկ և գողտրիկ զաւակ. աճելով առաւ այն հասակը և կերպարանքը՝ զոր տեսանք Սեղեմնուտի ձորակին մէջ քարին վրայ հանգչած երիտասարդին վրայ: Բայց տղայութեան հասակէն վեր անցնելու ատեն, երբ զալար մրտենւոյ մը պէս շիտակ կու բարձրանար կարմրուկ ու զանգրուկ, և ողնխազեայ սև աչքերն անթարգմանելի փայլունութեամբ մը կու վառէին, այն վտանգաւոր հասակին շատ հեղ նախանձոտ հիւանդութիւն-

1 Յօր. Ագուիթա կամ Տեղվիթա:

ներէն մէկն եկաւ վրան. տասնուհինգ տարեկան էր, երբ աստեղանման գեղեցկութեանց մէջ՝ ցաւոց և վիրաց ամպեր ցրուեցան, և վէրք անբժըշկելիք, որք որդւոյն մարմնէն աւելի ծնողաց սիրտը կեղեքէին. Թէպէտև, երբ ցաւերուն ազդած հեզութիւնը բնատուր շնորհացը հետ խառնելով, Աթենոդոր՝ իր խարտեաշ գլուխը մօրը ծընգաց վրայ դրած, և ձեռուըներն հօրը ձեռաց մէջ՝ հանգչէր, կիսաբացիկ կիսամաղձիկ շողակաթ աչքերովն, տարակոյս կու բերէր՝ թէ այդ ցաւագին մրուրքն՝ իրեն աւելի՞ շնորհք բերած են թէ տարած. այնքան լուսաւոր կերպարանքն չէր խաւարած, այլ բարակ շուքերով խառնուած։ Թէ և նոյն իսկ ցաւերն զինքն աւելի սիրելի ըրին ծնողացն և ծնողքը իրեն, սակայն կրնա՞ր հայր մը՝ իր պայազատը, իր ծերութեան յոյսն և յաջորդը, և մայր մը՝ իր սիրելագոյն ծնունդը՝ այդ տարակուսի մէջ տեսնել, և սիրոյն սաստկութեանը կսկիծն այլ աւելի սաստիկ չըզգա՞լ։

Սուրենի զբօսանաց և Ալուիթայ զարդարանաց ծախքն՝ մեծաւ մասամբ բժշկաց և բժշկական դարմանոց տրուեցան. ինչ որ հարուստ նախարար մը և որդեգորով ծնողք կրնային ընել՝ եղան. բայց զաւակնին չբժշկեցաւ. չմնաց աստուած՝ որոյ ուխտ և նուէրք և զոհ չմատուցին, բայց Աթենոգոր չըռընացաւ։ Եօթն տարի, կենաց առուգագոյն տարիներն, հասակին աճման և ձևացման տարիներն, հիւանդութեամբ և ցաւերով անցան, և ցաւերուն անցնելու յոյսն ալ գրեթէ մէկտեղ անցաւ։ Եւ երբ առողջութենէ յուսահատած՝ երկար ողջութեան մտածմունքն առաջ կու գար, երբ կենաց փափուկ թելն՝ ոլորուած մոլորուած երևար ծնողաց աչքին, և անգութ կորողին մկրատն կու մօտենար մօր մը դիմաց, և երբ գալարագեղ հասակն միջակտոր

ծառի մը պէս՝ գետին տարածուած տեսնուէր կասկածոտ մտաց. — Ո՛հ, այս՝ ամեն ցաւէ ցաւալի էր։.... Բայց լռենք, գուցէ զուր տեղ հին և նոր սրտեր ճմլին։... Այսպիսի ցաւոց միայն մէկ զօրաւոր բժիշկ և դեղ մը կայ. — կ՚ուզես, ով կարօտեալ. — չորս մատ աչուըններդ վեր վերցու, կ՚իմանաս, կու տեսնես։... Բայց ի՞նչ ընեն անոնք՝ որ զուրկ են մեր սուրբ կրօնից շնորհքէն։ — Դեռ կէս երանի անոնց այլ՝ որ գոնէ բնական լուսով կրօնասէր են և բարեսէր. և ազնիւ սրտի և մտածող գլխի տէր ըլլալով՝ իրենց կեանքը մարդկօրէն կ՚անցընեն, և բարերարութեամբ կու ստանան կամ կու վայելեն այն բարիքը՝ զոր բնութիւնն իրենց չէ տուած կամ յետ է առեր։

Այսպիսի մէկ մ՚էր և Աղուիթա, թէ և դեռ քրիստոնէութեան շնորհքէն զուրկ, այլ ոչ հեռի։ Իր երկիրներուն մէջ լիճ մը կար Սինիքողն ըսուած (որ յունարէն լսուելով՝ գուցէ Թզենուտ կամ Թզագարակ նշանակէր հայերէն), զոր հիմա չենք տեսներ աշխարհացուցի վրայ, բայց պէտք էր բաւական ընդարձակ ըլլալ՝ որ Աղուիթա անոր եզերքը աւան մը կամ գեղ մը չինէր, իրեն զբօսանաց տուն և ագարակներ ու պարտէզներ. և շատ հեղ հոն քաշուելով իր գառնուկ պատանեկին հետ, բնութեան գեղեցիկ տեսարաններով՝ իր և անոր ցաւերը մեղմէր. և ո՞ գիտէ քանի՛ երկայն ժամեր՝ վայրկեններու պէս կ՚անցնէին այն ծիածածան ծովակին եզերքը, երբ Աթենոդոր գալար վարդաթըփի պէս գլուխը մօրը կըռթընցուցած, և նա իր վարսաւոր ճակատը՝ բարակճիւղ ուռենւոյ պէս որդւոյն վրայ կախած, մէկ մը ջըրերուն հանդարտութեանը վրայ, մէկ մը զաւակին անմեղ խաղաղութեանը կու նայէր, և սրտին բորբոքած կրակներն՝ այն երկու պայծառ զովութեանց մէջ կու մարէր։ Լճին մէկայլ կող-

մը՝ շինուած գիւղին դիմաց՝ աղբիւր մը կար, պատշաճ և անոյշ անուամբ Արքէնուսա, որ աւելի անոյշ խոխոջելով կ'իջնէր կու գար՝ Թերևս խառնուելու նոյն ծովակին ծոցը, ինչպէս Աթենոգոր իր մօրը գիրկը. անտարակոյս շատ հեղ Աղուփթա այդ աղբեր վաղուկ արծաթները իր ոսկեհատիկ որդւոյն ցաւած մասանց վրայ դարձուցեր, լուացեր ջնջեր էր. Աթենոգոր անոր քով հաւաքեր դրեր էր մերկերեայ գունագոյն թոյները, յառաջ քան փունջ փունջ ընծայելու իր մօրը, որ միշտ մայրաբար՝ Թէ իրեն և Թէ իր որդւոյն մաս և պտուղ կու հանէր այն մարգարտակաթ ծաղիկներէն։ Որդւոյն ցաւոց վրայ գորովելով՝ կու յիշէր անոր պէս ցաւագարներ. մանաւանդ երբ կու տեսնէր զոմանս անոնցմէ, որք ըստ բարբարոս օրինաց հեթանոսութեան, հալածուելով 'ի շինից և 'ի բնակութեանց, ամայի անբնակ տեղուանք կու թափառէին, իբրև նզովեալք և անիծեալք. այս սովորութիւնս կար նաև մեր ազգին մէջ այլ, զոր յետոյ շատ խնամքով ջանացին ջնջել Ս. Լուսաւորիչն և իր համանման սուրբ Թոռն Մեծն Ներսէս. շէնքերէ հեռու տեղուանք հիւանդանոցներ և ուրկանոցներ (բորոտներու տեղ) շինելով, որք և այդպիսի բարերարութեան տեղեաց մէջ հնագոյններն կու սեպուին. բայց իրենցմէ առաջ այլ այս ազնուասիրտ տիկին Աղուփթա Արքենուսա աղբեր քով շինեց տառապելոց պատըսպարան մը, ուր ժողովեցան 36 ցաւագարք, և գթասիրտ Աղուփթայի տուրքերովը կ'ապրէին, և կ'օրհնէին իրենց բարերարը։

Ասոնց մէջ էր և Դասիոս կամ Դասիկ ծերունին. որ, ինչպէս Աղուփթա անոնց մայր սեպուեցաւ, ինքն այլ հայր եղաւ Թէ անոնց և Թէ նոյն ինքն Աղուփթայ և Աթենոգորայ։ Առաջ՝ անոնց մէջ իր պատկառելի կերպարանքն և արծաթա-

փայլ երկայն մօրուօքն՝ Տիր գէց կամ Վահագնի քուրմ մը կարծուէր, որ քաղցր շըթամբքն աւելի քան ոսկեթել քնարով՝ ամենուն սիրտը կակղցնելով, եթէ ցաւերնին չկրցաւ բժշկել, գոնէ բնութեան բարիքներէն ու վայելչութեննէն սկսելով՝ այն ռամիկ ցաւագնելոց միտքը բարձրացուց մինչուան առ բնութեան տէրն. և երբ հասուց յարմար վիճակի, հանեց յայտնեց իր ծածկած հովուական սրինգը և նոր նուագ մը երգեց. զամենքը ափշեցուց, զամենքը զմայլեցուց, զամենքը հետևցուց իրեն. այս նոր նուագս՝ Նազովրեցի հովուապետէն սորված էր, անոր վարդապետութիւնն էր, Քրիստոսի աւետարանն էր։ Ծերունին Դասիկ գաղտուկ քահանայ էր. իր ընկերաց հովիւ եղաւ, մարմնոց ցաւերը թեթևցընելով՝ հոգիներուն մեռելութիւնն անգամ ողջըցուց. դարձուց զամենքն 'ի քրիստոնէութիւն. և ցաւոց ու փշոց մէջ՝ հոգեզուարճ վարդանոց մը, դրախտ մը բացաւ, ուր՝ այն աշխարհքէ մոռցուած և մերժուած տառապեալքն աւելի երջանիկ ու սրտաբաց էին, քան իրենց երկար գերութիւնը թօթուող ու Տրդատայ յաղթական զարձով փառաւորեալ դիւցապաշտ Հայկազունք։

Աղուխթա և Աթենոդոր այլ լսեցին Դասիուսի և Յիսուսի ձայները, և սրտերնին թնդաց. և թէ ոչ աւազանին ջրով՝ գոնէ սիրով ներսէն մկըրտուեցան, և սիրով կ'երթային ծածկաբար սուրբ ծերոյն աւետարանութիւնը լսելու, որ յունարէն կու կարդար սուրբ գրքերը և կու բացատրէր չհասկացողաց։ Մինչդեռ հոն, իբրև աքելական սեղանէ մը՝ սուրբ կրօնից նուէրքն, աղօթք և զոհն՝ հեզօրէն կու բարձրանար առ Աստուած, դիմացը աւանին քով հեթանոսաց մեհեանները կանգնուած՝ կու հրաւիրէին զառողջ և զհիւանդ 'ի զոհ և 'ի պաշտօն Հերակլի (Վահագնի) և Աս-

կըլլալեայ՝ անառողջութեան չաստուածոյն , որոց տօնքն մասնաւոր հանդիսիւ կատարէին հոն տարուէ տարի : Բարեմիտ կամ Թերամիտ քուրմք և ժողովուրդք մեծ ջանքով կու յորդորէին զԱթենոգոր այլ՝ որ գայ այն մարգասէր աստուածներէն բժշկութիւն խնդրէ. բայց նա միշտ պատրուակներով կու զգուշանար. ինչուան որ հայրն այլ տեսնելով որդւոյն չափահաս տարիքը , որ քսանը անցուցեր էր , կու խրատէր որ անհոգութիւն չընէ. « այս վեց տարի է կ'ըսէր , որ մեր
» աստուածոց զոհ չես ըրած , թերևս անոր համար այլ ցաւերդ կ'երկընան » . իսկ Աթենոգոր՝ նոյն իսկ ցաւերը պատճառ կու բերէր զոհի չերթալուն . և ոչ միայն վեց՝ այլ և կրկին վեց տարի խաբեց հայրը , և ճարտարութեամբ ազատեցաւ : Հաւանական այլ է , որ Սուրէն իբրև գաւառապետ մը և Թագազարմ, երբ լսեց Տրդատայ գալն 'ի Հռովմայեցւոց , փութացաւ դիմացը ելլելու , և արքունի բանակին մէջ էր , որ՝ (իր երկրին՝ Սալահունեաց մօտ ) Եկեղեաց գաւառին մէջ Գայլ գետոյն եզերքը դադրեր էր :

Դ

Քանի մը տարի այսպէս անցնելէն ետև՝ օր մը Սուրէնաշէն աւանին թնդաց զինուց շշուկով . Թագաւորական գունդ մը զօրաց երևցաւ , որոց առաջնորդէր իշխանն Մագենա . ասոնք Եկեղեաց Երէզ աւանէն գալով և դէպ յԱրտաշատ երթալով 'ի հին մայրաքաղաքն Հայոց , կ'անցնէին Սալհունեաց գաւառէն , որ Ճամբուն վրայ էր . ոչ պատերազմի և ոչ պաշտպանութեան համար էր երթալնին , հապա յանցաւոր մը , կապուած մը , թագաւորին անհնազանդ մը կու տանէին .

տէրութեան դէմ պարտական գտուած մահապարտաց ամէնէն սոսկալի բանտը ձգելու, որ էր Արտաշատ քաղաքին գետնափոր վիրապը. իսկ յանցաւորն այն՝ էր Գրիգոր մը....: Ի հարկէ ամէն դիէ հետաքրքիրք կու վազէին տեղեկանալու թէ ո՞վ է, ինչո՞ւ համար է, և երբ լսէին թէ Քաջին արանց Տրդատ թագաւորի հօրը՝ Խոսրովայ սպանողին որդին է, ինչպէս ակռանին կրճտելով կ'ուզէին վիրապը չհասած՝ հոն սպաննել ոչնչացընել զայն՝ որ քանի մը տարիէ վերջը պիտի ըլլար իրենց խաւարեալ հոգւոց Լուսաւորիչ: Հարկ էր զօրականաց և կալանաւորաց հեռացընել վրէժխնդիր ամբոխը, և ապահով տեղէ մը անցընել կապեալը. անշուշտ աւելի ապահով ճամբայ այլ չկայր՝ քան մեր ցաւագնելոց պատսպարանին սահմանները, ուսկից՝ զգուշելով կու հեռանային այն տեղն առողջութեամբ, քաջութեամբ և ազատութեամբ պարծեցող ժողովուրդն Հայոց. իսկ հիւանդքն, տկարքն և նեղեալքն՝ համարձակութիւն գտնելով՝ իբրև անկար և կարօտ մարդիկ՝ պահապանաց կասկած չէին բերեր: Այսպէս կրցաւ Դասիկ իր ընկերներումն և Աթենոգորոսի հետ՝ մօտենալ առ սուրբն Լուսաւորիչ, զորոյ խոստովանողութիւնը արդէն լսած ըլլալով, և անշուշտ աստուածային ազդեցութեամբ իմանալով թէ ի՞նչ անձն է և ի՞նչ պիտի ըլլայ այն կապուածն, բերաւ իբրև հովիւ հլու իր ցաւագար ոչխարները՝ ապագայ հովուապետին ոտքը ձգեց. և այն սրբազան նահատակին առաջին հըրաշքը և շնորհքը վայելեցին այս նեղեալքս. որք և առանց նեղութեան և ցաւոց՝ Աստուծոյ փառք տալով դարձան: Հոն՝ Դասիկ ծածկաբար իմացուց Գրիգորի թէ ո՞վ է հետն եղած իշխանորդին, և գաղտ հաւատացեալ ու դեռ անկնունք ըլլալը: Սուրբն Գրիգոր քաջալերեց զծեր քա-

հանայն, և պատուիրեց որ առանց վախի առնա-տանի պատանին իրենց գլխացը՝ արևելեան կողմը եղած աղբիւրը, (արդեօք Արքենուան, թէ ու-րի՞շ մը) և հոն մկրտելով զԱթենոդոր՝ անուա-նէ Թէոդոր, Աթենասայ տուրքն ընէ Աստուածա-փառք: Այնպէս ալ եղաւ. Լուսաւորչի ծածկեալ լոյսն, զոր հաւատացելոց աչքն միայն կու տես-նէին, և մկրտութեան ջուրքն՝ նորէն ծնան այն կայտառ պատանին, և մարմնոյ ու հոգւոյ աղտ ու բիծ՝ զամենն ալ ջնջեցին. դէմքն աւելի քան զմանկութեանն պայծառացաւ. հոգին ևս աւելի. և ոչ միայն գեղեցիկ, վայելուչ, կորիճ, այլ և շնորհազարդ և սուրբ, մաքուր, պաշտելի անձ մը եղաւ Թէոդոր: Երանաշնորհ մայրն ալ այս աստուածային պարգևաց հաղորդ ըլլալով, եր-կուքն ալ չէին բաժնուեր Դասկայ քովէն. Ար-քենուանի ձորակը քրիստոնէութեան ծածա-ծուկ տաճար մը դարձուցին, Հայոց հեթանո-սութեան վերջի տարիներուն և վերջի ջանքերուն ատեն. երբ Տրդատ գրգեալ 'ի Դիոկղետիանոսէ հրաման հանէր և հալածէր զքրիստոնեայս՝ իր նոր տիրած և ընդարձակած սահմաններուն մէջ, իր հաւատարիմ և անահտապաշտ իշխանքն ալ նոյն հոգւով իրենց երկիրներուն մէջ հսկէին: Բայց Սուրէն որչափ ալ գիտամոլ և վրէժխնդիր էր, չկրցաւ իմանալ որդւոյն քրիստոնէութիւնը, չլսեց անոր անոյշ սաղմոսերգութիւնը Արքենուանի խոխոջանաց և Թզենուտի ծփանաց հետ: Ինչուան յետ վեց տարիներու՝ ուրիշներն կասկածելով և հասկընալով՝ մատնեցին որդի մը՝ իր հօրը, անմե-ղութիւն մը՝ անգթութեան: — Իբր անախորժ քնէ մը արթըննալով Սուրէն, այն ատեն իմացաւ թէ ինչու Աթենոդոր չէր երթար Վահագնի և Աստղկայ սեղանները զոհիւք և պսակօք պա-տուելու. թէ ինչու այնպէս միայնութիւն և առ-

անձնութիւն կու սիրէր որդւին՝ նաև յետ բժըշկութեանն, իբրև տղայութեան և հիւանդութեան յիշատակաց սովորութիւն մը։ Ինչ որ ծուռ հաւատքի մը եռանդն, հայրենի գութ և սիրական կամք մը կրնային ընել տալ՝ լրաւ Սուրէն. վեց ամիս աշխատեցաւ որդւոյն սիրտը դարձընելու. իր չափէն վեր այլ խոստմունքներ ընելով, և բոլոր Սալհունեաց գաւառին ընդարձակ տէրութիւնը և փառքը ցուցընելով եռանդուն երիտասարդին. այլ ամենևին չկրցաւ ազդել քրիստոնեայ սրտին։ Հայրութիւնն դարձաւ 'ի տէրութիւն, տէրութիւնն 'ի բռնութիւն, եղաւ հալածիչ և դահիճ որդւոյն. կարելի խոստմանցն հակառակ՝ ամեն կարելի սպառնալիք այլ լրաւ, և հասուց պատիժ ու զրկմունք. ակամայ քան կամաւոր անգթութեամբ տանջեց իր աղէքը. սակայն չկրցաւ զատել զորդին իր Նոր և յաւիտենական հօրէն, 'ի Քրիստոսէ։ Յետ վեց ամսոց յօգնեցաւ, յուսահատեցաւ Թշուառ և ողբալի հայրն. մէկ հատիկ և վերջին հնար՝ կամ ապրեցընելու կամ կորուսանելու՝ սեպեց իր սեւ սուրը. սպառնացաւ ու վճռեց սոսկալի մահ։ Թէոդոր բնաւ չվախցաւ մահուանէ, որ իրեն փափագելի հանգիստ մ'էր։ Բայց նոր Սանատրուկ մը տեսնել, նոր Կայէն մը, իր հօրը ձեռօքը սպաննուիլ, ո՜հ, այս դառն էր քան զմահ և մահերու մահ։.... Աւա՜ղ Աղուիթայ. ոչ իր կողակից կենակից ամուսնական իրաւունքն, ոչ կնոջական մայրական խանդաղատանքն և գութն՝ չկրցան ազատել իր մէկ հատիկը։ Գազանացեր էր Սուրէն. աչուըներն արիւն, բերանն մահ կու փսխէր. ոչ ոք կըրնար մօտենալ անոր. սպառնալեաց ժամանակն այլ անցեր էր. ըլլալիքն հասեր էր։

Թէոդոր վերջին անգամ մը նայելով իր կրկին և մէկմէկէ շատ աննման ծնողաց վրայ, բոլոր որ-

դիւական և քրիստոնեական երկու կրակներով վառած արևանման աչքերովն, աննկուն զօրավարի պէս, որ յետ ամենայն զօրականաց՝ քաջ քաջ կ'ինկնայ զօրաւորագոյն թշնամւոյն առջև, արցունքները զսպելով, և թողլով այն շէնքը՝ որ երբեմն իրեն ծննդեան տեղ, և ապէ ետև իրեն համար ամայութիւն և ունայնութիւն էր՝ բոլոր աշխարհիս հետ, թերևս մօրը դիմաց սարսափելի և անտանելի տեսարան մը չքանալու համար, ելաւ գնաց անդարձ նետի մը պէս։ Մովակ, Ձորակ, աղբիւրք և հիւանդանոց չկրցան արգելուլ զինքը. ամենուն վերջի նայուածք վերջի բարև տալով, և ո՜վ գիտէ ինչպէս սրտին չափազանց ծանրութիւնը և լեցունութիւնը թափելով Դասկայ գրկաց մէջ, և ընդունելով անկէ անմահութեան Ճաշակը և կենաց հացը, երիտասարդական ուժով մ'այլ ցնցելով զինքն և թափելով սուրբ ծերոյն դողդոջուն թևերէն և արտասուաթոր մօրուքէն, փախաւ գնաց Արքենուտի ձորէն դուրս, և անցաւ մօտիկ և աւելի անծանօթ անձայն ձորակի մը մէջ, որ կ'ըսուէր Սեպեհնուտ. և հոն եօթն օր վեր վար պտըտելով, Յեփթայեայ օրիորդին նման, Աբդլմսեհի նման, ինքզինքը հրաժարեցընելով իր ծաղկեալ կեանքէն, իր պայծառ արևէն, անգին մօր մը սրտակտուր ծոցէն, կու նըւիրէր միայն անոր՝ ուսկից կու գան և ուր կու դառնան ամենայն բարիք և ամենայն շունչք արդարոց. մինչև յօգնած և հանդարտած՝ ընկաւ փռուեցաւ այն ծառին տակ և այն քարին վրայ, ուր տեսանք զինքը առաջին անգամ մեր պատմութեան սկիզբը։...

## Ե

Հիմա գիտես, Հայկակ, ուր ըլլալդ, կու ճանչես ով է այդ չքնաղ երիտասարդդ. կեցի՛ր հոս պահ մ'այլ, վերջին պահ. վասն զի այլ երկայն ժամանակ չկայ. մօտեցի՛ր այդ անտաշ ապառաժ սեղանին քով, այդ Սեղեմնուտի սաբեկայ ծառին տակ. ես լռեմ, դու դիտէ՛ և զգա՛։...

Բայց ահա հեռուէն վիշապի խօշիւն մը կու լըսուի, առիւծու մռնչիւն մը. ձորեզերէն վար վարագաթև սեւ արծուի պէս կու սլանայ կ'իջնայ ծառին վրայ, ծառին ներքև, քարին մօտ... երկայնժանիք հրէշ մ'է, գազանագոյն քան զվիշապ, քան զառիւծ, քան զարծուի... Ինքն է, ինքն է, սուսերամերկն Սուրէն... որդւոյն փախըստեան վրայ աւելի կատղած և արեան վրէժով լցուած, հին պատենէն քաշելով ժանգոտ սուրը, և « Ա՜յդպէս, իմ երիտասարդութեանս երկա՛թ, այնքան կոտրած Թշնամեացդ արեամբ չկշտացած՝ ծերութեանս առեն ինծմէ իմ որդ-
» ւոյս արի՜ւնն այլ պիտի ուզէիր Թափելու », ըսելով, կ'առնու, և մոլեգին դիւահարի պէս կ'ընկնի սարէ սար ձորէ ձոր որդին փնտռելու։... Անշուշտ սատանայական ոգին զինքը քաշէր քշէր տանէր, ինչպէս երբեմն զԿայէն 'ի մահ Աբելի, կամ ինչպէս անկէ առաջ (ըստ դրախտերգակ քերթողին) ինքնին՝ դժոխոց անդունդներէն ելած՝ կու փնտռէր դրախտին դուռը, որ մեր երանեալ նախածնողքը ձգէ 'ի մեղս և 'ի մահ։ Այսպէս դիւական Թափառանօք վերջապէս հասաւ Սեղեմնուտի ձորեզըր, և իբրև սեւ արծուի՝ տեսնելով բարձրէն ծառին տակ իր փնտռած որսը, հասաւ շուտ ու Թեթև անոր վրայ։... Բայց 'ի հար-



*Թէոդոր եկզամբրայի աչուըները կէս մը բա-ցուած, և կէս մը գլուխը վերցնելով...*

## Ձ

Ո՞ւր են հիմա մեր մայիսի ծնած ծաղկունքն, ո՜ւր մնացին մրաղարդ մարերեայ մրգունքն : — Այսպէս, չկայ ծաղիկ հողածին՝ որ չցամքի. չկայ պտուղ երկրաբոյս՝ որ չթօթափի. ամենայն գալար ու պայծառ, յետ քիչ ժամանակի պիտի ըլլայ մռայլ ու խաւար: Սակայն ծաղիկ այն ծաղիկն է, որ երբ ճղէն այլ զատուի՝ դարձեալ մընայ անթառամ, և մանաւանդ նոր գեղեցկութեամբ մը յաղթէ կանգուն ու ճօճուն ծաղկանց: Այսպիսի ծաղիկ է հայրազէն գառնանման կոտորեալ երիտասարդն Թէոդոր, թաւալեալ իր հովանաւոր ծառին և իր հանգստեան քարէ բարձին տակ՝ օշօշով և մանուշով հիւսուած խոտերու վրայ, Սեղեմնուսի սգաւոր ձորակին մէջ. ուր հեզամնչիկ հովիկն խոնարհած կու խաղայ անոր արիւնլուայ վարդէ գլխակաց հետ. ինչուան որ երեկոյեան զովութիւնն դադրեցընէ և պաղեցընէ կարմիր կաթիլները, և գիշերուան լուսագընտիկն վերէն ծաթէ արծաթափայլ դողդոջուն ճառագայթները, որք կու մարմըրին, շուք մը կու դառնան՝ Թէոդորի մարմնէն ծագած հրաշափայլ լուսոյն քով: — Այս լոյսն անշուշտ առաջնորդեց այն մարմինը մեծցընող և գգուող և հիմա զինքը սրտաթունդ փնտռող անձի մը, մօր մը:... Զոտենենք, չքննենք մենք այն մայրը Սեղեմնուսի մէջ: — Դու այլ դարձիր մայրիկ, դարձիր Աղուիթա՝ առ Դասիոս, և հրաման տուր. «Ե՛լ, հայրիկ, ել գնա 'ի Սեղեմնուս, հոն կու գտնես իմ հայրազեն գառնուկս, իմ մըրկաթափ վարդենիս, իմ նուաղած աղէքս. առ ու լուա այն արշալոյս ճակատը. բայց կիսալուայ ըրած՝ բեր ինծի փունջ

մը ոսկեթել մազերէն, որ գլխուս վերջին պսակ ընեմ. լեցուր այն շուշանացեալ շրթունքները մայրենի և հայրենի համբոյրներով. ապա մաքուր կտաւներով գոցէ, գոցէ այն արևակերպ դէմքը, զոր քիչ ատենէն պիտի տեսնեմ յերկինս. և գիր ծածկէ 'ի ծոց ամենուս ծնողին, հողուն»: —

Գնաց գետնամած ծերունին, հետն առած Թէոդորի հին ընկերները և ուրիշ ծածուկ քրիստոնեաներ, հաւատացեալ եղբարք և քորք, պարկեշտ կուսանք, որ քողով և մազով արցունքնին ծածկած, և բոցաշարժ ճրագներ բռնած յուղարկաւոր կ'երթային Թէոդորի: Արդեօք կայի՞ն անոնց մէջ, կամ կա՞յր մէկ մը՝ որ յուսացեր էր երկրիս վրայ այլ սրտակից ըլլալու սուրբ նահատակին, և յետ անոր մօրը կանչելու զնա՝ իմս Թէոդոր. — պատմութիւնն կու լռէ:...

Քահանայական և մարտիրոսական պաշտօն, աղօթք և արտասուք կատարուեցան. այն հովանաւոր ծառին ներքև և այն սեղանացեալ քարին քով՝ փորուեցաւ եռանդուն երիտասարդին քընարանն, և ծածկեցաւ մարտիրոսի մարմինն: Անարուեստ պարզունակ քարակոփ խաչ մը վկայ կեցաւ նահատակութեան և հանգստեան սրբոյն Թէոդորի:

Թող գայ հիմա Աղուիթա աղօթելու երանեալ և աստուածազգեաց որդւոյ մը մնացորդաց վրայ: — Ահաւասիկ երանելի տիկինն, ծառէն աւելի մազերը ցրուած՝ փռուած ճակատ 'ի գետին: Իբրև կրկին մայր սողոմոնեան դատարանին, հողն ու Աղուիթա կու գրկեն ու իմս է կ'ըսեն այս որդեակս:... Քիչ մ'այլ սպասէ Աղուիթա, և ահա թագաւորն խաղաղութեան՝ իր ցանկալի վճիռը կու տայ, և յաւիտեան քուկդ կ'ըլլայ քու Թէոդորդ:

## Է

Իսկ հա՞յրն... քմե՛ լցի, ամենևին անարժան այնպիսի անուան․ գաղանացեալն, դիւամոլն կամ դիւաբախն Սուրէն, իր սատանայական սուրը առած՝ և եկածէն աւելի շուտով փախչելով կու հեռանայ․ տեղերն կու փախչին և ինքն իրմէ չի կրնար հեռանալ․ Գոչումն արեան որդւոյն բողոքէ յերկրէ և յերկնից ։ Հեզիկ գառին արիւնն հիմա երկնաւոր նահատակի ահաւոր մատունք դարձած՝ սուրին վրայէն Սուրէնի սիրտը կու պատռտէ․ կու փութայ խելայնորն՝ մօտի աղբիւրը, աղէկ մը կու լուայ կու ջնջէ որդւոյն յետին նշանները, և անով իր և անոր միջի կապն՝ յաւիտեան կու ջնջուի ։ Չորս տարի այն գառնագոյն դահճին, խղճի խայթուածքներուն մատնուած, Սուրէն կեանք մը կամ կենաց պատկեր մը անցընելով, անզեղջ և անյոյս կռապաշտ մոլորութեամբ մեռաւ․ և յիշատակն յանէծս և 'ի տոսկումն մնաց ։... Իւրածին որդւոյն արեան խուլ եղող սիրտն՝ չեղաւ արժանի Աստուծոյ որդւոյն ձայնը լսելու՝ Լուսաւորչի բերնէն, և դառնալու 'ի հաւատս Թէոդորի՝ համօրէն Հայաստանեայց հետ, որք յետ երկու տարւոյ արժանացան այս ամենամեծ պարգևիս ։ — Վասն զի Ս․ Թէոդոր նահատակեցաւ յամին 296, այսօրուան ամսակէտիս (11 մայիսի) 28 տարեկան և 6 ամսական․ Սուրէն կորաւ 300ին․ Ս․ Գրիգոր լուսաւորիչ՝ ելաւ 'ի վիրապէն յաջորդ տարին (301)․ և երբ հետևեալ տարին կ'երթար 'ի Կեսարիա՝ Հայոց եպիսկոպոսապետ ձեռնադրուելու, անցաւ սովորական ճամբէն, Սալհունեաց գաւառէն և աւանէն, ո՛րչափ տարբեր 15 տարի

տաղ անցածէն. փոխանակ շղթայից և կալանաւոր պահապանաց, հիմա Տրդատայ յաղթական կառաց վրայ գրուած և Հայոց ամենէն մեծ նախարարներն չորս դին առած։ Այլ հեզն և ազնուասիրտ հայրն մեր՝ փառաց վրայ աչք չունենալով, իր սուրբ սանուկը կու փնտռէր. կանչեց զառաւ ծերունի քահանայն և հարցուց զԹէոդոր. Դասիոս իր ընտրեալ հովուապետին ձեռքէն բռնելով տարաւ ցուցուց այն տեղը՝ ուր որ վեց տարիէ 'ի վեր կու քնանար անոր հրամանաւ կրնքուածն։ Ի՜նչ կենդանակայլակ արտասուքներ էին որ Լուսաւորչի մը աչքերէ իջան հայրաբար սուրբ երիտասարդին նշխարաց վրայ, որ իր քրտանց առաջին պտուղն, և մեր լուսաւորութեան անդրանիկ խայրիքն էր. անոր համար և առաջին վկայարան՝ յետ Հռիփսիմեանց նշխարաց ամփոփման, Թէոդորի հանգստարանն եղաւ. Ինքնին Գրիգոր դեռ չձեռնադրուած՝ կանգնեց հոն մատուռ մը, և երբեմն երախայ յանձնածը՝ հիմայ սուրբ վկայ մը յանձնելով Դասիոսի՝ գնաց։ Եւ երբ ցանկալի տաճարին իր ճակատը բարձրացուց դէպ յարևելք, աջակողմեան անկիւնը հանգչեցուցին սրբոյն մաքուր նշխարքը. մէկայլ անկիւնն այլ՝ առաքելաքարին դիմաց՝ դրին այն սրբեալ քարը՝ որ մեր գառին զենման տեղան եղաւ։ Այն երկու սիրալի սրբատաշ քարանց մէջ էր անկէ ետև՝ Աղուփիթայ սիրելագոյն հանգստարանն, որ իր որդւոյն մատրան սպասաւոր ըլլալով իբրև հաւատաւոր այրի մը, երկնախառն կեանք մը անցուց հոն. այլ ոչ երկայն ժամանակ։ Որդւոյն նահատակութենէն եօթն տարի վերջը, երբ հասաւ տարեդարձ անոր վերջին անգամ իրեն համբոյր տալուն և անէն փախչելուն, նոյն օրը (Ե մայիսի) Աղուփիթա, որպէս թէ դարձեալ զգալով այն ցաւալի կիլքը և որդին փնտռելու ելլելով՝

աւանդեց աղաւնաշունչ հոգին. և ճգնաւորն մարմինն թաղեցաւ իր որդեկին դիմաց՝ տաճարին դռնէն դուրս: Այդոր և աւելի յիշեալ երկու սրբանիշ քարանց նման չորրորդ մ'այլ դրուեցաւ՝ Աղուիթայ տապանին դիմաց, տաճարին արեւմըտեան կողմը. և ներքեւն հանգչեցաւ Դանիէլ, որ այս սխրալի քան տխրալի հանդիսից մէջ առաջինն ըլլալով հասակաւ, վերջինն եղաւ ժամանակաւ. և ամեն բան կարգելէն կնքելէն ետև, ըսաւ իր ալէկից Սիմէոնին հետ. «Արդ արձակեա, » Տէր, զծառայս քո՝ 'ի խաղաղութիւն. զի տեսին » աչք իմ զփրկութիւն». և հանգեաւ ընդ արդարս:

## Ը

Թէոդորի թէ տապանէն և թէ այն ալքերէն ուր իր արեան կաթիլքն խառնեցան՝ սուրբին լուալէն, շատ հրաշքներ եղան հիւանդաց և մոլեգնելոց վրայ. և ոմանք եղան, ինչպէս կու ցուցընէ երախտապարտ պատմիչին բանակարգութիւնն, յառաջ իսկ քան զշինութիւն մատրանն և զդարձն Հայոց 'ի ձեռն Լուսաւորչին: Հայադիրն չխտրիլեր զմեզ հոս մէկիկ մէկիկ յիշել զանոնք. վկայաւորաց թողումք հին պատմչին նշանածներէն ետքն այլ եղածները քննելու և իմացընելու մեզի իսկ, որ զայս իրենց կ'իմացընեմք: Եւ եթէ հարցընէ սիրողն՝ Թէոդորի վկայարանը կամ ուխտատեղին, երթա՛ յԵրզնկա, և անցնի արևելեան կողմը և հարցընէ Գորոփոս Ս. Թորոս վանքը. զոր սրբազան նահատակէն 1140 տարի վերջն այլ յիշատակած գտնեմք 'ի գիրս՝ «մեծափառ » և բարձրապատիւ ուխտ» կոչմամբ: — Հոն քննէ գտնէ և համբուրէ մեր ըղձաւոր շըրթամք այլ՝ այն չորս սրբանիշ քարերը, և մանա-

դիւական և քրիստոսական երկու կրակներով վառած արևանման աչքերովը, անձկուն զօրավարի պէս, որ յետ ամենայն զօրականաց՝ քայլ քայլ կ՚ինկնայ զօրաւորագոյն Թշնամւոյն առջև, արցունքները զսպելով, և Թողլով այն շէնքը՝ որ երբեմն իրեն ծննդեան տեղ, և ասկէ ետև իրեն համար ամայութիւն և ունայնութիւն էր՝ բոլոր աշխարհիս հետ, Թերևս մօրը դիմաց սարսափելի և անտանելի տեսարան մը չբանալու համար, ելաւ գնաց անդարձ նետի մը պէս։ Ծովակ, ձորակ, աղբիւրք և հիւանդանոց չկրցան արգելուլ զինքը. ամենուն վերջի նայուածք վերջի բարև տալով, և ով գիտէ ինչպէս սրտին չափազանց ծանրութիւնը և լեցունութիւնը Թափելով Դասկայ գրկաց մէջ, և ընդունելով անկէ անմահութեան Ճաշակը և կենաց հացը, երիտասարդական ուժով մ՚այլ ցնցելով զինքն և Թափելով սուրբ ծերոյն դողդոջուն Թևերէն և արտասուաԹոր մօրուքէն, փախաւ գնաց Արբենուտի ձորէն դուրս, և անցաւ մօտիկ և ուելի անծանօԹ անձայն ձորակի մը մէջ, որ կ՚ըսուէր Սեղեմնուտ. և հոն եօԹն օր վեր վար պտըտելով, ՅեփԹայեայ օրիորդին նման, Աբդլմսեհի նման, ինքզինքը հրաժարեցընելով իր ծաղկեալ կեանքէն, իր պայծառ արևէն, անգին մօր մը սրտակտուր ծոցէն, կու նըւիրէր միայն անոր՝ ուսկից կու գան և ուր կու դառնան ամենայն բարիք և ամենայն շունչք արդարոց. մինչև յօգնած և հանգարտած՝ ընկաւ փռուեցաւ այն ծառին տակ և այն քարին վրայ, ուր տեսանք զինքը առաջին անգամ մեր պատմութեան սկիզբը։...

# Ե

Հիմա գիտես, Հայկակ, ուր ըլլալդ, կու ճանչես ով է այդ չքնաղ երիտասարդ. կեցիր հոս պահ մ՚այլ, վերջին պահ. վասն զի այլ երկայն ժամանակ չկայ. մօտեցիր այդ անտաշ ապառաժ սեղանին քով, այդ Սեղեմնուտի սաբեկայ ծառին տակ. ես լռեմ, դու գիտէ՛ և զգա՛։...

Բայց ահա հեռուն վիշապի խօշիւն մը կու լըսուի, առիւծու մռնչիւն մը. ձորեզերքէն վար վարազաթև սեւ արծուի պէս կու սլանայ կ՚իջնայ ծառին վրայ, ծառին ներքև, քարին մօտ... երկայնժանիք հրէշ մ՚է, գազանագոյն քան զվիշապ, քան զառիւծ, քան զարծուի... Ինքն է, ինքն է. սուսերամերկն Սուրէն... որդւոյն փախըստեան վրայ աւելի կատղած և արեան վրէժով լցուած, հին պատեններն քաշելով ժանգոտ սուրը, և «Այդպէս, իմ երիտասարդութեանս երկա՛թ, այնքան կոտրած թշնամեացդ արեամբ չկշտացած՝ ծերութեանս առէն ինծմէ իմ որդ-
» ւոյս արի՛ւնն այլ պիտի ուզէիր թափելու», ըսելով, կ՚առնու, և մոլեգին գիւահարի պէս կ՚ընկնի սարէ սար ձորէ ձոր որդին փնտռելու։... Անշուշտ սատանայական ոգին զինքը քաշէր քշէր տանէր, ինչպէս երբեմն զԿայէն 'ի մահ Աբելի, կամ ինչպէս անկէ առաջ (ըստ դրախտերգակ քերդողին) ինքնին՝ դժոխոց անդունդներէն ելած՝ կու փնտռէր դրախտին դուռը, որ մեր երանեալ նախածնողքը ձգէ 'ի մեղս և 'ի մահ։ Այսպէս դիւական թափառանօք վերջապէս հասաւ Սեղեմնուտի ձորեզրը, և իբրև սեւ արծուի՝ տեսնելով բարձրէն ծառին տակ իր փնտռած որսը, հասաւ շուտ ու թեթև անոր վրայ։... Բայց 'ի հար-

կէ երկու քայլ մնացած՝ բնաբերաբար կամ ակամայ կամօք՝ կանգ առաւ. Հայրենի բնութիւնն զօրանալով՝ դիւական մոլութեան մէջ անգամ հիացման այն սքանչելի հանդարտութեան և անմեղութեան Թափանցիկ քօղին վրայ, որուն նըման բան չէր տեսած երբէք։... Ո՜հ. և ինչո՞ւ չխզեց սուրը ձեռքէն. ինչո՞ւ չցատքեց ընկնալու, և հայրական շրթունքները վեր վար բերելու այն մարգարտաշար վարդերուն վրայ, այն բարակ քրտնահար երեսներուն վրայ. այլ առանց դըպչելու կեցաւ կանչեց կերկերեալ կոկորդով մը՝ « Աթենոդո՛ր, որդեակ »։... Թէոդոր հեզամրափ աչուըները կէս մը բանալով և կէս մը գլուխը վերցընելով՝ պատասխանեց. « Հա՛յր իմ »... վերջի՛ն անգամ հօր և որդւոյ անուանակոչութիւնք։ Սուրէն դարձեալ այլայլած՝ հարցուց անոր, թէ պիտի հաւանի՞ էր կամացը և Թողլով զՔրիստոս դառնա՞յ 'ի պաշտօն կռոց։ — Թէոդոր՝ « ես Քրիստոսի հաւատացեալ եմ, ըսաւ, և այս հաւատոյս » վրայ հոս կու մնամ ». և նորէն դրաւ գլուխն 'ի քարին, խփեց շրթունքը և աչքերը... մնա՛ք բարով արև, կեանք և աշխարհ։ — Բայց մէկ անգամ մ'այլ բացաւ Թէոդոր կիսակէս աչքը և շըրթունքը, երբ Սուրէն վայրենի վազեր պէս մէկ ցատքելով ձգեց ձախ ձեռքը, և որդւոյն երկու Թիզ խարտեաշ մազերէն բռնելով վեր քաշեց խնձորակերպ գլուխը, և պարկեշտ պատմուճանին օձիքէն կարապաձև պարանոցն երկընցաւ։... Ո՛վ հրեշտակային կերպարանք, ի՜նչպէս կ'այլափոխիս։ — Իսկ Սուրենայ աջ ձեռքէն յանկարծ փայլակ մ'էր շողաց շեշտակի։...

Հոս միատեղ մէկզի կ'ընկնան՝ պատմչին գրիչն, Սուրենի սոսկալի սուրն, և Թէոդորի ճերմակ վզէն նռնանման ճեղքուած կարմրահատ գլուխն։



Թէոդոր Նեզամբրաւի աչուըներըն կէս մը բա-
նալով, և կէս մը գլուխը վերցնելով...

## Զ

Ո՞ւր են հիմա մեր մայիսի ծնած ծաղկունքն, ո՞ւր մնացին մրագարդ մարերեայ մրգունքն : — Այսպէս, չկայ ծաղիկ հողածին՝ որ չցամքի. չկայ պտուղ երկրաբոյս՝ որ չթօթափի. ամենայն դալար ու պայծառ, յետ քիչ ժամանակի պիտի ըլլայ մռայլ ու խաւար: Սակայն ծաղիկ այն ծաղիկն է, որ երբ ճղէն այլ զատուի՝ դարձեալ մընայ անթառամ, և մանաւանդ նոր գեղեցկութեամբ մը յաղթէ կանգուն ու ճօճուն ծաղկանց: Այսպիսի ծաղիկ է հայրապէն գաւնանմուն կոտորեալ երիտասարդն Թէոդոր, թաւալեալ իր հօվանաւոր ծառէն և իր հանգստեան քարէ բարձին տակ՝ օշօշով և մանուշով հիւսուած խոտերու վրայ, Սեղեմնուսի սգաւոր ձորակին մէջ. ուր հեզամնչիկ հովիկն խոնարհած կու խաղայ անոր արիւնլուայ վարդէ գիսակաց հետ. մինչուան որ երեկոյեան զովութիւնն դադրեցընէ և պաղեցընէ կարմիր կաթիլները, և գիշերուան լուսագընտիկն վերէն ծաթէ արծաթափայլ գողգոջուն ճառագայթները, որք կու մարմըրին, շուք մը կու գտանան՝ Թէոդորի մարմնէն ծագած հրաշափայլ լուսոյն քով: — Այս լոյսն անշուշտ առաջնորդեց այն մարմինը մեծցընող և գգուող և հիմա զինքը պատանթունգ փնտռող անձի մը, մօր մը : . . . Զանսնենք, չքննենք մենք այն մայրը Սեղեմնուսի մէջ: — Դու այլ դարձիր մայրիկ, դարձիր Աղուխթա՝ առ Դասխոս, և հրաման տուր. « Ե՛լ, հայրիկ, ել գնա 'ի Սեղեմնուս, հոն կու գտնես իմ հայրապէն զաւնունկս, իմ մրրկաթափ վարդենիս, իմ նուաղած աղեքս. ա՛ռ ու լուա այն արշալոյս ճակատը. բայց կիսալուայ ըրած՝ բեր ինծի փունջ

մը ոսկեթել մազերէն, որ գլխուս վերջին պսակ ընեմ. լեցուր այն շուշանացեալ շրթունքները մայրենի և հայրենի համբոյրներով. ապա մաքուր կտաւներով գոցէ, գոցէ այն արևակերպ դէմքը, զոր քիչ առենէն պիտի տեսնեմ յերկինս. և գիր ծածկէ 'ի ծոց ամենուս ծնողին, հողուն »: —

Գնաց գետնամած ծերունին, հետն առած Թէոդորի հին ընկերները և ուրիշ ծածուկ քրիստոնեաներ, հաւատացեալ եղբարք և քորք, պարկեշտ կուսանք, որ քողով և մազով արցունքներն ծածկած, և բոցաշարժ ճրագներ բռնած յուղարկաւոր կ'երթային Թէոդորի: Արդեօք կայծն անոնց մէջ, կամ կայծ մէկ մը՝ որ յուսացեր էր երկրիս վրայ այլ սրտակից ըլլալու սուրբ նահատակին, և յետ անոր մորը կանչելու զնա՝ իմս Թէոդոր. — պատմութիւնն կու լռէ:...

Քահանայական և մարտիրոսական պաշտօն, աղօթք և արտասուք կատարուեցան. այն հովանաւոր ծառին ներքև և այն սեղանացեալ քարին քով՝ փորուեցաւ եռանդուն երիտասարդին քընարանն, և ծածկեցաւ մարտիրոսի մարմինն: Անարուեստ պարզունակ քարակոփ խաչ մը վկայեցաւ նահատակութեան և հանգստեան սրբոյն Թէոդորի:

Թող գայ հիմա Աղուիթա աղօթելու երանեալ և աստուածազգեաց որդւոյ մը մնացորդաց վրայ: — Ահաւասիկ երանելի տիկինն, ծառէն աւելի մազերը ցրուած՝ փռուած ճակատ 'ի գետին: Իբրև կրկին մայրը սողոմոննեան դատարանին, հողն ու Աղուիթա կու գրկէ ու իմս է կ'ըսէ այս որդեակս:... Քիչ մ'այլ սպասէ Աղուիթա, և ահա թագաւորն խաղաղութեան՝ իր ցանկալի վճիռը կու տայ, և յաւիտեան քուկդ կ'ըլլայ քու Թէոդորդ:

# Է

Իսկ հա՜յրն... քմա՜ լիցի, ամենևին անարժան այնպիսի անուան. փաղանացեալն, դիւամոլն կամ դիւաբախն Սուրէն, իր սատանայական սուրը առած՝ և եկածէն աւելի շուտով փախչելով կու հեռանայ. տեղերն կու փախչին և ինքն իրմէ չի կրնար հեռանալ. Գոչումն արեան որդւոյն բողոքէ յերկրէ և յերկնից: Հեզիկ գառին արիւնն հիմա երկնաւոր նահատակի ահաւոր մասունք դարձած՝ սուրին վրայէն Սուրէնի սիրտը կու պատռէ. կու փութայ խելացնորն՝ մօտի աղբիւրը, աղէկ մը կու լուայ կու ջնջէ որդւոյն յետին նշանները, և անով իր և անոր միջի կապն՝ յաւիտեան կու ջնջուի: Չորս տարի այն դառնագոյն դահճին, խղճի խայթուածքներուն մատնուած, Սուրէն կեանք մը կամ կենաց պատկեր մը անցընելով, անզեղջ և անյոյս կռապաշտ մոլորութեամբ մեռաւ. և յիշատակն յանէծս և 'ի սոսկումն մնաց:... Իւրածին որդւոյն արեան խուլ եղող սիրտն՝ չեղաւ արժանի Աստուծոյ որդւոյն ձայնը լսելու՝ Լուսաւորչի բերնէն, և դառնալու 'ի հաւատս Թէոդորի՝ համօրէն Հայաստանեայց հետ, որք յետ երկու տարւոյ արժանացան այս ամենամեծ պարգևիս: — Վասն զի Ս. Թէոդոր նահատակեցաւ յամին 296, այսօրուան ամսակէտիս (11 մայիսի) 28 տարեկան և 6 ամսական. Սուրէն կորաւ 300ին. Ս. Գրիգոր լուսաւորիչ՝ ելաւ 'ի վիրապէն յաջորդ տարին (301). և երբ հետևեալ տարին կ'երթար 'ի Կեսարիա՝ Հայոց եպիսկոպոսապետ ձեռնադրուելու, անցաւ սովորական ճամբէն, Սալհունեաց գաւառէն և աւանէն, որչափ տարբեր 15 տարի

առաջ անցածէն. փոխանակ շղթայից և կալանաւոր պահապանաց, հիմա Տրդատայ յաղթական կառաց վրայ գրուած և Հայոց ամենէն մեծ նախարարներն չորս դին առած։ Այլ հեզն և ազնուասիրտ հայրն մեր՝ փառաց վրայ աչք չանենալով, իր սուրբ սանուկը կու փնտռէր. կանչեց զտաւ ծերունի քահանայն և հարցուց զԹէոդոր. Դասիկ իր ընտրեալ հովուապետին ձեռքէն բռնելով տարաւ ցըցուց այն տեղը՝ ուր որ վեց տարիէ 'ի վեր կու քնանար անոր հրամանաւ կընքուածն։ Ի՛նչ կենդանակայլակ արտասուքներ էին որ Լուսաւորչի մը աչքերէ իջան հայրաբար սուրբ երիտասարդին նշխարաց վրայ, որ իր քըրտանց առաջին պտուղն, և մեր լուսաշնորհութեան անդրանիկ խայրիքն էր. անոր համար և առաջին վկայարան՝ յետ Հռիփսիմեանց նշխարաց ամփոփման, Թէոդորի հանգստարանն եղաւ. Ինքնին Գրիգոր դեռ չձեռնադրուած՝ կանգնեց հոն մատուռ մը, և երբեմն երախայ յանձնածը՝ հիմայ սուրբ վկայ մը յանձնելով Դասիոսի՝ գնաց։ Եւ երբ ցանկալի տաճարին իր ճակատը բարձրացուց դէպ յարևելք, աջակողմեան անկիւնը հանգչեցուցին սորոյն մաքուր նշխարքը. մէկայլ անկիւնն այլ՝ տապանաքարին դիմաց՝ դրին այն սըրբեալ քարը՝ որ մեր դառին զենման սեղան եղաւ։ Այն երկու սիրալի սրբատաշ քարանց մէջ էր անկէ ետև՝ Աղուփթայ սիրելագոյն հանգստարանն, որ իր որդւոյն մատրան սպասաւոր ըլլալով իբրև հաւատաւոր այրի մը, երկնախառն կեանք մը անցուց հոն. այլ ոչ երկայն ժամանակ։ Որդւոյն նահատակութենէն եօթն տարի վերջը, երբ հասաւ տարեդարձ անոր վերջին անգամ իրեն համբոյր տալուն և անէն փախչելուն, նոյն օրը (Ց մայիսի) Աղուփթա, որպէս թէ դարձեալ զգալով այն ցաւալի կիրքը և որդին փնտռելու ելլելով՝

աւանդեց աղաւնաշունչ հոգին. և ճգնաստուն մարմինն թաղեցաւ իր որդեկին դիմաց՝ տաճարին դռնէն դուրս: Այդոր և առջի յիշեալ երկու սըրբանիշ քարանց նման չորրորդ մ'այլ դրուեցաւ՝ Աղուփիթայ տապանին դիմաց, տաճարին արևմըտեան կողմը. և ներքևն հանգչեցաւ Դանիէլ, որ այս սխրալի քան տխրալի հանդիսից մէջ առաջինն ըլլալով հասակաւ, վերջինն եղաւ ժամանակաւ. և ամէն բան կարգելէն կնքելէն ետև, ըսաւ իր ալէկից Սիմէոնին հետ. «Արդ արձակեա, »Տէր, զծառայս քո՝ 'ի խաղաղութիւն. զի տե»սին աչք իմ զփրկութիւն». և հանգեաւ ընդ արդարս:

## Ը

Թէոդորի թէ տապանէն և թէ այն աղբերէն ուր իր արեան կաթիլքն խառնեցան՝ սուրին լուալէն, շատ հրաշքներ եղան հիւանդաց և մոլեգնելոց վրայ. և ոմանք եղան, ինչպէս կու ցուցընէ երախտապարտ պատմըչին բանակարգութիւնն, յառաջ իսկ քան զշինութիւն մատրանն և զդարձն Հայոց 'ի ձեռն Լուսաւորչին: Հայադիրն չխափուէր զմեզ հոս մէկիկ մէկիկ յիշել զանոնք. վկայասիրաց թողումք հին պատմչին նշանածներէն ետքն այլ եղածները քննելու և իմացընելու մեզի իսկ, որ զայս իրենց կ'իմացընեմք: Եւ եթէ հարցընէ սիրողն՝ Թէոդորի վկայարանը կամ ուխտատեղին, երթա՛ յԵրզնկա, և անցնի արևելեան կողմը և հարցընէ Գորօֆու Ս. Թորոս վանքը. զոր սրբազան նահատակէն 1140 տարի վերջն այլ յիշատակած գտնեմք 'ի գիրս՝ «մեծա»փառ և բարձրապատիւ ուխտ» կոչմամբ: — Հոն քննէ գտնէ և համբուրէ մեր ըղձաւոր շըրթամբ այլ՝ այն չորս սրբանիշ քարերը, և մանա-

ւանդ հիւսիսային անկեանը. հոն կանգնի և համբուրէ (եթէ պահուի ցարդ) ձողաբարձ խաչի մը մէջ գրուած սրբոյն Թէոդորի քաղցրաբարբառ յիսուսախօս լեզուն, որոյ համար այլազգիք անգամ, կ'ըսուի թէ այն տեղը կ'անուանեն Սըրըգուը Ս. Թորոս (եթէ Գորոփու կամ Սալահունի անուանէն փոխուած չէ այդ անունը): Յանձնեմք իր հետ՝ աշխոյժ և ճարտարարուեստ հասակակցաց Ս. Թէոդորի, գիտել նկարել և ցուցընել մեզի այս պատմութեանս մէջ յիշեալ տեղուանքը. երկու ձորակները, երկու աղբիւրները, ծովակը, աւանները, դղեակները և այլն. – յանձնեմք անոնց վառվռուն մտաց և կրթեալ սրտից և մատանց՝ նուագել և երգել այս պատմութեան և եկեղեցւոյ արժանի և ընտիր գրուագն. – աղաչեմք մեր եկեղեցւոյ գլխաւորաց, իրենց զանազան հոգոց մէկը պակսեցընելով կամ մէկ մ'այլ աւելցընելով՝ այսպիսի սիրալի սրբոյ մը յիշատակը չխնգել միայն Յայսմաւուրաց թափթփած թերթից մէջ, այլ բարձրաձայն հռչակել տալու սուրբ խորանաց վրայ, եթէ արդարև սրբոյն Գրիգորի Լուսաւորչի գործակից և հոգեկից ըլլալն կու ճանաչեն իրենց առաջին հոգ և պարտք, և պաշտամամբք սրբոց՝ բարձրացընել զփառս Աստուծոյ:



ժ

# ԿԱՐՄԻՐՆ ՎԱՐԴԱՆ

## 2 Յունիսի, 451.

Արեգակն իր տարեկան ընթացից մէջ դեռ չէ հասած իր բարձրագոյն դիտանոցը, կրակաթափ աչքերով նայելու արարածոց վրայ. դեռ հայկականն մրազարդ մարերի կու շարունակէ իր գունաւոր օրերը, մանաւանդ մեր հայրենեաց բարձրատափ գաւառաց մէջ. և դեռ այս օրուան նըշանակեալ ամսաթուիս (2 յունիս – 26 մարերի) ըստ վկայութեան անուշգրոյց Եղիշէին, «Գար»նանային է ժամանակն և դաշտքն ծաղկալից»: Բայց արդէն Արարատայ ցածուն ծաւալ դաշտաց մէջ տաքն կոխած է. և եթէ առաւօտն և երեկուն զով այլ ըլլան, բոլոր օր մը անցընելու համար, Հայկակ, պէտք է նման նազելույն Ասքայ փնտռել հով հով սարեր, զով զով ջրեր. «զբօսանս բարձանց և զբօսանս հովտաց»:

Ահա գեղեցիկ ընդարձակ բարձրահովիտ մ՚այլ, որ աւելի 3000 տարի առաջ ընտրուած էր իբրև գերագոյն և հաճոյագոյն հովասուն տեղի Հայկազն նահապետաց, անոնց զօրաց և ազատաց, «ուր էին հոճոց գէտբէնք Թագաւորացն Հայոց», ըստ բանից հին ազգային պատմըչի. որոյ արևմըտեան հիւսիսային կողմէն՝ արարատեան Մասեաց

բարձրաբերձ դարերն դուրանալով դաշտաւանան. արեւելքէն գետն Երասխ դարաւաղ կու պատէ, հարաւային կողմէն՝ ոչ շատ բարձր լերանց շարք կ'անջրպետեն զայն 'ի Կոգայովտէ և 'ի պարատափէն Վանայ: Այս սահմանագրեալ դաշտահովիտս իբր 3-4000 ոտք բարձր յերեսաց ծովու, ցածագոյն Երասխայ դաշտին մէջ բնակող Հայկազն Նահապետաց ամարանոց եղաւ, Քրիստոսէ 13 դար առաջ, երբ զբօսասէրն և մեծն զաւակըն Տաւարշ (որպէս ստուգաբանէ Գր. Մագիստրոս) շինեց հոն քաղաքաւան մը, 'ի բնակութիւն ամառուան, և իր անուամբն կոչեց Տաւարշաւան կամ Տաւարշան. յորմէ բոլոր շրջակայ կողմանքն և գաւառն կոչեցան Տաւարշական կամ Տաւարշան. մինչև Քրիստոսի Բ դարուն սկիզբը Այրարատին Սմբատ սպարապետ Բ. Արտաշիսի արշակունւոյ՝ Ալանաց Արդող կամ Արտազ գաւառէն պատերազմի գերիներ բերելով, հրամանաւ իր սանիկ Թագաւորին հոն բնակեցուց, և անոնց հայրենի գաւառին անուամբ՝ Տաւարշանն այլ ըսուեցաւ Ալփող կամ Ալփողական գաւառ. իսկ հիմայ իր անուանի և զարմանալի քարաբերդ քաղաքին անուամբ կ'ըսուի Մակու: Այս բնութեան և արուեստի շինուած և հրաշակերտ տեղս՝ սրբազան և հին զօրութիւն մ' այլ պատուեր, սիրեր, սրբեր է. — կրօնքն՝ Հայաստանեայց եկեղեցւոյ խորագոյն խորհրդոց և հրաշափառագոյն հանդիսից տեղ ըրեր է Տաւարշական դաշտերը: — Վերոյիշեալ Արտաշիսի հայրն՝ Սանատրուկ, կ'երևի թէ քան զհինն Արտաշատ և քան զնոր ձեռակերտ նորոգած Մծբինն կամ Մծուրս՝ սիրեր զայս տեղս, և իր անունը թողուց հոն լեռնաբլրի մը վրայ, Սանատրուկ ըսուած, որ թերևս հիմայ Տէփէ կ'ըսուի. ասոր քով եկաւ առաքեալն Քրիստոսի Թադէոս, և աշակերտեց զդուստր Թագաւորին՝

զօրաւորդն Սանդրուխտ, առաջին կայս վկայուհի Քրիստոսի, և ընդ նմին նահատակեցաւ զքանչելի վկայութեամբ. որոց յիշատակին՝ Հայաստանին ան-փոփոխած է քաղոց (դեկտեմբեր) ամսոյն մէջ օր մը: Այս երկուքին վկայարանն այլ (քրիստոնէութեան հնագոյն ուխտատեղեաց և տաճարաց մէկն) կու պատուի մինչև ցայսօր Թադէի վանք անուամբ, որ և 'ի պատիւ առաքելոյն՝ Հայոց գլխաւոր եպիսկոպոսական Աթոռոց մէկն եղաւ, և 'ի միջին դարու՝ մի 'ի չորեց արքեպիսկոպոսաց՝ որոց հարկ էր գտուիլ յօծման նորընտիր կաթուղիկոսի: Առաջին երեք դարուց քրիստոնեայք, գաղտնապէս կու պատուէին այս սրբազան տեղը, առ անհեթանոս թագաւորացն Հայոց. նախախնամութիւնն այլ մնայուն տեսչութեամբ կու հսկէր անոր վրայ. և ուր Հայոց քրիստոնէութեան առաջին արեգակն ծագեցաւ, անտի երկրորդ անգամ ալ ծագել տուաւ զարեգակն Լուսաւորչի. որ յետ 200 տարւոյ վկայութեան սուրբ առաքելոյն և Սանդխտոյ և անոր հօրքրոջն Աւագուհեայ, անոնց նշխարաց հանգստարանին քով իր էութեան սկիզբն առաւ՝ 'ի ծոց ուրիշ Ոգոհեայ, կնոջ Անակայ, երբ կու գայր սա 'ի Պարթևաց իբր փախստական՝ խաբել և սպաննել զԽոսրով թագաւորն մեր:

Ի՞նչ զարմանալի և աստուածախնամ տեսչութիւնք. Հայոց առաքելոյն Թադէոսի թաղման միայնարանն՝ Հայոց նոր առաքելոյն՝ Գրիգորի՝ յղութեան առագաստ: Ո՞րքան զքանչելի է Շաւարշան՝ մեզի այսպիսի հոգևոր հանդիսից տաճար ըլլալովն, քան թէ մեր թագաւորաց հովանոց:

Այս երկու սրբախորհուրդ դիպաց՝ նորակերպ նման մ' այլ հանդիպեցաւ նոյն տեղուանքը, Լուսաւորչի եղելութենէն 200 տարի ետև, որ թէ քաղաքական և թէ կրօնական կերպարանօք

հռչակեցաւ· և ահա այն դէպքն է զոր նշանակէ Հայադիրն այս ամսակէտիս· որ ասէ տասնեչորս դար առաջ (451 Թուին Քրիստոսի, յունիսի 2) էր շաբաթ օր Հոգեգալստեան տօնին· յորում հանդիպեցաւ Շաւարշանի երրորդ մեծ ազգային քաղաքակրօն դիպուածն, այն է ՆԱՀԱՏԱԿՈՒԹԻՒՆ ՎԱՐԴԱՆԱՆՑ:

## Բ

Այս դիպուածս, այս պատմութիւնս, այս անունս անգամ այնքան հռչակեալ և համբաւեալ է յոզգիս, որ ամենէն քիչ տեղեկութիւն ունողն այլ՝ երբ լսէ Քաջ կամ Կարմիր Վարդան՝ արտասուօք կու ցատքէ· և Թերևս ոմանք ուզեն յանկարծ գտնուիլ ինչուան նոյն Արտազական գաւառին մէջ, նոյն Շաւարշական դաշտը, նոյն Աւարայրի գեղին քով, նոյն Տղմուտ գետոյն եզերքը, ուր այն մեծ և բաղդատահման ճակատամարտն և անմահական գործն կատարուեցաւ: Բանայ փափագողն՝ ժամանակակից հեղինակաց, Եղիշէի և Ղազարայ Փարպեցւոյ, գեղեցիկ գրուածքը և մանրամասն պատմութիւնները, և ժամ մը, երկու ժամ՝ անոնց հետ ժուռ գայ հոն· հոն՝ ուր Հայութեան անջինջ, անմոռաց, յաւիտենական արձանաց մէկն կանգուն կայ և պիտի մնայ: Իսկ ես հետդ, Հայկակ, կաղ'ի կաղ ընթացիւք կ'ուզեմ ման գալ, և քանի մը բան հեռուէն դիտել այն մեծ տեսարանէն:

Կանխենք ուրեմն քան զմեծ գործողութիւնն՝ գոնէ օր մը, գոնէ գիշեր մը, այն գիշերն որ յունիսի առաջին օրը երկրորդին կու խառնէ· փութանք փոքր Մասեաց սարերէն զարվար սահելով՝ ինչուան յետին բարձրատափին, որ կու նայի

Շաւարշան դաշտին վրայ: Արդէն այս երեկոյիս նման՝ 14 դար առաջ այլ՝ այս անհատնում գիշերային լապտերս, այս բազմաթեւ լուռ վկայս, այս խորհրդապահ լուսինս՝ սոյնպէս բոլորացեալ լուսալիր կու բարձրանար մեր եկած արեւմտեան գարից ետեւէն՝ Մասեաց-Ոտին կողերէն, Արարատայ դաշտին հորիզոնէն. և ահա հանդարտ համասփիւռ և իբրև իւղակաթ կակուղ ճառագայթներով կու լուսաւորէ մեր փնտռածը, Շաւարշական Աւարայրի ընդարձակ դաշտը. որ մեր կեցած տեղէն դէպ 'ի յարևելս հարաւոյ երկընցած, իրեն ձևիչ կ'առնու Տղմուտ գետոյն ընթացքը, այն որ արևմտեան հիւսիսային կողմէն իջնելով՝ ծանր և պղտոր ալիքները կու թափէ յԵրասխ[1], և այդ եռանկիւնաձև կամ երկայնաբոլոր դաշտին մէջ՝ իբրև մոխրագոյն երկայն շըղթայ մը կու շարժի լուսնին նշուլից ներքև: Նեղ ու նուազ ջուր մ'է նա. բայց ի՜նչ լայն վիհ, ի՜նչ խոր խորոց՝ իր եզերքը տարածուած երկու աննման բանակաց մէջ. որոնցմէ մեր կողմը մեզի մօտ եղածն՝ լուսնէն և կրակէ աւելի պայծառութե̃ լուսաւորուած ճերմակ ու գոյնագոյն կու տեսնեմ. մէկայլն՝ կարծեմ թէ հեռաւորութենէն աւելի պատճառաւ մը՝ խառն ու խաւար կ'երեւայ, թէ և ահեղ անտառի պէս սփռուած ու դաշտին մեծ մասը ծածկած: Այս երկու բանակաց միջի շարժմունքն և գործքերն այլ ի՜նչ տարբեր. հեռաւոր և սեւ բանակն միայն սովորական պատերազմի պատրաստութիւններ կու ցուցընէ. իսկ մօտաւորս աւելի կրօնական և հայրենական հան-

1 Այս գետս հիմա ի՞նչ կ'ըսուի և ի՞նչ ընթացք ունի, յայտնի չէ մեզի. Աբրահամ Գ Կրետացի՝ կաթուղիկոս՝ Աստապատայ մօտ Կարմիր Վանքին քով յԵրասխ խառնուող գետը կու սեպէ Տղմուտ:

դիտարան կ'երևի քան պատերազմի մարզարան։
Աժիկայ է Հայոց բանակն. վերջին բազմաթիւ֊
բանակ՝ գումարեալ յանուն համօրէն Հայութե,
իր հնացեալ իշխանաց ձեռօքն. 66,000 Հայ պա֊
տերազմողք, ձիաւոր և հետևակ, խաչանիշ վրա֊
նաց և դրօշուց տակ ժողոված են՝ զազգ և զկրօնս
պաշտպանելու։ Ի՛նչ պանծալի գունդ և ի՜նչ
բազմութիւն կորձնաց մեր աչքին առջև։... Սա֊
կայն ի՞նչ են այդ վեց ու կէս բիւր զօրքն Հայոց՝
Հայաստանի միահեծան և միահաւան ազգու֊
թեան օրերուն՝ հարկաւոր և վտանգի ժամանակ
գումարած բանակին քով։ Սովորական ատեն՝
Հայոց աշխարհապահ զօրութիւն էր 120,000, ո֊
րոց 40,000ի չափ Թագաւորական գունդն էր,
84,000 այլ նախարարաց և տոհմից. իսկ մեծ պա֊
տերազմաց ժամանակ՝ կրկին և երեքկին աւելի
ըլլալն՝ այսօր դիմացի բանակնիս կու վկայէ. յու֊
րում հազիւ քսան և հինգ տոհմի կամ ցեղի իշ֊
խանք և զօրք կան, որոց որոշեալ զօրաբաժինն
20,000ի չէր հասներ. այս ցեղերուն շատին մէկ
մասն, և բուն իսկ նախարարն այլ (մեծ դժբաղ֊
դութեամբ գետոյն այնդիի կողմն են, պարսկա֊
կան բանակին հետ. և ցաւելով պէտք է տեսնել
հոն այլ նոյն չափ թիւ մը Հայոց. (վասն զի ըստ
վկայութեան պատմիչին՝ ուրացեալն Վասակ թէ
իր Սիւնեաց աշխարհէն և թէ ուրիշներէ «ժողո֊
» վեաց զամենայն փայթակղութիւն, և արար
» գունդ զօրաց բազմաց», որք կամաւ կամ ա֊
կամայ խառնեցան ընդ թշնամիս հայրենեաց և
եկեղեցւոյ. (ըստ տեսլեան սրբոյ Լուսաւորչին՝
զառինքն սպիտակք դառնալով 'ի սեաւ գայլս)։
Գառանց ու գայլոց գունդերն միատեղ առնելով՝
120 հազար Հայ կ'երևան դիմադէմ Աւարայրի
դաշտին մէջ. ղօրս բաժնելով կամ ջոկելով ըստ
աշխարհաց Հայաստանի՝ կու տեսնենք որ հին

Հայոց 15 կամ քսան աշխարհաց թուէն, միայն հինգ կամ վեց աշխարհքէ եկած են այս գունդերս. որ են Այրարատ, Տուրուբերան, Վասպուրական, Սիւնիք, Մոկք. իսկ ուրիշ աշխարհքներէ հազիւ ոմանց մէկ երկու գաւառ կամ տոհմ կու յիշուի. Մեծ Հայոց չորս մասին գրեթէ երեքն դուրս է այս դաշտէս. բոլոր արեւմտեան մասն՝ Յունաց կայսեր իշխանութեան տակ է. և թէպէտ Հմայեակ՝ եղբայր մեծին Վարդանայ, կու ջանայ կ'աշխատի անոնցմէ այլ զօրք ժողովել, բայց ոմանք չեն շարժիր կայսեր վախէն, ոմանք այլ ուշանալով չեն հասնիր ատենին. իսկ հիւսիսային և արեւելեան գաւառք՝ Վրաց և Աղուանից խառնուած՝ անոնց հետ անշարժ կու կենան. հարաւային ամուր աշխարհք այլ՝ Աղձնիք և Տմորիք՝ գրեթէ ինքնագլուխ չէզոք կու մնան. թէ և ասոնց ամենուն այլ հրաւէր և աղաչանք ղրկուած էր. և ոչ միայն ասոնց, այլ և Վրաց, Աղուանից և Հոնաց, գալ միաբան Պարսից դէմ կենալու. բայց երկու խորամանկ և ազգուրաց Վասակք, մէկն յարեւմուտք կեցած, մէկայլն յարեւելք, ամենայն հնարքով և ստութեամբք զանոնք հեռու բռնեցին Վարդանեան գնդէն։ Այս տեսութենէս կ'իմացուի որ այսպիսի ծանր հարկի ատեն՝ եթէ բոլոր Հայք միաբան մէկ կողմն ժողովէին, Վարդան փոխանակ 66,000ի կրնար 300,000 զօրք այլ ունենալ։ Որչափ այլ մեծ երեւի այս թիւս, դեռ շատ պակաս է համեմատելով վերը ցուցած հաշուին և թուոյ աշխարհաց և գաւառաց և զօրաբաժնին Հայոց։... Թողլով երբեմն կարելին և այժմ անկարելին, դառնանք եղածին, և դիմացնիս կեցած մեր հայակոյտ բանակին։

Զօրս գունդ կամ թեւ բաժնուած է այս բանակս. երեքն երկայնատարած շարուած են Աւարայրի դաշտին մէջ Տղմուտայ եզերքը. վասն զի

դիմացը Թշնամին այլ նոյնպէս տարածուած է. իսկ մէկայլն՝ երեքին ետևէն մէջ տեղուանքը կեցած է, իբր վերջապահ և օգնական վտանգելոց. մեր կեցած տեղւոյն մօտիկնն է՝ Առաջին և աջ Թևն հայ բանակին, որ Տղմուտայ գետոյն այլ առաջակողմն է, ուստի կու վարէ ալիքը դարվար յարևելս յԵրասխ. այս առաջին մասին Թևապետն է հաւատարիմ Հայոց ներքին հազարապետն, աշխարհատեսուչն, որ Մուշեղ կ՚ըսուի, և է իշխանն Խորխոռունեաց ԽՈՐԷՆ, կարգեալ փոխանակ ուրացող իշխանին Գադիշոյ. Հայկայ որդւոյն անունը և քաջութիւնը 3000 տարիէ վերջ այլ փայլեցնող: Իրեն օգնական գնդապետքն են, բաց յայլոց պայազատաց հին նախարարաց, ԱՐՍԷՆ ԸՆԾԱՅԻՆ և ՆԵՐՍԷՀ ՔԱՋԲԵՐՈՒՆԻ. ասիկա Վանայ ծովուն հիւսիսային կողմէն եկած. առաջինն՝ որ Աշոտ կոչմամբ կու գովուի 'ի պատմըչէն, թէ և ամէն ցեղէ աւելի քիչ նահատակակից ընկեր ունեցաւ այս պատերազմիս մէջ, բայց զօրահանդիսին ատեն՝ այս բանակիս մէջ գտնուող ամէն իշխանացմէ աւելի և անհամեմատ աւելի զօրք կու տար, 4000 հոգի, որ (եթէ սխալ չէ թիւն) կու նշանակէ կամ բազմաթիւ կամ պատերազմող ու սահմանապահ տոհմ մը, որուն պատմութիւնն և տեղն անգամ մեզ յայտնի չէ, բայց թերևս Վասպուրականի Ընձահից կամ Անձահից գաւառն ըլլայ, որ յետոյ յանուն գլխաւոր բերդաւանին՝ Կոտոր ըսուեցաւ, (հիմա Քիւդիւր, 'ի սահմանի պարսկական Հայոց): — Միջին Թևոյն ընդհանուր հրամանատարն է ՎԱՀԱՆ ԱՐԾՐՈՒՆԻ, որ այս Հայոց բանակիս մէջ, յետ սպարապետին (Վարդանայ) առաջին նախապատիւ իշխանն է, և ըստ կարգի ազնուութեան բարձրագոյն է քան զնա այլ. (վասն զի հին Ասորեստանի տիեզերակալ թագաւորներու ցեղէն է). ըստ արգեանց

այլ արժանապէս առաջին ճանչցիր զնա, թէ և նախ յիշած պատմըչաց (Եղիշէի և Ղազարայ) մէջ չգտնես անոր գեղեցիկ յիշատակները, զոր անզգամ և խորթ ձեռք մը (Բարծումա ասորին) վերուց ջնջեց գեղեցկագիր պատմութենէն։ Վահանայ ընկեր գնդապետք են ՄԻՐՇԱՊՈՒՀ ՄԱՐԴՊԵՏՆ կամ իշխանն Մարդպետութեան, որոյ կալուածքըն էին հին ատեն Նախիջևան գաւառին սահմաններն, և պաշտօնն էր Հայոց թագուհւոյն և արքունի գանձուց հազարապետութիւնն, որ և գունդ մը արքունի զօրաց ունէր իր ձեռքին տակ. ասոր հետ է և ԱՐՏԱԿ նախարարն Մոկաց, որ թէ և կոշտ ու խոշոր երկրի և բնակչաց տէր էր, այլ ինքն շատ կիրթ և ազնիւ մարդ, և ըստ վկայութեան ժամանակակից պատմըչին՝ Նփոյի, հոճէոփ, փաղ և Էրանէլի, և Վարդանայ սպարապետին յատուկ սիրելի ու սրտակից մտերիմն, թէ ազնիւ և մտացի բարուցն համար, և թէ հին ծանօթութեանն և երախտեացն։ (Վասն զի յետ մահուան Ս. Սահակայ՝ երբ պարսիկ մարզպանք եկան 'ի Հայս՝ մեր աշխարհին կարգերը վեր վար ընելու, Վարդան թողլով իր իշխանութիւնը և երկիրը՝ քաշուեցաւ յաշխարհն Մոկաց, յերկիր Արտակայ, ամուր բերդ մը, և մեծ պատիւ և սէր գտաւ այս իշխանէս. այնպէս որ երբ յետ ժամանակաց՝ Պարսից թագաւորին դուռը՝ Հայոց նախարարք տագնապած էին, իրենց բերան առին զԱրտակ, որ համոզէ զՎարդան իրենց հետ միաբանելու 'ի խորհուրդ ուրացութեան)։ Հիմայ Վարդան զԱրտակ բանակին միջոցը դրաւ։ Այս երեք մեծ իշխանաց հետ կային ուրիշ մեծամեծ նախարարաց պայազատք և թագաւորական զօրաց գլխաւորներ։ -- Բանակին ձախ թևոյն զօրավարքն էին, ՓԱՓԱԳ ԱՌԱՒԵՂԵԱՆ. թէ ինքն և թէ իր ցեղն շատ ծանօթ չեն մեր պատմութեան

մէջ, և բնակութիւնին ալ որ տեղ ըլլալն ալ յայտնի չէ, թէ և կ'երևի մեզ Այրարատայ կողմերն ըլլալ. ԹԱԹՈՒԼ ՎԱՆԱՆԴԵՑԻ, Բասենոյ ընդարձակ դաշտերուն իշխեցողն. ասոնց ընկեր ՏԱՃԱՏ ԳԸՆԴՈՒՆԻ՝ զօրմանողն մականուանեալ, գլխապես շատ հեռու և օտարականիզբն տոհմի մը, Քանանացւոց, Քանանայ ցեղէն. որք ըստ պատմութեան՝ հալածեալք 'ի Յեսուայ և յԻսրայելացւոց՝ անցան յԱփրիկէ, և մէջերնէն մէկն Քանանիդաս անուամբ եկաւ 'ի Հայս, և ցեղն ըսուեցաւ Գնթունիք կամ Քնդունիք: Այս (ձախ) թևին դիմաց՝ Պարսից աջ թևը մեծ պատրաստութեամբ և բազմութեամբ կեցած էր. անոր համար սպարապետն Վարդան՝ ընդհանուր տեսչութենէն զատ մասնաւորապէս այս թևին առաջնորդել կամ օգնել յանձն առաւ: Բանակին երեք թևերուն ետև չորրորդ օգնական կամ վերջապահ դրաւ քաջ և հաւատարիմ խումբ մը, գնդապետ կարգելով իւր հարազատ եղբայրը ՀԱՄԱԶԱՍՊԵԱՆ, և իւր միւս սրտակից և նիզակակից բարեկամն ու սիրելին՝ ԱՐՇԱՒԻՐ ԱՐՇԱՐՈՒՆԻ. (ինչպէս որ յետոյ ասոր որդիքն՝ Ներսեհ և Հրահատ՝ իր եղբօրորդւոյն և իր յաջորդին Վահանայ՝ սրտակիցք և բազկակիցք եղան): Արշաւրայ կալուածն էր Այրարատայ հին Երասխաձոր գաւառը, որ յետոյ Կամսարական և Արշարունիք ըսուեցաւ: Այս երկու հաւատարմաց և քաջաց հետ՝ չորրորդ գնդին կ'առաջնորդէր նոյն իսկ բոլոր բանակին առաջնորդն և սպարապետն, ինքն Մամիկոնէից տէրն, Մեծ, Քաջ և Սուրբ ԿԱՐՄԻՐՆ ՎԱՐԴԱՆ:

Պատերազմին ատեն՝ աւելի ձախ թևոյն քով դարուեցաւ. իսկ հիմա՝ գրեթէ ամեն տեղ ամեն գնդի քով կ'երևի. ամեն մէկուն պէտքը և պատրաստութիւնը քննելու տեսնելու, և հարկաւորը տալու, ըսելու. ամեն կողմ կարծես կու

լուսի նոր խօսած ատենաբանութիւնն. «Ի բազում պատերազմունս մտեալ է իմ, և ձեր ընդ իս [1]»: Ամեն բան կարգաւորելէն և վաղուան պատերազմի յարմարցընելէն ետև, կու գայ Վարդան չորս գնդերէն զատ ուրիշ և աննման գնդի մը մէջ, որ առաջիններէն ոչ շատ հեռու ժողովեր էր, վրանի տակ. և էր Հայոց եկեղեցւոյն ուխտն. հոն էին կաթուղիկոսն Յովսէփ, որ աշխարհին քաղաքական շփոթից համար դեռ հանգիստապէս չէր օծուած. և զատ ուրիշ եպիսկոպոսաց և երիցանց՝ հոգելից և հրաշալից երէցն ՂԵՒՈՆԴ, որ բոլոր ուխտապահ Հայոց հայր և բանակին երկրորդ սպարապետ մ'էր, եկեղեցւոյ և հայրենեաց աննման նահատակ մը, որուն ամենայն կրօնաւորք և ազգասէրք, աշխարհիկք և եկեղեցականք՝ կրնան նախանձիլ. Ս. Սահակայ և Մեսրովպայ վախճանելէն ետև, ինքն՝ որ անոնց երիցագոյն աշակերտն էր, իբրև երեսփոխան մը եղաւ անոնց. խորհրդովն և օրինակաւն կու շարժէր զեկեղեցին և զաշխարհն: Եւ ահա այս գիշերս այլ՝ մեր հաւատարիմ բանակին դիմաց և Վասակայ ղրկած հրապուրիչ պատգամաւորաց՝ երկար քաջալերական ատենաբանութեամբ մը Վարդանայ ըսածները կու հաստատէ կրօնական փաստիւք: Զօրականք՝ այդ երկու հոգեշունչ բերանոց փչմունքէն (Վարդանայ և Ղևոնդայ) վառուած՝ պատերազմէ վեր, յաղթութենէ վեր բանի կու պատրաստուին, — մարտիրոսութեան, պսակուելու յերկինս. և պահ մը զինուց պատրաստութիւնը դադրեցընելով, հոգւոյ պատրաստութիւնը կու սկսին: Մէջերնէն երիտասարդք ոմանք, այն ատենուան թոյլ տրուած սովորութեամբ դեռ երախայ ըլլալով, կու փութան 'ի

1 Կարդա՛ Յեղիշէ:

սուրբ աւազան մկրտութեան, կանչելով, « Այս » գիշեր ջրով, վաղը առատ արեամբ »: Շաւարշանի դաշտաց մէջ լճակ մը կու նշանուի Աք-կէօլ, սպիտակ-լիճ անուամբ. կու սիրեմ կարծել թէ այս լճակիս մէջ մկրտուած ըլլան այն եռանդուն երիտասարդքն, որք գիշերը նորակնքաց ձերմակ պատմուճանը հագան, առտուն քաջաց փայլուն զրահը, երիկունը՝ վկայից կարմիր ծիրանին:...

Հիմայ հասարակ գիշերն անցեր, և դիւցազնական կամ քաջասրբեան օրը ծներ է. դեռ չլուացած՝ կու փութան քահանայքն գիշերային եկեղեցական պաշտօնը աւարտելու. և աստուածային գերագոյն նահատակութեան հանդէսը կատարելու, — սուրբ պատարագը: Թերևս Լուսաւորչի և Տրդատայ, կամ մեծին Ներսիսի և Մաշտոցայ օրէն 'ի վեր՝ այսպիսի վեհ վսեմ, սխրալի, սրբալի հանդէս մը կատարուած չէր. պատերազմական փողերէն առաջ լսուեցաւ եկեղեցւոյ կոչնակն, սուրբ հօտապետաց քաղցրիկ խաղաղաւէտ ձայները. և երբ խաղաղարարն ամենայն աշխարհի անոնց ձեռքով սուրբ հացի կերպարանօք ծածկեալ՝ բարձրացաւ 'ի հաճութիւն Հօր և 'ի հաշտութիւն մարդկան, վաթսուն հազար կորիճ հաւատացեալք՝ անձամբ և զինուք խոնարհեցան, երկրպագեցին, հաղորդուեցան սուրբ խորհրդոցն, մարմնոյ և արեան Քրիստոսի Աստուծոյ. դրսի զրահներէն զօրաւոր զրահ մը հագան հոգւով, և կանգնելով կանչեցին. « Հաւասարեսցէ « մահս մեր ընդ մահու արդարոցն, և հեղումն » արեան մերոյ ընդ արեան սուրբ մարտիրոսացն, » և հաճեսցի Աստուած կամաւոր պատարագաւս, » և մի՛ տացէ զեկեղեցի իւր 'ի ձեռս հեթանոսաց »: Այսպէս փութացան իւրաքանչիւր իր գընդին, իր տեղւոյն, զէնքերնին զրահնին պատրաստելու, և ուժերնին կազդուրելու քիչ մը կերա-

կրով, յառաջ քան զարեւուն երեւալն։ Ոմանք այս բաներուս զբաղած, ոմանք այլ վրանաց դրան քով կամ իրենց կահուց և զինուց վրայ կռթընած, աչուըննին Հայկին և Վահագնին համաստեղութեանց վրայ, լուռ մունջ երկնից և երկրի հետ խօսելով մտքերնէն, յանկարծ ձիերուն դոփը ու խրխինջը լսելով՝ կու դառնան այն կողմը, ու սրտերնէն ինչէր կ'անցնի. կու թօթուեն վարսագեղ գլուխնին. հայկական մեծ ու պայծառ աչքերն կու թաւալին լայնալիճ յօնից ներքև. աղեղնաձիգ մատերով խարտեաշ պերուեշտնին շտկռտելով՝ կու նային կ'երթան մութն 'ի լոյս հովտէ հովիտ, լեռնէ լեռ՝ ինչուան այն տեղն, այն չէնքը՝ ուր բնիկ հայրենի տնակն է, ուր թողուցին իրենց կակուղ սիրելիները... ո՜հ, որքան հեռու իրենցմէ, և արդեօք որքան աւելի պիտի հեռանան քանի մը ժամէ վերջ. արդեօք վաղը այս ժամուս դեռ երկրիս վրայ՝ թէ յերկնից պիտի նային անոնց՝ զոր սուրբ սէրն չիբաժներ ոչ յերկրի ոչ յերկինս։... Երկընցէ՜ր քիչ մ'այլ՝ ո՜վ վերջին ժամ գիշերոյս, և թող մեր սիրասուն սըրբասուն, քաջասուն Հայ երիտասարդաց՝ այսպիսի մտածութեամբք կամ սրտածութեամբք սպասել ռազմայարդար փողոց ձայնին. և դու երեմաշունչ հայրենի հովիկ, (եթէ ստոյգ է զգայուն մարդկան կամ երգչաց ըսածն), անցիր ասոնց շրթանց քովէն, խառնուէ այն լայնաշունչ հագագներուն, և գնա հրախառն համբուրից պէս հաղորդելու իրենց յիշատակներուն, իրենց սիրածներուն....։ Մենք հարկաւ և ոչ կամաւ՝ անցնինք գետոյն այն կողմը, թշնամեաց բանակն այլ քիչ մը ճանչնալու։

## Գ

Այս Պարսից բանակս մեր աշխարհը եկածներուն մէջ մեծերէն մէկն է. եթէ Հայք հարկէ առեն ինչուան 300,000 և աւելի զինուոր կրնային հանել, Պարսք ևս առաւել, իրենց ընդարձակ աշխարհաց համեմատութեամբ. և հիմայ որ ուրիշ կողմանէ խաղաղութիւն ունէին՝ կրցան մեծաւ բազմութեամբ գալ, իրենց ամենէն երևելի զօրավարներով, և ամենայն պատերազմական պատրաստութեամբք: Յազկերտ և իր խրատատուն Միհրներսեհ՝ ինչուան Հնդկաստանի հրատանջ հովիտներէն Հայաստանի ձիւնեղէն բարձրադաշտաց վրայ խաւրեցին Երամակս փղաց. զորս բանակին մէջ իրենց սպարապետն 'ի գունդս գունդս բաժանեց, կ'ըսէ պատմիչն. քաջաձի Հայոց հեծելոց դէմ չէին կրնար կենալ համաթիւ Պարսիկ ձիաւորք, անոր համար այս անձոռնի քնթանաւոր գազանաց վստահացեր էին. իրենց ընտիր ձիերն այլ Հայաստանէն կ'առնուին, և հաշտութեան ատեն՝ իրենց լաւագոյն յաղթող հեծեալքն՝ Հայք էին: Հիմայ այս գունդ գունդ փղաց երամակը միայն չորս հինգ խումբ այլ սեպենք կամ բոլոր մէկէն 50 փիղ (որ թէ և շատ, դեռ պատմչաց ցուցածէն շատ չ'երևիր), մէկէն անոնց քով 150,000 Պարսիկ կու տեսնես. վասն զի կրկին կրկին կ'ըսէ պատմիչն թէ ամէն մէկ փղի քով 3000 սպառազէն զօրականք կային, և կ'աւելցընէ. «Թող զայլ զօրսն ամենայն». որոնցմէ էր Մոփէան քաջամարտիկ գունդն այլ. դարձեալ ուրիշ տեղ կ'ըսէ, որ սպարապետն Պարսից տեղեկանալով թէ 60,000էն աւելի են Վարդանանք, և թէ որք են անոնց պարագլուխքն, մէկուն դէմ

երեք երեք հոգի կու պատրաստէր։ Արդ այս ամենայն, և ասկէ դուրս Վասակայ ուրացակից գունդքն այլ, և Հոնք և ուրիշ բարբարոսք այլ մէկտեղ առնելով, եթէ Պարսից բանակը 250,000 զօրաց կու համնի՝ ըսեմք, դեռ ճշմարտէն պակաս ըսած կ'ըլլամք, և ոչ այլ աւելի՝ եթէ 300,000 այլ ըսեմք. մանաւանդ որ պատմըչաց մէկն կ'ըսէ ասոնց համար, թէ «տարածանէր երկայնէր ճա-»կատն յերկայնութիւն դաշտին մեծի». և յառաջ, «'ի ընձաղոտ տեղի Տղմուտ դաշտին... զակիշ ա-»ծեալ բանակէին»։ Զակիշ ըսածն է բանակին չորս դին ամրութիւն՝ ապահովութեան համար, զոր աւելի պարզաբար կու յիշէ առաջին պատմիչն. «Բանակ բոլորեր, փոս հատաներ, պատ-»նէշ կանգներ, շերտաւոր փակեր, ամրացուցա-»ներ իբրև զքաղաք ամենայն պատրաստութ̅բ̅»։ Վասն զի կու վախէին Պարսք թէ Վարդանանք յանկարծ վրանին հասնին, և կրնային այլ այնպէս ընել, ըստ Ղազարայ Փարպեցւոյ. բայց ասիկայ յանդգնութեան գործ մը կ'ըլլար. և ամենայն պատրաստութիւն, մանաւանդ հոգևորը՝ ընելու ատեն չէին ունենար. — վասն զի երկու բանակներն այլ գրեթէ մէկ ատեն հասան պատերազմին տեղը. Պարսք՝ Հերայ և Զարևանդայ կողմերէն (Խոյի և Սալմաստայ), Հայք յԱրտաշատայ, պատերազմին առաջին օրը. և տեսան որ Պարսք նոր հասեր են և բանակնին ամրացընելու վրայ են։ Պարսից սպարապետն էր Մուշկան Նիւսալաւուրտ (որ թերևս նշանակէ թաւ-երես, բուրդ-մօրուք), իրենց ամենէն երևելի զօրավարն. և կ'երևի թէ նոյն անձն է, որ Հայոց թագաւորութիւնը վերցուելէն ետև՝ երկու անգամ մարզպան գրուեցաւ 'ի Հայս, և հոն չգտած պատուին վրէժն առնուլ ուզեց այս առթիւ. իրմէ յարմար անձ մը չէին կրնար գտնել Միհրը-

ներսէհ և Յազկերտ: Պատերազմին առեն ինքն կեցաւ ընդհանուր զօրավար բանակին կեդրոնը կամ մէջ տեղը, Պարսից ամենէն կորիճ քաջաց քաջ անյաղթ և անմահ սեպուած գնդով, որ է Մոփէան կամ Մատենիկն. որք Մակեդոնացւոց փաղանգին պէս քովէ քով պարսպի նման անբաժ կու կենային և մէկտեղ շարժէին, և թէ մէկն ընկնար, տեղը ուրիշ մը կ'ամբողջացընէր գունդը: Ձախ թևին զօրագլուխ՝ կ'երևի թէ էր Դոնշըճ, որ և բոլոր բանակին մէջ նախապատիւ էր յետ Մուշկանայ, և Հայոց աջ թևին դէմ կու կենար (ընդդէմ Խորենայ)․ բայց այս կողմէն պատերազմը չի զայրացաւ, կամ թէ երկու դիմամարտք այլ հաւասար քաջութեամբ կռուեցան իրարու հետ. այլ սաստկութիւնը արևելեան կողմն էր, ուր էր Պարսից աջ թևն. և հոն գումարած էին բոլոր ներզակակից ազգաց զօրքն, որոց մէջ գլխաւորք էին (դժբաղդաբար) Հայք և Կափիչք, որ են Հայոց արևելեան սահմանակիցքն Կազբից ծովուն մօտերը. ասոնց այլ դրակից Գէլք (Տիլէմ). ասոնցմէ զատ Աղուրհայնիք կամ Աղուրհայիք, և Հոնք՝ որք 'ի հարկէ մեծաւ թիւ պիտի ըլլային: Հայոց սևցած գնդին գլխաւորն պէտք էր ըլլալ ինքն վատն Վասակ, տէրն Սիւնեաց, (որ քան զամեն ցեղ Հայոց՝ բազմաթիւ զօրաբաժին ունէր յաշխարհագումար հանդիսին Հայոց, 11,400 կռուող.) Սիւնեաց իշխանին միաբանք էին իշխանքն Բագրատունեաց, Խորխոռունեաց, Վահևունեաց, Ապահունեաց, Ակէոյ, Ուրծայ և մասն մի Ամատունեաց և այլոց, որոց զօրաբաժինք գումարին 8000ի չափ, և Սիւնեաց գընդին հետ 20000ի կու մօտենան. Վարդանանց զօրաբաժնէն դրեթէ աւելի են. ասոր համար ըսի՝ որ ասոնց չափ այլ կրնային հետևող ունենալ և բոլորն 60-70000 ըլլալ: Այս երեք թևերէն զատ

էր չորրորդն, և անոր առաջնորդ Արփաշէր, իբրև վերջապահ, միանգամայն և փղապետ, որ մեծ խումբ մը գազաններով՝ մէկայլ զօրաց ետևը կե֊ցած էր, և ուր պէտք ըլլար՝ հոն օգնութեան պի֊տի շարժէր։

Դ

Բայց հոս չուշանանք, վասն զի ահա լուսացեր է պատերազմական օրն, օրն մեծ, օրն անմոռա֊նալի։ Երկու բանակներն իրենց հրամայուած տե֊ղը և կարգը կու բռնեն. Պարսից սպարապետն իւր երեսուն բիւր զօրաց և փղաց բազմութեան դիմաց՝ կու տեսնէ գրեթէ հաւասար երկայնու֊թեամբ շարուած բանակ մը. բայց գիտէ այլ որ իրեններն պէս թանձր չէ նա. հազիւ քանի մը կարգ զօրաց կան ետևէ ետև. զայն այլ գիտէ (մեր ցա֊ւովը) որ անոնցմէ այլ ոմանք բոլոր սրտով միա֊ցած չեն բուն ուխտապահ Հայոց, այլ Վասակայ հրապուրանօք սղոորած. և եթէ վարպետ խաղ մը խաղայ՝ կրնայ զանոնք իր զօրաց հետ խառնել, կամ պատերազմէ դուրս հանել. գիտէ որ իր նի֊զակակից սևցած Հայերն՝ այն օր Վասակայ հետ իրենց միամտութիւնը Պարսից ցուցընելու հա֊մար՝ աւելի քան զՊարսիկս քաջութեամբ պի֊տի կռուին, կամ աւելի ատելութեամբ. ինչպէս որ կ՚ըլլեն թշնամացեալ բարեկամք։ Ասոնք իրեն մէկ մէկ յոյս մեծ մեծ մխիթարութիւնք են. բայց քանի որ կու մտածէ թէ իր բուն թշնամեաց, թէ և քիչուոր այլ հաւատարիմ Հայոց՝ սպարա֊պետն է Վարդան, այն ժամանակի (ըսեմք ամեն ժամանակի) զօրավարաց օրինակ, և Պարսից թա֊գաւորին անգամ՝ քաջութեամբն դեռ սիրելի և հարկաւոր անձ մը, Մուշկանայ բոլոր պատրաս֊

տութիւնն և բազմութիւնն տարակուսելի կ'երևի, ու կու տագնապի։ Բայց ժամն կուռոյ կու մօտենայ. կու ժողովէ գնդապետները ու զօրավարները, կու յիշեցընէ իրենց պարտքը, Վարդանանց կորձնութիւնը, քաջութեան և յաղթութեան վարձքերը, վատութեան և փախստեան պատիժները և դատապարտութիւնը. և կու խաւրէ իւրաքանչիւր իր կարգին։

Այս բաները լսելու կարօտ չէին Հայք, բաւական լցուած Վարդանայ, Ղևոնդի և Քրիստոսի հոգւով, որ դեռ սրտերնուն մէջ կու խօսէր. կըրնար ուրեմն իրենց սպարապետն այլ քիչ մը այն գիշերուան վերջին պահին՝ առանձնանալ իր վրանին տակ. նախ խօսիլ ընդ Աստուծոյ և յանձնել իր կեանքը և մահը, որոց երկուքն այլ ստուգիւ կու փափագէր, և կու հաւատայր այն օր փոխել յանմահութիւն. ապա երկրիս վրայ հարկաւոր եղած բաներուն համար յետին կամքը աւանդել 'ի կտակ կամ 'ի սիրտ մտերմաց. մինչ սպասաւորքն և թիկնապահք զէնքերը և զարդերը կու պատրաստէին։

Ահա հագաւ, հեծաւ, զուարթացաւ Վարդան, արևէն աւելի ցանկալի և սպասելի այն օր՝ իր սիրելեացն. ամենուն աչքն՝ ոչ այնքան թշնամեաց բազմութեանը վրայ սոսկմամբ կու նայէին, որքան սիրով կու դառնային այն բարձրասուր կաթողիկէաձև չիկակարմիր վրանին, որոյ դրան վերև ոսկի արծուին թևատարած, չորս բոլորն կարմիր-կանաչ-սպիտակ դրօշներ հովէն ծալլուելով ու բացուելով՝ իբր ծափ ծափի տուած կու հրաւիրէին զՎարդան. զՎարդան հրաւիրելով՝ վրանին եզերքը պար առած պահապան ու պատուոյ գունդն՝ նշան առին, և սկսան շարժիլ. յանկարծ վրանին փեղկերն վերնալով բացուեցան, թիկնապահք և սպայք, հեծեալք և հետևակք՝ փայլ

վայլ զէնքերով իբրև ամպէ մը սկսան դուրս թա-
փիլ. և խումբ մը ծաղկազգեստ կայտառ երիտա-
սարդաց՝ 25 տարուընէ վեր՝ լռած ձայն մը ձգե-
ցին, որոտալուր, ահաւոր, վսեմ և քաղցր ձայն
մը, որ մեր յետին Արշակունի Արտաշէս թագա-
ւորին ան օրէն վեր չէր լսուած...: Այգունական
երաժշտաց գամն էր. որ այն օր 'ի Վարդան կու
ճանաչէր Հայոց թագաւորը, առաջնորդը, յոյսը
և փառքը. և երբ մեծամեծ ոսկեփայլ գալարուն
և անգալար պղնձներն լայնաբոլոր բերաններն յեր
կինք շտկած՝ իբրև յետ երկայն հառաչանաց՝ հայ-
կական պատերազմի եղանակը հնչեցին, ահ, բո-
լոր բանակն, գետին ու լերինք թնդալով գոչե-
լով որոտացին, Փառք Հայոց, Սուրբ ազատարար,
Վարդան քաջ: Եւ ահա յերևան եկաւ քաջն այն,
Կարմիրն այն Վարդան, ճառագայթներուն ետևէն
դուրս վազող արևուն պէս, իր Նախապապուն
Մուշեղի նման՝ ճերմակ, ճարտուկ, ճախրասլաց,
բարձրապլինչ բարձրափռինչ ձիուն վրայ յար-
մարած՝ քան թէ հեծած կամ նստած. վասն զի
ձին գրեթէ սանձի անկարօտ և տիրոջը տակ ա-
ւելի թեթևցած քան թէ առաջ՝ չէր գիտեր կու
խաղա՞յ թէ կու թռչի. իսկ տէրն իբրև եզեկիէ-
լեան անուի մը վրայ հանգչած՝ թեթևութեամբ
ամեն դի կու դառնայ, կու թռչի, կու հասնի:
Ոսկեխառն արծաթակուռ սպառազինութեան
վրայ՝ ձգած է մեծ ծիրանի ու ոսկեթել սամոյր-
օձիք վերարկուն, զոր արևակերպ ականակուռ
ապիզակ կամ ճարմանդ մը կուրծքէն վեր կու
միացընէ, օղակներէն յակունթներ կախուած,
և ինչուան նռնագոյն կօշիկները կ'իջնէ. գլուխն
արծաթախառն սաղաւարտ՝ ոսկէքանդակ զարդ-
մանակաւ, որոյ կոնակէն դէպ 'ի գագաթն ոսկի
արծուի մը կայ, և վարի եզերքը բոլորած պսա-
կաձև թագ մը, անոր վրայ ալ պլլուած բոլոր

գերագոյն իշխանութեան նշանը՝ աշխարհաւանդ ըսուած հանգոյցը, որոյ ծայրերն ցցուննազարդք՝ ուսոց վրայ կ՚իջնեն: Բայց արդարև տեսութեան արժանի մասն՝ այն հանգուցին ներքև էր. բոլորակերպ, կարմրայատ գրեթէ ճառագայթարձակ, զուարթ դէմք մը. նման եգիպտական Արամազդայ, բայց Ամպրոպայնոյն աչքերով: Խաչցլուխ և խոնձորգլուխ ձողերու և նիզակաց վրայ՝ բաց յեռագոյն դրօշից կու ծածանին զանազան գունով և նշանով վառեր, Մամիկոնէից տէրութեան, Հայոց սպարապետութեան, Ցունաց սորատելատութեան և Հայ Թագաւորի տեզակալութեան. զորս ուրախութեամբ ողջունելով 66,000 բերան՝ Պարսից անհուն բանակին և անձոռնի փղերուն ձայնն այլ կու խափանեն պահ մը: Վարդան յառաջ անցնելով իր սպայից գնդէն՝ մէկ մը ճերմակովը կու թռչի բանակին մէկ ծայրէն ինչուան մէկայլը, ողջունելով, խրախուսելով, գրեթէ նոր ոյժ մը փչելով, և… նշան կու տայ սկսելու պատերազմին: Ահա մէկէն կու սկսին զէնք ձգել վեց բիւրքն Հայոց. ոմանք սպառազէնք (այսինքն բոլոր զրահ հագած), ոմանք մերկք (այսինքն անզրահ), և ասոնք են աղեղնաւորքն. ոմանք վահանաւորք, հետևակք՝ նիզակաւորք և սուսերաւորք. աւելի շատն հեծեալք ծանր կամ թեթև զրահով:

# Ե

Հիմայ թողունք որ քիչ մ՚այլ խօսի Եղիշէ.
« Իբրև այս այսպէս պատրաստեցան, երկոքեան
» կողմանքն լի սրտմտութեամբ և մեծաւ բարկութեամբ զայրանային, և գազանացեալ զօրութեամբ յիրեարս յարձակէին երկոքեան.
» և ամբոխ աղաղակին յերկոցունց կողմանց՝ իբ-

» ըև 'ի մէջ ամպոց շփոթելոց՝ ճայթմունս գոր-
» ծէր. և հնչումն ձայնիցն՝ զքարանձաւս լերանցն
» շարժէր: Ի բազմութենէ սաղաւարտիցն և 'ի
» փայլիւն պատենազէն վառելոցն՝ իբրև նշոյլք ճա-
» ռագայթից արեգական հատանէին: Նա և 'ի
» բազում սուսերացն շողալ, և 'ի ճօճել բազմա-
» խուռն նիզակացն՝ իբրև յերկնուստ ահագին
» հրաձգութիւնք եռային: Քանզի ո՞վ իսկ է բա-
» ւական ասել զմեծամեծ տագնապ ահաւոր ձայ-
» նիցն. որպէս կոփիւնք վահանաւորացն և ճայթ-
» մունք լարից աղեղանցն զխելիս ամենեցուն առ
» հասարակ խլացուցանէին: Անդ էր տեսանել
» շտապ մեծի տագնապին և զաղէտս անբաւ տա-
» րակուսանացն երկոցունց կողմանցն, առ 'ի յան-
» դուգն յարձակմանէն զմիմեանս բախելով. քան-
» զի թանձրամիոքն յիմարէին, և վատասիրտքն
» լքանէին, քաջքն խիզախէին, և նահատակքն
» գոչէին »:...

Այս մեծ ու բաղդավճիռ ճակատամարտս, ուր 300,000 և աւելի անձինք կռուեցան գրեթէ յառաւօտէ մինչև յերիկուն, որչափ նշանաւոր է սաստկութեամբն՝ նոյնչափ այլ քիչութեամբ մեռելոցն. երկու կողմէն մէկտեղ հազիւ 4 կամ 5000 մարդ ընկան. որոյ պատճառ, մէկ մը երկուքին այլ հմտութեամբ և վարպետութեամբ շարժելն է. մէկ մ'այլ բանակաց մէջ տեղ գետ մ'ըլլալն, որով երկայն ատեն հեռուէն նետաձգութեամբ և ուրիշ հեռաձիգ զէնքերով կռուէին. Հայք աղեղնաւորութեան մէջ շատ վարպետ էին, որով աւելի յաջողեցան Պարսից վրայ, բայց թուով նուազ ըլլալով՝ կրնային յօգնիլ առանց քշելու Պարսիկները. իսկ ասոնք թէ և բազմաթիւ՝ չէին համարձակեր Հայ աղեղանց դէմ գետը անցնիլ, մանաւանդ առանց փղերու՝ զորոնք դժուար էր շարժել: Բայց կամաց կամաց երկու բանակն այլ

սկսան մօտենալ 'ի գետեզերքը, և հարկ էր որ մէկն կամ մէկայլն անցնի դիմացի կողմը խոր յաղթող. և Հայք առին այս առաջին յաղթութիւնը: Իրենց երկրին գար ու փոս տեղերն՝ զիրենք չարքաշ և փորձ ըրեր էին. յաջողութեամբ անցան ջուրը, մինչ Պարսիկք տարակուսեալ կուվխտային եզերքը. Հայք ջրէն ցամաքելով առաջին թափով դիմացի եզերները քշեցին. բայց իրենք այլ սկսան Պարսից բազմութեան ուժը իմանալ:

Հազիւ թէ նորէն սկսաւ պատերազմն, և բաղդն յերևան գալ: Բանակաց արևմտեան թևքն հաւասար իրարու կ'ընդդիմանային, և գրեթէ ինչուան վերջը սակաւութիւ Հայք՝ Դողմըձայ դէմ կեցան, ինչուան որ իրենց երեք գնդապետ զօրավարքն այլ՝ քաջապէս ընկան նահատակուեցան պաշտօնին վրայ, Խորէն, Արսէն և Ներսէհ: Միջին թևքն այլ նոյնպէս սաստիկ ճգնամբ և գրեթէ հաւասար կու կռուէին. իսկ արևելեան թևերուն, ուր Հայք Հայոց դէմ էին, Վասակայ հրապոյրն զօրացաւ, և Վարդանանց կողմի թևն սկսաւ տըկարանալ. այն շփոթութեան ատեն գունդ մը անկէ զատուելով՝ փախաւ կամ պատերազմէն դուրս ելաւ. այս բանս բոլոր պատերազմը կերպարանափոխ ըրաւ: Աւելի մեծ շփոթութենէ ազատեց իր բանակը՝ արթուն և երագահաս սպարապետն, որ տեսնելով ձախ թևին ետ քաշուիլը, վերջապահ ջոկով մը հասաւ օգնութեան, նորէն կարգի. մտուց հաւատարիմները, և ինքն առաջ անցնելով ընկաւ Պարսից աջ թևին վրայ, յորում՝ ուխտազանց Հայք, և հիւսիսային ու արևելեան ազգաց գունդեր կային, և քշելով տարաւ ձգեց անոնց միջին թևին և փղակոյտին վըրայ: Նոյն ատեն Վահան Արծրունի այլ Հայոց միջին գնդաւն սաստիկ թափով յարձակելով Պարսից միջին և բուն գնդին վրայ՝ խռովեց, շարժեց

և դէպ յարևելք քշեց. որով Պարսից երկու շփոթած շարժած գնդերն այլ ընկան իրարու վրայ, ու Վարդանայ և Վահանայ սուրերուն մէջ. և եթէ ասոնք շատուոր ըլլային, կամ նոյն ատեն վերջապահ գունդն այլ իրենց օգնութեան հասնէր, թերևս բոլոր Պարսից բանակը պղտորէին. վասն զի Վահանայ և Վարդանայ բախմունքէն՝ անվանելի Մատեան գունդն անգամ պատռուեցաւ, 140 անմահ Պարսիկ՝ Հայոց սպարապետին և Արծրունի նիզակակցին սուրերով մահացան, մէկայլներն այլ փախչելու վրայ էին. և ահա վարած կորած Վասակայ չար գլուխն տեսնուեցաւ իր յետ քշուած գնդին մէջ. Վարդան արդար վրէժխնդրութեամբ դարձաւ այդ անիծապարտին վրայ, որ իր թելադիր սատանային սիրած օձուն պէս՝ սողոսկելով սպրդեցաւ, փղերուն մէջ փախաւ պահուըտեցաւ: Թերևս Վարդանայ աչքը չէր այնչափ յառաջ նետուիլ կամ՝ հոս ուշանալ. բայց ինքն արդէն ըլլալիքը գուշակելով, աւելի երկնից նահատակ քան յերկրի յաղթող ըլլալ փափագէր: Պարսից սպարապետն Մուշկան՝ որ կեցաւ և մինչու, յաղթութեան կամ յաղթուելու ժամը հասած կու տեսնէր, որչափ որ տագնապեցաւ ՚ի Վարդանայ, անոր շատ յառաջելն այլ իրեն օգուտ առաւ. տեսաւ որ անոր և մնացեալ Հայոց միջին ու ձախ թևոյն մէջ՝ մեծ միջոց կայ. իր շփոթեալ զօրաց դասերը և Մատենիկ գունդը ժողվեց սրտապնդեց, ու մաս մը այն հեռու մնացեալ Հայոց վրայ դարձուց, մաս մ'այլ Վարդանայ և Վահանայ դէմ կենալու. և ասոնց ետևէն գալու և մէջ փակելու՝ պատուէր տուաւ շուտով, փողեց կանչեց Արտաշրի՝ որ փղերը առաջ քշէ. ինքն այլ իր յատուկ գնդով յառաջ անցաւ: Եւ այսպէս երկու երեք կողմէ պատելով հոն, « Կորովին Վարդան իւրովք քաջ

» Նիզակակիցքն՝ ոչ սակաւ նախանձիւ 'ի տեղւոջն
» գործեաց. յորում տեղւոջ և ինքն իսկ արժա-
» նի եղև առնուլ զկատարեալ նահատակութեան
» պսակ »[1]: Վարդանայ հետ հոն պսակուեցաւ
իր պատուակից և նիզակակիցն Վահան Արծրու-
նի. այս երկու պարագլխոց պէս՝ իրենց գնդից
ինչուան վերջին շունչը առաջնորդելով և կռուե-
լով ընկան մեծափառ քաջութեամբ աջ թևին
երեք զօրագլուխքն, զոր վերը յիշեցինք, ձախ
թևին գնդապետն այլ Տաճատ Գնթունի. այս
թևէն և միջին թևէն երկերկու զօրաւոր զօրա-
գլուխք ապրեցան. անոնց տեղ ուրիշ զօրապետ
իշխանք ընկան ԱՐՏԱԿՆ ՊԱԼՆՈՒՆԻ, ՀՄԱՅԵԱԿ ԴԻ-
ՄԱՔՍԵԱՆՑ, ՎԱՀԱՆ ԳՆՈՒՆԻ և ԳԱՐԵԳԻՆ ՍՐՈՒԱՆ-
ՁՏԵԱՆ, որով յայտնի եղաւ՝ որ թէ Վարդան և
թէ իր հաւատարիմ նիզակակիցքն՝ մտքերնին
դրեր էին՝ կամ հալածել քշել զթշնամին, կամ
ինչուան վերջը պատերազմելով մեռնիլ. և ա-
րեամբ քաւել բոլորովին իրենց սուտ ուրացու-
թեան յանցանքն այլ: Ասոր համար երբ Պարսից
զօրքն մտան 'ի Հայս, Վարդան հրաւէր խաւրեր
էր իրեններուն՝ ոչ այնքան 'ի պատերազմն՝ որ-
քան 'ի մարտիրոսութիւն, ըսելով. « Գունդ քա-
» ջուց հասեալ դայ, բերելով աստուածասիրաց
» պսակս երկնաւորս. արդ որ ոք ցանկայ առնուլ՝
» անձապարեցէք, զի մի՛ վրիպեսցի ոք և զղջանայ-
» ցէ.... Եւ զայս լուեալ ճշմարտասիրացն և զան-
» մահութիւն սիրողացն՝ դդրդեցան, ելևելս առ-
» նելով զմիմեամբք, որպէս հօտք որ 'ի ձայն աղի
» փութայցեն զկնի հովուաց »[2]: Իսկ վերջապահ
գնդին մեծ զօրագլուխքն Արշաւիր և Համազաս-
պեան՝ պատերազմին սաստիկ խառնուրդէն հե-
ռու ըլլալով՝ իրենց պաշտօնը կատարեցին. յետ

1 Եղիշէ:    2 Ղազար Փարպեցի:

նահատակութեան արժանաւորաց՝ և երեկոյին վրայ համնելուն, եւ քաշեցին ուխտապահ զօրքերը, որ իրենցմէ յանդուգն և յառաջադէմ վարիչնին կորուսեր էին. ուստի ոմանք այս երկու վերջապահ զօրագլխաց գնդին խառնուեցան, ոմանք այլ ցրուեցան զանազան կողմ, կամ բերդերու մէջ քաշուեցան: Տասն պարագլուխ նահատակեալ իշխանաց հետ, իւրաքանչիւրին ցեղէն (բաց յԱրծրունեաց) 276 կամ 286 կտրիճք ընկան բուն պատերազմին ատեն. որոց գրեթէ կէսն, 137 հոգի Վարդանայ հայրենակից՝ տիրասէր Մամիկոնեանք էին, մնացելոց մէջ բազմաթիւնքն են՝ Արտակայ տոհմակից Պալունիք, 57 հոգի: Անոնցմէ դուրս են Արծրունիք, որոց թիւն թշնամութեամբ ջնջուած կ'երևի. նոյնպէս նշանակուած չեն ուրիշ ցեղերէ և թագաւորական գնդէն մեռողաց զատ զատ թիւերն. բայց առաջիններուն հետ մէկտեղ բոլոր պատերազմին մէջ ընկողքն էին 696 հոգի. ասոնցմէ զատ քանի մը հարիւր այլ նոյն օրը ձեռք ընկան և փղաց ոտնակոխ եղան, կամ ամրացած տեղերնէն բռնուած սպանուեցան. և ասոնցմով ու առաջիններով միագումար նահատակելոց թիւն եղաւ 1036 [1], զատ 'ի տասն նախարարաց: Իսկ թշնամեաց կողմէն պատերազմի մէջ ընկան ինն մեծ իշխան և 3544 մարդ. որ է ըսել եռապատիկ կամ քառապատիկ աւելի քան զՀայս:

1 Վարդան պատմիչ 1232 հոգի կ'ըսէ. անշուշտ պատերազմէն ետքը բերդի մը մէջ գտնուած ու սպաննուածներն այլ մէկ տեղ սեպելով:

## Զ

Ի՞նչ եղաւ այս մեծ և հռչակաւոր պատերազմին հետևանքը: Հայք՝ բարոյապէս յաղթեցին, Պարսք աշխարհօրէն: — Վասակ և Պարսիկք նախ սկսան ամէն հնարքները բանեցընել. ուխտապահ Հայք ալ իրենց հնարքը, ոմանք բերդերու մէջ ամրացան, ոմանք ալ կռուով Պարսից դէմ կեցան, ճնշուած անոնց սահմաններին ալ յարձակելով. և սպառնացին զՅազկերտ՝ որ զիրենք ազատ Թողու իրենց սուրբ կրօնից պաշտամանն և իրենց հայրենի ազատութեանց մէջ: Յանձն առաւ և Թողուց Յազկերտ. և որովհետև քահանայք և գըլխաւոր նախարարք բողոքեր էին առ նա ընդդէմ Վասակայ, կանչեց զանոնք իր դուռը, զոմանս կամաւ և զոմանս բռնի. և բոլոր Պարսից ատենին առջև քննելով՝ յանցաւոր գտաւ դաւաճանապարտ իշխանն Սիւնեաց Վասակ. և դատապարտեց մահուան բանտի, ուր և չարաչար ցաւերով մեռաւ: Քահանայից գլխաւորները Ս. Ղևոնդեանք, նահատակել տուաւ (յամի 453). իսկ Հայոց նախարարները բանտեց 'ի Պարսկաստան, ուր և մնացին զանազան պատճառաւ 15 տարւոյ չափ. յետոյ Պերոզի Թագաւորութեան ատեն արձակուեցան դարձան իրենց հայրենիքը, ուր կային դեռ սկսած ուրացող Հայերէն. և նորէն անոնց գրգռութեամբ սկսան Պարսք հալածանել ուխտապահաց, որոց գլուխ կեցաւ Վարդանայ արժանաւոր եղբօրորդին Վահան. և քանի մը տարի պատերազմով յոգնեցնելով Պարսից զօրավարները, վերջապէս ստիպեց և հաւանեցուց զԹագաւորը՝ որ Թողու զՀայս ազատ իրենց կրօնից և հայրենի ազատութեանց և իշխանութեանց

մէջ. և նոյն ինքն Վահան եղաւ բոլոր Հայոց վերակացու իշխանապետ և իբր փոխարքայ, մարզպան կոչմամբ, յետ 35 տարւոյ պատերազմին Վարդանանց:

Ահա այս եղաւ հետևանքն Շաւարշանի երրորդհանգիստին: Այսպէս կատարեց Վարդան իր օր մ'ըսածը՝ Պարսից Թագաւորին և բոլոր արքունեաց առջև, թէ այնպիսի գործ մը պիտի գործեմ՝ որ բոլոր աշխարհք պատմըւի մինչև յաւիտեան[1]: Յիրաւի, մեր նախահօր Հայկին օրէն և իրեն Թոռնորդւոյն Գեղեցիկն Արայի օրէն ինչուան յարքայորդին Թորոս և ինչուան 'ի քաջն Լիպարիտ, զօրավար Զ Լեւոնի, վերջին Թագաւորին Հայոց, Հայ իշխանաց և զօրավարաց մէջ՝ ամենէն սիրելին և տօնելին մեր Հայոց ազգի խորանաց, սրտից և բերանոց մէջ՝ է Կարմիրն Վարդան, որդի Համազասպայ Մամիկոնեից տեառն և Հայոց սպարապետի և երբեմն իշխանապետի, թոռն մեծին աստուածապատիւ հայրապետին Սահակայ Պարթևի. որոյ քաջութեան և սրբութեան դրկաց մէջ ծնաւ, սնաւ, գործեց ու մեռաւ. պատուեալ կենօքն՝ ոչ միայն իր ազգէն՝ ինչուան Թագաւորի տեղակալութեամբ կամ արքունի տան պահպանութեամբ, այլ և 'ի Յունաց և 'ի Պարսից. բոլոր Հայոց սպարապետ ըլլալով քսան տարի, ազգային և օտար նշանաւոր զօրավարաց շատէն վեր անցաւ. 42 մեծ ճակատամար-

1 « Յայսմ հետէ այսպէս կամք են (իմ), ջանամ զի թէ
» ցայժմ գործեալ ինչ իցէ, և ոչ արժանի անուան և գո-
» վութեան. յայսմ հետէ հնարիմ ամենայն զօրութեամբ
» և ուժով օգնականութեամբն Աստուծոյ, գործել գործ
» այնպիսի, զոր ոչ միայն առաջի ձեր Արեաց, այլ և 'ի
» Կայսեր դրանն և յայլ ազգս՝ պատմեսցի համբաւն
» այն, մինչև ցյաւիտեան »: — Ղազար Փարպեցի:

տի մէջ յաղթող ելլելով, զոր աւելի Պարսից ծառայութեան մէջ ըրած էր զանազան աշխարհքներ, Խնչուան Խորասանի և Թուրքաստանի անապատին մէջ Մերու կամ Մերվիրուտ գետոյն վրայ, ուր նոյն ինքն Յազկերտ Թագաւորն ականատես ըլլալով անոր քաջութեանը, և ուրիշ գործքերն այլ լսելով, հիմա իր զօրաց կոտորածէն և նախարարաց սպանութենէն աւելի՝ Վարդանայ մահուան վրայ ցաւեցաւ, և գովաբանեց զՎասակ իբրև պատճառ անոր մահուանը. և բոլոր արքունեաց առջև կ'ըսէր, « Թէ զայնպիսի քաջ և պիտանի և
» զվաստակաւորն մեր՝ զՎարդան.... և կայսր
» (Յունաց) և կամ Հոնաց արքայ բռնութեամբ
» յինէն հանել կամէին, (ես) ամենայն Արեաց
» (Պարսից) ուժովս կռուէի, և չտայի հանգչել,
» մինչև այսրէն յիս հանէի »: Պանծալի վկայութիւն և արժանաւոր համարմունք. բայց ափսոս քեզ ով կոյր Թագաւոր, որ անխոհեմութեամբ կորուսիր այնպիսի պիտանի մարդը, զոր միայն իր ճշմարիտ սիրելի հայրենիքն և եկեղեցին անկորուստ պահեն մինչև ցայսօր:

Վարդան նահատակութեանն ատեն գոնէ յիսնամեան պիտի ըլլար. իրեն ժառանգ արու զաւակ չթողուց, անոր համար Մամիկոնեից տէրութիւնն անցաւ իր Համայեակ եղբօրը. որ նոյնպէս քիչ ատենէն նահատակուելով, յաջորդեց անոր որդին հռչակաւոր կորիւն Վահան, յետ պարձին 'ի Պարսից: Բայց դուստր մը ունէր Վարդան՝ իր հօրը և իր գեղեցկութեան պատճառաւ կրկին անուամբ կոչուած, Վարդէնի և Շուշանիկ, որ Վրրաց բդեշխին կամ Գուգարաց նահապետին Վազգենի տիկին եղաւ, և անոր անգութ ձեռքով նահատակուեցաւ. երկայն և սքանչելի համբերութեամբ և իմաստութեամբ, յայտնի ցուցընելով որ դուստր է Վարդանայ և Թոռնեայ Ս. Սահա-

կայ, որոց փառք մ՚այլ աւելցուց, մեր եկեղեցւոյ տօնելի վկայուհեաց պարծանք ըլլալով, և ցուցած արութեամբն՝ ոչ պակաս քան զքաջամարտիկ սուրբ գունդն Վարդանանց։

Վարդանայ անգին մարմինը, անշուշտ հաւատարիմ Մամիկոնեանքն՝ չթողուցին աւար Պարսից, այլ իբրև պանծալի նշան և դրօշ հայրենեաց՝ քաջաբար վերուցին։ Նշխարքն զանազան տեղ ցրուեցան, և յետոյ մինչև ՚ի Համշէն, ուր կու յիշուին և ՚ի սկիզբն ԺԶ դարու։ Բայց Ոգին հայրենեաց, հաւատարիմն Հայաստանի, որ իր քաջանշան որդւոց վարձու և անմահութեան մէկ մէկ անակնկալ և վսեմական բան կամ անուն կու հնարէր, յաւիտենակեց Վարդանայ նշխարաց մէջէն այն թանկ գլուխը՝ որ զինքը դնելով բոլոր Հայ աշխարհին և եկեղեցւոյ վրայ՝ աւելի բարձրացուց զանոնք, և այն ջաջուռ աջը՝ որ երեսուն տարի արևելից և արևմտից մէջ քաջագոյն և սըրբագոյն վարիչ էր բանակաց, յաղթութեանց վըճռահատ, և պսակաց հաւաքող. առաւ դըրաւ՝ անոր մարմնով մայրենի նախահաւուն և հոգւով հօրն՝ հանգստարանին մէջ, Ս. Լուսաւորչի նըշխարաց քով։... Սեպուհ լերան պզտաղան սարերուն մէջ միաբանեցան երեք վեհագոյն նշխարք և մեծագոյն յիշատակք և աստուածափառ նահատակքն Հայոց. ԳՐԻԳՈՐ, ՏՐԴԱՏ, և ՎԱՐԴԱՆ։

## Է

Ս. Վարդանանց վրայ երգուած գանձ մը լսենք, որ բազմաց անծանօթ է.

« Ոյ զամենայն յամենայնի լնուս առատապէս, արարեր զիմանալի զօրս վերինս քեզ ՚ի հաճութիւն. հաճեցար և ՚ի մարդկանէ առնուլ սպա-

սաւորս և փառաբանիչս անուանդ քում սրբոյ, ընդ որս և 'ի շառաւիղէ ծնողին համայնից հօրն լուսոյ՝ զՔաջն Վարդան, հանդերձ իւրայովքն. զորս կարգեցեր 'ի զօրս վերինս գերապանծ լուսով զարդարեալ. ընդ որս Աստուածեանց զօրացն յաղթանակս տեսեալ 'ի վերուստ իջեալ պսակ լուսոյ բոլորեալ: Ընկալ Տէր, զաղաչանս միաբան ժողովելոցս քեզ 'ի հաճութիւն. աղաչեմք:

Վսեմական վիպասանութեամբ պատմաբանի ձեր գործ հանդիսի, Քաջդ Վարդան, արի, երջանիկ, հանդերձ միախումբ ընդ քեզ վառելովք, Թիւ հազարաց և երից տասանց հանդերձ վեցեկի Թուով. լիալիր սիրով վառեալ 'ի սէրն Աստուծոյ. հանճարական ձեր իմաստութեամբ, մաքուր անձամբ, մաքրափայլ մտօք, մաքրապարդեց գոլ հանդիսակից, արժանաւորք յաւէտ գովութեան, տիրապէս հաճոյք Աստուծոյ: — Ընկալ, և այլն:

Մատուցայք ձեզ անուն քաջութեան յերկինս և յերկրի, քաջ զօրականք, ընտրեալք յԱստուծոյ. որք ըստ հրամանի փրկչին Յիսուսի սպառազինեալք՝ մեծաւ հաւատովք, բարձեալք ըզխաչն տէրունական, յուսով հետևեալք զհետ խաչելոյն, սուսերբ Հոգւոյն, բանիւ բարձրելոյն ամրացուցեալք զմէջս իմանալիս, կրկին մարդով կրկնակի վառեալք որպէս զքաջք 'ի պատերազմի, վանեալք զգունդս լեգէոնաց հակառակորդացն ճշմարտութեան: Ընկալ, և այլն:

Էական լուսոյն հետևեալք՝ յերկրէ յերկինս ըռահ կազմեալ, վասն ճանապարհին ճշմարտութեանն՝ ճամբարապատ ճանապարհ հորդեալք, զխարդախութիւն ունայնախոհացն՝ արդարութեանն ընարանաւ յայտնեալ, տուր երկայր ունելոք բարձեալք, մրժապարտ ազգին վաշուէր 'ի մաքառումն պատրաստական. զծաղկածին

դաշտն Վատնական՝ [1] կարմրածաղիկ արեամբ ձեր ներկեալ, արգասաւոր ձերով հանդիսիւ զարդարելով զբամբիշ Քրիստոսի։ Ընկալ, եւն։

Սուրբք և սիրեցեալք և ճշմարիտ զօրականք ընտրեալք, ըստ հաճոյից Տեառն պատրաստեալք, զքարիւք մարտն մարտուցեալք 'ի յաղթական ձեր պատերազմի, զբրաբիոնն ձեր մրցանակի արժանապէս յանձին ընկալեալք. որպէս զքաջ յաւէտ նահատակք արիական ձեր պատերազմաւ թեւակոխեալք 'ի վերնասիոնն՝ 'ի կենդանւոյն քաղաք Աստուծոյ, 'ի պօղոսեան մայրն առաքելոյ, քաղաքակիցք գտայք հանդիսի. բարեխօս լերուք առ Տէր վասն տօնողացս զյիշատակս ձեր, զօրականք ընտրեալք։ Ընկալ, և այլն։

Այս գանձիս կամ քարոզիս հեղինակն է Մովսէս ոմն, ինչպէս որ տնագլուխ տառքն ցուցընեն, որոյ առաջին և վերջի տներն աւելորդ սեպեցինք հոս դնել, անոնց մէջ Վարդանանց յիշատակութիւն չըլլալով. օրինակն 620 տարուան ձեռագիր մը առնուած է, որ հեղինակին բաւական հնութիւնն այլ ցուցընէ։

[1] Կ'երևի թէ հեղինակն կամ գրողն շփոթմամբ կու յիշէ հոս, Ս. Գրիգորիսի նահատակութեան դաշտը Վատնոյեան, փոխանակ ըսելու Շաւարշանոյեան կամ Աւարայրոյեան։

# ԺԱ.

# ՍՏԵՓԱՆՈՍ ՍԻՒՆԵՑԻ

ԵՒ

# ՍԱՀԱԿԴՈՒԽՏ

21 *Յուլիսի* 736.

## Ա.

*Հրոտից ամիսն է. արեւն՝ առիւծ աստեղատան մէջ արդարեւ հրեղէն ճառագայթներովը՝ իբրեւ առիւծային թաթերով կու լլկէ կու տոչորէ երկիր: Հայկայ հրաճօճակ աստղն այլ (Շնիկն) սկսած է բարձրանալ. ամեն տեղ տաք, ամեն բան կրակ: Ո՞ւր են այն Հայոց ձիւնեղէն սառնապատ լերինքն. անոր բեւեռային կերպարանքն՝ հիմա յայրեցեալ գօտի փոխուեր է: Երկու հակադէմ կլիմայք կ'երեւին մեր երկրին մէջ. սաստիկ ցրտութիւն եւ սաստիկ տաքութիւն: Ի՞նչպէս բնակելու է ասանկ երկրի վրայ.... Մեր հարքն, եւ մեր եղբարքն անգամ, շատ տեղ գետնի վրայ չէին բնակեր ուրիշ աշխարհաց բնակչաց նման, գոնէ տարւոյն երկու ծայրայեղ յեղանակաց ատեն, այլ անկէ վար կամ անկէ վեր. այսինքն, ձմեռն՝ երկրին երեսաց տակ, կէս գետնափոր տանց մէջ, նման իմն հողաթմբիր կենդանեաց. իսկ ամառն՝*

այլ աւելի վայելչապէս, երկրիս սովորական երեւէն վեր, օդասահման կենդանեաց եւ թռչնոց հետ. կամ լերանց եւ սարից վրայ, կամ ծառոց եւ ձեռակերտ բարձրաւանդակաց վրայ, ձողերու ցիցերու վրայ հաստատելով պարպասներ եւ նկարաններ: Ասոնք են Հովք եւ Հովանոցք եւ Հովոց փեղիքն Հայոց. որ Թորգոմայ օրերէն 'ի վեր մինչեւ ցայսօր սիրելի եւ բաղձալի են 'ի Հայաստան եւ Հայաստանի եզերքը բնակող ազգաց. եւ ինչ որ այսօր Ռուսաց եւ Օսմանեանց իշխանաւորքն եւ զօրապետք կ'ընեն երկրին բնիկ ժողովրդեան հետ՝ անոր բարձրաւանդակաց վրայ ամառնանալով, զնոյն 4000 տարի առաջ այլ Բաբելոնի եւ Նինուէի թագաւորք եւ իշխանք, մեր թագաւորաց, իշխանաց եւ ռամկաց հետ:... Ո՜րչափ այլադէմ, այլախօս, այլակամ ժողովուրդք, զօրք եւ տէրք ամառնացան բնակեցան հոն 'ի հովս Հայոց, եւ անցան գնացին, շատերն անդարձ. իսկ երկիր դարձեալ նոյնպէս իր ամարանոցը կու պատրաստէ. նոյնպէս կու բուսնին ծառք եւ ծաղկունք, նոյնպէս կու գան ծիծառունք եւ կռունկք. նոյն հովք եւ նոյն հովանիք Հայոց. եւ նոյն.... այո, ըսենք կիսամաղձիկ կրիւք, եւ նոյն սերունդք բնիկ նախնեաց, դեռ եւս վկայք երթեւեկի այլազգեաց, եւ վայելողք հովոյն եւ զովոյն:

Օրհնեա՜լ ըլլան հովքն Հայոց, հովք հայրենեաց, զոր 'ի մխիթար եւ 'ի մոռացումն երկայն ձմերան՝ պարգեւեց մեզ դրախտին անկողն, Արարչապետն. օրհնեա՜լ հովն եւ զովն՝ որ 'ի ցած ձորերէ եւ դաշտերէ վեր կանչելով ժողվելով զՀայաստանեայս՝ երկրին այն կոնաձեւ կամ տափաձեւ բարձանց վրայ, իբրեւ 'ի վերայ սեղանոյ բնութեան, բնաբար այլ կ'ազդէին անոնց՝ արարչագործ մեծութիւնը, վսեմութիւնը, գեղեցկութիւնը, զանազանութիւնը: Կ'առողջանային կ'ու-

ժողովային կու զուարթանային միտք և մարմին. Թագաւորն կու հպարտանար, և ոչ անիրաւէր, որ Աստուած իր իշխանութեան տակ ձգեր է այն հովասուն սահմանները, և անոնց աշխոյժ ծընունդքը. զինուորք և ազատազունք հոն կու զօրացընէին, Թեթևցընէին, ձիուն և ոտքուն կ'ընէին իրենց կարիճ անձինքը, սարէ սար՝ այծեմանց և ցռուց ետևէ ընկնալով յորս. հովիւք՝ հոն կու ծաւալէին երկրին և երկրագործութեան կենդանի հարստութիւնը և օգնութիւնը. արուեստաւորք և ռամիկք՝ օրական և ամսական աշխատութիւնները հոն կու հանգչեցընէին. քահանաները և հոգևորք անգամ, պաշտօնեայք Տրի և Քրիստոսի, պարապոյք ուսմանց և կրօնից, հոն այն հովերուն մէջ գոնէ ժամ ժամ զովանալով, առելի յստակ միտք և պայծառ տեսութեամբ կ'ելլէին բարձրագոյն տեղուանք, 'ի կաճառս հռետորաց, 'ի պարս քանաստեղծից, յերամս հրեշտակաց. և իրենց հոգեշունչ Օրհնութիւնները և Համբարձիները երգելով՝ կ'իջնէին, եկեղեցւոյն Տօնականը և Մանրուսմունքը՝ նոր նոր եղանակով հարստացընելու. և ամառնային հովանոցներու աղգած երկնախառն հոգին և շունչն՝ զարմանալի այլակերպութեամբ ինչուան խորագոյն ձմերան խորանիստ տաճարաց մէջ հնչեցընելու, և ձայներընին հասցընելու յետ հազար տարիներու՝ մինչև մեզի այլ: Օրհնեալ ուրեմն միանգամ այլ ըսենք, այն երկնաշունչ Հովքն Հայոց, որ այսպէս հոգևորեցին մեր հայքը, և անոնց յարգարեալ շնչովն՝ զմեզ այլ կու հոգևորեն այսօր:...

Ե'կ, Հայկակ, ելնենք այսօր մենք այլ այն բարձրանազ տեղերուն, հայրենեաց գարերուն, Հայոց հովերուն, Սիւնեաց զովերուն վերայ. այն առդուանքը՝ ուր Բաբիկ՝[1] ազատեալ 'ի պանդըխ-

1 Հայր ուրացելոյն Վասակայ:

տութենէ Պարսից՝ ուրախութեամբ որսի կ'ելնէր, « Խնդալով խաղալով 'ի վերայ սովորական » թատերացն և խնձոյից խրախարանացն, 'ի լե- » ռինս որսասուն և բազմաջուրեր վայրացն, 'ի լե- » ռինս Սիւնեացն [1] » :

## Բ

Այս խաղէն խնտումէն և որսէն աւելի սիրած ախորժիս անշուշտ, երբ քիչ մը յօգնութիւն առնելով, և աչքերդ բնութեան բարձրագոյն և խորածոց գեղեցկութեանց վրայ պտըտցընելով թողուս միտքդ վեր վար ժուռ գալու, և յանկարծ լսես վերը յիշեալ պաշտօնէից մէկուն ձայնը, որ իր աշտիճանին յարմար և իր բնատուր շնորհաց համեմատ՝ բարձրագոյն մտածութեանց մէջ թըռչըտելով վերանալով, Սիւնեաց Սիոնի լեռնէն կու սլանայ Երուսաղէմի Սիոնը, անկէց այլ անդին, հեռու, խոր կ'իջնէ մինչև յափունս Կարմիր Ծովուն. հոն կու պտըտի մեծ Նախամարգարէին հետ, կու գիտէ ծովակըտուր գաւազանին հրաշքը, կու լսէ անոր հրաշալի Օրհնեացուքը. և իր բարձր հանճարոյն վրայ վստահացեալ՝ աւելի վեհագոյն անձին (Քրիստոսի) շնորհօք, կու փորձէ աւելի հոգիացընել հայացընել այն հրաշալի օրհներգը. և սլանալով իր հայկական հոգւոյ վրայ՝ կու սկսի նուագել.

« Յաղթական քեզ օրհնութիւնք, Տէր. որ ըղխորոց ծովուն հերձեր զջուրն. զի 'ի նմա զբռնաւորին ջաղխեցեր զգլուխ. և զարգելեալսն՝ 'ի ձեռն խաչի քո՝ վերածեր 'ի կեանս :

1 Ստեփ. Ուռպելեան :

ահա կու տեսնեմք՝ որ իբրև տեղեակ այս տեղերուս՝ անսովոր և անմարդաձայն ձայնով մը կու գայ, Աւագ աղբեր ընթացքը կու բանէ, անոր հովանաւոր ափանցը ընթացիւք. քալուածքն երագ, հաստատ և իբր սպառնալից. նոյնը կարծել տան դէմքն այլ, որոյ սևաթել շրջանակին վրայ հազիւ քիչ մը արծաթագոյն խառնուածք կ'երևնայ. բարձրակամար յօնքն քիչ մը իրար մօտեցեր են լայնաբոլոր ճակտին կեդրոնին տակ. երեսքն չոր կարմրութեամբ մը կու վառին. բայց քանի կու յառաջէ՝ դէմքն կու թուլանան, համբերութիւնն կ'աւելնայ. կարծես թէ ոտքին տակ ցանցառող մորենեաց, գլխուն վրայ կախուած ճիւղանց աղաչական ձռձռմանց ողորմելով, և կանաչ հովանւոյն պատսպարուածոց միջէն երևցած կտոր կտոր երկնից կապոյտներէն խրատուած՝ կռնձած ճակատը պարզելով, խարշափուն տերևոց միջէն սուլուլիկ հովերու շնչմամբքն սրտաբացուելով, և ջրոյն մանրաքրքիջ կարկաչանօք հրաւիրուած, քալուածքը կու ծանրացընէ, կու դադրի. կու նայի ծառոց և ալեաց վրայ. կու ձայնէ իր փոքրաւորաց և սպասաւորաց յառաջ գալ, և հոն իր վրանը կանգնել և հեռանալ. և երբ զինքը իր ցանկալի առանձնութեանը մէջ կու գտնէ, վերարկուն վար դնելով, կ'երթայ աղբիւրին յստակ հոսանաց տակ տաքութիւնը բժշկելու. կու զովանայ, կու ընջուի, և աղբերափանց մօտ յարմար լայնամիջոց ուռենի ծառ մը տեսնելով՝ կ'առնու իր փայտաշէն հանգստանոցը, ամառուան հովոցի անկողինը, կու հաստատէ այն կանաչ-վարագոյր հովանեաց տակ, և զԱստուած օրհնելով՝ անոր բնութեան բնազարդ տաճարին մէջ, հանգիստ 'ի քուն կու փոխուի, մտածութիւնքն յերազ և 'ի տեսիլս:... Արդեօք կու տեսնէր քիչ մը վերջը ըլլալիքն այլ. երազական

տեսիլքներէն բացայայտ ճշմարտութեան մէջ մըտնել ու մնալն առանց արթըննալու։... Ո՛վ տխըրալի և սոսկալի դիպուած, և գրեթէ աննման այսպիսի աննման մարդու մը համար։

## Դ

Բայց յառաջ քան դիպուածն՝ քիչ մ՚այլ ճանչցի՛ր, Հայկակ, այս վսեմամիտ մարդուս կեանքը և գործքը։ Վսեմ մտացն յարմար կամ թէ առիթ իսկ այնպիսի մտաց՝ վսեմական ծագումն ունէր. Հայոց մայրաքաղաքին (ուր կը նստէր կաթողիկոսն և Արքայից ոստիկանն աշխարհատեսուչ), աւագերէցն Սահակ՝ որ յետ կաթողիկոսին նախապատիւ կրնայ ըսուիլ Դունայ եկեղեցեաց պաշտօնէից մէջ, ընծայեց աշխարհիս զՍտեփաննոս, իբրև Զաքարիա մը Աստուծոյ սըրբագոյն սեղանոյն խունկ ածելու առեն՝ երկնէ արժանաւոր քահանայացու զաւակ մը մաղթելով և ընդունելով, անոր Յովհաննէսին նման՝ զայս, որ արդարև անոր պէս այլ վախճան մ՚ունեցաւ։ Աւագերէց հայրն՝ յայտնի է որ իր որդին առաջին տարիներէն սկսաւ վարժեցընել և կրթել ուսմանց և եկեղեցական պաշտամանց. որոց աւելի յարմար և վեհագոյն վարժարան մ՚այլ չէր կըրնար գտնել քան զնոյն իսկ Հայոց կաթողիկոսարանը, ուր եկեղեցւոյ ուխտին համար մասնաւոր ուսումնարան մ՚ունէին մեր հայրապետքն. որոց աթոռը կը նստէր այն առեն Տէր Սահակ, ազնուական, միանգամայն և քաջավարժ բանաստեղծ անձն, որպէս վկայեն իր գրչէն մնացեալ քանի մը ճառք և շարականք. անշուշտ ճանչցաւ հանճարաւոր կաթողիկոսն իր հանճարեղ համբակը, և յանձնեց մասնաւոր խնամոց վարժապետաց։

տարբերութեան վրայ, և Խչխոնն յաղթող ելաւ. հմտութեամբ՝ Յունաց Ս. Հարց վարդապետութիւնը հարազատօրէն մէջ բերելով, միանգամայն փիլիսոփայական պատճառաբանութեամբ քննելով: Իմացաւ Ստեփաննոս որ իմաստասիրական տրամաբանութեանց համար բաւական չէր ինչուան այն ատեն սովրածն 'ի Հայս, և պէտք էր աղբիւրներէն քննել սուրբ վարդապետաց գրուածքը: Եւ որովհետև Սմբատայ հետ աւրուած էր՝ գաղտուկ և ծպտելով ելաւ 'ի Դըունայ և գնաց 'ի Կ. Պօլիս. և փնտռելով գտաւ հոն վարպետ Յոյն իմաստասէր մը որ և ճգնաւորի պէս կ'ապրէր 'ի միայնութեան. անոր աշակերտեցաւ թէ լեզուն սորվելու և թէ փիլիսոփայութիւն. յունարէնէն զատ լատիններէն այլ սորվեցաւ որ արևմտեան եկեղեցւոյ Հարց վարդապետութեանն այլ տեղեկանայ: Իսկ Սմբատ գժտուելով անոր գաղտուկ երթալուն, իմացաւ ուր ըլլալն, և նախանձայուզութեամբ իմացուց կայսեր, Ստեփաննոսի ով և ինչ կարծեաց տէր ըլլալը: Կայսրն այլ, կ'ըսէ պատմիչն, հրաման տըւաւ քննելու զՍտեփաննոս. իսկ սա իր վարպետէն խրատուած՝ ըսաւ, թէ ես ուրիշի հետ բան չունիմ, այլ պանդուխտ եմ, եկած իմ ապրուստս հոգալու և իմ բարուցս աշխատելու: Այս խօսքով ոչ միայն ազատութիւն գտաւ, այլ և համարձակութիւն առաւ քաղաքը գալու և Յունաց եկեղեցիները և ուսումնարանները մտնելու. մանաւանդ Ս. Սոփիայ գրատունը, ուսկի ուզած գրքերը կ'առնուր, կարդար, կ'օրինակէր, թարգմանէր: Յետոյ Աթէնք այլ գնաց, հոն այլ հին իմաստասիրաց թողած համբաւոյն մնացորդը քաղելու. և նոր գրքեր քննելու: Եւ երբ դարձաւ՝ աւելի ծանօթացաւ Յունաց մեծերուն, պատրիարքարանին և սրբունեաց: Հոս էր այն

տանն Դաւթի հայազգի իշխանազն, որ հիւպատոսութեան և թագաւորական սեղանակցութեն պատիւն ունէր, և յունարէն լեզուն կատարեալ գիտէր։ Ասոր օգնականութեամբը կամ աչքէ անցնելովն՝ թարգմանեց Ստեփաննոս զանազան Ս. Հարց գրուածներ. նախ Ս. Դիոնեսիոսի Արիսպագացւոյն խրթնաբան խորհրդոց գրքերը, որոց մթին բանիցն այլ լուծմունք կամ մեկնութիւն գրեց համառօտ. այս գործս 'ի գլուխ հանեց յամի Տեառն 712. մէկ երկու տարի ետև թարգմանեց Ս. Կիւրղի Պարապմանց ըսուած գիրքն և անոր զանազան թղթերն և ճառերն. — միւս տարին, 716, Ղևտական Գրոց մեկնութիւն մը թարգմանեց. յաջորդ տարին, 717, Ս. Գրիգորի Նիւսացւոյ Յաղագս բնութեան և կազմութեան մարդոյն անուանեալ գրքերը. և հաւանօրէն ուրիշ գրքեր այլ։ Դաւթի ձեռքով համարձակութիւն առած՝ կայսերական գրատունն այլ քննեց, և գտաւ ոսկետուփ մատեան մը նախնի Ս. Հարց գործոց, զոր արդէն ընդունէին Հայք. որով կայսրն այլ հաճելով այս բանիս՝ յանձնարարական գրով կամ օգնականութեամբ խաւրեց զՍտեփաննոս 'ի Հռոմ, ըստ խնդրոյ նորա, որ այն տեղի հռչակաւոր մատենադարանն այլ քննէ. հոն գտաւ Ստեփաննոս լատիներէնէ զատ՝ Յունաց Ս. Հարց գործոց ընտիր և հին օրինակներ, ինչպէս Ս. Աթանասի, Ս. Եպիփանու, և Ս. Կիւրղի Գանձոյ գրքերն. և հաւանօրէն ինչ որ մինչև այն ատեն հայերէն թարգմանուած չէր՝ ինքն թարգմանեց։ Ասոնցմէ դուրս թարգմանեց Ս. Մեսրոպի ըսուած տեսիլքն կամ գուշակութիւնքն, որ ուրիշի շինած անվաւեր գրուածք են. Իլիոնի առման պատմութիւն մը համառօտ, յորում Իլիոնի առումն 1194 տարի Քրիստոսէ առաջ կ'ըսուի։ Ուրիշ շատ գրքեր այլ, կամ բնագիր կամ թարգմանած՝ հետն ա-

ռած, չուզեց 'ի Հռոմայ նորէն դառնալ 'ի Կ. Պօլիս, ուր արդէն 15 տարի կեցեր էր. այլ նաւեց յԱսիա և դարձաւ 'ի հայրենիքն 'ի Հայս:

Իր հեռաւորութեան 15 կամ 20 տարուան մէջոց՝ մեր աշխարհքին շատ փոփոխութիւններ անցեր մանաւանդ թէ կրեր էր Արաբացւոց ոստիկաններէն. Հայոց իշխանքն նուաղեր էին, Եղիա կաթողիկոսն շատոնց վախճաներ էր, և ըստ ոմանց նաև իր յաջորդն՝ մեծանունն Յովհաննէս Օձնեցի, և Դաւիթ Արամոնեցին էր կաթողիկոս. որ և մեծ պատուով ընդունեցաւ զՍտեփաննոս և իր բերած գրքերը. որոնցմէ զատ ունէր նաև նամակ մ'այլ կնքեալ, Կոստանդնուպօլսոյ պատրիարքէն Ս. Գերմանոսէն. որոյ ծանօթ ըլլալով 'ի Կոստանդնուպօլիս և շատ հեղ հաւատոյ վրայ խօսելով, և յորդորուելով եւ պատրիարքէն՝ Յունաց հետ հաղորդուելու, Ստեփաննոս կու զգուշանար, իր կաթողիկոսին հաւանութիւնը չառած: Անոր համար Ս. Գերմանոս գրեց այն հոգելից թուղթը, «Քրիստոս է խաղաղու-» թիւն մեր ». զոր և ինքն Ստեփաննոս թարգմանեց և տուաւ կաթողիկոսին, և անոր հրամանաւն այլ, կ'ըսեն, գրեց պատասխանը, «Զքրիստոսի խա-» ղաղութիւնն առ ընկալեալ »: Սակայն այս պատասխանը, հիմա մեր ձեռք եղած օրինակներուն նայելով՝ հեռի է 'ի խաղաղութենէ Քրիստոսի և 'ի հոգւոյն Գերմանոսի և յիմաստութենէն Ստեփաննոսի, թէ և շատք 'ի նախնեաց մերոց յանուն Ստեփաննոսի յիշեն. այլ եղան և երկբայողք և օտար ձեռքի խառնուրդ ցուցընողք [1]. զոր զգօն քննող մը կրնայ ստուգել թէ այն երկու թղթերը կարդալով, թէ Ստեփաննոսի ուրիշ գրուածները, և թէ մանաւանդ անոր հանճարը և Յու-

1 Ինչպէս Հռչակաւոր վարդապետն Վանական:

նաց հետ այնքան կենակցութիւնը։ Ոչ միայն կաթողիկոսն Հայոց՝ այլ և իշխանք ճանչցան և պատուեցին զՍտեփաննոս, մանաւանդ Սիւնեցիք, որոց քով վարդապետ և ուսուցիչ եղեր էր. և որովհետև իրենց եպիսկոպոսն Յովհան՝ յաջորդն Անանիայի, որդէն վախճանած էր, Բաբգէն և Փուրդոյ իշխանք Սիւնեաց խնդրեցին 'ի կաթողիկոսէն որ ձեռնադրէ զՍտեփաննոս իրենց եպիսկոպոս։ Կաթողիկոսն ոչ միայն եպիսկոպոս ձեռնադրեց զնա, այլ և 'ի պատիւ արժանեաց նորա անուանեց Մետրապօլիտ. և Սիւնեաց եպիսկոպոսութեան աթոռը որ մինչև այն ատեն եօթներորդ կու սեպուէր 'ի կարգի եպիսկոպոսաց, բարձրացուց յերրորդ կարգ, և Սիւնեաց աշխարհէն ուրիշ եպիսկոպոսներուն նախագահ դրաւ զնա։

Մէկ տարի մը միայն կատարեց Ստեփաննոս իր պաշտօնը արժանապէս, թէ հովուական այցելութեամբք և թէ քարոզելով. և գրելով՝ զատ յառաջին գրածներէն՝ զանազան խնդրոց վրայ ճառեր, որոցմէ հասին մեզի քանի մը հատ, քանի մը մեկնութիւնք այլ եկեղեցւոյ խորհրդոց և ծիսից. և Դէնոսիոսի մը հին փերականին, զոր հաւանօրէն 'ի Կոստանդնուպօլիս գրած է։ Սրբազան երգոց մասն այլ թուի թէ երգեց այս միջոցիս, (որ ըստ ոմանց ոչ մէկ տարի՝ այլ ութ տարի քշեց, բայց կ'երևի թէ առաջին տարիներն Սիւնեաց աթոռոյն անտէրութեան ժամանակն են)։

Ո՞րքան ազնիւ և ցանկալի երգեր և այլ գրուածներ և թարգմանութիւններ փափաքելի և յուսալի էր այսպիսի բանիբուն վեհական անձէ մը, որ յետ ոսկեգիր թարգմանչաց Ե դարուն՝ առաջին թարգմանիչ կրնայ ըսուիլ. մինչև ոմանք նոյն իսկ թարգմանչաց մէջ կու խառնեն զինքը, կամ իր գործքերը կ'ընծայեն թարգմանչաց ժամանակակից Ստեփաննոսի մը՝ որ չէ եղած։

# Ե

Դառնանք հիմա 'ի Մողն աւան, ուր շատ ան-գամ եկած էր Ստեփաննոս այցելութեան. այս տեղս նոյն ատեն շինութեամբ ու հարստութեամբ նշանաւոր եղած կ'երևի, քաղքի մը պէս. և Թե-րևս հարուստ քաղքի շնորհօք և անշնորհութե̃ք ոչ անանշան: Եղծ ու մեղծ բարուց պժգալի օրի-նակ և ցուցանք մը կու յիշէ պատմութիւնն, և անով այլ մեր պատմութիւնը կու լմնցնէ. ցու-ցանք մը՝ Մեղէայ, Յեզաբէլի, Հերովդիադայ տե-սակէն. անպարկեշտ լկտի և յանդուգն կին մը, հերատուկ մը, որ Թերևս շատ ցածազգի անձ այլ չըլլալով, աւելի համարձակութեամբ կու լըբէր իր գլխէ հանած երիտասարդին հետ, և գայթա-կղութիւնն կու հրատարակուէր: Ասոր համար արթուն եպիսկոպոսն երեք անգամ եկեր խրա-տեր էր այդ անզգամ զգայունը, որ չէր խրա-տուած. իսկ այսօր չորրորդ անգամ յանդիմանե-լով, և անոր լրբութիւնը տեսնելով՝ հոգևոր իշ-խանութե̃ն բանադրեց, Աստուծոյ արդար դա-տաստանին և մարդկան արհամարհանացը Թողուց զանիկայ. և այն բարկութե̃ տաքութիւնն էր՝ որ ցորեկուան տօթուն հետ խառնուած կու ստիպէր կու տանէր զինքը քիչ մը զովութիւն և հանգիստ փնտռելու, նախ Աւագական աղեաց և վերջը Ճօ-Ճաճիւղ հովացին վրայ: Որչափ որ սրտադողն և նեղութիւնն սաստիկ էր եղած, այնքան այլ հան-գիստն խոր և խաղաղ եղաւ. և ո՞ գիտէ, կիսար-Թուն միտքն ի՞նչ մեղեդեաց և խորհրդածութեց հետ էր, կամ հոգին՝ տեսլեամբ՝ որքան հեռացեր էր այս աշխարհքէս, երբ յանկարծ իրզք այլ բո-լորովին հեռացաւ վերացաւ՞ անկեց. և երանի՜ Թէ

երեսին խաղաղապատած զովադին հովուն բաբախ-մամբը և ոչ դաշնէ աւելի դժնդակ հարուածով մը՝ կտրէր շունչն ։ Սոսկումն և զզուանք կու բերէ լսելն , Թող Թէ պատմելն , այնպիսի անարգ և եղեռնաւոր վրէժխնդրութիւն մը , մանաւանդ այնպիսի արարածէ մը՝ որ կին կ'ըսուի , որ բարութեամբն կակուղ հրեշտակ մը կու դառնայ , չարութեամբն խստող սատանան ։ Ցանցաւոր և անիրաւ կինն այն՝ ոխով լցուած ընդդէմ եպիսկոպոսին , ուզեց նոյն օրը դիւական դրդմամբ սարսափելի յիշատակ մը Թողուլ աշխարհիս մէջ. և իմանալով անոր ուր տեղ հանգչիլը , պարտաւորեց հոմանիքն՝ իր անարգ սիրոյն վրայ. մահու զէնքը ձեռքը դրաւ , հանեց զնա 'ի ծառն. յայտնի է ինչ բանի համար ։ Մարդն Թերեւս ոչ այնքան ճարպիկութեամբ որչափ վախով դողով կամաց կամաց վեր ելլելով , երբ տեսաւ Ստեփաննոսի վսեմափայլ դէմքը՝ հրաշալի հանգստեան մը մէջ , որոյ ըստ պատմչին « իբր զբոց ցոլանայր շունչն » 'ի վեր , և ճախր առեալ դառնայր անդրէն. և » հրեշտակ մի կացեալ 'ի մնարմն՝ հովանի ունէր » նմա Թեւօքն » , սարսափած , Թուլցած , հազիւ կրցաւ շիտակ վար իջնել , և տեսածը պատմել կնոջը ։ Իսկ այն այլանդակ այլափոխ սիրոյն՝ այլ աւելի կատղած՝ նորէն ստիպեց , կանացի և գիւացի շողոքով բողոքով , սիրով ու սաստով՝ որ ուրիշ բան չմտածէ , միայն սպաննէ ։ Երկրորդ անգամ այլ ելաւ Թշուառ ու վատ մարդն , բայց և առաջիննէն աւելի սոսկացած սահմռկած՝ ահաւոր բաներ տեսնելով՝ ծառէն վար ընկաւ քան Թէ իջաւ ։ Այն ատեն հերատուկ ջատուկն որ իր առջի բնութենէն բոլորովին դուրս ելած էր , վատ և անարի կանչելով մարդուն , Թևերը սոթտելով , առաւ սուրը. և այն խաբող սատանայքին հետ սոզոքելով ծառն 'ի վեր՝ հասաւ հրաշունչ հրեշի

մը պէս անձկոտ եւ անդադար ողբայն վրայ. եւ այն վսեմ առաջարանի գլուխը վերցնող սեան (վզին) իջնող անխծեալ հարուածը... այնքան շուտ եւ շիտակ, մինչեւ քննացողն՝ մէկ ցնցմամբ արթնցնելու յաւիտենականութեան մէջ. եւ անկէց [illegible] իր Սողան հովտաց եւ հովից մէջ Թաղած [illegible] արիւնթաթաւ կերպարանքը՝ կանչէց հոգւով. « Տէր, քո է վրէժխնդրութիւն եւ արդար հրաւունքը ». Ինչպէս որ տեսիլքով յայտնուեցաւ այս՝ Նաւ կամ Նոյ անուամբ որբակեաց ձգնաւորի մը, որ այն տեղի մօտ Սեւան լերան վանաց մէջ կ'աղօթէր:.....

Այն օրուան հոմէն՝ իբրեւ փախչելով եւ ամաչելով՝ իջաւ բարձրաւանդակ հանգստարաններէն, երեկոյեան հովանիներուն հետ խառնուելով, որուն զովութիւնը զգալով եպիսկոպոսին սպասաւորքն՝ եկան վրանը վերցընելու... Փուշ զարմացք, սոսկումն առաւ զիրենք՝ երբ փայտեղէն մահճէն զեռ կաթկըթած արիւնը տեսան, եւ սատուածակերպ տէրերնին՝ աւազակի մը պէս սրախողխող:... Չերկընցընենք. մեռածէն աւելի իրենք մահացեալ՝ վերուցին մեծահոգի անձին մարմինը, եւ հանեցին Սիոնի վանքը, ուր լալով եւ ողբով եկան Նաւ եւ իր միաբանութիւնը. բայց մօտի Աւկողան գեղին բնակիչքն այլ լսելով՝ իրենց գեղջաւագին հետ եկան եւ աղաչելով պաղատանօք՝ իրենց գեղը [illegible] տուին մարմինը, եւ հանգուցին հոն Ս[illegible]արի նուիրեալ մատրան մը մէջ առ [illegible]: Սակայն աշխարհի գոյժն գեղէ գեղ [illegible] քաղաք տարածեցաւ, անոր հետ Նոյ Ճգնաւորին տեսիլքն այլ՝ որ սոսկալի պատուհաս մը կու սպառնայր բոլոր այն ամբարշտաններուն: Չուշացաւ պատիժն, ըստ պատմչին՝ տհաւոր ժանտ եւ սասանութիւն եղաւ քաղաքուն որ բոլոր գաւառին մէջ. շատ լեռներ փլան եւ գեղերն-

նեը բարձրացան, շատ աղբիւրներ ցամքեցան և ցամաք տեղուանք աղբիւրացան. ծուխն ու փոշին ամպի պէս կու տարածուէր, և բոլոր բնութիւն 'ի սուգ երևէր. տասն հազար հոգին աւելի համրուեցան շէնքերու տակ և գետնին պատռուածոց մէջ մնացող մեռնողքն, անծանօթներէն զատ: Այս կէս բնական և կէս բանական պատուհասին հետ՝ բնակչաց վախն և յետնոց աւանդութիւնն խառնուելով՝ ըսին, թէ ժաժին և մշուշին ատեն ողբոց ձայներ այլ լսուէին, իբր թէ Վա՜յ յոր, վա՜յ յոր կանչելով, և անկէ՝ Եղեգեաց ձորն ըսուեցաւ Վայոց ձոր. սակայն այս անունս անկէ հարիւրաւոր տարի առաջ այլ կու լսուէր:

Քառասուն օրէն ետև դադրեցաւ ժաժն ու մըշուշն, և ամեն կողմէ եկան, երկրին աւերմունքը թողլով՝ նախ անոր հոգևոր տիրոջ արժանաւոր հանգիստ մը տալու, և եպիսկոպոսաց, քահանայից, վանականաց և ժողովրդեան բազմութիւնը բաւական չսեպելով, զկաթողիկոսն այլ կանչեցին. և յետ բազմօրեայ գիշեր ցորեկ աղօթից և պաշտամանց՝ տխուր հանդէս յուղարկաւորութեամբ վերուցին մարմինը յԱրկազան գիւղէն, և Արփայ գետոյն դիմացի կողմը անցընելով հանեցին բարձրաւանդակ տեղ մը՝ լերան ստորոտին վրայ, կանաչաբոլոր միայնութեան մը, այսինքն անապատի մը մէջ. ուր շատ հին ատենէ վեր, և յառաջ իսկ քան զԼուսաւորչի ժամանակն, առաքելոց քարոզութեանը հետևող հին քրիստոնեայք Սիւնեցիք եկեղեցի մը շիներ էին Բ դարուն մէջ, 'ի պատիւ Ս. Ստեփաննոսի. որոյ քով բոլորեցին հոգևսէր անձինք իրենց միայնանոցը, և խստակրօն ճգնութեամբ կ'ապրէին, գիշեր ցորեկ աղօթելով. և կերակրի համար ոչ միայն մսեղէնէ և կթեղէնէ հրաժարելով՝ այլ և ամենայն տաք բանէ, և թանիկն անգամ թողլով, անոր

համար կոչուեցան Թանահատ, և տեղն՝ Թանահատի վանք. ահա հոս բերին հանգուցին Սիւնեաց իմաստասէր մետրապոլիտին մարմինը. վրան պըզտիկ մատուռ մը կանգնեցին. զոր յետ շատ ժամանակի, յամին 1278-9 քակելով՝ մեծ ու քարակոփ գմբեթաւոր եկեղեցի մը շինեցին, և հիման տակ թաղեցին մարմինը իր տապանաւն։ Այս եկեղեցին ինչուան հիմա կանգուն կեցած է. և հիւսիսային կողմը որմնակից ունի փոքրիկ քարաշէն մատուռ մը. տեղւոյն բնակիչք կարծեն թէ հոն ըլլայ Ստեփաննոսի գերեզմանն. բայց պատմութիւնն դեռ եկեղեցւոյն հիման տակ կու ճանաչէ այն եկեղեցազարդ գլուխը։

## Զ

Իսկ ի՞նչ եղաւ, ո՜ւր կորաւ այնպիսի գլխոյ գահիճն, հայ Հերովդիադայն. արդեօք ժամին ատեն պատառուած գետնին անդնդոց մէ՞ջ ընկղմեցաւ, թէ տարերքներէն աւելի տրտմած ու սըրմրտած մարդկանց արդար վրիժուք պատառ պատառ կտրատեցաւ... Ստեփաննոս Աստուծոյ արդարութեան և ողորմութեանը յանձներ էր իր սպանիչը, և իր նախանուն նախօրինակ նախավկային հետ՝ ըսեր էր, «Տէր, մի՛ համարիր զայդ » զմա 'ի մեղս»։ — Ժողովուրդն վախցաւ Աստուծոյ դատաստանը յափշտակելէն. բնութիւնն պատկառեց իր արարչին կամքէն. իսկ այն որ Աստուած է գթութեանց՝ կակղացուց խստացեալ այլանդակեալ սիրտը. և այն սեղեխ հերատուկ Հերովդիադայն՝ դարձուց յապաշխարող մը։ Ճանչցաւ կինն՝ իր կարծածէն վեր ըրած չարիքը. և ինքզինքը դատապարտելով՝ զգեստները պատռտելով քարերով կու ծեծէր կուրծքը. և այն ան-

պարտ արեան տեղ՝ իր յիմարած արիւնը Թափե-լով, ինքն իր սոսկալի չարիքը և խայտառակութիւնը կու պատմէր, կ'ողբար, կու բողոքէր, իրաւունք և պատիժ կ'ուզէր. և ցուցնելով որ իրեն մեծա-գոյն պատիժ է մարդկանցմէ այլ պատիժ չգտա-նելն, գնաց Թանահատայ վանքը արեւմտեան կող-մէն պատող ձորակի մը դիմաց, և հոն գետակը փո-րելով՝ մինչեւ ծնկուան 'ի կուրծքը կենդանի գե-րեզմանի մը մէջ՝ և իբրև անկայուն մեռեալ մը՝ ամառ ձմեռ, գիշեր ցորեկ կ'ողբար կու լար, Թողութիւն կու խնդրէր մեղացը. մինչև ամենուն գութն այլ շարժեցաւ, և աղօթք հրամայուեցաւ անոր հա-մար. Թողութեան ձայնն եղաւ 'ի գերեզմանէ սպանելոյն, «Թողեալ լիցին քեզ մեղք, ով կին » դու ». զոր և ուրիշ պատարագի ժամ ամենքն լսեցին, և Թողութիւն աւետեցին կնոջն: Բայց նա Թէ և չհրահանգեցաւ Աստուծոյ, բայց դեռ զինքն անարժան սեպելով ուրիշ կերպ ապրելու, ուզեց և մեռաւ միշտ նոյն կենդանաթաղ գբին մէջ. և հոն՝ հանգուցեալ արտասուելով կնքեց ապաշխա-րող կեանքը. հոն այլ Թաղուեցաւ, իր զոհած բարեխօսին դիմաց. որ կու Թուի դեռ իր վանեմա-կան ձայնը կամ հառաչանքը լսեցընել այն հին և ողբագին Թաքնութեան և միայնութեան խորքէն:

## Է

Այլ ո՞վ է իրեն արժանաւոր խօսնակ մ'այլ, որ իր ցաւալի մահը ողբերգէր մեզի: Ո՞վ էր այն մանկախանձման Օրհնեցուք երգողին հոգեկցորդ-քոյրն, Սարխամ, որ նոյն և նման երգերը կըրկ-նէր: — Նախանձելի՜ բաղդ, կրնամ ըսել Թէ և անախտունելի, և պանծալի փառք հայրենեաց մե-րոյ. մեր օրհներգու գիտապետն, Ստեփաննոս,

ունէր իր մարմնաման Թմբկուհին, մեր եկեղեցւոյ սրբազան սիբիլլայն, յիշատակէր Սափփոնը, հարազատ քոյրն, ՍԱՀԱԿԴՈՒԽՏ. որ արեան հետ անոր հոգւոյն նրբութեան և ախորժակաց այլ ժառանգակից էր։ Սահակադուխտ այլ հմուտ երաժիշտ և երգահան էր, և հրեշտակաձայն եղանակաւոր. փափուկ և սղխտակ հասակը կուսութեամբ և հաւատաւորի պարկեշտ ձևովը պըսակած, արդարև մնայր յաւերժահարսին նըման, Թողուց հեռացաւ յաշխարհէ, միայն իր ընտանեաց սեփական տուրքը՝ հոգեխօս քնարն առաւ հետը. և մէկ հատիկ արժանաւոր միայնութեան տեղ ընտրեց հոն, ուր իրմէ 400 տարի առաջ, Հայոց օրիորդաց պարագլուխն, նրբասիրտն նրբազգածն, նազելեաց նախատիպն, մելամաղձիկն և մնայր, Թագապսակ և սրբապըսակն ԽՈՍՐՈՎԻԴՈՒԽՏ, իր հսկայ Թագաւոր եղբօր (Տրդատայ) ձեռքով կանգներ էր իր սքանչելի օդասրահ Հովանոցը, Գառնոյ ձորոյն սիւնասար պատասպարեալ ընաշէկն բլրոց վրայ, որք խորանդունդ վհերու և բազմածոց ձորակներու վրայ նային, և մեր դարուս հմուտ բնաքնիններն այլ սքանչացուցին։ Այն Գառնոյ ձորակին ծածուկ ծոցերուն մէջ՝ գտաւ այրասիրտն, մանաւանդ Թէ հրեշտակասիրտն Սահակդուխտ, անզբաղ քարայր մը, և հոն անցուց կեանքը, հիանալի բնութեան տեսարանաց մէջ՝ հիանալի երգովք օրհնելով բնութեան Տէրը։ Բայց այն աննման քնարին և մեղրաշուրթն բերանոյն ձայներն՝ շատ զօրաւոր էին իր միայնութեան դէմ կռուելու.— երգ և լռութիւն չեն կրնար միաբանիլ.— այրէ այր, քարէ քար համբաւն հնչեց. կարծուեցաւ Թէ Հայոց եկեղեցւոյն երգահան հոգին, մարեմգոյն մուսայն՝ մարմնացեալ իջեր է Տրդատայ և Խոսրովիդխտոյ սիրական սարերուն մէջ. աշխարհիկ

ու եկեղեցականք կու գային, ոչ լսելու և զմայլելու միայն, այլ և աշակերտելու և սորվելու նոր եղանակներ: Հարկ եղաւ որ մեր մուսային այլ՝ իր աստուածաշնորհ պաշտօնը կատարէ. և առանց իր կուսական ու նուիրական շնորհաց նուազութիւն մը բերելու, մենարանին դրան առջև վարագոյր մը ձգելով, ինքն ետևը նստած՝ կ'երգէր և կու սորվեցընէր: Շատ բարակ և բազմաեղանակ երգեր շինեց, զոր մեր երաժիշտքն Մանրուսմունք կ'անուանեն, և առանձնաբար Կցուրդք և Մեղեդիք. որոց գոնէ մէկ մասն անշուշտ գտանի այսօր այլ այդ Մանրուսմունք և Կցուրդք գրոց մէջ, թէ և մեք չգիտեմք թէ որն է յատուկ իրեն, որն իր եղբօրն և որն օտարաց. միայն հաւանիմք թէ շատն առջի երկուքին են, քեռն և եղբօրն, Ստեփաննոսի և Սահակդխտոյ. այն երգոց մէկն այլ, ինչպէս կ'իմացընէ մեզի պատմիչն, Սահակդխտոյ անունը կու յայտնէր, անագլուխ գրերովն, և կու սկսէր Սրբուհի Մարիամ: Ժամանակն, ո՜հ, այն ժանտոր ժամանակն, մեզի չհասուց այն կցուրդն այլ. բայց անշուշտ չկրցաւ այլ բոլորովին անհետ աննշան ընել, և թողուց առաջին տունը. զոր և շատ հեղ հիմայ ըստ յարմարութեան վայելուչ իմաստից՝ երգեմք առաջի Սրբութեան Սրբութեանց:

«Սրբուհի Մարիամ, սափոր ոսկի, և սապանակ կտակարանաց,
Որ զ'ի վերուստ զհացըն կենաց՝ պարգեւեցեր քաղցեալ բնութեանս
Առ նա միշտ բարեխօսեա վասն քաւութեան մեղաց մերոց»:

Իր քերդող եղբօրը եղերական վախճանին ատեն՝ արդեօք ո՞ւր էր քերդողուհի քոյրն, և լսելով սրտահար սրտաբեկ գոյժը՝ քարայրին անկիւ-

նէն սոսկալով առաջ եկաւ, և անդադրման ցաւուն յետին մխիթարանք առնելով իր հոգեխօս բամբիռը, վերջին անգամ անոր ամենէն քաղցր և ամենէն ողբական ձայները իր սրտէն փափկագոյն զգացմանց հետ՝ հանեց հնչեց. և իբրև այլօրինակ Դեբովրա՝ փոխանակ օրհնելու այն այլանման տիրասպան Յայելին ձեռքերը, նզովեց հերատուակ չարաղէն կնոջ անձը, և իբրև մայրն Սիսարայ զրկուած իր սիրելւոյն այցելութենէն, փոխանակ բարձր ձողերու և գաւազաններու վրայ կանգնուն գիտելու՝ գետնամած տեսնելով անոր եղխակապատական և արքայական վառերը և դրօշները, որք և արիւնովը թաթաւած՝ կու յիշեցընէին նոր և կսկծալի կերպով մը «գեղապատուա երանգոյն գունաւադոյն նկարուց, նարօտ ալէաւէտ » նկարուց. այն էր պատրաստեցին նորա կապուտ», և հառաչեց իբրև հարազատ քոյր անեղբայր, բայց Սահակդխտոյ և Ստեփաննոսի արժանաւայել հառաչանօք. և ապա իր երկայն սեաւ վարագուրովն՝ քնարն ալ դէմքն ալ պատելով, ծածկուեցաւ բոլորովին մարդկանց տեսութենէն 'ի խորս քարայրին...: Պատմութիւնն լռէ:

# ԺԲ

# ՏՕՆՔ ՆԱՒԱՍԱՐԴԻ

## 23 *Օգոստոսի.*

*Հայոց սրբազան տարեգլխին՝ բնութիւնն ծաղկափթիթ ծիծաղով կու կենդանացընէ զմարդիկ. իսկ քաղաքական տարեգլխին, որ է Նաւասարդն (օգոստոս), կէս խամրած բնութիւնն ինքնին կենդանանայ մարդկան հաստատած տօներով և հանդէսներով: Տարւոյն առաջագոյն ամիսն՝ Հայոց բարեկենդանն էր, կաղանդ էր. կրօնական, զինուորական և աշխարհախումբ հանդէսներով՝ բարձրատափք, լեռնահովիտք և հովիտք Հայոց՝ զարնանման գեղեցկանային: Բազմաթիւք 'ի գաւառ ժողովրդեան՝ հողագործք՝ մեծ աշխատութիւն մը չունենալով այս եղանակիս, կրնան ցորեկուան տաքը անցընել՝ իրենց և բնութեան խնամած հովանեաց ներքև, ուր կու դիմեն 'ի քաղաքաց այլ արուեստաւորք, զօրականք և ազատաղունք: Եթէ դու այլ՝ Հայկակ, բաղդ ունիս անոնց մանակից ըլլալու, բարով գոհով վայելես. ապա թէ ինծի պէս զրկուած ես բնութեան գալար տագաստներէն, հովերէն զովերէն, հովտէն և սարէն, դիտէ զանոնք քու մենարանէդ: Նայէ, ինչ գոհ և հանգարտ ոմանք նստած պզտի ձեռագոր-*

ծի մը կու պարապին, քան թէ կ՚աշխատին. ոմանք կու խաղան, կու խօսին. մէկն ՚ի խոտերուն վրայ երկընցեր՝ քուն կ՚ըլլայ, մէկ այլն ջրերուն եզերքը կու զովանայ. ուրիշ մը՝ քիչ մը փիլիսոփայ կամ մելամաղձիկ՝ առանձին շքի մը տակ կամ առուի մը գլուխը նստած՝ կու կարդայ կու մտածէ. հոս տղայք կու ցատքըտեն, կու գլորին, կու պառկին. հոն ամբողջ ընտանիք մը առանց սփռոցի սեղանի մը վրայ կու ճաշէ. այս կողմը երկու բարեկամք՝ երբեմն ծանր երբեմն թեթև խօսին. այն կողմը՝ երկու սիրելիք իրենց կարծած ամենակարևոր բանին վրայ կու խօսին, և ՚ի հարկէ անանկ ձայնով մը՝ որ մենք չիլսենք: Հոն բանակած է այրարատեան աստուածահրաւէր գունդըն այլ, ազգային աշխարհապահ զինուորքն, 120,000ի չափ, ժողոված ըստ աշխարհաց և նախարարութեանց Հայոց, իրենց իշխանաց և Հայոց թագաւորին հետ, կատարելու Նաւասարդի տօները. տօնք աստուածոց պահապանաց, յիշատակք քաջաց նախնեաց, մրցանք կորճաց, խաղք և վայելք հասարակաց. զոր 3000 տարւոյ չափ կատարեցին՝ մեր ըստ աշխարհի երջանիկ նախնիքն, թնդացին դոփեցին Բագրևանդայ դաշտերու և բլուրներու վրայ, մինչև ծածկեցան անոնց տակ: Իսկ երբ Հայկայ և Վահագնի օրերուն խորհրդակատար քրմապետաց տեղ՝ փոխանակեցին հաշտապետ քահանայապետք, մեհենաց վրայ եկեղեցիներ կանգնեցին. բայց անոնց չորս դին և դուռը նոյնպէս մնաց. բնութիւնն իր կերպարանքը չփոխեց, ազգն իր հանդէսները չփոխեց. այլ տօները սրբեց, և փոխանակ դից՝ նուիրեց Ճշմարտին Աստուծոյ և նահատակաց նորա: Գրեթէ անկարելի էր՝ որ Ս. Գրիգոր զՀայս ՚ի հեթանոսութենէն դարձընելով ՚ի քրիստոնէութիւն, այն հին մեծահանդէս աշխարհաժողով զբօսանաց օ-

րերը՝ անհանգէս անյիշատակ թողու. ուրեմն թէ ինքն և թէ իր հետևողքն՝ անոնց իւրաքանչիւրին տեղ՝ կերպով մը նման և յարմարագոյն սուրբ տօներ և եկեղեցւոյ յիշատակներ կանգնեցին: Ինչուան որ քրիստոնէութիւնն աղէկ մը ամըրնալով, և ժամանակի երկարութեամբ հին սովորութիւնքն խափանելով, կրցան յետագայ առաջնորդք՝ այն եկեղեցական տօնից օրերն այլ պատշաճապէս փոփոխել, շատն այլ դարձեալ նոյն առաջին հեթանոսութեան տօնից օրաթուին թողուլ:

## Բ

Նաւասարդի նախընթաց՝ տարւոյն վերջի հինգ օրերուն սկիզբը՝ (որք աւելեաց կ՚ըսուին) նուիրեալ էր Վարդածաղէ Վարդամատն ԱՍՏՂԻԿ դիցուհւոյն, որոյ փոխան առաջին հայրապետն Հայոց կարգեց զՎԱՐԴԱՎԱՌ. որ է տօն Պայծառակերպութեան Քրիստոսի, զոր քան զամենայն ազգ՝ պայծառապէս տօնեն Հայք մինչև ցայսօր: Իսկ Նաւասարդին առաջին օրն (11 օգոստոս.) որ է քաղաքական տարեգլուխն Հայոց, ազգին ամենէն մեծ, պանծալի, սրբազան օրն էր, և հանդէսքն շատ օրեր կու տևէին, պէսպէս յիշատակներով. որք միով անուամբ Ամանորայ կ՚ըսուէին, իբրև սըրբազանեալք յատուկ Աստուծոյ մը. քաղաքօրէն այլ համաշխարհական կամ աշխարհաժողով կ՚անուանէին. վասն զի ուրիշ տօներէ աւելի կատարուէին բազմութեամբ մարդկան, որք յամեն գաւառաց կու գային ժողովէին Բագրևանդայ բարձրաւանդակաց վրայ. Թագաւորն իր այրարատեան չորս բիւր գընդովն, նախարարք ութ բիւր գումարտակօք, 600 գաւառատեարք և 400 գահակալ իշ-

խանք, բազմութիւն կրօնական սուրբ պաշտօ-նէից, ամենքն իրենց սեպհականներով, պաշտօնէիւք, ձորակներով․ որով միայն քաղաքական, զինուորա-կան և կրօնական ազգային հանդիսացեալք իրենց մարդիկներով, քանի մը բիւր կ՚ըլլային զատ ՚ի հասարակ զօրականնէն։ Իսկ բազմութիւն աղ-նուաց և ռամկաց՝ միլիոնաւոր պիտի ըլլային։

Ի՞նչ էր այս Հայոց համաշխարհական տօնից պատ-ճառն․ — քեզի անծանօթ չէ Հայկակ, որ նախ՝ հին Նաւասարդն կամ տարեմուտն էր․ որոյ ըս-կիզբն և անունն անգամ մթութեան ամպոց մէջ ծածկուած է, որք խնչուան Նոյի տապանակիր գագաթը և դարը կու բարձրանան․ Նաւասարդն որ հին հնդիկ և զանդիկ լեզուաւ նաւա-սարտա ստուգաբանի, այսինքն Նոր-տարի, նոյն հին ազգին աւանդութեամբ, յիշեցընէ ջրհեղեղի յիշատակն այլ․ Սուրապա որ և Սուրահոգի՝ մեծի Պրահմայ աս-տուածային զուսար և կին կու ճանչի, և ջրոց դիցուհի, տառեկան աղբերականց և գետոց։ Երկրորդ, Նաւասարդի օրերը՝ կ՚ըլլային պէսպէս ջրախաղք, ինչև տօնք ջրոց կամ յիշատակ ջրհե-ղեղին և փրկութեան մարդկան տապանաւն ՚ի լե-րինս Արարատայ։ Իսկ մերազնեայք հիմա վար-դավառին օրը կու կատարեն ջրոյ հանդէսն այլ, որպէս յայտնի է ամենուն։ — Երրորդ, տօն էր յիշեալ Ամանորայ ամենաբեր դից, զոր բերոց և ա-ռատութեան խնամակալ չաստուած մը կար-ծեմք․ և կամ չաստուածահայրն Արամազդ և Անա-հիտ տիկինն․ վասն զի սոցանց տօնն այլ (մանա-ւորապէս աւանջնոյն՝) այսօր կատարուէր։ Այս չաստուածներէն զատ ուրիշ շատ դից մեհեանք այլ կային Բագրևանդայ մայրաքաղաքին կամ գըլ-խաւոր բնակութեան տեղ, որ կ՚ըսուէր Բագա-ւան, այսինքն չաստուածոց քաղաք կամ շէնք․ իւրաքանչիւր դից սեղանք կամ մատրունքն այլ

Բագին կ՚ըսուէին. և այս բագնեաց բազմութենէն ոչ միայն աւանն, այլ թուի թէ և գաւառն ողջոյն իր անունն առած՝ Բագրևանդ է. իբրև բագարանաց բագարան, այսինքն բուն աստուածարան։

Դից հետ դիւցազունք և դիցանուէր կամ սըրբազան անձինք այլ հոն իրենց արժանեաց համեմատ բագին ունէին, ինչպէս որ կու վայլէր այլ՝ Նաւասարդի տօները ամենախումբ համաշխարհական ընելու համար։ Այս դիւցանուէր և պաշտելի անձանց մէկն էր Մաժան մեծ քրմապետն, Բարեբաստ Թագաւորին Բ Արտաշէսի բազմաթիւ որդւոց մէկն. զոր ոմանք յեղբարցն սպանին, ոմանք այլ մեծարեցին. ասոնցմէ էր Տիգրան Գ, որ երբ թագաւորութեան հասաւ (յետ իր Արտաւազդ և Տիրան եղբարցն), Մաժանայ գերեզմանին վրայ դիցավայել բագին մը շինեց, քովն այլ հիւրանոց կամ իջեւան, ուր ձրի բնակին անցորդ ուխտաւորք, և վայելեն Մաժանայ նուիրած զոհերէն։ Տիգրանայ որդին Վաղարշ՝ այլ աւելի պատուեց քրմապետ հօրեղբօր յիշատակը, և Նաւասարդի ամանորայ տօները այլ աւելի աշխարհախումբ հանդիսիւ կատարել կու տար. որով հին տօնից վրայ չորրորդ մ՚այլ աւելցաւ։..

Բայց մինչդեռ Տիգրան և Վաղարշ այսպէս եղբայրասպան Մաժանայ վրէժը խնդրէին, սպանողն (և ինքն իսկ սպանեալ) Արտաւազդ՝ յետ մահուն անգամ կու մրմռար կու սպառնար նորէն վրէժ խնդրելու և աշխարհախումբ տօնը համաշխարհական սուգ դարձընելու, և տարւոյն հետ բոլոր աշխարհս այլ վերջացընել տակն ու վրայ ընել։ Արտաւազդ՝ անդրանիկն Արտաշէսի և Սաթինկան՝ տղայութենէն 'ի վեր բոլոր կեանքը խենթուկ մենթուկ անցուց մոլութեամբ և յանդգնութեամբ, մինչև ժողովուրդն

իրեն Շիդար կանչէր. անանկ որ հայրն գրեթէ սրտացաւէ մեռաւ, և մեռնելու ատեն, (առասպելք մեռնելէն ետև կ'ըսեն) անիծեց զնա, որ երբ որսի ելնէ «յազատն 'ի վեր 'ի Մասիս», Քաջերն (դէշ ոգիներ) բռնեն զինքն և տանին լեռան վերի կողմը մութ վհի մը մէջ պահեն. և այնպէս այլ եղաւ կ'ըսեն. վասն զի Թագաւորելէն քիչ վերջը որսի ելնելով Մասեաց վրայ՝ Գինոյ գետակին աղբերց քով՝ ձիով հանդերձ ինկաւ Մասեաց վհին մէջ, և Քաջերն երկաթի շղթայիւք կապեցին զնա. բայց իր երկու որսի շներն քովէն չզատուելով՝ անդադար երկաթները կու կրծեն կու մաշեցընեն. անանկ որ տարւոյն վերջի օրը մազի բարակութեան և կտրելու կու հասնի. բայց Նաւասարդին օրը դարբինք իրենց սալը և ամենայն արուեստաւորք իրենց գործիքը կու զարնեն. այն ձայնէն երկաթները նորէն կու հաստընան, Արտաւազդ իր շղթայից մէջ գերի կու մնայ, աշխարհս այլ անոր աւերմունքներէն ազատ: Ահա այս այլ հինգերորդ յիշատակ մ'է Նաւասարդի. զոր յիշելով և յետ 300 տարւոյ՝ մնակարծիք ոմանք 'ի քրիստոնէից, ոչ միայն Նաւասարդին օրը, այլ և ամեն կիւրակի օրեր՝ սալերնին գործիքնին կու զարնէին, որ զօրանան շղթայք շփացած Շիդարին, և չելնէ զաշխարհք աւրելու:

Գ

Այս ամեն յիշատակներէ վերագոյն և հնագոյն և տօնելի յիշատակ այս օրուանս էր, վեցերորդ, մեր շատ հեղ յիշեալ ՀԱՅԿՆ, մեր ազգին նախահայրն, և իրմով ազգերնուս ձևանալն, մեծ յաղթութեամբն ազատելով 'ի Բելայ բռնութենէն: Թերևս յիշես, Հայկակ, որ թէ ազգային

անկախութիւն, թէ Քաղդէացւոց հին պատմու-
թիւն, թէ մեր ռամկական տարեհաշիւք և թէ
աստղաբաշխականք անգամ միաբան ցուցընեն,
այս մեծ և ամենապանծ տօնիս սկզբնաւորու-
թիւնը 'ի 11 օգոստոսի, 2492 տարի յառաջ քան
զԹուականն Քրիստոսի: Չկայ ազգ մը որ այսչափ
ստոյգ հին և այսչափ պանծալի յիշատակ մ'ու-
նենայ. վասն որոյ կրնամք անուանել զսա բուն
Օր հայկական և Տօն ազգային. որ այնքան երկար ժա-
մանակէ վեր լինելով՝ բարձր լերան գլխէն իջած
ձեան հիւսին նման, և վերոյիշեալ յետին յիշա-
տակները վրան առնելով՝ այլ աւելի մեծցեր է:
Հայկայ մեծ քաջութեան և անուան համար էր՝
որ իր յաջորդքն՝ Նաւասարդի օրերուն իրենց ազ-
գին ոյժը ներկայացընող կարիճ զօրաց աշխար-
հագումար հանդէսներ կ'ընէին. և այն մեծ ան-
ձին անունը մեր սուրբ Հարք և Թարգմանիչք ի-
րենց հեթանոս հարց պատուադրութեանը՝ հե-
տևելով՝ աւելի սրբացուցին և անմոռանալի ըրին,
երկնից համաստեղութեանց և աստուածաշունչ
գրոց մէջ դրոշմելով, ուր որ ուրիշ ազգք Որիոն
գիւցազնը և աստղը կու յիշեն: Քանի որ ազգա-
յին ինքնագլխութիւն կար՝ այս և ասոր հետ
միացեալ յիշատակք կրկնուէին և հնչէին. քրիս-
տոնէութեան գար ու կէս տիրած ատենն, որ-
չափ որ քրիստոնէութիւնը կրնար յիշել. և որ-
պէս զի բուն սրբազան կամ եկեղեցական տօն մը
դառնայ այն օրը, հայրն մեր Լուսաւորիչ գրեթէ
ամեն տօներէ առաջ այս օրս նուիրեց Ս. Կարա-
պետին Յովհաննու և Աթենոգինեայ եպիսկոպոս վը-
կային, որոց նշխարքը բերաւ 'ի Կեսարիոյ և 'ի
Սեբաստիոյ, և նախ 'ի Տարօն գաւառ գալով ու
անոր կռատունները ջնջելով, Աստուծոյ յայտ-
նութեամբ՝ անոնց տեղ շինեց բերած սրբոց մա-
տուռներ, եկեղեցիներ և վանքեր, որոց մէջ ա-

մինչեւ նշանաւորն է Մշոյ տաճարն ընծայած Ս. Կա-րապետին : Տարօնոյ երկիրն՝ սահմանակից Բագրեւան-դայ՝ ուստից կ'ընդունի զԱրածանի գետն, անոր պէս այլ մեհենադարդ կրօնական երկիր մ'էր, և տեղի հանդիսից. ինչպէս այլ ունէր իր Բագաւանն՝ Յաշտիշատ կամ Յաշտից տեղին անուանեալ, որ է ըսել զոհերու տեղ, իր շատ մեհենաց և բագնաց համար : Լուսաւորիչ այնքան աւեր և ձեռնարկեր հանդէսներ խափանելու համար՝ պատուիրեց Թագաւորական հրամանաւ, որ այնուհետեւ Նա-ւասարդի հեթանոսական յիշատակաց տեղ՝ նոյն տարեմուտին օրը՝ կատարուի այս երկու սրբոց յիշատակին քաղաքական հանդիսից մէջ՝ առաջի-նին պէս : Անոր համար դարձեալ Բագրեւանդայ ծայրը՝ մօտ Ծաղկեայ և Նպատ լերանց, մօտ և Արածանւոյ աղբիւրներուն՝ ուր մկրտեց զՏրդ-դատ և զբիւրաւորս Հայոց, Լուսաւորիչ՝ մեծ տաճար մ'այլ շինեց յանուն Ս. Յովհաննու, որ և կոչի Բագրեւանդայ Ս. Յովհաննէս. որ և յետ 300 և աւելի տարիներու նորէն շինուելով գործակցու-թեամբ Հերակլ կայսեր, մինչեւ ցայսօր կ'ամբառնայ մեծագոյն նշանակ հին և նոր Նաւասարդայ : Երբ Հայոց ինքնիշխանութիւնն այլ վերցուեցաւ, քա-ղաքական ազգային հանդէսք այլ դադրեցան, ա-րով այս սրբոց տօնքն այլ ուրիշ շարժական տօ-նից կարգը մտան : Բայց Նաւասարդն, այսինքն Հայոց քաղաքական տարեմուտն, 44 դարէ վեր միշտ դառնալով՝ Հայկայ աստեղ բարձրանալուն օրերը՝ անխափան կու յիշեցընէ մեր ազգային և հայկական օրը, զոր և արժան է մեզի՝ որ վիճակի մէջ այլ ըլլանք՝ անոր յարմար յիշել, տօնել և հանդիսացընել անմոռաց, որչափ որ ազգի և Հայ անուն և լեզու պահեմք :

Դ

Տարեգլխէն երկու շաբաթ եաւ, Նաւասարդի 15ին, հին Հայազգիրն մեծ աշխարհախումբ տօն մ'այլ կու նշանակէ, Հայաստանի ամենէն սիրելի և ամենէն մեծ խնամակալ պահապանին, որ էր դիցուհին ԱՆԱՀԻՏ, մեծապէս պատուեալ և պաշտեալ 'ի Հայոց քան յայլ ազգաց. մինչև ոսկիէ արձաններ կանգներ էին անոր յԵրիզա աւան՝ ընդ մէջ Մեծ և Փոքր Հայոց, ուր շրջակայ ժողովուրդք այլ յուխտ գային. ուր և մեծազօրն Տրդատ ազատելով զհայրենիսն 'ի Սասանեանց բռնութենէն՝ համաշխարհական տօն և շնորհակալութիւն մատոյց. և իր հրովարտակաց և խօսից մէջ կ'ըսէր. «Մեծի Անահտայ տիկնոջ, որ է » փառք ազգիս մերոյ և կեցուցիչ. զոր և Թագա- » ւորք ամենայն պատուեն, մանաւանդ Թագա- » ւորն Յունաց. որ է մայր ամենայն զգաստութեանց, » բարերար ամենայն մարդկան բնութեան, և ծը- » նունդ է մեծին արին Արամազդայ:... Մեծն » Անահիտ որով կեայ և կենդանութիւն կրէ եր- » կիրս Հայոց:... Խնամակալութիւն յԱնահիտ » տիկնոջէ » (հասցէ ձեզ Հայոց): Այս տեղս էր մեծ և բուն մեհենեացն Հայոց Թագաւորացն. ուր կու պատուէր Հայաստանի Տիկինն, նաև յօտար ազգաց. կարծուելով 'ի Լատինաց Տիանա, (որ և այլ կողմէն կարդալով Անահիտ կարդացուի). 'ի Յունաց՝ Արտեմիս, և Պարսից և մերձաւոր ազգաց մէջ այլ նոյն Անահիտ անուամբ ճանաչուէր. բայց ամենէն աւելի Յունաց պարծանք Աթենաս դիցուհւոյ նման ճանաչուէր. ինչպէս Տրդատայ գովութիւնն յայտնէ, և Պղատոն փիլիսոփայն այլ յայս կարծիս էր. սակայն անոնց Արտեմեայ, Բաբելացւոց Միւլիտտեայ, Փիւնիկեցւոց Ա-

տարբայ, Լուանի, Աստղկան, Հերայի և այլոց դից այլ զուգական կու սեպուէր. միով բանիւ ամենայն աստուածական հանճոյ յատկութիւն ճանաչէին Հայք յԱնահիտ[illegible]կին, և անոր համար մեծապաշտօն պատուէին: Յայն պաշտօն կու հրաւիրէր Տրդատ և զԳրիգոր, որ քիչ տանէն զինքը պիտի հրաւիրէր 'ի մեծագոյն և 'ի սրբազան պաշտօն. ինչպէս որ յետոյ անոր հաւանութ̃քն՝ իջուցանելով զԱնահիտ 'ի տիկնութենէ Հայոց՝ տեղը բարձրացուց զմիայն արժանին պաշտօն յետ Աստուծոյ, զՍ. Կոյսն Աստուածածին, արդարև երկնից և երկրի տիկին. և մեծահանդէս տօն մը կարգեց 'ի նոյն 15 նաւասարդի (25 օգոստոս). զոր հին տօմարք Աւէտման տօն կու գրեն, և այլք՝ աւանց որոշ յիշատակի՝ միայն եկեղեցւոյ և Աստուածածնի տօն. որ յետ ժամանակաց փոփոխելով կամ խափանելով, մոռացութեամբ քաղաքական և անահտական հանդիսից, նոյն Աստուածամօր վերափոխման տօնին հետ խառնուեցաւ, զոր Հայք տօնեն ('ի կիւրակէի մօտ 'ի կէս օգոստոսի. իսկ այլք 'ի 15 օգոստոսի, որ է 5 նաւասարդի):

Այս տօնիս նախընթաց օրը, որպէս յայտ է ամենուն, հիմա Շողակաթ տօնը տօնեմք, որ է Էջմիածնայ մայր եկեղեցւոյն նաւակատիքը, և Եկեղեցւոյ և Աստուածածնի յիշատակ մը. զոր նոյնպէս սահմանեց Ս. Լուսաւորիչն, և հաստատեց 'ի 4 նաւասարդի (14 օգոստ.) որ կամ իր տեսլեան օրն էր, և կամ հաւանօրէն՝ ուրիշ հին հեթանոսական տօնի մը օր, որոյ խափանիչ դըրուեցաւ Շողակաթն, ինչպէս Վարդավառն այլ Աստղկան տօնին. և անոր պէս այլ գեղեցկութեան, վայելչութեան և պաճուճանաց յիշատակ մը, կամ դիցուհւոյ տօն մը գուշակել կու տայ անունն:

Թուի թէ ուրիշ տօն մ'այլ կամ Թափօրի պէս
հանդէս մը կար անկէ քանի մը օր ետև, Նաւա-
սարդի եօթին (17 օգոստ.), ընդ մէջ Ամանորայ
և Անահտի տօնից, որուն պատճառն անծանօթ
է մեզի, բայց տեղը հաստատուած է ՏՕՆ ՊԱՏԿԵ-
ՐԻ ՏԻՐԱՄՕՐՆ։

Ե

Ի՛նչ զարմանալի փոփոխութիւն և աննման
յարմարութիւն։ Աստղկան և Անահտայ ոսկեծղի
ոսկեձոյլ ոսկեհամոյր անդրեաց տեղ, փայտեայ
խոշոր անշուք պատկեր մը. բայց կերպարանածը
անոնցմէ շատ և շատ մեծ, աստուածային խնկու-
հւոյ մը, ոչ քեռ և դստեր կամ կնոջ դից, այլ
Մօր Աստուծոյ, և անամուսին մօր. որ է ըսել կին
և կոյս. միով բանիւ Կուսամայր. հրաշալի՛ բան,
բոլոր հեթանոսաց իմաստութէ՜ վեր. որք Աստղ-
կայ և Անահտայ նման մենասէր կոյսերը՝ դրին
դարձուցին 'ի կարգ անպարկեշտ կանանց. քրիս-
տոնեայն՝ կուսի մը գերագոյն շնորհք իր յաւէրժ
կուսութիւնը ճանչնալով՝ հաւատաց զնա մայր
Աստուծոյ, և միոյ միայնոյ Աստուծոյ. որով և
միայն Տիրուհի երկնից և երկրի։

Այս տօնս հնագոյն է քան զԳրիգոր Լուսա-
ւորիչ, և ըստ բարեպաշտ և ընդունելի աւանդու-
թեան՝ հաստատեալ 'ի Բարդուղիմեայ։ Այս Ա-
ռաքեալս որ զրկեցաւ 'ի տեսութենէ Տիրամօրն
անոր ննջմանը ատեն, բաղձաւոր եղաւ անոր ըս-
կըզբնակերտ պատկերը ժառանգելու, և բաղձա-
ւոր ըրաւ զՀայս անոնց ժառանգեցընելով։ Այս
պատկերը քանդակեր և նկարեր էր Յովհաննէս
աւետարանիչ, և Տիրամայրն դնելով 'ի վերայ ե-
րեսացն օրհներ և Թողեր էր յիշատակ առաքե-

րոյն և աշակերտաց և ամենայն հաւատացելոց. առաքելոյն՝ վասն մխիթարելոյ զՏարագրեալսն՝ անոր պարգևեցին. և նա իբրև աւետարանական նը-շան մը հետը կու տանէր՝ ուր որ քարոզութեան կ'երթար յարևելք, 'ի Հնդկաց մինչև 'ի Հայս. և անով սուտ աստուածները կու փշրէր, ճշմար-տութիւնը կու հաստատէր. անով արևու նուի-րական աշխարհին մէջ (Խորասան) զարև խա-ւարեցնելով՝ անոր բաղնին սպասաւոր մոգերը՝ աշակերտեց 'ի պաշտօն Առաքելական արդարու-թեան, և հետը բերաւ 'ի Հայս, կարգեց սահմ-նորդ նորընծայ հաւատացելոց։ Մեր աշխարհին հարաւային արևելեան կողմերը պտըտելով, եկաւ այն բարձր և անծանօթ Տօրոսի կողմերը, որք Աղթամարայ ծովուն պարապատիկը կ'անջրպետեն 'ի բարձր հովանէն Տէգրիսի. որոց վրայ ձմեռան դիզուած բարդ բարդ ձիւներն 'ի գարնան բազմա-վտակ հեղեղաջուր. գահավիժելով, սաստիկ գնդըն-մամբ կու թափին թատերաձև ընտանապատ խորա-ձորի մը մէջ, և կ'երթան խառնուելու արևելեան Տէգրիսի ծոցը, որ այն կողմէն կու բղխէ։ Վանին և բնութիւնն աւելի ահեղ տեսարան մը կ'ըն-ծայէին այդ գժուարակոխ ահաւորատես կոհա-կացեալ լերանց, քարաշէն ամպագիտակ բերդե-րով. որոց մէջ անուանի էին երկուքն, Կանգուառ կամ Ագռաւաքար և Դարբնոցաքար։ Ընտրութեան և բնութեան անհեղութեան վրայ՝ աւելցուց կառ-ապաշտութիւնն իր պատկառանքը և արհաւիրքը. յիշեալ դղրդաթանց մէկուն վրայ կոչուած էր տիկինն Հայոց՝ Անահիտ. բայց ոչ ինչպէս յԵրէզի-կայ՝ ծաղկանց և մարմանդեաց մէջ խաղով ծիծա-ղով նուագելով, այլ իբրև անեղայն գժուարութե-նէն, ամառուան կայծակներէն, ձմեռուան սա-առամանիքներէն, և ապառաժից ժանտութենէն՝ խոժոռած գժնէհայեաց դշխոյ մը կ'երևար. որոց

շանթերը կայծակները կու ցատքեցընէին խաւարայ քուրմը․ քարայրի մը մէջ քաշուած, առէպ առէպ մեծամեծ կռաններով սալեր սարեր զարնելով Թնդացընելով և կայծ հանելով։ Որչափ որ ահաւոր և գժոխելանելի էր այս տեղս՝ այնքան այլ յաճախելի ուխտատեղի մը եղած ժողովըրդեան․ որք աւելի առակմամբ քան սիրով կու քըշուէին կու գային հոս, իրենց ցաւերուն կամ խղձերուն համար ճար ու ճարակ գտնելու․ խաւարայ քուրմը այլ կու տային անոնց աղտեղի դեղեր և ծրարներ, այլանդակ կարգ արձաններու ձեռքէ։ Ահա այս տեղս եկաւ Ս․ առաքեալն Բարթուղիմէոս Խորասանէն դարձած ատեն․ և իր բերած Տիրամօր պատկերն բաւական եղաւ ամենբան դադրեցընելու․ գարշաձայն Թնդմունքն լռեցին, կայծերն մարեցան, կուռքն կործանեցան, Անահիտ անյայտ եղաւ․ իսկ անոնց պաշտօնեայքն սրտմտած՝ կ'ուզէին քարկոծել զառաքեալն և իրեն հետ եկող հաւատացեալքը․ իսկ Նա պզտիկ խաչով մը ամենուն յաղԹեց, առաւ ու անկէց Անահտայ տեղ, և ամէնքը փախան, չէք եղան․ և անկէ ետև այն խաչին կ'երկրպագէին․ մինչև յետ 250 տարւոյ եկաւ Ս․ Լուսաւորիչն, յարգուԹեամբ առաւ այն խաչը իբրև յիշատակ առաքելական, և հետը կու տանէր, ինչուան որ առանձնացաւ 'ի Սեպուհ․ յետոյ զարձեալ այս կողմերս բերին զայն և կանգնեցին 'ի վերայ գերեզմանի ահեղազօր Թագաւորին Տըրդատայ, մարմինը հոս փոխադրելով 'ի Թորդանայ։

Այն ափափայ լեռներուն վրայ ելնել յաղօԹս և յուխտ՝ չարաչար աշխատանք և պաշտօն էր․ անոր համար Ս․ առաքեալն իր հրաշագործ Տիրամօր պատկերը պահեց այն լերանց ձևացուցած խորաձորին մէջ, ապահով ու ծածուկ խորշ մը, որոյ մօտէն կ'անցնի լերանց հոսանքէն ձևացած

Տիգրիս գետն. այն քարէ դարերուն մէջ իր ձեռօք փոքրիկ եկեղեցեակ մը շինեց, ու հոն դրաւ հրաշալի Պատկերը. քովն այլ քանի մը խրճիթ շինել տուաւ, և բոլորը մէկէն անուանեց ՀՈԳԵԱՑ ՎԱՆՔ. ուր ընակեցուց նորընծայ կուսանք, զորս 'ի Գողթն գաւառէ բերած էր հետը. և անոնց յանձնեց Տիրամօր պատկերը և մատուռը. Նորահաւատ քրիստոնէից այլ հոծիւ քահանաներ ձեռնադրեց, որք աւելի գաղտուկ կ'երևէին քան թէ կուսանքն: Անոնց առաջնորդ էր Մուշխամ քոյրն Յուսկան կամ Յուսհաստայ, զոր առաջին ծայրագէտ կրնամք անուանել. որ և յետ շատ տարիներու ուզելով բոլորովին առանձնացեալ ապրիլ, թողուց Հոգեաց վանքը, և գետոյն դիմացի կողմն անցնելով, քարայրի մը մէջ խցիկ մը շինեց, հոն ճգնեցաւ, հոն մեռաւ և թաղեցաւ: Իսկ իրեն տեղ մայրապետ դրաւ զՄննա, Որմզդատայ կամ Մազդատայ և Մաքոմարի[1] քոյրը. որ նոյնպէս քանի մը տարի հոգալով կուսաստանը և վանքը, յետոյ առանձնացաւ ուրիշ կողմ մը, Դարբնաքարի ձորոյն այն դին, և ինքն այլ հոն իր խրճիթին մէջ վախճանեցաւ, իրեն յաջորդ թողլով իր քոյրը Մարխա. որուն ուրիշներն այլ յաջորդեցին. և միշտ հաստատացեալք, թէ և սակաւաթիւ, մնացին հոն, մինչուան Հայոց աշխարհօրէն հաստատուիլն 'ի Քրիստոս: Ասկից քանի մը տարի առաջ՝ Հռիփսիմեան կուսանք այլ եկան հոս ուխտի, և մխիթարուեցան իրենց պէս գաղտուկ կեցող հաւատարիմներէն: Այսպէս անկոխ անտես քարերու սորերու մէջ ճշմարտութիւնը կու պահէին փափուկ կուսանք, մինչդեռ կայսերք և հրա-

1 Զասոնք կու յիշէ Խորենացի իբրև իր ատեն ծանօթ անձինք ուրիշ պատմութիւններէ, որք կորսուած ըլլալով՝ մեզի անծանօթք են:

կայ Թագաւորք կու հալածէին իրենց տիրած տեղերէն: Վախնալով որ հոս՝ այլ չհասնի հալածանքն՝ Հռիփսիմեանք սախպեցան Թողուլ զգուշաւոր խաղաղութեան մէջ իրենցմէ առաջ եկած Տիրամօր պաշտօնեաները, և գնացին դէպ 'ի կողմն Վանայ: Իսկ երբ Լուսաւորիչն սկսաւ քրիստոնէութիւնը համարձակ տարածել, Հոգեաց վանքըն այլ հռչակեցաւ, լուսաւորեցաւ, հրաշքներով պայծառացաւ. որոց անձամբ ականատես վկայ ըլլալով սուրբ Հայրն մեր, ընդարձակեց վանքը և շինեց Ս. Սիոն եկեղեցին. բայց առաջելոյն ձեռակերտ Տիրամօր տաճարիկը անարատ Թողուց, նոյն ձևով և մեծութեամբ, և նոյնպէս այլ մնաց գրեթէ ինչուան վերջը, բայց առջին 'ի Լուսաւորչէ նորոգեալ՝ երթալով անուանի եղաւ, ուր յետ կուսանաց արք կրօնաւորեցան, և Հայոց անուանի վանորէից և ուխտատեղեաց և եպիսկոպոսարանաց մէկն եղաւ. վանաց երէցն ու եպիսկոպոսն կոչուեցաւ Աստուածածնի Պատկերին առաջնորդ, որ նոյն է ընդ Հոգեաց վանաց. և երբեմն նոյն իսկ Անձևացեաց եպիսկոպոսական աթոռն, որոյ առաջին 'ի պատմութեան յիշատակեալ եպիսկոպոսն է Աբխաղամ 'ի Դ դարու, մեծին Ներսիսի օրերը:

Այս սուրբ Ներսէս հայրապետս այլ եկաւ հոս ուխտի և հետը թորոմներ բերելով՝ բժշկեց Տիրամօր շնորհքովը, և հիւանդանոց մ՚ այլ շինեց ուրիշներու համար. որով երրորդ անգամ մեծ հաստատութիւն առաւ սուրբ Պատկերին տօնն. զոր և յետագայ Հարք և եպիսկոպոսք հանդիսակատարէին այսօրս (7 Նաւասարդ, 17 Օգոստ.) իբրև 'ի յիշատակի վերափոխման կուսին, որպէս Թուի 'ի նոյն ինքն յառաքելոյն Բարթուղիմէոսի դրուած, և հաստատուած 'ի Ս. Լուսաւորչէն: Ինչուան 'ի վերջին դարս յուխտ և 'ի պատուի

մնաց Հոգւոց վանքն, և Պատկեր Տիրամօրն. որք հիմա նոր հետազօտութեան և լուսափայլութե կարօտ են, քրիստոնէութեան հնագոյն և առա_ջին ուխտատեղեաց, կուսաստանաց և վանաց մէկն ըլլալով:

Այս տեղերս այսպէս ստորագրէ ականատես քերդող ոմն՝ Ներսէս Մոկացի, մեզմէ երկու և կէս դար առաջ:

Նշխար փայտին որ շնորհեցաւ
Բարդուղիմեայ մեծանկեցաւ:
. . . . . . . . . . . .
Եկեալ յերկիրն Անձևացեաց՝
Առ ի համբաւ քարի միոջ,
Ցոր էր աղուէսն ամրացեալ յորջ,
Ընդ Անահտայ բնակէր տիկնոջ
Մարդախոշոշ կռանադոչ.
Քանզի փայլակն ի վայր անկեալ՝
Ի գարբընաց քըրայս արկեալ,
Զգեղն որ կազմէր ախտիւ խառնեալ
Ցուռութութենս մակարդացեալ.
Որպէս ի ճառըն պատմական
Ուսուցանէ մեզ միաբան,
Եւ զվիշապին հին մեքենայն
Կիպրիանոս այր սրբազան:
Զի հին վիշապն անդրր բունէր
Եւ կռանին համաձայնէր,
Բախմամբ Թնդման ահ արկանէր,
Զնոսա յուշոյ միշտ խափանէր:
Իսկ արք տեղւոյն զերդ խելագար
Անդ խռնէին գեգերաբար,
Թարախածոր առեալ ծըրար
Եւ կոչէին Դարբընաքար:
Ցոր վայր հասեալ առաքելոյն
Փութով խափան առնէր գործոյն,

Դարբընաքար բախման թնդոյն,
Որ գործօնեայքն էին նիւթոյն.
Եւ զդիցամայրըն խորտակեաց
Ըզքռնութիւն քակեալ դիւաց.
Քարանձաւէն յայն հալածեաց
Եւ սրբութեան տեղիք գործեաց:
Իսկ չար զինուորք գունդ առնէին
Ընդ հիւսիսի բարձու լերինն,
Վիրգս ի վիմաց յայն հոսէին
Ընդ այն և ճիչս արձակէին:
Բարդուղիմոս զայն տեսանէ
Բարձրաւանդակ լեառն ելանէ
Խաչ մի փոքրիկ անդ օծանէ
Քարիւ մի զքաջքն արտահանէ.
Զոր եւ յետոյ սուրբըն Գրիգոր
Զարձանն առեալ՝ տանէր ընդ իւր,
Մինչ Տրդատայ մահուանն աւուր
Երեսին եդ պըսակաւոր:
Կանգնէ եւ անդ կրկին նըշան,
Ցըստորոտով լերինըն յայն.
Կարկառակոյտ մի տուզական
Ձեռնագըրեալ ի մեծ արձան:
Եւ է տեղին յոյժ լեռնափակ
Պատեալ վիմօք երկնադիտակ,
Իսկ մէջ ծոցոյն հարթայատակ
Հոսանահերձ վըհաքատակ.
Զի Տիգրիսին մեծի կայլակ՝
Որ յԱդենայ քառորդ վըտակ,
Ցամամբ խաղայ միշտ համարձակ,
Ընդ գոգ հովտին արագարագ.
Մերձ կանգնաւոր մեծ ամրոցին՝
Որ Ագռաւուց քար կոչէին,
Ուստի լերանցըն ջուրք հոսին
Եւ գետանան 'ստ գարնան մասին,
Գայ զառիվայր առապարին

Անցեալ ընդ հեմըն տաճարին,
Ընդ արքային շքրմով պարին,
Ասպա ի մի խառնեալ յարին։
Հիմն արկանէ անդ հաւատոյ՝
Ընդ խորանին կառուցելոյ.
Շինեալ յանուն Կուսին հօգւոյ
Եւ պատկերին որ անդ սրբոյ։
Անդ առաքեալ Բարթուղիմին
Կառուցանէ իւրով ձեռին
Փոքըր ձեւով զեկեղեցին
Եւ անուանէ Աստուածածին.
Զանեղին Հոգւոյ-վանք անուանէ,
Եւ ի քուեր կանայս յանձնէ.
Խրճիթ փոքրիկ նոցա շինէ
Եւ ի գերբուկոյն բաժանէ.
Կացուցանէ զքոյրն Յուսհատայ
Մայրապետ կրօնից գըլուխ նոցա,
Զքոյրն Աւրմըզդայ և Մաքովտորայ
Եւ զայլ կանայսըն յետ նոցա։...

. . . . . . . . . .

Բագրեւանդայ բլուրներէն բարձրաձայն հնչած Նաւասարդի երգերն՝ հոս այս Անձեւացեաց քարայրից մէջ ցածնալով կու ծածկուին։ Ո՛ւր էր թէ դարձեալ այս անձաւներէն արթննալով ելնէին հնչէին 'ի բարձրաւանդակ Բագրեւանդ, յիշատակք Հայկայ և Տրդատայ, Բարդուղիմեայ և Գրիգորի, ամենայն անմոռաց յիշատակքն Նաւասարդայ.

## ԺԳ

# Ս. ՍԱՀԱԿ ՊԱՐԹԵՒ

### 28 *Նաւասարդի.* — 7 *Սեպտեմբերի.*

### Ա

*Կէս դարէ աւելի էր որ Հայաստան յերկու մի՛ջակ բաժնուած՝ երկու ինքնակալ տէրութեանց վերատեսչութեան տակ, Պարսից և Յունաց, անոնց երկար և աշխարհախառն կռիւները գրեթէ բոլորովին դադրեցուցեր էր։ Բայց Յազկերտ Բ՝ հազիւ թագաւորած Պարսից, յամի 439, անպատճառ պատերազմ հրատարակեց ընդդէմ կայսերաց. հրաման տուաւ իր յառաջապահ սահմանակալ գունդերուն, որ մէկն Ասորեստանէն երթայ Մծբնայ վրայ, մէկ այլն յԱտրպատականէն մտնէ 'ի Հայաստան, Յունաց հայկական բաժինը խլելու։ Այս գունդս՝ Երասխայ հովիտը և Վանայ պարատափը անջրպետող միջոցէն փութալով՝ կ'ելնէ, Ծաղկոտան վայելչութիւնները կոխկռտելով կու փճացնէ, տօնահանդէս Բագրեւանդայ բարձրատափին վրայ կու բանակի. և առանց ակնածութեան և գթոյ՝ կու գայ նոյն իսկ անոր շինադլուխ տօնադլուխ տեղւոյն՝ Բագաւանին՝ քով՝ իր զօրապետաց վրանները կու զարնէ։ Ո՛րքան այլափոխուած էր Բագաւան այն առջի*

զուարթածաղիկ պայծառութեանցն, զոր երբեմն[1] տեսար, Հայկակ. և սակայն շատ առեն չէր անցած այս երկու կերպարանաց մէջ. հազիւ տասն տարի էր՝ որ Այրարատայ թագաւորին բանակն չէր կանգներ 'ի Շահապիվան, և ոչ իր գրօշներն ու վաշտերն փռուէին 'ի Բագաւան: Բագաւան թէ և դեռ իր հեթանոսական անունը պահէր, բայց գրեթէ դար ու կէս առաջ Լուսաւորչի աջով օծուած էր, Տրդատայ և իր աշխարհախումբ բանակին հոն մկրտուած ատեն. և Տարօնոյ դիցաւանին հետ՝ նուիրեալ էր Ս. Յովհաննու Մկրտչի. որոյ անունը առնլով իր որբեալ ճակատուն վրայ թագաւորն Տրդատ, իր յիշատակն այլ խառնեց Մկրտչին հետ. անոր համար շատերը կարծեն թէ յանուն Յովհաննու-Տրդատայ թագաւորի՝ Ս. Յովհաննէս կոչուի մինչև ցայժմ Բագրեւանդայ Իւչ-Քիլիսէ անուանեալ տաճարն և վանքն. և 'ի միացեալ յիշատակ Տրդատայ, Լուսաւորչի և Յովհաննու Մկրտչի՝ Հայոց ամենէն սրբազան ուխտատեղեաց մէկն է եղած. և հիմա մեր աշխարհքին սրբազան տաճարաց ամենէն վսեմագոյնն է ահեղակերպ մեծութեամբն և հընութեամբն. գեղեցիկ ծնունդ ճարտարապետութեան մեր Իսրայէլ վարդապետին և առատաձեռնութեան Հերակլի կայսեր. որոյ շինութեանն աւարտը և նուակատիքը Հայագիրն նշանակէ 'ի 28 Նաւասարդի (որ է 7 սեպտեմբերի) 639 ամին: Այսօրուան քեզի յիշեցնեմ այլ, Հայկակ, զարմանագեղ զուգութեամբ՝ նոյն օրաթուին նըշանաւոր է և նոյն պարաթուին, այսինքն յեօթն սեպտեմբերի յամին 439, ճիշդ 200 տարի առաջ: Այս ատեն Բագաւանի Ս. Յովհաննէսեան կայսերական կերպարանքը չունէր, սակայն անշուք

1 Տես Յօդ. Նաւասարդի:

շինուած մ'այլ չէր, Գրիգորի և Տրդատայ գատակերտ ըլլալով. վասն այսորիկ ոչ միայն պաշտօնատէր ժողովուրդք, այլ և ժողովրդապետք և հայրապետք գային սպասուելու զոհելին յիշատակաց:

Եւ ահա հիմ' այլ Յաղկերտի վարագացեալ զօրաց արշաւանաց առեն, հոն Բագաւանայ խաղաղաւէտ խորաններու քով քաշուած կու նըստէր, և երկայն գիշերուան լուսապահող լապտերի մը պէս՝ որ գանգաղ առաւօտուն մօտ պլպլալով կու մարմրի, այնպէս կու հսկէր մօտ 'ի գերեզման իննսնամեայ ծերունի մը. բայց աստուածափայլ աստուածապատիւ ծերունի մը, որոյ նման՝ ամենայն բարեմասնութեամբքն և ծայրացեալ հասակաւն, ոչ յառաջ և ոչ յետոյ չերեցաւ 'ի Հայաստան: Սա է Թոռն Թոռնորդւոյ սրբոյ Լուսաւորչին մերոյ, մեծ կաթուղիկոսն Հայաստանեայց Ս. ՍԱՀԱԿ ՊԱՐԹԵՒ:

## Բ

Ամեն կենսագիրքն վկայեն թէ ծնած և մեռած է մի և նոյն ամսաթուի մէջ նաւասարդի 30ին. վախճանած տարին յայտնի նշանակեալ ըլլալով, և շաբաթուան օրն ալ (հինգշաբաթի), կ'իմանամք որ այդ նաւասարդն շարժական ամսուին է, որոյ 30ն էր անշարժ նաւասարդի, 28 յամին 439, և 7 սեպտեմբերի. իսկ իր ծնած տարին՝ ըստ շարժական տարւոյ նաւասարդի 30ն քսան կամ 21 օր այլ եաք էր, որով Ս. Սահակայ ծնած օրն կ'ըլլայ սեպտեմբերի 27, համարելով թէ ծնած տարին է Քրիստոսի 352-55 թուաց մէջ: Յայսմաւուրաց մէկն կ'ըսէ Սահակայ համար, Կեցեալ ամս ԾԶ (56), որ ուղղագրելով ՁԶ, մեզի կ'ընծայէ կենաց տարիքը 86, և ծնած տարին 354.

իր աշակերտացն[1] վկայէն թէ հասու «'ի յերկար ծերութիւն». սակայն անանեղի է պատմչաց ոմանց բանն՝ թէ 110 կամ 120 ամօք ապրած ըլլայ Ս. Սահակ. վասն զի այդ թուով՝ ծնունդն կ'ելնէ յ'319 կամ 329 թիւն Քրիստոսի, յաւուրս Ս. Լուսաւորչի: Յայտնի է Ս. Սահակայ 86-90 տարուան կենաց՝ դեռ սովորականէ երկայն՝ շըրջան մ'այլ. որ և երկարութեանն աւելի նշանաւորեալ իրեն պատահած դէպքերով և անձինքներով. որով ոչ միայն ազգային պատմութեան այլ և ընդհանուր նոյնաժամանակ պատմութեան մէջ լաւ նշանելի է. ազգայնոց մէջ՝ թէ քաղաքական թէ եկեղեցական և թէ ուսումնական անսութեամբք, իսկ օտարաց առջև՝ աւելի եկեղեցական մերձաւորութեամբ: Սահակայ երկայն կեանքն և երկայն կաթուղիկոսութիւնն (51 տարի), ունունդն և զարգացումն 'ի Կեսարիա և 'ի Կոստանդնուպօլիս, զինքը մերձաւոր և ծանօթ և շաղկապ ըրին այն մեծամեծ Անձանց՝ որք եկեղեցւոյ մէջ վեհագոյն յեղանակ մը բոլորեն, անոր ամենէն գերապանծ հայրապետացն ըլլալով: Այս յեղանակս՝ «այն առենն է, կ'ըսէ Վիլմէն, որ եկե-
» ղեցին ընկերական օրինաց այլ հիմնեալ հաս-
» տատեցաւ և հասարակային ակերութիւն մը
» դարձաւ. այն առենն է, որ 'ի պերճախօսու-
» թեան և 'ի դպրութեան՝ յառաջ բերաւ այն
» վսեմ և պայծառ հանճարները, որոց ոչ եր-
» բեք նման գտուեցան հաւատարորդք՝ բայց եթէ
» Գաղղիոյ ժէ դարու սրբազան քարոզիչքն: Ո՜ր-
» չափ մեծամեծ մարդիկ, ո՛րքան գերագոյն ճար-
» տասանք եղան՝ Ս. Աթանասէն մինչ 'ի Ս. Օգոս-
» տինոսի միջոցն. Ի՜նչ հրաշալի մտաւորական
» շարժմունք բոլոր հռոմէական աշխարհին մէջ.

1 Ղազար Փարպեցի:

» ի՛նչ տաղանդներ՝ խորհրդական մրցմանց մէջ
» հանդիսացեալ. ինչպիսի՜ ոյժ մարդկան՝ հաւա_
» տոց վրայ թանեցուցած. ի՛նչ կերպարանափո_
» խութիւն բովանդակ ընկերութեան, որ եղաւ
» ձայնիւ այն կրօնից՝ որ գետնադամբաններէն
» կու վերանայ 'ի գահոյս Կեսարուց, որ ուզա_
» ծին պէս 'ի գործ ածէ՝ իր մարտիրոսաց արեամբ
» մաչեցուցած սուրը:... Մտաց և արիութեան
» ամենէն ամօթալի ցածութեան իջած առենն է,
» երբ ներքինիք կառավարէին զինքնակալութիւն,
» և բարբարոսք վրդովէին, այն առենն է որ Ա_
» թանաս մը, Բարսեղ մը, Գր. Նազիանզացի
» մը, Ոսկեբերան մը, Ամբրոսիոս մը, Օգոստինոս
» մը՝ կու լսեցընեն ամենէն մաքուր բարոյականը
» և ամենէն գերագոյն պերճախօսութիւնը: Միայն
» ասոնց հանճարն կանգուն մնաց ինքնակալու_
» թեան ընկնալու առեն. կործանմանց և փլա_
» տակաց մէջ ասոնք՝ հիմնարկուք կ'երևէին. և յի_
» րաւի, վասն-զի ճարտարապետք էին այն մեծ
» կրօնական շինուածոյն՝ որ պիտի փոխանորդէր
» հռոմէական ինքնակալութիւնը»: Մեր Հայոց
ազգին այլ հին Թագաւորութիւնն և ինքնաւի_
րութիւնն վերնալու առեն՝ Ս. Սահակ չէր որ
զազգն և զեկեղեցին կանգուն պահեց՝ մինչև ցայժմ.
(Թերևս աւելի քան) հաւասար այգ յոյն և լա_
տին սուրբ Հարց, որոց ոմանց[1] կենաց վերջին

[1] Ս. Սահակայ ծնած տարին (354) և քիչ ամիս վերջ (13 Նոյեմբ.) ծնաւ արևմտեան (և Թերևս ընդհանուր) եկեղեցւոյ մեծագոյն վարդապետն՝ Ս. Օգոստինոս. անոր վարդապետակիցքն՝ Ամբրոսիոս և Հերոնիմոս 14ամեայ պատանեակք էին (ծնեալք յ'340). Ոսկեբերան՝ որ Ս. Սահակէն 10 տարի վերջ սկսաւ հայրապետութիւնը և անկէ 32 տարի առաջ լմնցուց, տասնամեայ մանուկ էր (ծնած յ'344): Ս. Սահակ իր պապուն կենդանի օրհնութիւնն առած է, վասն զի սուրբ Վրթանէս փոխճանե-

կայծերը տեսաւ իր նորավառ աչքին, ոմանց պայծառագոյն օրերուն հասաւ, ոմանց կենակից և աթոռակից եղաւ, շատերուն՝ և նաև իրմէ վերջ սկսողներուն՝ շրջաններն լմընցընելը տեսաւ, և հազիւ զոմանս թողուց դեռ իրենց պայծառ աթոռին վրայ։ Առանցմէ ոմանց, և անոնց 150 ընկեր հայրապետաց Ա. Կոստանդնուպոլսոյ և Բ տիեզերական ժողովոյն, (յամին 381), հաւանօրէն ականատես եղաւ, իր կաթողիկոսութենէն ութ կամ ինն տարի առաջ, երբ Թերևս սուրբ կարգ այլ առած չէր, բայց իբրև որդի և թոռնորդի սուրբ քահանայապետաց և վկայից՝ ծանօթ էր ՚ի դրան կայսերաց։ Քահանայապետութենէն առ-

ցաւ հաւանօրէն յամին 355. յաջորդ տարին (356) Եգիպտոսի և ամենայն միանձանց արեգակն մեռաւ, սուրբն Անտոնիոս 105 տարուան. տարի մը ետև, 357, նոյնպէս հարիւրը անցած վախճանեցաւ Ոսիոս՝ որ Նիկիոյ Ա. տիեզերական ժողովոյն գահագլուխ բազմեր էր. այն ժողովոյն և բոլոր արևելեան Ս. Հարց պարագլուխն մեծն Աթանաս՝ Ս. Սահակայ պատանութեան ատեն իր գահուն վրայ կ'ելնէր կ'իջնէր († 373), և Թերևս ընդուներ էր զնա յԱղեքսանդրիա իբրև Թոռն իրեն աթոռակից հայրապետաց. ևս առաւել Ս. Կիւրեղ յԵրուսաղէմ, որ վախճանեցաւ Ս. Սահակայ կաթողիկոսութենէն 3 տարի առաջ (386), և իր յաջորդն Յովհաննէս հայրապետ։ Մեծափառ և վայելչաքանն Բարսեղ՝ որ Մեծին Ներսիսի հետ կարգ առեր էր, անշուշտ անոր որդւոյն մեծարող դաստիարակ այլ եղաւ, և իր կարդակցին եղերական մահը ողբալով՝ կու սպասէր որ փոխանակ Կորճացի Սահակայ՝ Ներսիսածին Սահակն իրմէ առնու իր հարցն նման կաթողիկոսութեան ձեռնադրութիւնը. բայց կանխեց մահն (379). որ և յաջորդ տարին (380) մարեց Ասորւոց անապատներուն արևը, զՍ. Եփրեմ։ Մեծին Բարսղի հօտեկից տարեկից և պատուակիցն Գրիգոր Աստուածաբան՝ վախճանեցաւ Ս. Սահակայ կաթողիկոս նստած տարին (389). իսկ անոր (Բարսղի) հարազատ եղբայրն Գր. Նիւ-

չի կեանքը, 35 տարի, աւելի Հայաստանէ դուրս քան ներսը անցուցած կ'երևի։ Բոլոր մեր նախնի լուսաւորչազարմ հայրապետք՝ Յունաց մէջ կըրթութիւն առած են. մանաւանդ Ս. Ներսէս, որ նախ 'ի Կեսարիա և յետոյ 'ի Կ. Պօլիս վարժեցաւ յուսմունս. և ըստ պատմչաց ոմանց, առաջին քաղաքին մէջ իր պատանեկութեան ատեն Վարդան Մամիկոնեան նախարարին Սանդուխտ դուստրը կին առաւ, ըստ այլոց (որ աւելի հաւանելի է) Կոստանդնուպօլսոյ մէջ Ասպիոն անուամբ ազնիւ (Յոյն) իշխանազին դուստրը, որ և յետ երեք տարւոյ վախճանելով՝ թողուց զՆերսէս այրի պատանի մը. բայց անոր հասակին և մեծ սրտին

սացի՝ անոր կաթողիկոսութեան 12դ տարին (400). արխատիրոն Ամբրոսիոս՝ յիններորդ տարի կաթողիկոսութեան Սահակայ (397)։ Քիչ մ'ետև (403) վախճանեցաւ Ս. Եպիփան իբրև հարիւրամեայ. Երուսաղեմի հայրապետն Յովհաննէս 'ի 25դ տարին (414). Թէոփիլոս Աղեքսանդրացին յ'30դ տարին (418). Ս. Հերոնիմոս յ'32դ տարին (420). մեծն և իր տարեկիցն Օգոստինոս ի42դ տարին (430)։ Ակակ Բերիոյ եպիսկոպոսն 112ամեայ 'ի 44 տարին կամ այլ ետև. իրմէ քիչ առաջ ետև երկու Ակակք այլ, եպիսկոպոսք Ամդայ և Մելիտինոյ։ Վերջապէս այն ամենայն գիտուն և սրբազան հրաշալի անձինքն, որք 'ի կիսոյ Դ դարուն ց'կէս Ե դարու փայլեցան յաշխարհի, և եկեղեցւոյ Հարք և սիւնք հաստատութեան կ'ըսուին, ամենքն այլ անցան Ս. Սահակայ աչաց և կենաց առջևէն. իր գահակիցն և երբեմն գահագլուխն՝ քաջահաւատն Փիրմոս արքեպիսկոպոս Կեսարիոյ՝ վախճանեցաւ նոյն իսկ Ս. Սահակայ վախճանած տարին. և այն մեծերէն՝ միայն Ս. Կիւրեղ Աղեքսանդրացի և Ս. Պրոկղ՝ Ոսկեբերանի աշակերտն և աթոռոյն ժառանգն, երկուքն այլ Ներսէսի գըլխահար ախոյեանք, բարեկամք և թղթակիցք Սահակայ՝ և տարւօք կրսերք՝ իրմէ քանի մը տարի ետև փոխեցան իրենց փառաւորեալ ժողովակցացն յերկինս։ (Կիւրեղ † 444, Պրոկղ † 446)։

մխիթարանք, և յուսխանեական մխիթարանք՝ մէն այլ՝ միածին որդեակ մը, զՄեծն ՍԱՀԱԿ: Թերևս աշխարհքիս մէջ չէ եղած քան զասանք՝ վեհագոյն հայր մը վեհագունի որդւոյ: Աստուած՝ միայն մեր եկեղեցւոյ շնորհեց 140 տարւոյ չափ՝ Ղևտացւոց նման՝ քահանայապետական պայազատութիւն, որք վեց ազգ զիրար յաջորդեցին:

Սահակ 'ի Կոստանդնուպօլիս և 'ի Կեսարիա վարժեցաւ իր ցեղին և աստիճանին յարմար ուսմանց. յունարէնը իբր մայրենական լեզու գիտէր, և ուսմամբ այլ այնքան հմուտ էր անոր քերականական արուեստին՝ որ նոյն իսկ բնիկ Յունաց վարդապետներէն շատը կու գերազանցէր[1]. ասորերէն այլ գիտէր անշուշտ չափաւորապէս. պարսկերէնն այլ՝ իբրև տիրող լեզու 'ի Հայս. իսկ իր և մեր բնիկ հայերէն լեզուին՝ Թագաւորն կրնայ ըսուիլ, կամ ատաղձին հոյնիքան. վկայ՝ հայերէն աստուածաշունչ գիրքն, որ իր ոսկի գրչէն և մեզ լեզուէն առած է իր մեծագոյն ողորկութիւնը, քան զոր քաղցր և կակուղ հայախօսութիւն չկայ աշխարհնուս մէջ. և թերևս ըստ այսմ մասին՝ քան այլովքն՝ արժանապէս գերազանց դասուի քան զամենայն թարգմանութիւնս Ս. Գրոց: Իր աստուածաշնորհ հայրն՝ Մեծն Ներսէս, լաւ գիտնալով և թերևս տեսնելով այլ իւր անարժան հօրը, Աթանագինէի, և հօրեղբօրը (Պապայ) անվայել վարքը, և խանգարեալ արքունեաց հրապոյրքը, չեմ տարակուսիր որ թողեր էր իր գեռաբոյս ծնունդը զգոյշ տեղ և ըզգոյշ վարժապետաց ձեռք. որոց մէջ մնալն աւելի ընարեց Իսահակ այլ, քան հօրը ահեղ և տխուր մահուընէն ետև՝ փութալ անոր գահը ելնել հազիւ 20ամեայ հասակաւն, ինչպէս Ս. Գրիգորիս

1 Ղազար Փարպեցի:

իր պապուն հօրեղբայրն (15ամեայ), կամ նոյն իսկ իր հայրն Ներսէս, որ չէր աւելի քան զ՚25ամեայ նորահաս երիտասարդ մը՝ գահը ելած ատեն, և ոչ աւելի քան զ՚35ամեայ ՚ի գերեզման իջած ատեն[1]:

Ս. Սահակ այլ կանուխ կարգուեցաւ, Լուսաւորչի աթոռոյն ժառանգ մը աւելցընելու համար. բայց Աստուած սահմաներ էր իրմով դադրեցընել այն յաջորդութիւնը. և հրաշալի երկայն տեսիլքով մը յայտնեց անոր՝ մինչ դեռ սարկաւագ էր, և Վաղարշապատայ մայր եկեղեցւոյն (Էջմիածնի մէջ) հսկումն կ՚ընէր աւագ հինգշաբթի գիշեր մը, իր ազգին եկեղեցւոյն հանդիպելիքն ուխտապահ և ուխտազանց հաւատացելոց գործովք: Միայն դստրիկ մ՚ունեցաւ Ս. Սահակ, զոր անուանեց իր անուամբն Սահականոյշ, և տուաւ ՚ի կնութիւն Համազասպայ Մամիկոնէից տեառն[2]. ՚ի Համազասպայ ծնան իրեք սահակավայել կորիւնք, Կարմիրն Վարդան, Համազասպեան և Հմայեակ. որոց առաջինը իրեն որդեգրեց իբրև հարազատ ժառանգ. բայց Վարդան այլ իր սուրբ պապուն պէս արու զաւակ չունեցաւ՝ իր Դըստրիկ կնոջէն, այլ երկու աղջիկ, Վարդանոյշ և Շուշանիկ կոչուած, զորս գգուեց Մեծն Իսահակ իր պապական ծնգաց վըրայ, և սեպեց իրեն պայազատ, Թողլով անոնց այլ իր սեփական հայրենի ժառանգութենէն[3]. հաւանօրէն իր Թոռանց Թոռունքն այլ

1 Անանուն պատմագիրքը մեր և պատմիչք Ս. Ներսիսի 34 տարի կուտան քահանայապետութեան. այդ թիւն իր կենաց տարիքին տալու է:

2 Յորմէ կու հաստատուի թէ ինքն չէր որդի դատեր Մամիկոնէից տեառն:

3 Որոյ մէջ յիշատակուի աւետարան մ՚այլ իր սքանչելի մատանց իսկագիրն. կ՚ըսուի թէ Ս. Սահակ իր ձեռօքն շատ գրքեր այլ գրեր էր:

տեսաւ Ս. Սահակ, գոնէ Ս. Շուշանիկան շառաւիղքը, (որ՝ ափսոս, գժնկի մը հետ զուգեցաւ, Վազգենի Վրաց բդեշխին. սակայն այնով մը աւելի ինքն զարմանալի և տօնելի եղաւ)։ Վարդանայ մեկայլ եղբարց ցեղն արու զաւակօք յաջորդեց ինչուան ԺԳ դար (թերևս անկէ ետև այլ), և Ս. Սահակայ արեամբը Պահլաւունի ըսուեցաւ. արեան հետ արդիւնքն այլ ժառանգեց արժանապէս. և ԺԱ-ԺԲ դարերու մէջ շատ արժանաւոր անձինք ընծայեց աշխարհի և եկեղեցւոյ. և այսպէս կատարեցաւ իր տեսլեան մէջ հրեշտակին խոստումն, թէ վերջի ատենները իր ցեղէն նորէն քահանայապետներ պիտի ելնէին, և էին Գրիգորեանքն և Ներսիսեանք, յետ կիսոյ ԺԱ դարու մինչև 'ի սկիզբն ԺԳ դարուն։

Գ.

Ս. Սահակայ վարքն չորս նշանաւոր երևոյթ կ՚ընծայեն նկատմամբ իր անձին և ազգային պատմութեան. — Ա. ուսումնական պայծառութիւն կամ հայերէն դպրութիւն, որ իր գործակցութեամբն զարգացաւ. — Բ. Եկեղեցական կարգաց վայելչութիւն, որոց նոյնպէս հիմնադիր կըրնայ ըսուիլ, յետ Ս. Լուսաւորչին. — Գ. քաղաքագիտական կամ քաղաքական տեսչութիւն, որոյ մասնակից եղաւ հաւասար իր հօրն, և աւելի քան զբազումս յօտար հայրապետաց. — Դ. անձնական առաքինութիւնք, կամ Նուիրական կեանք։ Ասոնցմով կ՚երևի սուրբն Սահակ աշխարհքիս մէջ փայլած ամենէն պայծառ հոգւոց մէկն. խորին տեսութեամբ, հարուստ հանճարով, տաք սրտով, գործունեայ կամօք, վսեմ զգացմամբք։ Այս չորս գլխաւոր դիտելեաց վրայ կ՚ուզեմ դար

ձըռնել աչքդ, Հայկակ, թէ և համառօտ տեսու-
թեամբ, քան պատմական գաղափարմամբ:

Որչափ որ Ս. Սահակայ ժամանակն փառաւոր և պայծառ էր ըստ եկեղեցական կարգի, այնչափ այլ անշուք և անշնորհք մեր բնիկ աշխարհին քաղաքական վիճակն. իր երախայութեան տարիները, նոր յաթոռ նստեր էր Տիրան թագաւոր, սկիզբն ազգերնուս կործանման, իր անքրիստոնեայ վատ և թոյլ վարուք. որոյ դէմն ջանալով Ս. Յուսիկ՝ պապահայր Սահակայ՝ զոհ եղաւ. Տիրանայ յաջորդն Արշակ՝ չարագոյն քան զհայրն, վեհագոյն քան զՅուսիկ քահանայապետ ունեցաւ՝ անոր թոռը, զՍ. Ներսէս, որ ժրութեամբ ջանաց այնպիսի մոլի անձին իշխանութեանեն՝ թէ զաշխարհքն թէ զեկեղեցին չէն պահել. նոյնպէս անկէ այլ մոլի որդւոյն առեն, Պապայ, որոյ անօրէնութեանն ինքն այլ զոհ եղաւ: Իրմէ վերջ 15 տարւոյ չափ Հայաստանի քաղաքական շփոթութեանց միջոց, Պապայ, Վարազդատայ, Արշակայ և Վաղարշակայ և Խոսրովու թագաւորութեանց առեն՝ չորս կաթուղիկոսք նստան օտար ցեղէ. ասոնց վերջինոյն առեն Խոսրով Գ յաջողեցաւ ազգին յերկու բաժնուած նախարարները միաբանելով՝ հանդարտեցընել զՀայաստան. և յամին 389 նստուց յաթոռ մեծին Ներսիսի՝ անոր արժանաժառանգ որդին, զմեծն Իսահակ, որ այն առեն իր հօրը վախճանած տարիքն ըլլալով և անոր ձիրքն և շնորհքը զարգացեալ և յաւելեալ, կերպով մ՚այլ անոր քահանայապետութիւնը նորոգեց և յառաջ վարեց ամբողջ կէս դար: Խոսրով քան զայս մեծ շնորհք չէր կրնար ընել իր ազգին. և այնքան մեծ եղաւ և գովելի շնորհքն, որչափ որ անով իր անձնական շահուն մեծ վնաս բերաւ. վասն զի այնպիսի կաթուղիկոս մը իր աթոռոյն հեղինակութենէն զատ,

Թագաւորաց ազգական այլ ըլլալով՝ ազգին վրայ մեծ ազդեցութիւն պիտի ունենար. այս բանս վախ բերաւ Պարսից Թագաւորին. և որովհետև Խոսրով առանց իրեն իմացընելու՝ այնպիսի նշանաւոր անձ մը Հայոց սրբազան գահուն վրայ բարձրացուցեր էր, Պարսիկն զերկուքն այլ պարտաւոր սեպեց. և զի Խոսրով ուրիշ ինքնագլուխ գործեր այլ կ'ըներ, և ինչուան անկէ գլուխ քաշելու և Յունաց հնազանդելու կու սպառնար, խաւրեց իր Արտաշիր որդին՝ որ զԽոսրով մերժընէ 'ի Թագաւորութենէ, զՍ. Սահակ այլ 'ի հայրապետութենէ: Խոսրով խաբուելով և ստիպուելով՝ Արտաշրի ձեռքն ինկաւ. և տեղը դրուեցաւ իր եղբայրն Վռամշապուհ (390). որ քան զեղբայրն զգուշաւոր և վախկոտ գտնուելով՝ ինքնագլուխ բան չէր ըներ. անոր համար չհաւանեցաւ Ս. Սահակայ խնդրոյն այլ, որ դստերը (Սահականոյշ) աղաչանօք՝ խնդրեր էր իր փեսային Համազասպ Մամիկոնեանը սպարապետ դնել Հայոց, փոխանակ նոր վախճանածին (Սահակայ ասպետի): Այս բանս երկրորդ պատճառ մ'եղաւ Ս. Սահակայ՝ անձամբ երթալու առ Թագաւորն Պարսից և միտքը շինելու: Գնաց 'ի Տիզբոն, տեսաւ արքայից արքային, հաճելի և պատկառելի եղաւ անոր. խնդիրքները ընդունեցաւ, զՀամազասպ ոչ միայն սպարապետ կարգեց, այլ և Հայոց նախարարաց մէջ բարձրացուց պատուով ինչուան 'ի հինգերորդ գահն. ուրիշ յանցաւոր սեպուած նախարարաց այլ ներումն տուաւ, և անանց պատւոյ կարգերը նորոգելով՝ դարձաւ առ Վռամշապուհ, և անոր ձեռքով այլ հաստատել տալով Հայոց Գահնամակը[1], իր սուրբ հօրը նման նո-

1 Որ է ցուցակ կամ կարգ պատուոյ իշխանաց և աւագաց, թէ որն առաջ որն ետև պիտի կենան կամ նստին Թագաւորական կամ ազգային հանդիսից մէջ:

ըլէն նորոգիչ եղաւ քաղաքական դաստակարգութեանց. և ևս առաւել աշխարհքին խաղաղութեան և շինութեան: Բայց քաղաքական խնամքը թողլով առ խոհեմ թագաւորն Վռամշապուհ, ինքն սկսաւ մեծ հոգով և ջանքով իրեն վայլածը հաստատել և աճեցընել, եկեղեցական բարեկարգութիւնքը, որ շատ տարիներէ վեր խանգարեր էին շատ տեղ, և անարժան սովորութիւնք արմտեր էին: Ուղղութեան համար բաւական գիտութիւն և հմտութիւն, կամք և ոյժ ունէր. բայց ուղղութիւնը հաստատուն և մնայուն ընելու համար՝ կարևոր հնարք մ՚այլ կար՝ որ կու պակսէր իր հօրը, և Յուսկան և Լուսաւորչի անգամ. այսինքն է ազգային լեզուի դպրութիւնն, որ 'ի վաղուց խափանեալ էր, բնիկ հայերէն գիրն խափանուելուն համար. և անով՝ օտար լեզուներ (յոյն, ասորի և պարսիկ) սովրիլ ստիպէին թէ աշխարհականք և թէ եկեղեցականք, իրենց արտաքին և սուրբ պաշտամանց մէջ վարելու. և ամէնքն այլ հաւասար լեզուաց յաջողութիւն չունենալով 'ի հարկէ կրթութեան և կրօնից մեծ պակասութիւն կ'ըլլար: Պէտք էր հայերէն գիր հնարել: Այս հնարքը Աստուած մեր քահանայապետին մտախնամման գաւազանին չտուաւ, այլ իրեն աճարտնամման աշակցին, Ս. Մեսրովպայ:

Դ

Այս անձը դու լաւ կու ճանաչես, Հայկակ, որ յամենայնի լծակից և գործակից եղաւ մեծին Սահակայ, գրեթէ և կենակից. (անկէ հինգ ամիս ետև յաշխարհքէ ելաւ և անկէ այլ քիչ մը առաջ յաշխարհ եկած կ'երևի). Նախ Ս. Ներսէսի փոքրաւոր էր, և անոր վսեմական մահուն ատեն ըսածները մտիկ ընելով՝ աւանդեց յետնոց.

յետոյ Հայոց Թագաւորին արքունիքը մտաւ քարտուղարութեամբ, լաւ Թարգմանիչ և գրիչ ըլլալով. քանի մը տարիէն՝ արքունիքը Թողուց, առանձնացաւ յաստուածախոհութիւն և 'ի ճգնութիւն. և հոգին ու միտքը աստուածային շնորհօք լուսաւորելով, ելաւ (յամին 396) քարոզելու և վարդապետելու զանազան կողմեր, առաւել 'ի Սիւնիս: Այս վարդապետութեան ատեն աւելի քան զաւելի ճանչցաւ ազգային գրոց և դպրութեան հարկաւորութիւնը. որոյ համար եկաւ խորհրդակցելու ընդ սրբոյն Սահակայ, և տեսաւ որ արդէն կաթուղիկոսն այլ նոյն մտածութեամբ եպիսկոպոսաց ժողովոյ մէջ է (403). բայց ուրիշ եկեղեցական հոգեր վրան առած ըլլալով՝ յանձնեց Մեսրովպայ մասնաւոր խնամքով այս բանիս ետեւէն ըլլալ. և ինքն անձամբ առ Թագաւորն երթալով զնա այլ յորդորեց յայս ջանս: Բարեսէր Թագաւորն այլ եթէ գանձով և եթէ քաղաքական ծանօթութեամբք օգնութիւն ըրաւ, մանաւանդ որ ինքն այլ պէտք ունէր լաւ քարտուղարաց, և Ս. Մեսրովպայ յարքունեաց երթալէն ետեւ՝ յարմար մը չէր գտած: — Զերկրնցընենք այս պատմութիւնս. Ասորի Դանիէլ եպիսկոպոսի մը քով հին հայերէն գրեր կային, անոր խաւրեց զՍ. Մեսրովպ (404), որ առաւ բերաւ 'ի Հայս, և երկու տարի աշխատելով, դպրոցաց մէջ սովրեցնելու տղայոց, ճանչցաւ որ անբաւական են այն Դանիէլեան նշանագիրքն. և յետ ուրիշ շատ հնարից և ուղևորութեանց, ինչուան 'ի Սամոս [1] երթալով՝ հոն աւելի աղօթքով և Ա-

[1] Մեր գրերան գտնուած տեղն հետաքննութեան արժանի է. ոմանք Սամոսի տեղ Սամոսատա այսինքն Շամուշատ քաղաքը կարծեցին. ոմանք այլ 'ի Բալու եղած է կ'ըսեն այս գիւտս. ստոյգն 'ի Նախնեաց վկայի Սամոս

տուծոյ յայտնութեանն՝ քան մարդկային հնա-
րիւք՝ գտաւ և յարմարցուց իր և մեր փափագե-
լեն (յամի 406). և Ճարտար յոյն գրչի մը ձեռօք
մացընելով 'ի ձև, (որ Թէոդոլեան տառ կամ Եր-
կաթագիր կ'ըսուէին հիմա), իբր փորձի համար ձեռք
զարկաւ թարգմանելու և գրելու հայերէն Սո-
ղոմոնի Առակաց գիրքը: Այս եղաւ սկիզբն թարգ-
մանութեան Ս. Գրոց, հեռու և անծանօթ կըղ-
զւոյ մը մէջ, այն տարին՝ յորում Պաղեստինոյ
առանձնութեան մէջ Ս. Հերոնիմոս դադրեցուց
իր գրիչը՝ սուրբ գրոց լատիներէն (վուլկատա)
թարգմանութենէն:... Հոս քեզի թողում ազ-
գիդ և նախնեացդ արդար և համաշխարհական
խնդութեան և հանդիսից մասնակից ըլլալ. կ'ու-
զես Ս. Մեսրովպայ հետ փութա՛ 'ի հայրենիքդ,
իբրև 'ի Սինա լեռնէն իջնելով աստուածագիր
պատգամներով. կ'ուզես թագաւորին և կաթու-
ղիկոսին և բոլոր մեծաց և փոքունց հետ անոր
դիմացն ելլիր, օրհնել, համբուրել և ընդունել
այն անտես մտացդ հետ խօսող և լուսաւորող
գծիկները. և մի՛ առ մի նկատէ, տես դպրոցաց
կանգնումը, աշակերտաց ժողովումը, փոյթ և
ջանքն, իբրև երկայն ծոմաջանութենէ ետև պա-
հոց պնակները կոտրող և զատիկ ընողք՝ յոյն և
ասորի պնակիտները թողլով՝ հայերէն այբուբենը
գրող ու սորվող մեծ ու պզտիկները. անոնց մէ-
ջէն՝ Սողոմոնի 60 զօրաւորաց պէս՝ բոլոր աշ-
խարհքէն ջոկած 60 ամենընտիր աշակերտքը, որք

կղզին ; (Սուսամ-տատար). Ս. Մեսրովպ՝ Պերութէն կամ
Սիդոնէն կամ մօտ նաւահանգստէ մը նաւելով՝ բոլոր
Փ. Ասիոյ հարաւային եզերքը պտտած է ընդ Միջերկրա-
կան ծով, և արևմտեան կողմը կղզեաց մէջ մտեր է 'ի Սա-
մոս, որ և արժանի է մեր դպրութեան կամ Ս. Մեսրով-
պայ ուխտատեղեաց մէկն ըլլալու:

խորև ուշիմագոյնք, փափկաձայնք, երկարոգիք, կու ըզկուլին յԱղեքսանդրիա, յԱթէնս, 'ի Կոստանդնուպօլիս, յԵդեսիա, և յայլ ուսմանց անուանի քաղաքս, լաւ սովորելու յոյն և ասորի լեզու, և Թարգմանելու սուրբ և պիտանի գրքեր։

Այս գիտաս և յեղափոխութիւնս այսպէս երգէ հին գանձասաց մը, (Գէորգ).

« Ո՜վ անվեհեր փաւթոյն աննգութեան` 'ի գիւտ
» հանճարոյ սրբոց Թարգմանչացն. խորհէին ստեղ-
» ծանել տառս գծագրաց, նշանակ խօսից հայկա-
» կան լեզուիս. որով վաղ անցեալքն յիշատա-
» կին, և մեկնեալքն` դէմ յանդիման խօսին։ Յայս
» հոգ զարթուցեալ պաշտելին Սահակ, զարմն
» մեցերորդ սրբոյն Գրիգորի. զայն առ նովաւ և
» զոյգ ընդ նմին աստուածաբանակ հայրն սուրբ
» Մեսրովպ. որ և զըղձալի պարգևս տառիցն ըն-
» կալաւ յԱստուծոյ 'ի մեծ գթութեանցն։ —
» Լե՛ր Քրիստոս, պահպանիչ աշակերտացս եր-
» ջանիկ սրբոց Թարգմանչացն, աղաչեմք »։...

« Գրաւորական տառից ալըրմամբ մեծապէս
» խընդայր տէրն սուրբ Սահակ. խակոյն ձեռնար-
» կէր 'ի Թարգմանութիւն մարգարէականն տա-
» ռուածխօսութեանց. ժողովեալ մանկունս 'ի
» վարժ գպրութեան, անձնցուցանէր զուսումն
» իմաստից, ջամբելով զկաթն նշանագրացն` տա-
» նէր վարդապետս և պատմաբանողս, զի յա-
» ջորդք հարանցն վարդապետաց` լիցին աշա-
» կերտքն պայծառագոյնք։ Լե՛ր Քրիստոս, եմ »։

« Եւ ես 'ի զօրագոյն զօրութիւն գնալով գրա-
» ւորականին վարժից կրթութիւն, պարզ գրա-
» գիտութիւնն զարգանալով 'ի քերթողականն
» արուեստ յառաջիւր. որոց առաջինն մեզ հայր
» քերթողաց պայծառն Մովսէս այն Խորենացին,
» նախնին աշակերտ սրբոյն Մեսրովպայ 'ի քերս
» բայից հզօր քան զնա. համազօր նմին` Յովսէփ

» Գաղնացի. նորուն վարժակից Եզնիկ Կողբա-
» ցի. Անյաղթն Դաւիթ և սուրբն Կորիւն, և միա-
» համուռ դաս քերականացն. որք աստուածա-
» ղէն վարդապետութեամբ փարթամացուցին ըզ-
» Հայաստանեայս: Լեր Քրիստոս, պահապանիչ
» աշակերտացս երջանիկ սրբոց Թարգմանչացն »:

## Ե

Պարագլուխ Թարգմանչաց և մատենագրաց ինքնին Ս. Սահակ՝ քահանայապետի արժանաւոր կարգերը հոգալով, յառաջ քան զայլս Ջեռնադրութեան կարգը գրեց. ինչուան իր ատեն գործածուած Ս. Լուսաւորչի յունարէնէն առածը փոխելով և ընդարձակելով. և յամին 410 նաւասարդի ամսերուն, տարւոյն սկիզբը հրատարակեց զայն հանդիսապէս. գուցէ ձեռնադրելով բազմութիւն եկեղեցւոյ սպասաւորաց, քահանայից, և Թերևս եպիսկոպոսաց այլ: Նոյն կամ յաջորդ տարին՝ Թագաւորէն և բոլոր եպիսկոպոսաց ուխտէն խնդրուելով՝ յանձն առաւ գլուխ կենալու Աստուածաշունչ գրոց Թարգմանութեանը. և ընդ Ս. Մեսրովպայ՝ բոլոր եկեղեցական պաշտամանց և ծիսից, այսինքն Մաշտոց ըսուած գրոց, մասն մի Թարգմանելով ՚ի զանազան հարց, և մասն մի նոր շարագրելով, և մասամբ Ս. Լուսաւորչի գրուածները փոխելով ՚ի հայ: Ընդհանուր Թարգմանութեանց սկիզբն սեպուի 411-2 տարին, և վերջն 426. այս 14 տարուան միջոց Մաշտոց, և Աստուածաշունչ գիրք հայերէն գրուեցան և կանոնեցան, հաւանօրէն՝ գրագրութեամբ քաջին Մովսէսի Խորենացւոյ որ Ս. Մեսրովպայ քեռորդին էր, և Ս. Սահակայ Գրիչն[1]: Թարգ-

[1] Ս. Սահակայ գրագիրն կամ դպրապետն կ'անուանի Մովսէս Խորէնացին, երբեմն Կիւրինացի երբեմն Խորինացի:

մանութեան երկրորդ տարին Ս. Սահակ յէջմիածին ըլլալով, (ուր և կ'երեւի թէ այն ատեն նորոգեց Ս. Հռիփսիմեայ լուսաւորչաշէն մատուռը, և այն հրաշագեղ կուսին տապանին վրայ դրաւ իր հայրապետական կնիքն այլ Լուսաւորչի կընքոյն քով), հան հրատարակեց ննջեցելոց Աշխարհաթաղի կարգը. իսկ Քահանայաթաղը և Հոգեհանգիստը՝ զոր Ղազարիկ թարգմանիչն բերած էր՝ (Ս. Եփրեմայ շինածը ասորերէն 'ի հայ փոխելով և աւելցընելով), հրատարակեց տասն տարի ետև։ Ուրիշ կանոններէն միայն Սերմնօրհնէից թուականն յայտնի է, յամին 423-4 հրատարակուած. մնացեալքն այլ այս միջոցիս ոմանք 'ի Ս. Սահակայ և շատն այլ 'ի Ս. Մեսրովպայ կարգաւորեցան, անոր համար իր մականուամբն Մաշտոց ըսուեցաւ գիրքն, կամ թէ ինքն Մաշտոց[1] ըսուեցաւ գրոց պատճառաւն, որ կ'ըսուի և Օրհնութենաբեր։ Մեր Տօնացոյցն այլ ըստ հայ և հռոմ ամսոց ինքն Ս. Սահակ նախ կարգաւորեց, և ինչուան հիմա գտուի իր դրածն այլ, յետոյ փոփոխածներէն զատ։ Թարգմանութեանց գլուխ գործոց եղաւ նախայիշեալ Աստուածաշունչ գիրքն, որ և սուրբ Սահակայ անթիւ յիշատակաց և պարծանաց պարծանքն է հիմա մեր մէջ. զոր նախ 'ի Հայաստան գտուած ասորերէնէն թարգմանեց, վերջը յունարէն Եօթանասնից թարգմանութենէն ուղղագրեց, կամ նորէն թարգմանեց. և այլ վերջը՝ Եփեսոսի ժողովէն ետև՝ երբ թարգմանիչք բերին աւելի ընտիր և ստոյգ Եօթանասնից օրինակ մը, անոր համեմատեց՝ և փոփոխեց առաջինն

1 Մաշտոց անուամբ կաթուղիկոս մ'այլ ունիմք, Թ դարուն վերջերը. զնա այլ ոմանք կարգադիր սեպեն այդ գրոց. և անոր համար հին մաշտոցաց ետևէն գտուի այդ կաթուղիկոսին վարքն։

Թարգմանածը [1]. և վերջապէս վերջին ձեռք դնելու և ըստ կարելւոյն կատարելագործելու համար, աշակերտներէն քաջագոյնները (յորս Մովսէս Խորենացի, Դաւիթ, Եղիշէ, և այլք), խաւրեց յԱղեքսանդրիա, որպէս զի տիրաբար հմտանան յոյն լեզուին, և ամենևին անտարակոյս և հաւատարիմ ըլլայ Թարգմանութիւնն. բայց աշակերտաց անյագ ուսումնասիրութիւնն և ընթերցմունքն զիրենք ուշացուցին Աղեքսանդրիոյ հարուստ գրատանց, և Ս. Կիւրղի վարդապետարանին մէջ. և երբ դարձան 'ի Հայս՝ զիրենք ղրկող մեծ վարդապետքն վախճանած էին:

Ս. Սահակայ հեղինակորէն շարագրածոց մէջ՝ մաշտոցի քանի մը կանոններէն զատ, գլխաւորքն են Աւագ շաբաթու շարականք (բաց 'ի քանի մը օրհնութիւններէ), սկսեալ 'ի Ղազարու յարութեան աղնիւ վսեմ երգոյն, «Այսօր գոլով 'ի Բեթանիա՝ » քո ամենազօր հրամանաւդ ձայնեցեր Ղազա- » րու, և դողացաւ մահ. դժոխք պարտեցաւ, ա- » պականութիւն լուծաւ. կենդանարար Քրիս- » տոս, կեցո զմեզ». մինչև 'ի վսեմախաղաղ յետին նուագն Քրիստոսի Թաղման. «Որ արարիչդ » ես արարածոց, հանգուցեալդ 'ի քերովբէս, » վիմով կնքեցար յերկրի»: Այս հեզասալաց խորամուխ լեզուին և բանից՝ յարմարցուց երաժըշտական եղանակներն այլ. վասն զի այս զմայլելի արուեստին այլ քաջահմուտ էր: Ժամագրոց աղօթից այլ մէկ մասին հեղինակն է Ս. Սահակ, մընացելոց՝ իր աշակերտքն և յաջորդքն Գիւտ և Յոհան, և այլք յետոյ: Պատարագամատոյց մ'այլ ունի հիմակուան գործածուածէն աւելի ճոխաբան և ճշգաբան: Այնոք թէ իր մատենագրական հան-

1 Տես վասն Թարգմանութեան Ս. Գրոց 'ի Բազմավէպ 1850, երես 212, և 1851, երես 250:

ճառոյն անհերքելայ հաւաստիք են, և թէ իր եկեղեցական կարգաց և հոգեւորութեան խնամոցն. որոց համար՝ (բաց յայսպիսի պաշտամանց կամ սրբազան գրոց) շատ անգամ ժողովներ ըրաւ եպիսկոպոսաց, և արժանաւոր քահանայապետութեան կանոններ, խրատներ, կանոնականներ հրատարակեց. յորոց միայն հինգ մեզ կամ եօթն խոհական և յատակախօս բանք. Ա. առ Եպիսկոպոսունս, Բ. առ Քորեպիսկոպոսունս, Գ. առ Քահանայս և Վանականս. Դ. վասն եկեղեցւոյ և վանաց, և որեց կամ նուիրաց ժողովրդեան 'ի վանս. Ե. վասն անհատութեան եպիսկոպոսաց եկեղեցական նուիրաց.՝ Զ. դարձեալ վասն նուիրաց եկեղեցւոյ, թէ որպէս բաժնելու է եկեղեցւոյ սպասաւորաց: Այս խրատներս Ս. Գրիգորի գրած կանոններէն առնելով ընդարձակած է, ինչպէս ինքնին կու վկայէ, և իր կաթուղիկոսութե առաջին տարիներն հրատարակեց յունարէն, և յետ գիւտի գրոյն՝ հայերէն. անոնց հետ ուրիշ կարճ կանոններ այլ, որ յանուն Ս. Լուսաւորչին պահուին ցարդ 'ի կանոնագիրս մեր: Ս. Սահակայ ամենայն գրուածոց լեզուն սքանչելի յստակութիւն, մաքրութիւն և ողորկութիւն մ'ունի հանդերձ վսեմութեամբ, զոր իր հոգեկիր և արիւնաժառանգ Ս. Շնորհալիէն զատ՝ թերևս ուրիշ մը չկրցաւ ստանալ նոյն աստիճանի:

Այս աստուածատուր և ամենահարկաւոր եկեղեցական և ուսումնական շնորհքները պատրաստելէն ետև, իր բոլոր ազգին և վիճակին մէջ ծաւալելու այլ ջանաց մեծն Իսահակ. Պարսից բաժնին մէջ անաշխատ ընդունելի ըրաւ, բայց Յունաց բաժնին մէջ դժուարութիւն կրեց: Երկու տէրութեանց մէջ կռուոյ պատճառ չըլլալու համար, քիչ մ'այլ երարատեցութեամբ՝ յունաբաժինը խորշէին 'ի Պարսկահայոց. մինչև ոչ

հայերէն դպրութիւնը ընդունեցան, և ոչ Ս. Սահակայ օրհնութիւնը. այլ 'ի Կեսարիոյ արքեպիսկոպոսէն կ'առնուին ձեռնադրութիւնն այլ. Ս. Սահակ փորձ մը փորձելէն ետև՝ առ ժամանակ մը լռեց. մանաւանդ որ այն տարիներն Կոստանդնուպօլսոյ աթոռոյն յաջորդութեան մէջ այլ շփոթութիւն կար. մինչև որ շատ տարիէ ետև (420) ստիպուելով Յունաց բաժինը երթալ, և նորէն հոն իրեն արժանի պատիւ չգտնելով, թուղթ գրեց առ կայսրն Թէոդոս Փոքր և առ հայրապետն Ատտիկոս, նուիրակ խաւրելով իր փոխանորդը, զՍ. Մեսրովպ, և իր թոռը՝ Վարդան. կայսրն և հայրապետն նախ մեղադրեցին Ս. Սահակայ՝ աւելի Պարսից և Ասորւոց կողմ կենալը, և հայերէն գրոց գիւտին համար Ս. Ոսկեբերանին խորհուրդ չհարցնելը. (չյիշեցին՝ որ այն ատեն իրենք զՈսկեբերան կու հալածէին 'ի սահմանիս հիւսիսային Փոքր Ասիոյ). վերջապէս հաւանեցան որ Ս. Սահակ հովուէ յունաբաժին Հայերն այլ, և հոն այլ դպրոցներ բացուին հայերէն դպրութեան. Ս. Մեսրովպայ այլ յունական վարդապետութեան աստիճան և պատիւ տալով յետ դարձուցին: Այսպէս զբոլոր Հայաստան աշակերտեցին Սահակ և Մեսրովպ. և խնամքնին տարածեցին անկէ դուրս այլ իրենց դրակից և մասամբ թեմակից ազգաց վրայ, Վրաց և Աղուանից, որոց լեզուին գրերն այլ հնարեց Ս. Մեսրովպ, և սուրբ գրքերը թարգմանել տալ սկսաւ:

Յունաց բաժնին մէջ եղած ատեն՝ Ս. Սահակ իմացաւ որ հոն իր վիճակելոց մէջ չար և այլանդակ աղանդ մը կայ, զոր Բորբորիտոն կ'անուանեն պատմիչք մեր, և ոչ այնքան մտաց չարափառութիւն, որքան բարուց անբարութիւն կու ցուցընեն. խստիւ ետևէ ընկաւ այս աղանդութիւնը վերցընելու. և երբ հարկ եղաւ իրեն նորէն դառ-

նալ 'ի Պարսից բաժինն (421), յանձնեց սուրբ Մեսրոպայ՝ որ անաչառ քննէ զատէ, և անհաւանները պատժէ, անուղղաները՝ ճակատնին խարանով այլ նշանելով՝ հալածէ։ Այս բանը թէ այն աղանդին սաստիկ ապաեղութիւնը կու ցուցընէ և թէ Ս. Սահակայ արիութիւնն. որ յայլան քաղցր և հեզ, զիջող և համբերող, ուր որ Աստուծոյ իրաւանց վրէժխնդրութիւնն յանձնած էր իրեն՝ հոն արդար և անաչառ էր. զնոյն արթնութիւն ցըցուց յետոյ Նեստորականաց և ուրիշ աղանդաւորաց դէմ. զնոյն՝ իր կանոնական գրոց մէջ այլ կու սպառնար. և զնոյն խրատ գրէր շատ տարի ետև առ Ս. Պռոկղ՝ աշակերտ և աթոռաժառանգ Ոսկեբերանի, արամախառան յիշատակաւ իր ազգին վիճակին, որ անտէր ըլլալով այն ատեն՝ կու դժուարացընէր կաթուղիկոսութեան ուղղաբար իշխանութիւնն այլ. իսկ դուք կ'ըսէր «թագաւորս ունիք՝ որ զհօգ Աստուծոյ
» յանձին բարձեալ բերեն, և...՝ կարող են ըզ-
» փուշն 'ի միջոյ սրբել. (վասն այնորիկ) արար և
» պատշաճ է ձեզ որ 'ի մեծամեծ իշխանութիւնդ
» վայելէք՝ նախանձել զնախանձն Աստուծոյ և 'ի
» գլուխ վարել զայնպիսի նախանձու վրիժուց
» հատուցմունս, և ոգւով և մարմնով ջանալ՝ զի
» բարձցին 'ի միջոյ եկեղեցւոյ Քրիստոսի՝ անուա-
» նարկ անօրէն ամբարշտութեան գայթակղու-
» թիւնք»։ Այս թուղթս սուրբ հայրապետին մեր մահուընէն քիչ տարի առաջ գրած է, երբ ինքն կաթուղիկոսի քաղաքական կամ իշխանական տիրութենէն հրաժարած՝ միայն աստուածային տիրական իշխանութիւնը անհրաժեշտ կու վարէր, անդադար վարդապետութեամբ և հովուութեամբ։ Այս ցաւալի և սխրալի դէպքը պէտք է յիշենք, Ս. Սահակայ քաղաքագիտութիւնը և քաջ ազգասիրութիւնն այլ լաւ ճանաչելու համար։

## Զ

Գրեթէ գրոց թարգմանութեան սկիզբն և քահանայօրհնէքի հրատարակման տարին (412) վախճանեցաւ բարեպաշտ թագաւորն մեր Վռամշապուհ, որ Տրդատայ մահուընէն ետև՝ կէս դարու մէջ եղած չըլլալու չարիքն և չփոթքը՝ մոռցուցեր էր իր 21 տարի խաղաղ և խոհեմ կառավարութեամբն. իր մահն նորոգեց հին վէրքերը, որք՝ աւա՜ղ, անբժշկելի մնացին։ Վռամշապուհ՝ իրեն ժառանգ տասը տարեկան տղեկ մը թողուց, Արտաշէս անուամբ. աշխարհը մէկէն վերվար չըլլալու համար՝ փութացաւ զգաստ հովուապետն Ս. Սահակ, (որ և յետ թագաւորին ազգապետ ճանաչուէր), գնաց առ Յազկերտ Ա, և կերպով մը իր պատճառաւ զրկուած Հայոց առաջին թագաւորին փոխարէն ըլլալով, խնդրեց որ նորէն թագաւորեցընէ Վռամշապհոյ եղբայրը, Խոսրովը, որ Անյուշ բերդին մէջ արգելուած և ծերացած՝ մահուընէ զատ ազատութեան յոյս, և թերևս փափագ այլ չունէր։ Ս. Սահակայ շնորհքն միայն կրցաւ Պարսից անփոփոխելի օրէնքը փոխել, և ինչուան 'ի մահ և 'ի բանտ դատապարտեալը՝ հանել 'ի բանտէ, և հաւանեցընել զնա այլ՝ նորէն իր երիտասարդ գլխին կրած թագը՝ դնելու հիմա կորացեալ և ալեւորեալ գլխին վրայ. որ և տարիէ մը աւելի չկրցաւ վերցընել զայն. սակայն գոնէ փառօք մեռաւ, և Ս. Սահակայ օրհնութեամբք իջաւ քնանալու իր ազգակից թագաւորաց հետ հասարակաց քունը։ Ս. Սահակայ փափագն կատարեցաւ անոր թագաւորութեամբն, այլ կիսկատար մնաց՝ կարճ թագաւորութեամբն. յետ որոյ քանի մը տարի պարապ մնաց աթոռն, Արտաշխի տղայութեանն համար.

և Թէպէտ հասաւ նա յարբունս, բայց Յազկերտ իր որդին Շապուհը Թագաւորեցուց Հայոց. որ և յետ չորս տարի անարգանօք Թագաւորութե՝ հօրը հիւանդութիւնը լսելով փութացաւ 'ի Պարսկաստան անոր յաջորդելու. բայց մեկնել 'ի դերեզման մտաւ, իրեններէն սպաննուելով. և Թագաւորեց Պարսից Վռամ՝ Բ: Սա մէկէն Յունաց դէմ՝ պատերազմ բացաւ (420), մեր աշխարհքն այլ նորէն ոտնակոխ եղաւ. և ահա այս շփոթութեանս համար էր որ Ս. Սահակ անցաւ 'ի բաժին Յունաց. և որովհետև Շապհոյ Թագաւորութեան տանէն մնացեր էր իր փեսայն Համազասպ Մամիկոնեան՝ սպարապետն Հայոց, անոր որդին և իր Թոռը՝ Վարդանը՝ ղրկեց ընդ Ս. Մեսրոպայ առ կայսրն Թէոդոս, և օգտուելով պատուանուամբ հօրը տեղ իշխանութեան հասուց: Անոր հետ Թէոդոս կայսր պատուէր ղրկեց առ Անատոլ՝ իր արևելից կողմնակալ զօրավարին, որ յապահովութիւն յունաբաժին Հայոց ամուր քաղաք մը շինէ, և շինեցաւ Կարնոյ քաղաքն (422): Այսպէս Յունաց կայսրն և անոր իշխանութեան տակ եղած արևմտեան Հայաստանը շահելով և յանձնելով 'ի վարդապետութիւն Ս. Մեսրովպայ, Ս. Սահակ ճարտար քաղաքագիտութեամբ՝ արևելեանն այլ չթողուց Պարսից Թագաւորին վրէժխնդրութեանը. այլ զասպետն Սահակ և (յետոյ) զԹոռն իւր Վարդան (երբ դարձաւ նա 'ի Յունաց) ղրկեց 'ի դուռն Թագաւորին՝ հաշտութիւն խնդրելու. որովհետև Շապհոյ երթալէն ետև՝ Հայք գլուխ քաշեր և մնացեր էին ըղՊարսիկ պաշտօնեայս. ասոնց պատգամաւորութիւնը բաւական չըլլալով, (ըստ ոմանց)[1] ինքնին

1 Ի պատմչաց ոմանք զՎարդան միայն յիշեն ղրկուած առ Թագաւորն Պարսից. ոմանք զնա և զՍահակ ասպետ. ոմանք այլ զեղբարս Վարդանայ ընդ Ս. Սահակայ:

Ս. Սահակ՝ երբ արեւմտեան Հայոց եկեղեցական գանները կարգի դրաւ, երկու փոքր Թոռներուն հետ (Համազասպայ և Հմայեկայ) գնաց 'ի դուռն Վռամայ (422), և իր բնաձիր և աստուածատուր շնորհօքն՝ ոչ միայն Թափեց Թագաւորին զէնքերը, այլ և Վռամշապհոյ որդին Արտաշէսը Թագաւորեցրնել տուաւ և բերաւ կանգնեց իր հօրը աթոռը։ Երկու տէրութեանց մէջ և այնպիսի վտանգաւոր և խառնակ ժամանակ մը՝ այսպիսի խորագէտ և անխարդախ խաղ մը խաղալ և յաջողել՝ միայն սուրբն Սահակ կարող էր[1]։ Ո՛րքան անոր երախտագէտ և անձնատուր պէտք էր ըլլալ Հայաստան՝ իր Թագաւորաւն և իշխանօքն և ամենայն ուխտիւ եկեղեցւոյն և ռամկաց։ Լուսաւորչէ սկսեալ իր յաջորդ հայրապետքն՝ շատ հեղ այսպիսի բարիք և տիրութիւն ըրին իրենց որդեգրեցեալ ազգին, բայց այն օրհնեալ և օրհնելի ազգին որդիքն՝ շատ պակաս և պարտական գտնուեցան առ բարերարսն։ Այսպէս այլ հիմա, նախ Թագաւորն՝ անարժան որդի զգօն Վռամշապհոյ, Պապայ և Արշակայ ճամբաները երթալով՝ զզուեցուց նախարարները, արհամարհեց անոնց երեսպարձութիւնը, անտեսեց Ս. Սահակայ խրատուցը, միայն իր ծաղկեալ և հուժկու երիտասարդութեանը լսելով։

Նախարարք և իշխանք վեց տարիէ աւելի (423-428) չկրցան համբերել անկէց իրենց և իրենց կանանց հասած անարգութեանը, և միաբանեցան մերժելու զԱրտաշէս 'ի ձեռն Վռամայ Պարսից Թագաւորի, և անոր գանէն կողմնակալ կամ հարկաժողով մը դնել տալով՝ իւրաքանչիւր ի-

1 Յունաց հետ հաշտութեան միջնորդ մ'այլ եղաւ Ակակ եպիսկոպոսն Ամդայ, պարսիկ գերիները գնելով և ազատ արձըկելով։

րենց տէրութիւնը և ազատութիւնը խաղաղութեամբ վարելու. առ այս կու յորդորէին զՍ. կաթուղիկոսն այլ: Թէրևս մտածութիւններին բոլորովին անիրաւ չէր, իրենց աչքի կրածները յիշելով յանկարծ թագաւորաց, այլ դեռ շատ հեռու էր յուղիղ և 'ի խոր տեսութենէ. մանաւանդ որ եղածէն աւելի սև կ'ուզէին ցուցընել զԱրտաշէս, և յիրաւի իրմէ սև ու աղտեղի թագաւորի մը մտանել իրենց գլուխ՝ բայց քրիստոնեայ թագաւորը. ինչպէս որ շատ պայծառ և գեղեցիկ խօսքերով բացատրեց այս բանը Ս. Սահակ, և երկար ջանաց հանդարտեցընելու զնախարարս: Բայց անոնց համբերութիւնն հատեր էր. և չուզելով ետ կենալ իրենց բռնած ճամբէն, չէին այլ կրնար ուրիշ անտեղի և վատ գործ մըն այլ չաւելցընել. այսինքն, իրենց աշխարհական տիրոջ՝ թագաւորին հետ՝ դադրեցընել նաև հոգևոր տիրոջ՝ կաթուղիկոսին իշխանութիւնն այլ. վասն զի եթէ նա չմիաբանէր հետերնին՝ խօսքերնին առաջ չէր երթար. ապա պէտք էր զնա այլ յանցաւոր ցուցընել Պարսից թագաւորին դիմաց: Ահա հոս էր մեծագոյն փոսն, որոյ վրայէն չկրցան ցատքել, ընկան մէջը, և ձգեցին իրենց տէրերը և բոլոր աշխարհքնին: Ելան գնացին Պարսից դուռը. Վռամ յօժարութեամբ լսեց անոնց ամբաստանութեանց և զրպարտութեանց. և քիչ մը վերջը կանչեց 'ի դուռն զթագաւորն և զկաթուղիկոս. Թագաւորն արդարացուց զինքը. կաթուղիկոսն այլ ցուցընելով թէ Թագաւորին անքրիստոնեայ գործքերը՝ իր (Սահակայ) ատեանին մէջ դատելի է և ոչ Պարսից ատեանին մէջ դատապարտելի, անոր իրաւունքը պաշտպանեց. և հոս այլ երևցաւ Ս. Սահակայ մինակ մեծութիւնն՝ բոլոր բազմութեան իշխանաց պզտիկութեանը քով: Արտաշէս իր ներքին խղճովը,

նախարարք իրենց արտաքին խղճովը, Վռամ իր անփոյթ խղճովը՝ մթնցած միգամած կորացած էին. միայն Ս. Սահակ սպիտակ և պայծառ մնա-նացեալ ամպոյ պէս հօն կու բարձրանար: Պարսից թագաւորին առանձինն այլ յորդորելով զՍ. հայրապետն, և չկարենալով՝ անոր բերնէն ամբաստանութիւն մը լսել, բռնական սեպեց նախարարաց ըսածը, և յանկարծ դատապարտեց զԱրտաշէս, զրկելով յաթոռոյ և յազատութենէ. նոյնպէս այլ ըրաւ կաթուղիկոսին. դարձեալ նախարարաց լսելով, որք (ամօթով կ'ըսեմ) ամբաստանեցին զնա իբր Յունաց կուսակից, և փաստ բերին անոր գրած նամակները առ կայսրն և առ Անատոլ, և զՎարդան ղրկելն առ նոսա: Ս. Սահակ այլ արգիլուեցաւ 'ի Պարս, երեք չորս տարի: Հայոց թագաւորին տեղ Պարսիկ մարզպան մը ղրկուեցաւ 'ի Հայս. իսկ այն սուրբ և մեծ կաթուղիկոսին տեղ ո՞վ. — չարալեզու երէց, չերէց մը, Արծկեցի Սուրմակն. որ 'ի վարձ մատնութեան այնպիսի աստուածարեալ և պատկառելի անձի մը, անոր աթոռը ժառանգեց: Հայոց քահանայապետ անուանեցաւ, գոնէ կաթուղիկոսի արտաքին իշխանութիւնը բանեցընելու, որովհետև ինքն և ոչ եպիսկոպոս էր: Եկաւ 'ի Հայս, իր սև երեսօք Ս. Սահակայ պայծառութեանը մէջ բիծ երևելու համար. բայց և ոչ տարի մը դիմանալով՝ նոյն իսկ իր գործակից և բանակից նախարարներէն վռնտուեցաւ. որք և ուրիշ կաթուղիկոս մ'ուզեցին 'ի Վռամայ. նա այլ Բրքիշո կամ Բարքիշո անուամբ Ասորի մը խաւրեց, որ եկաւ տանտիկիններով լեցուց Հայոց հայրապետանոցը, զոր Ս. Սահակ իմաստուն վարդապետօք և թարգմանչօք և խարազնազգեաց ճգնաւորօք զարդարեր էր: Այն ատեն շատ լաւ իմացուեցաւ անոր արժէքը, և ոչ միայն աշխարհին մէջ, այլ և

կայսեր քով և Եփեսոսի 200 հայրապետաց մէջ հարցուեցաւ քննուեցաւ Հայոց սուրբ հայրապետին վերադաս գահը. հայրապետը Թարգմանիչքն մեր որ հոն գտնուեցան՝ ցուցին հեռուէն Տիզբոնի բանտը: Այս աննկարծելի յանդիմանութիւնն 'ի սիւնհոդոսի աշխարհագումար հայրապետաց, արդարև ծանր՝ այլ արժանի էր մեր կարճամիտ կամ կարճատես իշխանաց. որք աչքերնին աղէկ մը շփելով՝ յետ երեք տարւոյ մերժեցին զԲրքիշու այլ. և ոմանք լռելեայն՝ ոմանք յայտնի՝ Ս. Մեսրովպայ և բոլոր եկեղեցւոյ ուխտին հետ միակամ՝ նորէն զՍ. Սահակ խնդրեցին յետ դարձընել. միայն ոմանք Պարսից Թագաւորին կամացը թողուցին զով որ ուզէ խաւրելու. յունաբանժին Հայք այլ ուրիշ մ'առաջարկեցին. Վռամ թէ իր ուզածը և թէ անոնց ուզածը միաբանելու հնարք մը սեպեց՝ Շմուէլ (Սամուէլ) անուամբ ասորի մը խաւրել փոխանակ Բրքիշոյ, կաթուղիկոսի արտաքին իշխանութիւնը վարելու, և մարզպանին օգնական ըլլալու. Ս. Սահակն այլ արձակեց, որ Շմուէլի ընտրածները ձեռնադրէ յեպիսկոպոսութիւն, և հոգևորապէս հովուէ իր ժողովուրդը. և այսպէս յերկու բաժնելով կաթուղիկոսութեան իշխանութիւնը, և արտաքին հոգաբարձութիւնը վերցընելով 'ի Ս. Սահակայ, անոր վիճակեալ ռոճիկն այլ պակսեցուց. այսինքն կաթուղիկոսին տրուած կալուածքներուն մեծ մասն առաւ, և քիչ գեղ ու ագարակ թողուց անոր. արձակելու առենն այլ երդումն պահանջեց 'ի Ս. Սահակայ՝ որ հաւատարիմ կենայ իրեն, և չմիտի Յունաց կողմը. ապա թէ ոչ՝ բոլոր ազգին վրայ չարիք կու հասցընէ: Այն առեն Ս. Սահակ՝ որ կ'իմանար իր հարկաւորութիւնը ազգին համար, բայց չէր այլ կրնար յանձնառու երևիլ Վռամայ ամէն հրամայածին,

իր արժէքը անգամ մ՚այլ ցըցուց. և յոտք կանգնելով բոլոր արքունի հանդիսին մէջ, երկար ատենաբանութեամբ մէկիկ մէկիկ յառաջ բերաւ իր 40 տարիէ աւելի հաւատարիմ ծառայութիւնն և երախտիքն առ Դուռն Պարսից, և 'ի Դրանէն անվարձ և աներախտ մնալն, Պարսից սուտ խոստմունքը և խարդախութիւնը, և անիրաւ դատաստանները, և իր քրիստոնեայ հաւատոց անհրաժարելի պարտքը՝ հաւատակցաց հետ (Յունաց և այլոց) հաղորդութիւն ընելու։ Եւ այնքան տիրաբար ճարտասանութեամբ, այլ հանդարտ և վսեմ կերպով խօսեցաւ այն վսեմափայլ ութսնամեայ ալևորն, մինչև Թագաւորն և իշխանքն և մոգերն պապանձած իրար կը նայէին, և չկըրցաւ մէկն պատասխան տալ. այլ յետոյ ինքնին Թագաւորն հրամեց իր մեծերուն, որ շատ գանձ սատակ տան մեր կաթուղիկոսին, այնպէս գեղեցիկ և անվախ համարձակ խօսելուն համար. որոյ համբաւն յետոյ մեր աշխարհն այլ հասնելով՝ այլ աւելի սիրելի ըրաւ իր ծերունի ամենաշնորհ հայրապետը։ Իսկ ինքն՝ սատակը մերժելով տուողներուն աղաչեց որ անոր տեղ Թագաւորէն խընդրեն՝ ինչ որ ինքն երբեմն յԱրտաշրէ խնդրեր էր. այսինքն, նախարարաց իշխանութեան գահնամակը անփոփոխ հաստատել, և մանաւորապես Արշակունեաց խնամի եղող նախարարաց կալուածքները յետ դարձնել իրենց։ Վռամ հօս այլ յաղթուեցաւ յԻսահակայ. ամեն խնդրածները կատարեց, և անոր թոռը, Ս. Վարդանը՝ հաստատեց 'ի պատիւ Մամիկոնէից տէրութեան և զօրավարութեան Հայոց։ Այսպէս յետ երեք կամ չորս տարի արգելանաց դարձաւ Ս. Սահակ 'ի Հայս, և իր հին փառաւոր աթոռը Վաղարշապատը թողլով, նկատմամբ անարժան Շմուէլին, բայց յանձնելով զայն 'ի հոգաբարձութիւն իր հօ-

գեկցին՝ Ս. Մեսրովպայ, ինքն ընտրեց իրեն կայանք՝ Հայոց մկրտարանը, Բագրեւանդայ Ս. Յովհաննու ուխտատեղին. և երբեմն այլ անոր մօտ վիճակները պտըտելով, հարազատ հովուի պէս կու խնամէր իր հեռացող և երբեմն մոլորեալ հօտը. և առաջուան պէս անխնայ քարոզէր և վարդապետէր։

## Է

Այս ատեն մխիթարութեամբ ընդունեցաւ սուրբն Սահակ զԱղան՝ Արծրունեաց հոգեսէր իշխանն 'ի կրօնաւորական կեանս, ինչպէս 40 տարի առաջ այլ խնդրեր էր, բայց Ս. հայրապետն՝ Պարսից Թագաւորէն ակն ածելով՝ չէր յանձն առած այն ատեն։ Ս. Սահակայ արգելանաց ատեն Եփեսոսի ժողովն կատարուեր էր (431). որոյ վեց կանոնները և ոմանց 'ի Հայոց ժողովոյն առանձին թղթերը առ Ս. Սահակ բերին 'ի Կոստանդնուպօլիս եղած Թարգմանիչք մեր՝ Ղեւոնդ և Կորիւն, Եզնիկ և Յովսէփ, ուրիշ սուրբ հարց գործքերով, և գտան զՍ. Սահակ և զՄեսրովպ յԱշտիշատ Տարօնոյ. զորս ընդունելով Ս. Սահակ՝ ժողովական ատենաբանութիւն[1] մը ըրաւ իր հաւատարիմ եպիսկոպոսաց առջև, և հաւանութեամբ նոցա և Ս. Մեսրովպայ՝ պատասխան գրեց հայրապետաց. և սկսան նոր բերած գրքերը թարգմանել և սուրբ գրոց թարգմանութիւնը ուղղագրել։ Բայց Եփեսոսի ժողովին վճիռը չդադարեցուց 'ի Յոյնս՝ Նեստորի և իր հետևողաց վէճերը, այլ աւելի զայրացաւ և ընդարձակեցաւ։

1 Այս ատենաբանութիւնը կու յիշուի մեր Հայոց աստուածաբանական խնդրոց վկայութեանց մէջ, 'ի Ճառին որ յԱշտիշատ խօսեցաւ։

Ուղղափառ և այլափառ խրատու դէմ դրէին, և օտարաց խաւրէին գրածնին, յորոց շատք չկարենալով ընտրել զուղիղն և զծուռն՝ շփոթէին. աւելի շփոթցընողն էր Նեստորի վարժապետին Թէոդորի Մոպսուեստացւոյ գրուածքն, որ Արիոսի և Մակեդոնի և ուրիշ հերձուածոց դէմ [1] գրուած ըլլալով՝ ուղղափառ կ'երևէր, բայց երևոյթին տակ ծածկած էր Նեստորական Թոյնն. սակայն 'ի սկզբան շատոնք իբրև ուղիղ ընդունեցան. ինչպէս և Կիւրայ եպիսկոպոսն Թէոդորետոս իմաստուն պատմիչն. որք 'ի Հայս այլ խաւրեցին այն գրոց օրինակները, և որպէս երևի՝ ոմանք 'ի մերոցս այլ ընկալան, և բարեկամն Թէոդորետեայ՝ մեր Եւլալ եպիսկոպոսն Մարգալւոյ (զոր յետոյ յիշէ Եղիշէ 'ի ժողովն Արտաշատու) Թարգմանեց զայն գրեանքն 'ի հայ: Այս բանիս կասկածելով նախ Ս. Սահակայ մերձաւոր աթոռակիցքն Ակակ Մելտենոյ եպիսկոպոսն, և երանելին Ռաբուլաս՝ Եդեսիոյ եպիսկոպոսն, գրով իմաց տուին առ ծերունի հայրապետն մեր.(յամի 434-5). որ և մէկէն քննել տուաւ ու գտաւ. և Թէոդորոսի գրուածոց հետ՝ Ռաբուլայի և Ակակայ նամակն այլ խաւրեց առ ծանօթն իւր Ս. Պրոկլ Կոստանդնուպօլսոյ հայրապետն, ձեռամբ Ղեւոնդի երէցու և Աբրայ կամ Աբելի, որպէս զի նա երկու կողմէն գրուածներն այլ քննէ և իր դատաստանը իմացընէ: Պրոկղ ուրախութեամբ ընդունելով Ս. Սահակայ ղրկած նուիրակութիւնը, և անոր ծայրագոյն հասակին, և թերևս հին ծանօթութեան և դիպուածոց համեմատ, ինքն որ դեռ նոր նստեր էր յաթոռ (434), գովելով և պատկառանօք, իբրև իր վարդապե-

[1] Մէկ գրուածն այլ էր ընդդէմ մոգութեան Պարսից, և գրեր էր առ Ս. Մեսրովպ, թերևս անոր խնդրովը:

տին (Ոսկեբերանի) ընկերակիցը տեսանելով՝ կու-
գրէր այս նշանական խօսքերով սկսելով. « Երա-
» նի՛ որ հանապազորդ լինիցին 'ի քաղցրահայ-
» եաց սեղանիլ աստուածադրեալ երեւոյթ. եւ զի՞ ա-
» սեմ հանապազ, այլ զանեայ յաւուրս կամ
» յամիսս կամ 'ի տարեկանս: Առատացէ եւ իմ անձն.
» Ո՞ տանէր զիս արժանի հասանել անկանել յատա-
» ուեստարանիչս:.. Եւ ուստի՞ ինձ այդ լինիցի,
» բայց եթէ յաղօթից սորայդ, զոր մեծ պա-
» տարագաւ միշտ 'ի վերայ արժանեաց եւ անար-
» ժանեաց՝ ամենասուրբն Աստուծոյ հաստատա-
» նես »: Իսկ խնդրոյն վրայօք երկայն բացատրու-
թիւն մը գրեց. բայց նախ քան ղրկելն 'ի Հայս,
խաւրեց առ անուանին Յովհաննէս Անտիոքայ հայ-
րապետն, որ ինքն այլ իր հաւանութիւնը եւ ստո-
րագրութիւնը տայ. Նա այլ իր եպիսկոպոսաց
ժողովով ստորագրեց եւ գովութեամբ դարձուց.
Նուիրակին տարաւ թուղթը նաեւ առ մեծն Կիւ-
րեղ Աղեքսանդրի հայրապետն. Նա այլ հաւա-
նեցաւ եւ առանձինն այլ գրեց թէ առ Ս. Պրոկղ
եւ թէ առ Ս. Սահակ ընդդէմ Թէոդորի Մոպ-
սուեստացւոյ. այսպէս Պրոկղ երկու պատրիար-
քաց վկայութեամբ այլ հաստատելով գրածը՝
անկէ ետեւ ղրկեց 'ի Հայս[1] (436). բայց իր նուի-
րակն Բասիլ՝ իր կողմանէ այլ բաներ աւելցուց
ընդդէմ Թէոդորի, իր հայրապետին գրածը բա-

[1] Այս թուղթս գրուած կու սեպուի յամին 435. հա-
րիւր տարի ետքը Դիոնեսիոս փոքրիկն կամ Կարճիկն
թարգմաներ է 'ի լատին լեզու. խորագիրն կամ հասցէն՝
Հայոց եպիսկոպոսաց, վարդապետաց եւ վանահարց ուղ-
ղուած է. Ս. Սահակայ անունը չկայ. համառօտէն, ասոր
զատ գիր էր, եպիսկոպոսաց զատ. որպէս զի Պարսից
թագաւորին առջեւ յանցաւոր չսեպուի Ս. Սահակ՝ իբրեւ
ժողովով Յունաց հետ միաբանող:

ւանկան. չհամարելով։ Այս Թղթոյն այլ միաբան պատասխան գրեց Ս. Սահակ ընդ Մաշտոցի, և ապահովցուց որ Թէոդորի սերմունքը չկան Հայոց մէջ. « Եւ որ Դիոդորեայ (Թէոդորի) Մամուես-
» տացւոյ աշակերտեալք իցեն, առ ժամանակս՝
» ՚ի շնորհացն Աստուծոյ՝ այնպիսի ինչ չև է յայտ-
» նեալ. ապա թէ իցէ ծածկեալ ՚ի ժանգոյ աղտե-
» ղուէ, ՚ի հարկէ ջան լիցի մեզ խլել զխոշն և զգայ-
» թակղութիւնն զայն ՚ի միջոյ ՚ի բաց կորուսանել.
» զի միաբանութիւն՝ որպէս ՚ի ձեռուն միջի փա-
» ռաբանի, և զմեզ ՚ի նմին հաւատարութեան փա-
» ռաւորութիւն առ Աստուած հատուցանել որ-
» ժանի արասցէ »։ Այս Թուղթս[1] գրած է Ս. Սահակ հազիւ երկու կամ երեք տարի յառաջ քան իր մահը. այն միջոցին հանգիպեցաւ և մահ Եմուէլի, որ ագահութեամբն աւելի քան զԲըրքիշոյ զզուելի եղած էր ամենուն, բաց ՚ի Սուրմակայ։ Հաւատարիմ նախարարք և եպիսկոպոսունք ազատելով այն անուանեալ քաղաքացի տորի կաթուղիկոսէն, Ս. Սահակայ ոտքն ընկան, և լալով ներումն խնդրէին և օրերով կ՚աղաչէին որ իր հօրը Ս. Ներսիսին պէս անյիշաչարութեամբ յանձն առնու նորէն իրեն կատարեալ կաթուղիկոսութիւնը. բայց ամենայն ջանք և աղաչանք անօգուտ եղան. Ս. Սահակ ոչ յիշաչարութեամբ մերժեց, այլ արդէն լաւագոյն հանդերձեալ կենաց պատրաստութեան մէջ ըլլալով

1 Անկէ զատ երկար թուղթ մ՚այլ գրած է Ս. Սահակ միաբանութեամբ ժողովոյ եպիսկոպոսաց և վանահարց, որուն միայն յունարէն բնագիրն կայ հիմա. այս թուղթս կարդացուեցաւ Կոստանդնուպօլսոյ Բ ժողովոյն (Ե. տիեզերական) մէջ յամի 553, իբրև զօրաւոր և պայծառ դըրուած մը ընդդէմ Նեստորի և Թէոդորոսի, անոնց ժամանակակից սուրբ և մեծ հայրապետէ մը։ — Տես Պատմ. Հայ. Բ. 261։

այն ծանրացեալ հասակի, միանգամայն և հին տեսիլքն միշտ աչացն առջև ըլլալով, յիսուն վաթսուն տարի զայն լռութեամբ պահելէն ետև, պատմեց իրեն աղաչողաց, թէ իր ցեղէն քահանայապետութեանը փագրիլն և թէ իր եկեղեցւոյն հանգերձեալ հալածանքը և վտանգը: Զոր լսելով ամենքն զարհուրեցան, ապշեցան, ափ 'ի բերան եղան, և ակամայ իրաւունք տուին այն մեծ սըրտակտուր անձին՝ որ կ'ըսէր. « Երթայք յինէն »'ի բաց, և թող տուք ինձ ողբալ զընդհանուր » կորուստ աշխարհիս Հայոց, զոր տեսանեմ ա- » չօք մտացս՝ 'ի զօրութենէ վերին ցուցակութենէ. » մի՛ բռնադատէք մխիթարել զիս 'ի վերայ բեկ- » ման Ժողովրդեան իմոյ [1] »: Ելան կորակոր, 'ի բաց գնացին լռումուռ, և անկէ ետև ոչ ոք համարձակեցաւ այն խնդրոյն վրայ բան մը խօսիլ՝ այն վսեմ ցաւով կնքուած սրտին հետ. որուն բանի հնչած հառաչանքն այլ՝ հիմա շատ ազդու կու գար նախարարաց ականջին, քան անկէ տասն տարի առաջ երկայն յորդորանքն՝ զիրենք կրկին տիրամատնութենէ յետ կեցընելու համար: Իր լուսաւորչական գահը իշխանական փառօք դառնալէն աւելի՝ մխիթարութիւն եղաւ իրեն կենաց վերջընթեր տարին՝ (438), իր մեծ աթոռակցին, Ս. Ոսկեբերանի մարմնոյն դարձն 'ի Կոստանդնուպօլիս. որուն մահը, աքսորանքը, և եպիսկոպոս նստիլն տեսեր էր Ս. Սահակ իր կաթուղիկոսական աթոռէն: Իսկ հիմա այն աթոռոյն աստիճանաց վրայ նստած՝ և նկատելով 'ի գերեզմանն, « յայնմհետէ ամփոփեալ զինքն յամենայն » աշխարհածուփ զբօսանաց, աղօթից միայն պա- » րապէր և վարդապետութեան [2] »:

1. 2 Ղազար Փարպեցի:

## Ը

Հոս պէտք է յիշել Ս. Սահակայ վարուց սըրբագոյն նրբագոյն կերպարանքն այլ, աստուածային համակամութիւնն, կամ ներքին կենակցութիւնն ընդ Աստուծոյ. յորում այնքան գերազանց էր քան իւր սուրբ նախնիքն անգամ, մինչեւ անաչառ պատմիչն[1] համարձակ վկայէ թէ, « Սա ամենայն առաքինութեանց հարցն նմանեալ,
» աղօթիցն մասամբ առաւելեաց: Քանզի ստա-
» ցաւ աշակերտս 60, այլք կրօնաւորք, խարա-
» զնազգեստք, երկաթապատք, բոկագնացք, որ
» յարընդ նմա շրջէին. որովք՝ մշտնջենաւոր պաշ-
» տամամբ կարգէր զկանոնն, որպէս զայն՝ որ յանապատին
» էին. և հոգայր զաշխարհս, որպէս զայն՝ որ յաշխարհի
» էին »: Այս երկու աննման հարկաւոր հոգերը բոլոր կենացը մէջ այնպէս միացուցեր էր Ս. Սահակ, որ երկու անձ կարծուէր մի և նոյն կերպարանօք, մէկն յաշխարհի և յարքունիս՝ զընկերս և զազգ հոգալով, միւսն յանապատի և յառանձնութեան՝ իր հոգին և զԱստուած մտածելով: Այսպէս կ՚ընէր կաթուղիկոսութենէն առաջ, այսպէս կաթողիկոսութեան ատեն, և այսպէս իր կենաց վերջերն այլ. և թէ և հիմա բոլորովին առանձնանալ փափագէր, այլ « Բազում յե-
» պիսկոպոսաց և յայլոց պատուականն քահա-
» նայից՝ ոչ երբէք ժուժէին անել և մեկուսա-
» նալ 'ի մշտաբուղխ աղբերէ վարդապետութեն
» սրբոյն, ուր ուրեք և դիպէր, 'ի յօստանի և
» կամ 'ի հովս[2] »:

Յետին անգամ 'ի հով ելեր էր յամարան 439 տարւոյ, երբ յետ մահուն Վռամայ՝ անոր յա-

1 Խորենացի:

2 Ղազար Փարպեցի:

Ջորրդ որդւոյն՝ Յազկերտոյ՝ զօրքն եկեալ 'ի Բա-գուան, ինչպէս տեսանք 'ի սկզբան պատմութեանս. և տեսա այս անժամ ու անպատշաճ չփոթութենէն պէտք էր հեռացընել զայն 'ի մահ և յանմահութիւն հասունացեալ հայրապետը, որ արդէն յետին հիւանդութեամբ մօտ էր իջնելու յանկողնէն 'ի գերեզման: Հայրապետ հաւատարիմ ձեռնասունքն՝ աւելի գրկօք քան պատգարակօք՝ վերուցին ժամանակին հայրապետաց Նահապետը, և Լուսաւորչի յետին պայազատը. տարին քանի մը ժամ հեռու՝ Ալաշկերտի Բլուր կամ Բլրոցաց ըսուած գիւղը. որ ապահով և ճամբէ հեռու տեղ մ'էր, (զոր դժբաղդութեամբ ես շատ փնտռեր և չեմ տեսած): Հոն հիւանդութիւնն ծանրանալով, իմաց տրուեցաւ ծանօթիցը. հաւանօրէն պատերազմի պատճառաւ սուրբ Վարդան հեռացեր էր. բայց իր կինն Դստրիկ՝ և մէկ այլ եղբարքն և մերձաւորք՝ եկան իրենց պապուն և ամենայն Հայոց հօրն քով. իր համանուն համահօրն Իսահակ Նահապետին նման՝ կռթնելով մահուան բարձէն, աշխարհական և հոգեկան կտակներն ըրաւ. բաժնեց անոնց իրմէ կողոպտուած ստացուածոց մնացորդը. բայց առաւապէս տուաւ իր անկողոպտելի ստացուածքը. այսինքն « ամբարձեալ զձեռս իւր օրհնեաց զնոսա » օրհնութ̅բ բազմաւ. և պատուիրեաց նոցա պա» հել զվարդապետութիւն պատուիրանի սրբոյն » Գրիգորի, զոր ուսոյց և աւանդեաց ճշմարտու» թեամբ ամենայն աշխարհիս Հայոց[1] »: Զնոյն պատուէր և օրհնութիւն տալով իր հաւատարիմ ձեռնասուն հոգեւոր ճշակերտացն, ապա բոլորովին ամփոփեց զինքն յինքեան. և թերևս իբրև յետին բարով մնաս ըսելով աշխարհիս՝ ան-

1 Ղազար Փարպեցի:

ցուց անգամ մ՚այլ մօրքէն ընդարձակ նկարի մը պէս՝ իննսնամեայ կենաց բազմակերպ տեսարանները և փոփոխութիւնները, քանիէն աւելի թագաւորաց յաջորդութիւնները՝ զոր տեսեր էր երեք տէրութեանց մէջ, Հայոց, Յունաց և Պարսից, որոց շատին հետ տեսութիւն և զրոյց այլ ունեցեր էր. — իր աշխարհին կերպ կերպ և շատը ողբալի դիպուածները, (Տիրանայ կուրութենէն ինչուան Արտաշիսի աքսորը). — Եւ առաւել եկեղեցւոյն անցքը, իր մեծ պապուն՝ Յուսկան՝ բրածեծ մահուընէն մինչև 'ի մահ իր անարժան աթոռակցին՝ Շմուէլի. ուսկից փոխելով յիշատակը՝ անցուց առջևէն երկայն սուրբ շար մը իր հոմուակից հայրապետաց՝ զորս դար և կէս ժամանակ[1] տնուցեր և իրեն ծանուցեր էր, և որոց ետևէն ահա կ՚երթար ինքն այլ, յետ շատերէն երկար՝ (կէս դար հովուութեան և բազմաթիւ վաստակոց և վշտաց) առ հովուապետն և վարձահատոյցն ամենեցուն, Քրիստոս. որոյ յանձնելով զայգին և զեկեղեցին, զերախտաւորս և զապերախտս, և ապա իր 'ի մանկութենէ առ նա փափագած և կարօտած հոգին, փոխեցաւ «խա-»ղաղական հանգստիւ[2]» 'ի կենաց աշխարհիս՝ 'ի կեանս արքայութեան երկնից. յեօթն սեպտեմբերի, 439 տարւոյն, յոր հինգշաբթի, յերկրորդ կամ յերրորդ ժամուն «'ի պաշտաման ա-»նուշահոտ իւղոյն[3]». Մեծն այն անձն, «Որ

1 Ս. Աթանասի ծննդենէն՝ յամի 296, ցմահ Ս. Սահակայ, 439:

2 Ղազար Փարպեցի:

3 Ի՞նչ է այդ անուշահոտ իւղն, որոյ պաշտաման ատեն վախճանեցաւ Ս. Սահակ, ըստ պատմելոյ Կորեան. հաւանօրէն հիւանդաց օծման իւղն. կամ այն իւղն՝ զոր Յոյնք ալ պատարագին հացին և գինւոյն հետ կ՚օրհնէին գիշերային ժամէն ետև. իւղը սովորաբար կանթեղաց հա-

» մանկանցն ծնեալ, անմահ զիւրն յիշատակ
» եթող. պատուեաց զպատկերն, պատկառեաց
» 'ի կոչնականէն, փոխանորդեաց զկեանսն. և
» այնքան կենցաղավարեաց՝ իբր զի ոչ պակասու-
» թեան իրիք մասն 'ի ծերութենէն եղանիլ. և
» ոչ յախտից աւրնդունել[1] » :...

Հանգիր, ո՛վ Մեծ, քու սրբանուեալ մարմնոյդ յերկրի, և փառք պայծառ հոգւոյդ՝ յերկինս: Բայց ի՞նչ ըսեմք քու հաւատարմացդ, քու անմխիթար որբոցդ, քու կարօտեալ աշակերտացդ, որք յետ երկար ժամանակաց և աշխարհէ աշխարհ պանդխտութեանց՝ կու դիմեն յԱղեքսանդրիոյ և՛ի Բիւզանդիոյ, յԱթենայ և՛ի Հռովմայ՝ քու և քու հոգեկցիդ (Մեսրովպայ) ամենընկալ հայրագորով գրկացդ, յուսալով հարստութեանց պարգևք և առատաձեռն երգովք դիմաց ելնել, և ութ կամ տասն տարուան մտաւոր աշխատանաց պտուղն ընծայել: Իսկ հիմա՛, «Ո՞ւր է
» քաղցր աչացն հանդարտութիւն առ ուղիղս,
» և ահաւորութիւն՝ առ թիւրս. ո՞ւր զուարթ
» շրթանցն ժպտումն առ բարի աշակերտացն հան-
» դիպումն. ո՞ւր խնդամիտ սիրտն՝ ընդունող ար-
» բանեկաց. ո՞ւր երկայն ճանապարհաց յոյս հեշ-
» տացուցիչ, աշխատութեանցն հանգուցող: —
» Կորեաւ ժողովողն, թռեաւ նաւահանգիստն, և-
» լեւ օգնականն, լռեաց ձայնն յորդորեցուցիչ »:
Այս խօսքերս եթէ նախ Խորենացւոյ մը գրչէն լսած ես, Հայկակ, գիտցիր որ կրքերն՝ շատերուն են, իմս այլ են. որ այն ատեն և անկէ ետև եղածներն այլ նկատելով, աւելի անոր նման «Հա-
» ռաչումն յիս 'ի ներքս ընթանայ և արտօսր, և

մար էր, բայց երբեմն հաւատացեալք կ'առնուին և ջերմեռանդութեամբ կ'օծուէին:

1 Խորենացի:

» կամեցուցանէ բարբառել բան ախորական և սգաւոր », քան թէ փափագ գայ Ս. Սահակայ վըրայ. « Հրաշափառագունիւ անցանել բանիւ քան » արժանի սուրբ հօրն գրուածոց [1] »: Սակայն դարձեալ նոյն ազնուասիրտ աշակերտին և պատմչին հետ « այլում տեղւոյ և ժամանակի զայսա » սին թողցուք ». և երթանք մենք այլ հեռուէն՝ ընկերելու այն լուրջ յուղարկաւորաց հետ, որոց աշխարհական պարագլուխն է մեծին Վարդանայ կինն, սևազգեցեալ սիրելայի պէս. իսկ եկեղեցականաց՝ Երեմիա երէցն, սարկաւագապետ Սրբոյն, հանդերձ բազմութեամբ աշակերտաց և խարազնազգեաց միաբանից, . քահանայից, ազատ և ռամիկ մարդկան աշխարհախումբ հանդիսի. որք լեռնէ լեռ ձորէ ձոր անցնելով, և Արածանւոյ հառաչաձայն կարկաջանաց քարավազ ճամբան բռնելով՝ կ'իջնեն 'ի Տարօն գաւառ, և կու դադրին անոր հիւսիսակողմը պարապագ լերանց ստորոտը՝ սարատափի մը վրայ, ուր է հանգուցելոյն սեփական կալուածն, և քուն հին զօհից տեղն՝ Ցուշինչափ գեղն. հօն այն աստուածանման հօգւոյն անարատ պահարանը՝ պարկեշտ մարմինը՝ կ'ամփոփեն պատուական տապանի մէջ. որոյ վրայ յետոյ կու շինեն այնպիսւոյն արժանաւոր « Եկեղեցի մեծապայծառ և վկայարան » սրբոյն, պատուական և մեծագին սպասուք ».

1 Խորենացի: Արդեօք գրե՞ց սա յետոյ հրաշափառագոյն բան մը, ինչպէս արժանի էր, 'ի պատիւ իր մեծ հայրապետին, յայտնի չէ: Կարծուած է թէ և Տիրոնջ Վանանդացւոյ քահանայն՝ որ նուիրակ գացած էր 'ի Պարսս խնդրելու զՍ. Սահակ, գրած ըլլայ անոր վարքը. — աւելի հաւանական է թէ Խորոյն Խորխոռունւոյն այլ գրած է անոր վարքը: Սարկաւագ վարդապետ այլ ներբող մը գրած է 'ի պատիւ նորա: Այս գրուածներէն և ոչ մէկն հիմայ ծանօթ են:

անոր այլ բոլորակը « հրաշացուցեալ կանգնե-
» ցին՝ ի տեղւոջն վանս բազմութեան պաշտօնէիցն,
» կարգեալ զարմանս անպակաս պարգոց ՚ի համ-
» գիստ տաւանելեալ եղբայրութեանն [1] »: Ուր
ժողովեցան իր ճգնազգեցիկ աշկերտներէն ոմանք.
ոմանք այլ ուրիշ տեղեր ցրուած վանքեր հաս-
տատեցին: Իսկ հաւատարիմ երախտագէտ սիրե-
լիք սրբոյն՝ Աշտիշատայ եկեղեցին և վանքն այլ
բաւական չսեպելով, « Ժողովս տարեւորականս
» աշխարհահայորգոր բազմութեամբ հաստատեցին
» ՚ի տեղւոջն. որ ըստ ժամանակի՝ բազմամբոխ
» ժողովրդոք՝ կամաւոր յօժարութեամբ աղաւք
» և քահանայք գաւառին, այլ և կարի յոյժ հե-
» ռաւոր տեղեաց դիմեալք յոր կարգադրութեան
» նորա առնեն. որ և բազում օգնութիւնս առող-
» ջութեան ըստ իւրաքանչիւր ախտից շահին ՚ի
» նշխարաց սրբոյն, և ուրախալից սրտիւ դառ-
» նան [1] »:

Երջանիկ հայրապետս և յայսմ մասին, որ Վար-դանայ պէս թոռն ունեցաւ, և Մամիկոնէից նը-ման բարեպաշտ և առաքինի ազգականներ, որք կրցան ուրիշ նախարարաց տէրութեան փոխարէն՝ մեծագործ սուրբ յիշատակարան մը, հոյակապ տաճար մը կանգնել, իրենց նահապե-տին նշխարաց վրայ. այնքան արժանապէս մեծ ու փառաւոր էր այս տաճարս, որ երբ լման 200 տարի ետև (639) մոլէնախանձ Հագարացիք առա-ջին անգամ մտան ՚ի Հայաստան, հասարակ եկե-ղեցեաց խնայելով՝ ամենէն առջի զարնողները փը-լուցին. որոց մէջ չորս հատն յանուանէ յիշա-տակէ, և առաջինն է աս: Յայտնի է որ յետոյ դարձեալ շինեցաւ վայելչապէս, բայց զայն այլ քակեց, կ՚ըսեն, գաղանաբարոն Լէնկթիմուր, և

1 Ղազար Փարպեցի:

անոր քարերով Արածանւոյ Սուլուխ գիւղին քով կամուրջ կապեց. բայց մինչև հիմա կու տեսնուին աւերակք հին եկեղեցւոյն, նշանք մամիկոնեան մեծագործութեան. որոց մէջ փոքրիկ, պարզ, ու կէս գետնամթաղ չէն մատուռ մը՝ 14 դարէ վեր կու ծածկէ ղփէրէղման Թէծին Սահակայ: Անոր դիմաց գրուած է պատշաճապէս՝ իր յետին հոգէկիր և արենակիր շառաւիղն, շուշանագեղ և Շուշան-անուն Թոռնեայն, Վարդէնի՝ դուստրն Վարդանայ մեծի: Անոնց տօնին յիշատակին մինչև ցայսօր յուխտ երթան խոնարհ տեղացիք, կարծեմ Թէ և Քուրդք անգամ. փոխանակ այնքան հեռաւոր և մերձաւոր ազգայնոց, որոց պարտ և պատշաճ էր ոչ միայն նորէն կանգնել վայելուչ եկեղեցին, այլ եԹէ աւելի առատութիւն և ազատամտութիւն բանեցընէին, բըրաչափ բուրգ մ'այլ բարձրացընել 'ի յիշատակ աննման հայրապետին մերոյ և ամենայն հայրապետաց արժանաւոր օրինակին. փափագելի էր այն բրգան չորս երեսաց վրայ կռել գրել իրանշան քանդակներով՝ իր վարուց չորս սքանչելի կերպարանքը. առաջնոյն վրայ գրել ՀԱՅՐԵՆԱՍԷՐ ԱՇԽԱՐՀԱԿԵՑՈՅՑ, դրուագելով երկու անգամ իր ազգին Թագաւոր կանգնելը, և երկու անգամ անոր ազնուականութեան գահնամակը նորոգելը. մէկ մը՝ Պարսից դուռը, մէկ մը նախարարաց ժողովին մէջ իրաւաբանելն, և այլն. — երկրորդ երեսին վրայ գրել ՈՒՍՈՒՄՆԱՑՈՒՐ ԲԱՆԱՍԷՐ, և շարել իր շարականները, Թարգմանութիւնները, նախադասելով աստուածաշունչը, Ս. Մեսրովպայ ձեռք տալը, դպրոցաց բացումը ընդ բոլոր Հայաստան, Վրաստան, Աղուանստան, և Թարգմանչաց առաքումը յԱսորիս, յԵգիպտոս, 'ի Յունաստան և յԻտալիա. — երրորդին վրայ գրել ԵԿԵՂԵՑԱԶԱՐԴ ՀԱՅՐԱՊԵՏ, և դրուագել իր գու-

մարած ժողովքները, գրած կանոնները, գրած և հաստատած եկեղեցական գրքերը, Հայրապետաց հետ Թղթակցութիւնը, հերձուածները հալածելը. — չորրորդին վրայ գրել ԵՐԿՆԱԿԵՆՑԱՂ ՍՐԲԱՍՈՒՆ, նշանակելով իր նուիրական, ճգնազգեցիկ կեանքը և կենաց յետին ժամը: Իսկ քառակուսի բրգան ծայրն ալ քիչ մը տաշելով՝ ոլնկել 'ի գագաթը երկնասլաց սպիտակ սրտաձև սափոր մը ոսկի բոցով և ոսկի գծով նշանուած, զոր փափաքէր Հայկակ, որ՝ թէ ոչ այնքան մեծ, գոնէ այնքան փայլուն ըլլար՝ մինչև ուր որ ըլլայինք՝ կարենայինք տեսնել զայն և կարդալ հոն ՍԱՀԱԿ ՊԱՐԹԵՒ:

# ԺԴ

# ՀՈԳԷՓԱՅԼ ՍԱՅԼՔ ՀԱՅՈՑ

## ԱՐԻՍՏԱԿԷՍ

### 30 Նոյեմբերի.

### Ա

Փչեց իջաւ պախրցին ձիւնապատ սարերէն. արջառ ոչխար թողլով գալար արօտները՝ դռնափակ գոմերու մէջ խռկուած մայեն, հինգամսեայ ձմերան ձանձրոյթը սկսելով: Զբօսասէրք և բնասէրք այլ փութան 'ի չէն 'ի քաղաք. վասն զի նոյեմբեր իր խոնաւ ոտքերովն կոխեց զծառ ու զծաղիկ. տերևներն իսպառ թօթափեցան, պտղատու պարտէզն չոր ձողերով ցցուած պատնէշ մը դարձաւ, կամ մրրկէ փախած մերկ անառագաստ նաւախումբ. պաղուկ պախրցի մ'այլ, պաղուկ հով մ'այլ, ու ահա կու մեռնի կ'անցնի գալարութիւն մեր կլիմայից. ահա Ճերմակ պատանքն այլ կու սկսին տեղ տեղ փառուիլ. ձիւնն լեռներուն գագաթէն վար կ'իջնէ, կու սկսի յերևան գալ դաշտաց. քիչ ատենէն զամենքը կու ծածկէ և միայն ինքն կ'երևի։... Ինչպէս այս տարուան բնական կամ բուսաբանական հանգէսն և կեանքն այլ. գոցենք գետնահայեաց պատուհան-

նէս, բանանք վերնագլխակ պատուհանները, ըզ-բօսնուլ զմայլել երկնից հովանին լուսածաղի ծաղկըներովը, զոր տարւոյն բաւարձակ յեղանակաց կայտառութիւնն՝ շատ հեղ արհամարհել կամ անտես ընել կու տար մեզի։ Նայէ, Հայկակ, գլուխդ 'ի վեր. պարզ է գիշերս, ամէն աստղալից երկինքը. եկ զանանք հոն, հոն է մեր ձմեռնային ամառարանն։ Մառ, ծաղիկ, պտուղ, խաղող, ամէնքն այլ կարծես մարդուս մանկութիւն, աշխոյժ, թեթեւ մտածութիւն, զուարթ երկրաւոր կեանք մը կ'ազդեն. իսկ երկնից աստեղազարդ երեսոյթն՝ ախորժ ծերութիւն, ծանրութիւն մը, խոր մտածութիւն եւ անմահութիւն մը։ Ո՜հ, ո՞րքան պիտի ընդարձակէր. եւ բարձրանար մտքերնիս, եթէ կարենայինք՝ ինչպէս անկարանք բոյսերը՝ այնպէս այլ այդ երկնահովանին ամեն մէկ լուսաւոր ծնունդները ճանչնալ, իւրաքանչիւրին կազմուածքը եւ իրարմէ տարբերութիւնը, իրենց ճամբան եւ նպատակը, եւ « զամենեսեան զնոսա յանուանէ կոչել »։... Թերեւս օր մը գտուին եւ յայնմ մասին մեզմէ աւելի բաղդաւորք, եւ երկինք՝ պատմէ անոնց մեզմէ պահած Աստուծոյ գործքերը, եւ Հաստատութեան ներդաշնակաւոր ձայնն՝ լուսոյ հետ դարէ դար վար իջնելով աւելի մօտ հասնի մեր որդւոց եւ թոռանց։ Իսկ մեք քանի որ մեր խոնարհ վիճակին եւ գիտութեան չափովը իբրեւ անապատակեաց թափառիկք կիսագլոր աչքերով կու դեգերինք, գռեհկօրէն մեր շարժուն բնակութեան անուամբ՝ երկնից ամենէն նշանաւոր համաստեղութիւնն այլ կ'անուանեմք Սայլ. զոր աստեղաբաշխք այլ՝ ոչ աւելի ազնիւ կոչմամբ անուանեն Արջ. եւ ինչպէս որ քեզ ծանօթ է՝ ոչ մէկ, այլ երկու Սայլ եւ երկու Արջ համաստեղութիւն նշմարեն, Մեծ եւ Փոքր։ Ահաւասիկ առաջինն՝ բեւեռէն բաժնուած երեսն այն-

ղին դարձուցեր է. երկրորդին ծայրն նոյն իսկ բեւեռին մէջն է իրեր. այսինքն իր եօթն աստե-ղաց առաջինն՝ որ է քեղւոյն ծայրն՝ ինքնին բեւե-ռային աստղն է։ Մեր նախնիք այլ ըստ հնագոյն և նոր ազգաց՝ զաստղս Սայլ կամ Սայլաթափք կ'անուանեն. բայց ինչպէս որ նոյն հին ազգերու-րուն անուններ այլ կու տային այդ համաստեղու-թեան, նախնի Հայք այլ կոչէին Բաղմոյն, Ալա-տանք, Վէշիկ (Թերեւս վեցն արուշագոյն առնելով՝ եօթներորդը նուաղագոյն), Բաղմաթէղք, Գու-պարք, և այլն։ Եւ ինչպէս ամեն ազգ մէկմէկ ազ-գային աւանդութեամբք կամ կարծեօք, այսպէս մերն այլ այդպիսեօք անուաներ է զայդ և ուրիշ աստեղաց բոյլքը, որպէս Հայկն, Վահագն, Ցուրտ-գող կամ Ծիրածան կամ Հեծանոց։ Եթէ ազգա-յին հին գրութիւնն և վիպասանութիւնք յայտ-նուէին՝ այս երկնից աստղային գրութիւնն այլ՝ հայ գրերով և անուններով պիտի կարդայինք. կամ թէ սուրբ ազգային ազին կանգներ տիրա-բար և գիտնաբար և հրամմէր, անշուշտ դղքա հայկական գիւղային կամ սրբազան անուամբք պիտի ճանաչուէին. հին հայկական պայազատու-թիւնն՝ իր քաջազունքը, գրութիւնն՝ իր իմաս-տասէրքը, և եկեղեցին՝ իր սուրբերը պիտի յի-շէր և անուանէր՝ զանոնք տեսնելով։... Մենք հի-մա շատանանք այդ երկնագնաց փուպարեալ Սայ-լին եօթնաստեղեան կազմուածքին նայելով զու-գել անոր այսօրուան Հայաղիր յիշատակն, որ է Որդւոց և Թոռանց Լուսաւորչին [1]. և առանց հեղի-նակութիւն բանեցընելու, կամ օրէնք հրամմելու՝ դիտենք այսօր եօթն աստեղաց մէջ կամ հետ՝ զԳրիգոր 'ի ծայր քեղւոյն, և վարը իւր որդիքն

1 Տօնացոյցք ոմանք նոյեմբերի մէկին և ոմանք այլ դեկտեմբերի մէկին դնեն այս տօնս։

Արիստակէս և Վրթանէս, և չորս անդրանիկները՝ Գրիգորիս, աղօտագոյնը, երբ և հեռու աշխարհի (Աղուանից) հեռ ղրկուած, և Յուսիկ իր եղբայրն, Ներսէս՝ Թոռն Յուսկան, և վերջին անոր հիւսիսային բևեռին ուղղաձիգ նայող՝ Սահակ որդի Ներսիսի։ Եւ թէ դու սրատես ըլլալով, Հայկակ, սիրես Փայլը Սայլին վերածել այս ցանկալի անուններուն՝ որ մեր սուրբ երկնագնաց եկեղեցւոյն հոգեկիր կառքն են, անոր ծայրի աստղն՝ որ է հիւսիսային բևեռն երկնից՝ կ'ըլլայ մեծն Գրիգոր, մէկայլքն այլ մի ըստ միոջէ։

Մեր սրբազան Հայադիրն՝ Գրիգորի, Ներսէսի, և Սահակայ մնանաւոր տօնական յիշատակաց օրեր նուիրելով՝ այս օր միացեալ չորից յիշատակը կարգէ․ անոնցմէ այլ վերջնոյն, (Գրիգորիսի) սուրբ նշխարաց գիւտին պատճառաւ զատ օր մը նուիրէ․ որով օրս սեփական կու մնայ երիցն, Արիստակիսի, Վրթանիսի և Յուսկան, և ասոր մահուն ընկերակցի մը, Դանիէլի ծերոյ․ որք 'ի հարկէ այլ և այլ օր կատարեցին իրենց երկրաւոր կենաց յաղթական շրջանը, այլ ոք և է միաւորութեամբ կամ խորհրդով՝ բոլորն միատեղ մէկ օրուան հասաւ մեզի։ Ասոնց համար երգէ քաջ գանձասացն Մովսէս․ «Մշտա-
» պայծառ լուսոյն աշտանակք գովելիք և բար-
» ձրաստեղունք, քահանայապետք դահաւորեալք,
» շառաւեղեալք 'ի հօրէն լուսոյ, ճշմարտութեան
» ճշմարիտ քարոզք և պարծանք պարծանաց մե-
» րոյս դրոհի․ սիւնք տաճարի տեառն բարձրաբերձ
» գոլով և հաստահեղցս․ սուրբ Արիստակէս,
» վեհդ Վրթանէս, քաջափառ Յուսիկ և համբակ
» Գրիգորիս, հանդերձ սրբասնեալդ Դանիէլիւ
» այլասեռիւ և համափառիւ, անմարմնաբար 'ի
» մարմնի կառուցեալք՝ որպէս հրանիւթք և ի-
» մանալիք։ Այսօր ժողովեալ մանկունք Սիոնի

» տօնեն ցնծութեամբ զօր յիշատակի ձերոյ հան-
» գստին։ Ահա բուրեսցի այս երգ առաջի քո, ա-
» մենասուրբ Երրորդութիւն »։

Այս սքանչելի եօթնաստեղեան հայրապետաց գուպարքն՝ մեր եկեղեցւոյ ամենէն նշանական երեւութից մէկն է, քաղաքական պատմութեան մէջ այլ ոչ աննշան, որովհետեւ ազգին հին հեթանոսական օրինօք՝ քահանայապետքն թագաւորի պէս մեծափառ գլուխ մ՚էին. Թագաւորաց յաջորդութեան մէջ եղած պարապ ժամանակին այլ՝ թագաւորահօր կամ խնամակալի տեղ մը կու բռնէին։ Ասոնց լուսափայլութիւնն մեր եկեղեցւոյն հորիզոնին և գահուն վրայ իբրև դար ու կէս քշած է. այն վսեմ, բեղմնաւոր և բազմայեղանակ դարուկէսն (Դն և Եին կէսն) որ քրիստոնէութեան փառաւորագոյն յեղանակն է, իր գերագոյն վարդապետաց և հզօրագոյն և ընտիր թագաւորաց փայլմամբ. Թագաւորաց նկատմամբ՝ այս յեղանակիս մեր պատմութիւնն շատ անփառունակ է, բայց մէկ Տրդատ թագաւոր մը կ՚ընծայէ՝ որ կրնայ Յունաց Կոստանդիանոսի և Թէոդոսի հետ նախադասութեամբ մրցիլ (եթէ օրինաւոր է այսպիսի մրցումն). իսկ հայրապետաց նկատմամբ՝ մեր հայկական եօթներեակն չի նուաղիր Յոյն և Լատին ժամանակակից պանծալի հարց քով, թէ ոչ գրականութեամբ, այլ հովուական և ազգախնամ երկամբք, որ առաջին պարտք է հայրապետին։ Մեր եկեղեցաշարժ Սայլին առաջին և վերջին աստեղքն միայն, Գրիգոր և Սահակ՝ ծանօթք են գրաւոր վաստակովք այլ. միւսոց սակաւ ինչ յիշատակ կայ, այլ քրտամբք և արեամբ մի քան զմի գերագոյնք, և առաքինական գործովք զանազանեալք.

Բ

Երեք հայրապետաց (որոց մասնաւոր յիշատակն տրուած է այսօր), զառաջինն միայն հետազօտենք այս գլխոյ, որ և 'ի կարգի հոգէփայլ Սայլին անմիջապէս յետ Լուսաւորչին գայ, այսինքն է ԱՐԻՍՏԱԿԷՍ կամ ՌՈՍՏԱԿԷՍ, երկրորդ որդի Գրիգորի՝ տարուք, բայց աստիճանաւ յառաջացեալ քանզանդրանիկն Վրթանէս. որովհետև սա անուանացեալ էր, ինքն կուսակրօն, և վասն այնորիկ ընտրեցաւ 'ի հօրէն յաջորդ իւր: Եօթանց մէջ սա և Գրիգորիս միայն կուսակենցաղ եղան, հրեշտակային միայնութիւն սիրելով, քան Լուսաւորչի ցեղը աճեցնել, որոյ համար այլք յանձն առին 'ի սկզբան ազգային ծառայութիւնը: Մինչդեռ Վրթանէս հօրը նման պաշտօնութեան առեն աշխարհ մնաց 'ի Կեսարիա, Արիստակէս գրեթէ ծննդեան առենէն յաշխարհէ զատուելով անապատաւոր առաքելի նման միշտ միայնութիւն և առանձնութիւն սիրեց. երկու որդւոց ըստ աշխարհի հայր ըլլալն բաւական սեպելով մեծն Գրիգոր, ընդհանուր Հայ ազգին հայրութեան նուիրեց զինքը, երկայն և վերջին բարև մը տալով իր պարկեշտ ծառայից Մարիամայ, որ իր սիրոյ վերջին խայրիքը դեռ ծոցին մէրայ կրելով՝ երկանը հետ բոլոր աշխարհքիս ալ մնաք բարով ըսաւ, քաշուեցաւ հաւատաւոր կանանց վանք մը, և հոն մնաց իր երեխայն, ինչուան որ հասաւ տարիքն՝ մարդ և կուսանաց գրկէն ելնելու և ճգնազգեաց հարանց որդեգրելու: Հօրմէն զատուած առեն, անզգայ անծանօթանձիկ մ'էր Արիստակէս. իսկ մօրմէն բաժնուելու առեն՝ այնքան լաւ և խոր գիտէր մայրական սէրը, որքան որ ուրիշ սէր մը չէր գիտեր. բայց

դարձեալ 'ի նոյն առաքինի և մեծասիրտ մօրմէն սովրելով հանդերձեալ կենաց գերագոյն սէրը և վարձքը, և անոր օրինակաւ և խրատովը յորդորուած՝ պզտիկ հասակաւն և ուժովը, ըրաւ այն մեծ անցքը՝ իբրև նոր Սամուէլ մը Աննայի ձեռօք. և յանձնեցաւ Նիկոմաքոս անուամբ զգօն Յոյն կրօնաւորի մը, որ շատ տարի քովը պահելով եղաւ անոր հոգւոյ հայր. և երբ քրիստոսանուէր կենաց ամենայն հնարքը սովրեցուց և բաւական տեսաւ իր հոգէսուն աշակերտը՝ ցուցուց անոր խորագոյն միայնութե̃ և անապատին մուտքը: Առիստակէս երրորդ անգամ մ'այլ բաժնուելով 'ի մէկ հատիկ ծանօթ և հոգեկից անձէն, և թերևս առաջինէն զօրաւոր՝ եթէ ոչ նոյնպէս կակուղ ցաւով մը, թողուց զինքն իրեն, և թաղեցաւ առանձնութեան մէջ, միայնակեաց աստուածախոհ ճգնաւոր մ'ըլլալով. այսինքն մինակ ապրող աղօթիւք և ընթերցմամբ և քիչ մը ձեռաւոր աշխատանօք. բոլոր կեանքը մշտավառ կանթեղի մը պէս Աստուծոյ դիմաց կախելով, գիշեր ու ցորեկ:

Թերևս աւելի քան քսան երկայն տարիներ անցան այն լռութեան և միայնութեան մէջ՝ մէկ օրուան մէկ գիշերուան պէս, երբ առաւօտ մը իր մոռացեալ խրճըթին դուռն ուժով զարնուեցաւ. և երևցան բազմութիւն անծանօթ և օտարադէմ մարդկան, ոսկեփայլ արծաթազրահ զինուորք, ցցունազարդ սաղաւարտաւորք, գետնադղորդ հեծեալք. որք չէ միայն քսան, այլ քառասուն յիսուն տարուան բաներու երազներ պատմեցին. գոնէ իրեն երազ երևցան այն տարիներուն մէջ հանդիպածներուն դուրսը, իր հօրը, Հայոց ազգին և անոնց թագաւորին. ո՞րք հիմա իրեն հրաւիրակ խաւրելով ազգին ազնուագոյն իշխանները՝ կու հրաւիրէին, կու ստիպէին կու քաշէին որ ելնէ

գայ 'ի Հայաստան, 'ի Վաղարշապատ, յարքունիս հսկայ Թագաւորին և 'ի գահ քահանայապետութեան Հայոց: — Որչափ այլ նորատեսիլ էր այս երազս և գժուարին անկէ արթննալ, աւելի գժուարին եղաւ Անտոնակիսի, մանաւանդ թէ անկարելի՝ իր միայնութեան տեսիլները շարունակել. աշխարհախառն խժլուք մը ալիքներու պէս խուժելով՝ զարկաւ քշեց իր պարկեշտ շեմիկը, և հեղեղեց իր ամօթխած խցիկը. շփոթեցաւ անզբաղութիւնն, փախաւ բազմամեայ խլացեալ լռութիւնն. Անտոնակէս իբրև չորս գին ջուր առած՝ հազիւ քարի մը վրայ ոտնկալիւ եղած շուար մնաց.... Աւելի քան զլած բանտերն, և աւելի քան անտես հօր մը (թէ և այնպիսի արժանաւոր աննման հօր մը՝) անփորձ սէրն, քաղցր և ցանկալի էր իրեն իր միայնութիւնն, որ էր իր բոլոր ստացուածքն, իր տէրութիւնն, իր սէրն. և եթէ Աստուծոյ և հօր մը կամաց հնազանդութեան պարտքը չճանչնար, ու Կեսարիոյ եկեղեցւոյ գլխաւորներէն չյորդորուէր, չէր կըրնար թողուլ իր խշտեակը և երթալ Հայոց նորահաստատ քահանայութեան գահագլուխ ըլլալ: Սրբազան հարկին գլուխ ծռեց Անտոնակէս, ոչ առանց կծու արտասուքներով բաժնուելու այն տեղէն՝ որ միայն զինքը կը ճանչնար, և զոր միայն կը ճանչնար ինքն. և այն քանի մը սրտակից հոգեկից անձինքներէ՝ զոր իր սրբութիւնն ժողովեր և աշակերտեր էր իր ճգնարանին մօտ....

Շուտով աներևոյթ եղաւ իրեն ծանօթ սիրելի սահմանն. շատ չափաւոր համառօտ էր իր հորիզոնիկն. կարճ ժամ մը չանցած՝ նոր հորիզոն և նոր աշխարհ մը բացուեցաւ դիմացը, որ անծայր անվերջանալի կը թուէր՝ որչափ որ յառաջ երթար: Բայց իրեն առաջին տեսիլք և ցուցանք եղան զինքը տանող բազմութիւնն, Հայոց արքու-

նի գնդին հսկայակերպ կորիճներն՝ անճոռնի ճօճմունքներով, ահագին զրահներով, երկայն տէգերով և լայնալիճ աղեղներովն, որոց մէջ՝ որսորդներէ բռնուած վայրի եղնորթի մը պէս վախնալով կ'երթար. ասանց խօսելու կու նայէր կու նկատէր անոնց շատ արեւէ շատ արիւնէ անցած խանգրած երեսները, հին ու նոր ապեաց նշաններ, առիւծաձև ցցուած և տարածուած մազեր. — կու տեսնէր անոնց մէջ ամենէն պատուելի և նախիջևան եղած ծերունի մը, որուն գմբեթաձև գլուխն թէ և բոլորովին ալևորած էր, թէ և երկայն ասրաձև յօնքերն խառնուէին խորացած աչաց թարթիչներուն հետ, թէ և կորիճ թոռներու պապ կ'երևցընէր զնա հասակն, բայց դեռ զէնքով ու զրահով ծածկած, իր ամենէն կայտառ զինակրին հաւասար շուտ կու շարժէր, կ'ելնէր կ'իջնէր ձիէն, ու ձայնը փողի պէս գնդին մէջ կու տարածէր. և էր Արտաւազդ Մանդակունի սպարապետն Հայոց, և դաստիարակ Թագաւորին Տրդատայ, զոր՝ յառաջ քան զյիսուն տարի՝ փախուցեր ազատեր էր Առխստակիսի պապուն ընկերաց ձեռքէն. և այսօր անոր թոռը՝ զինքն Առխստակէս՝ կու տանէր իր վեհափայլ սանուն (Տրդատայ) մտերիմ ընելու: Երկրորդ պատուելի անձն կ'երևէր գնդին մէջ բաւական տարուօք կրտրիճ մը, Տաճատ՝ Աշոց գաւառին տէրն, որ և փեսայ էր Արտաւազդայ և երբեմն ճանչցող և մատնող Գրիգորի՝ իբրև որդւոյ Անակայ՝ սպանչի հօր թագաւորին, և յետոյ նոյնպէս իմաց տուող Տրդատայ որ Գրիգոր երկու որդիք ունի, արժանաւորք պատուելոյ. անոր համար այլ ղրկուեցաւ զանոնք գտնելու տանելու, և այսպէս փոխարինելու իր մատնութեանը, որով Լուսաւորիչ տասն և երեք տարի յօձուտ վիրապին Արտաշատայ մթնեցաւ: Բոլոր գնդին յառաջադէմ

և վարիչ կ'ընթանայր եռանդուն երիտասարդ մը, իրեն յարմար կրակոտ երիվարի մը վրայ թռչելով, Դոփ՝ կարապետն Տրդատայ. որ ամենևին Առիստակեսի կամկարութեանը և սրտով և աչօք յետ դառնալուն չնայելով՝ փողէր փչէր քշէր երթար, և արքունի գունդը յանապատէն փոխադրէր 'ի Կեսարիա մայրաքաղաք Փ. Հայոց, ուր առաջուց գտեր և պատրաստեր էին զՎրթանէս երէց եղբայր Առիստակեսի. ուր և զարմանօք և երկինք նայելով՝ եղածները մէկմէկու զրուցելով և իրարու գիրկ տալով, անկէ ետև կամայ ակամայ ճամբայ ընկան փութալ դէպ 'ի Մեծ Հայք....

Դ

Հանինք մենք այլ հոն մեր պատմութեան ճամբան կարճեցընելով։ Ահա համբաւը լսելով թագաւորն ինքնին ընդ առաջ կու գայ իբրև իրեն եղբօրորդւոյ և որդւոյ Լուսաւորչի, կ'ուզէ անձամբ տանիլ զանոնք իրենց հօրը։ Իսկ հայրն նոցա և մեր՝ որ կամակից էր թագաւորին իր որդիքը կանչելու 'ի Հայս, ոչ աշխարհական փառաց և մարմնաւոր մխիթարութեան համար էր, այլ իր հոգևոր բեռը վերցընելու օգնական և փոխանորդ ունենալու համար, զոր չէր կրնար այնպէս համարձակութեամբ յանձնելու ուրիշի՝ ինչպէս իր որդւոց. միանգամայն և երկայն չարակրութեամբ և յոգնութեամբ մաշած՝ կարծէր թէ շուտով իրեն կենաց վախճանն պիտի հասնի, և փափագէր վերջի տարիները միայն իր հոգին մտածելով պատրաստուիլ 'ի հանդերձեալ կեանս. դարձեալ՝ անդադար գովութիւն և օրհնութիւն և պատիւ լսելն՝ ուր որ երթար, իբրև գերմարդկային անձ մը երևելով, իրեն ծանր կու գար և

կ'ուզէր փախչիլ 'ի մարդկանէ և թաքչիլ յԱս-տուած: Այս մտածութեամբս էր որ հիմա այլ որդւոց գաղուն ատեն՝ ինքն չէր երևեր, այլ յԵ-կեղեաց գաւառն էր, ուր այնչափ չարչարանք կրեր էր, և իբրև թափած արեանը գին՝ Տրդատ անոր տուեր էր այն գաւառին մեծ մասը, լեռնե-րով դաշտերով և շէնքերով, մինչև Լուսաւորչի գա-ւառ ըսուեցաւ երկիրն: Այս գաւառին և Դարա-նաղեաց սահմանամէջ է Սեպուհ սրակատար լեռն, լայնատարած կողերով, այրերով, քիչ տեղ դիւր շատ տեղ դժար, անտառուտ մացառոտ տափե-րով. այս դժուարակոխ և ահարկու տեղուանքը՝ ուր հազիւ հովիւներն կրնային ելնել իրենց հօ-տից ետևէն, մէկ զարմանալի աղջիկ մը կրցեր էր արիաբար ելնել, և երկայն տարիներ այդտեղ քա-րայրի մը մէջ մինակ ապրիլ վայրենի որոջի մը պէս. իրմէ զարմանալի և գեղեցիկ աղջկան մը (Հռիփսիմեայ) ընկեր էր սա, մենաւորն Մանի. զոր յետ շատ տարիներու գտաւ այն խորշերուն մէջ Լուսաւորիչ աչքն. և երբ ժամանակն լցուաւ, ամփոփեց անոր պարկեշտ մարմինը իր հովուա-կան վերարկուովն, և թաղելով անոր ներքա-գոյն մենարանին մէջ, անկէ ետև ուզեց ինքն ժա-ռանգել զայն տեղը, և իրեն մենարան և աղօթա-րան ընտրել: Ահա այս կողմերս էր երբ լսեց Տէր-դատայ ձայնը, որոյ ձայնին միայն պատասխան կու տար և կ'ելնէր իր Ճգնարանէն. և առիւծն և գառն համամիտ և համասէր մեկտեղ կենակցէին:

Այս անգամ Թագաւորին հետ տեսաւ իր առա-ջին կենաց ժառանգքը և կենդանի յիշատակքը, իր արիւնը, իր որդիքը. որոնց երեցուն վրայ թե-րևս քիչ մը Ճանչնար հին նմանութիւն, իսկ կըր-տերոյն՝ Առիստակէսի վրայ՝ գուցէ ուրիշ նմանու-թիւն չէր գտներ, բայց եթէ թեթև ամպոյ մը պէս հեռացեալ սահեցեալ անձի մը՝ որ երբեմն

իրեն կենաց կցորդ, և անոնց մայր եղած էր. (եթէ դեռ այսպիսի մտածութիւն կրնար այն աստուածախոհ անձին միտքն այլ զարնել հեռուանց)։ Սակայն եթէ արտաքին նմանութիւն և ծանօթութիւն դժուար և աննշմար էին Գրիգորի և Առիստակիսի մէջ, հոգեխառն նմանութիւնք զարմանալի կերպով կ'երևէին. — երկուքն այլ անմարմնոց նման, մէկն ճգնաւորի հայր, միւսն ճըգնաւորի որդի, երկուքն այլ ճգնողք։ Քառասուն տարեկանի մօտ էր Առիստակէս՝ երբ առաջին անգամ ճանչցաւ իր հայրը զՍ. Գրիգ. Լուսաւորիչ Հայոց. ինչ զգացմունք մաքուր սրտին՝ առաջին անգամ համանման մաքուր և վեհ սրտի մը և գըրկաց վրայ բաբախած ատեն.... Տեսէր ես, Հայկակ, ճամբան փոխել տուած գետ մը. իր յատակին պէս ձեռագործ յատակ մը կու փորեն երկայն տարիներ աշխատելով, որուն ծայրն հողաթըմբով կամ կապանքով մը միայն զատուած է 'ի գետոյն. երբոր վերջապէս կու փորուի կու լմըննայ նոր ճամբան, այն կապանքը կու քակեն կամ այն հողաթումբը կու փլցընեն. և ահա յանկարծ գետն իր հին ծոցը թողլով այս նոր բացուածին մէջ՝ ապակիէ լեռներու պէս թաւալելով կու թափուի, և երկայն տարիներով փորած ցամաք ծոցը՝ վայրկեններու միջոց կու լեցուի կու ծածկուի անծանօթ հոսանքներով։ Այսպէս հորդեց 'ի սրտէ Գրիգորի հոգեխառն սէրն 'ի սիրտ և 'ի հոգի Առիստակիսի, ոչ այնքան բնական, որքան գերաբնիկ ներգործութեամբ մը։ Անշուշտ հոգին սրտին զարկեր և բան մը ազդեր էր Գրիգորի, զոր թերևս լաւ չէր իմացած այն ատեն, երբ մօրը գիրկը ձգելով զԱռիստակէս երախայ՝ հեռացաւ անոնցմէ և այսօր երկրորդ զարնուածք սրտին իմացուց յայտնապէս, եթէ սա է իր հոգւոյ պայազատն, իր յաջորդ հայրապետն Հայոց։

Արդէն իրեն տեղակալ և ընդհանուր հոգաբարձու եկեղեցեաց և վանօրէից դրեր էր Դանիէլ անուամբ եպիսկոպոս մը, (որ և երկարակեաց ըլլալով՝ նոյն պաշտօնը վարեց Արիստակիսի, Վրթանիսի և Յուսկան օրերն այլ, և ետքինին մահուընէն ետև՝ անոր պէս ինքն այլ նահատակեցաւ, վասն այնորիկ և այսօր Լուսաւորչի որդւոց և Թոռանց հետ հաւասարապատիւ կու տօնուի)։ անկէ զատ ձեռնադրած հարիւրաւոր եպիսկոպոսաց գլուխ և նախադաս կարգեր էր զԱլբիանոս Հարքայ եպիսկոպոսն, որ քրմապետի մը որդի էր. իսկ հիմա զԱրիստակէս 'ի խնդրոյ Թագաւորին Տրդատայ և մեծամեծաց և եպիսկոպոսաց՝ անուանեց իրեն երեսփոխան և յաջորդ, եպիսկոպոսական աստիճան տալով անոր. ինքն այլ անոր վիճակը իրեն առաւ, այսինքն առանձնութիւնն, առաջինէն աւելի հեռանալով յաշխարհէ և լեռնակեցիկ ճգնելով, միայն ատեն ատեն իջնելով և որդւոյն հետ միաբան ձգելով հոգեոր արօրը Հայաստանի ընդարձակ եկեղեցական ագարակին մէջ։

Դ.

Յետ քանի մը տարի այսպէս քաղաքավարելու՝ Տրդատ ուզեց տեսութեան երթալ Կոստանդիանոս կայսեր իր մեծամեծ նախարարներովը, երբ նա 'ի Քրիստոս հաւատալով ազատութիւն հրատարակեց եկեղեցւոյ, Գրիգոր այլ իջաւ իր ճգնարանէն՝ մէկտեղ երթալու շնորհաւորելու եկեղեցւոյ գլխոյն՝ եղած յաջողութիւնը, և հետը առաւ իր եկեղեցւոյ գլխաւորները զԱրիստակէս և զԱլբիանոս՝ հանդերձ այլովք։ Եւ երբ յետ իբր տասն տարւոյ Կոստանդիանոս հրաւէր խաւրեց առ Տրդատ նորէն զԳրիգոր առնուլ և գալ 'ի Նի-

կիա քաղաք, ուր եկեղեցւոյ գլխաւոր եպիսկոպոսներէն 300էն աւելի պիտի ժողովէին 'ի քննութիւն և 'ի դատապարտութիւն Արիոսի վարդապետութեան. Տրդատ աշխարհին քաղաքական վիճակին համար, Գրիգոր այլ խոնարհութեամբ պատուէ փախչելով, յանձն չառին երթալ. այլ իրենց կողմանէ խաւրեցին զԱռիստակէս, ընկերութեամբ ուրիշ քանի մի եպիսկոպոսաց Մեծ և Փոքր Հայոց, որոց անուանքն նշանակին 'ի կանոնական գիրս ժողովոց եկեղեցւոյ: Առիստակէս երթալու ատեն հանդիպեցաւ 'ի Կեսարիա՝ ընկերակցելու Ս. Ղեոնդեայ հայրապետին՝ որ իր հայրը ձեռնադրեր էր, և նոյն օրը եկեղեցւոյ մէջ կու մկրտէր իր հօրն անուանակիցը զՍ. Գրիգոր՝ հայր Գրիգոր Աստուածաբանի, (իրեն նման մենաւէր հայրապետի, որ և նոյնպէս իր հօրը օգնական և յաջորդ եղաւ Նազիանզու եկեղեցւոյն մէջ). այս հանդիսին ներկայ և ճամբուն ուղեկից եղան Ս. Յակոբ Մծբնայ հայրապետն, Եւթաղ Եդեսիոյ հայրապետն և Յովհան Պարսից հայրապետ, և այլք:

Անցնելով ընդ Կապադովկիա, Գաղատիա, և Բիւթանիա՝ հասաւ այս մեծ և փառաւոր եպիսկոպոսաց կարաւանս՝ յառաջին ժողովարանն եպիսկոպոսաց, 'ի հաստատութիւն հաւատոյ, 'ի Նիկիա քաղաք. որ և առաջուց հոն ժողոված պատուական առաջնորդներովն և ժողովրդոք ընդ առաջ ելան արևելից վեհագոյն հայրապետաց, որոց նմանք չերևեցան երբեք ժողովոց մէջ: Այս հայրապետաց մէջ, առանց կողմնասիրութեան և վիճման, Հայոց հայրապետն էր ամենէն հետաքննելին և փափաքելին. քսան և չորս տարիէ վեր յարևելք և յարևմուտք հռչակուած էր Գրիգորի Լուսաւորչի անունն, խոստովանողական նահատակութիւնն, բազմամեայ վերապ-ընկեցու-

թիւնն, Հայոց հսկայ Թագաւորը և բոլոր ժողովուրդը 'ի Քրիստոս հաւատացնելն, և հարիւրաւոր եպիսկոպոսաց գահագլուխ ըլլալն. և դեռ շատերն չգիտնալով անոր խոնարհաբար հրաժարելն՝ կարծէին թէ պիտի տեսնեն զնա Կեսարիոյ հայրապետին աջակից. այլ խաբուեցան. ազնըւախոհքն՝ մխիթարուեցան անոր տեղ հայրանման արժանաւոր որդին տեսնելով. իսկ այլախոհք (եթէ ստոյգ է աւանդութիւնն) տհաճելով և արհամարհելով: Վասն զի կ'ըսէ աւանդութիւնն, թէ Ս. Գրիգոր մեծահասակ և վայելչակերպ էր, իսկ Արիստակէս՝ փոքրահասակ և վատուժ, տղայութենէ վեր անդադար ճգնութեամբն, «Մենաւորութեան լեռնակեցութե, » քաղցի, ծարաւոյ և բանջարաճաշակ կենաց, և » արգելանաց անլուսից, խարազնազգեստ և գետ- » նատարած անկողնոց և բազում անգամ զհեշ- » տական հանգիստն գիշերաց զհարկ քնոյ՝ յո- » տանաւոր տքնութեան 'ի թարթափ ական վը- » ճարելով[1] ». և իր անմոռաց մենասէր ճգնազգեցութեան ախորժումն՝ անզարդ անպաճոյճ հագած, որչափ որ կրնար եպիսկոպոսաց գլխաւոր մը: Զոր տեսնելով, կ'ըսեն, պճնասէր և ամբարհաւաճ Հռոմոց մանկունքն, որք Նիկիոյ լճին (Ասկանիոս, Իզնիկ կէօլիւ) եզերքն կու սպասէին, քթերնուն տակին, և դա ոչ եպիսկոպոսապետի՝ այլ եզնավար մշակի մը կերպարանք ունի, կ'ըսէին. և չարաճճիկք ոմանք՝ հոն գետին հերկող եզներն այլ կու ցուցընէին, կամ զինքը փորձել կ'ուզէին հրէաբար նշանախնդրութեամբ: Այն ատեն, կ'ըսեն մեր այլ յաղթասէր և յունախայլթ աւանդաբանք, Արիստակէս մաճը բռնելով քշեց եզանց զոյգը, ոչ կարծր հողը կակղե-

1 Ագաթանգեղոս:

լու, այլ կակուղ ջուրը կարծրացընելու. և Նի-
կիոյ լճին մէջ արտավար մը տեղ՝ իբրև ցամաքի
վրայ գնալով և քայլեցնելով եզները՝ ալիքները
ակօսեց, ճերմակ փրփուրով գիծերը գծելով, և
գարձաւ ցամաք. և իր ոտից հետքն ինչուան հի-
մա կ'երևայ լուսափայլութեան նշանով: Դու,
Հայկակ, մի՛ փնտռեր այդ նշանները, ինչուան որ
հրաշից արժանաւոր և սուրբ պատճառը չիգըտ-
նես. սակայն իբրև հին աւանդութիւն կարդա՛
գովասանին գրածը. «Ի վերայ կապուտակ ա-
» լեացն լայնատարած լճին լռութեան վեհաւէտ
» և քամնածածան կորովակի սիգաշարժ թանձ-
» րութեամբ ջուրցն ովկիանոյն՝ սիգաքայլ ոտիւք
» սրընթացութեամբ սխրացեալ. անվեհեր գիտ-
» մամբ յիսուսաբար 'ի Նկատեալ տեղին հաստ-
» նէր. ոչ պետրոսօրէն երկմտէր, այլ փրկչաբար
» խիզախէր: Եւ ժողովելոց հարցն բազմութեան՝
» սխրալի հիացումն առնէր. և զանդրադարձու-
» թիւնն եկաւորութեամբ՝ ոչ տարակուսանօք
» ինչ հայթհայթէր, կամ յառաջարկեալ հան-
» գիստն կասէր. այլ նոյնաձև օրինակաւ համար-
» ձակապէս 'ի հաստատուն երկիր ելանէր. որ և
» հետք հետագնացութեանն մինչև 'ցայսօր ժա-
» մանակի լուսաշաւիղ երևմամբ 'ի վերայ երե-
» սաց ջուրցն տեսանի առ 'ի յիշատակ սրբոյն
» սքանչելեաց. և ճշմարտապէս ամենայն ուրեք
» 'ի տեսողացն ստուգիւ պատմի առանց երկբա-
» յութեան, որպէս և է ճշմարիտ. նա և թշնա-
» մեաց վկայութեամբ հաստատի հաւաստեաւ,
» որ զօրաւոր է յամենայնի. այլ և տուն Աստու-
» ծոյ և տաճար 'ի տեղւոջն հաստատեալ, առ 'ի
» վկայութիւն հրաշիցն և 'ի հաւատ տեսողաց »:

Եկեղեցւոյ և տիեզերական սուրբ ժողովոյն
պատմութիւնն ամենուն ծանօթ է. յետ վճար-

ման գործոյն՝ Առիստակէս այլ դարձաւ իր աշխարհը. և ժողովոյն մէջ եկեղեցական բարեկարգութեան համար սահմանեալ կանոնաց օրինակը և հաւատոյ դաւանութիւնը կամ հանգանակը բերաւ ներկայացուց իր հօրը և Տրդատայ, որք պատկառանօք ընդունելով նոյնպէս այլ ընդունելի ըրին բոլոր Հայոց. Ս. Գրիգոր իր կողմանէ այլ քանի մը կանոն և վարդապետութիւն աւելցուց անոնց հետ. և անոնցմէ զատ այլ շատ կանոններ և վարդապետական ճառեր և աղօթքներ գրելով և աւանդելով իր արենակիր և հոգեկիր յաջորդին, քանի մը տարիէն ետև բոլորովին հրաժարեցաւ յաշխարհէ և՚ի տեսութենէ մարդկան. և այլ չէր իջներ իր սեպհական լեռնէն՝ յայց ելնելու իր հոգեծին որդւոցը. հազիւ երբեմն կ՚ընդունէր՚ի տեսութիւն զՏրդատ և զԱրիստակէս՝ երբ եկեղեցւոյ հարկաւոր խնդիրներ կամ տարակոյս ունենային։

## Ե

Այսպէս Առիստակէս յետ տասնուհինգ կամ աւելի տարի առանձին եպիսկոպոսութեան և երեսփոխանութեան, յամին 331 միայնակ և բուն քահանայապետ ճանչուեցաւ՝ Հայոց. և եօթն տարի կեցաւ սրբազան պաշտաման մէջ. ոչ պակաս այլ և « առաւել ևս քան զհայրն վերագոյն » երևեցուցանէր սա զիւր վարդապետութիւնն » առ հարբն, և յետ Նորա », որպէս վկայէ ականատեսն և ականջալուրն Ագաթանգեղոս. և միւս պատմիչն[1] ասէ. « Արդարև էր սուսեր հոգևոր » ըստ առացելումն, վասն որոյ թշնամի ամենայն » անիրաւաց և զազրագործաց երևէր » : Իր եօթն-

1 Մովսէս Խորենացի։

ամեայ միայնակ քահանայապետութեան միջոց Առիստակէս ջանաց իր լուսաւորիչ հօրը լոյսը աւելի ծաւալել, կարգերը հաստատել, պակասները աւելցընել, մանաւորապէս վանքերը շատցուց. եկեղեցեաց մէջ այլ յիշուի Ծոփաց գաւառին մէջ շինած մեծ և հոյակապ եկեղեցին: Իսկ գրաւոր յիշատակ հասած չէ մեզի իրմէ. միայն կու յիշուի որ հօրն. հետ կանոններ գրա և վարդապետութիւն եկեղեցւոյ: Ի Ներբող իմանալի և զգալի եկեղեցւոյ վայելչութեան շարական մ'ունիմք, «Զօրս ըստ պատկերի քում», են. ասոր հեղինակ կարծուող զանազան անձանց մէջ երիցագոյնն է Առիստակէս, թէ և ոչ հաւանագոյն. և ասի թէ յետ դարձին 'ի ժողովոյն Նիկիոյ երգած ըլլայ, «Կեցո զորդի ծառայի քո
» զոր 'ի Հռովմայ գահէցն վերապատուեցեր, ուր
» եգին զվէմն հաւատոյ հիման սուրբ եկեղեցւոյ»:

Իսկ իր վերագոյն և տանէր հոգևոր աներկիւղ վարդապետութեան պայծառագոյն վկայութիւն այլ է իր վարդապետութեան և կենաց կատարածն: Հայոց հաւատալէն վեր մօտ քառասուն տարի անցեր էր. որչափ որ քրիստոնէութիւն համարձակ ծաւալեալ պաշտուէր, բարուց թուլութիւնն այլ կու սկսէր երևս ելնել. մանաւանդ որ մեծն Տրդատ այլ ծերացեր, և ինքն այլ իր հոգևոր հօր Գրիգորի նման ճգնասիրութեան և առանձնութեան փափագէր. ասով թուլամիտք և թուլահաւատք սկսան համարձակութիւն առնուլ, մանաւանդ ուր որ թագաւորէն շատ հեռու էին: Անոնցմէ էր և Արքեղայոս Ծոփաց նահանգին նախարարն, սահմանակից Փոքր Հայոց և Յունաց բաժնին, և ըստ ոմանց՝ ազգաւ այլ յունախօսն. ասոր երկրին մէջ էր Առիստակիսի շինած մեծ եկեղեցին, ուր թերևս սովորական աթոռն այլ դրած էր. և շատ անգամ դալով և

տեսնելով Նախարարին անքրիստոնեայ վարքը՝ հայրապետաբար կու խրատէր և յանդիմանէր. բայց ամպարիշտն ոչ միայն ոչ զգաստացաւ, այլ ոխալով և մախալով՝ Հերովդիսի և Հերովդիադայ խորհուրդը մտաբերեց, մեր Ճշմարտաքարոզ կարապետին գլուխն առնուլ, մենասէր տատրակին մրմունջը լռեցնել. և երբ օր մը սուրբ հայրապետն քանի մը աշակերտօք առանձնաբար կու գար՝ շատ չբանած ճամբէ մը, յանկարծ ծածկուած դարանէն աւազակի պէս դուրս ցատքեց Արքեղայոս իր սպասաւորներովն, և սրով թռուց սրբոյն աստուածախօս և քաղցրաձայն գլուխը... Անապատէ յանապատ փչեց շունչը. 'ի միայնութենէ մարմնոյն յանծայրն միայնութի միացաւ մաքուր հոգին. որ աւելի քան զ60 տարի իբրև բանի արգելեալ էր 'ի պարկեշտ հողեղէն բնակարանին:

Առաջինն 'ի յաջորդաց Լուսաւորչի այսպիսի վկայական մահուամբ կնքեց իր մեծ և ծանր պաշտօնը, աւելի յայտնի արեան նահատակութեամբ՝ քան իր ամեն յաջորդքը: Իսկ իր հոգեփայլ բազմակցաց մէջ, իրեն նմանագոյնն կուսութեամբ Ս. Գրիգորիս, մահուամբն այլ կերպով մը նմանակից է, չարաչար արեանհեղութեան սպանմամբ. անոր եղբայրն Յուսիկ՝ ծեծով անարիւն զոհ եղաւ. Ներսէս նոյնպէս վկայ և զոհ, այլ աւելի ծածուկ, թունով մահացեալ. Վրթանէս և Սահակ միայն բնական մահուամբ և ծերութեամբ մեռան յանկողնի, 'ի միջի սիրելեաց. իսկ պարագլուխ գուպարիցն՝ Ս. Լուսաւորիչն, մովսիսանման՝ առանձինն, հրեշտակաց առջև և Աստուծոյ:

Աշակերտք Ս. Առիստակէսի տարին անոր միշտ մահացեալ մարմինը և թաղեցին 'ի Թիլն աւանի՝ գաւառին Լուսաւորչի, որուն սեփական ստացուած տուած էր այն տեղն թագաւորն Տրդատ. որ 'ի հարկէ լսելով այս մեծ գոյժը, եկաւ սպա-

նելոյն եղբօր՝ Վրթանիսի հետ՝ յետին պաշտօնը
կատարելու, արամութեամբ և սրամտութեամբ.
յորմէ զարհուրած ալջակերպն Արքեղայոս մէ-
կէն փախեր և Կիւլիկիոյ մէջ Տօրոսի դժուարա-
կոխ լեռներու մէջ ընկեր էր: Աւանդութիւնն յի-
շէ թէ և ինքն սուրբ հայրն Գրիգոր ազդմամբ հո-
գւոյն իմանալով՝ եկաւ լալու իր խոստովանու-
թեան պակասորդը լեցնող վկայամահ որդին, ո՛ր
և հօրը քարոզութեան պակասորդը կու լեցընէր.
և թերևս հոգևոր նախանձով մը դարձաւ իր ծըր-
նարանը, անկէ ետև լուսաւոր տեսութեանցը
մէջ նոր երևոյթ մ'այլ ունենալով, զԱռիստակէս
արիւնլուայ:

Աշխարհաշրջիկ վարդապետ մը մեզմէ երեք դար
առաջ, կ'ըսէ, թէ սուրբ Առիստակիսի կարապե-
տանման գլուխն 'ի Քորֆու կղզին տեսեր և պա-
տուեր է. բայց մեզ անծանօթ ըլլալով երբ և ի՛նչ-
պէս և հիմա ո՛ւր ըլլալն, փափագիմք գիւտին. և
մխիթարիմք աստեղազարդ երկնից բևեռիննայած
ատեննիս՝ դիտել և նկատել Սայլին երկրորդ և
բարձրակամար աստեղ հետ զԱՌԻՍՏԱԿԷՍ: Եթէ
ըստ մեկնասէր ախորժանացն՝ գործովք և հռչա-
կաւ այլ անծանօթագոյն մնաց այս սուրբս քան
զընկերակիցսն, սակայն արդեամբք հաւասար և
առաւելեալ. վասն զի գրեթէ քան զամենայն յա-
ջորդսն (բաց 'ի Սահակայ) երկարագոյն միջոց
(իբրև քառորդ մի դարու) եպիսկոպոսական և
հայրապետական հոգաբարձութիւն ըրաւ, և Լու-
սաւորչի քահանայապետութեան կէս միջոցը և
կէս հոգը մէկ տեղ կրեց, անոր սրբազան լուսոյն
հետ մօտագոյն խառնելով իր կուսափայլ հոգւոյն
ճերմակ ճառագայթները, զոր և յետոյ 'ի ծիրա-
նեգոյն ծարրելով՝ իր ջերմիկ արեամբն՝ սլացաւ
յառաջ քան զհայրն և պայլս ամենեսին, Հայ
հայրապետաց գուպարից նախագահ ըլլալու 'ի
դպրութեան յաւիտենից:

# ԺԵ

# ՇՈՒՇԱՆ-ՎԱՐԴԵՆԻ

## *Դեկտեմբերի* 25 (14)[1]

### Ա

Տարւոյն վերջի օրերն է․ եղանակն տխուր, ժամանակն խաւարին․ Թոււմեալ Թմրեալ բնութեան վրայ տարածուած համասփիւռ ճերմակէն՝ լոյս չի ծագեր, մխիթարութիւն չըններ․ ձմեռն՝ միշտ ցուրտ, սառն՝ միշտ սոսկումն կ'ազդէ․ իսկ այն այսահար սօսափիւնն, այն մոլեգին մրրիկն զոր կու լսես կէս գիշերուն՝ ճարճատեալ ծառոց կարկամ գրկերէն, և քարանձաւաց բքալից բերաններէն, մարդուս՝ ինչուան ոսկորները կու սարսռեցընէ։ Այսպիսի ատեն տաքուկ անկողին մը, վառած Թոնրի մը անկիւն, արծարծուն կրակարանի մը եզերք, ի՜նչ քաղցր են, ոչ միայն ծուլից՝ այլ և օրն 'ի բուն աշխատող բանուորի մը, համեստ բարեկամաց, կամ մենասէր իմաստասիրաց։ Քաղցր ըլլայ քեզի այլ, Հայկակ, յառաջ

1 Այս հայադիր յիշատակս նշանակուի 'ի 17 քաղոց ամսոյ, որ է դեկտ. 25, բայց գործոյն հանդիպած տարին (473-5) Հայոց շարժական տոմարով քաղոցի 17ն հանդիպի 'ի 14 դեկտեմբերի։

քան մրափի մոռացութեան մէջ ընկնալդ, քանի մը ժամ ճաթռտող խարուկին լուսովը՝ մեր հայրենեաց հին դիպուածները հետաքննել, և այդ մեռած փայտերէն նոր կենդանութիւն հանող կրակին պէս՝ մարած անցքերէ և մեռած անձերէ՝ կենդանի կրքեր արթընցընել... Երանի՜ անոնց, որ թէ և աղքատիկ, թէ և ցօղունապատ խրճթի մէջ, կամ կիսաթաղ հողէ տանեաց տակ, գետնոր խորշիկ մը, բուխերիկ մ'ունին, որոյ մէջ քանի մը տաշեղով տաքութիւն և լոյս կու պահեն, և անով իրենց նմանեաց երեսը կու տեսնեն. ծխանին ծակէն արձըկած ծուխին՝ նաև գիշերուան և քնոյ խորութեան մէջ, կ'իմացընէ հազիւ հանդիպող կամ մոլորած անցորդի մը՝ թէ այն մեռելատիպ հողի քարի խռուէ և ձեան տակ այլ՝ կենդանութեան կէս մը, ընտանութեան բոյն մը կայ:... Ո՜հ, ի՜նչ գժնդակ է այն տեղը, ուր ծըխան չի ծխեր. ի՜նչ խղճալի անձ, որ այսպիսի եղանակի և ժամանակի մէջ՝ բնութեան ամենայն սաստից և արհաւրաց մէջ, սառի և սարսուռի մէջ պատառած պաշարուած բանուած ըլլայ. ուր ոչ միայն այդ չարիքն, այլ և չարիքներէն ազատելուն ճար ու յոյս այլ չըլլան. — և մանաւանդ, մանաւանդ եթէ մէկն բանի և անպարտ դատապարտուած ըլլայ այդպիսի, և քան զայդ աւելի զրկմանց, կրից և ցաւոց:... Հայկակ, հոս անտարբեր կալ մնալ չըլլար. այս յիշատակիս՝ ցուրտն և սարսուռն ամեն պատ ճաթեցընելով ներս կու մտնեն. կրակդ կ'անցնի, ծուխդ կու ցնդի, սիրտդ կու սոսկայ..: Ե՛լ, ել խրճըթէդ, մոռցիր ձմեռ խաւար. հայրենական հոգւոյ հրեղէն վերարկուն ձգէ վրադ, թող կրակիկդ, և հասարակ գիշերուան խոլաշունչ մրրկին մէջ՝ անկէ սուր ել թռիր:

Երթանք, մեկ շնչով անցնինք սառնապատ սա-

րեր ու ձորեր. երթանք՝ ուր որ ցրտին, միայնութեան, ամայութեան, և ահեղութեան երևոյթ կայ, վէշտք և կիրք կան: Երթանք, ուր այսօրուան Հայագիր յիշատակն յափշտակէ զմեզ. մեր հայրենեաց հիւսիսագոյն սահմանները. ուր հսկայաձև երկայնաշար Կովկասու լեռնագօտեաց դիմաց՝ իբրև զուգահեռակ կամ հակապար անոնց, աւելի ցած և աւելի կարճ լեռնագօտի մը կու ձգուի ընդ հարաւակողմն. զոր Հախախխա կամ գուցէ լաւ ևս Հայախախխա կ'անուանէ աշխարհագիրն. և որ շատ տեղ հին Հայոց և Վրաց սահմանապարիսպն եղած է. բայց շատ տեղ այլ Հայք անցնելով այդ պարսպէդ՝ տիրած և բնակած են անոր դէպ հիւսիս տարածած գեղեցիկ ձորադաշտերուն. որոց մէջ մեծ գետոյն Կուրի հայաբուխ օժանդակներն զեռալով քաջաբոյս փորակներ և ձորակներ կու ձևացընեն: Անոնց վրայ կ'իշխէր Թագապատիւ Նախարար մի, անուանեալ Բդեաշխ Գուգարաց. վասն զի այս հին և մութ Նահապետական անուամբ կոչուէր այդ Վրաց և Հայոց մէջ տարածուած բազմալեռ բազմաձոր բազմալիճ բազմագետ աշխարհն. որոյ և յետին գաւառքն՝ յարևելեան կողմն՝ կոչուէին Կողբոփոր, Ծոբոփոր, Ձորոփոր: Այս երեք փորակաց անմիջապէս յարևմտից հիւսիսախառն կից՝ փորակ մ'այլ կայ, զոր շատ պատմիչ և աշխարհագիր թողեր են անծանօթ. այն է Բողնոփոր. և սակայն ամենէն աւելի ծանօթ ըլլալու իրաւունք ունէր այս գաւառակս. որովհետև ասոր մէջ է, իր հարաւային ծայրը և յեզր դաշտին Վրաց, ասոնց հիմկու մայրաքաղաքին՝ Տփխեաց՝ դիմաց, իբրև կիսաւուր ճամբով միայն հեռու՝ Գուգարաց բդդեշխին մայրաքաղաքն՝ Ցուրտաւ, նոյնպէս գրեթէ բոլորովին մոռացեալ, զոր միայն յիշեցընէ ձորագնաց գետակ մը՝ Ցուրտավէտ կոչմամբ, և խառ-

նուէ հարաւային հայակողմեան լեռներէն իջնած վտակներն հետ, այն որ իր բնիկ գաւառին անունը կու պահէ (Բողնեաց գետ), հիմա Բոլղաւուրի կոչուելով։ Իսկ այդ բղեշխաց աթոռ հին և չէն քաղաքն՝ հազարք տարիէ վեր գիւղացեալ՝ Գողջիւք կոչի, հնագոյն անուամբ և աւանդութեամբ մը. վասն զի այդ տեղը՝ կ'ըսեն, շինած է Գող կամ Գող անուն եղբօրորդին Հայկայ. որոյ անուամբ երբեմն գետն այլ Գողջնագէտ կոչուի։ Այս չէնս կամ քաղաքս՝ Բողնափորի հարաւային ցածագոյն ծայրը շինած է. իսկ գաւառին բարձրագոյն լեռնատառահման ծայրը, հիմկու մայրաքախիս և աղնձահատ Լեռնջիւր լերանց սարորոտը, Բոլտառուրեայ աղբերակաց մօտ՝ ամուր և աւեր չէնք մը կայ, որ նոյնպէս Թորգոմայ առաջին թոռանցմէ շինուած կ'երևի, քան թէ'ի Ձենապնեայ Ռուպէլեանց, և կոչուի ինչուան հիմա ՈՒՓՐԷԹ, թերևս յանուն Ուփար նահապետի մը կամ Ոփարք ցեղի մը. որոյ հին բնակարան և սատան եղած կրնայ ըլլալ. և յետոյ տեղւոյն բարձրութեան և դժարութեանն համար թողուած, բայց պահուած իբրև ամուր և անմատոյց բերդ, ապաստարան և տեղիապաւինի գաւառին, կամ արգելարան բանտի խստիւ պահելի անձանց։

Մեր քննութեան ատենն այլ, աւելի իբրև 1400 տարի առաջ, այս պահուած քաշուած մթին և խոժոռ կերպարանքը կ'ընծայէր Ուփրէթ. ևս առաւել այս եղանակիս և այս պահուս։ Գարունն, այն աստուածային երկրատիւռ ծիծաղն, գարունն և ամառն՝ որ Բողնեաց փորակը ծաղկազուարճ բուսաբուխ վիճակ մը կու դարձընեն՝ անոր պայծառ ալեաց մատռուակութեամբն, Ուփրեթայ բերդին եզերքն այլ չէն մնար հասարակաց երկրի պարգևէն. ինչուան բանտերու պատերուն վրայ այլ կու բուսնի կու բացուի ու-

րախութեան և անմեղութեան նշանակն, ծաղիկ մը...: Իսկ մարդուս սրտի ծաղիկն՝ գթութիւնն, ո՛հ, գթութիւն չի բուսնիր, չի բղխեր բանաւորաց կուրծքէն, որ մտնէ այդ պատերէն ներս. հոն՝ ուր ոչ միայն ստոյգ արդարութեամբ դատապարտածն, այլ երբեմն (չըսեմք շատ հեղ) նաև անպարտն արգելեալ, զուրկ 'ի լուսոյ և 'ի յուսոյ աշխարհի՝ տառապի, տուայտի, մեռանի:...

Այս գիշեր, Հայկակ, դու այդ նիւթական անշար բնութեան պարգևիկն այլ չես գտներ հոս. հոս ամեն բան չորցեր, սառեր անցեր է. և եթէ ըստ բաղդիդ՝ գլխուդ վերև թափառած սև մըրուրներն պատռտելով, բանան քանի մը վայրկեան դալկահար և դողդոջուն լուսնի մը երես, ահա տեսածդ ամայի ցուրտ սառած անապատ մ'է: Լեօք և Լեպլվար լերանց կոշտ կռնակներուն վրայ քանի մը կանաչ ըսուած մօշայք և եղևինք կան. այլ այս առհասարակ տարածեալ ձեան տակ կամ մէջ, դողդոջուն ու անփախուստ շուքերու պէս կու ծփան ծառերն. և այդ պաղ պախրցի հովուն թևերուն տակ՝ իբրև վզէն բռընուած կենդանիք՝ սուր ու խայթող ձայներ ճիչեր կու հանեն. միայնակ երգ և երաժշտութիւն հիւսիսային հովպետին՝ այս եղանակիս, այս տեղւոյս: Եթէ յանկարծ ջատուկ պառաւի մը վայելու նման սուր ձայն մ'այլ չի փրթի՝ դիմացի բերդէդ քարէ պահապանի նման բարձրացեալ աշտարակին գագաթէն. որոյ վերին պատուհանին խորշը քաշուած տափագլուխ լայներես փետրափուք բուխճակն՝ ապակէնման մեծակլոր աչքերը աջուձախ սահեցընելով, կորուկախ քթովը՝ ձմերական խոր հանդարտութեան մէջ անգամ անհանդարտ և անկուշտ, բանտապանին կամ բռընաւորին նման կարծես կու սրդողի ամեն օտար կենդանեաց, որ չխռովեն իր աւերակաց տէրու-

թիւնը, չափգեղուն իր ոսկերը։ Եւ ահա, երբ լուսնին ճաթռտած ճառագայթներն այլ քաշուին, անհեգեդ բերդն, բարձրահայեաց բուրգն՝ աներևոյթ կ՚ըլլան, բուին վայն ու վույն աւելի կու զօրանայ։ Արտաքինէն կրնաս գուշակել Ուփրեթայ ներքին երևոյթն այլ՝ պատերուն թանձրութիւնը, սրահներուն, սենեակներուն կամ խորշերուն նեղութիւնը, և տեղ տեղ բարձրէն բացած ծակերուն պզտիկութիւնը. ուսկից ոչ երբէք սրտաբաց մաքուր օդ մը և պայծառ լոյս մը կ՚իջնեն, այլ մրրախառն բան մը, այնչափ՝ որ կարենայ արգելական մը դեռ շնչել, և հառաչանքները անկէց դուրս արձըկել ինչուան ուր որ հասնի. և փոխարէն՝ գրաւէն ընդունիլ բուիճակին վայիւնը, հիւսիսին սօսափիւնը, և երբեմն հեռաւոր ձորերէն իջած ջրերուն հանդարտընթաց սահանաց կարկաջանքը. — հառաչա՜նք հովու և ջրոյ, — ՚ի պատասխան հառաչանաց հրացեալ և հալեալ սրտի բանտարկելոյն։...

Բ

Կա՛յ արգեօք հիմակ այլ մէկ մը, այսպիսի դըժընդակ եղանակի մէջ, այսպիսի դժնդակագոյն տեղ մը արգիլուած. մինչդեռ քաղաքական և կրօնական եղանակք՝ փոխանակ բնութեան՝ մխիթարէն զմարդիկ, Նոր տարւոյ յուսով և Քրիստոսի Աստուծոյ ծննդեան տօնից հրաշափառութեամբ։ — Քանի մը մղոն Ճամբայ, ձորակ մը, ամայի դաշտակ մը, պատ մը միայն՝ անանց անկոխ արգելք կանգներ է ընդ մէջ աշխարհի, կենակցութեան, և ընդ մէջ բանտարկելոյն. ամենայն ինչ՝ ոչ միայն տխուր, այլ և անփոփոխ է անոր չորս դին, բաց ՚ի մաքէն. եթէ դեռ զօրաւոր սիրտ մը կարենայ նուաճել զմըխ-

ըութիւնը, և բանեցընել գլխոյն աստուածատուր ազատութիւնը. այն ազատութիւնը, որուն կ'ուզէ, բայց չի կրնար արգել ըլլալ անգթագոյն բռնաւորն այլ։... Բայց անցնինք այդ լուռ և խաւար սրահներէն, խորշերէն, գաղտնարաններէն, ուր վրանիս կու թափին ձանձախարիթի նման սեւցած սարդի ոստայններ, և պահապաններէն շուտ արթընցող ծիւաղակերպ ջղջիկներ՝ կաշէկծիկ թևերով՝ սատանի ձագերու պէս պատէ պատ կու զարնուին. բաց յայն սենեկէն միայն, ուր անփոյթ՝ քան անգութ՝ պահապանքն պառկած, փոխանակ անքուն հսկողութեան, խորդալով կու խրտեցընեն իրենց մատնուած դիմացի արգելականը։ Եթէ այդ մարդկային գաղանաց որպիսութիւնը նայելու ըլլաս, կ'իմանաս՝ որ հոս շատ արգելական չկայ, բայց եղողն շատ զգուշութեամբ պահուած է իբրև մեծագոյն յանցաւոր և անազատելի մահապարտ մը։...

Սիրտ ըրէ, մտիր այդ ծակը. խարխափէ չօշափէ չորս դին. շատ ընդարձակ չէ, քանի մը քայլ է. այլ գիշերուն մթութն չես կրնար բան տեսնել. սակայն հոս թէ միջօրէին բարկ արևուն այլ գաս՝ շատ աւելի պիտի չտեսնես. տեսնելու բան այլ չկայ. այդպիսի արգելականի խորշ մը՝ շատ մերկ և պարապ է։ Խեղճ. և ոչ անկողին մը կայ, այլ պզտի խշտիկ մը, որուն վրայ հազիւ նստել կարելի է և ոչ երկայնուկ պառկիլ. ո՛հ, պառկելու ճար այլ չկայ։... Կու լսես այդ թանձր շղթայից խշրտոցը. անշուշտ ատոնք բանտեալին ոտքերն կաշկանդած են. ոչ ոտքերն միայն, այլ և այն մարդուս ազատութեան արտաքին զուգակ գործաւորները, ձեռքերն այլ։ Այլ աւելի խըղճալի և պժգալի. մարմինն այլ արձակ չէ, գլուխն այլ ազատ չէ. հաջուխած շան վայել անուր մը՝ վզէն անցած, ամուր կապանօք պատին պնդած

է. եռապատիկ երկաթով կապկըպած, կատաղի գազանի մը կամ գազանացեալ վիշապի մը նման, երեք անգամ արգելեալ:— Ստոյգ է ուրեմն առասպելը, որ ատենօք այս լերանց դիմաց՝ Կովկասու Էլպրուզայ բարձրագոյն սարերուն գլուխը կու ցուցընէր զդիւցազն Պրոմիթեւս, որ երկնուց կըրակ գողնալուն ու յերկիր բերելուն համար՝ չաստուածներէն դատապարտուած կապկըպած լերանց մերկ կողերուն վրայ ձգուած էր: Այդպիսի պատուհասի մը արժանի սեպուած կարծուի այս հակակովկաս լերանց բանտեալն այլ: Ի՞նչ բարկ կրակ է արդեօք ասոր գողցածն. վասն զի յիրաւի իր ձեռքերն այլ այրած, խարած, ապիացած կ'երեւին. նոյնպէս ոտքերն այլ, և ինչ որ մորթ կ'երեւի վրան. նաև երեսներն այլ, և ինչուան աչքերն այլ՝ գրեթէ աչքութենէ ելած. երբեմն բարկ արեւէ, և վերջը մթէն խանգարած ուռած ցաւած. կարկատուն դէմքն՝ վտտած դեղնած. չորս դին՝ զզուելի որդեր ճճիներ կու զեռան: Դիմացը՝ սև ու չոր գարիէ հացի կտոր մը, քովը փառչիկ մը պաղ ջրոյ. այս է իր կենաց սնունդը ամեն Աստուծոյ օր, որչափ այլ ապրի: Վրայի մաշած զգեստն, եթէ զգեստ այլ կրնայ ըսուիլ, իր վիճակին յարմար՝ տանջելի, մազախառն հիւսուած մը. աւելի խստակրօն ճգնաւորի հագուստի նըման, քան սովորական մահապարտի:... Բայց ով անտանելի ծանօթութիւն... այս ամեն պըժգալի բաներն դեռ կու պզտիկնան, ոչինչ կ'երեւին, կամ թէ կրկին կու մեծնան, կու սաստկանան լեռնանան, մինչև յերկինս կու բարձրանան, երբոր հաւատաս, Հայկակ, եթէ այդ չարաչար բանտարկեալ մահապարտդ՝ սովորական յանցաւորաց սեռէն չէ, այլ կին մարդ է:...

Անշուշտ երկուքին մէկն. կամ դա՝ պատմութեանց մէջ չլսուած եղեռնաւոր անզգամ, գե-

ղինչ սպանիչ, քաղաքայրեաց, աշխարհակործան կին մը պիտի ըլլայ. կամ առոր բանտումն այլ աւելի եղեռնաւոր անզգայ գազան բռնաւոր մը:... Կի՞ն մը. ասա՛նկ առեն, այսպիսի՞ տեղ, այսպիսի՞ վիճակի մէջ... Անշուշտ սիրտ չես ըներ, Հայկակ, այս պատմութիւնս քուրերուդ պատմելու. կամ սիրտ չէն ըներ անոնք լսելու և աչք մը տալու այսպիսի սեռակից անձի մը վրայ. քեզի՛ անգամ ծանր է՝ քու մօրդ զուգակիրը՝ թէ և յանցաւոր և մեծայանց ըլլայ, այդ երկաթներուն մէջ կարկամած տեսնել: Հապա որքան աւելի զգալի, կսկծալի և սոսկալի պիտի երևի այդ պատկերդ, եթէ դիմացը ուրիշ պատկեր մ՚ալ ըլլար՝ աշխարհիս (չեմ ըսեր զեղծ ու շփացած, այլ և) օրինաւոր բարեկեցիկ վայելուչ փառաւոր տիկնոջ մը: Պէտք է արդեօք այն պատկերն ալ փընտռել: — Այո. հոս ոչ մարդահաճութիւն և ոչ անձնահաճութի՛, այլ բարոյական հարկ և պարտք մը կայ զայն ալ տեսնելու. պէտք է վայրկեան մը բանտէն դուրս ելնենք, որ բանտին մէջինը լաւագոյն ճանչնամք:

Գ

Շատ հեռու չեմ տանիր զքեզ, Հայկակ. հազիւ ճաշաժամու մը ճամբայ. այս Բողնոյ-փորակէս դուրս չէ, այլ նոյն իսկ անոր շինադրութին, Նախայիշեալն Յուրտաւ. մայրաքաղաք բդեշխին Գուգարաց: Անշուշտ մէկէն գուշակես թէ դիմացդ ելնելիքն պիտի ըլլայ բդեշխուհին: Յիրաւի, անկէ զատ չէ. և գիտնալու ես որ այս տեղի բդեշխուհիս, թագուհիէ շատ պակաս չէ: Հայոց մեծ թագաւորութեան տակ քանի չափ նախախարարներ կային, մէկ մէկ փոքր աշխարհներու ազատօրէն կառավարք. ասոնցմէ չորսն աւելի

շատ ազատ և գրեթէ անկախք էին· ատոնք էին Բդեշխքն, որ երբեմն Թագաւորք այլ կ'ըսուէին, և որոց մէկն հոս Հայաստանի հիւսիսակողման սահմանակալ կամ աշխարհապահն էր՝ Գուգարաց Նախարարն, որ և Վրաց Բդեշխ կ'ըսուէր, և երբեմն բուն ազատ Վրաց Թագաւորէն աւելի զօրաւոր՝ և աւելի ընդարձակ երկիր ունէր, և անոր վրայ այլ իշխանութիւն կու բանեցընէր՝ Հայոց Թագաւորին կողմանէ: Արդ յայտ է որ բոլոր հիւսիսային կամ կովկասային ժողովրդոց առջև Գուգարաց բդեշխն՝ մեծազօր մեծափառ իշխան և տէր մը ճանաչուէր· խաղաղութեան ատեն 18 կամ 20000 զօրաց հրամանատար էր· անոր համեմատ առատ եկամուտ այլ ունէր երկրէն· մէկ մը անոր ընդարձակութեան և բերքերուն համար, (բաւական տափարակ և ցած դաշտեր ունենալովն, և աղէկ փայտի անտառներ, ու մանաւանդ պղնձի և ուրիշ մետաղաց հանքեր)· մէկ մ'այլ Ալանաց-Դրան ճամբուն հարաւային պահակը՝ իր իշխանութեան տակն ըլլալով, որ էր սովորական ճամբայ Հայաստանէն 'և արևմտեան Ասիայէն 'ի Կովկաս գնացողաց և անկէ հոս եկողաց· այս երկթևեկս և մանաւանդ վաճառաց ելումուտքն՝ շատ շահաւոր էր Գուգարաց տիրոջ: Այսպիսի դրութեամբ՝ հարկ է որ իր դշխոյն այլ հիւսիսային տիկնայց մէջ Թագափայլ և մեծափառ նայէր: Եւ եթէ ուրիշ դշխոյք միայն այսպիսի բարձր գահու մը վրայ ըլլալովն այլ կրնային փայլել, հիմակուան բդեշխուհին իրմէ առաջիններէն անուանի, աւելի բարձրագոյն պէտք է փայլէր իր անձնական ձրիւքը, որով կոյսերաց գահոյքն անգամ կրնար պայծառացընել· վասն զի էր նա Թոռնադուստրն մեծի Պարթևին և սուրբ քահանայապետին Սահակայ, դուստր Մեծին Վարդանայ ՎԱՐԴՈՒՀԻՆ-

ՇՈՒՇԱՆ. այս երկու պարագլուխ ծաղկանց անուամբ և անոնց շնորհօքը ծանօթացեալ և հռչակեալ, 'ի հօրէն Վարդունի կամ Վարդանունի կամ Վարդէնի կոչեալ, և 'ի սիրոյ գգուանաց՝ իր մաքուր և պայծառ տեղեանն համար Շուշանիկ կոչուած, որ և իբր սեփականագոյն անուն մնաց վրան: Շուշանկան շուքն և շնորհքն՝ չէր այնքան՝ հարստութիւն, Մեծին Վարդանայ Մամիկոնէից տեառն անուանակիր զաւակ և ժառանգ ըլլալը, կամ Գուգարաց բդեշխի դշխոյ ըլլալը. և ոչ այնքան մարմնափայլ գեղեցկութիւնն, ոչ իսկ պարթևական և մամիկոնեան արեան ազնիւ սերունդն, որքան 'ի հօրմէն, մամէն (Սահակադխտոյ) և 'ի մեծ պապէն առած դաստիարակութիւնն, իմաստութիւնն, բարեպաշտութիւնն. միով բանիւ, շնորհքն և օրհնութիւնն՝ որովք արդարև աշխարհիս մէջ մեծ անուն և զարմանք թողլով՝ արիական, դիւցային, աստուածանշոյլ կանանց մէկն ճանչցուեցաւ. և հարկ էր որ իր երկրաւոր տիկնութեան օրերուն այլ փայլէր և ըլլար աստղ և պսակ հիւսիսոյ: Իրկանը՝ Վազգէն բդեշխի՝ ներկայ չեղած ատեն, տիրաբար կ'իշխէր և հրաման՝ տայր աշխարհին, տանը մէջ՝ գերզգօն ազնիւ մայր մ'էր. հասարակաց բարերար և դայեակ. եկեղեցւոյ բարեզարդիչ փայլեցուցիչ, արժանաւոր Ս. Սահակէն ժառանգած բարեպաշտութեան, հոգեսիրութեան և հայրենասիրութեանն. որով կարգաւորեց և մտուց Ցուրտաւայ եկեղեցւոյն մէջ հայերէն ժամակարգութիւն, զատ 'ի վրացւոյն. (վասն զի Վրացիք այլ շատ կային հոն, թերևս աւելի քան զՀայս, երկար ատեն Վրաց իշխանութեան տակ ըլլալով երկիրն. անոր համար երկու լեզուով այլ կատարել կու տար պաշտօնը). և եպիսկոպոսք հրամանը սիրով ընդունելով՝ հարիւրաւոր տարի ետքն այլ իբրև աւան-

գութիւն և պատուէր մեծ դշխոյին՝ անփոփոխ պահէին այս կարգը։

Ահա այսպիսի է բդեշխուհին՝ զոր կ'երթամք տեսնելու 'ի Ցուրտաւ. և 'ի հարկէ այսպիսի ձրից և արժանեաց քով՝ շատ ծաղրելի և անդառ-նելի պիտի ըլլայ՝ անոր վսեմափայլ կերպարա-նացը հիանալ, կամ տիկնութեան թագն ու շղար-շը, ասկին, բեհեզն, ծիրանին, գոհար ակունք և մարգարիտները գիտել. բաւական ըլլայ առանց մանր քննելու և համրելու՝ հարևանցի մ'այլ տեսնել զինքը դշխոյական դարպասին մէջ՝ հան-գիստական հագուստովը, և բնական նարմանազուկ զարդուածքովը. կարծես՝ շնորհք, հեզութիւն և վսեմութիւն իրար խառնած՝ զինքը զանգեր ու զարդարեր են. և այդ ամենայն փառքերէ վեր ելնելու կու շարժէ մանտրուքայլ ոտքերը, որ-պէս թէ իր բուն գահոյքն՝ աստեղաց կամ արեւու մօտ խորանի մէջ կանգնած ըլլայ։...

Հիմա կրնամք, Հայկակ, այս Գուգարաց բդեշ-խուհին, իր տիկնաբար կոխած չեմքն շարժել ու փոխադրել վայրկեան մը Ուփրեթայ զնդանին մէջ. և հասկընալ՝ թէ ի՛նչ է վէհ վսեմ գեղեցիկ բարեկիրթ բարեպաշտ զաւակամայր կին մը, և ի՛նչ է այդ մեր նախ տեսած, երեքերկաթեան կա-պած, մաշած մարած պառաւն. որոյ՝ կին ան-գամ ըսել դժար կու գայ։ Թերևս պարտիզա-փայլ շուշանին և ձմեռը անասնոց խար տրուած չոր ծաղկին մէջ՝ այնքան աննմանութիւն չըլլայ, որքան այս երկու կերպարանաց մէջ. անմօտենա-լի վէհ մը կ'երևի մէջերնին։... Եւ սակայն. — սա-կայն, ի՛նչ չիկրնար ընել մարդուս հոգին. այն մեծ և անմահ զօրութիւնն, որ բարութեամբ կրնայ բարձրանալ մինչև յԱստուած, և չարին հետևելով՝ ինչուան սատանայի գործակից ըլլալ։ Այս երկու հակառակ կերպով՝ հոս այլ մեզի

աննման անմոռենալի անկարծելի երեւցածն՝ կըր-
նայ ըլլալ. և որդէն եղած է, և մեր ուզածէն և
չուզածէն աւելին այլ: — Ուփրեթայ շղթայեալ
վշտակիրն՝ և Գուգարաց շնորհաշուք գլխոյն՝ Շու-
շանիկ, անբաժանելի մի և նոյն անձն է....: Մե-
ծին Վարդանայ մեկնաւորիկ դուստրն, Վազգենի
կինն, Վրաց բդեշխուհին, աննման Շուշանիկն
այն է՝ որ վեց տարիէ վեր այս ահեղ և դժնդակ
տեղւոյս և շղթայից մէջ դատապարտուած է 'ի
տանջանս և 'ի մահ:...

Դ

Ո՛վ ափշութիւն, ո՛վ սոսկումն, ի՛նչ փոփո-
խութիւն, տէր Աստուած: Եւ ի՞նչպէս. ինչո՞ւ:
— Արդեօք այդ մեծահոգի մեծաշնորհ կինն՝ իր
և հասարակաց Նախամօրը պէս խաբուելով, աս-
տուածային պատուիրանին անհնազանդ՝ վտըն-
տուեցաւ իր դրախտանման դարպասէն. թէ ար-
դե՞օք երկնային զօրութեանց պարագլուխ արու-
սեկին պէս հպարտացեալ՝ ուզեց Բարձրելոյն ա-
թոռն ելնել, և զարնուելով անոր կայծակէն՝ գլո-
րեցաւ ընկաւ 'ի խաւար և յօտարութիւն:...
Թէպէտ և անհուն կ'երևի կերպարանաց փոփո-
խութիւնն, սակայն այդ մաշած դիմաց վրայ ամ-
բարտաւանութեան և մեղաց հետք չեն երևիր.
շատ հեռի են չարութեան շուքերն անգամ՝ այն
հեզութե՞ և առաքինի տրամութեամբ խորացեալ
խորշոմեալ երեսներէն. — Նուաղեալ և ցամա-
քեալ աչքերէն՝ դեռ գթութիւն և ողորմութիւն
կու կաթէ. — խարշած շրթանց մէջ դեռ շնորհք
կու ժպտին լռիկ. — անթագ անպսակ Ճաղատ
Ճակտին վրայ դեռ անարուեստ զօրութեամբ մը
գրուած կ'երևի՝ թէ սա գլխոյ է արժանափառ:
Նեղ բանտին մէջի մէկ հատիկ գործարանն՝ աղօ-

Թանոց մը, անոր վրայ երկու գրքոյկք՝ աղօթամատոյց մը և Ս. Սահակայ աստուածաշօշափ մատներով գրուած աւետարանիկ մը, և այս երկուքին մէջ կանգնած խաչափայտ մը՝ կու վկայեն, թէ աստուածարեալ հոգի մը կայ այդ պատերէն աւելի՝ մարմնով բանտուած՝ անձին մէջ. որուն հանդարտութիւնն, սենեկին խաղաղութիւնն, և գրեթէ որդանց մէջ անգամ զգալի անուշահոտութիւն մը, շատ համարձակ կու վկայեն, թէ զա ոչ միայն իր անուան շնորհն պահած է, այլ և առաւելած. անպարտ է այդ դատապարտեալը, անարատ է տառապեալը, սուրբ է Ուփրեթայ բանտարկեալն, հրեշտակաշնորհ է ՇՈՒՇԱՆԻԿ, և անօրինակ երևոյթ մ'է մեր տեսածն հոս։...

Ո՞վ է սորեն պարտաւորն. ո՞վ այն այլանդակ յանցաւորն, այն ապառաժ բռնաւորն, այն մարդապաղանն՝ որ յայս վիճակ հասուց զսա։ — Վազգէն. — Վրաց բդեշխն, նոյն իսկ կենակիցն, ամուսինն Շուշանկան։... Անշուշտ կամ խելագար կամ գիւահար պէտի ըլլայ՝ որ այդ գործդ ըրեր է, կամ դժոխական ատելութեամբ մը մխուած՝ որ կմարդ մոլորցընէ չար քան զխեւ ու զդեւ։

Ափսոս Շուշանկան. երջանիկ ժամանակ մը ծնաւ, իր հօր Վարդանայ ամենայն փառաց մէջ և հօրապապուն Սահակայ նծպետական դահակալութեան ատեն. սակայն թշուառ դարու գըրկխոյ եղաւ։ Հասակին վիճակին ամենէն պայծառ միջոցին, Հայոց բաղդին փառափայլ արևն խաւարեցաւ, վերցաւ թագաւորութիւն ցեղին Տրդատայ և քահանայապետութիւն Ս. Գրիգորի. Հայաստան տակն ու վրայ եղաւ, Պարսք ջանալով զՀայս կրակապաշտ ընել՝ երկայն տարիներէ վեր լռած հալածանքը նորէն բորբոքեցին. Հայք բանիւ և փաստիւ չկարենալով համոզել զամպարիշտն Յազկերտ՝ աշխարհօրէն պատերազմաւ ու-

դեցքն դէմ կենալ զինուց բռնութեան. Միջերնին երկպառակութիւն ընկաւ, կէսն կաշառուած 'ի Պարսից և մոգութեան հաւանած՝ արգելք եղան յաջողութեան պատերազմին և ազատութեան. Վարդան՝ հայրն Տուշանկան գլուխ հայրենեաց ուխտապահ մասին՝ ընկաւ փառօք և սրբութեամբ մեծ Ճակատամարտին մէջ. իրեն հոգւոյն և զօրութեան յաջորդ մը չգտնուեցաւ շուտով: Իշխանաց և ցեղապետաց ոմանք փախստեամբ և թաքստեամբ ծածկուեցան. ոմանք զէնքով պաշտպանել ջանային իրենց ամրոցները. շատոնք այլ 'ի Պարսից ձեռքն ընկած խաբէութեամբ՝ բանտեցան յօտարութեան. և ոչ սակաւք՝ դժբաղդաբար՝ սիրելով զփառս և զվայելս աշխարհի՝ քան զհանդերձեալ յոյսն, հաւանեցան կամայ կամ ակամայ մոգուցն և կրակապաշտից. և քրիստոնէութեան փոխանակ՝ արևու և մոխրի պաշտօնը յանձն առին: Որոցմէ այլ աւելի զզուելով ուխտապահքն, ոչ միայն արք այլ և կանայք, փափկասուն տիկնայք, իբրև նորէն կնքուելով 'ի Քրիստոս՝ հաստատեցին ուխտ գրին մինչև իսպառ համ բերել, նեղիլ, տառապիլ և չուրանալ զսուրբ հաւատս Յիսուսի, չմարել Լուսաւորչին ջահը՝ ակիղծ մոխրախայծ խանձողաց դիմաց:

Այս ետքի երկու դասուց մէկմէկ պարագլուխ կրնան սեպուիլ Գուգարաց բդեշխն և իր դշխոյն. Վազգէն վասականման ուրացողաց, աւերողաց, հայրենատեաց, քրիստոսատեաց անարի արանց. Շուշանիկ՝ Շամունեայ նման մեծահաւատ մեծահոգի հայրենասէր աստուածասէր այրասիրտ կանանց. որք « Մոռացան զկանացի տկարութիւն,
» և եղեն արուք առաքինիք 'ի հոգևոր պատերազ-
» մին ... ոչ միայն յոգիսն մխիթարեալ կային առ
» աներևոյթ զօրութիւն յուսոյն յաւիտենից,
» այլ և մարմնոյ նեղութեամբք առաւել ես բար-

» ձին զբեան ծանրութեան... Ոչ ինչ յիշեցին
» ամենեքին զանուն փափկութեան մայրենի ազա-
» տութեանն, այլ իբրև մարդիկ՝ որ վշտամբերք
» լեալ իցեն անդատին 'ի չինական սովորութեցն
» տանջելով վարեալ զկեանս աշխարհիս, անդրա-
» դոյնք ևս քան զնոսա յանձն առին զհամբերու-
» թիւն վշտաց.... Անարիւն ճգնանց նմանեցին,
» որ երդոյն քաջութեամբ տանջանաց կերակրա-
» նաց կեան, և կենդանի են միայն զօդն ծծելով,
» զանմարմնոյն բերեն զնմանութիւն [1] »:

Այսպիսիք էին այն ժամանակի ուխտապահքն Տփխիսոյ փախկասանց Հայոց աշխարհին, որպէս ականատես սուրբ պատմիչն նկարագրէ։ Այլ ինչ որգեօք պիտի ըսէր. ինչ մեղրեղէն թէ հրեղէն գրչով պիտի գրէր, ով անուշակն Եղիշէ, եթէ լսէիր, եթէ տեսնէիր՝ այդ տիկնաց տիկինը, այն քո և մեր գեղեցագին՝ Վարդանայ՝ Վարդենի գրաբիկը Շուշանը, այսպէս քան զամէն կին և այր՝ այդ հալածանաց պարագային մէջ՝ սաստկապէս տանջեալ և հրաշափառապէս հանգչեցեալ։

## Ե

Եթէ կանացի մարմին մը քան զայդ աւելի կըսրուկ տանջանքներ կրած է, գուցէ աւելի երկար ատեն չէ կրած. Թերևս ոչ ոք այլ աւելի և պէսպէս զրկանք և սրտակտուր կիրք աղեաց գթոյ և հոգւոյ վշտաց։ Անշուշտ այդ սեռին վեհագոյն մեծուհեաց առաջին գասէն է Շուշանիկ. երբ նկատենք զնա յետ սրբութեամբ տիկնութեան կենաց՝ ուրացողի մը կին դառնած, Թերևս և մայր ուրացող որդւոց։ Այս բանս իրեն հազար մահէ դառնագոյն էր. և բովանդակ այն միջոց ժամա-

1 Եղիշէ:

Նակն՝ յոր անարժան դժնիկ այրիկն՝ Վազգէն՝ 'ի դուռն Պարսից էր գացեր, կու հոգար կու հալէր կասկածելով անոր ընելիք չարիքն. Թէ անոր՝ և Թէ իր զաւակաց (իրեք մանչ և մէկ դստեր) հոգւոյն վտանգը մտածելով։ Անոր համար երբ մէկն իրեն աւետիս տուաւ, թէ տէրդ դարձեր 'ի Պարսից՝ ողջ առողջ կու հասնի իր աթոռը, առաջին հարցմունքն եղաւ, թէ հոգին ինչպէս է, ողջ է... Դժուարասելի, և աւելի դժուարալուր պատասխան. աւաղ. Վազգէն հիւանդ, օրհասական, մեռած է հոգւով. զի « Ի դուռն արքունի երթեալ՝ » ուրացաւ զքրիստոնէութիւն, և եղեալ ընդ պարսկական օրինօքն՝ 'ի կամաց և ոչ 'ի հարկէ և 'ի բռ-» նութենէ... վասն լկտի և անառակ վարուցն... » երկիր պագանէր կրակի, և ուխտէր ընդ սա-» տանայի. և խնդրէր կին պարսիկ 'ի Թագաւո-» րէն. և (Նա) հաւատայր նմա, և տայր զկնոջ » իւրոյ քոյր նմա 'ի կնութեան. և յանձն առնէր » զկինն առաջին (զՇուշանիկ) և զորդիսն՝ դար-» ձուցանել 'ի մոգութեան օրէնս »[1]։ Այս կայծակնաշար դոյժն երբ իջաւ յականջ Շուշանկան, գլորեցաւ ընկաւ գետին. և երբ խելք ու շունչ իրեն դարձաւ, վայով և լալով քիչ մը սիրտը պընդելով ժողովեց զաւկըները, շտապելով տարաւ յեկեղեցին, ընկաւ սուրբ սեղանոյն դիմաց, զարկաւ ճակատ 'ի գետին. երբեմն հառաչանօք և երբեմն լռութեամբ՝ անորդի Աննայից պէս գետնամած մնաց, միայն Աստուծոյ բողոքելով, և միայն Աստուծով կրնալով դիմանալ։ Եկեղեցւոյ պաշտօնեայք ցաւով և ահով կու նայէին, և աւելի եռանդեամբ իրենց բոլոր օրուան պաշտօնները կատարեցին. Շուշանիկ դեռ տեղէն չէր շարժած. երեկոյն հասաւ, Աստուծոյ տաճարն

1 Վարք Շուշանկան։

այլ պիտի փակուէր. Տուշանիկ ելաւ սուրբ յատակէն, բայց չդարձաւ իր ապարանքը, այլ եկեղեցւոյ քով տնակ մը քաշուելով, հոն բոլոր գիշերն այլ Աստուծոյ կու գանգատէր: Իր դրան քահանայն վերջապէս համարձակելով քիչ մը մխիթարութիւն տուաւ, և ուրիշներէն այլ ստիպելով՝ քիչ մը կերակուր առաւ. և դարձեալ գիշերուան մնացած մասը կեցաւ յաղօթք: Այդպիսի սրտի հարուածոց՝ չկայ քան զայս (աղօթք) յարմարագոյն և զօրագոյն ճար ու ճարակ: Երկրորդ առաւօտեան պաշտօնն այլ կատարելով յեկեղեցին, դարձեալ սկսաւ դրան քահանայէն ողբալ իր զաւակաց վտանգը. արդէն իր մէկ հատիկ աղջիկն չափահաս ըլլալով, հարկաւ քիչ օրէն մոխրապաշտ զանդկի մը հարս պիտի երթար. մանչերն այլ ժամանակաւ անպարկեշտ պարսուհեաց փեսայանային:

Ուրիշ մխիթարանք չգտնելով առաքինօրէն կանչեց. «Հատաւ սպառեցաւ ամենայն յոյս յեր-
» կրէ և 'ի մարդկանէ. բայց (ես) ակն կալայց
» Աստուծոյ ամենակալին՝ որ փրկէ զիս. և տայցէ
» ինձ թևս որպէս աղաւնոյ զի թռուցեալ 'թեօք
» Հոգւոյն սրբոյ շնորհօք հասանել և դադարել
» յանապատի, ընդունել զօրութիւն 'ի վերին
» խնամոցն, սթափել փոքր ինչ 'ի մրրկեալ սրտ-
» նեղութենէս և 'ի վհատութենէս... Եւ ես պատ-
» րաստ եմ տալ զանձն բանտից և կապանաց և
» ամենայն կտտանաց, որով նեղէ զիս ուրացողն.
» զի Աստուծով կեցից, և մեռայց վասն անուան
» նորա, և ոչ թողից զաւանդութիւն հարցն ի-
» մոց՝ լուսաւորչայն Հայոց »:... Այն յԱստուծոյ խնդրած աղաւնոյ թևերն իջան հասան հոգւոյն, և ինչուան Ուփրեթայ բանտն այլ հասուցին, թեթևութեամբ և ուրախութեամբ սրտին. որով նախ ելաւ կանգնեցաւ իբրև մեծ թագուհի

մը՝ որ Թագաւորի մը չկրցած յաղթութիւնը՝ ըրած ըլլայ։

Այսպէս վսեմութեամբ և վստահութեամբ նըստած էր, երբ Վազգէնի կողմանէ նուիրակք եկան, արքունեաց եպիսկոպոսն Յովհան և բդեշխին եղբայրն՝ մեծ իշխանն Ջօջիկ։ Պահ մը պապանձեցան, կապուեցան, սկսան լալ. և հազիւ կրցան կըմկըմալով և ամաչելով բդեշխին հրաւէրքը տալ, որ կու կանչէր տիկինը, բայց կ'իմացընէր այլ որ կ'ուզէ իրեն պէս քրիստոսուրաց տիկին։ Այն ատեն մեծն և մեծաց դուստրն և Թոռնեայն՝ Վարդանայ և Սահակայ, տիրական բերանը բանալով սաստեց եպիսկոպոսին. Անվայել աստիճանիդ՝ այսպիսի պատգամաբերութիւն, ըսաւ. դու ճշմարտութեան քարոզ, «Դո՛ւ « զայդ հրամայես. միաբանե՜լ ընդ առն ամբարշտի » և ուրացողի զԱստուած. և այսպիսեացս լինիս » թելադիր և մատախաբ։ Աւա՜ղ իմոյ թշուառութեանս, որ և յորդորիչ ինձ ոչ գտաւ »։

Եպիսկոպոսն պատկառելով և սրտապնդելով՝ պատասխանեց. Ճշմարիտ է ըսածդ, բայց եթէ դու անշարժ մնաս՝ Վազգէն ոչ զքեզ միայն, այլ և բոլոր իր իշխանութեան քրիստոնեաները պիտի հալածէ, եկեղեցիները քակէ, բագին կանգնէ. մինչդեռ հիմա կու խոստանայ մեզի՝ ամենևին չդպչիլ անոնց, և ոչ զոք ստիպել, եթէ դու հաւանիս երթալու իրեն։ Ես և տագրդ, Ջօջիկ, եկեր եմք՝ ոչ յուրացութիւն հրաւիրելու զքեզ, այլ յորդորելու գալ երևիլ բդեշխին, բան մը ըսել. վասն զի եթէ յետ Աստուծոյ կայ մէկն՝ որ կարենայ անոր միտքը փոխել և սիրտը շարժել՝ դու ես, տիկին մեր։ — « Վազգէնի սրտին տիրել » ու շարժել՝ միայն Աստուծոյ կարելի է, ըսաւ » Շուշան. բայց թէ իմ երթալս հարկաւոր կ'երևի » ձեզի, ահա կ'երթամ, բայց 'ի տառապանս և

» 'ի չարչարանս »: Ըսաւ և արիաբար դարձաւ յապարանքը. սակայն չմտաւ իր տիկնութեան փառազարդ սենեկաց մէջ. այլ առանձին տնակի պէս զատուած կողմ մը քաշուեցաւ, և երեք օր անքուն անկերակուր, լալու և աղօթքի կեցաւ:

Երրորդ իրիկունն Վազգէն պատրաստել տուաւ մեծահաց ընթրեաց սաճարը. ջահերն վառեցան, ամենքն իրենց բազմականը բռնեցին, միայն Շուշան դշխոյին գահոյքը պարապ էր. բդեշխն խաւրեց զՋոջիկ որ բռնադատէ բերէ զբդեշխուհին. յետ երկար աղաչանաց հազիւ հաւանեցաւ Շուշան. իբրև նոր Յուդիթ մը, այլ Յիսուսի հեզութեամբն և մեծագոյն վսեմութեամբ զինուած՝ երթալու նոր Հողոփեռնեայ ընթրիքը. չընտրեց անոր պէս իր պերճագոյն զարդերը, և ոչ իսկ անոնցմէ շատ փայլուն բնական գեղեցկութիւնը երեցընել ուզեց. այլ չափաւոր ձևով մը պարզուկած, միայն ծածուկ զարդ մը, չքնաղ լանջապանակ մը, անգին կնիք մը դրաւ ծոցը, որ էր իր սուրբ հօրպապուն ձեռագիր աւետարանիկն, և այնպէս մտաւ 'ի սաճարն:.. Սխրացան սարսեցան պահ մը ամեն տեսողք շուզելով անգամ, մինչև ջանացին իրենք զիրենք զսպել, և խօսքով ու կերակրով այլայլութիւննին ծածկել. իսկ Շուշան՝ իբրև երկնաճաշակ յաւերժահարսն, իր բարձր գահոյից վրայ բազմած, անխօս և անկերակուր կեցաւ, և ոչ իսկ Յուդթայ պէս իր նաժըշտաց մախաղէն փոխինդ մը ծամելով. այլ իբրև զԵսթեր լուռ լեզուաւ և մեծաբարբառ երեսներով՝ երբեմն կու մարէր երբեմն կու վառէր, աւելի ակնախտիղ քան զամենայն ջահափայլութիւն սաճարին: — Նոր տեսակ աննման ընթրիք մ'եղաւ այն օր. Վազգէն սրտէն վազրի պէս կու մռնչէր, ինք զինք կ'ուտէր և չէր կրնար ճիկ հանել. Շուշան իր դշխոյն՝ դիմացն բազմած՝ լռու-

թեամբ անդադար յանդիմանութեան տեղատա-րափ մը կու թափէր անոր և համախոհից վրայ. մինչև փութացան ընթրիքը չերկընցնել ելնել, և ամենքը իրենց տեղը քաշուեցան։ Նոյնպէս ըրաւ և Շուշանիկ։

## Զ

Իսկ քաջն Վազգէն՝ այն կըլլած թունահամ պատասխանները չմարսած, շրթունքը խածնելով, և թողլով իր Պարսկաստանէն բերած շամբուշ բամբշիկն այլ, կու փնտռէր զՇուշան՝ անոր սրբա-կապանաց մէջ. ոչ իբրև այն օրերը՝ որ իր բարե-յիշատակ հայրն Աշուշա բդեշխ՝ մտերիմ բարե-կամին Վարդանայ՝ փեսայացոյց զինքը թագաւո-րական փառօք Մամիկոնէից օրիորդին. և ոչ իբ-րև փքացեալ հսկայ մը՝ արեգնափայլ առագաստա-մանելով, այլ իբրև լախտաւոր անձնանի Հերա-կլէս, կամ կոպիտ գրաստավար մը, հաստ բրով մը հանդիպեցաւ հրեշտակափայլ հարսին, երբ ծառայից ձեռքով՝ գանել և բանի բերել տուաւ զնա. և փոխանակ տարաշխարհիկ պարգևաց, փո-խանակ պարսկային ծոցէն բերած բառոյ և մար-գարտոյ, անհնարին ծեծուփներ թափեց վրան, անխնայ և անխտիր. քարշանք մազերու և պար-կեշտ զգեստուցն, բռնցի աքացի հարուածք... (ամօթ, զզուանք մարդկութեան). մինչև յետին ծառայքն անգամ զզնելով և ցաւելով՝ վազեցին առ Ջոջիկ, որ փութացաւ եկաւ ջանաց գոցել այդ խայտառակ տեսարանը, ազատել զանմեղ աղաւնին դաժան վարուժանին ձեռքէն։ Բայց ճար չեղաւ. գազանացեալ մարդն՝ իր եղբայրն այլ սկսաւ աքացել քշել, և իբրև փայտահար յանտառի կ՚իջեցընէր հարուածները իր ոտքը ըն-կած անձին վրայ, հայհոյելով զնա և անոր հայ-

ըը, զհաւատքն այլ, զԱստուած այլ. մինչև ինքն յօգնելով և չուզելով մէկ հարուածով մ՚ այլ ձեռքին տակ սպաննել իր առաջին կենակիցը, հրամայեց որ քարշեն տանին ձգեն ուսկից որ բերին։

Երկրորդ առտուն ինքնին գնաց հոն, տեսնելու իր երեկուան Թափած կարկուտին արգասիքը։ — Շնորհագեղն Շուշան ջախջախեալ էր, կզակները կոտրտած, աչուըները արիւնալից. այլ ոչ բոլորովին միջաբեկ. դեռ ողջ էր։ Հրամեց Վազգէն որ հոն պահեն զնա զգուշութեամբ, և չԹողուն որ քովը մարդ երԹայ. ուրիշ բան այլ չտան իրեն՝ բայց միայն գարեհաց և ջուր, ինչուան որ մեռնի։... Իրմէ վերջը եկաւ հաւատարիմ գրաներէցն, իր աստուածահրաման պարտքն ընելու, չվախելով բռնաւորէն, ուսկից պահապանքն անգամ գանելով՝ Թող տուին քահանային. որ երբ մտաւ և այնպէս արիւնլուայ գետին փռուած տրորած տեսաւ տիկինը, պաշտօնը մոռացաւ, սկսաւ տղու պէս լալ. մինչև ինքն քաջասիրտ խոստովանողն Քրիստոսի սկսաւ՝ փոխանակ ընդունելու՝ տալ մխիԹարուԹիւն. «Մի
» լար, ասէր, ՚ի վերայ իմ. զի առանց հանդիսի և
» չարչարանաց՝ ոչ արդարանայ առաջի Աստու-
» ծոյ ամենայն մարդ. և ոչ շնորհք փրկչին՝ լքա-
» նէ Թողու զոք առանց ողորմուԹեան որք յու-
» սանն ՚ի նա»։ Ապա քահանայն այլ զնա մխիԹարելով՝ աղաչեց որ քիչ մը ուտելու բան առնու. Շուշանիկ հազիւ կրցաւ բերանը բան դնել. այնչափ ուժէ ընկած էր։

Քանի մը ամիս այսպէս անցաւ. վասն զի Վազգէն քաղաքէն հեռացեր էր. ուր նորէն դարձաւ աճապարանօք, լսելով որ երկրին վրայ Թշնամի կու գայ. ապահովուԹեան համար տղաքը Վրաստանի կամ Կովկասու ամուր կողմերը ղրկել ուզեց. Կուր գետէն անցնելու ատեն տղոց մէկն դի-

պուածով կամ դաւաճանութեամբ ընկաւ կորաւ, և մեծ սուգ պատճառեց բոլոր երկրին. միայն Շուշան էր՝ որ մօր պէս ցաւեցաւ, այլ քրիստոնէի պէս ուրախացաւ՝ որ տղայն ժամանակաւոր մահուամբ յաւիտենական մահուանէ ազատեցաւ, սուրբ հաւատքը չուրացած մեռաւ: Իսկ հայրն Վազգէն հեթանոսօրէն անյուսաբար կ'ողբար չարաչար. մինչև իր իշխաններէն զատ՝ Վրաց Թագաւորն և Պարսից կողմանէ դրուած մարզպանն այլ եկան զինքը մխիթարելու: Իսկ անզգամն խորամանկութիւն բանեցընելով՝ այն ատեն հեռացուց զՇուշան՚ի պալատէն, և հրամմեց որ երթայ եպիսկոպոսին ապարանքը՝ եկեղեցւոյն մօտ: Մեծ ուրախութիւն և բաղդ սեպեց զայս Շուշանիկ, և արդէն երկընէն ազատած սեպելով զինքը՝ իր աշխարհաձև զգեստն այլ փոխեց հոն, և հաւատաւորի խոշոր զգեստն հագաւ և օրհնեցաւ. կրկին նուիրական կենօք մեծ զուարթութեամբ անդադար աղօթից և բարեգործութեան կու հետևէր, ամենայն տեսողաց սիրելի և զարմանալի և գրեթէ պաշտելի ըլլալով: Այս լուրս կրկին բորբոքեց Վազգէնի սիրտը դիւաշունչ կատաղութեամբ. և երբ մեծամեծ հիւրերն քովէն գացին՝ յետ կանչեց զՇուշան, և պատուէր խաւրեց՝ որ թողու այդ ձևը և կերպը, և դառնայ գայ հնազանդի իրեն ու տիկնութիւնը վայելէ: Իսկ մեծահոգի նահատակն բացէ՚ի բաց մերժեց ամպարշտին հրաւէրքը. և այսուհետև մեր մէջ կապ չկայ ըսաւ, վասն զի դու թողեր զՔրիստոս, իսկ ես ա՛յլ աւելի կապուեցայ անոր հետ: Այս պատգամին հետ ղրկեց դարձուց Վազգէնի իր տիկնութեան նշանները, զարդերը, և ինչ որ անկէ ունեցեր էր. և գիտնալով անոր կատղիլը՝ պատգամը վերջացուց ըսել տալով. Թէ ինչ որ կ'ուզես ըրէ, «Ես պատրաստ եմ մեռանել, քան

» Թէ անցանել զաւանդութեամբն հարցն իմոց » ։

Այս արդար նախատանաց այլ չհամբերելով անարդար մարդակերպն, դարձեալ իր գիւղացա-նական լախտն ու բիրն առած՝ բազմութեամբ ծառայիցն վազեց խենթի պէս...։ Երկինք կայ-ծակները բռնեցին, երբ առանց սարսափելու մը-տաւ յեկեղեցին, լսելով որ հոն է Շուշան և ան-կից չիհեռանար. չպատկառելով ոչ յԱստուծոյ և ոչ 'ի մարդկանէ՝ սկսաւ սրբազան տաճարին մէջ այլ ծեծուփես քաշել աղօթող տիկնոջը. սոսկացան դանեցան տեսողք, գոյն առին գոյն տուին, բայց չհամարձակեցան բան մ'ընել. միայն Աստուծոյ պաշտօնեայն, քահանայ մը՝ համար-ձակեցաւ յանդիմանելու. Ի՞նչ սրտով, ի՞նչ ի-րաւամբ, ըսաւ, այդպէս չարաչար կու տանջես տիկինը ։ Անօրէն մոլին վերուց բիրը՝ իջուց սատակիչ կոփ մը քահանային վրայ այլ..։ Եր-կինք դարձեալ համբերեցին.. իսկ ժողովուրդն այս երկու սրբապիղծ յանդգնութիւնները տես-նելով, սկսաւ լալ և յերկին բողոքել. Վազգէն՝ ան-մեղ գառանց փարախի մէջ սոված գայլոյ պէս ընկած, որու որ պատահէր՝ զարնելով հրելով, փութացաւ իր ծառայից օգնութեամբ քարշել զՇուշան, հանել յեկեղեցւոյն, և նոյնպէս գետ-նաքարշ ընդ քար և ընդ տիղմ զգեստաբզիկ ա-րիւնլուայ ձգել յապարանքը. ուր մնացած ուժն այլ Թափեց խեղճին վրայ՝ ծեծելով և զգեստնե-րը պատռտելով առաջինէն աւելի. և այնպէս կի-սամեռ Թողուց. Ջոջիկ այլ հոն չէր որ ջանար ա-զատել հարսը ։

Յետ քանի մ'անգամ այսպիսի պժգալի հան-դիսից՝ Վազգէն հարկադրած ըլլալով իր երկրէն դուրս Հոնաց կողմը երթալու՝ վերջին դիւական և անլուր վրէժն այլ Թափեց Շուշանկան վրայ. ան-ձամբ բերելով զնա յՈւփրէթ՝ և այն երկքեր-

կաթեան շղթաները անցընել տալով ոտից, ձեռաց և վզին, անլուր լրբութեամբ իր կնիքն այլ անոնց վրայ զարկաւ, որ չհամարձակի մարդ մօտենալ և քակել. և այս յետին պատիւն ընելով իր ամուսնոյն՝ վերջին բարևն այլ տուաւ հայհոյելով անոր նախնիքը և սուրբ կրօնքը։ — Իսկ երանուհին այսպիսի կտտանաց մէջ այլ իր վսեմական սրտովն նախ գոհացաւ զԱստուծոյ, և ապա ուրախ եմ ըսաւ՝ Վազգենի, որ զիս Աստուծոյ սիրոյն համար այսպիսի կապանաց արժանաւորեցիր, որով քիչ ատենէն յաւիտենական ազատութեան պիտի հասնիմ. բայց քեզ վայ և աֆսոս՝ որ աստ հակառակ կապանք և հատուցմունք պիտի ընդունիս Աստուծոյ արդար դատաստանէն։ — Այն արդար և ահաւոր դատաստանին վճիռն էր Շուշանկան բերնէն ելածն. որ և այնպէս ազդու՝ այլ անօգուտ՝ զարկաւ Վազգէնի սրտին, որ չկարաց այս անգամ պատասխան տալ. և յուդայական յուսահատութե̃ մը հեռացաւ։

Երբոր վիշապին հետը հոտը ծածկուեցաւ, երեք օրէն հաւատարիմ դրանէրէցն՝ որ ձագակերոյս Թռչնոյ պէս ծառէ ծառ դարձ դար կու դիտէր իր խնամոց կարօտը, մտաւ բանտը. այս անգամ ուրիշ բան չկար ընելու, բայց ընկնալ պագնել տիկնոջն կարծր կապանքները և համարձակ երանի տալ անոր։ Իսկ առաքինի և աննման դուստրն Վարդանայ, միայն մէկ երանութիւն մ՚ունիմ, կ՚ըսէր, որ է այս երկաթներս, որ զիս կու սրբեն այնպիսի մարդու կենակից ըլլալէս, և անոր զաւակ ընծայելէս. ասոնք ըլլան վկայ առաջի երկնից և երկրի՝ որ իմ յօժար կամօքս Թողուցի ինչ որ աշխարհս ինծի կրնար տալ, և հանդերձելոց համար յանձն առի այս ցաւերս, որով յուսամ Աստուծոյ ողորմութեան և իր սրբոցը հասնիլ։

## Է

Այսպէս կեցաւ, այսպէս համբերեց Շուշան երկայն տարիներ Ուփրեթայ բանտին մէջ. միայն յետ շատ աղաչանաց Ջոջկայ՝ հազիւ զիջաւ Վազգէն անոր վզէն երկաթը վերցընել տալու. որով կրնար սուրբն քիչ մը հանգչեցընել գլուխը կաշիէ բարձի մը վրայ. բայց զայն ալ խնայելով կ՚ընէր. վասն զի ինքն ալ սկսաւ անգթանալ իր վրայ, իբրև թէ արտաքին ցաւն և կապն բաւական չըլլային. քունն ալ կու կարճեցընէր, որ աւելի ժամանակ ունենայ աղօթելու. գարեհացիկն և ջուրն ալ շատ կու սեղմէր, և ամբողջ շաբաթներ ծոմ կ՚անցընէր, միայն շաբաթ և կիրակի օր քիչ մը բան ծամելով յետ սուրբ հաղորդութեան, զոր հաւատարիմ դրանէրէցն անխափան կու բերէր. և կամաց կամաց ուրիշներն ալ համարձակելով սկսան գալ, աղօթք խրատ և օրհնութիւն ուզելու, ոմանք ալ առողջութիւն խնդրելու, և գտան ալ ուզածնին:

Սրբութեան, ճգնութեան ու հրաշից համբաւն սկսաւ տարածուիլ չորս դին. լսեց ինչուան Ճորայ պահակէն՝ իժականջ Վազգէնն ալ. և յետ չորս տարւոյ դառնալով իր երկիրը, առաջին հոգն եղաւ իր բանտարկեալը քննելն. և իմանալով որ մարդ մտած է ներս, պահապանաց մահուան ծեծ մը տալ տուաւ. և հրամեց առաջիններէն աւելի խըստութիւն ընել ու չարչարել զսուրբը: Բայց այնչափ երկար ատենուան փորձով աղէկ գիտնալով որ չարչարանք օգուտ մը չունին, ուզեց կախարդութեամբ ուզածին հասնիլ, նման Սաւուղայ. և տարի մը ջատուկ վհուկ կնկան ձեռքով աշխատելով՝ չկրցաւ բան մը շահիլ: Ամենէն զօրաւոր հնարքն և վրէժն՝ որ յիրաւի Շուշանկայ սկզբը

վեր 'ի վայր պխտի ընէր, ամենէն ետքը թողուց. — տղաքները ուրացընել, իրեն պէս կրակապաշտ ընել: Այս գառն գոյժս՝ ուսկից միայն այնքան ատեն կու գալար մայրն աղէգութ և բարեպաշտ, իր վեց տարուան երկաթներէն աւելի կորուկ եղաւ՝ կիսամաշ կեանքը բոլորովին մաշեցընելու: Այնուհետև աշխարհիս վրայ սրտի կէտ մը չունէր, և ոչ յանկարծական յոյս մը. վշտօք և ցաւօք շատ առաւել քան իր ընկերակից առաքինի համբերող կանայքը, անոնց՝ գոնէ ուշ բայց վերջապէս հասնող մխիթարութիւնն այլ չունեցաւ. յիրաւի ողբաց անոնց համար սրտառուչ վիպասանն, թէ « Բազում ձմերաց հալեցան սառնա-
» մանիք, եհաս գարուն և եկին նորեկ ծիծառունք.
» տեսին և խնդացին կենցաղասէր մարդիկ. և նո-
» քա ոչ երբէք կարացին տեսանել զանձկալին
» իւրեանց ». — սակայն յետ երկար շրջանաց՝ վերջ ունեցան այն բազում ձմերունքն այլ. և երբ յետ իբր տասներեք տարեաց անգամ մ'այլ եհաս գարուն և եկին նորեկ ծիծառունքն, ընդ կենցաղասէր մարդկան՝ խնդացին և ձխացին համբերող տիկնայքն այլ. վասն զի վերջապէս տեսան « զանձկալին իւրեանց... զցանկալի գեղ երե-
» սաց նոցա »: Այլ, ա՛հ, միայն Շուշանիկան չհասաւ գարուն. չեկաւ ծիծառն, չերևցաւ անձկալին. և ոչ « ծաղիկք գարնանայինք յիշատակեցին
» զպսակասէր ամուսին »: Շուշանիկ վեց եօթն տարի ոչ կանաչ գետնին ծոցէն ծլած ծաղիկ մը տեսաւ, և ոչ ծաղկի տեսութեամբ այլ կրնար անոնց պէս ցանկալի յիշատակ մը արթընցընել. իր ծաղիկն էր փուշ վշտաց, յիշատակն՝ ուրացող մը Աստուծոյ և ամուսնոյ: Անոնց՝ տուն տեղն դարձեալ նորոգեցաւ, մաքրեցան փոշոտեալ և ծխոտեալ սրահակք և սրսկապանք նորեկ հարսանցն, վերցուեցան սարդի ոստայնք առագաս-

տաց նոցա, կանգնեցան բարձրադահք տաճարացն, և ուղղեցան ապառք երախանաց նոցա· դարձեալ գալարեցան բուրաստանք ծաղկոցաց նոցա և որթք գինեբերք ծաղկեալ ետուն զհոտս իւրեանց· և սիրելիք հանդիպեցան իրարու ընդ ուռենեաւ և ընդ նռնենեաւ։ Իսկ Շուշանայ, ցորեկ, գիշեր, ամառ և ձմեռ միակերպ խաւար մը, կսկիծ մը, տխրութիւն մ'էր, հալումաշ յիշատակներ· որոց երկընցած անբերևոյթ թելը՝ միայն մահն պիտի կտրէր։ Ու արդէն մօտեցեր էր մահուանցուրտ մկրատն՝ այն մարգարտաշար ոսկէօղ առուը կենաց կապելին...։

Ը

Չարչարանաց եօթներորդ տարին խոնարհեցաւ շնորհակաթ Շուշանիկան գլուխն. լուսածարաւ աչքերուն դիմաց բոլորովին գոցուեցաւ աշխարհիս վարագոյրն. հանդերձեալ լոյսն սկսաւ զհոգին հրաւիրել։... Հաշտեցաւ մահաբեր հիւանդութիւնն. ամեն լաւ երանի կու տար անոր՝ որ կարենար տեսնելու այն հրաշալի նահատակը. բայց ամենքն չունեցան այս բաղդը. իշխանք և ազնուականք Վրաց և մերձաւոր Հայոց՝ փութացան յետին յարգանք մը մատուցանել իրենց լուս աշխարհի դժբաղդ դշխոյին. ամենէն առաջ հասաւ բարեսէրն Ջօջիկ՝ իր կնոջ հետ մեկտեղ. ընկաւ նախ երկրպագեց Շուշանկայ աղօթանոցին վրայի խաչափայտին. ապա սուրբ տիկնոջ ոտքը ընկաւ, զարկաւ գլուխը գետնի, լացաւ շատ. օրհնութիւն և մեղացը թողութիւն խնդրեց, և հազար կտոր եղած սրտով հեկեկանօք բանտին պատերը թնդացընելով յետ դարձաւ։ Եկաւ Սամուէլ եպիսկոպոսապետն Վրաց Մծխիթայ մայրաքաղաքէն, հանդերձ Յուրտաւայ գլխան Յով-

հան եպիսկոպոսով և քահանայիւք, որք շատ ան-
գամ եկեր և մխիթարեր էին զսուրբը. եւս առա-
ւել այն հաւատարիմ դշխոյին դրաներէց քահա-
նային որ ստուգիւ անոր մեծ և սուրբ սրտին խո-
րագոյն կրեցը հաղորդ էր, և յԱստուծոյ և իր ա-
գախինէն՝ շատ երկնաւոր վարձուց արժանի էր,
'ի փոխարէն այն զովարար մխիթարական բաժա-
կաց՝ զոր բանիւ աւետարանին ընծայեց իր տիկ-
նոջ և հոգևոր դստեր: Անոնց ամենուն այլ՝ տի-
կինն սրտառուչ շնորհակալեցաւ, իբրև իրեն ծնո-
ղաց և դայեկաց. շնորհակալ եղաւ և իր յետին
այցելութեան եկող մեծաց և մեծուհեաց և հա-
սարակ ժողովրդեան. աղօթեց և աղօթք խնդրեց.
օրհնեց և օրհնուեցաւ:...

Ամեն մարդկային օրէնք կատարեցան. մնաց
արդեօք ժառանգութեան խնդիրն. — յայտնի է
որ սուրբն իր խաչէն և աւետարանէն զատ կտա-
կելու բան չունէր. բայց մերձակայք և ժողո-
վուրդն՝ նախանձելի և ագահելի բաներ կու տես-
նէին. ամենքն մէկմէկէ աւելի կանչէին. Երկաթ-
ներէդ կտորիկ մը ինծի, շղթաներէդ օղակ մը,
խշաեկէդ յիշատակ մը ինծի հանէ, սուրբ տի-
կին:... Իսկ սուրբն, արդարև սուրբ, խոնարհ և
հեզ, պատասխանեց մարմըրած ձայնովը. Ես ար-
ժանի չեմ այդպիսի խնդիրներու. «Բայց կամք
» Աստուծոյ եղիցին, արարէք որպէս և կա-
» միք ». և յետին հրաժարական՝ ամենուն առ-
հասարակ օրհնութիւն տալով ըսաւ. «Ամենա-
» լին Քրիստոս լի արասցէ զձեզ հոգևոր օրհնու-
» թեամբ »: Ապա բազմութիւնը հեռացընելով,
ինքն այլ իր մէկ հատիկ մնացած երկրիս վրայի
բաղձանքը կտակեց եպիսկոպոսապետին և անոր
ուխտին. սակայն դեռ զայն այլ աքանչելի խոնար-
հութեամբ մը՝ յանձնելով անոնց կամաց. «Եթէ
» արժանի կու սեպէք զիս խնդրոյս, տարէք մար-

» մինս Թաղեցէք այն տեղ՝ ուր որ նախ առաջին » զիս քարշեցին » ։ Այս միայն եղաւ կտակ և փափագ Մ. Տուշանեան. հոն Թողուլ մարմինը՝ ուր որ զախկնութիւն, զփառք, զաշխարհ և զվայելս կորոյս այն մարմինն. և քարշանք, հարուածք, չարչարանք և վէրք սկսան՝ վասն հաւատոց և սիրոյն Աստուծոյ, և հոգևոր ախկնութեան հանդերձն պատրաստուեցան ։ Վարդանածին դշխոյն խնչուան 'ի մահ իր հայրենի մեծասրտութիւնը պահեր էր, հոգւոյն ամենայն վեհագոյն շնորհաց հետ ։

Յետ այսորիկ ամփոփելով զինքն յինքեան՝ արձակեց վերջին ձայն մը գոհութեան առ Աստուած, որ արժանի ըրաւ զինքն այդ չարչարակիր նահատակութեան, և աղաչելով ընդունել իր կարօտած հարց և սրբոց քով, խաչակնքելով աւանդեց հեզաբար զհոգին. որոյ նման հզօր և պայծառ՝ շատ քիչ ճանաչուած է յաշխարհի՝ տկարասեռ բնութեան մը մէջ ։

Բարեպաշտօն կանայք մեծ պատուով լուացին մաքրեցին պարկեշտ և մաշած մարմինը, աւելի տաք արտասուքներով քան անուշահոտ ջրերով. յետոյ երկու եպիսկոպոսունքն և քահանայք այլ խնկով և իւղերով զօծեցին. և բազմութեամբ ժողովրդոց, համարձակ պաշտօնով, իբրև նորէն Գուգարաց դշխոյն դարձընելով 'ի գահն, 'ի բարձրագոյն գահ, հանգուցին Ցուրտաւայ կաթուղիկէին մէջ. երեկոյի և գիշերի պաշտօնը կատարեցին. երկրորդ օրն՝ հանգստեան պատարագ իբրև սրբոց տօնահանդէս ։ Ապա վերցընելով սըրբահոտ մարմինը՝ տարին դրին իր փափագած տեղը, հոն՝ « ուստի զառաջինն քարշեցին ». և ուստի կու յուսար սուրբն՝ յետ դադրելու բոլոր կենցաղոյս ձմերուան, 'ի բանալ քրիստոսանորոգ գարնան նորոյ երկրի, պայծառ ծաղկի յարու-

թեան վերաքրուանիլ վերաթռչիլ ընդ առաջ երկնաւոր թագաւորին, և գրկել խառնիլ անբաժանապէս իր նախափառաւորեալ հօգւոյն հետ:

Այն ընտրեալ և սրբեալ տեղն եղաւ ժողովատեղի բարեպաշտ անձանց. Հայոց և Վրաց անուանի ուխտատեղեաց մէկն. ուր և յետ 500 ամաց՝ մեր պատմչաց մէկն այլ, Սեբաստիոյ եպիսկոպոս, վկայէ, թէ «դեռ ևս կան տեղեք չարչարանաց նահատակութեան նորա, և հանգստարան սուրբ և պատուական նշխարաց նորա. զոր մեր բազում անգամ երթեալ և համբուրեալ (է) զսրբութեան տեղին»[1]:...

## Թ

Եթէ դու այլ բաղդ ունենաս, Հայկակ, օր մը համբոյր տալ այն սրբութեան տեղեաց, մի մոռանար անգամ մ՚այլ Բողնեաց գետն 'ի վեր երթալով՝ հազարամեայ աւերակաց մէջ փնտռել Ուփրեթայ բուրճաբոյն բերդէն մամռապատ մնացորդները. նորոգէ մտօքդ, ոչ այնքան զնիւթական շէնքը, որքան անոր մէջ հանդիսացեալ զարմանուհին.— տես անգամ մ՚այլ՝ այն անուամբ,

1 Պատմիչ վարուց Շուշանկան, որ եթէ չէ իր դրաներէցն կամ Յովհան եպիսկոպոսն, ուրիշ ականատես ժամանակակից մը պիտի ըլլայ, Վազգէնի վրայ բան մը չըսեր յետ անոր որդւոցը ուրացընելուն. բայց յետագայ պատմիչք Վրաց կու հաւատեն՝ որ իրենց թագաւորն 'ի վրէժ անպարտ չարչարանաց և մահուան դշխոյին, յետ տարիներու՝ պատերազմի մէջ բռնեց զուրացող բդեշխն՝ Գուգարաց արևմտեան սահմաններուն վրայ, և ողջ ողջ կտոր կտոր ընել տալով, կտորներն այլ ծառոց վրայ կախեց 'ի նշաւակ տեսողաց և 'ի կերակուր գիշահաւուց. Պարսից թագաւորին այլ իմացընելով ինչ բանի համար ըրեր՝ անմեղադիր եղաւ:

բնութեամբ, արքութեամբ, Շուշանուվարդը. — տես զանիկ մէկ մ'իր փառաց արքունեաց գահուց մէջ, մէկ մ'այլ երեքերկաթեան կապանաց, որդանց և ձձեաց մէջ, անլոյս, անկերակ, անմխիթար թողած, յողբերս ընկած մարգարտի պէս. — համբէ անոր վերցամեայ վշտաց, մանաւանդ թէ ըստ հին պատմիչին աւանդման՝ զիւրաքանչիւր «զամ-
» րեաց կամ զամսոց կամ զշաբաթուց կամ զա-
» ւուրց և կամ զժամուց չարչարանս ». — Նկատէ այն մեծահոգի ծովատարած սրտին անզագար թաւալած աղէկտուր ալիքները. — և ապա դարձիր Նայէ վրադ:...

Ո՛վ ուժգոհ կենցաղասէր մարդիկ. ո՛վ անհամբեր դիւրախնդիր աշխնայք. ո՛վ փոքրոգի լծաբարձք Քրիստոսի. որք այդչափ դանդաղիք ձեր կենաց և կրից վրայ. գնացէք 'ի բերդն Ուփրեթայ և տեսէք զ'ՇՈՒՇԱՆՆ-ՎԱՐԴԵՆԻ:

# ԺԶ

# ԱՇՈՏ Ա

## ԵՒ ՀԱՅԱՍՏԱՆ ՀԱԶԱՐ ՏԱՐԻ ԱՌԱՋ

*Մայիս 27.*

## Ա

*Հայադիր օրացուցակն այսօր Թ դարուն քանի մը անձանց սրբազան յիշատակին մէջ՝ վեհագոյն կու նշանակէ զ՚ԱՇՈՏ ԲԱԳՐԱՏՈՒՆԻ։ Հազարամեան դար մը մեզմէ առաջ՝ նշանաւոր կէտ մ՚է մեր հայրենեաց պատմութեան մէջ. մեծ յեղափոխութեան մը միջոց, որ երկայն և ծանր տարիներ քշէց, բայց յաջող վախճան և արդասիք ունեցաւ. յայտ է թէ ոչ բաղդով, հապա ջանքով, աշխատութեամբ, չափով ու թուով. այսինքն խելքով, իմաստութեամբ, արիութեամբ, առաքինութեամբ։ 450 տարիէ վեր քաղաքական միութենէ ձեղքած քայքայած ազգ մը, և Հայուպէս ազգ, որ իրեք աշխարհակալ զօրաւոր տէրութեանց, Պարսից, Յունաց և Արաբաց, հազարումէկ փորձանքներէն անցեր էր տաշուելով ու մաշուելով, և դեռ կու տքար, մանաւանդ այդ եղքի ազգին ձիրանաց տակ. այդպիսի ազգի մը՝ կերպով մը դարձեալ մէկ քաղաքական ազգային*

գլխու մը միանալու, և այն գլխոյն վրայ այլ ար-քունի փառափայլ Թագ մը գնելու, և յետ այն-քան անյոյս գարուց՝ Հայոց արքայ ըլլալու, կամ ծածուկ աստուածային հրաշք մը պէտք էր, կամ յոյանի ԱՇՈՏ մը՝ այն ծածուկ հրաշքը իր բաղ-կայ, մտաց և սրտին մէջ ամփոփած, զոր և ըստ ժամանակին յերևան կու հանէր: Ցիրաւի սա բաղմաց անկարելին նաև անկարծելին՝ 'ի գլուխ տարաւ, հաստատեց, 30 տարի աշխատելով. ոչ այնքան սրով և աղեղամբ, (թէ և նոյն տարինե-րուն մէջ ինքն էր Հայ հայրենեաց առաջին զինա-կիրն և անձնապահն այլ), որքան խոհեմ մտքովն, և թերևս անկէ այլ աւելի՝ զգայուն և տաւատ սըր-տովն, որոց դէմ չկրցան կենալ ոչ արտաքական փառնութիւն, ոչ բիւզանդականնրբութի, և ոչ աղ-դային նախանձ և ինքնակամութին. ամենքն այլ հա-ճեցան հաւանեցան սիրեցին զԱշոտ: Ամիրապետն Բաղտատայ՝ անոր յանձնեց բոլոր Ատրպատա-կանի, Միջագետաց և Կովկաս լերանց միջոց եղած երկրին վերակացութիւնը, և խաղաղութեան պա-տասխանատու ըլլալը. կայսրն Կ.Պոլսոյ՝ 'ի մէջ ամենայն Թագաւորաց և իշխանաց ժամանակին՝ որոց հետ վերաբերութիւն ունէր, ըստ մեծու-թեան՝ յետ խալիփայից՝ զԱշոտ կու ճանչնար մեծապատիւ ազգիշխան, և ըստ սիրոյ՝ առաջին Որդի կոչելով զնա իր Թղթոց մէջ. իսկ ազգային իշխանք՝ նաև անկամք՝ զնա ճանաչէին նախիշխան և միայն Թագաւոր:

Ազգի մը նոր գլխապետ ըլլալ կամ ազգ մը կանգ-նել յինքնիշխանութիւն՝ մեծ յաջողութիւն կամ մեծ ճարտարութիւն կու պահանջէ. և 'ի հարկէ այս ձիրքերս ունէին որոնք որ այսպիսի գործ կա-տարեցին. այսպէս և մեր Աշոտն: Բայց իրեննը-մանն դժուար պարագայից մէջ ըլլալով և այնքան խոհեմութեամբ, զգաստութեամբ և ազնուաքա-

րոյութեամբ վարուող՝ շատ քիչ կու գտնուին ազգայարոյց և ազգակեցոյց ըստուած անձանց մէջ այլ: Թողլով օտար ազգաց պատմութիւնները, մեր պատմութեան մէջ այլ Աշոտէն առաջ և վերջը քանի մը անգամ գիտենք՝ Հայոց ինքնագլխութիւննին կորուսանելը և նորէն ձեռք բերելը, 'ի ձեռն քաջ և հայրենասէր և երբեմն և փառասէր անձանց. քիչ շատ ծանօթ են Հայկն, Արամ, Պարոյր, Տիգրան, Ջահրատ, Վաղարշակ, Տրդատ, և յետ Աշոտոյ՝ Գագիկ, Ռուբէն, Լեոն. Թողունք աւելի անծանօթները, որ 'ի զանազան ժամանակ և տեղի տիրագլուխ թագաւորութիւն կանգնեցին: Ազգին պատմութիւնը գիտցողն գիտէ նաև ասոնց ինչ կերպով այդ տիրագլխութեն հասնիլը. ոմանց՝ բռնլով (ինչպէս Վաղարշակ), ոմանց քիչ մը բռնութեամբ այլ, ինչպէս Ռուբէն, ոմանց լոկ փառասիրութեամբ՝ ինչպէս Գագիկ Արծրունի. ոմն խորագիտութեամբ, ինչպէս Լեոն, և գրեթէ ամենքն քաջութեամբ և պատերազմօք. այլ միայն Աշոտոյ թագաւորութիւնն ասոնցմէ տարբեր և աւելի փառաւոր կ'երևի. մէկ մը որ՝ ուրիշներուն թագաւորութիւնն կամ տիրապետութիւնն, եթէ բռնութեամբ և բաղդով այլ չէր, գոնէ կէս պատրաստուած էր առաջիններուն ջանքով, իսկ Աշոտոյ պատրաստողն՝ գրեթէ իր արդիւնքն էր. մէկ մ'այլ որ ուրիշներն թագաւորութեան փափագեցան, ջանացին, իրենց ազգին վրայ կանգնեցան. Աշոտ գրեթէ առանց փառքը գիտելու՝ հասաւ իշխանութեան. միայն ինքն ընտրուեցաւ և կանգնեցաւ ազգային հաճութեամբ. և ոչ ազգին ռամկին, կամ իրեն հպատակաց հաճութեամբ, ինչպէս ուրիշներէն շատն, հապա իրեն նման ցեղապետաց և աշխարհատեարց հաւանութեամբ: Այս բանս կու ցուցընէ ընտրուածին մեծ կատա-

թեղութիւնն, ընտրողաց այլ մեծ առաքինութիւն. որ գժբաղդաբար սակաւադէպ եղած է այնպիսի ազգի մը մէջ, որուն բնական՝ երկրին ձևն ու դիրքըն, ձորերն, լեռներն ու գետերն անգամ՝ զատուութիւն և իրարմէ անկախութիւն մը կ'ազդէին բնակչացը։ Հոս անկարելի է ենթադրել մեր հազարամեայ իշխանաց և նախարարաց վրայ այնպիսի առաքինութիւն, առանց ենթադրելու Աշոտոյ մեծագոյն կատարելութիւնը. և յիրաւի ով որ մեր վերոյկարգեալ ազգային արքայից տիրապետաց վարքը ուշի ուշով քննէ, կարծեմ չի կրնար գտնել առաքինի մը իբրև զԱշոտ. միայն Վաղարշակ կրնայ այս պատուոյս արժանի սեպուիլ, բայց իր օտար ծագումը, և բաղդով թագաւոր ըլլալը (Թողունք դիցապաշտութիւնն այլ), մեզի այնչափ սիրելի չեն ընծայեր զինքը, որչափ երախտաւոր մեր հին հարանց պատմութիւնը գտնել և պահել տալուն համար։ Երջանիկ նա, մանաւանդ թէ մենք, որ գտուեցաւ այն ատեն իր և մեր բաղդին յարմար՝ Աբաս Կատինա մը, որ մեր Հայկազանց պատմութեան պատճառաւ՝ զինքն այլ անմահացուց. ինչպէս որ իրմէ ետքը անոր գրուածքը առաջին կարգացող և նորոգողն Ագաթանգեղոս այլ անմահացուց իր ժամանակի ազգակեցոյց Տրդատը. իսկ անոր վերջին կարգացող և հայերէն հաւաքողն՝ Մովսէս Խորենացին՝ երբ Վաղարշակայ թագին և ցեղին ընկնալը և վերջանալը լալով աչօք տեսաւ, զո՞վ կրնար անմահացընել... — զԲագրատունին Սահակ, զնախահայրն Աշոտոյ. «Անմահ 'ի յիշատակ թողուլ քեզ զայդ » (Պատմութիւն Հայոց) և որ զկնի քո գալոց » են ազգք »: Մար Աբաս, Ագաթանգեղոս, Մովսէս, իրեք աննման անձանց համար գրելով, թերևս անոնցմէ աւելի զիրենք, իրենցմէ այլ աւելի անմահացուցին զազգս Հայոց...:

Բայց զԱշոտ ո՞վ անմահացընէ։ Չունէ՞ր, չպըտա՞ւ ինքն այլ Աբաս մը, Մովսէս մը, որ իր թէ քաջութիւնները թէ լաւութիւնները մեզի ճառէին։ — Ունէր, այո՛. և յայսմ ես՝ ըստ մասին՝ բաղդաւոր քան զառաջինսն եղաւ. վասն զի գտաւ ոչ միայն ազգային՝ այլ և ազգական մը, Թոռնակից մը, զԲագրատունին Շապուհ, որ բոլոր իրենց ցեղին պատմութիւնը գրեց 'ի պատճառս իր համշիրակին. դժբաղդ մենք եմք, որ դեռ այս Բագրատունեաց պատմութիւնը չեմք տեսած, և ԺԴ դարէ վերջ կարդացող այլ չեմք գիտեր, թէ և անյոյս չեմք օր մը յերևան ելնելուն։ Այդ փափագելի գրուածդ՝ անշուշտ ոչ Աբասայ և Մովսէսի գրուածոց չափ հետաքննական պիտի ըլլայ, և ոչ Ագաթանգեղոսին պէս վայելչաբան, որովհետև ժամանակակից անուանի պատմիչ մ՚այլ, պերճաբանն Յովհաննէս կաթուղիկոս, կ՚ըսէ անոր համար. «՛Ոչ կարացեալ ըստ քերթողական
» հրահանգացն համառօտաբար ընձեռել, սակայն
» ըստ իւրում ժամանակի ընտանի գոլով նորա
» զըրոյցացն ամենայնի, գեղջուկ բանիւ բաւական
» քեզ տայ պատճառս տեղեկութեան»։ Սակայն մեր հոս փնտռածը՝ չէ քերթողութիւն, այլ պատմութիւն, տեղեկութիւն ընտրեալ անձին՝ որոյ վարքը «'ի մանկութենէ մինչև յերևոյթս երի-
» տասարդութեան... զզօրութիւնս և զքաջու-
» թիւնս և զպատերազմունս, և զհրոսմունս 'ի
» յայլս, և զայլոց ես 'ի նա,... յայտապատում
» արարեալ է (և) զզրոյցս պայազատութեան
» Աշոտոյ,... զիշխանական պատմութեան և ըզ-
» թագաւորացն զհանգամանացն զկարգս», և այլն, մանրամասն գրեր էր Շապուհ. վասն այնորիկ կաթուղիկոսն անոր կու խրկէ փափագողը, և ինքն միայն թագաւորութենէ վերջին դիպուածները համառօտիւ կու յիշէ։ Եւ որովհետև անկէ

զատ ուրիշէ մ'այլ գրուած չունիմք, ըսել է որ
այս արժանաւոր անձին կատարեալ պատմու֊
թիւնն անծանօթ է մեզի. բայց որչափ այլ որ
ցաւալի է այս՝ այնչափ այլ ցնծալի՝ որ մնացած
քիչ տեղեկութիւնքն այլ աւելի զօրաւոր վկայ
կ'ըլլան անոր մեծութենը։ Եթէ Շապհոյ գրածն՝
թէ իրեն և թէ Աշոտոյ պարծանք կրնար սե֊
պուիլ՝ աննախանձաբար ազգակցին պատմութիւն
ըլլալուն համար, թերևս ուրիշ կողմէ՝ իբր ազ֊
գակից՝ կողմնասէր կամ շողոքորթ կարծուէր.
բայց կաթողիկոսն որ իր ժամանակին դէպքերը՝
թէ վայելչաբար և թէ անկողմնասիրութեամբ
գրած է, որչափ այլ զգուշացեր է Շապհոյ պատ֊
մածը չկրկնելու համար՝ Աշոտոյ վրայ խօսելու
ատեն, չէ այլ կրցած համարմունքը, զարմանքը,
բանէ թէ և սէրն այլ՝ զապել ու չըսել. «Ինձ ան֊
» տանօր ոչ արդեօք այլ ինչ է բանս սիրելի՝ քան
» թէ դեգերիլ 'ի բանս գովեստից, որ վասն Աշո֊
» տոյ իշխանին իշխանաց են հետևմունք։ Վասն
» զի 'ի սոյս հասեալ միջակութեան, քաջահա֊
» սակ էր նա և անձնեայ և թիկնաւէտ և զուարթ֊
» երես և մրայօն, նկարէն խիտ և նիշ յաչս ու֊
» նելով, որպէս գյակինթ կարմիր 'ի մէջ մարգար֊
» տի ծագեալ, և վայելչացեալ գեղեցկութեանն
» ալեօք. մեծիմաստ և քաղցրաբան, և առ կերա֊
» կուրս խրախճանաց ոչ խանդացեալ նորա ընդ
» լաւագոյնսն և ոչ արհամարհեալ զնուաստա֊
» գոյնսն. այլ հասարակաց 'ի վերայ տարածէր
» զզգեստ խնամոց իւրոց, և ըծակօք իւիք կշռէր,
» նախ զիւր և ապա զամենեցուն կենցաղս. միան֊
» գամայն իսկ ասել, եթէ որ ինչ մարդկութեանս
» էր պիտանի՝ ոչ ինչ կասեցուցանէր»։

Ուրիշ ժամանակակից պատմիչ մ'այլ, (Թով֊
մաս) որ այնչափ Բագրատունեաց կողմնակից
չէր, Արծրունեաց տունէն ըլլալով, և որուն գիւց֊

ազն էր Գագիկ, չէկրնար չըսել Աշոտոյ համար
աւելի մեծաքանութեամբ, թէ « բարձրագոյն
» և հանճարեղագոյն էր քան զբնաւ Հայաստա-
» նեայս, և զընդհանուր կացեալսն 'ի ներքոյ երկ-
» նից ». որ է, ըստ մեր հեղինակին, քան զա-
մենայն Հայ և քան զամենայն մարդ (ժամանա-
կակից) աւելի խելացի և մեծահարկի:

Անուանին Փոտ պատրիարքն Յունաց կոչէր
զԱշոտ՝ «Քաջայայտ բարեպաշտութեամբ, հզօ-
» րագոյնդ Ճոխութեամբ, բարձրագոյնդ 'ի հոմա-
» սեռս »: Յիշեալ պատմիչներէն քիչ ետքն ե-
կող խոհական պատմիչն Ասողիկ՝ կ'ըսէ վասն Ա-
շոտոյ, յետ յիշելոյ իր յաղթութիւնները. «Էր
» այր քաղցր և հեզ, և անարատ և անբամբաս
» կեանս կեցեալ, և ոչ անօրինեալ արտաքոյ օ-
» րինաց բնութեանն, և հաճոյ էր Աստուծոյ յա-
» մենայն վարս անբիծս »: Թողունք յետագայ
պատմչաց և ամենայն զինքը յիշողաց միաբան գո-
վութիւնը և յարգութիւնը, որոց նման քիչե-
րուն տուած են իրմէ առաջ կամ ետև, կամ թէ
և ոչ մէկուն. վասն զի դժար է նմանը գտնել բո-
լոր բարեմասնութիւնքը մէկտեղ բերելով. վայ-
ելչութիւն, քաջութիւն, հանճար, կրօնասիրու-
թիւն, աշխարհաշինութիւն, սիրտ շահել, ազգը
պատուել և փառաւոր ընել, հին քաղաքական
կարգերը նորոգել, եկեղեցեաց պայծառութեան
և ուսման զարգացման օգնական ըլլալ, ցանկալի
խաղաղութեամբ, զոր վայելցուց թէ ազգին և թէ
սահմանակցացն, յետ այնքան դարերու անհան-
գըստութեանց, խռովութեանց և կասկածանաց.
և ազգային ինքնագլխութեան հետ՝ Հայոց մտա-
ւոր, գրական և արուեստական ոգին այլ նորէն
կանգնել: Ինչ որ ըստ այս մասանց՝ երեք դարե-
րու մէջ (Ժ, ԺԱ, ԺԲ), շինութիւնք և բարգաւա-
ճանք եղան, նախ Մեծ և ապա Փոքր Հայոց մէջ,

ամենքն այլ պարտական են Աշոտոյ Ա, որ իրաւամբք Մեծ լռուեցաւ. և ոչ միայն թագաւորութեամբն այլ արգեամբք և արժանեօք՝ իր ամենոյն անուանակցաց մէջ Առաջին: Վերոյիշեալ հեղինակաց վկայութիւնքն և պատմութեանց դէպքն (զոր յետոյ տեսնենք), ամփոփելոց և կայսերաց պատուագրութիւնքն, սահմանակից ազգաց և պետութեանց պատկառանքն, ազգային նախարարաց և իշխանաց մեծարանք և հպատակութիւնն՝ տարակոյս չեն թողուր. որ ասկէ առջի հազարամեան դարէգարձին՝ Հայաստանեայց մէջ նա էր ամենէն երևելի անձն, կամ ճողչրագոյնն 'ի հոմանէտս, ըստ Փոտայ և Թոմմայի:

Իսկ իմ այս բանս յիշելս և կրկնելս առ քեզ, Հայկակ, ոչ այնքան ժամանակի կարգին բերելէն է, որքան այսպիսի արժանաւոր անձի մը բաւականապէս ճանչուած չըլլալը. Տիգրանք, Տրդատք, Վռահանք, Վարդանք՝ բռնած են մեր ազգասիրաց միտքը. արժանապէս. բայց Աշոտոյ այլ տալու է իր տեղն, անոնց կարգին վրայ. ես հոն կը դնեմ. դու եթէ գտնես իրեն մեկենասը՝ զՇապուհ պատմիչ, կրնաս թերևս նոր կարգի դասաւորութիւն ընել: Առ այժմ մնացեալ պատմչաց յիշատակներէն հաւաքեմ Աշոտոյ կեանքը. զոր լաւագոյն ես ճանչնալու համար՝ պէտք է նախ ճանչնալ անոր ցեղը, զԲագրատունիս, մանաւանդ Հայոց անիշխանութեան ատեն. մէկ մ'այլ պէտք է ճանչնալ այն ատենի (Թ դարու) Հայաստանի և անոր մերձաւոր ազգաց քաղաքական վիճակը, ևս առաւել երկու աշխարհակալ իշխանութեանց, Յունաց և Արաբացւոց, որոց բաղդն կամ կամքն կը շարժէին զՀայս և բոլոր Ասիոյ արևմտեան մասը:

# Բ

Բագրատունեաց ցեղին ծագման վրայ երկու գրութիւն եղած է. մէկն բուն 'ի Հայկայ և յԱրմենակայ զաւակաց կու համարի զայն. բայց ըստ Խորենացւոյ՝ այս բանս ըսուած է « անհաւատարիմ » մարդոց, ըստ յօժարութեան և ոչ ըստ ճըշմարտութեան ». մէկն այլ իր ըսածն, զոր Վիրք և Յոյնք [1] հաստատեն. որ է՝ 'ի Հրէից ծագումն, և ըստ Վրաց՝ բուն Թագաւորական Յուդայի և Դաւթի ցեղէն. որոց Նահապետն կամ Նախահայրն 'ի Հայաստան եկաւ Շամբա կամ Սամփատիա անուամբ իշխանն, զոր Հրաչէ հայկազն թագաւորն մեր նիզակակից Նաբուքոդոնոսորի՝ 600 տարի Քրիստոսէ առաջ՝ բերաւ յԵրուսաղեմէ իբրև գերի. բայց պատուոբար և իշխանաբար բնակեցուց Հայաստանի արևմտեան հիւսիսային կողմերը. գլխաւոր տեղ տալով անոր՝ Սպեր գաւառը. ուսկից ոմանք դէպ 'ի հիւսիս՝ Եգերաց և Վրաց կողմերը սփռեցան, ոմանք դէպ յարևմուտս և հարաւ, Փոքր, Բարձր ու Դ Հայոց կողմերը, թերևս ինչուան 'ի Կապադովկիա, ուր Բագափէճան [2] գաւառ յիշուի. վասն զի առաջ այս ցեղին սովորական եղած Բագրատ անունն այլ Բագափէտ էր, ինչպէս որ Սմբատն այլ Շամբատ կամ Սամփատիա: Իսկ այս նոր անուններն առին՝ երբ Քրիստոսի դարուններէն քիչ տարի առաջ բանադատուեցան յԱրշամայ թագաւորէ Հայոց, և շատերն ուրացան հրէական կրօնքը. իսկ ո-

1 Կոստանդին Պերփիւռօծէն :

2 Խորենացին յաշխարհագրութեան Պոլեմոնեան անուանէ, 'ի մասն Փռիւգիոյ :

մանք հաւատարիմ մնացին, ինչպէս իրենց հայրերն այլ՝ բովանդակ Հայկազանց իշխանութեան տակ, որք աւելի ուղղահաւատ և ներողամիտ էին քան զԱրշակունիս:

Ասոնց թագաւորութեան սկիզբը՝ իբր 150 տարի նախ քան զՔրիստոսի թուականն, երբ Վաղարշակ մտաւ թագաւորելու 'ի Հայս, հրէական տոհմին ազգապետն՝ Բագարատ՝ առաջին եղաւ ողջունելու զնա թագաւոր, և շատ ընծաներէն զատ՝ իր մէկ ազնիւ աղջիկն այլ ընծայեց 'ի կնութիւն նորընտիր թագաւորին Հայոց. թագաւորն այլ այս բանիս փոխարէն՝ զաներն ընտրեց իրեն Թագադիր, և երկրորդ թագաւորութեան. միանգամայն և Ասպետ, այսինքն Հայոց ձիաւոր զօրաց գլուխ, որ ըսել է գրեթէ բոլոր բանակի սպարապետ, և առանձինն արևմտեան զօրագնդին (11 կամ 21,000 զօրաց) գլուխ: Այսպէս մէկ դործով, հրէական աչալրջութեամբ և շողոքորթութեամբ՝ Հայոց հին և նոր տոհմից մէջ առաջնութիւնը առաւ Բագրատունին, ամենէն ազնիւ և մեծիշխան սեպուեցաւ [1]: Այս պատիւս և իշխանութիւնս ժառանգական մնաց իր տոհմին մէջ ինչուան ետքը. թէ և քիչ մը ժամանակ՝ ոմանք յազգապետացն զրկուեցան, (մեր թագաւորաց անհաւանութեամբն, կամ սխալելովն կուռք պաշտել). բայց այն իրենց ազգային ճկուն բարքն և յօժարամտութիւնն 'ի ծառայել, միշտ իրենց տէրանց սիրտը կու շահէր. և կ'երևի թէ Հայկազանց ժամանակ այլ մեծ պատիւ ունէին, և հաւանօրէն նոյնպէս արևմտից կողմնապետ էին: Մեծին Տրդատայ և իր թոռանց գահակարգութեանց մէջ այլ՝ յետ Հայկազանց և Պարթևաց

1 Ստեփաննոս Ուռպելեան. «Շնորհէ նա ունել զնախնականն բարձ 'ի վերոյ քան զամենայն»:

Թագաւորական տոհմից՝ առաջին գահն էր Բագրատունեաց կամ Ասպետաց. Նոյնպէս գրուած էր Արշակունեաց Թագաւորութենէն վերջն այլ Պարսից գահնամակին մէջ. միայն այս ատեն Սիւնեն առաջին դրուեցաւ 'ի պատճառս մարզպանութեան Վասակայ: Արշակունեաց վերջին Թագաւորաց հետ խնամութիւն այլ ընելով Բագրատունիք՝ այլ աւելի ազնիւ և նախապատիւ եղան:

Պատուոյն հետ Բագրատունեաց սահմաններն այլ ընդարձակեցան. և այն հալածող Արշամայ ատեն իսկ բնակեցան ոմանք յԱյրարատ Թագաւորական նահանգին մէջ, ուր և առաջին դարուն ետքերն Արտաշէս Ա. իր խնամակալ բազմարդիւն սպարապետին Այրաքայ Սմբատայ՝ տուաւ Կոգովիտ գաւառը, Այրարատ լերանց ստորոտը, ուր շինեց նա զԲագարան աւանն. յետոյ շինեցաւ Դարոյնք բերդաւանն, և եղաւ իշխանանիստ և դերեզմանատուն Բագրատունեաց, զոր իբրև տուն և քնարան նախնեաց՝ պատուէին ազգապետքն ինչուան 'ի Ժ դար Քրիստոսի, և դեռ ոմանք հոն Թաղուէին: — Ը դարուն վերջերը՝ մեր մեծ Աշոտոյ պապն՝ Արշարունեաց երկիրը՝ կամ Երախաձորը՝ գնեց 'ի Կամսարականաց, Շիրակայ հետ, որ քիչ ատենէն իրենց ցեղին Թագաւորաբնակ տեղն եղաւ: Տարօնոյ երկրին այլ կ'իշխէին Բագրատունիք նոյն ատեն, բայց ինչ կերպով զանիկայ 'ի Մամիկոնեից առնուլն՝ մեզի յայտնի չէ: Անկէ այլ հեռու, Մոկաց երկրին իշխանն այլ՝ Բագրատունի էր այս ժամանակներս (Թ դարու մէջ). ըսել է որ Հայաստանի միջին ազնուագոյն այրարատեան Թագաւորական երկիրները՝ և մասամբ հարաւային Հայք այլ քիչ քիչ Բագրատունեաց ձեռքն անցան: Բայց այսչափ միայն չէ. հապա մնացեալ արևելեան երկու մեծ աշխարհաց կամ ցեղից, այսինքն Արծրունեաց և Սիւնեաց

հետ այլ խնամենալով՝ կերպով մը անոնց վրայ այլ նախերիցութիւն ունէին Բագրատունիք, գոնէ մեր Աշոտն, որ այն երկու մեծապատիւ ցեղից ազգապետաց աներ և հայրագիր էր։ Իսկ հիւսիսային Հայոց և սահմանակցաց, գրեթէ ծայրէ ծայր Սև ծովուն եզերքէն մինչև Կազբից ծովուն եզերքը՝ հայ ու վրացեզու մեծ իշխանք և թագաւորք՝ 'ի Բագրատունեաց էին Թ-ԺԲ դարուց մէջ. սկսեալ 'ի Համշէնու ու Սպերու երկրէն, (որ Բագրատունեաց բնագաւառն էր 'ի Հայս), Տայոց տէրն՝ որ կիւրապաղատ կ'ըսուէր յունական պատուով, Կղարջաց և Գուգարաց տեարքն, Ափխազաց կամ Եգերաց թագաւորն, Վրաց թագաւորն, Կախեթոյ թագաւորն, Ձորոյ գետոյ և Աղուանից ըսուած թագաւորք, և թագաւորքն Հայոց։ Վրացեզու Բագրատունի իշխանաց սկիզբն եղաւ յ'Ը դարու, 'ի Հայոց հոն անցնելով ոմանց, թէ և Վիրք չեն ուզեր ընդունիլ զայս, և կ'աւանդեն թէ Երուսաղեմէն եկած է իրենց ցեղապետն Զ դարուն վերջերը։ Իսկ արեւմտեան կողմերը՝ Սպերէն անդին Փոքր Հայոց մէջ այլ Աշխարհաբերդու (Ագշէհրօվա) սահմաններուն՝ այս տեղններս կը տիրէր Բագրատունի մը, Գրիգոր Իշխանիկ անուն, որ Յունաց ձեռքէն ուրիշ տեղեր այլ առաւ։ Այս դարերուս և կողմերուս պատմութիւնը քննողին՝ յիրաւի մեծ զարմանք պիտի բերեն այսպիսի դէպք. և գրեթէ ուրիշ տեղ մ'այլ տեսնուած չէ մէկ իշխանական տոհմի մը՝ այսպէս լուիկ մնջիկ այսքան ընդարձակ և զանազան աշխարհաց իշխանութիւններ ձեռք բերելն՝ առանց բռնակալութեան. և կու ստիպուի հաւատալ մարգարէութեան Խորենացւոյ, ինչպէս ինքն այլ կու հաւատար Աստուծոյ առ Աբրահամ ըսածին. «Եւ Բագրատունւոյդ ասեմ, յի»շելով զբան իւր (Աստուծոյ), եթէ թագա-

» ւորք ազգաց 'ի .քէն ելցեն, և թագաւորք 'ի » Դուրին[1] »:

Դադարելով նորէն իրենց իշխանական պայազատութեան, Արշակունեաց տէրութեան վերջերը՝ ըստ հին սովորութեան՝ իրենցմէ էր սպարապետն Հայոց. որ երբ մեռաւ, Ս. Սահակ հայրապետն՝ իր դստեր խնդրանօք՝ անոր որդին իր Թոռը Մամիկոնեան իշխանը (զՄեծն Վարդան) դրաւ. բայց յետ նահատակութեան նորա՝ իր յաջորդն Վահան և ուխտապահ Նախարարք՝ Բագրատունեաց գլխաւորին՝ Սահակայ ասպետի տուին Հայոց ազգապետութիւնը, որ այն ատեն կ'ըսուէր Մարզպան: Անկէ ետև դար մը (Զ դար), դար Պարսից և Յունաց հակառակութեան, Բագրատունիք գրեթէ չեն յիշուիր պատմութեան մէջ, այլ աւելի Մամիկոնեանք և ուրիշ ցեղերէ նախիշխանք. բայց նոյն դարուն վերջը Սմբատ Բագրատունի՝ նորէն կու կանգնէ ցեղին անունը և փառքը, գրեթէ թագաւորական պատիւ գտնելով Պարսից արքային շնորհքով, վասն քաջութեանց իւրոց, և Վրկանայ մարզպան կ'ըլլայ, Հայոց մէջ այլ իբրև նախիշխան. որուն նոյն պատուով յաջորդեցին՝ որդին Վարազտիրոց, և Թոռն Սմբատ, մինչև 'ի կէս Է դարու. յորում Արաբացիք վերուցին Պարսից Սասանեանց Թագաւորութիւնը, և մտան 'ի Հայաստան: Հօս այլ Բագրատունեաց ազգապետն և Հայոց նախիշխանն Սմբատ՝ իր նախնեաց քաղաքագիտութիւնը բանեցընելով՝ կամովին հնազանդեցաւ Արաբաց անդիմակաց իշխանութեան,

1 Թէ և զԴուրին այլ երբեմն առին Բագրատունիք, բայց իրենց Թագաւորական աթոռն չեղաւ հոն, այլ ոչ այլ շատ հեռու այն կողմէն: Աշոտոյ որդին Սմբատ Թագաւորն հոն նահատակուեցաւ. և այնով կ'ըսէ պատմիչ մը, Խորենացւոյն գուշակութիւնն կատարեցաւ:

և մնաց իր պատուին մէջ. այս քաղաքագիտութիւնս բանեցուցին իր յաջորդքն այլ, մեծաւ մասամբ, ինչուան մեր Աշոտն այլ, և այնպէս յաջողեցան զՀայաստան 'ի խաղաղութեան պահել և զիրենք յիշխանութեան, հաճութեամբ թէ ազգին և թէ ամիրապետաց. իսկ երբ մէկ կամ մէկայլ կողմէն անհաճութիւն եղաւ՝ Հայաստան գրեթէ միշտ վնասուեցաւ: Մէկ խօսքով և տեսութեամբ, յետ վերցուելու Հայոց ինքնագլխութեան՝ Արշակունեաց թագովը, ազգային բաղդն կամ վարչութիւնն սահմանուած կ'երևի 'ի ձեռս Բագրատունեաց մինչև ց'ԺԲ դար, կամ 800 տարուան միջոց, յորում՝ իբրև դար մի միայն Մամիկոնեանք փայլեցան:

Վերոյիշեալ բազմայաղթ Սմբատէն սկսեալ (Զ դարուն վերջէն) ինչուան 'ի Մեծն մեր Աշոտ 'ի կէս Թ դարու, 260 տարի, գրեթէ անընդհատ կը յիշուին Բագրատունեաց գլխաւորքն իբրև տան ազգ, Հայոց իշխանապետք և սպարապետք պատուով. յԱշոտոյ Մեծէն այլ սկսեալ՝ 200 տարի՝ այլ աւելի պատուով՝ իբրև Նախիշխան և Թագաւոր Հայոց կու տևէ պայազատութիւնն. անկէ այլ ետև դարձեալ 200 տարւոյ չափ՝ ցեղին պայազատութիւնն կու մնայ փոքր թագաւորութեանց մէջ (ց'կէս ԺԳ դարու): Իսկ Վրաց և Իմերէթի մէջ ինչուան այս դարուս սկիզբն կար Բագրատունի թագաւորութիւն, և ինչուան այս օրս թագաւորական սերունդք և իշխանազունք Բագրատունիք, որ Ռուսաց կայսրութեան մէջ՝ արքայազանց և զօրապետաց պատիւ և իշխանութիւն ունին հիմա այլ. և Եւրոպայի, գուցէ բոլոր աշխարհիս ազնուական տոհմից մէջ ամենէն հնագոյնն և ազնուագոյնն է Բագրատունեաց ցեղն՝ 2,500 տարուան հնութեամբ (կամ 3,000 ըստ Վրաց, հանելով մինչ 'ի Դաւիթ մարգարէ):

Գ

Հայոց աշխարհին և ազգին ճակատագիր մ'եղած է իր մէջ բաժանեալ ըլլալն քաղաքական վարչութեամբ, յետ վերցուելոյ ինքնագլխութեանն (Արշակունեաց), կէսն Յունաց և կէսն Պարսից ձեռք ընկնալով. որոց յաջորդ կամ ժառանգ եղան ինչուան անցեալ դարուն վերջն՝ Օսմանեանք և Նոր Պարսք՝ յետ Արաբացւոց. իսկ այս դարուս՝ հիւսիսային հզօր ազգ մ'այլ (Ռուս) այն երկուքին բաժնէն մեծ մեծ մասեր առնըլով՝ երրորդապետ եղաւ Հայոց, հանդերձ Վրաց աշխարհին տիրանալովն, որուն միացած էր մեր աշխարհին մէկ մասն ալ։ Յունաց բաժինն՝ նախ արեւմտեան Հայք, քիչ մ'այլ հիւսիսային և հարաւային գաւառներն էին, Կարին, Բասեն, Երզնկա, Չմշկածագ, Խարբերդ, Արղնի, Նփրկերտ, Ամդայ կողմերն, և բոլոր Փոքր Հայք, և Եփրատայ աջ կամ արևմտեան կողմն եղած աշխարհները. որք առեն առեն կերպ կերպ բաժնուեցան քաղաքական կամ աշխարհագրական օրինօք, և Յոյն կամ Հայ իշխանաց յանձնուեցան. իսկ Մեծ Հայոց մասին վրայ սովորաբար տեղացի իշխաններ կու դրուէին, մէկ գլխաւորի մը երաշխաւորութեան տակ, որ զանազան պատուոյ անուն և աստիճան կ'ունենար, ինչպէս՝ կոմս, ստրատելատ, պատրիկ, կիւրոպաղատ, պրոտոսպաթար, նովելիսիմոս, անթիհիւպատ, և այլն։ Զօրաւոր կայսերաց ժամանակ՝ ինչպէս էին Յուստինիանոս, Մորիկ, Հերակլ, և այլն, բաւական հանգիստ և հնազանդ էին արևմտեայ Հայք, և կայսերութեան մեծամեծ պաշտամանց և արքունեաց մէջ յառաջագէմ. իսկ տկար և մոլի կայսերաց առեն՝ շատ հեղ տժգոհ և ապստամբ. և երբ Ա-

րաբացիք տիրեցին արեւելեայց, երբեմն ուզեցին ասոնց՝ քան Յունաց ներքեւ մնալ, թերեւս ազգին միութեանն այլ փափագելով, յորում ըստ կրօնից այլ զանազանութիւն մեծ էր. յունակողմանք կաթողիկոսին իշխանութենէն ելնելով, քիչ անգամ նաեւ առանձին կաթողիկոս այլ ունենալով, բայց աւելի՝ առանձին եպիսկոպոսներ՝ իբրեւ 'ի թեմի Յունաց պատրիարքաց կու սեպուէին: Քիչ մը մերայոց կամօքն, քիչ մը Յունաց թուլութեամբ, Արաբաց բռնութիւնն՝ է և ը դարուց մէջ գրեթէ բոլոր Մեծ Հայոց տիրեց, և ոչ միայն Դունայ մէջ նստաւ ոստիկան, իբրեւ վերակացու և հարկահան Հայոց, այլ և Երզնկումի, Կամախի, Խարբերդու, և հարաւային Հայոց կողմերը զանազան ամիրաներ և հարկահաններ դրուեցան. ինչպէս յԱրզն, Նփրկերտ, Մանազկերտ, Խլաթ, Նախիջեւան, Պարտաւ, և այլն. որոնց հետ երբեմն Յոյնք կու պատերազմէին, քիչ հեղ և յաղթէին: Իսկ այս ժամանակիս, Աշոտոյ երիտասարդութեան ատեն՝ Թէոփիլոս կայսրն բաւական զօրացաւ և շատ տեղ առաւ Արաբացւոց ձեռքէն. բայց վերջապէս հաշտութիւն ընելով յետ քաշուեցաւ. իր յաջորդ Միքէլին ատեն (842-867) Մեծ Հայք գրեթէ բոլոր Յունաց ձեռքէն ելնելով՝ կամ Արաբացի ամիրայից կամ բնիկ իշխանաց ձեռք մնացին. ինչուան որ Վասիլ Մակեդոնացի կամ Արշակունի թագաւորեց 20 տարի (867-886) և բաւական զօրութ̃բ և փառքով կայսերութիւնը կանգնեց:

Այս անձը հարկաւոր է քիչ մ'աւելի ճանչնալ թէ Աշոտոյ ժամանակակից ըլլալուն, թէ հայազգի ըլլալուն և թէ գործոյն համար: Այս ատեն Յունաց և Հայոց մէջ քանի մը տեսութ̃ք իրարու նման երկու իշխանապետ և երկու հայրապետ եղան, և իրարու հետ գործակցութիւն

այլ ունեցան. Վասակ և Աշոտ (857-886), Փոտ և Զաքարիա (854-875)։ Վասակ՝ ըստ ոմանց մեր պատմչաց՝ Տարօնոյ կողմերէն էր, բայց հաւանօրէն էր 'ի Մակեդոնիոյ, և 'ի հօրէ կամ 'ի մօրէ Արշակունի Հայերէն, զոր կայսերքն Յունաց այն կողմերը բնակեցուցեր էին։ Յոյնք շատ զարմանալի բաներ կու պատմեն աստ ծննդեան, տղայութեան, ուժին և քաջութեանց վրայ, և կայսր ըլլալու գուշակութեանց. ստոյգն այս է՝ որ աղէկ կրթուած, կտրիճ, զգօն և բարեպաշտ մարդ էր. և խելքով ու քաջութեամբ յառաջացաւ, ինչուան յարքունիս. բայց անզգամ և մոլի կայսեր մը պաշտօնեայ ըլլալով՝ ստիպուեցաւ երբեմն անոր կամաց և գործոցն այլ հետևիլ. որ իր համբաւոյն մեծ աղտ է. զոր և աւելցուց՝ զկայսրը սպաննելով և քանի մը ուրիշ սպանութեամբք այլ։ Բայց յետոյ արդարասէր կառավարութ̄բ, յաղթութեամբք, շինութեամբք, գեղեցիկ օրինօք և գրաւոր խրատուք այլ՝ նշանաւոր կայսերաց մէկն եղաւ։ Գլխաւոր գործոց մէկն այլ է՝ Փոքր Հայոց մէջ բռնացած Պօլիկեան կամ Մանիքեցի աղանդաւորները ջնջելն, հետևրնին անձամբ պատերազմելով և ուրիշ զօրավարօք, որովհետև թշնամիքն այլ զէնք կու գործածէին։ Մէկ նշանաւոր դէպքն այլ եղաւ Փոտայ հետ յարաբերութիւնն։ Այս անձին ծանօթութիւնն այլ հարկաւոր է մեզի. Վասլի նախորդ Գինով Միքայէլին ատեն, իր քեռին Վարդ՝ ուզածին պէս կու կառավարէր զնա և տէրութիւնը, հանդերձ անկարգութեամբք և զեղխութեամբ. որոյ համար յանդիմանուելով 'ի Ս. Իգնատիոս հայրապետէն Կ.Պօլսի՝ ոխացաւ, և աթոռէն ձգելով՝ աքսորել տուաւ. անկէ աւելի անակնկալ կերպով՝ տեղը դրաւ իր խնամիներէն մէկը, որ տէրութեան դիւանապետն էր, և ժամանակին ամե-

նահմուտ անձն և ճարտար գրիչն կու սեպուէր. զոր և աշխարհական վիճակէն՝ չորս օրուան մէջ բարձրացուց 'ի գահ պատրիարքութեան Կ. Պօլսոյ, յամին 857. այս էր Փոտ: Ասոր նման և ասկէ շուտ՝ երկու տարի առաջ այլ 'ի Հայս, Զաքարիա՝ իր արժանեաց և գիտութեան համար՝ մի և նոյն օրուան մէջ յաշխարհական վիճակէն բարձրացաւ ինչուան 'ի ձեռնադրութիւն կաթուղիկոսութեան Հայոց. որ և Յովհաննէս իմաստասիրէն ետև († 728) առաջին մատենագիր և ժողովարար հայրապետ է: Այս երկու զուգակցաց մէջ՝ որչափ որ Աշոտ մեծագոյն կ'երևի քան զՎասիլ անարատ քաղաքավարութեամբը, այնպէս Զաքարիա քան զՓոտ. ետքինս գիտութեամբն անհամեմատ վերագոյն էր քան զմեր հայրապետն, իսկ խոնարհութեան գործովքն անհամեմատ վար քան զաթոռն՝ յոր նստաւ բռնութեամբ: Շատ զարմանալի է՝ որ Փոտ ջանաց Հայոց և Յունաց եկեղեցւոյն միութիւնը հաստատել ուղղափառապէս, յետոյ իր եկեղեցին զատեց ընդհանրական եկեղեցւոյ միութենէն: Յայտնի են բազմաց իր գործքերն, զոր չկրցաւ առաջ տանիլ Վասլի ատեն, որ 'ի թագաւորելն՝ վռնտեց զնա յաթոռոյ և դարձուց զՍ. Իգնատիոս. բայց երբ սա վախճանեցաւ (878), Փոտ խորամանկութե̄ շահեցաւ զսիրտ Վասլի. որ թերևս իր սպանուե̄ 'ի կայսրութեն ելնելուն վրայ միշտ վախնալով, կ'ուզէր եւել քան զեւել համոզել ժողովուրդն իր օրինաւոր ըլլալուն, մանաւանդ իբրև Արշակունի ցեղին սերունդ: Այս տկար կողմը գիտնալով Փոտ՝ քովէն պատմութիւն մը հնարեց, հին յունարէն ձեռագրի մը մէջ գրեց հին ձևով հին մագաղաթի վրայ, գուշակելով 'ի նմա թէ Արշակունեաց ցեղէն թագաւոր մը պիտի գայ այս ատեն, այս անուն, և այս բաներս պիտի ընէ, զոր արդէն ըրած

էր Վասիլ. գիրքն այլ անոր գրատան մէջ մնաց՝ իր մէկ համախոհին ձեռքով, որ և հաւատացուց կայսեր, թէ զայն կարդալու և մեկնելու համար՝ Փոտէն յարմար մարդ չկայ։ Դարձաւ Փոտ յաքսորանքէն, կարդաց իր մարգարէութիւնը, ինքն իրեն մեկնիչ ըլլալով. իմացուց որ այն գրուածը բոլորովին յարմար էր Վասլի, ինքն էր գուշակեալ Արշակունին՝ Հայոց թագաւորաց ցեղէն, որք պայազատելու ատեն՝ թագը կ'առնուին Բագրատունեաց նահապետէն. Վասիլ այլ գոհութեամբ կատարեց այս բանս, ինչպէս յետոյ պիտի տեսնենք. և Փոտ նորէն նստաւ յաթոռ հայրապետութեան, ինչուան որ մեռաւ Վասիլ. բայց որդին՝ Լևոն Իմաստասէր՝ մէկէն ձգեց զՓոտ յաթոռոյն, և աքսորեց Հայոց վանք մը, ուր և մեռաւ (891)։

Դ.

Յունաց կայսրութեան և Հայոց յարաբերութեան վիճակը իմանալնէս ետև, դառնանք Արաբացւոց ամիրապետութեան, որք քաղաքականօրէն աւելի առընչութիւն ունեցան ընդ Հայոց. և իրենց դենպետին (Մահմէտի) մահուընէն քիչ տարի ետև՝ մտան 'ի Հայս. ուր Պարսից բռնութիւնն տկարանալէն ետև՝ կայսերք աւելի ջանային տարածել իշխանութիւննին, հանդերձ եկեղեցական վարդապետութեամբք։ Այս բանիս տհաճելով ժամանակին քանի մի գլխաւոր և զօրաւոր Հայ իշխանք, երբ յանկարծ նոր և զօրաւոր թշնամի մ'այլ տեսան (զԱրաբացիս), նախ մէկ մը զէնքերնին ասոնց վրայ փորձեցին, բայց յետ անօգուտ քաջութեանց և յետ կշռելու թշնամւոյն ոյժը՝ յանձն առին հնազանդելու. ընդունեցան անոնց ոստիկանը, և իրենց մէջէն իշխա-

նապետ կամ հոգաբարձու մը. այսպէս ըրաւ Սըմբատ Բագրատունին այլ՝ Թոռն Սմբատայ Բագմայաղթի: Ցոյնք շատ ջանացին բայց չկարցան վանել զԱրաբացիս և նուաճել զՀայս. մերոնք ինչուան Է դարուն վերջը բաւական հանդարտ մնացին ոստիկանաց իշխանութեան տակ. բայց Ը դարուն սկիզբն՝ անզգամ և ագահ հրամանատարք սկսան չարաչար նեղել զՀայս. ասոնք այլ զայրացեալ՝ ջարդ մը տուին Արաբացւոց ('ի Վարդանակերտ), որ մեր պատմութեան մէջ նըշանաւոր դէպք և թուական մ'եղաւ. ինչպէս որ Արաբացիք այլ քիչ մ'ետքը (705) խորամանկութեամբ աւելի մեծ վնաս հասուցին Հայոց, գլխաւոր իշխանները այրելով Նախջևանի և Խրամայ եկեղեցեաց մէջ, ուր ժողովեր էին՝ իբր դաշինք դնելու պատճառաւ. և այս տարին այլ Արաբացւոց պատմութեան մէջ անուանի եղաւ Կրակէ փորէ ըսուելով. ապրած իշխաններէն և անոնց զաւակներէն շատն ալ բռնեցին՝ ամիրապետին խաւրեցին. և տասն տարի նեղելէն ետև թէ զանոնք թէ մեր աշխարհը, գերեալները դարձուցին և դիւրութիւն ըրին, քառասուն տարւոյ չափ, Ցունաց և Հոնաց հետ պատերազմի զբաղելով: Այս ատեն Բագրատունիք նորէն սկսան պայծառանալ և Աշոտ պատրիկ իշխանապետ եղաւ (733). դժբաղդաբար Մամիկոնեան իշխանք նախանձելով ջանացան անոր տեղ անցնիլ, և վերջապէս անարգ կերպով և պժգալի գործով մը զրկեցին զԱշոտ (749): Ամիրապետն լսելով Հայոց խլրտումը խաւրեց զեղբայրը՝ Աբդլլա (750), որ հանդարտեցուց և դրաւ իշխանապետ զՍահակ (753) հօրեղբայրն Աշոտոյ, որուն յաջորդեց որդին Աշոտ. իսկ անոր հօրեղբօրորդւոյն՝ Աշոտ պատրկին՝ յաջորդեց իր որդին Սմբատ՝ իբրև սպարապետ Հայոց: Քանի մը տարի հանդար-

տութենէ վերջը՝ շուտ շուտ ոստիկաններ փոխուելով 'ի Հայս, ամենքն այլ կու ջանային անկէ բան մը փրցընել, աւարով դառնալ, կեղեքէին կողոպտէին. բնականապէս Հայք այլ նեղեալ յուսահատեալ՝ ոմանք փախչել մտածեցին, ոմանք այլ բռնութեամբ բռնութիւնը վանել. ասանկ մեծ գործոյ համար դիւրին էր տարաձայնիլ և երկու բաժնուիլ. ինչուան Աշոտ իշխանապետն և Սմբատ սպարապետն իրարմէ զատուեցան կարծեօք. Սմբատ ապստամբողաց կողմը բռնեց, Աշոտ ձեռքը քաշեց և տուանց մատնելու հայրենիքը՝ հաւատարմութիւն պահեց անոնց՝ ուսկից իշխանապետ դրուած էր։ Այս գործս ինչպէս առաջ գնաց և ինչ վերջ ունեցաւ, դու պէտք է յիշես, Հայկակ. Բագրևանդայ բլրոց վրայ ժուռ գալուդ՝ պատմեր եմ քեզի[1]։ Այս գեղեցիկ ծաղկաւէտ հովտաց արևամբ ներկելէն ետև, նորէն ոստիկան եղաւ Եզիտ Իպն-Իւսէիտ, որ քսանուերկու տարի առաջ Աբդլլայի հրամանաւ՝ զՍահակ իշխանապետ դրեր էր, և երկրորդ անգամ խաղաղցուց զՀայս. Բագրևանդայ կռուոյն մէջ ընկած Սմբատայ տեղ՝ անոր որդին Աշոտ Մսակերը կարգելով սպարապետ. որ օրինաւոր իշխանութեան հպատակ, բայց անօրէն զրկողաց գլխահար էր. և քանի մը Արաբացի բռնաւոր զօրավարներ ու զօրագունդեր ջարդեց, որք իր երկար իշխանութեան ատեն՝ (776-819) Հայաստանի զանազան կողմերը շատ աւար ու աւեր կ'ընէին. ասոնցմէ էին երկու Խազմ կամ Խուզիմա, հայր և որդի, մէկն նահատակիչ հարազատ Արծրունի եղբարց՝ Ս. Սահակայ և Համազասպայ՝ (յամին 785), միւսն նահատակիչ Ս. Սահակայ և Յովսեփայ (յամին 801)։ Նոյն

1 Տես Ապրիլ 25։

ատեններն Ջահապ անուն ամիրայ մ'այլ՝ Արծրունեաց ուրացող Մեհրուժան իշխանին փեսայացեալ՝ 'ի Դուին բնակեցեր, և Արշարունեաց գաւառին մէկ մասին այլ տիրէր, (որ Բագրատունեաց սեպհական էր,) աւելի այլ առաջ գալ կ'ուզէր. Աշոտ՝ իր Շապուհ եղբօրը օգնութեամբ վռնտեց անոր զօրքը, և տիրեց ուրիշ կողմերէն զատ՝ Շիրակայ գաւառին այլ, ուր Անի բերդը ամրացուց և ընտանիքը հոն դրաւ, որ յետոյ իր ցեղին Թագաւորանիստ քաղաք եղաւ: Քանի մը տարի վերջը նորէն Ջահապեանք ելան 5000 զօրօք յարձըկելու 'ի Տարօն, ուր միւս Բագրատունի Աշոտն կ'իշխէր. Աշոտ Մսակեր 500 մարդով վրանին հասաւ՝ 3000ը ջարդեց, մնացեալը ցրուեց. եղբայրն այլ Դըւնայ վրայ յարձակեցաւ, և քաղաքն առին: Անոնց վրէժն ուզեց առնուլ Հօլ ոստիկանն, որուն 4000 զօրաց դէմ ելաւ Սմբատ Տարօնոյ իշխանն (որդի Աշոտոյ իշխանապետին) 500 մարդով, օգնութեամբ Սիւնեաց իշխանին. բայց երկուքն այլ մեռան պատերազմին մէջ (819-20): Նոյն ատեն Սևադա Ջահապեանն այլ Աշոտ Մսակերի և Շապհոյ հետ կը կռուէր. այս պատերազմիս մէջ ընկաւ քաջն Շապուհ. իսկ եղբայրն՝ ապարապետն՝ յետ երկու տարւոյ խաղաղութեամբ կեանքը կնքեց, և տեղն անցաւ (820) Մճէապ Աղու-Աճեաց Խօսրովիա՛նս, հայր մեր Աշոտ Թագաւորին, որ Սևադայի հետ հաշտութիւն ըրաւ, և հաստատուեցաւ իր սպարապետութեան պատուոյն մէջ:

Այս ատեններս ամիրապետաց տիրապետութիւնն սկսեր էր տկարանալ, պատճառաւ իրենց զեղծմանց, և անկիրթ Թուրքեր ընտրելու իրենց պաշտօնեայ և պահապան. կամաց կամաց զօրաւոր իշխանք սկսան գլուխ քաշել: Ոստիկանաց բռնութիւնն այլ տկարացաւ 'ի Հայս. Մուգաս-

սէմ ամիրապետն վախնալով որ Հայք բոլորովին չմիաբանին Յունաց հետ, Հօլէն սպանուած Սմբատ իշխանապետին որդին՝ Բագարատը՝ իր հօրը տեղ դրաւ տէր Տարօնոյ և իշխանաց Հայոց (839). զոր և իր յաջորդ խալիֆայն (Վաթէք-Պիլլահ) հաստատեց նոյն պատուոյն մէջ (843): Այսպէս ասոր իշխանապետութեան և Սմբատայ սպարապետութեան ատեն երեսուն տարւոյ չափ, մինչև ցկէս Թ դարու, թուական վրայ եկան Հայոց իշխանք և սկսան ակնածելի ըլլալ ամիրապետաց. որք թոյլ տուին անոնց, ինչուան որ մէկ կողմէն Յունաց հետ հաշտութիւն ըրին (840), մէկ այլ կողմէն իրենց տեղ՝ գրգեցին Փոքր Հայոց Պօլիկեանները Յունաց դէմ, որ քսան և հինգ տարի աշխատցուցին Լևոնի և Վասլի զօրավարները և զնոյն ինքն Վասիլ (848-873), և ամիրապետը ապահովցուցին այս կողմանէ:

Այսպէս քիչ մը դրսէն խաղաղելով, ամիրապետք ուժերնին մարելու ատեն՝ վերջին և ահեղ փորձ մ'ըրին Հայոց նոր արծարծած ոյժն այլ բոլորովին մարելու. յիրաւի մեծ խաւար հասաւ Հայոց, բայց այս վտանգէն ելաւ առաջինէն պայծառ լոյս մը:

Վերը յիշեցինք որ խալիֆայից վարչութեան շփոթութեան և անկարգութեան մէկ պատճառն այլ էին իրենց նորընտիր Թուրք օգնականները. ասոնք Թաթարստանի կողմերը պատերազմի մէջ բռնուած կորիճներ էին, զոր խալիֆայք իրենց թիկնապահ ըրին, վրանին վստահանալով. և ոչ միայն զինուորութեան՝ այլ և արքունեաց մէջ վերակացութեան և պաշտօններու հասուցին յաջողները: Ասոնք այնքան համարձակեցան, մինչև երբ Վաթէք խալիֆայն մեռաւ (847), իրենք նստուցին յաջորդ անոր եղբայրը Մոտավէքէլ Ճեաֆար (զոր մեր պատմիչք Ջաֆր կոչեն). ի-

բարու արժանի ընտրողքն և ընտրեալքն. մեկն անօրէն անգութ բռնութեամբն, միւսն ալ անոր յարմար գործիք. այնչափ այլ յարմար, որ հետ 15 տարւոյ՝ անոր որդւոյն հետ միաբանած՝ սպաննեցին զնա: Ճեաֆար անգթութեամբն՝ խալիփայից Ներոնն ըսուեցաւ. արքունեաց մէջ, մերոյիշեալ պահապաններէն զատ, չորքոտանի վայրենի գազաններ այլ ազատ թողուցեր էր՝ որ յանկարծ իր պաշտօնէից դիմաց կ'ելնէին, և կամ ըղապատառ կամ մարմնապատառ կ'ընէին. բայց տեսնելով որ անոնք կ'ուշանան, օր մը բոլոր մեծամեծները մէկ տեղ ժողվեց, և իր Թիկնապահաց գլուխ կենալով՝ զամենքն այլ Թրէ անցուց: Այսպէս իր մերձաւորները պատառող մը հեռաւոր հպատակաց վրայ ինչ գութ կրնար ունենալ: — Ասիթն և դէպքն լաւ կ'իմացընեն. և հարկ է աղեկտալի պատկեր մ'այլ տեսնենք մեր աշխարհին մէջ, որ մեր Աշոտոյ պատկերը լաւ մը լուսաւորէ. Թէ և նոյն իսկ այն սեւանկար պատկերն այլ իր լուսափայլ կողմերն ունի:

Ջափր ամիրապետութեան աԹոռը նստելէն քիչ ետքը (848) Հայաստանի ոստիկան խաւրեց զԱպուսէթ-Մուհամմէտ-ԷլՔուֆի ըսուածն, երբ Բագարատ իշխանապետ էր 'ի Տարօն. որ և խորագիտութեամբ կանխելով քան զԱպուսէթ՝ անոր առջև խաւրեց իր մեծամեծներէն մէկ քանին ծանր և ազնիւ ընծաներով, և յորդորեց որ չաշխատի առաջ գալու, եԹէ միայն հարկերը ժողվել էր, ինչպէս որ կ'իմացընէր. նա այլ գիտելով և իմանալով որ Բագարատայ քով բաւական ոյժ և օգնական կայ (Արծրունեաց հետ դաշնակցութեամբն), գոհութիւն ցըցուց և հարկերը առնելով հանդերձ ընծայիւք ետ խալիփային՝ յետ դարձաւ, և յաջորդ տարուան հարկապահանջութիւնը յանձնեց Ալըն (Խուրզան) նահանգին

կուսակալին որ կ՚ըսուէր Մուսէ-Իպն-Զօրահա։ Ինքն դարձաւ առ Ջափր, և բերանով ամբաստանելէն զատ՝ իրաւ կամ սուտ թղթեր այլ տուաւ, այն կողմերու ամիրաներէն գրուած՝ ընդդէմ Բագարատայ և Աշոտոյ Արծրունեաց նահապետի։ Ոչ միայն Ջափրայ հաճոյ էր այս ամբաստանութիւնս, այլ և Մուսէի, որ արդէն Բագարատայ թշնամի էր սահմանակցութեամբն. և հիմայ Հայոց հարկապահանջ ըլլալով՝ սկսաւ խրոխտալ, հարկը ժողովելու անուամբ, բայց իրօք վրէժ առնելու։ Զմեռ ատեն (849) յանկարծ բազմութք̃ զօրաց մտաւ ՚ի Տարօն, և Բագարատայ ձմերոց քաղաքը (Մուշ) պաշարեց. Բագարատ շուտով աղաչաւոր դեսպան խաւրեց Աշոտոյ Արծրունեաց նահապետին, որ իր տոհմայնոց և ազատազգի պաշտօնէից ձայն տալով՝ վաթսուն և աւելի իշխան ժողովեցան, գնացին ՚ի Տարօն, երբ Բագարատ ստիպուած էր Մուսէի դէմ մինակ ելնելու. յարմար ատենին հասնելով՝ զարկին ցրուեցին զօրքերը, բանակը կողոպտեցին։ Մուսէ ամօթով տեղը դառնալով՝ նոր ամբաստանութի̃ գրեց խալիփային. այնպէս այլ Արծրունեաց երկիրը գնացող հարկահանք, որ իրենց անիրաւութեան համար վռնտուած էին յԱշոտոյ և պատերազմելով յաղթուած (849-50)։ Այսչափ լուրեր բաւականէն շատ էին Ջափրի՝ չարաչար պատժելու զՀայս. և պատժողն այլ ՚ի հարկէ կու վայլէր որ ըլլար Ապուսէթ. որ և ինքնին այնչափ կու փափագէր վրէժխնդրութեան՝ որ արտորնօք Հայաստան վազելու ատեն՝ ճաթեցաւ Ասորւոց կողմերը. և տեղը դրուեցաւ (851) իր որդին Եուսուֆ։ Ամիրապետն՝ ասոր կարիճ ձիաւոր զօրաց գունդ մը տուաւ, և խոստացաւ այլ՝ որ եթէ նուաճէ զՀայս՝ ժառանգութեամբ իր ցեղին թողու անոր ոստիկանութիւնը։ Եուսուֆ

մեծ պատրաստութեամբ և յուսով կոխեց Նախ Աշոտոյ երկիրը, և անոր մօրն աղաչանօք՝ միայն պատանդներ առնլով՝ ելաւ անկէ և եկաւ 'ի Խլաթ. հոն կանչեց գրով զԲագարատ իշխանապետն՝ խոստանալով զինքը իրեն տեղ վերակացու դնելու, վասն զի այս երկրին ցուրտը՝ ինծի շատ վնաս կ'ընէ կ'ըսէր, և չեմ կրնար հոս ուշանալ: Բագարատ խաբուելով եկաւ իր մեծերով և եկեղեցականօք. ամենքն այլ ընկան յորոգայթ և յերկաթի կապանս, և ղրկուեցան առ ամիրապետն. իսկ Յուսուֆ փութացաւ տիրեց Տարօնոյ, բոլոր երկիրը տակնուվրայ ըրաւ, և ժողովըրդեան կէսը փախուց, կէսն գերի ըրաւ որ տանի յԱսորեստան, առ ժամն պահելով 'ի Մուշ՝ ուր ձմեռը կ'անցունէր. սպասելով գարնան՝ որ Տարօնոյ հարաւակողմի լեռնայնոց վրայ յարձըկի, որք են Սասունցիք և Խութեցիք: Բայց անոնք իրմէ շուտ շարժեցան, և նիզակնին ցցած լեռներէն վար թափեցան. պաշարեցին, առին Մուշ քաղաքը, թշնամիները ջարդեցին, գերիները արձըկեցին, Արծրունեաց պատանդները յետ դարձուցին, աւարը թալնեցին. հպարտացեալ Յուսուֆն այլ գտան՝ որ վախէն փախած և Բագարատայ շինած Մշոյ Ս. Փրկիչ հոյակապ եկեղեցւոյն գմբէթին պատին մէջ պահուըտած էր. հոն սպաննեց զնա Նիզակաւոր մը:

## Ե

Երբ այս անակնկալ լուրն հասաւ Ջափրի, այլ Հայաստանի բոլորովին ջնջման վճիռը տուաւ, ամեն դիէ կտրիճ պատերազմողներ կանչեց, մանաւորապէս Արաբացի և Պարսիկ վարպետ աղեղնաւորներ և հեծեալներ, և մեծ զօրագունդ կազմելով յանձնեց իր գլխաւոր պաշտօնէից մէ-

կուն, որ քաջութեամբ, խորագիտութեամբ և խաստասրտութեամբ անուանի էր, և այլ աւելի հռչակեցաւ 'ի Հայաստան. խալիփային սիրելի պաշտպանաց ցեղէն էր սա, և կոչուէր Բուղա-էլ-Շարապի կամ Գարա-Բուղա, Էլ-Քէպիր (այսինքն Սև-ցուլ, Մեծ կամ գոռոզ)։ Իրեք չորս տարի կեցաւ 'ի Հայս (852-5), բայց իրմէ առաջիններուն շատ երկար տարիներու մէջ չկրցածը՝ 'ի գլուխ տարաւ։ Նախիջևանի և Խրամի օրերը կերպով մը նորոգեց. Նպատակն էր Հայոց ամեն իշխանաւոր, զօրաւոր անձինքը կամ սպաննել կամ գերի տանիլ, կամ հաւատքէն ուրացընել. և ինչպէս կ'ըսէ մեր ժամանակագրաց մէկն համառօտիւ [1], «Կալեալ զամենայն իշխանս և ազատս » Հայոց՝ եսպան, զկէսն մարմնով և զկէսն հո- » գւով». բայց մենք կրնանք աւելցընել թէ ոմանք հոգւով այլ մարմնով այլ ապրեցան. և շատ դիւրագին և թեթև չըրին Բուղայի արիւնոտ ու սև յաղթանակը. որ՝ բաց 'ի գերեաց, 30,000 մարդ ջարդեց կ'ըսեն 'ի Հայս, (զատ 'ի Վրաց), իսկ իրեններէն՝ այլ աւելի ջարդուեցան։ Թէ մարմնաւոր քաջութեամբ և թէ հոգևոր նահատակութեամբ, շատ նշանաւոր և անմահանալի յիշատակներ թողին Հայք այս պարագայիս. զոր 'ի գիր անցուցեր էր Շապուհ պատմիչն, մէկ մասն այլ կու պատմեն Յովհան կաթուղիկոս և Թովմա արծրունի. որոց գլխաւոր դէպքերը միայն համառօտիւ յիշեմ, որ լաւ իմացուի Հայաստանի վիճակը Աշոտայ ատեն։

Բուղա՝ Բաղէշի կողմերէն մտաւ 'ի Հայս, և գնաց 'ի Խլաթ, որ շատոնց ամիրայից աթոռ էր եղած. նախ գունդ մը խաւրեց Խութեցոց վրայ, զոր շատ դժարութեամբ հազիւ կրցան նուաճել.

1 Մխիթար Այրիվանեցի։

մեծ զունդ մ՚այլ տուաւ Ժիրաք անուն զօրավարին և ղրկեց Արծրունեաց վրայ. սա մինչուան որ հասաւ 'ի Վան՝ Ճամբուն վրայ կրցածը աւրեց, Թալնեց. իրեններէն այլ շատ մարդ կորուաւ: Աշոտ Արծրունին իր ազատները ժողովեց՝ Նկան ըսուած ամուր քարաբերդը քաշուեցաւ ('ի Թոռնաւան գաւառի Երասխայ մօտ). զոր եկան պաշարեցին Ժիրաք և Բուղա՝ բոլոր իրենց գնդերովը, (որք աւելցեր էին Հայաստանի մէջ եղած ամիրայից զօրօքն այլ, և ամենայն պատերազմական ու պաշարման գործիք և նիւթ ունէին). պաշարեալքն զարհուրած՝ Աշոտէն գաղտուկ Թուղթ խաւրեցին առ Բուղա. նա այլ պահանջեց որ զԱշոտ իրեն տան և իրենք ապահով մնան: Աշոտ իմանալով իշխանաց վատութիւնը և չկարենալով վախերնին փարատել, կամայ ակամայ գնաց առ Բուղա, որ պատուով ընդունեցաւ զնա առ ժամն. ինչպէս անկէ առաջ ընդուներ էր Մոկաց տէրը՝ Սմբատ Բագրատունի մը. սա ամենէն առաջ ինքնակամ իրեն գալուն համար՝ բռնաւորին սիրտը շահեցաւ, և Ժիրաքայ բռնած գերիները յետ դարձուց. իսկ Աշոտ և անոր որդին Գրիգոր Դերենիկ, և ուրիշ գլխաւոր իշխաններ, հանդերձ տիկնամբք՝ իբրև գերի կամ պատանդ խաւրուեցան առ ամիրապետն. նոյնպէս անոր Գուրգէն եղբայրն այլ, որ Բուղայի խաւրած 15,000 զօրքը ջարդելէն ետև՝ ինքնին եկաւ առ Բուղա. իր մայրն այլ Հռիփսիմէ տիկին՝ կամաւ որդւոցը ետևէն գնաց 'ի Պաղտատ:

Երբ հասան տունք և ուրիշներ այլ՝ առաջին բանտելոյ քով, ամիրապետն զամենքն այլ կանչեց իր առեանը, և ամենայն զարհուրելի կերպարանօք և խօսքերովն յանդիմանեց, սպառնացաւ, մահապարտ վճռեց. միայն ազատութեան ճար՝ մուլիմանութիւնը ցուցընելով: Յազկերտի ատեն

Վարդանանց դիպուածն հոս այլ նորոգեցաւ. և Թէպէտ Արծրունեաց եպիսկոպոսն Յովհաննէս, որ կապելոց մէջ էր, իր կարգին յարմար պատասխանատուաւ, քրիստոնէից կրօնքը և պատիւը պաշտպանեց. բայց խալիֆային բարկութեամբ ատեանէն ելնելով իմացուց կապելոց՝ որ իր օրէնքին դէմ էր անոնց հետ միաբանիլ, կու մնայ որ կամ հաւատքնին ուրանան կամ սպաննուին: Արդէն Բագարատ իշխանապետն ուրացեր էր, ըսելով՝ Թէ բռնութեամբ և ակամայ ուրանալն մեղք չէ. ուրիշ շատեր այլ դժբաղդաբար իրեն հետևեցան. իսկ Յովհաննէս եպիսկոպոսն, Գրիգոր Արծրունի իշխան մը և Գրիգոր քահանայ մը, հաստատուն մնալով՝ երկաթակապ բանտեցան, ուր չորս տարիէն մեռաւ իշխանն վկայական անուամբ:

Իսկ Բուղա 'ի Դունին ձմերելով՝ հոն նահատակեց եօթն կորիճներ, որք իրենց գլխաւորին անուամբ (Ատոմ Անձևացի) կու կոչուին, և նաև Վարդանանց ժամանակակից նոյնանուն վկաներէն զանազանելով Երկրորդ Ատոմեանք: Այն ձմեռ չորս կողմ եղող իշխաններ՝ Հայ և Վրացի՝ իրենց երկրին ամրագոյն տեղուանքը քաշուեցան, ոմանք այլ եկան անձնատուր եղան. որոց մէջ գլխաւորն էր Սպարապետն Սմբատ, որ և ազատութիւն գտաւ իր տեղը բնակելու, և երբ պէտք ըլլայ բանակը գալու և առաջնորդելու: Գարնան (853) գնաց Բուղա Տփխիս քաղաքին վրայ, առաւ այրեց 50,000 հոգւով: Վրաց կողմէն անցաւ Կովկասի կողմերն այլ նուաճելու, և եկաւ նախ Ծանարաց վրայ՝ որ Ալանաց և Վրաց մէջ տեղ բնակէին. զօրաց բազմութեանը վրայ վստահացած՝ սկսաւ կռուիլ. ինն ամիս [1] նստաւ այն տեղուանքը, տասն և ինն անգամ պատերազմե-

1 Ինն օր գրած է Թովմայի Արծրունւոյ գրոց մէջ.

ցաւ սաստկապէս, շատ մարդ կորուս, ամօթով յետ դարձաւ, մտաւ Հայ-Աղուանից երկիրը. ուր Եսայի կամ Աբու-Մուսէ Երիցաւ-Որդի անուամբ կարիճ մը Արցախայ լեռնային կողմերուն կ'իշխէր. և Ծանարաց քաջութեններէն սիրտ առած՝ իրեններըը ժողովեց Քթիշ լերան վրայ, և պատրաստեցաւ ընդդէմ Բուղայի: Բուղա հոս այլ նախ յարձակմունքով սկսաւ, յաղթուեցաւ. ապա սկսաւ լեռը կրցած կողմէն պաշարել, և իր զօրաց համար ապաւինութեան բերդակներ շինեց. ամիրապետին այլ լուր խաւրեց, տեղւոյն դժարութիւնը և կարիճ իշխանին յամառութիւնը իմացընելով, թէ ի՞նչ ընէ, թողո՞ւ եթէ սպանէ: Խալիփայէն՝ կռուելու հրաման և նոր զօրք եկաւ, բոլոր բանակով նորէն յարձակեցաւ, և նորէն վանտուեցաւ: Տարւոյ մը չափ հոն ուշացաւ Բուղա, քանիեւութ անգամ յարձակումն ըրաւ, ամեն անգամ այլ յաղթուեցաւ: Դարձեալ պէտք եղաւ պատրգամով խաղաղութեան հրաւիրել. Աբու-Մուսէ յանձն չառաւ Բուղայի հետ խօսիլ, ինչուան որ խալիփայէն ուղղակի իրեն թուղթ չգայ. երկու կողմէն այլ դեսպան խաւրեցին 'ի Պաղտատ. խալիփային թողութեան գիր գրեց Մուսէի, եղածները չեղած սեպելով, և պատուիրեց որ անկասկած գայ իրեն, Բուղայի այլ պատուիրեց որ պատուով ընդունի զնա: Եւ այնպէս եղաւ:

Բուղա այս կողմերս եղած ատեն՝ նահատակեց զՄուկաթլ Վանանդեցին, Սողոմոն Սևորդին, Կահա, և Յովհան Խութեցին՝ որ իր լեռնցոց առաջնորդն էր Բուղայի զօրաց դէմ, և հիմա հոս իր հայրենեաց նման լեռներու և լեռնորդայց դիմաց՝ գերագոյն քաջութեամբ պսակուեցաւ: Բոլոր այս կողմերս և 'ի Դուին և 'ի Վասպուրական նահատակելոց թիւն՝ աւելի էր քան զ250. զոր

ամենքը մէկէն տօնել հրամմեց կաթուղիկոսն, Յովհաննէս Ե, մեհեկանի ամսուն քսան և հնգին, (որ է երեք մարտի):

Ապու-Մուսէի հետ պատերազմելու ատեն՝ Բուղա ուրիշ ազատ իշխանաց այլ պատագամ խաւրեր էր որ գան իրեն հնազանդին. ոմանք հաւանեցան, ոմանք մատնութեամբ ձեռք ընկան. ոմանք այլ երբ տեսան Ապու-Մուսէի յանձնառութիւնը, յոյսերնին կտրեցին պատերազմով դէմ կենալու կամ փախչելով ազատելու: Այս կամայ կամ ակամայ նուաճեալ իշխանաց գլխաւորքն էին՝ Սիւնեաց երեք մեծ իշխաններն, Գրիգոր, Փիլիպպէ և Վասակ. Խաչենոյ տէրն Ատրներսեհ, Գարդմանայ տէրն Կորիւն, Սեւորդեաց տէրն Ստեփաննոս Կոն (որ և խոստովանութեամբ մեռաւ 'ի Պաղտատ իր որդւոյն հետ), Գրիգոր Մամիկոնէից տէրն, Սահլ Շաքէոյ տէրն, (Պապէք ապստամբը բռնողն), գրեթէ չմնաց ուրիշ ազատ գլխաւոր իշխան մը: Այսպէս Բուղա աւելի խորամանկութեամբ քան քաջութեամբ իր կամացն հասնելով՝ գնաց 'ի Պարտաւ ձմերելու, բոլոր բռնած իշխանները մէկ տեղ ժողովելով: Սուտ խոստմունքներով և պատուով քիչ մը ատեն խաբխըբեց. գիշեր մ'այլ յանկարծ իրենց հանգըստեան և քնոյն ատեն՝ շղթաներով կապուած գտան զիրենք. երկրորդ օրը Ճամբայ դրուեցան դէպ 'ի Բաղտատ, Սմբատ սպարապետն այլ անոնց հետ, որուն մեծ մեծ յոյսեր կու տար Բուղա: Ինքն այլ բռնած որսերը քշելով գնաց իր արժանաւոր ամիրապետէն վարձքն առնուլ. տեղը թողլով Իբրահիմ անուամբ կուսակալ մը: Իսկ Հայոց իշխաններէն՝ միայն Գուրգէն Ապուպէլճի որդի ըսուած Վասպուրականի գլխաւոր ազատներէն մէկն՝ Բուղայի հաւանութ̄բ այն նահանգին տէր դրուեցաւ, զոր արդէն քաջութեամբ՝

անոր Թողած զօրքերու ձեռքէն առեր էր. իսկ Հայոց միջնաշխարհին մէջ Թողուց Սմբատ սպարապետին որդին՝ զմերն ԱՇՈՏ:

## Ջ

Բագրատունի Թագաւորաց մէջ միայն մեր Աշոտայ կենաց չափն կու յիշուի, եօթանասունումէկ տարի. վախճանած տարին այլ նշանակուած ըլլալով՝ ծնած կու հանդիպի Քրիստոսի 820 Թըուականին. այն տարին՝ յորում սպանուեցաւ Լեւոն Հայկազն կայսրն 'ի Կ. Պօլիս, յորում 'ի Հայս Սմբատ իշխանաց իշխանն և Սահակ Սիւնեաց նախարարն Հօլայ հետ պատերազմելով՝ ընկան կռուին մէջ, յորում (կամ տարի մը ետև) մեռաւ մեր Աշոտայ պապն՝ Աշոտն Մսակեր. որոյ ժառանգն Սմբատ Խոստովանող՝ հօրը մահուանէն քիչ առաջ՝ առեր էր 'ի կնութիւն Տարօնոյ տիրոջ և Հայոց իշխանապետ և իր անուանակից Սմբատայ դուստրը, յորմէ ծնեալքն են, (մեր գիտցածները) չորս մանչ և երկու աղջիկ, նախ մերս Աշոտ, յետոյ Աբաս [1], Շապուհ, Մուշեղ. Ա.... կին Գուրգենայ իշխանի Գուգարաց, Ա... տիկին Վրաց: Սմբատ իր հօր եռանդուն կտրճութենէն աւելի խաղաղասէր աշխարհաշինութիւնը ժառանգեց. անոր համար հօրը Թշնամւոյն՝ Ջահապեան Սեւադայի հետ հաշտութիւն ըրաւ և Թողուց որ նստի հանգիստ 'ի Դուին, ինքն այլ անկէ ճանչցուեցաւ սպարապետ Հայոց, ինչպէս իր մանկահասակ աներձագն այլ՝ Բագարատ՝ տէր Տարօնոյ և նախիշխան Հայոց: Սպա-

1 Ասոր անունէն կարծեն ոմանք հօրն Ապլաբաս մականունը, իբր Թէ հայր Աբասայ. բայց ինչու ոչ Աշոտայ՝ այլ Աբասայ հայր կոչուի.

ռազմել և իշխանապետ՝ խնամիք և բարեկամք էին, բայց Բագարատ ոչ Սմբատայ խոհեմութիւնն ունէր և ոչ բարեպաշտութիւնն, և շատ տարի վերջը (840) մեջերնին ոհաձութիւն մը ծագեցաւ՝ Բագարատայ յանդուգն գործով մը. առ որ չարալեզու մարդիկ ամբաստանեցին այն տանուտան կաթողիկոսը՝ Տէր Յովհաննէս Ե, վրան անարժան բաներ ըսելով, որոց առանց քննութեան հաւատալով Բագարատ՝ հրամնեց որ իրեն կաթողիկոսութեան պատիւ չտան. սա այլ թողուց աթոռը և վանք մը քաշուեցաւ: Սմբատ և Սիւնեաց տէրն Սահակ՝ այս բանիս գժուարած՝ յետ դարձուցին զկաթողիկոսը և պատուով նստուցին աթոռը. Բագարատ իբր արհամարհուած՝ կու սպասէր յարմար առթով իր իշխանութիւնը ցուցընել. բայց ուրիշ փորձանքներ հանդիպեցան իրեն, Աբուսէթի ոստիկանութեան ատեն, ինչպէս առաջ յիշեցինք: — Սմբատայ սպարապետութեան ատեն, որ և Աշոտոյ կենաց կէսն է (821-855), իր խոհեմութեամբն Հայաստան 'ի խաղաղութեան վայելէց, գոնէ այն տեղուանքն՝ ուր կու հասնէր իր առաջնորդութիւնն, կամ Դունայ ոստիկաններն իշխանութիւնն. վասն զի Հայոց սահմանակիցք՝ Աղուանք, Ատրպատական և Միջագետք՝ ուրիշ ոստիկաններ և ամիրաներ ունէին, որ այն կողմերը կու նեղէին. ասոնցմէ էր Սևադա մ՚այլ, Աւատանշան? ըսուած, որ Պարտաւէն (Աղուանից մայրաքաղաքէն) ելաւ զօրքով ասպատակեց Սիւնեաց երկիրը, և հին իշխանանիստ Շաղատ աւանին աւրեց. Վասակ Սիւնեաց տէրն՝ բռնաւորին դէմ աւելի բռնագոյն մը գտաւ, զՊապէք մոլորեցուցիչ ապստամբն 'ի խալիֆայէն, զոր պատմիչք մեր կոչէն Բաբ կամ Բաբան. առանց հետևանքը մտածելու կանչեց, և անոր օգնութեամբ վռնտեց

զՍևադա. ինքն այլ քիչ ատենէն մեռաւ, երբ այն վտանգաւոր օգնականն դեռ իր երկիրն էր. որ և Վասակայ աղջիկը կին առաւ և աներոջ իշխանութիւնը սկսաւ նուաճել. Սիւնեաց Բաղք գաւառին կորիճներն ոտք ելան, բայց բաւական չեղան դէմ կենալու այն բռնաւորին, որ քսան տարի ամիրապետաց տէրութիւնը սասանեցուց, և իրեն ետև ընկնողներէն 160,000 մարդ ջարդեց. հոս այլ շատ կոտորածներ ընելով՝ տիրեց բուն Սիւնեաց տէրութեան. անկէ անցաւ (827) Սևանայ ծովուն եզերքը իշխող Հայկազն Սիւնեաց երկիրը, հոս այլ 15,000 մարդ կոտորեց, և տասն տարի այլ այս կողմերը և հարաւային Հայոց ամուր տեղուանքը ընկնալով՝ խալիփային խաւրած շատ զօրավարները ջարդով յետ դարձուց: Մեծ վարձք խոստացուած էր զինքը սպաննողին կամ բռնողին. որ տրուեցաւ քաջ Հայ-Աղուան երիտասարդ իշխանի մը, Սահլի Սմբատեան, որ նախ իր հայրենեաց՝ Աղուանից, այսինքն Արցախ և Ուտի նահանգաց Հայոց՝ ապստամբները ջնջեց, յետոյ ամիրապետին խաւրած Աւֆշին զօրավարին յորդորմամբ՝ Բաբանայ ետևէն ընկաւ, վերջապէս բռնեց (837) այն զարհուրելի բռնաւորը, և առաւ վարձք 660,000 ֆրանգի չափ: Այս այն կորիճն է՝ զոր յետ իբր քսան տարւոյ ուրիշ մեծամեծ իշխանաց հետ Բուղա խաւրեց առ ամիրապետն 'ի Բաբելոն, ինչպէս քիչ մ'առաջ յիշեցի:

Այս պատերազմերուս մէջ Սմբատ սպարապետն և իր որդին Աշոտ այլ մասն ունէին: — Մեր հիմայ ունեցած պատմիչքն չեն յիշեր. բայց այսչափ կ'իմացընեն՝ որ Սմբատ ոչ միայն քաղաքական վարչութեան և շինութեան կրթեց իր անդրանիկը, այլ և սպարապետութեան, բանակաց առաջնորդելու. և հօրը յաջորդելէն առաջ

տալ չատ քաջութիւններ ըրած ըլլալը՝ և զանոնք իր համշիրակին (Տապհոյ) 'ի գիր անցընելը՝ կու-յիշէ ժամանակակիցն և ականատես Յովհաննէս կաթողիկոս. և հարկ է թէ գոնէ Բուղայի գալէն առաջ տասը տարին այնպիսի գործովք անցուցած ըլլայ թէ 'ի Հայս և թէ Կովկասու կողմերը. իսկ խաղաղութեան ատենին այլ շինութեանց պարապելով՝ 'ի հինն Երազգաւորս՝ որ և Շիրակաւան (Պաշ-Շէօրէկէլ). պալատէն զատ՝ Սմբատ մեծ և փառաւոր եկեղեցի մ'այլ շինեց (838) [1] Ամենափրկիչ անուն, բարձրաբերձ գմբեթաւ, որ հիմայ կործանած է. բայց եկեղեցին իր չորս անկիւն կամարաց վրայ բարձրացեալ կեցած է, թէպէտ և այն այլ Սմբատէն երկու դար ետև նորոգեալ ։

## Է

Յետ երեսուն տարւոյ Սմբատայ սպարապետութեան և Աշոտոյ կենաց՝ հասաւ Հայոց մեծ ալէկոծութեան և վտանգի պարագայն, զոր առաջ յիշեցինք, Բագարատայ և Ապուսէթի դիպուածովք, որոց համար եկաւ Բուղա 'ի Հայս։ Նախատես և նախահոգ սպարապետն իր իշխանակցաց անզգուշութիւնը տեսնելով և չկարենալով զանոնք համոզել, ջանաց մնացածը և կըրցածը պահպանել. և դեռ Սև զօրավարն (Բուղա) իր աշխարհէն չելած՝ Սմբատ իմանալով եղած պատրաստութիւնք, թէ անոր և թէ ամիրապետին՝ թղթով և ընծաներով խնդրեց որ ինքն ապստամբաց կողմը չէ, այլ օրինաւոր իշխանու-

1 Ոմանք մեր Աշոտոյ որդին Սմբատը համարին այս եկեղեցւոյս շինող. բայց իր շինածն ուրիշ եկեղեցի էր պալատին մօտ, որ թերևս հիմայ հոն մնացեալ քանի մը աւերակ եկեղեցեաց մէկն ըլլայ ։

թեան հաւատարիմ. և այսպէս առաջին յաղթութիւն մ՚ըրաւ բռնաւորին դէմ, և Հայաստանի միջնաշխարհը ազատեցուց. զոր և այլ աւելի հաստատեց՝ երբ Յուսուֆ Ատրպատականայ պէս սպառնալեօք եկեր կու գար մեր աշխարհը: Այս անգամ Հայոց պարտապան հրեշտակին՝ 30 ամեայ կայտառ և հզօր երիտասարդի մը կերպարանօք ելաւ անոր դիմաց, աչքը շլացուց, սիրտը շարժեց, խոստմունք առաւ որ հլու եղողին պէս չհասցընէ, և այնպէս թողուց որ մանէ 'ի Հայս: Այս հրեշտակս էր ինքն ԱՇՈՏ, հասակին և վայելչութեան և զինուորութեան ամենէն փայլուն և ծաղկած տանն. անշուշտ Յուսուֆ իրեն բաղդ այլ սեպեց որ այդպիսի անձ մը և անոր նման եղբարք և հայր՝ իրեն դիմակաց պիտի չըլլան: Աշոտոյ քաղաքական և ամենայն յիշատակեալ գործոց մէջ այս առաջին դիպուածն է. դիպուած բարեգուշակ, թէ և ինքն դեռ չէր ճանչեր՝ այդ գործոյն և անոր նմաններու համար՝ նոյն գացած ճամբէն թագաւորական թագի մը ճամբայ ելնելն, որ հասաւ իր ձեռքին՝ յետ 35 տարւոյ: Երրորդ անգամ ազատեց Սմբատ հայրենիքը յետ իր հրեշտակին (իր որդւոյն) ինքնին ելնելով ընդ առաջ Յուսուֆի, երբ աս նուաճելով զհարաւային Հայս՝ մտաւ 'ի միջնաշխարհն և կու գար 'ի մայրաքաղաքն Դուին. «Սպարապետն Հայոց՝ խելք գիտաց, կ՚ըսէ պատմիչն Թովմաս, թէ ոչինչ օգուտ բերէ արտաքոյ հրամանաց նորա լինել, փութացաւ եկն առ նա, և ընկալեալ 'ի նմանէ՝ բնակեաց ինքն և իւրքն՝ հանդերձ իւրաքանչիւր կալուածովք, առանց կասկածանաց»: Եւ միւս պատմիչն (Յովհ. կաթ.) «զմահ 'ի կեանս խառնեալ՝ սակս աշխարհին իւրոյ փրկութեան, գնայ ընդ առաջ նորա բազում ընծայիւք և պատարագօք. և առ ընկալեալ 'ի նմանէ պատուա-

» սիրաբար . . . բազում իմաստութեամբ զսազանդ
» և զմնոտի միտս նորա յինքն հանդուցեալ վրա-
» տանէ »։ Բուղա ըստ խոստմանն հանդիստ թողուց զՍմբատ. բայց միայն տեղեկութիւն կ'առնուր անկէ իր երթալու տեղերուն և անձանց վըրայօք. և երբեմն հետը կու տանէր զնա, թէ ոչ պատերազմելու՝ գոնէ թշնամիները յորդորելու 'ի հնազանդութիւն, կամ գործը շուտով վերջացընելու համար։ Սմբատ այս գժուար և փափուկ առթին մէջ ըրաւ որչափ որ պարտք հայրենեաց և պարտք հպատակութեան միաբան պատուիրեն. և հաւանորէն իր հեռացած տեէն՝ տեղը թողած էր զԱշոտ. որ չյիշուիր այս տեէն ուրիշ տեղ, ինչպէս յիշուին իր հայրն և եղբայրն՝ Աղուանից պատերազմին տեէն։ Հոս նորէն հարկաւոր կու սեպեմ դառնալ այն պատերազմին և յիշել ախորժելի դիպուած մ'այլ։ Երբ Բուղա չարաչար զարնուած յԱպումուսէ՝ յուսահատեալ փակուեր էր վրանին մէջ, և տասն օր քովը մարդ չէր մօտեցըներ, միայն Սմբատ սպարապետն համարձակեցաւ ներս մտնելու և բռնաւոր ձեռքէն բռնելու, յիշեցընելով անոր որ պատերազմի մէջ յաղթութիւն չէ ամօթ, այլ վհատիլն։ Բուղա թէ անկէ թէ ամիրապետէն նոր հասած պատուէրքով և զօրքերովն քաջալերուած՝ ըրաւ այն մեծ յարձակմունքը Քթիշ լերան վրայ, թէ և ձախողեցաւ։ Այս միջոցիս կու յիշուի Աշոտոյ եղբայրն Մուշեղ, որ մօտ բլուր մը վրայ կեցած կու դիտէր այն ահաւոր պատերազմը. և երբ յանկարծ լսեց հազարաւոր փողոց և եղջերաց շընչելն, և բազմաթիւ զօրաց արաբացի կոկորդաց աղխաղուր աղաղակն, իբր 250,000[1] սպառազէն

1 Պատմիչն տեղ մը յիշէ որ Բուղա իր բանակին մէջ՝ 500 հոգւոյ մէկ դրօշակիր մը դրեր էր, և այս պատերազ-

մարդկան և երկմտարաց փայլմունքն, վազքն, վեր վար շարժիլն, երկու կողմէն յուսադրաբար կամ յուսահատաբար կանչուըռտելն, վարէն վեր մեքենայով նետուած նետեր, տէգեր, գունտեր, պարսեր, վերէն վար սահած Թափած քարեր, նետեր նիզակներ, և այն գրեթէ չբացատրելի խառնուրդը, զարնուածքը, անամպ երկնքի մը տակ սաստկաձայն որոտմունքը, և աննման հեղեղի մը եռալ փեռալը, խոյլքն գլխէն Թռաւ, սասկումն և յափշտակութիւն զինքն վերացուցին, կ'ըսէ պատմիչն, մինչև յահաւոր հանդէս գալըստեանն Քրիստոսի 'ի դատել զաշխարհ 'ի վախճան ժամանակի. և քանի որ միտքն այն յափշտակութեան և եռանդեան մէջ էր՝ աստուածարեալ մարգարէի կամ ներշնչեալ բանաստեղծի պէս՝ (ինչպէս որ արդէն վարժ էր բանահիւսութեան), սկսաւ յանպատրաստից ստեղծել երգել սաղնաւոր չափով հինգ տուն սրտառուչ երգ կամ շարական մը, որ կու սկսէր,

Անզբաղելի ական սրտի նայեցող անձն իմ.

ղոր, գիտեմ դու այլ, Հայկակ, աւելի ախորժով ուզես կարդալ, քան այն պատերազմին շշուկը լսել. — ո՛հ, ի՛նչ ըսեմ, Թերևս այս երգս այլ մեր կորուսեալ Շապուհ պատմչին հետ գտուի. հիմայ ուզեմք չուզեմք պէտք է գոհանալ այս մէկ տողով, այս փշրանքով, ինչպէս որ մեր ուրիշ շատ հին ցանկալեաց այլ հազիւ մէկ տողիկն մէկ փշրրիկն ունիմք՝ մնացորդք ժամանակաց խառնակութեան, հնութեան կամ անհոգութեան:...

միս մէջ 1000 դրօշակիր կու յիշէ. այս հաշուով 500,000 կ'ըլլար զօրքն. բայց որովհետև ինքնին հոս 200,000 էն աւելի էր կ'ըսէ, մենք Ասողումուսէի բանակն այլ աւելցընելով՝ Թերևս աւելի չդրինք 250,000ք:

Բայց դու անցողաբար զայս այլ նշանէ, որ գրականութիւնն այս ատեն այս Բագրատունի տոհմին մէջ ծաղկած է եղեր և պահուած, հաւասար զինաշարժութեան:

Այն պատերազմին և Բուղայի գործոց վերջը ու դարձը՝ առաջ յիշեցի. հարկ է հիմայ ճամբել զնա՝ որ գտանամք յԱշոտ. բայց ցաւալի հարկ մ՚այլ կայ. պէտք է որ այն ճամբուն վրայ տեսնեմք նաև զհայրն Աշոտոյ, զհայրն Հայոց, զմեծոգին Սմբատ. որոյ մեծ արդիւնքն այլ յառաջ յիշեցի. ինքզինք զոհելով՝ հայրենիքը մեծ սպառնալիքէ և կորուստէ ազատելն, այնպիսի ժամու, և ըստ անուանն (Գարա-Բուղա) կատղած սեւ ցլու մը եղջիւրներէ. որ և պատուէր տուաւ սպարապետին՝ որ տունը հոգայ, տեղն իր որդին Աշոտը դնէ իբրև տեղակալ, և դայ ինքն, որ երթան ամիրապետին՝ արժանաւոր վարձքն առնու: Սմբատ թերևս կու գուշակէր ինչ վարձք ինչ վերջ ունենալը. բայց գոհ էր իր ըրած երախտեացն առ հայրենիս. գոհ էր իր տեղ իր ամենուին նմանն և սիրելին թողլուն. քաղաքական կողմանէ հոգ չունէր՝ Աշոտոյ պէս խոհեմ և կարիճ կորիւն մը դնելով իրեն փոխանորդ. ուզէց յապահովել հոգևորն այլ, զոր միշտ կու մտածէր յԱստուծոյ և իր հայրերէն ժառանգած բարեպաշտութեամբը. զոր և ժառանգեցուց իր զաւակացն, ոչ պակաս քան զքաջութիւն և զփառս: Արդ որովհետև նոյն ատեն կաթուղիկոսն վախճանած էր և աթոռը պարապ մնացած աշխարհին շփոթութեան պատճառաւ, Սմբատ այն նեղ ժամանակին կարելոյն չափ եկեղեցականները ժողովեց իր իշխանանիստ քաղաքաւանը, յԵրազգաւորս, և ամենուն յարմար անձ մը չգտնելով անոնց մէջ՝ ընտրել տուաւ արժանաւոր աշխարհական կամ՝ դեռ կարգ չառած անձ մը, որ էր Զաքա-

ղիս, Կոստայից գաւառին Ձորոյ գեղջն, որ է մօտ Երեւան քաղաքի, և հիմա Երանոս այլ կ՚ըսուի։ Ինչուան այս տաեն պատմութիւն բան չի յիշեր այս անձին վրայ, բայց գործն կու վկայէ որ ոչ միայն սրբութե վարուց ունէր, այլ և շնորհք տեսչութե այն բարձր աստիճանին համար՝ յոր ամբարձաւ, նոյն օրը ձեռնադրուելով 'ի կիսասարկաւագութենէ մինչեւ 'ի կաթողիկոսութիւն, և նստաւ յաթոռ Ս. Լուսաւորչին (854). իսկ գիտութեն այլ վկայ են իր գրուածքն՝ մեծ տօնից և աւագ շաբաթուան աւուրց վրայ, 15 ճառ, որչափ որ ինծի ծանօթ է. որոց մէջ բաց 'ի վարդապետական մեկնութեանց, ազգային աւանդութիւնք և տօմարական տեղեկութիւնք այլ կան։ Սմբատ՝ աշխարհին հետ զինքն այլ յանձնեց նորընտիր հայրապետին աղօթից. և անշուշտ շատ սրտառուչ եղաւ հրաժարականն՝ երբ մէկ կողմէն կաթողիկոսն իր գաւազանն առած, մէկայլ կողմէն Աշոտ՝ հօրը սպարապետութեան սուրը առած, շուարեր էին այս շուտ և անկարծական փոփոխութեանց վրայ, մինչդեռ նոյն անշփոթ շուտութեամբ զգաստ սպարապետն աւանդելով երկուքին այլ ինչ որ իրեն ամենէն ցանկալի էին 'ի հայրենիս, և ողջունելով զանինք, վերջին ողջոյն, փութացաւ երթալու առ Բուղա, առ Ջաֆր, 'ի Բաբելոն և 'ի բանտ, և ոչ եւս դառնալու 'ի հայրենիս։

## Է

Ոչ միայն ցաւալի այլ և շատ զգուշալի և դըժուարին էր Աշոտոյ վիճակն. Բուղա բոլորովին ազատ թողեր էր զնա, բայց Հայոց ոստիկան մ՚այլ և իբրև լրտես մը դրեր էր զԻպրահիմ. որուն հետ վարուելու թէ և քաղաքական խոհեմութիւն ունէր Աշոտ, բայց Պաղտատի լուրերն

զինքը կու խռովէին․ իշխանաց բանտարկութիւնն, իր հօրն այլ անոնց հետ, և հաւատքի ուրացութեան վախն։ Իր մէկ սխալ կամ յանդուգն քայլն՝ կրնար հօրը կենաց վնաս հասցընել․ մանաւանդ երբ ուրիշ իշխանք ուրացութեամբ յետ դարձան (857-8), և ոմանք հոն նահատակուեցան, և մընաց 'ի բանտի միայն Սմբատ, որուն գրեթէ ինքնիշխանութեան պատիւ խոստացած էր Բուղա խալիփային կողմանէ․ իսկ սա՝ անոր հաւատարմութեան փոխարէն՝ Աստուծոյ անհաւատարիմ ըլլալ կու պահանջէր 'ի Սմբատայ․ և զի նա ճըշմարիտ մեծահաւատ և մեծոգի էր, ոչ բռնաւորն կրնար յաղթել, ոչ Սմբատայ կապանքը կու քակուէին։ Աշոտ որչափ ջանք և աղաչանք ըրաւ առ Ջափր, յայտնի չէ․ բայց այնչափ հաւատարմութիւն ցըցուց, որ ոչ իրեն և ոչ հօրը վրայ կրցան կասկած ու մեղադրութիւն մ'ընել․ Թէպէտ ինչպէս հօրն, այնպէս այլ իրեն երբեմն ծանր ծանր և անախորժ հարկեր կու դնէր այս հաւատարմութիւնս․ և շատ հեղ ծանրութիւն տուողքն այլ՝ իր համազգիքն կ'ըլլային, ապստամբութեամբ և անհնազանդութեամբ․ պէտք էր կամ նուաճել զանոնք, կամ անոնց պէս ապստամբ և յանցաւոր երևիլ, և անկէց այլ աւելի՝ մոռացող կարծուիլ հօրը կապանաց և բանտին։

Այսպիսի առթի մ'եղաւ Գրիգոր Մամիկոնէից տէրն, որ ուրիշ գլխաւոր իշխանաց հետ գերուած և բանտարկուած էր 'ի Բաբելոն, բայց յաջողութիւն մը գտնելով՝ փախաւ անկէ և թշնամեաց միջէն անցնելով՝ եկաւ իր երկիրը, 'ի Բագրեւանդ․ և անկէ այլ ամուր տեղ մը գտնելու պատրաստուած առտեն՝ յետ եօթն աւուրց մեռաւ։ Ետևէն ընկնող արաբացի ոստիկանն պատուիրեր էր Աշոտոյ՝ որ ուր այլ ըլլայ՝ երթայ բռնէ զԳրիգոր․ Աշոտ լսելով անոր մահը՝ գլուխը հանել

տուաւ և ղրկեց բռնաւորին, լսելով որ փախչե-լու տեղն բռնուած է։ Ոստիկանն ուրախացաւ, խալիֆային 'ի վարձ հաւատարմութեան Աշոտոյ՝ իրեն պարգևեց Գրիգորի երկիրը (Բագրևանդ), և իբր 30,000 ֆրանք այլ վրան։

Ասոր նման դիպուած մ'այլ եղաւ Արծրու-նեաց իշխանաց հակառակութեան պատճառաւ. ուր (ինչպէս առաջ յիշեցի) Գուրգէն իշխանն ապստամբէն կու տիրէր. բայց երբ դարձաւ միւս Գուրգէն եղբայրն Աշոտոյ՝ բուն տիրոջ Արծրու-նեաց, և անոր որդին Գրիգոր Դերենիկ (858), մէջերնին շփոթութիւն ծագեցաւ. զոր և շատել-ցընելու համար՝ առաջին Գուրգէնն թողուց իր երկիրը և Յունաց կողմը անցնիլ ուզեց. եկաւ ինչուան յԷրզրում, որոյ արաբացի քաղաքա-պետըն Բշրի և Զըբըրի՝ բռնեցին զնա և Աշոտոյ խաւրեցին. Աշոտ շատ գժտրացաւ՝ այնպիսի կարիճ և զզօն մարդ մը անարգ վրէժխնդրութե-մատնելու. բայց քանի որ հօրը կապանքն կու յիշէր՝ իր սիրտն աւելի կու կակղնայէր։ Իրեն յանձնուածին կապն այլ չկրցաւ քակել, այլ յանձնեց Թիփլիզի քաղաքապետին, որ այլազգի էր. նա փորձեց և չկրցաւ հաւանեցընել զԳուր-գէն յուրացութիւն, ապա կապ կապի վրայ ա-ւելցընելով ղրկեց զնա 'ի Բաբելոն. ուր նոյնպէս հաստատ մնալով իր հաւատոց վրայ՝ դրուեցաւ 'ի բանտ. բայց մէկ կամ երկու տարի վերջը յա-ջողութեամբ պրծաւ, դարձաւ իր երկիրը։ Ար-ծրունեաց պայազատն (որդին Աշոտոյ) Դերենիկ՝ որ դեռ 14 կամ 15ամեայ պատանի մ'էր, և իբրև հօրը տեղակալ կու նստէր խալիֆային հրամա-նաւն, երբ իմացաւ Գուրգենի գալուստը՝ վախնա-լով որ չըլլայ թէ տիրէ երկրին, աւելի իր հաւա-կակցաց լսելով քան խոհական խնամակալաց՝ յանկարծ վրան վազեց, բայց վիրաւորեցաւ քաջ

ու փո՛րձ ըլլանէն։ Դարձեալ յանկարծակի յարձակեցաւ Դերենիկ, Գուրգէն արդէն հիւանդ ըլլալով՝ ձիէն ընկնալով բռնուեցաւ, և բանտեցաւ ('ի Հաղամակերտ, իշխանանիստ Արծրունեաց). բանտապանն քակեց և ազատեց զԳուրգէն, և գիշերանց բերաւ մօտեց զնա Դերենկայ քնարան սենեակը. Գուրգէն արդէն վէժիրընդրութեան պատճառ կրնար ունենալ, որովհետև Դերենկայ պապն սպաներ էր իր հայրը. սակայն իր սիրտն շատ մեծ էր՝ այսպէս գողաբար անխոհեմ տղայ մը սպաննելու համար. և մանաւանդ ազնուական տղայ մը՝ թէ և թշնամի, ո՛հ, բնութեան խաղաղութեանը մէջ՝ միշտ տղայ միշտ զըւարթուն է. Գուրգէն՝ թէպէտ և սուրը անոր գլխուն վրայ վերուցեր էր, մէկայլ ձեռքն այլ տակրին և դանակին վրայ, սակայն չկրցաւ արցունքը բռնել՝ սիրոյ և ատելութեան կռուին մէջ, լալով կանչեց. «Դերենիկ, որդեակ իմ Դերենիկ, » մնաս բարով, այսուհետև համարձակ տիրէ եր- » կրիս. ես կ'երթամ 'ի Յունաստան»։ Դերենիկ զարհուրած վեր ընկաւ, երազի պէս և երազէ ահաւոր տեսարանը տեսաւ, իր բանտեալը սուսերամերկ գլխուն վրայ կեցած. «Ա՛հ, հա՛յրս, խնայէ ինծի», կանչեց, և լեզուն բռնուեցաւ։ Գուրգէնի բաւական էր եղածն. արիւնէն աւելի էր արտասուքի վրէժն. նոյն արտասուքը չորցած՝ փութացաւ ելաւ ծածկուեցաւ տեղ մը, ինչուան որ յարմար առիթ գտնէ փախչելու Յունաց երկիրը, ուր որ շատոնց միտք ունէր երթալ։ — Բաւական չէ՞ր այս արտասուօք, այս թատերական տեսարանս. հարկ էր որ նոր դիպուածներ այլ նոր նոր տեսարաններ աւելցընեն։ — Իր պահուըտած տեղն (Երանգանի գեղըն) վանաց տէրտէրոջ քովն էր, որ հիւրադաւ անիրաւութեամբ՝ մատնեց զնա առ Դերենիկ. և սա թերևս աւելի վախով

քան տակլութեամբ՝ նորէն ամուր տեղ մը պա-
հել տուաւ զԳուրգէն, և պատուիրեց այլ որ
նեղութիւն չտան:

Այս առեններս մերն Աշոտ զբաղած էր իրեն
աւելի մօտ Հայոց, Վրաց և Աղուանից իշխաննե-
րը հանդարտեցընելու և ամիրապետին հպատակ
պահելու. այս դիպուածիս չկրցաւ հասնիլ յա-
ռաջ քան զկաթուղիկոսն Զաքարիա. որ երբ լսեց
Գուրգէնի մեծարարութիւնն և Դերենկայ փոքրո-
գութիւնն՝ քանի մը եպիսկոպոս հետն առած ե-
կաւ աղաչեց մանկահասակ իշխանորդւոյն՝ որ ար-
ձակէ իրեն կենաց խնայողը. պատանին այլ մէ-
կէն հաւանեցաւ, արձակեց զԳուրգէն. մէկ տեղ
դաշինք դրին, և դարձուց անոր հայրենի ժառան-
գութիւնը, որ էր Մարգաստան գաւառը, Նախ-
իջևանի մօտերն, և սիրով բաժնուեցան: Գուր-
գէն այլ անկասկած ըլլալով 'ի Դերենկայ՝ սկսաւ
վախնալ յԱշոտոյ. վասն զի իբրև ապստամբ յա-
միրապետաց մէկ մը բռնուած և անոր ձեռքը տը-
րուած, հիմայ որ նորէն փախչելով բանտէն ելեր
էր իր տեղը, 'ի հարկէ աւելի յանցաւոր կը սե-
պուէր, և աւելի պարտք կար Աշոտոյ՝ անոր վրայ
աչք ունենալու: Անոր համար Գուրգէն հանգիստ
չէր կենար տեղ մը, այլ աւելի Տարօնոյ կողմերը
կը պտըտէր, ուր մայրենի ազգականներ ունէր.
և հոն էր՝ երբ Աշոտ խաղաղցընելով զվերին Հայս՝
յանկարծ եկաւ այս կողմերս, Վանայ գաւառը.
Դերենիկ վախնալով դիմացն ելաւ. Աշոտ քիչ
մ'աւելի խրատել կամ վախցընել ուզելով, հրամ-
մեց որ արգիլած պահեն զնա Վանայ բերդը, ուր
ինքն այլ եկաւ: Գուրգէն հոս այլ առաջինի մեծ-
անձնութիւն մը բանեցուց՝ իր մերձաւորին վրայ,
բայց Թերևս ուրիշ կերպ մ'այլ ընդդէմ Աշոտոյ.
400 կարիճ ժողովեց և յանկարծակի շտապելով
եկաւ ոչ հեռու 'ի Վանայ՝ Նարեկայ մօտերը Նոր-

գիւղ ըսուած գեղը. և դեսպան խաւրեց Աշոտոյ միտքը իմանալու, և իմացընելու՝ որ եթէ զԴերենիկ պատժել և գերի տանիլ ուզէր՝ ինքն անոր ազատութեան համար պիտի պատերազմէր, (միաքը դրեր էր գիշերանց Աշոտոյ վրայ ընկնիլ). իսկ եթէ խրատելու համար էր ըրածն, աստ ապահովագոյն ճամբայ մը կ'երևի կ'ըսէր, եթէ հաճիս, քեզի փեսայացընել զԴերենիկ, որ հաւատարիմ և հնազանդ մնայ իբրև հօր: Աշոտոյ միտքն այլ այս էր. սիրով հնազանդեցընել զպատանին, որ նոր կարգուած էր, բայց նոր այլ այրի մնացած իր մօտաւոր հարսէն: Այս առթով երեք իշխանքն այլ աւելի բարեկամացան. Աշոտ առաւ զԴերենիկ հետը տարաւ 'ի Բագարան՝ աւանն Շիրակայ. և հոն իր զաւկին պէս պահելով զնա տարին մը. յետոյ մեծահանդէս հարսանիք ըրաւ, և իր սիրուն Սոփի դստրիկը պսակեց անոր հետ (862). ուսկից ծնան երեք անուանի իշխանքն Աշոտ-Սարգիս, Խաչիկ-Գագիկ և Գուրգէն. որոցմէ Գագիկ Արծրունեաց առաջին թագաւոր եղաւ և իր ցեղին ամենէն մեծագործ և հռչակաւոր անձն:

Այս ատեններս Դերենկայ հայրն՝ Աշոտ տէրն Արծրունեաց այլ դարձաւ, և իր իշխանութիւնը ժառանգեց. նոյնպէս իր երկրին խոստովանող եպիսկոպոսն այլ Յովհաննէս, և անոր ընկերն Գրիգոր քահանայն, և ուրիշ իշխանք այլ դարձան. միայն Արծրունեաց որդեսէր մայրն, տիկին Հռիփսիմէ՝ Բաբելոնի որդելանաց և տաք օդուն չդիմանալով՝ մեռաւ, և հոն օտարութեան մէջ թաղուեցաւ: Նոյնպէս այլ մեր Աշոտոյ հայրն՝ բազմերախտ Սմբատ, իշխանակցաց դառնալէն ետև՝ ինքն որ ամենուն առաջնորդն էր՝ ամենէն վերջին եղաւ, և ամենէն աւելի նեղութեամբ բանտի մէջ մնաց: Շատ հեղ հրապոյր լսեց, միշտ արհամարհեց, և ուրիշներուն աշխարհական երջանկու-

թիւնը տեսնելով անտրտունջ, անկէ ետեւ միայն իրեն անանց երջանկութեանը կը փափաքէր, որ և չուշացաւ. տասն ամիս նեղութենէ ետեւ[1] վախճանեցաւ աքսորանաց և արգելանաց մէջ, և թաղուեցաւ Դանիելի մարգարէին անուամբ ճանչցուած գերեզմանատեղին. թողլով Հայրենեաց պատմութեան մէջ պատուելի անուն մը, եկեղեցւոյ մէջ աւելի պատուելի Խոստովանող անունը և յիշատակին ընդ արդարոց, զոր Հայագիր նշանակէ 'ի 25 մեհեկի (3 մարտի)։

Աշոտ երկրի վրայ տխուր բայց յերկինս ուրախ բաղդ գտաւ, ունենալու նախ հայր մը, և յետոյ (55 տարի վերջը) որդի մը Խոստովանող կոչուած, և երկուքն այլ համանուն Սմբատ. ետքինն իր պապուն միայն համբերութեամբ երկարած խոստովանութիւնը՝ արեամբն այլ կատարեց ու կնքեց, ինքն այլ սրբազան նահատակաց կարգն անցնելով, (Յայսմաւուրաց) Հայագրին մէջ ահեկի ինն (ապրիլի 15) բանեց. իսկ ինքն Աշոտ այլ թէ ոչ ատենական խոստովանութեամբ՝ այլ յայտնի բարեպաշտ կենաց և մահուանն համար՝ արժանի սեպուեցաւ հօրը և որդւոյն հաւասարելու եկեղեցւոյ մէջ փառօք, որով՝ քան զնոսա գերազանցեց յերկրի։

1 Սմբատայ վախճանած տարին ըստ ոմանց կ'երեւի 859, և ըստ այլոց 861. Յայսմաւուրք 10 տարի կ'ըսեն իր գերութիւնը, բայց այս գերութիւնս Բուղային գալէն կու սկսին պատմիչք, որ է 852. այս հաշուով կրնայ 10 տարի ըսուիլ։

## Թ

Սմբատայ սպարապետ կողմնապետն Բուղա՝ իւ-մէ ապերախտէն պատիժն առաւ. նոյն ինքն Ջափր խալիփայն խաւրեց զնա իբրև կուսակալ 'ի Խորասան, և գաղտ պատուէր տուաւ ու սպաննեցին. իսկ ինքն ամենայն չարեաց առիթն այլ, ինչպէս առաջ յիշեցինք, իր որդիէն սպանուեցաւ (861). այս հայրասպանն այլ (Մոնթասէր) խղճէն տանջուած քանի մը ամսէ ետև մեռաւ. տեղն անցաւ (862) իր հօրեղբօր որդին Մոստային-Պիլլահ, որ իբրև փոխարէն Սմբատայ անպարտ մահուան և Աշոտոյ զրկանաց, անուանեց զնա իշխան իշխանաց, ոչ միայն Հայոց, այլ և Վրաց և Աղուանից. թէ և սա արդէն իբրև անոնց վերակացու և նախիշխան ճանչցուած էր՝ իր հօրը պանդխտութեան տարիէն սկսեալ. և այս տարիս (855) կու նշանակուի 'ի տարեգիրս սկիզբն իր իշխանութեան և Բագրատունեաց պայազատութեան. որ և նշանակեալ հանգիտմամբ (Քրիստոսի ծննդեան առոյգ տարին հաշուելով) Արշակունեաց թագաւորութեան սկսանելուն հազարամեակն էր. իսկ այն թագաւորութե̃ վերջանալէն ետև 'ի 428 թուին Քրիստոսի՝ նոյնպէս 428 տարի էր։ Բայց այս պատուոյս հասնելուն բուն առիթն էր Աշոտոյ խոհեմութեամբ և աչալրջութեամբ կառավարութիւնն.՛ հաւատարմութիւն՝ ոստիկանաց և ամիրապետին վստահութիւնը շահեր էր, յորդորանօք և առատաձեռնութեամբ՝ ազգային իշխանաց սիրտը. հասարակաց բարին դիտելով՝ անձնական զրկմունք կամ արհամարհանք բանի տեղ չդնելն՝ զինքն այլ աւելի սիրելի ըրին. զոր և ականատեսն Յովհ. կաթուղիկոս այսպէս կու բացատրէ. « Յորժամ փոխանակ

« Սմբատայ հօր իւրոյ պայազատէր զասպարապե-
» տութիւն Հայոց, գրեթէ ամենեցուն քան զնա
» նախադունեցին մեծագոյն ճանաչիւր. վասն զի
» ընկալեալ զմեծարանս՝ 'ի բաց արհամարհէր
» զանարգանս, և միշտ 'ի հրահանգս բարւոյ կըր-
» թութեան զմիտս վարժէր, և բարի աղգութեամբ իւ-
» րոյ օգտոյն տայր. ընդ ամենեսեան սէր սերտ,
» և ոչ 'ի հակառակութիւնս ինչ կամ 'ի կախս
» ընդ թշնամիսն մաքառեալ, քան թէ բարե-
» զգեաց բանիւք և բարի օճանաւ՝ զնոսա ածել
» յուղղութիւն և 'ի կամս իւր. իսկ զպայքարանս
» մնոտի շահուց մեծաս իւր վարկեալ՝ և առատա-
» ձեռն առ ամենեսեան գտեալ, յինքն զբազմաց
» միտս յանգուցանէր սիրալիր սրտիւ. որպէս զի
» յայսմ սակս ամենեքեան խակ նմա հաճեալ հա-
» ւանեալ էին... և ամենեքեան զաշխեա ընդ նմա
» գնէին, որպէս արգասիւ ընդ թագաւորական
» զարմի »: Խալիփայքն գանէն Աշոտոյ իշխանու-
թեան զգեստը տուաւ (862) Ալի-իպն-Եահեա
Էլ-Էրմանի կոչուած ոստիկանն, որ բուն Արզնի և
Նփրկերտոյ կուսակալ էր, և կու պատրաստուէր
երթալ ընդդէմ Յունաց. ինչպէս գնաց այլ՝ և պա-
տերազմի մէջ մեռաւ:

Իշխանապետութեան հետ Աշոտոյ յանձնե-
ցաւ աւելի ծանր և հոգալի պաշտօն մը, որ ին-
չուան այն ատեն քրիստոնէից չէր տրուած. այս-
ինքն է Հայաստանի հարկահանութիւնն. հարկե-
րը ժողովել և խալիփային դուռը խաւրել, կամ
յանձնել 'ի ձեռս ոստիկանի մը՝ որ դեռ կու նըս-
տէր 'ի Դուին, իբրև երեսփոխան և վերադիտող
մը ամիրապետին կողմանէ, առանց խառնուելու
ներքին կառավարութեան: Ի՞նչ և ո՞րչափ էր
Հայոց հարկն. մեր պատմիչք որոշակի կ'ըսեն
60,000 դահեկան (ոսկի), որ է իբր 750,000 Ֆր.
բայց ասիկայ Ա. Սմբատայ՝ Աշոտոյ որդւոյն ատե-

նին համար է, երբ Վասպուրական և ուրիշ մեծ նահանգներ զատուեր էին իրմէ, և իր ամփոփ իշխանութեանն տուրքն էր այդ. իսկ անկէ առաջ, Արաբացի պատմիչ մը կու յիշէ որ թէ Բագրատունեաց իշխանութեան (Շիրակայ), թէ Վասպուրականի, թէ Սիւնեաց, և թէ արաբացի ամիրայից իշխած երկիրներուն, որ են Կարին, Դուին, Արճէշ, Խլաթ, Խարզան, Պէրզէնտ (?), որ մէկ անուամբ Հայաստան կոչուէին, միագումար հարկն էր իբրև 2,500,000 ֆրանգ. անկէ զատ էր Տարօնոյ երկրին հարկն 60,000 կամ աւելի, Աղձնի և Մուֆարղնի հարկն՝ որ Հայաստանի և Տարօնոյ հարկէն աւելի էր, Ամդայ հարկն՝ որ Հայաստանի հարկին կիսուն չափ էր. Եփրատայ կողմերուն հարկն այլ զատ կու յիշուի. և բոլորի մէկէն գումարն 10 միլիոն ֆրանգի կու մօտենայ: Արաբացի պատմիչն կամ վիճակագիրն այս և ուրիշ յիշեալ աշխարհաց մէջ միայն բուն Հայաստանին համար կ՚ըսէ, թէ այս աշխարհս կամ վիճակս արծաթով կու վճարէ հարկը. արծաթ ըսելով զուտ արծաթ կ՚իմանայ, թէ ստակ (ոսկի և արծաթ). — կարծեմ առաջինն. վասն զի այս ժամանակէն դար մը առաջ Հայաստանի մէջ առատ և զուտ արծաթահանք գտնուած էին, խալիֆայից տիրած ատեն, հաւանական է որ այն արծաթէն կու տրուէր հարկը, գոնէ ատեն մը: — Հարկին չափը հարկահանաց և տնտեսաբանից թողլով, արծաթահանքն այլ երկրաբանից քննութեանն, դառնանք յիշխանապետն Հայոց:

Աշոտ բարձրագոյն պատուոյ հասնելով իր առաջին իշխանութիւնը, այսինքն սպարապետութիւնը՝ տուաւ իրմէ վերջը եղող եղբօրը, որ էր Աբաս, «այր քաջ, անձնեայ և թիկնաւէտ, ա-
» ռոյգանձն և գեղեցիկ հասակաւ, կորովի և յա-
» ջողակ 'ի պատերազմունս. որ և աջակցեալ իսկ

» եղբօր իւրում Աշոտոյ՝ զամենեսեան հնազան-
» դեր ընդ ընծով ծառայութեան. 'ի բազում կող-
» մանս բազում անգամ արութիւն ցուցեալ, և
» հռչակաւոր և ՚հոյակապ 'ի մէջ թագաւորաց ե-
» րևեալ[1] »: Սպարապետութիւնն ինչպէս որ-
դեամբ՝ այսպէս և պատուով առաջին էր 'ի Հայս
այն ատեն՝ յետ նախիշխանին. իսկ երբ իշխանա-
պետն թագաւոր եղաւ՝ իր և սպարապետին մէջ
նոր պատիւ կամ աթոռ մ'եղաւ իշխանաց իշխանն.
ասկէ զատ և վար կարծուի Տէրանց-փէր պատիւ
և աթոռն. իսկ քիչ ատեն վերջ՝ առնցմէ այլ
վեր և անմիջապէս թագաւորէն ետև դրուեցաւ
Երկրորդ-արքայի պատիւն, որ երբեմն թագաւորին
ժառանգն կ'ըլլար, երբեմն մեծ երկրի մը նահա-
պետն. — ուրիշ մեծ պատիւ և աթոռ մ'այլ հաս-
տատեցաւ Մարզպան Հայոց կոչմամբ, որուն իշխա-
նութիւնն կամ պաշտօնն շատ որոշ չինշանակուիր.
(յայտնի է որ Սասանեանց տիրապետութեան
ատենի մարզպանաց նման չէր, վասն զի անոնք
հիմակուան ոստիկանաց պաշտօնը կու վարէին,
և իբրև միանգամայն իշխանապետ և հարկահան
էին. գուցէ Բագրատունեաց մարզպանն՝ հարկա-
ժողովին ըլլայ, կամ սահմանապահն): Այս պա-
տիւներէս ոմանք, և ուրիշ շատեր այլ, Ա. Սմբա-
տայ ատեն որոշուեցան, և ոմանք անկէ ետքը.
իսկ իր հօրը Աշոտոյ կարճ թագաւորութեան ա-
տեն՝ ոմանք միայն, ուսկից անշուշտ իր որդւոյն
այլ մասն հասներ էր:

Եւ էին (յիշեալ) որդիքն Աշոտոյ՝ Սմբատ Ա,
իր յաջորդ թագաւորն, Դաւիթ, Սահակ, Շապուհ.
իսկ 'ի դստերացն յիշուին, մէկ մը՝ կինն Գուա-
րամայ իշխանորդւոյն Վրաց. երկրորդ, նախա-
գրեալն Սոֆի՝ տիկին Արծրունեաց, երրորդ Մա-

1 Յովհ. կաթ.:

ըխամ՝ Սիւնեաց տիկին, կին Վասակայ՝ որ մականուամբ կամ փոխաբերական կոչմամբ Գոխտն կ'ըսուէր. զոր և Աշոտ երբ իշխանապետութեան հասաւ՝ հաւանութեամբ ամիրապետին հաստատեց 'ի տէրութեան հայրենեացն. կամ որոշ ըսելով Սեւանայ ծովուն բոլորտիքը եղած Գեղամայ գաւառներուն. վասն զի բուն հարաւային Սիւնիք (որոյ գլխաւոր գաւառքն էին Վայոց ձոր և Բաղք) զատ և աւելի մեծապատիւ իշխան մ'ունէին, որ և բուն Սիւնեաց տէր կամ դահերեց իշխան կ'ըսուէր. և այս տանն իշխողն այլ Վասակ մ'էր, Իշխանիկ մականուանեալ. մեկայլքն՝ Սիսականք կ'անուանէին իբրև սերունդք Սիսակայ 'ի Թոռանց Հայկայ, ևս և Հայկազունք. Արաբացիք Սիւնէձան կոչեն զասոնք, իսկ զբուն Սիւնիս՝ իրենց գլխաւոր գաւառին Վայոց ձոր անունը ծռելով՝ Վայոցըր կոչեն։ Այս տեղեկութեան և քանի մը յաջորդ դարուց պատմութիւնը և անձինքը որոշելու համար՝ հարկաւոր է այս զանազանութիւնը գիտնալ[1], և մանաւանդ մականունները որոշել. զոր երանի թէ պատմիչք այլ միշտ անուանց քով նշանակած ըլլային, վասն զի անուանակից իշխանք շատ կան, ինչպէս այս երկու մեծ Վասակ իշխանքս. որոց մեկն փեսայ Աշոտոյ, միւսն այլ թէ և ոչ խնամի, այլ նոյնպէս կու պատուէր և կու պատկառէր յիշխանապետէն. «յա-
» ւէտ իմաստութեամբ և հեզահամբոյր հանդար-
» տութեամբ և հաւանութեամբ մեծաւ հնազանդ
» դէր Աշոտոյ իշխանին իշխանաց, և խրատու նո-
» րա զունկն մատուցանէր խնամով, իբրև զօրէնս
» միշտ 'ի սրտի իւրում պահելով. և 'ի ձեռն այ-

1 Պատմիչք մեր երբեմն այսպէս կու զանազանեն, երբեմն խառն կամ շփոթ կը յիշեն. Զամչեան պատմահայրն այլ մեր հոս դրածին հակառակ՝ զՑեղ Գաբուռին Սիւնի կոչէ, զԻշխանիկն՝ Սիսական։

» Նորին յաւէտ իմն ընդարձակագոյն զատուն ան-
» րութեան իւրոյ յարգարէր 'ի բոլոր բարեմասն
» լրութիւնս. և կայր բազում խաղաղութեամբ
» ըստ ամենայն հանգիսի բարեպաշտութեան »:
— Իսկ Գաբուռն Վասակ փեսայն Աշոտոյ՝ կարճ-
օրեայ մեռաւ, չորս կտրիճ թողլով, Գրիգոր-
Սուփան՝ իր յաջորդը, Աշոտ, Սահակ և Վասիլ
կամ Վասակ. որք միշտ պապերնուն հնազանդ
եղան, և մօրերնուն վրայ մեծ սէր և խնամք ցու-
ցին՝ Յուսիփայ հալածանաց ատեն. բարեպաշտու-
թեամբ և շինութեամբ այլ անուանի եղան, ինչ-
պէս իրենց մայրն այլ Մարիամ: *

* Աշոտոյ իշխանապետութեան տարին հեռաւոր
աշխարհի մը մէջ այլ իշխանապետ մը անուանե-
ցաւ, և նոր տէրութիւն մը կանգնեց, որ հազա-
րամեայ անուղղութեամբ և տարածութեամբ հա-
սաւ Աշոտոյ տիրած տեղերուն այլ տիրեց. Ռիւ-
րիկ Վարեկեացին Նուեռաի եզերքներէն եկաւ Պալ-
տիկ ծովուն արեւելեան կողմը, ուր դարերէ վեր
բնակէին Սլաւեանք. որք նեղեալ 'ի Ֆիննեան ազ-
գաց՝ յօգնութեան կանչեցին զնա. Ռիւրիկ եկաւ այս
ատենս (862) Նովկորոտի քով, և յետոյ 'ի նոյն
իսկ 'ի քաղաքն դրաւ իր իշխանապետութեան աթոռը.
և այսպէս եղաւ սկիզբն լայնածաւալ ու մեծա-
զօր տէրութեան Ռուսաց, որ և յետ հազարա-
մեայ կենացն դեռ երիտասարդութեան ուժոյ
մէջ կ'երևի. մինչդեռ իր ծնած կամ ձևացած ա-
տեն՝ Աշոտոյ ազգն արդէն ծերացեալ էր. Ռիւ-
րիկեայ ժառանգորդն երկրիս ծայրերէն կու մօտե-
նայ 'ի կենդրոնն, իր հարաւագոյն երկիրն հիմա
գրեթէ Հայաստանն է. Աշոտոյ ժողովուրդն իր
կեդրոնական կողմերէն կու սփռի ինչուան Նով-
կորոտէն անդին, և իր հիւսիսագոյն գաղթականքն
գտուին 'ի մայրաքաղաքին Ռուսաց ('ի Բետեր-
պուրկ):...

Ժ

Իշխանապետութեան առաջին տարին՝ Աշոտ իր անթուանիստ Շիրակաւանին քով զօրահանդէս մ՚ըրաւ իրեններուն և հանդերձ իրեն հաւան և հօրը իշխանաց և ազնուականաց զօրքը. իսկ անհաւան հիւսիսայնոց (կովկասեանց) դէմ՝ կու պատրաստուէր յարձակելու։ Մինչ դեռ հոս բանակած էր, Կ. Պոլսոյ բանացեալ պատրիարքին՝ Փոտայ՝ նուիրակն եկաւ, թուղթ մը տուաւ առ իշխանապետն, և ընծայ՝ մասն 'ի սուրբ խաչափայտէն Քրիստոսի. զոր մեծ հաճութեամբ և հաւատով ընդունեցաւ Աշոտ, իբրև պսակ իր բարձրացեալ գլխոյն, յառաջ քան զթագն թագաւորական, և միշտ հետը տանէր ուր որ երթար։ Այս թղթով յորդորէր Փոտ զԱշոտ՝ ընդհանրական եկեղեցւոյ հետ միութիւնը անկասկած հաստատել՝ չորրորդ տիեզերական ժողովն ընդունելով. որոյ համար Զաքարիայ կաթուղիկոսին այլ առաջուց գրեր էր, և ըստ խնդրոյ նորա խաւրեր Նիկիոյ մետրապօլիտը՝ Վահան կամ Յովհան, իբրև իրեն երեսփոխան. որպէս զի բերան 'ի բերան խօսելով այս Հայոց և Յունաց մէջ հակառակութեան խնդիրը լաւ պարզէ և իմացընէ. ինքն այլ իր թղթին մէջ կու յիշէր այն ժողովքին համար եղածները 'ի Հայս և 'ի Յոյնս։ Իշխանապետն և կաթուղիկոսն հրամեցին ժողովք ընել եկեղեցականաց և իշխանաց 'ի Շիրակաւան. որոց հետ գտուեցաւ և մեծանուն ասորի սարկաւագապետն Նանա, որ երբեմն 'ի խնդրոյ Բագարատայ իշխանապետի գրեր էր Յովհաննու աւետարանի մեկնութիւն մը՝ Ս. Հարց ասորերէն գրած կամ թարգմանուած գրքերէն հաւաքելով, և յետոյ արաբերէն թարգմանելով. վասն

զի անշուշտ այս լեզուն ծանօթ և ընտանի էր Բա-գարատայ. որոյ գերութեան և բանտարկութե̃ ատեն՝ Նման այլ բանտեցաւ 'ի Ջափրայ, և յետ խոստովանական համբերութեան և նեղութեանց՝ ազատեցաւ. իսկ իր գիրքն ընկաւ Սմբատայ (ասպա-րապետին) ձեռքը, որ և հայերէն թարգմանել տուաւ. յետոյ մերս Աշոտ այս գիրքը թողուց իր բարեպաշտ դստեր Մարեմայ՝ տիկնոջ Սիւ-նեաց, որ նորէն թարգմանել կամ հայերէն շա-րադրութիւնը կոկել տուաւ. որով մեր այս Թ դարու մատենագրութեանց կարգն անցաւ. և թէ այս.բանիս համար հարկ սեպեցի յիշել հոս, թէ ատենին և ժողովքին անձինքը լաւ ճանչնալու:

Արաբացւոց բռնակալութե̃ ատեն գրեթէ դար ու կէս միջոց ժամանակի՝ Հայաստան նշանաւոր եկեղեցական ժողով մը չէր եղած. յետ ժողովոյ Յովհաննու Օձնեցւոյն (722-4) այս առաջինն էր (862), ուր Վահանայ մետրապօլտին խոհական, երկար և պարզ մեկնաբանութիւնքն, Աշոտայ և Զաքարիայի ուղղասէր և խաղաղասէր ոգիքն՝ միաբանելով, ժողովն այլ հաւանեցաւ և ընդու-նեցաւ Փոտայ առաջարկութիւնը. որով Հայք աւելի մեծարեցան 'ի կայսերաց; եւ առաւել ի-րենց իշխանութեան ներքեւ եղողք: Բայց գտնուե-ցան և անհաւանք, ինչպէս Սահակ Մռուտ, որ և Ապիկուրէշ մականուանեալ, եպիսկոպոս Տա-յոց յԱշունք[1], որ Յունաց ձեռքն էր այն ատեն, անկէ հալածուած եկաւ Աշոտոյ քով, իբրև ժո-ղովին պատճառը քննելու համար. և անոր հա-կառակ մտօք թուղթ մը գրեց առ Փոտ, իբրև 'ի դիմաց Աշոտոյ, ինչպէս կ'ըսեն իրեն համախոհքն, և ինչպէս կու կարդան այն ինքնակամ թղթին օ-

1 Անծանօթ, եթէ չէ Իշխան մեծ աւանն Տայոց, կամ Նօշք Թորթումայ:

ընծայեաց մեզ. որում Թերևս միայն սկիզբն Աշոտոյ գրածն կամ գրել տուածն ըլլայ. «Քահա-
» նայապետի զգօնացելոյ, պարկեշտի և առաքի-
» նասիրի որ 'ի Քրիստոս վարուք, Փոտ վերադի-
» տող մեծ քաղաքին Նոր-Հռոմայ պատրիարգ.
» Աշոտ իշխանաց իշխան Հայոց Մեծաց: Զգիր
» հանճարեղ խոհականութեանդ ձերոյ, ո՛վ աս-
» տուածարեալդ, ընթերցայ, և յոյժ ուրախու-
» թեամբ բարեբանեցի զերկնաւորն զՔրիստոս,
» զփրկիչն մեր և զկեցուցիչ, յաւէտ կենդանու-
» թեամբ զօրութիւնդ ձեր տեսանելով պաշտօ-
» պանեալ. այլ և զնախնականդ առ միմեանս զսի-
» րոյն կապակցութիւնս, զորս ներբողական բա-
» նիւ յիշատակեալ էիք: Շնորհ բազում ունիմ
» և կոչեայց Սրբութեդ», և այլն: Աշոտոյ հարա-
զատ Նամակ մը կայ առ Փոտ համառօտ, յորում
շնորհակալ կ'ըլլայ ղրկած խաչափայտին մասին
համար, և առ կայսրն հաւատարիմ ըլլալուն վը-
րայ, առ որ յորդորեր էր Փոտ. Թէ և ասոր Թղթին
մէջ այս նիւթիս վրայօք ուրիշ բան չեմք գտներ
բայց այս խօսքս. «Նախ յԱստուծոյ՝ պահպա-
» նական շնորհիւն ամրացեալ 'ի Թշնամեաց, և
» յորոգայթից պահպանեալ պատահմանցն. զկնի
» և յորթոդոսաց[1] սուրբ Թագաւորացն, զերկա-
» քանչիւրսն ժառանգելով, զայժմուս և զհան-
» դերձեալսն:.. Առաքեցաք քաջատոհմութեան
» և մեծանձնութեանդ քո՝ յիշատակ օրհնութե
» 'ի պաշտպանեալ աստուածընկալ պատուա-
» կան խաչէս »:

Իմ գտած Աշոտոյ պատասխանին և Նամակին
այս է. «Յաւէտ հեշտութեամբ ընկալայ, ո՛վ
» պատուական գլուխ և հայր սուրբ, զառ 'ի
» քէն գրեալդ. անխախտելի կալ միալ մեզ 'ի

1 Այսինքն՝ ուղղափառ:

» սպասաւորական հնազանդութեան տուրք և աս-
» տուածապարգև Թագաւորութեանդ, ըստ աս-
» տուածային գրութեանցն՝ որ մեզ աւանդեցաւ.
» յորմէ ոչ երբեք խոտորեալ, քան եթէ միշտ 'ի
» նոյն խոկալով հնազանդութեան և սպասաւո-
» րութեան խորհուրդս. ցանկ սպասելով ազդե-
» ցեալ ինչ 'ի մեզ հրամանի ինքնակալ Թագաւո-
» րութեանդ, զորս անսայթաք և առանց հեղ-
» գալոյ զփոյթ յօժարութեանն արդիւնաւորիմք,
» խորհրդով և երկիւղիւ, վերնական շնորհացն
» ազդեցութեամբ: Այլ և զքոյդ պատուական
» սիրելութիւնդ՝ անընդմիջաբար 'ի խորհուրդս
» իմ յաւէտաբար կրեմ զսիրոյն կապակցութի,
» ըստ արժանաւոր քոյդ մեծութեան, և պար-
» կեշտ և նազելի և մաքուր վարուց. ըստ որում
» հայցեմ 'ի նուիրական և մշտահայց յընդունակ
» քո աղօթս և զմեզ յիշատակել. հայցելով յա-
» պէնիազն Աստուծոյ, զի և 'ի մեզ կանխեսցէ զա-
» ռատապարգև շնորհացն իւրոց զողորմութիւն:
» Եւ խաղաղութիւնն Աստուծոյ վերահովանա-
» ցի ձերում սրբութեանդ, պահպանելով ան-
» վրդով յամենայնի զքոյդ արժանաւոր և պար-
» կեշտ գլխաւորութիւնդ: Օրհնութեանս՝ զոր
» առաքեալ էք յաստուածընկալ և յամենա-
» յաղթ նշանէդ, խոնարհ երկրպագութիւն մա-
» տուցի. և շնորհակալութիւն, յաւէտ միւս ևս
» վայելչական ողջունիւ »: Այս վերջին խօսքս կ'ի-
մացընէ որ խաչափայտէն զատ վայելուչ ողջոյն
մ'այլ խաւրեր էր Փոտ, որ Թերևս շնորհաւորու-
Թիւնն ըլլայ Աշոտոյ իշխանապետութեն համար:
Այսչափ բաւական սեպէ հիմայ, Հայկակ, այս
խնդրոյս և գիպուածոյս վրայ. և եթէ աւելի ու-
զես, հարցուր մեր նոր պատմահօր (Չամչեան),
որ և կու յիշէ այդ Թղթագիր Սահակայ և Աշո-
տոյ անուամբ հարցմունքը և պատասխանիքը, 'ի

հարկէ նոյնպիսի խնդրոց վրայ, բայց չինծու և եռքէն կարկըրաած: Իսկ ես յիշեմ տաղ մը 'ի Յարութիւն Քրիստոսի, որոյ սկիզբն է.

Քուեաեզք ձայնեալ զուարթնոյն ըղձալքութիւն խաչեցելոյն,
Շուրջ պատեալ ըզվիմովն եւ զկափարիչ գերեզմանովն.
Յուր սուրբ կնաւքըն խուճապեալ, եւ վարշամակն աղաղակէր,
Տէր յարեաւ. պատմեն զայս ամենայն ախեզերաց:

Ինչպէս կու տեսնես տողադրուած տառքն կապեն Աշոտ, և շարունակելով բոլոր տաղն կապէ Աշոտ Բագրատունեաց Բագրատ Սահակէ. կրնայ կարծուիլ թէ այս Մռուռ Սահակս եղած ըլլայ Աշոտոյ թագաւորած ատեն և շողոքորթութեամբ թագաւորաց թագաւոր անուանած. բայց դուցէ անծանօթ Սահակ մ'այլ ըլլայ՝ անոր թոռան ժամանակ՝ (Բ Աշոտոյ Երկաթի) որ Շահանշահ ըսուեցաւ, այսինքն թագաւորաց թագաւոր, որովհետև իր ատեն (30 տարի յետ Մեծին Աշոտոյ) ուրիշ ազգակից և սահմանակից թագաւորք այլ բուսան: Փոտ ինչպէս Աշոտոյ՝ այսպէս Զաքարիայի այլ պատճառ եղաւ թղթակցութեան և Յունաց մօտենալու. կաթուղիկոսն ուրիշ եկեղեցական խնդիրներ այլ ըրաւ Վահան մետրապօլտին հետ, և նոր ու հին տեղեկութիւնները խառնեց իր գրած ճառերուն մէջ:

## ԺԱ

Ժողովքին յաջորդ տարին (863) մեծ բնական դիպուած մը պատահեցաւ 'ի Հայս, որ թէ իշխանապետին և թէ քահանայապետին գութը և խնամքը շարժեց: Այս դարուս (Թ) գրեթէ բոլոր վերջին կիսուն ատեն երկրաշարժեր եղան արևելք, Կ. Պօլսէն սկսեալ ինչուան 'ի Հնդկաստան, մեծ վնասներով. շատ անգամ այլ հանդիպեցաւ 'ի Հայաստան, որուն լեռներն և հրաբղխի կազմուածքն գետնաժաժի ահեղ թատր կ'ըլլան. այս միջոցիս մասնաւոր թատր և ողբական թատր եղաւ Դուինն քաղաքն իր սահմաններով: Այս քաղաքս յետ մահուան մեծին Տրդատայ, 'ի կէս Դ դարու, կանգնեցաւ Հայոց հին մայրաքաղաքին՝ Արտաշատայ քով, տափակ բլուրի մը վրայ, որ կ'երևի թէ մարած հրաբղխի կատար մ'է. 500 տարիէ 'ի վեր էր որ Հայաստանի առաջին քաղաք կը ճանաչուէր, և յետ մեր վերջին Արշակունի թագաւորաց՝ աթոռ եղաւ Պարսիկ մարզպանաց և յետոյ արաբացի ոստիկանաց, և այնպէս էր դեռ այս յիշած ատենս այլ, և անկէ այլ ետև գրեթէ դար մը և աւելի այլազգեաց ձեռքն մնաց: Մեծ մայրաքաղաքի մը շատ յատկութիւններ ունէր. բազմամարդութիւն, հարստութիւն, շինութիւն, շուայլութիւն, և այլն. անոր համար պատմիչք ժամանակին՝ եղած վտանգը քաղաքացւոց մեղաց պատուհաս կը սեպեն, որոց մէջ թէ քրիստոնեայք թէ այլազգիք շատուոր էին. և յիրաւի զարմանալի է որ այս ատենս, (30 տարուան միջոց) երեք մեծ ժաժ կու յիշեն պատմիչք, երեքն այլ 'ի Դուին հանդիպած, մէկմէկէ սաստիկ և ահեղ. առաջինն եղաւ այս թուիս (863) մեծ

պահոց մէջ[1], և շատ շէնք փլան քաղաքին ամէն կողմն այլ, հանդերձ մասամբ պարսպաց քաղաքին. և որ աւելի կսկծալին է 12,000 հոգի փլատակաց տակ կորաւ. մնացեալ բազմութիւնն սարսափած տուներէն փախան, և ուրիշ ծածք չգտնողք՝ հրապարակ և բաց տեղեր կենային. եղանակն այլ դեռ ձմեռ ըլլալով, և սաստիկ ձմեռ, շատերն ցրտէն վնասուեցան, ինչուան ոմանք սառելով կամ ձեռքերնին և ոտուըննին կորսնցնելով: Աւելի վախ տուողն այլ ժամին նոր սպառնալիքն էր, վասն զի երեք ամիս ատեն ատեն կ՚երերար գետինն: Ասոր համար Զաքարիա կաթողիկոս աղօթք հրատարակեց հաւատացելոց, ինքնին աղօթականաց գլուխ կենալով. և իր բարեպաշտութեան պտուղ սեպուեցաւ սասանութեան դադրիլն: Բայց չորս հինգ տարի ետև (867-8)[2] նորէն ժամ եղաւ և գրեթէ ամբողջ տարի մը քշեց, երբեմն աւելի երբեմն պակաս մնաս ընելով. սակայն բոլոր կորուստն մէկ տեղ բերելով սոսկալի թիւ մը կու նշանակէ պատմիչ մը, 120,000 ոգի փլատակաց և պատառմանց մէջ փճացած. եթէ գրչաց մէջ սխալ չկայ, որ բացարձակ կու գրէն, « Խորասուզեաց յանդունդս իբրև երկոտասան » բիւր մարդկան. ահա խոտոյ նմանութիւն սափ « մարգ »: — Բայց անկէ ահեղ և մեծ սեպուած է 25 տարի ետև հանդիպածն (893) Աշոտոյ մահուանէն քանի մը տարի վերջը. վասն զի յանկարծակի և գիշեր ատեն եղաւ, և այնպէս սաստիկ՝ որ քաղաքին մեծ մասն կործանեցաւ, և

1 Փոխրէլ լուսաբերոյն կ՚ըսէ Ասողիկ պատմիչն. բայց չեմ գիտեր առաջինն շաբաթն է Պահոց, թէ ուրիշ շաբաթ մը:

2 Կամ երկու տարի այլ ուշ. վասն զի 'ի ձեռագիրս թիւն տարբերի, ոմանք ունին ՅԺԶ (867-8) ոմանք ՅԺԸ (868-9):

70,000 ոգի մէկ ցնցմամբ ընկան անկանգնելի. որ՝ ոչ միայն մարմնաւոր կենաց՝ այլ և հոգւոց մահուան մեծ վախ տուաւ. վասն զի շատերն չփութելով կարծեցին թէ Աստուծոյ նախախնամութիւնն բոլորովին հեռացեր է անոնցմէ. որոնց միտքը և հոգին բժշկելու՝ միայն հնարաւոր գըտուեցաւ Սևան կղզւոյ վանահայր մեծ և գիտնական ճգնաւորն Մաշտոց, որ այն ատեն 'ի Հայաստան առաջին անուանն էր սրբութեամբ և կրօնաւորութեամբ, և ամենուն ծանօթ. որով և յաթոռ կաթողիկոսութեան հրաւիրեցաւ (897)։ Թէ ժամանակիս ամենէն նշանաւոր անձանց մէկն ըլլալուն, և թէ Աշոտոյ հետ այլ ծանօթութիւն ունենալուն՝ հարկաւոր և արժելի է հիմայ թողուլ զՇուշին կիսաւեր կիսականգուն, և Սևանայ մենաւորը նկատել։

Մաշտոց, որոյ մկրտութեան անունն թուի Ստեփաննոս, Աշոտէն իբրև 14 տարի վերջ յաշխարհ եկած է (833-4) քահանայական ազնիւ ցեղէ մը, յԵղիվարդ գեօղ Այրարատայ, Արայի լերան ստորոտը. ուր առաջին տարիներն անցուց իր հօր՝ Գրիգոր քահանային խնամոց և գգուատութեան տակ. որ և այն ատենի բանաւորոյ տափկանաց նեղութենէն զզուած, թողուց հայրենիքը և եկաւ Գեղամայ ծովուն հարաւակողմը Սոթք գաւառին մէջ բնակեցաւ, և բարեպաշտութեամբ կու կրթէր զաւակները. որոնցմէ ըղՄաշտոց՝ երբ չափահաս եղաւ՝ դրաւ 'ի կրթութիւն և 'ի կարգ քահանայութեան 'ի վանքն Մաքենոց, որ Գեղամայ և Սոթից գաւառին միջոց ծովուն մօտ՝ սարատափ տեղ մը շինուած է, և հիմայ Գէօլ-Գիլիսէ կ'ըսուի. իսկ այն ատեն այն կողմերուն, և թերևս բոլոր Հայոց վանքերուն մէջ նախապատիւ էր, իր միանձանց խստակրօն վարուք և գիտնականութեամբ. որոյ պատճառ

եղած էր իմաստուն հայրն Սողոմոն, դար մը և աւելի առաջ: Այս վանքս որ քանի մը Սողոմոններու մենարան, Ստեփանոս Սիւնեցւոյն վարժարան, Վահանայ Գողթնացւոյն օթևան եղած էր, Մաշտոցի այլ մարգարան եղաւ. Թէպէտ և քիչ առաջ Բաբանայ բռնութեամբ աւրուած էր, և միանձունքն ցրուըտած, բայց Աշոտոյ փեսայն՝ Վասակ՝ նորէն նորոգել տուեր էր (յամի 851), և կրօնաւորքն ժողովեր էին, որոց հիմակուան ամենս առաջնորդն էր Ստեփանոս անուամբ մէկն. որ դաստիարակեց զՄաշտոց, և քահանայ ձեռնադրել տուաւ Սիւնեաց եպիսկոպոսին (Դաւթի): Մաշտոց հոգևոր և գրաւոր կրթութեամբ հոն կատարուելով, և աւելի առանձնական ճըգնական կենաց փափագելով, Թողուց արդէն բաւական խստակրօն (Մաքենոցաց) վանքը, և Արտաւազդայ-ապարանք ըսուած տեղը անապատասուն ճգնաւորաց մէջ գնաց: Քիչ ատենէն անկէ այլ ելաւ, և եկաւ՝ այն տարին յորում Աշոտ իշխանապետութեան հասաւ (862), ինքն այլ մտաւ 'ի Սևան, յամայի և միայնուկ կղզին Գեղամայ ծովուն. և քան զնա զարմանալի տիրութիւն կամ հասարակութիւն մը հաստատեց, որ և յետ վերցուելու Աշոտոյ տէրութեան և ցեղին, և յետ հազար տարւոյ՝ դեռ ինչուան հիմայ այլ կու դիմանայ: Այս հասարակութիւնս էր խստակրօն ճգնաւորաց միաբանութիւն մը. վանք մը, որ թէ և այս հազարամեակիս մէջ միշտ չմնաց առաջին փայլման մէջ 'ի սրբութեան և 'ի գիտնականութեան միաբանից, և զանազան դիպուածներէ անցաւ, 'ի վերայ այսր ամենայնի գրեթէ ամենէն հին մնացած և բնակած վանքն է մեր աշխարհին մէջ, 'ի բաց առեալ քանի մը մեծ ուխտատեղի և եպիսկոպոսական աթոռներ (ինչպէս յերկիրն Մշոյ):

Լեռներով շրջապատած և ընդարձակ ծովակի մը մէջ մէկ հատիկ կղզի մը, որ իր բնագիր բարձրութեամբն (մեծ ծովուն երեսէն 6000 ոտքէն աւելի վեր ըլլալով) տարուըյն քանի մը ամիսը բոլորովին սառած ապիտակ անապատ կու դառնայ: Ի՞նչ յարմար առանձնութեան և մտածութեան տեղ. թերևս աւելի այլ կ՚ըլլար, եթէ կղզին քիչ մ՚այլ աւելի ծովակին մէջտեղուանքն ըլլար. բայց անոր մէկ ծայրն է ցամաքին մօտ. այնչափ որ բարձր կանչելով ձայնն կու հասնի և կու լսուի. բայց ով որ աղաղակ չխիրեր, նա և ոչ կու լսէ: Մեր աշխարհին ամեն մեծ ծովակներն այլ այսպէս մենացեալ կղզեկներ ունին, որք հին և հեթանոսութեան ատեն այլ չաստուածոց նուիրեալ տեղիք էին, և երբեմն նաև ամուր և ապաստանի տեղ կամ բերդ: Այսպէս էր և Սևան. ուր, կ՚աւանդեն, թէ Ս. Լուսաւորիչն կործանելով կուոց մեհեանը, և տեղւոյն լուսաւորութիւնը տեսնելով՝ լուսոյ ըլլայ, Այս է վան, այսինքն վանքի յարմար տեղ, և անկէ եղած ըլլայ Սևան անունն. բայց պէտք է որ անկէ հին ըլլայ այդ անունը: Մեհենին տեղ Լուսաւորիչ պզտի մատուռ մը շինեց, կ՚ըսեն, յանուն Ս. Յարութեան, որոյ և կործանած պատերուն մնացորդն կարծուի թէ ինչուան հիմայ կ՚երևի. իսկ ուրիշ հին շինուածոց մնացորդքն այլ ջրին տակ երբեմն կ՚երևին. ըսել է որ ջուրն բարձրացեր է. և կարծուին մնացորդք այն ամրոցին՝ ուր Ը դարու մէջ քանի մը հեղ ամրացան Հայք Արաբացւոց ապստամբութեան ատեն. բայց վերջապէս Արաբացիք մտան հոն և աւրեցին. Թէպէտ և անկէ վերջն այլ շատ հեղ նոյնպէս ամրութեան և ապաւինի տեղ եղաւ կղզին: Իսկ Մաշտոցի հոն քաշուած ատեն՝ անշէն և երեսէ թողած տեղ մը կ՚երևի, Սիսական իշխանաց տէրութեան տակ: Իրեն ու-

ղածն այլ այսպիսի ամայի մնացեալ տեղ մ'էր, ուր ձմեռուան սառամանեաց և գարնան սքանչելի ծաղկազարդութեան մէջ՝ տասն տարիէ աւելի միայնակ Աստուծոյ հետ կենակցէր: Բայց անկարելի եղաւ մարդկանց ծանօթութենէն և մեծարանքէն ազատիլ. շնորհալի վարքն, խօսքն, գիտութիւնն՝ իր անունը հռչակեցին. այն կողմերուն տիկինն՝ Նախայիշեալն Մարիամ, դուստր մեր Աշոտոյ, ծովուն եզերքը Նորաշէն եկեղեցեօք կու զարդարէր. և կ'ըսեն թէ իր վաղամեռ ընկերին՝ Վասակ՝ կտակաւ պատուիրեր էր իրեն որ 40 եկեղեցի շինէ իր հոգւոյն յիշատակին. հիմայ բարեպաշտ տիկինն լսելով Մաշտոցի համբաւը և Սեւանայ միայնութիւնը, ուզեց երկուքն այլ տեսնել և հոն այլ եկեղեցի շինել: Մաշտոց՝ այն տեղը Ճգնաւորանոց սեպելով՝ չէր հաւանիր որ կին մարդ մտնէ. բայց յետոյ, կ'ըսեն, տեսիլք տեսնելով և Աստուծոյ կամքն իմանալով՝ թոյլ տուաւ, որ գայ Մարիամ և ընտրէ տեղ, ու երկու եկեղեցի շինել տայ, մէկն յանուն ԺԲ Առաքելոց, մէկայլն Ս. Աստուածածնի. երկուքն այլ կանգնած յամին 874. որք յետոյ ատեն ատեն նորոգուելով դեռ նոյն դիրքով և մեծութեամբ կանգուն և չէն են, և Հայաստանի հին եկեղեցեաց մէջ յիշուին: Կղզւոյն արեւելակողմը՝ քարոտ և դժուարին, միանգամայն և ցամաքէն ամենէն հեռու տեղը՝ երկու քարուկիր խցիկներ կան, որ Մաշտոցնէր կ'ըսուին, և Մաշտոցի առանձին Ճգնարանքն Ճանաչուին. ուր, թողլով արդ զինքը՝ իր աշակերտօքն, քանի մը տարի վերջը նորէն դառնանք բարեւելու Աշոտոյ հետ. հիմայ պէտք է ատոր հետ ըլլալ:

## ԺԲ

Ժաժին տարին՝ կամ եղած շփոթութիւնը իրեն օգնական առնելով, կամ իր երկրին աւերածը ուրիշ երկրի աւարով լեցընել ուզելով, Ջահապ՝ Սևադայի որդին (զոր Աշոտոյ պապուն ատեն յիշեցի) որ Դունայ կողմերուն կ'իշխէր, յանկարծ զօրքերը ժողովեց, Աշոտոյ բուն տիրութե և ժառանգութեան մէջ մտաւ, Արշարունեաց կամ Երասխաձոր գաւառը. և այս գետոյս հարաւային կողմը անցնելով բանակեցաւ։ Աշոտ իր նոր սպարապետին, (որ էր իր երիտասարդ եղբայրն Աբաս) յանձնեց բոլոր իր ձեռքին տակ եղած զօրքը. Աբաս ժողովելով իրեններն այլ, գումարեց 40,000 կորիճ և շատ արիւն տեսած զօրք. զորոնք պատրաստելով Կաղզուանայ քովերը, Ջահապայ չկարծած ատեն վրան հասաւ, և անոր բոլոր բանակը ցիրուցան ըրաւ. ոմանք սրի տակ ընկան, ոմանք ջրին մէջ՝ գետէն անցնելու աճապարելով, քիչերն կրցան փախչիլ, որոնց մէջ Ջահապ այլ 16 մարդով հազիւ կրցաւ ազատիլ և ամօթով դառնալ։ Իր բանակած և յաղթուած տեղն 'ի յիշատակ 40,000 զօրացն Հայոց՝ Քառասունք կոչուեցաւ. Կաղզուանէն քիչ հեռու, բայց Երասխայ մէկայլ (հիւսիսային) կողմը հիմայ կու նշանակուի Քէռս անուն գեղ մը, թուի թէ նոյնն է, անունն քիչ մը կարճըցած. իսկ գետն՝ որ այն տեղուանք ընթացքը շատ փոխած է, կ'երևի թէ հազար տարուան շարժմամբ քիչ մ'այլ աւելի դէպ 'ի հարաւ իջեր է. բայց ուրիշ տեղ մ'այլ կու նշանակուի դէպ յարևելք և գետեզերքը Քառասուն անուամբ. այս երկուքէն որն է Աբասայ յաղթութեան տեղն. — երբ այն կողմերը այց ելլենք, ջանանք ստուգելու։

Աշոտ այս դիպուածին մէջ ամիրապետէն նկատելու ամենեւին հոգ չունէր. որովհետեւ Ջահապ ոչ ամիրապետին կամօք տիրեր էր, եւ ոչ այլ իրաւունք մ'ունէր. ուրեմն այս գործով ոչ միայն իր իրաւունքը եւ ազգը պաշտպանեց, այլ եւ ուժը բաւական ցրցուց շրջակայ ամիրայից եւ ազգաց այլ, որք երկար ատեն հանգարտ եւ սմքած կեցան, իրենց այլ դիմացինին այլ չափը ճանչնալով։

Տասն տարւոյ չափ պատմութիւնն նոր դէպք մը չյիշեր. յայտնի է որ խաղաղութեան տարիներ էին (863-873), Աշոտոյ քաջութեան եւ խոհեմութեան պտուղ. միանգամայն եւ աշխարհաշինութեան տարիներ. թէ ինքն Աշոտ, թէ եղբարքն եւ թէ փեսայքն՝ այս միջոցիս շատ շէնքեր շինեցին եւ նորոգեցին։ Ժամանակն դարձեալ անոնցմէ շատը ջնջեց, մանաւանդ քաղաքական շինուածները. իսկ եկեղեցեաց մէկ մասն դեռ կեցած է, քիչ կամ շատ խախտած եւ նորոգուած, եւ ասկէ հազար տարի առաջ հայկական ճարտարապետութեան օրինակ մը կրնայ ըլլալ։

Այս խաղաղութեան եւ շինութեան միջոց կաթուղիկոսն այլ իրեն վայելուչ շինութիւններ եւ կարգաւորութիւններն ըրաւ. ինքն այլ քահանայապետական իշխանութիւնը պայծառացուց եւ պատկառելի ըրաւ այլազգեաց անգամ. այնպէս որ երբ այցելութեան գնաց առ Ցիսէ որդի Շէխեայ (873), (որ ամիրապետէն կողմնակալ ղրկուած էր Ասորւոց կողմերու ինչուան 'ի Պաղեստին, միանգամայն եւ Հայոց այլ վերատեսուչ), ոստիկանն յետ մեծարանօք ընդունելու զԶաքարիա՝ երթալու ատեն իր հանդիսի դրօշներէն (ալամ) մէկն ընծայ տուաւ, եւ իշխանութիւն այլ՝ որ վրան խաչ կանգնէ եւ միշտ իր առջեւէն տանի ուր որ երթայ հանդիսիւ։ Այսպիսի բան գուցէ

իրմէ առաջ եղած չէր։ Նոյն մարգասիրութիւնը ցուցուց Աշոտոյ այլ, մանաւանդ թէ իբրև ընկեր գործակից առաւ զանիկա։

Այս ատեններս Վասպուրականի մէջ նորէն շփոթութիւն ծագեցաւ. Աշոտ տէրն Արծրունեաց՝ իր որդւոյն Դերենկան ըրածին պէս ուզեց դարձեալ զրկել զԳուրգէն (որոյ վրայ երկար խօսեցայ), անոր Անձաւացեաց երկրէն. թէ ոչ բոլորը՝ գոնէ զկէսը կ՚ուզէր առնուլ և իր որդւոյն տալ. յանկարծ զօրօք կոխեց Գուրգենայ երկիրը, և պատգամ խաւրեց որ եթէ չուզեր պատերազմ՝ թողու երկրին կէսը։ Գուրգէն անիրաւութեան դէմ իրաւամբ պատասխան տուաւ. Զիս իմ հայրենի երկրէս դուրս հանեցիք, Աստուած ինծի ուրիշ տեղ մը տուաւ, զայս այլ կ՚ուզէք յափշտակել. միթէ միայն դո՞ւք պիտի տիրէք երկրի. Աստուած այս բանիս դատաստանը պիտի տեսնէ։ Եւ առանց ատեն կորսնցընելու՝ իր եղբօրորդւոյն (Գրիգորի) ձեռքը քանի մը հարիւր կտրիճներու գունդ մը տուաւ. զոր իմանալով Աշոտ՝ արհամարհեց և անհոգ կեցաւ. բայց անոնք գիշերանց ընկան Արծրունեաց բանակին վրայ և շփոթելով ցրուեցին, հանդերձ անոնց իշխանաւն. որ այս ամօթալի փախըստեան փոխարէն, կամ վրէժը պահանջելու համար՝ 5,000 հեծեալ ժողովեց իր և շրջակայ երկիրներէն, մեր իշխանապետին որդւոյն Սահակին այլ գլուխ զօրաց դրաւ, (որ կ՚երևի թէ իր քրոջ և քեռատուն քով էր նոյն ատեն). ասոնք եկան գացին պաշարեցին Կանգուար բերդը, ուր ամրացեր էր Գուրգէն, և երկու ամիս աշխատելով՝ բան չկրցան ընել։ Սահակ՝ իր հօրը խաղաղասէր ոգին բանեցուց, թերևս անկէ պատուէր այլ առնըլով, և միջնորդ եղաւ խաղաղութեան. զօրքերը արձակեցին, Գուրգէն և Աշոտ արծրունի եկան զիրար տեսնելու, հաշտութեան ուխտ դրին և սիրով բաժնուեցան։

Արծրունին այս գործը թողլով՝ ուրիշի մը ձեռք զարկաւ, որ թէ և աւելի իրաւացի՝ այլ նոյնպէս դժուար և անյաջող. Վանայ երկրին հիւսիսակողմն կայ երկիրն Ամկոյ, որ Վասպուրականի գաւառ մ՚էր, բայց հարիւր տարիէ աւելի էր որ արաբացի ցեղ մը Ութմանիկ կամ Էօթմենիկ ըսուած կը տիրէր անոր. և այս ատենս անիրաւութեամբ՝ Աշոտոյ գլխաւոր իշխաններէն մէկը սպաններ էր (Ռոստոմ Վարաժնունի). որոյ արեան վրէժը պահանջելու և իր հին հայրենեաց ժառանգութիւնը ամբողջացընելու համար՝ Աշոտ և իր որդին Դերենիկ, (երկուքն այլ տաքգլուխ) եկան պաշարեցին Ամկոյ բերդը, որ ամրութեամբ շատ անուանի և անառիկ ճանաչուէր. այնպէս այլ մնաց հիմայ: Հոն բան չկարենալով տեսնել, եկան Արծրունիք Վարագ լերան կողմերը ամրոցներուն տիրելու. քանի մ՚առին, մէկն այլ պաշարեցին, և մօտ էին առնելու, երբ յանկարծ մեծազօր թշնամի մը հասաւ վրանին՝ 15,000 սպառազէն ձիաւորօք. մեծ կողմնակալն Ցիսէ, հանդերձ Մանազկերտի այլազգի իշխանին զօրքերով, զորս յօգնութիւն կանչեր էին Ութմանիկք: Արծրունեաց տէրն և որդին իրենց սովորական յանդգնութեամբ՝ բերդին պաշարումը թողլով, 2,000 ձիաւորով 12,000աց դէմ ելան. խոհեմ իշխան մը՝ Վահան՝ ցուցընելով յայտնի վտանգը կը խրատէր զԱշոտ որ յետ քաշուի. և հազիւ կրցաւ նոյն իսկ Ցիսէի իշխանաց մէկուն հետ միաբանած՝ խօսք հասկըցընել Աշոտոյ և յետ դարձընել. Ցիսէ եկաւ մտաւ 'ի Վան. ուր Դերենիկ՝ Աշոտոյ որդին, և Գօգիկ՝ Վահանայ որդին, աղաչաւոր եկան առ կողմնակալն, պատանդ տուին, խոստացան հարկերն այլ տալու, և խաղաղութեամբ դարձուցին զՑիսէ: — Այս դիպուածէս քիչ վերջը մեռաւ Աշոտ (874) և տեղն անցաւ իր գործակից որդին Գր. Դերենիկ՝ մեծին Աշոտոյ փեսայն:

## ԺԳ

Իսկ Ցիսէ կուսակալն այս կողմերէն ելնելով գնաց Հայ-Ալուանից երկիրը, 'ի Պարտաւ մայրաքաղաքն, որ Դունայ պէս արաբացի ոստիկանի մը աթոռ էր. հոն իբրև իրեն փոխանորդ թողուց Եմէնցի Արաբ մը Մուհամմէտ Էպիւլվէտ անուն, զոր պատմիչք մեր անուանեն Եմեմիկ կամ Համմանիկ Մահմէտ որդի Ապլվիտայ կամ Ապլվիտայ։ Սա Ցիսէի հեռանալէն ետև տեղացի իշխանաց հետ միաբանելով՝ գլուխ քաշեց զինքը հաստատողէն. Ցիսէ իմաց տուաւ մեր իշխանապետին, և միաբան եկան ապստամբին վրայ ու պաշարեցին Պարտաւ քաղաքը. ժամանակին յարմար չըլլալով յետ դարձան, և նորէն եկան. և թէպէտ 13 ամիս այն կողմերը կեցան, բայց չկըրցան առնուլ քաղաքը. Ցիսէ կու փութար իր տեղը և իր գործոցը դառնալու. Աշոտ այլ պարզ անոր օգնելու և ամիրապետին հաւատարիմ երևելու համար եկած էր, քան թէ ինքնակամ Պարտաւայ բռնաւորին հետ կռուելու. սակայն այս բանս բաւական առիթ եղաւ իր և անոր մէջ թշնամութիւն ձգելու։ Արդ երբ Ցիսէ բոլորովին հեռացաւ, Եմէնիկն համարձակութիւն գտաւ վրէժը պահանջելու. երես երեսի գալ, զօրքով Աշոտոյ դէմ ելնել չէր համարձակեր. աւելի անաշխատ և ստիպողական կերպ մը գտաւ զԱշոտ իր ձեռքին տակ ձգելու, եթէ Աշոտ այլ իրմէ աւելի խորագէտ և հնարագէտ չըլլար։

Մուհամմէտ թուղթ թղթի վրայ դեսպան դեսպանի վրայ կու խաւրէր Հայոց իշխանաց՝ որ զինքն ընդունէին իրենց երկրին ոստիկան, շատ դիւրութիւններ խոստանալով. անոնք Աշոտոյ հետ միաբան՝ իմանալով խորամանկութիւնը՝ իրմէ առաջ

մարդ խաւրեցին առ ամիրապետն, և ստիպեան
խնդրեցին զԱհմատ Իպն-Խալէտ (Ահմաթ որդի
Հալըթի, կամ Համադա՝ ըստ պատմըչաց մերոց)
որ առաջ այլ քիչ մ'ատեն Բուղայի երթալէն
վերջը ոստիկան եղած էր 'ի Հայս (856)։ Ամիրա-
պետն հաւանեցաւ Հայոց խնդրոյն. Ահմատ փու-
թացաւ իր հին աթոռը. և երբ Ասորեստանէն
մտաւ 'ի Դատուան (մօտ 'ի Բաղէշ) որ շատոնց
արաբացի իշխողաց աթոռ մ'եղած էր, բոլոր մեր-
ձակայ երկիրներու իշխանքն ընդ առաջ եկան, ո-
րոց մէջ էր Գր. Դերենիկ Արծրունեաց տէրն,
Աշոտ կիւրապաղատ (որդին Բագարատայ) տէր
Տարօնոյ։ Մեր իշխանապետն այլ իր կողմանէ
խաւրեց իր Շապուհ եղբայրը. ամենքն այլ ըն-
ծաներէն զատ, հետերնին զօրք այլ առած էին,
որ հանդիսով տանին նստեցընեն զնա 'ի Դուին։
Ասոնց հետ եկեր էր նաև Մանազկերտի կողմե-
րուն իշխող արաբացին Էպուլ-Ֆէրս (Ապլբաս);
և ուրիշ այլազգի իշխանք։ Եմենիկին կողմանէ
այլ մարդ կամ թուղթ կար, որ իր ոխը չմոռնա-
լով գրգռեց բոլոր կրօնակիցները և զնոյն ինքն
Ահմատ՝ Հայերը բոլորովին նուաճելու։ Նորըն-
տիր ոստիկանն ապերախտութեամբ հաւանեցաւ
բանսարկուներուն, և գրեց առ. Եմենիկն՝ որ զօրք
պատրաստէ և իբրև իրեն թշնամի ձևացած գայ
'ի Հայաստան, երբ ինքն Հայոց իշխանները 'ի
Դուին ժողովէ՝ հարկերը պահանջելու համար.
և այսպէս երկու կողմէն զանոնք մէջ փակելով՝
ուզածնին ընեն։ Զգաստն Աշոտ որ Եմենիկին ինչ
ոգւոյ և կրից տէր ըլլալը լաւ գիտէր, և այն այլ
ազգեաց հաւատարմութեան չափն այլ, ամեն
գլխաւոր ճամբու անցքերու վրայ ծածուկ լըր-
տեսներ դրեր էր. և թէպէտ իր թշնամիքն այլ
ծածուկ հնարքներ կու բանեցընէին, և նամակ-
ները չկարծուած բաներու մէջ կարելով կու

խաւրէքէն, բայց եր աչալուրջ լրտեսներէն ամենքն այլ չաղատեցան. Թուղթ և Թղթատար բռնուեցան: Աշոտ առանց ձայնձնելու՝ Թղթատարները յարգելան դրաւ, Թղթերն այլ քովը պահեց. և ոստիկաննին քով եղած իշխանաց իմացուց որ ըղդուշանան. անոնք այլ մեկիկ մեկիկ զօրքերնին հեռացուցին փախան, իրենց տեղը դարձան: Ահմատոյ յուղարկաւոր չգտուեցաւ՝ բաց Եպիւֆերսի զօրագնդէն, որոցմով կօրագլուխ եկաւ մտաւ 'ի Դուին: Իշխանապետն այլ ընծաներով գնաց 'ի պատիւ անոր, միանգամայն և 'ի փորձել. և իմացաւ որ Եմենիկէն աւելի լցուեր է նա ոխով, և մեծ մեծ կու բրդէ. առ ժամ մը լռեց Աշոտ իբրև չիմանալով միտքը, ինչուան որ ապերախտին սպառնալիքն սկսան աւելի յայտնի ըլլալ: Այն ատեն ինքն այլ անվախ և ակրաբար հրամմեց դատել զնա, որ իբրև վերակացու էր եկեր Հայոց, և խարդախ դաւաճանող կ'ըլլար:

Հանդիսական օր մը երբ առաւօտուն Ահմատ հանդիսի իջած իշխանական վրանին տակ դառազացեալ կեցեր էր մեծամեծաց շնորհաւորութիւնը ընդունելու, և անհամբեր կու սպասէր Հայոց իշխանաց իշխանին այցելութեանը, յանկարծ տեսաւ որ անոր եղբայրն է ներս մտնողն, Աբաս սպարապետն. և յիրաւի սպարապետի յանդըգնութեամբ, սպառազինութեամբ, կայտառ և ահարկու կերպարանօք. որուն անսովոր և զինեալ այցելութեան վրայ զարմացած՝ բարկանալու ատեն չմնաց. վասն զի իմացուեցաւ որ դուրսն այլ զինուորաց պատրաստութիւն կայ. ականջներն ցցուեցան, լսեց զինուց և վահանաց շխահիւնը, ձիոց ոտնաձայնը և խրխինջը. վախն առաւ սիրտը, և գրեթէ մեքենաբար երկընցուց ձեռքը առ Աբաս՝ որ Թուղթ մը կու տար իրեն:.. Ի՞նչ ցուրտ զարմանք, ի՞նչ գունաթափութիւն, ի՞նչ

դող եկաւ վրան, երբոր տեսաւ իր իսկ մատնութեան Թուղթը՝ զոր գրեր էր առ Եմէնիկն՝ ընդդէմ Հայոց։.. Աչուըններն մթընցան, գողդըղալով կարծեր թէ Աբաս Թուղթը Թողլով՝ Թուրը պիտի իջեցընէ չարանիւթ գլխուն վրայ։ Բայց սպարապետն անոր ձեռքէն քաշելով, և մահուան վախէն վստահացընելով՝ հանեց վրանէն դուրս, ուր ջորի մը պատրաստուած էր. հեծցուց վրան, և ցուցընելով հարաւային ճամբան, Գնա, ըսաւ, գլուխդ քեզի պարգև. բայց մէկ մ'այլ մի դառնար։ Ջորին սկսաւ հալածական տանիլ իր տիրոջ անհաւատարիմը և մեր հայրենեաց դաւաճանը. մինչդեռ նա իբրև երազէ երազ, ափշութենէ ափշութիւն, վախէ վախ կու տեսնէր՝ որ իր հետ բերած զօրաց գունդն այլ՝ զինաթափ եղած 'ի զօրացն Հայոց՝ մերկ ակլոր միայն իրենց բերած բաներովը և ձիերովը դէպ 'ի Մանազկերտ ճամբայ կու դրուէին, ուսկից որ եկեր էին։ Իսկ զինքն Աչմատ դէպ 'ի Վասպուրական դարձուցին. ուր աչխոյժն Շապուհ՝ իշխանապետին որդին՝ պահապան գնդով մը քշելով զնա տարաւ մինչև 'ի սահմանածայրն Հայաստանի, և Ասորստանի անապատը հանելով՝ դարձաւ առ հայրն։ — Աչմատայ գալուն և երթալուն տարին որոշ նշանակուած չեն, բայց կ'երևին յամս 877-880։

## ԺԴ

Այս դիպուածէն քիչ մ'առաջ՝ մեր այս պատմական Թատերէն նշանաւոր անձ մը պակսեցաւ. 'ի վերջ 875 տարւոյ Զաքարիա կաթուղիկոսն վախճանեցաւ, իր հայրապետութեան քսաներկրորդ տարին, աստիճանին յարմար վարքով և փառքով. և իրեն տեղ ընտրեցաւ 'ի սկիզբն յաջորդ տարւոյն (876, յունուարի 13ին) Գէորգ Բ,

արժանաւոր անձն, ծննդեամբ 'ի Գառնի գիւղաքաղաքէ. որ և իր երկու նախորդաց չափ (Յովհաննու Ե, և Զաքարիայի) 22 տարի քահանայապետեց, և անոնց պէս արթնութեամբ աշխատեցաւ թէ եկեղեցւոյն վրայ, և թէ աշխարհին քաղաքական հանդարտութեանը. օգնելով Աշոտոյ և միջնորդ ըլլալով իշխանաց հաշտութեան: Ժամանակին և պաշտօնն իրեն այլ բերին վշտալի և սև օրեր. ինչպէս, ոմանց իշխանաց և եկեղեցականաց հակառակութիւնք, — Ափշնի տարապատակութիւնն 'ի Հայս, որոյ ձեռք ընկաւ ինքն այլ, — Դուինայ երկրին մեծ ժաժն, և ամենէն առաջ մեծ մահտարաժամ մը (876). զոր յիշող ժամանակագիրն (Ասողիկ) կ'ըսէ, «մահն ահագին համաշխարհական», և ուրիշ տեղեկութիւն չիտար: Բայց ունեցաւ այլ պայծառ և ուրախալից օրեր. ինչպէս, նոյն իշխանաց հաւանութիւնն և հաշտութիւնն, Աշոտոյ թագաւորութեան հաստիլը, և անկէ առաջ՝ Աղուանից կաթողիկոսաց և Սիւնեաց մետրապոլտին հաւանութիւնն և հպատակութիւնն իրեն լուսաւորչական աթոռոյն, ուսկից որ պատճառաւ մը բաժնուեր էին, և իրարմէ ձեռնադրութիւն կ'առնուին (Աղուանք և Սիւնիք): Հիմակուան հաշտութեանս փաստն մեր իշխանապետին կու վայլէ. վասն զի ինքն եղաւ միջնորդ, հաւանեցուց զիշխանս Աղուանից որ իրենց անձնական կաթողիկոսն օրինաւոր ձեռնադրութիւն առնու 'ի Գէորգայ կաթողիկոսէ (877). այս ուխտի բարեկարգութեան ժողով մ'այլ եղաւ, և Գէորգ կանոններ գրաւ Հայոց և Աղուանից աթոռոց յարաբերութեան վրայօք:

Գէորգայ կաթողիկոսութենէն քանի մը տարի ետև՝ իր նախորդին բարեկամին Փոտ՝ դարձաւ աքսորէն և յաջորդեց զԻգնատիոս, ինչպէս որ 'ի սկզբան այլ յիշեցինք, հանդերձ պատճառաւն.

որ է Վասիլ կայսեր վրայ ստեղծած հաճոյական գուշակութիւնն. որոյ համար կայսրն, կ'ըսեն ոմանք, ղրկեց դեսպան մ'առ Աշոտ՝ իրմէ թագ խնդրելու: Յոյնք չեն յիշեր այս բանս, զոր եթէ ստոյգ այլ գիտնային՝ թերեւս իրենց պատիւ չէին կարծեր. մեր ժամանակակից պատմիչք այլ չեն պատմեր, այլ ետքէն եկողք. մեզի շատ անհաւան չերեւիր՝ ժամանակին և անձանց պարագաները գիտելով. մանաւանդ որ պատմիչք կու յիշեն Վասլի ղրկած դեսպանը և շատ ընծաներն առ Աշոտ. զոր ոմանք կու գրեն՝ թէ Աշոտոյ թագաւորելէն ետև ղրկեց հանդերձ թագիւ 'ի պատիւ նորա. բայց այս յայտնի սխալ է. վասն զի Վասիլ կայսր մեռաւ յօգոստոսի (կամ այլ առաջ) 886 տարւոյն, Աշոտ թագաւորեց յետ ապրիլի յաջորդ տարւոյն. ապա ուրեմն Վասլի դեսպանն խաւրուած է մինչդեռ Աշոտ ամիրապետէն թագ առած չէր: Կրնանք կարծել՝ թէ Վասիլ իր կողմանէ կանխած՝ անոր գլխու զարդ կամ պսակ խաւրած ըլլայ, ուրիշ զարդերու և ընծաներու հետ. բայց այս ամեն բանն այլ կ'իմացընեն՝ որ հարկաւոր և մեծ բան մ'ունէր Վասիլ Աշոտոյ հետ. և յարմար է ըսել, թէ առանց շատ ձայն հանելու՝ կամ զինքը կամ իրենները հաճեցընելու համար՝ ուզեց Աշոտէն Արշակունեաց թագը, ինքն այլ անոր խաւրեց բիւզանդական պսակ մը: Ժամանակակից մեծ պատմիչն Յովհ. կաթուղիկոս՝ որոշակի թագ չի յիշեր, բայց կերպով մը թագաւորակից կ'անուանէ. «Մեծ կայսրն Յու-
»նաց Բարսեղ, ոչ փոքր ինչ պայման խաղաղու-
»թեան և նուաճութեան և սիրոյ հաստատեր
»ընդ արքային մերոյ Աշոտոյ, որդի սիրելի զնա
»անուանելով, և հաղորդակից կացուցանելով
»յամենայն թագաւորութիւնս թագաւորութե
»իւրոյ»: Այս խօսքերս կու ցուցընեն Վասլի

կողմանէ զիջողութիւն մը, որ տանից մեծ պատճառի մը չէր ըլլար. զնոյն հաստատէ և ուրիշ ժամանակակից մ'այլ՝ նոյն իսկ դեսպանին ծանօթ, (և է պատմիչն գիւտի Նշխարաց Ս. Լուսաւորչին 'ի Կոստանդնուպօլիս). որ գիտմամբ, կամ իբրև իր նպատակէն դուրս՝ չի յիշեր դեսպանութեան պատճառը: Կարդանք այս հեղինակին գրուածին սկիզբը, որ մեր Աշոտոյ պատմութեան այլ շարունակութիւն ըլլայ: «Ի ժամանակին՝ յորում
«Հայոց թուականն երկերիւր քսան և եօթն
» էր, (878-9) առաքեալ լինի ներքինի ոմն, ա-
» նուն նորա Նիկողեմոս, (զոր յետագայ պատ-
» միչք մեր կոչեն Նիկէտ), 'ի Վասլէ կայսերէն
» Յունաց հրեշտակութեամբ՝ առ Աշոտ իշխա-
» նաց իշխան 'ի Հայս, հանդերձ պատուոյ ընծա-
» յիւք և վայելչական պարգևօք ազգի ազգի՝ թէ-
» րևալս 'ի թագաւորէն. և հանդիպեալ լինի իշ-
» խանաց իշխանին 'ի գաւառին Արշարունեաց
» 'ի Զարեհաւան գեղջ. և կացուցեալ առաջի նո-
» րա զընծայսն յայնքանոյ մեծէ արքայէն, պատ-
» մէ միանգամայն և զհրամայեալսն բանս՝ հանճա-
» րեղս և ախորժելիս. զոր ընկալեալ իշխանաց
» իշխանին զյունական[1] պարգևսն՝ զակնախտիրսն
» և զերևելիսն, մեծարէր և զառաքեալ ներքինին՝
» իբրև զմտերիմ սպասաւոր թագաւորին. վասն
» զի էր այրն այն խոհեմագոյն և հանճարեղ և
» հաւատարիմ թագաւորին »: Դեսպանութեան գործը լմնցնելէն ետև՝ Նիկէտ պատմէց Աշոտոյ, թէ առենօք ինքն 'ի ծառայութեան էր իր անուանակից մեծ իշխան ներքինապետի մը, Միքայէլի կայսերութեան ատեն, որ (կ'երևի թէ էր Նիկէտաս Օորիփաս, այս երկու անուանքս այլ յիշուած 'ի Յունաց՝ յիսուն տարիէ առելի միջոց,

1. Ուրիշ Օր. զյոյնական:

(827-881), իբրև ծովապետ կայսերաց և շատ գործոց մէջ մտած. որ ինչպէս մեր հեղինակն յիշէ), առաջ Միքէլի ծառայութեան մէջ էր, և անոր մահուան վրէժը կ'ուզէր առնուլ 'ի Վասլէ. բայց Վասիլ ճարտարութեամբ որսաց զնա: Ասիկայ ընդոծին մանչուկ մ'ունէր Սկլաւոն ազգաւ, որ անբժշկելի հիւանդութիւն մ'ունեցաւ, կամ դիւահարութիւն. օր մը մեծ իշխանն այն, և այս Սկլաւիկ պատանին ու մեր դեսպանն մէկ տեղ գացեր էին աղօթելու 'ի Ս. Երրորդութեան եկեղեցին ('ի Կ.Պօլիս). հոն պատին տակ մարմարինէ հին գերեզման մը կար արծաթապատ, զոր գիտէին պահարան սրբոց մարմնոց, բայց որուն ըլլալն չէին գիտեր: Աղօթից ատեն յանկարծ պատանւոյն վրայ այլայլութիւն եկաւ, և դիւահարի պէս սկսաւ կանչել. Ո՛վ մեծդ Գրիգոր, ո՛վ Ս. Հռիփսիմէ, Ս. Գայիանէ, ինչո՞ւ եկեր էք 'ի Հայոց երկրէն, և դուք այլ Սարգիս և Բաքոս, զիս հալածելու համար: Այս լսելով ընկաւ պատանին, փախեց, ու քիչ ատենէն խելքն վրան գալով՝ ընկաւ տիրոջն ոտքը և ըսաւ. Հոս եղած սրբոց զօրութեամբ ես հիւանդութենէս ազատեցայ: Շուտ մը ձայն տուին քահանայից, որ եկան մաքրեցին գետինը. յետոյ աւագերէցն հրամանաւ կայսեր՝ գերեզմանին բանալիքն բերաւ, որ շատոնց պաշտօնը չընելուն համար՝ չկրցաւ հիմայ այլ ընել. իշխանն կոտրեց կղպանքը, բացինք և գտանք չորս աման. երեքն արծաթէ արձաններ էին, չորրորդն մարմարէ սնտուկ մը, որոց իւրաքանչիւրին քով գրուած այլ կար. այս մարմարին մէջ էր Ս. Գրիգորի Լուսաւորչի նշխարքն, որոյ ոսկորներն հսկայի ոսկերաց պէս մեծամեծ էին. արծաթէ արձանաց մէջ այլ վերոյիշեալ սրբոց նշխարքն կային, և գտաւ ուրիշ նշխարք այլ՝ որոց անունն նշանակած չէր: Թագուհին Թէո-

դորա, կայսրն Միքայէլ և Փոտ պատրիարքն բազմութեամբ ժողովրդեան եկան յերկրպագութիւն, և պատուով դրին նշխարքն 'ի վայելուչ տեղ։ Այս դիպուածս հանդիպեցաւ մեծ պահոց հինգերորդ շաբաթուն և նոյն օրը տարեկան տօն հաստատեցին. ինչպէս որ հիմայ Աշոտ այլ լսելով իմացուց Գէորգայ կաթողիկոսի, և հաստատեցին մեծ պահոց հինգերորդ շաբաթ օրը տօնել այս յիշատակը, որ հիմայ Լուսաւորչի Մուտն 'ի վիրապն կ'անուանի։ — Աշոտ աղաչեց դեսպանին՝ որ այս դիպուածը տեղն 'ի տեղն իրեն գրէ. Նիկետ այլ երբ դարձաւ իր տեղը՝ նորէն ստուգելով գրեց և խաւրեց Աշոտոյ, որ աղէկ հայերէն գրելու համար տուաւ «առ ժամանակին կա-
» ցեալ վարդապետն Հայոց, զոր յետոյ նշանակեցից
» զանունն», և նա այլ թարգմանեց դեսպանին գրածը, քիչ մը գովեստ աւելցընելով 'ի պատիւ Ս. Լուսաւորչին, և յառաջաբան մ'այլ։ — Իսկ այս ժամանակիս վարդապետն ով էր. խոստացեալ անունն յետոյ յիշուած չէ. գուցէ մեծանունն Մաշտոց վարդապետ ըլլայ, կամ թէ ինքն իսկ կաթուղիկոսն Գէորգ, վասն զի միայն սոր անունն յետոյ յիշուած է 'ի պատմութեանն, և թերևս վարդապետ ըսելով կ'իմանայ զհայրապետն։

Աշոտ զդեսպանը պատուելէն ետև՝ կայսեր ուզածն այլ խաւրեց անոր ձեռքով, հանդերձ ծանր ծանր ընծաներով, և «տասն հազար արծաթ
» (6-6500? ֆրանգ) ընծայ նորաշէն եկեղեցւոյն». զոր չանուանէր յիշող պատմիչն. բայց թուի թէ ըլլայ Ս. Միքայէլ եկեղեցին՝ Վասիլի ծովեզերքը, զոր պատրիարքն Իգնատիոս նոր լմնցուցեր էր (878), և դեռ չէր օծած, և երեք տարի վերջը Փոտ պատրիարքն նաւակատիքն ըրաւ (881)։ Իսկ Նիկետայ բերած ընծայից մէջ կու յիշուի և Թա-

չափաւորի մասն, որ յետոյ Համամայրի սուրբ Նշան ըսուեցաւ, այդ անուամբ վանքը պահուելով, որ է 'ի սահմանս Լոռի քաղաքի Տաշրոց (կամ Սոմխեթի)․ ուր կ'աւանդեն ոմանք, թէ Վասիլ անուամբ յոյն իշխան մը Յովհան Իմաստասէրին ատեն՝ քարայրի մը մէջ առանձնացաւ 'ի ճգնութիւն, և անոր համար Համամայր ըսուեցաւ տեղն․ իսկ խաչն՝ Հայոց սքանչելագործ շատ խաչից մէկն եղաւ, և զանազան հրաշքն յիշուին։

## ԺԵ

Աշմէտ կամ Մուհամմէտ ոստիկանը վռնտելէն ետև՝ Աշոտ անոր թողած խառնակութիւնները սկսաւ շտկել և անոր կուսակիցներն այլ զսպել․ և նախ հիւսիսային ու Վրաց կողմերը գնաց․ ուր, գիտնալու է, որ այս Աշոտին նախնիքն ամիրայութեամբ կ'իշխէին Տփխիսի կողմերը, և ատեն մը բոլոր Վրաց կուսակալ էին․ իր հայրն Խալիլ կամ Խալիտ՝ յետ երկայն ատեն տիրելու և քանի մ'անգամ հնազանդալու կամ հալածուելու՝ այն կողմերը մեռեր էր պատերազմի մէջ․ և տեղը տիրացեր էր Սահակ Իսն-Իսմայէլ, զոր սպաննեց Բուղա՝ երբ առաւ զՏփխիս, ինչպէս 'ի սկզբան յիշեցի․ և նորէն իշխանութիւնը տուաւ Խալիտայ որդւոյն՝ այս յիշեալ Աշմէտին․ բայց քիչ ատենէն սա իշխանութենէ փոխուելով՝ Տփխիսի տիրացաւ Կապլոց կամ Կապլուղ անուն մէկ մը, զոր պատմիչն Վրաց՝ թէ այս Սահակայ ազգական անուանէ և թէ Աշոտոյ, իբր թէ սոր հօրաքեռորդին ըլլայ։ Աշմէտ երկրորդ անգամ ոստիկանութեան ատեն՝ ջանացեր հօրը մահուան վրէժը պահանջել, և ուզածին պէս ձեռք խառնել Վրաց և Գուգարաց իշխանութեանց մէջ․ բայց երկար ժամանակ չգտաւ։ Իր հալածուելէն ետև՝ Կա-

լոց այլ սկսաւ ինքնիշխանաբար վարիլ և հակառակիլ, ոչ միայն Վրաց՝ այլ և մեր իշխանապետին. Աշոտ անոր այլ վրան գնաց (880), և օգնութեամբ Գորամայ իր հօրաքեռորդն՝ բռնեց զնա պատերազմի մէջ, Կուր գետոյն եզերքները, և խաւրեց Յունաց երկիրը. անշուշտ Վասլի հետ նոր ըրած դաշնագրութեանը վրայ վստահանալով: Տփխիսը յանձնեց հաւանօրէն Դաւթի՝ եղբօրորդւոյն Գորամայ, և ասոր բաժնէն առաւ Աշոցք գաւառը, որ անմիջապէս սահմանակից և գրեթէ մասն էր իր բնիկ երկրին՝ Շիրակայ: Այս Գորամս քիչ ատենէն թողուց իր իշխանութիւնը և կրօնաւորեցաւ. տեղն անցաւ որդին՝ Ներս կամ Ներսեհ, որ խռովարար իշխանասիրութ՟ սպաննեց զԴաւիթ (881), և շատ շփոթութեանց պատճառ եղաւ. որոյ համար յետ ժամանակի դարձեալ պէտք եղաւ Աշոտոյ գալ և կարգի դնել այս կողմերս: Այն ատեն այս Վրաց և Վրահայոց երկիրները չորս հինգ բաժին էին, իւրաքանչիւր առանձին իշխանաց ձեռք, որք ամենքն այլ իրարու ազգակից էին 'ի նոյն Բագրատունեաց ցեղէ. գլխաւորն էր Վրաց իշխանն (կամ Քարթլի կուրապաղատն), յետոյ Գուգարաց իշխանն, Սամցխէի (Ախալցխէի) իշխանն, և Արտանուչայ իշխանն. ասոնք ամենքն այլ Սիւնեաց և Վասպուրականի իշխանաց նման՝ Աշոտոյ իշխանապետութիւնը կու ճանչնային, և ոստիկան չեղած ատեն՝ անոր կու յանձնէին իրենց երկրին հարկերը: Ասոնց երկրին արևմտեան հիւսիսային կողմն էր Ափխազաց կամ Եգերաց թագաւորն, որ անկախ էր, և Վրաց տիրել ուզելով՝ խռովութեան պատճառ կ'ըլլար:

Աշոտ խաղաղութեամբ դառնալով 'ի Վրահայոց՝ Տաշրաց գաւառէն անցաւ եկաւ Գեղամայ ծովուն ծայրը, Սևան կղզւոյն դիմաց՝ Բռնակա֊

տեղ ըսուած տեղը, և հոն բանակեցաւ: Ցարմար առիթ էր հոս տեսաւորութեան Աշոտոյ և Մաշտոցի, այս երկու մեծանշան անձանց, որք համբաւով բոլոր աշխարհին ծանօթ՝ զիրար այլ ճանչնալ փափագէին: Աշոտ կ'ուզէր տեսնել այն սրբակրօն և գիտուն միայնակեացը, իր դստեր (Մարիամայ) հիւրընկալը, որ առանց իրեն չափ աշխատելու՝ ընդարձակ երկրի մը մէկ կողմէն մէկայլ կողմը երթալու, կղզւոյ մը մէջ դադարմամբ՝ թէ երկինք կու վաստըկէր թէ մարդկանց սիրտը: Իսկ Մաշտոց լսելով Աշոտոյ գործքերը, միացուցած քաջութիւնը և արդարութիւնը, իր նպատակէն և իր ջանքէն շատ հեռու չէր գներ իշխանին աշխատանքը. կու փափագէր տեսնել այն աշխատանաց ոյժ և փառք տուող խաչը, զոր Վասիլ կայսր ընծայ խաւրեր էր իշխանին, և նա միշտ հետը կու տանէր: Տեսութենէն աւելի մեծ փափագմամբ փութացաւ Մաշտոց՝ ելաւ կղզիէն, եկաւ 'ի Բանակատեղն. հանդիպեցան իրարու երկու շնորհաւորքն. Աշոտ համբուրեց Մաշտոցի լուսափայլ երեսը և աջը. Մաշտոց այլ իշխանին խոնարհելով երկրպագեց անոր բազկաց և կրծոց զարդ խաչին. առաւ դրաւ աչքերուն վրայ և համբուրելէ չէր դադրեր: Վսեմամիտ իշխանն չէր կըրնար զրկել խաչաբարձը իր սիրածէն. կայսերատուր ոսկեկապ և մարգարտազարդ խաչը պարգևեց ճգնաւորին՝ որ աւելի ուրախութեամբ իրեն համար աղօթէ. անոր միաբան վանականաց համար այլ պարգևեց՝ երբև կալուածք եկեղեցւոյն՝ հինգ գեղ, Ցամաքաբերդ՝ որ անմիջապէս ծովեզերքն է և Թուխ մօտ Բանակատեղին, Վարսէր (Ծրուճրա), Գոմաձոր, Բերդք, Ոռոէաց-փոք, որոց երեք առջիններն դեռ նոյն անուամբ ճանաչուին Սևանայ դիմաց ծովեզերքը: Ասոնցմէ զատ այն ծովակէն ելլող ձկանց մէկ մասը՝ որ արքունեաց կու

տրուէր հարկի տեղ՝ վանքերն Թողուց. դարձեալ, այգիներ՝ Երեւանու եւ Գառնոյ կողմերը: Հաւանօրէն Աշոտ այլ մտաւ 'ի կղզին 'ի տեսութիւն Նորաշէն եկեղեցեաց եւ վանացն, եւ իշխանական առատութեամբ ու բարեպաշտութեամբ աւելի շէնցընելով զՍեւան՝ դարձաւ իր երկիրը:

## ԺՁ

Իշխանապետն իր խնամոց յանձնուած երկիրներուն հիւսիսակողմը ապահովելէն ետեւ՝ դարձաւ 'ի հարաւակողմն, Եմենիկեն գրգռեալ եւ Ասմէտը գրգռող ամիրաներն այլ նուաճելու. որոց գլխաւորն էր Մելազկերտի կամ Ապահունեաց ամիրայն Ապլպարա Կայսիկ ցեղէ: Մեր պատմիչք այսպէս կ'անուանեն Արաբացի Քայս ցեղ մը եւ ցեղապետ մը, որ Աբրահամայ որդւոյ Իսմայէլի զաւկներէն սերեալ կ'ըսուի. եւ Մահմէտի ատեն կու յիշուի գիտնական մը այն ցեղէն Աւէմ Իպն-Քայս: Ը դարուն մէջ Արաբացւոց բռնաբարութեան ատեն այս ցեղէն մէկն այլ բռնացաւ Վանայ ծովուն բոլոր հիւսիսակողմը տարածեալ երկրին վրայ. մէկ կողմէն (արեւելքէն) հնչուած Ամկու երկիրը Վանայ մօտերը, մէկայլ կողմէն (արեւմուտքէն) հնչուած մեր Հայկայ նահապետական Հարք գաւառը. քիչ ատենէն իշխանութիւնն յերկու բաժնուեցաւ. արեւելեանն իրեք գլխաւոր քաղաք եւ գաւառ ունէր, Խլաթ, Արճէշ եւ Բերկրի, հանդերձ Ամիւկ ամուր բերդաւն, որ (ետքինս) յետոյ զատ իշխանականութիւն մ'եղաւ. արեւմտեանն այլ իրեք գաւառ, Կորի, Հարք եւ Ապահունիք: Այս ետքինիս արեւմտեան ծայրն եւ Հարքայ սահմանակից հին քաղաքաւան մը կար եւ կայ, Մանազկերտ, հիմայ Մելազկերտ, եւ աւելի առաջ Մանաւազակերտ կոչուած, եւ շինուած յորդւոյն

Հայկայ 'ի Մանաւազայ. որով Թերևս Հայաստանի և բոլոր աշխարհիս ամենէն հին մնացեալ քաղաքաշէնն է, գոնէ ամենէն հիներէն մէկն. հոս կու նստէր արևմտեան երկիրներուն Կայսիկ ամիրայն, և կոչուէր տէր Ապահունեաց կամ Մանազկերտոյ. Խլաթայ ու Ամկոյ իշխանէն աւելի զօրաւոր, ու մերձակայ Հայոց այլ պատկառելի։ Բայց Աշոտոյ իշխանապետութիւնն անոր վրայ այլ տարածուեցաւ, և անկէց այլ հարկ կ'առնուր, ինչպէս յիշխանացն Հայոց։ Այս բանս որչափ այլ ծանր էր Կայսիկին՝ չէր համարձակեր Աշոտոյ հակառակելու. ինչուան որ Եմինիկն և Ահմէտ իրեն յոյս տուին. քիչ մ'այլ մեր սահմանակից իշխանքն պատճառ եղան զինքն ուռեցընելու. որով հարկը կտրեց յԱշոտոյ։ Իշխանապետն այլ եկաւ զօրքով. Խլաթայ և Բերկրոյ տէրն Ապլհէրթ՝ հպատակեցաւ և հաստատեցաւ յիշխանութեանն. իսկ Ապահունեաց տէրն Ապլաբառ՝ ամրացաւ 'ի բերդն Մանազկերտոյ. Աշոտ անոր մէկայլ երկիրները նուաճելով՝ բերդն այլ պաշարեց. և մինչդեռ մօտ էր առնելու՝ Արծրունեաց երկրին շփոթութիւնները լսելով՝ փութացաւ հոն դառնալու. հոս խաղաղութեամբ վերջացընելով գործը, հաւանեցուց զանհաւան Կայսիկն՝ իր չափին մէջ մնալ, և թղթով այլ գաշինք դնելով՝ հաստատեց զնա յիշխանութեանն, և հարկերն առնըլով գնաց։

Իսկ Արծրունեաց շփոթութիւնքն շատոնց սկըսեր էին, գրեթէ Ահմէտ ոստիկանին և Կայսիկին մէկտեղ եղած ատեն. որք երբ զատուեցան, այս ետքինիս խորամանկութեամբ՝ բանսարկու մարդիկ Արծրունեաց և Տարօնոյ իշխանաց մէջ կասկած և պաղութիւն ձգեցին, մինչդեռ երկուքն այլ Ապահունեաց երկիրն էին, ամիրայէն հրաւիրուած, որսի պատճառաւ։ Նախ Արծրունեաց

իշխանն՝ Դերենիկ՝ անոր քովէն հեռացաւ, յետոյ Տարօնոյ իշխանն Աշոտ Կուրապաղատ (որդի Բագարատայ), զոր և խարդախութեամբ բռնել տուաւ Դերենիկ, և իր երկրին մէջ բանտեց Սևան ըսուած ամուր բերդը, ու իր Հասանիկ քեռորդւոյն պատուիրեց որ արձակ պահէ. և Աշոտոյ տեղ գրաւ անոր եղբայրը՝ Դաւիթ արքայիկ կոչուածը, որ և իր քեռայրն էր. Ահմէտի այլ գրեց ու հաստատեց զնա յիշխանութեան Տարօնոյ: — Կուրապաղատն իմացուց իր վտանգը Գէորգայ կաթուղիկոսի՝ որոյ սիրելի էր. և նա անձամբ եկաւ աղաչեց Դերենկայ, բայց սա յանձն չառաւ ազատել զԱշոտ, և հոգևոր տէրն տրտմութեամբ դարձաւ. իսկ մեր իշխանապետն այս ատեններս հիւսիսայնոց հետ զբաղած էր: Կուրապաղատին ճարն հատնելով՝ սկսաւ ընտանենալ իր բանտապանին, այսինքն Հասանկան, որ դեռ 15 կամ 16 տարուան պատանի մ'էր, և տղու պէս խաբեց. հաւատացուց թէ Դերենիկ քեզի դէմ այլ կու մտածէ և զքեզ այլ պիտի բռնէ: Պատանին՝ իր ամուր բերդին վրայ վստահացած՝ մտածեց իրեն որսորդը որսալ. հիւանդ ձևացաւ, և աղաչանք խաւրեց Դերենկայ՝ որ գայ զինքը տեսնէ. սա իբրև օրհասական հիւանդի մը քով փութացաւ երթալու, և առջի տեսութենէն ետև՝ երբ գիշերը քաշուեցաւ իրեն համար պատրաստուած սենեակը, յանկարծ դուռը վար առին և ներս թափեցան ջահաւոր և զինաւոր մարդիկ, բռնեցին զինքը և ամրոցին ծայրը հանեցին բանտեցին, ու զԱշոտ արձակեցին:

Այս բանս լսեց մեր իշխանապետն երբ Մանազկերտը պաշարած մօտ էր առնուլ. և փութացաւ ուրիշ իշխաններով Սևանայ բերդին քով՝ իր փեսայն ազատելու. կաթուղիկոսն այլ եկաւ, և երկուքն այլ յորդորելով և խրատելով զպա-

տանին Հասանիկ՝ հաւանեցուցին. արձակեց ըզքեռին. և իրեն ապահովութեան համար՝ պատանդ թողուցին քովը Դերենկայ երկրորդ տղահասակ որդին՝ Գագիկը, (յետոյ Արծրունեաց դիւցազն): — Բայց Դերենիկ քիչ ատենէն դրած դաշինքն ոտքի տակ առնըլով բռնեց զՀասանիկ, բանտեց 'ի Նկան բերդի, և անոր Սևան բերդին այլ տիրեց. սակայն իր աներէն ակն ածելով, քիչ մ'այլ ուրիշ միտք ունենալով՝ արձակեց զՀասան:

Քիչ մ'ատեն հանդարտութիւն եղաւ (885-7) այս կողմերս այլ, ինչպէս ուրիշ ամեն Աշոտոյ իշխանապետութեան տակ եղած տեղերն այլ. ուր՝ ինչպէս տեսանք, երեսուն տարիէ աւելի էր՝ որ Աշոտ անդադար անխոնջ տեղէ տեղ վազելով և հանելով՝ խռովութիւնները կու խաղաղէր, ալիքները կու ցածցընէր, և հանդարտաբեր հովու պէս կու փարէր գորգուրար ամենուն վրայ: Եկաւ ժամանակն՝ որ իր գրկած գգուած իշխանազունք այլ՝ իրենց ալէզարդ հայրադիրը մեծարեն արժանաւոր սիրով և պատուով. որուն հաւանեցան ուրիշ իր խնամքը վայելող իշխանք այլ. չնախանձեցան և այլազգիք: Իսկ հասարակաց հայրն կամ մայրն Հայաստան՝ հեծկլտած հառաչանքը լռեց, հանգչեցաւ: Սև տխրութեան բացած ու մաշած ճամբաներէն իջան ճերմակ ուրախութեան արտասուքներ. բարձրացաւ ձայն գոհութեան առ Աստուած. և թերևս ոչ այնքան Աշոտոյ գլուխը թագաւ փառազարդեալ տեսնելուն, որչափ այն թագը արդեամբք, երախտագիտութեամբ և սիրով կապուած և դրուած տեսնելուն համար:

## ԺԷ

Այս երախտագէտ և սիրոյ զգացմանց և գործոց առաջնորդք եղան, ինչպէս որ կու վայելէր, երկու Գրիգորքն, Սուփան Սիսական՝ թոռն մեր Աշոտոյ, և Դերենիկ Արծրունի՝ փեսայ Աշոտոյ, իրենց աշխոյժ և կայտառ զաւակօքն. որոց միաբանեցան՝ Վասակ Իշխանիկն՝ Սիւնեաց տէրն, կաթուղիկոսն Գէորգ, և գրեթէ ամեն աշխարհատէր և գաւառատէր իշխանք և Թեմակալ եպիսկոպոսունք, հանդերձ Վրաց և Գուգարաց մեծամեծ իշխանօք, որոց շատն խնամի այլ էին իշխանապետին, և բոլոր իր ազգակից և բարեկամ իշխանաւորք. որք ամենքն այլ Աշոտոյ պարտականք էին մէկ մէկ կամ շատ կերպով, անոր 33 տարուան սպարապետութեան և իշխանապետութեան առեն, մանաւանդ թէ հօրը գործակցութիւնն այլ մէկ տեղ սեպելով՝ իր 50ամեայ աշխատանացը, գործոցը, խնամոցը և փառացը՝ պարտականք էին։ Անոնց հաւասար ազգային զօրագունդն այլ, որ այնքան տարիներ միշտ փառօք և քաջ անուամբ հայկական դրօշը կրեր տարեր էր զանազան կողմեր, և այլ աւելի բարձրացընելու կու սպասէր։ — Թերևս առոնցմէ այլ աւելի՝ ռամիկ ժողովուրդն, խոնարհ և տկար սեպուածքն, որք իբրև զհայր ճանչնային և սիրէին զբարերարն Աշոտ. և աւելի համարձակ առ Աստուած աչքերնին վերցուցած՝ իրենց բարերարին բարիք և փառք մաղթէին, քան թերևս իշխանքն՝ ամիրապետէն խնդրէին, որ այնուհետև փոխանակ օտար ոստիկանի, իրենց համազգին իրենց շնորհէ անկախ գլուխ, ուղղակի հարկատու իրեն (ամիրապետին)։ Աշոտոյ իշխանութեան տակ որդէն ոչ միայն իրենք երջանիկ եղած էին, այլ

և խաչխփայք գանգատ մը չունէին այնչափ երկար ատեն, մինչդեռ օտար ոստիկանաց տակ անդադար շփոթութիւն կ'ելլէր, արիւն կ'ըլլար, երկիրն կ'աւրուէր, գանձերն կու պակսէին։ Ամիրապետն՝ Մոթամետ-Պիլլահ՝ որ 17 տարի իր իշխանութեան ատեն, և նոյնչափ այլ իր հինգ նախորդաց ատեն՝ վկայ էր նախարարաց նուիրակին ըսածներուն, և Աշոտոյ հաւատարմութեան և արդեանց դէմ կենալու բան չունէր, և ոչ ոք այլ կըրցաւ նախանձորդ կամ հակառակը ըլլալ. մէկ կողմանէ այլ տեսնելով որ արդէն իր կրօնակիցքն իրմէ կ'ապստամբէին, նոր նոր տէրութիւններ կու կանգնէին, յօժար սրտիւ հաւանեցաւ Հայոց խնդրուածին։ Եւ որովհետև ասոնք հին ատեն իրենց ազգապետը միշտ Թագաւոր կու ճանչնային, անուանեց հիմայ անոնց իշխանապետը Աշոտ Թագաւոր Հայոց, վրան թողլով Վրաց կողմի վերատեսչութիւնն այլ։ Եւ ոչ միայն անունը խաւրեց՝ այլ և Թագ և ամենայն Թագաւորական նշաններ և զարդեր, հանդերձ ծանր ծանր արևելեան ընծաներով և ընտիր արաբիկ ձիերով. զորոնք տանել տուաւ Յիսէի՝ Շէխեայ որդւոյ, Ամդայ կողմնապետին, որ իր կողմանէ տանի տայ և Թագաւորեցընէ զԱշոտ. գիտելով որ ասոր խոհեմութիւնն շատոնց զՅիսէ բարեկամ էր ըրեր իրեն։ Եւ յիրաւի Յիսէ աննախանձ զուարթութեամբ գնաց պատուեց և պսակեց իր հին բարեկամ և նիզակակիցը. ինքն այլ անկէ պատիւ գտնելով՝ դարձաւ իր տեղը։ — Աշխարհական տիրապետէն Թագը ընդունելէն ետև՝ կու մնար որ իր հայրենիքն և իր եկեղեցին այլ զինքը պսակեն։

Ո՛ր քաղաք, ո՞ր եկեղեցի էր արդեօք ուր պսակեցաւ Հայոց նոր Թագաւորն. Երազգաւո՞րք եթէ Դուին. — կ'երևի թէ այս յետինս, որ 500 տարիէ վեր Հայաստանի մայրաքաղաք Ճանա-

չուէր, և մարզպանաց ու ոստիկանաց աթոռ էր. դեռ հոն էր Հայոց հայրապետանոցն այլ. և դեռ կանգուն էր Ս. Գրիգորի հոյակապ կաթուղիկէն (շինեալ Գ. Ներսէս կաթուղիկոսէ), որ յետ վեց եօթն տարւոյ պիտի կործանէր, և գուցէ կու սպասէր այս հանդիսիս այլ. որուն համար շատ նեղ և շատ պզտիկ կու գար, բայց գոնէ բաւական՝ իշխանազանց և եպիսկոպոսաց և բազմաթիւ բազմաւորաց: Այս եկեղեցիս չէր, բայց հաւանօրէն այս տեղս էր, ուր մեր հայրապետաց վսեմագոյնն՝ մեծն Սահակ՝ օրհներ օծեր էր Արշակունեաց վերջին թագաւորը, զդժբաղդն Արտաշէս. անշուշտ առաջին անգամն էր որ Հայոց սրբազան լեզուաւ և գրով թագաւորօրհնէք եղաւ. և ափսոս, առաջինն՝ վերջին այլ եղաւ... Արտաշիսի օծմանէն մինչև յԱշոտ գրեթէ 470 տարի անցեր էր. սա կանգնեց անոր կորացեալ գլուխը, և Սահակայ թագաւորաշնորհ շունչը՝ քառասուն կաթուղիկոսաց շրթունքէն սահելով՝ Գէորգայ բարեբաղդ բերանը իջաւ, իր քահանայապետութեան ԺԲ տարին. « Կոչեցաւ ապա » անդ մեծ հայրապետն Գէորգ, և զհոգևոր օրհ- » նութեանցն զօրութիւնս աստուածայինս՝ի վե- » րայ կատարեալ, փոխանակ օծման սրուակի » իւղոյն՝ պսակէ զնա թագաւոր՝ի վերայ Աշխա- » նազեան ազինն»: Ի՞նչ կարգաւ, ի՞նչ ծիսիւ, ի՞նչ աղօթքով կամ օրհնութեամբ եղաւ այս պսակս. արդեօք Ս. Սահակայ շարադրած և հին Հայոց ձևով և գոչմամբ էր այս թագօրհնէքս, եթէ Գէորգ կաթուղիկոս նոր շարադրեց, կամ թէ Յունաց կայսերաց ծիսէն հետևեցան. — ասոնք՝ Հայկակ, քեզ այլ, ինձ այլ փափագելի են՝ի յայտնութիւն: Մեր յետին Կիւլիկեցի թագաւորաց օծման գեղեցիկ հանդէսն և կարգն՝ հանդերձ օրհնութեամբքն, անծանօթ չէ մեզի. ան-

կը զատ հանգիպած եմ ուրիշ Թագաւոր-օրհնէքի մ՚այլ, աւելի կարճ և անզարդ, որ և աւելի հին կ՚երևի, և ոչ անյարմար այս դիպուածիս. կարծեմ քեզի այլ անհաճոյ չըլլար լսելու այս կարգը և աղօթքները: Փութամ ուրեմն 'ի Դուին, խառնուէ այն բազմաւորաց հետ՝ որ եկեղեցւոյն մէջ տեղ գտան Հայոց Թագաւորութեան Նորոգութիւնը տեսնելու, և անհամբեր աչք 'ի խորանն կու սպասեն Նորընտիր Թագաւորին՝ որ դեռ չերևիր, այլ գահն դրուած է, և չորս դին շարուած Աշոտոյ պայծառ եղբարքն, որդիքն և Թոռունքն, երեսնիւ չափ, Թերևս և իր տիկին դըստերքն հանդերձ հեզանազ օրիորդովք, իր ամեն ազգատոհմն և խնամիք, և ամենայն իշխանք Հայոց և շատք 'ի Վրաց և յԱղուանից, նաև ամիրայք և դրացիք, և դասք քահանայութեան՝ 'ի հայրապետէն մինչև 'ի դպիրս: Արդէն ճրագունք վառեալք, կանթեղք և ջահք փայլատակեն, և արծաթ և ոսկի բուրվառաց և խնկանոցաց անուշահոտ ծուխն թեթև ամպերով կու բարձրանայ. մեծ ակնկալութեամբ սրտեր կու թնդան. ծովանման շշնկոց մը կու լսուի, երեկոյեան հովուն խաղալելուն պէս լռութիւն մը կու տիրէ. դարձեալ մեծ աղաղակ մը կու փրթի... Աշո՛տ... Աշո՛տ. սուրբ Թագաւոր... կեցցէ՛, կեցցէ՛, կու հնչէ հազար օրհնեալ բերան, բիւր կորովաշունչ կոկորդ հայկական. և խորանէն ամպացեալ ծխոց խնկոց ետևէն, ինչպէս ամպոց վերևէն Մասեաց գագաթն, կ՚երևի բարձր վսեմաշարժ զուարթահայեաց արծաթափայլ գլուխ մը... մեծն Աշոտ...: Թող ծափեն դոփեն ձայնեն ցնծան սիրուն կտրիճքն: «Եւ զգեցուցանեն զԹագաւորա-
» կան զհանդերձսն. ուրոյն զքղամիդն և զԹագն
» դնեն 'ի վերայ սուրբ սեղանոյն արծաթէ սկը-
» տեղբ: Ասելով սաղմոս 'ի Թիւ. Լուր Տէր աղօ-

» Թիւց խմոց. և Ո յուսայ 'ի Տէր. Խոստովան ե-
» ղէց քեզ տէր: Եւ եղանէ հայրապետն և կայ
» առաջի սրբոյ սեղանոյն, կալով զհետ նորա
» որ պատկերացն է զնա: Եւ յետ սաղմոսին սար-
» կաւագն քարոզէ ասելով. Խնդրեսցուք հաւա-
» տով. և եպիսկոպոսն ասէ զաղօթս. Որ Թագա-
» ւորդ ես Թագաւորաց Քրիստոս, և տէր տե-
» րանց, արարիչ ամենայն արարածոց. փրկիչ
» աշխարհի, տուր մեզ զխնդրուածս մեր, և կա-
» տարեա 'ի բարի զաղօթս մեր՝ զոր մատուցա-
» նեմք քեզ առաջի սրբոյ սեղանոյս. զի հաստա-
» տուն և անշարժ պահեսցես զուխտս սրբոյ ե-
» կեղեցւոյս, տալով զսա (զԱշոտ) մեզ՝ զոր ընտ-
» րեցեր և կոչեցեր վերստին 'ի Թագաւորութիւն, ի
» վերակացութիւն տանս Թորգոմայ, առ 'ի հովուել
» խնամով, և պահեա 'ի թշնամեաց. զի զկաթու-
» ղիկէ եկեղեցի բարձրացուցեալ և պատկեալ
» փառօք նորոգ պահեսցէ. և զեզջիւր հաւատոյս
» մերոյ անսասանելի և անշարժ ուղղութեամբ
» և արդարութեամբ վարեսցէ ընդ երկայն ա-
» ւուրս. բարեխօսութեամբ սրբուհւոյ Աստուա-
» ծածնիդ. զի դու ես փրկութիւն մեր և ապաւէն
» և օգնական. և քեզ վայելէ փառք իշխանութիւն »:
« Եւ ապա ասեն կցորդ. Որպէս յետ աստուա-
» ծասէր Թագաւորին, և այլն: — Եւ նա խաղա-
» ղութեան. և այլն: Եպիսկոպոսն, Օրհնութիւն
» և փառք, և այլն: Եւ եպիսկոպոսն առեալ զա-
» ջոյ ձեռանէ նորա և դարձուցանէ զերեսն Թա-
» գաւորին առ ժողովուրդն, 'ի ծունկն անկեալ.
» և ասեն քահանայքն միաբան բարձր ձայնիւ ե-
» րիցս. Աստուածային և երկնաւոր շնորհ՝ հե-
» ղեալ 'ի վերայ (Աշոտոյ), կոչէն յաթոռ Թա-
» գաւորութեան տանս Թորգոմայ, օծանել ըստ
» նմանութեան Կոստանդիանոսի մեծ Թագաւո-
» րին »: — Եւ ասասցեն, Եղիցի եղիցի. ամէն:

« Եւ ապա դարձուցանէ 'ի սեղանն. և այս կա_
» նոն կատարի. Սաղմոս կցորդ, ի, Թագաւոր
» յուսացաւ 'ի Տէր: Պօղոսի առաք. 'ի Տիմոթ.
» Ա. Թղթ. ընթերց. (բ. 1-7). Եւ արդ աղաչեմ,
» և այլն: Յովհան. առաք. յԱ կաթուղ. Թղթ.
» ընթերց. (բ. 20-27). Եւ դուք օծութիւն ու_
» նիք, և այլն: — Ալէլուիա, ալէլուիա. Լուիցէ
» քեզ Տէր յաւուր անձկութեան, և այլն: Սուրբ
» աւետարանս ըստ Ղուկասու (ժթ. 12-28).
» Ասէ Յիսուս, այր ոմն ազնուական, և այլն: —
» Եւ սարկաւագն քարոզէ, Խնդրեսցուք հաւա_
» տով: Եւ եպիսկոպոսն ասէ զաղօթս. Տէր Աս_
» տուած մեր, որ Թագաւորդ ես Թագաւորաց,
» որ 'ի ձեռն Սամուէլի մարգարէին ընտրեցեր
» զծառայն քո զԴաւիթ, և օծեր զնա Թագա_
» ւոր ժողովրդեան քում Իսրայէլի. դու և այժմ,
» Տէր, լուր աղաչանաց մերոց անարժանիցս, և
» նայեաց 'ի սրբոյ բնակութենէդ քումմէ յերկ_
» նից 'ի հաւատարմական ծառայս քո (Աշոտ),
» զոր ընտրեցեր և հաճեցար յարուցանել Թա_
» գաւոր 'ի վերայ ազգի քո սրբոյ, զոր փրկեցեր
» պատուական արեամբ Միածնի Որդւոյ քո.
» օծանել զսա արժանաւորեա իւղով ցնծութե̄.
» զգեցո́ սմա զօրութիւն 'ի բարձանց. դիցես 'ի
» վերայ գլխոյ սորա պսակ 'ի քարէ պատուա_
» կանէ. շնորհեա սմա զերկայնութիւն աւուրց.
» տուր աջոյ սորա յաղթանակ փրկութե. հաս_
» տատեա զսա յաթոռ արդարութեան. շրջա_
» փակեա զսա զինու սուրբ Հոգւոյդ: Հնազան_
» դեցո սմա զամենայն բարբարոսական ազգս:
» Սերմանեա 'ի սիրտ սորա զերկիւղ քո և զխո_
» ղութիւն կենակցական: Հաստատեա զսա ան_
» բիծ հաւատով. և 'ի վեր երևեցո́ սմա զզօրու_
» թիւն քո. պահեա 'ի պահպանութիւն սրբոյ
» քո կաթողիկէ առաքելական եկեղեցւոյ՝ ուղ_

» զանփառ դաւանութեամբ. զի դատեսցի զժողո-
» վուրդս քո արդարութեամբ, և զաղքատս քո ի-
» րաւամբք. կեցուսցէ զորդիս տնանկաց. և ժա-
» ռանգորդ լիցի արքայութեանդ: Քանզի քո է
» զօրութիւն և փառք, յաւիտեանս. ամէն:
» Ապա առնու եպիսկոպոսն զդիադեմն 'ի սեղա-
» նոյն, և զջիլըն. և տացէ քահանայիցն զի արկ-
» ցեն զնովաւ. և 'ի շուրջ առնուլն նորա զայն՝
» եպիսկոպոսն ասէ. Խաղաղութիւն ամենեցուն.
» և դնէ զաջն 'ի վերայ գլխոյ թագաւորին և ասէ.
» Քեզ միայնոյ թագաւորիդ յաւիտենից՝ որ 'ի
» վերայ երկրի զթագաւորութիւն սորա հաստա-
» տեցեր, որ խոնարհեցոյց զպարանոց իւր ընդ
» մեզ. և արդ մեք ծառայք քո խնդրեմք 'ի քէն՝
» Աստուած ամենայնի, պահեա զսա ընդ հովա-
» նեաւ քով աջովդ, և զօրացո զսորա թագաւո-
» րութիւն, զհաճոյս քո առնել յամենայն ժամ.
» ծագեա յաւուրս սորա արդարութիւն, բա-
» զում խաղաղութիւն ժողովրդեան. հանդար-
» տութեամբ սորա՝ խաղաղական ապահովական
» կենցաղաւ բնակեսցուք ամենայն բարեպաշ-
» տութեամբ. զի դու ես թագաւոր խաղաղու-
» թեան, Քրիստոս Աստուած մեր. և քեզ վայելէ
» փառք, իշխանութիւն. և այլն:
» Ապա առնու հայրապետն զմեռոնն, և օծա-
» նէ զգագաթն և զճակատն, ասելով. Օրհնեսցի,
» օծցի և սրբեսցի թագաւորս այս՝ յանուն Հօր
» և Որդւոյ և Հոգւոյն սրբոյ: Եւ զայս երիցս
» ասէ եպիսկոպոսն: Ժողովուրդքն ասեն, ամէն:
» Եւ ապա ասի. Տէր, կեցո՛ զթագաւորն և լուր
» մեզ: Ապա առնու եպիսկոպոսն երկոքին ձե-
» ռօքն զթագն 'ի սեղանոյն, և պսակէ զնա և ա-
» սէ. Օրհնեսցի, օծցի և սրբեսցի թագս և թա-
» գաւորս այս, յանուն Հօր, և այլն: Եւ ժողո-
» վուրդն զնոյն ասեն. Տէր կեցո՛ զթագաւորն և

» լուր մեզ։ Եւ ասէ, Օրհնութիւն և փառք. և
» այլն։

» Եւ նոյն ժամայն մտանեն 'ի ճաշու ժամն, և
» պատարագ մատչի. և զթագաւորն տանին 'ի
» սեղանն. 'ի ձախակողմն կանգնեցի. և յետ պա-
» տարագին հաղորդեն զթագաւորն. և պատա-
» րագին գիրքն զթագաւորացն կարդան։

» Բայց թագաւորն զգոյշ կացցէ յամենայն
» ճանապարհսն Աստուծոյ, երկիւղիւ և սրբու-
» թեամբ »։

Կրնա՞նք արդեօք հիմայ սրբազան պատկառա-
նօք, հոս յարմարցընել գերագոյն Երգոց խօսքը
և փոխանակելով ընդ Սողոմոնի՝ ըսել. « Ելէ՛ք և
» հայեցարուք, դստերք Այրարատայ, յարքայ
» Աշոտ, 'ի պսակն՝ որով պսակեաց զնա մայր
» իւր, յաւուր փեսայութեան իւրոյ և յաւուր
» ուրախութեան սրտի իւրոյ »։ Կրնա՞նք ար-
դեօք նոյնպէս շարունակել. « Ահա գահոյք Աշո-
» տոյ. վաթսուն հազար սպառազէնք շուրջ զնո-
» վաւ 'ի քաջացն Թորգոմազանց. ամենեքեան
» սուսերաւորք և աղեղնաւորք՝ հմուտք պատե-
» րազմի, այր իւրաքանչիւր սուր յազդեր յար-
» հաւրաց գիշերոյ », և կապարճք 'ի թիկունս
վառեալք 'ի ճառագայթից տուընջեան։ Կրնա՞նք
դարձեալ աւելցընել յարմարցընել, մեր պատմը-
չին խօսքէն խրախոյս առած, թէ և « Գահաւո-
» րակ արար իւր արքայ Աշոտ 'ի փայտից Բա-
» սենոյ[1] ». և այլն. վասն զի ինչպէս յամենայնի
վայելուչ և բարեկարգ էր Աշոտ, թագաւորու-
թիւնն այլ արժանապէս վայելչացուց մեր նախնի
թագաւորաց և ազգին պերճասիրութեան համե-
մատ. « Այնուհետև բազում և երևելի կարգս

1 Բասենի դաշտն Անփայտ անուանեցաւ հին ատեն. բայց լեռներն ինչուան հիմայ անտառոտ են։

» յօրինէր յաշխարհի տէրութեան իւրոյ, կ՚ըսէ
» Յովհ. կաթուղ., յօրինուածս ատեանց, ազգաց,
» քաղաքաց, շինից, դաստակերտաց, և հարթ
» հաւասար ընդ իւրաքանչիւրոցն կատարէր
» կարգս լեռնականաց և ջերմահովիտ բարեխառն
» դաշտականաց. և զամենայն տափարակ տեղիս՝
» ագարակս և գոմս դնէր, և զմարմանդս՝ յայ-
» գիս և ՚ի բուրաստանս զարդարէր. և զամենայն
» ինչ զոր ինչ օրէն է թագաւորութեան և որ
» ինչ ՚ի թագաւորութեան և որ շուրջ զթագա-
» ւորութեամբ՝ ոչ ինչ իմիք կասեցուցանէր. և
» գրեթէ հարստագոյն և խոհեմագոյն քան զա-
» մենայն թագաւորութիւս գտանիւր »։ Իր փառ-
քէն աւելի ազգին օգուտը փնտռելը՝ յայտնի էր ամենուն. բայց ազգն զինքը պատուեց, ինքն այլ իր փառքովը զազգը աւելի պատուեց, նուիրելով այս ամէն վայելչութիւն և փառքը՝ ոչ իր անձին հաճոյից և փափկութեան, այլ ՚ի պերճութիւն թագաւորին և ազգին Հայոց. ասոնք բարձրացուցին զինքն իբրև զարեւ ՚ի վերայ հայրենեաց, պէտք էր որ ինքն այլ ճառագայթէ անոնց վրայ զուարթ և պայծառ լուսով։

Այս լոյս, այս փառքս ծագեցաւ յամին 887, գարնանային կամ ամառնային եղանակին, յորում այրարատեան հովտաց և բլրոց գեղեցկութեան խառնուեցաւ Հայոց համաշխարհական ուրախութեան հանդէսն. որ արդարև շատ մեծափայլ և պայծառ եղաւ բոլոր իշխանազանց և եկեղեցւոյ գլխաւորաց ու բազմախուռն ժողովրդեան ներկայութեամբ և պատրաստութեամբք. բայց պայծառութենէն շատ աւելի այլ սրտաշարժ էր։ Վասն զի այն ատեն մերազգիք իրենց չորս հինգ հարիւր տարի առաջ նախնիքը և անոնց փառաւոր օրերը աւելի լաւ կու ճանչնային՝ քան մենք մեզմէ առջի չորս հինգ դարերը. — անոնք

դեռ նախարարաց, ազատաց և քաղաքաց սերունդք և առհմք էին, և դեռ իրենց տիրապլուխ նախահարց դաստակերտներուն մէջ բնակէին. անոնց յիշատակները կու տեսնէին, արձանագրութիւնները կարդային, ազգաբանութիւննին գիտէին. անոնց գործածած անօթները և զէնքերը դեռ գտուէին իրենց մէջ. դեռ նոյն Հայկազանց և Արշակունեաց գետինը կու կոխէին, և նոյն օդը ծըծէին. — անոնք դեռ հարազատ հայախօսք էին. — Թէ և բազմավէր բազմասպի՝ Հայաստանեայց մարմինն դեռ ամբողջ էր. գլուխն չէր երևէր, բայց երբ սիրտն դեռ կ'առնուր կու տար, այնպիսի մարմնոյ մը՝ դժուար չէր գլուխը գտնել կանգնել, որ հնդգարեան հարուածներով կորացեր ուսերէն վար կախուեր էր դէպ 'ի կուրծքն. և երբ ամենայն անդամոց մէջ բարեխառն ջերմութիւնն ծաւալեցաւ ու սիրտն մեծապէս թնդաց, Ճառագայթազարդ գլուխն այլ դարձեալ բարձրացաւ, դարձեալ եղաւ Հայաստան հանուրց հնախօսանաց մէհագոյն. Կ.Պօլսոյ ու Բաղտատայ, (այն միայն երկու տիեզերական աթոռոց) մէջ՝ մէկ Թագաւորական գահ մ'այլ կանգնեցաւ. մինչդեռ այնքան մեծ տարածութեան մէջ ամեն գահ կործանած մնացին. և այս առաջին կանգնող գահն ու Թագն՝ եղաւ Հայոցն: Անգամ մ'այլ Հայք իրենց հին հասակակցաց առջև յառաջադէմ գտուեցան. անգամ մ'այլ Կովկասէն ինչուան յԱպառաժն Արաբիա, Պոնտոսէն ինչուան 'ի ծոցն Պարսից՝ ամենայն հին և նոր ժողովուրդք ողջունեցին զԱյրարատ Թագակալ՝ 'ի Բագրատունին Մեծն Աշոտ:

Ի սկզբան վարուցս Աշոտոյ ըսի և դարձեալ կ'ըսեմ, շատ քիչ կարիճ և առաքինի մարդ գըտուած է՝ որ այսքան արգեամբք ծանրացեալ և հասակաւ հասունացեալ՝ հրաւիրեալ ըլլայ 'ի

Թագաւորութիւն. ոչ մեր ազգին պատմութիւնն, և ոչ Թերևս օտարաց յայսմ՝ Աշոտոյ համեմատ մը գտնեն. և եթէ որքազան զարմանք մը բերէ պատին այն 'ի գլուխ 12 տարեկան Սողոմոնի, սրբազան և սիրելի սխրանք ըլլայ ինձ և քեզ, Հայկակ, Թագս այս ոսկի խառնեալ յարծաթ ալխ գրեթէ 70ամեան գլխոյ ալքային Աշոտոյ: Կարծեմ ոչ ոք յանհնախանձ զգաստից, որ ազգէ այլ ըլլայ, կըրնայ ուրանալ մեր Բագրատունեացն փառքը, և մեզի ընկած պարծանքը:

Այս յիշատակիս հետ անգամ մ'այլ յիշենք այս հայրենեաց հօր երախտագէտ որդւոց մեծագով և աղնուախոհ մտածութիւնը, որ անոր բազմամեայ անձնանուէր խնամոց արտաքին ցոյց փոխարինի տալ մտածեցին և յաջողեցան՝ զԹագն Հայոց միագլխութեան. և Թերևս յետ աւուրց Ս. Տրդատայ՝ այս առաջին անգամ միասիրտ և միաբերան իշխանք զանազան աշխարհաց և գաւառաց Հայոց՝ կանչեցին և գրեցին Ապուտաճաղջ կամ Ապուտաճապաղ Թագաւոր մեր. և նա գրեց իր հրովարտակաց և պարգևագրաց տակ ոսկի կընքոյն քով՝ Աշոտ Բագրատունի Թագաւոր Հայոց[1]: Բայց աւելի քան զայս ոսկի կնիքներն և պատկներն, աւելի քան Յունաց կայսրէն ղրկած Թագն և երեքկրկին ոսկէկնիքն[2], աւելի քան զայն Հա-

1 Յանուն Աշոտոյ գրուածք դեռ ծանօթ չէ մեզի, բայց կան միան դեռ իր որդւոյն Սմբատայ ստորագրութիւնն այս օրինակաւ դրոշմած յամի 906. և մեծամեծ իշխանաց Սիւնեաց և Արծրունեաց ստորագրութիւնքն՝ կոչելով զնա Թագաւոր մեր:

2 Վասն զի կայսրն բաց յամիրապետէն ուրիշ ամենայն արևմտեան և արևելեան Թագաւորաց և իշխանաց և սրբազան Հայրապետին՝ միակ կամ կրկին ոսկի գրամաչափ կնքով կու խաւրէր Թուղթ. միայն մեր Թագաւորաց՝ անոնցմէ մեծ եռապատիկ կնիք կու դնէր:

րուստ ընծաներն՝ զոր Թագաւորն ընդունեցաւ , և զոր կրկնապատիկ տուաւ և ղրկեց մերձաւորաց և հեռաւորաց , աւելի քան զիշխանաց և ժողովրդոց իրեն ցուցած մեծարանքն և հպատակութիւնն , աւելի քան զզօրաց զինաշարժութիւնն , ռամկաց հանդէսն , աւելի քան զպատերազմական , քաղաքական և եկեղեցական փողոց և երաժըշտութեանց ձայնակցութիւնն , — քան զայս ամենքն աւելի հաճոյական էր տեսնել զԱշոտ յորքունիան Տիրակաւանի , 'ի մէջ բազմասերունդ ընտանեացն , եղբարց , որդւոց և թոռանց , փեսայից և հարսանց , հին Հայկազանց և Եբրայեցւոց ջոջգլուխ նահապետի մը պէս . տեսանել զարի արքայն Աշոտ 'ի գահաւորակի իւրում , որոյ սիւնք արծաթիք , կոնքն ոսկի , ձեղուն ծիրանի և մէջ նորա ականակապ , տարածեալ սէրն (բանուածք բազմականին) 'ի դստերացն Թորգոմայ . — տեսնել այն հայրական և որդեկան գորովն ու խանդաղատանքը , կորիւններուն թափ թափ և շուտ շուտ շարժիլը , փափուկներուն հեզիկ նազելը . և այդ կայտառ ու պայծառ թիթեռնանման թոռնիկներուն վեր վեր ցատքտելը , պապուն վիզը պլլուիլը , ու թեթև թաթիկներով՝ թագին դեռ իրենց անծանօթ ծանրութիւնը կշռելը , և մատիկնեին մէկ մը անոր զարդերուն մէջ մէկ մը անկէ փայլուն ալեաց մէջ խաղցընելը : Աստուածասէր և ընտելասէր տանուտէր նահապետ մը թագաւորական փառօք պերճացեալ , արդարև այս է գոհարակապ ոսկի մատանին : Երանի՜ ... այնպիսի մատնին 'ի մատն հագնողի՜ն՝ թէ պագնողին :

## ԺԲ

Աշոտ չորս տարւոյ չափ[1] միայն Թագով փառաւորեցաւ կամ փառաւորեց զՀայաստան. Թերեւս այսչափ կարճ ժամանակն և վրազմանց շատուԹիւնն բաւական չէր Նորահաստատ ԹագաւորուԹեան և Նորէն միագլխեալ ազգին ամեն հարկաւոր կարգերը դնելու և հաստատելու. սակայն Աշոտ ոչ միայն զկարեւլին ըրաւ, այլ և շատոնց անկարելին այլ: Մնացեալ պատմչաց կարճ յիշատակներն մեզի կ'իմացընեն, որ բոլոր ժամանակն անցուց, մէկ մը Թագաւորավայել կարգօք և շինուԹեամբք, ինչպէս քիչ մ'առաջ իմացուց մեզի Յովհ. կաԹողիկոս. և ուրիշ մ'այլ[2] կ'ըսէ. «Փափկացեալ և յղփացեալ ուրախու»Թեամբ... քաղաքավայելչագոյնս զԹագաւորու»Թեանն կատարելագործեալ զժամանակն». մէկ մ'այլ՝ արժանապէս 'ի շնորհակալուԹիւն աստուածային խնամոց՝ որ այս յաջողուԹիւնը տուաւ իրեն և ազգին Հայոց. սրբազան տաճարներ կանգնելով անոր, ինչպէս վկայէ իր վարքը համառօտօղաց մէկն[3]. «Պսակեալ Նա յերկուց »Թագաւորացն՝ եղև Ճոխ Թագաւոր. և արար »խաղաղուԹիւն և շինուԹիւն աշխարհին Հայոց. շի»նեաց և բազում եկեղեցիս փառաւորս»: Որչափ մարդկան առջև բարձրացաւ և տիրացաւ, այնչափ աւելի զինքը խոնարհեցուց և ծառայեցուց

1 Թէ և ոմանք 'ի պատմչաց հինգ տարի կ'ըսեն ԹագաւորուԹեանն, այլ սխալ է. բայց եԹէ Քրիստոսի Թուականաւ 887էն սկսելով 891ի սկիզբն այլ հաշուեն, հինգ տարի կ'ըլլայ կտորներով, բայց ամբողջ և ոչ չորս տարի:

2 Թովմա Արծրունի:

3 Յայսմաւուրք:

Աստուծոյ՝ զգաստ և խոհեմ Թագաւորն. որ գիտէր իւրաքանչիւրին իրեն վայլածը տալ, թէ Աստուծոյ, թէ մարդկան և թէ իր անձին և աստիճանին: — Երրորդ ընելիքն կամ գործն այլ էր՝ իր հին կամ սովորական զբաղմունքն. այսինքն արթնութեամբ դիտել բոլոր իր իշխանութեան և պաշտպանութեան տակ եղած աշխարհաց և գաւառաց հանդարտութիւնը, և նուիրակօք կամ զօրօք կամ անձամբ՝ կարգի և խաղաղութեան բերել խռովեալները և գրգռեալները. և յայսմ՝ ոչ թագին նայելով և ոչ ծերութեան, իր ապարապետ եղած տարիներուն պէս՝ ինչուան մահուան տարին այլ անդադար գործելու, շարժելու, տեղէ տեղ փութալու երթալու գալու հետ էր. իբրև երիտասարդ նահատակ ամեն վտանգի մէջ յառաջադէմ վազելով և միշտ յաղթող կամ փրկող դառնալով: Քառասուն տարի ոչ ոք կրցաւ զլուխ քաշել կամ ազատիլ իր ամենահաս երագութենէն, և ոչ ոք վտանգիլ՝ իրեն ապաւինողներէն. միայն մահն կրցաւ զինքը դադրեցընել, այն այլ դարձեալ ճամբու վրայ հանդիպեցաւ, անոր բարեկարգիչ արշաւանաց մէջ: Որոնք որ հակըցան խաղաղութեան օգուտը՝ անոնց վրայ կակուղ բազկաւ երկընցուց թագաւորական գաւազանը. իսկ որոնք դեռ խռովութիւն կամ ըռնութիւն սիրէին, իմացուց անոնց որ գաւազանին հետ դեռ զէնք այլ կրնայ վերցընել իր քաջակորով ձեռքն. որոյ համար համառօտ գրութեամբ վկայէ ժամանակակիցն (Թովմաս), թէ մինչև 'ի մահն՝ « Ձեռն նորա յամենեսին, և ամենեցուն » ձեռք 'ի նա »:

Այս եօքի տարիներուս մէջ յիշուած գլխաւոր դիպուածքն և գործք Աշոտոյ՝ եղան մէկ մը հիւսիսային և կովկասեան կողմերը, մէկ մ՝այլ իր անհանգարտ Արծրունի փեսային հողերը. որ վեր-

ջապէս իր անխոհեմ շարժմանց զոհ եղաւ։ Ճարտարութ̃ մը այս ճշմարտութիւնը կու խոստովանի ծանր և զգուշաւոր կաթուղիկոս պատմիչն. «Գրիգոր՝ որ Դերենիկն անուանէր, և էր նա այր
» սէգ և զգաստ և սօս 'ի գնացս ոտից, և զօրաւոր արդեամբք և բանիւ. և անօրինէր միշտ յամենայն բարեձևութիւնս բերել։ Եւ վասն զի
» փեսայացեալ էր նա Աշոտոյ..., սակս այնորիկ
» հայրախնամ կամօք և խոհական սիրելութեամբ միշտ խրատ բարեաց նմա մատուցանէր որդւոյ. և յ'սկզբան անդ ընկալեալ հլու և
» զգօն մտօք՝ հաւանէր ընդունել, և յոտին զբաւոր թշնամիս 'ի սադրելոյ կացուցանէր, և խաղաղութեան և շինութեան պարապեալ՝ յապահովս 'ի բնակութեան իւրեանց պատրաստէր
» զհայրենի տէրութիւնն իւր 'ի բոլոր հինից։ Բայց
» յետոյ 'ի կամս անձին զինչպիսութեան բերեալ,
» ոչ անսայր բանի խրատու աներոյ իւրոյ, որպէս յերեկն և յեռանդն. և չլինէր նմա այն
» յաջողումն ինչ 'ի բարութիւնս »։

Ոչ թէ միայն բարւոյ յաջողութեան արգել եղաւ Դերենկայ կամապաշտ զինչպիսութիւնն, այլ և չարի պատճառ և անդարման չարի։ Վերն յիշեցինք իր քեռորդին Հասանիկը բռնելը և արձակելը. երկուքն այլ խարդախ ճամբաներ գացին, երբեմն իրարու դէմ, երբեմն իրարու կողմ. այս անգամ այլ (Աշոտոյ թագաւորութենէն քանի մ'ամիս առջը) Դերենիկ արձակեց զՀասանիկ, որ անոր ձեռքով ուրիշ մը բռնէ։ Այս որսն էր Գագիկ Ապումրուան ըսուածն, որդի Վահանայ, մեծապատիւ արծրունի իշխան մը, որ հետ իր հօրն և Դերենկայ և անոր հօրն՝ Բուղայէն բռնուած և գերի գացած էր, և խնամի էր իր մօրը, որով և թագաւորին. հիմայ Դերենիկ ասոր վրայ կասկածելով թէ Աշոտ կուրապաղա-

տին (Տարօնոյ) համախոհ էր, խոստացաւ Հասանկայ՝ իր Սեւան բերդը և երկիրները յետ դարձընել, եթէ բռնէ և իրեն բերէ զԳագիկ. վասն զի սա կասկածելով իրմէ՝ ամրացեր էր 'ի Ճահուկ բերդի, Կորդուաց աշխարհին կողմերը։ Հասան իբրև փախստական 'ի քեռւոյն՝ գնաց և խաբեց զԳագիկ, և հոս այլ իր առջի հնարքը բանեցընելով, կեղծ հիւանդութիւնը, ապահովցուց իր հիւրընկալը. և անոր քնացած ատեն՝ բռնեց և երկաթի շղթաներով բերաւ առ Դերենիկ. սա այլ խաւրեց 'ի Վան, պահել 'ի բերդին. իր տիկնոջն այլ յանձնեց, (որ այն ատեն 'ի Վան էր), զգուշանալ որ չփախչի բանտէն։ Այս բանս 'ի հարկէ մեր Թագաւորին անհաճոյ էր. բայց տհաճութիւնն աւելի գրգռել կու ջանար այն ոխակալ Եմինիկն, որ նախ զԴերենիկ հրապուրեց ինքն իր գլխուն գործելու և աներոջը չհարցնելու, և զԱպլփառ Կայսիկն այլ նորէն շարժել ուզեց, նոյնպէս զուրիշներն այլ. յետոյ խորամանկութեամբ մէկ կողմէն առ Աշոտ գրեց Դերենկայ վրայօք՝ որպէս թէ ապստամբօրէն ուզածը կ'ընէ և կ'արհամարհէ զԹագաւորը. մէկ այլ կողմէն ձայն հանել տուաւ թէ Աշոտ Թագաւոր Դերենկայ նեղացեր է և կ'ուզէ բռնել զնա։

Դերենիկ զամենքն այլ արհամարհելով՝ աշնան վերջերը (887) ելաւ երթալու 'ի Մառական աւանն, որ Երասխ գետոյ մօտերն է, Վասպուրական աշխարհին հիւսիսային կողմերը, Ճուաշ գաւառին մէջ, և հին ատենէն 'ի վեր՝ այն աշխարհին տէարց ձմերանոցն էր, խորա՛դիր և տաքուկ տեղ մ'ըլլալով։ Շիտակ և մեծ ճամբով երթալու համար պէտք էր անցնիլ Հերայ գաւառէն. այս երկիրս որ հիմայ Խոյ կ'ըսուի և Պարսից իշխանութեան տակ է, հին ատեն մեր Պարսկահայոց առաջին գաւառն էր, բայց աշխարհագրական դիրք

աւելի Վասպուրականի մաս կրնար ըլլալ, և
այնպէս այլ եղած էր. այս պատմութեան ատեն
և աւելի առաջ՝ արաբացի կողմնակալ մը կու տի-
րէր հոս, բայց Ապահունեաց և Խլաթայ իշխա-
նաց պէս՝ Աշոտոյ իշխանութեան տակ. երկրին
մեծաւորութեամբն՝ կերպով մը Դերենիկ այլ
իրաւունք ունէր անոր վրայ: Կողմնակալն՝ որ
Ապլ-փէրս անուանէր՝ գիտնալով անոր միտքը,
միանգամայն վախնալով ՚ի Թագաւորէն, երկու-
քին այլ հպատակութիւն և բարեկամութիւն կու
ցուցընէր. իսկ հիմայ անշուշտ Եմէնիկէն սիրտ ա-
ռած՝ խարդախութեամբ անզգամեցաւ: Իր վրայ
այլ կասկածողք կային, և իմացուցին Դերենկայ
որ զգոյշ կենայ Ճամբան. ոմանք այլ կ՚ըսէին որ
Թագաւորն պիտի բռնէ զինքը. այս բանէս կըր-
նար ապահով ըլլալ, բայց ոչ նոյնպէս այլազգիէն:
Դերենիկ սովորական յանդգնութեամբն յառաջ
անցաւ, մօտ Հերայ (Խոյի) գեղեցիկ դաշտա-
վայրը և իջաւ ՚ի գեղն Փեռոտակ, քաղաքին մօտ:
Քաղաքապետն իր պատրաստութիւնները տես-
նելէն ետև՝ հրաւիրեց զԴերենիկ ՚ի քաղաքն. նա
յանձն չառաւ հոն երթալու, բայց միայն Ճամ-
բուն վրայ տեսնուելու. և երբ ինքն երկրորդ օրն
որսի ելեր էր, քովինները նորէն ազդեցին իրեն որ
հեռանայ անկէ. նորէն չլսեց: Մէկ մ՚այլ իմաց
տուին որ Ապլփէրս կու գայ զինքը բռնելու.
Դերենիկ տեսաւ անոր Թիկնապահ զօրաց գունդն՝
որ իբրև ՚ի պատիւ իրեն դիմաց գային. մտրակեց,
և «Ճեմս առեալ սիգաքայլ երիվարաւն՝ եհաս...
» միայն և առանձինն ՚ի յառուամէջ տեղւոջ ».
այնպէս տեղ մը որ երկու կողմէն այգիներ էին,
մէջէն յորդասահ առու մը կ՚անցնէր, և ոչ ոք
կու համարձակէր անկէց անցնիլ. միայն Դերե-
նիկ մէկ մ՚այլ մտրակեց զձին և Ճղքեց ջուրը.
ցատքեց այն դին. մէկէն հոն շարուած այլազգի

զօրքն երկու բաժնուելով թողուցին որ մէջերնէն անցնի կորիճն. նա անխոհեմաբար մինակ յառաջեց, Ապլփերս այլ դիմացն ելաւ, «և գերկս » զպարանոցաւն արկեալ՝ տայ գլուգայեանն հան » բոյր»։ Այն ատեն զօրքն ետևէն պատեցին զնա. ոմանք ձիուն սանձը քաշեցին, ոմանք վրայի սուրը բռնեցին, ուրիշներն այլ սրով և նիզակակռնակէն զարկին, վար ձգեցին. ինկնալու ատեն մթնցած աչուըներն ողորմուկ յետ դարձուց՝ օգնական պաշտպան փնտռելու. բայց իրեններն ջրին այն դին էին, և չփոթելով ու վախնալով փախան. միայն Ամատունեաց ցեղէն գլխաւոր իշխանն տիրասիրութեամբ բռնուեցաւ։ Քաղաքին Հայ վաճառականքն գնեցին Դերենկայ մարմինը, և իշխանաց պատուով պատեցին. այն տեղը եպիսկոպոսն Դաւիթ այլ արժանաւոր յուղարկաւորութիւն ըրաւ, և թաղեց եկեղեցւոյն մէջ. ինչուան որ յետ ժամանակի՝ մեռելոյն անդրանիկն եկաւ առաւ հօրը մարմինը և տարաւ հանգչեցուց Արծրունեաց հին քնարանը, ՚ի վանքն Խաչի՝ որ ՚ի Հադամակերտ Աղբակայ։ Բոլոր Վասպուրական աշխարհն տասն ամիս սուգ ըրաւ Դերենկայ վրայ, որ իբրև 40ամեայ էր մեռած ատեն. իսկ իւր անդրանիկն՝ հազիւ տասնամեայ։

Աշոտ թագաւոր, որ այս միջոցիս Կովկասեանց հոգով զբաղած էր՝ խաւրեց իր ժիր նուիրակ Շապուհ որդին, որ իր համանուն թոռը զԱշոտ զանդրանիկն Դերենկան՝ ժառանգեցընէ հօրը աթոռոյն, և անոր մայրն այլ քաջալերէ, (Սոփի տիկինը) որ էրկանը մահուան վրայ շատ սրտակոտրեր էր. և հիմայ եղբայրը տեսնելով և զանդրանիկն այլ Արծրունեաց տէր դրուած՝ քաջալերեցաւ. սկսաւ ոչ միայն մօր պէս՝ այլ և թագուհւոյ պէս խնամել որդիքը և զաշխարհը. հարցուց հօրը՝ Ապումրուանին վրայ, և պատուէր ա-

ռաւ որ արձըկէ ու սիրով պատուէ, և որդւոցը խնամակալ կարգէ, ինչուան որ չափահաս ըլլան, և կարենան ինքնիրեննուն կառավարել: Յաջորդ տարւոյն (888) եաքերը Աշոտ Թագաւոր՝ Վրաց գործերը շտկած ըլլալով, անձամբ եկաւ 'ի Վասպուրական, դուստրը (Սոփի) և Թոռները մխիթարելու հայրաբար. միանգամայն և խնամակալ Թագաւորի պէս նորէն հանդիսիւ հաստատեց զԱշոտ Թոռը 'ի տէրութեան Արծրունեաց. անոր երկու եղբարցն այլ պատշաճ պատիւներ և իշխանութիններ տուաւ. նոյնպէս զԱպումրուան այլ հաստատեց անոնց խնամակալութե և պաշտպանութեան մէջ, կառավարութիւնն այլ յանձնելով Սոփի տիկնոջ, և ամեն բան կարգի դնելով դարձաւ իր տեղը:

Կովկասեանց կամ Վրաց շփոթութեան պատճառն՝ մէկ մ'էր այն Ներսեհն՝ զոր նախ յիշեցինք. մէկ մ'այլ Ափխազաց Թագաւորը՝ որ իրարմէ կու յափշտակէին Թագը: Այսպիսի էր և Յովհաննէս Թագաւորն, որ զրկելով զԲագարատ՝ զորդի Դեմետրի Թագաւորի, իր որդին Ատրներսեհը Թագաւոր դրաւ մահուան ատենը (879). Բագարատ փախաւ 'ի Կ.Պօլիս, և քանի մը տարիէն դառնալով՝ իր կուսակցաց օգնութ̄ սպաննեց զԱտրներսեհ և տեղն անցաւ (887). անոր այրին այլ առաւ 'ի կնութիւն, որ էր քոյր Ներսեհի. և զսա այլ կանչեց 'ի Յունաստանէ, և բաւական զօրք տալով՝ անոր ուզածին պէս Թողուց որ կոխէ Վրաց երկիրը և խլէ անոր երիտասարդ իշխողէն, որ էր անուանին Ատրներսեհ (որդի Դաւթի), և իր հայրենիքը ժառանգեր էր մեր Աշոտոյ խնամակալութեամբ. մինչդեռ սա այս միջոցիս նոր Թագաւորեր և քաղաքական կարգադրութեանց զբաղեր էր: Ատրներսեհ իրեն օգնական գտաւ զԼիպարիտ, նախահայր մեծ

և անուանի տոհմին Ուռպելեանց, որ Թռեղայ գաւառին կուտիրէր. և զԳուրգէն՝ Տայոց մէկ մասին տիրող կուրապաղատն. մեր Թագաւորն այլ օգնական գունդ մը խաւրեց. որովք Ատրներսեհ սիրտ առաւ իր հակառակորդին՝ Ներսեհի՝ դէմ ելլելու. Ախալցիխէի կողմերը, Կուր գետոյն եզերքը հանդիպեցան իրարու, և սաստիկ պատերազմ եղաւ. որովհետև Ներսեհի և Ափխազաց հետ միացեր էին Ալանք կամ Օսք այլ. բայց վերջապէս անոնք յաղթուեցան, Ներսեհ բռնուեցաւ և սպանուեցաւ (888) յԱտրինծաւանի (յարևելակողմն Ախալցիխէի):

Ասկէ վերջը կ'երևի թէ Աշոտ Թագաւոր անձամբ եկաւ այս կողմերս և օրինաւոր իշխանաց յանձնեց. անկէ մտնելով Կովկասայ լերանց մէջ՝ նուաճեց Վրաց թշնամիները և Ներսեհի նիզակակիցները, զԱլանս և ուրիշ լեռնաբնակ ցեղեր. որոց համար կ'ըսէ կաթուղիկոս պատմիչն. «Զեռն » զհիւսիսական կողմանցն արկեալ, 'ի ծործորս » մեծի լերինն Կովկասու, որ 'ի հովիտս և 'ի դաշտս » երկայնադոգս բնակեալ էին ազգք, ընդ իւրեաւ » հնազանդեցուցանէր » : Մեր օրերս անգամ » յայտնի է, թէ որչափ ոյժ և խելք պէտք էր Կովկասեան այն բնապարիսպ լերանց ազատ որդիքը սանձելու կամ ասպատակութենէ դադրեցընելու :

Աշոտ իր խնամոց յանձնուած երկրին հիւսիսակողման մէջաւերղուանքը հանդարտեցընելէն եպովանոր երկու ծայրերն այլ նուաճեց, որ կերաւ՝ մը աւելի դժուար էին : Վասն զի արևելեան կողմը կ'իշխէին Ուտիացիք, որ են հին Հայոց 15 աշխարհաց մէկն, Աղուանից, Վրաց և Կովկասեանց սահմանակից. որոց նման իրենց երկիրն այլ լեռնոտ և ամուր ըլլալով, հոս կարիճ բայց և անկիրթ իշխանք իրենց ազատութիւնը պահած

էին Հագարացւոց բռնութեան տակն այլ։ Նոցանց մեծ իշխանն էր Ստեփանոս Կոն՝ որ եկաւ առ Բուղա, և նահատակուեցաւ 'ի Բաբելոն։ Այս կողմերուս հին Հայկազանց ժամանակէն տիրողք Սեւուկ նահապետին անուամբ, այս ատեններս այլ Սեւորդիք անուամբ ծանօթ և աշխարհիկ էին մերձաւորաց և Արաբացւոց, իրենց չինած կրօ-նուն սովոր։ Հիմայ Աշոտ « զեղուզակաս մար-» դիկ Ուտի գաւառի առհասարակ ընդ ձեռամբ » նուաճէր, 'ի բաց 'ի նոցանէ հերքելով զաւա-» զակութիւնն մարդադաւութեան, և խորև օրի-» նաւորս և հլուս զամենեսեան կազմէր, և առաջ-» նորդս և իշխանս նոցա կացուցանէր » ։

Իսկ արեւմտեան սահմանածայրն էր՝ Աբխա-զաց երկիրն կամ Եգերաց, որոց Թագաւորն՝ սահմանակից տէրապետաց մէջ ամենէն զօրաւորն էր, ինչպէս առաջ այլ յիշեցի, միանգամայն և ինքնագլուխ Թագաւոր ճանչցուած. հիմայ Բա-գարատ Ներսեհի կողմը բռնելով՝ Հայոց այլ Թշնամացեր էր. բայց նախ անոնց զէնքովը յաղ-Թուելով, յետոյ Աշոտոյ մարդասիրութենէն, խոնարհեցաւ 'ի հաշտութիւն և 'ի դաշնակցու-Թիւն, որդիաբար մեծարելու իրմէ մեծ Թա-գաւորը. ինչպէս վկայէ և վերոյիշեալ պատմիչն մեր. « Այլ և զԹագաւորն ևս Եգերացւոց 'ի սէր » միաբանութեան ընդ իւր կապակցեալ՝ այնպէս » նմա այցելէր, մինչ զի անընդհատ յորդէութե » սակի գոլով մտերմաբար պաքտավճար միշտ » նմա 'ի ծառայութիւն բերէր » ։

Այս դժուարին գործերը յաջողութեամբ լը-մընցընելէն ետև էր որ Աշոտ Թագաւոր գնաց 'ի Վասպուրական, իր Թոռանց ժառանգութիւնը և իշխանութիւնը կարգի դնելու։ Նոյնպիսի կար-գաւորութիւն մ'այլ ըրաւ Սիւնեաց երկրին մէջ. վասն զի դրեԹէ նոյն ատեն մեռաւ Վասակ Իշ-

խանիկ՝ երկրին մեծ իշխանն. Աշոտ՝ անոր եղբայրը և իր անուանակից Աշոտը հաստատեց ՚ի Նահապետութիւն Սիւնեաց. և երկուքին որդւոց ժառանգութիւններն այլ որոշեց: Այս Աշոտս այլ իր եղբօրը (Վասակայ) պէս հլու և հաւատարիմ եղաւ մեր Թագաւորին, և յետոյ անոր որդւոյն՝ Սմբատայ: — Իսկ մէկայլ Սիսակեան Վասակն՝ փեսայն Թագաւորին՝ շատոնց մեռեր էր երիտասարդ հասակաւ, և այրիացեալ տիկինն Մարիամ երեք կորիւն որդւովքն՝ Սևանայ ծովուն եզերքը կու շէնցընէր վանքերով և եկեղեցիներով, թէ հօրն ատեն և թէ իր եղբօրը՝ Սմբատայ՝ թագաւորութեան ժամանակ:

Իսկ մեր Թագաւորին միւս դուստրն Սոփի՝ այրին Դերենկան՝ իրեն պէս երկարակեաց չեղաւ. Երկանն չարաչար և ցաւալին մահն անբժշկելի վէրք բացեր էր սրտին մէջ. քան ամէն (889) « և
» ինքն Սոփի անհամեմատ ՚ի կանայս՝ ըստ նմա-
» նութեան ամուսնասէր տատրակի հրաժարեալ
» յամենայն վայելչութեանց կենցաղականացս,
» խանդակաթ լինելով, ոչ ժուժեալ սրտին նե-
» ղութեան ... փոխի յաշխարհէս. խաղաղու-
» թեամբ ննջեալ ընդ հարս իւր. Թողեալ զման-
» կունսն տղայս և անկատար հասակաւ ». որք մեծ ցաւով և սգով տարին մարմինը հանգուցին Դերենկայ քով: Շահասէր իշխանք և զօրաւորք կու փափագէին խաբել որբացեալ իշխանորդիքը,
« այլ ոչ իշխէին յերկիւղէ մեծին Աշոտոյ Թա-
» գաւորին Հայոց [1] ». որ իր կորիւն Թոռները առաջուընէ աւելի հայրաբար խնամեց, ինչպէս իր բնիկ իշխանական աշխարհն և ուրիշ պաշտպանեալ աշխարհներն այլ շէնցընելով, դեռ տարի ու կէս, մինչև իր վախճանն. որ կենացն համեմատ եղաւ արժանաւոր և փառաւոր:

1 Թովմա Արծրունի:

## ԺԹ

Աշոտոյ հին նախահաւն և նախօրինակին իշխանութեան, առաջին սուրբ և տօնելի Թագաւորին Դաւիթ մարգարէ, մարդուս կենաց կարողութեամբ վայելելի սովորական չափին ըստ 70 տարի· ինքն այլ նոյն տարին չանցաւ· իր առաջին քրիստոնեայ սրբակաց Թագաւորին պայազատն՝ Աշոտ այլ գրեթէ նոյն շրջանը բոլորեց և կնքեց, 71 տարին· 'ի վերջ 890 Թուականին Քրիստոսի, կամ Թերևս 'ի 1 փետրուարի 891ին· վասն զի այս օրուանս կու զուգակցի մարերի 20ն (յորում անոր յիշատակն գրուած է) ՅԼԹ Թուականին Հայոց, յորում մահն նշանակի։ — Թէպէտ և կենաց վերջին երկու տարիներուն մասնաւոր գիպուած մը չիպատմուիր, բայց՝ ինչպէս նախ յիշեցինք՝ Աշոտ անդադար էր հարկաւոր գործոց մէջ, որոց հաղորդ և ընկեր էին չորս կարիճ, չափահաս և բարեկիրթ որդիքն։ Անդրանիկ Սմբատըն, զոր Իշխանաց իշխան անուաներ էր, այն զօրօք Գուգարաց կողմերն էր, դարձեալ Վրահայոց մէջ ծագած շփոթութիւն մը խաղաղցընելու, կամ ապստամբները նուաճելու համար, ինչպէս կ'ըսէ ժամանակակիցն Յովհ· կաթողիկոս, և ուրիշ բան չաւելցըներ· իսկ Վրաց պատմիչն յիշէ, որ նոյն ատեն Գուրգէն կուրապաղատ՝ մեր Թագաւորին քեռայրն՝ իր Տայոց Քաղմախ իշխանանիստը և Արտանուջ մեծ քաղաքը Թողլով, գնաց բնակելու Շաւշէթի և Արտահանու կողմերը, (որ Գուգարաց արևմտեան գաւառներն են, և) որոց վրայ առաջ ուրիշ իշխան կար, և շատոնց Վրաց իշխանապետին պաշտպանութեան տակ ընկած էին։ Հիմայ այս բանս տհաճութեան և կռուի պատճառ եղաւ Ատրներսեհի՝ Վրաց գըլ-

խաւարին և Գուրգենի մէջ. ինչուան պատերազմի ելան Արտանուշայ դաշտին մէջ. Գուրգէն յաղթուեցաւ և վիրաւորեցաւ. և վերջը նոյն վիրաց ցաւով մեռաւ (891): Թուի թէ այս կամ անկէ պատճառած գխպուածի համար էր հոն ղրկուած Սմբատ. մինչդեռ հայրն գուցէ ուրիշ գործ մը շտկելու համար ձմեռ ատեն ճամբայ ելեր էր իր բնաշխարհէն մէջ, երբ վրան ծանր հիւանդութիւն եկաւ. և չկարենալով աւելի առաջ երթալ կամ յետ դառնալ, դադրեցաւ 'ի Քարսպառ ըսուած ապառաժոտ բարձրահայեաց սարատափ տեղմը. որուն աշխարհագրական դիրքն անծանօթ է ինծի, և կարծեմ յԱյրարատ գաւառի:

Այն Քարսպառ գահաւանդն եղաւ Աշոտոյ կենաց սպառիչ սահմանաքարն. և անոր բարձրութենէն դարձուց աչուըները յետոյ իր եօթանասնամեայ կենաց ընթացից վրայ, և 'ի վեր՝ հանդերձեալ կենաց անսպառութեան վրայ: Մարդոյ, և մեծիշխան մարդոյ արժանավայել էր կտրած ընթացքն, կրնար անվախ նայիլ և ըսել. «Զընթացսն կատարեցի». հայրենեաց, եկեղեցւոյ և ընկերակցաց համար էին իր երկայն աշխատանքներն և մրցանքն. կրնար այլ ըսել. «Զբարւոք պատերազմն պատերազմեցայ». բարեսէր և քաջահաւատ հոգին կրնար յուսալ արդարութեան երկնաւոր պսակին, անկէ՝ որ հոս տուաւ իրեն երկրաւոր պսակը. զոր հիմայ վար դնելով ընդ մէջ հանդերձեալ կենաց արշալուսոյն և մահուան ստուերներուն, հաստատրիմ քրիստոնէի զգաստութեամբ պատրաստեց զհոգին այն մեծ փոփոխութեան: Մինչդեռ որդիքն և սիրելիքն իրեն առողջութեան և հանգստեան խնամք կումատակարարէին, ինքն ամենէն քաջահոգ՝ բերել տուաւ զքահանայապետն Հայոց, և միջնորդ կեցուց վերջին անգամ ընդ Աստուած և ընդ ինքն.

» բարուց՝ հանգեաւ 'ի Քրիստոս[1] »: — « Յետ
» զամենայն խնչ ըստ Աստուծոյ հաստատելոյ՝
» փոխի 'ի կարգ սուրբ Թագաւորաց[2] »: — « Չի
» էր այր քաղցր և հեզ և անարատ[3] »: — Ալեւո-
» րեալ վախճանեցաւ աստուածպաշտութեամբ
» և լի հաւատով... և փոխեցաւ յանանց Թագա-
» ւորութիւնն երկնից[4] »: — Փոխի յաշխարհէս
» 'ի բարիոք ծերութեան... քաջավայելչագոյնս
» զԹագաւորութեանն կատարելագործեալ զժա-
» մանակն[5] »:

Մեծին Աշոտոյ (որ հիմայ ոմանց առիւծ մը կ'երեւէր 'ի քուն ծանրութեան, ոմանց սիրելի և ալեւոր հայր մը ընտանեաց մէջ նահապետօրէն վախճանած, ոմանց դեռ Թագաւոր 'ի մտածման հարկաւոր խորհրդոց, և ամենայն խոհական ճանչցողաց՝ արդարակորով և մաքրակենցաղ մարդ մը վախճանեալ սրբութեամբ) մեծահանդէս եղաւ և յուղարկաւորութիւնն. ինչպէս մեր հին Թագաւորաց մէջ յիշուի միայն Տրդատայ և Բ Արտաշիսի: Երախտագէտ որդիքն և հպատակք՝ ուզեցին անոր արժանեաց և պատուոյն համեմատել նաև սգոյ հանդէսն և կազմուածքն. « ոսկէ-» հուռ հանդերձիւք և ոսկեզօծ վառիւք զդա-» գաղն զարդարեալ ». զոր Քարսպառէն վերուցին տարին 'ի Բագարան, որ Թագաւորանիստ քաղաք էր եղած, միանգամայն և յետին հանգստարան ոմանց 'ի Բագրատունի Թագաւորաց, և նախ մեր Աշոտոյ, որ հաւանօրէն առաջուց հոն պատրաստեր էր իրեն հանգստեան մատուռն և քնարանը: Բոլոր ճամբան այս երկու յիշեալ տեղեաց մէջ (որուն երկայնութիւնը չեմք գիտեր),

1 Յհ. կաթ:
2 Սամ. Անեցի:
3 Ասողիկ:
4 Յայսմաւուրք:
5 Թոմ. Արծր:

հանդիսաբար յուղարկաւորութ̃ն եղաւ. Գէորգ կաթուղիկոս՝ եկեղեցական դասակցութեամբ և պաշտօնէիւք և հոգևոր երգօք՝ առջևէն երթալով. « և խումբք զօրաց զինուք և զարդուք, ընտրա- » նօք և նշանակօք շուրջ պաշտպանեալք ». իսկ գագաղաց ետևէն և անմիջապէս մօտէն՝ կ՚երթային իբրև սգազգեցիկք՝ երեք թագաւորորդիքն, Շապուհ, Սահակ և Դաւիթ, (վասն զի երէցն Սմբատ չկըրցաւ համնիլ 'ի Գուգարաց կողմէն), և թագաւորին մերձաւոր ազգականքն և բարեկամք և պաշտօնեայք. ասոնցմէ վերջը, ըստ հին սովորութեան Հայոց, սգաւոր և սգաշարժ կուսանք և լացմայրք, երաժիշտք և ողբերգակք, թարգմանք և վկայք քաղաքական և բնական սգոյ ցաւոց ընտանեացն, հայրենեացն և բոլոր պաշտպանեալ ազգաց. և այլ ետևանց « բազմութիւն » ռամկացն և անռամկաց »: Յետին հանդէսներն այլ կատարելով 'ի Բագարան, « ապա կազմեալ » տապան թագաւորական՝ եդին զնա 'ի քնարա- » նի հարց իւրոց »: Իսկ յիշատակը՝ ինչպէս 'ի սկզբան պատմութեանն ըսի, աստուածընտիր սրբոց հետ խառնեցին յեկեղեցիս Հայաստանեայց, 'ի պատիւ նորա և 'ի փառս ամենախնամին Աստուծոյ:

## Ի.

Աշոտոյ հանգստարանին և յիշատակին մնաք բարով չըսած, թերևս յետին բարև մ՚ այլ տալ վայելէ անոնց՝ որ իր պատմութեան և գործոց մէջ տեղ կամ մեծապէս հանդիսացան. արդէն կենաց օրէնքն՝ անոնց մէկ մասը յառաջ քան զԱշոտ վերուցեր ծածկեր էր աշխարհքիս տեսարանէն. — Վասիլ կայսրն հինգ տարի առաջ մեռեր էր, և որդին Լևոն իմաստասէր թագակցեր Աշո-

տոյ. — բազմափորձանք պատրիարքն Փոտ գրեթէ Աշոտոյ հետ կատարեց կեանքը, (891)։ Աշոտէն ընտրեալ և զԱշոտ Թագաւոր օրհնող կաթուղիկոսն Գէորգ, անոր անդրանիկ Սմբատն այլ օրհնեց, և անոր հետ տառապեցաւ Աֆշինի բռնաւոր կուսակալին ապստամբութեանց պատեն, ինչուան կապուեցաւ և բանտեցաւ և ազատեցաւ միջնորդութեամբ Համամայ՝ Աղուանից իշխանապետին, որ և իբրև զատ ազգի գլուխ՝ յետ Բագրատունեաց՝ առաջին Թագաւոր եղաւ. Գէորգ եօթն տարի յետ Աշոտոյ վախճանեցաւ (897)։ Տեղը գրեթէ հարկ էր որ դրուի աշխարհածանօթ և մեծահռչակ ճգնաւորն Սևանայ և ծանօթն Աշոտոյ՝ Մաշտոց, որ և իր անուանակից և գործակից (Ս. Մեսրովպայ-Մաշտոցի) նման՝ միայն վեց եօթն ամիս Հայոց հայրապետական աթոռը նըստելով մեռաւ նոյն տարին (897). և յաջորդ ունեցաւ իր ազգական և աշակերտը՝ Յովհաննէս Պատմիչը, որ մեր այս պատմութեան այլ գլխաւոր աղբերաց մէկն է։

Իսկ յիշխանաց և 'ի մերձաւորաց Աշոտոյ՝ իր եղբայրն Սպարապետն Աբաս նախ քիչ մը գժուարացաւ եղբօրորդւոյն հնազանդելու, և հակառակեցաւ թէ անոր և թէ Վրաց կուրապաղատին՝ Ատրներսեհի. յետոյ քիչ մ՝ այլ իր կալուածներն ընդարձակելով Վանանդայ և Գուգարաց կողմերը՝ հանդարտեցաւ. և ինչպէս կ'երևի՝ քիչ տարիէ վախճանեցաւ։ Իսկ Ատրներսեհ Վրաց համար եղաւ ինչ որ Հայոց՝ իր բարերարն մեծն Աշոտ, ինքն այլ Թագաւորական պատուոյ հասաւ, և երկայն ատեն իշխելով իր աշխարհը շէնցուց և զօրացուց։

Աշոտոյ Թոռներէն, Սիսական իշխանքն՝ ինչպէս իրեն՝ նոյնպէս և Սմբատայ միշտ հաւատարիմ և հլու եղան, և ասոր պէս շատ նեղութիւն քաշե-

ցին Աֆշինի և մանաւանդ անոր եղբօր Եուսուֆի բռնաւոր ասպատակութեանց ատեն. իրենց բարեպաշտ և սիրելի մայրը, Մարիամ տիկինը՝ իրենց աշխարհին խնամակալ և պաշտելի անձի պէս հետերնին տանելով տեղէ տեղ բերդէ բերդ, և այն տարադիր տեղափոխութեանց մէջ մեռնելէն ետև այլ, նոյնպէս մարմինը հետերնին տարին, ինչուան որ բռնաւորն կորաւ, երկիրն խաղաղեցաւ, և դարձան, ու Մարեմայ մարմինը հանգչեցուցին անոր ձեռակերտ եկեղեցւոյ մը մէջ: — Արծրունի Թոռունքն Աշոտոյ՝ իրենց հօր (Դերենկան) պէս վառվռուն և անհանգիստ եղան. բայց անդրանիկն Աշոտ աւելի հաւատարիմ եղաւ Սմբատայ, և երիտասարդ վախճանեցաւ (29 տարուան), յաջորդն՝ իր եղբայրն Գագիկ՝ Արծրունեաց աշխարհաշէն և փառաւորիչ դիւցազն կու ճանաչուի՝ բայց իր երկիրը ապահովելու համար՝ Յուսփայ (Եուսուֆ) հետ առանձին դաշինք գնելով և անկէ Թագ առնելով, իր քեռիէն (Սմբատայ) զատուեցաւ, և առով մեղադրելի է: Միայն հոս յիշենք որ Սմբատայ պատերազմին ատեն ընդ Ահմատայ որդւոյ Յիսէի՝ վատութիւն և մատնութիւն ընող ու Թագաւորին յաղթուելու պատճառ եղող Գագիկն՝ սա չէ, այլ Ապուսմրուանն, որ շատ անգամ յիշուեցաւ պատմութեանս մէջ. և որ այս յիշեալ դիպուածէն քիչ վերջը՝ սպանուեցաւ, որովհետև Արծրունեաց իշխանութիւնը կ'ուզէր ձեռք առնուլ:

Աշոտոյ որդիքներէն, Սահակ՝ իրմէ վերջը չի յիշուիր. Շապուհ՝ Հայոց սպարապետ եղաւ և Տերանց տէր. շատ շինութիւններ ըրաւ իր սիրելի քրոջ՝ Մարիամայ՝ երկիրներուն սահմանները. բայց ինքն այլ միւս եղբայրն այլ Դաւիթ՝ դեռ տարիքնին չլրացած մեռան և շատ սուգ պատճառեցին Սմբատայ:

Սա 24 տարի Թագաւորեց՝ հօրը շատ կատարելութիւններն ունենալով և անոր արժանի պայազատ ըլլալով. բայց անոր Նահապետական հեղինակութիւնը չէր կրնար ունենալ իր պաշտպանութեան տակ եղած իշխանաց վրայ, որք Աշոտոյ որդիք սեպուէին, իսկ իրեն՝ եղբարք հաւասարք. և քիչ մ' իրենք իրենցմէ, քիչ մ'այլ 'ի Յունաց և յօտարաց գրգռեալ՝ սկսան հեռանալ միութենէն, իւրաքանչիւր իր երկիրը կամ գլուխը հոգալով։ Աշոտ Սմբատայ ամեն ջանքն չյաջողեցան, և վերջապէս յետ շատ առաքինի գործոց և աշխատանաց, իր խորամանկ երդմնազանց անգութ Թշնամւոյն՝ Յունաց՝ անձնատուր եղաւ. գերագոյն առաքինութեամբ, իր հպատակները ազատելու համար, և անկէց այլ գերագոյն առաքինութեամբ մը մարտիրոսական քաջմնելի տանջանաց համբերութեամբ՝ արեամբ նահատակուեցաւ 'ի վերայ հայրենեացն և սուրբ հաւատոցն (914). և իր պապուն նման Թոփոխանող, և այլ փառաւոր անուամբ և իրօք Նահատակ կոչուեցաւ, և նշանագրեցաւ 'ի Յայսմաւուրս և 'ի Հայադիրն՝ յութ մայիսի։

Այսպիսեաց հայր և որդի Մեծն Աշոտ, այսպէս ապրեցաւ, գերազանց քան զանունս և քան զշատս յիշխանաց և Թագաւորաց՝ մեծագործութեամբ, քաջութեամբ, բարեպաշտութեամբ, խոհեմութեամբ, միանգամայն և յաջողութեամբ և փառօք և սիրով ժամանակակցացն և ապագայից։ Այսպէս գիտցաւ յարմարել խղճին, պատւոյ, ժամանակին և հայրենեաց և ընկերաց օգտին։ Այսպէս ազգայարոյց և ազգակեցոյց անձն եղաւ, արժանի երախտագիտութեան, զարմանաց և փառաց՝ աւելի քան մինչև հիմայ իրեն ընծայուածն. արժանի Հայոց նախաշար անուանց դասակցութեան, արժանի դիւցամեծար դրուատեաց և կրկնափայլ անմահութեան։

Ո՛րչափ երջանիկ և նախանձելի պիտի գրեմ զքեզ, Հայկակ, եթէ օր մը կամ գիշեր մը, պայծառ արեւ մը կամ տխրախառն լուսին մը լուսանան քեզի 'ի Բագարան, Ախուրեան գետոյն պղտոր պատուտից և անարձագանգ կարկաջանաց քով. այն համասփիւռ ջարդ ու բուրդ քարուցիր աւերակաց վրայ, որոնք միջօրէ ատեն անգամ սեւ ու սուգ կ'երեւին, մեծ հնոցէ մը խանձրած մխոտած աղիւսներու նման. որոց դիմաց քանի մը ժամ հեռու Անի՝ Թագաւորաց քաղաքն՝ դեռ պարիսպներով և եկեղեցեօքն կիսականգուն կայ.— Բագարան՝ երբեմն չաստուածոց բնակարան, յետոյ Բագրատունեաց արքայարան և քնարան՝ գետնի հաւասար է. քարերն աւազ ու մոխիր դարձած, մանրած թոռամած. միայն բերդի նշանակ մը կ'երեւի քիչ մը բարձր, ծեր ու մէջքը կորացեալ պահապանի նման մաշած աշտարակով մը. չորս հինգ եկեղեցեաց պատերու մասունք կան քովերը, մէկ երկու արձանագիր, որոց հնագոյնն իսկ մեր Աշոտի մահուանէն դար մը վերջը փորագրած է. եկեղեցեաց մէկին մէջ գերեզման մը կայ, զոր Ս. Գէորգի նշխարաց հանգստարան կ'ըսեն մօտաբնակ ժողովուրդն, և ուխտի կ'երթան ու խնդրուածքնին կ'ընդունին. բայց մեկայլոց քով այլ կան հնացեալ լուռ գերեզմաններ, միակ կանգուն շէնք Բագարանի, որք և ծածկեն զմեծագոյնն աւերակաց, զանցեալ ազգս մեր նախահարց։ Այն սեւացեալ շիրմաց մէկը կ'ուզեմ որ համբուրես, վրան գանելով և չորս դի քարէ քար թուփէ թուփ ալէքէ ալէք հնչեցընելով զանունն ՄԵԾԻՆ ԱՇՈՏ ԹԱԳԱՒՈՐ։

# ԺԷ

# ԱԲԳԱՐ ԴՊԻՐ

## ՀԱՅ ՏՊԱԳՐՈՒԹԻՒՆ

Եթէ մտածութիւնը բերնով բացատրելը, այսինքն խօսիլը, աստուածատուր և բնաձիր պարգև մը չըլլար մարդուս, անշուշտ ձայն հնարող և աւանդող մարդն՝ գերագոյն մարդ պէտք էր սեպուիլ, և յամենայն ազգաց և ժամանակաց պաշտելի և պատուելի ըլլալ: Անկէ ետև պատուելի և երախտելի համարելու է զխօսքը մնայուն ընողը՝ նիւթական կերպով մը, որ է Գիրն. և իրաւամբ այլ մեծ և աստուածական պաշտօնի ընծայած են նախնիք իւրաքանչիւր ազգաց՝ իրենց մէջ գիր և դպրութիւն հնարողաց. որպիսի էր կամ կու կարծուի մեր հին նախնեաց մէջ՝ Տիր՝ հայրն և աստուած դպրութեանց, որ Յունաց և Եգիպտացւոց Եռամեծ Հերմեսի հաւասարի և համեմատի. իսկ քրիստոնէութեան ատեն մեր նոր գրոց հեղինակն՝ Ս. Մեսրովպ ամենուն յայտնի է թէ ինչպէս երախտագիտութեամբ և փառօք ճանչցուած և պաշտուած է յազգէս՝ յեկեղեցիս և յուսումնարանս: — Եւ եթէ յետ այս մեծարդիւն գրագիւտ մարդկան՝ պատուոյ և երախտեաց կարգը՝ մէկու մը տալու ենք, անշուշտ այն մէկն է՝ գրութիւնը շուտ և շատ ծաւալել հնարողն,

որ է Տպագիրն: Այս այլ յայտ է, թէ Եւրոպացիք՝ յառաջադէմքն 'ի գրականութեան, ինչ պատիւ և շնորհակալութիւն կ'ընծայեն Կուդգէմպէրկի, որ իրենց մէջ համարուի հեղինակ տպագրութեան, թէպէտ և Չինք յամենայնի հնապանծք (և շատ բանի մէջ իրաւամբ), այս գիւտս այլ իրենց սեփականեն. բայց ընդհանուր աշխարհս չորս դար է՝ որ այս մեծ պարգևս կու վայելէ, Սդրազպուրկի գերմանացւոյ մը երկայնամիտ հանճարովը:

Մեր Հայոց Կուդգէմպէրկն ո՞վ եղած է, այսինքն առաջին անգամ հայերէն գրեր ձուլող ձևող և գիրք տպող, դեռ ոչ բոլորովին բացայայտ խնդիր մ'է. զոր արդէն լսած ես [1], Հայկակ, և գիտես որ ամբողջ հայերէն գիրք տպագրելէն առաջ՝ քանի մը եւրոպէացի բանասիրաց գրոց մէջ ԺԶ դարուն կիսէն առաջ ալ երևցած են հայերէն այբուբենք կամ քանի մ'երկու բան, որ միայն նախընծայ անհարթ փորձ մը կրնան սեպուիլ տպագրութեան. Իսկ ամբողջ տպագրեալ հայերէն գիրք մը, թուի թէ Կուդգէմպէրկի գիւտէն հազիւ դար մը ետև եղած է, թէպէտ և դեռ անծանօթ է տպագրութեան տարին և տեղն և հրատարակողը:

Տեսած եմ գիրք մը, որուն համար թէ և չեմ կրնար ըսել բացարձակ առաջին տպագրութիւն, այլ ծանօթ տպագրութեանց նկատմամբ կրնայ ըսուիլ առաջին, կամ ամենէն հին ծանուցեալ տպագիրք, երեք դարէ աւելի հին. որոյ տպագրութեան տեղւոյն և անձին չյիշատակուիլն (գոնէ հիմայ գտուած օրինակաց մէջ) գուցէ խորհրդով և զգուշութեամբ եղած ըլլայ. որով հետև առաջնութեան և հնութեան, նաև հրատարակման անարժան գիրք մ'է, և ձախ ձեռքի

1 Բազմավէպ 1850 ամին, երես 230:

մը չորհնած ընծայ կընայ սեպուիլ. գիշերուան ծնունդ քան տունջեան. և ևթէ ներելի է մեր հեթանոս հարց կամ Պարսից լեզուովը խօսիլ, խաւարասէր Ահրմէն մ'է որ կ'աճապարէ'ի դուրս գալ նախ քան զանուշահոտն և լուսաւոր Որմիզդ, որպէս զի յափշտակէ մրտաց վրայ տիրապետութիւնը. սակայն լոյսն և բարին թէ և քիչ մը յետոյ գայ՝ կու յաղթէ չարին և խաւարին[1]:

Արդ մեզի ծանօթ և հասարակօրէն հռչակեալ առաջին հայերէն լուսաշնորհ և լուսածնունդ տպագրութիւնն՝ եղած է յամի 1565, ամբողջ երեքհարիւրամեան շրջան մ'առաջ, որով և չորրորդ դարագլուխ է այս տարիս[2], արժանի յիշատակաց և տօնելի (գոնէ) վասն տպագրաց ազգիս, ըստ սովորութեան եւրոպեայց, որք չեն զանց առնուր իրենց պատմական, կրօնական և ուսումնական երևելի յիշատակաց դարադարձը տօնախմբել:

Ելլենք ապէ 300 տարի առաջ, մտնենք միօք ԺԶ դարուն կէսը, քննենք զերեսս աշխարհի և զխորս հայրենեաց մերոց: — Ի՞նչ նորութիւն և

1 Այս գիրքս է Աղթարք՝ կիսէն աւելին, միւս մասն Բժշկարան. թէ զարդագլուխ թէ հասարակ գրերուն ձևն, թէ ձեռքով գրուած քանի մը բառերն՝ ցուցընեն հնութիւնը. զոր և աւելի հաստատէ անվարժ ձեռքի գրուած մ'ալ իմ օրինակիս մէջ. «Ի ԹՎԻՆ ՌԼԱ», որ է 1582. 13 տարի յառաջ քան զԱբգարեան տպագրութիւնն: Գիրքն 24 թերթ է ութածալ, 16 հարիւրորդաչափ երկայնութեամբ, և միայն թերթից թիւն ունի հայերէն այբբենով և ոչ իւրաքանչիւր երեսաց. վերջին էջին վրայ տպագրած է ըստ հին եւրոպական տպագրաց Ա, Բ, և այլն, մինչև ԻԴ, և կարմրագիծ լատինատառ նշանակ մը որ կ'երևի տպագրատանը, և կընայ կարծուիլ որ գիրքն տպուած ըլլայ ինչուան ԺԶ դարուն վերջերը:

2 1865:

սկիզբն նորութեանց յԵւրոպիա. ինչ յուզ-
մունք, այլայլութիւնք, յեղափոխութիւնք, վէճք,
քննութիւնք, ժողովք, կռիւք, միաբանութիւնք
և հերձուածք՝ վասն հաւատոց, նորաղանդ վար-
դապետութեանց, և բողոքարկու պահանջմանց:
Պատմագէտ, փիլիսոփայ և աստուածագէտ պէտք
է ըլլալ չափով մը, այս մեծ՝ և Եւրոպայի համար
հանրական կերպարանափոխութիւնը և ծովա-
ծաւալ ծածանումը նկատելու համար. — տեսա-
րան մը՝ որ թերևս նմանը չէ ունեցած կրթուած
և զարգացած ազգաց մէջ. որոյ վերջին պատկեր
կ'ըլլայ Եկեղեցւոյ տիեզերական վերջին սիւնհո-
դոսը (Տրիդենտեան):

Պահ մը դիտելով զայս, դառնանք յարևելս,
'ի մայրն արևելեայ աշխարհաց, 'ի բուն մեր հայ-
րենիս՝ 'ի Հայաստան..: Ի՞նչ խորութիւն խաւա-
րի և լռութեան. ի՜նչպէս աննշան եղեր է այն ընդ-
արձակ և բազմաբնակ աշխարհն, որ ի սկզբան
բոլոր երկրիս վրայ առաջին նշանն էր, և երկար
և կերպակերպ յեղափոխութեամբք դրեթէ բո-
լոր հին և միջին ժամանակաց մէջ պատմաքննու-
թեան մտադրութիւնը կրնար գրաւել, նաև իրեն
պատերազմաց և արեանց ասպարէզ բացուած
ատենն. երբ դեռ դիակնաց և աւերակաց մէջ ալ
գտուէին և փայլէին քիչ կամ շատ կենդանի նըշ-
խարք Հայութեան. շունչ մը հայ հոգւոյ, փայլ
մը հայ հանճարոյ, գործ մը հայ ձեռին:...Իսկ
հիմայ այս (ԺԶ) դարուս մէջ՝ յետ արիւնակոխ
աւերասփիւռ արշաւանաց Լէնկթիմուրի, և պա-
տերազմաց Շահռուհի, Ագ և Գարա-Գօյունլու-
տոհմից, յետ տիրապետութեան Շահ Իսմայէլի
'ի Պարսս, և Օսմանեանց զօրանալով յարևմտից
յարևելս աշխարհակալելու, — հիմայ՝ թէ և քիչ
մը հանդարտ էր Հայոց երկիրն 'ի վրդովմանց
կռուոյ և հակառակութեան, սակայն ազգին իւր-

նակայութիւնն գրեթէ խապառ ջնջած կամ ձըն-
շուած, գանդաղամած անշարժութեան մէջ էր։

Թերևս Հայութեան հիգագոյն դարն է ԺԵ-ԺԶ
դարուց միջոցն. ոչ եկեղեցական յիշատակելի
դէպք մը (յետ փոխադրութեան կամ բաժան-
ման կաթողիկոսական աթոռոյ 'ի Սիս և յէջմիա-
ծին), ոչ ազգային քաղաքական երևոյթ մը. և
ոչ այլ նշոյլք բանասիրութեան կամ գրականու-
թեան, որ թերևս քան զայլ նշանս՝ երկարատև
և յայտնագոյն ցոյց է կենդանութեան մեր ազգին։
Այո, մատենագրութեան մասամբ այլ, որչափ
որ ծանօթ է ինծի, մեր աղքատագոյն ժամանակն
է այս. յետ գեղեցիկ փորձոյ և ջանից մեր գրա-
սիրաց ԺԴ դարուն, (որ թերևս հարստագոյն է
քան զամենայն դարս գրականութեան մերոյ,
եթէ ոչ և ընտրելագոյն որպէս իրմէ առջինը՝ ԺԲ),
դեռ ԺԴ դարուն մէջ այլ գտուէին հետևողք նո-
ցա, որոց գրուածքն ցուցընեն հայկական խսկու-
թիւն մը. և դեռ ԺԵ դարն ալ մինչև 'ի կէսն ունի
քանի մը Գրիգոր և Առաքել, Թովմաս մը, Մկըր-
տիչ Նաղաշ մը, Ամիրտոլվաթ մը, որք քիչ շատ
ջանացած են առաջին դարուց հայ քերթողութե,
պատմութեան և բնագիտութեան մուզայից պար-
տէզները մշակել կիսահարթ գրչով մը։ Իսկ ա-
նոնցմէ ետև յիշեալ դարուս մէջ՝ և ոչ անոնց հա-
ւասարող մը կ'երևի, և ոչ հայերէն գրական լե-
զուի յստակութիւն, և ոչ անոր մշակութիւն
գրելով ու կարդալով. որոց դիւրութեան հնարք-
ներն այլ նուազեր էին յետ աւերմանց և աւար-
մանց վերոյիշեալ բռնաւորաց։

Գրեթէ նորանշան գործ մը կամ անձ մը պէտք
էր այս վնասը դարմանելու և մեծագոյն վնասէ
պահելու զՀայս. և եթէ գտուէր այսպիսի մէկն,
կարծեմ անտարակոյս և անդանդաղ՝ մեզի այլ
պէտք էր ճանչնալ զնա. մեծ և յաւերժայիշա-

տակ բարերար մ՚ազգային. մէկ մը յայն ընտրեալ անձանց, որոց անուններն արժան է որ Հայկական երախտեաց տաճարին մէջ առաջին տեղին վրայ գրուին:

Եղա՞ւ, երեւցա՞ւ արդեօք այսպիսի անձ մը. պարգեւեցա՞ւ Հայաստանի այսպիսի այցելու մը. այնպիսի ճարտարարուեստ և հանճարաշնորհ մը, 'ի միջոց ժամանակին՝ որ յետ վարժապետացն Սիւնեաց վանորէից և նախ քան զՄխիթար Սեբաստացին: — Այնքան թանձր է ժամանակին մթութիւնն կամ լռութիւնն, որ այս բանս այլ ընդհատ և ընդ աղօտ կ'երեւի. սակայն հիմայ մեզի այսչափս այլ բաւական է ճանչնալու որ յիրաւի եղած է Հայոց ցանկալի այցելութիւն մը, Տպագրութիւնն, և երեւցեր է սոր համար եռանդուն, հնարագէտ, անձնանուէր բարերար մը, ԱԲԳԱՐ ԴՊԻՐ:

Այս դիւտին կամ բարեացնախաշարժ սկզբնաւորութիւնն ի՞նչպէս եղած ըլլալն այլ մեզի դեռ յայտնի չէ. բայց խորհրդաւոր և ոչ աննշան կերպ մը կ'երեւի: Ի կէս ԺԶ դարու (յամի 1549) Ստեփաննոս Սալմաստեցի կաթողիկոս՝ կու գայ 'ի Հռոմ [1], (մին յառաջին կաթողիկոսաց Էջմիածնի՝ որ յետ Ս. Լուսաւորչին գայ այս կաթուղիկէ եկեղեցւոյ աթոռը). մեծ մտերմութիւն կու ցուցընէ և կու առնէ հոն, և զնոյն կու հաստատէ իր ընտրած աթոռակցին՝ Միքայէլի. իբրև ժառանգութիւն մը թողլով ասոր՝ յաջորդութեան հետ՝ զնոյն մտերմութիւն. զոր և սա կ'ուզէ արծարծել յետ տասն և աւելի տարիներու, երբ ժամանակին դիպուածներէն ստիպուած, Վաղարշապատու աթոռը թողեր, եկեր նստեր էր 'ի Փոքր Ասիա, 'ի հռչակաւորն Սեբաստիա. հոն,

1 Ռայնալտի, ԺԴ, 374:

ուր իբրև 300 տարի առաջ մեծանունն Պետրոս Գետադարձն նստաւ և հանգեաւ։

Քաղցր է ինձ այս քաղաքիս յիշատակն. որ հին առեն Բ Հայոց մայրաքաղաք ըլլալէն, և երբեմն ('ի ԺԱ դարու) Ոստանի և Վանայ տեղ Արծրունի Թագաւորաց աթոռ ըլլալէն աւելի մեծ, (թէ և ոչ ըստ արժանւոյն հռչակեալ՝) յիշատակներ և երախտիք ունի առ ազգս, կամ մասնաւոր նախախնամութեան ձիրքեր, զոր յարմար է հարևանցի յիշել այս առթովս։ Քրիստոնէութեան առաջին հալածանաց դարուց մէջ շատ սուրբ նահատակներ ընծայեց Սեբաստիա, որոց անշուշտ մէկ մասն այլ Հայազգի էին. շատ օտար տեղացի առաքինեք այլ՝ հոս (իբրև յիշխանանիստ քաղաք Հռոմայեցւոց) գտնուեցան և նահատակեցան։ — Ո՞վ կրնայ Սեբաստիոյ անուան հետ չըյիշել Քառասուն Մանկունսն, «որք »'ի Սեբաստիոյ ծովուն զծովածուփ կենցաղոյս »լուծին զվտանգ[1]»։ Երբ հալածանքն՝ դեռ ընդհանուր եկեղեցւոյ համար չդադրած՝ 'ի Հայս դադրեցաւ, Գր. Լուսաւորչի մը տիեզերական նահատակութեամբ և Տրդատայ մը համաշխարհական հաւատովը 'ի Քրիստոս, մեր առաջին հայրապետն 'ի Կեսարիոյ սուրբ օծութեամբ դառնալուն առեն, «մնայր ժամանակս ինչ 'ի «Սեբաստիա, հաւաքել զդասս կրօնաւորացն[2]»։ Կրնամք ըսել թէ նորընծայ քրիստոնէահաւատ Հայութեան առաջին դաստիարակաց մեծ մասն՝ 'ի Սեբաստիոյ ընծայեցան. և չեմ անիրաւիր ըսելու այլ թէ թերևս անկէ 1500 տարի ետև, յետին քաջանշան բարերար և նորոգիչ մը հոգևոր և մտաւոր հանճարոյ ազգիս՝ 'ի նոյն 'ի Սեբաստիոյ ծագեցաւ, Մխիթար Աբբայն։ Այս Սեբա-

1 Շարական։

2 Զենոբ։

ստերոյ երկու մեծաձիր լուսաւորիչ և լուսանորոգ հրեշտակութեանց մէջ, իրաւացի կու համարիմ դասել զհեղինակն հայ տպագրութեան՝ Աքգար. որ թէ և հայրենեօք մերձաւոր մեծ քաղքէ մ'էր, յԵւդոկիոյ (Թօքատ), այլ ասկէ ('ի Սեբաստիոյ) ելաւ 'ի հրեշտակութիւն, և իր յիշատակաց գործը կատարեց: Եթէ Եւդոկիացիք ուզեն վիճիլ այս պարծանաց համար՝ ես հաճութեամբ հաւանիմ այդպիսի վիճի մը:

**Աքգար դպիր** իր քաղաքին մէջ առաջուց այլ վկայուած էր խելօքն և ճարտարութեամբ, և անկէ այլ առաջ ազնուական ծննդեամբն. թէ և վաղուց վերցուած էր Հայոց պայազատական ցեղակարգութիւնն, բայց դեռ հիմակուընէ աւելի գտուէին և ճանչուէին հին պայազատաց շառաւեղքն: Աքգարու ծնունդն մեզմէ երեք և կէս դարու չափ կը յառաջէ. իսկ անկէ վեր մինչև 'ի վերջին թագաժառանգս Կիլիկեան իշխանազանց՝ հազիւ դար և կէս է. անշուշտ այն ատեն, այսինքն 'ի կէս ԺԶ դարու դեռ յայտնապէս տեսնուէին մեր յետին թագաւորական հարստութեան ցրուելոց և ցանեալ շառաւեղքն, ոչ միայն 'ի Կիլիկիա, այլ թերևս այլ աւելի յօտար հայաբնակ քաղաքներ. ատոնցմէ մէկն էր մեր Աքգարն այլ. թէպէտ և ո՛ր ճիւղէ առաջ եկած ըլլալն չէ յայտ: Իր ազնիւ և առհմիկ մարդ ըլլալն՝ արդէն կու վըկայէ Միքայէլ կաթողիկոս իր թղթովը. բայց անկէ աւելին կու գտնեմք իր որդւոյն վրայ եղած յիշատակօքն, որ և իրեն ուղեկից և գործակից էր. և անուամբն իսկ յայտնէր մեծատոհմութիւնը, Սուլթանշահ կոչուելով. զոր և Լատինացիք թուի թէ 'ի նոյն նշանակ կոչեցին Մարգանդոնիոյ (Մարկոս-Անտոնիոս): Գոնէ ատոր մայրն, Աքգարու կինն, պէտք էր թագաւորական շառաւիղէ ըլլալ. վասն զի Մաղաքիա Դպիր ժամանակագիր

կ՚ըսէ ասոր համար, « Իւր (որդւոյն) Թագազարմ » Անտոնինոս Սուլթանշա սարկաւագին » ։ Եւ յամին 1583 Հռոմայ մէջ գտնուող Հայկազունք՝ նոյն Սուլթանշային առաջնորդութեամբ, որ իրենց իշխան կամ վերակացու անուանեալ էր 'ի Պապէն, և Յովհ. Տէրզնցի տպագրող երիցուն ձեռնարկութեամբ՝ առ Դաւիթ պատրիարք Երուսաղէմի գրած Թղթերնուն մէջ՝ կ՚անուանեն զնա՝ « Մեր » Հայոց իշխանն արքաշառաւիղն 'ի Հռոմ (Հայկ) պա- » րոն Սուլտանշան » .. և դարձեալ, « արքաազնին » պարոն Սուլտանշ(ահ)ին » ։ — Քիչ տարի վերջը (1600) Տէր Բարթուղիմէոս վարդապետ մը որ հոն 'ի Հռոմ Հայոց եկեղեցւոյն հովուապետ դրուեր էր, զինքն կ՚անուանէ 'ի յիշատակարանի՝ Աբգարայ ազգէն, և մեր Լևոն Ե Թագաւորին մէկ գտնուած պարգևագրին վաւերականութիւնը վըկայելով կու գրէ ներքևը. « Ես Տէր Բարդուղի- » մէոս Աբգարայի, այս Թագաւորին ծերմանէ, հաստա- » տեմ զոր գրեալ է » ։ — Աւելի որոշ կու գրէ ուրիշ ժամանակագիր մը անցեալ դարուն, նոր անուն մ՚այլ յայտնելով Աբգարու. « Պարոն Սէ- » ֆեր Աբգարենց, 'ի զարմէ Թագաւորացն Հայոց, » եկեալ 'ի Հռոմ դեսպան Հայաստանեայց[1] », և այլն ։ Արդ ասոնք կարծեմ բաւական ցուցընեն թէ Կիւլիկիոյ Ռուբինեան Թագաւորաց ցեղէն իջած էր Աբգարեան տոհմը, ուսկից էր մեր Դպիրն, և Սուլթանշահ և Տէր Բարդուղիմէոսն. իսկ 'ի Հայկայ անուանել զպայազատն՝ գուցէ ամէն հայ Թագաւոր Հայկայ յաջորդ սեպուելուն է ։ — Եթէ ցեղին ազնուականութիւնն աւելորդ է, կամ մինաւոր փառք մը չաւելցըներ բարքով աննշան մարդու մը, արդէն գործովը նշանաւոր եղողին՝ կըրնայ նոր և աւելի փայլք տալ. ուրեմն

1 Ստեփանոս Ռօշքեան 'ի Լեհս ։

թէ տառը համար հարկ էր մեզի զայս գիտնալ, թէ մեր ազգային պատմութեանց տեղեկութեան համար։ Գանք հիմայ Աբգարու ուրիշ առաւելութեանց վրայ։

Ինքն զինքն Դպիր կ'անուանէ, որ թէ եկեղեցական կարգի փոքր աստիճաննէր ունենալն կրնայ յայտնել, և թէ գրող և գրչութեան աշակերտին. բայց կ'երևի թէ աւելի ճարտարութեան արուեստից եռանդ էր՝ քան պարզ գրականութեան. սակայն յամենայնի ճարտար ճարպիկ մարդ մը ճանաչուած։ Աբգարու յաջողութեանց ինքնին վըկայ է Միքայէլ կաթուղիկոս առ Պիոս Դ. գրած թղթերուն, որոց մէկն միայն լատիներէն հասած է մեր ձեռքը։ Յետ հաստատելու իր նուիրակին պատուաւոր և պատուարժան անձն ըլլալը, կ'իմացընէ նաև անոր կերպ կերպ ճարտարութիւններն այլ. և նախ հնարագիտութիւնն 'ի գրել և կարդալ ծածուկ. և խորհրդաբար գրուածներ, ինչպէս էր ինքնին կաթողիկոսին առջի գրածն այլ և ուրիշ գրելիքն այլ, զոր բաց յԱբգարու չէր կրնար ուրիշ մը կարդալ։ Դարձեալ կ'իմացընէ՝ որ յերկուց ձեռաց այլ հաւասար յաջող էր Աբգար, ինչ որ աջովը կրնար՝ զնոյն նաև ձախովն կարող էր ընելու։ Ուրիշ աւելի բարձրագոյն յաջողութեան և ճարտարութեան մ'այլ վկայէ կաթուղիկոսն, որ ինծմէ այլ բարձր կամ անհասականալի մնայ առ ժամս[1]։ Այս թուղթս գրած է Միքայէլ կաթուղիկոս յամին 1563, (ապրիլ 1) յիշեցընելու և ստուգելու համար որ անկէ առաջ նախընթաց տարին (1562 մայիսի 20) երկու երկար գիր գրեր և յանձներ էր առ Աբգար, գլուխ դնելով զնա իր պատգամաւորաց առ

1 Այսպէս կ'ըսէ 'ի լատիներէն թղթին. Scit superiora elementa prisca, nisi tantum ipse, qui ea etiam docebit.

Ս. Պապն. մէկ թուղթն ընծայական կամ յանձն-
արարականներնոյն Աբգարու համար առ Պապն,
որոյ ձեռքով ընծայ կու խաւրէր առ քահանայա-
պետն՝ օրհնեալ մեռոն անուշահոտ, թանկ խաչ
մը և նշխարք սրբոց. իսկ միւս թուղթն որ բուն
այս դեսպանութեան նպատակն պիտի յայտնէր,
դեռ յերևան չէ ելած: Բայց անտարակոյս է որ
մասամբ հաւատոյ դաւանութեան և միաբանու-
թեան վրայօք էր. մանաւանդ որ այն տարիները
Տրիտենդեան տիեզերական ժողովը կ'ըլլար, ան-
հաւանական չէ որ Հայաստան ալ հեռուստ հա-
մաձայնած ըլլայ ընդհանրական եկեղեցւոյ հետ՝
այս անգամ ալ: Թղթոյն մէկ նպատակն ալ՝ (որ
առ այժմ հոս մեզի աւելի հետաքննելի է) թուի
թէ այն գործոյն համար էր, որոյ ձեռք զարկաւ
Աբգար, և որոյ համար այսօր ալ մեզմէ կու
հռչակուի:

Արդ այս թղթերով և ընծաներով, հետն ա-
ռած իր Սուլթանշահ որդին, Աղեքսանդր անուամբ
քահանայ մը, և թերևս ուրիշ անձեր ալ, ելաւ
Աբգար 'ի Սեբաստիոյ երթալ 'ի Հռոմ. ուր շատ
ուշ հասաւ, յամին 1564. որ թուի թէ ոչ միայն
ձմերու արգելանաց համար ըլլայ, որովհետև
կաթուղիկոսն լուր և պատասխան չառնելով վե-
րոյիշեալ գիրն ալ գրեր և հասուցեր էր առ Պապն
(1563). այլ գուցէ Աբգար լսեր էր Սրբազանին
մեծ և կարևոր զբաղանքը, որ ամենայն ջանքով
և շուտով յառաջ տանելով կ'ուզէր կնքել Տրի-
դենտեան յերկարեալ ժողովը, ինչպէս որ յաջո-
ղեցաւ ալ ընելու, և մեծ գոհութեամբ հանգչե-
լով յաթոռն սուրբ՝ կ'ըսէր. Արդ արձակես Տէր
զծառայս քո: Բայց գործ մ'ալ կայ եղեր իրեն
տեսնելու՝ մեր հայրենեաց նկատմամբ. և այս
էր գործն Աբգարու:

Հասաւ սա 'ի Հռովմ յամին 1564, և մատոյց

առ Պիոս Դ. բերած Թղթերն և ընծայքը. և իմացաւ որ կաթողիկոսն նոր Թուղթ այլ գրեր է, յորում դարձեալ կ'աղաչէ զՍ. Պապն՝ որ մեծարանօք ընդունի զԱբգար և դեսպանօրէն պատուէ զնա. ցուցընել տալով անոր՝ ինչ որ սրբութեանց և արուեստից հրաշալի տեսնելիք կան 'ի Հռովմ, և յետոյ պապական Թղթով և նուիրակով յետ դարձընէ: Անշուշտ այս խնդիրքս գոհարար կերպով կատարեցան: Պիոս հաճութ̄բ ընդունելով Միքայելի առաջին Թուղթը, և իբրև յաւելուած մը սպելով իր եկեղեցւոյ պայծառութեան աշխատանաց և փափագին, [illegible] երկար և պարզ դաւանութիւն մ'ուղեց [illegible]րայ՝ Հայոց եկեղեցւոյն վարդապետութ[illegible]րայօք: Աբգար կատարեց Պապին խնդիրը՝ իր ճանչցածը բացատրելով չափաւորապէս: Այս բանիս համար անկէ ետև եղածը Թողունք պատմելու մեր եկեղեցական պատմութեան, որ մութ մնացած է այս տեղ. բայց այսչափս հարկ է ըսել, որ տարւոյ մը չափ Աբգարու մնալուն [illegible] 'ի Հռովմ՝ երկու կողմանէ այլ քննութիւն և հա[illegible]ութիւն եղած պիտի ըլլայ. որովհետև Աբգար ընտանութեամբ խնդիրքներ ըրած և առած է 'ի Պապէն, ինչպէս ինքնին նշան կու տայ իր [illegible] տպած գրոց մէջ. և զի իր Գրանիտ որդին, ինչպէս ինքն կ'անուանէ, հոն Թողուց որ սովրի լաւ իտալ և լատին լեզու, և որ 20 տարի վերջն այլ յիշուի հոն 'ի Հռոմ. ուր և արդէն հոն գտուած Հայոց՝ վերակացու և իշխան գրուեցաւ 'ի յաջորդաց Պիոսի, ընդունելով ազգին համար սեփական հիւրատուն մը, և եկեղեցի մը՝ Ս. Մարիամ Եգիպտացւոյ, փոխանակ հին տան և եկեղեցւոյն (Ս. Աստուածածին և Ս. Լաւրենտիոսի) որ մեզմէ վեց դար այլ յառաջ յիշուին 'ի Հռովմ՝ մօտ 'ի մեծն եկեղեցւոյ՝ 'ի Ս. Պետրոս:

Հոգևորական գործը լմընցընելով, կամ անոր հետ մէկտեղ՝ սկսաւ Աբգար իր մեծահաշակ ուսումնականգործը, այսինքն է հայերէն տպագրութիւնը: Այս լուսաւոր ծննդեան երկունքն կամ խորհրդածութիւնն՝ արդեօք Աբգար իր հայրենի երկրէն և կաթողիկոսէն հասարակութեամբ հետը բերեր էր, թէ 'ի Հռոմ գալով միտքն արծարծեցաւ, մեզի յայտնի լաւած չէ. բայց ինչպես առաջ այլ ըսի՝ կ'երևի թէ արդէն այս փափագովս եկած էր Աբգար 'ի Հռոմ, և թերևս կաթողիկոսէն մթին խօսքերն՝ առոր այլ ակնարկեն: Իսկ այս ամենայայտնի է որ ծանօթ հայ տպագրութեան երկունքն եղաւ 'ի Հռոմ, ծնունդն 'ի Վենետիկ: Հայն իր լուսաւոր կենաց նախնական և գլխաւոր օժանդակները՝ միշտ մեծ և հրաշալի կերպով մ'ընդունած կարծէ և պարծի. այսպէս՝ սուրբ հաւատքը, տումարը և գիրը. այսպէս այլ իր տըպագրութեան նախախնամական և սքանչան կերպարանք մը կ'առնու Աբգարու ձեռքով կամ ձարտարութեամբ. որ յիրաւի արժանի է մտադրութեան անոնց՝ որ պատմութեան, և մանաւանդ մասնաւոր պատմութեան մէջ՝ աստուածային աջը կու տեսնեն նախացուցակ:

Կարգամ մեր առաջին ծանօթ տպագրեալ գրոց (Սաղմոսին) առաջին յիշատակը. «Ի թվականիս Հայոց ՌԺԴ (1565) ամին ես Թոխաթցի Աբգար
» Դպիրս, խնդրեցի պապս նոր Գիրս 'ի Հռոմ 'ի Պետ-
» րոս (Պիոս) փափուն. և երեք հրամանս չինելու.
» բարեխաւսութեամբ. այս կարողենաւլացս և այս
» եղեռնակալագիս. և իմ զրայմս Սուլտանշա որ-
» դւոյս »: Յիշած կարգախօսներին են երեք, և եպիսկոպոս մը, որոց կերպարանքն և անուանն ձևացուցեր է փորագրեալ փոքր պատկերի մը մէջ գրքին մէկ կէս երեսին վրայ, որոյ ասոնք այլ տըպագրած է յիշատակարանը. պատկերին մէջ աս-

ղը բազմեցընելով զՊիոս Դ. եռակարգեան խուրո-վը. Հախ ձեռքը պետրոսեան բանալիքն, աջովն այլ օրհնելով նորընծայ հայ գրերը՝ զոր Աբգար 'ի ծունկ իջած ներկայացընէ Պապին. և որդին Սուլտանշա յոտք կեցած՝ իբրև հօրը թարգման՝ խնդրէ օրհնութիւն և հրաման մտցընելու և ծաւալելու 'ի Հայս՝ այս մատաքացութեան կարևոր հնարքը։ Այն կէս թաթաչափ փոքրիկ, խոշորագիծ պատկերին մէջ այնչափ բան և իմաստ բովանդակելն՝ յիրաւի ցուցընէ Աբգարու գովեալ հնարագիտութիւնը և մեծցընող ու փառաւորող ձեռքն ու միտքն.— ինչպէս չըսենք թէ նաև սիրտն ու հոգին։

Պատկերին ցուցած եօթն անձանց մէջ՝ յետ Աբգարու և որդւոյն՝ մեզի և հասարակաց համար նշանաւոր անձն՝ 'ի հարկէ հօն բազմեալն և գլխաւորն եկեղեցւոյ՝ Պիոսն է, որ իր կենաց և շատոնց բաղձալի ու մեծ ու դժար գործը դեռ նոր վճարած (Տրիդ. ժողովը), և իր անմահութեան յիշատակին նախափայլ ճառագայթներովը՝ մնացած քանի մ'ամսական կենացնշոյլը ծածկելու միջոցին մէջ՝ այս մեր հայերէն տպագրութեան սկզբնաւորութիւնը օրհնելով կամ ողջազանելով՝ յիրաւի կ'առնու և կու տայ վսեմական կերպ և իմաստ մը։ — Ոչ պակաս մեծ և աւելի սիրելի է հասարակաց՝ մէկ ուրիշ անձ մ'այլ՝ կարտինալական ձևովն անմիջապէս Պապին քովն կեցած. որ և նոյն իսկ սրբազանին քեռորդին էր, դեռ ան ատեն 26 տարեկան, բայց արդէն արքեպիսկոպոս Միլանու, և ծիրանաւոր պալատան Հռոմայ՝, ազնուականն ծննդեամբ և ազնուագոյնն մահուամբ Ս. Կարոլոս Բորրոմէոս. որ դեռ սըրբութեանը պէս՝ բազմակերպ մարդասէր բարերարութեամբքն՝ ծանօթ և հռչակեալ է ընդ ամենայն Իտալիա և բոլոր բարեպաշտ Եւրոպէ։

Աւյսպիսի անձի մը՝ մեր հայերէն տպագրութեան իբրև պաշտպան կամ կնքահայր գտուիլն, կու յիշեցընէ՝ ինչպէս ինծի՝ անշուշտ քեզ այլ, Հայկակ, Խօսնակին եկեղեցւոյ կամ անոր նման անձի մը յիշատակը՝ մեր հայերէն գրոց կամ Թարգմանութեան գիւտին նկատմամբ։ — Ի մեծ գրատան Միլանոյ կայ օրինակ մը մեր տպագրոց անդրանիկին՝ Աբգարու սաղմոսին, որ և մի միայն հոն գտուի (ըստ իմ գիտութեանս)․ և այն օրինակն է՝ զոր անշուշտ մեր Աբգարն ընծայեր է առ սուրբ Ծիրանաւորն, և նա այլ թողեր է գրատանը․ — Եւ ապատիկ ցանկալի յիշատակ և գրըքոյկ, որ կրնայ կենդանի արձան մը սեպուիլ այս ըսածներուս Աբգարեան նորընծայ տպագրութե վրայօք, և պաշտելի նշխար մը այն գործոյն, զոր ոչ միայն Աբգար՝ այլ և նախախնամութիւնն, (հոս պէտք է զայս խոստովանիլ), արդարև կերպով մը օրհնաղանել ուզեր են։

Աբգար այսչափով գոհ չըլլալով՝ կ'ուզէ աւելի փառաւորութիւն մ'այլ ընծայել իր հայկական տպագրութեան ծագման․ ոչ միայն եկեղեցական այլ և քաղաքական հովանաւորութիւն մը կու ձգէ վրան․ — Ժամանակին նշանաւոր և յարևելս ծանօթագոյն եղած տէրութեան մը պաշտպանութեան տակ, Վենետկոյ հասարակապետութեան։ Վերոյիշեալ պատկերին գիւաց՝ նոյն չափով կու ներկայացընէ ուրիշ մը․ հանդիսական դահլիճ մը, Վենետկոյ պաշտպան և նշան Ս․ Մարկոսեան ոսկեթեւ առիւծն՝ վերակարգեալ 'ի վերայ արքունի գահուն, ուր բազմի այն ատենուան դուքսն Հերոնիմոս՝ իր հանդիսի հագուստովը․ երկու կողմն իրեք իրեք ատենակալ նստին իրենց լայն լօդիկներով պատած, որպէս թէ կարևոր խնդիր մ'ընծանուախառումը մ'արձըկելու և իրենց ատածագլուխ գրօշները թօգընելու Յոնիականի կամ

Եգիպտական կղզւոյ մը վրայ . . . բայց մեր ճարտարագիտուն Աբգար՝ անոնց մտադրութիւնը կու դարձընէ իր նորաձոյլ հայկական տառից վրայ : — Կու ներկայանայ գահուն աստիճանաց վրայ , ինքն այլ իր լայն վերարկուաւն , զնոյն խնդիրն ընելով ինչ որ ըրաւ Պապին : Ծերունի և մօրուանի ատենակալաց և դքսին ծովային աչքերն՝ սուր սուր կու սևեռին Աբգարէն աւելի ( որոյ ազգն և ձևն շատոնց իրենց ծանօթ են ) , անոր ցուցած և անծանօթ գծած ձևերուն վրայ , և թերևս կարծեն թէ անոնք նոր մոգական բանալիք մ'այլ ըլլան իրենց՝ արևելքի ճամբաներն աւելի բանալու : Այս պատկերին ներքև կու գրէ Աբգար . « Եւ ե-
» կեալ ի գեղեցիկ նաւայհանգիստ մայրաքա-
» ղաքն , որ կոչի Վանատիկ , 'ի թագաւորութեանն
» Երբլեմոն Թուձին : Եւ չինեցաք զայս նոր գիրս ,
» և զաս փոքր Մեկնիչս սաղմոսացս » : Հոս այլ տարւոյն թուականն նշանակելով դքսին պատուանդանին վրայ , այսպէս M. D. L. X. V. որ է 1565 : — Աստ յայտնի կ'ըլնէ Աբգար , որ 'ի Հռոմ երկնեալ հայկական տառերը՝ ձուլեց ծնաւ 'ի Վենետիկ . և մէկէն ձեռք զարկաւ անոնց նախընծայ զուգաւորութեամբ՝ բազմացընելու այն գիրքը , որ և կ'ըսուի թէ նախ քան զայլ սուրբ Գիրս հայերէն թարգմանուած է , Սաղմոսը . զոր թերևս վերնագրացը համար՝ Մեկնիչ սաղմոսաց կ'անուանէ :

Յետ այս անդրանիկ տպագրութեան ուրիշ գրոց ծնունդք այլ եղա՞ն 'ի Վենետիկ . — չեմ գիտեր . հաւանական է որ Աբգար ուրախութեամբ լցուած իր փորձին և յաջողութեանը վրայ , իբր յաղթանակաւ և աւարաւ նաւեց փութացաւ 'ի մեծ քաղաքն ( Կ. Պոլիս ) , որ այն ատենէն մինչև հիմայ ազգերնուս մեծագոյն բարգաւաճանաց ժողովարանն և կեդրոնն եղած է . ուր և բոլոր Օս-

մանեան տէրութեան մէջ ազգը ներկայացընող կու ճանաչուէր՝ հիմկու պէս՝ Պատրիարքն Հայոց: Ասոր այլ ներկայացուց Աբգար, յառաջ քան թէ կաթուղիկոսին, իր գիւտը և անոր երախայ-րիքը. և շուտով տպագրատուն մը հաստատելով, և անշուշտ առաջին տպագրատուն Կոստանդնուպո-լսոյ և Օսմանեան տիեզերական մայրաքաղաքին մէջ՝ տպագրեց յամի 1567, գրականութեան ա-ռաջին հարկաւոր գիրքը, Քերականութիւն. որոյ համար կ'ըսէ մեր յետին դարուց ժամանակա-գիրն (Մաղաքիա) այլ մեծաքանութեամբ և այ-լաբանութեամբ. «Ի հայրապետութեանն Հայոց » տէր Միքայէլի ԻԱ ամի կաթուղիկոսութեանն, » 'ի մայրաքաղաքն Կոստանդնուպօլիս, յերկրորդ » ամի Թագաւորութեանն Օսմանցւոց սուլթան » Սէլիմի, և 'ի չորրորդ ամի պատրիարգութեան » տէր Յակոբ րաբունապետի Կոստանդնուպօլ-» սոյ, առ ոտս Յովհաննէս եպիսկոպոսին, ընդ հո-» վանեաւ սուրբ Նիկողայոս եկեղեցւոյն Հայոց, » եղև սփածփայ, այսինքն պասմայ գիր. և տպեցաւ » Փոքր քերականութիւն տղայոց, ձեռամբ անարժան » կնքագիր դպրի և մերս Յոթորին »: Հոս ընիկ անունը լսելով Նոտագիր դպիր կ'անուանէ զԱբգար, գուցէ այսպէս կոչելով մեր հիմայ փորագիր ըսա-ծը. իսկ Յոթոր անուամբ, որ Մովսէս մարգա-րէին աներոջ անունն է, կ'ուզէ նշանակել, թէ անոր պէս այլ Աբգար ճամբայ ցըցուց իր ազգին գլխաւորին՝ զազգը դիւրաւ կառավարելու կամ փառելու:— Բայց հետևեալ տարին՝ աւելի պարզ և յայտնի կու խօսի տարեգիրն. «ՌԺԷ (1568-9) » 'ի Կոստանդնուպօլիս նոր սատամբայ գիր սահ-» մանեցին, 'ի հայրապետութեան տեառն Մի-» քայէլին Էջմիածնի, և 'ի պատրիարգութեան » Կոստանդնուպօլսոյ տէր Յակոբին, ընդ հովա-» նեաւ սուրբ Նիկողայոս եկեղեցւոյն. ձեռամբ

» Խորվիրապցի Առաքէլ Աբեղային, արհեստաւոր-
» ծութեամբ Աբգար դպրին, և իւր Անտոնինոս
» Սուլթանշա սարկաւագին, որոյ գործքն ապրեալ
» Տօնացոյցս յառաջ բերին »: Այս տօնացոյցս ես չեմ տեսեր, բայց ձեռքս հասեր են անոր ընկերակից և ժամանակակից ուրիշ եկեղեցական գըրքեր, մասամբք, այսինքն Ժամագիրք, Պատարագամատոյց, Մաշտոց. որոց սկիզբն և վերջն պակաս, բայց գիշերային ժամու վերնագրէն յառաջ երեսի մը սկիզբը յայտնապէս կայ. (տպա) «գրե-
» ցաւ Աղաւթ մատուցս թվին. ՌԺԸ ապրիլ. ԻԷ».
որ է 1569ին ապրիլը:

Սաղմոս, Տօնացոյց, Ժամագիրք, Պատարագամատոյց, Մաշտոց, կու պահանջէն զԱւետարանն ալ, որոյ անդրանիկ աբգարեան տպագրութիւն դեռ յայտնուած կամ յիշուած չէ. բայց գրեթէ անտարակոյս կ'երեւի, լեցընելու եկեղեցական գրոց առաջին դասը: Քերականութիւնն ալ հիմն և սկիզբն կ'ըլլայ մեր նախնեաց խրատական և գիտնական գրոց, միանգամայն և դըպրոցական գրոց. որոց կարգը կամ ծնունդը փնտըռել, թէ դժար և թէ աւելորդ կու սեպեմ հոս: Տառական ըլլայ քեզ, Հայկակ, ճանչնալը զԱբգար՝ ինչպէս հեղինակ հայերէն տպագրութեան, նոյնպէս ալ սկզբնաւոր հրատարակման թէ հոգևոր թէ մտաւոր գրոց մերոց: Այսչափս ալ՝ որ թերեւս Աբգարու վաստակոց մէկ փոքր մասն է, շատ ըլլայ մեզի իր մեծ մտածութիւնը, աշխատանքը, ջանքը, փորձը և յաջողութիւնը յաղթող և փառաւոր ցուցընելու: Եւ եթէ մեր նախ յիշեալ մթին ժամանակաց լռութիւնն կու ծածկէ մեզմէ իր վաստակոց ուրիշ մեծ կամ փոքր մասերն ալ, կամ իր ծովայածուկ և նոր կղզի գտնող նաւորդի մը պէս յաղթողական դարձն յետ բազմամեայ պանդխտութեանն՝ առ կաթուղիկոսն Մի-

քայէլ և 'ի հայրենիս իւր, կամ իր վերջին կենաց դիպուածքը, (որոյ առջինէն՝ կամ բոլորէն այլ հազիւ վեց կամ եօթն տարւոյ յիշատակ միայն աւանդեր է, (գոնէ իմ հիմայ գտածս).— այսչափս, կ'ըսեմ, առ այժմ բաւական սեպեմք ճանաչելու զԱբգար Դպիրն՝ մեր ազգային բարերարաց և մեծագործաց և մեծ շնորհակալեաց արժանաւորաց՝ մէկ մը։

Թողունք հիմայ մեր բազմացեալ տպագլողաց և տպագրապետաց մտաց և սրտին զգացման՝ հաշակելու զյիշատակ իրենց առաջնորդին, 'ի Չորրորդ դարադարձի տպագրութեան Հայոց. մեր կողմէն փափագելով որ այսպիսի ջանքով, հանդիսաւորութեամբ և սրբազնութեամբ մը սկսեալ կամ շնորհեալ արուեստն՝ առ ազգս մեր, հիմայ յաճախութեամբ գրոց և տառից և մամլոց՝ չանարգուի խորթ ծննդեամբք. այսինքն հրատարակութեամբ այնպիսի գրուածոց՝ որ կրնան քծքծել և փճացընել աշխարհքիս հնագոյն ազգի մը պատկառելի նահապետական պատուոյ քօղը, որ և ազգիս պանծալի և ազնուագոյն մնացեալ շնորհաց մէկն է։

# ՑԱՆԿ

# ՅՈՒՇԻԿՔ

## ՀԱՅՐԵՆԵԱՑ ՀԱՅՈՑ

Ի Հ. ՂԵՒՈՆԴԷ Մ. ԱԼԻՇԱՆ

Վ. ՄԽԻԹԱՐԵԱՆ

ՀԱՏՈՐ Բ.



Ի Ս. ՂԱԶԱՐ ՎԵՆԵՏԻԿՈՅ

1869

# ՅՈՒՇԻԿՔ

## ՀԱՅՐԵՆԵԱՑ ՀԱՅՈՑ


Ի Հ. ՂԵՒՈՆԴԷ Մ. ԱԼԻՇԱՆ

Վ. ՄԽԻԹԱՐԵԱՆ


ՀԱՏՈՐ Բ.




Ի Ս. ՂԱԶԱՐ ՎԵՆԵՏԻԿՈՅ

1870

# ՅՈՒՇԻԿՔ

## ՀԱՅՐԵՆԵԱՑ ՀԱՅՈՑ

---

## ԺԸ

## ԽՕՍՆԱԿՆ ԵԿԵՂԵՑՒՈՅ
## ՅԱՆԱՊԱՏՍ ՀԱՅՈՑ

27 *Յունուարի*

### Ա

*Պայծառ հոգի, զօրաւոր միտք, եռանդուն սիրտ, անվեհեր կամք, քաղցրաբան լեզու. — այսպիսի էր Խօսնակն Եկեղեցւոյ, Խօսնակն գերագոյն։ Իր ամենէն սրտանց ըսածն, իր առաջին և վերջին մրմունջն, իր երգոց երգն էր, «Փառք քեզ, Աստուած. յաղագս ամենայնի փառք քեզ»։ — Ասորուոց դաշտաց մէջ բացուեցաւ. Յունաց կայսերական մայրաքաղաքին մէջ, 'ի վերայ երկթերթի շըրթանց Վոսփորոնի՝ ընդարձակեցաւ. 'ի հովիտս և յանապատս Հայոց ամփոփեցաւ, բիւրաբարբառն այն ՈՍԿԻ-ԲԵՐԱՆ։ Եւ յետ այնքան անթիւ անգամ կրկնելու զնոյն ձայն, զնոյն երգ, անգամ մ'այլ հնչեց սրտառուչ, և լռեց։...*

Լռեա՛ց այն «հռչակաւոր բարբառն՝ որ ել ընդ
» ամենայն աշխարհս:... Քաղցրաձայն նուագն ե-
» կեղեցւոյ՝ որ յորդորեաց զմանկունս նոր Սիո-
» նի յօրհնութիւն աստուածութեան. գործա-
» րան քնարն Հոգւոյն սրբոյ, որ 'ի սաղմոսելն
» իւրում հալածեաց զլեգէոնն դիւաց: Տանա-
» զի միաւորեալք զգայարանք շնչոյ և մարմնոյ,
» որ միացեալ միաւորեցաւ սիրով 'ի յերգս երկ-
» նաւոր Թագաւորին: Անթուլանալի լարապըն-
» դեալն միաձայնութեամբ՝ որ հարսնացոյց զե-
» կեղեցի 'ի միաւորութիւն սուրբ փեսային:...
» Գործասէր և քաղցրագործ մեղու, որ 'ի
» խորըսխէ աշխատութեան իւրոյ՝ քաղցրացոյց
» զեկեղեցի սուրբ:... Գերագոյնն և գերահրաշ
» միտքն, որ զանհասանելի իմաստութիւնս հին
» և նոր կտակարանաց՝ յինքն ամբարեաց:...
» Նմանակիցն և անուանակիցն պատուականու-
» թեանն ոսկւոյ, որ զամենեսեան հարստացոյց
» 'ի փարթամութիւնս անապական գանձուցն:...
» Մեծն այն և ոսկեզարդ լեզու... (որ) ձգեաց
» տարածեաց զբան վարդապետութեան իւրոյ
» ընդ ամենայն երկիր՝ իբրև զմանանեխ՝ զառա-
» կեալն 'ի Տեառնէ, և եղև հանգիստ և հովանի
» ամենայն իմաստնոց, վերացելոց թռուցելոցն
» յերկրէ: Մի բարբառ շնորհաց Հոգւոյն սրբոյ՝
» վարդապետութեան լեզուի նորա.» և այլն:

Այսպէս 'ի գովեստ տիեզերալուր Խօսնակին
նուագէր իր թեւոց տակ մեծցած և յետոյ իր բե-
մին վրայ թառած՝ սանականն Պրոկլոս: Իբրև
ձայն Աստուծոյ՝ ձայնն ժողովրդեան՝ մեծի և փո-
քու, հեռաւորի և մերձաւորի՝ նաև անոր կեն-
դանութեան ատեն սեփականեց իրեն զկոչումն
Ոսկեբերան. արժանաւո՛ր պատիւ. որ և 15 դա-
րերէ կրկնուելով, ոչ թուլցաւ, ոչ տկարացաւ.
այլ և ինչպէս քան զնախորդս իւր գերազանց սե-

պուէր նա՝ այսպէս և ՚ի յետնոց անհաւասարելի ծնալով՝ այլ աւելի հաստատեցաւ, նուիրեցաւ, որբաղնացաւ։

Ո՛հ. երբ. Ճշմարտութեան դիմաց զուր Ճարտասանք կանգնին դէմադէմ, ինչ են առոր քով Կիկերոնն Հռոմաեան և Թոթով Թութակն Դիմոսթենէս, գոնէ իրենց մեզի համար անտարբեր խնդիրներովը։ — Ճշմարիտ իմաստասէր մը, (որ միայն քրիստոնեայն կրնայ ըլլալ) չէ կրնար անոնց քով գտնել այն ստոյգ մտաց և սրտի Ճարակը, զոր առատ և անսպառ բղխէ Բերանն ոսկի. ոչ միայն Ճարտասանից վեհագոյն Ճանչցուած, այլ և աշխարհաքարոզ գերագոյն քերդողին հետ նմանակցելով մը համարուած Հոմէր բէմական[1]. զոր և ես, Հայկակ, սիրեցի կոչել քեզ՝ Խօսնակ Եկեղեցւոյ, ըստ ամենայն նշանակութեան բառիս։ Բայց ոչ ես, և ոչ քաջ և արդար քննաբանք այսպէս ըսելով ընդ հասարակաց, կ՚ուզեմք նուաստացընել զարժէս և զառաւելութիւնս Եկեղեցւոյ ուրիշ սրբազան և գերագոյն պերճախօսից և հանճարեղ բեմականաց, Գրիգորեանց և Բարսեղեանց, Ամբրոսեանց և Հերոնիմեանց. որք նրբութեամբ և խորութեամբ իմաստից, ծաղկեալ պերճախօսութեամբ, գրեթէ և բանաստեղծական նկարագրութեամբք, յաղթական տրամաբանութեամբ և բարձր աստուածատեսութեամբ, ոչ ինչ նուազ հիանալի և ախորժելի են, և բազում մասամբք առաւելեալ իսկ քան զմեր Խօսնակս, նա և շատ տեղ

1 Միթէ պակա՞ս բնական, փափուկ և ազդու է քան զհոմերական խօսակցութիւն Հեկաբեայ ընդ Հեկտորի, Ոսկիբերանին գրածն իր մօրը բերնէն, որ յորդորէր զինքը՝ չթողուլ չերթալ յանապատս ճգնաւորաց՝ քանի որ ինքն ողջ էր և կարօտ որդւոյն խնամոց և սիրոյն։

անձամանք։ Ի վերայ այսր ամենայնի՝ դարձեալ հասարակաց առջև՝ մերս միայն կայ մնայ Ոսկեբերան. քան զամենն աւելի պատուեալ և սիրելի, վկայեալ 'ի հայրենակցացն, յօտարաց և 'ի մերոց նախնեաց՝ « Աստուածաշարժ հայր, և ուսուցիչ
» հանուրց[1] »։ — « Աստուածակարգ լեզու, ող-
» բիւր եկեղեցւոյ և արեգակն բանին տիեզերաց
» վարդապետ Յովհաննէս »։ « Անապականն բանին
» քարոզ Բերան-ոսկի. յորմէ աղբիւր կենաց
» հոսեալ արբուցանելով քաղաքական բղխմամբ
» զընդհանուր տիեզերս[2] »։ Հազիւ քանի մը տարի յետ անոր մահուանն, յաջորդն և նախանձորդ Ատտիկոս հայրապետ՝ գրեր առ մերս Սահակ Պարթև. « Աղբիւրն եկեղեցւոյ հայր մեր Ս.
» Յովհաննէս, որ ոչ միայն տիեզերական մայրա-
» քաղաքիս (Կ.Պօլսի), այլ սովաւ և ամենայն
» քրիստոնեայք և ընդ հանուր աշխարհ 'ի նմա-
» նէ վարդապետեալ ուսանի. ուստի և Ոսկեբե-
» րան կոչեցին զնա[3] »։ — Անհատնում կ'ըլլար եթէ ուզէի ամեն այսպիսի մեծագովութիւնները յիշել։

## Բ

Արդ ի՞նչ է կամ ուսկի՞ց մեր Խօսնակին գերազանցութիւնն. ուսկի՞ց անոր ոսկի լեզուին թափուածն. ի՞նչ է անոր կախարդիչ կամ աշխարհակալ ճարտարխօսութիւնն. ինչէ՞ն այն իրեն ընծայեալ և արժանացեալ եզակիութիւնն։ — Ինձ կ'երևի, թէ նախ՝ իր բնական, հզօր, վար-

1 Կիւրակոս, Թարգմանիչ մեկնութեան Յովհաննու աւետարանին յՈսկեբերանէ։

2 Շարական։

3 Խորեն. Գ. Ծէ։

պէտ՝ միանգամայն և անօրուեստ ճարտասանութիւնն, ինչպէս կու պահանջէին բնութիւն և հանտորութիւն. զարմանալի զօրութիւն և անլուծանելի պարզութիւն միաձոյլ, որով գերազանցէ սա քան զամեն վերոյիշեալ սքանչելի պերճախօս Հարս և վարդապետս եկեղեցւոյ։ Եւ եթէ Ներեն ինծի քաջ քննաբանք՝ որք ըսին թէ Կիկերոնի զբուցածին վրայ բառ մը կարելի չէ աւելցընել, և ոչ Դիմոսթենէն բառ մը վերցընել, առանց աւրելու անոնց զարմանալի բանահիւսութիւնը. կարծեմ թէ իմ Խօսնակս այս երկուքին միջոց ճամբայ մը գտեր է, անանկ բանահիւսութիւն մը մաներ, որ արժանի է թէ Հերմիսի և թէ Քրիստոսի։ Վասն որոյ և իրաւամբք ասոր վրայ քան ուրիշի՝ կու զմայլէր և կու հառաչէր Լիբանիոս՝ իր ժամանակին մեծագոյն հռետորն, բարեկամն և վարժապետ Բարսեղեանց և Գրիգորեանց, և յետոյ՝ սոյն մեր Խօսնակին վարժապետ, և կ'ըսէր թէ իր աթոռին միայն արժանաւոր յաջորդ վարդապետ կու ճանչնար և փափագէր զԱնտիոքացին Յովհան, (որ դեռ 18 տարուան էր երբ թողուց այդ հռետոր վարպետը), եթէ քրիստոնեայք յափշտակած չըլլային զնա։ — Ի զո՛ւր նախանձիս և ողբաս, հեթանոս սոփեստէս. Յովհան աշակերտդ՝ կը ծաղրէ զքեզ քու Յուլիանու Ուրացողի կամ Անտիոքայ Դափնոյն վրայ գրած ու քերած ճառաստանացդ վրայ, (իր Ս. Բաբելայ և Անտիոքայ շարժման վրայ գրած ճառից մէջ.) նա առանց հակառակութեան՝ քու աթոռէդ այլ քեզմէ այլ վեր բարձրացաւ և նըստաւ։ Ահա կու լսես (և երանի՜ թէ լաւ լսէիր), որ ոչ միայն յԱնտիոք և յԱթէնս և 'ի Բիւզանդիոն կու հռչակուի, այլ և յանկիւնս աշխարհի, առաւել քան զայլ արժանաւոր ճարտասանս, իսկ քան զքեզ՝ անհուն առաւել։ Ափսոս, որ

թնութեան քեզի տուած մեծ տուրք մ'ալ, — երկարակեցութիւնդ — ամենէն կարևոր պէտքի չըերէր, և չկարցար խոնարհիլ և ըլլալ աշակերտ քու աշակերտիդ, երբ նա յԱնտիոքայ եկեղեցին կու քարոզէր և ձայնն զԲիւզանդիոն զուարճացընէր, զաշխարհ զարմացընէր: «Ամենայն տուրք
» հռետորականք, բնականութիւն, փափկութ̃ի
» և մեծութիւն, միաբանեալք յՈսկեբերան՝ ը-
» րեն զնա մեծագոյն ճարտասանից նախկին եկե-
» ղեցւոյ, և պայծառագոյն թարգման այն նշա-
» նաւոր ժամանակին: Մէկէն կ'ափշին միտք 'ի
» տեսնելն այս մարդուս անբաւ երկասիրութիւն-
» քը, և անոր հանճարոյն եռանդը և յաջողակու-
» թիւնը» (կամ դարձուածքը). կ'ըսէ ժամանակից ամենէն երևելի քննադատն գեղեցիկ դպրութեանց՝ Վիլմէն:

Ոսկեբերանի երկրորդ առաւելութիւն՝ որ և առաջնոյն կցորդ՝ կու սեպեմ, ոչ միայն լեզուով տիրանալն 'ի վերայ ունկնդրաց, այլ ինքն իր լեզուին կատարեալ տիրանալ և սանձելը. որ նշան է իր հարուստ և զօրաւոր մտաց, որով չիկարօտիր շատոց պէս՝ պերճախօսութիւն կարծուած բանից զարդեր և ձևեր փոխ առնուլ: Իսկ եթէ իր լեզուն ալ զարդեր և ձևեր ունի՝ այնքան բնական և աներևոյթ են զարդքն, որ տարբեր լեզու մը կ'երևի ուրիշ շատ Հայոց լեզուին քով. ասոնց ճառից մէջ շատ և շուտ կրնանք գտնել բառեր և բաներ՝ առանց որոց ալ կրնար ըլլալ՝ կ'ըսենք, իսկ Ոսկեբերանին մէջ՝ կարծեմ՝ խիստ դժար է փնտռելն անգամ: Ուրեմն հզօր լեզուն, հզօր և հարուստ միտքն միաբանեալ՝ իրեն անհամեմատ առաւելութիւն կու տան. եթէ անոնց մէկուն համար ըսուեցաւ Ոսկեբերան, մէկայլին համար կ'արժէր ըսել Ադամանդ միտք, նա և սիրտ. — հաստատութիւն և պայծառութիւն՝ սեփական

շնորհք են Ոսկիբերանի թէ խօսից թէ վարուց։ Իսկ մտաց հարստութիւն կ'իմանամ թէ ըստ ուժոյ տրամախոհութեան և թէ ըստ գիտութեան և հանճարոյ, որով երրորդ առաւելութիւն մը կու ստանայ։ Ասոր այլ վկայեն անբաւ գրած կամ խօսած ճառեր և գրքերն, որոց մնացեալ տպագիրքն անգամ բազմահատորք են քան զշատից 'ի Հարց, և որոց համար մեր եկեղեցական գրոց մէկն (Յայսմաւուրքն) կ'ըսէ, թէ «Մինչ
» տանէին զսուրբն՝ յաքսորս, եդ ձեռն 'ի վերայ
» եկեղեցւոյն և ասաց. Ո՛վ մա, սուրբ եկեղե-
» ցի... զի 'ի պարգևացն զոր առի 'ի Տեառնէ՝
» յաւելլի 'ի գանձս քո գիրս 800, ճառս 12,000.
» արդ մի՛ մոռանար զաշխատութիւնս իմ[1] »։ Ոչ հատորոց թիւն, այլ գրուածոց իմաստն, ազնուութիւնն, պէսպէս օգուտն են ցանկալի և զարմանալի, որոց համար առաւ այն մեծամեծ կոչմունքը զոր վերը յիշեցինք, և զոր բովանդակելով շատք միաբան կ'ըսեն, Աղբիւր Եկեղեցւոյ. վասն զի Ս. գրոց մեծագոյն և գործածագոյն մասին վրայ մեկնութիւն և խրատ գրած է թափանցիկ մտօք, տաք սրտով և վարպետ գրչով, որք անգին գանձ սեպուլին Եկեղեցւոյ. և որոց մէկը միայն՝ չէր ուզեր փոխել Բարիզի պէս քաղքի մը հետ՝ միջին դարուց գերագոյն հանճարն և աստուածաբանն՝ Ս. Թովմաս Ագուինացի[2]։ Միշտ անհա-

1 Խաչատուր Գանձասաց այլ կ'ըսէ.

« Պատմաբանող ճառից հազարաց
Երկոտասանից եւ բիւրաւորաց »։

2 Գուցէ ոչ պակաս զգացմամբ և եռանդեամբ կու գրէ մեր եկեղեցւոյ գիտապետաց ամենէն ճոխափառն և Թագաւորակերպն, Գէորգ Գետադարձ, Ոսկիբերանի առ Աննմանսն կամ Անոմեանս ճառից յիշատակարանին մէջ, զոր իրեն համար օրինակել տուեր էր. «Ուսուցանէ զմեզ

մեմաս պիտոյ ձեռայ մեր Խօսնակն այն լեզուաւն՝ որ աւելի հասկանալի է ժողովրդեան՝ գործնական և բարոյական խօսքերով, քան տեսական և այլաբանական. ինչպէս են շատ ուրիշ հարց, որով և ոչ գիւրիմաց և ոչ շատ օգտակար բազմութեան մարդկան: « Պարզ և յայտնի բանիւ զխօսս տա-
» տուածային գրոց առ հասարակ ամենեցուն ճա-
» ռէր, — կ'ըսէ Պրոկլ. — իբր ոչ եթէ աշխատանայր
» իմաստասիրել գժուարաբաց բառիւք, այլ ցան-
» կայր զամենայն հոգիս լուսոյն օգտեցուցա-
» նել:... Քարոզեաց զծածուկ միտս գրոց 'ի լոյս

» մեծախորհուրդս այս և մեծափեան Բերանս ոսկի՝ տա-
» ւել քան թէ ամեն Հոգւոյն:... Ո՞ յայնքան 'ի վերջին
» իմաստասիրութիւնն եհաս. ո՞ այնպիսի շնորհի արժա-
» նացաւ եղև երբէք. ո՞ այնպէս զբերան մտացն եբաց և
» ձգեաց զՀոգին. զի որ զամենայն գիտէ և քննէ զխորս
» Աստուծոյ՝ Հոգւով Աստուծոյ հասու լինիցի: Յայտնիկ
» մեզ քարոզն ճշմարտութեան, վարդապետն տիեզերաց,
» որ զբաղում շղթայեալս հին և նոր կտակարանաց՝ ման-
» րամանաբար ծանկեալ ջամբեցոյց իբրև զկաթն տղա-
» յացելոց 'ի Քրիստոս:... Զայսոսիկ ընծայեմ Աստուծոյ՝
» գոհութեան պատարագ, ընտանեգոյն ընծայ քան զոս-
» կի մաքուր և քան զքարինս պատուական պայծառագոյն,
» քան զղոհս օրինացն ընտրագոյն, քան զանդրանկացն
» պտուղս ընդունելի:.. Զայս նուիրեմ՝ զոր ձեռայ ինձ, ըն-
» քեան թողլ որով միանգամ ճոխանամ: Քանզի զայ-
» լովք զամենեքումբք զանց արարի պատուիրանով և հո-
» գւով, և զբազմապատիւ զմարգարիտն փոխանակ ամե-
» նեցուն՝ որոց ունէին երբեմն՝ փոխանակեցի, և եղէ մե-
» ծաշահ վաճառականն. և զուարճանամ այսորիւք առա-
» ւել՝ քան որովք րազմօք բերկրին: Եւ ասնեմ զաս ամե-
» նայն կենաց իմոց հաղորդ և խորհրդակից բարի և խո-
» սակից և առաջնորդ վերին ճանապարհին. զի զամենայն
» զվայելչականս անպատուեմ՝ 'ի սաստիկս կալ ձեռաւ: Յայս
» ինչ ամենայն խափիցուսցէ սիրելութիւն զՔնէ Աստուծոյ. ար-
» ձան կանգնեսցի յէշատակ հոգւոյ »:

» և 'ի հրապարակս, զոր իւր յունկանէ և 'ի խաւարէ՝ 'ի մաքուր միտսն ընկալաւ »[1]:

Չորրորդ պատճառ մ'այլ Ոսկիբերանի մեծ համբաւոյն՝ իրմէ վերջը իրեն նմանող մը չունենալն է, և գրեթէ վերջին ըլլալն մեծամեծ Հարց եկեղեցւոյ. յորոց միայն Կիւրեղ մ'եղաւ առ Յոյնս (յԱղեքսանդրիա), և մեծն Օգոստինոս առ Լատինս, որք հմտութեամբ և աստուածաբանութեամբ գերազաս են, այլ ոչ և լեզուի կամ գրչի փասական ճարտարութեամբ: — Իսկ հինգերորդ և մեծագոյն պատճառ (թողլով քննել զայլս) մեծութեան Ոսկիբերանի՝ իր մաքուր բարքն և զանազան հանճարն, որովք նշանագոյն է և 'ի դպրութեան Սրբոց և 'ի քաղաքականութեան: Չի կրնար իր վարքն ընթերցողն և դիտողն՝ չզմայլիլ մեծապէս, նկատելով անոր հոգւոյն անմարելի կրակը՝ սէրն առ Աստուած, իր կուսական մաքրութիւնն, խոր խոնարհութիւնն և բարձր յարգն աստուածային իրաց. որով չէր համարձակեր եկեղեցւոյ պաշտօնեայ իսկ ըլլալ, այլ անապատի մէջ տատրակաց հետ մնչել և իր ծիծեռնաձայն լեզուն ծածկել, և գրեթէ բռնի յանձն առաւ[2] 37 տարուան (ըստ ոմանց 27 տարուան) սարկաւագ ըլլալ և իբր 40 ամեայ քահանայ, ու յետոյ նոյնպէս ակամայ և խաբուելով բերուիլ ու պատրիարք ըլլալ Կ.Պոլսի:

1 Այս բանս ռամիկ ոճով բացատրէ մեր մէկ վկայագիրն. «Ամենեքին բառակապիւ և քերականաւ ոչ գրեաց, » վասն տգէտ և խառնիճաղանճ ժողովրդեանն. այլ զամենայն պարզ և յստակ խօսեցաւ վասն հասկանելոյ ամենայն մարդկան »:

2 Կ'աւանդեն իր վարուց գրողք ոմանք, թէ այս բանիս հաւանեցաւ տեսիլք մը տեսնելով, յորում Քրիստոս ձեռնադրեր զնա քահանայ, Տիրամայրն եմիփորոնը կու տար.

## Գ.

Հոն իր գրեթէ հնդամեայ կարճ հայրապետութեան միջոց (398–404) ըրած եկեղեցւոյ և ժողովրդեան օգտակար բարեկարգութիւնքն, եթէ և խիստ շատ են ըստ ժամանակին քիչութեան՝ աւելի այլ մեծ են ազնուութեամբ։ Կ'ապշին միտք, թէ Երբ 'ի վերայ այնքան գրուածոց և քարոզութեանց՝ ժամանակ կու գտնէր կարգաւորելու կանոնաւորելու իր կղերը, իր հեռաւոր թեմերն այլ այցելութեամբ քննելու, պայծառացընելու զեկեղեցի և զաստուածային պաշտամունս՝ ջերմեռանդն աղօթիւք, երգովք և ժամասացութեամբք. որոց շատն՝ ոչ միայն մինչև ցարդ հաստատակ են առ Յոյնս, այլ և մեր եկեղեցւոյ մէջ. — Ի՞նչպէս այն տիեզերական մայրաքաղաքին զեղծումեղծ բարուցը հետ կռուել. — Ի՞նչպէս անմատչելի թագաւորաց և թագուհեաց հետ անվախ համարձակ վարեցաւ իբրև իր հօտին հասարակ ոչխարաց հետ. — և Ի՞նչպէս յետնագոյն ռամիկը, դռնեհիկը, այրի կնիկը, և ըրածը ճանչցող խառնակեցիկն ու մեղաւորն անգամ կու կանգնէր, սիրէր, մեծարէր, իբրև զիշխան և զարքայ։ — Համառօտ ըսեմ, Ի՞նչպէս, նման իր շատ սիրած, իր զմայլած, իր բացատրած վարդապե-

Պետրոս առաքեալ՝ բանալիքը, Յովհաննէս՝ զաւետարանը. այս է Կիւլիկեցի շարական երգչին ըսածն.

« Երևմամբ սուրբ հրեշտակաց ի Քրիստոսէ ձեռնագրեցար,
Զպատմուճանըն փորանկեալ առ ի վերուստ՝ հոգւով զգեցար։
Ի վիմէն եկեղեցւոյ՝ զփականս երկնից հաւատացար.
Սիրեցեալ յաշակերտէն՝ զաւետարանն առընկալեալ»։

տին՝ Պօղոսի առաքելոյ, ընդ ամենայնի ամենայն լինելով, կրնար անոր պէս այլ ըսել՝ «Նմանողք » ինձ եղերուք, որպէս և ես Քրիստոսի»։— Ոչ ոք, մանաւանդ անանկ դժուար առթից մէջ, ուր հարկ էր փառասէր, պչրող, նրբամիտ, ամենահնար Յոյն կայսրուհւոյ մը հետ (Եւդոքսեայ) մրցիլ՝ վասն իրաւանց Աստուծոյ և զրկելոց նորա, թոյլ թագաւորի մը (Արկադիոսի) քով խօսք քաղցը-նել, Աղեքսանդրիոյ մեծ և զինքն իսկ ձեռնադրող հայրապետին (Թէոփիլոսի) հակառակիլ՝ արդարութեան և մարդասիրութեան վրայօք, — գիտնոց և տգիտաց միջնորդ ըլլալ, դէմադէմ խռովեալները խաղաղցընել, բարեկամները․ չվհատեցընել, թշնամիները չվստահացընել, ամենուն չափը զանազանել, զամենքն անզանազան սիրել․ ըստ պատշաճին տեղը կենալ կամ տեղի տալ, ոչ փառասիրութեամբ գահին փակչիլ, և ոչ նուաստութեամբ աթոռէն իջնել․ — ոչ այն ամենևին անարժան և անհիմն զրպարտութիւններէն նեղուիլ, և ոչ այն աշխարհահռչակ գովեստներէն և Ոսկեբերան կանչուելէն՝ լայնիլ․ (ինչպէս ինքնին կ'ըսէր անգամ մը յամպիոնէն, « Երեկ զիս երեքտասա- » ներորդ առաքեալ, և այսօր Յուդաս յառաջ ընթացաւ »․) — ոչ ոք կ'ըսեմ, սանկ և այլ աւելի բազմակնճիռ առթից և հակառակութեանց մէջ գտուեցաւ․ և ոչ այլ այնքան իմաստութեամբ և արիութեամբ, միանգամայն սիրով և համբերութեամբ՝ վարուեցաւ անայլայլակ, անշփոթ, անտխուր և անտարակոյս։ Գեղեցիկ ուրեմն գովութեամբ մեր գանձասացն կ'երգէ 'ի պատիւ նորա․

« Անկոխ է բազմաց շաւիղ քոց վարուց․
Նուրբ և բարձրագոյն քան զելս աղաւնւոյ »։

Այսպիսի բարեկարգութիւններն յիշելով իրեն հոգեկիր մերազգի դիտապետ մ'այլ, Ս․ Ներսէս

Լամբրոնացի, կու կանչէ. « Ո՜վ երանելի և
» քաղցր ստուածազգեացն հօգւոյ. այսպիսի
» վայելէր մեզ քահանայապետ՝ չարչարակից,
» զգածեալ ակարութեամբ ժողովրդեանս: — » Ոչ
» ոք լաւագոյն քան զնա կրցաւ, կ՚ըսէ վերոյի-
» շեալ փռանկ քննաբանն[1], կատարել զպաշտօն
» բանին՝ զոր աւետարանն մատուց: Հին աշխարհ-
» քին վրայ պատուաստած նոր ընկերութեան՝
» գեղեցկագոյն հանճարն է Սա. Սա է գերա-
» գոյն քրիստոնէացեալ Յոյնն »:

## Դ

Բայց ով դժբաղդութիւն և զրկումն հասարակաց. ով ամօթ զրկողաց. այսպիսի անձն այլ ունեցաւ թշնամի և հակառակորդ: Անաշառապէս յանդիմանուած գլխոյն Եւդոքսիա, իր ձեռնադրելոյն մեծութեան չքաշող հայրապետն Աղեքսանդրիոյ (Թէոփիլոս), քանի մը կաշառակուրծ կամ նախանձաբեկ եկեղեցականք, քանի մը կըշտամբեալ իշխանք, և ակարամիտ կամ անմիտ բարիատեացք՝ միաբանելով, շուքի պէս ընկան Յովհաննու փայլուն կերպարանաց ներքև, այնչափ աւելի անոր պայծառութիւնը՝ որչափ իրենց սևութիւնը նշաւակելով. և որ աւելի ցաւալին է, ոչ միայն մարդու հետ կռուելով այլ և աստուածամարտ ըլլալով: Շատերու ծանր եկած էր լսելն՝ ոչ միայն զՈսկիբերան անունն և զհամբաւ իմաստութեան նորա, այլ և անոր անխարդախ, մաքուր և սքանչելի վարքը, սրբութիւնը, հրաշագործութիւնը. և թերևս այս եռքինին նկատմամբ իր կուսակիցքն և սիրելիք չափազանց գտուեցան. այլ գոնէ այնպիսի անձի մը վրայ կըրնար չափա-

1 Վիլմէն:

զանցութիւնն արդարանալ։ Գուցէ գուցէ կապուտակ նախանձն այլ, եթէ կարելի էր յայտնի երեւելու, չէր կրնար աւելի նախանձելի մէկ մը գտնել քան զՈսկիբերան. զոր բարեսէրքն՝ 'ի կենդանութեան գերագոյն հռչակեցին իր ժամանակակցաց, յետ մահուն՝ բարձրացեալ 'ի դասս սրբոց և անմիջապէս Աստուածպետականին աթոռոյ քով, ըստ յայտնութեան կամ տեսլեան մը, զոր տեսան, կ'ըսեն, արժանաւոր անձինք. և այս աւանդութիւնս է՝ զոր մեր եկեղեցւոյ քաջ երգիչն այլ 'ի պատիւ նորա սրբացընէ, ըսելով.
« Որ յանձնաւելին մերձեալ 'ի լոյս՝ հուպ Երրոր-
» դութեանն, ով երանելի տէր վարդապետ »։

Սէր և մեծարանք իրենց աննման հովուին և վարդապետին վրայ՝ եթէ քիչ շատ մեծաբանել տուաւ յունական դիւրաշարժ սրտերու, աւելի շատ ապաշնորհ և անգութ դատուեցաւ հելլենական յաչողանքն և ատելութիւնն, 'ի նախատինս այնպիսի պանծացեալ ազգի և ժողովրդեան, որ զՈսկիբերան և զԱստուածաբան իր մայրաքաղաքի բարձր աթոռէն հեռացուց յօտարութիւն, յաքսոր և մինչև 'ի մահ։... Զատոնք յիշելու ատեն՝ կրնամք մոռնալ, Հայկակ, մեր նախատինքն այլ, մեր հարց ըրածներն առ Սահակ և Ներսէս և նմանիսն։... Սակայն, քաւ լիցի, ես ոչ զՀայս մեղադրեմ և ոչ զՅոյնս, ոչ զընդհանուր ազգն և ոչ զժողովուրդն. այլ թէ շատ՝ իրենց պնդապլուխ գլխաւորները, արքունեաց և աթոռոց հնարքները և կուսակցութիւնները, և մեծամեծաց քով աւելի մեծցած նախանձը և գրգռած կրքերը. որոց ըրած չարիքն շատ հեղ ռամկին վրայ կ'ընկնի, և բոլոր ազգին անուամբ յիշուի. « Հարք կերան
» զագոխն և որդւոց ատամունքն առան »։ Բայց արդարութիւնն գիտէ և կրնայ ընտրել զաջ ու ձախ. պատմութիւնն անգամ շատ հեղ վկայ է ստուգութեան։...

Առջի անգամ Ոսկեբերանի դէմ միաբանելոց հնարքն, վճիռն, հրամանն, պատուհասն և աքսորն, հայրապետ և հաւատարիմ ժողովրդեան սիրոյն դէմ, և կարկտախառն երկնից արհաւրաց դէմ՝ խիստ քիչ դիմացաւ. արեգական պէս հազիւ թէ ծածկուելով յաթոռէն, և ահա առաջինէն պայծառ ծագեցաւ բարձրացաւ իր տեղը. մեծ ու պզտի թշնամիք՝ շուքի և միգի նման հալածեցան կորան. գժնդակ դշխոյն անգամ սարսափելով ներումն և անմեղադրութիւն խնդրեց, թէ և այլ աւելի նախանձելով, երբ իր պալատան ծովահայեաց պատշգամէն կու դիտէր և չէր տեսներ ծովուն երեսը. ոչ այնքան մեծազօր երևցեր էր Քսերքսէս՝ նաւերով կամրջելով և յատակելով այն խորանդունդ նեղուցը, և ոչ մերս Արտաշէս որ « յԵլեսպոնտոս և 'ի Թրակէ՝ զտարերացն փոխեաց զբնութիւն... ընդ ծով հետևակելով[1] », որչափ մեծագործ և մեծասիրտ կ'երևէր այն յունական ռամիկ ժողովուրդն, տկար նաւակներով ծածկելով բովանդակ նաւահանգըստին ծփած աւազանը՝ յընդառաջելն և 'ի դարձընել յաթոռն՝ իր Ոսկեբերանը[2]: Երջանիկ ժողովուրդ, այլ երանի՜ թէ միշտ կամ աւելի երկար ատեն: —

Եւ ոչ կէս տարի քշեց մեր Խօսնակին հաստատութիւնն 'ի բեմն իւր. ամօթապարտ թշնամիք կամ յաչաղկոտք՝ աւելի թանձրացած կրքերով մխոտ ծխոտ ամպերու պէս խտացան մօտեցան իրարու կպան. դարձեալ ժողովեցան 'ի Թրակիա՝ այլ աւելի ընդդիմակաց բազմութեամբ և զօրութեամբ,

1 Խորեն. Բ. ԺԲ:
2 Այս եղաւ յամին 403 յ'15 նոյեմբերի, անոր համար Յոյնք այսօրս այլ կու տօնեն զՈսկեբերան, և ոչ վախճանած օրն՝ սեպտեմբերի 14, որ Ս. Խաչի տօն է:

մինչև Եպիփանու պէս պարզամիտ սուրբերն ան-
գամ խաբխըբելով և իրենց կողմը ձգելով. որոնց
մէջ՝ սիրտ առած, յոնքերը կամարած, ոտքով ու
գլխով թեթևն Եւդոքսիա՝ իբր նոր «Հերովդիա-
»դա՝ դարձեալ կաքաւէր, դարձեալ խնդրէր
»զգլուխն Յովհաննու Մկրտչի», արդարև իսկ
մկրտչի և կնքահօր իր Թագաժառանգ որդւոյն
Թէոդոսի Փոքու:... Կրնար Յովհաննէս իր անի-
րաւ բանաւորաց դէմ իրաւացի բանութիւն բա-
նեցընել, գոնէ իր սիրելի որդւոց՝ ժողովրդեան
գութն և աղաչանքը զէն ու վահան առնուլ. սա-
կայն իր մեծ սրտին, և մանաւանդ աստուածա-
շարժ հոգւոյն և հեզութեանն Յիսուսի՝ անար-
ժան սեպեց զայն[1]:..

## Ե

Իր վարուց (և ընդհանրական պատմութեան
մէջ) մեծապէս սրտաշարժ դիպուածներէն մէկն
է Ոսկիբերանի յետին հրաժարական ողջոյնն առ
ուխտ եկեղեցւոյ իւրոյ. որ և ակամայ ինձ հոս կու
յիշեցընէ ինծի մեր դարուն մեծագոյն Քաջին մե-
ծահռչակ հրաժեշտը[2]. այլ քանի այլակերպ,
նուաստ և խիթալի:—Նա՝ բոլոր եւրոպական
ազանց ճապաղեօք ձենձերեալ և դեռ արիւնա-
կաթ դրօշը և դրօշակիրը կու համբուրէր՝ ցաւե-

1 Ն. Լամբրոնացի 'ի Պատարագամեկնիչն. «Յովհան
»յԱնտիոքայ ժառանգէ զԿ.Պօլիս. ուստի՝ և ոչ տեսեալ
»զնոյն իւր հայրենիս՝ էջ վասն օրինացն Աստուծոյ 'ի
»յաքսորս: Թէ իւր եր համարեալ զբազմապատիկ իշխա-
»նութիւնն՝ ներէր արդեօք Թագուհւոյն, որ անտի զնա
»վրիպեցուցանէր: Բայց զայն անգոսնեալ՝ զհետ վերին
»պսակացն ընթանայր: Եւ ոչ յունելն՝ որպէս իւր հրա-
»ժարէր, և ոչ 'ի չունելն՝ տարակուսէր»:

2 Ի Ֆոնդէնըպլօ:

լով, որ այլ չպիտի կարենայ թռցընել զայն կայսերական արծուոյն թեւօք՝ նորանոր մարդածախ դաշտերու մէջ, և իրեն անձնանուէր գնդերով աւելի բազմաթիւ մարդկութեան գնդերը՝ որք այրի, նաև դիակն դարձընելու. — իսկ մեր Խօսնակն Եկեղեցւոյ՝ որ աւետարանին փողով կու դղրդէր զտիեզերս և 'ի հոգևոր զինուորութիւն Քրիստոսի գումարէր զծեր և զտղայ, զերիտասարդ և զկուսան, հիմայ իր չորս դին տեսնելով մեծամեծ գաւառաց և քաղաքաց այցելու գնդապետներ, 40ի չափ եպիսկոպոսներ, որք տղու պէս կու լային իր քով, և կ'աղաչէին չհեռանալ իրենցմէ, ինքն վսեմագոյն և աստուածային կամաւ տարագիր՝ մէկ մէկ գըրկելով այն սրբազան ժողովրդապետները, (որոց ձեռօք Աստուծոյ թագաւորութեան սահմանները կ'ընդարձակէր յերկրի,) հայրապետական սուրբ համբուրով և ոչ առանց արտասուաց՝ կ'օծէր ճակատնին, կնքէր և զօրացընէր 'ի վշտակցութիւն և 'ի նահատակութիւն՝ վասն երկնաւոր յաղթանակին։ Ամէն եպիսկոպոս՝ որ գրկէն կ'ելնէր, բան մը կու փրցընէր 'ի սըրտէն։.. Չկրցաւ այն ադամանդ սիրտն այլ մինչև ցվերջ դիմանալ, և ոչ զամենքն ողջագուրել. հայր էր սիրուն, զօրացաւ զայրացաւ գթալւոր սիրտն... Թողուց սուրբ դուռը, հեռացաւ պահ մը 'ի սարկաւագանոցը ծածկուելու...

Եւ ահա հոս՝ այլ աւելի սրտաձմլիկ տեսարան մը և կակուղ խումբ մը պաշարեց զնա. երանելի սարկաւագուհին Ոլիմպիադա՝ ընկերակցօք նմաննեօք՝ հեծեծանօք վազեցին յոտքը պլլուեցան. Մարթայի պէս կ'աղերսէին, Մարիամու պէս կու լային, կուսանաց պէս մարմըրէին. ողկուզազարդ ուռոց պէս փակած իրենց երկնադիտակ որթոյն վրայ՝ չէին ուզեր բաժնուիլ... Կու-

*սից և եպիսկոպոսաց արտասուքն յիրար խառ-
նուեցան. եկեղեցւոյն մէջ բոլոր ժողովուրդն կու
հառաչէր, սուրբ սեղանները անգամ կու սար-
սէին. աստուածային առագաստն ինքնին կ'ողբայր
իր այրիանալն 'ի զգաստ փեսայէն. ըսե՞մ, թէ « և
» արտասուեաց Յիսուս »:...*

*Յովհաննէս՝ լսելով տեսնելով զասոնք, եթէ
կրնար գերազանցել քան զմարդ, այլ ոչ և զաս-
տուածամարդն. հատուց ինքն ալ բնութեան ան-
մեղ գթոյ պարտքը. բայց և շուտով տիրանալով
ինքն իր վրան՝ քաշեց ադամանդիկ սիրտն յոսկի
բերանը. լռեցուց (թէ և լացուց) զինքն յորդո-
րող, պաշտող ու պաշտպանող եպիսկոպոսները,
կղերը, սարկաւագուհիները ու բանին տեղեակ
եղողքը: Իր լեզուին ճարտարութիւնն և ոյժը՝
շատ անգամ փորձեր էին, բայց սրտին այսքան
պնդութեան և մեծութեան դեռ անփորձ էին.
ափշեցան, ափիբերան եղան, յաղթուեցան.
անգամ մ'այլ դաս առին իրենց աննման վարպե-
տէն, որ մատովը կու ցուցնէր զերկրիս բոլորը,
թէ « Տեառն է երկիր լրիւ իւրով ». արդարն
ուր ալ որ ըլլայ, միշտ նոյն է, կամ միշտ պան-
դուխտ կամ ոչ երբէք. և բերնովը կրկնէր իր
պանծալի պարոյրը, « Փառք քեզ Աստուած, յա-
» ղագս ամենայնի »: Եւ ըստ սրտին՝ անայլայլակ
և զուարթ դիմօք իջնելով յաթոռոյն, յայն ա-
թոռոյն՝ որ ոչ յառաջ և ոչ ետքը իրեն հաւա-
սար բազմական ունեցաւ, զատուեցաւ 'ի սիրե-
լեացն: — Իսկ 'ի թշնամեա՞ցն. — իր աստուածային
օրինակին նման՝ նկատելով զանոնք՝ որք գահավէժ
ընել կ'ուզէին զինքը, « և նա անցեալ ընդ մէջ
» նոցա՝ գնայր[1] »:*

1 Ղուկ. դ. 30:

## Զ

Ամառնամրտին նախընթաց օրն էր, յամին 404. երբև յանկարծական վտանգէ մը դրդած Կ. Պօլսի ժողովուրդք շտապելով քաղքին հարաւային ծովեզերքը կու դիզուէին իրարու վրայ, և գրեթէ 'ի ծով կ'ընկնէին. մանաւանդ թէ ոտքով ալիքները կտրել թռչել կ'ուզէին, նաւակ չգտնելով: Ոմանք լռութեամբ կենային, ոմանք ձեռուընին դէպ 'ի ծով դէպ յերկինս՝ դէպ 'ի կուրծքերնին կու տարբերէին. ոմանք գթութեան ձայներ՝ և բանայխաներ կանչելով, ոմանք անէծքներ թափէին. ամէնքն աչուընին տնկած դէպ 'ի հարաւ՝ Պրոպոնտոսի (Մարմառայի) ալեաց և Դեմոնիսեան կամ Պռինկիպեան կղզեաց մէջ, գրեթէ մինչև ցկուրութիւն՝ բիբերնին տանջէին: Ամէնքն այլ ուզելով բռնել, արգելուլ, յետ դարձընել նաւ մը. նաւ մը՝ որ դիմացնէն երագ երագ կու սահէր կ'անցնէր, կու հեռանար. և եթէ բռնել չէ՝ գոնէ պահ մ'այլ կ'ուզէին տեսնել: Իսկ նաւն փախստական՝ երկայնաձև բաղմաթիակ՝ ցռուկը ցըցած՝ ծովային նոր ցուցանքի մը պէս՝ ճօճալով ճապկըտելով ծփած ծեծուած ալեացվրայ՝ շուտ շուտ կու սողար, փախչէր թաքչէր, երբև թէ այն դիզուած ժողովուրդն՝ իրեն համար մթագին ու սպառնացայտ մըրրիկ մ'ըլլար. մինչև կղզիներուն միջէն անցնելով հեռացաւ, փոքրացաւ, կէտ մը դարձաւ, հազիւ տեսանելի սրագոյն աչաց. որք քանի մը վայրկենէ ետև՝ ծովուն հաւասարած երեսէն զատ՝ այլ բան չտեսնելով, յուսահատեալ դարձան; ողբերնին և անէծքնին երկարելով, և բարկութեամբ արքունական ապարանից վրայ նայելով:

Այն խուճապեալ նաւուն բարձրաւանդակին

վրայ հանդարտօրէն նըստած անձ մը՝ կու նայէր անխռով, գոնէ ըստ արտաքին տեսլեանն, ընդ ծով և ընդ ցամաք. կու նայէր այն ծովեզերքը պարսպաձև պատած ժողովրդեան վրայ, և ճանչնալով անոնց հայրասէր գութն ու գորովը՝ չէր կրնար անոնց ետևէն բարձրացած Պօլսոյ խրոխտ աշտարակներն ու ապարանքը՝ սուրբ բարկութե̃ անգամ չցողացընել: Չէր թշնամաներ, չէր անիծաներ ապերախտ մայրաքաղաքը, և ոչ աւերք ու երեր կարդար անոր. այլ զարդարութիւն և զգաստաստան թողլով միայն ամենագէտ դատաւորին, ինքն ողջունելով, օրհնելով և աղօթելով կու հեռանար կու ծածկուէր՝ անհետ կ՚ըլլար իր հինգտարի դայեկաբար դաստիարակած ժողովրդէն, զոր մէկ մ՚այլ պիտի չտեսնէր կենդանի աչօք. այլ սրտով դեռ կու տեսնէր, կու լսէր, կ՚իմանար որբոց և այրեաց շնորհակալութեան մրմունջը, զղջացեալ մեղաւորաց ողբաձայն ապաշաւանքը՝ որոց համար ինքն Պափմող կամ Բարող ապաշխարութեան և ողորմութեան անուանեցաւ. կու զգար մեծի և փոքու խանդաղատանքը: Ինչուան որ անդադար ու անդարձ նաւն անգութ՝ խստորելով 'ի խորշն Կիանեան (Մուտանիա կամ Կէմլէյիկ) Պրոպոնտոսի ձևն անգամ կորուս. և քիչ ատենէն ասիական եզերքը հանելով Բիւթանիոյ ցամաքին վրայ ձգեց զՄոնիեէրան:

Եւ ոչ կէս ազատ պանդըխտի ցուպն տրուեցաւ անոր, որ ըստ կամացն իրեն օտարութեան բնակարանն ընտրէ. այլ պահապանաց մատնուեցաւ ըստ արքունի հրամանաց, որ տանին յաքսոր՝ յաշխարհ հեռի, յերկիր ցուրտ և քարուտ, 'ի քաղաք ամայի և անապատ, 'ի ծայր սահմանաց Յունաց և Հայոց: Հոն մնայ որչափ որ մնայ, մինչև ցմահ:...

## Է

Իսկ ի՞նչ էր այսօր յանցանքն, որ այդպէս դատապարտեալ 'ի ժողովոց Կաղնոյն[1] և 'ի կայսերական դատակնքոյն՝ արտասահման կ'ըլլայ 'ի հեռաւոր և 'ի դժուարաբնակ տեղ մը։ — Իսկական յանցանքն՝ իր Ոսկէբերան և ադամանդիկ անձն ըլլալն էր, ըստ որում առաջ տեսանք. իսկ ըստ չարախօսաց՝ ծաղրելի կամ ողբալի բաներ. — ծաղրն այլ ողբն այլ իրենց գլխուն. — որք առաջին յանցանք սեպած էին զայն՝ որ Ոսկիբերան ոչ ուրիշի քով կերակուր կ'ուտէր, և ոչ զուրիշը կու հրաւիրէր։ Գեղեցիկ խրատ ոմանց պետաց, որ թերևս միայն ասոր հակառակ կերպով կրնան ցուցընել իրենց առաջնորդութիւնը և ընդունակութիւնը։ — Ոսկիբերանն որ 'ի մանկութենէ յանապատս Ասորւոց վարժեր էր Անտոնի և Պիմէնի կերակրոց (ճգնաւորական չորակերութեան), այն աստիճան փափուկ և տկար ստամոքս ունէր՝ որ այլ ո՛ր և իցէ կերակուր չէր կրնար ընդունիլ, այլ հազիւ թեթև բաներ. և յիրաւի Թէոկրիտեան կամ Եղիշէան անարիւն ճպռանց նմանեալ՝ աստուածային բանին քարոզութիւնն ըրեր էր իրեն սնունդ, և կ'ուզէր ընել իր հօտին այլ։ Թշնամիք՝ փառասիրութիւն կու սեպէին զայս։ — Նոյնպէս բամբասէին, թէ խիստ յանդիմանութեամբ կ'անարգէ զիշխանս և զթագաւորս, կ'արհամարհէ զմեծատունս, և աղքատաց ու ռամկաց տէր կու կենայ։ Թէոփիլոս կ'ըսէր, թէ իմ վռընտածներս ընդուներ է, բանադրեալներս՝ արձակեր է, իմ երաւանցս խառնուեր է. —

1 Քաղկեդոնի (Գատըքէօյ) մէկ թաղն, ուր առջի անգամ Թէոփիլեանք ժողովեցան՝ Կաղնի կ'անուանէր։

տաքգլուխ Ղփտիք կ'ըսէին թէ Որիգինէսի պաշտ-
պան և հետեւող է.—Սաւերիանոսք և Սիմոնիոսք
կ'ըսէին՝ թէ Նոր Ճամբայ կուբանայ, մեզի չինմա-
նիր.—Նովատիանոսք, թէ մեղաւորներն անխտիր
սիրով կ'ընդունի, և այլն, և այլն։ Որոց թէ ստու-
թիւնն, թէ ծռութիւնն և թէ պատասխաններն
դիւրին և յայտնի են։

Բայց ես ոչ Յովհաննու վարքը կ'ուզեմ պատ-
մել քեզ, Հայկակ, ոչ զարդարն արդարացընել.
և ոչ այն Ոսկեբերան Խօսնակը՝ գովել ջանալ,
որոյ գովութեան համար արդարև միայն իրեն
նման լեզու կամ գրիչ արժանի է։ Սակայն մե-
զի՝ ազգային սրբազան իրաւունք է այս գիշեր
մեր հայրենեաց հանդիսից մէջ խառնել Կ.Պօլսի
հայրապետին յիշատակը. զոր այսօր (27 յու-
նուարի) տօնէն ամենայն ազգք (ըստ Յոյսմաւու-
րաց կարգի), որ է օր փոխադրութեան մարմնոյ
նորա յաթոռն։ — Ազգային իրաւունք մը. վասն
զի եթէ Ոսկեբերանի հայրենեացն պարծին՝ Ասո-
րիք, լեզուաւն և աթոռովն՝ Յոյնք, արդեամբք և
օգտիւն՝ ամենայն ազգք, Հայք՝ անոր աքսորանաց
վանատուրք և հիւրընկալք, անոր վերջին տարի-
ներուն կենակիցք, անոր յետին հանգստեան մար-
մնոյն սպասաւորք և պահապանք, աւելի զգայուն
և սխրալի պարծանք ունին Հայք։ Անոնցմով և
դեռ ուրիշ մասամբք այլ՝ մեր է Յովհան Ոսկե-
բերան առաւել քան թէ ուրիշ ազգաց. և յետ
Յունաց՝ հայադիր օրացուցակին մէջ աւելի ար-
ժանաւոր և իրաւացի տեղի ունի։ Անոր համար
թողլով իր առաջին կենաց կերպ կերպ յիշատակ-
ները, կ'ուզեմ մէկ երկու գիշեր քեզի հետ, Հայ-
կակ, նուիրել՝ Եկեղեցւոյ Խօսնակիս վերջին և
թաքուն կենացը՝ յանապատս Հայոց, ինչպէս ինքն
իսկ շատ հեղ կ'անուանէր իր թղթոց մէջ, (ուս-
կից պիտի քաղեմ այս առանձին կենաց դիպուած-

ները) զայն տեղն՝ ուր երեք վերջին և անգին տարիները չնչեց անմահահոտ Ոսկեբերանն: —

Դեռ Ոսկեբերանի հակառակորդքն իրենց անիրաւ ժողովոյ աթոռներէն չէին իջած, դեռ անոր գահուն վրայ նստելու՝ պնդերես անձ մը կու փնտըռէին, դեռ իր արդար պաշտպանքն և չարաչար զրկեալ հօտն և հովիւք, որբք և այրիք, աղքատք և ապաշխարողք՝ իրենց հովուապետն և հայրապետը կու լային. կէսք՝ իրեն հաւատարիմ մնացեալ եպիսկոպոսաց դիմելով, կէսք՝ մեծասիրտ և մեծահաւատ Ս. Ոլոմպիա տիկնոջ քով ողբալով, մինչդեռ Արկադէոս երկու մոքի և խղճի մէջ կու տատանէր. իսկ դժնիկ դշխոյն Եւդոքսիա՝ դեռ տպարանից պատշգամէն կու դիտէր զոլորտս Պրոպոնտոսի, որ չըլլայ թէ առջի անգամուն պէս յետ դառնայ աքսորատար նաւն, չըլլայ. թէ նորէն ժողովուրդն ովասննայով ընդառաջ դիմէ՝ զծով 'ի ցամաք փոխելով, չըլլայ թէ անգամ մ'այլ իր գոռոզ գլխուն վրայ կայծակնաթափ բացուի Բերանն-Ոսկի. — և ահա ասոր սուրբ աթոռէն, արքունի պալատան քովի եկեղեցւոյն միջէն, և ատենակալաց ապարանքէն դուրս պոռթկացին թանձր ծուխ ու կարմիր բոց մը, և իբր իրարու հետ կռուելով ուժգին և ահաւոր յերկինք 'ի վեր դիզուէին[1]: Ոչ ոք երկբայեցաւ թէ այդ կրակդ՝ արդարոյն անիրաւ դատապարտութեան վրէժն էր. սակայն ո՞վ էր զայն բռնկցընողը. — խնդիրն և վէճն այս եղաւ: Վրիժապարտք՝ շարունակելով իրենց լրբութիւնը՝ ըսին, թէ այդ այլ թէ ոչ ձեռօք Յովհաննու, գոնէ իր թելադրութեամբն է. իր սարկաւագու-

1 Խորեն. Գ. ԿԲ. «Ցայնմ ժամանակի...: շարժմանց » ահագնից և հրընկէցութիւն եղեալ 'ի Բիւզանդիոն, որ » յաղագս մեծին Յովհաննու »:

հի Ոլոմպիադայ և ուրիշ կուսակցաց գործոցն է. անոր շունչն է այս դժուարաշէջ հրդեհը բռընկ-ցընողն. Հալածուէ՛ խռովարարն, հեռացուէ՛ հրձիգն. Հեռո՛ւ, հեռու այս կողմէն։ Այս զըր-պարտութեան վրայ այլ վրդովեցաւ վշտացաւ բողոքեց արդէն զարնուած սիրտն, ինչպէս նաև յետոյ իր նամակաց մէջ այլ կու յայտնէ [1]։

## Ը

Հազիւ թէ հասած 'ի Նիկիա, իր բռնաբար տարագրութենէն, ծովուն վրայ ասպատակօրէն սահելէն, և կրքերէն քիչ մը դադրած, հան-գիստ կու փնտռէր՝ մարմնէն աւելի իր սրտին։ Միայնացեալ կ'երթար քննելու իր սուր մտօք և վառ հոգւոյն՝ այն յաւերժայիշատակ մեծ հան-դիսարանը, ուր ութսուն տարի առաջ՝ առաջին անգամ միաբան ժողովեր էին յամենայն կողմանց քրիստոնէութեան՝ անոր գլխաւոր առաջնորդք, 318 հայրապետք. որոց շատն պէս պէս հալա-ծանքներ, աքսոր, տանջանք և կտտանք քաշեր էին, և դեռ քաշեցին անկէ ետև այլ, յանուն և 'ի պաշտպանութիւն աստուածութեան Քրիստո-սի և Ճշմարտութեան աւետարանի նորա։ Ոսկի-բերան զինքն և աթոռն մոռցած՝ հիացմամբ կու պտըտէր այն վէհ, և (թէ կընայի ըսել՝) հսկա-հասակ հայրապետաց հանդիսին մէջ, փոխ առ փոխ խօսելով ընդ Ոսիոսի, Աղէքսանդրոսի, Մա-կարայ, Ղևոնդիոսի, Արիստակիսի, Յակոբայ Մծբնացւոյ, Աթանասի և այլոց հետ, ամենէն շնորհաւորութիւն և քաջալերութիւն լսելով. և թէ՝ իր մեծամեծ վաստակոց և սիրոյն պսակն՝

1 Թուղթ Է։

այս խուլ և խաւար աշխարհիս մէջ՝ պիտի ըլլար իրենցմէ շատին հանդիպածը. — զրպարտութիւն, հալածանք, աքսորանք, և... խոստովանողական մահ։..

Ո՞րչափ քաղցր էր Ոսկեբերանի՝ այսպիսի տեսլեանց մէջ յերկարել. և յետ այն Նախադաս հայրապետաց՝ տեսնել նաև երկրորդ գումարն այլ 150ից, որք դեռ քիչ տարի առաջ (յամին 381) իր գահանիստ մայրաքաղաքին մէջ ('ի Կ. Պոլիս) ժողովեցան, և որոց շատն աչօք իսկ տեսեր, և դեռ ոմանք ողջ այլ էին։ Անշուշտ անոնց մէջ կու փնտռէր և կու փարէր իր սիրելի և դրուատեալ Անտիոքայ հայրերը, զԲաբեղաս և զՄելիտոս, և իր գահուն նախորդները Մետրոփանէս, Աղէքսանդրոս, Գրիգոր Աստուածաբան. անշուշտ կ'ըսէր զմայլեալ միտքն, Բարւոք է ինձ աստ լինել ընդ սոսա... Երբ յանկարծ մեծ շշնկոց, դղրդիւն մը փրթաւ. տեսլարանին դըռներն գրեթէ խորտակեցան. պահապանք, գերեպանք, ջորեպանքներս թափեցան... «Շո՛ւտ շո՛ւտ,
» փութա՛, ելի՛ր, հեծի՛ր, արքունի հրաման է.
» պէտք է հեռացընենք քշենք տանինք զքեզ
» յաքսոր, յօտար, մինչև 'ի Կոկիսոս, մինչ 'ի
» Տաւրոս, մինչ յԱմանոս, մինչև 'ի ծայրս սահ-
» մանաց ինքնակալին»։ — «Փառք քեզ Աստուած,
» յաղագս ամենայնի», ըսաւ. և զնոյն ձայն կրկնէր, յեղ յեղէր քաղցրաձայն Խօսնակն Եկեղեցւոյ. և տալով զինքն 'ի ձեռս և 'ի կամս վարողացն և խնամոցն Աստուծոյ, կու քշուէր կ'երթար յաշխարհ հեռի, յանծանօթ Ճանապարհ։ Եօթանասուն օր չէն և անչէն տեղիք, լերինք և անտառք, գետք և քարաժայռք՝ զնոյն ձայն, զնոյն երգ՝ բիւր անգամ լսեցին, բիւր անգամ կրկնեցին. «Փառք քեզ Աստուած, փառք քեզ, յաղագս ամենայնի փառք քեզ»։

Երկու շաբաթ կեցեր էր Ոսկեբերան 'ի Նի-
կիա, ուսկից ելաւ յուլիսի չորսին։ Բիւթանիոյ
մայրաքաղաքէն մինչև 'ի Կեսարիա՝ 'ի մայրաքա-
ղաքն Ա. Հայոց և Կապադովկիոյ, յարևմտից
յարևելս հարաւոյ՝ գրեթէ 300 մղոն կ'ըլլայ․ իբ-
րև 25 օր մը քշեց այս ճամբան, որ 'ի սկզբան ա-
րահետ ըլլալով քիչ մը ամառնային տաքուն դէմ
այլ կրնար հանգիստ տալ[1]․ մանաւանդ որ պա-
հապանքն այլ հոս մարդասէր գտուեցան և շատ
չէին չարչըրկեր․ գուցէ չէին այլ կըրնար, ծանօթ
քաղաքաց և գեղից միջէն և սահմաններէն անցնե-
լով, ուր անդադար երթևեկ կար՝ արևելքէն դէպ
'ի Կ. Պօլիս կամ անկէ հոն․ և ուր որ հասնէին՝
համբաւն աւելի առաջ հասած գտնէին։ Շատ լաւ
կու ճանաչէին այն կողմերն այլ զՈսկեբերան, ո-
րոյ և գերագոյն հովուապետութեան վիճակ էին,
և իրեն արժանաւորապէս կարեկցէին․ ոչ տեղա-
ցիք միայն այլ և հեռաւոր եկք․ ինչպէս ինքնին
Ս. հայրապետն վկայէ մէկ թղթին մէջ[2], առ
Ոլոմպիադա, և յանուանէ միայն զՀայս յիշէ, թէ
« յարևելքէ և 'ի Հայոց և ուրիշ կողմերէ՝ ճամ-
» բու վրայ հանդիպողքն՝ զմեզ տեսնելով աղբե-
» րաբար արցունք կու թափեն, լալով ու հեծ-
» կըլտանօք ետևնուս կու գան, մեզմէ չեն բաժ-
» նուիր։ Այս բանս անոր համար կ'ըսեմ՝ որ
» գիտնաս թէ հոս այլ շատեր կան, որ նոյն ցա-
» ւով վշտակից կ'ըլլան ինծի՝ ինչպէս դուք հոն »։
» Ուրիշ թղթով մ'այլ․ « Երբոր կու տեսնեմ որ
» զանազան քաղաքներէ և բնակութիւններէ
» դուրս թափելով բազմութիւն արանց և կա-
» նանց՝ կու լան կ'ողբան մեր վրայ, ձեր ցաւը կու
» յիշեմ, թէ որքան սաստիկ պիտի ըլլայ, երբ
» հոս զմեզ առաջին անգամ տեսողքն իսկ այսչափ

1 Թուղթ Ժ։ 2 Թուղթ Ը։

» կու տրամին, և որչափ աղաչենք ու պաղատինք » որ չհոգան զմեզ՝ անոնք այլ աւելի խեղճ կ'ընեն կու լան ». և այլն: Ոսկիբերան այս խօսքերով կ'ուզէր իր ազնիւ սարկաւագուհին և հաւատարիմ աշկերտները մխիթարել. բայց թերևս աւանց ուզելուն՝ կ'իմացընէ մեզի, թէ ի՛նչ աստիճանի մեծ էր իր համբաւն, արժանիքն, և հրաշալի ու գթաշարժ կերպն, որ այսպէս անցած տեղերը յոտք և 'ի գութ կու հանէր:

Հոս պէտք է յիշել, որ իր երկայն և կրկին ճանապարհորդութեանց մէջ՝ թէ և շատ հեղ այսպէս 'ի տեսողաց կարեկցութիւն գտաւ, բայց ոչ միշտ և 'ի պահապանացն. ոչ այլ դիւրութիւն ճանապարհի. այլ ամեն կերպ նեղութիւն և զրկմունք և վախ, ցաւ և հիւանդութիւն, տաքէն և ցրտէն տագնապ: Մանաւանդ որ բնութեամբ այլ փափուկ և տկար կազմուածով էր: Իր մեծ և վառ հոգւոյն արտաքին պատեանն՝ շատ անհաւասար և փոքր էր. տարիքն այլ արդէն (ըստ ոմանց) վաթսունը լցած, մազերն թափթըփած, ստամոքսն աւեր. շատ դարմանոյ և խնամոց կարօտ: Որոց փոխան՝ այնպիսի չարակրութիւն մը պատրաստեցաւ իրեն, որոյ հազիւ թէ զօրաւոր մարդիկ կարենային համբերել: Եւ սակայն ինքն ուրախ զուարթ՝ իր երգն 'ի բերան կ'երթար. և բաւական այլ դեռ ուժով և առողջ էր 'ի սկըզբան: Իսկ իրեն մխիթար և օգնական ընկեր ունէր քանի մը եկեղեցական պաշտօնեայ, որք Կ. Պօլսէն հետն եկեր էին, չկարենալով զատուիլ իրմէ. և աւելի կու մխիթարուէին անոր ընկեր և վշտակից ըլլալնուն, քան թերևս կու մխիթարէին զնա: Իր մէկ մեծ մխիթարութիւնն այլ էր (որպէս և ամենայն աքսորելոց և վտարելոց, եթէ այս բաղդս ունենան) բարեկամաց հետ թղթակըցիլն. պանդխտութեան երեք տարուան մէջ

դրուածներէն՝ մօտիկ 250ի չափ նամակ և ճառ ձե-ռագրնիս հասած են, առ զանազան անձինս, հե-ռաւորս և մերձաւորս, սկսեալ յՈղումպիադայ մինչև առ Ս. Քահանայապետն Իննովկենտիոս. այս նամակներէն շատն, մանաւանդ առաջինքն, Ոսկեբերանի ընտիր գործոց կարգը կու գրուին: Ոչ միայն աքսորանաց տեղէն, այլ և ճամբուն իջևաններէն կու գրէր, և երբեմն կ'ընդունէր այլ: Իբրև հասարակ մահկանացու և ընկերական անձ մը՝ այն մեծ սիրտն այլ կու կարօտէր մտեր-մաց գրուցին, բարեկամական խօսքի և մխիթա-րութեան. անոր համար սաստիկ կ'աղաչէ Թղթոցը մէջ՝ որ անպակաս գրեն իրեն, և մեծ պարգև կու սեպէ անոնց նամակը. կու մխիթարէ և քաջա-լերէ բարեկամները, և գեղեցիկ ու հաստա-տուն և երբեմն երկայն խրատներով զմեզ անգամ կու լուսաւորէ:

Ո՛հ. չխղխմանար սիրտ, երբ այն ցաւագարն մարմնով անանկ դժնդակ տեղուանք և տեսններ կրածները նկարագրէ, թէ և ջանացած է յայսմ մասին շատ չըսել, որ իր սիրելիները չտխրեցընէ. սակայն բաւականէն այլ աւելի են մեզի թէ ցա-ւերը ճանչնալու, և թէ անոնցմէ աւելի՝ սէրն, որով իր ցաւերը մոռցած՝ կու ջանայ սիրտ տալ անոնց՝ առ որս կու գրէ: — Անոնցմէ մէկն է Արա-բիոս մը, որ յանձնարարութեան թղթեր տուեր և գրեր էր՝ որ եթէ 'ի Սեբաստիա երթայ՝ իր տու-նը հանդիպի և հանգչի տիրոջ պէս: Սուրբն շնոր-հակալ կ'ըլլայ, այլ և կ'իմացընէ[1] որ թշնամիքն չթողլին որ երթայ հոն՝ 'ի մայրաքաղաքն Բ Հայոց. վասն զի Եւդոքսիա ուզեց որ աւելի հեռու քշուի, 'ի Կուկիւսոն. և կ'աղաչէ սուրբն որ եթէ հոս այլ ծանօթ ունի՝ գրէ անոնց այլ յանձնարարու-թեան թղթեր:

1 Թուղթ ՃԼԵ:

## Թ

Թղթակցաց մէջ առաջին և սիրելագոյն անձն, և արժանաւոր Ոսկիբերանի սուրբ սիրելութեն է՝ շատ հեղ յիշածս Ողումպիադա. զոր և հարկ է քիչ մ'աւելի ծանօթացընել քեզ, Հայկակ: Մեր պատմութեան մէջ միւսքդ կու գայ Բ Արշակ Թագաւորին ունեցած ասոր համանուն դըշխոյն, (և երանի՛ թէ բոլոր պատմութիւնն չգար 'ի միտս, այլ և ըլլէր ամեն յիշատակէ). կայսերական ցե-ղէ կին, և երբեմն ամուսնացած ընդ Կոստանդեայ կայսերազն, յետոյ մեր չուառ Թագաւորին. ա-սոր ազգական, և ոմանք ինչուան դուստր այլ կարծեցին այս կրսեր Ողոմպիադայն, (ծնած իբր յամի 368), 'ի հօրէ Անիսիոսէ, և 16 տարուան հարսնացած Ներբրիտիոսի իշխանի. ուսկից յետ 20 ամսու այրի մնալով, չուզեց անկէ ետև աշ-խարհի երես տեսնել. Թէպէտ և կայսրն, մեծա-մեծ իշխանք, մանաւանդ Ելպիդիոս Սպանիացի իշխանին և խնամին կայսեր՝ շատ ջանային որ ասոր կին ըլլալ. և այս բանիս համար՝ առաքինակրօն և մանկամարդ այրւոյն ինչքը գրաւեցին (որ ան-բաւ շատ էին): Սակայն նա հաստատ մնաց իր առաքինի կամաց մէջ, բարեպաշտութեան գոր-ծերով մխիթարուելով ամենայն զրկմանց վրայ. մինչև յուսահատեցան բռնադատողքն՝ իր գեղեց-կութիւնը և սիրտը յափշտակելու, զոր բոլորո-վին նուիրեր էր Աստուծոյ: Պատրիարքն Նեկ-տառիոս օրհնեց զնա Սարկաւագուհի. որով՝ երբ իր ստացուածոցն այլ ազատ մատակարարու-թիւնը դարձուցին իրեն, եղաւ կրկնակի մայր աղքատաց և տառապելոց. ստակով այլ սրտով այլ խնամելով զանոնք, և զամեն կարօտ անձեր, և մանաւանդ եկեղեցական և եկեղեցի, ինչուան



ՎԱՐԴԱՆ ՓԻԼԻԿ ԿԱՅՍՐ

հեռաւոր կողմեր: Իրաւ քիչ տիկին այնչափ հա-
րըստութիւն ունեցած է, բայց աւելի քիչք զա-
նոնք այնպէս օգտակար ըրած են. վասն զի քի-
չեր այլ՝ իր բնականէն աւելի մտաւոր ձիրքն ու-
նեցեր են. մեծ և տաք հաւատք, զգաստութիւն
և խոհեմութիւն. որով չէ թէ լոկ հասարակ ժո-
ղովրդեան, կամ իշխանաց և արքունեաց միայն,
այլ և իմաստուն և սուրբ եպիսկոպոսաց քով
մեծ յարգ մեծ պատիւ ունեցաւ:

Ս. Գրիգոր Նազիանզացի, Ս. Գրիգոր Նիւսա-
ցի, Ամփիլոքոս, և այլք, իրեն ընծայած են ի-
րենց գեղեցիկ գրուածներէն ոմանք. Ս. Եպի-
փան, Մարութա, Թէոփիլոս, Ակակ, Սեբերիա-
նոս, և այլն, իրմէ ողորմութիւն կամ օգնութիւն
գտած են: Բայց իր ամենէն մեծ պարծանքը կըր-
նանք սեպել մեր Ս. Ոսկիբերանին մտերմու-
թիւնն, յարգն, խնամքն և թղթակցութիւնն. և
թերևս ասոնցմէ աւելի այլ՝ իր վշտակցութիւնն
անոր համար և անոր հետ: Վասն զի յետ աքսո-
րանաց Խօսնակին՝ հալածեցին այս իրեն զմայլած
ունկընդիրն այլ, և շատ նեղութիւն հասուցին,
որոց կու ջանար հեռուէն իր անապատէն այլ
քաջալեր տալ Ոսկիբերան. իսկ յետ իր մահուն՝
շատ երկար չդիմանալով այս ողջախոհ տատրակս
այլ, կնքեց իր մաքուր կեանքը (յամի 410), և
դասեցաւ ընդ սուրբս, յիշեալ 'ի Յունաց և 'ի
Լատինաց:

Ահա այս սրբուհւոյս՝ և իր եկեղեցւոյ սարկա-
ւագուհւոյն է՝ որ Ոսկիբերան այս առաջին ճա-
նապարհորդութեան մէջ այլ զանազան թղթեր
գրած է. և որոց մէկուն մէջ, (կ'երևի թէ ար-
քունի դիւր ճամբէն դառնալով դէպ 'ի հարաւ,
'ի Կեսարիա երթալու ատեն) կրած դժարու-
թիւնները կու յիշէ[1]. «Տեսած լսած բանս չէր.

1 Թուղթ ԺԱ:

» ժայռեր և ջրի տակ ծածկուած քարեր. մրրիկք
» և փոթորիկք թնդալով կ'որոտան. գիշեր ան-
» լուսնկայ, թանձր մէգ, գահավէժք և քարա-
» ժեռք. և սակայն աստնկ ծովու մէջ նաւելով
» նաւահանգիստը կեցողներէն պակաս հանգիստ
» չեմք»: Կ'աւելցընէ այլ թէ մարմնով առողջ
եմ, սրտիւ զուարթ, պահապան զինուորք այլ
ձեռքերնին եկած խնամքը կ'ընեն. «ուստի զա-
» ստնք գտնալով, դու այլ տիկին իմ բարեպաշտ-
» ուհի, յաղթէ այս մրրկաց և ալեաց. և քու
» առողջութեանդ վրայ ապահովէ զիս, կ'աղա-
» չեմ»: Ուրիշ թղթոց մէջ[1] առ սա ինքն և առ
ուրիշ բարեպաշտ տիկին մը (Թէոդորա)՝ մնա-
ցեալ Ճամբուն մէջ քաշած հիւանդութիւնը և
չարչարանքը կու յիշէ. «Հալեցանք, մաշեցանք,
» հազար կերպ մահուամբ մեռնելու մօտեցանք...
» մէկ կողմէն անդադար տենդով կու տանջուէի.
» մէկ այլ կողմէ գիշեր ցորեկ հարկ էր Ճամբայ
» ընել. ցորեկը՝ արևուն տօթէն, գիշերը՝ աքնու-
» թենէն տանջանք. հարկաւոր եղած բաներ
» չկան, զիս հոգացողներն՝ աղքատ. բանտարգե-
» լոցմէ պակաս չէր քաշածներս... ոչ հաց գը-
» տուէր և ոչ աղէկ ջուր Ճամբուն վրայ... վեր-
» ջապէս հիւանդագին հասայ 'ի Կեսարիա՝ իբրև
» ալէկոծեալ նաւ մը, և հոն այլ մէկէն չհան-
» գըստացայ. ինչուան որ Ճարտար բժշկաց խնա-
» մօք, բայց աւելի անոնց կարեկցութեամբը՝ քան
» թէ դեղերով բըընտցայ:... Փառք Աստուծոյ յա-
» ղագս ամենայնի: Այս խօսքս ինծի ամեն հանդի-
» պած դիպուածոց մէջ չեմ կրնար զանց ընել.
» և ոչ ոք զայս յինէն կրնայ յափշտակել:... Շատ
» բան կար ըսելու (առ Թէոդորա գրելով), բայց
» չեմ ուզեր սիրտդ խռովել. թող լռենք. բայց

1 Թուղթ ԺԲ. ՃԻ:

» միայն այս մէկս այլ ըսեմ... որ այնքան ձոխ և
» հզօր բարեկամներ ունենալով՝ այլ՝ չկրցանք
» արժանի ըլլալ այն շնորհաց՝ որ չարագործաց
» անգամ կու շնորհուի. այսինքն, քիչ մը մօտիկ
» և բարեխառն օդով տեղ մը բնակելու. այլ և
» այսչափ չարչըրկած ու ցաւագար մարմին ունե-
» նալով, և Իսաւրացւոց (աւազակաց) վախով
» չորս դին պատած ըլլալով, այս պզտիկ ու չնչին
» շնորհքէն այլ զրկուեցանք: Ասոր համար այլ
» փառք Աստուծոյ. և ոչ երբեք դադրինք յամե-
» նայնի փառս տալ Աստուծոյ. Եղիցի անուն
» Տեառն օրհնեալ յաւիտեան »: — Անցողաբար
յիշեմ, որ այս Թղթիս մէջ կ'ըսէ Ոսկիբերան առ
Թէոդորա, թէ այս չորրորդ կամ հինգերորդ
թուղթն է որ կու գրէ առ նա. անկէց աւելին այլ
գրած է առ Ողոմպիադա, և առ այլս. որոնք յայտ-
նի կ'երևի իր վառվռուն միտքն, տաք սիրտն և
անդադար մատներն, որք այնքան հազարաւոր
ճառեր արտադրեցին: Ոչ քարաժայռք ճանա-
պարհին և ոչ անհարթութիւնք օդոց, ոչ իսկ
հիւանդութիւնք կրնային յոգնեցընել, լռեցընել,
դադրեցընել այն անխոնջ Խօսնակը:

ժ

Ճամբէն աւելի եռօրեայ ջերմին տաքէն տկա-
րացած՝ հազիւ կրցաւ Ոսկիբերան զինքը ձգել 'ի
Կեսարիա մայրաքաղաք[1]. և անոր մէկ անծանօթ
թաղին մէջ յանկողին ընկած՝ բժիշկ և դարման
փնտռել, զոր դիւրաւ չգտաւ 'ի սկզբան. բայց
յետոյ ոչ միայն բժիշկք, այլ բոլոր քաղքին
կղերն, միանձունք և միանձնուհիք, ամենայն բա-
րեպաշտ անձինք՝ իբրև ուխտի դիմեցին իրեն, և

1 Թուղթ ժ'ի:

մէկմէկէ յափշտակել կ'ուզէին իրեն ծառայելու պատիւը։ Միայն, կ'ամաչեմ ըսել, միայն անոնց առաջնորդն և հովիւն՝ Փարետրիոս արքեպիսկոպոսն՝ ոչ երևեցաւ Յովհաննու և ոչ այլ կ'ուզէր տեսնել. կամ թէ չէր այլ կրնար, նախանձով և հակառակութեամբ կուրացեալ. ինչպէս իրմէ առաջ կարծուի որ Անկիւրիոյ արքեպիսկոպոսն այլ նոյն կրքով բռնուած, ինչուան մահուան ըսպառնալեօք կու վռնտէր զՍուրբն՝ իր թեմէն. բայց ինքն շուտով մեռաւ։ Ոսկիբերան առաջուց կու գուշակէր հօս այլ ըլլալիքը, թէ և ճամբան միամիտ անձինք իրեն աւետիս կու տային թէ Կեսարիոյ արքեպիսկոպոսն կու սպասէ քեզի. իսկ ինքն մինչ քիչ մը հիւանդութենէն ըրնտանալով կու մտածէր շուտով հեռանալու անկէ, յանկարծ քաղքին դռներն ու ճամբաներն գոցուեցան։ Իսաւրացիք անակնկալ յարձակմունք մ'ըրին Մաժակայ (Կեսարիոյ) սահմանները. քաղքին զօրապետն զօրքերովը դուրս ելաւ անոնց դէմ, բնակչաց թողլով քաղաքը պաշտպանել։ Երկրորդ առաւօտ Ոսկիբերան իր բնակած տունը պաշարուած տեսաւ. բայց զարմա՜նք, ոչ յԻսաւրացոց՝ այլ արքեպիսկոպոսէն գրգռեալ միանձանց գնդով, որք կու սպառնային տունը այրել՝ թէ ոչ շուտով ելնէ երթայ. և այնպէս գլուխնին տաքցեր էր՝ որ քաղաքապետին զինուորաց անգամ վախ կու ձգէին և կու ծեծէին, և ոչ իսկ քաղաքապետէն պատկառէին։ Սա չկարենալով անոնց խօսք հասկըցընել, մարդ ղրկեց առ Փարետրիոս որ թող տայ խեղճ հիւանդին հանգչիլ՝ ինչուան որ քիչ մը վրայ դնէ և ճամբաները բացուին։ Ճար չեղաւ համոզել. երրորդ օրը այլ աւելի սաստկութեամբ կու ստիպէին, կու վռնտէին սուրբ պատրիարքը. որ ջերմին և կէսօրուան տաքութեան ատեն՝ հազիւ կրնալով զինքը պատգարակի մէջ

ձգել, հանել տուաւ քաղքէն. մինչդեռ բազմութիւն քաղաքացեաց շուարած կու լային, և քանի մը քահանայք ամչնալով և հառաչելով ետևէն կ'երթային. և այրած սրտով «Աւելի լաւ է, կ'ը-
» սէին, որ Խաւրացոց ձեռք ընկնիս, քան մերոնց
» պէս մարդատեցից մէջ մնաս»: Ռուփինոս պաշտօնէին բարեպաշտ այրին Սելևկիա՝ աղաչեց, և տանել տուաւ զՍուրբն իր գեղի տունը, որ չորս հինգ մղոն հեռի էր քաղքէն: Անարժան հօտապետին նախանձն՝ ասով այլ դոհ չեղաւ. այլ այնքան սպառնացաւ վախցուց բարի տիկինը, որ ակամայ և լալով ստիպեցաւ իր հիւրը հեռացընել. սակայն գեղեցիկ և ազնիւ խորագիտութք ձևացընել տուաւ՝ թէ բարբարոսներուն վախէն է:

Կէս գիշեր էր. հանդարտ և կարօտած քուն մը կու քաշէր Ոսկիբերան, երբ յանկարծ իր ընկեր քահանայն (Եւեթիոս) խթելով արթընցուց, Բարբարոսք կու գան, փախչինք, ըսելով: «Անլու-
» սնկայ, մառախլապատ, տխուր կէս գիշեր էր,
» կ'ըսէ ինքն Ոսկիբերան, որ զմեզ մեծ տարա-
» կուսի մէջ կու ձգէր. ոչ խորհուրդ տուող կար
» և ոչ ձեռք տուող. ամենքն զմեզ թողեր էին.
» զարհուրած, և գրեթէ մահուան սպասելով
» հիւանդագին անձամբ ելայ և ջահերը վառել
» տուի. բայց երեցս մարել տուաւ, որ չըլլայ
» թէ լոյսը տեսնելով բարբարոսք վրանիս յար-
» ձըկին: Ուրեմն ջահերը մարած ընկանք ճամ-
» բայ, որ սաստիկ քարոտ և խորտուբորտ էր.
» անանկ որ պատգարակս կրող ջորին զարնուե-
» լով ընկաւ, դեսպակն այլ զիս այլ անանկ գլո-
» րեց, որ կարծէի թէ այլ պիտի չելնեմ. հազիւ
» ոտք ելայ, և սկսայ կամաց քայլել՝ օգնութեամբ
» Եւեթիոսի, որ ինքն այլ ձիէն ընկած՝ թևս կու
» բռնէր. և այսպէս ուրիշի ձեռքով առաջնորդած
» կամ քաշքըշած՝ այն դժուարին տեղւոյն վրան-

» գաւոր լերանց մէջ կէս գիշերուան ատեն կու » խարխափէի ։ Մտածէ թէ ի՛նչ կու կրէի ցաւերէս, ջերմին տագնապէն, և եղածը չգիտնալով » կարծելով թէ հիմայ հիմայ այն ահաւոր բարբարոսաց ձեռքը պիտի ընկնիմք ։ Կարծեմ թէ » միայն այս ատեն քաշած տառապանքս՝ բաւական էին շատ մը մեղքերս քաւելու և ինծի վարձք » պատրաստելու » ։ Ցետոյ իմացաւ և կ'իմացընէ Ոսկիբերան, որ այս ամեն բանի պատճառ նախանձն է եղեր, այն՝ որ զինքն հալածեց 'ի Կ. Պօլսոյ, և հիմայ այլ 'ի Կեսարիոյ. անոր համար ցաւագին և այրած սրտիւ կ'աւելցընէ խօսք մը, զոր ես այլ դողալով կ'արտաբերեմ. թէ ո՛չ յԻսաւրացւո՛ց « և ոչ յայլմէ ումեքէ այնպէս երկնչիմ ես՝ » որպէս յեպիսկոպոսաց, բաց 'ի սակաւուց ոմանց » ։ Այսպէս ծանրակշիռ են գործք անոնց՝ զորս երկինք և երկիր կու ճանչնան այցելու, հովիւ և հայր ժողովրդեան ։ . . .

Այս տառապագին և դժնդակ ուղևորութիւնն՝ պատճառաւ իր հիւանդութեանն, անդադար ջերմին, արշաւանաց բարբարոսաց (որ սովորական ճամբաները բռնած էին), շատ ծանր և երկար եղաւ. գրեթէ ամիս մը և աւելի. իսկ Պօլսէ ելնելէն 'ի վեր 70 օր, մինչև հասաւ Ոսկիբերան իր աքսորանաց սահմանեալ տեղը, 'ի Կուկուսոն. որոյ անուանէն անգամ կու սոսկար և կու փափագէր ուրիշ տեղ մը քշուիլ. բայց ատոր համար այլ գոհացաւ ըսաւ՝ Փառք քեզ Աստուած յաղագս ամենայնի ։

# ԺԱ

Կոկիւսոն՝ ուր իրեք տարւոյ մօտ պանդխտեցաւ Ոսկեբերան, և ուսկից գրեց հարիւրաւոր նամակներ, իրեն համար էր ամայագոյն, անապատագոյն վայր համօրէն աշխարհի[1]: Վասն որոյ պատշաճ է մեզի այլ ծանօթանալ այս տեղւոյս. Թէ և 'ի սկզբանէ անտի մինչև հիմայ այլ խիստ քիչ ծանօթ մնալով աշխարհագրաց և ուղևորաց, անգամ մ'այլ կ'արդարացընէ իր ամենէն մեծ տարաբնակ պանդխտին վկայութիւնը:

Հին Գամրաց կամ Կապպադովկիոյ, Կիւլիկիոյ, Կոմագէնիոյ (կամ Եփրատացւոց) և Գ և Բ Հայոց միջասահման՝ փոքր աշխարհ մը կար հին ատեն, Կատաոնիա ըսուած, զոր ոմանք Կապպադովկիոյ մասն անուանեցին, այլք (ինչպէս Պտղոմէոս) Փոքր Հայոց. միջին դարու մէջ՝ մերթս Ջահան աշխարհ կամ երկիր կ'անուանեն այս տեղս, յանուն Ջահան կամ Ճիհան (որ և Պիւռամիս) գետոյ, որ կու բղխէ 'ի զանազան կողմանց լերանցն: Լերինքն են՝ յարևմտից և հիւսիսոյ՝ Անտիտաւրոս, 'ի հարաւոյ՝ Ամանոս, իսկ յարևելից՝ այն լեռներն՝ որ Եփրատայ ջրերը կու զատեն 'ի Ջահանայ, զսա 'ի Միջերկրական ծով իջեցընելով, զնա՝ յարևելս ղրկելով մինչև 'ի Ծոցն Պարսից: Այս զանազան լեռներէն շրջապատեալ երկիրն՝ 'ի հարկէ կու ձևացընէ լեռնադաշտ կամ մեծ լեռնահովիտ մը, ինչպէս կ'անուանէ այլ զսա հին աշխարհագիրն Ստրաբոն. և է շատ ընդարձակ. հիմայ Ալպոսթանի կամ Էլպոսթանի (որ և Ապլաստան) գաւառն, և Փաշանկա-օղլու դաշտն. որոց

1 Թուղթ ՁԵ. ՃԹ. և այլն: Εν Κουκουσῷ καθήμενοι τῷ πασης τῆς καθ' ἡμας οἰκουμενης ἐρημότατω χωρίω.

հարաւակողմը Ալպօստան՝ կամ մեր Ջահան քաղաքէն վար՝ կու միանան երեք գլխաւոր գետակք, ժողովելով լեռնահովտին ջրերը, և միանալով կու ձևացընեն զգետն մեծ Ջահան, որ անկից կ'իջնէ 'ի Մարաշ, և կու մտնէ 'ի Կիլիկիա, երթալով յԱնարզաբա և Մսիս, թափիլ 'ի Ծոցն Հայոց (հիմայ՝ Իսքէնտէրունի ծոց)։ Այս երեք գետակաց արևմտագոյն և հարաւագոյնն է Կօկիսոնի գետն (Կէօքսուն-սու). որոյ եզերքն է շինած մեր հետաքննելի տեղին, ընդ մէջ Հաճնայ և Խօզանօղլուի լերանց՝ յարևմտից, Ջահանայ՝ յարևելից, և Ուլնեայ կամ Զէյթունի՝ որ կայ 'ի հարաւոյ։ Ցանուանէ գետակին և ուրիշ նշանաց կու հաւատի՝ որ աստ ընիկ հովիտն կամ վիճակն է Կոկոյ գաւառն յիշեալ 'ի մերոց պատմչաց միջին դարու, որոյ գլխաւոր շէնքն կամ քաղաքն՝ անշուշտ համանունապէս Կոկաց քաղաք կամ Կոկս կոչէր ըստ սովորութեան Հայոց (որպէս Կարս՝ Կարուց քաղաք), զոր Յոյնք և Լատինք փոխեցին 'ի Գուգուսոսոս, յետոյ և Հայք 'ի Կոկիսոն, յորմէ ցարդ և այլազգիք Կէօքսուն կամ Կէօքսուն կոչեն։ — Կոկիսոն՝ զոր Յոյնք միշտ քաղաք Հայոց կոչեն, և 'ի գիրս մեր կոչուած է նաև քաղաք Հայոց Ծծաց, հիմայ երեսէ ընկած աւան մը կ'երևի 2–300 տաճկաբնակ տնով, որոց հետ չեն յիշուիր մերազգիք, այլ անոր մօտերը երեք գիւղից մէջ։ Տեղւոյն գիրքն ինքնին կու կրկնէ Ոսկիբերանի ըսածները. ամառը բաւական տաք պիտի ըլլայ, լայնութեան 38 աստիճանին տակ ըլլալով, իսկ ձմեռը՝ անհնարին ցուրտ, թէ բնական յատակին բարձրութեամբ և թէ բարձր ու ձիւնապատ լերանց մերձաւորութեամբ. որք չէ թէ միայն երկայն շարք մը կու ձևացընեն արևմտից կողմէն, այլ և ոմանք

1 Թուղթ ԺԴ։

ցրուած կանգնին դաշտին մէջ. և անով այլ աւելի վայրենի և դժնդակ կերպարանք մը կու տան, և Ճամբայ ընելու դժուարութիւն: Ուստի ոչ այնքան բնակութեան և առևտրի յարմար՝ որքան ամրութեան և պահպանութեան տեղ մը կրնար ըլլալ: Այնպէս այլ ըրեր էին սրատես շահադէտ Հռովմայեցիք. բերդով ամրացընելով և պահապան գունդ մը դնելով հոն: Այսպիսի ամրութեամբ, դժարութեամբ, և հեռաւորութեամբ, ('ի սահմանածայր Յունաց, Հայոց և Ասորւոց), աքսորանաց այլ յարմար տեղ սեպուեցաւ. ինչպէս և 70 տարի յետ Ոսկիբերանի՝ Զենոն Իսաւրացի կայսրն իր հակառակորդ Բասիլիսկոսը տրնով տեղով հոս աշտարակի մը մէջ փակեց, սովամահ ըրաւ:

Քիչ շատ լսեր և գիտէր Ոսկիբերան իր արգելանաց անմխիթար դիրքը. սակայն երբ յետ ամսօրեայ տառապանաց որ 'ի Կեսարիոյ սկսեալ՝ հասաւ հոս, և գտնէ հալածողներէն ազատած՝ ընկաւ իր առանձնութեան տնակը և յանկողին, և սկսաւ շունչ առնուլ ողջանալ, ու Իսաւրացւոց այլ ետ քաշուելովն՝ վախն այլ փարատեցաւ, առջի կարծածին չափ տխուր և ահարկու չերեցաւ Կուկիւսոն. «Ինչո՞ւ համար կու տրտմիս, կ'ըսէ առ Ողոմպիադա, այս տեղւոյս ամայութեան վրայ... Թէպէտ և ոչ հրապարակ ունի այս քաղաքս, ոչ վաճառանոց, բայց ինծի ի՞նչ փոյթ են ասոնք. ինծի հարկաւոր եղածն առատապէս կու գտնեմ, (հիւրընկալաց Ճարտարելովը): Նոյնպէս ուրիշ գրի մէջ այլ կ'ըսէ, թէ երբ 'ի Կուկիսոն հասայ՝ սկսայ անամպ երկինք տեսնել, մաքուր օդ ծծել. հիւանդութիւնս փարատեցաւ. և ամեն կողմէ սկսան հարկաւոր եղածքն տեղալ՝ բարերարաց յօժար կամքով.

Այս բարերարաց մէկ գլխաւորն էր Հայա-

տանի այս մասին նախարարն կամ կողմնակալն՝ Սոպատրոս անուամբ[1], որ հայրաբար կու խնամէր իր իշխանութեան տակ եղածները. Ոսկեբերան գովութեամբ և շնորհակալութեամբ կու յիշէ զնա. և անոր մէկ որդին՝ որ հոն էր՝ ուսմանց հետևէ եղած, կու յանձնէ իր բարեկամ Կիւրակոս եպիսկոպոսին խնամոց: — Մէկ բարերար և խնամածուն այլ էր տեղւոյն եպիսկոպոսն, որ յայլոց կոչուի Ադելփիոս (Եղբայր), որ նախ Արաբացւոց եպիսկոպոս էր, կ'ըսեն. և պատկառելով յարժանապատիւ պատրիարքէն՝ ուզեց անոր թողուլ իր աթոռը, զոր 'ի հարկէ յանձն չառաւ Սուրբն, Որոշեալ սահմանէն անդին չանցնինք[2], ըսելով. այլ ըստ պատշաճին՝ վարդապետութեան պաշտօնը կամ արուեստը կատարէր:

## ԺԲ

Ասոնցմէ և ամենէն աւելի մտերիմ և ձեռնտու եղաւ Դիոսկորոս[3], զոր Տէրն իմ կոչէ Ոսկեբերան, որ շատ հեղ եպիսկոպոսաց կու տայ այս տիրական անունը. և մենք ուրիշ վաւերական աւանդութենէ այլ գիտենք որ նա մեր ազգէն էր՝ եպիսկոպոս և վարդապետ Հայոց այն կողմերուն, և ինչպէս Ոսկեբերանի և Շնորհալւոյ յիշատակէն տան գուշակել՝ ազնուազգի, այլ և Պահլաւունեաց տոհմէն: Ցեղէն աւելի մեծահոգի և տաքսիրտ ըլլալով երբ լսեց թէ Խօսնակն եկեղեցւոյ իր սահմանաց մէջ պիտի պանդխտի, ուրախութեամբ և մեծարանօք մարդ խաւրեց մինչև 'ի Կեսարիա, (մինչդեռ հոն էր Սուրբն) և հրաւիրեց իր տունը. Սուրբն այլ մեծարեց զնա և յանձն առաւ

1 Թուղթ ԿԴ:
2 Թուղթ ՃԻԵ:
3 Թուղթ ԺԳ. ԺԴ:

խնդիրքը, Թողլով ուրիշներուն հրաւէրքը. և երբ եկաւ 'ի Կոկիւսոն՝[1] պատրաստ գտաւ Դիոսկորեայ տունը՝ ամենայն կարեւորօք, ըստ կարելւոյն. զոր բաւական չսեպելով տանուտէրն՝ բոլոր. իսկ տունը Թողուց Ոսկիբերանի պիտոյից և հանգըստեան, ինքն իր գեղի տունը քաշուելով. և տանը վերակացուին պատուիրելով՝ որ ամեն կարելի դիւրութեան հնարք ընէ, հանգչեցընէ իր արժանապատիւ հիւրը: Ասոր նախանձելով ուրիշ շատեր այլ՝ մեկմեկէ աւելի կու ջանային ծառայութիւն մ'ընել Ոսկիբերանի:

Անոնց մէջ գովութեամբ կու յիշէ սարկաւագուհի մ'այլ՝ Սաբինիանա (Զաւենա?)[2] անուամբ, որ տարիքն առած և շատ այլ տկար ու հիւանդոտ էր. սակայն նոյն իսկ Ոսկիբերանի հոն հասած օրը՝ եկաւ իրեն այցելութե̅, թէ և հազիւ կընար քայլել. բայց երիտասարդի պէս աշխոյժ և զուարթ կու խօսէր, և կ'ըսէր Ս. հայրապետին. Եթէ զքեզ Սկիւթացւոց աշխարհն այլ քշելու ըլլային, ինչպէս որ կ'ըսէին, ինչուան հոն այլ կու գայի քեզի: — Ազնիւ պառաւ, որքան տարբեր յԵւդոքսիայ սրտէն: — Գուցէ մերազգի էր և այն բարեպաշտ և ազնիւ Հրահատ, ինչպէս կ'ըսէ Ոսկիբերան (Աֆրաատ կոչելով) որ Դիոգենէս անուամբ մեծի մը կողմանէ ընծաներ բերեր էր առ Սուրբն, և երբ սա չէր ուզեր զամենն այլ ընդունիլ, Հրահատ յանձն չէր առնուր հեռանալ անկէ, և ոչ իսկ սրբոյն նամակը տանիլ, ինչուան որ բոլոր բերածները չընդունի. «այնպէս ինծի հետ » կապուեցաւ», կ'ըսէ Ոսկիբերան. և կ'աղաչէ զԴիոգենէս որ այն պարգևները ղրկուին 'ի Փիւնիկէ 'ի պէտս նոր հաւատացելոց: Անկէ ետև նամակացը մէջ և բերնով այլ կու պատուիրէր

1 Թուղթ ԺԴ:

2 Թուղթ ԺԳ:

Սուրբն, որ այլ իրեն ընծայ չխաւրեն. վասն զի ինչուան կանայք իրենց զարդերն անգամ կու խաւրէին: Առածներն այլ աղքատաց կու տար, կամ գերիները ազատելու յԻսաւրացւոց: Իսկ ինքն իր գերութեան ատեն աւելի շատ բարեկամ ունեցաւ քան յազատութեանն:

Այդ ասոնց և նմանեաց խնամօք և սիրով և օդոց լաւութեամբ շուտով վրայ գնելով պանդուխտ Խօսնակն մեր, կըրցաւ դուրս այլ ելնել, և բնութեան աստուածատուր և աննախանձ գեղեցկութիւնը և կենսատու շունչը վայելել: Դեռ սեպտեմբեր ամիս էր. տաքերն մեղմացած զուարճալի աշնան եղանակն կու տիրէր բարձրադաշտակաց վրայ, հովտաց և լերանց, ծմակաց և ծործորոց մէջ. ուսկից դեռ քաղցրաշարժ կրկըջանօք կ'իջնէին արծաթափայլ առուակք, կու հնչէին առապարասէր թռչունք, և ծաղկէին զանազան գունով վայրենի ծաղիկքն, իբրև անխռով և անմեղ խաղաղութեան մը մէջ. «Միայնութիւն, խաղա-
» ղութիւն, անդորրութիւն բազում և մարմնոյ
» կազդուրումն», զգաց, կանչեց, գրեց Ոսկիբերան[1]: Տեսաւ և յիշեց անշուշտ իր երկնաւոր վարդապետին ցուցած և ըսածը, զոր և ինքն իսկ երբեմն մեկնաբանած էր[2], «զառաւելութիւնն...
» գեղեցկութեանն, զոր տուեալ է շուշանացն
» վայրենեաց... Եթէ Սողոմոն պարտեցաւ 'ի գե-
» ղեցկութենէ նոցա, յամենայն... 'ի փառս իւր,
» յայտ առնէ թէ յամենայն իսկ 'ի թագաւորու-
» թեան իւրում այնպիսի ինչ ոչ զգեցաւ. և ոչ
» եթէ 'ի միոյ ծաղկէն պարտեցաւ և միւսումն
» նմանել կարաց, այլ յամենեցունց միանգամայն

1 Թուղթ ԾԴ. ἡσυχία, γαλήνη, ἀπταγμοσύνη πολλή, σοματος ευρωστία.

2 Մեկնութիւն Մատթէի. ճառ ԻԲ:

» յաղթեցաւ. վասն որոյ և ասէ իսկ, եթէ Ոչ
» իբրև զմի 'ի նոցանէն:... Զի՞նչ նուազագոյն քան
» զայն կայցէ, զի որ այսօրն իցէ և վաղիւ չիցէ,
» և յայնմ եւս զայնպիսի պայծառութիւն ցուցա-
» նիցէ: Զի որ խոտոյն՝ որ չէ ինչ 'ի պէտս և ճա-
» րակ հրոյ, զայնպիսի գեղեցկութիւն շնորհեաց,
» զիա՞րդ ոչ քեզ՝ որ 'ի պէտս հաստատեցար, տայ-
» ցէ զամենայն պէտս... որչափ եւս առաւել զքեզ՝
» որ քան զամենայն ինչ պատուականագոյն ես,
» ամենայն պիտոյիւք պատուիցէ »: Այն որ այս-
պիսի խորհրդածութեամբք կու խրատէր երբեմն
իր ժողովուրդը, որչափ աւելի խորհրդածէր հի-
մայ տեսնելով այս վայրենի ծաղկըները՝ իրենց
պարզ և գերսողոմոնեան գեղեցկութեամբը՝ այն
բացավայր առանձնութեանց մէջ, որոց ինքն իսկ
էր ամենէն աւելի միայնացեալ անձն, միանգա-
մայն և ամենէն աւելի զանոնք լեցընողը՝ իր աս-
տուածափառ ներկայութեամբը:

## ԺԳ

Այսպէս զգործս և զխորհուրդս Աստուծոյ տեսնելով և նկատելով հիացմամբ յանպատրուակ դէմս բնութեան, Ոսկիբերան գրեթէ չէր իմանար եղանակին յառաջ շարժիլը և աշնայնոյն լռիկ հեռանալը.— մինչև գրել առ ոմն[1], թէ ոչ միայն
« ազատեցաւ Հայաստան յԻսաւրացւոց », ( այլ
» և ) տեղւոյս ձմեռն մինչև հիմայ ամենազուարճ
» գարնան նման »: Եւ ուրիշի մ'այլ գրելով կու նմանեցնէր Անտիոքայ՝ իր բնիկ հայրենեաց կլիմային, որոյ արդարև թէպէտ նոյն միջօրէին տակն է Կոկիսոն, այլ գրեթէ 120 մղոն անկէ աւելի հիւսիսագոյն, աւելի բարձրադիր և շատ աւելի

1 Թուղթ ԾԳ:

հեռու 'ի ծովէ. ուր Անտիոքայ ցանկալի ձմեռուան շատ կարօտ կրնար քաշել, ինչպէս որ քիչ ատեններն ինքն այլ զգաց: Մէկ երկու պախըրցի հովեր Անտիտաւրոսէն փչելով այլափոխեցին բնութեան կերպարանքը. հասաւ, նըստաւ թագաւորեց դժնդակ ձմեռն՝ լերանց և դաշտաց վրայ. չորս դին ընդարձակ լայնայատակ բաւած գուբ մը նմանեցաւ. միայն երկինք իր գոյնովը կ'երևէր վերէն, այն այլ երբ ձեան տարափէ և բքէ ազատ ըլլար: Ոչ այնքան տեսքն և ցուրտն, որքան անոնց երկարութիւնն և սաստկութիւնն, ստէպ ստէպ կրկնուիլ և բարդուիլ տեղատարափոյն, սառանց թանձրանալն, ամեն երթևեկի դադրիլն, դիւրութեան և առողջութեան կարևորաց պակասիլն, շատ, և խիստ շատ իմացուց Ոսկիբերանի՝ իր աքսորանաց և աքսորողաց դառնութիւնը: Ամենայն խնամք և զգուշութիւն բաւական չեղան զինքը ծանր հիւանդութենէ և նեղութենէ ազատելու. գրեթէ երկու ամիս միօրինակ յանկողին ընկած մնաց. «Ձմեռն, կ'ըսէ մէկ
» թղթին մէջ, սովորականէն ծանր ծագեցաւ, և
» ինծի աւելի ծանրագոյն ստամոքացաւի ձմեռ
» մը բերաւ. գրեթէ ոչ դիւրագոյն և լաւագոյն
» քան զմեռեալս, այլ թերևս աւելի գէշ անցու-
» ցի այս երկու ամիսները: Լոյսն անգամ կարօ-
» տութեամբ կու գտնէի... ցորեկ, արշալոյս,
» միջօրէ, ամենն այլ ինծի գիշերուան հաւասար
» էր. բոլոր օրն այլ անկողնի մէջ գամուած կու
» կենայի: Թէպէտ և շատ տեսակ հնարք գտնէի՝
» բայց այն դժնդակ ցըրտէն եղած վնասին ճար
» չէր ըլլար. թէպէտ և կրակ կու վառէի և մեծ
» ծուխ կ'ըլլար, և խցկանս մէջ փակուած կե-
» նայի, հարիւր զգեստ այլ հագնէի, և դռնէս
» դուրս չելնէի, դարձեալ չարաչար կու տան-
» ջուէի: Անկէց սրտիս վերաբերութիւն կ'ըլլար,

» գլխիս ցաւ, կերակրոյ անախորժութիւն և քնոյ
» կորուստ. բոլոր գիշերուան երկար անդունդը՝
» տքնութեամբ կ՚անցընէի ». և այլն։

Այս ձմեռուան փորձն առած՝ իմացաւ Ոսկիբերան որ իր ճանչցածը չէ եղեր, և մէկ խօսքով անոր սաստկութիւնը իմացընելու համար՝ գրեթէ բաւական կու սեպէ Հայկական ձմեռն ըսելը[1]. այն ձմեռը՝ զոր 'ի Մեծ Հայս՝ Քրիստոսէ 400 տարի առաջ փորձեց Մեղուն ատտիկեան, Քրիստոսէ 400 տարի վերջն այլ հոս փորձեց Խօսնակն եկեղեցւոյ. և Թերևս իր խրճթին մէջ աւելի դառն գտաւ հայրապետն, քան զօրապետն իր լեռնային ճամբուն մէջ։ Անոր համար կու խոստովանի նա՝ մէկու մը գրելով[2], թէ «Մարմինս և ոչ մէկ բանէ
» այնպէս կու չարչարուի ինչպէս 'ի ցրտոյ. և
» չկայ բան մը որ այնպէս օգտակար ըլլայ ինծի՝
» ինչպէս ամառն և տաքութեան զուարճու-
» թիւնն »։ Ուստի և երբ առաջին անգամ քիչ մը տաք հով փըչեց և գարնան նշան մը տեսաւ՝ ամեն բան փոխուած և նորէն կենդանացեալ կարծեց[3]. թէ և յայսմ մասին՝ մեր հայրենեաց և Տաւրոս-Կիլիկիոյ կլիմային՝ շատ մարդասէր և քաղաքավար չէ, մանաւանդ անփորձից, ինչպէս էր և Ոսկեբերան. որ և դարձեալ անուշիկ գանգատի[4], թէ «Նորէն օդոց փոփոխութիւնն խռովեց զմեզ.
» և դեռ հոս ձմեռն կու տիրէ. (ըսել է որ ուրիշ
» տեղ գարունն բուսական առաջ գացած էր).
» սակայն յուսանք թէ երբ ամառն լաւ մը հաս-
» տատուի՝ հիւանդութեանս մնացորդն այլ անց-
նի »։ Եւ այս բանիս համար, ինչպէս կ՚ըսէ, շատ զգուշութիւն կ՚ընէր։

Այսպէս ցրտով ցաւով անցուց երանելի հայ-.

1 Թուղթ Ջ։
2 Թուղթ Ջ։
3 Թուղթ ՃԺ։
4 Թուղթ ՃԺ։

րապետն, և Կ.Պօլսոյ պատապարեալ պալատաց մէջ վարժող փափուկ և տկար անձնն՝ այս առաջին ձմեռը. որուն՝ ժամանակաւ կամ հարկաւ՝ վարժեցաւ. անանկ որ երկրորդ տարին կու գրէր [1]. « Գրեթէ սովորութեամբ վարժեցայ Հայկական
» ձմրան այլ. թէպէտև ցրտէն շատ կու նեղիմ,
» ինչպէս որ բնական է սաանկ տկար մարմին ու-
» նողին. սակայն կրնամ դէմ դնել, սաստիկ ցըր-
» տութեան ատեն տնէն դուրս չելնելով. և հա-
» զիւ թէ դռնէս դուրս ոտք կու դնեմ»:

Խե՛ղճ Խօսնակ. ո՜յսպէս խնամեցին զքեզ կայսերք և իշխանք, որք իբր գողնալով և բռնի բերեր էին զքեզ 'ի ջերաշունչ Անտիոքայ՝ բարձրացընելու 'ի բեմ տիեզերական մայրաքաղաքին. և ո՞ւր քշեցին ու մոռցան զքեզ: — Բայց արդ ուրախ լեր, հանդարտէ՛, բա՛ց դուռդ և ե՛լ 'ի դուրս. ե՛լ յաստուածանորոգ զբօսարան բնութեան. « Ձը-
» մեռն էանց և ծաղիկք երևեցան ». եթէ խիստ է ձմեռն Կոկիւսոնի, և քիչ մ'երկար, բայց մէկ եղանակ մ'է, և յետագայքն աւելի քաղցր կ'ըլլան: — Ինքնին փորձեց և վկայեց զայս [2]. « Մնա-
» ցեալ տարւոյ մասերն այնպէս զուարճալի և
» անոյշ կու գան ինծի, կ'ըսէ, որ դիւրաւ կրնամ
» բոլորովին առողջանալ այն ձմեռուան բերած
» հիւանդութենէն»: — Ուրեմն ահա քեզի ջերմահոտ և անուշահոտ օրեր. ըռընտցիր, ուժովցի՛ր. անբան բնութիւնն՝ ծլեցաւ ծաղկեցաւ զարդարեցաւ չորս կողմէ: Հա՛պա, ո՛վ անխոնջ մշակ Քրիստոսի այգւոյն, զոր հերկէիր և ցանէիր և քրտամբք ոռոգէիր, ո՛վ աղբիւրդ եկեղեցւոյ, ե՛լ, ե՛կ, մշակէ, ոռոգէ, ծաղկեցու փայլեցու այս ամայի անապատ անծանօթ կողմանցս բանաւոր բնութիւնն այլ. որ արդէն աւետաբեր

1 Թուղթ ՃԽԲ:

2 Թուղթ ՃԽԲ:

ոտք կոխելուդ՝ դողդէցաւ, ատաւ շրթանցդ ցօղը և սրտիդ բոցը: Քու և քու նախորդացդ, մեր Սահակայ Պարթևի և իր նախորդացը, երկուքիդ այլ իշխանութեանց այս միջասահման կողմս, այս կորուսեալ Կոկաց գաւառս՝ նորէն կանգնէ՛ 'ի կեանս: Ոչ հեռու յայս կողմերէս՝ անցաւ երբեմն առաջին պերճախօսն հին աշխարհի, Կիկերոն, և հազիւ հպարտութեան համբաւն հնչեցաւ. իսկ քու հեզիկ շնչումդ՝ Քրիստոս պիտի թագաւորէ հոս: — Խօսէ՛ մնչէ մեզի, ով Ոսկեբերան, այս լռանիստ հայկական անապատաց մէջ...: Ահա «Ձայն տատրակի լսելի եղև յերկրի մերում»:

ԺԴ

Ոսկեբերան երբեք չմոռացաւ իր բարբառը, նաև քնչուան 'ի յետին շունչ կենացն. միշտ և ամեն տեղ անխտիր՝ ամենուն՝ իբրև անլռելի և անդադար պատգամախօս Աստուծոյ՝ քարոզեց սովրեցուց զբանն կենաց: Հիւանդութեան և ցրտի աւենններ այլ՝ կամ ուրիշներու մխիթարական թղթեր կու գրէր, որով ինքն այլ մխիթարուէր, կամ ուրիշ հոգևոր խրատական և մեկնողական գրուածներ. ոչ միայն առանձնականաց համար կամ ապագայից յիշատակ, այլ և այն կողմերուն ժողովրդոց և քահանայից համար, և նաև հեռաւորաց, Ասորւոց և մանաւանդ Փիւնիկեցւոց կողմանց, ուր քիչ ատենուան մէջ շատ ծաղկեցընել տուաւ զքրիստոնէութիւն, և շատ եկեղեցիներ կանգնել: Իր ցած ու անծանօթ խրճիթէն և աթոռակէն այլ՝ առանց պատրիարքական հեղինակութիւն բանեցընելու, աւելի կու գործէր և կու շահէր, քան զայլ իշխանաւոր հայրապետս ժամանակին: Արդէն երբ 'ի Կեսարիոյ սահմաններէն անցեր մտեր էր այս լեռնային կողմերս,

տեղացի հարք, կրօնաւորք և կուսանք ընդ առաջ ելան խնդութեամբ, միանգամայն և լալով ուրախութեամբ՝ իրենցմէ հեռանալուն և յաքսոր դատապարտուելուն համար. և «Աւելի կ'ընտրեմք, կ'ըսէին, արևուն ճառագայթներէն զըրկուիլ՝ քան թէ Յովհաննու բերնէն»: Ինքնին Ոսկիբերան բանադատուած է զայս խոստովանելու իր մէկ մտերմին[1]: — Արդ այնքան հեռաւորներն անգամ հոգացողն՝ կրնա՞ր իր մօտիկները զանց ընել:

Այս մօտաւորքս անշուշտ նախ Կոկք էին և Կատայունիք. այս ետքիններուս համար մեծ աշխարհագիրն Ստրաբոն կ'ըսէ թէ Հին կ'անուանէին 'ի մէջ Կապպադովկացւոց, թէ և լեզունին տարբեր չէր. ես այլ չեմ գիտեր թէ արդեօք հի՞ն Ասորւոց՝ թէ Գոմերեան Գամրաց սերունդք էին. և ոչ իսկ զԿոկս՝ թէ արդեօք ասո՞նց ազգակից էին՝ թէ մնացուածք մեր Արամ Նահապետին ատենէն այս կողմերուս հայացեալ ցեղերուն: Ըստ ոմանց Հայ էին, ըստ այլոց՝ առանց անուան ազգի՝ կէս բարբարոս և հեթանոս ժողովուրդ մը, բայց 'ի հաւատացեալ Հայոց և Յունաց: Այս ետքիններս կերպով մը վաղուց ծանօթ պիտի ըլլային Ոսկիբերանի. վասն զի գրեթէ իր մկրտութեան տարին էր՝ երբ նահատակեցաւ հոս Ս. Ստեփաննոս Ուլնեցի և իր մայրն, Կանչի բերդին քով, մօտ 'ի Կոկիսոն, ուսկից էր հայրենեօք այս վկայուհին՝ Մարիամ Հայկազն: Յայսմաւուրք մը Ուլնեցւոյն երկու ծնողացն համար այլ կ'ըսէ թէ «էին ազգաւ Հայ»: Արդ աստ այրն Ղազար՝ էր հայրենակից Ոսկիբերանի՝ յԱնտիոքայ. ուսկից որիանոսաց հալածանաց ատեն փախաւ հոս, ուր ապահով էին քրիստոնեայք, և ամուսնացաւ ընդ Մարե-

1 Թուղթ ԾԻԵ:

մայ ։ Ստեփանոսի նախահաստակեալ ընկերքն՝ թէ ոչ ամէնն այլ Հայ, գոնէ շատն մերազգի էին, որոց մէջ յիշուի Բագրատունի մ՚այլ, և ուրիշ մը Սմբատ անուամբ ։ Անկարելի կ՚երևի որ այս իր օրերուն, (40 տարի առաջ) և գրեթէ հայրենակցացը վկայարանաց՝ յայց եղած ըլլայ Ոսկիբերան ։ Մեզի հիմայ քիչ զարմանք չէ մտածելն՝ թէ ասկէ 1460 տարի առաջ Ոսկիբերան յուխտ գացած ըլլայ ՚ի Չէյթուն[1] ։

Թ՚ողլով այս հաւատացեալները՝ դառնանք առանհաւատն. Ոսկիբերանի վարուց ընդարձակօրէն գրողն[2] այսպէս կ՚ըսէ. «Քանզի հեթանոսք էին » բնակիչք տեղւոյն այնորիկ. ուստի ոմանք պաշ» տէին զկուռս անմռունչս, և այլք զփայտս վար» սաւորս անտառախիտ ծառոցն, և կէսք արե» գականն երկիր պագանէին ։ Իսկ երանելին Յով» հաննէս իբրև եհաս անդ՝ առնէր նշանս և սքան» չելիս շնորհօք Աստուծոյ. և ամենեքեան իբրև » լսէին թէ ծառայ Աստուծոյ բարձրելոյ է՝ գային » առ նա » ։ Եւ յետ պատմելոյ զբժշկութիւն մէկ արևապաշտ ուխտաւորայ անդամալուծի մը, « Ի» բրև տեսին ազգն այն զյանկարծահաս եղեալ » սքանչելիսն՝ հաւատային ամենեքեան միաբան » յԱստուած յարարիչն երկնի և երկրի. և մկըր» տեցան ՚ի նմանէ անթիւ բազմութիւնք ՚ի Հայր » և յՈրդի և ՚ի Հոգին սուրբ. և ձեռնագրեաց նո» ցա եօթն եպիսկոպոս, և բազում երիցունս և » սարկաւագունս, առ ՚ի բաւական լինել հո» վուել զանթիւ բազմութիւն ժողովրդեանն, և » սպասաւորել եկեղեցեացն՝ որ շինեցանն ։ . . Եւ » ապա մտեալ անդ այր մի ՚ի նոցանէ ըստ շնոր» հացն Աստուծոյ՝ որ գիտէր զհելլենացի ճարտա-

1 Որ է հինն Ուլնի կամ մօտիկ անոր ։
2 Գէորգ Երուսաղէմացի ։

» սանուԹիւն իմաստուԹեան գալրուԹեան, և
» պատրաստեաց զնա Թարգմանել 'ի լեզուս նո-
» ցա զՆոր Կտակարանս, զի 'ի միտ առցեն զպատուի-
» րանս հրամանացն աստուածաշունչ տառիցն.
» և զՍաղմոսարանն ևս ետ Թարգմանել, զի առցեն
» 'ի բերան զհոգևորս երգսն ԴաւԹի՝ երգել միշտ
» յեկեղեցիսն. և այսպէս փոքր 'ի շատէ և զայլ ևս
» Հին Կտակարանսն։ Որ և 'ի սակաւ աւուրս առա-
» ւել ևս ծաղկեաց և պտղաբերեցաւ հաւատք
» փրկչին մերոյ Յիսուսի Քրիստոսի 'ի պատուի-
» րանաց անտի. և միշտ գնային և յառաջադէմք
» լինէին 'ի բարիսն. և փառաւորէր Աստուած 'ի
» բարի գործս նոցա։... Թէպէտ և վշտացաւ Թա-
» գաւորական քաղաքն ընդ արտասահմանուԹի
» ճշմարիտ հովուին իւրեանց, սակայն ուրախա-
» ցաւ ծաղկոլորդ մի մեծ ընդ գիւտ ճշմարիտ լու-
» սոյն »։

## ԺԵ

Այս պատմչիս խօսքերէն և Թէոդորետեայ մէկ խօսքէն, կու հաւանին և կու հետևցընեն շատ եւրոպացի Սուրբ գրոց հմուտ բանասէրք ԺԶ և ԺԷ դարուց, որ Յովհաննէս Ոսկիբերան առաջին հեղինակ ըլլայ հայերէն ԹարգմանուԹեան աստուածաշունչ գրոց, մանաւանդ Նոր կտակարանաց և Սաղմոսաց. և գրեԹէ հասարակաց էր այս կարծիքս՝ քանի որ մեր ազգային Ս. Թարգմանչաց պատմուԹիւնն անծանօԹ էր Եւրոպացւոց. անանկ որ ոչ միայն Ս. գրոց ԹարգմանուԹեան, այլ և հայերէն այբուբենի գտիչ՝ Ոսկիբերան կու սեպուէր յոմանց։ Մինչև այսօր այլ Հռովմայ Վատիկանու գերահռչակ գրատան դահլըճին մէջ, ուր ամենայն ազգաց գիր հնարողաց պատկերքն կան, իբրև հայերէնի գրագիւտ կանգնած է Ոսկի-

բերան, հայ այբուբենն գործացի ձեւով մը վրան գրած ։ Ուրիշ կողմանէ մեր պատմչաց մէջ այլ կայ յիշատակ հին Թարգմանութեան մը Սաղմոսաց, « զոր հանապազ 'ի բերան ունէին », կ'ըսէ Թովմա Արծրունի, ուրիշ Կոգացի կամ Խութեցի լեռնաբնակաց համար ։ — Եթէ Կոկացիք Հայք էին՝ ըստ շատ հաւանութեան, գրեթէ տարակոյս չինար Ոսկիբերանի ջանքով հայերէն Թարգմանութեան մը Ս. գրոց՝ ըստ մասին. վասն զի և նոյն քրիստոսասէր Սուրբն էր՝ որ Գոթաց և Սկիւթաց մէջ այլ կու ջանար տարածել աւետարանն, և ինքնին Թարգմանաւ կու քարոզէր անոնց 'ի Կ. Պօլիս ։

Գրասիրաց թողլով հետաքննել այս բանասիրական խնդիրը, չեմ կրնար հոս չյիշեցընել քեզի, Հայկակ, այս Ս. Ոսկիբերանի և մեր Ս. Մեսրոպայ ըրած կամ ընծայուած գործոց զարմանալի կամ նախախնամական զուգակցութիւնը ։ Ծանօթ է քեզի թէ ինչ ջանք ըրած է մեր դպրութեանց վարդապետն՝ հայերէն գիր հնարելու և սուրբ գրքերը Թարգմանելու. գիտես այլ որ այդ հայերէն գրերը՝ աստուածային իմն շնորհօք գտաւ կամ հնարեց յամին 406, մինչ նոյն և նախընթաց տարին՝ Ոսկիբերան զԿոկիսոն լուսաւորէր ։ Երկու մեծաբոց լուսաւորք, թերևս անծանօթք իրարու, որոց մէկն Հայաստանեայց աշխարհին ամենէն արևմտեան հարաւային ծայրերը (Տաւրոկիւլիկիա) լուսաւորէր, մնացեալ հեթանոսութեան հետքը ջնջելով. միւսն (Մեսրովպ) այն աշխարհին ամենէն արևելեան հիւսիսային ծայրերը՝ նոյն բանը կ'ընէր ('ի Սիւնիս, յԱղուանս և 'ի կովկասեան Մազգութս). և երկուքն այլ գրեթէ մէկ ժամանակի մէջ, մինչդեռ սուրբն Սահակ կայր և ծագէր 'ի միջնաշխարհին ։ — Այն ինչ զարմանալի գերելեկարեան լուսացայտք էին երկու բաց-

արձակ սահմանաց Հայոց, 'ի դրանց Կիւլիկիոյ մինչև 'ի դուռն Հոնաց, (իբր 600 մղոն իրարմէ հեռու) որ մեր հայրենեաց վրայ ցոլացընէին երկնից մեծագոյն շնորհքը: Ո՛րքան առատաձեռն և մեծագործ եղած է Նախախնամութիւնն 'ի վերայ մեր Հայ ազգիս և աշխարհիս: Ո՛րքան օգտակար եղած է ընդհանուր Եկեղեցւոյ՝ իր քաջաձայն Խօսնակն՝ իր արտասահմանութեան առեն այլ, քան մասնաւոր յունական եկեղեցւոյ մեծ վիճակի մը: Եւ ո՛րքան երախտապարտք եմք մեք Հայք՝ Աստուծոյ և իր հռչակաւոր քարոզին՝ այս այցելութեւս համար: Ո՛րքան այլ երախտագէտ պէտք է ըլլան Յոյնք և համօրէն հաւատացեալք՝ մեզի, և մեր հարց հիւրընկալութեանն, սիրոյն, պատւոյ և մեծարանաց առ Ոսկիբերանն:

Եւ նոյն ինքն մեծահոգին այն՝ արգեօք չէ՞ր և չէ՞ իսկ ճանաչող և յարգող այսպիսի ազնիւ զգացմանց՝ զոր գտաւ 'ի Հայս: Վկայեն իր ժամանակակից պատմիչքն (Պալլատիոս և Սոզոմեն)[1], հոս այլ զմերայինս միայն յանուանէ յիշելով, թէ « Յոյժ սիրելի էր Նա Հայոց՝ յորոց միջի բնա-
» կէրն, և այլոց ևս մերձաւորաց »: Այլ արգեօք սիրուէր առաւել թէ սիրէր:... Իր նամակաց մէջ շատ հեղ գովութեամբ և գորովանօք կու յիշէ 'ի տեղացեաց գտած մարդասիրութիւնը. որոց ինքն այլ փոխարինեց հոգւով և սրտով և ոսկի բերնովն. այլ և մարմնաւոր հօր պէս պաշտպանելով.— գերեթափ ընելով 'ի գերչաց. առատ ողորմութեամբ առ տնանկս, և սովու ատեն (որ նոյն տարիները պատահեցաւ այն կողմերը) շատերը կերակրելով իր ընդունած պարգևներով և ստակներովը: Ճշմարիտ հայր և լուսատու եղաւ այս տեղացի մերազգեաց, որպէս և

1 Գիրք Ը. Իէ:

տարաց, լուսաւորելով զարդիւնս և զփառս իրմէ դար մ'առաջ մեր Հայոց Մեծաց անմահ Լուսաւորչին Գրիգորի։

Գիտէր Ոսկիբերան որ Հայոց ազգն արևելքի մէջ առանձին եկեղեցի և գլուխ մ'ունէր, առանձին լեզուաւ և սովորութեամբ և քաղաքական վարչութեամբ. այլ մերձաւոր և յարակից Յունաց՝ դրակցութեամբն ու դաշնակցութեամբք, անոնց նախագահական աթոռին երբեմն հպատակութեամբ 'ի ձեռնադրութեանն, և նոյն իսկ գեռ անոնց (յոյն) լեզուով եկեղեցական սուրբ պաշտամունքը կատարելով. — գիտէր որ այն ատեն արևելեան ազգաց ամենէն մեծ և կարգաւորեալ եկեղեցեաց մէկն էր Հայոցն. գիտէր որ հարիւրաւոր եպիսկոպոսներ ունէին, և եպիսկոպոսապետ՝ զմեծն Սահակ Պարթև՝ զթոռնորդի Թոռան Ս. Լուսաւորչին, զոր թերևս անձամբ այլ ճանչցեր էր. — գիտէր որ լեզուի և ծիսի իրաւամբք՝ ամենայն Հայք անոր վիճակ և հօտ էին. բայց այն ատեն քաղաքական օրէնք զՓոքր Հայս զատեր և Կ.Պօլսի կայսերաց իշխանութեան տակ ձգեր էին, թողլով զՄեծ Հայս իրենց բնիկ թագաւորին, որ էր բարեացապարտն Վռամշապուհ։ — Գիտէր որ Պարսից արքայէց արքային նախանձու և վախին համար՝ մեծ զգուշութիւն պէտք էր Հայոց, (նաև թագաւորին և հայրապետին) 'ի հաղորդելոյ կամ մտերմութիւն ցուցընելու Յունաց հետ. անով առ ժամանակ մը Փոքր Հայք՝ նաև ըստ եկեղեցական վարչութեան (յիրաւի կամ յանիրաւի) Յունաց պատրիարքութեան տակ ընկած էին, (Կեսարիոյ նախագահին վիճակեալ.) — գիտէր և Ս. Սահակ քաջ քաղաքավարութիւն, միանգամայն և ճանաչէր զանձինս և զժամանակն. և իրեն մեծ ուրախութիւն և պատիւ սեպէր Ոսկիբերանի պէս հովուապետի

մը հեռաւոր կամ մերձաւոր խնամոց տակ մնալն իր սեպհական հօտին մէկ մասին. զոր յետ մահուան նորա՝ (անոր յաջորդաց ոգին ճանչնալով) պահանջեց 'ի Թէոդոս կայսերէ՝ և յԱտտիկոսէ պատրիարքէ, և առացաւ. սկսաւ հովուել անձամբ այցելութեամբ և քարոզութեամբ իր հոգեկիր աջակցին՝ Ս. Մեսրովպայ։ Իսկ այս ատեն վասն վերոյիշեալ քաղաքական զգուշութեանց, և կամ իրարու վրայ ունեցած վստահութեան, Ոսկիբերանի և Սահակայ մէջ մասնաւոր թղթակցութիւն մը չիգտուիր, և ոչ այլ ուրիշ Հայ եպիսկոպոսաց՝ յայտնապէս. թէ և շատ հաւանական է որ Ոսկիբերանի քանի մը թղթերն գրուած ըլլան առ մերազգի եպիսկոպոսունս և երիցունս Փոքր Հայոց, որոց անուանքն կամ յունական են, կամ յունարէն թարգմանեալ. (ինչպէս Ելպիդիոս՝ Յուսիկ, Ադելփիոս՝ Եղբայր, Իորդիոս՝ Տօնիկ, և այլն), և կամ աւելի Հայոց քան Յունաց մէջ գործածականք են, ինչպէս Մալքոս, Մովսէս, և այլն. յորոց ոմանք այլ անշուշտ Ասորիք են։ Ապա թէ ոչ՝ անհաւատալի կ'ըլլայ թէ աքսորանաց տեղէն ինչուան Փիւնիկիոյ և Արաբիոյ, Պարսից և Գթաց եկեղեցեաց համար հոգացողն՝ իր ամենէն մերձաւոր և ընդարձակ եկեղեցւոյն տեսչաց հետ վերաբերութի չունենայ. մինչդեռ անոնց բնական վիճակին մէկ մասին մէջ՝ գրեթէ անձամբ հովուութիւն, հայրութիւն և վարդապետութիւն ընելով, կու բովանդակէր Լուսաւորչի դաւազանին շրջաբոլորը։

## ԺԶ

Աւելի անակնկալ կերպով մ'այլ մեծարեց և հռչակեց Ոսկիբերան զԼուսաւորիչն Հայոց, այն լեզուով որով երբեմն իր առաջին եկեղեցւոյն

Ս. հովիւները ներբողեր էր, զԻգնատիոս, զԲաբելաս և զՄելիտոս. միանգամայն մեծարու և երախտագէտ ըլլալով թէ մեծին Գրիգորի և թէ անոր պայազատ և իր ասպնջական Դէոսկորին. վասն զի ասոր խնդրանօք գրեց և խօսեցաւ « Ներբողեան, ասացեալ յաղագս վարուց և նահատակութեան Գրիգորի՝ Հայոց Մեծաց հայրապետի 'ի Կոկիսոն Հայոց, մինչ յաքսորանս էր (Ոսկիբերան), 'ի խնդրոյ Հայազին որումն եպիսկոպոսի և վարդապետի համազգւոյ նորին՝ Դիոսկորոս անուն կոչեցելոյ, և այլ ևս յոգնախումբ բազմութեան, որք ժողովեալ էին յաւուր յիշատակի մեծահռչակ տօնի նորին սուրբ Լուսաւորչին արևելեան աշխարհին »: Այսպիսի է վերնագիր Ճառին, որոյ յիշատակարանն այլ արժան է գիտնալ. « Ի Թուականիս ՇՂ (1141) Թարգմանեցաւ Ճառս 'ի յունականէն 'ի մերս, 'ի ձեռն Աբրահամու Դրամատիկոսի, 'ի հին և յեղծ օրինակաց. իսկ յարմարեցաւ ըստ բանից դպրութեան և բառից՝ յիմոյ նուաստութենէ Ներսիսի (Կլայեցւոյ), հրամանաւ տեառն իմոյ և հարազատի՝ Գրիգորիսի Հայոց կաթուղիկոսի »: Արդ այս Ճառս որոյ սկիզբն է, « Հրաշալի է մեզ տօնս այսօր, և պայծառագոյն քան զսովորականն՝ շարադրութիւնս », զոր Շնորհալին և այն յոյն վարպետ գրագէտն գտան Ոսկիբերանէն 740 տարի ետև՝ հին և եղծ օրինակաց մէջ, և անտարակոյս ճանչցան, հիմայ չիգտուիր հեղինակին մնացեալ յունարէն գործոց մէջ: Ասոնց հրատարակող մեծարգիւն և քննադատ աբբայն Մոնֆոքոն՝ անցեալ դարու մէջ՝ տարակուսած կարծուի ասոր վաւերականութեը վրայ, թերևս և այլք անոր պէս: Բայց անշուշտ այնպէս չէին ըներ՝ եթէ նախ Ճառին վերնագիրն և յիշատակագիրը քննէին, և յիշէին Ոսկեբերա-

նի ըրածները 'ի Կոկիւսոն, և իր հոն հիւրընկալուն՝ Դիոսկորոսը. որոց համար Մոնֆոքոն այլ անհաւան չի սեպեր Ոսկեբերանին Ճառախօսութիւնը, այլ զՃառը՝ երկբայելի և անարժան անոր գրչին. և իրաւունք ունի։ Վասն զի իր կարդացած և հրատարակած Ճառը (զոր 'ի լատին թարգմաներ է հայագէտ Երէցն Վիլըֆրուա), ոչ է այս մեր ըսած Հրաշալի Ճառս, այլ ուրիշ մը՝ Աստուածաղորդին տօնին սկզբնաւորութեամբ, որ թէ և ձեռագրաց ոմանց մէջ Նորին Յովհաննու Ոսկեբերանի անուամբ գրուած է, բայց ոչ ոՃն և ոչ ուրիշ վկայութիւն մը կու Ճշմարտէ զայն։ Ընդ դիպաց՝ գաղղիացի բանասէր աբբայք անհարազատ Ճառին գլուխը դրած գտեր են հարազատին վերնագիրը, և շփոթեր են. որոյ տեղ եթէ այս Ճառս գրուած ըլլային՝ անշուշտ բնաւ չէին տարակուսիր Ոսկեբերանի ըլլալուն. որոյ լեզուին և սրտին և դիպուածոց յարմար՝ շատ խօսք կան մէջը։ Ցառաջաբանութեանը մէջ կու յուսայ Լուսաւորչին մեծախոհութենէն՝ որ ընդունի «ըզ-
» գուզնաքեայ ընծայաբերութիւնս 'ի փոքր մարմ-
» նոյս և բազմադրելի հոգւոյ պաղատեալ անձինէ». յետոյ թուելով անոր անթիւ արդիւնքն և արժանաւորութիւնը՝ կերպ կերպ գովէ. Աբրահամ նահապետին և Նոր օրինաց սրբոց հետ համեմատելով, կ'անցնի 'ի վիրապին համբերութիւնը. և անկից կու սկսի պատմել Հռիփսիմեանց և Տրդատայ դէպքը, Գրիգորի հանուիլն 'ի վիրապէն և բժըշկելն զպատուհասեալսն յԱստուծոյ, և քարոզել զՃշմարտութիւն Քրիստոսի. ըստ ախորժելոյ հայկական լսելեաց յերկարելով այս բաները։

Բայց երբ կու հասնի Հայոց խնդրելքին առ Գրիգոր՝ իրենց քահանայապետ ըլլալու համար, և առոր նախ խոնարհութեամբ հրաժարելուն, ապա հարկաւ յանձնառութեանը, Ոսկեբերան

իր անձին և ժամանակին դէպքերէն դրդած չի֊
կրնար չկանչել. «Զայնպիսին գովեմ ես հո֊
» վիւ, զայնպիսին վերակացու, զնորայն ողջու֊
» նեմ զառկարութիւն, զնորայն ընդունիմ զհեզ֊
» գութիւն. զի ոչ նա զհետ պատուոյն, այլ զհետ
» նորա պատիւն ընթանայր. ոչ խնդրէր զփառ֊
» սըն, այլ խնդրեալ լինէր 'ի փառացն. այնպիսին
» վայելէ քահանայապետ՝ ըստ Պօղոսի, սուրբ,
» անմեղ, անարատ, զատեալ 'ի մեղաւորաց և
» բարձրացեալ քան զերկինս: Զի որ այնպիսի ոչ
» լինիցի՝ ոչ հովիւ ուրեմն կոչի, այլ գող և աւա֊
» զակ և գայլ ապականիչ օձտելով զհօտն Քրիս֊
» տոսի. ըստ որում և առ մեզ խօսք երևեցան հակառա֊
» կութ ճշմարտութեանս... Վասն որոյ՝ եթէ հա֊
» ճոյ թուեսցի, պարտ և արժան է նախ և ա֊
» ռաջին անցանել առ այնպիսիսն բանիւ, և ապա
» զերանելի հօրս մերոյ աւարտել զներբողական
» ճառս: Հովուապետի է ատեանս, քահանայա֊
» պետի՝ տօնախմբութիւնս. պարտ է զատանել
» զգայլսն 'ի հովուաց. և առ նորա փառացն պա֊
» տիւ՝ սակաւ ինչ և ըմէր չէղափակէւ ըմիրը...
» Քանզի տեղի տալն երանելի հօրս մերոյ՝ 'ի խորս
» բանից արկանէ զմեզ». և այլն: Այս ըսելով
կու սկսի 'ի բանից Քրիստոսի, և առաքելոցն Պօ֊
ղոսի, Պետրոսի և Յովհաննու՝ ցուցընել, թէ ի՞նչ֊
պէս պէտք է ըլլալ ճշմարիտ հովիւ, եպիսկոպոս.
և ի՞նչ կ'ընեն անարժան հովիւք, աշխարհասէրք
և ործաթասէրք. և դարձեալ թէ ի՞նչպէս պէտք
է որ առաքինիք համբերեն իրենց դէմ հալածանաց
և վշտաց, օրինակաւ իրենցմէ առաջ հալածելոց,
և այլն: Այսպիսի սրտառուչ և խրատական խօս֊
քեր գրեթէ ճառին քառորդէն աւելին կու բըռ֊
նեն. և աւելի հովուաց քան հօտին վերաբերելով՝
կրնանք կարծել՝ թէ այս մասս խօսած չէ հանդի֊
սին մէջ, այլ գրած կամ յետոյ յաւելած: Անկէ

նաև դարձեալ կու յիշէ Լուսաւորչին աշխատան-
քը և 'ի լերինս առանձնանալը. « Թագուցանել
» զանձինն 'ի մարդկայինս տեսութենէ. զի մաքրա-
» պէս անդանօր և աննիւթաբար՝ աննիւթակա-
» նին հանդիպեսցի տեսութեանն Աստուծոյ ».
Եւ հոս կ'աւարտէ Լուսաւորչի պատմութիւնը,
ամենևին չյիշելով անոր երջանիկ փոխման աւան-
դութիւնը և մարմնոյն գիւտը. — վասն զի դեռ եր-
կուքն այլ չէին յայտնուած, որպէս յետոյ. և
այս այլ կրնայ վկայ ըլլալ ճառիս հնութեանը։
Յետոյ դարձեալ ներբողելով զՍուրբն, չմոռնար
անոր ընիկ հօտն այլ գովելու. « Մինչև ցայժմ
» խնկ՝ օր ըստ օրէ 'ի լաւագոյնսն յառաջանան
» ընտրեալ նորայն ժողովուրդ և վիճակ »։ Պան-
» ծալի՛ գովութիւն. արդիւնք գործակցութեան
ջանից որդւոց Ս. Լուսաւորչի, և դեռ գործող
Ս. Սահակայ։

Յետ ամենայնի Ոսկեբերան իր վիճակին յար-
մար և սրտառուչ կերպով կնքէ խօսքը, դարձը-
նելով առ Ս. Լուսաւորիչն մեր. « Աղաչեմ, կ'ը-
» սէ, ո՛չ ես մեկուսանալ հոգևորական այցելու-
» թեամբ առ 'ի մէնջ, այլ յիշել զմեզ անմո-
» ռաց... զի և մեք զպատահումն սակաւագոյն
» վշտացս՝ համբերութեամբ կատարեսցուք...
» և քոյին վշտամբեր նեղութեանցս յիշատակաւ՝
» 'ի մերումս մխիթարեալ սփոփեսցուք։... Զի
» և ես նուաղեալ 'ի զօրութենէ անդամոց, փխոր
» գոլով մարմնով և վշտագին անձկութեամբ, մա-
» նաւանդ բռնադատեալ սիրով 'ի քո համազգեաց, 'ի
» քում վիճակէս, նշանակ սիրոյ հատուցի քեզ ըն-
» ծայ ջերմագոյն սրտիւ։ Զի ահաւասիկ նուի-
» րեալ եմ և ես յայսմհետէ լքանել զկեանս
» զայս տաղտկալի, և լինել ընդ Քրիստոսի. Թե-
» րևս անդանօր հանդիպեսցուք միմեանց զուար-
» ճալի և գեղեցկագոյն հանդիպմամբ, բնակցե-

» լով 'ի միասին մշտնջենաւորապէս. և արժանա-
» ւոր լինել երանաւէտ խոստմանցն. որոց լիցի
» ամենեցուն մեզ հասանել 'ի Քրիստոս Յիսուս
» 'ի տէր մեր », և այլն: — Ոսկեբերանի ամենէն սրտաշարժ խօսքերէն մէկն է այս վերջաբանս, և Թերևս ամենէն աւելին. խոստովանութիւն մը՝ զոր կու ջանար լսելու իր Թղթոց մէջ, և զոր հոս համարձակի՝ առաջի Աստուծոյ և իր բազմաչարչար նահատակին, ու անոր արեան քրտանց գին աննախանձ և անկասկած ժողովրդեան մը: Կ'երևի այլ որ իր կէս հիւանդութեան առեն խօսած է, և Թերևս վերջին տարին: Անշուշտ իր յետին ոսկեղէնին և զգայուն գրուածոց մէկն է սա. մի 'ի վերջին ձայնից կամ երգոց Խօսնակին եկեղեցւոյ՝ հնչեցեալ յանապատս Հայոց, 'ի սէր նոցին իսկ Հայոց և 'ի պատիւ Լուսաւորչին նոցին:.. Քարանձաւք Կոկաց, արդեօք կու կրկնէ՞ք դեռ այդ հրաշալի ձայնը, որ զերկուքն այլ յանմահութիւն կու խառնէ, զձայնեալն՝ Գրիգոր, և զձայնողն՝ Յովհաննէս, զԼուսաւորիչ և զՈսկեբերան:...

## ԺԷ

Եթէ աւելորդ պարծանք չէ, կու համարձակիմ ըսել, թէ Ոսկեբերան կանուխ և շատ հին պարտք մ'ունէր Լուսաւորչայ ժողովրդեան և վիճակին. իր բնատուր հանճարով և Անտրակաթ ու Լիբանիոս սոփեստասից ջանքով ոսկեզօծեալ շրթունքը՝ եկեղեցւոյ Խօսնակ ըլլալու վարժեցընողն՝ Պօլիքտոսի հայրենակից և ընիկ ազգաւ Հայ մ'էր, նուիրեալ և մեծահաւատ անձ մը, — Ս. Մելետիոս հայրապետն. որ տեսնելով զՅովհաննէս (18 ամեայ պատանի) լցեալ հռետորական շնորհօք և գիտութեամբք զարդարեալ, բայց տարակուսեալ երկնից և երկրի որոշիչ ճամբուն վրայ,

Ճարտար սիրով իւրեն քաշեց. երեք տարի քովը պահելով բացաւ, ցրցուց, սովրեցուց իւրեն Քրիստոսի բարձր և վսեմ խմաստասիրութիւնը, անոր Հօր յաւիտենական գաղտնիքը, և Հոգւոյն՝ հրեղէն լեզուն. և երբ անոնց լուսոյն ընդունակ տեսաւ՝ մկրտեց զՅովհաննէս (21 տարուան), և իր Անտիոքայ մեծ և նախաքրիստոնեայ եկեղեցւոյն՝ Գրակարդաց ձեռնադրեց: Այսպէս, մինչ Ասորին հայր՝ Յոյնն մայր՝ և արտաքին դաստիարակ եղան, Հայ մը եղաւ վերածնող և դայեակ հոգւոյն և սրտին Ոսկեբերանի, զորս ինքնին յետոյ կրթեց և զարդարեց աստուածային շնորհօք, Անտիոքայ լերանց ճգնաւորաց խորշերուն և իր քարայրին առանձնութեանը մէջ:

Հոս անցողաբար յիշենք, որ այն ատեն երբ յետ վեց կամ եօթն ամաց դարձաւ Յովհաննէս 'ի լերանց՝ այլափոխեալ կերպով մը, մարմնովն՝ նուաղեալ, ցամաքեալ, ճգնեալ և ճնշեալ, իսկ հոգւովըն և մտօք լուսափայլեալ և հմտացեալ գիտութեամբ աստուածայնոց, զոր[illegible] և արդէն գրուածովք այլ յայտնել սկսեր էր, Ս. Մելիտոս զըրկաբաց ընդունեցաւ իր հոգեսուն սանը, և նորէն եկեղեցւոյն պաշտօնեայ ընելով լսեցուց անոր ընթերցուածները. իսկ երբ ինքն հանգեաւ 'ի տէր յամի 381, իր յաջորդն Փլաբիանոս՝ սարկաւագ և քահանայ ձեռնադրեց[1], և իրեն օգնական ըրաւ, նաև տեղակալ և քարոզիչ, թէ իր բացակայութեան ատենն և թէ մօտ ըլլալուն. ինչուան

1 Ըստ ոմանց Ս. Մելիտոս ձեռնադրած է զՅովհաննէս՝ սարկաւագ. իսկ քահանայութիւնն եղած է ըստ ոմանց յամի 383, ըստ այլոց 386 կամ 387, և ըստ ոմանց աւելի այլ առաջ: Եւ ըստ այսմ սովորաբար 63 տարի ապրած կը հաշուեն զՍուրբն. իսկ այլք 50 տարի, կամ 52 տարի և 8 ամիս. և այս այլ հաւանական է:

որ յետ 12 (կամ աւելի տարւոյ) տրտմութեամբ և խնդութեամբ ստիպուեցաւ բաժնուելու անկէ, թողլով որ երթայ իրեն պատուակից և աթոռակից և աւելի այլ բարձրագահ ըլլայ(*'ի Կ.Պոլիս): Եւ երբ՚ասկից քշեցին զՍուրբն՝ դեռ ողջ էր Փլաքիանոս և ցաւօք լսեց զայն. և ինչպէս կու վայլէր իր առաքինութեանն և մեծութեան՝ մերժեց Թէոփիլեանց հրապոյրքը, և գրեց այլ Կ.Պոլսի ժողովրդեան՝ որ հաւատարիմ միան իրենց արժանաւոր հովուին. անոր համար Ոսկիբերան այլ կ'աղաչէր և կու պնդէր՝ որ առանց Հռովմայ քահանայապետին և Անտիոքայ ու Երուսաղեմի պատրիարքաց՝ իրեն վրայ դատաստան չընեն: Զայնը չլսեցին, կամ չանային չլսել. աքսորեալ հայրապետն մօտեցաւ տեղեաւ իր հայրենեաց և զինքը քահանայ ձեռնադրող ծերունի հօրը աթոռոյն. ինչ ցաւ և ինչ մխիթարութիւն երկուքին այլ: Բայց աւելի եղաւ ցաւն Յովհաննու. վասն զի հազիւ տեղաւորուած իր պանդխտութեան մէջ, և դեռ չսկսած թղթակցիլ իր նահապետանման հօրը հետ, լսեց անոր վախճանը: Ա՛յլ աւելի դառնակսկիծ եղաւ ցաւն՝ երբ այն առթիւ Անտիոքայ եկեղեցւոյն մէջ այլ շփոթ ընկաւ. և անարժան քահանայ մը (Պորփիւր) հայրապետական աթոռը դրաւեց. ողջամիտք տխրած՝ յետ քաշուեցան. շատերն բոլորովին հեռացան յԱնտիոքայ. շատեր՝ քահանայք և ժողովուրդք՝ իբրև ուխտի և մխիթարութեան՝ սկսան դիմել առ Յովհաննէս 'ի Կուկիւսոն, ցանկալով անոր քարոզութեան հին օրերը յետ դարձընելու. և եթէ կարելի ըլլար՝ նորէն զինքն իր հայրենիքը բերելու՝ իրենք զիրենք նոր յաշխարհ եկած պիտի սեպէին: Զարհուրեցան թշնամիքն, կ'ըսէ Ոսկիբերանի հաւատարիմ և կենակից կենսագիրն,[1] « Տեսանելով

1 Պալլադիոս:

» զի Անտիոքայ եկեղեցին 'ի Հայս փոխաբերեալ » լինի. և անտուստ դարձեալ որպէս թէ յԱն- » տիոք ընթանայ՝ հաչակ զուարթարար իմաստա- » սիրութեանն Յովհաննու »: Կամ ինչպէս ուրիշ մը կ'ըսէ[1]. « Գրեթէ ամենայն կողմանքն այնո- » քիկ Հայաստանեայց, և անտի մինչև ցԱնտիոք » և 'ի Կ.Պօլիս հաչակ հարկանէին զիմաստու- » թիւն նորա. և 'ի բերան առեալ զնորա վար- » դապետութիւնն՝ գովելի և փառաւոր յամե- » նեցունց բերանոյ լինէր նա »: Նաև թղթեր ու- նի գրած յաքսորէն առ Անտիոքացիս, մանա- ւանդ առ Քահանայս, յորդորելով միշտ 'ի համ- բերութիւն և 'ի խաղաղութիւն, զգուշաւոր խը- րատներով. զնոյն կ'ընէ և ուրիշ թղթոց մէջ առ զանազանս. միշտ ջանալով հակառակողաց առիթ չտալ, Նախանձներին չգրգռել. ստէպ այլ կու պա- տուիրէ մտերմացն՝ որ չհռչակեն իր քաշած նե- ղութիւնները, թէ և օտարք խօսելու այլ ըլլան:

Սակայն այս բանս անկարելի եղաւ, և էր. ոչ իր վիշտերն և փառքն պակսեցան և ոչ այլ թշնա- մեաց Նախանձն, իր եռամեայ պանդխտութեան մէջ. զոր մեծաւ մասամբ անցուց հեռաւոր աշ- խարհաց մէջ այլ քրիստոնէութեան ծաւալմուն- քը հնարելով, թղթեր գրելով, ինչպէս շատ հեղ ըսի, և առանձին հոգևոր և խրատական գրքեր և ճառեր, որոց համար բաւական թուղթ կամ տախ- տակ չէր գտներ. և այս էր իրեն ամենէն մեծ կարօտութիւը: Սրտին և բերնին համեմատ ձեռքն այլ ժիր և անխոնջ էր, և չէր կրնար անոնց բա- ւական ճարակ և դաշտ գտնել:

1 Գէորգ Երուսաղեմացի:

# ԺԲ

Իր հոն և վերջի գրուածոց մէջ՝ յայտնի և նշանաւորներէն, իր աննման ձայնին և գրչին վերջին ճախինչներէն, ու քրիստոնէական իմաստասիրութեան գերագոյն արտադրութիւններէն մէկն է ճառ մը, թէ Ու ոչ ճեռն՝ ԵՒԷ ոչ յանձնէն. այսինքն թէ ոչ ոք կրնայ ուրիշի ստոյգ վնաս մը հասցընել, թէ որ անիկայ առաքինօրէն համբերէ. ստոյգ վնասն՝ միայն մեղք և անհամբերութիւնն է: Երկրորդ մ'այլ է գիրք մը առ. ժողովուրդն Կ. Պոլսի, անոնց՝ որ գայթակղեր էին արդարոց հալածանաց և անիրաւաց յաջողութեան վրայ. – երկայն և ընդարձակ խօսքերով և օրինակներով կու բացատրէ առջի ճառին մէջ ըսածներէն զատ՝ Աստուծոյ նախախնամութեան զարմանալի և անքննելի ճամբաները, վշտաց և հալածանաց օգուտները, և նոյն իսկ գայթակղութեանց՝ որոց թոյլ տայ Աստուած. և թէ որչափ մեծ պիտի ըլլան վարձք հալածելոց և վշտացելոց, և ինչ վերջ կ'ունենան հալածիչք և անիրաւք: Այս երկու, ինչպէս ուրիշ գրուածոց մէջ այլ, կու փայլէ հաւասար ճարտարութիւն խօսից և մեծութիւն հոգւոյ Ոսկեբերանի, և իր անհամեմատ տիրութիւնն սրտին վրայ:

Գրեթէ կենաց յետին տարին, լի տառապանօք և զրկմամբք, տեսնելով իր աթոռը ապօրէն բռնաբարողաց որս եղած, գրեթէ իր վախճանը քիչ հեռի տեսնելով, և դեռ անխռով կու գրէ, կու ջանայ ուրիշներուն սիրտը հանդարտել, միխթարել, շինել, առանց ամենևին իր քաշածները յիշելու տրամութեամբ կամ դառնութեամբ. առանց վրէժխնդրութեան, առանց գանգատի և անհամբերութեան կամ չփոթութեան մը. վասն

ղի յամենայնի կու ճանչնայ զկամս Աստուծոյ և կ'ըսէ « Փառք քեզ Աստուած, յաղագս ամենայ- » նի » ։ Թերևս այս Կոկաց անապատաց մէջ բուսած Ոսկիբերանեան ծաղկունքն՝ իր հոգևոր և բանաւոր երկանց և կենաց գերագոյն պտուկներն են. և իր անժանգ ոսկւոյն մէջ՝ ամենափայլ ադամանդներն ։

Այսպիսի գրուածք՝ մխիթարականք թէ գրողին, թէ առ որս գրէր, թէ մեզի իսկ, անշուշտ աւելի շատ այլ կ'ըլլային, եթէ Ոսկիբերանի երկու արտաքին սպառնացող վտանգքն քիչ մը պակաս ըլլային. — Ձմեռն և Իսաւրացիք ։ Առջի տարին մէկն միայն կար, իսկ երկրորդ տարին ձմրան հետ հասան իջան իրենց լեռներէն մեկնակաղէն աւազակք այլ. որոց բնիկ տեղն էր Կիւլիկիոյ և Լիկայոնիոյ (Ղօնիոյ կամ Գարամանի) միջոց լեռնոտ երկիրն, ուր կովկասեան Լէկզեաց (կամ Ջէրքէզաց) պէս ամրացած Իսաւրացիք՝ իրենց երկրին եզերքը եղած դաշտագաւառներուն վրայ կու վազէին և կ'աւարէին ։ Հնուց 'ի վեր անուանի ըլլալով այս գործով Հռովմայեցւոց անգամ ահարկու և զզուշալի եղան. և թէպէտ առնք անգամ մը (Քրիստոսէ 78 տարի առաջ) նուաճեցին զանոնք ('ի ձեռն Սերվիլիոսի), բայց նորէն սկսան ասպատակել՝ Հռովմայ և Կ.Պօլսի կայսերաց ատեն, մինչև գրեթէ ցկէս Զ դարու. իսկ Գ և Դ դարուց և այս Եիս սկիզբը՝ շատ աւելի զօրացեր կամ կատղեր էին, լեռնային Կիւլիկեցւոց հետ այլ միաբանած և իբր մէկ ժողովուրդ ըլլալով ։ Այս լեռնոտ և վայրենի երկիրներն էր որ ԺԲ դարուն մէջ նուաճեցին Թորոսք և Լևոնք մեր Ռուբինեանք, և քրիստոնեայ Թագաւորութեան մը կալուած ըրին. իսկ իրենցմէ 800 տարի առաջ՝ մեր պատմութեան ատեններըը՝ կայսերք անգամ դողային Իսաւրացւոց անուա-

նէն, և շատ զօրաց բանակներ կորսուէին անոնց դէմ։

Մեր աքսորելոյն պանդխտութեան տեղն՝ յետ արշաւանացն 'ի սահմանս Կեսարիոյ, տարիէն աւելի հանդարտած կ'երևէին, երբ յանկարծ 'ի սկիզբն 406 տարւոյ՝ ձմեռուան ցրտէն զրգռած գայլերու պէս յարձակեցան նաև Կոկիսոնի սահմաններն այլ։ Այս տեղս այն բերդաշէններէն մէկն էր՝ զոր Հռովմայեցիք կանգնած էին 'ի պաշտպանութիւն, բայց շատ ամուրներէն մէկն չէր. անոր համար պէտք եղաւ որ մեր՝ Հայրապետն այլ թողու իր տաքուկ սենեակը, թափառական պտըտի սառամանեաց ատեն, երբեմն շէնքերու և երբեմն անշէն տեղեաց, անտառաց և քարայրից մէջ, թէ բնութեան դժուարութեամբք և թէ հիւանդութեամբ այլ նեղուելով. ինչուան որ կրցաւ իր ընկերաց և պահապանաց հետ զինքը ձգել յԱրաբիսոն կամ Արափսուս։ Ասիկայ Կոկիւսոնէն 40 մղոնի չափ դէպ յարևելք՝ հիմակուան Եարփուզ քաղաքին մօտ՝ աւելի ամուր բերդաւան մ'էր. որուն դրսի շէնքն այլ բաւական ապահով չսեպելով՝ բուն միջնաբերդին մէջ քաշուեցան փախստականք, խառն 'ի խուռն բազմութեամբ, որ շատ անտանելի ըրաւ բնակութիւնը, և բանտէն այլ գէշ, կ'ըսէ մեր տառապեալ Յօանակն. մէկ կողմէն Իսաւրացւոց վախն, որ կրակով և սրով ինչուան դռներուն կու հասնէին, մէկ այլ կողմէն տեղւոյն նեղուածքն և սովու վախն. ասոնց վրայ այլ՝ ձմեռնային ցուրտն և հիւանդութիւնն։ Ի վերայ այսր ամենայնի դեռ անհատնում Ոսկեբերանն՝ ժամանակ և հնարք կու գտնէր թղթակցելու մտերմաց հետ և հոգալու Փիւնիկիոյ մէջ ծագած խռովութեանց և հալածանաց վրայ։ Ասկէ գրած մէկ թղթին մէջ, «Ամեն բան, կ'ըսէ, հիմայ գէշ է 'ի Հայաստան.

» և ամենէն աւելի օդոց խառնակութիւնն և փո-
» թորիկք. ուր որ դառնայ մարդ՝ կու տեսնէ
» հեղեղներ, մեռելոց դիակոյտ, գետնայատակ
» եղած տներ, կործանած քաղաքներ. իսկ մենք
» թէպէտ և վտանգէն ազատած կ՚երևինք, բայց
» գրեթէ 'ի բանտի եմք այս բերդիս մէջ. և պատ-
» ճառաւ ամենօրեայ վախու, ապանմանց լուրե-
» րով, Իսաւրացւոց յանկարծ մեր վրայ հասնե-
» լուն կասկածանօք, և մարմնոյ տկարութեամբ՝
» որոյ հետ դեռ կու կռուիմ, ամենևին չեմք կըր-
» նար ապահով և հանգիստ ըլլալ: Բայց այս ա-
» մենայն աղետից մէջ ինծի մեծ մխիթարութիւն
» է քու առողջութեանդ լուրն ընդունելս »: —

Ոսկիբերանի վախն ստոյգ է. և յիրաւի կ՚ըսէր, թէ այս բերդիս մէջ իբրև ծուղակի մէջ բանտուած եմք. և ահա մէկ գիշեր մը բոլորովին անակնկալ և անկարծ ատեն՝ 300 մեկնակազէն Իսաւրացիք մտան յԱրաբիսոն, բերդը պաշարեցին, մեծ սարսափ ձգեցին. բայց դեռ երկրորդ օրն չլուսցած՝ նոյնպէս անկարծելի կերպով ցրուեցան անհետացան աւազակք. և անկէ ետև քաղաքացեաց և Յովհաննու վախն այլ փարատեցաւ: Մնաց հիւանդութիւնն և ցուրտն, զոր միայն նոր գարունն կամաց կամաց փարատեց:

## ԺԹ

Կ՚երևի թէ բաւական ժամանակ մնաց Ոսկիբերան յԱրաբիսոն, որ Կուկուսնէն աւելի ամայի և անշէն էր: Իր ձախ բարեկամներն կամաւ հոս ուշացուցին զինքը՝ որ աւելի նեղուի. մինչդեռ ստոյգ բարեկամներն կու մոռմոքէին վրան: Իսկ ինքն իրեն սովորութիւնը գրելէ չէր դադրեր. և յոմանց կարծուի որ հոս գրած ըլլայ այն երկու նախայիշեալ գիրքերն 'ի մխիթարութիւն վշտացելոց

և գայթակղելոց։ Նոյն իսկ տեղն այլ իրեն ուրիշ
ափոփանաց առիթ կ'ընծայէր. — բարեսէր հիւրըն-
կալներ, որոց առաջինն սեպելու է այն ամայու-
թեանց մէջ կորած քաղքին եպիսկոպոսն՝ Սարի-
տս, (եթէ ուրիշ կերպ կարդալու չէ այս անունս),
անշուշտ առաջուց իսկ ծանօթացած էր .ասոր
հետ և թղթի մը մէջ[1] առ Ռուփինոս երէց Փիւ-
նիկիոյ՝ որ իրմէ սրբոց նշխարք կու խնդրէր, խոս-
տանայ ղրկել, բերել տալով այս Արաբիոնի
Սարիտս եպիսկոպոսէն, որ ունէր շատ մասունք
սրբոց։ Հաւանօրէն այս բանս հանդիպեցաւ յԱ-
րաբիոնէ նորէն 'ի Կոկիւսոն դարձած ատենը.
ուր մէկ սաստիկ և վերջին ձմեռ մ'այլ անցուց,
որ երթալով կու նուազեցնէր իր ուժը և կեանքը։

Հասաւ վերջին գարունն այլ. նորէն կենդանա-
նալ կարծեց և զուարթացաւ Ոսկեբերան. բայց,
« եթէ ամեն մարդ, կ'ըսէ[2], կու զուարճանայ
» գալստեամբ գարնան, որ զերկիր ծաղկօք և
» մարգօք կու զարդարէ, ես անոր համար կ'ու-
» րախանամ՝ որ ինծի ոյժ կու տայ՝ նորէն իմ
» մտերմացս հետ խօսակցելու թղթով... Ո՛չ այն-
» չափ նաւավարք և թիավարք, խնդալով այս ե-
» ղանակիս գալուն՝ կ'ելնեն ծովեր պտտելու,
» որչափ ես խնտումով կ'առնում 'ի ձեռքս՝ ե-
» ղէգս, թուղթս և թանաքը, ձեզի գրելու հա-
» մար »։ Երանի՜ երբ այս գրութեան նիւթերն
ունենար. վասն զի « ձմեռուան ատեն երբ չորս
» դին սառած էր, կ'ըսէ, և չտեսնուած թան-
» ձրութիւն ձեան ամեն ճամբայ խցեր գոցեր էր,
» և ոչ երթալ ոչ գալ կ'ըլլար. իբրև բանտի մէջ
» յայս տնակս փակուած, թուղթ չունենալով
» իբրև շղթայակապ լեզուաւ մնջանջենաւոր դա-
» տապարտուած էի »։ Իսկ այն վերջին ձմեռուան

1 Թուղթ ՃԺԶ։

2 Թուղթ ՃԺԸ։

համար՝ զոր 'ի Կուկուսոն կրեց, 'ի սկիզբն 407 տարւոյն, այսպէս կու գրէ առ հաւատարիմն Ոլոմպիադա։ « Ձմեռնս արդարև Հայաստանի ձմեռն
» էր. այսչափ ըսելս բաւական է. բայց ինծի շատ
» չդպաւ. վասն զի գիտնալով ըլլալիքն՝ առաջը
» կ'առնում. միշտ կրակ վառելով, շատ զգեստ
» հագնելով, աղէկ գոցուելով, և խցիկէս դուրս
» չելնելով. որ թէպէտ շատ ձանձրալի բան է ին-
» ծի, բայց ապագայ օգտին համար կու համբե-
» րեմ։ Քանի որ տան մէջ եմ՝ շատ չեմ նեղիր
» ցըրտէն. բայց եթէ քիչ մը դուրս ելնենք կամ
» բաց օդի կենանք՝ շատ կու նեղինք։ Ուստի քե-
» նէ այլ կ'աղաչեմ և կու խնդրեմ իբրև մեծ
» շնորհք մը՝ որ քու առողջութեանդ այլ հոգ
» տանիս... և ճարտար բժշկաց խորհրդով վա-
» րուիս։.. Ինչպէս ես այլ անցեալները քիչ մը
» օդին ցրտութենէն ստամոքի նեղութիւն քաշե-
» լով, բաց ուրիշ դեղերէ՝ մեր ազնիւ և պատուա-
» կան Սինկլիտիկա տիկնոջ խաւրած դեղն այլ
» առնըլով գրեթէ իրեք օրուան մէջ նորէն առող-
» ջացայ.. ուստի և կու խնդրեմ որ այն դեղէն
» նորէն ինծի ճարել տաս, որ թէ ստամոքաց
» դրդռութեան դէմ կ'օգտէ, թէ կրծոց բորբո-
» քումը հանդարտեցնելու, և թէ հարբուխը
» կ'իջեցընէ. և չափաւորապէս տաքցնելով թէ
» ույժ կու տայ թէ ախորժակ կու բանայ. ինչպէս
» քանի մ'օր առաջ ես փորձեցի այս ամենն այլ։
» Ճար ըրէ որ Թէոփիլոս կոմսն նորէն խաւրէ ին-
» ծի այս դեղէն։ — Բայց չըլլայ թէ խռովիս հոս
» տեղ քաշած ձմեռուանս համար. վասն զի ան-
» ցեալ տարուընէ շատ աւելի աղէկ եմ »։

Այս իրաւ կամ յուսադիր աւետիսը տալէն ետև, երկայն խրատներով կու յորդորէ զՈլիմպիա՝ որ նեղքերը չթողու տրտմութեան հոգւոյ մէջ, հապա դեղով, համբերութեամբ և սուրբ մտա-

ծութեամբք քաղաքերուի. և ատոնց դիւրութեան համար կու խաւրէ իրեն՝ նախ յիշած մխիթարական գրուածքը, Ուշ ու ճեանի յայլմէ՝ ԷՒԷ ուշյանչնէն. զոր և պատուիրէ շատ անգամ կարդալ և ինչուան ՚ի բերան այլ սովրիլ: Եւ դարձեալ իր վրայ գալով՝ աւելի մխիթարելու համար այն սրտահոգ ազգայնին՝ ցանկալի յոյսեր կու տայ, (որով թերևս նախախնամութիւնն զինքն իսկ խաբէր և կ'անուշցընէր պանդխտութիւնը). «Իսկ եթէ ինձմէ
» զատուած ըլլալուդ համար է տխրութիւնդ,
» ասոր այլ ուրախալի վերջը կրնաս յուսալ. և
» զայս ոչ եթէ զքեզ սփոփելու համար կ'ըսեմ,
» այլ ինծի յայտնի կ'երևի այս բանս. վասն զի
» եթէ այսպէս ըլլալու չըլլար, եթէ չեմ սխալիր,
» ինչուան հիմայ քաշած նեղութիւններէս՝ շա-
» տոնց մեռած կ'ըլլայի. Թողլով ՚ի Կ. Պոլիս կրած-
» ներս, ինչեր որ քաղքէն ելնելէս ետև այն եր-
» կայն և ձանձրալի ճամբորդութեան մէջ կրեցի,
» որոց շատն բաւական էին զիս մեռցընելու, ինչ
» որ հոս գալէս վերջը քաշեցի, ինչ որ Կոկիսոնէն
» ելնելէս ետև և Արաբիսոն եղած ատենս, յայտ-
» նի են քեզի: Արդ այս ամեն վտանգէն ազատե-
» ցայ. և հիմայ թէ առողջ եմ և թէ շատ հան-
» գիստ. անանկ որ Հայերն անգամ կ'ափշին թէ
» ինչպէս ասանկ տկար և զաղփաղփուն մարմնով
» կրնամ այսպիսի ցրտու դիմանալ և օդի ա-
» նուլ, երբ իրենք իսկ՝ որ ձմեռուան վարժած
» են, այս տարուանս ձմեռը կարգէ դուրս է կ'ը-
» սեն. իսկ ես ինչուան այսօր անվնաս և անարատ
» մնացի. աւազակաց ձեռքէն ազատեցայ, որ շատ
» անգամ վրանիս յարձակեցան. շատ կարևոր
» բաներէ զուրկ ըլլալով, ինչուան բաղնիքէ այլ.
» որոնց առջի բերան շատ պէտք կու զգայի. իսկ
» հիմայ անանկ եղայ՝ որ ոչ պէտք կ'իմանամ, և
» ոչ այլ պակաս առողջ եմ՝ քան եթէ անոնք ու-

» նեցած ըլլայի: Ոչ օդոց սաստկութիւնն, ոչ տե-
» ղեաց ամայութիւնն, ոչ գնելի բաներու քիչու-
» թիւնն, ոչ կարեւոր դարմանոց պակասութիւնն,
» ոչ բժշկաց տգիտութիւնն, ոչ բաղանեաց չգը-
» տուիլն, ոչ իսկ անակկիս մէջ իբրեւ 'ի բանտի
» արգելեալ մնալս, չկարենալով քիչ մը քալել՝ որ
» ինծի միշտ հարկաւոր էր. ոչ անդադար կրակի
» եւ ծխոյ մէջ նստիլս, ոչ աւազակաց վախն, ոչ
» պահապանաց զգուշանալն վրաս, եւ ոչ մէկ այս-
» պիսի նեղութիւն՝ չկրցան զիս ձանձրել եւ ընկճել.
» այլ եւ աւելի առողջ եւ հանգիստ եմ քան թէ
» առաջ, թէպէտ եւ խնամք եւ հոգ տանելով: Արդ
» այս բաներս գիտնալովդ դու այլ մէկդի թող հո-
» գերդ եւ տրտմութիւնդ »:

## Ի

Աստուծոյ ողորմութեան, արդարութեան իրաւանց, հաւատարմաց սիրոյն եւ ջանից, եւ Հռովմայ քահանայապետին եւ կայսեր (Ոնորիոսի) յուսադրութեան վրայ վստահացեալ՝ կրնար Ոսկիբերան այսպէս գրել, մանաւանդ առ Ողիմպիադա: Նոյն իսկ երկինք եւ վերինք Ոսկիբերանի վըշտակից եւ կողմնակից յայտնուեցան շատ եւ շատ կերպով. ուղղոց պաշտպանութիւն եւ երկայնմտութիւն եւ վկայական պատկներ տալով, իսկ թիւրելոց շատին՝ շուտ եւ չարաչար վախճան. որոց ժամանակակից եւ անկողմնասէր պատմիչք այլ վկայեն: Արդարոյն դէմ միաբանեալ եպիսկոպոսաց շատերն այսպիսի վերջ ունեցան. եւ նախ քան զայլս՝ Կիւրինոս, Քաղկեդոնի եպիսկոպոսն, որ իր թեմին մէջ ժողովեր էր իր օրինաւոր առաջնորդին հակառակորդները. նոյն ժողովքին մէջ միամտութեամբ գտնուելով եւ Ս. Մարութա մարտիրոսասէր հայրապետին՝ դիպուածով այս Կիւրի-

նոսի տեղը կոխեց․ անկէ ցաւ և վէրք պատճառե-ցաւ, որ մարմնոյն վրայ այլ ճարակելով քիչ ա-տենէ մեռուց զնա։

Բայց ամենէն գլխաւոր չարեաց գործիչն՝ Եւ-դոքսիա, դրեթէ ամենէն այլ առաջ, իր հասակին և փառաց ամենէն փայլման ատեն՝ մեռաւ (տղա-բերքի ցաւով), հազիւ երեք և կէս ամիս Ոսկի-բերանի արտաքսահմանութենէն ետև, (6 հոկտ․ 404), մինչ դեռ սա նոր հասած էր 'ի Կոկիւսոն։ Թշուառ դշխոյ, տգեղացեալ մայր որբանէր Գե-զանւոյն (Բուլղերիայ)․ Թէ կամաւ չնուաստա-ցընէիր քու սիրտդ՝ միթէ չէ՞ր կրնար բարձրանալ քու օրհորդիդ նման։ Եթէ Ոսկեբերան զքեզ՝ լրբութեանդ և ագահութեանդ համար՝ Յեզա-բելի և Հերովդիադայ նմանցուց, միթէ երբեմն այլ մեծապէս չգովե՞ց, երբոր դրեթէ իրեն հետ Թափորակից՝ փոխադրեիր զնշխարս սրբոցն։ Դու Թշնամի եղար այն մեծ անձին, նա ոչ երբէք քեզի․ որ և հիմայ լսելով տարաժամ մահդ՝ ոչ միայն ոչ խնդաց, այլ և ողբաց անշուշտ, որպէս Դաւիթ զԱբեսաղոմ։ Աւա՜ղ, ափսոս քեզ․ շատ՝ և քան զչափդ 'ի վեր բարձրացուցիր շարժեցիր Թագա-փայլ գլուխդ։ Հասաւ, ո՛հ, և ի՞նչ շուտով, հա-սաւ քու սև օրդ այլ, ծածկելու ամեն փառքդ, ամեն վայելքդ, ամեն յոյսդ․ զքեզ ինքն բոլորո-վին ծածկելու յաշխարհէս։․․ Թո՛ղ, դի՛ր հիմայ այդ մարմարեայ գլուխդ ցուրտ բարձին վրայ, և իջի՛ր, մտի՛ր, Թագի՛ր, Թաղուէ՛, դադրէ մութ գերեզմանին մէջ։․․․ Խնայէ՛, ո՛վ անհեղ արդարու-Թիւն․ — բայց սա Թող չիտար անոր հանգչելու գերեզմանին մէջ այլ։ — Ոչ Ոսկեբերանն է հոս, այլ Բարձրելոյն Աստուած՝ բարկութեամբ կու նայի իր արդարութեանց դիմաց դրուած դշխոյին մե-ռեալ մարմնոյն վրայ։․․ Երեսուն և չորս տարի Եւդոքսիայ գերեզմանն շարժելով կու դողայ կու

գըրգի, ճնչուած որ յետ այնքան երկար տարինե-րու՝ իր հալածեալ Սրբոյն փառաւորեալ մարմինն գայ՝ իր դիմաց կանգնի ու գագրեցնէ զանհանգարան զայն՝ 'ի կեանս և 'ի մահուն։ Այն առեն ալիսի գագրի եկեղեցւոյն հերձուածն այլ, որոյ մէկ մասն Յովհաննինեան կոչուէր՝ Ոսկեբերանի հաւատարիմ մնալուն համար։ Նոյն կու ցաւէր Սուրբն այլ այս երկպառակութեան և անպարտ մարդկան հալածանաց և չարչարանաց վրայ. զոր կու վախեր թէ աւելի զայրացընէ՝ եթէ կամօք հրաժարի իր աթոռէն, իբր հաստատելով Թէոփիլեանց անկանոն ժողովը։ Ասոր համար դեռ Կ.Պօլսէն չելած՝ բողոքոյ գիր գրեր էր առ Պապն Իննովկենտիոս, որպէս և վերջն այլ, բայց օգուտ մը չեղաւ։

Իսկ հիմայ յետ եռամեայ աքսորանաց և տառապանացն սրտառուչ գիր մ'այլ գրելով կ'ըսէ առ նոյն գլուխն եկեղեցւոյ. «Թէպէտ և մարմնով
» որոշեալ տեղ մը միայն կու բնակինք, բայց սի-
» րոյ թեւն բոլոր աշխարհս կու պտտի. թէ և ան-
» բաւ ճամբով հեռու ենք իրարմէ, բայց ես քու
» Սրբութենէդ զատուած չեմ, այլ միշտ ներկայ
» կու գտնուիմ. սիրոյ աչօք տեսնելով քու արիու-
» թիւնդ, անկեղծ գութդ, անփոփոխ հաստա-
» տութիւնդ, և այն մեծ, անպատկառ և շարունակ
» մխիթարութիւնդ՝ որով կու սփոփես զիս։..
» Ասոր համար մեծապէս շնորհակալ եմ, և փա-
» փաքէի սաստիկ գրել ձեզի, որ ինձի այլ մեծ
» մխիթարութիւն էր. սակայն տեղւոյս ամայու-
» թիւնն չիթողուր ինծի զայս. ոչ միայն հեռա-
» ւոր՝ այլ և մօտաւոր կողմերէ անգամ հոս գա-
» լը դժար է, թէ տեղւոյս սահմաններէ զուրս
» առանձնութեանը համար, և թէ ճամբաներն
» աւազակներէ բռնուած ըլլալուն. ասոր համար
» կարեկցութեան արժանի սեպէ զիս և մի կար-

» ծեր անհոգութիւն »: Այսպս կու խոստովանի որ Ս. Պաւլին հայրենի խնամքն բաւական էր ամէն բան կարգի դնելու, եթէ հակառակողք նորանոր չարիք չհնարէին, որոց ըրածները պատմելու չէ թէ նամակ՝ այլ և ոչ գիրք մը կու բաւէր:

Ու գարձեալ կրկին և կրկին կ'աղաչէ՝ որ զանց չընէ հսկողութիւնը. վասն զի եղած չարիքն բոլոր եկեղեցւոյ վնաս կու սպառնան: « Իսկ ես՝ ա-
» հա երեք տարի կ'ըլլայ աքսորանացս, որ սովու,
» սրածութեան, պատերազմի, անդադար պա-
» շարմանց, խելքէ դուրս միայնութեան, ամենօ-
» րեայ մահուան և Իսաւրացի սրերու մէջ ըլլա-
» լով. շատ ու շատ կու մխիթարուիմ ձեր հաս-
» տատուն և յարատև գթովը, և անկեղծ սիրովդ
» կու զուարճանամ: Ասոնք են իմ պարծանքս,
» իմ պաշտպանութիւնս. այդ է իմ անալէկոծ
» նաւահանգիստս, և անբաւ բարեաց գանձս, և
» մեծ ուրախութեանց և զուարճութեանց ա-
» ռիթս: Այսպէս այս անապատագոյն տեղւոյս
» մէջ այլ՝ իմ վշտացս մեծ մխիթարութիւն կու
» գտնեմ »: —

Այսպիսի թղթոյ և գրողի՝ Իննովկենտիոս չէր կրնար ճարտասանական պատասխան մը տալ, այլ կրնար և կրցաւ իւրեն վայելուչ հայրաբար լե-զուաւ խօսիլ. « Թէպէտ և պէտք է որ անմեղն՝
» ամենայն բարիք և ողորմութի յԱստուծոյ յու-
» սայ, սակայն մենք այլ այս թուղթս կու գրեմք
» (Կիւրակոս սարկաւագի ձեռօք), յորդորելով
» 'ի համբերել. որ չըլլայ թէ անիրաւութիւնն
» աւելի զօրանայ՝ ընկճելով, քան թէ բարի խիղ-
» ճըն՝ յուսալով: Գիտեմ որ ինձմէ սովրելու կա-
» րօտ չես դու՝ [illegible] ,
» թէ առաքինիք անգամ միշտ կու փորձուին, որ
» յայտնի ըլլայ իրենց հաստատութիւնն և չարկա-

» րանալն վաւանդաց մէջ, և երևնայ խղճի մտաց
» զօրութիւնն ընդդէմ ամենայն անիրաւ չարեաց.
» որոց կատարելապէս չյաղթողն՝ կրնայ երկբա-
» յելի ըլլալ: Ամեն բանի պէտք է համբերէ՝ ով
» որ նախ Աստուծոյ և ապա իր խղճմտանաց վրայ
» վստահ է: Արդարն կրնայ ամենայն վշտաց տակ
» ընկնիլ, բայց յաղթուիլ՝ ոչ. վասն զի միտքն ամ-
» րացած է վարդապետութեամբ Ս. գրոց, զոր
» ժողովրդեան կու քարոզեմք. որք և վկայեն՝ թէ
» գրեթէ ամենայն սուրբք զանազան կերպով և
» միշտ չարչարուեցան, և իբրև կրակով փորձուե-
» լով այնպէս իրենց համբերութեան պսակն ընդ-
» ունեցան: Արդ հոգւոյդ գիտակցութիւնն մխի-
» թարէ քու սիրտդ, եղբայր իմ ամենասիրելի,
» որ միայն մխիթարութիւն է առաքինութեան՝
» տառապանաց մէջ: Քրիստոսի Տեառն մերոյ ա-
» չաց առջև՝ զատել խղճմտանքն՝ պիտի ձգէ խա-
» րիսխը 'ի նաւահանգիստն խաղաղութեան »:

Ի՜նչ պարզ ու վսեմ, ի՜նչ սրտառուչ և երկ-նախառն խօսուածք երկուց քահանայապետաց. ո՞վ չիտեսներ աստուածային ձեռքն՝ իր եկեղե-ցւոյն գլխոյն ձեռաց մէջ, և իր երկնային վճիռն՝ գուշակեալ անոր գրչովը, քան զոր բարձրագոյն անձ մը չէր կրնար ըլլալ երկրիս վրայ՝ Յովհաննու առջև: Միշտ մաքուր գիտակցութիւնն Յովհան-նու՝ ա՛յլ աւելի զատել այնքան տառապանօք, ուրեմն ուրիշ բանի չէր մնար՝ բայց եթէ ձգելու իր մեծ խարիսխը 'ի խորս յաւիտենական խաղա-ղութեան: . . . .

Արդ ինչո՞ւ չես փութար յետին փոթորիկ կրից նախանձու և ատելութեան, քշելու այս ալէկոծ և միշտ ծովայաղթ նաւը՝ իր յետին ծոցը. մինչև ցե՞րբ կու տարուբերես զնա 'ի Կոկիւսոնէ յԱրա-բիստն, յամայութենէ յամայութիւն... փչէ, մէկ մ'այլ փչէ քու յետին զայրութեան շունչդ, և

անիրաւութիւնն իր գործը կատարէ երկիրս վերայ, արդարութիւնն այլ յերկնից հանդիսանայ:

# ԻԱ

Եկաւ հասաւ, լեռներ և անապատներ անցնելով այն գժոխաշունչ փոթորիկն. ներքինեաց և խաբեբայից խաղալիկ եղած՝ թոյլ և գաւանացեալ Արկադեայ հրամանն, խնամելով իր եղբօր (Ոնորիոսի) և Պալատին խրատուց: Որովհետեւ այնչափ եպիսկոպոսք և իշխանք յետ ամենայն ջանից չէին կրնար մեր Յօհաննիկին ոսկի բերանը լռեցնել, չէին կրնար արգելուլ մեծաւ մասամբ զՅունաստան, զՀայաստան, զԱսորիս, ըզՓիւնիկէ, զՊարս և զԳոթս, և զԻտալիա՝ իրեն գաւանալէն զթով և խնամով, և զբոլոր աշխարհ՝ զնա պաշտելէն, վճռեցին անգութքն որ անոր անապատագոյն կարծած տեղէն՝ այլ և շատ աւելի հեռու և խոր ամայի անապատ տեղ մը տարուի. որովհետեւ Կոկասցիք շատ կակուղ գտուեցան և Հայք մարդասիրագոյն քան զՅոյնս, Թո՛ղ քշուի Յովհաննէս մինչեւ յանկիւնս Պոնտոսի, Լազիստանու բարբարոս բնակչաց մէջ, յանծանօթ տեղին Պիտիւոնտ, (կամ Պիթիհոն ըստ նախնեաց) որ է հիմկու Բիցունտա՝ 'ի ստորոտս Կովկաս լերանց Աբխազաց ծովեզերքը, ուր հազիւ նաւ կու մօտենար, և ցամաքէն այլ հազիւ թէ մարդ կ'երթար. այնքան անսովոր և վախնալու տեղ էր:... Ո՛հ, ինչուան ո՛ւր այլ կու հասնի եղեր նախանձն կոյր և կամակոր. և ինչպէս գժոխանման խիստ է եղեր այդ կիրքդ՝ նաև այսպիսի անչար և արժանաւոր անձի դէմ:.. Ի՛նչ ողորմելի արարած և ինչ սաստիկ գազան է մարդս մարդու հետ: — Աստուած իմ, ազատէ զմեզ այսպիսի կրքերէ:...

Արգելական հիւանդին վերջին ձմեռն այլ անցեր էր. ցանկալի և ուշացած գարունն այլ եկեր էր. ծաղկունք հետ իրարու բացուէին գոցուէին. և այլ պիտի չբացուէին Ոսկիբերանի աչաց առջև: Ո՛հ, այլ պիտի չկոխէր նա հեզաքայլ գարշապարօքը Ջահանայ հովտաց նկարազարդ մարգագետինները. այլ պիտի չդարձնէր դէմքը առաւօտանց Եփրատայ վազած կողմը, կենարար զուարթարար արեգակ մ՚ողջունելու. և ոչ անմրուր տրտմութեամբ մը՝ անոր յետին ճառագայթից մնաք բարով ըսելու դառնար՝ դէպ 'ի զարհուրելի Իսաւրացւոց քարաժուռ լեռները: — Այլ պիտի չտարածուէր 40 տարի շարժավարժենի ձեռքն մագաղաթից վրայ, երկնից ազդողագոյն պատուէրքները՝ երկրիս ազնուագոյն լեզուաւ գծագրելու. — այլ պիտի չերթային թռչելով իր իմաստուն և մխիթարալից նամակներն ընդ ծով և ընդ ցամաք, այնքան կարօտ և տրտմեալ սրտեր սփոփելու, և եկեղեցիներ հաստատելու: — Ոսկիբերանն այլ պիտի դադրէր. աշխարհ խլանար, եկեղեցի ամայի մնար, չլսելով զքաղցր ձայն՝ իւր անհաման Յոհանկէն:...

Իր աթոռը թողլէն և աքսորանաց սկզբէն 'ի վեր՝ երեք տարին լրացեր էր. յունիս ամսոյ կէսն էր. արեգական ճառագայթք շիտակ տեղային Փ. Ասիոյ լեռնադաշտաց և տափարակաց վրայ, որ ամառնային եղանակին այնքան տաք կ՚ըլլան իրենց աշխարհագրական լայնութեան դրից համեմատ, որքան ձմեռը ցուրտ են՝ երկրակազմական դրից բարձրութեանն համար: Յովհաննու նոր աքսորանաց տեղն Կոկիւսոնէն վեց աստիճան դէպ 'ի վեր հիւսիս էր, և չորս աստիճան մ՚այլ դէպ յարեւելք. որով կ՚իմացուի թէ հոն այլ սաստիկ ձմեռն պիտի ըլլայ, և անտանելի մեր փափուկ և տկար պանդխտին համար: Հիմայ այլ ինչ գծըն-

դաշտ պիտի ըլլայ այս 600 մղոնի չափ երկայն ճամ-բան, սաստիկ տաք եղանակին, և անանկ անկոխ անվար քարուտ լեռնուտ տեղուանք, և միշտ դէպ յայն կողմն երթալով՝ ուսկից կ'իջնեն այն երկիր-ներու գետերն, Ջահան, Սիհուն (Գզըլ-ըրմաք). և Իրիս (Եշիլ-ըրմագ). ըսել է որ միշտ դէպ 'ի դար վեր պիտի ելնէր աքսորեալն։ Եթէ այսքան դժարութիւնք կասկածել կու տան անոր ողջ հասնելուն այն դժար և հեռաւոր արգելանին, ինչ ըսելու է, Հայկակ, եթէ քշուելուն կերպն ալ յիշենք։ —

Հալածողքն դաղտուկ պատուիրած էին սուր-բը տանողներուն, որ ամենէն անշէն և անկոխ տե-ղերէն անցնեն, ամենևին չխնայեն, հանգիստ չտան իրենց ձեռքը մատնուածին. և մէկ խօսքով (զոր լաւ իմացուցին անոնց) նայէին որ 'ի Պիտիւնտ չհասած՝ ճամբուն վրայ անոր բանը լմընցընեն. և եթէ այսպէս ընելու ըլլան՝ մեծ վարձք կ'ընդու-նին և զինուորութեան մէջ առաջ կ'երթան։ Վասն զի այս դահիճ՝ քան վարիչ ըսուածքն՝ ա-րեէ արիւնէ անցած երկու ահարկու վայրագ զի-նուոր էին. ով գիտէ թէ ինչ բարբարոս ազգէ կամ կրօնքէ, (եթէ կրօնք այլ ունէին այնքան անգութ անկրօն հալածչաց պաշտօնեայ եղողքն)։ Բաւական ըլլայ ըսելն՝ որ իրենց պաշտօնը յանձ-նըւածին համեմատ կատարեցին, մանաւանդ մէկն. անանկ որ այն երկայն ճամբուն հազիւ քա-ռորդ-կամ երրորդ մասն ըրած՝ քշողք և քշել-տուողք իրենց վախճանին հասան։... Կոկիւսոնէ 'ի Կոմանա, ուր որ միայն կրցաւ հասնիլ Սուրբն, շիտակ գծով այլ 150 մղոն մը կ'ըլլայ, իսկ իրեն քշուած ծուռ մուռ ճամբաներով որ մեզ անծա-նօթ է, թերևս կրկին երկնցած ըլլայ. այս յայտ-նի է որ երեք ամսոյ չափ քշեց։...

Երեք ամիս անդադար մարտիրոսութիւն մը,

երկու աւազակ դաւաճանաց ձեռք՝ այն ճամբուն վրայ… Ո՞վ կրնար գիտնալ. — միայն Ոսկիբերան։ — Իր վերջին բառն խօսքէն յայտնի է՝ որ առաջին բառն այլ էր, այն՝ զոր ստէպ կ՚ըսէր և ըսելէն դադրիլ չեմ կրնար կ՚ըսէր. Փառք քեզ Աստուած, յաղագս ամենայնի։ — Քանի՜ սրտապատառ էր լսելն զայն վերջին անգամ՝ Կոկայ քարերուն և ջրերուն մէջ, ուր երբեմն աշխարհիս ամայագոյն տեղն՝ հիմայ դրախտ մը դարձեր էին մեր Խօսնակին. — ո՞վ լսեց այն Ոսկիբերնին վերջին մեծ բարովը՝ առ երեքամեայ նժդեհութեան տեղը. առ այն ծխոտ մատոռ խցիկը տանն Դէոսկորի, որ Անտիոքայ և Բիւզանդիոնի պատրիարքական բեմէն փոխանակ եղեր էր։ — Թերևս երանելի Պաւլին ըսածին պէս՝ բաց յԱստուծոյ և ըսողին գիտակցութենէն՝ ոչ ոք լսեց։ — Վասն զի կ՚երևի թէ անկարծ և անակնկալ (գուցէ և գիշեր) ատեն՝ խաւարասէր բուխճակաց նման՝ վրայ հասան չարամագիլ վայրենի որսորդք, և խլեցին մեր անգէն անմեղ եկեղեցւոյ Խօսնակ վարուժանը, չթողլով բան մը հետն առնուլ, բաց անկէ զոր չէին կրնար արգելուլ. — իր ագամանդ սիրտը[1]։

Ո՜վ Տէր, ինչե՞ր կրեց քու հրաշակերտդ, այն մեծ սիրտն՝ իր երկրաւոր կենաց այս յետին երեք ամսուն մէջ. ինչե՞ր ազդեցին անոր իր մարմնոյն կրած չարչարանքն, անձուանի չարչարողաց կերպարանքն, խօսքերն, գործերն. — անծանօթ և անմարդի տեղեաց դժարութիւնն, լռութիւնն, սոսկումն, և ծայր ճոթ չերևիլն. — զուրկ, հեռի և մենիկ մնալն ամեն սրտակցէ, ամեն բարեկամէ, ամեն մխիթարչէ. — ոչ խօսիլ և ոչ գրել կրնալն

1 Թէպէտ Գէորգ պատմիչն համարի թէ հետը կային երկու քահանայք և սարկաւագ մը, որք քանի մը հարկաւոր բաներ այլ հետերնին առած էին։

առ Ոլոմպիադա և առ այլ Թղթակիցսն. — այնքան հաւատարմաց շանքէն՝ և խոստմունքէն միայն ամենէն մեծին՝ որբազան Պապին վերջին խօսքին սատուգուին, թէ «Փորձուած զտուած » խիղճմտանքն՝ պիտի ձգէ իր խարիսխը 'ի Նաւա- » հանգիստն խաղաղութեան ». խօսք մը՝ որ միայն լուին արձագանգ մը կ'ըլլար իրեն անդադար և յաղագս ամենայնի՝ Աստուծոյ փառք տալուն: — Ո՜վ երջանիկ հայկական ճանապարհ, — թէպէտ և դժնդակ, այո, և մահաբեր մեր Սրբոյն. — այլ դու քեզի երջանի՛կ՝ որ անոր յետին քայլեց կնիքն առիր. ո՞ւր էր թէ յայտնուէիր. գտնէի տեսնէի այն ուխտագնացի հետքը, և թէ սողալով այլ հարկ ըլլար՝ անցնէի Ոսկիբերան Յօհաննէս յետին անցքէն: — Հարաւէն 'ի հիւսիս բոլոր Փոքր Հայոց երկայնքն էր այս եռամեայ ճամբան, գրեթէ ճիշդ երկու Հայոց բացաձիգ սահմանաց միջոցն, 'ի Կոկիսոնէ ց Կոմանա: —

Մարդկութեան մեծագոյն ամօթոյ գործոց մեկը ծածկելու համար, կամ Աստուծոյ ընտրելոյն՝ միայն իրեն համար քաշածը մենէ գաղտուկ պահելու համար, այս յետին ժամանակին լուրերն չհասան յերկիր, միայն երկինք գիտեն. իսկ մեզի այսչափ յայտնեցաւ, որ շատ անխնայաբար և նեղութեամբ քշեցին զսուրբն այն ճամբէն, ամենեւին չնայելով օդոց և գետնին անհարթութեան, և աքսորելոյն տկարութեանը: Օր հասարակի տապախառն տաքի ատեն քաշկըռտելով կու տանէին Սուրբը՝ հետեւակ և ցաւագին ոտքով. գլուխն այլ ծածկոցը խլած՝ անմազ գագաթը, որ Եղիափին նման կուռն էր, կ'ըսէ հաւատարիմ պատմիչն[1] կու թողուին չարաչար այրելու. արդէն ինքն ենթակայ էր գլխի տաքութեան և ցաւոց.

1 Պօլլանդիստ:

իսկ հոս հիմայ ի՞նչ կ'ըլլար։ Երբեմն այլ սահա-նաւաց երկնքէն անձրեւ տեսեն՝ ճամբայ ընել կու-տային. ջուրին կռնըլէն և ղօգէն վար կ'իջնէր կ'ո-ղողէր բոլոր մարմինը։... Եւ սանկ կրօղն ո՞վ էր. – Ոսկեբերա՞ն. այն մէկիկ Խօսնա՞կն եկեղե-ցւոյ. և ի՞նչ տեսեն կրէր. այն քրիստոնէութեան պայծառ և խաղաղ տեսենը, կայսերութեան փա-ռաց և ճոխութեան մէջ։... Այսքան կերպ և այս-քան քաղցր համբերութիւն՝ գուցէ քարերն ան-գամ ճաթեցընէին. քարասիրտ դահճաց մէկն այլ նման Քրիստոսի քովի աւազակաց մէկուն՝ յիշեց որ ինքն այլ իր քշածն այլ մարդ են, շարժեցաւ վերջապէս 'ի գութ. մինչդեռ ընկերն ձախակող-մեան այլ աւելի խստանալով խօժոռէր ապառաժ-նար, սպառնար, հայհոյէր, թէ որ մէկն իրեն աղաչէր որ քիչ մը գթով վարուի, հարկ կ'ըլլար որ միւսն շատ հեղ չհետեւի սրտին ազդմանցը, վախնալով հալածողաց չարութենէն և ընկերին մատնութենէն. բայց երբ նա քիչ մը հեռացած ըլլար, ձեռքէն եկած օգնութիւնը կ'ընէր Սրբոյն։

ԻԲ

Այսպէս չափեցին այն ծանր և երկայն երեք ամիսները. կտրեցին անցան բոլոր Ջահանայ և Սիհունի և Ալիսայ բարձրատափերը, հասան Իռիսայ հարաւային օժանդակին (Թօզանլը-սու կամ Թօզաղ-սու). անցան զայն այլ, և եկան 'ի Կո-մանա կմ Կոմանիս, քաղաքաւանը, որ գրեթէ միջա-սահմանն է Փոքր Հայոց և Պոլեմոնեան Պոնտոսի, Դասեմոնեան դաշտին մէջ (Գազ-օվասը), Եւդոկիա (Թօգատ) քաղաքէն 7-8 մղոն հեռու դէպ յարեւ-լեան հիւսիս, և դեռ ծանօթ Կիւմէնէք անուամբն. որ հին տեսեն անուանի ուխտատեղի էր Անահտայ

կամ Լուանի գիւղ՝ (Մօ կամ Մուհէն անուանեալ)[1], և մեծ ոռնավայրաձաւ Հայոց, ուր քրմապետն գրեթէ թագաւորական իշխանութիւն ունէր, և հազարաւոր քուրմեր ու քրմուհիներ։ Քրիստոնէութիւնն ջնջեց զանոնք և զտեղին նուիրեց Աստուծոյ Ճշմարտի։ Մեր Լուսաւորչի ատեն Կոմանա տաճարին եպիսկոպոս մ'ունէր Բասիլիսկոս անուամբ՝ որ ընկի Անտիոքացի էր. այն ատեն Հռովմայեցւոց իշխանութեան տակ էր Կոմանա. և մինչ Հայաստան Տրդատայ ձեռքին տակ կուվայլէր 'ի նորընծայ քրիստոնէութեան, հոս Մաքսիմիանոսի հալածանօք կու նեղուէր. որ և պատճառ եղաւ եպիսկոպոսին նահատակութեան 'ի Նիկոմիդիա (312), ուսկից բերին մարմինն և աս քաղաքաւանէն քանի մը մղոն հեռու թաղեցին, վրան այլ եկեղեցի մը կանգնեցին, ու եղաւ անուանի վկայարան մը[2]։

Արդ հոս իր հայրենակցին հանգստեան քով հանգչեցաւ Ոսկեբերան սեպտեմբերի 13ին գիշերը. և երբ Յակոբ նահապետին պէս՝ իր յոգնած և ցաւած գլուխը դրաւ այն սուրբ քարին, անսաւ փափագելի տեսիլքն այլ. հանգերձեալ երանութեան լուսեղէն սանդուղն, ուսկից աւետաւոր գալով Ս. Բասիլիսկոս՝ ըսաւ. «Զօրացիր եղ-
» բայր իմ Յովհաննէս, վաղը 'ի միասին լինելոց
» առաջի Քրիստոսի »։ Նոյն Սուրբ վկայն, կ'աւանդէն, թէ երեցաւ իր նշխարաց պահապան քահանային այլ, և պատուիրեց իր հանգստարանին քով տեղ պատրաստել Յովհաննու։

1 Ուրիշ Կոմանա մ'այլ կար 'ի Կապպադովկիա, նոյնպէս անուանի այս կռոց պաշտամանց համար։

2 Ըստ ոմանց այս Ս. Բասիլիսկոս էր զինուորն, ազգական Ս. Թէոդորոսի, Ամասիացի, և հոս 'ի Կոմանա նահատակեցաւ յամին 307։

Ծագեցաւ վաղուեան օրն, օրն մեծ և յաւուրս Ոսկիբերանի: Մարմնոյն տկարութեանցն և յայտնուած տեսիլքէն գիտնալով՝ որ այլ ամեն բան իրեն համար լմննալու վրայ է, փափաքեցաւ գոնէ կենաց վերջին օրը հանգստեամբ պատրաստուիլ՝ նոր կենաց առաջին և անվերջանալի օրուան. խնդրեց պահապաններէն՝ որ ուշանան հոն ինչուան ժամը հինգ: — Ո՜վ խեղճ խնդիրք, և անխիղճ փոխարէն: — Չէ. չըրին իրեն այս շնորհքս այլ, զոր գթութիւնն չխղճանար յանցաւոր մահապարտաց անգամ. և բանաւորք շատ հեղ տասնեկ բանի դէմ չեն կենար: Բայց Ոսկեբերան մը՝ ասոր այլ արժանի չեղաւ: Ցնծեց իր գերագոյն տէրն ու վարդապետը՝ երկու աւազակաց մէջ չոր փայտի վրայ գամուած, ծարաւած, մեռած: Դարձեալ փառք տուաւ Աստուծոյ, և ելաւ. Թող տուաւ որ քաշքըշեն վատուժ և երեժտըկող մարմինը, զոր իրենցմէ աւելի իրեն կու քաշէր հոգն յետին հանգստեան: Կիսամեռ կիսախեղդ հասկի մը պէս տաքէն հրեցին քշեցին, ինչուան 30 ասպարէզ (3-4 մղոն) տառապար երկրի վրայ. վերջապէս հասկըցան որ եթէ քիչ մ'այլ առաջ քշեն՝ ձեռուընին մաշած կմախք մը պիտի մնայ, որոյ մէջ արդէն միայն ոսկոր ու մորթն և քիչ մ'այլ շրթունքն՝ ողջ կ'երեւէին: Իրենց անարժան վարձուց վախճանն հասած էր. ուրեմն գոհութեամբ փութացան նորէն յետ դառնալու[1]. նորէն այն երկայն ասպարէզներէն քաշելով քշելով բերին հոգեվար Կօմանակը. անկէ ետև անօգուտ բեռան մը պէս՝ ձգեցին իր փափագած հանգստարանին քով:

Հասաւ առաւօտանց ժամագրեալ ատենն. այն վերջին ժամուն մէջ այլ այնպէս մեծ և վսեմ ե-

1 Ըստ ոմանց Ճամբան մոլորելով նորէն յետ դարձան:

րեցաւ Ոսկիբերան, ինչպէս չէր երբէք երևած իր Կ. Պօլսի բարձր բեմէն կայծակնաբար բարբառելուն ատեն: Ոչ մահացու և ոչ անմահ, այլ թէ կրնամ ըսել՝ աստուածակերպ իմն երևցաւ. երկրաւոր աստուած մը՝ որ երկնաւոր Աստուծոյ կ'աւանդէ իր հոգին: Մտնելով 'ի վկայարան սրբոյն Բասիլիսկոսի՝ պահ մը բոլոր ցրուեալ ոյժը ժողովեց, իբրև արեգակն իր երեկոյեան ճառագայթները. որոց վրայ բարձրագոյն ճառագայթ մ'այլ աւելի կու փայլէր. — մերձեցեալ անմահութիւնն: — Ո՛չ որպէս մտաւ յաշխարհ, այնպէս ելաւ յաշխարհէ. այլ գիտութեամբ, յօժարութեամբ և վեհ հանդարտութեամբ, միանգամայն և մեծ պատրաստութեամբ: Մահուան օրն է բանականը անբաններէ զատողն և ոչ ծննդեան օրն: — Մէկ կողմէն կորուսած՝ մէկ այլ կողմէն առած ուժովը՝ կանգնեցաւ, և հոն վերջին սպասաւորութիւն մ'ընելու եկողներէն՝ ուզեց նոր և մաքուր լաթեր. իր եռամսեայ և եռամեայ պանդխտութեան քրքրեալ և աղտեղեալ զգեստիկը հանեց, տուաւ փափագողաց. և ինքն գլխէն ինչուան ոտից առման՝ մաքուր ճերմակ հագաւ. իբրև հարսանութեան գացող կոյս մը՝ իր պարկեշտ և խաչազգեաց մարմինը զարդարել ուզելով. անոնց վըրայ առաւ քահանայութեան սուրբ զգեստներն և նշաններն այլ. և ջահավառեալ աշտանակի մը պէս կանգնեցաւ առաջի Աստուծոյ. մատոյց սուրբ խորհուրդը, հաղորդեցաւ ընդ Կենարարին, ընդ որում բոլորովին խառնուելու վրայ էր: Վերուց մէկ մ'այլ իր աներկրաքարշ բազուկները, դարձուց 'ի վեր սրբահայեաց աչքերը, կեցաւ յաղօթս, 'ի զմայլումն, 'ի փոխումն....:

Արդեօք Ահարոն 'ի գլուխ Հովր լերին, կամ Մովսէս 'ի գլուխ Աբարիմայ՝ աւելի վսեմ էին իրենց վերջին վայրկեններն: — Ոսկեբերան ըսաւ իր

երկրաւոր կենաց վերջին խօսքն առ Աստուած․ ապա կռթընեցաւ, հանգչեցաւ, ողջունեց չորս կողմն եղողները, և ամենուն լսելի ու զուարթ ձայնով՝ յետին անգամ և յետին բան ըսաւ, Փառք քեզ Աստուած, յաղագս ամենայնի, վրան աւելցընելով՝ Ամէն․ որոյ յետին վանկը հազիւ լմընցուց, կամ դեռ ևս կու հնչէ յաւիտենական երանութեանց մէջ։...

## ԻԳ

Աստուածային հիանալի տեսչութեան և երկայնամտութեան քաջանշան մէկ հանդէսն այլ այսպէս հոս կատարեցաւ, այսպիսի մեծ և արդարեւ Մեծ անձի մը կենօք և վախճանաւ․ զոր Տէրն իր ամենէն սիրելեաց պէս՝ թողեր էր յաւերժայթ կամս վարչաց կամ բանաւորաց երկրի։ Եւ երբ ասոնց կարծած փափագն 'ի գլուխ ելաւ, և նախանձն հասաւ մինչև 'ի վերջ մահուն, երկինք՝ որ և յերկրի պատուէն զսուրբս իւրեանց, անծանօթ կերպով մը դրդուած ձգեցին նոյն օր նոյն ժամուն՝ հեռաւոր և զանազան ժողովրդոց բարեսէր անձանց, որք գրեթէ առանց իմանալու իրարու շարժելուն պատճառը՝ եկան գտուեցան 'ի Կոմանա․ բազմութիւն բարեպաշտից, մանաւանդ միանձանց և կուսանաց՝ 'ի Հայոց, 'ի Պոնտոսէ, յԱսորւոց և 'ի Կիւլիկիոյ․ և միաբան պաշտամամբք, աղօթիւք, երգօք և արտասուօք, և ամենայն կարգօք եկեղեցւոյ, մեծաւ սգով և սիրով իջուցին հանգուցին չարչարակիր և սրբազնեալ մարմինն 'ի տապան[1], Ս․ Բասիլիսկոսի նշխարաց

1 « Որ եւ մատուցմամբ սրբոյ խորհրդոյն՝
Աւանդեցեր ի Տէր զհոգիդ հմտական ։
Իսկ վկայարանըն Բասիլիսկեայ
Ինքնին բանայր զտապանն իւրական
Եւ ընդունէր զգանձն աստուածական »։
— Գանձ 'ի Խոսրովայ։

քով․ քաշելով վրան ծանր և մեզի սրտակտուր կափարիչը, որ ծածկեց յաչաց երկրի՝ իր 33 (կամ 30) տարի տարփալի տեսարանաց մե-կը։...

Ո՛հ, ի՜նչպէս կրնամ ես հեռանալ այս կափարչէս, Հայկակ, առանց հրաժէրը մը տալու՝ նախ այն նախանձոտաց՝ որ յայսքան վիշտ, մահ և յօտար գերեզման դատապարտեցին այս վեհագոյն մարդը։—Եկէք ուրեմն, ով ժողովք ժանտից... (բայց չէ․ իմ հեզ և անյիշաչար վարդապետիս գերեզմանին քով՝ ի՜նչպէս զձեզ անուանեմ)․—Եկէք ըսեմ, ով մոլորեալք, Թէոփիլեանք և Եւդոքսեանք, տեսէք ըրածնիդ։ Ատելութիւն և նախանձ ինչուան այս աստն այսքան մեծ որս մ'ըրա՞ծ էին արդեօք․—արդեօք տեղ մը այսքան մեծ արժանիք և արդիւնք՝ այնքան չնչին պատճառօք՝ այսպիսի ցաւալի և անարժան փոխարէն մ'ընդունե՞ր էր։ Ո՞վ այսպիսի Ոսկեբերան մը չարութեամբ լռեցուց․ ո՞վ տասնեկ ադամանդ սիրտ մը, տասնեկ անգին գանձ մը՝ ջանաց կորսնցնել։... Ցիրաւի այնքան մեծ է ձեր յանցանքն, ամօթն և խայտառակութիւնն՝ առաջի ամենայն ազգաց և դարուց, որչափ փուճ եղաւ ջանքերնիդ։ Ոսկին այն՝ մշտափայլ կայ մնայ մթնցընելով ձեր ժանգը․ ադամանդն այն՝ որուն հետ զարնուեցաք՝ մանրելով յրուելով զձեզ՝ կու մնայ անմաշ։...

Բայց դուք, կ՚ըրք չարածնունդք, որ բոյն դնելով՚ի սիրտ մարդկան՝ կու ծնանիք ամեն ժամանակ, դու գեղնած նախանձ, և դու ժանեւոր զրպարտութիւն, դուք մինչև ցե՞րբ կու հալածէք զանոնք, որոց սրտին մէջ չկայ ձեր տեղն։ — Եթէ քիչ անգամ այդպիսի մեծ անձ կու գայ յաշխարհ, կամ մէկ միայն Ոսկեբերան, սակայն քանի՞ քանի՞ բարեսիրաք և բարեմիտք՝ ձեր զինուց և ժանեաց զոհ կ՚ըլլան․ — քանի՞ բերանք՝ գոնէ ար-

ծաղիկք և անուշիկք՝ ձեր շըշէլուին՝ հանգուցան.— քանի՜ մարգարտանման մաքուր սիրտք՝ ձեր ցաւէն փշրեցան.— քանի՜ գլուխք՝ որք երկրիս վրայ կրնային անվիճելի գիծ մը թողլու, ձեր բռնութենէն դադրեցան կամ կտրեցան. — որքան ճշմարտութիւնք ձեր ստութենէն փախստական եղան և լռեցին խաղաղ. — որքան պայծառ նշոյլք՝ ձեր խաւարին մէջ թաղուած մնացին.— և որքան անմահ մնալու մարդկանց՝ դուք շուտով գերեզման փորեցիք, կամ թէ և ողջ ողջ կործանման կափարիչը վրանին կաթնցուցիք:....

Իսկ դուք, ո՜վ ազնիւք, որոց երկինք շնորհեցին չափով մը՝ Յովհաննու նմանութիւնը, — ճշմարտութիւն, հանճար, գործով և հալածանք.— դուք՝ կշռեցէք ձեր չափը ձեր կերպը, և ձեզմէ առջիններուն կրածը. և եթէ իմ ազգակից և արենակից այլ էք, յիշեցէք ձեր նախնի Ներսէսները, Մովսէսները, Սահակները, Եղիշէն, Խոսրովիկն ու Ղազարը. և եթէ բաւական չեն ձեր այրած սըրտին՝ ասոնց կիսաքանդ անայցելու գերեզմաններն, եկէք հոս 'ի տարագիր տապան մեծի Խօսնակին Եկեղեցւոյ: Հոս, կամ չդիմանալով այս կափարչին վրայ դուք այլ փշրեցէք, և կամ համբերութեամբ դիմանալով, «Փա՜ռք քեզ Աստուած յաղագս ամենայնի» կանչեցէք, ու լռեցէք:...

## ԻԴ

«Իսկ քեզի, ո՜վ երանելիդ Յովհաննէս, ի՞նչ
» խօսքերով կրնամ անթառամ պսակ մը հիւսել,
» կամ հիւսածս դնել, յանդըրգնելով գովել զքեզ՝
» յետ ելնելուդ յասպարիզէ այս կենացս. վասն
» զի անցար ազատեցար դու մըրկաց վտանգնե-
» րէն: Արդեօք այն մխիթարական ծաղկանց պը-
» սա՞կն հիւսեմ՝ որով պսակեց նա օրհնելոյն ա-

» տեն զծիրագործն Յովսէփ և զաստուածարեալ
» քահանայն Ղևի. վասն զի երկուքն այլ կու-
» տեսնեմ 'ի քեզ: Յօրհնութեան Տեառն երկիր
» քո. 'ի ժամանակաց երկնից և 'ի ցօղոյ, և յան-
» դընդոց աղբերաց 'ի ներքուստ. 'ի ժամանակի
» արդեանց արեգական փոփոխմանց, և 'ի գա-
» մարելոյ առ միմեանս ամսոց. 'ի գագաթանց
» լերանց իսկզբան և 'ի գլխոց բլրոց մշտնջենա-
» ւորաց... եկեսցեն 'ի վերայ գլխոյ (Յովհան-
» նու) և 'ի վերայ գագաթան փառաւորելոյն 'ի
» մէջ եղբարց: Անդրանիկ ցլու գեղ նորա, և եղ-
» ջիւրք միեղջերոյ եղջիւրք նորա. խեթկեսցէ նո-
» քօք զազգս միանգամայն՝ մինչև 'ի ծագս երկ-
» րի: — Տուք (Յովհաննու) զկայտառութիւն նո-
» րա, և զճշմարտութիւն նորա՝ առնն անարա-
» տի, զոր փորձեցին փորձանօք և բամբասեցին
» զնա 'ի վերայ ջրոցն հակառակութեան. որ ա-
» սէր ցհայր իւր և ցմայր իւր՝ թէ ոչ տեսի ըզ-
» քեզ. և զեղբարս իւր ոչ ծանեաւ, և զոր-
» դիս իւր ոչ գիտաց: Զգուշացաւ բանից քոց
» և զուխտ քո պահեաց: Պատմեսցեն զիրաւունս
» քո Յակոբայ, և զօրէնս քո Իսրայէլի. դիցեն
» խունկս 'ի բարկութեան քում հանապազ 'ի վե-
» րայ սեղանոյ քո: Օրհնեա՛, Տէր, զզօրութիւն
» նորա, և ընկա՛լ զգործ ձեռաց նորա. խորտա-
» կեա՛ զմէջս 'ի վերայ յարուցելոց թշնամեաց նո-
» րա. և ատելեքն նորա մի՛ կանգնեսցին»: Իսկ ես
» աւելցնեմ զայս այլ, թէ «Որք սիրենն զնա, Տէր
» Յիսուս, մի՛ ամաչեսցեն. զի քո է կարողութիւն
» յաւիտեանս. ամէն[1] »:

Հապա մենք, Հայկակ, լսե՞նք հոս, թէ գտա-
նե՞նք արտասուագին աչք մը տանք քեզի այլ, ո՛վ

1 Այս խօսքերս են Պալլադիոսի 'ի վերջ պատմութեան վարուցն Ոսկիբերանի:

ապերան քան ապերախտ քաղաք Կոստանդիա_ նոս. որ քարկոծէիր և հալածէիր զառաքեալսն առ քեզ 'ի Տեառնէ, զԱստուածաբանն և զՈսկի_ բերանն. որ ոչ կամեցար, կամ թէ ոչ կամեցան՝ ժողովել զմանկունս քո՝ որպէս ձագս հաւուց ընդ թևովք այսպիսի հարց. ահա թողեալ լեցի եկե_ ղեցի քո աւերակ տխրորակ, մինչև ասիցես վասն հովուին քո Ցովհաննու՝ օրհնեալ եկեալն յանուն Տեառն:...

Անհնար է նկարագրել Ոսկեբերանի մահուան ազդեցութիւնն այն մեծ քաղաքին և բոլոր թե_ մին, բոլոր եկեղեցւոյ մէջ. – հաւատարմաց սըր_ տաբեկութիւնը, Ոլիմպիադեանց սուգը, երկու բաժանեալ կողմանց այլ ափշութիւնը. բարեփ_ րաց արտասուախառն յերկինս նայիլը, ձախա_ կողմեանց սևերես ակնկորութիւնը. ոմանց հան_ դարտ և այլոց ալէկոծեալ խիղճը. և մանաւանդ ատոնց մէջ ամենէն աւելի պատասխանատու կամ պարտական եղող՝ Արկադիոս կայսեր տագնապը. որ և սրտահար ըլլածին և տեսածին վրայ, թէ_ պէտ ջանայ քիչ մը դարման ընել, բայց յետ քանի մ'ամսոց դեռ միջակ հասակին մէջ իջաւ 'ի գերեզման. կենդանութեան ատեն տեսնելով՝ հա_ լածեալ սրբոյն հակառակողաց շատին տարաժամ և դժնդակ մահերը, ինչպէս ոմանցն առաջ յիշե_ ցինք. և ոմանք այլ անոնցմէ աւելի չարաչար ցա_ ւերով, խելաթափութեամբ, բերաննին խեղա_ թիւրելով, շրթունքնին որդնոտելով, ջրգողու_ թեամբ, համրութեամբ, և այլ պէսպէս ցաւալի կերպով մեռան: Մնացեալներէն շատն սմքեցան, ձայներնին քաշեցին, ոմանք 'ի կեանս և ոմանք մեռնելու ատեն զղջացին. ինչպէս ամենուն պա_ րագլուխն Թէոփիլոս պատրիարքն, որ չկրցաւ, կ'ըսեն, վերջին շունչը տալ՝ ինչուան որ յերկնից քաւիչ և օգնական չկանչեց իր վրէժխնդրութե

սուրբ գրոց։ Զասոնք ուսանելով խորագէտն Աստիկոս՝ Արշակայ պէս ապօրէն յաջորդ աթոռոյն Կ.Պօլսի, (որ և ամաչելով խոստովանիմ՝ որ ազգաւ Հայ կ'ըսուի 'ի Սեբաստիոյ քաղաքէ)[1], աւելի ճարպիկ քան գիտուն, վերջապէս լեզուն նաև միրան այլ փոխեց. հրամմեց որ իր վարդապետին անունն այլ խառնեն յեկեղեցիս՝ Ս. Հայրապետաց հետ, և ինքն այլ իբրև սուրբ և Ոսկիբերան հռչակէր զնա, և գրէր իսկ առ մերս Ս. Սահակ, որպէս ուսանք 'ի սկզբան։ Ասով սկսան Յովհաննիսեանք և հակառակողք՝ իրարու մտենալ. բայց դեռ կատարեալ միութիւն չեղաւ, որովհետև յետ Աստիկոսի ուրիշ բռնաբարողք և ոչ արժանավայելք՝ յաջորդեցին. մինչև յետ երեսուն ամաց նստաւ երանելին Պրոկլ (434), աշակերտ և ունկնդիր մեծի հայրապետին. բայց դեռ դեռ չվերցաւ Կ.Պօլսի եկեղեցւոյ սև քօղն, և ոչ արհաւիրք քաղաքին յերեսաց Աստուծոյ. և դեռ կու գոլար կու գլորէր գերեզմանն Նեստորեայ։...

« Երեսուն և մէկ տարի յետ վախճանի Սրբոյն
» յանարգ աքսորանս Պոնտոսի, կ'ըսէ իտալացի
» վարդապետ մը[2], եպիսկոպոսն Պրոկլոս Կ.Պօլ-
» սի մէջ ներբող մը խօսելով 'ի պատիւ սրբոյն,
» անանկ կենդանի կերպով նկարագրեց անոր ար-
» դիւնքը, անանկ արժանաւորապէս բարձրա-
» ցուց անոր առաքինութիւնները, որ բոլոր ժո-
» ղովուրդն չդիմանալով՝ սկսաւ կանչել որ բերեն
» իրենց Հայրապետը։ Այն ատեն Պրոկլ՝ գրգռ-
» ւեալ ժողովրդեան երեսփոխան ըլլալով, դար-
» ձաւ առ կայսրն Թէոդոս (Փոքր) որ հոն ներ-
» կայ էր, և յորդորեց որ կատարէ այս օրինա-

1 Ըստ Գէորգայ Երուսաղեմացւոյ։
2 Հ. Գ. Սեփիերի։

» ւոր փափաքը, և ձեռք ձգէ այն անգին գանձը։
» Կայսրն՝ որ արդէն մեծապէս փափաքէր այս
» բանիս, այս ձայներէս աւելի բորբոքեալ, մեկէն
» հրաման տուաւ որ նաւերակք պատրաստուին՝
» և երթան բերեն 'ի Կոմանայէ 'ի Կ. Պօլիս՝ փա-
» փաքելի մարմինը։ Ծերակուտէն պատուաւոր
» անձինք ընտրուեցան 'ի նաւերակութիւն, զի-
» նուորք 'ի պահպանութիւն, պալատականք յըն-
» կերակցութիւն, ճարտարապետք 'ի գործավա-
» րութիւն, և կառք 'ի յուղարկաւորութիւն։
» Բայց երբ հասան 'ի Կոմանիս, և ուզեցին
» այն պատուական աւանդը վերցընել իր տեղէն,
» անշարժ և անկամ գտան զանիկայ։ Ի զուր հա-
» զար ձեռք զարկին, հազար նիգ դրին քարը շար-
» ժելու, անկարելի եղաւ. ամըչնալով արտա-
» կոտուր գրեցին առ ինքնակալն՝ թէ Յովհաննէս
» չուզեր դառնալ գալ։ Թէոդոս այս լսելով տա-
» կաց, ափշեցաւ, խռովեցաւ. վերջը ուշաբերե-
« լով և գերագոյն մտածութեամբ մը թուղթ գրել
» ուզեց, և 'ի ծունկ ընկած՝ իր ձեռօք երկայն
» աղերսագիր մը գրեց առ սուրբն՝ որպէս թէ
» կենդանի ըլլար, յորդորելով և աղաչելով որ
» հաւանի դառնալու իր աթոռը։ Ստորագրեց ա-
» նունը, ծալլեց, կնքեց թուղթը և յանձնեց
» քաջընթաց սուրհանդակի մը։
» Կրնայ գուշակուիլ թէ ի՞նչ զարմանք եկաւ
» ծերակուտին՝ երբ սրբունի հրովարտակն առ-
» նելով՝ տեսան վրան այս անհարծելի հասցէն,
» Առ հոգևոր հայրն հոգւոց և փրկչերաց վարդապետն
» Յովհաննէս Ոսկեբերան։ Տուաւ մը գացին 'ի գերեզ-
» մանն. և մինչդեռ ոմանք ջերմեռանդութեամբ
» չորս դին կենային, ոմանք անուշահոտ բուր-
» վառներով, ուրիշներն այլ պայծառափայլ ջա-
» հերով, ծերունեաց գլխաւորն առաջ անցաւ, և
» պատկառանօք պարզելով նամակը, Այս գիրս,

» ըսաւ, կու խաւրէ հայրութեանդ՝ քու ծա-
» ռայդ և իմ տէրս Թէոդոս: Եւ իբրև թէ Հրա-
» մանն առնըլով՝ կարդաց զնոր. յետոյ այնպէս
» բաց թուղթը՝ կուրծքին վրայ դնելով՝ ընկաւ 'ի
» ծունկ, և սկսաւ ուրիշներու հետ աղաչել, որ
» իր մեծահոգի բարեսիրութեամբն յանձն առ-
» նու աղաչողաց խոնարհութիւնը: Կարծես թէ
» սրբոյն դէմքն այլ պարզելով՝ սիրտ տուին ա-
» նոնց, որք երբ նորէն ձեռք զարկին հանելու՝
» անանկ դիւրաշարժ գտան, որ մէկէն ուրախու-
» թեամբ պատրաստուեցան ճամբայ ելնելու:
» Երկայն կ՚ըլլար պատմելն թէ ինչ շքեղ զար-
» դուք, ինչ ջերմեռանդութեամբ և ինչ խուռն
» բազմութեամբ ժողովրդեան՝ մեծայարգի քա-
» հանայից ուսոց վրայ դրած՝ բերին մինչև 'ի
» Քաղկեդոն: Հոն հասեր կու սպասէր ինքնա-
» կալն ամբողջ տորմիղաւ մեծ ու պզտիկ և պայ-
» ծառ զարդարած նաւերու. և իր պարագլուխ
» փառազարդ նաւուն առաջ անցնելով, 'ի ծունր
» իջած ընդունեցաւ հոն սրբազան աւանդը. և
» 'ի հնչել ուրախաձայն փողոց և քնարաց, թըմբ-
» կաց և տաւղաց՝ նշան տուաւ որ մէկէն դէպ 'ի
» Կ.Պօլիս դարձընեն նաւերը: Թողունք հիմայ
» որ ինքնին ծովն պատմէ, թէ տեսեր էր երբէք
» ասոր նման գեղեցիկ յաղթանակ: Ամեն կողմի
» ծովեզերքն մինչև հեռաւոր սահմաններ՝ փայլ
» փայլ ցոլային ջահերով և լապտերներով. եր-
» կինք հանդարտ ծիծաղէր, ալիք խաղաղ ծածա-
» նէին. և հազիւ հեզիկ զեփիւռներ անուշիկ մը
» ջրերուն զարնելով թևերնին՝ կարծես թէ կ՚ու-
» զէին նուագաց հնչման հետ ներդաշնակել ա-
» լեաց մրմունջը: Ամեն նաւ ոսկիով կու շողշո-
» ղէր, ամեն առագաստ ծաղկով պսակած էր, և
» ամեն ցռուկք նաւուց՝ բոցով նշանաւորեալ:
» Առջևէն հասարակ նաւերն կ՚երթային, յետոյ

» աղնուականացն, և ամէնուն եռանէն՝ ծովապե_
» տականն, որ և ամէնէն աւելի աչքի կու զար_
» նէր թէ՛ ահեղ մեծութեամբն, թէ պայծառու_
» թեամբ լուսաւորութեանն, և թէ պճնազա_
» ճոյճ զարդարանօքն:

» Գրեթէ նաւահանգստին մօտեցեր էին, երբ
» յանկարծ մէկ վայրկենի մէջ երկինք մրրկելով
» և ծով խռովելով՝ անանկ ահաւոր փոթորիկ մը
» փրթաւ, որ առագաստները պատռտելով,
» կայմերը կոտրտելով՝ ցիրուցան ըրաւ նաւա_
» տորմիղը: Ո՛հ, ի՜նչպէս յանկարծակի գոհարա_
» նական սաղմոններն՝ փոխուեցան 'ի հառաչանս
» զարհուրանաց: Մէկն կու վախէր թէ հիմայ
» պիտի խղդուի, մէկայլն ընկերին կենաց վրայ
» կու դողար, և աւելի շատերն կու վախէին կոր_
» սընցընելու այն սրբազան աւանդը. որպէս թէ
» ծովն՝ որ և զայրացած զզուած գալով կու
» ժայթքէ ուրիշ դիակները, այս մարմնոյս ա_
» վեալ և կարօտ ըլլայ: Բայց ամեն վախ և կաս_
» կած փարատեցաւ՝ երբոր տեսան որ ինքնին
» սուրբն այս մրրիկը հաներ էր. որպէս զի այս
» փոխադրութեան առեխը գայ բարեւելու այն
» նշանաւոր Ալրւոյ այգին[1], որոյ համար այնչափ
» տառապանք քաշեց: Հազիւ թէ ծովապետա_
» կան նաւն հասաւ այն կողմի ծովեզերքին, մէ_
» կէն օրն հանգարտեցաւ, հովերն լռեցին, ալիքն
» խաղաղացան, և բոլոր նաւախումբն մէկտեղե_
» լով՝ ուրախութեամբ հասան 'ի կայսերական
» քաղաքն:

» Հոս այլ նոր հանդէսք, նոր զարմանք սկսան.

1 Եւդոքսիա անիրաւութեամբ յափշտակեր էր այս այգին այրի կնկէ մը. անոր համար Ոսկեբերան յանդիմանեց զԹագուհին. և նա սխալեցաւ ու հալածել տուաւ զսուրբը:

» ձիաւորք, զինուորք, քահանայք, ամէնքն թա-
» փեցան ափանց վրայ, և մեծ Թափօր մը կազմե-
» ցին մինչև յեկեղեցին Առաքելոց. որոց ետևէն
» իբրև յաղթանակաւ՝ կայսերական կառաց վրայ
» կու գար սուրբ մարմինն։ Իսկ ինչպիսի՞ հետևողք
» կարծէք այսպիսի շքեղ յուղարկաւորութեն. —
» Համրք, որոց լեզուն կու բացուի. խուլք՝ որ
» ձայն կու լսեն. կաղք, որ 'ի վազ կ'ելնեն. կոյրք՝
» որ լոյս տեսնեն. հիւանդք՝ որ կ'առողջանան. և
» ասոնց հետ մէկտեղ անանկ հեղեղ մը ժողովըր-
» դեան՝ որ հազիւ կու ողջի Կ. Պօլսի մէջ։ Ոչ ոք
» այն օր հետաքրքրութիւն ունեցաւ նայելու՝ ոչ
» յաղթանակի կամարաց վրայ, որ ամեն փողոցի
» մէջ կանգնած էին, ոչ պանծալի արձանագրու-
» թեանց վրայ՝ որ ամեն պատի վրայ կախուած
» էին, և ոչ ամեն պատուհանէ անձրևի նման թա-
» փուած ծաղկանց վրայ։ Ամէնքն իրար հրելով՝
» կու ջանային մանել 'ի սուրբ տաճարը. ուր
» հանգչեցընելով պատուելի աւանդը, պատրիար-
» քըն բացաւ սնտուկը՝ որ ցուցընէ ժողովրդեան
» զՍուրբն։

» Անկարելի եղաւ հոս գործուածից ժողովրդեան
» բերանը բանել՝ զայն տեսնելունուն. ամէնքն միա-
» սիրտ միաբերան աղաղակեցին, «Յաղթող հրաշ-
» քէ, սուրբ Հայրապետ, նստէ քու աթոռդ»։
» Պաշտօնեայքն պատկառանօք առին տարին հոն
» տեղաւորելու. և ահա սուրբն 'ի տես ամենե-
» ցուն մեռած շրթունքը բանալով, և յստակ,
» պայծառ ու վսեմական ձայնով մը՝ արտասա-
» նեց, Խաղաղութիւն ամենեցուն։ Արտամունք աղա-
» ղակի հնչեցին այս ձայնին, կրկնապատկեցան
» լացք և արտասունք. կայսրն Թէոդոս 'ի ծունկ
» ընկած՝ յոտս իր սրբազան (կնքա)հօրը՝ չէր
» դադրեր արցունքով թրջելէն, և ստէպ ստէպ
» պագնելէն, մինչև գրեթէ հարկ եղաւ բանի մեր-

» ցընկել զայն առջևէն, և դնել հոյակապ շէնքի
» մը մէջ 'ի ներքոյ խորանին »:

Այս երկայն ծնրադրութեան առեն աղաչեց և
խնդրեց Թէոդոս իր մօր՝ Եւդոքսիայ՝ անգիտու-
թեան և անիրաւութեան թողութիւն. և « յոր-
» ժամ խոնարհեցոյց որդին նորա գլուխն 'ի վե-
» րայ լանջաց սրբոյն 'ի պաղատանս, ընդ կատա-
» րումն աղօթիցն և դադարեաց շարժումն (գե-
» րեզմանին Եւդոքսիայ), և ամենեքեան փառա-
» ւորեցին զԱստուած [1] »: Անկեց աւելի մեծ դա-
դարումն և խաղաղութիւն եղաւ ընդդիմակիր
արտեց. վասն զի « միաբանեցան ամենայն եպիս-
» կոպոսունք և ժողովուրդք՝ որք հերձան 'ի մի-
» մեանց վասն անիրաւ անկման և աքսորանաց
» Ոսկեբերանին [2] »:

Այս մեծահանդէս և մեծայիշատակ գործն ե-
ղաւ յամին 438 'ի 27 աւուր յանուարի. անոր
համար փոխանակ մահուն օրուան (14 սեպտ.)
այս օրս հաստատեցաւ տօն յիշատակի Խօսնա-
կին եկեղեցւոյ, յորում իր սուրբ մարմինն դար-
ձաւ և հանգեաւ իր հայրապետական եկեղեցւոյն
մէջ. և ամենայն ազգք քրիստոնէից այս օրս նշա-
նեցին իրենց Յայսմաւուրաց մէջ՝ հաստատուն և
մեծագոյն օր յիշատակի և փառաց Ոսկեբերանի:

## ԻԵ

Այն երջանիկ և բուն օրն դարձման մարմնոյն
յաթոռն, Կ.Պօլսի համաշխարհական հանդիսին
և մեծ եկեղեցւոյն մէջ՝ ընդ բազմաթիւ մերազ-
գեաց, որք անտարակոյս կային հոն, հաւանօրէն
գտուած են և ոմանք 'ի Թարգմանչաց մերոց, որք
ուսմունքնին կամ գործերնին աւարտած՝ դառ-

1 Գէորգ: 2 Յայսմաւուրք:

նալու վրայ էին առ Ս. Սահակ և Մեսրովպ. Թերեւս իրենցմէ ոմանք առաւ աւելի վառեցան այն տիեզերական և իրենց դրացի և հիւր վարդապետին գրուածները՝ որչափ որ գտնէին կամ կարենային՝ թարգմանելու հայերէն, ինչպէս ուրիշ Ս. Հարց այլ: Այնչափ հաւանելի կ'երևի ինծի այս բանս, որչափ որ Ոսկեբերանի գործոց հայերէն թարգմանութիւնքն գերագոյն են քան զայլ շատ թարգմանութիւնս. և գրեթէ անկարելի էր ասանկ ըլլալն՝ առանց մասնաւոր կամ կարգէ դուրս ներշնչութիւն մ'ունենալու. և այս եղած է՝ կամ վերոյգրեալ հանդէսը տեսնելով, կամ լսելով յականատեսից սրբոյն ըրածները և կրածները 'ի նոյն իսկ իրենց աշխարհին մէջ ('ի Փոքր Հայս), և կամ անոնցմէ ոմանց (գոնէ երիցագունից և իրենց վարդապետաց՝ Սահակայ և Մեսրովպայ), անձամբ այլ տեսած ըլլալունն զնա կամ խօսած կամ թղթակից եղած:

Կ'արժէր շատ բան զրուցել, այս ոսկեբերանեան գրոց ոսկիական հայ թարգմանութեան վըրայ, բայց այս չափս բաւական ըլլայ ըսելն՝ թէ գրոցն արժանի է թարգմանութիւնն. եկեղեցւոյ Խօսնակին արժանաւոր լեզու մը տուեր է հայկազնն՝ իր սեփականին մէջ. Թերևս եթէ Հայ ըլլար՝ քան զայս լաւ չկարենար հայկաբանել Յովհաննէս. Թերևս և ոչ իսկ իր բնիկ յունաբանութեամբն՝ առաւելու քան զհայ թարգմանութիւն. և Թերևս Թերևս տեղ տեղ հայ թարգմանն գերազանցէ քան զյոյն բնագիրն. և յանդըգնիմ ըսելու՝ թէ Խօսնակն եկեղեցւոյ երբեմն աւելի վեհագոյն և պերճախօս Ոսկեբերան է այս հայկաբանութեամբ՝ քան ուրիշ որ և է լեզուով, նաև իւր բնիկ հելլէնականաւն: — Անշուշտ մեծ պարծանք է այս այն ազգին՝ որ օտար ըլլալով կրցեր է Ոսկեբերանին շնորհքն աւելի մեծցընել, և փայ-

լուն ոսկին կրցեր է բարակ բանուածքներով աւելի ազնուացընել։

Ասով այս այլ յայտ է՝ թէ որչափ մեր հայերէն գրականութիւնն փառք և վայելք առացեր է. զոր և առատապէս կրնան վայելել բանասէրք և հոգեսէրք՝ Ոսկիբերանի հայերէն տպագրութեամբ հրատարակեալ գրովք [1]. որոցմէ դուրս գտուին ուրիշ գրուածքն այլ. և որոց մէջ մեզի համար ամէնէն նշանաւոր և յիշատակաց արժանին է Մեկնութիւն Եսայեայ մարգարէի, ընտիր թարգմանութեամբ։ Այնչափ պատուական է այս գործս, որչափ որ հիմայ յոյն բնագիրն ամբողջ չիգտուիր, այլ մինչև յութերորդ գլուխն. և կ'երևի թէ մինչև հոս նախ գրեր էր Սուրբն և դադրեցուցեր, յետոյ (գուցէ յաքսորանան) մնացեալն այլ աւարտեր է։ Մեր թարգմանիչն՝ առաջին մասը գտեր է նոյն ինքն Ս. հեղինակին համբուրելի մատամբքն գրեալ, ինչպէս և ծանուցուած է մէկ հնագիր օրինակի մէջ՝ որ իմ ձեռքս այլ հասեր է. «Մինչև » ցայս վայր գտաւ իւրով ձեռովք գրեալ երանե- » լւոյն Յովհաննու յունարէն»։ Անշուշտ անգամ մ'այլ պարտական պիտի ըլլան հայկական դպրութեանց՝ որոնք որ բաղդ ունենան կամ այս հայերէն թարգմանութիւնը կամ անկից այլ ուրիշ լեզու թարգմանածը կարդալ։

Ասոր հետ կրնամք յիշել նորէն զներբող Լուսաւորչին, որ և նոյնպէս միայն հայերէն կայ և դեռ թարգմանած չէ յայլ լեզու։ Եւ թէպէտ շատ

1 Որք են 6 հատոր մեկնութեան նորա Մատթ. աւետարանին և թղթոց Պօղոսի, և շատ ճառք։ Դարձեալ 2 հատ. ճառք և Յաղագս քահանայութեան Գիրք նորա, նոր թարգմանութիւն. ամենքն այլ տպագրեալք 'ի Ս. Ղազար 1818, 1826, 1861։ — Մեկնութիւն Յովհ. աւետ. տպագրեալ 'ի Կ.Պօլիս։

*ուրիշ գործեր այլ ունի Ոսկիբերան, որ կամ թարգմանած չեն 'ի մեր լեզու, կամ մեր ձեռքը չեն հասած, այլ եղածին և հասածին վրայ այլ մեծապէս երախտապարտ եմք՝ թէ թարգմանչացն, (յորոց՝ անուամբ միայն Թէոդորոս ոմն յիշի), և թէ հրաշալի հեղինակին՝ որ այնքան պէսպէս կերպով պատուեր է զՀայութիւն, սիրեր է մեր ազգը, զարգարեր մեր գպրութիւնը, և լուսաւորեր Հայաստանեայց եկեղեցին՝ յետ իւր յունականին. և երկուքին այլ հաւասար պարգևեր է անմահ և անմոռաց յիշատակ՝ զառաջին գիրք քրիստոնէութեան՝ յետ առաջին (Սուրբ) գրոց, զՊատարագամատոյցն, որով աստուածային գերահրաշ խորհուրդն կատարի 'ի մեզ: Այո՛, մեր Ս. Հարց նախնեաց վաստակն այլ կայ այն սրբազան մատեններին մէջ, բայց աղօթից մեծագոյն մասն Ոսկիբերանի աստուածեռանդն սրտէն բղխած է: Կրնամք ըսել թէ հզօրագոյն շաղկապ Հայ և Յոյն եկեղեցւոյ և գպրութեանց՝ եղած է Ոսկիբերան:*

*Ոսկիբերանի սիրոյն, պատւոյն և բարեաց երախտապարտ Հայկազին՝ գուցէ կրնայ և ինքն մեծանձնն այն երախտապարտ ըսուիլ՝ այս (մեր) ազգէն գտած ընդունելութեամբը, սիրովը, պատուով և իր երկասիրութեանց հաւատարիմ և արթուն պահպանութեամբ: Եւ ոչ միայն իր գրոց, այլ և իրեն վրայ խօսուած գրքերով, զորս թարգմաներ են Հայք[1], և որոց վրայ իրենք այլ աւելցուցեր են քանի մը գովասանական երգեր և յիշա-*

1 *Ինչպէս ընդարձակ Վարք նորա գրեալ 'ի Գէորգայ Երուսաղեմացւոյ և թարգմանեալ 'ի Գր. Վկայասէրէ, յամի 1102. լաւ բանադատութիւն չունի այս պատմիչս, և ոչ սակաւ սխալ: — Սոկրատայ պատմութենէն քաղուած վարք: — Պրոկլէ ներբողեանն յՈսկիբերան. և այլն:*

տօկներ[1] ։ — Իսկ իր սրբութեան և երկնաւոր անմահութեան յիշատակին այլ ջերմեռանդն մեծարողք ըլլալնին՝ յայտներ են և յայտնեն, ոչ միայն անոր աթոռական քաղքին (Կ.Պօլսի) մէջ իրեն նուիրած եկեղեցեօք, այլ և օտար կողմեր, և մանաւանդ այն տեղուանք՝ ուր իր վերջին կեանքն անցուց, 'ի սահմանս աշխարհին մերոյ. Թէպէտ, ափսոս, որ ինչպէս առաջ յիշեցի, այս կողմերս հիմայ քիչ ծանօթ ըլլալով՝ իրենց յիշատակարանները այլ կու ծածկուին[2]։

## ԻԶ

Բայց չիկրնար և պէտք չէ բոլորովին անծանօթ և ծածուկ մնալ մեզմէ՝ գոնէ Ոսկիբերանի կենաց յետին յիշատակարանն, միանգամայն և յետին աւանդն, զոր թողուց 'ի ձեռս Հայոց. — իր մահուան և անմահութեան միջնորդ գերեզմանն։ — Երբոր Թէոդոս կայսեր խնդրանօք մարմինն փոխադրեցաւ 'ի մայրաքաղաք, բնակիչք Կոմանայ դժուարէին և հակառակէին թողուլ իրենց հիւրը և երագահաս օգնականը. և միայն թագաւորական զօրաց վախէն՝ ետ կեցան, շատանալով սրբոյն պատանքը իրենց մէջ բաժնելու, և անոր գերեզմանը իբրև աւանդապահք՝ պատուելու։ Հաւանա-

1 Ծանօթ երեք տուն ընտիր շարականն, «Որ յանեակիզքն 'ի Հօրէ»։ — Գր. Անաւարզեցոյ այբբենական շարականն՝ որ իր շինածներուն մէջ ընտիրներէն մէկն է։ — Գանձ մի 'ի Գէորգայ. և ուրիշ գանձք և տաղք։ — Վարք համառօտք։

2 Այս կողմերս՝ Հաճնոյ արևմտակողմը՝ Սիհունի եզերքը, Ֆառաշ աւանին մէջ, ուխտատեղի մը կայ Ոսկիբերանի, հիմայ 'ի ձեռս Յունաց։

կան է որ այն ատենն այլ այս քաղքին բնակչաց մէկ մասն Հայ էր, և ԺԱ դարու մէջ աւելի այլ հայացաւ՝ երբ Գագիկ Կարուց Թագաւորն՝ փոխանակ իր երկրին՝ այս կողմերս առաւ իրեն ժառանգութիւն։ Հին և Նոր գաղթականք մեր ազգայինք՝ պատուեցին այս տեղւոյս ամենէն սրբազան յիշատակարանը՝ հազար տարի. և երբ ստիպուեցան հեռանալ 'ի Կոմանայէ՝ քաղքին կործանման պատճառաւ, (զորոյ որպէսը չեմ յիշեր), Ոսկիբերանի մարմնոյն տաճարացեալ տապանակն այլ՝ առաջինի հաւատարմութեամբ[1] հետերնին տարին։ Ոսկիբերանի առաջին հանգստարանն, որ և Ս. Բասիլիսկոսի, կէս ժամու չափ հեռու է յաւերակաց Կոմանայ քաղաքի, և մինչև հիմայ ցուցուի տեղն քարակոյտ։ Իսկ Նոր հանգստարանն՝ 'ի գեօղն Պիծէռի, երկու ժամաւ հեռու 'ի Կոմանայէ. հոս է վանքն Ս. Նշան, որ հիմայ կոչուի Ս. Ոսկէբերան. և գրեթէ նորէն շինեցաւ մեր ատեն (1842), ու աւանդատանը մէջ ամփոփեցաւ սրբոյն անուամբ մատուռն. յորում կայ և իր գործաղոյն կճեայ գերեզմանն քանդակազարդ կափարչաւն, ընդ հովանեաւ Ս. Նշան խորանին. ուր գան և Յոյնք յուխտ՝ բարի նախանձով, տեսնել իրենց հայրա-

1 Այս դիպուածս անշուշտ ԺԷ դարու առաջին կիսուն հանդիպած է, վասն զի դեռ 'ի Կոմանա յիշուի յամի 1596, 'ի Ստեփանոսէ Եւդոկիացւոյ, որ կ'ըսէ.

« Մայրաքաղաքս այս Թոխաթի
Որ Կոմանու խիստ է մօտի,
Յորում տապանն է Յովհաննու
Ոսկիբերան վարդապետի »։

Իսկ յամին 1658 արդէն յիշատակուի տապանն 'ի Ս. Նշան վանս։

պետան եբրև իր վերջին օթևանին մէջ հիւրընկա-լեալ 'ի Հայոց[1]:

Երանի՜ մերոնց՝ թէ կարենան միշտ այն սաւառ-նաձայն հովանին մէջ (զոր երկուստեք պատելով Իւխս և Գույլ գետք՝ մեծ կարկաջանօք վազեն գնան յարևմուտս՝ ընդ լերինս և առապարս՝ միա-նալ մեկմեկու, դառնալ 'ի հիւսիս և թափիլ 'ի Պոնտոս), պահել և պատուել այն նախանձելի հանգստարանը, ուր միայն հանգչեցաւ լեզուաւ և մարմնով աստուածաշարժ Յօհաննէս Եկեղեցւոյ: Երանի՜ մերոնց, թէ մեր նախնեաց պէս կարենան սիրողք և սիրելիք ըլլալ Ոսկեբերանի: Եւ դար-ձեալ երանի՜, եթէ կարենան միշտ զգալ և ըսել իրենց մէկ հին տաղասացին հետ,

« Մեծդ Ոսկեբերան, քո սիրովդ՝ ով յոգնաձայն փողեղեցւոյ տղջնոյ »[2]:

1 Փափագելի է որ վանահայրք տեղւոյն մեզի տալն ծանօթութիւն տան, և թէ կարելի է՝ պատկերն իսկ գերեզմանի Ոսկեբերանին. զոր թէ և ոչ տեսեալ Եւրոպա-ցի ճամբորդք յիշեն՝ այլ ոչ ըստ մեր բաղձանաց:
2 Տես 'ի Բազմավէպ 1864, երես 344:

# ԺԹ

# ԱԶԳԱՅԻՆ ՎԻՊԱՍԱՆՈՒԹԻՒՆ

## Ա

Երբոր մարդիկ սփռեցան երկրիս վրայ՝ ամեն դի անտառներ, մացառներ, լճեր, առուներ, գետեր, բլուրներ, և անոնցմէ ալ դժուարին՝ գազաններ և սողուններ, գրեթէ իրենցմէ առաջ երկրիս տիրած՝ արգելք կ՚ըլլային իրենց քաղաքավարութեանը. պէտք էր որ մարդ յաղթէ անոնց, խլէ, հալածէ, ջնջէ անհարկաւոր և վտանգաւոր երևցածները։ Բայց այս բանս ընելու համար ո՜րչափ աշխատութիւն, ո՜րչափ ջանք, ո՜րչափ կտրըճութիւն պէտք էր։ Ոմանք աս դժուարութիւնները տեսնելով՝ թուլութեամբ և վատութեամբ ետ քաշուեցան, անասնոց պէս բնութեան բացած խորշերուն մէջ բնակելով, խիստ քիչ բան քովերնէն յարմարցընելով. և անանկ անքաղաքավար ապրեցան շատ դարեր։ Ոմանք ալ ասոնց ներհակ՝ ամենայն դժուարութիւն յանձն առած՝ բնութիւնը քաղաքական կենաց հնազանդեցուցին, երկիրս՝ մարդկան դիւրին և վայելուչ բնակարան ընել ջանացին։ Բայց այս աշխատանքէն վեր՝ դժուարին և ցաւալի աշխատանք մ՚ալ բա-

ցուեցաւ իրենց․ չէ թէ միայն անշունչ բնութեան կամ անասնոց հետ կռուելու ստիպուեցան, հապա նաև իրենց նմանեացը հետ, որ անասնի նման կամ անհոգութեամբ կամ կատաղութեամբ՝ ընտանի մարդկան կը վնասէին․ երբեմն իրենք զիրենք պաշտպանելու հոգն, երբեմն փառասիրութիւն կամ տիրասիրութիւնն հնարեց զէնքեր և պատերազմներ․ անոնք որ քաջութեամբ յաղթեցին բնութեան, գազանաց, և իրենց թշնամի ըսած նմանեացը, ըսուեցան քաջ, արի, այր, հըսկայ, դև, դիւցազն և աստուածք․ որոնցմէ սովորական եղածն է մեր մէջ՝ Դիւցազն ըսելը։ Այս դիւցազունքս նախ իրենք սկսան՝ ինչպէս որ հպարտութիւն կամ անձնասիրութիւնն կ՚ազդէր՝ իրենք զիրենք գովել, և ըրած մեծագործութիւննին մեծաբանութեամբ զրուցել․ վերջը իրենց զարմացողները սկսան զիրենք գովել․ այս գովեստներէն աղէկ զրուցածները եղան առաջին Երգեր, որ վերջը մէկմէկու կպցընելով թէ որ նոյն քաջին և նմանեացը վրայ երգած էին, կամ բանաստեղծութեան արուեստը զարգանալով երկայն երգեր շինելով ձևացան Վիպասանութիւնք, ինչպէս է Հոմերոսինը, Վիրգիլիոսինը, և այլն։ Այս երգերուն արևմտեայք յունական բառով կ՚ըսեն Էբօբէա, և մեր մէջ Դիւցազներգութիւն ըսուեր է, դիւցազանց վրայ երգելուն համար, անոր համար Դիւցազնական երգ կամ Տաղ ալ կ՚ըսուի․ կ՚ըսուի նաև Վիպասանութիւն՝ աւելի հարազատ թարգմանութիւն յունական ձայնին, և գրեթէ հոմանուն, որով մեր հին հարքն ալ իրենց երգչաց՝ Վիպասան կ՚ըսեն եղեր։

Ամեն ազգ ալ որ հին քաջ մը կամ Դիւցազն ունեցեր է, իր Վիպասանն ալ պիտի ունեցած ըլլայ․ ետևի եկող քաջերուն ալ և անոնց ազգակցացն ալ սիրտ տուողը Վիպասանից երգերն էին,

և են միշտ: Պատմութիւնն ամէն ազգաց վրայ տեղեկութիւն չի տար մեզի. բայց կը յիշէ որ Յոյնք վիպասաններ ունէին Ռափսոդ ըսուած, որոնք իրենց անմահ Հոմերոսին ալ հայրն են. — արևելքի հին Թագաւորներն իրենց արքունեաց մէջ ունէին իրենց Գուսանները, կամ հանդիսի ատեն բերել կու տային, որ նախ քաջութեան երգիչք էին, վերջը մեղկացան, և արանց տեղ կանայք ալ մտան: — Եւրոպայի հիւսիսական ազգերն ունէին իրենց Սքալտ ըսուած վիպասանները, որ իրենց քաջերուն երգովը ցուրտ և մառախլապատ Սկանտինաւեան[1] աշխարհքները կը մխիթարէին. — արևմտակողմանք ալ, հին Բրիտանիացիք և Գաղղիացիք, ունէին իրենց մեծահամբաւ Բարդ կամ Պարփ վիպասանները, որ պատերազմի բանակներու մէջ ալ կը մտնէին, և քաջերուն երգերովը նոր քաջեր կը պատրաստէին. ասոնք այնչափ անուանի եղան, որ շատ հեղ Եւրոպացիք բանաստեղծ ըսելու տեղ Բարդ կ'ըսեն, ինչպէս որ մենք ալ իրենց պէս յունական բառէն առած Պուէտ կ'ըսեմք: — Ինչուան Ամերիկայի Բերու ծաղկած աշխարհքն ալ ունէր իր Ամաւտա երգիչները:

Հապա հինն Հայաստան չունէ՞ր իր Վիպասանները, իր Բարդերը: — Թէ որ աս աշխարհքն է ամենայն աշխարհի մայր և դայեակ, թէպէտ չեմք կրնար ըսել թէ ամեն բանի ալ ինքն է օրինակ տուողը, բայց չեմք սխալիր ըսելու՝ որ առաջին երգերը Հայոց լեռներուն արձագանգներովը ձևացան: Թէպէտ և վիպասանութիւն մը մեզի հասած չէ 'ի նախնեաց, ոչ ամբողջ և ոչ մասամբ, սակայն Խորենացւոյն պատմութենէն և քանի մը ուրիշներէ կ'իմացուի որ Հայոց մէջ ալ շատ հնուց

1 Շուէտ, Նորվէկիա, Տանիմարգա, Իսլանտա:

մտած էին և շատ վիպասանութիւններ կային, և թէ Հայք շատ սիրող էին այս վիպասանութիւնները լսելու և երգելու. Թէպէտ և նոյն Խորենացին տեղ մը կը մեղադրէ մեր հին Թագաւորները՝ թէ բանաւոր երգարանաց անհոգ էին, թերևս գրով չթողլուն համար կ'ըսէ. վասն զի նաև իր պատմութիւններէն կ'երևի որ վիպասանական բանից սկիզբն Հայաստանի մէջ Հայկայ օրերուն պէս և աւելի հին է. վասն զի ինչպէս կը յիշէ [1], Աթէնքի իմաստնոց ժողովքին մէջ Ողոմպիոդոր փիլիսոփայն կը պատմէր ընկերացը, թէ հին գիրք մը կայ եղեր առջի առենները Նոյի և իր որդւոցը պատմութեան, և այս պատմութիւններուն գիպուածները, կ'ըսէ, հին Արամազնեայք ալ, այսինքն Հայերն, իրենց բամբիռն ըսուած նուագարանով և պարով կ'երգէին։ Յայտնի է որ այն բաներն երգի վրայ առնուած էին հնուց, որ ռամիկ ժողովուրդն ալ աւանդութեամբ սովրած կ'երգէր առանց գիր ճանչնալու. և յիշատակեալ երգոց մէջ ամենէն հին աս է ջրհեղեղէն ետև։

Բ

Թէ որ այնպէս կանուխ լսեր էին Հայաստանի բլուրներն վիպասանութեանց ձայն, անկարելի էր որ Հայկայ արիական գործքերը տեսնելով՝ լուռ կենային. առաջին ազգային վիպասանութիւն մը իրեն վրայ երգուած է այն առենուան անպաճոյճ պարզութեամբ. և այս բանիս ալ կը վկայէ Խորենացին [2], թէ Մարիբասայ պատմութեան նման՝ Հայաստանի անգիր զրոյցներուն մէջ ալ կ'ըսուէր Հայկայ Բաբելոնէն դառնալը, առաջին շինութիւնները, և այլն։

1 Գիրք Ա. Զ։ 2 Գիրք Ա. ժ. Բ. Ը։

Որով կ'իմացուի ալ թէ ամէն դիպուածներն ալ կը յիշատակուէին վիպասանութեանց մէջ, եւ առաւել գլխաւոր դիպուածն՝ որ է Բելայ սպանումը։

Այս օրինակէս չեմք խաբուիր թէ որ ըսենք թէ ամէն քաջ կամ դիւցազն՝ նոր վիպասանութեան մը պատճառ կ'ըլլար, կարճ կամ երկայն։ Այսպէս Հայկէն ետեւ Արամն է Հայոց մեծ դիւցազն. ատոր մեծամեծ գործքերը կ'աժէր որ հին գրքերու մէջ գտնուէր, կ'ըսէ Խորենացին. բայց թէպէտ և այն հին ատենները գրող չեղաւ, սակայն վիպասաններ գտնուեցան, որոնց երգածէն՝ կ'ըսէ Մարիբաս՝[1] վերջը ամենայն ազգաց պատմութիւն գրողներն ժողովեցին. անկէց առին Քաղդէացիք կամ Բաբելոնացիք ալ, և գրեցին թագաւորական դիւաններուն մէջ, Աղեքսանդր յունարէն թարգմանել տուաւ, Մարիբաս ալ ասորերէն. անկէ ալ Խորենացին իր պատմութիւնը հիւսեց։ Այսպէս Հայ վիպասանից երգածը հինգ վեց տեսակ գաղափարէ և լեզուէ անցնելով, դարձաւ իր բնիկ լեզուին և աշխարհին մէջ, և միայն հոն մնաց։ Ո՞րչափ երախտագէտ պէտք է ըլլանք այն վիպասանից, որ աւանդեցին աշխարհիս՝ անանկ երևելի մարդու մը յիշատակ։

Արամէն ետեւ իր գեղեցիկ որդին կու գայ Արայ, որուն դիպուածը թէ որ իր հօրը պէս փառաւոր ալ չէ, սակայն աւելի սրտաշարժ է և եղական. Հայոց վիպասաններն անանկ սիրելի, առաքինի և ողբալի նահատակի մը յիշատակը լռութեամբ չէին կրնար թողուլ. և յիրաւի կը յիշէ Խորենացին[2] որ Արամայ դիպուածներուն պէս՝ նման Մարիբասայ պատմութեան՝ ատոր հանդիպած բաներն ալ Հայոց զրոյցներուն մէջ կար.

1 Խոր. Գիրք Ա. ԺԴ։ 2 Գիրք Ա. ԺԸ։

Թէպէտ Շամիրամայ գործոցը համար է զրուցածըն, բայց յայտնի է որ եւս առաւել Արային համար երգեր ալ կային. այն գեղեցիկ Արային՝ որուն սիրոյն համար՝ մեռնելէն վերջը բոլոր աշխարհքն ողբ ելաւ, և Շամիրամ հաղիւ կրցաւ հանդարտեցընել հաւտացընելով թէ աստուածները ողջացուցին և իրենց քովը առին զԱրա։ Թովմա Արծրունին ալ Խորենացիէն զուրս ուրիշ առասպելներ ալ կը յիշէ Շամիրամայ և Արայի վրայ. թերևս հին երգոց աւանդութիւնն ըլլայ։

Հայկայ և Արամայ ընկեր է հայկազնեանն Տիգրան. ասոր ըրած մեծ դիւցազնական գործքն էր. Մարաց թէրութիւնը վերցընելը, որ այն ատեն Ասիոյ ամենէն մեծ և ամենիշխան թէրութիւնն էր. ասոր վրայ շատ բաներ գրուեցան և երգուեցան. ինչպէս իւրեն բնաւորութեանն համար ալ այն հին բամբռահար վիպասաններէն վկայութիւն կը բերէ Խորենացին [1], որոնց երգածը ամբողջ հազար տարիէն վերջը, այնչափ դժուարին դարերէ ալ անցնելով դեռ Խորենացւոյն ատենն ալ Գողթնեաց աշխարհին կողմերը կը լսուէր։ Այն հին վիպասանութեանց հնացորդներէն առած կ'երևայ Խորենացին Տիգրանայ ընծայած գովելիկ անունները։ Նոյն հնացորդները նոր վիպասանութեան մը պատճառ եղան շատ դարեր ետև, որ վերջը պիտի յիշեմք։

Տիգրանայ յաջորդաց մէջ շատ անուանի եղաւ Վահագն, որ Յունաց Հերակլէսին նման գործքեր ըրած է կ'ըսէին, անոր համար ալ աստուածներու կարգ անցուցին մերոնք, և Հերակլի տեղ Վահագն կ'ըսէին, ինչպէս մեր սուրբ Թարգմանիչք ալ այս սովորութիւնս պահեցին։ Ասոր վըրայ երգածներէն ոմանք ինչուան Խորենացւոյն

1 Գիրք Ա. ԼԱ։

ականջէն ալ հասած Գողթնեաց երկիրը, ինչպէս կը պատմէ ինքն[1], որ հին երգոց հետ հին թամբանց ձայներ ալ լսեց, և պատառիկ մ՚ալ մեզի հասուց այն երգերէն. որ որչափ ալ փոխուած կարծուի երկայն ժամանակին միջոցով՝ այնչափ չէ, վասն զի երգով ինջած է, որ շարունակութեամբ կը պահուի և շատ չի փոխուիր. աւելի փոփոխութիւն ձեռագրաց պատճառաւը պիտի ըլլայ. բայց անոնց մէջ ալ քիչ տարբերութիւն գտնելով, կրնանք հաւատալ թէ ասկէ իբրև 2300 տարի առաջ Հայոց վիպասան մը երգեր է այս կամ ասոր շատ նման.

« Երկնէր երկին և երկիր. երկնէր և ծիրանի ծով.
» Երկն ՚ի ծովուն ունէր զկարմրիկ եղեգնիկն.
» Ընդ եղեգան փող ծուխ ելանէր,
» Ընդ եղեգան փող բոց ելանէր.
» Եւ ՚ի բոցոյն վազէր խարտեաշ պատանեկիկ.
» Նա հուր հեր ունէր.
» Նա բոց ունէր մուրուս,
» Եւ աչկունքն էին արեգակունք »:

Անիկայ մեր գրականութեան ամենէն հին յիշատակարանն կրնայ սեպուիլ:

Վահագնէն ետև մինչև Արշակունեաց ատեն չեմք կարծեր որ վիպասանութիւն մը չինուած ըլլայ. վասն զի Հայաստան Պարսից իշխանութեան տակ ընկաւ, վերջն ալ Մակեդոնացւոց և Սելևկիտցւոց, թէպէտ երբեմն ազատութիւն ալ գտաւ և առանձին թագաւորներ ալ ունէր. բայց առջի փառքն ու շնորհքն չգտաւ ինչուան Վաղարշակայ օրը: Ասոր հետ նորէն զօրացան Հայոց թամբիռներն. ինչուան Բ Արտաշիսի օրը,

1 Գիրք Ա. ԻԴ:

Խորենացին զանազան պատմական դիպուածներու վկայութիւն կը բերէ Հայոց երգերէ և զրոյցներէ. բայց կ'երևի թէ շատն առանձին կարճ երգեր և առասպել զրոյցներ էին. ասանկ է Հադամակերտ քաղաքին մէջ պատմուած առասպելբան մը Արծրունեաց վրայ [1]. Տորքայ սոսկալի ուժին վրայ [2]. Սանատրկոյ ծննդեանը վրայ [3]. Երուանդայ ծննդեանը և աչքին ահեղ նայուածքին վրայ [4], և այլն։

Իսկ Արտաշէսի օրերը, որ երկայն խաղաղութեամբ ամենայն բարեկարգութիւն ծաղկեցուց, գիտութիւններն ու բանասիրական դպրութիւնն ալ ծաղկեցան, եւ առաւել բանաստեղծութիւնըն. իրեն ատեն շինուեցաւ մեծ և արուեստաւոր երկայն վիպասանութիւն մը, զոր Խորենացին ալ յատուկ վիպասանութիւն կ'անուանէ, և շինողներն ալ Վիպասան. որոնց մէկն էր անշուշտ նոյն իսկ Թագաւորին որդին Վրոյր, «իմաստուն և բանաստեղծ», որ հօրը արքունեացը վերակացու էր. Թերևս Համամ Արծրունեաց իշխանն ալ ձեռք ունէր, վասն զի բանասէր մարդ էր և արքունեաց դիւանապետն էր։ Այս վիպասանութեանս մէջ կ'երգէին բոլոր Արտաշէսի գործքերը, Երուանդայ հետ ըրած պատերազմը, հօրը աթոռը նստիլը, Ալանաց հետ ըրած խնամութիւնը և Սաթէն օրիորդը կին առնուլը. ասոր հարսնախօսութեանը համար կ'ըսէ Խորենացին [5]. «Զայս տեղի առասպելաբանելով վիպասանքն՝ յերգելն իւրեանց ասեն.

«Հեծաւ արի արքայն Արտաշէս 'ի Սեաւըն գեղեցիկ,

1 Գիրք Բ. Է։
2 Գիրք Բ. Ը։
3 Գիրք Բ. ԼԶ.
4 Գիրք Բ. ԼԷ, ԽԲ. և այլն։
5 Գիրք Բ. Ծ։

» Եւ հանեալ զոսկիօղ շիկափոկ պարանն ,
» Եւ անցեալ որպէս զարծուի սրաթեւ ընդ գետն ,
» Եւ ձգեալ զոսկեօղ շիկափոկ պարանն՝
» Ընկէց 'ի մէջք օրիորդին Ալանաց ,
» Եւ շատ ցաւեցոյց զմէջք փափուկ օրիորդին ,
» Արագ հասուցանելով 'ի բանակն իւր »։

Այսպէս ասոնց հարսանեկան երգերէն ալ այս տողս կը բերէ.

« Տեղ ոսկի տեղայր 'ի փեսայութեանն Արտաշիսի ,
» Տեղայր մարգարիտ 'ի հարսնութեանն Սաթինկան »։

Նոյն վիպասանութիւնն կը պատմէր Արտաշիսի որդւոյն գործքերն ալ. Արտաւազդայ Նախանձը՝ Արգամայ Մարաց Նախարարին վրայ, ուր Մարաց ցեղին սկիզբն ալ կը պատմուէր. և Առաջին Տիգրանայ յաղթութիւնն Աժդահակայ վրայ, և ուրիշ դիպուածներ՝ այլաբանութեամբ. Արգամայ ըրած կոչունքը Արտաշիսի և բոլոր թագաւորական տանը. ուր կ'ըսէր վիպասանութիւնն.

« Տենչայ Սաթինիկ տիկին տենչանս՝ զարտախոյր[1] խաւարտ և զտից հաւարծի 'ի բարձիցն Արգաւանայ ».

հոն Արգամայ սպանութիւնն, և տանը այրիլն[2], և այլն, և այլն։ Բայց աւելի կու պատմէր Սմբատայ Բիւրատեան քաջութիւնները, Այրաքաղ անուանելով զնա[3]. Դոմետիանոս կայսեր հետ

1 Ուրիշ օր. զարդախոյր հաստատ խաւարտ ... խաւարծի։
2 Խոր. Գիրք Ա. Լ։ Բ. ԽԹ, ԾԱ։
3 Գիրք Բ. ԾԲ։

Հայոց պատերազմը[1] և Սմբատայ ձեռքով յաղթելն։ Արտաշիսի հիւանդութեան և մահուան դիպուածներն ալ կ'երգէր վիպասանութիւնն. և կ'երևի թէ այն վիպասանութենէն առնուած է Մագիստրոսի յիշածն, թէ Արտաշէս Պարթև մեռած ատեն՝ յիշելով կենաց և տարւոյն գարունը, երբ առաւօտուն լոյսը ցօղին հետ խառնած բարակ մէգի պէս գեղերու և քաղքըներու վրայ կը տարածէր, ըսած ըլլայ.

« Ո՞ տայր ինձ զծուխ ծխանի և զառաւօտն Նաւասարդի,
» Զվազելն եղանց և զվազելն եղջերուաց.
» Մեք փող հարուաք և թմբկի հարկանէաք[2] »։

Մահուանն ատեն ալ զԱրտաւազդ անիծանելն ալ նոյն վիպասանութենէն կ'երևի. իբր թէ երբ Արտաւազդ տեսնելով որ շատերն Արտաշիսի սիրոյն իրենք զիրենք կը սպաննեն գերեզմանին վրայ, բողոքած ըլլայ.

« Մինչ դու գնացեր և զերկիրս ամենայն ընդ քեզ տարար.
» Ես աւերակացս որպէս թագաւորեմ »։

Արտաշէս ալ պատասխանած ըլլայ.

« Դու յորս հեծցիս յազատ 'ի վեր 'ի Մասիս,
» Զքեզ կալցին քաջք, տարցին յազատ 'ի վեր 'ի Մասիս.
» Անդ կացցես և զլոյս մի տեսցես[3] »։

Արտաշիսէն վերջը՝ Արտաւազդայ վրայ պատմած առասպելներն ալ այս վիպասանութեանս մասն

1 Գիրք Բ. ԾԴ։
2 Կարելի է թէ Ա. Արտաշիսի զրուցածն ալ ըլլայ այս։
3 Խոր. Գիրք Բ. ԿԱ։

եղան․ որուն համար կ՚ըսուէր հոն, թէ ծննդեա-նը ատեն

« Վիշապազունք գողացան զմանուկն Արտաւազդ, և դև փոխանակ եդին »։

Այս վիպասանութենէս կարծուի Վարդգէսի վրայ երգուածն ալ, որ Ա Տիգրանայ քեռայրն էր, Արտիմէդ քաղաքին շինուածքին համար [1].

« Հատուած գնացեալ Վարդգէս մանուկ 'ի Տու-հաց գաւառէն
« ԸզՔասաղ գետով,
» Եկեալ նստեալ զՇրէշ բլրով [2], զԱրտիմէդ քաղաքաւ,
» ԸզՔասաղ գետով,
» Կռել կոփել զդուռն Երուանդայ արքայի »։

Արդ ինչպէս կ՚երևնայ այս հատուածներէն, Արտաշիսի ատեն շինուած վիպասանութիւնն՝ ի-րեն որդւոց ատեն ալ շարունակելով Փիրտուսի Պարսից բանաստեղծին շինածին պէս թագաւո-րական գործոց վիպասանութիւն մ՚եղաւ․ բայց յունական արուեստով մէջը հիւսուած էին հին դիպուածներ ալ։ Այս բանիս ապացոյց մ՚ալ կու-տան մեզի հին և կորուսեալ ընդարձակ Հայոց պատմութեան մը մնացորդ կցկտուրքն, զոր Ստե-փանոս Ռօշքեան իր բառագրոց մէջ ցրուած է․ ուր ամենէն աւելի Սմբատայ վրայ վկայութիւն-ներ կան, պատմութեան դիպուածոց մանր պա-րագայիւք, և յայտնի կ՚ընեն, ինչպէս Խորենացւոյն պատմածներէն ալ կ՚երևի, որ Սմբատն էր դիւ-ցազնագոյն Հայոց վիպասանութեանը մէջ․ և այն վիպասանութենէն հաներ էր պատմութեան հա-ւաքողն, և մեր պատմութեան ամեն մասերէններ-

1 Խոր․ Գիրք Բ․ ԿԵ։ 2 Կամ Բերդաւ։

կայն Բ Արտաշխի և իրեն որդւոյն Տիրանայ ժամանակները ստորագրեր էր. վասն զի այս Տիրանայ վրայ ալ շատ յիշատակութիւն կայ, և վայելուչ ալ էր. վասն զի Արտաշիսէ վերջը՝ Արտաւազդ և ոչ երկու տարի թագաւորեց, վերջը Տիրան նստաւ. որուն ատեն քաջն Սմբատ Բիւրատեան՝ թէպէտ և ծեր, բայց Հայ սպարապետի մը պէս ծեր՝ դեռ կարող էր պատերազմ մտնել և ելնել: Ուրիշ կորսուեալ պատմիչ մ'ալ կը յիշէ Սմբատայ պատերազմները Հռոմայեցւոց և ուրիշ ազգաց հետ. կը յիշուին իր մեծահանդէս հարսանիքն, մեծավայել ճոխութիւնն, երեքակնեայ մատանին, մականակիր երթալն, սաստիկ կառք քշելն, դեսպանութիւնն, նախարարաց պարգևներ տալն, և այլն: Վրաց պատմութեան մէջ ալ կը յիշուին Սմբատայ գործքերն՝ այն աշխարհին մէջ: Ասով շատ անհաւանելի չէ՝ թէ Բուզանդայ յիշած Հայոց «Երգն առասպելեաց վիպասանութեանն» ալ՝ այս վիպասանութիւնս ըլլայ:

## Գ

Թողլով յիշելու մանր մունր և ռամկական չէր և առինչ ըսուած երգերը, միայն քանի մ'ուրիշ վիպասանական քիչ ճանչցուած երգերն յիշենք. որոնցմէ մէկը Արտաշիսի, մէկն ալ Դարեհի մահուան վրայ եղերերգական երգեր են եղեր, ինչպէս կը յիշեն հին քերականի մեկնիչք. առանց իմացընելու թէ ո՛ր Արտաշիսի և ո՛ր Դարեհին վրայ գրուած էին. միայն այս յայտնի կ'երևի որ Ժ և ԺԱ դարերու մէջ ալ դեռ Հայաստան կը գտնուէին այս երգերս, և թերևս դեռ գտուին, գուցէ վերոյիշեալ Մագիստրոսէն բերածներս ալ Արտաշխի դամբանականէն ըլլայ:

Առանցմէ դուրս կը յիշեն նոյն քերականք մէկ վիպասանութիւն մ՚ալ, « Պատերազմն Հայոց և Մարաց » ըսուած, զոր Դուիթ անունով մէկը շինած է, ոմանք Դաւիթ Անյաղթը կ՚ըսեն, Ա Տիգրանայ վրայ․ կ՚երևի թէ անոր վրայ շինած հին Հայկազանց վիպասանութեան կտորները գտեր, և անկէ շարժեալ՝ նոր տաղաչափութեամբ գրեր է իր վիպասանութիւնը․ ինքը գտեր է, ինչպէս յայտնի կ՚իմացընեն, Տիգրանուհւոյ մահուանը վրայ հին ատեն երգուած գամբանական երգը, և այն երգն ալ իրեն ոճովը խառներ է վիպասանութեանը մէջ․ ուր կը յիշէ թէ Փողարն, այս ինքն հին գամբանական երգիչն անանկ վարպետութեամբ կ՚երգէր ողբը, որ Տիգրանայ սրտէն անցածը՝ դուրս կը բացատրէր․ յիշուած հատուածն այս է․

« Եւ արդ ներգործող 'ի միտս երևիւր առ խորհուրդս Փողարին,
» Մեծոգւոյ Տիգրանայ գեղանին Տիգրանուհի,
» Իւր ներգործեալ զԿողաբաղն, նա և ողջամիտ աշխարհածուհի [1] » ։

Դաւթի վիպասանութենէն կարծուի հետևեալ տողս ալ․

« Փոխատեղեցին 'ի Պարս՝ զՄարային թագաւորութիւնն » ։

Թէ որ ոչ յատուկ վիպասանութիւն, գոնէ բարոյական վիպասանական քերթուած պիտի ըլլան Համամ վարդապետին յիշածներն ալ․ « Որպէս » Կայէնին և Սեթայն կամ Ղամէքայն, և Երիտա» սարդին հարկելոյ ընդ արդարն և ընդ սուտն » ։

1 Ուրիշ օր․ Իւր Ներածեալ... Կողաբաղ... ողջամիտ տարփուածութեանն ։

Հին Յունական Վիպասանութեան յիշատակութիւն մ'ալ կը գտնեմք յետին դարու գրուածոց մէջ, «Առասպելք Արամազդայ և Հերմեայ» ըսուած․ որ կ'երևի թէ յունարէնէ թարգմանուած հին քերդուած է, գուցէ թէ և Հոմերոսին մէկ մասն ըլլայ․ բայց յայտնի է որ երկայն գրուած էր․ զի յիշողն՝ Պղնձէ փողափին հաւասար կը յիշէ։ — Իսկ այս Պղնձէ քաղաքս բարոյական վիպասանութիւն մ'է պարսկերէնէ թարգմանած։ — Նոյնն Պղնձէ քաղքին հետ կը յիշէ և Շիրինշահ վիպասանութիւնը․ որ նոյնպէս կ'երևի պարսկերէնէ թարգմանած․ զաս չեմ տեսած, բայց Պղնձէ քաղաքին օրինակը շատ տեղ կը գտուի․ սակայն երկուքն ալ դիւցազնական վիպասանութիւններէ դուրս և վերջին ատենի բաներ են։

Ասոնցմէ աւելի ռամկական վիպասանութեան մը պէս բան մը պիտի ըլլայ Մխիթար Այպարանցւոյն ըսածն ալ Հայոց համար, թէ «Հետևին » զանազան շարականաց և բարբանջաց, այսինքն » որ կոչի Կուզ և Կատու »։

Դ

Վերը յիշած Հայկական վիպասանութեանց պէս պէտք է որ ուրիշ շատ վիպասանութիւններ ալ երգուած ըլլան հին Հայաստանի մէջ․ բայց ո՞ւր են հիմայ այնչափ երգերն․ ի՞նչ պատճառով բոլորն ալ կորան։ — Մէկ պատճառն աս է որ 'գրով չէին գրուած շատն, կամ քիչ օրինակ կար․ հապա երգով ազգէ ազգ կ'անցընէին․ անոր համար երգն խափանուած ատեն՝ բոլորն ալ խափանեցան։ Իսկ երկրորդ պատճառ թուի աս երգերուն ալ, միացած հեթանոսական գրուածներուն ալ խափանիլն՝ Լուսաւորչի և Տրդատայ հրամանաւ, ազգին 'ի քրիստոնէութիւն դարձած ատեն․

որ չըլլայ թէ նորէն հին կրօնքի և հին թոյլ սովո֊րութեանց դառնան. գիտնալով որ կրօնքի և սո֊վորութեանց մէջ Հայք շատ կամապաշտ են, երգ ալ շատ կու սիրեն: Իրաւ այս արգելքս մեր գրա֊կանութեան մեծ վնաս բերաւ, բայց առանց ա֊նոր՝ յամառ և անկիրթ ժողովրդեան կանոն դնել չէր ըլլար. ինչպէս յայտնի կ՚երևի անկէ ալ, որ երբ Թուլնային հաւատքէ՝ մէկէն իրենց հին ա֊ւանդութիւնները կու փնտռէին. ինչպէս որ ըրին մեծին Ներսէսէ առաջ Տիրանայ ատեն. «Դեգե֊» րեալ մաչէին... 'ի հնութիւն հեթանոսութեան» սովորութեանց.. և զիւրեանց երգս առասպե֊» լաց զվիպասանութեանն սիրեցեալք՝ 'ի փոյթ» կրթութեանցն, և նմին հաւատացեալք և 'ի նոյն» հանապազորդեալք »[1]:

Ասանկ ալ յաջորդ դարուն մէջ երբոր Վասակ կը ջանար քրիստոնէութիւնը վերցընել Հայա֊ստանէն՝ դարձեալ մնացած հին երգերը դուրս հանել սկսաւ. «Քաղցրացուցանէր ոմանց ըղ֊» կարգս երաժշտութեան և զերգս հեթանոսա֊» կանս[2] »: Թերևս այսպիսի հակառակասէր հո֊գւոյ ջանքն աւելի պատճառ եղաւ որ այն մնացորդ֊ներէն ալ գտածնին ջնջեն Վարդանանք և Ղևոն֊դեանք: Իսկ Հայաստան՝ Պարսից վտանգէն ան֊ցնելէն ետև, ալ կրօնքին մէջ հաստատուեցաւ, վախ չկար վիպասանութիւններէն. բայց կու կարծեմ որ ամբողջ գրած վիպասանութիւն մ՚ալ չկար. վասն զի Պարսիկներն ալ ջանացին Հայա֊ստանի մէջ գտած գրքերնին ջնջել. սակայն որով֊հետև դեռ տեղ տեղ կը լսուէին անոնցմէ երգեր, մանաւանդ Գողթնեաց կողմը, ինչպէս Խորենա֊ցիէն բերած վկայութիւննիս կու վկայեն, կրնար Թարգմանչաց մէկն ժողովել հնուցմէ մնացածը

1 Բուզ. ԺԳ:  2 Եղիշ. Գ:

որբաղան և թէ ազգային պատմութիւն ալ կերպով գրեցին, թէպէտև քիչ բանաստեղծական ազատութիւններով. այսպէս է նախ Մագիստրոսի Մեծ էն գործ Աստուածոյ սկսած հազար տուն ոտանաւոր վիպասանութիւնն սուրբ Գրոց պատմութեան. Շնորհալւոյն վիպասանութիւնն Հայոց պատմութեան և Յիսուս Որդի անուանեալ հոգևոր եղերերգութիւնն, Ողբն Եդեսիոյ առման վրայ, ինչպէս և Գրիգորի Տղայոյ Ողբ Երուսաղէմի առման վրայ։ Վահրամ վարդապետին Կիւլիկեցւոց պատմութիւն, Առաքել վարդապետին Ադամգիրքն, և մեր հայրապետաց պատմութիւններն, Յովասափայ վարքն, Սիմէոն Ապարանեցւոյն վիպասանութիւն Մամիկոնէից և Պահլաւունեաց ցեղերուն վրայ՝ Շնորհալւոյն ոճով։ Այս երկի հեղինակս կ'իմացընէ որ իր վիպասանութիւնն առած է Ղազարայ Փարպեցւոյն չինածէն նոյն բանին վրայ, և անոր չինածն ալ վիպասանութիւն կ'անուանէ. բայց գուցէ արձակ գրուածք ըլլայ իր մէկալ-ծանօթ պատմութեանը պէս։

Երրորդ կերպն է կարճ ազգային երգեր երեւելի մարդկանց և դիպուածոց վրայ, շատ տեսակ եղանակի վրայ առած։ Հին Հայք այս կերպս ալ շատ կու սիրէին, և թերևս Խորենացւոյն յիշածներէն ոմանք այս ցեղէս են։ Այսպէս ալ Տրդատայ վրայ կարճ ըսուածն.[1],

« Իբրև զսէգն Տրդատ, որ սիգալովն ուռերեաց զթումբս գետոց,
» Եւ ցամաքեցոյց խոկ 'ի սիգալ իւրում զյորձանս ծովուց »։

Այսպիսի երգեր զոր հին Հայք եղանակով և նուագարաններով կ'երգէին, մեր հիմակուան ռամկաց

1 Ագաթանգեղոս։

Խաղ ըսուածներուն կը նմանէին, զոր իրենք Յուդկամ Նէր կ'անուանէին. և թէ՛ քաջութեան, թէ՛ ողբական, թէ արհամարհելու դիպուած հանդիպէր, վրան երգ մը յարմարցուցած կ'երգէին. ինչպէս ամեն ազգաց մէջ ալ կը գտնուի ինչուան հիմայ: Մագիստրոս իր ատենին համար ալ կ'ըսէ թէ հիմայ Հայոց մէջ աւելի կայ քան ուրիշ մօտիկ ազգերու, որ աշխատութի վրայ ալ առած կ'երգեն «արուեստաւորեալ 'ի գովս և 'ի պար- » սաւս ». Թէպէտև այս երգերէն շատը ռամկական կերպով գրուցուած էր, և երթալով ալ աւելի ռամկացաւ: Յետոյն դարերու քերականի մեկնիչ մը այս բանս յիշելով և բացատրելով թէ ինչ է հին հագներգութիւնը՝ զոր Մագիստրոս յիշեց, բացատրելու ատեն ինքն ալ ռամկական բանաստեղծութեամբ վառուած՝ կարծես ըսածին օրինակն ալ մէկտեղ կու տայ. զոր զուարճութեան համար յիշենք. «Զոր և այժմ զահուախանի [1]
» մանչերն առնուն 'ի ձեռս իւրեանց երկու փայտ,
» զոր չարփալայ ասեն, և բախելով ընդ միմեանս
» ելր

» Ծափս հարկանելով
» Եւ կաքաւեն յոլով,
» Եւ մանս առնեն պար գալով,
» Եւ ձօձեն ձեմելով,
» Եւ տաֆս [2] հարկանեն ծընծայքով,
» Եւ խաղս խաղան Թատերով,
» Ջանդամին շարժեն խնձերով,
» Աւաչս յօրինեն ձոխ երգով»:

Այս երրորդ կերպով բայց ծանր ոճով նոր ատենս ալ գրուածքներ շատ կան, նաև երկրորդ կերպին մօտ կարճ վիպասանութիւններ. բայց

1 Գոհֆիր-խանէ:   2 Թմբուկ. Թէֆ:

անոր երկայն և ծանր կերպովը ու մեր օրերը ա-
ռաջքին անգամ վիպասանութիւններ ընծայեց Վա-
նեցի կամ Վանանդեցի Տէր Յովհաննէսեան Մեր-
զայեան, Ոսկի դար և Աշխիկան կոչած վիպասա-
նութեամբք. որոնց եղջիւրը կրնար առաջքին կարգն
ու անցնիլ, թէ որ հեղինակն ինչպէս ինքն ալ կը
խոստովանի՝ Աղաթանգեղոսին պատմական ոճը
բռնած և գրեթէ զնոյնը ոտանաւորի գործա-
ցած չըլլար, տեղ տեղ համառօտելով և տեղ տեղ
բանաստեղծութեամբք զարդարելով: Առաջինն՝
որ հին քերդողաց մէջ տակ եղած՝ ոսկեղէն դա-
րուն Հայաստանին մէջ ըլլալը կը ցուցընէ Հայ-
կէն ինչուան Արամ, նոյնպէս երկրորդ կերպի վի-
պասանութիւն է[1]:

## Զ

Այս ցեղ գրուածոց և քերդուածոց մէջ կըր-
նամք սեպել կերպով մը մեր մատենագրաց քնար-
երգականքն ազգային յիշատակաց կամ անձանց
վրայ, որոց մեծ մասն եկեղեցւոյ նահատակաց
վրայ են, և կ'ըսուին Տաղականք, և Գանձք և
Տաղք. ամենն այլ գրոց ծանր լեզուով և ոճով.
իսկ բուն քաղաքական սեռութեամբ և ազուով
գրուած երգք ազգայինք խիստ ցանցառ են մեր

1 Հեղինակն որ ինքնինքնին կը հեռևի այս կարծեաց
և հնութեան նկարագրութեան մէջ, անոր զուշակու-
թիւնն ալ կատարել ուզած է գործքով. Հայաստանի
Հնախօսութեան Ա հատորին մէջ, երես 282 կ'ըսէ ինքնի-
նեան. « Յայսմ հարիւրեկման ժամանակի է Ոսկի դարն,
» այնչափ հռչակեալ և գովեալ առ նախնի բանաստեղծս.
» որ և յասուր ժամանակ 'ի մերոց բանաստեղծից նկա-
» րագրեալ երգովք, իբրև զմին կենակցաց մերոյ աշխար-
» հին »:

մատենագրութեան մէջ. այլ անոր տեղ ռամկական լեզուով գրուածք աւելի և բաւական շատ կու գտուին, սկսեալ գրեթէ յԺԲ դարէ մինչև հիմայ: Ասոնց լեզուին շարագրութին ըստ դարուց և տեղեաց մեծապէս կու զանազանի իրարմէ, որով և այլևայլ գաւառական լեզուօք գրուած կրնան ըսուիլ. բայց այս զանազանութիւնս աւելի ԺԶ դարէն վերջը կ'երևի. ինչուան այն ատեն գրուածքն դեռ Հայ լեզուին միութեան կերպ մ'ունին, միայն սպարսիկ կամ Թուրք բառերով խառնուած են. իսկ անկէ ետև՝ ոչ միայն այլ աւելի խառնուրդ կ'առնուն բառից, այլ և դարձուածոց կամ ոճոյ բանից, և քերականական կազմուածքնին շատ կու տարբերի: Կրնամք ընդհանուր երկուքի վերածել այս ռամկական կամ գաւառական բարբառները, արևելեան և արևմտեան Հայերէնի. առաջինը կու բանեցընեն Վրահայք և Պարսկահայք, այսինքն Վրաց սահմանները, յԵրևան, 'ի Ջուղայ՝ և անկէց 'ի Պարսս և 'ի Հնդիկս անցնող Հայք. իսկ երկրորդը՝ բուն Մեծ Հայաստանէն դուրս եղող Հայք, որ 'ի Փոքր Հայս, 'ի Կիւլիկիայ և 'ի գաղթականս Փոքր Ասիոյ և Ռումէլիի. կրնամք այլ միջին ըսել Վանայ և Մշոյ կողմերուն լեզուին, որ ըստ քերականին աւելի արևմտեայց մօտ են, բայց աւելի այլ մաքուր և յստակ. ասոնց և արևմտեայց այլ միջադաս կրնան ըսուիլ բուն Մեծ Հայոց արևմտեան աշխարհաց բնիկքն, ինչպէս են Կարնեցիք, Երզնկացիք և Խարբերդցիք:

Արևելեան ըսած Հայ ռամկական երգիչք կամ վիպասանք՝ նոր ատեններս աւելի յայտնուեցան կամ հռչակուեցան, և ոմանց երգերն այլ հաւաքուելով տպագրեցան 'ի բանասիրաց Ռուսահայոց. այս վիպասանք անցեալ կամ ներկայ դարուս մէջ ծաղկած են, և՝ աւելի համբաւաւորքն են

Սայաթ (կամ Սայաթնով) և Ալէքսր Ալտամ († 1844). գովութեամբ կու յիշուին և Ալահվէրտի, Քէշիշ-օղլի՝ որք կոյր էին աչօք. բուն Ջուղայեցոց մէջ կու յիշուին Էգազ, Սրզանի, Բաղէր-օղլի, Ղուլ Սարգիս Շրէշեանցի, Ամիրօղլի, Վանձան, Խուլ Յովհաննէս, Պետրոս Ջուղէցի, և այլն:

Իսկ Արևմտեան կողմերս աւելի բազմաթիւ են, և սոցա գրուածքն ձեռագիր երգարանաց մէջ կու գտուին. որոց մէջ կան շատ երգեր այլ տռանց անուան հեղինակի: Հոս՝ տռանց տեղւոյ շատ խորութեան՝ յիշեմ ժամանակի կարգաւ այս ռամկական լեզուով երգ գրողներէն ինծի ծանօթները, ոչ միայն երգը և երգոյն նիւթը դիտելով՝ այլ և ռամիկ կամ գաւառական լեզուն. և այս տեսութեամբ ամենէն հին և առաջին կրնամք սեպել ԺԲ դարուն մէջ մեր անմահ Շնորհալի կաթողիկոսը, որ զանազան ոճով գրուածոց մէջ թողուց նաև ռամկական կամ այն ատենի աշխարհաբար ոճով Հանելուկներ. ասոնցմէ հին այնպիսի բարբառով գրուած ոտանաւոր չեմ ճանչնար: Այս լեզուին և գրուածքին հետևած Հանելուկներ գրած է և Տիրատուր վարդապետ մը ԺԴ դարու մէջ. որուն դարակից ռամկօրէն երգագիրք են անուանի Կէչառեցին Խաչատուր, Կոստանդին Երզնկացին, և անոնց մօտ Մինաս Դերջանցի. իսկ քիչ մ՚ այլ հին ԺԳ դարուն վերջերը և ԺԴին սկիզբը մեր վերջին ընտիր մատենագիրն, Յովհաննէս Երզնկացի, որ ունի գրեթէ աշխարհիկ բարբառով գրած խրատական երգեր ալ: Բայց մեր ռամկախօս կամ ռամկախառն վիպասանից և գուսանաց ամենէն ծաղկած ատենն ԺԵ և ԺԶ դարուց միջոց կ՚երևի. առաջիններին մէջ և սկիզբները ծաղկեցան երկու Առաքէլք, Սիւնեաց արքեպիսկոպոսն՝ քուերորդին Գրիգորի Տաթևացւոյ, և Բաղիշեցին կամ Պոռեցին, որոց գրուածքն երբեմն իրարու հետ կու շփո-

թէն. ասոնց գրուածքն աւելի հոգևոր և խրատա-կան են. Մկրտիչ Նաղաշ՝ Ամդայ արքեպիսկոպոսն՝ որ աւելի հանճարեղ և զգայուն է. այլ ամենէն աւելի բանաստեղծ և տաքսիրտ Յովհաննէս Թլկու-րանցի, որ ասեն մը սիրոյ և գովասանաց երգեր երգած է, ասեն մ՚այլ Սսոյ Կաթուղիկոս է ե-ղած. — բարակ զգացման և ուղիղ մտաց տէր, նաև ճարտար տաղաչափ պէսպէս վանկերով՝ Նոր-ահուն քերդող մը կայ՝ Ֆրիկ, որդի Թագվորի եղ-բօրորդի Դուքոնոյի, որուն ժամանակն որոշակի յայտ չէ, բայց այս (ԺԵ) դարէս ետք այլ չէ. գրուածքն բարոյական խրատք են, սակայն սըր-տով սփռած: Ասոնց ժամանակակից կ՚երևին Ա-բեր Տոռնէ Նաղաշ, Աբրահամ (Գրիգոր) և Յովասափ Սեբաստացի: Քիչ մ՚ետև ԺԶ դարուն սկիզբները Գրիգոր Աղթամարցի, որ Թլկուրանցւոյն զոյգը կըլնայ ըսուիլ՝ թէ անոր պէս կաթուղիկոս ըլլա-լովն, և թէ նման վառվռուն երևակայութեամբն: Այս ԺԶ դարուս մէջ ծաղկած են և երգիչք կամ տաղասացք՝ Մկրտիչ Տարօնեցի, Թադէոս Սեբաս-տացի, Մինաս Եւդոկիացի, Մարտիրոս Ղարաճաւարցի (Գարահիսարցի), Եղնուղ, Յակոբ Վարդապետ, Ներսէս Բեղլու[1], Քուչակ Չարախանցի, հաւանորէն և Սողոնդիար, Սրապիոն, Աղարիա, Սարկաւագ Բեր-դոնցի, Զաքարիա Ագուլեցի, Թուլէն Կաֆացի, Ղազար Խոյր, Մէլքոն, Մուրատ Խիկար՝ որուն կ՚ընծայուի «Մարալըն կու գայր ծաղկըներով» երգն[2], Յովհա-նան Նաղաշ, Ներսէս, Շամս, Քերովբէ, Քօլան կամ Քօլնայ Թլաթեցի: Յետագայ (ԺԷ) դարուն մէջ՝ Ա-ւար Սեբաստացի, Արիստակէս (Խարբերդցի?), Խա-չատուր Բաղիշեցի կամ Ջուղայեցի, Սուքիաս, Ստե-

1 Այսինքն Պզտիկը, մեծ ընչացք ունենալուն համար. իր Հայրենեաց անուամբ այլ Մոկացի կոչուի:
2 Որ յոմանց կարծուած է Մկրտիչ Նաղաշին:

փաննոս Թօխաթցի, Երեմիա Չէլէպի Քէօմիւրճեան, Ստեփաննոս Ղափանցի, Սարգիս Էրէց, և այլն: Այս դարուս մէջ ծաղկած կ'երևին երկու Էրզրումցիք այլ, Տափուր գինեբրգուն, և Դաւիթ Սալաձորեցի ծաղկերգու: ԺԸ դարուն մէջ գրոց լեզուն աւելի մշակուելով՝ ռամկաբան երգիչք այլ նուազեցան. կրնան դեռ յիշուիլ Գալուստ Կոյծանն կաթուղիկոս, որ թէ զուտ թէ խառն գրած է, նաև թուրքաբէնով, Օհան օղլու, Աւէտիք՝ անուանի պատրիարքն Կ.Պօլսի, և այլն. որոց հետ թերևս քանի մ'այլ կրնայի շարել, բայց անշուշտ աւելի շատ են անոնք՝ զոր չեմ յիշած և չեմ ճանչցած. և անշուշտ առանց անուններին գիտնալու անոնց երգերը կարդացեր եմ տաղարանաց մէջ. գուցէ շատոնք այլ կամաւ ծածկած են անուննին սիրոյ և գովասանութեան երգերու մէջ, որ շատ հեղ ըստ տաքութեան և սաստկութեանն իւրենց՝ տուած է անոնց ճարտարագոյն բացատրութիւն և բանահիւսութիւն այլ: — Սէր և սուգ. որոնց ամենէն զօրաւոր ազդեցութիւնք, ամենէն շարժող մագնիսն և ելեկտրութիւնն են, միանգամայն և ամենէն ճարտար ձեւ և ձայն տուողք անոր. ահաւասիկ սրտաթափ ձայնիկ մը մեր գուսանաց մէկուն, որով լռենք այս երեկոյեան զրոյցս ազգային վիպասանից վրայօք.

Ժամ ժամ զիմ ղարիպութիւնս
Ես յիշեմ ու նստիմ ու լամ.
Ճապղել եմ ջըրիտ նըման,
Ես օտար երկիր կու գընամ.
Աստուած գիտէ ան ճամբան
Ուր երթամ կամ ուր տի մընամ:
Ո՛վ կապէ խաշն իմ սրտիս,

Կամ հողվարք՝[1] որ ես գուրանամ:
Ցորեկն եմ նետիտ նըման,
Ուր նետեն՝ ես ի հոն կենամ.
Գիշերն՝ աղեղան նըման,
Ես լարթափ[2] ի վար կու գընամ:...

1 Հողով ծածկած գերեզման:
2 Թուլցած կախուած լարով աղեղն:



Gi^me Bernasconi inc.

ի՜նչ փարելի թեւակցութեամբ ... քայլէին քննէին իրենց հայրենի երկրին ոլորտքը, որոշելով զշէնն և զանշէնն, և իրենց տիրական նշանները ու սահմանախաչերը կանգնելով։

## Ի

# ՎԱՀԱՆ ԳՈՂԹՆԱՑԻ

### 18 Մարտ, 738

## Ա.

Վահան, գեղեցիկ և ընտիր հայկական անուն՝
որ ազգային պատմագիրաց կու յիշեցընէ իրենց
ոչ սակաւ ընտիր դիւցանման և սրբազանեալ
նախնիները, հոս իրեն կցորդ հայրենական կոչ-
մամբն Գողթնացի՝ կու յափշտակէ զսիրտ ա-
այն Վահան, որ եթէ ոչ քաղաքական և պատե-
րազմական հանդիսիւք՝ հռչակուեցաւ իբրև զՄեծ
Մամիկոնեանն ('ի Ե դարու), սակայն քան զնա
և քան զայլ համանուն վերադասի յազգային
հոգիս, այնպիսի զգացմամբք՝ որք աւելի զօրա-
ւոր և սրբազան են քան զարիութիւն և զխորա-
գիտութիւն: — Սուգ, սէր և սրբութիւն: — Իսկ
եթէ ասոնց հետ հայրենասիրութիւն ալ պա-
հանջուի, ոչ պակաս քան 'ի Մամիկոնեանն երևի
և 'ի Գողթնացին. Թէպէտ և 'ի սա նոր օրինակ
կերպով մը. գուցէ աւելի սաստիկ, սուգիւ ա-
ւելի սրտառուչ:

Հայկազեան հրեղէն հանճարն՝ (որ Թողած է
բաւական պայծառ նշաններ՝ իր հնութեան հա-
ւասարապատիւ կանգնելու և ցուցընելու իր

սիրտն այլ), մտաւացութեանց մոխրոց տակ երկու վառվռուն կայծակներ պահեր է 'ի յիշատակ Գողթնացւոյս Վահանայ. որովք թէ սա՝ թէ մեր ազգին գրականութիւնն և թէ ազնուական զգացմունք՝ անգամ մ'այլ անմահութեան հաւաստիք կ'առնուն. քանի որ 'ի մատեանս պատմիչաց մերոց մնայ Վահանայ Վիշապաքաղին, և 'ի դասս եկեղեցւոյ մերոյ՝ Գողթնացւոյն Շարականն։ Ըստ ինքեան գեղեցիկ՝ մանաւանդ թէ սըխրալի և սրտառուչ պատմութիւնն կամ դիպուածըն, այն երկու կայծակնաճաճանչ գրուածովք նոր շնորհք և նոր վայելչութիւն մ'այլ առեր և զարդարուեր են։ Անոնցմով՝ եկեղեցի, հայրենիք և սրտային գորովանք՝ աքանչելապէս խառնուած, իբրև ոսկւոյ, արծաթի և ծիրանւոյ սեփական հիւսուածք մ'այլ կու ցոլացընեն մեր հայրենի յիշատակաց մէջ։ Այն գեղեցկութեան անկարելի էր բան մը պակաս գտնել, եթէ, — փառք ազնիւ հայրենեաց կամ հայրենակցաց մերոց, — ով Հայկակ, հայկական սիրտն՝ հանճարէն այլ վեր թռչելով ճարտարած չըլլար այնպիսի գեղեցիկ հիւսուածի մէջ այլ՝ նրբագոյն մանուշակ մը մանել, և անով Գողթնացւոյն յիշատակը փափկագոյն իմն բարձրացընել քան զՄամիկոնեանն, քան զԿամսարականն, քան զԳնունին, քան զամէն այլ Վահան։

Այս մանրակերտ մանուշագոյն մանուածս՝ է հին աւանդութիւն մը. աւանդութիւն մը՝ որ իրեն երաշխաւոր ունի վերոյիշեալ շարականը, այն հայկական հանճարոյ մէկիկ չքնաղ կայծակը. հազար հարիւր տարի քշած անգիր յիշատակ մը, բերնէ բերան, սրտէ 'ի սիրտ անցած. սիրատարփ, նըրբազգած և նրբասեռ անձի մը, Հայուհւոյ մը յիշատակ. զոր պատմութիւնն աքողէ, աւանդութիւնն կոչէ քոյր Վահանայ, և շարականն այն վը-

կայէ՝ թէ իր հեղինակն արդարև կամ փոքր կամ քուրանման ութերոյին զարմանուհի մ'էր Վահանայ. — միով բանիւ, աներկբայ հայկածղի մուզայ մ'էր. որուն սրտին, մտաց և մատանց թափուած երգը՝ յափշտակեր է մեր սուրբ եկեղեցին, և իր պատուականագոյն բանաւոր գանձուց մէջ շարելով՝ անմահափայլ պահէ թէ զփառս իր և մեր Վահանայ, և թէ անոր հայրենեաց Գողթան:

*

## Բ

Գողթն... թէ և քիչ մը խորթացեալ անուն, և ոչ պայծառասփիւռ իբրև ուրիշ հին հայկազնեան անուններ, և հաւանօրէն (մեր հին ազգին մտաւոր) Մարաց գաղթականէն մնած կամ այլայլած, սակայն յիշատակօքն և բնութեամբն իսկ հաճոյ՝ ամեն սիրուն և ուրախ սրտի, նաև տխուրի: Գոնէ 2500 տարիէ վեր լուած և յիշուած անուն 'ի պատմութեան, և մինչև հիմայ նոյնպէս կոչուած 'ի մերազգի բնակաց, և յօտարաց՝ Քիւլէր. — հիմայ՝ ծանօթ իբրև գեղաւան մը. մեր մատենագրաց մէջ՝ իբրև գաւառ մը, և մերիններէն հնագոյն օտար աշխարհագրաց՝ իբրև առանձին նահանգ կամ աշխարհ մը. այսինքն՝ անկախ նախարար կամ նահապետ ունող, ինչպէս Սիւնիք, և ուրիշ տասնևհինգ աշխարհքն Հայոց Մեծաց: — Գողթն. զոր բնահայ գետոյն Երասխայ արմուկն՝ իր ընթացից հարաւագոյն մասամբը պատելով կու գգուէ, գիրացընէ և զինովցընէ. — Գողթն. կերպով մը հակառակորդ Շիրակայ. որ ունի լիութեամբ զհաց հաստատիչ սրտի. և առաւել զգինի՝ որ «ուրախ առնէ զսիրտ մարդոյ»: Ասոր այգեաց անոյշ ազդեցութեամբն՝ բնակիչքն այլ եղան երգահանք, բանաստեղծք, աւանդապահք քաջութեան դիւցազանց, հայ-

կական ցանկալի հին յիշատակաց, և ճարտար գործածողք ազգային գլխաւոր երաժշտական գործւոյն, որ է բամբիռն փառապանծ։ Մինչև հիմայ, թէ և Գողթնացւոց կամ Ագուլեցոց (Գողթն գաւառին մէկ աւանն է Ագուլիս, որ թուի ըսել Այգուլիք, այգիներով լիք) լեզուներն թէ և թանձր ու խորթ, անշուշտ հին Մարաց լեզուէն խառնուած, սակայն բառերն և բացատրութիւնք նշանաւոր են բանաստեղծութեամբ։ — Գողթն. իրեն գինաւէտ այգիները կ'ոլորէ յեզր Երասխայ, մօտ անոր կարկաջահոս քարավազէց. բնութեան զարմանակերպ, ահեղագեղ, միանգամայն և զաւարագուարճ ու բարեբեր ձորահովտաց մէջ։ Անկէ լաւ տեղ կրնա՞ր ընծայուիլ մեր ազգային Անակրէոնից, և անոր հետևողաց աշխոյժը և ախորժակը վառելու։ — Երասխայ հանապազահոս վիժանաց ձիւնափայլ փրփուրքն՝ այգեաց ընծայած ծիրանեփայլ պղպջակին հետ խառնած, կ'արծարծէր մեր հայրենի բամբիռը, և հազարամեայ յիշատակներ երեկուան դիպուածի մը պէս կու հնչէին 'ի Գողթն. և Քրիստոսէ հինգ դար վերջը՝ իր Տարօնոյ Մեղրայ-գետը թողած՝ կու լսէր մեր Խորենացի պատմահայրն՝ հեռաւոր Գողթան և անոր սահմանակից Մեղրայ աւանին գետակաց եզերքը՝ Քրիստոսէ հինգ վեց դար առաջ փայլած և փառաւորած ազգային մեծագոյն դիւցազին ծագումը, Վահագնի այլաբանեալ ծնունդը, զոր

«Երկնէր երկին, երկնէր երկիր,
Երկնէր եւ ծիրանի ծովն»։..

Երանի՜կ մեր պատմահօրն, որ այնքան ողբալի լռութեանց մէջ՝ գոնէ այսպիսի երգոյ մը համար կըրցաւ ըսել, թէ «զայս երգելով ոմանց բամբռամբ՝ » լուաք մերովք իսկ ականջօք». և դարձեալ ա-

սոր նմաններն այլ կու յիշէ, Թէ անկէ հին և Թէ այլ շատ մօտ (Քրիստոսի Բ դարուն հանդիպած) գիպուածոց վրայօք. որոց վրայ աւելցան ժամանակաւ նորանոր քաջաց գովասանք, իբրև ազգային պանծալի վիպասանութիւն մը հիւսելով։ Ասոր պատմութիւնն երբեմն միաշար և երբեմն ընդհատ, հաւանօրէն երկարեցաւ ինչուան մեր մեծ պատմիչին օրերը և այլ վար, (Թէ և անկէ ետև շատ ցաւեր և ձիւներ անցան մեր ծեր հայրենեաց գլխէն). դեռ երբեմն բարբառէր բամբիռն Գողթան, կու հնչեցընէր հատակատուր հագագներ, և ընդ գովասանութեան քաջազանց՝ գուցէ խառնէր քանի մ'այլ խոր հառաչանք։ Դեռ Հայկազուն և Աժդահակեան խնամեցեալ պայազատաց սերունդքն իշխանաբար ճոխային ճեմէին Երասխայ դարափանց և ձորոց մէջ. և դեռ ունէր Գողթն՝ մինչև 'ի սկիզբն Ը դարու՝ իր առաջինի հնազարմն իշխեցողը՝ Խոսրով, զոր սուրբ կ'անուանէ ժամանակին պատմիչն. և որոյ սրբազոյն և ծանօթագոյն շառաւիղ մը ծագեցաւ 'ի սկիզբն Ը դարու (յամի 702) մեր դրուատելին Վահան։....

Գ

Ո՛վ պանծաձայն բամբիռն Գողթան. արդեօք նաւասարդի տաղարթներով պսակուած, և գինաւէտ այգեաց լայնատերև բարունակներով պլըլուած՝ երևցա՞ր այս անգամ այլ, երգեցի՞ր մեր հին Վահագնին նմանցընելով՝ այս քու նոր (և Թերևս յետին) Վահանիդ ծնունդը.—ո՞ր գոյն երկինք, ո՞ր գոյնզերկիր, կամ ո՞ր ծով ծիրանի երկնեց զսա. ի՞նչ կարմրիկ եղեգն էր որ բարձրացուց զսա 'ի ծովէն. կամ ի՞նչ ծուխ, ի՞նչ բոց էր՝ որ կ'ելնէր անկէց։.. Ո՛հ. մանաւանդ Թէ այն ի՞նչ ծծըմբա-

խառն մուխ էր՝ ուսկից «ծաղէր խարփեալ պտտանէ-
նչին» մեր։....

Հայկակ, ես այս ծխէն մղձկած՝ կու կորսնցը-
նեմ Գողթան բամբիռը. կու լսեմ ուրիշ բոմբիւն,
ուրիշ վիպասանութիւն մը՝ որ յանկարծ մահուան
թմբկի պէս կ'որոտայ, նոր և այլակերպ ծիրանի ծո-
վու մը ծխոյ ու բոցոյ մէջ. «Ահա մերկացաւ սուրն
» վաղակաւոր՝ ի պատենիցն. զոր տեսանող ականքն
» յառաջագոյն սպառնացեալ ողբայր մարգարէն։
» Սուր ծարաւի արեամբ՝ զարթեալ՝ի մեզ ազգն
» Իսմայելի. ընդ չորեսեան կողմանս երկրի գոչեալ
» առիւծաբար, կամ իբրև չորեքին հողմովք բա-
» խելով զծով, զաշխարհ»իս մեծութիւնս։ Որ ար-
» գեւք թէ և առ Իսրայէլ լինէր մարգարէու-
» թիւնն, զոյն և առ մերս առնու ձայնն. մանա-
» ւանդ՝ Երուսաղէմ մինչև՝ի հիմն քակեալ լինէր.
» և մեր՝ բոլոր աշխարհս քակեալ աւերեցաւ։
» Զվայելչութիւն երկրիս օտարազգիք կալան. ա-
» զատութիւն և տէրութիւն և իշխանութիւն
» նախարարացն՝ անարգութեամբ յերկիր կործա-
» նեցաւ։ Անդ մանկունք ողայք դքարի հարեալք.
» և մերքս առ հասարակ ծնողք և մանկունք՝'ի
» գերութիւն. որ և զմարցն առեալ ողբայր Ե-
» րեմիա, այն և մեզ իսկ դիպեցան 'ի դէպ ելա-
» նել....։ Վասն զի մրրիկ տապախառնի ափրա-
» բեր շնչեալ օդոյն հարաւոյ, բարձ զառագաստ
» փափկութեան. բարձեալ զպատուականութիւն
» և զսրբութիւն լուսազարդափայլ ծածկու-
» թեանն, որ փոխանակ դրախտին շնորհեցաւ
» մեզ՝'ի կենաց փայտէ խաչին Քրիստոսի. և յայտ-
» նեցաւ թխութիւն թանձրութեան կապոյն.
» խաւարամած թանձրութիւն անհնարին սևու-
» թեանս. զոյն, որ ունելոց էր զամենայն աշ-
» խարհս Հայաստան երկրիս»։

Այսպէս կու սկսի Արծկէացին, Երաշխաւորի

վանահայրն Արտաւազդ, երբ « Ողբոց ձայն լսելեաց » որ անցեալ 'ի վերայ աշխարհիս Հայոց . . . և Վկայաբանու- » թիւն Ս. Վահանայ » ։ Նախերգանք կսկծալի՝ ըստ դիպուածոց պատմութեան, պանծալի՝ ըստ մատենագրութեան. որ մեկէն 'ի մեկ ընթերցողին առջև կու ծաւալէ՝ Դամասկացի Թրերուն Թօթափած կայծերովը ձևացած ծիրանի ծովը։ Ծով արեան, ծով մեր հարազատ արեան, ուսկից կ՚արձակի կորացեալ կարմրիկ եղէգն այլ, և անոր մարմրած բոցոյն միջէն վազէ մեր խարտեաշ պատանեկիկն Վահան։ — Նաւթով ու ձիւթով օծեալ են այն եղէգներն, բռնկած ու բորբոքած, որ Գողթան մօտ Նախճաւան և Խրամ (կամ Հրամ) աւանաց մեծ եկեղեցեաց քակուած տանիքներուն մէջ կ՚եռան ծծմբաձոյլ օձերու պէս, և վար կու Թափին հրածորան անձրևի նման։ Եկեղեցեաց դռներն դրսէն չէ Թէ միայն գոցուած, այլ և աղիւսով հիւսուած, պատերուն հաւասար պնդած փակուած են, որ չկարենայ մարդ դուրս ելնել. և եթէ անակնկալ կերպով մէկն ծակէ մը կարենայ սողալ սահիլ, պատերուն տակը սպառազէն արաբացի գունդեր սուսերամերկ կու պտըտին կու վազվըզեն քաղցած գայլոց նման. հրոյն մէկ ժամուան մէջ ընելիքը՝ սրոյն վայրկեանը լմնցընելու. մէկ հարուածով մը սպաննելու։ Անկարելի է Թէ դուրս ելնելն, Թէ դուրսը վայրկեան մը ապրիլն։ — Իսկ ներսը . . . ։ Սակայն մեզի այլ հարկ է, ծանր հարկ մը, գոնէ մօտենալ այդ հնոցիդ, և յիշել անոր պատճառը և նիւթը։

## Դ

Վաթսուն տարի էր որ Հագարացիք մտեր և տիրեր էին 'ի Հայաստան. իրաւ, երբեմն բարեբարոյ և արդարախոհ ամիրապետաց և ոստիկանաց և մերազգի իշխանաց խոհեմութեամբն՝ հանգիստ և խաղաղութիւն կու գտնէր աշխարհն, բայց շատ անգամ այլ՝ կամ մերայոց անզգուշութեամբ և կամ հարկահանաց բռնաբարութեամբ՝ նեղութիւն և վտանգ պակաս չէր. մանաւանդ ետքը՝ երբ Ատրպատական աշխարհին կուսակալն ապստամբելով ամիրապետէն՝ Հայք այլ սկսան գլուխ քաշել, և օգնութեամբ Յունաց՝ Դրունայ մէջ պաշարելով զԱրաբացիս՝ բիւրաւոր մարդ ջարդեցին, մինչդեռ ընդդէմ Հոնաց կամ Խազրաց գացեր էր իրենց ոստիկանն՝ Մահմէտ Բ, հզօր և ահաւոր. որ և շուտով Աբդլլա, Ալի Ահմէտ, Օքբա, Գասըմ, և ուրիշ զօրավարօք և կողմնակալօք թափեցաւ 'ի Հայս (յամի 698–702), և շատ վրէժ ու չարիք հասուց Հայոց. որոց մէջ ցաւով նշանաւորք են Սևանայ բերդին երեքամեայ պաշարումն 'ի ծովուն Գեղամայ, և բոլոր մէջը գտնուող կոտորումն. մէկ մ'այլ Բագրևանդայ Ս. Գրիգորի մեծ և հարուստ վանաց անիրաւ կողոպտումն և միաբանից կոտորածն. ըստ ոմանց և ծերունի շնորհազարդ Սահակ կաթուղիկոսին և շատ իշխանաց կապանօք քշուիլն մինչև 'ի Դամասկոս, և մնացեալոցն 'ի հայրենիս՝ անտանելի տառապանքն և տարակոյսն: Մանաւանդ երբ ոստիկանն Մահմէտ՝ իր հարուածքն ընելէն ետև դարձաւ յԱսորիս, և իր տեղը թողուց մէկ այլ կողմնակալները, որ աւելի ցած և անօրէն մարդիկ էին. և հնարք կու մտածէին բոլոր Հայոց մեծամեծները ջնջելու աշխարհքէն, որպէս զի

համարձակ ծծեն անոր պարարտութիւնը և աղ-
քատաց արտասուքը։

Սմբատ Բագրատունի՝ Նախարարաց զօրա-
գլուխն, իր ցեղակից իշխաններն և ուրիշ ցեղերէ
այլ գլխաւորներ գաղտուկ ժողվեց 'ի խորհուրդ,
թէ ի՞նչ ընեն այսպիսի վտանգաւոր ատեն։ — Ուրիշ
ճար չգտան, բայց եթէ իրենք զիրենք ապրեցընել,
փախչելով յարևմուտս, Յունաց կայսեր երկի-
րը։ Գնացին խորհուրդ հարցուցին նաև անուա-
նի սրբակրօն Ճգնաւորի մը, որ Վանայ ծովուն
արևելեան կողմերը կու բնակէր. Նա այլ լալով
ողբալով ուրիշ խրատ չկրցաւ տալ, բայց միայն
որ զգոյշ կենան, յանդգնութեամբ բանի ձեռք
չզարնեն. և վրանին աղօթելով արձակեց։ Դար-
ձան ասոնք իրենց հաւատարիմները ժողվելու՝
որ հեռանան հայրենի սահմաններէն. և զգուշու-
թեամբ երթալով՝ ելան դէպ 'ի Մասիս լեռը և
բնակեցան յանուանի աւանն Ակոռի. և ահա
լսեցին որ այլազգիք իմացեր են իրենց միտքը, ու
Նախճաւանի կողմնակալն 8000 և աւելի հոգւով
ետևնուն ընկած՝ « ոչ մեկնեցան 'ի հետոց նոցա.
» քանզի... կամէին կենդանւոյն կլանել զնոսա»։
Մերոնք փութացան փրթան լեռնէն վար, անցան
Երասխ գետը, և Վարդանակերտ ըսուած աւանի մը
մէջ բնակեցան, որ կարծեմ Խորվիրապի մօտերն
էր. այլազգիք այլ նորէն ետևնուն ընկան։ Հայք
մէկ կողմանէ բնակնին ամրացընելով և գիշերա-
պահներ դնելով, միւս կողմանէ պատգամ ղրկե-
ցին առ Արաբացիս և իմացուցին որ իրենց մտա-
ծութիւնն ուրիշ բան չէր, բայց միայն գլուխնին
ապրեցընել փախստեամբ և օտարութեամբ, ի-
րենց տեղն ու ստացուածքը՝ թողլով անոնց ձեռ-
քը. ուրեմն թող տան՝ որ մնաս բարո՛վ ըսեն,
հեռանան իրենց հայրենիքէն։ — Եւ ոչ այս ցա-
ւալի հրաժարական ողջոյնը տալու ներեցին բըռ-

նաւորքն, այլ յարձակեցան Հայոց վրայ, որք և ոչ 2000 հոգի էին. սակայն աղօթքով և վերջին ջանքով ու քաջութեամբ միաբանեալ՝ դէմ ելան իրենցմէ չորս և հինգ հեղ բազմաթիւ բանակին այլազգեաց ։ Ասոնք կէս մը գիշերուան ցրտէն փայտցած, (վասն զի ձմեռն էր և ձեան վրայ անցուցեր էին գիշերը), կէս մը ցուրտ հովէն ծեծուած, և այլ աւելի՝ յուսահատեալ քաջաց հարուածներէն, բոլորովին շփոթեցան, քշուեցան, ջարդուեցան. փախչողներն այլ թափեցան Երասխայ վրայ՝ անդին անցնելու. գետն որ սառեր էր՝ անոնց փախստական ոտից դոփմանէն պատռտելով՝ ներքևն առաւ, կլլեց, ծածկեց ։ Եւ այն ահարկու սպառազէն բիւրաւոր բանակէն՝ հազիւ 300 հոգիք կրցան փախչիլ. զորոնք դարձեալ պիտի ջարդէին Հայք, եթէ չապրեցընէր մեր նախարարաց մէկուն տիկինն՝ Շուշան. որ և քրիստոնէաբար գըթով անոնց վէրքերն այլ պատելով, զգեստ և դրամ տալով՝ դարձուց խաւրեց առ ամիրապետն Ատրպատական՝ Ապդըլմէլիք. և ընդունեցաւ անկէց շատ ընծայ և պատիւ 'ի փոխարէն մարդասիրութեանն ։ Յաղթական գունդն Հայոց՝ թշնամեաց աւարներն առին, համարձակ իրենց ճամբան գնացին, մտան յամուր տեղիս մեր Տայոց աշխարհին, որ այն ատեն Յունաց իշխանութեան տակ էր, և կայսրէն այլ պատիւ գտան ։ — Այս է Վարդանանց կռիւն, անուանի մեր պատմութեան մէջ այս ժամանակիս, և ամօթալի յԱտրպատական պատմութեան, որոյ անունն և տարին անգամ չէին ուզեր յիշել. անանկ որ 200 տարի վերջ այլ մեր հաւատարիմ պատմըչաց մէկն [1] վկայէ, թէ՝ « Յարդ ես
» բան առ Հազարացին, ըստ իւրեանց աղխա-
» տրոյզ բառին պատմի, թէ Վարդանանցն առն-
» մ՛ ոչինչոյ մեզ » ։

[1] Յովհաննէս կաթուղիկոս ։

Այս կռուէն սիրտ առած ուրիշ Հայ իշխանք այլ 'ի Վանանդ և 'ի Վասպուրական՝ զիրենք նեղացընող այլազգեաց գունդերը ջարդեցին: Բայց եթէ սոսկ՝ իրենց վտանգը քիչ մը հեռացուցին, աւելի այլ ծանրացուցին: Վասն զի ամիրապետն Աբդըլմէլէք իր կուսակալաց փախստական զօրքերը տեսնելով և լսելով եղածը, պատուէր ըրաւ Մահմէտ ոստիկանին, որ երթայ խստիւ պատժէ զՀայս: Մահմէտ առաջիննէն աւելի պատրաստութեամբ և սրտմտութեամբ ելաւ գալու, զՀայաստան սրով և հրով մաշելու: Հիմայ մերոնց՝ ոչ միայն անոր դէմ կենալու ճար չկար, այլ գրեթէ և ոչ փախչելու: Մէկ հատիկ և յետին հնարք գտաւ Հայաստան՝ իր սրբակաց և ալեզարդ հայրապետը (Սահակ) փութացընել ընդ առաջ ահաւորալուր զօրավարին. որ եթէ հնար է, իր վարուց, հասակին և աստիճանին շնորհօք՝ անոր զէնքերը և ձեռքը կապէ: Սրբակենցաղ հայրապետն՝ որ արդէն վշտահար տառապեալ կեանքը կնքելու մօտ էր, յանձն առաւ այս դժար պատգամաւորութիւնը, իբրև յետին և ծանր հայրական պարտք: Ելաւ (ըստ ոմանց 'ի Դամասկոսէ՝ ուր գերեալ էր, և ըստ այլոց որ հաւանագոյն է) իր բնիկ երկրէն և աթոռէն, վերջին ողջոյնները և օրհնութիւնները տալով, թէ հասարակաց որդւոցը, և թէ ամենուն մօր Ս. Եկեղեցւոյ, որոյ փեսայացեր, և զոր վսեմ, փափուկ և հոգեռանդն երգերով գովեր գգուեր էր. զոր և մինչև հիմայ հնչելով Հայաստանեայց եկեղեցին, կրնայ նախանձելի ըլլալ ուրիշ ազգաց: Կու հաւանիմ, թէ բաց յայլոց նոյն իր մէկ շինած և երգածն՝ իրեն համար երգեցին իր կղերիկոսքն՝ զինքը յուղարկելու ատեն. «Այսօր քահանայապետս Ճշմարիտ՝
» աստուածային օրինօքն պատուեալ, կանգնէ
» զքառանկիւն սեղան խաչին. արժանապէս պա-

» տարագեալ բաշխել զմարմին և զարիւնն Տեառն.
» մաքրապէս մերձեցարուք փրկեալք նոր ժողո-
» վուրդք. և հայցեցէք 'ի Քրիստոսէ, զի շնոր-
» հեսցէ զաս մեզ ընդ երկայն աւուրս »: — Այս
յետին հայցուածքս ոչ շնորհեց Քրիստոս. մա-
նաւանդ թէ արդէն շնորհեր էր՝ քսանևեօթն տա-
րի երկարելով անոր կաթողիկոսութիւնը: Իսկ
հիմայ երբ սիրոյն թևերով ծերութիւնը աւելի
թեթևցնելով քան զարաբացի հեծելազօրուն ըն-
թացքը, դեռ Մահմէտ մեր սահմանաց չհասած՝
ինքն մտաւ յԱսորիս, և հասաւ մինչև 'ի Խառան
քաղաք. այլ չկրցաւ յառաջ շարժիլ. յօգնու-
թիւն, ծերութիւն և սրտցաւութիւն՝ վերջին հի-
ւանդութիւնը բերին. թևերը թուլացուց, ոտ-
քերը կապեց մահն. մահ՝ որ միայն չկրցաւ սիր-
տը պաղեցընել, ինչուան անոր յետին շարժը:
Մեր քահանայապետն այլ նման իր երգած քա-
հանայապետին յաւիտենից, իր կեանքը տալով
պիտի ապրեցըներ իր ժողովուրդը: Մահն հոս
շուտ երևցաւ, բայց ուշ հասաւ. վասն զի մեռ-
նողն ցրուեց անոր անյաղթելի կարծեցեալ հնար-
քը. Ճարտասան լեզուին և եռանդուն սրտին
թարգման թողուց ձեռացը մէջ կնքած թուղթ
մը՝ առ ոստիկանն Մահմէտ, պատուիրելով որ
իմացընեն անոր իր փափագը:

Գնացին աղաչաւորքն առ ոստիկանն, որ և շու-
տով հասաւ 'ի Խառան. բերին տուին իրեն թուղ-
թը՝ յորում գրեր էր հայրապետն սքանչելի ի-
մաստութեամբ և ծանրութեամբ մը, խնդրելով
որ խնայէ Հայոց, ներէ անոնց ըրածին, չդպչի
անոնց հաւատքին. այլ ինչպէս առաջին ամիրա-
պետք թողեր էին՝ ինքն այլ թողու. միայն հար-
կը առնու և պահէ զաշխարհքը: Ու եթէ այս-
պէս ընես, գրեր, Աստուած քու կամքդ կատա-
րէ և կու յաջողիս. ապա թէ չես լսեր ինծի՝ ոչ

իմ օրհնութիւնս և ոչ Աստուծոյ կու գայ վրադ. այլ միտքդ դրածիդ հակառակն կու պատահի, և ամեն կողմէն վրադ չարիք կու թափին։ — Զարմացաւ, զարհուրեցաւ անհեղ զօրավարն. և լսելով որ դեռ թաղած չէն սրբոյն մարմինը[1], եկաւ անձամբ. և տեսնելով այն հանդարտեալ հանգուցեալ կերպարանաց վրայ աստուածախօս պատգամ մը, խոնարհեցաւ պատկառանօք, երկու իրեք անգամ «սէլամ-ալէ» ըսաւ. որուն՝ կ'ըսեն ոմանք, թէ մեռեալ մարմինն այլ (ինչպէս Խօսնակն եկեղեցւոյ իր գահուն վրայ հանգչած ատենը), պատասխան տուաւ խաղաղութեան ողջունին։ Մահմէտ հայրապետին սիրը բռնելով և վկայ կոչելով զԱստուած, իբրև կենդանի մարգարէի հետ խօսեցաւ և ըսաւ. Քու թղթեդ ճանչցայ քու իմաստութիւնդ, ո՛վ մարդ Աստուծոյ. դու իմ սուրս կապեցիր, և քու ժողովուրդդ ազատեցիր. եթէ ուզածէդ բան մը չկատարեմ՝ ըսած անէծքներդ գան վրաս. այս թէ կատարեմ՝ ինչպէս որ խօսք կու տամ, օրհնութիւնդ վրաս ըլլայ։

Պատմութեանց մէջ քանի մը անգամ աստ նման դիպուածք կու յիշուին. հոգևոր հօր մը իր հօտը կամ քաղաքը բռնաւորի մը հարուածներէ ազատել, միայն խրատով և Աստուծոյ հատուցմանց յիշատակաւ. մէկն այլ այս է. և աւելի այլ զարմանալին, որ այս նոր «Սահակ սուրբ հօտապետս» մեր՝ մահուընէն ետև այլ իր հովուութիւնը և փրկութիւնը ըրաւ։ Գաղանացեալ գետոյ պէս վազող զօրավարն՝ դադրեցուց զօրքերը. Հայոց դալկահար պատգամաւորները՝ անկործելի կենաց յուսով նորոգեց. ոչ միայն բանիւ այլ

1 Ոմանք կ'ըսեն թէ ինքն իսկ Մահմէտ պատուիրեր էր որ չթաղէն ինչուան որ գայ ։

և դրով ազատութեան հրովարտակ կնքելով և տալով, որ առաջին Ալի ամիրապետին տուածէն աւելի գլխաւոր ազատագիրն եղաւ Հայոց, և կոչեցաւ Երկրորդ կամ Փոքր Մանշուր: Այս հրովարտակը՝ սուրբ խաչվառից և դրօշուց հետ պարզած՝ տարին հայրապետին մարմնոյն հետ՝ իրեն հաւատարիմքն. և Հայաստան նոր հոգի առած՝ իր մահու չափ սիրող և սիրելի հայրապետը հանդըյց յանմահութիւն....

Մտաւ իսկոյն Մահմէտ ոստիկանն այլ 'ի Հայաստան՝ բազմութեամբ արաբիկ զօրաց հեծելոց և հետևակաց. սակայն հանգուցեալ հայրապետին հեզութենէն՝ իբրև սանձուած ծով մը՝ լռեց հանդարտեցաւ, ամենևին վնաս մը չհասուց Հայոց. և իբրև թէ իր առաջին զրկմանց և սպանութեանցը փոխարէն հատուցմունք մ'այլ ըրաւ. ամիրապետին խօսք հասկըցուց, ինչուան որ մեռաւ նա (Աբդլմէլէք՝ յամի 705) և յաջորդեց որդին Վլիթ կամ Վալիտ Ա: Սա նոր Փարաւոնի պէս չուզելով ճանչնալ իր հօրը և ոստիկանին Հայոց հետ ըրած դաշինքը, մանաւանդ թէ դեռ Վարդանակերտի և Վանանդայ կոտորուածքն աչքին առջև ունենալով, ուզեց անոնց վրէժը պահանջել 'ի Բագրատունւոյն Սմբատայ և իրեն հետ միաբանած ու չմիաբանած նախարարներէն այլ: Հազիւ թէ սպառնալեաց համբաւն հասաւ 'ի Հայաստան, — որուն ուրիշ բան չէր մնար՝ բայց հաւատարմութեամբ պահել Մահմէտի մէնշուրը, և անոր մեծասրտութեանը ապաւինիլ, — երբ Սմբատ, [illegible] այն Սմբատ, իր հաւատարմաց և Յունաց վրայ վստահացած, և քինախնդրութեամբ վառուած, մեծ և բազմավտանգ անխոհեմութեամբ՝ ուզեց իբրև յանպատրաստից Մահմէտի վրայ հանիլ. և աղաչանօք կայսերէն ընդունելով մեծ գունդ մը յունական զօրաց, շուտով մտաւ 'ի բաժինն Հա-

յոց Արաբացւոց, եկաւ 'ի Վանանդ գաւառ, բանակեցաւ 'ի Դրաշպետ գիւղ։ Զուշացաւ Մահմէտ այլ անոր դէմ ելնել, և անոր ըրածովը՝ ինքզինքն ազատած սեպել իր երդմունքէն։ Անոր կարծածէն աւելի այլ շուտ պատրաստութեամբ և շատ զօրքով՝ գրգռեալ պատերազմը յանձն առաւ, մղեց լմնցուց, մեծ և ողբալի կորստեամբ Յունաց և Հայոց․ որոցմէ ինչուան 50,000 մարդ, կ'ըսուի, թէ ընկան պատերազմին մէջ․ մնացեալ քիչերն այլ կորակոր դարձան․ որոց հետ նաև Սմբատ, որ և ինչուան Եգերաց (Աճարայ) Փոթի քաղաքը գնաց ամրացաւ։ — Վալիտ լսելով որ Հայք եղեր են առաջնորդ Յունաց՝ 'ի պատերազմին, նորէն խստիւ պատուէր ըրկեց Մահմէտի՝ չխնայելու անոնց։ Մահմէտ՝ թէ իր ամիրապետին հրամանը և թէ մեր հայրապետին խնդիրը կերպով մը միաբանել մտածեց․ ինքն կենալով տեղը, ('ի Դունին), և հրամայելով Նախճաւանի կողմնակալին՝ որ ամիրապետին պատուէրը կատարէ։

## Ե

Նախճաւանի հրամանատարն՝ Գասիմ, զոր մեր պատմիչք Կասմ կամ Կաշմ կոչեն, կ'երևի թէ այն զօրավարաց մէկն էր՝ որ երեք տարի առաջ զարնուեցան 'ի Հայոց, որոց վրայ մեծ ատելութիւն ունէր․ և հիմայ յարմար առիթ գտաւ ոստիկանին հրամանը։ Ասոնք են ըստ վիպասանին մերոյ՝ աշխարհաւեր կրակը ձգողքն 'ի Հայս․ «Հուր 'ի
» մեզ վառեցին, սատանայի 'ի նոսա փչելով ըղ-
» բարկութիւնն․ և սաստ բան տալով, անօրէն
» խորհուրդ առեալ 'ի մեզ... զի զզօրս և զզօրա-
» գլուխս, զպետս և զիշխանս, զազատատոհմս և
» զնախարարազունս, բնաջինջ կորստեամբ բառ-

» նալով.... սպառսպուռ մահուամբ վճարեսցէ. և յաղթեսցէ քաջաց և յաղթող նահատակացն Հայոց, և ջնջել 'ի միջոյ 'ի բաց բառնալ, » և ունել զաշխարհս առանց կասկածանաց»: Միով բանիւ Տեառն մերոյ, «Հարից զհովիւն, և » ցրուեսցին ոչխարքն հօտին». զարնենք, ջնջենք, ըսին Հազարացիք, Հայոց ամեն իշխաններն և ազնուականները, և անկասկած տիրենք աշխարհին:

Սուտ և խարդախ խօսքերով հրաւէր խաւրեցին ամենայն մեծամեծաց և զօրագլխաց Հայոց, ինչպէս թէ Սմբատայ ըրածը՝ Յունաց գործ սեպէին, և կ'ուզէին նորէն Հայոց հաւատարմութեան երդմունք առնուլ, դաշինք դնել և վարձք տալ. նոյնպէս անոնց հեծելոց թոշակն այլ՝ որ տարուէ տարի ամիրապետին կողմանէ կու տըրուէր անոնց (100,000 դահեկան կամ դրամ): Հայոց մեծամեծաց շատերն հաւատալով կամ հնազանդելով հրաւիրին՝ իրենց գլխաւոր զօրականօք, թիկնապահօք և ընկերօք եկան ժողովեցան Կասմայ իշխանութեան կողմերը. ուր և ամենուն՝ իրենց աստիճանին համեմատ ոչ միայն ընծայ և թոշակ տրուեցաւ, հապա նաև անոնց տարեկան հարկի պարտքն այլ շնորհեցաւ: Միայն թէ ինչպէս սովորութիւն էր մեծի քով գացողին՝ զէնքերը վերցընել, առանց այլ զէնքերը թողուլ տուին, ինչուան որ գործը լմըննայ. միանգամայն և վախնալ մը կու կեղծէին Արաբացիք 'ի Հայոց. և իբրև աւելի զգուշութեան համար՝ ուզեցին որ Հայք հաւատարմութեան երդումն այլ ընեն, և հանդիսապէս այլ ընեն, որ երկու կողմին այլ ապահովութիւն և երաշխաւորութիւն ըլլայ: Ասոր համար էր որ մտուցին զանոնք, 800 հոգի Նախճուանի և 400 հոգի Հրամի մեծ եկեղեցիները, և դռները գոցեցին, ըսելով, թէ «Մի՛ ոք ելցէ » յայս մեծ խորհրդոյ՝ արտաքս»:

Եւ մինչ Հայք ներսը արթըննալով՝ գաները կու փնտռէին, ասոնք դուրսը զէնքերնին հագնելով՝ խորհուրդ ըրին, որ անոնց իշխանաց և զօրավարաց գլխաւորները դուրս հանեն. և ուզածնին տեղեկանալէն ետև՝ սրով և կախաղանով սպաննեն, իսկ ներսը թողածները՝ կրակով այրեն. և այնպէս ըրին: Մինչդեռ ոմանց պատուական գըրխոց համար՝ դուրսը մահուան փայտեր կանգնէին, և ծարաւի սուրն արեամբ կու լափէր հազարամեայ պայազատութեամբ ազնուացեալ արիւններ, մեկայլոց համար վերէն կրակ թափելով՝ «զտուն աղօթիցն գերեզման յօրինէին. և
» գեհեան հրոյն՝ ունէր զբաբելոնական բոցոյն
» նմանութիւն, վերամբարձեալ հրոյն և ծխոյն.
» և զնոյն երգեցին զօրհնութիւն (երից մանկանցն,
» և ապա զհրեշտակացն երգս ընդ հովիւսն) մին-
» չև 'ի նուաղել ոգւոցն յանլուծանելի բանդին:...
» Աւա՜ղ զնոցա այրումն 'ի միասին հրով. ո՞ր լսելիք
» բերէին զլուր հառաչանացն. հայր առ որդի և որ-
» դի առ հայր. եղբայր առ եղբայր, և մերձաւոր
» առ մերձաւոր. բայց ոչ կակղացուցանէր զսիրտ
» անօրէն բռնաւորացն:— Անդ ապա հօր՝ որդեծը-
» նաց գութ աղխն այրէր. և 'ի վերուստ 'ի ձեղուա-
» նէն անկանէր կրակն, և մանկանցն 'ի հանդերձն
» վառէր հուրն. հարքն 'ի բաց կորէին, զի առ
» նոցա ողորմամահութիւնն՝ զիւրեանցն ոչ յի-
» շէին. և 'ի զոյգ այրէին առ հասարակ ամենե-
» քեան». վասն զի «բազմավտանգաւոր հրոյն
» այնորիկ 'ի նիւթական մարդկան ձեռաց բար-
» ձրացեալ, հրդեհակէզ եղեալ առաստաղակեալ
» փայտակերտն՝ այրեցեալ լինէր. հրկիզի մուրն՝
» 'ի վերուստ հոսեալ հանդերձ մխախառն հրովն՝
» հեղձամղձուկ դառն պատուհասիւ զվախճան
» մահու ածելով 'ի վերայ նոցա ամենեցուն, ծած-
» կեաց զբազմութիւն զայն անօգնական 'ի վերուստ:

» Եւ նոցա անդադար գոհաբանութիւնն՝ ընդ սպա-
» նեալ ոգւոցն դադարեաց: — Այսպէս առ հա-
» սարակ սպառեցան բազմութիւն նախարարացն
» Հայոց 'ի դաւաճանողացն անողորմից: Բայց ոչ
» է Երեմիա մերձ, որ զաղէտս անցիցն՝ ողբօք
» պատմեսցէ լսողացն: — Արտասուօք բազմաց՝
» մի՛ հոգար, Երեմիա, որ զաչս աղբիւրս խնդրէիր.
» 'ի մեր աշխարհս իսկ ծովացա՛ւ արտասուաց աղ-
» բիւրք »:...

Այսպիսի դառնադառն արտասուաց ծով մը հազիւ կարող էր մարելու այն զարհուրելի հրկիզութիւնը, յորում շատ հին Հայկազանց պայազատութիւնք մոխիր դարձան. շատ նախարարութիւնք և սեպհականութիւնք ձղակոտր եղան, և շատ ծուխք մարեցան: — Սպանելոց և այրելոց մնացեալ ընտանիքն գերեցան. ժամանակ մը Նախճաւանի մէջ պահեցին, յետոյ տարին 'ի Դուին առ Մահմէտ. և ամառը բանտի մէջ պահելով՝ աշնան առեն և յաջորդ տարին՝ քշեցին 'ի Դամասկոս առ ամիրապետն, հանդերձ Աղուանից իշխանօք, և շատ աւարով և կողոպտով, որոց մէկ մեծ մասն այլ իրենք յափշտակեր պահեր էին. ինչպէս նաև գերիներէն մէկ քանին այլ. իսկ քրիստոնեաներէն «զմեռելոցն 'ի ճանապարհի՝ ոչ գի-
» տեմ եթէ ընկալա՞ւ զնոսա գերեզման, և եթէ
» որպէս ընկեցեալ եղեն 'ի տեղիս: «Այսպէս
» անժառանգ առնէին զաշխարհս 'ի նախարարաց.
» յայնմ ժամանակի թափուր եղեալ աշխարհս
» Հայոց, մատնէին իբրև զոչխարս 'ի մէջ գայլոց.
» և թշնամեացն աննօրինակ չարեաց յարձա-
» կեալ 'ի վերայ՝ յանհուն աղէտս վտանգի պա-
» հէին զբնակիչս աշխարհիս. որոց տաղտկացեալ
» յանհանգիստ նեղութեանցն՝ զհառաչանս և զա-
» ղաղակ հեծութեանն բարձրացուցանէին յեր-
» կինս »[1]: — Այս դառնալիշատակ դիպուածն

[1] Ղեւոնդ:

եղաւ յամին 705 և 706, զատկի օրերէն սկսեալ. և այնքան սաստիկ էր սրոյ և հրոյ վրէժն՝ որ Հագարացին անգամ կշտացաւ, և Վարդանակերտի ու Վանանդայ հարուածները աւելի մոռնալու համար՝ այս տարիս անուանեց Ամ հրդեհի կամ Կրակի փորի:

Ահաւասիկ, Հայկակ, այսպիսի հրածաւալ ծիրանի ծովու մը խառնուացեալ եղեգէն դուրս վազեց՝ յետին պայազատն Գողթան, պատանեկիկն Վահան. որոյ հայրն Խոսրով իր պատուակցաց հետ սրոյ և հրոյ մէջ վկայելով, վերջին և վեհագոյն ժառանգութիւն թողուց այս երեխայ որդեկին՝ իր նահատակութեան և սրբութեան անունը. զոր և սա սքանչելապէս ժառանգեց, աճեցուց և փայլեցուց: Վահան հազիւ չորս տարուան էր Կրակին տարին. երբ դուցէ ուրիշ աւելի տարեւոր տղոց հետ՝ իր քիչ մը մեծ եղբայրքն այլ՝ միամտաբար խայտացօղ գառանց նման խորովեցան Խրամի տաճարին մէջ, երկու իրեք հեղ օղիկ օղիկ գալով իրենց անճրկած դաստիարակաց և ազգականաց առջև, և միայն ափ մը ճերմակ աճիւն թողուցին այնքան խարտեաշ և մատղաշ կերպարաններէն. — և այն զուարթածաղիկ հասակներն՝ փոխանակ ծերունափայլ ծնողաց ծոցը պսակելու՝ ուրախութեան ժամերու և սենեակներու մէջ, որպէս զշուշանն և զխոտն վայրի՝ վայրենագոյն ձեռքով խլուած՝ յետ առօրէական փայլման մը՝ արկան 'ի հնոց, և ոչ են, և ոչ ևս երևին. — և բիւրախօս բամբիռն Գողթան համրացեալ լռէ, և չիզրուցեր չողբար այն թառամեալ գալարութեանց և կայտառութեանց վրայ. վասն զի նոյն հարուածն՝ որ զանոնք խամրեց ու խարկեց, զինքն այլ ջարդեց ու ջախջախեց. — և Գողթն գինաւէտ՝ քացխած թթուեցաւ իր մանրիկ պայազատաց գեռաբողբոջ քաղցրաբարբառ չըր-

թանց համար, որոց կաթկըթած կաթին, գի-նւոյն և արեան միջէն անցան գնացին նորեկ հո-գիներն. «Եւ հոգիք սուրբ մանկանցն, որպէս » զերամս աղաւնեաց թռուցեալ 'ի յերկինս և » գտեալ ընդ զուարթունս երկնից[1] »:...

## Ձ

Վահանայ ուրիշ բաղդ, ուրիշ հանդէս պա-հուած էր. հասակին մատղաշութիւնն, ծննդեան ազնուութիւնն և իր ոսկէհատիկ կերպարանաց շնորհքն՝ ապրեցուցին զինքը 'ի հրոյ և 'ի սրոյ. և ուրիշ գերեաց հետ հասուցին մինչև 'ի դուռն Վլթայ ամիրապետի. որ իբրև պատուական որ-սիկ մ'ըրած՝ պատուիրեց որ իր արքունեաց մէջ մեծցընեն զնա մահմետական օրինօք. և անուանը վերջի գիրը միայն փոխեց տաճկացուց, կոչեց Վահապ: Թերևս հազիւ Պ մը վաստըկելու արժա-նի էր Վլիթ:...

Դամասկոսի տիեզերասաստ արքունեաց մէջ և իսլամի կեդրոնը մեծցաւ զարգացաւ Վահան. հոն առաւ իր վայելուչ հասակին չափը, հոն ծաղ-կեցաւ պատանեկութեամբ իբրև 14 տարի. և թէ կերպարանաց վայելչութեամբն, թէ մտաց յա-ջողակութեամբն ամենուն զարմանալի և սիրելի եղաւ: Թէ և օտար և թանձր դէն մը իր ծննդեան և մանկութեան սուրբ կրօնքը պատեր ծածկեր էր ամպի պէս, սակայն քրիստոսածին աւազա-նին շնորհքն, իր հօր ծննդեան արիւնէն աւելի՝ նահատակութեան սուրբ արիւնն, և ընտրեալ հոգւոյ մը յաղթական եռանդն, այն թանձր ամ-պերը պատռելով դուրս ցոլացընէին ազնուա-փայլ նշոյլ մը, որ ոչ միայն օտարաց՝ այլ և նոյն

1 Շարական:

իսկ ինքեան Վահանայ անբացատրելի զմայլմունք և զարմանք մ'էր։ Դեռ ծնօտքն չծաղկած՝ մօրուեզ կուռայից և կարդացողաց կրօնքը և գիտութիւնը կրնար վարդապետել. իսկ իրեն գրեթէ վարդապետ չէր գտուեր, և ոչ հանճարեղ խելքին հաւասարող. անանկ որ իր հասակէն վեր պաշտօններու բարձրացաւ. եղաւ արքունի գիւանադպիր. որ մեծ հմտութիւն պահանջէ արաբերէն լեզուի և գրելու. և այլ աւելի պատւոյ և իշխանութեանց պիտի հասնէր յերկրի, եթէ գերագոյն ևս փառք չպատրաստէին նմա երկինք, որուն անգէտ և անկարծիք՝ հաւատարմութեամբ կուծառայէր նա, և օրէ օր սիրելի կ'ըլլար ամիրապետացն՝ Վալիտայ (705-715) և անոր եղբօր Սուլէյմանայ (715-717), և հօրեղբօրորդւոյն՝ Օմարայ (717-720)։

Այս ետքինս՝ որ զՎահան գտաւ ծաղկած պատանութեն մէջ, մեծ յոյս և խնամք ցուցընէր վրան. մանաւանդ որ ինքն այլ բնութեամբ բարեբարոյ և բանասէր էր, և կու ջանար 'ի խաղաղութեան և'ի հանգստեան պահել իր հպատակները. մինչև իր քով գտուած օտարազգի գերեաց և պատանդից այլ արձակում տուաւ՝ դառնալու իրենց հայրենի երկիրը։ Ասոնց մէջ գլխաւորք էին Կրակին տարին գերուած Հայոց ազատորդիքն. որք և խնդութե՜ դարձան իրենց տանց և ընտանեաց մնացորդաց մէջ։ — Արդէն նոյն ինքն չարեացապարտն Վալիտ իր վրէժը 'ի Հայոց առնելէն և պատանդները քովը պահելէն ետև, լսելով մեր աշխարհին մէջ մնացեալ տառապելոց լացն ու բողոքն 'ի բռնութեանց ոստիկանին Մահմէտի, յետ կանչեր էր զնա յԱսորիս, ուր չարաչար մահուամբ կորաւ.
« Դժնդակ ախտ մահու զնա ըմբռնեալ՝ զեօթն ա-
» միս հոգեհանս կացեալ՝ հազիւ ուրեմն սատա-
» կէր. և երիցս թափեալ վերընկէց լինէր. զի

» երկիր ոչ ընդունէր զնորա գարշելի մարմինն. » այլա կալեալ շուն մի չյամփրեցին... և այն- » պէս ծածկեաց երկիր զչարին զայն »[1]: Անոր տեղ ղրկեց զԱբդլաղեզ, որ թէ և խուլ էր ա- կանջօք, բայց բարեսէր, զուարթաբարոյ և ա- ռասպելախօս ծերուկ մը: Սա մեկէն հրաման հա- նեց որ ամէն փախուցեալ և հեռացեալ Հայք անվախ դառնան, իրենց տունը տեղը ժառան- գեն. և ձեռք այլ զարկաւ անոնց մայրաքաղաք Դուինը նորոգել. Վասն զի, կ'ըսէր, երբ այս քա- ղաքս մէնք Արաբացիք առինք (յամին 640 կամ 647), ես այլ բանակին մէջ էի՝ 12 տարուան տղայ մը, մէջքս կարմիր շորերով պատած. եր- բոր մեր զինուորքն քաղքին պարսպին տակ կ'աշ- խատէին և չէին կրնար ճամբայ գտնել, ես խո- ղովակ մը տեսայ, մէջը մտայ և սողալով գացի. ինքզինքս պարսպին վրայ գտայ. սկսայ պոռալ կանչել մեր զինուորներուն. ասկէ շփոթութիւն և վախ մ'ընկաւ պահապանաց վրայ Արաբա- ցիք շուտ մը վրայ հասան, տիրեցին քաղքին ու աւրըշտըկեցին. և որովհետև ես եղայ անոր ա- ւերման պատճառ, պէտք է որ հիմայ այլ ես ըլլամ նորոգողն »: — Այս խելօք իշխանին ոս- տիկանութեան ատեն, դարձան 'ի Հայս՝ անկէ կամաւ գաղթող փախչողքն. ինչուան այն Սմբատ Բագրատունին այլ, որ անխոհեմութեամբ իր հայրենեաց և Յունաց հարուածոց պատճառ էր եղեր, և հիմայ այլ նոր անխոհեմութեամբ և ապ- երախտութեամբ՝ կողոպտելով Փոթի քաղաքը (ուր ամրացեր էր շնորհօք կայսեր), դարձաւ 'ի Հայս, հետը ձգելով Յունաց պապաններուն և եպիսկոպոսաց նզովքը, անոնց եկեղեցիներն այլ կողոպտելուն համար:...

1 Մ. Կաղանկատուացի, Գ. ԺԶ:

# Է

Սկսաւ նորէն աշխարհն շինութիւն առնուլ, և այն մեծ հրդեհին մոխիրները քիչ մը մաքրիլ, թէպէտ և կային շատ խանձած գետինք, ուսկից նոր առունկ մը չէր բուսներ, նոր շէնք մը չէր կանգներ. խանկրած աւերակներ՝ դեռ կ՚ողբային և ողբալ տային իրենց հին տէրերը, և տարակուսանօք փնտռել նոր պայազատներ:... Այսպիսի էր և գաւառն Գողթան. ուր քակտած քարուկիրն և արմատախիլ այգիք իրարու խառնուած դիզուած մնացեր էին. տասն, տասնևհինգ տարի էր, ոչ թէ հայրապանծ բամբիռն, այլ և ոչ բարբառ մ՚ուրախութեան հնչէր այն կողմերը՝ որք դրեթէ խնդութեան և երգոց բնավայրք էին. այլ միայն ողբաւէր և ահարկու բուխձակաց վայերն ու կանչեր՝ կխաւեր բուրգէ բուրգ պատէ պատ զարնուելով երթային և դառնային... Լռութենէն աւելի տխուր էր այն ձայնն. գիշերուան մթութենէն ցաւագին էր հանդարտաքայլ լուսնին ծաթելը դերեզմանացեալ փլատակաց վրայ:...

Սակայն հոն ամենէն տխրաշարժ միանգամայն և սիրաշարժ երևոյթն էր՝ աւանդութեան ցուցածն: Իբրև դիցակերպ ոգի մը, ուրհի մը այն մեռելատիպ միայնութեանց, կէս սև կէս ճերմակ, թէ ոչ յաւերժահարսն՝ գոնէ գիշերահարսն հեզաճեմ. որ լուսնին ծառէ ծառ անցուցած շուքերուն հետ սահելով կու գայ լռիկ մնջիկ իր ցորեկուան հովանոց՝ գիշերուան մենանոցը, սաղարթապատ սարքինայից տակ, անշուշտ յԵրասխ վազող առուակի մը քով. որուն հոմաձայն հոմավանկ կարկաջանքն՝ իր համանման մտածմանց և անդաձմանց սիրելի արձագանքք են. — Ինքն տրամութեան և լուսնին գոյներն առած՝ փափուկ

ծնօտը կու հանգչեցընէ արծաթափայլ ծղեացը վրայ. և գրեթէ անշարժ անշունչ կու նայի կիսաբաց աչօք, որոց ոչ սևութիւնը, ոչ արտասունքը և ոչ գիտած կէտը կրնայ նշմարուիլ.— աւելի մելամաղձիկ Մելպոմենի մարմարեայ անդրի մը կարծուէր՝ յանկարծ հանդիպողի մը, քան կենդանի կոյս մը, եռանդուն օրիորդ մը, ազնուազուն պայազատ մը, . . . դստրիկ մը Խոսրովու, թոռն Վահանայ Գողթնացւոյ: . . .

Այն ազնիւ, գերազնիւ աննման քերց մէկն է սա, որոյ վրայ դեռ պատմութիւնն գրով չէ խօսած, այլ բերանացի աւանդութեամբ հաստուցած. այն մեծասիրտ հայկազն օրիորդաց մէկն, որոց համար եթէ հայրենիքս կանգուն ըլլար՝ կրնար առանձին տաճար մ'այլ կանգնել. այն որբացեալ քոյրերէն մէկն, որ ամեն օր տարաժամ վախճանեալ ծնողաց գերեզմանները արցունքով լուալէն ետև, աչուըննին սրբելու կու կանչէն հեռացեալ վարեցեալ եղբայր մը. եղբայր մը, որ քան իրենց ակնկալու տասն փեսայ՝ աւելի քաղցր և ցանկալի կ'երևի: Բաղդ և դիպուած, գրեթէ անունով այլ նման ըրեր էին զսա՝ մեր Հայոց օրիորդաց նախասևաճեմ և ապա սրբաճեմ պարագլխին, Ս. Խոսրովիդխտոյ, որ մեծին Խոսրովու դուստր էր, ինչպէս սա Գողթան իշխանին Խոսրովու: Ուրեմն իրաւապէս, (մանաւանդ քանի որ պատմութիւնն լռէ) սա այլ Խոսրովիդուխտ կրնայ կոչուիլ (որ է ըսել դուստր Խոսրովի): — Երբ Անակ Պարթև և Արտաշիր Սասանեան սպաննեցին անոր հայրը և ընտանիքը Թըրէ անցուցին, զինքն ազատեց իր դայեակն Օտա նախարար. անոր մէկ փոքրիկ եղբայրն այլ (որ յետոյ եղաւ Մեծն Տրդատ) ուրիշ իշխան մ'առաւ փախուց մինչև յարքունիս Հռովմայ ինքնակալաց.— իսկ աստ եղբայրիկը՝ նոյն իսկ գերողք աշխարհին և հօրը սպաննողքն տարին՝ այս

ատեննուան ինքնակալաց արքունիքը, 'ի Դամասկոս. — Քոյրն Տրդատայ՝ Խոսրովիդուխտ՝ մնացեալ նստէր 'ի բարձր աշտարակի ամրոցին Կամախայ, կու նայէր եփրատագնաց Գայլ գետոյն ալեաց վրայ, և 15-20 տարի կու հառաչէր, թէ Երբ պիտի գայ իմ Տրդատ եղբայրս, կանգնելու իմ սիրտս, մեր հօրը թագը և Հայոց աշխարհը. — Քոյրն Վահանայ նորս Խոսրովիդուխտ, իր կիսաւեր հայրենեաց մենանոցին մէջ նստած, իբրև 15 տարի հալէր և հառաչէր, թէ Երբ պիտի գայ իմ Վահան եղբայրս՝ կանգնելու իմ սիրտս, մեր հօր յիշատակը և Գողթան աւերակները: — Իր սիրաւէր, և ցաւալից ցնորմանց մէջ անշուշտ շատ հեղ ուզէր էր ինչուան Երասխայ արևելասէր ընթացքն այլ փոխել՝ Եփրատայ և Տիգրիսի նման դէպ 'ի հարաւ, և իր հօր պալատին խանձած տախտակաց մէկը լաստելով՝ նստիլ վրան, սահիլ իջնել մինչև 'ի դուռն Դամասկոսի, և դարձընել բերել զՎահան մինչև յայգիս Գողթան: — Չկարցաւ Խոսրովիդուխտ գետոյն ընթացքը փոխել, այլ իր արտասուաց անփոփոխ գետը հասուց մինչև առ եղբայրը:...

Վահան հասակով և սրտով զարգացեալ՝ արդէն լսեր իմացեր էր իր ծագումը, և շատոնց սկսեր էր սրտին մէջ երկու կրօնից, երկու հայրենեաց, երկու սիրոյ կռիւներն. և արդէն յաղթող կ'երևէր կողմն բնիկ հայրենեաց, Հայաստանի, Խոսրովիդխտոյ և քրիստոնէութեան, 'ի վերայ մահմետական կրօնից և ամիրապետաց տուած և տալու բարեաց, իշխանութեանց և արևելեայ փափուկ հարսանց և հարճից: Իմացեր էր իր ինչ կորուն ըլլալն, և անկէ ետև խալիֆայից ոսկեպատ պալատն՝ իրեն գառապիղ մը կ'երևէր. ընդարձակ կրօնքի մը հայթայթած ամեն փափկութիւնքն՝ կ'ոչնչանային իր հայրենի գաւառին, սուրբ եկե-

ղեցւոյ և քրոջ մը ցանկալի յիշատակաց և վայե-
լից առջև։ Փափագ, կարօտ, և անկէ վեր՝ կրօնա-
կան մտածութիւն մը, խիղճ մը՝ սկսան տանջել
այն սիրտը, որ եռանդնագոյն աստիճանին մէջ
միայն հեշտութիւն փնտռել խրատուեր էր։ Այս-
պէս սկսաւ օտարն Վահանայ՝ ինքնիրեն փոխուիլ
՚ի բնիկն Վահան։...

Տեսնելով որ մէկիկ մէկիկ իր գերութեան ըն-
կերակիցքն կու փախնան ՚ի հայրենիս և ինքն գրե-
թէ մինակ կու մնայ, այլ չդիմանալով գնաց առ
Օմար, և շատ ճարտարաբանութեամբ յայտնեց
փափագը, որ զինքն այլ դարձընէ իր ծննդեան եր-
կիրը. վասն զի կ'ըսէ վիպասանն, էր նա «խօսիւք
» քաջ կորովի, և ծանուցանէր զիւր դժուարա-
մտութիւնն», այսինքն սրտին նեղութիւնը։ Բայց
ամիրապետին աւելի ծանր երևցաւ թողուլ ար-
ձակել զնա, քան թէ բոլոր մէկայլ գերիները.
վասն զի իր ազգակցաց մէջն անգամ Վահանայ
պէս ճարտար, խելացի և վայելուչ պաշտօնեայ
մը չունէր. սկսաւ տարակոյս հանել և չհաւա-
տալ ձևացընել, վկայ փնտռել Վահանայ ըսած-
ներուն. — որուն փութացան հոն գտուող Հայք
երաշխաւոր ըլլալ. Օմար՝ Հայոց վկայութիւնը
չուզեց ընդունիլ։ Վահան գտաւ մահմետական
բարեկամ իշխաններ ու պաշտօնեաներ այլ՝ որ
զնոյն վկայութիւնը տուին. Օմար անոնց այլ չու-
զեց հաւատալ։ Պէտք եղաւ մարդ ղրկել մինչև
՚ի Միջագետք, «առ քննող գրոցն», Վահանայ
որպիսութիւնը ստուգելու համար. հոն 15 Տա-
ճիկ գտուեցան որ լաւ գիտէին Կրակին դիպուա-
ծը և Վահանայ ով և ինչ ըլլալը, միանգամայն և
ասոր բարեկամ էին. ուստի իր ուզածին նման
վկայութիւն տուին։

Օմար այլ չկարենալով ոչ յայտնի ստուգու-
թիւնը մերժել, և ոչ իր գերեդարձի հրամանը,

սկսաւ անուշութեամբ ողոքել իր Վահանը և յիշեցընել անոր տրուած պատիւը և պաշտօնը, որոց վրայ մյլ աւելին այլ պիտի տար։ Վահան չհարհակալ ըլլալով յիշեցուց ամիրապետին թէ ինքն այլ իր հայրենեաց մէջ ունեցեր է մեծ ժառանգութիւն, հին և մեծազգի ցեղ մը, որ թէ հայրենական շատ ստացուածք ունէին և թէ Պարսից տէրութեան ծառայելով աւելի շատցուցեր էին. և «յոլով զանձիւք մեծացան քան զբա-» զում ազատս՝ որ յերկրին իմում էին». և զգալով իր առաջինի նախնեաց քաջութիւնը՝ պարծենալով քաջապէս և գեղեցկապէս կ՚ըսէր, թէ քիչ չէին իր նախնեաց և հարց նիղակի և աղեղան հարուածք։ Եւ երբ Օմար կէս հաւան կէս հակառակ՝ կու խոստովանէր թէ անոր այդ ամեն հայրենի տեղուանքըն հիմայ անապատ աւերակ դարձեր են, Վահան կանչեց պքանչելի և խոր զգացմամբ, ոսկի գրով գրոշմելու բան մը. Ուրեմն «Ողջակիզեցէք, որ » փեսանեմ զուրախութիւն աւերածոյ երկրին իմոյ հայրե- » նեաց»։ Այս այրած սրտի գոչման ինչպէս կրնար հակառակիլ Օմար. բայց միայն պահանջեց որ երթայ և տեսնէ այն աւերակները՝ չմնայ անոնց մէջ, այլ դառնայ իրեն։ Վահան խօսք տուաւ որ կ՚երթամ, և «ձեր հրամանաւ գործակալ ա- » ռաքեալ (իմ երկիրներուս՝ դարձեալ) առ քեզ » հասանեմ»։ — Ստիպուեցաւ Օմար հրովարտակ տալ Վահանայ ձեռքը, որ երթայ իր հրամանաւը հայրենի ստացուածքը ժառանգէ, և Գողթան տէր ճանաչուի։

## Ը

Ոչ տաճիկ ուղտ և ոչ արաբիկ նժոյգ սրըն-
թաց, այլ կարծեմ թէ փայլակն էր որ զՎահան
տանէր Թագըներ Ասորւոց և Միջագետաց անա-
պատներուն և դաշտերուն ընդարձակութիւնէն,
և մեր Վասպուրականյան աշխարհէն կու հասցընէր
Երասխ գետոյն եզերքը. որոյ պայծառ և կարկա-
ջուն ջրերուն մէջ ճխալով անցաւ Հին Ջուղայի
կամ Որդուպատայ մօտի հուներէն, և փայլակն-
ընթաց անդրուվարը ուղղեց անխոտոր յարևելք՝
'ի գաւառն Գողթան. փոխանակ անոր գինաւէտ
այգեաց՝ տեսնելու նախ ղճղարչիքոսիթխան աւերածոյ
Էրկիրին հոյրէնիէտոյ։ Սակայն ուրիշ կրակով վառուած
միտքն՝ կու բանէր զաչքը. աւերակներն չէին կ'ե-
րևէին իրեն, չէին բնութիւնն՝ աւերակ կ'երևէր
իրեն. լաւ ևս ըսել, ապառ և անապառ իրարմէ
չէին որոշուեր։ Երբ իմացաւ որ իր հայրենի սահ-
մաններուն մէջ մտեր՝ անոր ամայացեալ ապա-
րանից կու մօտենայ, հեռուէն՝ ամէն շարժուն և
կենդանի արարած, ամէն մարդկային կերպարան-
քը՝ կամ իր ծնած տնէն ընդ առաջ եկող մը կար-
ծէր, կամ զնոյն ինքն իր քոյրը։ —

Ո՞վ գիտէ ո՛ւր հանդիպեցաւ աստ, ո՛ւր գտան
և տեսան զիրար 15 տարիէ վեր զատուած քոյրն
և եղբայրն, որք և հազիւ տեսեր էին զիրար 'ի
տղայութեան հասակին, և հիմայ յանկարծ մէկ-
մէկու գիրկ գտուեցան դիւցազնացեալ կերպա-
րանօք և հասակաւ։ — Արդեօք իր մթապատ մե-
նանոցին մէջն էր Խոսրովիդուխտ՝ տատրակա-
նման մնչելուն ատեն, թէ սուրհանդակ փայեկաց
ձեռքով իմանալով եղբօրը գալը՝ փութացաւ ին-
չուան յեզրն Երասխայ, և տեսնելով գեղահրաշ
հեծեալ մը՝ որ ջրերը ճեղքելով կու դիմէ յարև-

եղեան ափունքը, ինքն այլ անհամբեր՝ ձիւնա-
փայլ կարապի մը պէս նետուեցաւ փրփրոց մէջ, ուր գետոյն զովութենէն աւելի հաճութեամբ ճաշակեցին աննման քեռ և եղբօր սիրոյ քաղցրու-
թիւնը... Ի՜նչ զմայլմունք էր Խոսրովիդխտոյ՝ տեսնել իր 18 ամեայ կարիճ եղբայրը, իր մէկ-
հատիկ ցանկալին, հոս՝ արդարև վահագնակերպ ծիրանի ծովէն խարտեաշ մազերով պատանեկի մը պէս ելնել և հսկայակերպ ցատքել հայրենի հողուն վրայ: — Ի՜նչ զմայլմունք էր Վահանայ այլ՝ տեսնել իր մէկհատիկը, մեծասիրտ քոյրը, հայկազեղ օրիորդը, յորում կու նշմարէր իր մայրն այլ, իր ամեն հարազատներն այլ...: Ի՞նչ տաք տաք սրտով աչքով ու բերնով առին և տու-
ւին իրարու. և ի՜նչ փարելի թեւակցութեամբ եր-
բեմն նստեալ 'ի պատուռունս, երբեմն ձիով և ոտքով՝ քայլէին քննէին իրենց հայրենի երկրին ոլորտքը, մէկ մէկ տեսնելով և որոշելով զշէնն ու զանշէն. և իրենց տիրական նշանները ու սահմա-
նախաչերը կանգնելով և նորոգելով:

Գաւառէ գաւառ հռչակեցաւ լուրն, թէ դար-
ձեր եկեր է Խոսրովու պայազատն, Գողթնեաց իշ-
խան կարգուեր է ցանկալին Վահան: — Ամեն կող-
մէ եկան շնորհաւորք, խնդակիցք, մեծարողք. ժո-
ղովեցան բոլոր Սիւնեաց իշխանք և մեծամեծք, իրենց մէկ գլխաւոր իշխանակցին պայազատը պա-
տուելու և բազմեցընելու զնա 'ի գահն հայրենի. ուրախութեան և կենդանութեան ձայներ հնչե-
ցին ամեն գեղ ամեն տեղ. սգոյ նշաններն վերցը-
ւեցան. եկեղեցի և տաճար երգով և օրհնութեամբ լցուան. մինչև 'ի գարպասս կուսանաց և օրիոր-
դաց հնչեց համբաւն. և ոչ սակաւք սրտերնին յոյս մը դրին Խոսրովու պայազատին վրայ. բո-
լոր երկիր կու թնդար կու պարէր վասն Վահա-
նայ:... Իսկ ինքն Վահա՞ն:...



Ո՛րչափ զարմանալի և աննման է մարդս՝ երբոր երկրիս ամենայն հանգիստից և հրաւիրանաց մէջ այլ՝ երկնից հանգէան և հրաւէրը գիտէ։ Ամենքն երկրաւոր բարեկենդանութիւն կու մտածէին կ՚առաջարկէին, կու խնդային. միայն Վահան՝ որոյ համար էր այդ ամեն եղած և ըլլալիք, Վահան միայն լուրջ և հանդարտ կու մտածէր. երկու ծանր բան միտքն ու սիրտը կու ճնշէր. մէկ մ՚որ ամբարտաւանին խօսք տուեր էր իր գործերը հոս կարգաւորելու և դառնալու առ նա. մէկ մ՚այլ որ ինքն՝ թէ և ակամայ և առանց գիտութեան՝ ուրացող սեպուեր էր սուրբ հաւատոց, և թոյլ ու թանձր կրօնից մէջ մեծցեր էր։ Կ՚ուզէր երկուքին այլ հաւատարիմ ըլլալ, թէ երկրաւոր իշխանին, և թէ եւս առաւել երկնաւորին. անոր՝ քովն երթալով, իսկ Ասոր՝ քովէն երբէք չզատուելով, քրիստոնէութեան կրօնից պարտուք և սիրով։ Իսկ իր քոյրն և մերձաւորք և բարեկամք, բոլոր Գողթն, և գաւառք և իշխանք Սիւնեաց՝ կու յորդորէին զնա թողուլ կամ այլափոխել իր ծանր մտածութիւնները, և հասարակաց խնդութեան մասնակից ըլլալ, մանաւանդ թէ պարագլուխ և առաջնորդ։ Ջանացին ցուցին որ կենաց օրինաւոր պարտուց յանձնառութիւնն՝ արգելք մը չէր իր քրիստոնէաբար ապրելուն, և ամիրապետն այլ հաճելու հնարք կրնային ճարել. մեծամեծքն միաբան յորդորէին որ իր հին և պանծալի տանը ճրագը չմարէ, որուն յետին կայծ ինքն էր մնացեր, և սուրբ ամուսնութեամբ իր հօր նման՝ Աստուծով պարգևէ իր երկրին պայծառ պայազատներ։ — Գրեթէ պարտաւորեցին, ամաչեցուցին պարկեշտ պատանին. ձայն տուաւ

Սիւնեաց նահապետն (Բաբգէն?), որ այն աշխարհին երկոտասան գաւառապետաց (որոց մէկն էր Վահան) նախագլուխ էր և Թագաւորակերպ պատիւ ունէր: Գնացին իր մեծափառ ապարանքէն ընտրեցին վերուցին զազնիւն յազնուաց. և ինչպէս արծըլթէ սկաւառակի վրայ գրուած շառափայլ նուռ մը, բերին մատուցին Վահանայ՝ զնազելի Սիսակուհին[1], որուն միայն՝ հաճութեամբ տեղ կու տար և Խոսրովնդուխտ՝ իր եղբօր սրտին մէջ. և սա պատկառանօք հաւանեցաւ: Զուգեցին ոսկին արծաթոյն հետ. զպերճափայլ պայազատն Գողթան ընդ բիւրեղափայլ օրիորդին Սիւնեաց. հնչեցին երգք հարսանեաց, զոփեցին Թմբուկք տօնականք, բոլորեցան պարք ուրախութեան. պարպեցան շատ կարասք գինաւէտ Գողթան այգեաց. և ուրախութեամբ ջախջախեալ բամբիռն՝ անգամ մ'այլ արծարծեցաւ 'ի Նորոգութեան հայրենեաց:

Ո՛վ, որքան վսեմ և գեղեցիկ էր Վահան «յաւուր փեսայութեան իւրում», յաջմէ իւր քրոջ և 'ի ձախմէ հարսին իւրոյ, որոց մէկն ծիրանեաւ միւսն բեհեզով էին զարդարուած. երկուքն այլ աննմանք, երկուքն այլ սրտին զանազան կերպով մէկմէկէ սիրելիք: Ո՛րքան տարբեր՝ հեզանազ, սրբիկ, կենդանի և երկնախառն էր այս հայկուհեաց շնորհքն և սէրն՝ քան զտաճկուհի դստերացն Դամասկոսի յապարանս ամիրապետաց: — Քրիստոսի սուրբ և անապակ կրօնից ազատ պաշտաման հետ, հիմայ տրուեցաւ Վահանայ վայելել սրտից հզօրագոյն կիրքը՝ 'ի սրբութիւն փախարկեալ եկեղեցւոյ խորհրդովն: — Կորիճ և առաքինի պայազատ իշխանորդւոյ մը՝ չկար Թեր-

1 Օրիորդին անունն յայտնի չէ. այսպէս անուանեցինք մենք, որ Սիւնեաց օրիորդ մը կու նշանակէ:

Եւ քան զայս վայելուչ փափագելի և յաջող վայելք մը․ զոր և անփորձ և երկար և բազմապտուղ մաղթելով իր ամեն բարեկամքն, բոլոր Գողթն և Սիւնիք, իրենց տեղը քաշուեցան, թողլով զնորապսակ իշխանն Գողթան իր վայելից․ փառաց և նոր կենաց ընդարձակ ասպարիզի մը մէջ։

Որչափ փայլուն և վաւվաւուն կրնար ըլլալ այս ասպարէզս՝ երբ մանկութիւն, կորճութիւն, հարստութիւն, պատիւ, սէր՝ մէկմէկ կենաց վտակներու պէս յորդէին յորդորէին առոյգ սրտի մը մէջ․ — փոխանակ իր ծննդեան ցաւալի դէպքերուն, այն աշխարհաւեր կրակին և ծնողասպան սրոյն, ի՜նչ մխիթարութիւններ և զբօսանքներ չէր կրնար ճարել Վահան․ աշխարհակալ ամիրապետի մը սէր և օգնութիւն՝ զինքն իր հայրենեաց և իշխանաց մէջ՝ որչափ գերազանց և նախանձելի կրնար ընել։ Այսպիսի բարեբաղդ պատանի պայազատի մ'առջև՝ աշխարհք, այն խատուտիկ խաբուսիկ աշխարհս՝ ի՜նչ նոր և պայծառ գոյներ չէր առնուր․ և իբրև հանդարտ լճի մը վրայ նետուած քարէ մը (այնպիսի սրտի մը մղմամբ 'ի ծով փափկութեան), ի՜նչ հետզհետէ մէկմէկէ ընդարձակ բոլորակ ծիրեր կու ծաւալէին ցանծանօթ ոլորտս կենաց հորիզոնին։ — Այո՛, այո՛․ կարելի էին այս և այսպիսիք․ և ոչ անկարելի վիպասանի մը կամ մտածողի մը՝ այն իրարմէ մըղուած ջրոց հեշտալի ծիրերուն ետևէն երթալով՝ ցանկալի կենաց պարագաներ ստեղծել, և Գողթան իշխանին կենաց բոլոր ընթացքը գարնանային ծաղկանց պսակով հիւսել։...

Սակայն Վահան, նրբամիտ և վեհասիրտն Վահան՝ ընտրեց դերագոյն ևս ծաղկըներ, հիւսեց անթառամ պսակ․ փորձեց ընդարձակագոյն ասպարէզ մը, բացաւ ճանապարհ մը՝ անծանօթ իր

հասակակցաց և մտերիմ սրտակցացն։ Ոչ Թըռ-
չունք և անգեղք Յովբայ տեսան այս շաւիղը, և
ոչ այս Ճամբան Ճանչցաւ սրահեշտ աչքն Սողո-
մոնի. որ երբեմն կու խոստովանէր թէ իրեն մեծ
մտացն այլ անիմանալի կու մնար երիտասարդին
սիրտը. երբեմն վստահանալով՝ խրատ կու տար
անոր, թէ «Ուրախ լեր, երիտասարդ, 'ի մանկու-
» թեան քում, և զուարճացուսցէ զքեզ սիրտ
» քո՝ յաւուրս մանկութեան քո»։ Միայն աս-
տուածային արծուին կու հասնի այն շաւղին. և
Մեծն քան զՍողոմոն (Քրիստոս) կրնար բանալ այն
Ճամբան, յոր նետուեցաւ մտաւ և Վահան. և
ահա բարձր էր քան զերկիրս իր ասպարէզն և
ընթացքն։ Աշխարհիս յոյսն և հիւսածն՝ հոս կու
կարճատի կու կարատի. պատմութիւնն և կեան-
քըն՝ հասարակաց կարծած կերպարանքը կու
փոխէ. երկնային արիութեան, իմաստութեան և
սիրոյ հանդէսք կու բացուին։ Նոր և հզօրագոյն
կրակով մը՝ դարձեալ կու խամրի կու լռէ բամ-
բիռն Գողթան, որ դեռ Վահանայ ըրածին նման
գործ մը չէր երգած։... Թող երթայ նա Որդուա-
տայ և Ագուլեաց հինաւուրց լայնատաղարթ սօ-
սեաց մէջ ծածկուած կախուի կենայ, լուռ մուռ
դիտէ ու սովրի. ապա թէ փորձէ երգ մը, երգ
նոր 'ի տէր Վահան՝ Գողթնեաց իշխեցող. զոր
և մենք յետոյ լսենք։...

## Ժ

Հազիւ թէ Գողթան իշխանութիւնն առեր և
դեռ չէր տեղաւորուած Վահան, երբ հասաւ լուր
տարաժամ մահուան ամիրապետին Օմարայ (720),
որ մեր պատանի պայազատին մտերմաց տնակն-
կալ առիթ մը սեպուեցաւ ազատելու զնա իր
խոստմունքէն, այսինքն յետս դառնալուն 'ի Գա-

մտակոս: Սակայն նա աւելի բանիբուն ըլլալով՝ այլ մեծագոյն գժարութիւն կու տեսնէր. գիտէր որ իր խոստմունքն անծանօթ չէր խալիֆային պաշտօնէից, և օր մը խնդիր պիտի ըլլար, զինքը փնտռելին. միշտ կասկածանաց մէջ՝ կու լրտեսէր հաւատարմաց ձեռօք՝ թէ իր վրայ ինչ զրոյց կ՚ըլլայ 'ի դուռն Դամասկոսի, և Եգիպտոյ քով որ յաջորդեց Օմարայ՝ հինգ տարի: — Կասկածանք իր վրայ, հոգ՝ սրտին հետ կապուած անձին և ընտանեաց վրայ, աւելի մեծ հոգ՝ իր հաւատոց հաստատութեան վրայ. — կամ հալածական և փախստական կեանք մը, կամ տագնապ և տանջանք, և կամ ինքնակամ անձնատուր ըլլալ անոնց՝ որոց քովէն ելաւ եկաւ, բայց ոչ ինչպէս եկաւ՝ անանկ դառնալով. այլ իբրև նահատակ Քրիստոսի: Պատրաստութիւն այսպիսի նուիրման և վկայութեան վասն Քրիստոսի՝ արեամբ և կենօք. — զղջ և ողբք իր առաջին ողայական կենաց վարուց վրայ. և վերջապէս բոլորանուէր զոհուիլ մարտիրոսութեամբ: Այս եղաւ Վահանայ երկրորդ մասն կենաց. որ առաջնոյն չափ 18 տարի տևեց:

Իր օրինաւոր կասկածն շուտով ստուգեցաւ. լսեց որ իմացուեր է 'ի դուռն ամիրապետաց իր դարձն 'ի քրիստոնէութիւն, և լուսաւոր հաւատով վարուիլն ու խնամենալն Սիւնեաց նախարարին: Եթէ անկէ ետև մնար իր տեղը, կամ չլսելով կանչուելուն, կամ իբրև ապստամբ՝ աշխարհին ամուր տեղուանքը ապաստանելով, ոչ միայն իրեն՝ այլ և իր ընտանեաց և Գողթան, և Սիւնեաց, թերևս և բոլոր Հայոց նոր վտանգներ և նոր կրակներ կրնար պատճառել. — իսկ եթէ ինքն իր կամօք երթար ամիրապետին, կ՚երևար թէ ոչ միայն մէկ մ՚ այլ իր երկիրը չպիտի տեսնէր, այլ և ոչ իր ամուսինը, իր ճշմարիտ սիրելիքը, իր վե-

*բամնող սուրը եկեղեցին, և գուցէ նոյն իսկ իր գալար արևը։ Թերևս այս ետքինս կ՚ընտրէր Վահան, եթէ կենաց լծակցութեան, ընտանեկան և խնամեկան պարտքեր չունենար, եթէ իր հարսին և հարսնանման քրոջ սէրն՝ իր սրտին կարմիր օղեր անցուցած չըլլային։ Ապա մէկ հատիկ խոհեմութեան ճամբայ, ընդ մէջ երկնից և երկրի, և երկուքին իրաւանց այլ հաւանելի, կու մնայր՝ անանկ տեղ մը քաշուիլ, ուր թէ զինքն և իր կենաց կցորդքն ապրեցընէ, և թէ իր աշխարհին վըտանգ և բռնութիւն չհասցընէ՝ զինքը փնտռողներուն ձեռօք։ — Այս ապահով տեղն էր Յունաց կայսերութիւնը. մէկ հատիկ հզօր տէրութիւն՝ որ կրնար դիմամարտել ընդ Հագարացւոց, և ուր միշտ կ՚ապաւինէին նեղեալ իշխանքն Հայոց, իբրև ինքնակամ և գաղտուկ երթալով, որպէս զի մնացեալ ազգականաց և իշխանակցաց վնաս չհասնի՝ անոնց վրայ տիրապետողներէն։ — Ահա զայս մտածեց Վահան, և ձեռք զարկաւ։*

*Դեռ նոր ժառանգած տէրութեանը և աշխարհին՝ ծածուկ բարով մնաս ըսելով, և յաւիտենական բարով մնաս մը, առաւ կինն ու ընտանիքը, և բաւական ստակ. իր դրան մարդիկներէն այլ միայն քսան հեծեալ, առանց անոնց իմացընելու ըսելիքը. ու գնաց նախ 'ի գաւառն Վայոցձոր իր աներոջ քով, իբրև տեսութեան համար. և մինչ իր հայրագիրն իբրև երկրորդ անգամ հարսանեկան հանդէսներ կ՚ընէր 'ի պատիւ փեսային և տիկին դստերը, նա միշտ իր յետին մնաք բարովը կ՚ըսէր 'ի սրտէն, իրմէն աւելի ցաւելով իրեններուն վրայ՝ երբոր լսէին իր տարագնացութիւնը. և չէր գիտեր թէ ինչպէս յայտնէ կամ ինչպէս ծածկէ։ — Վերջապէս բաւական ժամանակ կենալէն ետև աներոջը քով, որուն միայն գաղտուկ իմացուցեր էր միտքը, պատրաստեցաւ*

նորէն ճամբու, և լըջութեամբ կու դիտէր իր միամիտ ընկերին սիրալիր աղապատանքն առ ծնողս իւր, գուցէ վստահութեամբ մայրական յուսոյ մը, և քիչ ատենէն նորէն տեսնուելու: Բայց ի՜նչ զարմանք և ապշութիւն եկաւ ասոր՝ երբ փոխանակ դէպ 'ի հարաւ 'ի Պոլիս դառնալու, Վահան նշան տուաւ ուղղելու դէպ յարևմուտս և 'ի հիւսիս, յանծանօթ կողմն և ճանապարհ: — Նախ շուարելով, վերջը շողոմելով շողոքելով Դալիլեայ պէս՝ աղաչեց թախանձեց կինն, ստիպեց զՎահան՝ որ յայտնէ ուր երթալը. և իմանալուն պէս այլ՝ անհամբերութեամբ իմացուց իր իշխանազուն եղբարցը, որոնք մէկմէկ վիճակի տէր էին. և դժարելով իրենց քրոջ անդարձ պանդխտութեանը վրայ, ձայն վերուցին, ողոքեցին բողոքեցին, լացին լոցուցին, հազարումէկ արգելք հանեցին Վահանայ. անկարելի է կ'ըսէին երթալդ, և թէ քեզի թէ մեզի վտանգ. եթէ մնաս հոս՝ մենք քեզի, դու մեզի պաշտպան կ'ըլլաս. իսկ այսպէս երթալովդ՝ «Դու մեզ՝ ոչ կենդանի լինիս և ոչ մեռեալ». և շատ, բայց փուճ կերպեր կու ցուցընէին չերթալու և մնալու: Եւ երբ Վահան անոնց ամէն տկար պատճառները մէկ խօսքով կըտրեց, անոնք աւելի պարտաւորելու կամ պատկառեցընելու համար կ'ըսէին. եթէ ասանկ է՝ մենք այլ հետդ կ'երթանք մեր տնով տեղով. «Ընդ
» քեզ գամք 'ի կեալ և 'ի մեռանել յօտար եր-
» կիրն. քեզ ողբակցեալ՝ անկցուք անցամաքելի
» արտասուօք»: — Աղուո՜ր զրուցուածք, այլ ատենէ դուրս:

Տեսաւ Վահան որ ամենէն մեծ վտանգը՝ անոնք կու պատրաստեն իրեն. աղէկ իմացաւ որ սիրելիքն են իրեն գլխաւոր արգելքն. յայտնի երևցաւ որ աստուածային շնորհքն և իմաստութիւնն էր զինքը շարժողն, իսկ զանոնք՝ անխոհեմ և կանա-

ցի մտածութիւն և սէր։ — Քանի՜ կորիճ, իմաստուն և առաքինի մարդիկ այսպիսի առթից մէջ զոհ եղած են՝ իրենց և իրենց սիրելւոյն օգուտը չճանչցող թոյլ սրտով, քան թէ ամուր գլխով մտացող մերձաւոր և մտերիմ մարդկանց. — Մէկն այլ Վահան եղաւ, գրեթէ աչօք բացօք տեսնելով հեռաւոր ըլլալիքը, և ակամայ լռելով ու թողլով զինքն անոնց կարճ տեսութեանը։ Աւիկայ մեծ և շատ մեծ ողբերգական կնճիռ և պատահար մ'էր իր կենացը, թատերաբանից ճարտարութեան շատ յարմար առիթ և տեսարան. զոր և իր հին վիպասանն կ'ակնարկէ խոր տեսութ՟ համառօտիւ. «Փորձութիւն հպէր յայրն 'ի փոր-
» ձողէն. և քննութիւն կամացն՝ երևելապէս
» յայտնելով զառն փառաւորութիւնն, որպէս
» զի որոշեսցի սէրն զոր ունէր յինքեան, առ Աս-
» տուած՝ եթէ աշխարհի սէր, և որ 'ի նմա յար-
» մարին ցանկութիւնք »։

## ԺԱ.

Շուտով հասաւ այս տեսարանը այլակերպող տեսարանն այլ. մինչդեռ իր աներձագքն իրենց քոյրը և փեսանին ապրեցընել կամ վայելել կարծելով՝ ատեն կորսընցընէին, ամիրապետին կողմէն Վահանը փնտռողք կուգային. հիմայ ոչ կըրնային զնա պահել, և ոչ այլ անոր առաջուան ուզածին պէս փախցընել. հարկ եղաւ որ թողուն զնա իր գլխուն։ Իսկ նա միշտ գոհ Աստուծոյ կամաց, շնորհակալ այլ եղաւ որ անոնց կարճ մտածութիւնն կերպով մ'իրեն աւելի ազատութիւն տուաւ՝ ինքզինքը միայն հոգալու։ Հանդերձեալ և յաւիտենական յուսոյ մը համբոյրը կնքեց 'ի ծոց կարճատեւ կենակցին. յանձնեց զնա իր եղբարցը, թողլով անոր՝ հետն առած ստակին և

գանձուց մեծ մասն և ծառայները. և ինքն քիչ մը Թռչակով և քանի մը հեծելոք ցաղքելով Սիւնեաց ձորերէն և լեռներէն, շուտ շուտ հեռացաւ անցաւ գնաց 'ի Վրաստան. որ ամրութեամբ և հեռաւորութեամբն՝ աւելի անփորձ և անվտանգ մնացեր էր յԱրաբացւոց. Վահանայ ծանօթ իշխաններ այլ կային հոն, որոց օգնութեամբ կրնար դարձեալ իր առջի դիտաւորութիւնը կատարել. այսինքն երթալ յաշխարհ Յունաց. թէ և հիմայ ոչ այնպէս օգտակար էր իրեն և ոչ իրեններուն. և անշուշտ աւոր համար այլ՝ Վրաց իշխանքն չօգնեցին իրեն, որ տարւոյ մը չափ կեցաւ անոնց քով, մանաւանդ թէ ինքն իր քով և Աստուծոյ քով: Վասն զի երբ մինակ դատաւ զինքն՝ իր նախառաջին մտածութեանը և յօժարութեանը թողուց բոլորովին. այսինքն ղաշխարհ ոտից տակ դնել և միայն հանդերձեալ կեանքը մտածել, ապաշխարողի և Ճգնաւորի պէս անցընելով իր օրերը: Այս բանիս մասնաւոր կերպով մ'այլ պարտական սեպէր զինքը Վահան, նախնի քրիստոնէից երկիւղած բարեպաշտութեամբը. որք գրեթէ հարկ համարէին ուրացութենէ դարձողաց՝ կամ մարտիրոսութեամբ կամ միանձնաւոր ապաշխարութեամբ կնքել կեանքերնին. թէ և Վահան կամաւ և գիտութեամբ ուրացեալ չէր, սակայն գործով այս երկու պայմանն այլ կատարեց. 'ի վերայ հին մկրտութեան աւազանին՝ աւելցընելով զերկրորդ և զերրորդ մկրտութիւնս՝ արտասուաց և արեան:

Դառնալով 'ի Վրաց և մեր Գուգարաց աշխարհէն՝ Ճամբան կու բերէր յԱրագածոտն գաւառ Արարատայ. ուր շատոնց 'ի վեր կու պայծառանային մեծամեծ վանօրայք՝ լեռնաձորոց և անապատաձև տեղեաց մէջ, ինչպէս Յովհաննավանք կամ Սիւղի վանք, Սաղմոսավանք, Լազրեվանք,

Ուշոյ վանք, և այլն։ Ծաղկածուծ մեղուի կամ կըտաքաղ Թռչնոյ պէս Վահան այս իւրաքանչիւր սրբազան օթևանաց մէջ կու Թառէր գաղրէր երկայն օրեր և ամիսներ, հոգևոր մխիթարութիւն և քաջալերութիւն քաղելով. կու փափագէր եղած տեղը մնալ, եթէ մէկ կողմէն տեղացեաց վտանգի պատճառ ըլլալու վախ չըլլար, մէկալ կողմէն այլ իր ուղեկից հեծեալքն և սպասաւորքն չձանձրանային. որք չկարնալով անանկ զարմանալի երիտասարդ տիրոջ մը երկար Թափառանաց համբերել, քիչ քիչ Թօթափեցան հեռացան, իրենց տեղը գնացին. մնաց Վահան միայն մէկ ընկերով։

Այն կողմերուն իշխանքն և ազնուականք խորհուրդ ըրին՝ որ ծածուկ և ապահով ճամբաներրով փախցընեն զնա Յունաց երկիրը. բայց Վրաց իշխանաց պէս վախցան՝ որ անոր պատճառաւ իրենց գլխուն փորձանք չգայ։ Վերջապէս ինչ ընելիքը հարցուցին այն ատենի Հայոց գլխաւոր իշխանին և կաթուղիկոսին. սա կ՚երևի թէ Դաւիթ էր, Յովհաննու Իմաստասիրին յաջորդ նստած (յամի 729), որ ոչ անոր և ոչ Սահակայ համարձակութիւնն ունէր առ ամիրայս և ամիրապետս. և վախնալով խորհուրդ տուաւ անոնց՝ որ մէկը պաշտպանելով՝ շատերը չվնասեն. այլ Թողուն զՎահան Նախախնամութեան կամ իր բաղդին։
— Մեր վիպասանն համարձակապէս սատանայի հնարքով և վախով գրգած խրատ մը կու սեպէ զայս, որ կու ջանար ամէն օգնական և ձեռնտու հեռացընել անկէ. որպէս Թէ անոնց հեռանալովն՝ ինքն պիտի տիրանար Վահանայ։ Ինչուան անոր վերջին և մէկ հատիկ հաւատարիմ մնացողը կամ Թիկնապահն այլ որսաց զատեց անկէ. և անոր ձեռքով՝ նաև Վահանայ կենաց և պատուոյն կաթևոր գործիքն այլ, ձին և սուրը, զոր ոչ ոք կարիճ

իրմէ կու հեռացընէ. իսկ այդ ապերախտ մարդը՝ ուզեց զանոնք 'ի Վահանայ՝ իբրև դրաւական և վարձք՝ որ չմատնէ զնա իր փնտռողներուն ձեռքը։ Ո՜հ, ագահ, անարգ, այլ և անմիտ անսիրտ մարդ. մի՞թէ այդ ըրածդ և ըսածդ այլ յայտնի և ակներև մատնութիւն չէ՞ անոր՝ զոր չմատնել խոստանաս. կամ թէ արժան չէ՞ր որ այն սուրն՝ քու կէս դատարկ գլուխդ թռցընելով՝ ազատէր զքեզ թէ մատնութեան և թէ վատութեան վըտանգէն։ — Մեծասիրտն Վահան չպատժեց չմերժեց զնա. բայց խորամանկութեանը վրայ ծիծաղելով՝ ինքն իր կամօք թողուց անոր երիվարն այլ սուրն այլ. իսկ ստակ և թոշակ, արդէն սպառած էր. ուրիշ բան չէր մնար վրան, բայց միայն իր ազնուութեան նշան հնացեալ զգեստքն, և իր իսկութեանը վկայն՝ տոհմին և անձին սեփական կնիքը, Մամիկոնեան տոհմին. զայս միայն պահեց վրան, որ ճանչցուի թէ ինքն է Վահան. իսկ ըզգեստները փոխելով և թողլով հագաւ աղքատակերպ. թեթևցաւ, միայնացաւ ամեն աշխարհային փառքէ և մեծութենէ, զարդէ և մարդէ։

«Գնացեալ երթայր, զրահս արկեալ զիւրև՝ զհաւատս», կ'ըսէ վիպասանն վայելչապէս. — հաւատոց հաստատութիւնը հագնելով սպառազինութեան պէս՝ իբրև երկնաւոր նահատակ կ'երթար անվախ բոլոր դժոխքէ, ծանօթ և անծանօթ ճամբով, վանքէ վանք, անապատէ անապատ. և անոնց նախաշինող հօր նման (Ս. Անտոնի), «մե_
»նամարտեալ ընդդէմ չարին բազմահնար վիշա_
»պին, ժուժկալեալ համբերեաց ազգի ազգի
»վշտաց քարավէժ կոչկոճման.... Յանապատի
»բնակելով ազօթանուէր թևօքն հալածեաց ըզ_
»բազմութիւն լեգէոնին զօրացն. և զինուորեցաւ
»քեզ. Քրիստոս»։ Այս անյաղթելի զինուորութն և դիւահալած թևոց վրայ՝ զարմացաւ Հայոց

կաթուղիկոսն այլ, երբ Վահան վանքերը պտըտելու ատեն՝ եկաւ նաև 'ի Վաղարշապատ՝ 'ի մայր եկեղեցեացն՝ յէջմիածին, անկէց օրհնութիւն առնլու և նորէն խորհուրդ հարցընելու: Նոր խորհուրդ չունէր հայրապետն, բայց յորդորել որ երթայ յանապատս, անծանօթ վանաց մէջ քաշուելով, ուզածին չափ ճգնի և աղօթէ:

Յէջմիածնայ դէպ յարևմուտք, 'ի Շիրակ գաւառ, Արագած լերին ստորոտից և Ախուրեան գետոյն միջոց, այն ատեն այլ ինչպէս և ետքը՝ կային անապատ միայնութեան տեղիք, որոց ճամբաներն այլ վարուն չէր. այս անծանօթ տեղուանքը մտաւ Վահան անոք անօգնական, առանց պաշարի և պաշտպանութեան. ոտքին կոխած երկրէն աւելի՝ գլխուն վրայ ոլորացեալ երկնից ճամբան մտածելով, Թափառական գնաց դարձաւ, մոլորեցաւ երկայն ժամեր, Թերևս օրեր այլ, մինչև ափափայ և դժուարակոխ տեղիքն և չարաչար յոգնութիւնն՝ զինքը վերէն վար իջուցին. Ջանաց շիտակ կամ դիւրին ճամբայ մը գտնել, բայց աչուըներն հազիւ կրնային տեսնել, և ոտքերն շարժիլ: Նայեցաւ չորս դին, և յիրաւի անապատի մը կենդրոն, կամ ընդարձակ ծովու մը մէջ միայնացեալ երևցաւ ինքն իրեն. կանգ առաւ. չորս դին կու շարժէր շուրջ կու գար. վայրկենէ վայրկեան ոյժն և շունչը կտրելով կու մտածէր իրա՞ւ Թէ երա՞զ է եղածն. ի՞նքն է արդարև Վահան՝ տէրն Գողթնեաց, Թէ Վահապ՝ դպրապետ խալիֆայից... կամ Թէ արդեօք այն անծանօթ անմարդաձայն տեղը պիտի լմննա՞յ իր պանդըխտութիւնը, իր բոլոր ընթացքը... չըլլա՞յ Թէ մահուան մշուշն ըլլայ որ աչքերը կու պատէ, անդամները կու կապէ, միտքը կու շփոթէ... Ո՞ւր եմ, ի՞նչ կ'ըլլամ... Աստուած իմ..:

Մէկ մ'այլ բացաւ աչքը, յիշեց տեղը, բայց

բնութիւնն կերպարանափոխ երևեցաւ. անշուշտ արեգակն իր կամարէն բաւական չափով խոնարհեր էր. ետին դարձաւ, և ահա շարժուն շըքի պէս բան մը կ'երևար. գոփիւն մը կու լսուէր. հեծեալ մը տեսաւ... հասաւ հեծեալն, հասարակ գրաստու վրայ նստած. իրարու նայեցան. Վահան իմացաւ որ հանդիպողն անվնաս մարդուկ մ'է. իսկ սա տեսաւ յոգնած քաղցած մարմըրկած ճամբորդ մը, և գթալով անոր կերպարանքին և աղաչանացը՝ վերուց դրաւ անասնոյն վրայ, և անոր խնդրածին համեմատ դարձուց գրաստը դէպ 'ի հոգևոր պանդոկ մը, վանք մը, ուր և հասուց: Բայց սա ոչ Սամարացւոյն պէս ինքն իր կամօք տանելով և երկու դրամիկ այլ վրայ տալով, այլ վարձք ուզելով յանկածէն Վահանայ՝ անոր մէկ հատիկ և յետին մնացեալ ստացուածը. զոր նա իւր ձեռօք հանեց տուաւ անոր, իր ձիւներական տոփանին, որ քան զձին և զսուրն և քան զամէն ինչ՝ սեփական է իր տիրոջը: Ասով Վահան իր տէրութեան յետին կայծն այլ կորեց. Գողթնեաց հին և մեծ պայազատութիւնն այլ՝ երկրիս ամենէն փոքր շիւղի մը պէս Թողուց, գոհացաւ:

Շիրակայ անուանի վանորէից մէկուն մէջ խաղաղեցաւ Վահան, ինչպէս ալէկոծեալ նաւն 'ի հանգստարանի. տարենն այլ զատկական օրեր ընլալով իր սիրած պարապմունքը լիովին գտաւ. և այնքան քաղցրացաւ, որ հոս այլ ինչպէս ուրիշ վանաց մէջ՝ գոհութեամբ կ'ըսէր. «Այս է հանգիստ իմ. յաւիտեան բնակեցայց 'ի սմա»: Զարմանային կրօնաւորք և ճգնաւորք՝ տեսնելով ազնուական երիտասարդ մը, որ իրեն բազմամեայ կրթութիւնը քիչ տարիներու մէջ առեր և գերազանցեր է. ոչ ոք կու հաւասարէր անոր ճգնութեանցը և տքնութեանցը, և մանաւանդ առատահոս զղջական արտասուացը, որուն շատոնք ոչ

աղբիւրը գիտէին և ոչ հնարքը․ հին սրբոց ճըգնաւորաց մէջ այլ շատ մեծ և երկնապարգև ճանաչուէր շնորհքն արտասուաց, զոր և իրաւամբք Տփոբաղունեան կ'անուանէին, որ այրած սրտի մը ծովէն ելնելով կու զովացընէ զմիտս և զհոգի, փոխուելով 'ի սաստկագոյն զմայլմունս սիրոյ․ սէր՝ որ փառանց ցաւի չիկրնար երկրիս վրայ իր մեծագոյն զուարճութիւնը կամ հանդիստը գտնել։ — Վահան վեց ամիս կեցաւ այն վանքը, միշտ այս վիճակիս մէջ․ «աւազան զարտասուս արարեալ, » և միտքն աստուածախօս լինէին անշարժելի շըր» Թամբք, վերին իմաստութեամբն արբեալ լը» նելով »․ «և զարմացուցանէր զամենեսեան »։ Այս պարզ երկնքէ մը Թափուած մշտահոս աղի անձրևաց հետ հազիւ երբեմն կու լսուէին կարճ որոտման պէս խորին ողբոց ձայնք․ կամ փայլակնանման կտրուկ հառաչանք մը․ Թերևս անփորձ տեսողք և լսողք կարծէին զնա մեծ անզգամութեան մը վրայ զղջացող․ բայց աւելի հոգետեսք և հմուտք՝ կ'իմանային որ աւելի անչար սրտի և աստուածային սիրով վառեալ հոգւոյ մը հանգէս է այս․ անմեղի և անպարտի ապաշխարանք մը։ Ասոր վրայ էր որ խոր և բարակ զգացմամբ զարմացեալ և սքանչացեալ իր սիրահար սուրբ մուզայն՝ յետոյ պիտի երգէր․ »Զարմանալի է » ինձ քան զերդս երաժշտականաց ձայնս՝ ողբոց » քոց հնչմունք՝ ով երանելի տէր Վահան, ընտ» րեալ յԱստուծոյ »։

Բայց նոյն սրտառուչ ձայնն որ այսպէս մեր մէկ զարմանուհւոյ մը սիրտը պնդեց կանգնեց, հոս անոր համասեռի մը սիրտը՝ սոսկմամբ և վախով լըցուց․ այն Շիրակայ կողմերուն Իշխանափիկներն, վախնալով ուրիշ իշխանացնման, պատուէր խաւրեց 'ի վանքը՝ Վահանայ համար, Թէ « Երթիցէ » 'ի բաց, գուցէ մեզ և ձեզ պատուհաս հասցէ

» յարքունուստ՝ վասն նորա »: — Առանց խռովելու ելաւ Վահան այս անապատէս այլ, ըսելով առ Աստուած. « Ես 'ի քեզ եմ յուսացեալ. և » յ'ստուերավայր տեղիս մահու՝ աներկիւղ արարեր զիս. և զցուպ և զգաւազան խաչի քո սուրբ՝ » մի՛ հեռի առներ յինէն »: Եւ այս խաչանիշ ցուպըն առնլով իր սրտին և ոտից նեցուկ՝ կ'երթար իբրև զնահապետն Իսահակ նոր Ջրհոր մ'այլ փորելու անապատին մէջ. ոչ Ջրհոր երդման կամ զրկման, այլ աստուածաշնորհ արտասուաց:

Այսպիսի աղբեր մը համար ուզեց Վահան աւելի խոր և անծանօթ անապատ մը, որպէս զի ամենքն այլ անկասկած ըլլան. մէկու մը վախ չհանի իր պատճառաւ. և ընտրեց « անապատ » անյայտաւոր և սակաւամարդ տեղիս »: ուր հազիւ բուն անապատակեաց ճգնաւորք գտուէին առանձին խորշեր քաշուած, որոց երբեմն այցելութեան կ'երթար, մխիթարուելու հոգևոր խօսքերով և գրքերով: Աստուածաշունչն, և գտած սուրբ հարց գրուածներն՝ իրեն զբօսանքն էին աղօթքէ դուրս մնացեալ ժամերուն, որ շատ քիչ և կարճ էին. վասն զի հազիւ թէ աչք գոցէր 'ի քուն, շատ այլ չկարօտելով ասոր՝ անսուաղութեամբը կամ գրեթէ բան չուտելուն: Այսպիսի սակաւապիտութեան համեմատ էր հագուստն այլ. մէկ զգեստ մը կամ պարեգօտ մը միայն. ոչ շապիկ, ոչ կօշիկ. մէկ այլ վերարկու՝ ձմեռուան ծածկոց. վասն զի տարի մը կեցաւ այս անապատիս մէջ աշունէ աշուն, « անթուլանալի սրտիւ » աշխատութեամբ. իբրև յոյժ ծարաւեալ եղ- » ջերուաց աղբերաց՝ փափագեալ նա Աստուծոյ » սիրոյն:.. Եւ այնուհետև զյոյսն իւր 'ի մարդ- » կանէ 'ի բաց մերժեալ, արտաքոյ մարմնոյ իբրև » ընդ իմանալիսն լինելով՝ զհակառակորդաւն 'ի բաց թռուցեալ՝ սատանայիւ »: Ամբողջ շրջան

մ՚արեւու այս յետին միայնութեան մէջ թաղուելով, ընկղմելով յաստուածային մտածութիւնս՝ բոլորովին թեթեւցաւ սիրտն. գրեթէ նուաղեալ մարմինն՝ հազիւ կրնար վարագուրել եռանդուն հոգի մը, որ անկէ դուրս վազել, թռչիլ վերանալ կ՚ուզէր, և շուտ կ՚ուզէր: Չորս տարի էր որ այսպէս մարմնով անհանգիստ և վշտակիր՝ հոգւոյն հանգիստը կու փնտռէր. պէտք էր որ փութայ հոն՝ ուր կու յուսար կատարեալ հանգչիլ:

## ԺԲ

Լսեր էր որ իր ծանօթ Օմար ամիրապետին՝ յաջորդելով Եզիտ Բ չորս հինգ տարի միայն, թէպէտ և ատեցող քրիստոնէից, բայց նախ խոզից դէմ կռուելով շատ ատեն չէր ունեցած զմարդիկ ջարդելու. իսկ անոր յաջորդն Հէշամ զոր Հէշմ և Շամ կոչեն մեր պատմիչք (725-743), արդէն հրաման տուեր էր խստանալ քրիստոնէից վրայ, և փնտռել զՎահան. և եթէ ինչուան այն ատեն (15 տարի մը՝ Դամասկոսէն գալէն ՚ի վեր) չգտան զինքը, սակայն օր մը կրնային գտնել, և թերեւս իրեն մօտ եղած անպարտ անձանց այլ վնաս հասցրնել. և եթէ դեռ անոնց աչքն կապուելու այլ ըլլար, սակայն իր աչքն շատոնց բացուեր սրացեր էին երկնից տեսութեամբ. անկէ ետև ապրիլն՝ ձանձրալի էր իրեն. փափագելի՝ մարտիրոսական մահն: Հաստատեց ՚ի միտքն՝ որ ինքնին երթայ յայտնէ զինքը Հագարացւոց. և թէպէտ ոմանք իմանալով՝ կու ջանային յետ կեցրնել, բայց ոմանք այլ դէմ չէին կենար, այլ և քաջալերէին հաստատ կենալու իր մտացը վրայ:

Կ՚երեւի թէ ամիրապետին տեղ նախ ուզեց անոր Հայաստանի մէջ տեղակալը փորձել, որ հոն կու նստէր ՚ի Դուին մայրաքաղաքի. գնաց անոր,

անվախ համարձակութեամբ ըսաւ. Ես եմ Վահան: Այն ատենի Հայոց ոստիկանն էր Մրուան, (որ յետոյ եղև վերջին ամիրապետ Իւմմիատեան տոհմին), Արզլազիզի պէս խոհական և բարեխառն մարդ մը, որ նորէն Հայոց խաղաղութիւն տուեր և իրենց միջէն վերակացու գրեր էր զԱշոտ պատրիկ Բագրատունի. չուզեց արդար մարդու մը անպարտ արեան մտնել, այլ անշուշտ ըսելեայն հեռացուց իրմէ զՎահան: Իսկ սա այն ատեն սահմանեց որ երթայ բնչուան 'ի Դամասկոս, և ուր որ տարագիր կենաց դժբաղդ դիպուածն սկսեր էր՝ հոն լմընցընէ փառօք: Անկէ ետև միայն ճամբու յարմար աւթի կու սպասէր, և անոր վախճանին յաջողութեան օգնական կ'ուզէր արժանաւոր անձանց աղօթքը և օրհնութիւնը. և այս պատճառաւ ելաւ վերջին անգամ մ'այցելութեան իր սիրելի վանքերուն և ուխտերուն:

Իր գտուած Այրարատ գաւառին սահմանակից է Գեղաքունի գաւառն Սիւնեաց, Սեւանայ ծովուն հարաւակողմը, ուր այն ատեն ուրիշներէն աւելի կու հռչակուէր Մաքէնեաց վանքն՝ իր սրբազգեստ ճգնաւորներովը, և եւս առաւել երկու Սողոմոններով. որոց մէկն առաջնորդն էր, երկրորդն սրբակաց վարդապետ մը, զոր Հարանց հայր կոչէին՝ աւելի պատուոյ համար. և որ մեր դպրութեան և եկեղեցւոյ յիշատակ թողուց շատ պատուական գիրք մը, Տօնականը, շարագրելով զվարս սրբոց վկայից, որոց քիչ ատենէն դասակից պիտի ըլլար և Վահան: Հայրական գթով և գորովով ընդունեց սա զպանդուխտն. և 'ի մեծ տօնի Խաչին՝ ամենայն հոգևոր մխիթարութեամբ լցուց և լիացուց. և երբ անկէ երթալու ելաւ՝ [1]

[1] Սրբոյս վկայաբանութեանց մէջ ոմանք առաջ 'ի Յովհաննավանս, յետոյ 'ի Մաքենիս գնաց, կ'ըսեն, ոմանք այլ ընդ հակառակն:

իրեն ճամբու զգեստէ և թոշակէ զատ՝ մխիթարական բան մ՚այլ գրեց տուաւ, որ երբեմն երբեմն կարդալով աւելի քաջալերուի։

Այս Մաքենեաց վանքին քովէն գետակ մը կ՚անցնի և կու թափի ՚ի ծովն Սևանայ. աղբիւրն այլ քանի մը ժամ հեռու է ՚ի հարաւակողմն՝ այն լերանց մէջը, որ անջրպետ են Գեղամայ երկրին և Վայոց ձորոյ. — ուրեմն կէս օր մը դար վեր ելնելով և կէս օր մ՚այլ դար վար իջնելով՝ Վահան կրնար հասնիլ այն Սիւնեաց գլխաւոր գաւառին կեդրոնը, ուր քանի մը տարի առաջ թողեր էր իր սրտին վրայ տիրացող անձ մը, իր կինը։ — Յանդգնեցա՞ւ արդեօք փորձիչին՝ այն մաշած և մաշկակապած՝ բայց դեռ 30ամեայ սիրտը դրդել, որ վազելով Վայոց լեռներէն, մէկ անգամ մ՚այլ յաւիտենականութեան համար՝ կրկնէ յետին մնաս բարովը՝ անոր, որու հետ եկեղեցին անգամ լծեր էր իր երկրաւոր կեանքը։ — Գուցէ նայեցաւ Վահան մէկ մը այն լերանց վրայ, գուցէ և լուռ հառաչանք մը իր մէջ հնչեց. սակայն աչքը և ճամբան դարձուց յարևմուտք. և աւելի փախչելով՝ քան քալելով՝ դարձեալ վանքէ վանք անցաւ։ Բաց յայլոց՝ կենալով քիչ մ՚այլ ՚ի վանքն Թէղէնիս, որ Երևանու մօտերն է, և Մաքենեաց պէս նշանաւոր էր իր վանականաց վարքով և կարգով։ Անկէ այլ անցաւ գնաց իր առաջին և սիրելի օթևանը, ՚ի Յովհաննավանս Արագածոտան, որոյ հայրն Յովհան՝ մեծ սիրով և կարօտով նորէն ընդունեցաւ իր աշակերտացեալ և զարմանալի մտերիմը. և լսելով անոր առաջադրութիւնը՝ յորդորեց հաստատութեամբ կատարելու. ինչուան կու փափագէր ինքնին անձամբ անոր ընկերակցելու այլ, եթէ իր առաջնորդութեան պաշտօնն արգելք չըլլար. բայց իր տեղ անոր ընկեր դրաւ երիտասարդ և զգաստ եղբայրներէն մէկը, որ

չորս տարի Վահանայ ուղեկից ըլլալով՝ անոր ամէն պատահարաց տեղեակ և տեսող եղաւ, և կու պատմէր բաց յայլոց, որ իրեք անգամ երկնաւոր այցելութիւն կամ տեսիլք եղաւ որբոյն. ինքն և ուրիշներն՝ միայն լոյսը տեսան, բայց Գօղոս առաքելոյ ուղեկցաց պէս՝ ձայները չլսեցին կամ չհասկացան. սակայն կարծէին որ Քրիստոս կ'երևէր և կ'ըսէր իր ընտրելոյն, «Մի՛ դանդա-
» ղիր, զի ես ընդ քեզ եմ, և անյաղթելի առնեմ
» զքո բանդ»: Նոյն իսկ Յոհաննավանուց մէջ այսպիսի այցելութիւն մ'ունեցաւ Վահան. և ելնելուն ատեն՝ հայրն Յոհան այլ Սողոմոնի պէս տուաւ իրեն պէտք եղած զգեստ, Թոշակ և ձի: Նոյն ընդունելութիւնը գտաւ Վահան նաև ուրիշ վանորէից մէջ, մանաւանդ յիշատակելոց ամէնէն ետքինին մէջ, որ է Նրաշխաւոր (հիմա Սքանչելագործ) ըսուած վանքն յԱրծկէ, Վանայ ծովուն արևմտեան հիւսիսային ծայրը, Սիփան (Մասեաց) լեռան ստորոտը. որոյ հայրն կամ առաջնորդն էր Արտաւազդ, բարեսէր հիւրասէր անձ մը, որոյ համար և Աբրահամ կոչուէր: Սա իմանալով Թէ Վահան է եկողն, բոլոր եղբայրներով դիմացն ելաւ ընդունեցաւ, և իրեք օր պահեց պատուեց սփոփեց զնա. լսեց մանրամասնաբար անոր դիպուածները և գիտաւորութիւնը. ինքն այլ քաջալերեց, և Թոշակը նորոգելով, առաջնորդ եղբայր մ'այլ տուաւ, որ ինչուան ուր որ ուզէ՝ հեռը տանի. արձըկեց զնա մեծ սիրով, և մեծ այլ յուսով՝ քիչ ատենէն Քրիստոսի եկեղեցւոյն փառաւոր յաղԹող վկայ մը Ճանչնալու և Ճանչցընելու զինք. ինչպէս որ ըրաւ այլ:

## ԺԳ

Անկէ ետև Վահան դարձուց ձին դէպ 'ի հարաւ, ողջութեան ատեն գերութեան գացած ճամբէն՝ երթալու իր վախճանին: Նոյն օրերը [1] Մրուան ոստիկանն՝ Աշոտոյ պատրկի օգնութ̅ Խազրաց յաղթելով 'ի Դարբանտ՝ շատ աւարով դարձեր էր յԱղուանս, և անկէ աւարին և հեծելազօրաց մէկ մասը կու դարձընէր առ ամիրապետն: Ասոնց հետ խառնուեցաւ Վահան. ճամբան քիչ քիչ իմացուց անոնց իր ինչ մաքի վրայ ըլլալը. համարձակ կու խօսէր իր կրօնից վրայ և կու վիճէր անոնց հետ. որք ոչ այնչափ իր քրիստոնէական գիտութեանը վրայ կու զարմանային, որչափ իրենց մահմէտական դենն և զրոյցները տեղն 'ի տեղը գիտնալուն վրայ, և չէին կրնար դէմ դնել: Այսպէս կտրեցին այն երկայն և անապատ ճամբան: — Ի՞նչ տարբեր մտածութ̅ք ելեր էր Վահան այն ճամբէն՝ տեսնելու իր երկրին ընդարձակ աւերակները, և անոնց մէջ մէկ հատիկ բուսած կենդանի ծաղիկը, — իր քոյրը. — զոր հիմայ ուրիշ ծաղկան մը հետ թողլով խապառ՝ կու դառնար ամենազարմանալի և գերահրաշ սիրելւոյ մը հետ արեամբ միաւորելու:...

Հասան յՈւռհայ, Հայոց և բովանդակ քրիստոնէայ Միջագետաց նշանաւոր քաղաքը, նախահաւատ Թագաւորին Աբգարու մայրաքաղաքը. որ յայտնի է քեզ, Հայկակ, թէ ինչպէս անոր օրերէն մինչև այս պատմութեանս ժամանակ և դեռ անկէ ետև ալ՝ քրիստոնէից անուանի ուխտատեղեաց մէկն էր, 'ի պատճառս հռչակեալ Դաստառակին, փրկչական պատկերին: Ահա դար-

1 Ղեւոնդ Պատմիչ:

ձեռաւ Վահանայ սիրելի իշխան և հոգևոր զբօսարան մը. ուր ոչ միայն կեցաւ յերկրպագութիւն այն հրաշանկար պատկերին, այլ կ'երևի թէ և երկայն ատեն կեցաւ. և ոչ պարզապէս աղօթիւք, այլ և նոր տեսլեամբ կամ յայտնութեամբ մը[1] քաջալերեցաւ իր առաջադրութեանը վրայ, միանգամայն անոր յաջողելուն: Նոր եռանդեամբ ճամբու ընկաւ, ուղղակի 'ի հարաւ իջնելով:

Ուռհայէն քանի մ'օթևան վար ճամբան կու բերէ 'ի Խառան քաղաք անուանի. ուր, ինչպէս 'ի սկզբանն յիշեցի՝ վախճանեցաւ երանելի կաթուղիկոսն Սահակ. որոյ յիշատակն անշուշտ դեռ կենդանի գտաւ Վահան: Բայց անկէ աւելի փնտռեց ուրիշ իրեն մերձաւոր խոստովանողի և վկայի մը հանգստարանը. իրմէ փափուկ մէկի մը, որոյ յիշատակն այլ արժան էր գանել և հռչակել տեղեկօրէն. և էր նա Շուշան, դուստր մեծ և խոհեմ իշխանին Վահանայ Կամսարականի, քոյր Ներսիսի պատրկի, որ Սմբատայ հետ միաբանելուն համար՝ կրակին տարին ուրիշ քանի մը իշխանաց հետ գերի բերուեցաւ, քոյրն այլ հետը. որ և հոս բանտին և բանտողաց բռնութենէն նեղուելով և հաւատքին վրայ հաստատուն կենալով՝ վկայօրէն վախճանեցաւ (706-7). և իր միւս եղբայրն Գագիկ՝ որ նորաշէն եկեղեցւոյ մը նաւակատիք կ'ընէր ('ի Վարդանակերտ), երանելի քրոջը յիշատակն այլ մէկտեղ կատարեց: Հոս Վահան իր գերեկից Շուշանկան շիրմին վրայ այլ լալով՝ ելաւ հասաւ 'ի Ռակկա կամ 'ի Կալլինիկոն քաղաք, ուսկից կ'անցնի Եփրատ գետը. և անով դուրս ելաւ 'ի Միջագետաց և մտաւ 'ի բուն սահմանս Արաբացւոց և հին Ասորւոց. և լսելով որ ամիրապետն Հեշամ չէ 'ի Դա-

1 Յայսմաւուրք:

մասկոս, այլ հոն մօտ Եփրատայ՝ 'ի Ռուծափ քաղաք, իր ճամբորդութեան վախճանին հասաւ, թէ և ոչ շուտով նաև իր փափագանացը:

Աներկիւղ և եռանդուն քրիստոնեայ, միանգամայն և փափագող մարտիրոսութեան, զոր և յայտնութեամբ այլ ստուգեր էր, 'ի վերայ այսր ամենայնի մեծահաւատ և խոհեմ. չուզեց կերպով մը զԱստուած փորձել, կերպով մ'այլ անհաւատարիմ երևիլ անոնց՝ որ յետ Աստուծոյ իրաւունք ունէին իր սրտին վրայ. այնպիսի առաքինութիւն և սրտապընդութիւն մը ցըցուց՝ որոյ նման թերևս շատ դժար է գտնելն: Տասը տարի պատրաստուած և աչք առած էր վկայական մահը, անոր համար զաշխարհ ոտքի տակ դրած, և այնքան հարիւրաւոր մղոններով երկայն ճամբաներ կտրելով հասեր էր հանդիսին տեղը. ոչ կու վախեր, ոչ այլ կու յանդըգնէր. ոչ եւս կենար յասպարիզէն՝ որ 'ի պսակէն այլ եւս չմնայ, և ոչ այլ ինքնայարձակ կու նետուէր: Թէ և գլխաւոր փափագն էր մարտիրոսութեամբ ելնել այս յաշխարհէս, զոր արդէն ուրացեր էր ճգնողական կենօք. բայց եթէ ամիրապետն հաւանելու ըլլար (որ չէր յուսալի) թողուլ զինքն ազատ իր քրիստոնէութեան մէջ, ինչպէս Օմար թողուց ուրիշ գերեալները, պիտի առնուր յանձն ապրելու ազատօրէն սուրբ հաւատովն՝ ինչպէս ուրիշ իշխանազունք հայրենեացը, և ոչ որ և է կերպով գըրգռել զայլադէնս, և բռնի յափշտակել զպսակը: Այս է զարմանալի առաքինութիւն և հաւատարմութիւն Գողթնեաց իշխանին և Սիւնեաց փեսային. այս է Վահանայ կատարեալ իմաստութիւնն՝ երկնաւոր և երկրաւոր. զոր և ոչ ամեն լաւ անձինք կրցան և կրնան միացընել, այլ որոց պարգևեն աստուածային գերագոյն շնորհքն: Արժան և հարկաւոր է ճանաչելն զայս 'ի Վահան, իր մեծ արժէքն լաւ այլ ճանաչելու համար:

Աւելի քիչ ժամանակի մէջ Այրարատայ լեռներէն մինչև Ասորեստանի անապատը և 'ի Բուծափ հասաւ Վահան, քան այս քաղքիս դռնէն մինչև անոր արքունեաց դուռը: Քաղքէն դուրս տեղ մը իջևանեցաւ, իբրև թէ իր վերջին հանգիստին պատրաստուելու՝ զգաստութեամբ և հանդարտութեամբ. չուզեց անկէ ետև քովը պահել իր ճամբու հաւատարիմ ընկերները, այն երիտասարդ եղբայրները՝ զոր հարքն Յովհաննավանից և Երաշխաւորին՝ իրեն ուղեկից և օգնական տըւեր էին. «Ահաւադիկ հոս իմ ճամբաս վերջացաւ, ըսաւ. ասկէ ետև ուրիշ անկոխ և անթոշակ ճամբայ մ'ունիմ ընելու, զոր և մինակ պիտի կատարեմ. դուք դարձէք ձեր առաջնորդաց քով, և յանձնեցէք սուրբ միաբանից՝ որ աղօթեն երբեմն իրենց եղբայրացեալ Վահանայ համար. շուտով գնացէք, որ աղօթքնին հասնի ինծի յօգնութիւն»: Զանոնք արտասունքով և համբուրով ճամբայ դրաւ, վերջին անգամ ետևնուն նայելով դէպ 'ի հիւսիս, դէպ 'ի հայրենիս՝, դէպ 'ի Հայս. ուսկից շարժուն ճամբու և ճամբորդի պէս կու տեսնէր միայն Եփրատայ իջուածքը. և երբ ասոր ափանց մօտ անհետացան տրամեալ վանականքն, Վահան այլ դարձաւ իր առանձնարանը, և սկսաւ իր մեծ գործը:

Քննեց իմացաւ թէ ով կայ յարքունիս 'ի Բուծափ իր հին ճանչուոր մեծերէն, և ծածուկ իմաց տալով կանչեց: Երբ անկարծ լուրը լսելով եկան, աւելի անկարծելի բան մը տեսան. իրենց Վահապը վեհակերպ վահանացեալ, թէ և իրենց աւելի օտար երևցաւ նա, քան բարեկամացն՝ Յոբ: Կարծեցին թէ կամ խելագարեր է, կամ բռնութեամբ այս խեղճ կերպարանքն առեր է. և եթէ իր խօսքը իր կերպերը չյիշէին՝ չէին կըրնար հաւտալ թէ այն արքայակերպ պճնապայ-

ծառ պատանին՝ այս գծծակերպ նիհարացեալ մարդն է. և դեռ զարմանալով կու հարցընէին. «Զի՞ այդպէս ես»։ — Վահան շտկէ շիտակ իմացուց անոնց թէ Քրիստոսի հաւատոց և սիրոյն համար յանձն առեր է այս աղքատութիւնը և չարակրութիւնը։ — Անոնք կամ չկրնալով կամ չուզելով հասկընալ, առաւել փաստ ու պատճառ մը կու սեպէին զայն նորէն մահմետական կրօնքին դառնալու, որ թէ այս աշխարհիս թէ այն աշխարհին մէջ կու խոստանար ընդունողացը՝ հեշտութիւն և փափկութիւն։ Այն ատեն սուրբն քիչ մ'աւելի սաստիկ լսեցուց ճշմարտութեան քարոզութիւնը, և անոնց զաղփաղփուն փաստերը փլուց։ Անոնք կէս ապշած կէս ամըչցած, և ոմանք իրենց կրօնքին վրայ գայթակղած, ինչպէս կ'ըսէ պատմիչն, մէկդի գացին, ոչ պաշտպանելով և ոչ այլ դատապարտելով զնա։

Վահան սպասեց, և երբ տեսաւ որ անոնք կէս բարեկամութեամբ կէս անհոգութեամբ թողուցին զինքը և չիմացուցին ամիրապետին, գնաց իր ծերունի տաճկութեան վարպետին, որ և մեծ դպրապետ էր տէրութեան. և իմացուց թէ ինչպէս անոր սովրեցուցած կրօնքը թողլով՝ իր ծնընդեան կրօնքը նորէն ընդուներ է, և կ'ուզէ որ ամիրապետն այլ գիտնայ զայս։ Դպրապետն որչափ այլ զարմացաւ և ցաւեցաւ, դեռ սիրելով իր անման աշկերտը՝ սկսաւ յանդիմանել և վախցընել ամիրապետին կողմանէ, որ փոխանակ առաջին շնորհացը՝ կրնար չարաչար մահուամբ սպաննել զնա։ Բայց տեսնելով որ Վահանայ հաճելի և փափագելի են այս սպառնալիքս, սկսաւ անուշութեամբ աղաչել որ իր աղայութեան ատենին պէս նորէն իրեն ընկեր և օգնական ըլլայ, և իր վայելուչ հագուստներովը զարդարուի։ Եւ այնքան ծանրութեամբ ու նայելով աղաչեց և եր-

դուընցուց զՎահան իր մտերմութեանը վրայ, որ
բռնադատեց զտուրքը առնըլու իրմէ 30 դահե-
կան։ Առաւ նա ստակը՝ խոստմանը համար, բայց
նոյն տուողին առջև բաժնեց աղքատաց. և ինքն
իր առանձնութեան տեղը քաշուելով՝ բոլոր ձմե-
ռը մէկ ճգնաւորական թեթև զգեստով և գրեթէ
անկերակուր անցուց։

Նոր գարուն մ'այլ հասաւ. Վահան աւելի
քան զընութեան կեանքը՝ գերագոյն կենաց բաղ-
ձալով՝ երրորդ փորձ մ'այլ փորձեց՝ իմաց տա-
լու ամիրապետին. և այս անգամ գնաց առ մեծ
պաշտօնեայն ելևմտի գանձուց և հարկաց տէրու-
թն, և նոյն աղաչանքն ըրաւ։ Արաբացւոց արքու-
նիքն այն ատեն բաւական կրթութեան հասեր և
արժանաւոր անձինք ունէր, որք առանց կրօնա-
մոլութեան կրնային լսել և տեսնել ուրիշ կրօնի
հետևողներ, և գթոյ ու բարեկամութեան օրէնք-
ները հաւատարմութեամբ պահէին։ Այսպիսի
էր այս պաշտօնեայս այլ. խոժոռեցաւ Վահանայ
ըսածին վրայ, և աւելի կ'ուզէր չլսած ըլլալ. մատ-
նել զնա՝ վատութիւն կու սեպէր, լսել՝ իրեն
խիղճ մը կարծէր. և իբր թէ Վահանէն աւելի
ինքն իր գլխուն վրայ վախնալով ստիպեց որ եր-
թայ հեռանայ իրմէ, լռէ այդպիսի խօսքը, զոր
գրեթէ ոչ ոք կու համարձակի ամիրապետին ը-
սելու. «զի մահաբեր է բանդ այդ. ինձ խռովու-
» թիւն, և քեզ՝ մահ.. սուր՝ 'ի քո մարմինդ, մի՛
» գուցէ և յայլոց զարթուցանիցես». այսինքն,
այդ խօսքդ մահաբեր սուր մ'է, որ ոչ միայն քու
գլուխդ կու տանի, այլ կարելի է քու պատճա-
ռաւդ՝ ուրիշներուն այլ։

Վիպասանն՝ այս զարմանալի ընդդիմութիւնը
կամ չմատնելն զՎահան՝ ուրիշ կերպով չիկրնար
բացատրել, բայց սատանայի խորամանկութեան
տալով, որ 'ի խորհուրդ կու կանչէ իր դևերը, և

իրենց շահաւոր կու գտնեն հեռացընելու զմահ 'ի Վահանայ, և ջանալու մոլորութեամբք և հեշտութեամբ տկարացընել զնա: Բայց ինչպէս որ ճշմարտութեան ատեցողն և հայրն ստութեանց միշտ կոյր և կաղ է, այս փորձերով այլ աւելի խայտառակեցաւ. վասն զի Վահան թէ և փափագող՝ այլ ոչ այնքան մահուան փափագող էր, որքան ատեցող հեշտութեան և անքրիստոնեայ կրօնից. ուրեմն հակառակորդն հօգւոց ինքն իրեն դէմ կու ջանար և կու զրկուէր: Իսկ Վահան՝ օրինակաւ իմն իր Տիրոջ պէս երեք անգամ յաղթելով փորձութեան չարին, որ 'ի ձեռն դպրապետին և արքունի խորհրդականաց՝ կ'առաջարկէր անոր զփափկութիւն կենաց, զհարստութիւն և զաշխարհական փառք ու պատիւ, չորրորդ փորձով մ' այլ խայտառակեց զնա՝ վերջապէս իր փափագած մահը յափշտակելով, թէ և զայս այլ ոչ անաշխատ:

Պաշտօնէից սիրտը շատ կիրթ և կակուղ գըտնելով Վահան, պէտք ունեցաւ խիստ և անգութ սրտի մը. բոլորովին հակառակն ընելով բնական բերմանց. և իրեն մէկ հատիկ յարմար պաշտօնեայ սեպեց զայն՝ յորմէ ամենայն զգայուն սիրտ սոսկայ և զզուի, երկաթէ և քարէ զանգեալ սըրտի տէր կարծելով զնա. — պաշտօնեայ մը՝ որ լոյս ատեն չերևիր, այլ գիշերահաւու պէս կու պահուըտի, և այն վայրկենին կ'երևի՝ երբ ուրիշի մը վերջին վայրկեան պիտի բերէ. կարծես թէ ամեն իր դուրս գալուն՝ ցրտագին սարսուռ մը կու զարնէ զինքը ճանչցողներուն, և գտնէ մէկ մը սառուցեալ գունատեալ անշնչացեալ կու մնայ, կամ կապուտակ մահուն մանեակը վիզը պլլուած, կամ մարմնոյն և գլխոյն կարևոր կամուրջը կտրած... Դա է դժնիկ Դահիճն:

## ԺԴ

Իսկ Վահանայ փնտռուած և ընտրածն ոչ թէ պարզ դահիճ, այլ և Դոհճոդէփ էր, իրեն յարմար Քաբշ անուամբ, որ 'ի վարձ պնդասրտութեն և շատ անգամ պժգալի պաշտօնը վարելուն՝ Հիմայ Հիմացուոց (Հէմսի) իշխան գրուեր էր: Ցետ երկար աղօթքով ինք զինքը Աստուծոյ յանձնելու, Վահան իր հաւատքը, կամքը և փափագը, միով բանիւ իր խնդիրը՝ աղերսագրի պէս գրելով վայելչապէս արաբացի ճարտարգրութեամբ, զոր 'ի տղայուց լաւ վարժեր գիտէր, գնաց այս փշոտ պաշտօնէին. և առջիններուն պէս իմացուց միտքը, ու տուաւ խնդրագիրն այլ՝ որ ցուցընէ ամիրապետին: — Քաբշ՝ դժնդակ շարժուածքով մը աչքերը խոլոռեց, պերճեշտքն ոլորեց. կարծես թէ քաղցած գայլու կամ բզըքտող յովազի պէս՝ արեան հոտ մ'առաւ, լեզուն հին սպանութեան համերը զգաց, և լափլփելով շրթանց մէջ, լաւ լաւ՝ ըսաւ. խնդրագիրը ծոցը դրաւ, փաթթոցը պնդեց, ակնարկեց Վահանայ որ հետը ճամբայ ընկնի: Եւ ահա հեզ ու անմռունչ գառին պէս քշելով կու տանէր առ մեծ խալիֆայն. իր ձախ ու ժանտ դէմքը տեսողք և ճանչցողք՝ սոսկալով ետ քաշուէին, բայց Վահանայ ազնիւ և ողորմ կերպարանքն՝ տտուընին կու կապէր....

Տեսնուեցան Քաբշ և Հէշամ. դահճապետն և ամիրապետն. սա առաւ՝ կարդաց Վահանայ խընդիրը, և նախ գրոյն վայելչութեանը և գրուածքին ու խօսից ճարտարութեանը վրայ զմայլեցաւ, և աւելի գառին քան գայլուն կողմը դարձաւ սիրտն. հրամեց որ առջևը բերեն զՎահան, որ այնքան երկայն ատեն, և տարիով կու սպասէր այս կոչման: Ահաւոր բռնաւորին սիրտն չցիմա-

ցաւ այն անշուք զգեստուց և մաշեալ կերպարանաց մէջ տեսնել իր արքունեաց հին դիւանադպիրը։ Ինչո՞ւ, ըսաւ, այդպէս խեղճացեր ես, Վահապ. «ուրեմն երկիրն Հայոց իջո՞ց զքեզ յայդ»։ — Ոչ իմ հայրենիքս, պատասխանեց Վահան, այլ իմ հարցս հաւատքն ճանչցուց ինծի իմ գերադոյն Տէրս, որ իր անբաւ մեծութենէն իջաւ այս խեղճութեան. որուն ես այլ իմ չափովս նըմանել ուզեցի։ — Տեսա՞ր, կանչեց ամիրապետն, Հայաստանի սառնապատ սարերուն սատանաները զքեզ խենդեցուցեր են։ — Մանաւանդ թէ, ըսաւ Վահան՝ անվախ զուարթութեամբ մը, արդարութեանս ատեն վրաս եկածներն այլ՝ հոն թօթուեցի, մաքրուեցայ պայծառացայ։...

Անշուշտ Քաբշի փուշերն անկուեցան այս խօսքերուս, և կ՚ուզէր մէկէն լափել Վահանայ արիւնը, եթէ քան զինքն երկայնամիտ և կակղասիրտ չըլլար Հեշամ, որ և ներողանալով և հայհոյելով, բայց դեռ ողորմելով, Լռէ ըսաւ, ով մոլորեալ և բարիատեաց, այդ խենդ խօսքերէդ, որ ձեր սատանաներն միտքդ մտուցեր են, և դարձի՛ր քու առջի փառացդ և կրօնից։ Հրաման տըւաւ, և մէկէն բերին Վահանայ՝ գունագոյն մետաքսեայ բանուած հագուստներ, և դիմացը թափեցին ոսկւոյ և արծաթի զարդուց գանձեր. «Աստոնց վրայ, աւելցուց ամիրապետն, պատրաստ են քեզի համար ընտիր ձիան և ուղտեր, ամեն տեսակ ըռզակ, ծառայք ու աղախնայք, և քեզի արժանաւոր իշխանութիւն մ'այլ, եթէ կ՚ուզես հոս իմ քովս, և թէ ուզես հոն՝ քու հայրենի գաւառիդ մէջ. «Եւ իշխանութիւն քեզ՝ թէպէտ «աստ, թէպէտ 'ի Գողթան, զքո անկաւոր իշ»խանութիւնն». միայն թէ մեր պատգամաւորին պատուէրքը կատարէ, և վայելէ իր խոստացեալ բարիքը՝ թէ հոս թէ 'ի դրախտին։ — Այսպիսի

խօսքով և գործով մը ամիրապետին գրեթէ մէկէն լմընցուց իր ըսելիք և ընելիքը։ Հարկ էր որ Վահան այլ իր վերջին խօսքն ըսէ. և ըսաւ համարձակ՝ իբրև հասարակ մարդու մը. ըսաւ, թէ «Այդ գանձերդ և խոստմունքդ լաւ իսկ վկայ կ՚ըլլան քու խորագիտութեանդ, որով շատերը խաբեր ես. բայց Աստուծով՝ ես ոչ պարգևներէդ և ոչ պատիժներէդ պիտի խաբուիմ. եթէ իրաւ ինծի բարիք ընել կ՚ուզես, թող զիս ազատ՝ գիտցած և ուզած ընելու, և ընծայներդ ուրիշի պահէ. կ՚ուզես ան և իմ հայրենի Գողթան իշխանութիւնս այլ, զոր թէ ոչ դու՝ ստուգիւ մահն քիչ ատենէն ինծմէ պիտի առնու, ինչպէս քեզմէ այլ քու իշխանութիւնդ... ապա թէ ասոր չես հաւանիր, կատարէ վրաս սպառնալիքդ. ես պատրաստ եմ»։

Այլ խօսել չէր ըլլար. հրամեց ամիրապետն որ տանին զՎահան 'ի բանտ և ոտքը շղթայի անցընեն։ Երբոր տարին՝ նա ուրախութեամբ փոխանակ մէկին՝ աղաչեց որ երկու ոտքն այլ դնեն 'ի կոճեղս. ասանկ այլ ուրիշ առիթներու մէջ՝ որչափ որ դիւրութիւն կրնար ըլլար 'ի բանտին, կամ բանտապետն կ՚ուզէր շնորհել, նա կու մերժէր, և աւելի չարչարուիլը կ՚ընտրէր. որոյ վրայ զարմանալով կ՚ափշէին պահապանքն։ Եւ երբ վերջին օրը Վահան շնորհակալ ըլլալով՝ կ՚ըսէր բանտապետին, թէ ասկէ ետև պիտի ազատիս իմ վրաս աշխատութենէդ, նա գրեթէ ամըչնալով և տրտմելով պատասխանեց, թէ ի՞նչ բանի վրայ կրնաս շնորհակալ ըլլալ՝ որ և ոչ մէկ շնորհք կամ դիւրութիւն մը յանձն առիր ինծմէ։ Իսկ առաքինի վկայն՝ անոր գթասիրութիւնն այլ մեծ բարերարութիւն սեպելով՝ դարձեալ կ՚ըսէր թէ ատոր համար վարձքդ կ՚առնուս յԱստուծոյ, որովհետև անկարելի է որ ես հատուցանեմ։

Ութ օր մնաց 'ի բանտը. այն միջոցին Հեշամ արագընթաց ձիերով մարդ ղրկեց 'ի Միջագետս՝ առ Մրուան ոստիկանն Հայոց, Վահանայ վրայ տեղեկութիւն առնլու թէ ի՞նչ ըրած է 'ի Հայաստան. մեկայլ կողմանէ այլ ամեն օր գիտուն կուռաններ և գենպետներ կու խաւրէր 'ի բանտն, որ վիճէին և համոզէին և նորէն զՎահան ընէին Վահապ. իսկ անոնք շըրթունքնին խածնելով յետ կու դառնային, և կու խոստովանէին՝ որ նա մեր գիտցածը մեզմէ աւելի գիտէ. իսկ իր քովէն ըսածը՝ խօսք չէ, սուր է, դէմ կենալ չըլլար. «Չէ «ումեք լսել բան, բայց սուր՝ որ զբանից մեր «կանայ զխօսս»: Ամիրապետն չէր գիտեր նեղանա՞յ թէ զարմանայ. և կ'ապսպըրէր որ չըլլայ թէ ուրիշի այլ իմացընեն իրենց խաղքութիւնը: — Դարձան շուտով դեսպանները և Մրուանայ պատասխանը բերին, որ ստուգեր էր հաւատարիմ անձերէ, թէ Վահան իրաւ մեծատոհմ իշխան մ'էր 'ի Հայս, միանգամայն խելացի և զգաստ մարդ մը. ոչ հիւանդ և ոչ խելագար, այլ իր հայրենիքէն ելեր եկեր էր, որ ամիրապետէն հաւանութիւն առնու կամ համարձակ իր հաւատքը պաշտելու և կամ անոր վրայ մեռնելու:

Այս բանս այլ աւելի հաստատեց Հեշմայ փորձը, և աւելի փափագեցաւ ապրեցընելու այնպիսի անձ մը՝ զոր Օմար հազիւ կրցեր էր քովէն հեռացընել. և նորէն կանչելով զՎահան և աւելի կակղցած սեպելով, հարցուց թէ միտքը փոխե՞ց: Իսկ նա պատասխանեց, թէ ճշմարտութի՛ւն մէկ է, իր խօսքն այլ մէկ է: Եւ յետ երկար և կրկին կրկին փորձելու և ջանալու համոզել զնա ամեն կերպ զիջողութեամբ, տեսնելով որ Վահանայ ամեն մէկ պատասխանն իրեն յանդիմանութիւն և իրեններուն ամօթ կու բերէ, (որք և կու դժուարէին լսելու, և նշաններով կ'իմացընէին որ այլ

պէտք չէ ներել իրենց կրօնից նախատանաց) Հէ-
շամ այլ երեսին գոյնը և խօսքերը փոխեց, մատ-
նեց զՎահան արիւնկզակ դահճապետին ձեռքը:
— Բայց ինչուան ետքն այլ չկարցաւ բոլորովին
մարել գութը այնպիսի ընտիր և անպարտ դա-
տապարտելոյ մը վրայէն... ծածուկ բան մ'այլ
ըսաւ սպանչին ականջէն:..

## ԺԵ

Ոչ այնչափ մեծ ուրախութեամբ ելեր էր Վա-
հան Ամարայ առջեւէն դիմելու 'ի Գողթն և 'ի հայ-
րենիսն, որչափ Հէշմայ առենէն ելաւ դիմելու 'ի
բուն հայրենիս հոգւոյն և յանկորուստ իշխանու-
թիւն: Որչափ այլ ամիրապետին բռնած կերպն
կրնար դեռ մահուընէ ազատելու յոյս մը տալ,
ինքն իբր ապահով մարտիրոսութեանը վրայ՝ ութ-
օրեայ բանտարգելութեանը մէջ վերջին պատ-
րաստութիւններն այլ տեսեր էր. որուն ջերմ-
եռանդութիւնը լսելով Ռուծափայ Յակոբիկ ե-
րէցն՝ եկեր էր 'ի բանտը՝ բարեսիրութեամբ մխի-
թարելու զնա, և յորդորելու եկեղեցւոյ սուրբ
խորհուրդներն ընդունելու, որոց շատ փափագէր
սուրբն այլ. սակայն տարակուսելով երիցուն հա-
ւատոց դաւանութեանը վրայ ամենազգաստ վը-
կայն՝ ըսեր էր. «Իմ արեամբս մկրտեցայց, վեր-
» ջին բաժակաւս ելից յաշխարհէս»: Բանտին
վերջի օրն այլ մեծախորհուրդ օրհնեալ օրն էր,
այսինքն Ծաղկազարդի օրն. յորում ինքն այլ սի-
րով և փառաբանութեամբ յուղարկէր զտէրն յԵ-
րուսաղէմ, «ընդ տղայոն օրհնաբանելով» և ընդ
ծերոն «բարեբանելով զանմահ Թագաւորն»,
լուսածաղիկ ձիթենեօք սիրոյ և պտղափայլ ար-
մաւենեօք հաւատոց. և փափագէր որ Տէրն այլ
զինքը մտցընէ իր երկնաւոր արքունիքը: Եւ ահա

*իւրև չուառ մը խնդրանացը հասնելով՝ կ՚երթար զուարթութեամբ իր ցաւոց Ճամբան. կ՚ելնէր իր Փրկչին նման՝ (Ռուծափ) քաղքէն դուրս, փոխանակ իր գինաւէտ Գողթան՝ գտնելու զարիւնակալ Գողգոթայն. և երթալուն ատեն՝ Առ քեզ, Տէր, համբարձի զաչս իմ, սաղմոսը և անոր նմաններըը՝ բարձրաձայն կ՚ըսէր, մինչդեռ դահիճքն քովէն կ՚երթային խաչահանուաց և աւազակաց պէս, և Ռուծափայ մէջ գտուած քրիստոնէից բազմութիւնն՝ ետևէն և հեռուէն. միայն լալերնուն և վայերնուն ձայնն կու հասնէր խառնուէր սրբոյն աղօթից հետ։ Նա աւելի ուրախութեամբ և համարձակ սկսաւ գոհանալ և օրհնել զԱստուած՝ երբոր հասաւ վկայութեան տեղը, երբոր վերջին երկրաւոր քայլն այլ առաւ. և արդէն մարմինն իբր իր յետին հանգիստը գտնելով դադրեցաւ առաջ երթալէն։*

*Իսկ դահճապետն որ անդադար մրմռալով մէկ մը կու սպառնար, մէկ մը կու յորդորէր զնա յուրացութիւն, ըստ պատուիրանին Հէշմայ, հոս այլ աւելի ահարկու կերպով, միանգամայն և յուսակտուր սուրը երևցընելով՝ ըսաւ. Որովհետև մտիկ չըրիր յորդորանացս, ես այլ ամիրապետին հրամանը պիտի կատարեմ։ — Որքա՜ն ինչուան հիմայ անոր հրամանին դէմ կ՚ընէիր, պատասխանեց սուրբն. իսկ ես իմ երկնաւոր Թագաւորիս պատուիրանաց վրայ անփոփոխ և հաստատ եմ։ — Սակայն հոս դահճապետն այլ իր խալիֆային հրամանը կու կատարէր, գուցէ չուզելով այլ, բայց վախնալով անկէ. որուն ծածուկ պատուիրածն այլ հոս կատարեց... ծայրէ՚ի ծայր սուրը փայլեցընելով և գարձընելով իջուց քսեց սահեցուց ծոծրակին վրայ, և նորէն փայլատակի պէս Վահանայ աչաց առջև բերաւ... և ահա ծաւալուած երկաթոյն շրթունքն կարմրցեր էին իր*

քանի մը կաթիլ արեամբն, և ուրիշ կաթիլներ այլ վզին վրայ մանեակ մը կու ձևացընէին... Գողթան գինին այնքան չէր անուշ եկած իր շըրթանցն՝ ինչպէս այս ինքնաբուխ օշարակն, զոր իբրև նախընծայ նուէր մարտիրոսութեան կըրցաւ ինքնին մատուցանել Աստուծոյ, և իր օրով առաջ ըսածը կատարել. «վերջին բաժակս ե- » լեց յաշխարհէս»:... Ո՛վ սիրալի, այլ և սոսկալի բաժակ: —

Դահճապետն դարձեալ մէկ մը ամիրապետին պատուէրէն վախնալով, մէկ մ'այլ արեան ցայտմունքէն զզուելով, Տեսա՞ր, կանչեց. ուրեմն ի՞նչ կ'ուզես: — Վահան այլ կարուկ կերպով ըսաւ. Կատարէ կամքդ. և լռեց: Եւ թէպէտ քանի մը բան այլ զրուցեց դահիճն, ինքը պատասխան չտուաւ. ինչուան որ նա մէկ անգամ մ'այլ կրկնեց, թէ ահա վերջին վայրկեան մ'այլ քեզի, ո՛վ տառապեալ, ընտրէ զկեանք կամ զմահ: — «Ընտրեցի, կանչեց Վահան, ըզ- » մահ՝ վասն Քրիստոսի, քան զկեանս անցաւոր»: — Ուրեմն երկնցուր վիզդ, պոռաց յուսահատեալ դահճապետն. և դարձեալ փայլատական երագութեամբ իր և սրոյն պաշտօնը կատարելով, մէկէն դիւահարի պէս ցատքեց ելաւ գնաց:...

Աւագ երկուշաբթի օրը՝ միջօրէէն քանի մը ժամ ետև (ժամն իններն, յորում և Յիսուս զհոգին աւանդեց) մարտի 18ին յամին 738, և իր ծաղկեալ առոյգ կենաց 36 տարւոյն մէջ՝ կատարուեր էր մեր Հայաստանեայց և ընդհանուր սուրբ եկեղեցւոյ մեծայաղթ և մեծափառ վկայից մէկուն հանդէսն. զքանչելի և պանծալի մարտիրոսութիւն Վահանայ Գողթնեաց իշխանի:...

Սոսկում և սարսուռ դեռ պատէր զմօտաւորս, ոյք էին ամիրապետին արքունիքէն եկած պատուաւոր մարդիկ. տեսան և վկայեցին որ Վահա-

նայ արիւնն չէր տարածուեր չորս դի, այլ ամփա-
փուելով մէկտեղ կու ժողովէր. և բոլոր մարմինն
լուսոյ մէջ ընկղմած կ'երևէր. Աստուած, Աս-
տուած՝ կանչելով իրենց լեզուով, և զարմացքով
յետ դարձան պատմելու ամիրապետին, որ չկըր-
ցաւ չախրիլ. և ոչ ոք ուրիշ կիրք մ'ունեցաւ,
բայց 'ի մեծահաւատ քրիստոնէից՝ 'ի պարծանս
եկեղեցւոյ: Բոլոր գիշերը մարմինն հոն մնաց.
շունք և գազանք հեռուէն պահապանի պէս կե-
նային և զիրար վռնտէին. քրիստոնեայք փափա-
գանօք և վախով արթուն սպասէին. երկրորդ օրն
բոլոր քաղաքն և արքունիք իբրև իրենց սիրելի
անդրանիկը կորուսած տագնապէին. կամ կլի-
մայն փոխուած անսովոր ցրտութիւն մը հասած
կարծուէր, կամ ամենքն այլ իրարու յանցաւոր
և խղճահար կ'երևէին: Ինչուան որ եկաւ արքու-
նի ներքինապետն և մունետիկ կանչել տուաւ
քաղքին մէջ՝ որ քրիստոնեայք առնուն թաղեն
նահատակը. և երբ անոնք տարակուսէին թէ խա-
բէութիւն չըլլայ՝ նորէն վստահացուց, թէ վե-
րուցէք անվախ և ինչ կ'ուզէք՝ ըրէք:... Մէկէն
հոն թափեցան բոլոր քրիստոնեայք, և իրարմէ
խլելով յափշտակեցին առին բաժնեցին սրբոյն
բոլոր արիւնը և տակի հողը, զգեստները, և ինչ
որ անոր դպեր էր: Իսկ մարմնոյն ոչ ոք կու հա-
մարձակէր դպչելու. գիտէին որ անոր տէր ըլլող
պիտի ըլլայ. իսկ հիմայ հոն Հայ չկար, այլ միայն
Ասորի Նեստորական կամ Յակոբիկ, և Յոյն. ա-
պա խորհուրդ ըրին, հաւանեցան, վերուցին տա-
րին Թաղեցին Օտարաց գերեզմանատեղը, և շուտ
մը քարեր տաշելով կանգնեցին վրան քառակու-
սի կափարիչ մը. և իրարմէ զատուելով, բայց
միշտ կասկածելով, գնացին տեղերնին:

Այլ չերկընցընեմ խօսքս. Թէոփիլէ անուամբ
Յոյն մը կար ամիրապետաց ծառայութեան մէջ,

և անոնցմէ Էպու Ստեփան կոչուէր. չորս մար-գով եկաւ հանեց մարմինը՝ տապանի մէջ դրաւ. տարաւ իր տունը. բայց նոյն գիշերը եպիսկոպոսի մը յայտնուեցաւ երազին. և թէպէտ առջի բե-րան ձայն հանեցին թէ վաճառականք գողցեր և Գալլպէքի ճամբով 'ի սուրբ երկիրը տարեր են, բայց սրբոյն մարմնոյն եղած տեղը, ինչպէս նաև նահատակութեան տեղն այլ՝ օրէ օր հրաշքներ և բժշկութիւններ ըլլալով՝ իմացուեցաւ երազին. և ամփոփուեցան յայտնապէս մատուռ մը շինել վը-կայութեան տեղը. և դեռ չլմընցած՝ ձեռք զար-կին մեծ և փառաւոր եկեղեցի մ'այլ շինելու. բայց մարմինը մատրան մէջ հանգուցին, և կու պատուէին համարձակ և հաւասար Ս. Սարգսի (ընկերին Բաքոսի), որոյ արդէն հին վկայարան և ուխտատեղի մը կար հոն, և անոր պատճառաւ Սերգիոպոլիս այլ կ'ըսուէր Ռուծափ:

## ԺԶ

Ս. Վահանայ նահատակութենէն եօթն տարի ետև՝ եկաւ իր վերջին հիւրընկալ մտերիմ և վա-նահայրն, Արտաւազդ, քանի մը միաբանով. ըն-կաւ, լացաւ համբուրեց իր յուսագրեալ սրբոյն գերեզմանը. բոլոր լսող և տեսող վկայները փնտա-ռեց, հարցուց անոր նահատակութեանը վրայ. ևս առաւել տեղեկացաւ Թէոփիլէէն, որ և յու-նարէն գրեց տուաւ իր գիտցածը. զոր 'ի դար-ձին՝ հայրն Արտաւազդ Ուռհայի եպիսկոպոսին ձեռքով հայերէն թարգմանել տուաւ: Յետոյ դառնալով իր տեղը՝ յաջորդ տարին (746) ձեռք զարկաւ և գեղեցիկ և երկար ոճով գրեց Վահա-նայ վկայաբանութիւնը, այրած սրտով մը ողբի պէս սկսանելով, և կրակի տարւոյն դէպքը կրա-կէ տառերով շարելով. դեռ անկէ առջի գիտուած-

նէրն այլ կարգաւ 'ի մէջ բերելով, որ ետեւի եղածին պատճառն եւ սկիզբն աղէկ իմացուի. եւ Թողուց մեր պատմութեան եւ դպրութեան սրտառուչ եւ վայելուչ աւանդ մը, զոր 'ի յիշատակ Վահանայ Թողուած կայծակներէն մէկն անուանեցի քեզ, Հայկակ, 'ի սկզբան խօսիցս. եւ որ՝ ինչպէս հաւանական է, գեռ շատ համառօտած հասած է մեր ձեռքը. եւ Թէպէտ հին Ճառընտրաց մէջ այլ երկու տեսակ[1] գտած եմք, մէկն քան զմէկայլն կիսով չափ մ'երկայն, մանրամասն եւ ստուգագոյն. բայց ինձ Թուի Թէ սկզբնագիրն աւելի երկարապատում էր: Ճառընտիրք միայն Վահանայ վկայաբանութիւնը կ'ուզեն աւանդել մեզի, իրենց համար աւելորդ են առջի պատմածներն, այն՝ որոյ համար կ'ըսէ վիպասանն իր վերջաբանին մէջ. «Սկսայ պատմագրել՝ սկիզբն առ-
» նելով ուստի արժանն էր. 'ի նոյն յարելով ըզ-
» վկայութիւն սրբոյն Վահանայ վկային». եւ Թէ մեզի հասած վկայաբանութեան սկիզբն այլ կան կրակին պատմութիւնն եւ ողբքն, բայց համառօտեալ. եւ երկու օրինակաց խօսքերն երբեմն իրարմէ տարբեր եւ մէկմէկու լրացուցիչ կ'երեւին, միանգամայն աւելի մեծ լրութիւն մը գուշակել տան: Ի վերայ այսր ամենայնի՝ անգամ մ'այլ կրկնեմ քեզ, Հայկակ, որ այս Ողբոց եւ Վիպասանութեանն՝ որոյ ընտիր ընտիր զրուցուածքը ջանացի խառնել իմ խօսիցս մէջ, մեր մատենագրութեան եւ հայրենի յիշատակաց ցանկալի եւ պանծալի հատ մ'է. եւ Թէպէտ Խորենացւոյ եւ Եղիշէի պատմութեանց վերջաբաններէն ետեւ ինչուան ցԱրտաւազդ՝ ոչ ոք այնպիսի սրտառուչ գրուած մը Թողեր եւ հասուցեր էր մեզի. գուցէ եւ ոչ ոք

1 Երկուքն այլ հրատարակուած է 'ի ԺԳ հատոր Սոփերաց, տպագրեալ յամի 1854 'ի Ս. Ղազար:

անկէ եւս այլ: — Աւելորդ է ինծի հոս քննել կամ յերկարել այս գրուածոյս յարգը, որ Թե-րեւս ոչ մէկ ուրիշէ մը կրնայ նուազիլ կամ հակա-ռակիլ կամ բաղդատիլ, բաց 'ի մէկ կարճիկ փոք-րիկ գրուածէ մը 'ի նոյն ինքն 'ի Ս. Վահան, որ և խօսքիս սկզբան ակնարկած անոր երկու կայ-ծակնափայլ յիշատակաց մէկայլն է. հինգ տուն շարականն Վահանայ Գողթնացւոյն. ցանկալի միացուած նախնեաց, ծնունդ չքնաղ մտաց և սրտի. չքնա-ղագոյն ևս եղած աւանդութեամբն, որով պէտք է ես այլ այս երկարեալ հայրենաբանութիւնս աւարտեմ:

## ԺԷ

Անկարելի է ինչպէս քեզի և ինծի՝ այսպէս ա-մէն ազգայնոյ և զգայնոյ, Վահանայ վերջին տասն տարուան պանդխտութիւնը և սրտակտուր մա-հը դիտելէն ետև, չզգանալ մէկ մ'այլ 'ի Գողթն և 'ի Սիւնիս, տեսնելու Թէ ի՞նչ կ'ընեն ի՞նչ կ'ըլ-լան Խոսրովիդուխտ և Սիսակուհի բամբիշն Գող-Թան, քոյրն և ամուսինն Վահանայ: — Պատ-մութիւնն՝ կա՛մ անկարող անոնց խոր և խառն սուգը բացատրելու, կամ անփոյթ՝ գլխաւոր հան-դիսէն վերջը մասնաւոր տեսարան մը բանալու՝ կու լռէ բոլորովին, կարդացողին Թողլով գուշա-կել՝ իր սրտին Թելադրութեամբ: Եւ ահա մեր նախածանօԹ աւանդութիւնն չի Թողուր այսքան ողբերգելի և աննման վկայի մը (Վահանայ ԳողԹ-նացւոյն) յիշատակը՝ սովորական լռութեան մէջ Թաղել. և դիմացնիս կու ցոլացընէ այդ վերջի յի-շած կայծակս (շարականը). որ ոչ Աքրահա-մեանն Արտաւազդայ, ոչ Յովհաննու և ոչ հա-րանց հօր Սողոմոնի գրչէն ճայԹած է, այլ ինք-նայայտ է որ տարբեր սրտի և տարբեր սեւի ար-

տադրութիւն մ՚է, որուն ոչ նմանն ունիմք և ոչ
նմանցընողը․ Հայ Պինդար մը չէ սոր երգիչն,
այլ հայկուհի Սափփոյ մը, որ և կրնայ այս հել-
լենուհւոյս հետ մրցիլ, և սրբազան զգացմամբքն
յաղթել անոր հասարակ զգացմանցը․ արդէն իսկ
յաղթանակած է անոր և նմանեացը՝ երբ ըսեր
է․ «Արտաքնոցն զգաստքն՝ ստեղծիչ բանք սնո-
» տեացն 'ի պատրութիւն․ իսկ փոյթ սիրայնոյ՝ աս-
» տուածարեալ և ոգեշահ․ ո՛վ երանելի Տէր Վա-
» հան»։ Այս ոճով հինգ կարճ տուն բանի մէջ՝
սրբասէր սրտի և հոգւոյ սաստկագոյն կիրքը հա-
ւասար կու բացատրէ, առանց մէկը մէկայլին ար-
գելք ընելու։

Հոս արդարև Գողթան գաղտնի և նուաղեալ
բամբիռն՝ իբրև իր զմայլեցուցիչ գինւոյն երկար
թմբրութիւնը թօթափելով՝ կու մրցի և կու
խառնուի Սիոնի աստուածերգակ քնարին հետ,
և սով՝ իր հնացեալ և մահալըլուկ ձայնը ան-
մահ կու թողու յառագաստի հայ եկեղեցւոյ։ Եւ
ինչպէս 'ի հնումն Կարմիր ծովուն հրաշալի անց-
քը հրաշափառապէս նկարագրող երգը, թէ և
'ի Մովսէսէ արտադրեալ, բայց իր քոյրն՝ թըմբ-
կուհին Մարիամ էր՝ որ կուսանաց և կանանց
պարագլուխ եղած՝ կրկնելով և կրկներգելով ան-
լռելի ըրաւ, և հասուց ինչուան մեր սուրբ տա-
ճարաց, «Օրհնեսցուք զՏէր, զի փառօք է փա-
» ռաւորեալ․ զերիվարս և զհեծեալս ընկէց 'ի
» ծով»․ այսպէս և հոս Հայկուհի մը և քոյր մը,
աւելի սրտահար քան թմբկահար և բամբռա-
հար, Գողթնացւոյն մեծ և արժանաւոր դի-
պուածը յաւերժայիշատակ ըրաւ․ առաւելեալ
քան զՄարիամն այն, վասն զի մերս ինքնին էր
երգոյն հեղինակ։ — Այս պարառաջս մերազ-
նեայ կուսանաց և կանանց, անհամեմատ երգիչս
Հայկուհի, որոյ 1100 և աւելի ամաց հնութիւնն՝

կ՚աւելցընէ իր վրայ յաւերժահարսնեայ շնորհք մ՚այլ, եթէ չտեսաւ Կարմիր և կծու ծովու մը պատառուածք, և անոր մշտաթաց ճամբէն՝ ցամաք և հետևակ անցք 600,000 մարդկան և այլ աւելի բազմութեան կանանց և մանկանց, և ոչ անոնց ետևէն սպառազէն գնդից և գերանդաւորէն կառաց խառն՚ի խուռն հրոսակ մը, որ յանկարծ՝ նորէն իր բիւրեղէն պարիսպները փլցընելով փրփրացեալ ծովուն ալեաց մէջ ծփեցան և ծածկեցան, և պատառ պատառ նորէն կարկըռած հաւասարած ջրոց երեսը ցրուեցան. — եթէ այսպիսի ծովու անցք մը չտեսաւ կ՚ըսեմ՝ մեր Հայկուհի գերագոյն գուսանն, սակայն տեսաւ ՚ի տղայութեանն՝ Նախճաւանի և Հռամի հրեղէն և օդային ալիքն և համաշխարհական օգոյ արտասուաց ծովը, և անոնց միջէն մէկ մը ճողոպրած, իրեն Սիրայինը, Վահան Գողթնեաց իշխեցողը. մէկ մը զնոյն իր հայրենի տէրական գահուն վրայ բարձրացեալ փառօք, մէկ մ՚այլ ՚ի խորս անապատից և մենաստանաց ճգնաւորեալ ապաշխարութեան ողբովք, և յետոյ ինքնակամ նահատակութեամբ թաթաւեալ արեանը մէջ. — արիւն մը, որոյ համատարր վտակն էր զինքն իսկ (զերգիչն այլ) կենդանացնողն. — հարազատ արիւն մը՝ մէկ աղբերէ յերկուս բաժանեալ, յեղբայրն՝ ՚ի վկայն Վահան, և ՚ի քոյրն՝ ՚ի վկայերգակն Խոսրովիդուխտ: Սա ինքն է աւանդութեամբ վկայեալ և սքանչանեալ երգուհիս մեր. զոր թէ և նա (աւանդութիւնն) լռէր՝ հարկ էր մեզի կարծել՝ կամ Վահանայ անտարակոյս սերողը, այսինքն, իրեն հարանացեալ Սիւնեաց օրիորդը, և կամ անոնց երկուքին ժամանակակից և վկայուած մեծանուն Հայ երգուհի մ՚այլ, որ քեզ այլ, Հայկակ, անծանօթ չէ, Սահակադուխտն այն՝ քոյր Ստեփաննոսի Սիւնեցւոյ, (որոյ եղերական վախճանն, ինչպէս որ քեզ պատ-

մեր եմ[1], եղաւ Վահանայ ճգնութեանց տարիներուն մէջ։)

Արդ այս Վահանայ սիրոյն նըբաղդած մելամաղձիկ մեղրամաղձիկ երգուհիս էր՝ որ անոր ամեն դիպուածներէն և գործերէն աւելի՝ կու զմայլէր կու զգար անոր բռնած զարմանալի ճգնող և ապաշխարող վարուցը վրայ։ Ինքն որ թուի թէ 'ի բնուստ և յարուեստէ վարժած՝ սիրէր զերգս և զերաժիշտս, անոնց ամեն նուագներէն աւելի զարմանալի և խորազգու կու գտնէր Վահանայ ողբերն ու հառաչանքը․ «Զարմանալի է ինձ քան » զերգս երաժշտականաց ձայնս՝ ողբոց քոց հեծեմունք»։ Եւ անոր համար աւելի զարմանալի էր՝ որ երբ ուրիշ ողբական երգ կամ նուագ լսէր՝ իրեն այլ ողբերգութեան յորդոր կու տար․ իսկ երբ Վահանայ ողբերը լսէր՝ սրտէն անդին մինչև 'ի հոգին կ'անցնէին․ անակնկալ կիրք մը կ'ազդէին, նորօրինակ ուրախութիւն մը, որ զինքը կու շարժէր երգախառն հրճուանօք երգելու․ «Առաւել » յորդորէ այս զհոգւոյս մասունս, յօրինել քեզ » երգս ոչ զղջականս, այլ հոգևորս և ուրախա- » րարս, յորդորականս և ներբողեանս»։ — Նաև գովելի և գեղեցիկ յատկութիւններ տեսեր էր Վահանայ վրայ, շատ ձիրք, շատ վայելչութիւն, մեծոգիութիւն և արիութիւն, բայց անոր ըրած ճգնութիւնքն իր ծաղկեալ հասակին մէջ, և ամենէն աղւոր, կրնամ ըսել թէ և անպարտ ճըգնութիւնք՝ որ զճգնաւորս կ'ապշեցընէին, բոլոր մարդուս բնութեան անգամ զարմանք և զարհուրանք բերէին․ իսկ անանկ պայազատ և բաղդայաջող մարդու մը՝ նա և բնութենէ վեր կ'երևէին․ «Զարհուրեցուցանէ քո ճգնութիւնդ զմարմնոյս » բնութիւնն․ իսկ դու՝ առաւել գտար»։ — Զա-

1 Տես Ա. Հատոր, 270։

սոնք (Վահանայ ձիրքերը և գործերը) ստանելով, եթէ առջի բերան կու զարհուրեր երգուհին, ապա հիանայր, զմայլէր, և սիրէր. բայց սիրեր սովորական սիրոյ վեր սիրով մը. կրնար ինքն այլ իր հին հայրենի գուսանաց նման փորձ մը փորձել, քիչ մը ձնշելով իր գինաւէտ Գողթան ըմբերանեալ բամբիռը՝ վառվռուն երևակայութեամբ և այլաբանութեամբ վիպասանել իր վեհազն սիրելին: Սակայն հոս բոլոր արտաքին բանաստեղծից արուեստք և հնարք՝ սնոտի և սուտ, անօգուտ և անպիտան կ'երևէին նկատմամբ Վահանայ առաքինի գործոց և իր (երգչին) զգացմանցը. «Արտաքնոցն զգաստքն՝ ստեղծիչ բանք սնոտեացն 'ի պատրութիւն», և այլն: — Անոնց գովասանած մեծագոյն գործերն շատ հեղ ինչ են, բայց եթէ դիւցազն ըսուած յանդուգն և ուժով (և երբեմն մոլի) մարդու մը ըմբշամարտութիւն. կամ յափշտակութիւն կնոջ մը կամ քաղաքի մը. կամ մեծաբանակ պատերազմի մը յաղթութիւն, որ դաշտին մէջ անբաւ արիւն թափել կու տայ, ընտանեաց մէջ՝ աւելի շատ արտասունք այրիացելոց և որբացելոց. իսկ դու մեր սրբազան դիւցազն, դու ոչ այնպէս. այլ «Որպէս զքաջ նահատակ պատրաստեալ 'ի պատերազմ, կատարեցեր զընթացս քո արիաբար, յազգացն Հարաւայնոյ. դասաւորեալ ընդ անմարմնականսն, ով երանելի տէր Վահան, Գողթնեացն իշխեցող»:

Երգոյն այս եօթի տունն, որ զհոգի վեհազինն դասաւորէ ընդ անմարմնականս, լաւելու տեղը՝ կու յայտնէ անոր դասն այլ 'ի մէջ մարմնեղինացս: Առաջին տանց վերջը՝ միշտ կրկնելով ով Երանելի տէր Վահանը, մէկ մէկ մակդիր կ'ընծայէ, կարգաւ բարձրացընելով կամ զատելով անոր աստիճանը. նախ՝ Ընտրեալ յԱստուծոյ, իբրև կո[illegible] 'ի նշանաւոր կեանս և 'ի գործ. ապա՝ Ծո-

տոյ Քրիստափոր, եռանդուն հաւատարմութեանն համար 'ի հաւատսն Քրիստոսի. յետոյ՝ Սերոբ Քրիստափոր, մասնաւոր ջանքով և բոլորովիմբ նուիրմանն համար 'ի խաչակցութիւն Փրկչին. եւքը՝ Ընդրէաս յողոփոց, իմացընելով անոր բարձր ցեղը՝ նաև 'ի մէջ ազնուաց երկրի, որոյ փառքն և փափկութիւնն արհամարհեց վասն սիրոյն Քրիստոսի. իսկ հուսկ յետոյ անոր սեփական պայազատութիւն այլ նշանակելով, Գողթնեցոյն Ներսեսով: Իսկ այգ հայրենի գաւառին և տոհմին անուան ծայրը անսովոր ոճով և գրեթէ ներշնչմամբ մ'աւելցընելով Ն տառ մը, կարծես թէ մէկ կողմէն իր գեղեցիկ հայկական (Վահան) անուանէն կողոպտածին և տանջկացեալ Վահանին վրէժը կու խնդրէ, մէկ այլ կողմէն այլ գրեթէ անբացատրելի վսեմութիւն մը՝ ոյժ մը աւելցընելով՝ արթընցընել կու տայ 'ի հայրենասէր սիրտս՝ զբոլոր հինաւուրց յիշատակս գինաւէտ, երգաւէտ և քաջաւէտն Գողթան: —

Եւ այսպէս, եթէ Հօր Արտաւազդայ մը գրած Վկայաբանութիւնն բաւական էր մեզի սիրելի և պաշտելի ընելու զՎահան Գողթնացի, իր Շարականն անհամեմատ առաւելութեամբ մ'այլ սխրալի և պարծելի կ'ընէ թէ զերգեալն և թէ զերգիչն: . . .

Այսպիսի մէկ մը և ասոր նման մ'ունենալով՝ կրնաս և դու, ով մթացեալ Հայաստան, հայրենիք իմ, կրնաս և դու չամաչել և չնախանձիլ ո՛ և է ազգի զինմաց. կրնաս յայսմ մասին և գերափառ Յունաստանի մը հետ մրցիլ. և կրնաս թողուլ՝ որ անոր համբաւեալ տասներորդ մուզայն[1] իր ծղեբոյն ծլիքը խածնելով երթայ գահավիժի Լևկադեան դարերէն վար, երբ յերևան ելնեն 'ի սարակս Սիւնեաց՝ մեր յիսուսոգի մուզայքն՝ Սահա-

1 Այսպէս կ'անուանէր Պղատոն զՍապփոյ :

Չոդոսխոփ և Թոսրոմնդոսխոփ։ — Այսօր հրաշահիւս շարականովը՝ կրնաս դու այլ փառաւորապէս քու հնապանձ երգերուդ վրայ դադրիլ և լռել, ով պանծալի բամբիռն Գողթան։ Անիկայ բաւական է՝ քեզի անլռելի արձագանգ մ'ըլլալու, մեզի՝ մշտանջենաւոր մխիթարանք մը, և երկրաւոր անմահութիւն մը՝ անմահից դասակցեալ ՎԱՀԱՆԱՑ ԳՈՂԹՆԱՑԻՈՑՆ։

---

# ԻԱ

# ԱՏՏԻԿԵԱՆ ՄԵՂՈՒ Ի ՁԻՒՆԵՂԷՆ ԼԵՐԻՆՍ ՀԱՅՈՑ

*Նոյեմբ. Դեկտ. 401 ամ. Ն. Ք.*

## Ա

Մէգն երբեւ թաց վարագուրաւ մը կու ծածկէ աչքերնէս աշնան վերջին տեսարաններն այլ. եղեամն՝ թափթըփած տերևոց վըրայ՝ ձմեռուան սառամանեաց կանխիկ մանրանկար մը կու ցուցընէ. գիւղերն դարձեալ յանապատ կու փոխուին. ըզբօսասէրք կու դառնան 'ի քաղաք՝ 'ի պատսպարեալ բնակարանս: Արդէն անասուն կենդանիք այլ իրենց ճարը տեսած են. որն չուելով ընդ օդ և ընդ ջուր 'ի հեռաւոր և տաքուկ բոյներ, որն ամուր ապահով ծակ մը, փոս մը, խոռոչ մը փնտռելով և ներս քաշուելով: Ծաղկատարփ մեղուն այլ իր փեթակը փակեր մեղրով մոմով, ներանձնացեր իր վեցանկիւն սենեկաց մէջ, կու ըզմայլի և կու թմրի իր հնարած անուշակ փիլիսոփայութեամբը, որ աւելի իրական է (գոնէ իրեն և ոմանց համար) քան Սոկրատայ քանի մ'աշակերտացը, որք առաջին իմաստասէրք կամ բանաւոր մեղուք անուանեցան, թէ զանազան գիտե-

լեօք շարադրած գրոցն համար, և թէ քաղցրախօս ու հեշտալուր ոճով ու բառով գրելնուն: Իրենց գեղեցկաբան կամ գեղեցկագիւտ աշակերտաներն այլ ճարտարեցին ըսել իրենց ամենէն վայելչաբան և սիրելի փիլիսոփային համար (Պղատոնի), թէ 'ի տղայութեան կռնակին վրայ բերանաբաց պառկած ատեն՝ մեղուաց պար մը մտաւ շրթանցը մէջ ու խորխսխ շինեց, 'ի նշան իր ճարտարասան քաղցրախօսիկ լեզուին: Անոր մէկ մեծ աշակերտակիցն և հայրենակիցն այլ՝ իր կակուղ գրչին և պաճուճազարդ բանիցն համար՝ Ատտիկէան մեղու անուանեցին. որ և ոչ միայն մեղուի փափուկ ալփերուն մեղրն ունէր, այլ և ըստ տեղւոյն անոր սուր խայթոցն այլ, — զէնք. — և գրեթէ հարիւրամեան կենաց մէկ մասն 'ի բանակս և 'ի մրցանս անցուց, մէկայլն 'ի գրուածս և 'ի խօսուածս բանասիրականս. այն զարմանալի մարեխածին Մեղուն, (Կրիւլլոսի որդի) Քսենոփոն. զոր այս օրերուս հայացուցակն հրաւիրէ տեսնել մեր հայրենեաց սառնամած լերանց վրայ: Արդարև պիտի զարմանայիր, Հայկակ, եթէ լսէիր թէ Աթէնքի հիւմեգեան մեղուն՝ այս անյարմար և տարաժամ եղանակիս՝ եկեր Կորդուաց խորթ ու խրթին ժայռից և սառից վրայ կու բզզայ. այլ թերևս ոչ պակաս զարմանալի ըլլայ՝ անոր մեղրը ճաշակող փափկաբարոյ փիլիսոփայ մ'այլ տեսնել այն անկոխ քարակոհակաց մէջ՝ այսպիսի ատեն մը:

Տասն անկարծ և կամ անբնական տեղափոխութեանց և հեռագնացութեանց՝ գլխաւոր (թէ և դժնդակ) պատճառաց մէկն՝ եղած է մարդկան իրարու հակառակութիւնն, պատերազմք. որք ինչպէս շատ հեղ անբաւ չարեաց՝ երբեմն այլ բարեաց ինչ առիթք եղած են. այսպիսի պատճառաւ մը Քսենոփոն այլ ընկաւ Հայոց ժայռուտ

ու սառնուտ լերանց վրայ, յառաջ քան զայլ բազմամթիւ մեծամեծ զօրավարս, որք գրեթէ ամեն դար՝ ամեն տասն-ամ անցան ու դարձան մեր աշխարհէն լեռներէն ու հովիտներէն. Ձիւներն անգամ հալեցընելով իրենց նմանեաց արեամբը: Սակայն Քսենոփոն՝ ոչ իբրև Աննիբաղն յԱլպեայս՝ կ'ելնէր կ'իջնէր ընդ բազմաժայռ Կորճայս, ոխերիմ թշնամւոյ հետ կռուելու և երկիրը աւրելու, և ոչ Լուկուլլեայ և Պոմպէի նման՝ Տիգրանայ և Միհրդատայ դէմ կ'երթար վրէժխնդրութեամբ, այլ ակամայ՝ կորիճ բայց դժբաղդ բանակի մը մէջ գտուած, բազմազօր և նենգաւոր թշնամիէն հալածուելով՝ անփորձ և անկոխ ճամբէ կու ջանար 'ի հայրենիս դառնալ և դարձընել տասն հազարի չափ Յոյներ. և ասոր համար այս գործս ըստուեցաւ Նահանջ Բիւրուն Յունաց, և անմահ յիշատակ բռնեց պատմութեան մէջ. Նոյն իսկ Քսենոփոնի ճարտար առաջնորդութեամբն և ճարտարագոյն գրչութեամբ դիպուածոց, որ և իր գըրուածոց գլխաւորներէն մէկն է: Այնչափ աւելի պատուական եղած է այս պատմութիւնս՝ որչափ որ կորսուած են ուրիշներուն գրուածքը նոյն գործոյ վրայօք. որոցմէ էր իր ընկերակից և զօրաց վարիչներէն մէկն՝ Սոփենետ Ստիւմփալացի. յորմէ կ'երևի թէ Դիոդոր Սիկիլիացի առած է այս պատմութեանս մէջ այն դիպուածները կամ մանր տարբերութիւնները՝ որք չեն յիշուիր 'ի Քսենոփոնէ:

Իսկ մեզի գալով, Հայկակ, մեր ազգին և աշխարհին, Քսենոփոնի այս գրուածը ինչպէս նաև Կիւրոպէդիան ըսուածն, յետ Յունաց՝ ամենէն աւելի մեզի Հայոցս պիտուական և սիրելի է. ոչ միայն զի մեր աշխարհին վրայ այլ կու խօսի պատմութեանցը մէջ, այլ զի յետ Յունաց՝ Քսենոփոնի յիշած այնքան ազգաց և ժողովրդոց մէջ՝ գրեթէ

միայն Հայք են՝ որք կարենան աւելի խորհրդածել և քննել անոր ըսածները։ Այս դիտմամբ ես այլ այսօր քեզի հետ ոչ Քսենոփոնի վարքը գործքերը և գրքերը կ'ուզեմ քննել, և ոչ այն Բիւրուն նահանջը չափել ծայրէ ծայր, այլ միայն մեր աշխարհէն անցնելուն դիպուածը և ճամբան։ Բայց որովհետև առանց երկու ծայրի՝ մէջ չըլլար, հարկ կ'ըլլայ գոնէ համառօտիւ յիշել և իրաց պատճառը, սկիզբն և վերջն այլ։

## Բ

Պատերազմն 'ի բնէ պժգալի՝ այլ աւելի է երբ ընտանեկան կամ քաղաքական ըլլայ. այսպիսի էր նախապատճառ մեր այս դիպուածին այլ. երկու Պարսիկ արքայորդի եղբարց մէջ ծագած հակառակութեամբ։ Յայտ է քեզի, որ արքայազն եղբարց հակառակութիւնն այլ շատ հեղ ժառանգութեան իրաւանց կամ խնդրոց համար կ'ըլլայ։ Արտաշէս Բ, պայազատ Պարսից Աքեմենեայց, իբրև անդրանիկ որդի Դարեհի Նոթոսի՝ յաջորդեց անոր յամի 404 նախ քան զԹուական Փրկչին, իր հօր Թագաւորութենէն առաջ ծնած ըլլալով. իսկ անոր Թագաւորութեան ատեն ծնաւ Կիւրոս Կրտսեր ուրիշ դշխոյէ մը։ Յայտնի է կանանց նախանձն այլ՝ ուր բազմակնութիւն կայ, և ջանքն՝ իրենց զաւակները վեր քշելու. մանաւանդ երբ Պարիսատիսի պէս գոռոզ դշխոյէ մը ծիրանածին ընծայուէր Կիւրոսի պէս կարիճ կորիւն մը, գրեթէ անտարակոյս էր ծագելի կռիւն։ Սակայն Արտաշէս՝ Ուշէղ էր և կ'անուանէր (Մնէմոն 'ի Յունաց), միանգամայն և նախատես և մեծոգի. ոչ զեղբայրն ուզեց զրկել և ոչ ինք զինքը. այլ իբրև իրեն երեսփոխան գրաւ զանիկայ և վերատեսուչ ամենայն նախարարաց իր ինքնակալութեա-

նը արեւմտակողման, եւ աթոռն այլ գնել տուաւ 'ի Սարգիկէ մայրաքաղաք Միւզիոյ, քիչ հեռու եւ յարեւելից Զմիւռնիոյ. այսպէս մինչեւ 'ի ծայր արեւմտից հեռացընելով զնա՝ ամսօրեայ ճամբաներով իր արեւելեան գահէն (իբրեւ 20 աստիճան աշխարհագրական երկարութեան իրարմէ հեռու):

Կիւրոս իր եռանդուն բնաւորութեամբն եւ Յունաց մերձաւորութեամբ եւ ընտանութեամբ՝ անանկ լաւ կարգաւորեց իր իշխանութիւնն եւ արքունիքը, որ նոյն իսկ Յունաց նախանձելի եւ պատուելի կ'ըլլար, եթէ չափազանցութեամբ եւ կողմնասիրութեամբ չէ ատոնց պատմածն. բայց իր ամէն ցուցած եւ յուսացուցած գործերը սեւցուց, փճացուց իր կենաց հետ՝ անսանձ փառասիրութիւնն, որով կ'ուզէր միահեծան ինքնակալ ըլլալ, նաեւ զեղբայրը զրկելով: Գաղտուկ պատրաստութիւն տեսաւ, զօրք ժողվեց ցամաքի եւ ծովու. օգնութիւն ուզեց 'ի Յունաց այլ, որոց վրայ մեծ համարմունք եւ վստահութիւն ունէր: Յոյնք, եւ մանաւանդ Սպարտացիք՝ իրեն երախտապարտ էին, իրենց անկէ առած օգնութեանն համար. եւ առանց տնտընալու խաւրեցին անոր Կղէարքոս լակեդեմոնացին, պզտի բայց ընտիր գնդով մը. որուն հետ միացան ուրիշ Յունաց մանր տէրութիւններէն այլ շատ զօրք՝ իւրաքանչիւր զօրավարօք, բոլորն իբրեւ 16000 հոգի: Ընդհանուր զօրապետնին եղաւ նոյն Սպարտացին. իսկ առանձին ազգաց մէջ՝ Բէովտացւոց զօրավարն էր Պրոքսէն Թեբացին, որուն մտերիմ բարեկամն էր մեր ատտիկեցի իմաստասէր մեղուն՝ Քսենոփոն, որ այս ատեն 50 կամ 55 ամեայ մ'էր: Արդէն երիտասարդութեան ատեն պատերազմի մէջ մտած ելած, հիմայ հասակին եւ ուսմանց ազդեցութեամբ՝ աւելի խաղաղութիւն եւ մեղր սիրէր

քան կռիւ և արիւն. անոր համար՝ ոչ իբրև մարտիկ և նիզակակից, այլ իբրև սրտակից ընկերացաւ Պրոքսենի. միանգամայն և իբրև բանասէր՝ նոր երկիր, նոր ազգ և դէպք տեսնելու քննելու. մանաւանդ որ 'ի սկզբան ոչ ինքն և ոչ այլ զօրավարք գիտէին ուր և ի՛նչ բանի համար երթալնին. վասն զի Կիւրոս խաբելով կ'ըսէր, թէ իրմէ ապըստամբած Ասորւոց դէմ կ'երթայ: Ասանկով ժողվեց զամէնքն 'ի Տարսոն մայրաքաղաք Կիւլիկիոյ, 'ի սկիզբն յունիսի (401 տարւոյն), մտաւ յԱսորիս, տարաւ բանակը մինչև յԵփրատ, անցուց անդին ('ի սկիզբն օգոստոսի), և պաշարաբեր նաւերը յետ դարձուց: Ապա քիչ քիչ իր մեծերէն սկսեալ՝ ինչուան վարիններուն իմացուց միտքը. զոր ոմանք յօժարութեամբ ոմանք դժարութ̅բ յանձն առին, յուսալով իր խոստմանց և բաղձին այլ:

Ուշանալ չէր ըլլար. սակայն Միջագետաց չէն և անշէն ընդարձակութիւնը կտրելու համար այլ մինչ 'ի սահմանս Բաբելոնի՝ ամիս մը պէտք եղաւ: Ա՛յն միջոցին Արտաշէս այլ իմանալով եղածը՝ պատրաստեցաւ արևելեան զօրօք մեծ բազմութեամբ՝ եղբօրը դէմ ելնելու: Սա աւելի շուտով հասաւ Եփրատայ և Տիգրիսի ամէնէն իրարու մօտ եղած տեղերը, որ հին Բաբելոնի մօտերն է. և հոն Կունաքսա անուանեալ աւանի մը մօտ, որոյ դիրքն շատ յայտնի չէ, (յեօթն սեպտեմբերի) եղաւ հին պատմութեան մէջ անուանի և բաղդասահման պատերազմաց մէկն, որ մեր այս երեկոյեան զրոյցներէն դուրս կու մնայ: Այլ այսչափ ըսելի է, որ երկու կողմէն այլ կրքով և կորովութեամբ կռուեցան. իրաւունքն յաղթող եղաւ. Կիւրոս ոչ միայն անձամբ հասարակ զինուորի պէս կու կռուէր, այլ և եղբօրը հետ զարնուե-[illegible] վիրաւորեց զնա. բայց մեռնողն ինքն ե-

ղաւ, ըստ ոմանց 'ի նոյն ինքն յԱրտաշիսէ զար-նուած: Կենացն հետ վերջացաւ պատերազմն, և ցրուեցաւ արևմտեան բանակն:

## Գ

Կիւրոսի ասիական գունդերն նուաճուեցան օ-րինաւոր իշխանութեան. իսկ Ցոյնք՝ որոցմէ քիչ մարդ ինկեր էր պատերազմին մէջ, անկէ շատ ա-ւելի դժար փորձանքի բռնուեցան: Արտաշէս ի-րենց պատգամ խաւրեց որ զէնքերնին թողուն, ու իրմէ ուրիշ փոխարէն առնըլով ազատ մնան կամ երթան. Ցոյնք պատասխանեցին, թէ քանի որ զէնք ունիմք՝ անոնք մեզի բանի կու գան, ա-ռանց զէնքի մենք այլ կրնանք բանի չգալ. չեմք ուզեր մեր ստոյգ օգուտը՝ Արտաշիսի անստոյգ վարձուց հետ փոխել. և եթէ կ'ուզէ Արտաշէս փորձել զէնքերնուս արուեստը՝ պատրաստ եմք: Հարկ եղաւ որ առանց կռուի զիջանի թագա-ւորն՝ թողլու զանոնք երթալ իրենց երկիրը, միայն թէ անցած տեղերնուն վնաս չընեն: — Այս այլ չէր անվայել Արտաշիսի ուշեղութեանը. բայց դժբաղդաբար շատ հեղ շատ ուշիմ թագա-ւորք և անթագ իշխանական գլուխք՝ ուշաթափ կ'ըլլան իրենց պաշտօնէից անարժան թելադրու-թեամբք. այսպէս այլ եղաւ Արտաշիսի: Հաւա-նեցաւ իր՝ սիրելի Տիսափեռն մեծ նախարարին խրատուն, գաւելու զՑոյնս. զոր և գործով կա-տարեց անխիղճ խրատտուն, հրաւիրելով զգլխա-ւոր զօրապետս Ցունաց իրեն վրանը, իբրև 'ի խորհրդակցութիւն և դաշնակցութիւն. և զա-մենքն այլ (տասնումէկ հոգի) սպաննել տուաւ, Կլէարքոսէն սկսեալ մինչև 'ի Պրոքսեն բարեկամն Քսենոփոնի: Երկրորդական զօրավարքն զոյժը լսելով փութացան հեռանալու, և իրենց առաջ-

նորդ ընտրեցին Քիրիսոփ Սպարտացին. իսկ վերջապահ բանակին՝ զմերս Քսենոփոն, որ հայրենակցաց սիրովն և մտերմին մահուան ցաւովն գըրգուած՝ յանձն առաւ այս ծանր և վտանգաւոր պաշտօնը, և մեծ հնարագիտութեամբ և քաջասրտութեամբ կատարելով յաջողութեամբ այլ պսակեց, և թողուց յետնոց զարմանալի պատերազմական արուեստի օրինակ մը, որ կրնայ նախօրինակ ըսուիլ յաղթուած բանակի մը ետ քաշուելուն, որով այս դարուս սկիզբն այլ այնքան անուանի եղաւ Մորոյ զօրավարն Փռանկաց, մեծին Նաբոլէոնի հետ բաղդատուածն։

Նորընտիր զօրավարքն խորհուրդ ըրին բոլոր գլխաւորներով ինչ ճամբով յետ դառնալնուն վրայ. որովհետև երկու մեծ և դիւրին ճամբայ կար, որով արդէն եկած այլ էին. բայց թէ անչէն կողմեր ունէր այն ճամբան՝ (ուր դժար էր պաշար գտնելն) և թէ Պարսից արքունի գունդերէն բռնուած պիտի ըլլար. ինչպէս որ արդէն այլ Տիսափեռնէս մեծ գնդով մը, և Միհրդատ անուամբ զօրապետ մ'այլ 5000 ընտիր զօրօք ետեւնուն ընկած կու հալածէին։ Նոր, անփորձ և դժուարին ճամբայ մը հարկ սեպեցին բանալ Յոյնք, բայց իրենց նպատակին հասցընելու աւելի յարմար. և այս էր Տիգրիսի եզերքներէն մինչև 'ի Ճորոխի եզերքը, կամ Կորդուաց լեռներէն մինչև 'ի Խաղտիս՝ ճեղքել մեր Հայաստան աշխարհին լեռնակոհակ բարձրաւանդակը, յարևելեան հարաւոյ յարևմուտս հիւսիսոյ, ձեան և սառամանեաց եղանակի ատեն, և ելնել Տրապիզոնի և ուրիշ յունական գաղթականաց կողմերը։

Այս յանդուգն և բռնադատեալ խորհրդով շառաւիղեցին Յոյնք Բաբելոնի և Ասորեստանի կողմերէն դէպ 'ի Միջագետաց վերնակողմը. Տիգրիս գետոյն եզերքը բռնելով անցան անոր օժանդակ-

նսրը (Կապրոս և Մեծ Զաւ գետ՝ որ Հայոց Աղբակ գաւառին լեռներէն կ'իջնէ), և երկու մեծամեծ քաղաքներն՝ Լարիսա և Մեսփիլա. զոր հնագէտք ճանչնան՝ Ռեսէն [1] Ս. Գրոց և Նեմրութ հիմակուան, մեկայլն Նինուէ կամ Մուսուլ, որ և հին ատեն այս անունը կրէր, Մուծղ կամ Մօսլ կոչմամբ։ Ասոնցմէ վեր Զախուի և Գզիրայի (Ճէզիրէ-իպն-Էօմէր) գաւառները մտան, որք այն ատեններ և քիչ մ'առաջ՝ Հայոց և Ասորեստանեայց միջասահմանք սեպուէին. և հիմայ հոս հասնելնուն, մինչ Տիսափեռն ետևնէն կու հալածէր՝ գիմացնէն կամ քովերնէն երևցաւ արևելեան Հայաստանի կուսակալ ըսուած Որոնդ մը, որ ըստ մեզ Հրանտ կամ Երուանդ պիտի ըլլայ, թէ ոչ Արմոդ [2], որ ըստ կարգի Հայկազանց Խորենացւոյն՝ այն ժամանակուան Հայ թագաւորն կու հանդիպի։ Յոյնք երբեմն զարնուելով երբեմն փախչելով միշտ գետն 'ի վեր ելնելով հասան Ճեզիրէի այն կողմերը, ուր գրեթէ գետն խորունկ ձորափներով կու մտնէր լերանց և ճամբան կտրէր. հարկ էր կամ գետը անցնիլ և Միջագետաց դաշտերը մտնել, կամ լեռն 'ի վեր դիմել. և ահա այս և հոս էր Յունաց ըրած ընտրութիւնը, որոց հրաւէր կամ հրապոյր մ'այլ էին բարեբեր Հայաստանի համբաւքն. ինչպէս ինքն Քսենոփոն այլ վկայէ։

Նոյեմբեր ամսոյն կէսն էր երբ սկսան Յոյնք ելնել Կորդուաց լեռները, որ հոն 'ի սկզբան՝ գետոյն երեսէն հազիւ իբրև 1500 ոտք բարձր են, այլ երթալով կու բարձրանան՝ ինչուան 10000 և աւելի այլ։ Ոչ անմիջապէս ելած տեղերնին յայտնի է, ոչ ճիշդ բռնած ճամբու գծերնին, և

1 Դասան, ըստ այլ թարգմանութեան։
2 Եթէ արդարև Արմոդ է անունն և ոչ Արմոգ։

ոչ ճնշած կողմերնին, և ոչ այլ ուրիշ քաշած և խճեղանած ակղէն. այլ շատ կամ քիչ հաւանութեամբ, ըստ քննութեան գիտնոց՝ որք աշխատասէր են այս ճամբորդութիւնը հետազօտելու, և գիտնոր անապատակայս ցուցած չեն, որովհետև հին և նոր անուններն միացանել շատ դժար է. զործեալ բառական անուն նշանակած չեն հին ուղևորքն, և ոչ այլ ամեն անգամ ցուցած կամ գագրած օրերնուն թիւը. թող ուրիշ պատճառներն այլ. զոր աւելորդ սեպեմ հոս մէջ բերել. կամ մանր հետազօտել. ու այժմ հաւանագոյնը յիշելով թողում անոնց՝ որ մասնաւոր փոյթ մ'ունենան այս խնդրոյս:— Իսկ այս առջի լեռնակատար եօթնօրեայ ճամբանին՝ հաւանօրէն Ճէզիրէի և Սղերդայ (կամ Սիէրդայ) միջոց Ջուրդ և Ջուդադ ըսուած բերդաւանաց կողմերէն սկսելով՝ դէպ 'ի Մոկաց երկիրը ձգուած է, յետոյ անկէց այլ դէպ 'ի Բաղէշու ճամբան. և բոլոր երկամսեայ Հայաստանի մէջ ըրած ճամբաներնուն դըժուարագոյն մասերէն մէկն է. թէ լեռնոտ երկրին բնութեան պատճառաւ, թէ լեռնաբնակաց բարուցը:

Դ

Ի սկզբնէ կամ հազարամեայ դարերէ վեր՝ քիչ փոփոխութիւն ունեցող ազգերէն մէկն այլ Քուրդն է. որոյ և անունն գրեթէ անփոփոխ ասկէ 2300 տարի առաջ այլ յիշուի 'ի Յունաց՝ Քարդուք կամ Կարդուքոնք, ինչպէս մեր նախնիք այլ անուանեն Կորդուք կամ Կորդուացիք, եւ և Կորճայք. որք և ինչուան հիմայ բանաստրաց մեծ քննութեան նիւթ են, մանաւանդ այս վերջի տարիներս. այսինքն թէ իրենց և թէ լեզուներնուն ինչ ազգէ ծագած կամ որու նման ըլլալն: Հիմակուան լեզուներ-

նուն նայելով աւելի՝ Պարսից մօտ են. բնակած տեղերնուն նայելով հին Քաղդէացւոց և Մարաց սեփական են։ Իսկ այս Յունաց և Հայոց և ուրիշ հիներու յիշած Կորդուքն՝ Հայոց և Քաղդէացւոց կամ Ասորեստանեայց միջասահման ազգ և ժողովուրդ մ՚են, երբեմն մէկուն երբեմն մէկալին նուաճուած, շատ հեղ այլ ինքնագլուխ և անհարկու մերձաւորաց։ Այսպէս էին նաև Քսենոփոնի ատեն. որ և յիշէ, թէ քիչ առաջ Պարսից թագաւորն ուզելով նուաճել զանոնք՝ 120000 զօրաց բանակ մը խաւրեց, որք գրեթէ բոլոր ջարդուեցան, կէս մը ՚ի լերանց կէս մ՚այլ ՚ի բնակըչացն Կորդուաց. մինչև ստիպուեցան Պարսք դաշնադրութեամբ զիջանիլ։

Այսպիսեաց միջէն ճամբայ ընելու համար՝ կրնաս երևակայել թէ ինչ զգուշութիւն և քաջասրտութիւն պէտք էր Յունաց. որք գիշերանց մօտեցան լերանց, և առտուն կանուխ կամաց և լռիկ սկսան ելնել, որ չիմանան լեռնցիք. և այնպէս այլ եղաւ։ Վասն զի արդէն ձմեռն կու տիրէր լերանց. արածականք ՚ի գոմ փակուած էին, դուրսը թափառող չկար. ամենքն քաշուած էին իրենց գեղերը, որ շինուած են լերանց գոգոց ու խոռոչից մէջ, և կէս մը ծածկուած քարերու մէջ և գետնի տակ. բնականապէս այլ իրարմէ հեռու և ոչ բազմաշէն։ Ի՛նչ զարմանք ընկաւ տեղացւոց վրայ՝ երբ յանկարծ իրիկուան դէմ տներնուն գլուխը տեսան հազարաւոր զինեալ երիտասարդներ, որ ոչ Պարսից նմանէին և ոչ Հայոց։ Առաջին դրդումն՝ մէկէն տեղերնին թողուլ և փախչիլ տուաւ. Յունաց ուզածն այլ այս էր. անաշխատ ներս մտան, ինչ ուտելիք որ գտան առին. բայց ուրիշ բանի չդպան՝ որ չգրգռուին բարբարոսքն. մանաւանդ թէ ընտանութեամբ այլ կու կանչէին զանոնք, և կ՚իմացընէին որ միայն կերակուր և ճամբայ կ՚ուզեն։

լեզք շարադրած գրոցն համար, և թէ քաղցրախօս ու հեշտալուր ոճով ու բառով գրելնուն։ Իրենց գեղեցկաբան կամ գեղեցկագիւտ աշակերտներն այլ ճարտարեցին ըսել իրենց ամենէն վայելչաբան և սիրելի փիլիսոփային համար (Պղատոնի), թէ 'ի տղայութեան կռնակին վրայ բերանաբաց պառկած. ատեն՝ մեղուաց պար մը մտաւ շրթանցը մէջ ու խորխսխ շինեց, 'ի նշան իր ճարտարասան քաղցրախօսիկ լեզուին։ Անոր մէկ մեծ աշակերտակիցն և հայրենակիցն այլ՝ իր կակուղ գրչին և պաճուճազարդ բանիցն համար՝ Ատտիկէան մեղու անուանեցին. որ և ոչ միայն մեղուի փափուկ տրփերուն մեղրն ունէր, այլ և ըստ տեղւոյն անոր սուր խայթոցն այլ, — զէնք. — և գրեթէ հարիւրամեան կենաց մէկ մասն 'ի բանակս և 'ի մրցանս անցուց, մէկայլն 'ի գրուածս և 'ի խօսուածս բանասիրականս. այն զարմանալի մորեխածին Մեղուն, (Կրիւլլոսի որդի) Քսենոփոն. զոր այս օրերուս հայացուցակն հրաւիրէ տեսնել մեր հայրենեաց սառնամած լերանց վրայ։ Արդարև պիտի զարմանայիր, Հայկակ, եթէ լսէիր թէ Աթենքի հիւմեգեան մեղուն՝ այս անյարմար և տարաժամ եղանակիս՝ եկեր Կորդուաց խորթ ու խրթին ժայռից և սառից վրայ կու բզզայ. այլ թերևս ոչ պակաս զարմանալի ըլլայ՝ անոր մեղրը ճաշակող փափկաբարոյ փիլիսոփայ մ՚այլ տեսնել այն անկոխ քարակոհակաց մէջ՝ այսպիսի ատեն մը։

Շատ անկարծ և կամ անբնական տեղափոխութեանց և հեռագնացութեանց՝ գլխաւոր (թէ և դժնդակ) պատճառաց մէկն՝ եղած է մարդկան իրարու հակառակութիւնն, պատերազմք. որք ինչպէս շատ հեղ անբաւ չարեաց՝ երբեմն այլ բարեաց ինչ առիթք եղած են. այսպիսի պատճառաւ մը Քսենոփոն այլ ընկաւ Հայոց ժայռուտ

ու սառնուտ լեռանց վրայ, յառաջ քան զայլ բազմաթիւ մեծամեծ զօրավարս, որք գրեթէ ամեն դար՝ ամեն տասն-ամ անցան ու դարձան մեր աշխարհին լեռներէն ու հովիտներէն. Ձիւներն անգամ հալեցընելով իրենց նմանեաց արեամբը: Սակայն Քսենոփոն՝ ոչ իբրև Աննիբաղն յԱլպեայս՝ կ'ելնէր կ'իջնէր ընդ բազմաժայռ Կորճայս, ոխերիմ թշնամւոյ հետ կռուելու և երկիրը աւրելու, և ոչ Լուկուլլեայ և Պոմպէի նման՝ Տիգրանայ և Միհրդատայ դէմ կ'երթար վրէժխնդրութեամբ, այլ ակամայ՝ կորիճ բայց դժբաղդ բանակի մը մէջ գտուած, բազմազօր և նենգաւոր թշնամիէն հալածուելով՝ անփորձ և անկոխ ճամբէ կու ջանար 'ի հայրենիս դառնալ և դարձընել տասն հազարի չափ Յոյներ. և ասոր համար այս գործս ըստուեցաւ Նահանջ Բիւրուն Յունաց, և անմահ յիշատակ բռնեց պատմութեան մէջ. Նոյն իսկ Քսենոփոնի ճարտար առաջնորդութեամբն և ճարտարագոյն գրչութեամբ դիպուածոց, որ և իր գըրուածոց գլխաւորներէն մէկն է: Այնչափ աւելի պատուական եղած է այս պատմութիւնս՝ որչափ որ կորսուած են ուրիշներուն գրուածքը նոյն գործոյ վրայօք. որոցմէ էր իր ընկերակից և զօրաց վարիչներէն մէկն՝ Սոփենետ Ստիւմփալացի. յորմէ կ'երևի թէ Դիոդոր Սիկիլիացի առած է այս պատմութեանս մէջ այն դիպուածները կամ մանր տարբերութիւնները՝ որք չեն յիշուիր 'ի Քսենոփոնէ:

Իսկ մեզի գալով, Հայկակ, մեր ազգին և աշխարհին, Քսենոփոնի այս գրուածը ինչպէս նաև Կիւրոպէդ ըսուածն, յետ Յունաց՝ ամենէն աւելի մեզի Հայոցս պիտուական և սիրելի է. ոչ միայն զի մեր աշխարհին վրայ այլ կու խօսի պատմութեանցը մէջ, այլ զի յետ Յունաց՝ Քսենոփոնի յիշած այնքան ազգաց և ժողովրդոց մէջ՝ գրեթէ

միայն Հայք են՝ որք կարենան աւելի խորհրդածել և քննել անոր ըսածները։ Այս դիտմամբ ես այլ այսօր քեզի հետ ոչ Քսենոփոնի վարքը գործքերը և գրքերը կ'ուզեմ քննել, և ոչ այն Բիւրուն նահանջը չափել ծայրէ ծայր, այլ միայն մեր աշխարհէն անցնելուն դիպուածը և ճամբան։ Բայց որովհետև առանց երկու ծայրի՝ մէջ չըլլար, հարկ կ'ըլլայ գոնէ համառօտիւ յիշել և իրաց պատճառը, սկիզբն և վերջն այլ։

## Բ

Պատերազմն 'ի բնէ պժգալի՝ այլ աւելի է երբ ընտանեկան կամ քաղաքական ըլլայ. այսպիսի էր նախապատճառ մեր այս դիպուածին այլ. երկու Պարսիկ արքայորդի եղբարց մէջ ծագած հակառակութեամբ։ Յայտ է քեզի, որ արքայազն եղբարց հակառակութիւնն այլ շատ հեղ ժառանգութեան իրաւանց կամ խնդրոց համար կ'ըլլայ։ Արտաշէս Բ, պայազատ Պարսից Աքեմենեայց, իբրև անդրանիկ որդի Դարեհի Նոթոսի՝ յաջորդեց անոր յամի 404 նախ քան զՅուական Փըրկչին, իր հօր Թագաւորութենէն առաջ ծնած ըլլալովը. իսկ անոր Թագաւորութեան ատեն ծնաւ Կիւրոս Կրտսեր ուրիշ դշխոյէ մը։ Յայտնի է կանանց նախանձն այլ՝ ուր բազմակնութիւն կայ, և ջանքն՝ իրենց զաւակները վեր քշելու. մանաւանդ երբ Պարիսատիսի պէս գոռոզ դշխոյէ մը ծիրանածին ընծայուէր Կիւրոսի պէս կարիճ կորիւն մը, գրեթէ անտարակոյս էր ծագելի կռիւն։ Սակայն Արտաշէս՝ Ուշէղ էր և կ'անուանէր (Մնէմոն 'ի Յունաց), միանգամայն և նախատես և մեծոգի. ոչ զեղբայրն ուզեց զրկել և ոչ ինք զինքը. այլ իբրև իրեն երեսփոխան գրաւ զանիկայ և վերատեսուչ ամենայն նախարարաց իր ինքնակալութեա-

նը արեւմտակողման, եւ աթոռն այլ գնել տուաւ 'ի Սարդիկէ մայրաքաղաք Լիւդիոյ, քիչ հեռու եւ յարեւելից Զմիւռնիոյ. այսպէս մինչեւ 'ի ծայր արեւմտից հեռացընելով զնա՝ ամսօրեայ ճամբաներով իր արեւելեան գահէն (իբրեւ 20 աստիճան աշխարհագրական երկարութեան իրարմէ հեռու):

Կիւրոս իր եռանդուն բնաւորութեամբն եւ Յունաց մերձաւորութեամբ եւ ընտանութեամբ՝ անանկ լաւ կարգաւորեց իր իշխանութիւնն եւ արքունիքը, որ նոյն իսկ Յունաց նախանձելի եւ պատուելի կ'ըլլար, եթէ չափազանցութեամբ եւ կողմնապահութեամբ չէ ասոնց պատմածն. բայց իր ամեն ցուցած եւ յուսացուցած գործերը սեւցուց, փճացուց իր կենաց հետ՝ անսանձ փառասիրութիւնն, որով կ'ուզէր միահեծան ինքնակալ ըլլալ, նաեւ զեղբայրը զրկելով: Գաղտուկ պատրաստութիւն տեսաւ, զօրք ժողվեց ցամաքի եւ ծովու. օգնութիւն ուզեց 'ի Յունաց այլ, որոց վրայ մեծ համարմունք եւ վստահութիւն ունէր: Յոյնք, եւ մանաւանդ Սպարտացիք՝ իրեն երախտապարտ էին, իրենց անկէ առած օգնութեանն համար. եւ առանց անտընալու խաւրեցին անոր Կղէարքոս լակեդեմոնացին, պզտի բայց ընտիր գնդով մը. որուն հետ միացան ուրիշ Յունաց մանր տէրութիւններէն այլ շատ զօրք՝ ուրաքանչիւր զօրավարօք, բոլորն իբրեւ 16000 հոգի: Ընդհանուր զօրապետնին եղաւ նոյն Սպարտացին. իսկ առանձին ազգաց մէջ՝ Բէովտացւոց զօրավարն էր Պրոքսեն Թեբացին, որուն մտերիմ բարեկամն էր մեր ատտիկեցի իմաստասէր մեղուն՝ Քսենոփոն, որ այս ատեն 50 կամ 55 ամեայ մ'էր: Արդէն երիտասարդութեան ատեն պատերազմի մէջ մտած ելած, հիմայ հասակին եւ ուսմանց ազդեցութեամբ՝ աւելի խաղաղութիւն եւ մեղր սիրէր

քան կախ և արիւն. անոր համար՝ ոչ իբրև մար-
տիկ և նիզակակից, այլ իբրև սրտակից ընկերա-
ցաւ Պրոքսենի. միանգամայն և իբրև բանասէր՝
նոր երկիր, նոր ազգ և դէպք տեսնելու քննելու.
մանաւանդ որ 'ի սկզբան ոչ ինքն և ոչ այլ զօրա-
վարք գիտէին ուր և ի՛նչ բանի համար երթալնին.
վասն զի Կիւրոս խաբելով կ'ըսէր, թէ իրմէ ապըս-
տամբած Ասորւոց դէմ կ'երթայ: Ասանկով ժող-
վեց զամենքն 'ի Տարսոն մայրաքաղաք Կիւլիկիոյ,
'ի սկիզբն յունիսի (401 տարւոյն), մտաւ յԱսո-
րիս, տարաւ բանակը մինչև յԵփրատ, անցուց
անդին ('ի սկիզբն օգոստոսի), և պաշարաբեր նա-
ւերը յետ դարձուց: Ապա քիչ քիչ իր մեծերէն
սկսեալ՝ ինչուան վարիններուն իմացուց միտքը.
զոր ոմանք յօժարութեամբ ոմանք դժարութ̃բ
յանձն առին, յուսալով իր խոստմանց և բաղդին
այլ:

Ուշանալ չէր ըլլար. սակայն Միջագետաց չէն
և անշէն ընդարձակութիւնը կտրելու համար այլ
մինչ 'ի սահմանս Բաբելոնի՝ ամիս մը պէտք եղաւ:
Ա՛յն միջոցին Արտաշէս այլ իմանալով եղածը՝
պատրաստեցաւ արևելեան զօրօք մեծ բազմու-
թեամբ՝ եղբօրը դէմ ելնելու: Սա աւելի շուտով
հասաւ Եփրատայ և Տիգրիսի ամենէն իրարու
մօտ եղած տեղերը, որ հին Բաբելոնի մօտերն է.
և հոն Կունաքսա անուանեալ աւանի մը մօտ, որոյ
դիրքն շատ յայտնի չէ, (յեօթն սեպտեմբերի)
եղաւ հին պատմութեան մէջ անուանի և բաղդա-
սահման պատերազմաց մէկն, որ մեր այս երեկո-
յեան զրոյցներէն դուրս կու մնայ: Այլ այսչափ
ըսելի է, որ երկու կողմէն այլ կրքով և կորըճու-
թեամբ կռուեցան. իրաւունքն յաղթող եղաւ.
Կիւրոս ոչ միայն անձամբ հասարակ զինուորի
պէս կու կռուէր, այլ և եղբօրը հետ զարնուե-
ցաւ ու վիրաւորեց զնա. բայց մեռնողն ինքն ե-

դաւ, ըստ ոմանց 'ի նոյն ինքն յԱրտաշիսէ զարնուած։ Կենացն հետ վերջացաւ պատերազմն, և ցրուեցաւ արեւմտեան բանակն։

## Գ

Կիւրոսի ասիական գունդերն նուաճուեցան օրինաւոր իշխանութեան. իսկ Յոյնք՝ որոցմէ քիչ մարդ ինկեր էր պատերազմին մէջ, անկէ շատ աւելի դժար փորձանքի բռնուեցան։ Արտաշէս իրենց պատգամ խաւրեց որ զէնքերնին թողուն, ու իրմէ ուրիշ փոխարէն առնըլով ազատ մնան կամ երթան. Յոյնք պատասխանեցին, թէ քանի որ զէնք ունիմք՝ անոնք մեզի բանի կու գան, առանց զէնքի մենք այլ կրնանք բանի չգալ. չեմք ուզեր մեր ասոյգ օգուտը՝ Արտաշիսի անստոյգ վարձուց հետ փոխել. և եթէ կ'ուզէ Արտաշէս փորձել զէնքերնուս արուեստը՝ պատրաստ եմք։ Հարկ եղաւ որ առանց կռուի զիջանի թագաւորն՝ թողլու զանոնք երթալ իրենց երկիրը, միայն թէ անցած տեղերնուն վնաս չընեն։ — Այս այլ չէր անվայել Արտաշիսի ուշեղութեանը. բայց դժբաղդաբար շատ հեղ շատ ուշիմ թագաւորք և անթագ իշխանական գլուխք՝ ուշաթափ կ'ըլլան իրենց պաշտօնէից անարժան թելադրութեամբք. այսպէս այլ եղաւ Արտաշիսի։ Հաւանեցաւ իր՝ սիրելի Տիսափեռն մեծ նախարարին խրատուն, դաւելու զՅոյնս. զոր և գործով կատարեց անխիղճ խրատուն, հրաւիրելով զգլխաւոր զօրապետս Յունաց իրեն վրանը, իբրև 'ի խորհրդակցութիւն և դաշնակցութիւն. և զամենքն այլ (տասնումէկ հոգի) սպաննել տուաւ, Կղէարքոսէն սկսեալ մինչև 'ի Պրոքսէն բարեկամն Քսենոփոնի։ Երկրորդական զօրավարքն գոյժը լսելով փութացան հեռանալու, և իրենց առաջ-

նորդ ընտրեցին Քիրիսոփ Սպարտացին. իսկ վերջապահ բանակին՝ զմեր Քսենոփոն, որ հայրենակցաց սիրովն և մտերմին մահուան ցաւովն գըրգուած՝ յանձն առաւ այս ծանր և վտանգաւոր պաշտօնը, և մեծ հնարագիտութեամբ և քաջասըրտութեամբ կատարելով յաջողութեամբ այլ պսակեց, և Թողուց յետնոց զարմանալի պատերազմական արուեստի օրինակ մը, որ կրնայ նախօրինակ ըսուիլ յաղԹուած բանակի մը ետ քաշուելուն, որով այս դարուս սկիզբն այլ այնքան անուանի եղաւ Մօրոյ զօրավարն Փռանկաց, մեծին Նաբոլէոնի հետ բաղդատուածն։

Նորընտիր զօրավարքն խորհուրդ ըրին բոլոր գլխաւորներով ինչ Ճամբով յետ դառնալնուն վրայ. որովհետև երկու մեծ և դիւրին Ճամբայ կար, որով արդէն եկած այլ էին. բայց Թէ անչէն կողմեր ունէր այն Ճամբան՝ (ուր դժար էր պաշար գտնելն) և Թէ Պարսից արքունի գունդերէն բռնուած պիտի ըլլար. ինչպէս որ արդէն այլ Տիսափեռնէս մեծ գնդով մը, և Միհրդատ անուամբ զօրապետ մ'այլ 5000 ընտիր զօրօք ետևնուն ընկած կու հալածէին։ Նոր, անփորձ և դժուարին Ճամբայ մը հարկ սեպեցին բռնալ Յոյնք, բայց իրենց նպատակին հասցընելու աւելի յարմար. և այս էր Տիգրիսի եզերքներէն մինչև 'ի Ճորոխի եզերքը, կամ Կորդուաց լեռներէն մինչև 'ի Խաղտիս՝ Ճեղքել մեր Հայաստան աշխարհին լեռնակոհակ բարձրաւանդակը, յարևելեան հարաւոյ յարևմուտս հիւսիսոյ, ձեան և սառամանեաց եղանակի ատեն, և ելնել Տրապիզոնի և ուրիշ յունական գաղԹականաց կողմերը։

Այս յանդուգն և բռնադատեալ խորհրդով շտապեցին Յոյնք Բաբելոնի և Ասորեստանի կողմերէն դէպ 'ի Միջագետաց վերնակողմը. Տիգրիս գետոյն եզերքը բռնելով անցան անոր օժանդակ-

ները (Կապրոս և Մեծ Զաւ գետ՝ որ Հայոց Աղբակ գաւառին լեռներէն կ'իջնէ), և երկու մեծամեծ քաղաքներն՝ Լարիսա և Մեսպիլա. զոր հնագէտք ճանչնան՝ Ռեսէն [1] Ս. Գրոց և Նիմրուդ հիմակուան, մեկայլն Նինուէ կամ Մոսուլ, որ և հին ատեն այս անունը կրէր, Մուծղ կամ Մօսլ կոչմամբ։ Ասոնցմէ վեր Զախուի և Գզիրայի (Ճէզիրէ–իպն–Էօմէր) գաւառները մնան, որք այն ատեններ և քիչ մ'առաջ՝ Հայոց և Ասորեստանեայց միջասահմանք սեպուէին. և հիմայ հոս հասնելնուն, մինչ Տիսափեռնեան բանակէն կու հալածէր՝ դիմացնէն կամ քովերնէն երևցաւ արևելեան Հայաստանի կուսակալ ըսուած Որոնդ մը, որ ըստ մեզ Հրանդ կամ Երուանդ պիտի ըլլայ, թէ ոչ Արմոգ [2], որ ըստ կարգի Հայկազանց Խորենացւոյն՝ այն ժամանակուան Հայ թագաւորն կու հանդիպի։ Յոյնք երբեմն զարնուելով երբեմն փախչելով միշտ գետն 'ի վեր ելնելով հասան Ճեզիրէի այն կողմերը, ուր գրեթէ գետն խորունկ դարափներով կու մօտենար լերանց և ճամբան կտրէր. հարկ էր կամ գետը անցնիլ և Միջագետաց դաշտերը մտնել, կամ լեռն 'ի վեր դիմել. և ահա այս և հոս էր Յունաց ըրած ընտրութիւնը, որոց հրաւէր կամ հրապոյր մ'այլ էին բարեբեր Հայաստանի համբաւքն. ինչպէս ինքն Քսենոփոն այլ վկայէ։

Նոյեմբեր ամսոյն կէսն էր երբ սկսան Յոյնք ելնել Կորդուաց լեռները, որ հոն 'ի սկզբան՝ գետոյն երեսէն հազիւ իբրև 1500 ոտք բարձր են, այլ երթալով կու բարձրանան՝ ինչուան 10000 և աւելի այլ։ Ոչ անմիջապէս ելած տեղերնին յայտնի է, ոչ ճիշդ բռնած ճամբու գծերնին, և

1 Դասեմ, ըստ այլ թարգմանութեան։
2 Եթէ արդարև Արմոդ է անունն և ոչ Արմոգ։

ոչ խնճած կողմերնին, և ոչ այլ ուրիշ քաշած և իջեցանած տեղերն. այլ շատ կամ քիչ հաւանութեամբ, ըստ քննութեան դիտնոց՝ որք աշխատեր են այս Ճամբորդութիւնը հետաքննելու, և գետեզր անտարակոյս ցուցած չեն, որովհետև հին և նոր անունները միաբանել շատ դժար է. դարձեալ բաւական անուն նշանակած չեն հին ուղևորքն, և ոչ այլ ամեն անգամ՝ գացած կամ դադրած օրերնուն թիւը. թող ուրիշ պատճառներն այլ, զոր աւելորդ սեպեմ հոս մէջ բերել, կամ մանր հետաքննել. առ այժմ հաւանագոյնը յիշելով թողում անոնց՝ որ մասնաւոր փոյթ մ՚ունենան այս խնդրոյս:— Իսկ այս առջի լեռնակտուր եօթնօրեայ Ճամբանին՝ հաւանօրէն Ճէզիրէի և Սղերտայ (կամ Սիէրտայ) միջոց Ֆընըդ և Ֆընտըդ ըսուած բերդաւանաց կողմերէն սկսելով՝ դէպ 'ի Մոկաց երկիրը ձգուած է, յետոյ անկէց այլ դէպ 'ի Բաղիշու Ճամբան. և բոլոր երկամսեայ Հայաստանի մէջ ըրած Ճամբաներնուն դըժուարագոյն մասերէն մէկն է. թէ լեռնոտ երկրին բնութեան պատճառաւ, թէ լեռնաբնակաց բարուցը:

Դ

Ի սկզբնէ կամ հաղարամեայ դարերէ վեր՝ քիչ փոփոխութիւն ունեցող ազգերէն մէկն այլ Քուրդն է. որոյ և անունն գրեթէ անփոփոխ ասկէ 2300 տարի առաջ այլ յիշուի 'ի Յունաց՝ Քարդուք կամ Կարդուխեանք, ինչպէս մեր նախնիք այլ անուանեն Կորդուք կամ Կորդուացիք, եւս և Կորճայք. որք և ինչուան հիմայ բանասիրաց մեծ քննութեան նիւթ են, մանաւանդ այս ետքի տարիներս. այսինքն թէ իրենց և թէ լեզուներնուն ինչ ազգէ ծագած կամ որու նման ըլլալը: Հիմակուան լեզուներ-

նուն նայելով աւելի՝ Պարսից մօտ են. բնական ձեւերնուն նայելով հին Քաղդէացւոց և Մարաց սեփական են։ Իսկ այս Ցունաց և Հայոց և ուրիշ հիններու յիշած Կորդուքն՝ Հայոց և Քաղդէացւոց կամ Ասորեստանեայց միջասահման ազգ և ժողովուրդ մ'են, երբեմն մէկուն երբեմն մէկալին նուաճուած, շատ հեղ այլ ինքնագլուխ և ահարկու մերձաւորաց։ Այսպէս էին նաև Քսենոփոնի ատեն. որ և յիշէ, թէ քիչ առաջ Պարսից թագաւորն ուզելով նուաճել զանոնք՝ 120000 զօրաց բանակ մը խաւրեց, որք գրեթէ բոլոր ջարդուեցան, կէս մը 'ի լերանց կէս մ'այլ 'ի բնակըչացն Կորդուաց. մինչև ստիպուեցան Պարսք դաշնադրութեամբ զիջանիլ։

Այսպիսեաց միջէն Ճամբայ ընելու համար՝ կրնաս երևակայել թէ ինչ զգուշութիւն և քաջասրտութիւն պէտք էր Ցունաց. որք գիշերանց մօտեցան լերանց, և առտուն կանուխ կամաց և լռիկ սկսան ելնել, որ չիմանան լեռնցիք. և այնպէս այլ եղաւ։ Վասն զի արդէն ձմեռն կու տիրէր լերանց. արածականք 'ի գոմ փակուած էին, դուրսը թափառող չկար. ամենքն քաշուած էին իրենց գեղերը, որ չինուած են լերանց գոգոց ու խոռոչից մէջ, և կէս մը ծածկուած քարերու մէջ և գետնի տակ. բնականապէս այլ իրարմէ հեռու և ոչ բազմաշէն։ Ի՛նչ զարմանք ընկաւ տեղացւոց վրայ՝ երբ յանկարծ իրիկուան դէմ տներնուն գլուխը տեսան հազարաւոր զինեալ երիտասարդներ, որ ոչ Պարսից նմանէին և ոչ Հայոց։ Առաջին դրդումն՝ մէկէն տեղերնին թողուլ և փախչիլ տուաւ. Ցունաց ուզածն այլ այս էր. անաշխատ ներս մտան, ինչ ուտելիք որ գտան առին. բայց ուրիշ բանի չդպան՝ որ չգրգռուին բարբարոսքն. մանաւանդ թէ ընտանութեամբ այլ կու կանչէին զանոնք, և կ'իմացընէին որ միայն կերակուր և Ճամբայ կ'ուզեն։

Կորդուացիք ոչ եկան և ոչ դէմ կեցան. ինչուան որ Յունաց բանակն սկսաւ լեռներէն վար դէպ 'ի ուրիշ գեղեր իջնել. գիշերն այլ վրայ կու հասնէր. այն ատեն փախըստեայքն դարձան և սկսան Յունաց վերջապահից վրայ կարկըտաւ քար ու փքին. և ոչ քիչ հոգի սպաննեցին ու վիրաւորեցին։ Այս երկուքն էին իրենց գլխաւոր և ահաւոր զէնքերն.— քար ու նետ.— առաջինը ոչ այնչափ հեռուէն պարսատիկով կու նետէին, որքան 'ի մօտանց մեծամեծ կտորներ և ժայռեր լերանց վրայէն գլորտկելով՝ կու ջախջախէին համդիպածը. երկրորդը՝ կու ձգէին երեքկանգնեան մեծամեծ աղեղներով, որոց լարը քաշած ատեննին ձախ ոտուընին առաջ կ'երկընցընէին, և երկու կանգուն երկայննետերը կու թըռցընէին անանկ ուժով որ գրեթէ միշտ վահանն այլ զրահներն այլ կ'անցնէր, և գոնէ առանց վէրքի չէր թողուր դպածը։ Յունաց համար այնչափ մեծ կու գար այս նետը՝ որ նիզակի տեղ 'ի գործ կ'ածէին. իսկ Կորդուաց նիզակներն ինչուան 15 կանգուն (յունական) երկայն էին։ Կրնաս չափել զանոնք հիմկու Քրդաց նիզակներով, թէ որ ոչ անոնք զքեզ չափեն։ Յոյնք առաջին անգամ ասոնց փորձն առած, ու նորէն գեղերու մէջ ապաստանած՝ շատ վախով և զգուշութեամբ անցուցին այն գիշերը. վասն զի Կորդուացիք լերանց չորս կողմը կրակ վառած կու հսկէին, ահաւոր գեղեցկութիւն մը տալով արդէն բնութեամբ խոժոռապեղ տեղեացն։ Նոյն զգուշութեամբ և կասկածով ելան և ճամբանին շարունակեցին Յոյնք երկրորդ օրը, բռնած գերիներն և անասուններն ալ ազատ թողլով որ իրենց արգելք չըլլան և պաշարնին այլ շուտով չսպառեն. և այնպէս երբեմն կըռուելով երբեմն անխռով անցուցին այն օրը։

Երրորդ օրն բնութիւն և բնակիչք միաբան հա-

կառակեցան Յունաց. բքախառն փոթորիկ մը փրթաւ վերէն, զոր աւելի դժնդակ ըրին Կորդուաց պարսերն ու նետերն. Յոյնք կ'ուզէին տեղ մը քաշուիլ պատսպարիլ. բայց եթէ գտնէին այլ՝ պաշարինին հաստած պիտի կորսուէին. հարկ էր որ բքոց և փքնաց մէջ յառաջէին անծանօթ ճամբուն. որուն երկու կողմերն այլ բռնեցին տեղացիք երբ նեղ կրճերու հասան, և անհնարին տագնապ հասուցին Յունաց: Հոս Քսենոփոն իր ամեն հնարքն և համբերութիւնը հատուց, քաջալերելով և յորդորելով իրեններըը՝ որ անխռով և յուշիկ առաջ երթան, և շատ անգամ կանգ առնեն կամ ետ քաշուին թշնամիները ցրուելու, և չարատորան այն անտառոյգ և վտանգաւոր տեղուանքը: Այս պիտանի խրատը անանկ տագնապի ատեն դժար էր ամենուն հասկըցընել. և նոյն ինքն առաջնորդն Քիրիսոփ՝ ձանձրանալով սաանկ կամկար շարժելէն՝ երագեց ընթացքը իրեն յառաջագնաց գնդովը. անանկ որ վերջապահ գունդն ստիպուեցաւ դրեթէ փախչելու կերպով փութալու անոր ետևէն: Այս խուճապման ատեն քաջ սպարտացին Կլէոնիմ՝ նետահարեալ 'ի կողն, վահանն այլ կաշիէ զրահներն այլ ծակուելով ընկաւ անկանգնելի: Անկէց ոչ հեռու՝ չոր ժայռերու վրայ փըռուեցաւ Բասիաս Արկադացին, փոխանակ իրեն դրախտանման Տեմպեան հովիտներուն. Թերևս զանոնք և իր ցանկալի ջերմիկ տնակը և ընտանիքը կ'երազէր՝ երբ սուր փքին մը գլխին մէկ կողմէն մէկալն անցնելով և ելնելով միտք ու շունչն այլ մէկէն թռուց... հասա՞ց այլ հայրենի հոգւոց: — Աւաղելի ստուգութիւնն այս է՝ որ երկու երիտասարդաց մարմինքն այլ հայրենեաց հողէն հեռու՝ մնացին ուր որ ընկան. և երկուքին հաւասար եղաւ օտար և խորթ գետինն, թէ խստավար սպարտացւոյն և թէ փափկավար Արկադացւոյն: —

Բայց Քսենոփոն շատ մեղադրեց Քիրիսոփայ ար-
տորալը. իսկ նա պատճառ բերաւ ճամբուն նե-
ղուածքը, ուր պէտք էր շուտով հասնիլ՝ քանի որ
Թշնամիք բռնած չէին կիրճերը:

Այն օրը Քսենոփոն քանի մը հոգի բռներ էր
լեռնաբնակներէն և երկուքը պահեր էր. մէկուն
հարցուցին թէ յարմար ճամբայ մը գիտէ՞ անց-
նելու. պատասխան չտուաւ, որչափ այլ չար-
չարեցին, մինչև սպանեցին միւսոյն դիմաց. նա
այլ զարհուրած՝ իմացուց որ խեղճ ընկերն այն
կողմերը կարգած աղջիկ մ՚ունէր, անոր համար
չէր ուզեր զրուցել ճամբան. իսկ ինքն ապահով-
ցուց որ կայ լերանց մէջ աղէկ ճամբայ մը, բայց
հոն հասնելու համար՝ հարկ է մօտիկ լերան մը
գլուխ ելնել շուտով՝ քանի որ Թշնամիներն չէին
հասած, ապա թէ ոչ անկարելի կ՚ըլլար անցքն:
Երկու հազար կտրիճք՝ Արիստէոս Քիոսացւոյ ա-
ռաջնորդութեամբ՝ յանձն առին նոյն իրիկուն
ելնելու բռնելու լերան գլուխը, և փող զարնելով
իմացընելու մէկալոնց՝ որ երկրորդ օրը հոն գան:
Քսենոփոն այլ իր վերջապահ գնդովը ուրիշ ճամ-
բայ մը բռնեց՝ որ Թշնամիները խաբէ և չտեսնեն
առջինները: Երբ հասաւ ձորեզրը՝ որոյ դիմացի
կողմն էր լեռնանցքն, Կորդուացիք սկսան վերէն
մեծամեծ սայլի բեռան չափ քարեր գլորտըկել,
որոնք կոտրտուելով ժայռից վրայ՝ չէին թողուր
Յունաց առաջ անցնիլ. պէտք եղաւ որ յետ քա-
շուին և գիշերը հոն անցընեն, մինչ Կորդուացիք
մինչև առաւօտ այլ անդադար քարերը գլորելու
հետ էին: Այն միջոցին յառաջապահ գունդն ան-
կասկած հասաւ Թշնամեաց պահնակներուն վրայ,
զոմանս սպանեց, զոմանս փախուց, և բռնեց ա-
նոնց տեղը, ու գիշերը հոն կեցաւ, կարծելով
թէ լերան գլուխը հասեր է. բայց դեռ բարձրա-
գոյն բլուր մ՚այլ կայր ելնելու: Առաւօտուն՝

մէջն օգնական առնըլլով Յոյնք յառաջ խաղացին թշնամեաց կողմը, և միջին փարատած ատեն՝ վըանին հասնելով, փողելով կանչելով ու զէնքերով հալածեցին: Փողոց հնչումը լսելով Քիրիսոփ յառաջապահ գնդովն ելաւ երթալու նոյն ճամբէն. իսկ Քսենոփոն վերջապահ գունդն երկու բաժնեց, մէկուն յանձնելով պաշարները և կարասիքը՝ քովընտի ճամբէ մը գալու: Ասոնք հասան բլրի մը, ուսկից հալածեցին թշնամիները. և տեսան ուրիշ բարձրագոյն բլուր մ'այլ զոր թըշնամիք բռնել էին. Քսենոփոն առջինին վրայ պահապաններ թողուց երկու սպայից ձեռաց տակ, որ պաշարաբեր գունդը պաշտպանեն, և ինքն կէս գնդովն յարձակեցաւ երկրորդ բլուրն այլ բռնեց. բայց անոր վերև ուրիշ և աւելի դժուարակոխ մ'այլ բարձրացած էր, և էր այն բլուրն՝ ուր որ գիշերագնաց Յոյնք Կորդուաց պահնակները սպաներ և վռնտեր էին: Քսենոփոն երագոտն կարիճներով այս երրորդ բլրին այլ տիրեց. վասն զի բարբարոսք առանց իսկ նետելու և պարսելու՝ յետ քաշուեցան: Այս յաջողութիւնս ձախողութեան մը նշան էր. և յիրաւի հազիւ երրորդ բըլրին վրայէն Քսենոփոն իրեններուն պատուէր կու տար կամաց շարժելու, Արգիացի մը շնչակտուր վազելով հասաւ և գուժեց, որ առջի բլրին վրայ թողած երկու սպայքն (Կեփիսոդոր և Ամփիկրատ)՝ մասամբ պահապան գնդին պաշարուած սպանուեցան 'ի թշնամեաց. որք և փութալով հասան Քսենոփոնի կեցած տեղուոյն դիմաց ուրիշ բլրոյ մը վրայ դիզուեցան:

Հոս Ատտիկեցի մեղուն իմացաւ որ խայթոցի տեղ մեղրը բանեցընելու է. մարդ ղրկեց հաշտութեամբ խօսելու անոնց հետ, և զինադուլ ընելու. և խնդրեց որ մեռածներն այլ թողուն վերցընելու: Կորդուացիք այլ պահանջեցին որ Յոյնք ի-

րենց գեղերը չայրեն։ Այն միջոցին մէկայլ գունդն այլ ելաւ հոն ժողուեցաւ, և միաբան սկսան շարժիլ. Թշնամիք անխռով թողուցին զանոնք. բայց երբ տեսան որ բլուրներէն վար կ'իջնեն, նորէն քարերու ձեռք զարկին և Յունաց ետեւէն հասուցին։ Այս տագնապին ատեն Քսենոփոնի վահանակիրն փախաւ քովէն, և մեր մեղուն ջախջախելու վրայ էր՝ երբ Եւրիլոք Լուսիացին հասաւ, վահանաւը պաշտպանեց ապրեցուց. ինչպէս երբեմն իր մեծ մարտակիցն Սոկրատէս 'ի Դելիոնի պատերազմին ազատեր էր զնա։ Վերջապէս հասան բլրոց ստորոտը, ուր միացան ամեն գնդերն այլ. և ըստ իրենց խոստման արձըկեցին կապած առաջնորդնին, անոր տեղ իրենց մեռելոց մարմինները առնըլով, և իրենց ռազմութեամբ թաղեցին։ Այն գիշեր կեցան գեղերու մէջ, ուր առատ համբար և կերակուր այլ վայլեցին. մանաւանդ պատուական գինի, որ մեծամեծ գետնաթաղ բռած կարասներու մէջ լցուած էր։

Երկրորդ օրը նորէն իրենց կարգը առնըլով, Քիրիսոփ առաջապահ, Քսենոփոն վերջապահ, շատ հեղ Կորդուաց հետ զարնուելով, լեռներէն ելնելով իջնելով, վերջապէս հասան անոնց ստորոտը, վերջին գեղերուն. որոնցմէ վար դիմացնին քիչ հեռու երկայն արծաթ գօտւոյ պէս տարածուած տեսնուեցաւ Տիգրիսի օժանդակ գետ մը, զոր Կէնտրիտ կոչէ հեղինակն, և որոյ միւս կողմը կ'երեւէին սահմանք և լեռնադաշտակք Հայաստանի, որք և այն ժամուն՝ թերեւս քան մեզի՝ աւելի ցանկալի էին Յունաց.

## Ե

Այս աշխարհաբաժին գետս զոր գրեթէ ամենայն հետազննողք կու ճանչնան հիմկու Պօհտանը, է արևելեան տաւաջք մը Տիգրիս գետոյ, զոր և Ծոփոխ կոչեն Հայք 'ի կողմանս Մոկաց, և նոյն երևի զոր Խորենացին յիշէ 'ի պատմութեան պատկերի Տիրամօրն, գոնէ նոյն Անձևացեաց հարաւակողման քարալերանց բղխած աղբիւրներէն գետացեալ. իսկ անունն՝ եթէ հայկական է՝ կըրնայ կարծուիլ Կուրտըէ+ կամ Կուրտըէստ գետ, զի այսպէս կոչուէր Կորճայից մէկ գաւառն. եթէ պարսկական է իբր Կէնտ-րուտ՝ նշանակէ ժանտ-ջուր կամ գետ. և դարձեալ յիշել տայ Խորենացւոյն բանն, թէ «Ձոր ջուրքն հոսեալ 'ի լերանց Կանգաւարոյ, որ է Ագռաւաքար», երթան 'ի Տիգրիս։ Արդ այս գետոյն դիմաց գիշեր մը դադրելով առաւօտուն մօտեցան Յոյնք՝ անցքը փորձելու և շատ գժար գտան. վասն զի սաստիկ սըրնթաց և մեծ կարկաջանօք թափելով կ'երթար գետն խառնուելու ընդ (արևմտեանն) Տիգրիս, անկէ քանի մը մղոն հեռու։ Ջրէն և խորէն աւելի այլ վախնալու երևցան Յունաց՝ Կորդուացիք, որ լեռներէն իջնալով կու գային ետևնուն վերջի նետերնին և պարսերնին այլ պարպելու. իսկ դիմացնէն՝ գետոյն այն կողմը բռնած էին նախայիչեալ Հրանտայ կամ Որոնդի, և մէկ Արտոկ անուն իշխանի մ'այլ (հաւանօրէն Արփոհ Մոկաց նախարարի) հեծեալքն. և անոնց ետևէն այլ բարձրաւանդակաց վրայ՝ հետևակ զօրք, ճամբուննեղուց անցքը պահելով։ Իրեք կողմանէ վտանգ կար, և գոնէ մէկէն կամ երկուքէն փախչելու ճար չկար։

Հոս Քսենոփոն իր հնարագիտութեամբն՝ զըւարթերես մէջ մտաւ, սկսաւ յաջող երազներ

պատմել. վոհերն այլ յաջող ելան կ'ըսէր. ոմանք այլ լուր բերին որ գետոյն դիմացի կողմը աջ-կունք և ծերեր լաթ կու գնէին քարածերպերու մէջ. ըսել էր որ հոն գետն ծանծաղ և անցանելի էր: Դէպ յայն կողմը դիմեցին, իրարու սիրտ տալով հասան գետոյն եզերքը, նորէն զոհ մ'ըրին ջրին վրայ, և յաջող գտան: Քիրիսոփ սոթթուեցաւ ցատքեցներս իր առաջակարգ գնդովը. Քսենոփոն այլ վերջապահովը, բայց քիչ մը ուրիշ դիրք բռնելով. իբր թէ կ'ուզէն թշնամիները մէջ փակել երկու դիաց. և ամենքն միաձայն սկըսան կանչել իրենց ազգային ուէանա ըսուած երգը, զոր մեծ վտանգաց կամ հանդիսից մէջ կ'երգէին. որ և յիրաւի թէ զարմանք թէ չփոթութիւն ձգեց մեր Կորճայից և Մոկաց. և նախ հեծեալքն ապա հետևակքն յետ քաշուեցան: Բայց լեռնցիք մէկայլ կողմէն մօտեցան Քսենոփոնի վերջապահաց, իրենք այլ իրենց կորդ. լեզուովն երգելով. սակայն քանի մը հոգի միայն կրցան վիրաւորել, մինչ մնացեալքն անցան գետը, և սկսան շուտ շուտ առաջ երթալ, մինչուան 15 մղոն տեղ, որ [illegible]մարդի էր, (պատճառաւ Կորդուացոց ստէպ արշաւանաց) մինչուան որ հասան իշխանանիստ մեծ աւան մը, որոյ տանց շատին վրայ աշտարակներ կային: Ըննագէտք կարծեն թէ այս, տեղս հիմկու Սղերտ քաղաքաւանն ըլլայ. շատ հաւանական է գոնէ անոր մօտ ըլլալն. և Յունաց բռնած ճամբան կ'երևի թէ անկէց 'ի Բաղէշ տանողն է, լերանց նեղուցներու մէջ, որ կէս 'ի բնէ կէս արուեստով բացուած են, մինչուան Ռահվայի քաջածանօթ հովիտը. որոյ ճամբուն վրայ մինչուան հիմայ կարաւանք կ'սպաւինին բազմաթիւ ամրաշէն խաներու մէջ. թէ և ասոնց շէնքն շատ հին չերևան, սակայն ճամբան հին ատենէ բացուած և վարուն էր. և այս է մեր նախնեաց յիշած պահակն և

Դըռունք Աստրէափանէայց, որոյ գլուխն կամ մէջն՝ Վանայ ծովուն հարաւային արեւմտեան գլխն Պոհոն Հողոցոյ կ'ըսուէր, Աղձնեաց և Տուրուբերան նահանգաց ու Մոկաց միջոց. Յունաց բռնած ճամբան այլ զայս կարծեմ։

Զ

Առջի հանդիպած գեօղաւանէն 30 մղոն այլ վեր ելնելով երկու օրուան ճամբով Տիգրիս գետոյն մէկ ուղբերակին հասան, որ ինծի կ'երեւի նոյն ինքն Բաղիշու գետն, և անկէց բռնեցին Մշոյ ճամբան Ռահվայլի ձորէն. և հասան Տարօնոյ գեղեցիկ և գիւղաշատ դաշտը, որոյ Մեղրագետն կամ Մեղուայ գետն կարծուի Քսենոփոնի Տէլէբոաս կոչածն։ Այս կողմս այն ատեն Արեւմտեան Հայաստան կ'ըսուէր. և կողմնակալն էր Տիրիբազ, Պարսից Թագաւորին շատ սիրելի, որ միայն համարձակութիւն ունէր անոր ձի հեծնելու ատեն՝ ձեռքը բռնելու։ Ասիկայ հեծելազօրօք Յունաց դիմաց ելաւ, բայց խաղաղութեան պայման դըրաւ որ առանց գեղերուն վնասելու՝ անցնին իրեն սահմաններէն, և ուզածնուն չափ պաշար առնուն։ Բայց ապահովութեան համար ինքն այլ հեծելովքն քիչ հեռուէն Յունաց ետեւէն կ'երթար; ինչուան որ անոնք ուրիշ գաւառ մը հասան (որ Թուխ Հաշտեանք), ուր արքունի կամ իշխանանիստ ապարանք և շատ գեղեր կային։ Բնակչաց բարեկամական կերպն, իրենց անօթութիւնն և ձիւնախառն ցուրտն՝ համարձակեցուցին զՅոյնս խումբ խումբ բաժնուելու գեղերուն մէջ, և առատապէս վայլելու համեղ կերակուր, արմտիք, չամիչ և հոտաւէտ գինի մը. կու մնար անոյշ քուն մ'այլ քաշել, բայց իրենց պահնակներն զրոյց բերին՝ թէ զօրաց շարժմունք և խարոյկ (կրակ) կու

տեւմնեն. Մեկէն զէնքերնին առին դուրս վազեցին և բանակեցան բաց օդոյ տակ, որ ձիւնով ու ցըրտով ծեծեց ծածկեց զանոնք. և Թերևս բոլոր սառէին այլ, եթէ Քսենոփոն օրինակ չտար փայտ ժողվելու կրակ վառելու. և եղով (Թէ սուսամի, Թէ ռետնի) և ճարպով օծուելու: Բարեբաղդաբար՝ Թշնամեաց վտանգն մերձաւոր չըլլալով նորէն քաշուեցան գեղերը, դուրսը բանբեր և գիշերապահ Թողլով: Ասոնք Պարսիկ կամ Հայ աղեղնաւոր մը բռնեցին բերին զօրավարաց, և իմացան անկէ՝ որ Տիրիբազ իրենց անցնելու լերան ճամբան բռներ է. —Ինչ լեռնանցք էր այս, յայտնի չէ. որովհետև ինչուան հիմայ այլ այս կողմերս լաւ ծանօԹ չեն աշխարհագրաց և ճամբորդաց. բայց կ՚երևի Կինճ ըսուած վիճակին կողմերը: Յոյնք ամենէն ապահով փորձը սեպեցին շուտ և շիտակ նոյն լերան վրայ վազելը, յանկարծակի բերելով զՏիրիբազ, և յաջողեցան այլ. դիմացնին ելածը զարկին փախուցին, 30 ձի բռնեցին, Տիրիբազայ վրանն այլ ձեռուընին ընկաւ, անոր արծաԹոտիկ անկողնովը և կարասեօք:

Երկրորդ օրն այլ ձիւնի տակ քալելով և դարվեր ելնելով հասան այն բարձրաւանդակը՝ ուր Տիրիբազ բանակեր էր առջի օրը. անկէ այլ իրեք օԹեվան ըրին անշէն և ձիւնապատ լեռնադաշտաց վրայ, ինչուան որ հասան յԱրածանի գետ (յարևելեան Եփրատ), զոր և անցան ծանծաղ տեղէ մը, ուր ջուրն ինչուան գօտիներին կու հասնէր: Զարմանք է որ սառած այլ չէր, վասն զի դեկտեմբերի կէսն էր. այս կ՚երևի Թէ Արածանւոյ սաստիկ և նեղուցէ վազած տեղերուն մօտ էր անցքերնին Ծապաղջրոյ մօտերը, և ոչ շատ հեռու Պինկէօլ լեռներէն: Անկից այլ դարվեր սկսան ելնել Հայոց բարձրագոյն տափարակները, և երեք չորս օր շատ դժարուԹեամբ 50 մղոնի չափ կրցան եր-

թալ ձեան և սառամանեաց մէջ։ Բայց վերջի օրն և գիշերը (որ կ'երևի թէ Խնուսայ 5000 ոտք և աւելի բարձր լեռնադաշտին վրայ էին) շատ նեղեցան և վտանգեցան. հին ձեան վրայ՝ սաստիկ ցուրտ հիւսիսային հովով սկսաւ առատ տեղալ նոր ձիւն, որ գրեթէ մարդաչափ բարձրացաւ գետնին երեսէն, ամեն ճամբու հետք ծածկեց ընջեց։ Խեղճ Հելլենացիք յուսահատեալ՝ ձիւնածեծ բքախեղդ կ'ըլլային, չկրնալով ոչ առաջ և ոչ ետև երթալ. ոմանք ոտքի վրայ, ոմանք 'ի գետին փռուած՝ բոլորովին ճերմըկցեր, և սառելու փտանալու վտանգի մէջ էին. փուճ տեղ զոհեր կ'ընէին հողմոց հիւսիսահայոց, որ չհասկըցան Հելլենաց լացն ու լեզուն։ Մոսկուայէն դարձող նաբոլէոնեան բանակին սոսկալի և սրտակտուր տեսարանքն՝ 2200 տարի առաջ հանդիպեցան և նըկարեցան հոս Հայքայ բարձրաւանդակին վրայ, ուր որ նախահայրն մեր Հայկ իր տիրական տունը հաստատեր էր, և 'ի Բելայ կու նախատուեր, թէ «Բնակեցար 'ի մէջ ցրտութեան սառամանեաց»։ Սակայն այն ցրտերուն վարժելով մեր Հայկն և իր նման Հայկազունքն՝ կրցան օտարաց դէմ կենալ և Բաբելոնի ու Նինուէի ջերմանակներէն աւելի սերունդ թողուլ մինչև 'ի մեզ։

Անվարժ Յոյնք մահուան և կենաց միջակռուին՝ ամեն կարելի հնարք ըրին, ոմանք շարժելով, ոմանք քիչ մը գտած փայտերնին վառելով, և ոմանք այլ բոլորովին անշարժ մնալով. զորս ոչ տաքցընել կրցաւ և ոչ վեր կանգնել առաւօտուն պայծառ բայց վատոյժ արևն։ Գրաստուց մեծ մասն սառեր ճաթեր սև ժայռերու պէս ցցուեր էին ձիւնադաշտին մէջ. կորիճ զինուորներէն 30 հոգի և հասարակ կամ ծառայական մարդկանցմէ աւելի շատոնք մեռեր սառեր էին. շատերն այլ կիսամեռ և կիսաշարժ՝ կու ջանային պակսած կեան-

քերնին վաստըկելու. ոմանց աչքն կուրցեր էր պաղ հովէն բքէն և ձիւնէն, ոմանց ոտքերն ճաթըռտած, ոմանց այլ կէս մարմիննին փտտցած: Վերջապէս առաւօտն՝ ոչ միայն լուսատու այլ և յուսատու է. սկսաւ շարժիլ մեռելակերպ բանակն, մանաւանդ թէ գերեզմանակերպ, թմրած ու ճերմըկցած. բայց շատերն հազիւ քանի մը քայլափոխ ըրած՝ գլորէին ՚ի գետին, նոր հիւանդութեամբ մը բռնուած, զոր պօ—լիմիա կոչէին, անօթութեան և տկարութեան հետևանք. որոյ դեղն էր կերակուր և տաքնալ. բայց հազիւ թէ նոյն իրիկունը կրցան գտնել այս դեղը, այն այլ ոչ ամենքն:

Քիրիսոփ յառաջադէմն իր գնդովն հասաւ գեղ մը, որոյ պատին քով աղբիւրէ մը ջուր կ՚առնուէին աղջկունք. զասոնք խաբելով ըսին որ Պարսից թագաւորին կողմէն կու գան առ նախարարն՝ և մտան գեղը հանգչելու: Իսկ մեր խղճալի Մեղուն՝ այն օրն այլ շատ չարչարուեցաւ իր վերջագնդովը, և շատերը թողուց ձեան վրայ, որ կամ ցրտէն և հիւանդութենէ մեռան, և կամ թշնամիներէ զարնուած, որք և խեղճերուն ողջ մնացած գրաստներն այլ յափշտակէին. ինչուան որ տառապեալքըն հեռուէն տեսնելով սև գետին մը՝ ձիւնը հալած կարծեցին և հոն վազեցին. և գտան շոգելից ջերմուկ մը, որ ՚ի հարկէ քովի ձիւնը կը հալեցընէր և հողն յերևան կու հանէր: Հաւանօրէն այս ջերմուկս պիտի ըլլայ Բասենոյ դաշտին հարաւակողման լերանց վրայ, ուր իջան Յոյնք, (որպէս Թուրի Դեղթափ և Ջէքմէ? լերանց միջոց լեռնանցքըն): Տաքը տեսնելուն պէս ցրտահար և անօթի գունդն փռուեցաւ ջրին եզերքը. Քսենոփոն՝ որ լաւ գիտէր անոր վնասը՝ ամենայն հնարքով յորդորեց, վախցուց, սպառնացաւ, բայց չկրցաւ հեռացընել շատերը, որք՝ Սպաննելու այլ ըլլամ՝

տեսկէ չէինք շարժիր, ըսին, Նստան: Եւ ահա մեր Նախնի հարց չարաճճիկ լաճերն և Պարսիկք սկսան անոնց վրայ նետեր Թափել փոխան ձեան: Այն ատեն կորիճներն յուսահատաբար ելան վազեցին ասոնց վրայ, խակ տկարքն միայն զէնքերնին վահաններուն զարնելով վախցընել կու ջանային: Այս փորձս Քսենոփոնի իշխաններէն ազդու եղաւ. սկսան շարժիլ ու առաջ երԹալ. և քիչ մ'որ հեռացան՝ իրենցմէ առաջ հասնող գնդի մը հանդիպեցան, որ հոն փռուեր վերարկուներնուն տակ ծածկուեր էին. զանոնք այլ քաջալերելով և խիստ տկարները ուրիշներուն Թևով քշելով կամ կրելով՝ դէպ 'ի գեղերը ուղղեց. նոյն միջոցին Քիրիսոփէն այլ մարդ եկաւ, առաջնորդեց, և հասան մտան իրենք այլ չէնքի տակ, այլ և այլ գեղերու մէջ:

## Է

Քսենոփոնի վիճակուած գեղին վրայ վազեցին Յունաց կորիճք՝ Պոլիկրատ ԱԹենացւոյ մ'առաջնորդուԹեամբ, և բռնեցին գեղին գլխաւորը (որ հիմայ մելիք կամ ռէս կ'ըսուի), և անոր նոր հարս աղջիկը, որուն փեսայն որսի գացեր էր. քանի մ'այլ աղէկ ձի բռնեցին, զոր Հայք հարկի տալու տեղ կու բուծանէին: Քսենոփոն գեղապետին սիրտ տալով վախը փարատեց. նա ալ պատուիրեց որ սիրով ընդունին այս անծանօԹ հիւրերը. և ուԹ օր բարեկենդան մը ընել տուին՝ հողածածուկ և տաքուկ տներուն մէջ, ուր անասունք կենդանի վառարան մ'էին Թոնիրներէն զատ: Հոն առատ և կերպ կերպ մսեղէն կերակրոյ հետ գտան ընդեղէններ այլ, և պատուական գարեջուր ու գինի՝ գետնաԹաղ կարասներու մէջ. ուր ուզողը կ'երԹար եղէգ մը կու խոԹէր և ծռած վեր կու

քաշէր խմեր։ Այս Յունաց բարեկենդանին զուարճութիւնն այլ էին մեր Հայ մանչերն. որոց նորատեսակ հագուստն, մնչնակատակ ձեւերն՝ նշանացի խօսելով, ծառայելու ատեն հաստ ու բարակ շարժմունքն՝ շատ ծիծաղի պատճառ եղաւ Եւրիպիդեայ և Արիստոփանի թատերաց առաջին ականատես եղող Հելլենաց։

Շաբաթ մը հանգչելէն ետև Քսենոփոն շատ շնորհակալութեամբ՝ ծեր ձի մը ընծայ ըրաւ գիւղապետին՝ որ արեգական զոհէ.— դեռ արևապաշտ էր այն ատենուան մեր պապն՝ Բասենցի կամ Թէքմանցի ուէմն.— ուրիշ ընծանեք ալ տուաւ. բայց ինքն այլ առաւ երկու լաւ մարուկ, իր ըսպայիցն այլ մէկ մէկ հատ տուաւ։ Ասոնք այն անուանի հայկական ձիոց քուռակներն էին՝ որ Պարսից թագաւորին ընծայ կ'երթային տարուէ տարի, իբրև 20000, կամ աւելի. պզտիկ քան զՊարսից ձիանն՝ այլ աշխոյժ և քալուկ։ Հայ գեղապետն սովրեցուց Յունաց՝ որ ձիոց ոտքերուն տակ քսակ մը կապելու է՝ որ կարենան ձեան վրայ քալել. եթէ այս բանս մեր նրբամիտ Աթենացիք առաջուց գիտնային՝ թերևս այնչափ կորուստ չէին ըներ լերանց վրայ։ Փոխարէն այս բարի խրատուն՝ անգութ սպարտացի զօրավարն Քիրիսոփ՝ երեք օր ճամբայ ընելէն ետև յանիրաւի կասկածելով որ գիւղապետն (զոր իրենց առաջնորդ առեր էին) կամաւ անշէն տեղերէ կու տանի՝ յանդիմանեց ու ծեծել տուաւ. որոյ համար Քսենոփոն գժտեցաւ Քիրիսոփի հետ. մանաւանդ որ գեղապետն այլ գիշերանց փախաւ տեղը դարձաւ. բայց իր մէկ որդին որ Յունաց քով էր՝ մընաց հոն, և վերջը յօժարութեամբ գնաց անոնց հետ 'ի Յունաստան։ (յԱմփիպօլիս, իրեն տիրոջ Եպիսթենեայ տուն, և միշտ հաւատարիմ մնաց. 'ի հարկէ աղէկ յունարէն այլ սովրելով։)

Բասենոյ ընդարձակ դաշտերուն մէջ եօթն օր թափառեցան Յոյնք, ինչուան որ հասան Երասխ գետը, զոր Քսենոփոն Փասիս կոչէ յանուն Բասենոյ. հոս այլ չորս օր դադրեցան գիւղօրէից մէջ. ապա ելան և անցնելով գետը՝ մտան Հաւնունեաց և Վանանդայ սահմանները, ընդ մէջ Տայոց և արեւմտեան Գուգարաց: Այս երկու նահանգաց առջինը Յոյնք ստոյգ Տայք (Տաօք) կ'անուանեն. իսկ երկրորդին տեղ Խալխօդք կամ Խալիւբք կ'ըսեն. որով յայտնի կ'ըլլայ այն ատեն Խաղտեաց ազգին մեծութիւնը և ընդարձակ սահմանները. բայց մեր աշխարհագրութեան նայելով ասոնց հոս ըսած Խալիւպքն՝ Արտահանի (Գուգարաց), Կողայ (Տայոց), որ հիմայ այլ Կէօլէ կ'ըսուի, և Կարնոյ կողմերն իմանալու է: Այս կողմերս կորիճ լեռնաբնակք կային, որ իրենց անցքերը բռնելով հակառակեցան Յունաց. բայց անոնք վերջապէս գիշերանց զոհ ընելով առաւուն իջան լեռներէն (որ Թուխին Քիրէճլի կամ Գարկապազար ըսուածքըն հիմայ), մտան Տայոց մացառոտ և ժայռոտ երկիրը. ուր շատ դժարաւ կրնային առաջ երթալ. մանաւանդ որ թշնամիք այլ անդադար լեռներէն քար ու նետ կու թափէին վրանին, որոնց հետ անօթութիւնն այլ կու տանջէր զՅոյնս. մինչև որ հասան գեղերու և կրցան պաշար ճարել: Անկից դէպ յարեւմուտք երթալով (հաւանօրէն մեր Տայոց աշխարհին Պարտիզացփոր, Բերդացփոր և ուրիշ փորակաւոր և ձորակաւոր գաւառաց մէջէն), չորս օրէն հասան ընդարձակ ամուր տեղ մը, որ բնակութեան չէնք չունէր, և կ'երևի թէ կամ Ոսհվոյի կարաւանատանց պէս տեղ մ'էր, ուր կային բազմութիւն արանց և կանանց հանդերձ անասնօք, և կամ մեծ վաճառատեղի մը: Յոյնք յարձակեցան այս ամրափակ տեղւոյն վրայ, բայց վրանին անանկ քարէ կարկուտ մը իջաւ 'ի

պաշարեալ Հայոց, որ յետ քաշուեցան. Քսենոփոն նորէն սիրտ տուաւ քիչ մ՚այլ դիմանալու և շուտով դիմելու, վասն զի կարճ անցք մ՚էր վըտանգաւոր տեղւն, և անկէ անդին եղևնեաց անտառ մը կար՝ որ քարերուն դէմ պիտի կենար. քարերն այլ անհատնում չէին: Այնպէս այլ եղաւ, Յոյնք վերջին յարձակմունք մ՚ըրին, ՚ի հարկէ ոչ անվնաս, բայց հասան մտան ներս:

Հոս սարսափելի և քիչ հանդիպած տեսարան մը բացուեցաւ երկու կողմին այլ. Տայք՝ անճրկած և յուսահատած՝ բայց չուզելով վատութեամբ օտարաց ձեռքն ընկնիլ՝ կրցողը փախուցին. անկար կանայք կրցողներէն աւելի կրցան. կատաղեաց պէս այլակերպած, մազերնին ցրուըտած, աչուըննին խոլոռած, փոխանակ քարի՝ սկսան մանր զաւկըննին օդուն մէջ պարսելով քարաձոր վհերու մէջ նետել, անոնց ետևէն զիրենք այլ գահավիժելով անդարձ անդնդոց մէջ. բնական յանդգնութք արք այլ նոյնպէս ըրին. անանկ որ Յոյն մը՝ անոնց գըլխաւորներէն մէկը բռնել ուզելով անոր հետ մէկտեղ վհերուն մէջ փրթաւ ջախջախեցաւ: Հազիւ քանի մը հոգի կրցան բռնել Յոյնք. բայց շատ անասուն գտան և առին, էշ, ոչխար և կով. որ իրենց պիտանի եղան հետևեալ օրերուն, երբ Խալիւբաց կամ Խաղտեաց երկիրը մտան, որ Թուի արևմտեան Տայք, կամ Թավուսկեարի (բուն Տայոց) և Թորթումայ կողմերը. գուցէ քիչ մ՚այլ աւելի դէպ հիւսիս մոլորեցան. վասն զի իբրև 50 փարսախ (150 մղոն) ճամբայ ըրած կ՚ըսուին այն երկիրը, որոյ բնակիչք քան զՀայս և զՏայս աւելի յանդուգն և բուռն էին, աղէկ այլ սպառազինուած. Սպարտացւոց նման այլ կարճ թրեր ունէին, որք քանի մը Յունաց գլուխներ իրենց ափը ձգեցին. իսկ միասայր նիզակնին՝ Կորդուաց նման 15 կանգնեայ էին: Անվախ կու գային պա-

ըելով երգելով. Թշնամեաց դէմ գրգռելու, կամ իրենց ամուր գեղերուն մէջ պահուըտած՝ յանկարծ կ'ելնէին. իսկ եթէ հալածուէին 'ի Յունաց՝ ուելի ամուր տեղուանք կ'երթային, ուր որ իրենց պաշարներն այլ ապահովեր էին։

Յոյնք շատ զգուշութեամբ և ոչ անվտանգ առանց սահմաններէն խուսելով հասան 'ի գետ մը իբր 400 ոտք լայն զոր Քսենոփոն Արփասոս, Դիոդոր՝ Արփսոս կոչէ. և որուն (առջինին) անուան նմանութենէն՝ չեն խղճեր քանի մը երևելի աշխարհագիրք[1], հիմկու այլազգեաց Արփա—սույա գետը համարել, որ է մեր նախնեաց Ախուրեանն, և կ'անցնի 'ի դաշտէն Շիրակայ՝ Անիի քովէն։ (Այսչափ զՅոյնս դէպ յարևելս խոտորեցնողք դուցէ կրնային ինչուան Սիւնեաց երկիրն այլ տանիլ, ուր բուն հայկական Արփա գետ մը կայ 'ի Վայոց-ձոր։) Ոմանք այլ Ապասարոս գետը կարծեցին, բայց այն այլ Պոնտական լեռներէն անդին և ծովուն մօտ է. հաւանօրէն կամ Թորթումայ գետն կամ նոյն իսկ անոր ջրերը ժողվող մեծ և ծանօթ Ճորոխ գետն էր Արբասոսն կամ Արբակն այն, որոյ առոգած վերջին Տայոց գաւառն՝ է Ար-սեաց-փոր, հիմկու Կիսկիմայ և Խոտուջրոյ կողմերը, թէ և Յունաց տեսածին չափ լայն չեն այս գետերս։

## Ը

Այս գետս անցնելով մտան Յոյնք 'ի դաշտս Սկիւթաց կամ Սկիւթինեանց կամ Սկիւթինաց. որն այլ ըլլայ անունն՝ տեղն յայտնի չէ. այլ հասարակաց հաւանութիւն է թէ ըլլայ Կարնոյ դաշտն, որ հին ատեն չէր յիշուիր մեր պատմութեան մէջ,

[1] Ինչպէս Ժօպէր, Ինզուըրթ (Ainsworth), և այլն։

և հաւանօրէն ուրիշ անուն մ՚ունէր։ Երեք օր այս դաշտին մէջ քալելով հասան մեծ և բազմամարդ քաղաք մը՝ Գիւմնիաս կամ Գոմնիաս ըսուած. զոր ոմանք նոյն իսկ Երզնկում քաղաքը կարծեն, այսինքն անոր տեղ եղած հին քաղաքը (որ ըստ մեզ չկայր այլ). ոմանք այլ Կարնոյ հարաւային արևմտեան ծայրը եղած Ճինիս գիւղը. ոմանք այլ այս անուան մերձաւորութենէն կախարգուած՝ կարծեն զԿիւմիւշխանէ, և պատճառ՝ անոր արծաթահանքով ծանօթ ըլլալը կու դնեն։ Այս գլխաւոր տեղն այլ դեռ վէճի տակ է. բայց Կարնոյ, Սպերոյ և Բաբերդու միջոց ըլլալն շատ հաւանական է։

Գումնիասայ (Թերևս Գոմուց) իշխանն՝ Յունաց մարդ խաւրեց և խոստացաւ զիրենք անվնաս հասցընելու իր Թշնամեաց երկիրը, խնդրելով որ անոնք այլ այն Թշնամի երկիրը այրեն ու աւրեն. առաջնորդ մ՚այլ տուաւ, որ խոստացաւ հինգ օրէն ցուցընել Յունաց իրենց ցանկալի ծովը։ Երկու կողմէն այլ խոստմունքնին կատարեցին. Յոյնք անցած տեղերնին այրելով աւրելով, որոյ համար իրենց ետևէն ընկած բնակիչներն այլ կու հալածէին, և անոնց ուռենիէ հիւսած վահանները՝ իբրև յաղթանակ առին, զոր և իրենց առաջնորդն ուրախութեամբ կու կոտրտէր. վերջապէս հասուց զանոնք մէկ սրբազան լեռ մը, ինչպէս կ՚ըսեն Յոյնք, և կանուանեն Թէխէս, կամ Քէնիոն ըստ Դիոդորի. զոր հիմայ հնախոյզք կարծեն Կոփ լեռը, ընդ մէջ Կարնոյ և Բաբերդու, ուսկից ճամբայ այլ կայ 8000 և աւելի ոտք բարձրէն. սակայն եթէ Գիւմնիաս քաղաքն Կարնոյ դաշտին արևմըտակողմն էր՝ ինչուան 'ի Կոփ հնգօրեայ ճամբան խիստ շատ է. առկէց այլ զծով տեսնել իբր 60 մղոն հեռուէն ամեն աչքի համար չէր։ Յոյնք՝ գոհութ̃ք առատապէս վարձատրեցին առաջնորդնին

թէ սառակով և թէ զգեստով. բայց նա աւելի փափագով ուզէց և առաւ անոնցմէ շատ մատանիներ ու դարձաւ։

Այնքան մեծ և անպատմելի եղաւ Յունաց ուրախութիւնն 'ի տեսանելն հեռուէն իրենց սեփական որոտան համատարած աղի ջրերուն փայլուն մակերևոյթը, և այնքան մեծաձայն ծով ծով կանչէին, որ մօտ եղած գրաստներն խրտէին և շփոթէին. վերջապահ գունդն և հեռուն գտնուողք, կարծեցին թէ թշնամիք չորս կողմն բռներ են, և զէնքի վազեցին։ Բայց երբ իրենց դէմ ոչ հակառակող՝ այլ աւետաբեր տեսան, և կէս հաւատալով կէս անհաւատ լեռն 'ի վեր վազեցին՝ և իրենք այլ տեսան զծով, ամենքն իրարու պլլուեցան, զօրավար և զինուոր. և շատերն ուրախութեան արցունք թափեցին երկար ատեն։...

Այսպէս ելան մեր հայրենի սահմաններէն։ Պէտք է, երթանք բարով ըսենք, անոնց, Հայկակ, մերազգի առաջնորդին հետ ցուցընելով մօտաւոր գեղը և Մակրոնաց ազգին երկիրը և Ճամբան. ուր որ հասան Յոյնք երեք օր թափառ մացառուտ բլուրներէ իջնելով. անկէ այլ իրեք օրէն մտան 'ի սահմանս Կողքեաց. անկէց այլ երկու իրեք օրէն հասան 'ի Տրապիզոն, իրենց ազգակից գաղթականաց մէջ, և տարիէ մը վեր հեռացած և փափագած ծովուն եզերքը. և մտան հոն յետ ամիս մը հանգչելու և բարեկենդան ընելու 'ի մեծի քաղաքին Պոնտոսի, ու նաւելով 'ի Սինոպ և ուրիշ ծովեզերեայ քաղաքներ, ապա քիչ մ' այլ ցամաքէն երթալով, երբ վերջի միաբան իջևանն ըրին 'ի Խրիւսոպոլիս, այսինքն յՈւսկիւտար Բիւզանդիոնի, օգոստոսի սկիզբը, և անկից ցրուեցան իրարմէ, Կիւրոսի հետ Ճամբայ ելնելնէն տարի ու կէս ետև։

## Թ

Կորդուաց լեռները և Հայոց հարաւային սահմանները կտրած առեննին, ինչպէս ըսի, նոյեմբերի կէսերն էր, իսկ Թաղոնաց լեռը ելած և ծովը տեսած առեննին, 'ի հիւսիսային սահմանածայր Հայոց, փետրուարի սկիզբն էր. ուրեմն երկու ամիս ու կէս ամենէն ցրտագոյն եղանակին (Քրիստոսէ առաջ 401-400 տարին) այս հռչակաւոր Բիւրն Յունաց, դերահռչակ զօրավարի և պատմչի առաջնորդութեամբ՝ կատարեց այս յաւերժայիշատակ նահանջը, անոր դժարութեան մեծագոյն մասը գտնելով մեր աշխարհին մէջ. ուր և գտնէ հազար մը կամ հազարներ այն ծաղկահասակ Հելլենաց՝ ծածկեցան հիւսիսային սառամանեաց և հայկական հողոյ մէջ: Քսենոփոն որոշ թիւ չըսէր. սովորաբար 10000 կ'ըսուին նահանջողք, այլ ըստ ոմանց 13000էն աւելի էին Կորճայից սահմաններուն մօտ. Քսենոփոն՝ Տրապիզոնէն անդին 'ի Կերասոնտ (Քիրէսուն) դեռ 8600 հոգի կու յիշէ. իսկ Դիոդոր Սիկիլիացի ինչուան յՒւսկիւտար՝ տասն հազարէն միայն 3800 մնացած կ'ըսէ: Մեր աշխարհին բարձր կլիմային և օտարաց անփորձ ցրտոյն համեմատ, միանգամայն Պարսից թշնամութեամբն հալածուելով, եղած կորուստն՝ դեռ կրնայ քիչ ըսուիլ. և պէտք է ապրողք շնորհակալ ըլլան նախ իրենց փիլիսոփայ վերջնապահ զօրապետին, և ապա նոյն իսկ մեր հայրենակցաց, որք աւելի մարդասէր և հիւրընկալ եղան անոնց՝ քան իրենց սահմանակիցքն, Կորճայք, Տայք, Խաղտիք, և այլն. և եթէ Պարսից թագաւորի կողմնակալքն չըլլային 'ի Հայս՝ աւելի հանգիստ և դիւրին կ'ըլլար Յունաց Բիւրուն նահանջն: Ձմեռուան համար այլ ըսելու է

որ որչափ սաստիկ էր՝ դեռ սաստկագոյն տարիներուն մէկն չէրևիր, այլ և մեղմագոյն. շատ տեղ՝ աղբիւրներէ ջուր հանելն (որ ուրիշ կողմանէ կու յիշեցընէ մեզ Նահապետական Իսահակները և Ռաքէլները), կամ նաև միջակ գետոց (չսառած) միջէն անցնելնին՝ այս բանը կու ճշմարտէն. անկէց զատ կու հաստատէ նոյն պատմութիւնն՝ թէ այն ատեն այսչափ մերկ չէր մեր երկրին երեսը, այլ աւելի ծառոտ և անտառոտ, որով ցրտին դէմ գնելու երկու ճար այլ կար, մէկ մը հովը արգելլով կանաչասև կամ ճերմակապատ վարագուրով և պատուարաւ մայրեաց, մէկ մ'այլ անոնց ճղերով կրակ ընծայելով. յետագայ գարուց պատմութիւնքն այլ զայս ցուցընեն:

Ճանապարհորդաց մեծ մխիթարութիւն մ'այլ էր բարեկամութեամբ ընդունող գեղերու և գեղացւոց քով գտած առատ պաշարներն, թէ մսեղէն (որոյ մէջ յիշուի խոզեններն այլ), թէ ընդեղէն և չոր պտուղ, ու մանաւանդ զօրաւոր գինի մը, զատ'ի գարեջրէն: Ասոնք յայտնի նշան են թէ այն ատեն շատ աւելի բարեկեցիկ էին մեր գիւղացիք՝ քան հիմայ և ուրիշ ատեններ, երբ այնքան փոփոխութեանց և հարստահարութեանց տակ չէին ընկած. այլ կամ իրենց բնիկ Հայկազն թագաւորաց կամ արևելից մեծ տիեզերակալին կանոնաւոր իշխանութեան տակն էին. միայն երբեմն դրացի ազգաց ասպատակութենէն կու նեղուէին. սակայն անոնց դէմ կենալու ոյժն այլ ունէին. հին Հայ երկրագործաց եղբարքն՝ էին Հայ զինաւորք: Հայոց թագաւորն այն ատեն հարկատու էր Պարսից, որք երկու մեծ կուսակալութիւն բաժնած էին զաշխարհը, յարևելեան և յարևմըտեան. սակայն այս արգել չէր որ Հայկազն թոռն Տիգրանայ՝ իր նախնեաց օրինօք չկառավարէր իր սեփական ազգը:

Հայաստանէ անցնող Յոյնք այլ բոլորովին անծանօթ չէին մերոնց, որք և սահմանակիցք կըրնային ըսուիլ՝ Փոքր Ասիոյ մէջ, ուր հազարով տարիներ առաջ մեր Արամ նահապետն երկու ազգերը մօտեցուց իրարու, և թերևս այս առաջին անգամն չէր մերձաւորութեան. իսկ յետ անոր՝ շատ անգամ այլ զիրար ճանչցեր էին, սկսեալ 'ի կիսաստուած ուղևորութենէ Արգոնաւորդաց, մինչև յարշաւանս Դարեհի և Քսերքսեսի 'ի Յունաստան, որոց բանակաց մէջ կային հայկական գունդք: Բայց ասոնցմէ առաջ և քիչ ետք յԱրգոնաւորդաց, իբր 800 տարի նախ քան զՔսենոփոն և իր բիւրը, Բիւր մը Հայոց այլ կորիճ հեծելոց քան հետևակաց՝ գնացին, թէ ոչ 'ի բուն կղզիականն Յունաստան, այլ ընդդէմ Յունաց. մինչև յարևմտեան ծագս Փոքուն Ասիոյ, յԱրմաւրայ մինչև 'ի Տրոյա, 18 աշխարհագրական աստիճանի երկայնութեամբ հեռի միջոց հորիզոնական ուղղութեամբ (գրեթէ նոյն լայնութեան աստիճանին տակ էին Պուխամու և Զարմայրի մայրաքաղաքքն). երբ այս ետքինս Ասորեստանեայց Տևտամոս ինքնակալին կամօք՝ գնաց յօգնութիւն որդէկոտոր ծեր Թագաւորին Դարդանեանց, և 'ի վրէժ սպանմանն Եկտորի յոխերիմ դիւցազնէն, թէ և ինքն այլ քաջութեամբ վիրաւորեալ ընկաւ հոն. «այլ յԱքիլլեայ կամիմ, և մի՛ յայլ ումեքէ 'ի քաջացն»: Բայց ո՞ւր մնաց մեր այն ժամու Քսենոփոնն՝ որ այս հայկական Բիւրուն անցքն ու գիպուածը ճառագրէր... Արդեօք չէ՞մք ունեցեր, թէ ոչ Հոմերոս մը, գոնէ Դիկտիս մը և Դարեհ մը տրովական պատերազմաց պատմող: Հիմայ ձեռուընիս բան չկայ, և ոչ իսկ համբաւ ոյնքան հին ժամանակաց. — մինչդեռ Քսենոփոն՝ մեր աշխարհին ծանօթութիւնները կու բանեցընէ ոչ միայն այս Նահանջիս գրոց մէջ, այլ նաև Կիւրամարդին:

## Ժ

Սակայն չեմ ուզեր անմխիթար լռել, Հայկակ. եթէ Քսենոփոնէն 800 տարի առաջ չունեցանք իրեն նմանը, իրմէ 800 տարի վերջը ունեցանք մէկ մը. այն ոսկեգիր և մեղրաբան մէկն՝ զոր ժամանակիս հայ գրականութիւնը նորոգող հարք և զայն յարգողք՝ անուանեցին Հայ Քսէնոփոն. Վարդանանց պատերազմին Պատմիչն: Ո՞վ կարծէր թէ Քրիստոսէ չորս դար առաջ Ատտիկեցի մեղուին անցած Մոկաց լերանց սահմաններուն վրայ՝ պիտի գար Քրիստոսէ չորս հինգ դար ետև՝ իր քաղցրաթեւ կենաց հիւսուածը ամփոփելու՝ Աւարայրէան մեղուն ԵՂԻՇԷ. որ և ինքնին այս Քսենոփոնի անցած բարձր կոհակները՝ Ձիւնեղէն լերինս Հայոց անուանողն է: Ո՛վ կարծէր թէ մեր մեղուն այլ երբեմն Ատտիկեցւոյն նման՝ զինակիր էր Վարդանայ՝ մեծի և սիրելւոյ քան զԿիւրոս և զՊրոքսեն: Ո՛վ կարծէր թէ Եղիշէ այլ փոխանակ Քսենոփոնի՝ անոր հայրենիքը պիտի երթար՝ պարզ բանաւոր մեղրաբանութեան համար; և անոր Սոկրատա վարժապետին և բարեկամին տեղ պիտի ունենար Սահակ և Մեսրովպ մը 'ի Հայս, Կիւրեղ մը յԱղեքսանդրիա. — անոր լայնաճակատ ու լայնակռնակ աշակերտակցին (Պղատոնի) տեղ՝ Եզնակ մը, Դաւիթ մը և Մովսէս (Խորենացի) ուսումնակից, որք Աթենայ հանճարը փոխադրեցին 'ի Հայս: Մենք պէտք է հաւասար շնորհակալ ըլլանք մեր ազգակից Հայ հանճարեղ հարց այլ, հելլենացի վարժապետաց այլ. և եթէ աւելի պանծանօք քան Յոյնք զՔսենոփոն՝ պատուեմք զմերս արարատեան մեղու, դու այլ ո՛վ Ատտիկե-

ցիդ (Քսենոփոն՝) անշնորհք մ՚ըլլար եթէ անուանեմք զքեզ՝ ՑՈՑՆ ԵՂԻՇԷ։

Արդ այս բաւ է մեզի այլ քեզի այլ. դարձիր դու փութով քու հայրենիքդ՝ պաշտպանելու հին վարպետդ բարեկամդ և մարտակիցդ, Սոկրատը։ Ահա զծերուննին կու քաշեն ՚ի բանտ. ահա մոլեխընդին մահաբեր բաժակը ձեռքն է. — եթէ չկըրցար ազատել զնա յԱնիտոսեանց, որպէս ոչ մերքս զՎահան ՚ի Սուրմակեանց, կամ հին հաւատարիմքն՝ զՆերսէս և զՏրդատ, գրէ գոնէ անոր Պաշտպանութիւնը, որպէս Խորենացին զՈղբն, և Եղիշէ իր պատմութեան և միաբանից Ճառին մէջ՝ սրտառուչ յիշատակները։ — Եւ եթէ դու այլ հալածուիս և աքսորուիս՝ քու նրբամիտ՝ այլ փոփոխամիտ քաղաքացիներէդ, ատով այլ Եղիշէի և ընկերակցացն հալածանաց և կամաւոր աքսորանաց կամ միայնութեան նման սեպուիս։ — Ա՛ռ դու այլ Կորնթոսի օտարութեան և առանձնութեանդ մէջ՝ մեղրածոր գրիչդ, և Կիւրամարզի վիպասանութեանդ մէջ խառնէ ՚ի Հայաստան և ՚ի Հայոց լռածներդ, իրենց դար մ՚առաջ վախճանած սիրելի Տիգրանին վրայօք. հիւսէ անոր պարկեշտ ու խանդակաթ կողակցին նազաբանութիւնը, հանդերձ քու Պանթէայիդ կեղծ ողբերգակ պատմութեամբ. որոյ փոխանակ աւելի վսեմական փափկութեամբ մենք կարդանք մերազգի մեղուին դրուագը՝ զփափկասուն Տիկնայց Հայոց աշխարհին և զկանանց կապելոց նախարարացն։ — Ի հարկէ չես մոռնար Տիգրանէն առաջ՝ անոր պէս Հայոց սիրելի եղած՝ իրենց գեղեցիկ և ողջախոհ նահապետին՝ Արայի՝ մահը և առասպելախառն յարութիւնը՝ պատմելու քու քաղաքական վարչութեան կարծեացդ ընդդիմաբան, այլ և քեզմէ մեծ ու ճարտարաբան գրչին և իմաստասիրի՝ Պղատոնին. որ անհաւան չէ թէ քեզմէ լսած՝ և

այլափոխած պատմէ իր Հասարակապետութեան գրոց մէջ Էր Հայկազին [1] դարձն՚ի մեռելոց և տեսիլքը ։ — Իսկ երբ Յէտըրմանուեան կամ Հէծէլուեան վրայ գրես, անշուշտ չես մոռնար հայկական եռանդուն երիվարները և քու սիրով առած մըտրուկներդ, և այն խնամքն՝ որով Հայք դարմանէին զանոնք ։ Որոց վրայ այլ գրած ատենդ, և մանաւանդ Նապաստակին ճարտար նկարագրութեան ատեն՝ անշուշտ դեռ կու յիշես Հարքացի կամ Հաւնունի (կամ այլ Հայ գաւառի մը) գեղապետին փեսայն, որոյ ննօրեայ նոր հարսը գերած կամ պատանդ բռնած ատենդ, նա անգէտ եղածին՝ Նապաստակ որսալու ելեր էր ՚ի սառնապատ սարս ձիւնեղէն լերանցն Հայոց ։ — Այսպէս քու զանազան գրոցդ մէջ՝ յայտնի կամ ծածուկ խառնես մեր Հայաստան աշխարհի յիշատակները՝ քու բանական մեղրդ գործելու. ինչպէս մերս Եղիշէ այլ՝ իր ազգին վրայ գրած ատեն՝ քու հայրեննեացդ իմաստից ծաղկներումն պիտի հիւսէ իր քաղցրաբանութիւնը ։

Արդեօք այս երկուքէն որն աւելի անուշահամ է և պիտի ըլլայ մինչև իսպառ՝ համազգային ճաշակաց, Ատտիկեցին՝ իր Հելլենաց, թէ Արարատեանն՝ մեզ Հայոց ։

1 Ազգաւ Հայ և ծննդեամբ Պամփիւլիացի կ՚ըսէ Պղատոն. տես ՚ի Բազմավէպ ԺԴ. էջ 341 ։

# ԻԲ

# ՆԷԱՐՔՈՍ ԵՒ ՊՈԼԻՔՏՈՍ

## 22 *Ապրիլի*, 260.

## Ա

Ապրիլ ամսոյ 22. գարնանային եղանակի գեղեցի՛կ օր. գեղեցի՛կ և զբօսանք մտաց ու մարմնոյ 'ի գեղեցկութեան վայրի, այսինքն 'ի բնութեան. 'ի մէջ նորաբողբոջ և բարգաւաճ ծաղկանց և տընկոց, պայծառ ջրոց հեզասահ կամ կարկաջուն գնացից քով, դալարածայր ծառոց անուշահոտ ոստոց հովանեաց տակ, հաշտ և անկասկած երկնակամարին ներքև: Այսպիսի ատեն այսպիսի տեղ՝ քաղցր է թողուլ երբեմն ընտանի հոգեր և առանձին մտածութիւններ (բարձրերն անգամ), և առանց նուաստանալու 'ի մարդկութենէ՝ խոնարհիլ բնութեան ուրիշ անմեղ որդւոց հետ, մարդասէր կենդանեաց հետ խառնուիլ, խաղալ ընդ գառին և ընդ ուլու, անոնց և մեզ համար հաւասար սփռուած մարմանդից վրայ. յիշել և կարդալ հին մարդկան հովուական երանախառն ըսուած կեանքը, գոնէ ըստ նկարագրութեան քերդողաց:... Բայց ո՞ւր են մեր հովուերգակքն. ո՞ւր Հայ Թէոկրիտք և Մառոնք, որ հուշակէին հայրենի եդեմաբուղխ գետոց հովիտները՝ ոչ պակաս, այլ և աւելի գեղեցիկ և երջանիկ եղած քան զԱր-

կադիա։ — Արկադիա՛. Յոյն և Լատին քերդողաց երազեալ Եդեմն, ուր ընդ ամենայն գեղեցկութեանց բնութեան՝ ընդ հովտաց, ջրոց և բուսոց՝ խառնէր և երգոց ներդաշնակութիւնն այլ, իբրև իր բնիկ երկրէն բղխելով. ուր հովուաց հեղինակն և պաշտպանն՝ պայիկն Պան՝ հնարեց Սրինգը, և շրջակայ գեղեցիկ տեղեաց և անոնց միջի գեղեցկաց անուններն՝ քաղցրալուր հնչակեցան։ Երբ կաթնաառուն շրթունք 'ի շար եղեգանցն փոխացին, տեղւոյն բրտաբարոյ բնակչաց վրայ անանկ երանգերանգ քող իջաւ, որ բուն մարդավայել և երանադոյն երկիր՝ այն տեղն կարծուեցաւ. վայրենի ու անկիրթ սեպուեցան սիրտ և ականջ՝ որ չհաւանին անոնց կեղծեացն անգամ, կամ չախորժին այսպէս գարնանահոտ օրեր՝ պարապիլ անոնց հռչակողաց հռչակեալ գրուածոց հետ. և նոյն ինքն հռչակող բանաստեղծքն՝ թէ և օտարք և հեռիք աշխարհաւ, այլ դրեթէ կու հարկաւորէին իրենց գովանի հովիւները և երգողները Արկադացի ընել. և թէ և ոչ պակաս քան զԱրկադիոյ՝ այլ գուցէ և աւելի գեղեցիկ Իտալիոյ մասին վրայ, Մինչիոյ գետոյն հովտաց մէջ կ'երգէր և երգել կու տայր Մառոն (Վիրգիլիոս) իր Թիրսիսը և Կորիդոնը, բայց դեռ Արկադացի կ'անուանէ զանոնք.

Երկաքանչիւր խակ ծաղկաւորք, երկաքանչիւր
Արկադացիք
Եւ յերգել հանգիտազօրք, եւ յանդրադարձըն դիմագրաւք[1]։

Զըլլան մեզի այլ անախորժ, ով Հայկակ, ոչ անունն, ոչ բնութիւն և ոչ երգիչք Արկադիոյ. մա-

1 Ambo florentes aetatibus, Arcades ambo,
Et cantare pares et respondere parati.

նաւանդ օտարաց մէջ՝ մեզի այնչափ քաղցր ըլլայ, որչափ անոր չինական և բնական վայրացը մէջ՝ կու լսենք ոչ սակաւ մեր հայրենի տեղեաց նմանաձայն անուններ, ինչպէս Փուլակ, Պետրոսակ, Պարոյր, Երիզան (Արածանի) գետ, Մելաս գետ, և այլն:

Այս յետին գետոյս՝ երիմանդեանն Մելասայ անուննՙ օրուանս յիշատակաց հետ խառնուելով, յափշտակէ զմեզ յԱրկադիոյ՝ անոր հովուաց և երգոց հետ, և փոխադրէ մեր Գ Հայոց մելիտինեան Մելասայ գետահովիտը. մեր Մելասն՝ որ 'ի շրջակայ լերանց Կապպադովկիոյ և Կոմագենայց կ'իջնէ, կու ձևանայ և կ'երթայ Թափիլյեգեմականն Եփրատ. և սա՝ մեծ դնդնչմամբ քարալեռներ կտրելով հոս կու զատէ մէկմէկէ զՄեծ և զՓոքր Հայս, այս եաքինխ նահանգ թողլով զՄելիտինէ. զայն՝ զոր յառաջ քան զ'4000 տարի՝ քաջ բազուկն Արամայ իբրև կամրջաւ իր բնիկ աշխարհին հետ միացուց և հայացուց: Հոս, այս մելիտինեան Մելասայ հայրենի հովտաց և առուաց եզերքը՝ կու հրաւիրեմ զքեզ այսօր, Հայկակ: Ե՛կ, այս գեղեցիկ ժամերուս և հովերուս՝ հանգչինք ընդ հովանեաւ հացեայ և հաճարեայ, ընդ Դաբնիտեայ և Մելիբեայ, լսել և յիշել երջանիկ ժամանակայ, և երջանկագոյն անձանց մրցանք մը՝ մեծագոյն սիրով քան երգով:...

Ո՛վ, քանի՜ վեհ ու վսեմ է քու հոսանքդ՝ ո՛վ Եփրատէս, որ մարդկութեան նախածնողին հետ՝ և անկէ այլ առաջ յիշուած՝ կ'իջնես իբրև ընդ սատիճանս բազմադարեան ժամանակի՝ երթալ յանդունդ յաւիտենականութե. – քանի՜ քաղցր կրկջալով կու խառնուի քու ծոցիդ այս մեղրածորան Մելաս այլ. որ թէ և անծանօթ և անայցելու է Յունաց 'ի վայրենասէր մուսայից, այլ ինծի հաճոյագոյն և սրբագոյն է քան զամենայն վտակս

և հովիւս, հովիւս և երգիչս Արկադիոյ։ Չունի՞ միթէ և մեր Մելաս իր երգով սիրով մրցողները, իր եռանդուն և զուգահասակ պատանիքը, իր աննման Ջութակը, որք և

Երկոքեան իսկ ծաղկատիք եւ երկոքեան Մե-
լիտացիք։
Հաւասարք յերգ, յերգ սուրբ սիրոյ, եւ 'ի
մրցանս կազմապատրաստք։

Այդ բարձր երթան, ով Մելիբէէ[1], քու ստեղծած և քու հռչակած Արկադացիքդ, և Թիրսիսն և Ալեքսն, իրենց ամենայն երգերով և երգոց ռութմներովն. և գան մեզի, ու միշտ մնան՝ ճշմարիտ շնորհաց ծնունդք՝ հոգւով երկուորեակքըն՝ Մելիտացիք մեր ազնիւք ՊՕԼԻՒՔՏՈՍ և ՆԷԱՐՔՈՍ։ Ասոնք ոչ հովիւք արուեստաւ և եղեգով երգաշարժք, այլ հոգւով հետեւողք այն մեծի հովուին՝ որ հովուէ միշտ 'ի վայրի դալարուոջ և սնուցանէ առ ջուրս հանգստեան. մարմնով զօրահաւորք և զինաշարժք՝ կայտառ կտրիճք. երկուքն այլ զինուորեալք հռովմէական բանակին ԺԲ գնդին մէջ. այն գնդին, որ երբեմն (յամի 174) ընդ Մ. Աւրելիոսի կայսեր երթալով 'ի պատերազմ ընդդէմ բարբարոսաց, յերկիր անջուր և անապատ, 'ի տարակուսել և 'ի վտանգել բանակին և պարապ տեղ կանչել անմռունչ և անականջ չաստուածներու, ընծայեց իրմէ գունդ մը քաջաց քրիստոնէից, որք սրտերնին և աչուըննին յերկինք վերցընելով առ Աստուած աղաղակեցին, և մէկէն թնդալով որոտացին անամպ անմրուր երկինք, կայծակներ թափեցան, անձրեւաց հեղեղք

1 Զայս անունն կ'առնու Վիրգիլիոս իր Է հովուերգութեան մէջ, յորում երգով վիճել կու տայ Թիրսիս և Կորիդոն հովուաց, և վերջինս յաղթող կու սեպէ։

իշան, և մարմրած բանակն խմբեց կենդանացաւ․ անկէ ետև բարեացապարտ զօրագունդն այն՝ անմահացաւ Շանթաձիգ Լէգէոն [1] կոչմամբն յերկրի, իսկ յերկինս՝ վկայութեամբ սուրբ հաւատոցն: Այս դիպուածէս դար մ'ետև՝ նոյն անուամբ գունդս պահապան նստէր եփրատական կողմանց՝ 'ի Մելիտինէ քաղաք, զոր կայսերքն Հռովմայ ամրացընել տուեր և զօրանիստ սահմանակալ քաղաք պատրաստեր էին: Եւ ահա հոս այս գնդիս մէջ զինուորեալ և յառաջացեալ էին մեր հոգեզոյգ խեղեփքն [2], Պօլիքտոս և Նէարքոս, բնիկ իսկ տեղացիք:

## Բ

Մելիտինէ վաղուց հայացեալ՝ յառաջագէմ այլ եղած էր 'ի հայութեան, ազնիւ և մեծ նախարարութիւն մ'ընծայելով ազգերնուս և տէրութեան, որ կու յիշուի նաև 'ի Գահնամակին Խոսրովու (հօր Ս. Տրդատայ), որոյ թագաւորութեան ժամանակ ծաղկէին մեր նահատակքն, և որոյ եղերական մահուան տարին (260) կատարեցաւ մերոնց երանական հանդէսն այլ: Այս նախարարութեան պայազատն էր թերևս Պօլիքտոս, զոր ամէնքն վկայեն ազնուատոհմ ըլլալ, (Seigneur Arménien ըստ Գոռնէյլի). ապա թէ ոչ՝ անհաւատալի կ'ըլլայ որ Փելիքս՝ հռոմէական կայսերաց կուսակալն՝ զիջանէր անոր կնութեան տալու իր դուստրը՝ Պաւլինէ կամ Բօլինա. ուրեմն թէ քաղաքական և թէ զինուորական պատուով

1 Legio Fulminata կամ Fulminatrix ըստ Լատինաց: Ըստ ոմանց այս անուամբ լէգէոն յիշուի Տիտոսի կայսերութեան ատենէն, 'ի վերջ Բ դարու:

2 Ջուխտակք, Եփէղ:

առաջին ազնիւ երիտասարդն էր Մելիտինեայ մերս Պօլիքտոս։ Այս անուն՝ եթէ կամօք աներոյն չէ հռոմացեալ՝ հարսին անուան մերձեցընելով, կրնամք յունացեալ կարծել, ինչպէս Ս. Եւստաթիոսեանց և ուրիշ հայազգի սրբոց ոմանց անուանքն այլ. բայց անհաւան այլ չէ որ նոյն իսկ ազնուական Հայք խնամութեամբ Յունաց և անոնց դպրութեամբ վարելով այն ատեն՝ յունական անուններ այլ կու դնէին իրենց որդւոց. ինչպէս էր և Սալհունեաց սուրբ երիտասարդ Աթենոգոր, և մայրն այլ Աղուիթա[1]։ Արդ ինչպէս այլ ըլլայ՝ մեր Մելիտեան երիտասարդին անունն՝ որ յունարէն Բօլիէւքդոս (Πολύευκτος) գրի և Բազմաղօթ կամ Բազմանուէր թարգմանի, 'ի Լատինաց կերպ կերպ կոչի (Polieuctus, Polioctus, Polictus) և մանաւանդ 'ի Հայոց, Պօղիէւկտոս, Պօղիոկտոս, Պօղոկտոս, Պողոկտոս, Պողիէւկտոս, Պաւղիոսկտ, Պօլիկտոս. որոցմէ առաջինն հաւատարմագոյն է յունական ձայնին, վերջինն մեզի աւելի ընտանի և դիւրալուր։ —

Զինուորութեան մէջ ինչուան ո՞ր աստիճան բարձրացեր էր Պօլիքտոս, չէ նշանուած. բայց միայն զի աստիճանաւոր էր, և քղամիդ ունէր. և անտարակոյս է՝ որ իր հասակն, քաջութիւնն, արիւնն, փեսայութիւնն Փելիքսի՝ իրեն ցուցընէին և մօտեցընէին շատ բարձրագոյն աստիճաններ և ընդարձակ սահման երկրաւոր փառաց և պատուոյ. որոց արժանաւոր էր՝ այն ձիրքերէն աւելի՝ բարուց լաւութեամբն։ Զի էր ներքուստ և արտաքուստ կայտառ և աշխոյժ, եռանդուն և զուարթ խառնուածքով, լայն և բաց սրտով և ձեռքով. միայն պատերազմի բանակաց մէջ ահաւոր և շանթահար. իսկ անկէ դուրս՝ նաև արխա-

1 Տես Հատ. Ա. 216։

կան սպառազինութիւնն՝ իր հասակին և երեսաց նոր փայլք մը տալով՝ կ'երևցընէր զինքն ըղձալի և սիրահար։ Կարծես թէ գեղեցիկ լուսութիւններն վառ 'ի վառ գրօշներու պէս հռոմէական և հայրենի նիզակաց վրայ պլլելով՝ պիտի կարենար ամէն դժուարութիւն մերժել, ամէն յաջողութեան դուռ բանալ, և ըլլալ երկրիս երջանիկ վայելող և տէր մը։ Գուցէ երբեմն ինքն այլ այսպիսի խղձերով և կենակցին սիրովն՝ կու ըղձար ծանուցեալ և անծանօթ երանութեանց և յուսոց մէջ. բայց իր գեղեցիկ և մեծ սրտին համար՝ անոր ստեղծողն գերերկրեայ բարիք մը պատրաստեր էր։

Իսկ Նէարքոս[1], որոյ սեփական յիշատակն է այս օր (22 ապրիլի), հասակաւ, պատուով և սրտիւ մերձաւոր զուգակից Պօլիքտոսի, ունէր արտաքին փոքր զանազանութեանց մէջ՝ ներքին մեծ տարբերութիւն մ'այլ։ Զինուորութեամբ գնդակից և աստիճանաւ այլ յառաջացեալ՝ անոր նման, ցեղիւն այլ ազնուական և մեծատուն. և հաւանօրէն 'ի նոյն Գ Հայոց սահմանէն, բայց ոչ 'ի բուն Մելիտինեայ, այլ 'ի Կոմանա[2], կամ ըստ յունացեալ կոչման՝ Կոմանէփոն քաղաքէ, այսինքն Կոմանացւոց քաղքէն. որոյ դիրքն մինչև հիմայ անծանօթ է մնացեր, բայց միշտ կարծուած է մերձաւոր Մելիտինէի։ Սակայն ոչ այնքան տեղեաւ, հասակաւ և բաղդիւ՝ որքան սրտով մերձաւորք և համազգայք էին « Նէարքոս… և Պօ-
» ղիոքտոս երանելի սուրբ վկայքն՝ Եղբարք կոչէին,

1 Նէարքոս կամ Նէարխոս ըստ ոմանց կրնայ թարգմանուիլ Նաւապետ կամ Նոր իշխան։

2 Կոման անուամբ գեղ մը յիշուի Կիւլիկիոյ մայրաքաղաք Տարսոնի քով, յառաջ քան զժամանակ այս պատմութեանս։

» ժբ եԹէ ազգականութեամբ, այլ ըստ բարւոք » յօժարութեանն և սրբոյ՝ հանդիպելին. և զընտանի ոէրփ ոէրն զոր ունէին՝ կոչեցան Բարէկամք » և ընկէրք. ըստ Աստուծոյ խորհրդեան գտան » խորհրդակիցք երկոքեան » [1]: Այն ոէրփ ոէրն այնքան մերձաւորեր, միացուցեր, ձուլեր էր զանոնք, որ ոչ երկեր և ոչ երկինք կրցան իրարմէ զատելու:

Սուրբ, մեծ և աստուածային էր ուրեմն Նէարքոսի և Պօլեքտոսի սէրն. որոց քով կ'աղօտանան, մԹանան, չքանան սիրելութիւնք դիւցազանցն Աքիլլեայ և Պատրոկլեայ, զօրավարացն՝ Աղեքսանդրի և Հեփեստիոնի, Պիւթագորեայցն՝ Պիւթիասայ և Դամոնի, և Դիոսկուրեայց՝ Կաստովրի և Պօլիւքսեայ, և այլոց նմանեաց, եթէ քննուին անոնց կիրքն, գործքն և կատարածն: Թերևս երկրիս վրայ գրուած կամ կրուած ճշմարիտ և հզօր բարեկամութեան սիրոյ չկան գերագոյն օրինակք՝ քան զմեր Մելիտացի նահատակս. որոց համար ամենաստոյգ է վկայեալն, Թէ « Էին յերկոսին մարմինսն՝ մի ոգի և մի կեանք ». այո, ամենաստոյգ, զի ինքն իսկ կրողաց մէկն է և գրողն զայս, նազելին Նէարքոս: — Իբարեբաղդութիւն հասարակաց և 'ի պարծանս Հայաստանեայց՝ սոյն ինքն սուրբս այս բաներս և իր սրտակըցին նահատակութիւը գրով աւանդեր է, որպէս շատք 'ի սրբագրաց վկայեն, այլ չեն տեսեր գըրուածը. զոր կարծեմ ամբողջագոյն քան զնոսա՝ ունիմք մենք մեր ազգային դպրութե աւանդեալ գանձուց մէջ: Այս գրուածս, Թէ և մեզի ուրիշ ձեռք այլ մտած և 1600 տարուան հնութիւնն քիչ մ'այլայլած ըլլայ, դեռ ոչ միայն իբրև հնագոյն գրուած քան զՀարց Յունաց և Հայոց պա-

1 Այսպէս կ'ըսէ հին վկայաբանութիւնն:

տուասիրելի է, այլ և պաշտելի՝ իբրև կենդանի Թարգման սրտին Նէարքոսի։

Սիրտ Նէարքոսի, հեզուկ և նազուկ. որոյ սըրբազան սպիտակութեան վրայ կու յանդգնիմ նըշմարել լուսաթափանց տրտմութեան շուք մ'այլ. բայց այնքան բարակ և թեթև շուք՝ որ կրնայ վկայութիւն մ'ըլլալ առաջին դարուց կուսամանուկ քրիստոնէի մը սրտի. այնպէս անոյշ մելամաղձ կամ մեղրամաղձ մը՝ ինչպէս կրնար վայելել երկրաւոր սրբոյ մը։ — Նէարքոս քրիստոնեայ էր և արժանի Քրիստոսի անուան և սիրոյն. մեծատուն, ծաղկահասակ և զինաւոր. բայց այս ձիրքերս փոխանակ զինքն յերկիր ձգելու՝ աւելի վսեմութեամբ մը յերկինք վերցընել տային։ Ո՜հ, որքան տարբեր էին Նէարքոսեանքն՝ իրենց հասակակից երիտասարդներէն ոմանց, որք կ'ուզեն աւելի ստուգել իրենց հասակին քան հաւատքին բնութիւնը. անվայելք՝ մէկուն բնատուր բարեաց, մէկայլին երկնաւոր փառաց. — արդարև մեծամիտք անխմաստք, որք չեն կրնար հասկընալ թէ բնութեան ուժոյն և շնորհաց վրայ՝ այնպիսի ոյժ և շնորհք կ'աւելցընեն կրօնք, զոր ուրիշ հնարքով մ'անկարելի է գտնել։ Այժ. մարմնոյ, շնորհք հասակի և սրբութիւն սրտի, մտաց բացութիւն, և հոգւոյ հաւատք, ի՜նչ գեղեցիկ, ի՜նչ վսեմ, ի՜նչ ցանկալի խառնուրդ։ — Այսպիսի էր մեր հաւատոյ նախահարցն, առաջին դարուց ծաղկահասակ քրիստոնէից. այնպիսի սպիտակ սրտեր կային անոնց երազարիւն եռանդնոտ ծոցերը, որ երբեմն 'ի հարկի և հալածանաց ժամանակի՝ քահանայք աստուածային պատարագը մատուցանելու համար՝ յարմարագոյն և պատրաստագոյն խորան չէին գտներ քան զանոնց պարկեշտ լանջը, և այն տիրատաշ ջերմիկ և կենդանի սեղանոց վրայ կուդնէին և կատարէին անմահութեան խորհուրդը։

Ո՞ր կրօնք կըրցեր է այսպիսի բան մը մտածել. այսպիսի երիտասարդներ ընծայել. յորոց մին էր և մեր նախանձելին Ներսէս: Թերևս Մելասայ կամ Կանանայ լեռնապարիսպ հովիտքն՝ ուր երկրաւոր հորիզոնը քիչ մ՚ամփոփած էին, և շատ աշխարհային ծանօթութիւններ չունէր. սակայն հալածանաց ժամանակն, երկու կրօնից (քրիստոնէութեան և հեթանոսութեան) անհաշտ կըռւին, աշխարհակալ Հռովմէացւոց հետ զինակցութիւնն այլ՝ ՚ի հարկէ բաւական տեղեկութիններ տուած էին իրեն. և ոչ ազնուութեամբ՝ այլ ընտրութեամբ՝ կու սիրէր ամփոփ մնալ. իր սրտին ու մտաց ընդարձակութիւնը և բարձրութիւնը՝ կ՚առնուր անյագ ընթերցմամբ գրքի մը, որոյ անունն և խօսքն Աւետարան է, գործն՝ սրբութիւն, վայելքն՝ անմահութիւն:

Այսպիսի գրքով և ձիրքով Ներսէս առաւելութիւն մը կու ստանար Պօլիքտոսի քով, որ արտաքին ձիրքն առաւելեալ կ՚երևէր քան զՆերսէս: Սա պայծառ և հանդարտ արշալուսոյ և տունջեան մը նմանէր. նա լուսնկայ գիշերոյ մը, որ ամենայն փայլմամբն այլ՝ չիկրնար հաւասարիլ ցորեկուան. սակայն կ՚իմացընէ՝ որ իրմէ այլ ուրիշ բան չիկրնար ծագիլ՝ բայց պայծառ տիւ մը: Տես, Հայկակ, ի՛նչ փափկութեամբ և պարկեշտութեամբ կ՚ըսէ զայս՝ ինքնին պատմիչն և պատմեալն մեր. «Եւ Ներսէս քրիստոնեայ էր. իսկ » երանելին Պաւղիւքտոս՝ հեթանոս բարուք զինքն » անուանէր, ըստ անուանն միայն. այլ ՚ի ճշմարիտ հա- » ւատոց ոչ փոխեալ լինէր. և զբազում յերկմիտ » քրիստոնէիցն՝ յաղագս ճշմարիտ հաւատոցն՝ ՚ի » բաց որոշել փութայր»: Ըսել է որ Պօլիքտոս արդէն համոզմամբ քրիստոնեայ էր և քրիստոնէից ջատագով. բայց դեռ անկընունք, դեռ հեթանոսի փեսայ և կենակից, դեռ աշխարհային կա-

պերով կապուած, վանդներով պաշարուած, փորձանաց և հրապուրանաց մէջ. դեռ բոլորովին սիրտը չէր տուած երկրնքի, այլ տուած էր Նէարքոսի. և Նէարքոսի տալն՝ տահաւատչեայ էր տալու Քրիստոսի։

Բայց երբ պիտի ծագէր այն երջանիկ օրն. արդեօք այսօր վաղն ըսելով մեկ մ'այլ էր յուսացեալ վաղը պիտի չուննենա՞ր. — կամ ժամանակն երկրնալով Պօլիէքտոսի պատուոյ և փառաց մէջ յառաջադիմութիւնն և զբաղանքն՝ արգելք պիտի չըլլայի՞ն երկնաւոր որդեգրութեանը. — և նոյն խսկ բարեկամին ուշանալն՝ իրեն (Նէարքոսի) այլ արգելք չէ՞ր իր երկրորդ մկրտութեանն (արեամբ)։ Այսպիսի մտածութիւնք էին Նէարքոսի պայծառ պատկերին վրայ այն բարակ շուքը բերողքն, որով աւելի այլ կ'աճէր իրենց սէրն. թէ և դրսէն կու ջանար ամենևին նշան չտալ սրտին ծածուկ տագնապին. զոր և շատ անգամ կու փարատէր Պօլիէքտոսի զուարթութիւնն և ախորժելով լսելն բարեկամին աւետարանութեանը։ Թերևս և ոչ այնքան աշխարհի և զինուորութեան հոգն, որքան Նախնի քրիստոնէից ոմանց սովորութիւնն՝ կ'ուշացընէր զնա 'ի մկրտութենէ, սպասելով երեսնամեայ տարիքին կամ կենաց հանգարտագոյն և վերջին հասակին։ Նէարքոսի կասկածն աւելի իր բարեկամին աներոջ կողմանէն էր, որ հաւատարիմ իր տէրանց (կայսերաց), կռամոլ մարդ մ'էր. անոր կոյր նախանձն և հաւատքն կրնար Պօլիէքտոսի գայթակղութի ըլլալ, աւելի քան զսէր հարսին՝ Պաւլինեայ. և Փելիքս կրնար յուսալ որ թոռներն մեկ մեկ նոր գամ կամ կապ ըլլային փեսային սիրտը՝ իր և իր գտէր, իր աղջկին, տէրութեան և կրօնից հետ անքակ պահելու։

Սակայն Նէարքոսի և Քրիստոսի սէրն աւելի տեղ գտան այն սրտին մէջ. և աւելի քան զՊաւլինէ՝

սիրէր Պօլիքտոս զՆէարքոս, և սիրուէր. և երկուքն այլ կրնային իրարու ըսել (Դաւթայ պէս վասն Յովնաթանու). «Գեղեցկացար ինձ յոյժ. » զարմանալի եղև սէր քո ինձ՝ քան զսէր կա» նանց». անոնց պէս ասոնց ոգին այլ կապուած էր բարեկամին ոգւոյն հետ. և իւրաքանչիւր ուրէտ զընկերն ըստ անձին խորամ. և կարծեմ մեր Մելիտեան սիրելեաց արդիւնքն և կատարածն՝ առաւել սխրալի և սրտառուչ եղաւ քան զայլոց։

Գ

Ո՞ր սրտի գլխաւոր լուցկին չէ սէր. բայց կան սրտեր՝ որ միայն սիրելու և սիրուելու համար եղած կարծուին. սիրտք՝ որ սիրով կու սնանին և սիրով կու հալին. սիրով ապրելու և սիրով մեռնելու համար եղած են։ Սէր, կ՚ըսեմ, Հայկակ, և չեմ հասկընար ոչ թանձր զգայական և ոչ թատերական կրքերը. այլ սուրբ և նուրբ սէր, որպիսի էր Նէարքոսին.— սէր մը՝ որ իր ամէնէն (սրտէն) աւելի և զօրաւոր ըլլալով շուտով զայն պիտի սպառէր և վերանար 'ի բնագաւառն սիրոյ, յերկինս. և եթէ դեռ կ՚ապրէր Նէարքոս՝ բարեկամին սիրով և սիրոյն համար էր այն։ Քանի՜ տարի քշեց այն հզօր և մաքուր բարեկամութիւնն. քանի՜ տարի այն մէկ կեանքն և ոգին՝ երկու մարմնոց մէջ բնակեցաւ. և ինչ ըրին, ո՞ւր գնացին եկան սիրելիքն.— աւելորդ և պզտի բաներ են ասոնք՝ անոնց բարեկամութեան աննման մեծութեանը քով։ Պօլիքտոսի շատ հեղ յանձնեց անոնց զինուորական գործեր. զոր նա խոհեմութեամբ և արութեամբ 'ի գլուխ հանեց. հաւանօրէն գործակից և մերձակից ունելով իր Նէարքոսը։ Իսկ սա՝ որ կնոջ և ուրիշ կենակցի հոգէ ազատ էր, միայն զԱստուած և զՊօլիքտոս մտածէր։ Իրենց

կենաց գեղեցկագոյն մասն (ուսկից զատ մասն այլ չունեցան), այսպէս սիրով և խաղաղութեամբ անցաւ. գրեթէ այլ խաղաղութիւն էր 'ի կողմանէ տիեզերակալ կայսերաց Հռովմայ. մինչև որ 'ի կէս Գ դարուն՝ Դեկոս կայսր հալածանքի հրաման հանեց ընդդէմ քրիստոնէից. ինքն շուտով կորաւ, բայց հրամանն քիչ շատ կու պահուէր իր պէս կարճժամանակեայ իշխող յաջորդաց ատեն, մինչև յետ քանի մը տարւոյ Վալերիանոս կայսր նորէն սաստկացուց հրամանը. պատուիրելով դատաւորաց՝ որ ամեն ծանօթ քրիստոնեայ որ չառնու յանձն կռոց զոհելու՝ անոնց զոհ ըլլայ: — Այս հալածանաց ատեն կատարուեցաւ մեր Մելիտեան սիրելեաց նահատակութիւնն. զոր պատմիչք անորոշաբար դնեն այդ երկու կայսերաց ատեն, և քննաբանք տարակուսին տարւոյն վրայ. իսկ ինձ կ'երևի թէ Դեկոսի ատեն սկսաւ Նէարքոս աւետարանել Պօլիեւկտոսի՝ զհաւատս Յիսուսի, մինչև Վալերիոսի և մեր Խոսրով Թագաւորին հալածանքն ելաւ. և անոնց երկուքին սպանուած տարին (260, 'ի Պարսից Թշնամութենէ) նահատակուած կ'ըսեմ զմեր Քրիստոսի նահատակքն [1]:

1 Յոյնք և Հայք յ'ինն յունուարի տօնեն զՍ. Պօլիեւկտոս, և յիշատակագիրն հաւատարիմ՝ ինքն իսկ Նէարքոս՝ դնէ զօրն այն յառաջ քան զչորս ինդիքտիոնին արաց ամսոյ, կամ յառաջ քան զչորս աւուրս արաց ամսոյ, որպէս Թարգմաներ են նախնիք մեր, զարաց ամիս զուգելով ընդ յունուարի, որ յիշուի 'ի յոյն բնագրին. և անոր իդոսից չորսէն առաջն՝ է իր իններորդ օրն: Դարձեալ Նէարքոս վկայէ թէ «Ի գաղատեանն և 'ի Յայտնու» թեանն (Քրիստոսի) յետ չորից աւուրց երանելին Պօ» լիեւկտոս վկայեաց». և դարձեալ թէ «Թաղեցաւ սուրբն » յաւուր չորեքշաբաթու». որ ցուցանէ թէ այն ատեն այլ հօն տօնէին զգաղատ (Ծնունդ և յայտնութիւն)

Հալածմա՞նք. ի՞նչ անիրաւ և անտանելի փորձանք բնութեան և սրտի. Ճշմարտին հաւատալ, Ճշմարիտը խօսիլ. անյանց անմեղ ըլլալ, մանաւանդ թէ ուրիշներու բարիք այլ ընել. և ատոնց համար՝ իբրև ամենաչար դատապարտիլ, տանջուիլ, սպանուիլ:... Յիրաւի բնութենէ վեր արիութիւն և համբերութիւն պէտք էր հալածուելու, և ամենազօրաւոր երկնային յոյս մը. այս երկուքն այլ աւանդեց Փրկիչն մարդկան, Ճշմարիտ երանութեանց ամենէն վերջը դասելով. «Երանի՜ որ հալածեալ իցեն վասն արդարութեան, զի նոցա է արքայութիւն երկնից»: Ո՜հ. որքան խոր և քաղցր էր այս վճիռս հոգելուր ականջաց, որ մեկէն հալածանաց սայրասուր փուշերը կակուղ վարդից թերթից պէս սփռեց 'ի ներքև ոտից, ոչ միայն երկաթկօշիկ զօրականաց, այլ և փափկամորթ կուսանաց անգամ. որք իբրև ընդ ծաղիկս վազելով անցան ընդ հուր և ընդ սուր. և իբրև բաղանեաց ջրով լուացան իրենց ջերմաջերմ արեամբն, ուրախութեամբ և խնդութեամբ կրելով ամեն հարուած, ցաւ ու մահ. վասն զի անոնցմէ զօրաւոր է Ճշմարտութեան հաւատքն և սէրն: Այսու մտօք գեղեցիկ զարմանօք խորհրդածութիւն մը կ'ընէ ինքն մերն Նէարքոս. «Տե՛ս, կ'ըսէ, զսքանչելի մատակարարութիւնն Աստուծոյ». յառաջ քան զգալն Քրիստոսի 'ի փրկութիւն

Տեառն 'ի 6 յունուարի, և տօնին չորրորդ օրն է իննն յունուարի. և զի այն տարին այս օրս չորեքշաբթի էր, միայն այն հալածանաց ատեն մէկ տարի մը կայ որ Յայտնութիւնն կիրակի կու հանդիպի, և չորրորդ օրն՝ իննն յունուարի 'ի չորեքշաբթի, և է այն Քրիստոսի 260 տարին, յորում Պօղիքտոս նահատակեցաւ, հաւանօրէն և իր զուգակիցն Նէարքոս, և յորում սպանան Վաղերիանոս և մերն Խոսրով՝ հալածիչք եկեղեցւոյ:

մեր, ամենքն ի՛բրեւ միզով պատած պաշարուած՝ այլ աւելի դէպ 'ի մթութեան խորը կ'երթային. իսկ Փրկչին գալէն ետև՝ ամենքն իբրև թէ գահա-վէժ տեղէ մը վեր ցատքեցին իրենց մոլորութե-նէն. « որպէս 'ի վախէ իմքէ՝ 'ի գբոյ կուապաշ-» տութենէ՝ 'ի վեր յարուցեալք »:

Այսպիսի կրքեր արթընցան վերոյիշեալ հալա-ծանաց ատեն 'ի Մելիտինէ, ուր կ'երևի թէ մին-չև այն ատեն ոչ սաստիկ հալածանք եղած էր, ոչ քրիստոնեայ իր հաւատոց համար նահատա-կեալ. վասն զի նոյն իսկ մեր Մելիտեան պայա-զատն՝ առաջին վկայ Քրիստոսի կոչուի այս կող-մերս, գոնէ այս հալածանաց ատեն. որ առա-ջիններէն աւելի ընդհանուր հրատարակեցաւ և սաստկացաւ. և այս մայրաքաղաքիս մէջ այլ կայ-սերական հրովարտակն կախեցաւ 'ի հրապարակս, կամ յերկրպագութիւն կռոց կամ 'ի մահ կոչե-լով զամէն նշանաւոր մարդ, և մանաւանդ զգլխա-կիրս. որոց՝ կամ 'ի պատիւս յառաջելու հրաւէրք կար, կամ գլուխնին կորուսանելու սպառնալիք. և թէ կ'ուզես Նէարքոսի նմանաբանութեամբն ըսել, կամ նորէն 'ի խորս միգին և մթան իջնել ընկնիլ, կամ 'ի վախէ և 'ի գբոյ անտի՝ վեր ցատ-քել ելնել թռչիլ:...

Իսկ արդ ինչո՞ւ դու ինքնին՝ որ այսպէս խոր-հըրդածէիր, ինչո՞ւ դու այլ թևերուդ չտուիր, չիթռար սրտիդ նետած տեղը, – յերկինս. ինչո՞ւ չելար թոլորովլին այս միգախառն կեանքէս և չը-խառնեցար 'ի լոյսն անգիշեր. ինչո՞ւ կու տնտնաս կու տարակուսիս. և մանաւանդ ինչո՞ւ այդչափ կու տրտմիս, կ'այլայլիս, և երեսացդ հրեշտակա-յին պարզութիւնն՝ հիւանդի և ցաւագարի կերպ կ'առնու: Ինչո՞ւ այդ պայծառ աչքերդ իբրև ա-րեու լուսէն այլ խորշելով իրենց կապիճներուն խորը կու քաշուին՝ մշուշ ու մրուր առած, և Եր-

կընցած ծնօտէցդ վրայ գեղադրոյս մօրուացդ փըն-
ջիկքն կու խառնուէին. և քու խօսքերուդ իսկ ըսեմ,
ինչո՞ւ ով Նէարքոս «'ի նեղասրտութիւն եկեալ`
» հանապազ յոգւոց հանելով լաս դառնապէս »:
Տրտմութիւն` քու քաղցր հոգւոյդ անծանօթ
էր. արտասունք` քու մաքուր դիմացդ վրայ ճամ-
բայ չէին բացած. սիրտդ` նեղութիւն և ցաւ
դրեթէ չէր կրնար կրել, որովհետև կրկնակ երկ-
պատիկ էր, համակիր համաշունչ բարեկամի
մը սրտով ամրացեալ, քու Պօլիքտոսիդ սրտովը:
Չկար վէրք մը` որ այն սրտով չբժշկուէր. ոչ
պնդութիւն կամ պաղութիւն մը` որ անոր կրա-
կով չհալէր. արդ ինչո՞ւ չես փութար երթար դի-
մեր անոր` որ քու միւս Եսդ է. այլ մանաւանդ
կ'ըսես թէ սիրտդ «և ոչ սովորական խօսիցն կա-
» մեր հաղորդել Պօլիոքտոսի »: — Ո՜վ սիրտ փա-
փուկ, սիրտ զգայուն. կրնայի՞ր արդեօք քան
զայս սաստիկ հարուած մը տալ թէ՛ դու քեզի`
թէ քու մէկիկ բարեկամիդ:...

Դ

Զարակուսինք, Հայկակ, որ այս այլ Նէար-
քոսի սաստիկ սիրոյն ակամայ հնարքն է. արդա-
րեւ «Բո՜ւռն է իբրև զմահ` սէր»: Սէր մը այն-
պիսի մաքուր սրտի մէջ մնած` որ կարծես թէ
Յովհաննու Սիրելւոյ պէս Քրիստոսի կուրծքէն
ծըծեր էր իր հրեղէն աղբիւրը:... Բայց Պօլիք-
տոս` որ դեռ չէր ընկած այն աստուածային լան-
ջաց վրայ, դեռ չէր մարմնով ընդ մարմին Աստու-
ծոյ միացած, և ոչ հոգւով հաղորդուած ընդ Յի-
սուսի հոգւոյն, աւելի քան զՆէարքոս կ'ափշէր
շուարէր անոր անսովոր անկարծելի տխրութեա-
նը և մանաւանդ լռութեանը վրայ. սիրտն տակն
ու վրայ եղած` կարծէր թէ այնքան տարուան

բարեկամութե՛ն քաղցրութեանց փոխանակ՝ յանկարծ ամենածանր դառնութիւն մը պիտի գայ. կու խռովէր, կու լար ինքն այլ, և բիւր անգամ կու հարցընէր պատճառը: Նէարքոս՝ պատասխան անգամ չէր տար կամ չէր կրնար տալ: Պօլիքտոս երբեմն ստիպելով՝ երբեմն ինքն այլ լալով, մէկ մը իբրև յուսահատ, մէկ մ'իբրև սրտաբեկ կ'երդուընցընէր նորէն կու հարցընէր. Չեմ կրնար հասկընալ՝ Նէարքոս, այս ի՞նչ գործ, ի՞նչ մտածութիւն է. ոչ բարկութեան նմանի ոչ տհաճութեան...: Արդեօք իրաւ կրնա՞յ ըլլալ, կրնա՞մ հաւատալ որ Նէարքոսի սիրտն պաղի 'ի Պօլիքտեայ. կրնա՞ր կարծել Պօլիքտոս՝ որ Նէարքոս իրեն հետ չխօսի, իրմէ գաղտնիք պահէ: Յետ այնչափ ժամանակաց անարժա՞ն գտուեցայ քու սրտիդ: Բայց լսէ գոնէ՝ ի՞նչ բանով, ի՞նչ կերպով. « զի՞նչ տրտմութի ընկալար յինէն երբէք, կամ ո՞ր » վհատութի եղև քեզ յինէն»: Նէարքոսի սիրտն որ սիրելւոյն ամեն մէկ խօսքէն նոր նոր կու խոցուէր կու կտրէր, ոչ կրնար դիմանալ և ոչ կիրքը բացատրել. շատ անգամ շրթունքը շարժեց և ձայնն հեկեկանաց մէջ հեղձամղձուկ թաղեցաւ: Երկուքն այլ իբրև առանց վէրքի վիրաւորք, առանց կռուի զարնուածք՝ կու տանջուէին. մէկ մը գլուխ գլխի տուած, մէկ մը երեսնին իրարմէ դարձուցած 'ի լալ և հառաչել. մինչև հազիւ սիրտն և շունչը պնդելով սկսաւ ըսել Նէարքոս. Տրտմութեանս պատճառը կու հարցընես. կրնա՞յ ուրիշ կամ աւելի պատճառ մ'ըլլալ սրտիս՝ քան զբաժանումն:...

Ի՞նչ կայծակ էր որ թռաւ Նէարքոսի բերնէն: — Բաժանո՞ւմն, կանչեց Պօլիքտոս: — Բաժանումն, կրկնեց Նէարքոս:.. Կայսերական հրամանքն ասկէ ետև մէկմէկէ զատեն պիտի զմեզ. այսուհետև Նէարքոս և Պօլիքտոս մէկ չեն...

*Թող, լաենք հեռանանք, որ մեր սէրն աւելի չտանջէ զմեզ։...*

*Վեր ցատքեց Պօլիքտոս՝ կրակէ աչք և շրթունք շարժելով. Այդ ի՞նչ անակնկալ խօսք է որ կու լսեմ քեզմէ, Նէարքոս. մինչև հիմայ գիտէի և գիտեմ որ մէկ բան մը, միայն բան մը կրնար զմեզ զատել իրարմէ, մահն. բայց ո՛չ կայսերք կրնան մեր բարեկամութիւնը բաժնել, և ոչ աշխարհք մեր սէրը մարել. Պօլիքտոսի անկարելի է բաժնուիլ 'ի Նէարքոսէ, բայց եթէ մահուամբ։ — Այն ատեն խորունկ հառաչանքով մ'ըսաւ Նէարքոս. Ա՛հ, բնական մահուանէ աւելի զօրաւոր բան մը կայ՝ որ զմեզ կրնայ բաժնել իրարմէ։... Դարձեալ ցնցեցաւ Պօլիքտոս, դարձեալ թևերը թօթվեց, պլլուեցաւ Նէարքոսի վզին. կու գգուէր գորովէր կ'աղաչէր կ'երդուընցընէր որ ըսէ պարզաբար ի՛նչ էր միտքն. ի՞նչ բան կրնար ըլլալ մահուանէ զատ և անկէ զօրաւոր՝ որ զիրենք իրարմէ բաժնէ։ Նէարքոս՝ տղու պէս և թերևս աւելի այլ լալով հեկեկալով՝ ձայնը ու սիրտը կու կտրատէր. բերնով չկարնալով՝ կ'ուզէր աչքերովը խօսիլ սիրելւոյն հետ. և անոր խռովութենէն կրկին ու կրկին խռովելով՝ դողալով, և ոչ ոտքի վրայ կրնալով կենալ՝ ընկաւ 'ի գետին։ Պօլիքտոս այլ աւելի շուարած ու այլայլած՝ սկսաւ անսովոր կասկածանաց երթալ. բայց մէկէն խիղճն կ'ըսէր. «Ոչ ինչ ունիմ կարծիս չարի 'ի լաւ բարս Նէարքոսի». սակայն չըլլա՞յ թէ թշնամի մը խօսք խառնած կամ պղտորած ըլլայ միտքը. — այս այլ անկարելի է իր բարի սրտին. — չըլլա՞յ թէ մէկն չարախօսութիւն ըրած ըլլայ Նէարքոսի վրայ, կամ իբրև բերնէն անպատշաճ խօսք մը լսած, կամ իբրև անհաւատարիմ իր խոստման. կամ թէ պարտքի տակ ընկած ըլլայ։ Այս և այսպիսի խօսքեր կ'ըսէր կու*

հարցընէր Նէարքոսի, կու խոստանար իր ամէն ստացուածքը, ընտանիքն և կեանքն անգամ մէ-կէն տալու 'ի սէր Նորա, որուն արդէն իսկ նուի-րած էր։

Այս խօսքերէս գրեթէ ամաչելով՝ վեր ելաւ Նէարքոս, և դարձեալ կէս համարձակ կէս վախ-վըխելով ու անհնարին տրտմութը̄ ըսաւ. Մեր բաժանման օրն հասած է. — վաղը. — ժամանակն կու ստիպէ, պիտի բաժնուինք, վասն զի վարքով ու ձևով նման չեմք իրարու... թէ և սիրելիք։ — Պօլիքտոս յիրաւի խռովելով և խոցուելով այս խօսքէս, իմացաւ որ Նէարքոսի վրայ յիմա-րութիւն չէ եկածն, այլ սրտին վրայ ծանր բան մը կայ, որ այնչափ կու տանջէ զնա. ինքն այլ ձայնը վերուց, ու սիրով սրտմտած կու կանչէր կու ստիպէր որ ըսէ շուտով ու յայտնէ՝ ինչ էր իրենց մէջ մտած տարբերութիւնն՝ որ վաղը զի-րենք պիտի բաժնէր. ապա թէ ոչ, կ'ըսէր հիմայ հոս ոտքիդ տակը կ'ընկնիմ կու մեռնիմ։ — Վեր-ջապէս Նէարքոս քիչ մ'այլ կըմկըմալէն ետև ը-սաւ. Կայսերական խիստ հրաման ելած է քրիս-տոնէից վրայ, կամ զոհելու է կամ մեռնելու. ես քրիստոնեայ եմ, դու գիտես, գիտեն ուրիշներն այլ. բոլոր աշխարհքիս համար չեմ թողուր ըզ-քեզ Պօլիքտոս, բայց Պօլիքտոսիս համար չեմ կըրնար թողուլ զՔրիստոս։... — Ո՜վ օրհնեալ սիրելի անձն, կանչեց Պօլիքտոս, նոր կրակով մը վառուելով և փայլելով, ինչո՞ւ հեռանաս 'ի Պօ-լիքտոսէ՝ Քրիստոսդ չթողլու համար. մինթէ միայն քո՞ւկդ է Քրիստոս... Ես այլ այսօր՝ դու ինծի չեկած՝ տեսայ այն Յիսուս Քրիստոսը, որ եկաւ վրայէս հանեց այս աղտեղի զինուորական քղա-միդս, և գեղեցիկ լուսանման զգեստ մը հագուց, ու թեւաւոր ձի մ'այլ տուաւ ինծի, գերագոյն զինուորութեան դաս անցընելով զիս։

Զայս որ լսեց Նէարքոս՝ զմայլեցաւ. արտասունքն աչքերուն մէջ 'ի կայծակ փոխուեցան, տատրակ սիրտն արծիւ դարձաւ. բոլոր հասակին ուժն՝ և բնութենէն աւելի զօրութիւն մ'այլ առած, Ուրեմն, կանչեց, դու այլ ճանչցա՞ր զՔրիստոս՝ Աստուած. իրա՞ւ է որ Պօլիքտոս կու հաւատայ Քրիստոսի: — Եւ ե՞րբ չէի ճանչցած ես զնա. կամ ե՞րբ անհաւատութիւն ցուցած էի, ո՛վ Նէարքոս. երբոր դու քրիստոնէից վարքը կու պատմէիր՝ միթէ ես չէ՞ի հաւնիր. երբոր Քրիստոսին աւետարանը կարդայիր՝ ես չէ՞ի զմայլիր. երբ իր մահը կու նկարագրէիր՝ ես չէ՞ի լար դողալով:.. Իրաւ՝ անուամբ և ընկերութեամբ չէի քրիստոնեայ, բայց ինծի արարիչ և տէր՝ զՔրիստոս միայն կու ճանաչէի. Քրիստոսի միայն կ'ուզէի ծառայել, և անոր հակառակ կանգնած սուտ և խայտառակ կուռքերը անարգել և մերժել:

Նէարքոս ուրախութենէն կու դողար կու սարսէր. բայց սիրոյն սաստկութեամբն ինչուան 'ի թերահաւատութիւն կ'երթայր. Այդ ըսածներուդ ժամանակն է, կ'ըսէր, ո՛վ Պօլիքտէ. հեթանոսաց հրամանքն հրատարակեցան, և որոշիչ վճիռն կտրուած է. կամ զոհել կռոց կամ մեռնիլ:.. Ո՛հ, Պօլիքտոս, կու վախեմ, կու վախեմ թէ զքեզ կորսնցընեմ. դու դեռ կատարեալ քրիստոնեայ չես. եթէ վաղը ստիպուիս զոհելու կռոց՝ արդեօք պիտի կարենա՞ս դէմ կենալ, թէ... հնազանդիլ կայսերաց... և անով բաժնուիլ 'ի Նէարքոսէ և 'ի Քրիստոսէ:...

Այս խօսքը լսելուն՝ Պօլիքտոս երևցաւ իր բոլոր եռանդուն բնութեան և բարուց մէջ. աչքը՝ մէկ մը յերկինք նետեց, մէկ մը փայլակելով Նէարքոսի վրայ, և անոր ձեռքը բարկութեամբ մը թօթուելով, Հիմայ կ'իմանամ, ըսաւ, միտքդ. այս էր քու տրտմութեանդ և վախիդ պատճառն.

ա՞յս կարծիքն ունէիր Պօլիքտոսի վրայ. ա՞յսպէս Ճանչնայիր բարեկամդ, յետ տեսնելուդ թէ ինչ ախորժով կու լսեմ և կ'ընդունիմ քու ըսած-ներդ քրիստոնէութեան վրայօք, կու վայլէ՞ր որ Պօլիքտոս 'ի Նէարքոսէ սանկ խօսքեր լսէ։ Եթէ այսպէս սրտով միշտ զիրար սիրեցինք, միթէ հո-գւով կրնա՞մք բաժնուիլ, և մարմնաւոր բարիք ու-սէր հոգևորէն վե՞ր դնել։ Եթէ հասեր է ժամա-նակն, ինչո՞ւ կ'ուշանամք. ինչո՞ւ պարտքերնիս չկատարեմք. ինչո՞ւ չյանդիմանեմք չխայտառա-կեմք զկուռս, և չբարձրացընեմք զՔրիստոս Աս-տուած։...

Ո՜վ առաքինի և վկայավայել խօսուածք. ինչ անբացատրելի ուրախութեամբ լցիք Նէարքոսի սիրտը. որ «որպէս թէ 'ի քնոյ ինչ զարթուցեալ
» յերանելոյն 'ի Պօլիքտոսի բանիցն, և զիւր հո-
» գին և զմիտսն վերստին կանգնէր, և ասէր առ
» Սուրբն. թէ ինձ՝ ո՜վ Պօղիոքտէ, ոչ մեծութիւն
» և ոչ զինուորութեան պատիւ, ոչ կեանք աշ-
» խարհիս այսորիկ պատուականագոյն թուին՝
» քան զկեանսն Քրիստոսի. այլ զանմահութիւն
» և զփրկութիւն և զյաւիտենականն՝ փոխանակ
» մարդկային և առժամանակեան կենացս՝ յա-
» ռաջ պատուել հաճոյ է ինձ»։

## Ե

Խօսակցութեան սկսած ատեն՝ Նէարքոս կար-ծէր թէ մեծ նահատակութեան համար ինքն բա-ւական փորձ ըրած է, և պէտք է զՊօլիքտոս այլ կրթել և ըմբիշ ընել. հիմայ այն աստիճան կարը-ճութեան նշան տեսաւ անոր վրայ, որ կրնային երկուքն այլ հաւասարապէս մրցիլ.

Եւ ի նուագել հանգիտաւորք եւ ի մըրցանըս
դիմագրաւք։

Ո՛հ, թէ կարելի էր այն Արկադացի մրցող հովուաց դատաղ մեծ քերդողը հոս հրաւիրել, իր խօսքովն այլաբանել և ըսել.

«Մատի՛ր այսր ո՛ Մելիբէէ, զի՛ քեզ խոյոց եւ նոխազաց.
Եւ թէ կարես վայր մի դըլլալ՝ եկ հանգի՛ր աստ ընդ հովանեաւս»...
Ուր Մելասայ ճապուկ իշամբ սքօղեալ քծըղնին խաղք դալարիք,
Եւ սրբազան ի կամարաց մեղուաքատակ հծծեն հրեշտակք:
Զի մեծ պայքար է աստանօր ընդ Պօլիքտեայ Նէարքոսի.
Այս Ցիտուսի են կամք՝ մրցել նոցին սիրով փոխանակաւ [1]:

Եթէ քիչ մ'այլ երկայն ապրած ըլլայիր, կամ քիչ մ'այլ ուշ յաշխարհ գալով՝ տեսնէիր քու հռչակած Կումեայ Սիբիլլայիդ չէփին ժամանակը և նոր դարուց կարգը, Կուսին վերադարձը, և նոր ազգի մը յերկնից ղրկուիլը, անոնց մէջ պիտի տեսնէիր այսպիսի սուրբ սիրով և քու դիւցազանցմէ գերագոյն զօրութեամբ մրցողներ. և արդեօք ի՜նչ զարմացմամբ պիտի մոռնայիր քու Թիրսիսդ և Ալեքսդ, ո՛վ քաղցրերգակ Վիրգիլ, և ի՜նչ անոյշ տաղերով պիտի ջանայիր աւանդել մեր մելիտացի մրցողաց փոխադարձ մենախօսութիւնը. յորում ոչ քու Արկադացւոցդ պէս մէկն կու յաղ-

1 Huc ades, o Melibœe: caper tibi salvus et hœdi;
Et si quid cessare potes, requiesce sub umbra...
Hic virides tenera prætexit arundine ripas
Mincius, eque sacra resonant examina quercu...
Et certamen erat Corydon cum Thyrside magnum...
. . . . Alternos Musæ meminisse volebant.

Թէ և մէկն կու յաղթուի, այլ թէ մէկն յաղթէ և թէ մէկայլն. Ճշմարտապէս երկրպագանչիւր հաւասարազօրք:

Նէարքոս զՊօլիքտոս փորձելէն և հաւնելէն ետև՝ կու ջանայր որ Պօլիքտոս այլ զՆէարքոս փորձէ, երբ նա յաւիտենականութեան համար ժամանակաւոր կեանքը արհամարհել կու խոստանար. «Եւ ո՞չ խնայես դու, ով Նէարքոս, յայդպիսի պատուէդ», կ՚ըսէր: Պարզամիտ սիրելին՝ կարծելով թէ իրաւցընէ կ՚ըսէ Պօլիքտոս, Ի՞նչ պիտի ըլլայ այս պատիւս և ասկէ մեծերն այլ, պատասխանեց, այն պատուէն քով՝ զոր ես ՚ի Քրիստոսէ ունիմ. եթէ գիտնայիր թէ ո՞րչափ յառաջ տարեր է զիս Քրիստոս իր զինուորութեան մէջ: — Գիտեմ գիտեմ, կանչեց Պօլիքտոս առանց պատրուակի, քու յառաջադիմութիւնդ այլ՝ որ ՚ի Քրիստոսէ, քու հանդերձեալ պատիւդ այլ անկէ. բայց հիմայ ես քեզմէ յառաջադէմ պիտի ըլլամ. «քանզի երկնաւոր և Թագաւորական քղամիդ ՚ի Փրկչէն՝ ՚ի ձեռն յայտնութեանն՝ ընկալայ այսօր»:

Իսկ յետ մրցանաց և փորձանաց՝ երբ երկու բարեկամքն այլ առջինէն աւելի հանդարտեցան վստահացան կապուեցան իրարու հետ երկնաւոր սիրով, Պօլիքտոս հեզաբար և աշակերտաբար սկսաւ հարցընել Նէարքոսի քանի մը տարակոյսներ, իբրև իրմէ վեր և հին քրիստոնեայ վարպետի. «Ես քեզ կամիմ գլուխ մի հոգևորական բանի հարցանել». մէկ մը՝ որ դեռ բաւական պատրաստութիւն չէր տեսած, և թերևս ատեն այլ չըլլար քրիստոնէական սուրբ խորհրդոց հաղորդուելու. և եթէ այնպէս ՚ի նահատակութիւն երթար, արդեօք ընդունելի կ՚ըլլա՞ր ՚ի Քրիստոսէ: — Նէարքոս մէկէն լուսաւոր մտքով և բաց սրտով սկսաւ քաջալերել և ապահովել

գնա, թէ հաւատոց զօրութիւնն բաւական էր
այնպիսի առեն. և 'ի սուրբ գրոց օրինակներ բե-
րաւ. «Եւ բազումք 'ի հեթանոսաց մարդիկ՝ կար-
» գին 'ի զօրականութիւն Քրիստոսի. քանզի ա-
» հաւասիկ առհասարակ ամենեցուն բացեալ են
» դրունք երկնից. և անմահ փրկութեանն ծով՝ ոչ եր-
» բէք ցամքեցաւ. Թէպէտ և 'ի սակաւ ժամու ոք
» հաւատասցէ՝ մեծ վարձս ընդ սակաւուն ընդ-
» այնորիկ և ընդ ճշմարտի հաւատոցն՝ ընդունի»։
Ցիշեցուց Քրիստոսի ըսած մշակաց առակն այլ,
որ թէ առաջին ժամուն եկողներն և թէ մետա-
սան ժամուն՝ հաւասար վարձք առին։ — Իրաւ
իրաւ, կու յիշեմ, ըսաւ Պօլիքաոս, որ ուրիշ ան-
գամ այլ այս բանս ինծի կարդացեր էիր յաւե-
տարանէդ. «Թէ մի ժամ վաստակեցին մշակքն,
» և ընդ այնոսիկ՝ որք զաւուրն ծանրութիւն բար-
» ձին՝ հրամայեաց Փրկիչն տալ զվարձսն»։ Ասոր
վրայ բերաւ Նէարքոս աւազակին պատմութիւնն
այլ, որ Քրիստոսի հետ մեռնելու խաչին վրայ՝
հաւատաց անոր. և «Փրկիչն՝ ընդ փոքր և ընդ
» անպաճոյճ հաւատոյն՝ որպիսի՜ մեծամեծս խոս-
» տանայր նմա և ասէր. Դու այսօր ընդ իս ես 'ի
» դրախտին։ Տեսանե՞ս ով Պօլիքտոէ, զինչ փոքր
» մի հաւատք որպիսի՜ մեծ աւետիս պարգևէ. ա-
» հաւասիկ հաւատք ըստ աւետարանին աստ-
» ուածոյն, թէպէտ և փոքր՝ հանդիպին բոլորո-
» վին իսկ զլեռինս փոփոխել»։
Սուրբ խորհրդոց վրայ ապահոված՝ Պօլիքտոս
երկրորդ տարակոյսն այլ հարցուց. «Եւ է՞ կա-
» րողութիւն, ով Նէարքոս, առանց մկրտութեան
» այսպիսի իրաց դիպել մարդկան։ Ասէ ցնա Նէար-
» քոս. Ամենայն ինչ սուրբ է սրբոց, որպէս և
» աստուածային գիրք ասեն»։ Օրինակ այլ կու
բերէր 'ի Քրիստոսէ բժշկութիւն խնդրողները,
յորոց միայն հաւատք պահանջէր Քրիստոս և ոչ

մկրտութիւն կամ խորհուրդներ — այսպիսի նեղ և հարկի ժամանակ՝ սիրոյ և մահուան մկրտութիւն մեծագոյն ևս էր քան զջրոյն։ «Առ այսոսիկ երա-
» նելին Պօղոքտոս յորդորէր զհոգին իւր, և եր-
» կրաւոր իրաց 'ի մոռացումն գայր. գոչէր յան-
» կարծօրէն և ասէր. Թէ ես ընդ Քրիստոսի միա-
» ւորեցայ 'ի սկզբանէ. և նա պարտի ինձ հոգ
» տանել և խնամել. քանզի ես 'ի բաց հրաժա-
» րեցի 'ի մարդկային իրացս, այսուհետև պարտ
» է ինձ վասն Քրիստոսի վկայել»։ Եւ հոս կու յիշէր՝ իբրև 'ի քնոյ արթննալով, որ օր մը իր հեթանոս զօրականներն վկայեցին, թէ զՔրիստոս կու տեսնեն լուսաւոր կերպարանօք Պօղիքտոսի քով, և իր երեսներն այլ անոր ճառագայթներէն լուսաւորած էին. Ուրեմն կ'ըսէր, քաջահաւատն Պօղիքտոս, Քրիստոս 'ի սկզբանէ ընտրեր է զիս և կու հրաւիրէ յերկինս. այլ ինչո՞ւ կ'ուշանամք. «Արդ ժամ է մեզ երթալ, և ըն-
» թեռնուլ զանարժան հրամանս Թագաւորին»։

Զայս ըսելով հոգելից և վառվռուն երիտասարդն Պօղիքտոս՝ յետին անգամ մ'այլ գրկելով իր ամենասիրելին, և հաւատարմութեան ուխտերնին կրկնելով, այնպէս շուտ սրացաւ թռաւ այն մրցանաց տեղէն, որ Նէարքոս կարծեր թէ արդէն բարեկամն հեծած ըլլայ Քրիստոսի իրեն տուած թեւաւոր ձիոյն վրայ, զոր կու ճանչնար նշան անոր վկայաբար յերկրէ յերկինս վերանալուն. հիմայ կու հաւատար իր սրտակցին ըսածին, թէ «Նախ քան զքեզ ես յառաջադէմ եղէ
» 'ի Փրկիչն»։ և թերևս թէ կամաւ թէ ակամայ հետևակ մնայր Նէարքոս, և չէր կրնար հասնիլ անոր՝ որ իր կրակէն վառուած՝ իրմէ աւելի բոցով ծխով կու թռնկէր փայլակէր կ'երթար այրելու լափելու։...

Որպէս դու ինձ ի դիմագրաւ տալ զանձն
ի վտանգ կամակար։

Պօլիկ. Ջոհք ի բագնին կան ի զենուլ, չիք յա-
մելոյ ժամանակ.

Օ՛ն, Աստուածոյն ճշմարտի անդըր ձե-
պեսցուք նահատակ.

Երթիցուք տալ ըզխազալիկըն շանթ՝ ո-
տից ի կոխան,

Որով ըզփայտըն փուտ զինէ դիւրահա-
ւատըն խուժան։

Օ՛ն, երթիցուք բանալ ի լոյս զաչս՝ առ
ի մահ կուրացեալ

Եւ փշրեսցուք ըզկուռսըն սուտ ըզկոփա-
ծոյ եւ զհրահալ.

Երկնազգեցիկ ի մեզ հըրոյս՝ լիցուք կե-
նօք մեր ճարակ.

Հարցուք զերկնից ըզպատերազմ՝ թո-
ղեալ ի նա զյաղթանակ։

Նէարք. Օ՛ն, երթիցուք մեծահանդէս փառացն
երկնից տալ ըզցոյց,

Եղեալք գործօնք հաւատարիմք կամացն
առ մեզ զօր եցոյց։

Է

Մինչդեռ Նէարքոս զՊօլիեքտոս գտած՝ բոլոր Մելիտինէ անոր ըրած գործէն տակն ու վրայ եղած՝ մեծ շփոթութեան, աղաղակի, զարմացման և զայրացման մէջ էր. Ճայնն, ստիպմունքն և սպառնալիքն հասան մինչև 'ի կուսակալն և «աներ նորա Փելիքս, որ հալածիչն կարգեալ էր » յանօրէն թագաւորացն. յիմարեալ հիացեալ » լինէր ընդ իրսն՝ որ 'ի սրբոյն Պօղիոքտոսէ գոր- » ծեցան »։ Վասն զի այն սրաթեւութեամբ՝ որով թռաւ իր բարեկամին գրկէն, հասաւ Պօլիեքտոս

'ի մեծ հրապարակ քաղաքին, և տեսնելով կախուած կայսերական հրապարուրիչ հրովարտակը, աչքին հետ ձեռքը ձգելով՝ շուտ մը պատռեց գըրուածը. պատառը վար չձգած՝ տեսաւ որ ուրիշ կողմէ քուրմք և պաշտօնեայք դատաւորին տաներկու նկարեալ կուռքերն առած, ծաղիկներով և դալար ճիւղերով զարդարած կու բերէին մեհենից մէջ և բագնաց վրայ կանգնելու, յորդորելով խառնիճաղանճ խեղճ ժողովուրդը յերկրպագութիւն: Զզուանաց և անարգանաց ծիծաղ մը փըրթուց դիւցազնացեալն Պօլիքտոս. բազմութեան մէջ նետուելն, բոլոր կուռքերն այլ մէկիկ մէկիկ յափշտակել 'ի գետին զարնել և ջախջախելն՝ մէկ ըրաւ: Այնչափ բազմութիւն քըմաց, զինուորաց և ժողովրդեան՝ չկրցան մեր մէկ նահատակին դէմ կենալ. հրեղէն անձ մը, հրեշ մը, նոր աստուած մը, չեմ գիտեր ինչ կարծէին, սոսկային, պաղէին: Բայց երբ կոտրտած կուռքերնուն վրայ կոխկըռտելով անցաւ ելաւ սուրբն, ու կրակոտ աչօքն կու նայէր թէ կա՞յ ուրիշ ընելու բան մը, ապշածներն արթըննալով, մանաւանդ թէ աւելի քնանալով չարաչար ապշութեամբ, սկըսան խայտառակաբար չաստուածներնուն ջարդուիլը լալ, բողոքել և վրէժ պահանջել 'ի Պօլիքտեայ: Աներն Փելիքս վրայ հասնելով տեսնելով և լսելով եղածը, ուրիշներէն աւելի անճըրկած, կերպ կերպ կրքերով պաշարուած՝ նախ և առաջ սկսաւ յուսահատաբար ինք զինքն ողբալ՝ որ զփեսայն պիտի կորուսանէր. և այս երկու անգամ է, կ'ըսէր, որ այսպէս ճղակոտոր անզաւակ կ'ըլլամ. «Վրիպեցայ 'ի յերկաքանչիւրոցս, և այժմ
» անզաւակեցայ ես Փելիքս. քանզի առաջինն
» վախճանեցաւ, և ես պերճացեալ պարծէի փե-
» սայիւս. իսկ այժմ չուառատես անզաւակե-
» ցայ. քանզի ոչ ոք յայսմհետէ ողորմել կարի-

» չէ Պօղոքտիոսի, ոչ աստուածքն և ոչ ինքնա-
» կալ Թագաւորքն. որ զայնպիսի իրս յանդգնե-
» ցաւ առնել, և զամենայն աստուածքն մեր յա-
» նիրաւի փշրեալ խորտակեաց »: Այս խօսքերէս
և պատմութեան ուրիշ նշաններէն պէտք է իմա-
նալ՝ որ Փելիքսայ առաջին կորուստն ուրիշ փե-
սայ մ'էր, առաջին այր Պաւլինեայ, ուսկից դե-
ռաբոյս զաւկըներ այլ ունէր. զորս որդեգրեց Պօ-
լիէքտոսի՝ այրի մայրերնին տալով անոր 'ի կնու-
թիւն. ասոր համար պատմութեան մէջ թէ Պաւ-
լինեայ զաւակ կու յիշուի, թէ Պօլիէքտոս Նէար-
քոսի տխրութեան և տագնապին առեն կ'ըսէ.
« Թէ որդի իսկ ունէի՝ ոչ խնայէի յաղագս սի-
» րոյն Նէարքոսի, նա և նուազ ես համարէի զնա՝
» քան զսէր նորա. և յառաջագէմ ունէի զսէրն,
» ամբողջ պահելով և անխախտ քան զամենայն[1] »:

Պօլիէքտոս ժողովուրդէն աւելի իր հօրկեռոր և
ալեւոր աներոջ վրայ ցաւօք ծիծաղելով՝ ըսաւ.
Եթէ ես չաստուածներդ ջարդեցի՝ ըսել է որ
շատ ապիկար անպիտան բաներ են եղեր. թէ որ
ուրիշ այլ կայ՝ շուտով բերել տուր, որ զանոնք
այլ ջնջեմ: Իմացաւ Փելիքս որ զՊօլիէքտոս անկա-
րելի է համոզել, որուն սիրտը արդէն կու ճանչ-
նար, բայց հալածանաց հրաման չըլլալուն հա-
մար՝ կու լռէր. հիմայ՝ իբրև յետին փորձ և հը-
նարք զնա շարժելու, յորդորեց որ հանդարտի և
գոնէ յետին հրաժարական մը տայ կնոջը: — Ի՞նչ
կին, ի՞նչ զաւակ, կանչեց Պօլիէքտոս. եթէ Պաւ-
լինա ինծի հաւան և ընկեր է՝ թող ինծի պէս ընէ
և գայ իմ հետս. ապա թէ ոչ՝ ինծի բաւական է իմ
'Քրիստոսս. այլ ինքն թող քեզի ըլլայ և կուռքե-
րուդ: Փելիքս յուսահատ սրտմտութեամբ և ար-

1 Թող զայս այլ գիտնամ մեր կամ օտար Գոռնէյլն. թէ
և ես չեմ համարձակիր բանաստեղծից թևերն ամփոփել:

ցունքով դարձուց դլուխը։ Այն երեսդարձութիւնն նշան մ'եղաւ իր պաշտօնէից. որք իբրև վրէժխնդիրք չաստուածոց և կայսերաց՝ պաշարեցին զՊօլիեքտոս. և «Կոճկամքն[1] իւրեանց ան- » ողորմ ծեծէին զբերան նորա »։ Իսկ նա դեռ վարդաթափ շրթամբքն կու սոխալէր զաներն՝ որ փուճ տեղ չլայ և զինքը չյորդորէ կնոջ և զաւակաց անուամբ. այլ կամ իրեն հետևի, կամ կայսերաց հրամանը կատարէ։

Աւա՜ղ, կանչեց աւաղելին և ոչ իր անուանն արժանին Փելիքս. — աւա՜ղ Պօլիեքտոս, որ զքեզ այլ քրիստոնեայք մոլորեցուցին։ Եւ իր մոլորամիտ դուստրը կանչել տուաւ։ Պաւլինէ հերարձակ լալով վազելով եկաւ, սկսաւ ողբալ և հօրը պէս աւաղել իր ամուսինը, որ այնպէս անակնունելի գործով 12 չաստուածները մէկէն ջարդեր էր։ Իսկ սուրբ վկայն ծիծաղելով անոր լսածին վրայ, Եթէ այդ 12 չաստուածոց ընջելումն, ըսաւ, անաստուած մնացիր, եկո՛ւ Պաւլինէ, ցուցընեմ քեզի ուրիշ և ճշմարիտ Աստուած մը, որով կարենաս ինծի պէս արհամարհել այս անցաւոր կեանքը և յաւիտենականը ժառանգել։.... Հասա՜ւ այս ձայնս Պաւլինեայ սրտին խորը, և շարժեց հոգին միանալու որուն հետ որ միացեր էր երբեմն մարմնով։ — Քերդողն կու հաւանի և կու հաստատէ զայս. մենք ամենայն սրտով կու փափագիմք. բայց պատմութիւնն լռէ։...

Սակայն թէ ոչ աներն և կինն՝ բայց Պօլիեքտոսի խօսքերը լսողներէն շատերն հաւանեցան իրեն և հաւատացին 'ի Քրիստոս, և զարմացմամբ քաջալեր կու տային իրեն։ Իսկ ինքն իր բնատուր և շնորհատուր զուարթութեամբն և համարձակութեամբն կ'ըսէր անոնց. Մի տարակուսիք ո՜վ ըն-

1 Կոճատլուխ գաւազան կամ ուռն։

կերք, որ ես անխռով եմ. վասն զի քովս կու տեսնեմ երիտասարդ մը՝ որ ամեն վախ ինծմէ կու փարատէ, և զիս երանելի կենաց կու հրաւիրէ: Այս խօսքերս որչափ որ կ'ուրախացընէին և զովութեամբ կանչել կու տային հաւատացելոց,, այնչափ անհաւատները զկծեցընէին. որք և գանգատելով թէ Պօլիեքտոսի աւելի խօսիլն և ապրիլն՝ քրիստոնէից պարծանք և իրենց նախատինք կ'ըլլայ, ստիպեցին զդատաւորս և զթշուառն Փելիքս՝ անոր մահուան վճիռը տալու. որոյ վրայ ամենէն աւելի ինքն Պօլիեքտոս գոհ ըլլալով՝ իբրև յաղթանակի կառաց վրայ ելնելու կու վազէր կ'երթար խայտալով խնտալով իր կատարման տեղը...:

Բայց մէկ մ'այլ յանկարծ կանկ առաւ. և այն խառն'ի խուռն բազմութեան վրայ աչքը փայլակելով՝ իջուց մէկի մը վրայ միայն՝ իր սիրասուն կայծակը. և. — Ներէ ինծի Սուրբն և սրբոյն ընկերն այլ, եթէ անսուրբ բանաստեղծի մը միտքը թողլով՝ բուն խօսքը իրենց վրայ թարգմանեմ. —

« Նա եւ ի ջոկըս խուռներամ պատանեաց
Երթայր՝ զչքնաղըն կարդալով Նէարքոս[1] »:

Նէարքոս՝ մարմնով լուռ, այլ սրտիւ և հոգւով բիւր բերան եղած՝ քայլ առ քայլ հեռուանց հետևելով՝ կու դիտէր կ'ազդէր սիրելւոյն: Հոս ինքնին չդիմանալով կ'ըսէ իր պատմութեան մէջ. « Իսկ
» Նէարքոս զբարեկամութիւն սիրոյն ոչ երբէք
» մոռանայր. քանզի էին յերկուսին մարմինսն՝ մի
» ոգի և մի կեանք: Յայնժամ հայեցեալ վկային
» 'ի Նէարքոս՝ ասէ ցնա. Ողջոյն ընդ քեզ. և զան-
» ճառելի ուրախութիւնն իմ և դու՝ յիշեա եղբայր: Եւ

1 Cum per obstantes juvenum catervas
Ibit insignem repetens Nearchum.

Ովրատ. Գ.

» զայս զվերջին զձայնս՝ իբրև զկնիք թողլոյր Նէար-» քոսի: Եւ ինքն՝ կատարի սրով»[1]: Կնիք արժանաւոր աննման սիրոյն 'ի վերայ սրտի բարեկամին, յիշատակն իրենց խոստման. զոր ինչուան երկնից պատուանդանին վրայ այլ հաւատարմութեամբ պահեց իր ծոցը՝ յառաջադէմն Պօլիքտոս, և աւանդելով իր սրտակցին, Նէարքոս և Քրիստոս անուանց խառնութեամբ՝ աւանդեց զհոգին: Այսպէս քրիստոսատուր ճերմակ թևաւոր ձիոյն վրայ հեծած, մէկ թռիչով՝ թողլով իր կարմրաթաթաւ կայտառ պահարանը (մարմինը), հասաւ յօթեվանս Հօրն երկնաւորի, իր մէկիկ երկրաւոր սիրելւոյն համար այլ գահ և առագաստ պատրաստելու և փութացընելու հոն:

# Ը

Իսկ Նէարքոս որ բարեկամին կենակցութեան ատեն մի ոգի և մի կեանք կարծէր զնա և զինքն, հիմայ մարմնով միայնանալովն՝ երկու գտաւ զինքը. մէկ մասն յերկինս՝ ընդ հոգւոյ սիրեցելոյն, ուրախ, գոհ և երջանիկ, անոր յաղթութիւնը երգելով և պարծելով. իսկ միւսն՝ յերկրի, սըրտահար, տրտմազգեցիկ և դողդղալով իր բարեկամին բաժնուած մարմնոյն քով:... Ո՛հ. ինչ տարբեր և անկշիռ էր առաւօտեան խօսակցութեանց և գրկածութեանց վայրկեանն (երբ երկու կայտառ գլուխք տաք տաք իրարու սրտով կու տրոփէին՝) այս երեկոյեան վայրկեննէս. յորում գլխոց մէկն միայն կանգուն՝ իբրև անթափ բաժակ շուշանի որոյ մէջ նուան ծաղիկ մը ընկած ըլլայ, կ'առնուր նազելին Նէարքոս՝ իր սի-

1 Հին օրինակն պատմութեանս գուցէ գեղեցիկ և հաճոյ սխալագրութեամբ մը կ'ըսէ կատարէ սիրով:

րեւլոյն անգին գլուխը․ կու մօտեցընէր անոր արիւնաքամ շրթունքը իր դողդոջուն շրթանցը, և անոր մանուշակացեալ աչաց ցամաքութիւնը՝ իր ջերմաջերմ աչաց ցօղերովը կու թրջէր․ արտասուքը Պօլիքտոսի արեամբ խառնելով կու նուիրէր Աստուծոյ, շարժուն բաժակ գոհութեան․․․։ Զարմանամ՞նք արդեօք թէ ի՞նչպէս անոր անշունչ անմռունչ շրթանց մէջ՝ Նէարքոս իր շունչն այլ չաւանդեց, և մէկտեղ չլռեց չընկաւ։

Նէարքոս յետին սպասաւորութիւն մ՚այլ ունէր իր սիրելոյն երկրաւոր մասին․ հաւատացեալ եղբարց օգնութեամբ՝ դրաւ իր կենաց գին Պօլիքտեայ գլուխը՝ անոր տարածեալ մարմնոյն քով, և երկուքն այլ ծածկեց մայրենի մելիտեան հողով․ «Յայնժամ ապա զպատուական և զսուրբ
» մարմին նորա ՚ի Մելիտինէ քաղաք Հայոց թա-
» ղեցին պատուով՝ եղբարքն․ և իբրև զժառան-
» գութիւն յաւիտենական իւրեանց ընծայեցին»։
Քիչ ժամանակէ ետև հոն բարձրացաւ տաճար մը յանուն սուրբ վկային Պօլիքտեայ, որ իբրև մեծ ուխտատեղի կու յիշուի ՚ի սրբազան պատմըչաց՝ դար մը ետքը։ Նէարքոս չառաւ մասն անոր նշխարքներէն, որոց քով կու փափագէր քիչ ատենէն ինքն այլ հանգչելու․ բայց չէր այլ կրնար իր քաջայաղթ զինակցին նշան մը չունենալ աչքին առջև, մինչև որ իսկապէս տեսնէր զնա յաղթայութեան երկնից։ — Կտաւ մը, զոր աւետարանին անծանօթ երիտասարդէն[1] աւելի պնդապէս հետը կու կրէր, — բայց մաքուր և ծալած, — սուրբ կտաւներ՝ թաթաւեց ՚ի թափած արիւն Պօլիքտոսի․ մինչև ՚ի յետին կաթիլը ջնջեց մաքրեց գետինը․ և իր սպայութեան հանդիսից օրերը բարձրացուցած դրօշէն բարձր ու պանծալի

1 Մարկոս։

սուտանունմամբ տարաւ զայն իր հայրենի երկիրը. «Իբրև զերանելի իմն ժառանգութիւն և զէն մըր»կութեան Կանանացւոց քաղաքին, մերձաւո»րաց և հեռաւորաց»։

Երկրորդ և մեծագոյն և ամենեցուն ցանկալի սպաս մ'այլ կատարեց Նէարքոս, աւելի մեզի քան իր սուրբ սիրելոյն, անոր յիշատակը երկնից վարագուրէն դուրս այլ՝ անմահ թողլով երկրիս վրայ. և արեան արտասուացն հետ մելան այլ խառնելով՝ գրեց Պօլիքտոսի վկայաբանութիւնը։ Ահա իր խօսքն. «Եւ յետ չարչարանաց »սրբոյն Պօղիւքտոսի՝ ես տառապեալս Նէար»քոս, ետու զՅիշատակարանն՝ Տիմոթէոսի Կա»նանացւոյ և Ակտուար Նեղոսի, և երգմնեցուցի »զնոսա 'ի դատաստանն Քրիստոսի և 'ի յաղթու»թիւն սրբոյն Պօղիւքտոսի 'ի Քրիստոս, որպէս »զի տարւոյ տարւոյ կատարեսցեն զօր (Նահա»տակութեան) նորա, և զՅիշատակարանն ըն»թերցցին խնամով։ Իսկ Տիմոթէոս ընկալեալ »զայն Յիշատակարան՝ եդ 'ի սուրբ եկեղեցւոջ, »ուր և....։» Հոս դժբաղդաբար կ'ընդհատի մեր օրինակն. բայց կ'իմանամք ուրիշ գրուածէ որ Տիմոթէոսն այն (Թուի երէց Կանանացւոց աւանին), ըստ պատուիրանի սուրբ իշխանին Նէարքոսի՝ ամէն տարի Քրիստոսի ծննդեան տօնից օրերը կու կարդար անոր անմահ բարեկամին անմահացուցիչ Յիշատակը. իսկ Նեղոսն այն Ակտուր՝ կարծեմ թէ ըստ Հռովմայեցւոց է Actarius կամ Actuarius, զի այսպէս անուանէին զինուորական գործոց գրողները։ Պօլիքտոս այլ թէ երկրաւոր թէ երկնաւոր զօրական ըլլալով՝ կուվայլէր որ քրիստոնեայ գործագիր մը անոր վարքը վաւերացընէր։ Արդէն այն ատեն եկեղեցւոյ հայրապետաց այլ հրաման հանած էին՝ որ որոշեալ դպիրք գրեն սրբոց Գործք կամ վկայաբա-

նութիւնը։ Եւ ահա այս Նէարքոսեան և Նեղոսեան Գործք Ս. Պօլիքտոսի է մեր ձեռքն ընկածն այլ, Հայկակ, որ և ինչպէս առաջ ըսի, ամբողջագոյն՝ մինչև հիմայ ուրիշ լեզուով ծանօթներէն (գոնէ ինծի), թերևս ուրիշ գրչէ այլ անցած՝ կամ թարգմանութեամբ տեղ տեղ այլափոխեալ ըլլայ. և որոյ սկիզբն արժան կու սեպեմ հոս կարդալ քեզի, որ յետ լսելոյ զպատմութիւնը՝ կրնաս վերջացեալն այլ սեպել, և յարմար Նէարքոսի սրտին պարծանօք գոչելու իր բարեկամին յաղթանակին վրայ.

« Այժմ մեծութիւնն շնորհացն Աստուծոյ և
» զօրութիւն նորին 'ի ձեռն սրբոյ մարտիրոսին
» Պօղիքտոսի՝ ամենեցուն տեսանի։ Այժմ՝ հե-
» թանոսք թախծեալ են և տրտմեալ, որք յան-
» շունչ կուռսն իւրեանց յուսային. որք մոլո-
» րեալքն էին 'ի դրօշեալս իւրեանց՝ յամօթ լի-
» նէին. վասն զի յաստուածային զօրութենէ ան-
» տի՝ նմանողք սրբոյն Պօղիքտոսի լինել ակա-
» մայ հարկաւորէին, որպէս յամենեցուն ստաց-
» չին և արարչին Աստուծոյ. ըստ աստուածային
» դրոց, թէ Ամենայն ծունր կրկնեսցի երկնաւո-
» րաց և երկրաւորաց և սանդարամետականաց.
» քանզի յաստուածային զօրութենէն որ տը-
» ւեալ լինի մարդկան՝ յայժմու 'ի մերձակայ ի-
» րացս առաւել ևս օրհնի և փառաւորի։ Քանզի
» ահաւասիկ և երանելին Պօղիքտոս որ կարծէր
» զհեթանոսական զվարս և զպաշտօն ունել, նոյն
» ինքն արագ արագ զՔրիստոսի պաշտօնն ունել
» յինքն, զօրացուցանել զինքն. և որ երկրաւոր
» թագաւորին զօրական էր, զՔրիստոսի զինա-
» կրութիւն փոխանակ երկրաւոր զինուորութեն
» ամենայն յօժարութեամբ փոխանակէր. և պը-
» սակ անթառամ զիւրոյ զջան վաստակոց և ըղ-
» ժուժկալութեանն՝ զգեցեալ ցուցանէր։ Քան-

մաշ և ծխն բառերէն բարդած, ինչպէս կրնայ ալ կարծուիլ։

Յովհաննէս անոնցմէ մէկն եղած է՝ որ կրնային ըսել Իմաստնոյն, և իրեն իսկ անուանակից և ազգակից՝ Հայոց մեծ Իմաստասիրին հետ, թէ Մանուկ էի մտավարժ, և ոգւոյ բարւոյ դիպեցայ. կ'երևի թէ ծնողքն ալ հոգ ունեցեր են պզտիկուց զինքը ուսման տալու. իր մէկ բաղդն ալ այս եղաւ որ իր հայրենիքն Լուսաւորչի լերան վանքերով շրջապատած էր, որոնց մէջ դեռ բաւական գրքեր և գրագէտներ կու գտուէին. և աւելի բաղդն ալ այս էր՝ որ իր տղայութեան ատեն Երզնկա քաղքին քաղաքական իշխանն էր Յովհաննէս պարոնն. հոգևոր տեսուչն ալ էր՝ այն պարոնին հայրն Սարգիս արքեպիսկոպոսն. երկուքն ալ աշխարհաշէն և ջանասէր և ջանասիրոց ձեռք տուող։ Երզնկացին առջի ուսմունքներն ըրաւ Ս. Մինասու անապատ ըսուած վանքը, Սեպուհ լերան սրբազան շուքին տակ. վերջը անոր քովի վանքերն ալ պտըտելով՝ մեղուի նման քաղեց անոնցմէ ինչ որ իր իմաստասէր մտացը պատուական գտաւ. բայց անոնցմով գոհ չըլլալով՝ ելաւ հեռու տեղուանք ալ պտըտելու, գիտութիւն ժողվելու համար։

Այն ատենները Հայոց մէջ ամենէն անուանի վարդապետ ճանչցուած էր Վարդան Արևելցին, և թէ Կիւլիկիոյ արքունիքը թէ արևելեան Հայաստանի մէջ պատկառելի եղած. այս բազմահմուտ և բազմագիր վարդապետս՝ իր վերջին տարիները քաշուեր էր Հայոց և Վրաց սահմաններուն մօտ, Հաղբատ և Սանահին հռչակաւոր վանաց մէջ տեղ՝ Կայենոյ ձոր ըսուած տեղը, ուր որ պզտիկ վանք մը կար. հոն կու նստէր և աշակերտաց դաս կու տար. Յովհաննէս ալ գնաց անոր քով, և կ'երևի թէ ինչուան անոր մահը հոն

կեցաւ, և կ'անուանէ զինքն «Աշակերտ հոգելից
» հօրն և սուրբ վարդապետին Վարդանայ»: Յով_
հաննէս դարձաւ Երզնկայ, ուր յաջորդ տարին
(1272) հոն մեծ դիպուած մը հանդիպեցաւ. այս_
ինքն սրբոյ Մեծին Ներսիսի մարմինն գտուեցաւ,
640 տարուընէ վեր փլած Թիլ գեղին եկեղեցւոյն
տակ, և Սարգիս արքեպիսկոպոսին ձեռքով փո_
խադրեցաւ յԵրզնկայ: Այս գիւտիս և փոխա_
դրութեանն ոչ միայն ականատես կու կարծուի
Երզնկացին, այլ և կ'երևի թէ ինքն է անոր պատ_
մութիւնն ալ գրող և գեղեցիկ ճարտասանական
ճառ մ'ալ ըրող՝ փոխադրութեան հանդիսին մէջ,
արքեպիսկոպոսին հրամանաւն, ինչպէս որ գը-
րուածքին ոճէն գուշակեն բանասէրք: Բայց աս_
կէ յայտնի և փառաւոր յիշատակ մ'ալ թողուց
Եզնկացին Ս. Ներսիսի վրայ, «Որ զլոյսն անճառ»
երգած շարականովը, որ ընտիր շարականաց կու
հաւասարի ազնիւ շարադրութեամբ և իմաստ_
ներով և վառվռուն եռանդեամբ. այս շարականս
երգեց՝ երբոր Լևոն Գ Հայոց թագաւորն լսելով
Ս. Ներսիսի նշխարաց գիւտը՝ եկեղեցի մը նուի_
րեց այն մեծ հայրապետին:

Երզնկացին քանի մը տարի հայրենեաց սահ-
մաններէն հեռացած չերևար. գուցէ Սարգիս
արքեպիսկոպոսին քով կը ծառայէր, ինչուան ա_
նոր անպարտ սպանումը իր որդւոյն հետ մէկտեղ:
Տարի մը ետև, 1280ին, Ս. Գրիգոր վանից միա_
բանքն՝ միաբանութիւններն նորոգելով՝ խնդրեցին
իրմէ որ իրենց կանոններ գրէ. ինքն ալ գրեց «Կա_
» նոնք և սահման միաբանութեան եղբարց՝ որք
» աստուածային սիրով միաբանեցան յեղբայրու_
» թիւն միմեանց՝ յԵզնկայ, 'ի ՉԻԹ...». և կու
սկսի, «Բանն Աստուած որ բանիւ գոյացոյց զա_
» մենայն արարածս», և այլն: Այս յիշեալ վան_
քերուն մէկուն մէջ գտայ Փիլոնի Եբրայեցւոյ ճա_

աստեղանման ցրուըստէին թօթափէին. բազմութիւն մարդկան չորս բոլորն առած՝ երկու կրքով բաժնուած կու նայէին 'ի կրակն և 'ի կայծակն. և անշուշտ արժանաւոր աչքեր տեսան անոնց միջէն արեգական նման և աւելի անուշալոյս գունտ մը՝ վերանալով սրանալով անցնելով քան զամեն բարձր կայծ ու ծուխ, նաև քան զաստղերն այլ, և ծածկուելով երկնագմբէթին մէջ:...

Այն էր պայծառ, սիրավառ ու սիրածախ հոգին Նէարքոսի. որոյ պատշաճագոյն վախճան մը չէր կրնար ըլլալ՝ քան զկրակն. այն մշտակնգրուկ անուշահոտ ողջախոհ սրտին պէտք էր որ վերջապէս մարմինն այլ ըլլայ մաքուր լուցկի ողջակէզ: Թերևս յայս ակնարկէ պատմութեան սկիզբն եղած երկրորդ յառաջաբանի մը այս խօսքս. « Ի
» Հեռն այսպիսի հրաշագոյն իրացս՝ հաստատեաց
» զառաքելական ձայնն որ ասէ. Հաւատովք շի-
» ջուցին զզօրութիւն հրոյ, խցին զբերանս ա-
» ռիւծուց: Ո՛ Քրիստոսի աշակերտ 'ի յէռն հրոյ,
» և զօրական Ճշմարիտ և ընտիր »:...

Արդեօք այն փլփլկած Փելլիքսն էր Նէարքոսի նահատակութեան երկրաւոր վճիռը տուողն, թէ ուրիշ դատաւոր. և ի՞նչ առթիւ և կերպով կատարեցաւ այս սուրբ պատարագս այլ.... լռութիւն է: Բայց մէկ դիպուած, մէկ խօսք մը միայն պահած է պատմութիւնն: Պօլիքտոսի վերջի խօսքը լսեցիր, առ Նէարքոս ըսածն, զոր թողուր յերկրի. Նէարքոս յերկրի թողլու բան չունենալով, զայս խօսքս ըսած է խարուկին վրայ բոցով շրջապատած ատեն. Այս կրակս չի կրնար արգիլելու իմ սրտիս կրակը՝ առ քեզ գալու, Տէր Յիսուս: Եւ թռաւ գնաց առ Քրիստոս և առ Պօլիքտոս. զոր՝ կրնամք մեք հողեղէնքս և անփորձքս երկնից սովորութիւններուն, երևակայել աստուածափայլ կայծակի մը պէս Ճառագայթած՝ երկրէս ելլող Նէար-

քոսի ճառագայթեալ հոգւոյն հետ. և անհամեմատ գերազանց ու աննման տրամադրեան կացծականցն, իրարու պլլուած ու խառնուած՝ աստուածային աթոռոյ շուրջը փարիլ փայլել խաղալ խնդալ:

Այսպէս Պօլիւքտոս և Նէարքոս, Նէարքոս և Պօլիւքտոս « Սիրելիք և գեղեցիկք և վայելուչք.
» չմեկնեցաք 'ի կենդանութեան իւրեանց՝ և ոչ
» մեկնեցան 'ի մահուան իւրեանց »: Թէպէտ հարիւր օր կու համրեն երկրաւորք ընդ մէջ մահուամիոյն և միւսոյն. Թէպէտ և մէկն քաւութեան սեղանոյն վրայ պատարագեալ յարիւն թաթաւ, մէկալըն յողջակիզաց սեղանոյն վրայ 'ի խունկ և 'ի ճենճեր. կորըճին կատարածն՝ սրով, փափկին փափագածն՝ հրով. սակայն երկուքն ալ հաւասարք սիրով, հաւասարք անմահութեան երգով.

Երկուքեան իսկ ծաղկափայլք, եւ երկուքեան
Մելիտացիք,
Եւ երկուքեան զոյգք յերգել, եւ յանդրադարձ
հանգիստաւորք: —
Ցայս վայր յիշեմ. եւ ի մրցանս սիրոյ յետա-
նեալ չասեմ ըղմին.
Ցայսմ հետէ վեհ ինձ Պօլիւքտոս, եւ Նէարքոս
ինձ զոյգ նըմին [1]:

1 Hæc memini et victum frustra contendere Thyrsin :
Ex illo Corydon, Corydon est tempore nobis.

Վիրգիլ:

## Ժ

Ճշմարիտ բարեկամի և բարեաց տոհմի սուրբն Նէարքոս՝ իր բարեկամին կրկին անմահութեան պատճառ եղաւ վկայաբանութեամբն․ որով Պօ-լիեքտոսի անունն աւելի հռչակեցաւ յերկրի, և պաշտօնն՚ի Հայս, յԱսորիս, ՚ի Լատինս և՚ի Յոյնս։ Յուստինիանոս կայսեր ատեն հարուստ տիկին մի Կ․Պօլսի մէջ Պօլիեքտոսի եկեղեցին բոլոր ոսկեով պատեց, կայսեր ձեռքէն ազատելու համար իր ստացուածքը։ Ինչուան Փռանկաց մէջ այլ հին ատեն տարածուած էր Պօլիեքտոսի պատիւը․ զոր և սովորութիւն էր ամէն ուխտից հաւատարմութեան պաշտպան բռնել և երդնուլ անոր խորանին դիմաց․ ինչպէս որ հին հեթանոսք այլ անոր համանունին՝ Պօլիւքսի՝ սեղանին վրայ կ'երդնուին զհաւատարմութիւն․ կարիճներն՝ անոր, իսկ կանայք՝ կ'երդնուին անոր ընկերակցին՝ Կաստօրի՝ սեղանին վրայ։ Ո՛րքան փափագելի էր մեզի այլ, Հայկակ, Մելիտեան ափանց վրայ տեսնել սուրբ տաճար մը, մէջը կրկին սեղան, մէկուն վրայ Պօլիեքտոս նշանաւ սրոյ, միւսոյն՝ Նէարքոս նշանաւ հրոյ․ և առիւծասիրտք մեր՝ անոր, աղաւնէսիրտքն՝ ասոր դիմաց, նուիրելով սրտերնին՝ ընկերաց և Աստուծոյ․ — Մեր ազգն այլ իր արիութեան օրերուն, և (որոյ անմահ սիրով) մինչև հիմայ այլ՝ մեծ զգացմամբ և եռանդեամբ տօնէ զարի և զինակիր նահատակս, զԹէոդորոս, Գէորգ, Մերկեռ, Սարգիս, Վարդան, և այլն․ անոնցմէ հին է իր տօնած (այլ ոչ նոյնպէս պանծանօք՝ վասն անծանօթ մնալուն) Ս․ Պօլիեքտոսն այլ․ որոյ զինակից Նէարքոսին անունն սահեր է մեր Յայսմաւուրքէն։ Դարձեալ, հին և աւելի երջանիկ օրերուն, մեր ազնուասիրտ և ընկերասէր

նախնիքն՝ բարեկամութեան զգացմունքն այնչափ սրբազաններ էին՝ մինչև եկեղեցական օրհնութ՟բ 'ի կարգս Մաշտոցի անցընել զ'Կանոն Եղբայրակցութեան. պաշտպան և ուխտընկալ բարեկամացն նուիրելոց ունելով զսուրբ առաքեալսն Փիլիպպոս և Բարդուղիմէոս, և զվկայսն Սարգիս և Բագոս: Արդ ես այլ, Հայկակ, իմ կողմանէս մեր համազգի արիասիրաց և ընկերսիրաց՝ աննման օրինակ և պաշտպան վերընծայեմ զսուրբ հայրենակիցս մեր՝ Նէարքոս և Պօլիւքտոս, Պօլիւքտոս և Նէարքոս:

## ԻԳ.

# ՍԱՐԿԱՒԱԳ ՍՈՓԵՍՏԷՍ

Բնատուր մեծ հանճար՝ կրթութեամբ և երկար ուսմամբ կրկնակի մեծցած և զօրացած, բարականիշ ըմբռնումն և վարպետ բացատրութիւն, լեզու արուեստաւոր՝ բայց յստակ և հայկաբան. արտաքին և աստուածային գիտութեանց հմտութիւն, քաջախոհ դատողութիւն, վսեմ և անխռով՝ ոգի՝ անխոնջ հետաքննին և սերտող ստուգութեան, պատկառելի ծանրութեանը հետ զըւարճախառն ընտանութիւն, միանգամայն և մէկ զարմանալի խորհրդաւոր կերպ մը՝ որով կարծի թէ ինքզինքը կու քօղարկէ հասարակ նայուածքներէն. ասոնք են մեր մեծանուն Յովհաննէս Սարկաւագ վարդապետին յատուկ բնութիւնը, բարքը, ձիրքը, որք անորժելի պարտք մը կը դնեն զինքը ծանօթացընելու իրեն համազգեացը: Այս ձիրքերովս է որ ինքն՝ իր գտնուած ժամանակին և դիպուածոց մէջ՝ զինքը ճանչցողներուն զարմանք բերելէն զատ, իմաստութեամբը թողած յիշատակարաններովն անմահ է այսօր ալ, և անմահ պիտի մնայ միշտ մեր հայ դպրականութեան և ընդհանուր իմաստնոց կարգին մէջ. և իրեն հաւասար անձինք գտնելն միշտ աշխատալի և դժար գործ պիտի ըլլայ:

Մեր դպրականութեան մէջ յայտնի է քեզ, Հայկակ, որ երկու նշանաւոր դար ունեցեր ենք, մէկ

մը Քրիստոսի հինգերորդ դարը՝ որ է Թարգմանչաց ոսկեգրիչ ժամանակն, մէկ մ'ալ երկոտասաներորդ դարը, յորում մէկ դպրոցէ ելան սուրբն Ներսէս Շնորհալի և իր եղբայրն Գրիգոր վկայասէր, մեկնիչքն Սարգիս և Իգնատիոս վարդապետք, և իրենց մերձաւորներն Ներսէս Լամբրոնացի, Գրիգոր Տղայ, և այլն. որոնք նորոգեցին ոսկեղէն գրիչները, և հնազարդ մտաց ծննդոցը վրայ նոր ծաղկափթիթ շնորհք մը բերին, այսինքն յստակագոյն բացատրութիւն մը խօսից՝ որ աւելի յարմար էր նոր դարերուս։ Սարկաւագ վարդապետ այն դպրոցէն չէր, բայց կրնայ հայր ըսուիլ անոր, որովհետև քան զայն քիչ մը առաջ՝ նոյն շնորհքով փայլեցաւ, հանդերձ հին ոճոյ վսեմութեամբը, և իր վարպետ զարգացուածքովն՝ եղաւ եղական և աննման մատենագիր մը։ Մետասաներորդ դարուն կիսէն ինչուան ԺԲ դարուն երեսներորդ տարին քշեց իր կեանքը, ըսել է թէ իր խոր ծերութեան ատենը վերոյիշեալ վարդապետներն դեռ երիտասարդ ու միջահասակ էին, և գրեթէ ինքն գրիչը թողլու ատեն՝ անոնք ձեռք կ'առնուին։ Աս ատեններս քաղաքական հին Հայաստանն ալ նորոգուելու վրայ էր. Բագրատունեաց տէրութիւնն նոր վերջացած, Հայոց մէկ մեծ մասն իր բնական աշխարհքէն ելած՝ ուրիշ աշխարհքներ գաղթականներ կը հաստատէր. ոմանք դեռ իրենց մեծ տէրութեանը կտորներուն վրայ կռուըտելով՝ այն հին աշխարհքին ամուր կողմերը ապաւինած կամ բռնացած կեցեր էին, աստղաբաշխից ըսած՝ մեծ մոլորակի կտոր մանր մոլորակաց պէս. ոմանք ալ ասդիէն անդիէն մէկտեղ եղած՝ մէկ ամբողջ ջահ մը վառել կու ջանային, այսինքն մեր Պահլաւեան և Ռուբինեան իշխաններն Կիլիկիոյ մէջ։ Զասոնք պայծառացընելու համար՝ Աստուած հանեց Ներ-

սէմներ ու Գրիգորները. իսկ վերին Հայոց մնացած կողմերը՝ որոնց յետին փայլումն հասեր էր, պարզեց աս լուսաւոր վարդապետը։

Իր հայրենիքն էր Արցախ աշխարհին Փառիսոս կամ Փառնէս գաւառը՝ Սիւնեաց ընիկ Սիսական գաւառին դրացի, որ աս ատենները զատ Թագաւորութիւն ունեցաւ՝ Սիսականի կամ Փառիսոսոյ անուամբ, և իրեն իշխաններն հին Հայկազանց սերունդք էին։ Սարկաւագին աշխարհք եկած ատենն ասոնց սակաւաւոր փառքն ալ մարմրելու վրայ էր, և քիչ ատենէն փոխուեցաւ յիշխանութիւն Խաչենի։ Իր մանկութիւնն՝ հայկական վեհապանծ օրերուն տեղ՝ անոնց վարատական դաղթիլը և Սկիւթացւոց յարձակմունքները տեսաւ։ Ալփասլանին ըրած աւերմունքներն դեռ կու մնային աչքին առջևը. և անանկ տպաւորութիւն մ'ըրած էր վրան աս բարբարոս ազգին մեր աշխարհքը գալն ու աւրելն, որ այն ատենէն մըտքին մէջ նկարուած պիտի ըլլան այն պատկերները՝ զոր վերջը գրով աւանդեց յետնոց. երանի թէ մեզի ալ հասած ըլլային։ Բայց աս շփոթութիւններս իրեն դաստիարակութեանը և ուսումնասիրութեանը արգելք չեղան։ Իր հայրն արդէն քահանայ էր, և ինչպէս կ'երևի՝ այն սրբազան աստիճանն իրենց ցեղին մէջ շատոնց ունեցեր էին. ուստի իր որդին ալ՝ որ Յովհաննէս կ'ըսուէր ընիկ անուամբը, և կ'երևնայ թէ շուտով սարկաւագ ձեռնադրել տալուն՝ Սարկաւագ ըսուեցաւ անկէ վերջը, ուզեց նոյն ճամբան դնել. անոր համար պզտիկուց ղրկեց որ ուսմունք սորվի։ Այն ատենի արևելեան կամ Խոր Հայոց երևելի ուսումնարաններն էին Բագրատունեաց և Վրաց Թագաւորաց ծաղկեցուցած վանքերն, Հաղբատ, Սանահին, և ուրիշ քանի մը անոնց մօտ վանքեր. աս տեղուանքս անցուց Սարկաւագ իր անյագ

ուսումնասիրութեամբ վառուած հասակը, համեմատ գիտման և կամաց զանոնք կանգնողներուն և զարդարողներուն. որպիսիք էին Թագաւորք, իշխանք, եպիսկոպոսունք և վարդապետք նշանաւորք իրենց ժամանակին, և հիմայ այլ ոչ աննըշանք իրենց հոն թողած գերեզմաններովը. որոց մէջ է և մեր Սարկաւագ վարդապետինն. և այն ամենուն մէջ այլ նշանաւորագոյն անձն և յիշատակ՝ ըստ իս՝ ինքն է և իրենն։

Բայց գրեթէ անկարելի է յիշել այս՝ երկու-հռչակաւոր վանքերը, որ մայրավանք և ծայրաքաղաք այլ կոչուեցան, և լսել իրենց ծագումը և պայծառութիւնը. այն զուգակները՝ որ ԺԱ–ԺԳ դարուց մէջ վերին Հայոց ամենէն ծաղկած իմաստութեան կենդրոն կու սեպուէին, միանգամայն և քնարան եղան և են Թագաւորաց և մեծամեծ իշխանաց, զատ ՚ի գիտնոց և եկեղեցական առաջնորդաց։ Ժ դարուն կիսէն վերջը Յունահայ Ռոմանոս Ա կայսերէն հալածուած քանի մը միանձունք եկան ՚ի Հայս, և ինչուան Գուգարաց աշխարհին արեւելեան ծայրը Զորոյգետ կամ Զորոփոր գաւառին գլուխը՝ Սանահին գեղին քով, դարատափի մը վրայ յանուն Ս. Աստուածածնի եկեղեցի մը շինելով՝ հոն պատսպարեցան։ Աւանդութիւն էր Հայոց որ Ս. Լուսաւորիչ այլ հոն նոյն անուամբ եկեղեցի մը շինած էր, վասն զի նոյն իսկ Բարդուղիմէոս և Յուդա առաքեալք այլ հոն խաչ մը կանգներ էին. ըսել է որ ժամանակաւ մեր նախնիքն հոն կռատուն կամ բագին մ՚ունէին։ Քանի մը տարի վերջը մեր Բագրատունի Թագաւորն Աշոտ Ողորմած և իր Թագուհին Խոսրովանոյշ՝ աւելի մեծ եկեղեցի մը շինեցին հոն Ամենափրկիչ անուամբ և վանքըմ՝ այլ, յ՚966 թուին Քրիստոսի։ Սանահինէն ժամ մը հեռի դէպ արեւելեան հիւսիս և անկէ ձորակով մը զատուած

է Հաղբատ գեղն․ ասոր քով այլ նոյնպէս սա-
րաւանդի մը վրայ հիմնեցին Ս․ Նշան եկեղեցին և
վանքը, զոր կատարեալ շինութեամբ լմնցուցին
իրենց որդիքն, Սմբատ և Գուրգէն թագաւորք․
և երկուքն այլ յանձնեցին արժանաւոր վանա-
հարց և վանականաց․ միանգամայն հոն ընտրե-
ցին իրենց գերեզմանատունը․ որոնց հետևեցան
իրենց ուրիշ ազգակից թագաւորներ և մեծամեծ
իշխանք․ ինչպէս Սարգիս սպասալար, որոյ դուստ-
րըն կանգներ էր այն իմ երբեմն քեզի յիշած Ա-
ւագ կամուրջը [1], ուսկից պէտք է անցնիս, Հայկակ,
արևմուտքէն Սանահին գալու համար, որոյ մօ-
տիկ է։ Բաղդով մը, որ սակաւագիւտ է մեր աշ-
խարհին մէջ, ոչ միայն ասոնց գերեզմաններն,
այլ և կամուրջն և եկեղեցիք, յիշատակարանք և
արձանագրութիւնք՝ մեծաւ մասամբ անեղծ մնա-
ցեր են ինչուան հիմայ, 800 տարիէ վեր։ Ահա այս
վանքերուն մէջ զարգացաւ մեր Սարկաւագն։

Անյագ և մտադիր ուսումնասիրութեան վրայօք
կու պատմէ Կիրակոս Պատմիչ դիպուած մը, որ
հաւանօրէն անոր զարգացած հասակին մէջ հան-
դիպած է․ Հաղբատայ վանքին քովերը Ձորոյ գետ-
եզերքին վրայ քարայր մը կար, ուր տեղւոյն
ամրութեան և ապահովութեան համար կու պահէին
գիրքերը, և փափագողն կ՚երթար հոն կու քննէր
կու կարդար․ օր մը բանասէրք ոմանք, Սարկաւագ
այլ մէկտեղ, գացին կարդալու, Սարկաւագ իր
սիրական գրքերն ընտրելով՝ ծածուկ կողմ մը քա-
շուեցաւ կարդալու, և այնչափ ուշի ուշով ան-
զբաղ կու կարդար կու քննէր, որ ոչ ժամերուն
անցնիլն իմացաւ, և ոչ ընկերներուն դուրս ելնել
և դուռը գոցել և երթալնին․ վասն զի ասոնք
չտեսնելով զՍարկաւագ՝ կարծեցին թէ իրենցմէ

1 Տես Ա. հատոր, երես 31։

տաւաղ դուրս ելեր է: Քանի մ'օրէն նորէն եկան գիրք առնլու. և որչափ զարմացան երբ հոն գտան զՍարկաւագ. սկսան հարցընել, թէ «Ո՞րպէս ապ-
» րեցար առանց կերակրոյ և ըմպելոյ. և նա եցոյց
» նոցա զգրեանն՝ զոր ընթերցեալ էր, և ասէ.
» Այդ է իմ կերակուր և ըմպելի, զոր կերայ և
» արբի զաւուրս զայսոսիկ»: Իր աշնուական բարքն և բնատուր սրամտութիւնն ալ ջանիցը հաւասար, անկատար հասակին մէջ ալ զինքը կատարելոց կարգը անցուցին. և ինքն իսկ կրնայ վկայ սեպուիլ այս բանիս իր խօսքովը՝ որ գրուածքի մը մէջ կ'ըսէ. «Ի նախնեաց բարեպաշտից և
» յիմաստուն ծնողաց բուսեալ, որք սնուցին զիս
» օրինօք հոգւոյն կենաց՝ առնել քան ըստ բնու-
» թեան տածիւք խնամս յառ մանկունս. որովք
» յառաջնումն հասակին դաստիարակեալ՝ յոյս
» տայր քաջութեան»:

Առջի ուսումնական տարիներն անցուց, ինչպէս կ'երևի, անդադար կարդալով և հմտանալով, ետքն ալ գիր անցընելով իր հասուն մտքին պտուղները. բայց ինչպէս որ ընտիր ընթերցուածներու սիրող էր, այսպէս ալ իր գրուածքն ընտիր կ'ուզէր. անոր համար մեծ ջանք ըրած կ'երևնայ գեղեցիկ ոճ մը ստանալու, միանգամայն և բարձր ու վսեմ. վասն զի արծիւ միտքն արծուոյ թև ալ կ'ուզէ. և յիրաւի, իր ամեն գրուածքներուն մէջ կ'երևին ճարտար ու սովորականէ վեր իմաստասիրական շարադրութիւնք՝ իմաստակութենէ և արուեստակութենէ հեռու, և միանգամայն պարզ և խորամիտ. որ մէկէն կը ցուցընէ թէ այսպիսի գրուածք միայն իրենն է և ոչ ուրիշի: Շատ լաւ կ'ըսէ ասոր համար Կիրակոս պատմիչ. «Սորա բանք ամենայն իմաստասիրա-
» կան ոճով է, որպէս զԳրիգորի աստուածաբա-
» նի, և ոչ գեղջուկ»: Աստուածաբանին հետ յի-

չէլաւ էր մեր Յոյն Իմաստասէրն ալ, որուն թերևս միայն հետևող եղաւ Սարկաւագ, և անոր ճարտար ոճը՝ Շնորհալւոյն քաղցրութեանը հետ խառնելով կրնայ Սարկաւագի գրչին գաղափար սեպուիլ:

Յոյն Իմաստասիրին անունն ալ մականունն ալ գրիչն ալ ժառանգեց Սարկաւագ. և ամէն պատմիչք և յիշատակողք չեն կրնար անունը տալ՝ առանց կոչելու Սուրբ, Իմաստասէր կամ Մեծ Իմաստասէր, Աստուածային Իմաստասէր, Գերահռչակ Վարդապետ, Մեծ Փիլիսոփայ, և այլն. այս ետքի զրուցուածէս կրնանք իմանալ որ զուտ իմաստասիրական գրուածքներ ալ ունէր, որոնց հետքը միայն կ՚երևին հիմայ. միանգամայն և ճարտասանական և քերթողական արուեստից հետևեցաւ, և յաջողութիւնը ցուցուց իր շարագրութիւններովը. ինչպէս ասոր ալ վկայութիւն կու տայ ինքն իրեն համար քանի մը խօսքով Սարեկի դիմառնական երգոյն մէջ՝ ուր կ՚ըսէ.

« Որով յաղթեալ մեզ իմաստնոցս եւ կարծեցեալ բանաստեղծացս »:

Եւ դարձեալ սարեկին քաջ երգեցողութիւնը գովելով, կ՚ըսէ.

» Աստ դաս նըստիս մերձ առ ինեւ՝ իբր արուեստիւ ինձ յանգակից,
Բազմաղեաւ երգարանաւ եղանակես եւ կաքաւես.
Հոմերական տաղիցըն չափ՝ քեւ ծանուցեալ լինի բազմաց,
Յոտանաւոր եւ ցուցական ըստ քերթողացըն տեսակի.
Կամ թէ եւս աւելագոյն որպէս թըւի ինձ գիտողիս »:

Իսկ իր անխոնջ ուսմանց զբաղելուն համար կ'ըսէ հոն.

«Ուսայ ես գեգերմամբ եւս ի բազմաց ամաց
հետէ.
Զի տքնեցայ զօր ամենայն եւ ըզգիշերըն բովանդակ
Առ իմաստըս ցանգութեամբ, նաեւ սիրոյն որ
առ հանճար»:

Վերոյիշեալ պատմիչն ալ կ'ըսէ. «Մեծիմաստն գիտութեամբ քան զյոլովս և հանճարեղն յամենայնի, և մտահարուստ. սա բազում ինչ աշխատասիրեաց 'ի գիրս՝ յիշատակ բարի թողեալ... վասն զի յոյժ իմաստուն էր այրն և աստուածային շնորհօք զարդարեալ»:

Սարկաւագայ շնորհքն միայն եկեղեցական և հոգևոր աղբիւրներէ չէր, այլ և ընտիր հեղինակաց ջանից և փորձոյ արուեստն այլ կ'երևի վըրան. զոր գուցէ ոչ միայն մեր նախնեաց թարգմանած գրքերէն ստացեր էր, այլ թերևս նաև դեռ չթարգմանուած յոյն հեղինակներէ այլ. թէպէտ հաւաստիք մը չունիմ իրեն յունարէն գիտնալուն, բայց անհաւանական չէ որ Իոմանոսէն փախչող և հոս եկող Յոյն միանձունքն, դար մ'առաջ, հետերնին բերած և հոս թողած ըլլան իրենց նախնեաց գրուածքները. որոնք դիւրաւ կրնային շարժել Սարկաւագայ պէս հետաքրքիր բանասէր միտք մը:

Այսպիսի զօրաւոր միտք՝ ուսմանց երեսովը չէր բաւականանար, հապա խորերը իջնալ կը սիրէր. անոր համար դժուարութիւններէ չփախչելով, ինքը զանոնք դիւրացընել կը ջանար ուրիշներու, և տարակուսական բաներու մէջ ըստուգագոյն աղբիւրները քննել կ'ուզէր. ինչպէս որ քանի մը յիշատակներէ և գործքերէն կ'իմա-

ցուի : Ասոնց մէկն էր նախնեաց իմաստասիրական գրուածքները պտրզել կամ դիւրիմաց ընել, որոյ համար առաջին հարկաւոր բանն է ստոյգ և աղէկ գրուած օրինակներ ունենալ : Յայտնի է քեզի, որ մեր մէջ ամենէն առաջ և ամենէն նշանաւոր փիլիսոփայական գրուածքն են Դաւթի Անյաղթի ․ որք թէ իմաստից խորութեամբն և թէ շարագրութեան խրթնութեամբն միշտ անիմանալի կամ դժուարիմանալի մնացեր են, թէ և շատեր կարդացեր են զանոնք : Իտալիոյ երևելի համալսարանաց մէկուն մէջ հանդիպեցայ այս գործքերուս ընտիր ձեռագրի մը՝ ԺԳ դարուն մէջ գրած, որուն վերջը այսպէս գրուած էր․ «Իմաս-
» տութիւն Հաւր և Բան, սիրողին իմաստութե,
» վարդապետին Սարկաւագ կոչեցեալ՝ աշխատա-
» նաց յուղղութիւն տառիս, զարժանն հատոյ
» յանյաշաղ ձրիցդ »: Այս քանի մը տող գրուածիս վրայ գրած շեշտերուն կամ առոգանութե նշաններուն պէս լի և ծեփած էր բոլոր գիրքն Դաւթի․ և ըսել է որ Սարկաւագ վարդապետ օրինակ մ՚առեր սրբագրեր է՝ շեշտերով և կէտերով, և անկէց օրինակուած է իմ տեսածս այլ, արժանի քննութեան և բաղդատութեան : Ասոր պէս բրած էր ուրիշ մեր նախնեաց թողած ամէն դժուարիմաց և խրթին գրոց այլ՝ զոր Նորբ Գրեան+ կու կոչէն մեր բանասէր վարդապետք, այսինքն բարակ գրուածք․ և Մխիթար Այրիվանեցին կարգաւ կու յիշէ զանոնք․ ինչպէս, Փիլոն եբրայեցւոյն գործքերէն 9 գիրք, Դիոնեսիոս Արիսպագացւոյն 5 գիրք, Գր․ Նիւսացւոյ 7 գիրք, Գր․ Աստուածաբանին 4 գիրք, Բարսղի 3 գիրք, Եւագրի, Եպիփանու, Եփրեմի, Կիւրղի Աղեքսանդրացւոյ, Ոսկիբերանի զանազան գրուածք, Արիստոտելի, Պրոկլի, Հերմէսի ; և ուրիշ իմաստասիրական գրուածք, Մովսիսի Պիտոյից գիրքը,

Յովհ. Մայրագոմեցւոյ 3 գիրքերն, և այլն. Միանգամայն 50էն աւելի գրեանք, զոր Սարկաւագ ստուգեր և յաւելեր և այնպէս օրինակել տուեր էր իր աշակերտաց։ — Այս կարևոր աշխատութիւնս որ ՚ի հարկէ շատ տարիներու այլ կ՚արօտէր՝ կ՚արժէր Սարկաւագայ մեծ յիշատակ մը թողլու՝ եթէ ուրիշ յիշատակ այլ չունենար։ Եթէ այն գրոց Լուծմունք գրոց՝ այսինքն մթին բանից մեկնութիւն, առաջինն ինքն չեղաւ, գոնէ իր աշակերտներն եղած են նախ, և յետոյ այլք։

Արտաքին նուրբ գրոց վրայ այսքան մտադիր աշխատողն ՚ի հարկէ աւելի խնամքով պիտի ընտրէր Ս. Գրոց ընտիր օրինակներ և ընթերցուածներ. և այնպէս այլ ըրաւ. «Գրեաց և օրինակս ստոյգ գրոց», կ՚ըսէ Կիրակոս։ Նախ հաստատեց որոնք որ կանոնական կամ ընդունելի եղած էին մեր մէջ, յետոյ ընթերցուածները, այսինքն տարբեր շարադրութիւնները ստուգեց. ինչպէս որ կու վկայէ և կու նշանակէ վերայիշեալ պատմիչն՝ ըսելով. «Կարգադրութիւն գրոց սրբոց, որք ստու-
»գաբանեցան ՚ի Սարկաւագ վարդապետէն, և
»գրեցան յինէն ՚ի Տէր Մխիթար վարդապետէս
»պատմագրէ՝ ՚ի մին տուփ, յաւուրս 170»։
Այս պրպըտող պատմագիր վարդապետս՝ որ 150 տարի Սարկաւագէն ետև գրող է, անոր ստուգած Ս. Գիրքերը գտեր և օրինակեր է ամբողջ մէկ մեծ հատոր մը ձևացընելով. որուն մէջ զատ հիմնականն մեր Աստուածաշունչի կանոնական գրքերէն՝ կու յիշուին նաև «Դ Մակաբայեցին,
»Յովսեպոսն՝ որ է Կայիափայ քահանայապետ,
»Ենովքայ տեսիլն, Կտակն նախահարցն, Աս-
»նեթի աղօթքն, Եզր Սաղաթիէլ, (որ է Գ Եզր)
»Մնացորդքն Գ, Մահ մարգարէիցն ԻԴ»։ Նոր կտակարանին մէջ կայ և կորնթացւոց Գ թուղթն։ Եւ յետ նոր կտակարանաց՝ իբրև անմիջապէս

սրբազան դիրք դրուած են, «Աղօթամատոյցն» Սահակայ և Մեսրովպայ», որ է ժամագիրքն, «Պատարագն Ս. Մանդակունւոյն», որ է Պատարագամատոյցն. և որ զարմանալի է՝ ասոնցմէ առաջ գրուած է «Դաւթի փիլիսոփայի Բարձրացուցէքն». այնքան պատուելի և պաշտելի սեպուած է այս մեր Անյաղթ փիլիսոփային ճառն 'ի գովեստ Ս. Խաչին։ Աստուածաշունչ գրոց մէջ ամենէն աւելի աշխատալին ստուգութեան համար՝ էր հին կտակարանաց ամենէն աւելի շատ գործածուած, և ամեն քրիստոնէից (և զուցէ աւելի մերազգեաց) մէջ յաճախած Սաղմոսաց գիրքն, որ և խիստ շատ օրինակուելով այլայլեր էր, և շարադրութեան և գրուածքի տարբերութիւններով՝ շփոթութեան պատճառ եղեր էր կարդացողաց, և հարազատը որն է՝ կ'ուզէին իմանալ. այս բանս Սարկաւագին ալ մեծ հոգ եղած էր. և շատ օրինակներ քննելէն ետև՝ փնտռելով գտաւ Հաղբատու գրանոցին մէջ ամենէն տակը դրած մէկ հին սաղմոս մը՝ որ Թարգմանչաց ձեռքովը գըրած էր, կիսամաշ ու բարակ գրերով. այն գեղեցիկ յիշատակարանը համբուրելով և աչացը վրայ դնելով առաւ գնաց, աշխատութեամբ օրինակեց, և ուրիշ շատ ալ օրինակել տուաւ ու ցրուեց Հայաստանի ամեն կողմը։ Իրմէ ետև իբրև դար մը վերջը Յովհաննէս Գառնեցի վարդապետն ալ (որ այս բանս կու պատմէ) ջանաց այլ աւելի ծաւալել Սարկաւագի ստուգած սաղմոսը՝ անոր համար շատ ձեռագիր սաղմոսաց մէջ կու գտուի իր յիշատակարանն, կամ նոյն սաղմոսարանն Գառնեցի կ'ըսուի։

Այս սուրբ և արտաքին գրոց ստուգութեան պէս, և ըստ մասին այլ աւելի մեծ ստուգութիւն և նորոգութիւն մ'ըրաւ Սարկաւագ՝ Հայոց տոմարին. «Սա զբազմաց փափագելին և ոչ ձեռնհաս՝

» զհաստատ և զանշարժ տոմարն կարգեաց Հայոց, » փոխանակ շարժականին և անհաստատնոյն. ա» րար և զմիաբանութիւն ամենայն ազգաց տու» մարին ընդ Հայոց ». կ՚ըսէ Կիրակոս պատմիչ: Վասն զի թէպէտ իրմէ առաջ Զ դարէն 'ի վեր ջանացեր և կարգի մը խոթեր էին՝ բայց շարժական ըլլալուն դեռ շփոթութիւնները դադրած չէին. իրաւ Անանիա Շիրակացի և Անաստաս կաթուղիկոս, Է դարուն մէջ ջանացին այս բանս այլ շտկելու, բայց կաթուղիկոսին մահուամբը փիլիսոփային ջանքն անգործ մնաց: Իսկ Սարկաւագ վարդապետնորէն աշխատեցաւ, տարեկան տոները հաստատուն ըրաւ, և Հայու տոմարը ուրիշ ազգաց տոմարներուն հետ բաղդատելով՝ համեմատութիւն ըրաւ. այս կարգաւորութիւնը մերոնք կ՚անուանեն ՍԱՐԿԱՒԱԳԱԴԻՐ ԿԱՐԳ: Այս բանիս վրայ ուրիշ անգամ խօսած ըլլալով, Հայկայ շրջանը բացատրած ատենս, չեմ ուզեր հոս նորէն կրկնել. միայն յիշեմ համառօտ ինչ որ այս նորոգութեամբս եղաւ: Նախ, ուրիշ քարեկարգ ազգաց նման մեր եկեղեցւոյն մէջ այլ ամեն օրուան վրայ դրուեցան հաստատ տօնք և յիշատակք Սրբոց, անոնց համառօտ պատմութեամբք, որով ՅԱՅՍՄԱՒՈՒՐՔ գիրքն ձևացաւ, և ինչուան հիմայ եկեղեցեաց մէջ կու կարդացուի ըստ աւուրն պատշաճի. թէ և հին ատեն այլ կային ՃԱՌԸՆՏԻՐՔ, ՄԱՐՏԻՐՈՍԱԳԻՐՔ, ԱՏՕՄԱԴԻՐՔ, և այլն, որոց մէջ սրբոց վկայաբանութիւնք և գովեստք գրած էին կարգաւ մը, բայց ոչ հաստատուն օրերով, և ոչ այլ ամեն օրուան յիշատակ կար: Բ. Մեր թէ եկեղեցական և թէ քաղաքական տոմարն՝ հաստատուն, յստակ, յայտնի օրէնք և կերպ մ՚առաւ: Գ. Հաստատուն տումարին համեմատ հաստատուն թուական մ՚այլ սկըսաւ, սոյզ արեգակնային տարիներով, այսինքն

չորս տարին օր մ'աւելցընելով, սկսեալ 'ի 1084 Թուականէն Քրիստոսի. վասն զի այն տարին կու լմըննար Հայոց մեծ ըսուած Թուականէն (552է) սկսած հինգհարիւրեկի (532 տարուան) շրջանն. և ըսուեցաւ Սարկաւագայ կամ Նոր Թուական, և կամ Մփրուն, որ աւելի Զորոգետոյ կողմերը գործածուած է, և Մխիթար Գոշն այլ կու բանեցընէ: Այս Թուականիս հետ սկսած հինգհարիւրեակ շրջանն այլ 'ի հարկէ լմընցաւ յամին 1616. և ահա այն տարին Ազարիա Ջուղայեցին՝ երրորդ շրջանին հետ Նոր Թուական մ'այլ հաստատեց՝ իր երկրին կողմերը, տարէգլուխը հաստատելով 'ի մարտի 21, որ պիտի ըլլար գարնանային գիշերահաւասարին օրը. և այնպէս այլ կ'ըլլայ՝ եթէ Նոր տումարին մարտի 21ը առնունք. այս Թուականս այլ Ազարիայի անուամբ կու կոչուի: Դ. Հին Հայոց տումարը և Հայկայ Թուականը և Շրջանը յայտնեց և Նորոգեց Սարկաւագ, որ յիրաւի մեր պատմութեան և ժամանակագրութեան համար կարեւոր և պանծալի բան մ'է. ինչպէս որ յիշած եմ քեզի այն շրջանին վրայ խօսած ատենս: Ե. Ժամանակագրական Թիւերն այլ քննելով՝ երեւելի դիպուածները հաստատեց քանոնի մը վրայ. զանազան Թուակարգութեանց մէջ ընտրեց այն եօթանասնից հաշիւը՝ որ յԱդամայ մինչեւ 'ի ծնունդ Քրիստոսի կու համրէ 5198 տարի, մինչեւ 'ի Ջրհեղեղն՝ 2242 տարի: — Այս տումարական բաներէս մաս մը գրած է յամի Տեառն 1107, մաս մը 1116, մաս մ'այլ ատոնց միջոցը. և կ'երեւի որ ոչ առանց դժարութիւն կրելու հին սովորութեամբ վարժողներէ, ինչպէս քանի մը խօսքերէն կու գուշակուի. Նոյնպէս այլ կ'երեւի որ մէկ մասը գրած է իր մէկ մտերմին, որուն խոստանալով յետոյ աւելի տեղեկութեամբք գրել. այսպէս խրատով և ընտանեբար կու վերջացընէ.

« Արդ դու ընկալ այժմ զաակաւաբան պատաս֊
» խանի հարցմանն. Նախ խաղաղութեամբ, ոչ
» ուժգը հոկառակելով և ոչ վիճելով. քանզի
» բանս ընդդէմ դնել անզգամին՝ ոչինչ օգնեսցէ.
» վասն որոյ լաւէ և առանձին իմաստասիրել՝ կամ
» ընդ խորհրդականս, յոյժ շահաւոր է։... Եւ
» դու որպէս և գրեցերն՝ և կարես գալ՝ բարւոք
» է. ապա թէ ոչ՝ զամենայն ինչ որ տարակու֊
» սելի քեզ՝ հարցցես գրով. շնորհօքն Աստուծոյ
» պատրաստ եմք լուծանել զտարակուսանան և
» ուսուցանել զանգիտացեալն, ապաստանի յոյս
» Հոգին սուրբ։... Այլ այլ ինչ որ պակասն իցէ,
» և եթէ հաճոյ իցէ քեզ, զամենայն տօնս՝ Նո֊
» րովս (տումարով) գրեմք՝ որ չեն գրած »։

Վերջին խօսքերս կ'իմացընեն որ սրբոց տօնե֊
րուն կարգաւորութեանն համար էր խնդիրն, և
թէ կային ծանօթ սուրբք՝ որոց տօնի օր դրուած
չէր, և ասոնց համար կ'ըսէ, թէ որ կ'ուզես իմ
ցուցած Նոր և հաստատուն տումարիս օրերուն
վրայ դնեմ ասոնց յիշատակը։ Ինքն այնչափ ըս֊
տուգութին և ճշգութիւն կու բնտռէր այս սրբոց
տօնից օրերուն, մինչև օրերուն տարակուսանքն՝
զսուրբերն այլ կամ անոնց տօնելն ըլլալը տա֊
րակուսելի կ'ըներ իրեն. այս բանիս կու վկայէ բաղ֊
մահմուտ Արևելցի (մեծ) Վարդան վարդապետ,
առ Հեթում Թագաւոր գրելով այսպէս. «Սար֊
» կաւագ վարդապետ ասացեալ էր ընդ իւր խոր֊
» հրդակից, թէ ես այնց տօն չեմ տօնել՝ որ չեմ
» տեսեալ զտօնին պատճառն և զաւուրն շնորհն։
» Ի սուրբ Ստեփաննոսի տօնին՝ յետ արձակման
» ժամուն՝ զժամատան դուռն փակեալ էր, գիտե֊
» լով թէ մարդ չմնաց 'ի ներքս, և սկսաւ աղօթել.
» և եկն սուրբն Ստեփաննոս և համբուրեաց ըզ֊
» վարդապետն, և ետ նմա ըմպելի հրեղէն. և ա֊
» սաց Վարդապետն, թէ յուշ էր եկիր յայս

» տարպայս, (անգամ). և ասէ Նախավկայն. Գի-
» տե՞ս, հայր, թէ քանի եկեղեցի եմ գնացել 'ի
» մեծարել զտօնողսն՝ շնորհօքն Քրիստոսի, և
» լուկ օր վճարեցի: Ես աբեղայ մի թադուցեալ
» կայր 'ի դասն, ետես և լռեաց. և եկն անկաւ
» յոտս վարդապետին. և նա ասաց, մի՛ ումեք
» ասիցես »: — Ուսումնականէն կերպով մը 'ի
հրաշալին տարաւ զմեզ պատմութիւնն. ուր ես
այլ հիմայ չեմ ուզեր ուշանալ, բայց ոչ այլ զանց
ընել ըսելու, որ այս տեսիլքս աւելի պարզ և հա-
ւանելի կերպով կու յիշէ Վարդանէն հին հեղի-
նակն և իմ նախ յիշածս՝ Յովհաննէս Գառնեցի.
« Այս Սարկաւագս, կ'ըսէ, այր սուրբ և տեսող
» և զուարթերես և լի հոգւով. որ և 'ի տօնի
» սուրբ Նախավկային խնդրեաց 'ի սուրբ վկայէն
» տեսանել զնա, և ահա երևեցաւ նմա դէմ յան-
» դիման և գրկախառն համբուրիւ ողջունիւ ող-
» ջունեաց զնա. և բազում բանս մխիթարականս
» խօսեցաւ ընդ նմա »:

Այսչափ· քննութիւնք, ստուգութիւնք, նորո-
գութիւնք և պէսպէս գրուածք՝ լաւ իմացուցին
թէ կայ ազգին մէջ անանկ ամենահաս և կարող
գրիչ մը. անոր համար շատոնք իրենց տարակոյս-
ներուն լուծմունքն իրմէ ուզեցին, ինքն ալ ան-
նախանձ և բարեսէր՝ լցուց կարօտութիւննին:
Այսպէս են մեզի հասած քանի մը մանր գրուածք-
ներ՝ Հովերու և Երկրաշարժի պատճառին վրայ,
որոց մէջ 'ի հարկէ հիմակուան բնագիտաց կար-
ծիքը և դրութիւնը պէտք չէ բնտռել, բայց բա-
ւական ողջամտութիւն կ'երևի, շատ հմտութիւն
և ջանք ստոյգ և զանազան գիտութեանց, մանր
դիտողութեամբ և զգացմամբ բնութեան տեսա-
րանաց և օրինաց. որոյ օրինակ ըլլայ, անգամ
մ'այլ, սարեկ թռչնոյն ձայնին եղանակն, 'ի բաց
հանելով բարոյական բաղդատութիւնները.

Արթուն եւ զուարթուն թռչուն, հսկող եւ բարբառող,
Կանչող եւ կարկաչող, ճռճռող, ձայնող, պաշտօնասէր...
Անմերձ եւ մօտաւոր, ուրախարար լըսասիրաց.
Քաղցրաձայն գաշնակաւոր, որպէս կարծեմ՝ ըստ արուեստին.
Սաստկախօս եւ հարթավանկ, խանդաղատող եւ ողբերգակ.
Հրամայող եւ ողոքող, ըզխրատականըս ներադրող,
Սպառնացող եւ հեզախօս, գգուող, կոչող եւ հրաժարող.
Կականող եւ ձայնարկու, յոյժ խնդացող եւ զուարճացեալ.
Արդ գիշերըն քեզ ի տիւ, եւ խաւարն որպէս ըզլոյս։

Որ և է ընապատում կըրնայ գովութեամբ յիշել այս սարեկին եղանակին յատկութիւնները, որք երբեմն Սարկաւագին աղօթքը շփոթել կուտային. և օր մ'այլ ձագն հաւանելով՝ նստաւ գրեց այսպէս 200ի չափ երկայն տողերով ոտանաւոր « Բան իմաստութեան, 'ի պատճառս զբօսանաց, » առ ձագն՝ որ զաղօթանոցաւ նորա ճռուողէր » քաղցրաձայն, որ կոչի Սարեկ ». և գրելուն ատեն՝ յանկարծագդեցիկ բանաստեղծի պէս այնպէս վառուեր և յափշտակեր էր, որ գրի կաղամարն վրան թափեցաւ և հագած կաշիէ զգեստը աղտոտեց. հարկ սեպեց որ այս բանս այլ գանգատելով յիշէ իր քաղցրախօսիկ դըրացւոյն.

Այլ եւ զայժմուս իսկ պատահումն՝ ոչ լըռեցից արտաբերել.

Ըղձախաչօրըն փոխազգեստն՝ որ յետ անկ-
մանն ընձեռեցաւ՝
Ապացոյց մեռելութեանն եւ գուշակիչ ունա-
կութեան,
Ըղձերարկուս՝ ինձ համունակ՝ զայս արարեր
դու անպիտան:

Այս կէս իմաստասիրական կէս զուարթական բանաստեղծութիւնս՝ որ Սարկաւագայ մեզի հասած գրուածոց մէջ ամենէն զուարճալին է, մեր գրականութեան մէջ աննման գրուածոց այլ մէկն է, և պիտի մնայ անմոռանալի: — Իսկ ինքն ուսումնական բաներ սովրիլ և գրելու համար յայտնապէս կու պահանջէ, թէ «ամենեւին բազմա-
» հմուտ պարտ է գոլ ձեռնարկողին այսմ, ոչ
» միայն սրբոց և աստուածաշունչ գրոց, այլ և
» արտաքնոց »: Անկէ այլ գեղեցիկ և հաստատուն փիլիսոփայութեամբ կու պահանջէ որ ուսումն կամ գիտութիւնն փորձով այլ ստուգուի. «Դարձեալ թէ և ողջօք կիրթ եւ վարժ,
» առանց փորձի՝ կարծիքն հաւաստարմանալ ոչ
» կարասցեն. և փորձն՝ հաստատուն և աներկ-
» բայ... վասն զի ոչ է պարտ միայն հնագիտակ
» լինել, այլ և ինքնաբաւ՝ ըստ շնորհացն Աստու-
» ծոյ »: Առանց այսպիսի հնարից գրող կամ խօսող գիտնոց խելքը՝ մեղադրելով կ'անուանէ «Խօլ հանճար՝ անհանճարեյն »:

Արդ անտարակուսաբար կրնանք ըսել որ Սարկաւագ վարդապետ շատ մեծ արդիւնք ունեցաւ այսպիսի ջանքով և գործերով, որոց բովանդակութիւնն է՝ ըլլալն իր ժամանակին և երկրին մէջ նորոգող ուսմանց և ընտիր ախորժակ մտցընող. ինչ որ ԺԵ դարուն մէջ սկսան Եւրոպացիք՝ ինքը մետասաներորդին սկսեր էր, կամ թէ իրեն ժամանակակից դպրոցական ըռուածներուն հետ. և

թէպէտ չհասան մեզի այն տեսակ գրուածները, բայց յայտնի է որ ինքն դասատուութեամբ այն նոր ոճը բանեցուց. անոր համար կոչուեցաւ «Մեծ Սոփեստէսն Հաղբատայ»։

Սարկաւագ վարդապետ իր մտաց ուժը՝ գիտութեանց, հոգւին ալ Աստուծոյ և աստուածայնոց նուիրած էր, ինչպէս որ ամէն ասանկ զօրաւոր և զգօն իմաստասիրաց յատկութիւնն է. և իրեն գրուածքներն ալ կը վկայեն որ աստուածային բաներու մէջ խորամուխ էր, միանգամայն և մեծ հոգեսիրութեամբ վառուած՝ ճշմարտութեան և վարուց ուղղութեան բերելու զուրիշները. բայց առանց կռուասէր վիճման և բռնադատութեան, այլ անհակառակ և խելացի հաւանողական խօսքով և գրով։ Այս հոգին և այս մեծ հանճարն էր որ զինքը Հաղբատու վանաց առաջնորդ կամ հոգեւոր հայր ըրին. այն պաշտօնին այլ ինչպէս իր պատճառաւ ուրիշներուն՝ ասանկ ալ իրեն շատ օգտակար եղաւ միտքը աւելի բարձր աստիճանի հասցընելու. լաւ ճանչցաւ մարդուս սրտին ճամբաները, և անանկ թափանցող եղաւ որ հոգետեսութեան ձիրք ունեցած կու կարծուի։ Քաղցրութիւնը իրեն գործիք էր ըրած սիրտ շահելու, բայց ոչ երբեք անով թեթեւութեան մը իջաւ. վսեմութիւնը իրեն խօսքին հաւանեցուցիչն էր. սքանչելի վարքն և օրինակն՝ անխօս և բռնադատիչ քարոզ. տկարաց և կարօտից համար՝ գրուածքները միշտ յիշեցուցիչ և արթնցընող. տեղին յարմար խստութիւնն ու անաչառութիւնն ալ՝ վարդապետական պաշտօնին համեմատ, և անոր պատիւը աւելցընող՝ քան թէ ահարկու ընող։

Կը պատմուի, թէ իր պաշտօնին անարժան քահանայ մը շատ անգամ խրատելով՝ բայց իր անկարգ վարքէն ետ չկենալուն՝ Սարկաւագ վարդապետ զինքը պատարագէն արգիլեց. անօրէնն

ոչ վարդապետին քաղցրութիւնը և ոչ սաստը, և ոչ ժողովրդեան արհամարհանքը (որ ծաղրելով Զոմզոմա կու կանչէին իրեն) բանի տեղ դրաւ, հապա զայն՝ որ իր անարժանութեանը արդելք կ'ըլլար սուրբ խորհուրդը մատուցանելու, ուզեց անոր սուրբ նախանձաւորութեանը զոհ ընել. վասն զի ճշմարտութիւն միշտ ծանր կու գայ ծուած ըղեղներու: Օր մը ճամբան հանդիպելով իր վարդապետին (որ վանքին մօտ գետոյն վրայ եղած քարայրէն կու դառնար՝ կարդալէ), աւազակաբար յարձըկեցաւ՝ այն մեծ և պատկառելի գլխուն վրայ ձեռք վերցընելով. իսկ վարդապետն անխռով և քաղցր ծանրութեամբ ըսաւ, սիրելի որդեակ Ստեփանոս, ինչո՞ւ կ'ուզես չարչարել քու վարդապետդ. պատասխանեց լիրբն. Ինչուան հիմայ Զոմզոմա էի, հիմայ սիրելի՞ Ստեփանոս դարձայ. ինչո՞ւ դուն ալ զիս սպաննեցիր՝ զրկելով եկեղեցիէն: Վարդապետն տեսնելով որ խրատն բաւական չէր ըլլար անոր պարտքը ճանչցընելու, ուզեց Աստուծոյ թողուլ դատաստանը. տարաւ զանիկայ եկեղեցին և ծանուցումն ըրաւ, թէ աս եղբօրս յանցանքը զրպարտութիւն սեպելով՝ կը ներենք և կ'ազատենք բանադրանքէ: Իսկ աներեսն այն չափը հասեր էր՝ որ յանդգնեցաւ նոյն օրը պատարագ մատուցանելու. բայց Աստուծոյ բարկութիւնը վրան հասնելով՝ դիւահարածի պէս ընկաւ. ինչուան որ նոյն հոգևոր վարդապետն աղօթքով թէ անոր առողջութիւն պարգևեց և թէ խելքը գլուխը բերաւ:

Իր հոգեսիրութեանը համար ըսուեցաւ, Այր տեսող և լի հոգւով. և իր սքանչելի աղօթքներն ալ նոյնը կու ցուցընեն. և ինչպէս կ'երևի աս աղօթքներս ոչ միայն իր սրտին զովացմանը համար գրեց, հապա նաև անոնց՝ որոնց հոգը իր սիրտն էր առեր. անոր համար ըստ վանական

հասակի և կրից հոգւոյ շարագրեց․ տղոց համար՝ անոնց հասակին յարմար շնորհքները խնգրելով, և մեղաւոր ու ալէկոծ հոգիներուն համար՝ ուրիշ, և այլն։ Համբակները իմաստութեան սիրոյն յորդորելու համար՝ գրեց իմաստուն յորդորներ, որոնց մնացորդներն հասան մեզի․ քահանայից՝ իրենց ահաւոր պաշտօնը արժանաւորապէս պաշտելու համար՝ քահանայութեան վրայ ընտիր ճառ մը գրեց խոհական վարդապետութեամբ․ սրբոց, և մանաւանդ մեր եկեղեցւոյ հարց յիշատակը նորոգելու համար՝ իրենց որդւոցը սրտին մէջ՝ գեղեցիկ ներբողներ Լուսաւորչի և անոր Թոռանցը վրայ․ եկեղեցական պաշտօնն ալ զարդարեց ընտիր երգերով։ Այսպիսի ջանքն անկարելի էր որ անպտուղ մնար․ իրեն արժանի աշակերտներ ունեցաւ, բայց ժամանակն՝ որ վարպետին գործոցը չխնայեց՝ աշկերտներունն ալ ըստ մասին մոռացութեան մէջ թողուց։

Բայց ինչպէս որ առաջ ըսինք, ա͠ծային բաներու մէջ ծանրութիւնը՝ մարդկանց քաղցր ընտանութիւնը չմոռցաւ, հապա գիտէր զիջանել մարդկանց և կենակցիլ քաղցրաբանութեամբ, ինչպէս որ Զըւարթատես ալ կ՚անուանեն զինքը։ Զուարթութիւնը ոչ միայն երեսին, այլ և լեզուին և արթուն մտացը վրայ կը փայլէր, որով շատ օգուտ բերաւ իր վանքին ալ, իր մօտ գտնուած ազգայնոց ալ․ վասն զի շատ իշխաններու և բռնաւորներու սիրտը կ՚առնուր այս ձիրքերովը, նման իր պատուակից Յովհաննէս Իմաստասիրին։ Դաւիթ Վրաց թագաւորն այնչափ լաւ ճանչցեր էր այս մեծ մարդուս յարգը՝ որ շատ հեղ հետը կը տեսնուէր, և գլուխ ծռելով օրհնութիւնը կը խնդրէր․ Սարկաւագ ալ մեծութիւն չծախելով Դաւթի մարգարէին խօսքը յարմարցընելով կ՚ըսէր․ «Գտի զԴաւիթ ծառայ իմ, և իւղով սրբով ի-

» մոմ օծի զնա. ձեռն իմ ընկալցի զնա, և բազուկ
» իմ զօրացուսցէ զնա »:

Ժամանակին խնդիրները, և Յունաց հետ միաբանութիւնք սախեցին մեր Սարկաւագը որ Աստուածաբանական գրուածքներ ալ հանէ. ասոնց ոմն ալ թէպէտ երբեմն Սարկաւագին է, այլ երբեմն ալ հեռու է անկէց. և ասանկ գրուածոց մէջ օտար ձեռք խառնուիլն նոր բան չըլլալով նաև մեր ազգին մէջ, չենք կրնար Սարկաւագին ընծայել բոլոր գրուածքը՝ ինչուան որ ստուգագոյն օրինակներ չունենանք ձեռուընիս:

Հիմայ հոս յիշեմ ինչուան հիմայ անոր մեզի ծանօթ եղած գրաւոր աշխատութիւնները, որոնք ամենն ալ ընտիր գրուածոց կարգը կրնան գրուիլ:

Ա. Սուրբ Լուսաւորչի վրայ ներբողական ճառ մը, որ բաւական է Սարկաւագ վարդապետին ոճը և ճարտարութիւնը իմացընելու, լեցուն իմաստներով և կարճ խօսքերով, ինչպէս իրեն եղական ձիրքն է: Լուսաւորչի վրայ գրուած ճառերուն մէջ ասիկայ ամենէն կարճն է, բայց ամենէն ալ գերազանց. աս ճառիս սկիզբն է. «Զնա-
» հատակութիւն սրբոյն տօնէ եկեղեցի »:

Բ—Ե. Սրբոյն Սահակայ և Մեսրովպայ, մեծին Ներսեսի, Տրդատայ և Ղևոնդեանց վրայ ալ ճառեր գրած է, կ'աւանդեն, բայց ես չեմ տեսած. և թէպէտ կան մէկ երկու գրուածքներ ասոնց վրայ՝ որ Սարկաւագին կ'ընծայուին, այլ իր ոճէն հեռու են:

Զ. Վասն Տասանց պտղոց և պտղկերաց ընդունելութեան. արժանի իմաստասէր անուանը գրուած, թէ խելքն և թէ ոճն, և վսեմ դարձուածքն. ասոր մէջ կը ցուցընէ թէ ինչ աստիճան պատուտալու է պտղկերաց. և սկիզբն է, «Յանատեղին
» ճարտարագոյնք և հանճարեղք յանբանու-
» թիւնս »:

է. Վասն շարժման Երկրի. համառօտ գրուած մը, կամ գրուածի մը կտոր, ուր հովերը երկրիս սասանութեանց պատճառ կու կարծէ, և քանի մը բնական երևոյթներու վրայ կու խօսի:

ը. Մէկնութիւն փոխարէ, և Ցուցակ անկանոնաց Բառից. որուն ինչպէս յիշեցի՝ միայն հատուածներն ունինք:

թ. Բան Խրատու. իմաստութեան վրայ վարդապետութիւն մըն է, մէկ երեսիկ մը բան, բայց պարզութեան մէջն ալ այնչափ ընտիր՝ որչափ են պզտիկ գոհարները:

ժ. Աղօթագիրք. զանազան վերնագրով, քանի հատ մը չափ, ամէնն ալ ընտիր վսեմ սրտաշարժ, որ և ամէն մեր Նախնի աղօթագիրներէն գերազանց, և կերպով մը Նարեկացիէն աւելի բնական և կատարեալ. թէպէտ Նարեկն ալ անհաւասարելի է իր կարգին մէջ:

ժԱ. Ասացուածաբանական բանք. քսան կամ քսանուհինգ գլուխ բան, որոնց մէջ միայն ինչպէս վերը ըսինք՝ աւելի հասարակ զուրցուածք կամ անհարազատ ոճ կ'երևնայ:

ժԲ. Սրբոց Ղևոնդեանց վրայ համբարձի շարականն՝ Պայծառացեր, որուն ամէն բանասէրք ծանօթ պիտի ըլլան:

ժԳ. Ս. Հոգւոյ վրայ գրուած ճառ մը:

ժԴ. Ղուկասու աւետարանի մեկնութիւն, զոր իր աշակերտն Սարգիս կու յիշէ:

ժԵ. Տոտա անգամ յիշատակած բանաստեղծութիւնն 'ի Սարիկն:

ժԶ. Տաղ 'ի Յարութիւն Քրիստոսի:

ժԷ. Անշուշտ իր ամէն գործքերուն մէջ գլուխ գործոց սեպելու էր իր Պատմութիւնը, որ դեռ կորսուածներուն կարգն է ինծի. բայց Վարդան, Կիրակոս, Մխիթար Այրիվանեցի, Սամուէլ Անեցի կը յիշեն զայն, և կը վկայեն անոր ընտիր հմուտ

և սքանչելի գրուածքին։ Այս ետքի պատմագիր՝ որ անոր աշակերտն էր, իր ժամանակագրական պատմութեանը մէջ երկու իրեք հատուած կը բերէ այս ցանկալի պատմութենէն, որ որչափ ուրախութեան պատճառ է մեզի, գոնէ ան մէկ թըղթի պատառիկն ունենալնուս և անով ամբողջ գրքին վսեմութիւնը և ազնուութիւնը ճանչնալնուս, այնչափ ալ ցաւ կու տայ անոր կորստեանը վրայ. վասն զի այն հատուածներն՝ նման վերոգրեալ գրուածոց վսեմութեան՝ փաստ մը կըլլան ըլլալ, թէ այն պատմութիւնն այլ մեր գրականութեան ընտիր գրուածքներէն մէկն էր, և իրենց ցեղին մէջ թերևս ամենէն ընտիրը։ Այս պատմութիւնս կ'երևի թէ երկու գլխաւոր մասն էր. մէկ մը ընդհանուր Սկիւթական (Թուրք) ազգաց ծագման և արշաւանաց վրայ, որ ԺԱ դարէն սկըսան գալ Հայաստան, Սելջուգեանց և Տուղրիլեանց, Ալփասլանին և անոր նախորդացը գործքերը. մէկ մ'ալ Ալփասլանի որդւոյն Մելիքշահին գործքերը, որուն մահուամբը կը դադրեցընէ Սարկաւագ իր պատմութիւնը։ Ահաւասիկ ասոր վրայօք ըսածն, որ քեզի այլ ճաշակ մ'ըլլայ մեր սոփեստէսին պատմաբանութեանը և խորհըրդածութեանցը. «Իբրև առնոյր զփառս իշ-
» խանութեանն՝ բարեբաղդն Մելէք-Շահ, զկնի
» հօրն մահուանն՝ Ալփասլանն կոչեցելոյն, մեծա-
» պէս կարգօք յօրինէր զթագաւորութիւնն. ըստ
» անուանն արդարև եղեալ արքայ արքայից։ Ոչ
» հետևեալ հօրն բարուց և կամաց, այլ և յա-
» ւէտ մանաւանդ զընդդէմն ախորժեալ, մինչ
» զի և մտահաճ եղեալ՝ զնորայն բասրէր զիմաց-
» մունս, իբրև եղեալ հակառակ խաղաղութեան
» և կենաց մարդկան, արեամբ և զրկմամբ խան-
» դացեալ։ Իսկ ինքն իմաստաբար քաղաքավա-
» րութ̅ե կարգօք պատրաստէր զամենայն։ Արդ.

» խոհեմն այն և արի քան զյոլովս 'ի թագաւորաց
» և քան զամենեսեան որ առ մեօք, ոչ այնքան
» տանէր հոգ՝ որքան արդարութեամբ առ ամե-
» նեսին վարիլ. զի մի՛ ոք լիցի տրտում 'ի զրկելոց,
» և հպարտ՝ 'ի գոռոզաց: Էր և ազատաբարոյ և
» մեծախորհուրդ. այլ և տեսիլ մարմնոյն ար-
» ժանի թագաւորութեանն. ընդ որում հեզու-
» թիւն 'ի քաղցրութիւն բարուցն լծակցեալ՝ առ-
» նէր սիրելի ամենեցուն. զոր միայն կոչեցից թա-
» գաւոր և փարթամ: Սա 'ի դոյզն ժամանակի
» փոքր ինչ նուազ զբոլորս հնազանդէր զախե-
» զերս. զոր այլք 'ի թագաւորաց՝ 'ի բազում ժա-
» մանակս և կամ ոչ բնաւ. բայց ոչ այնքան պա-
» տերազմաւ և բռնութեամբ՝ որքան սիրով և
» քաղցրութեամբ: Զի թէ սակաւ ինչ ժամանա-
» կաւ այնքան զօրեաց՝ կարծեմ թէ և ոչ Ներո-
» պէ կարէր ոչ տալ մուտս արքայութեան նո-
» րա, եթէ յոլովեալ էին կենաց նորա ժամա-
» նակք:...

» Ի ՇԽԱ (1092) թուականին սպանաւ մեծ հա-
» զարապետն արքային Պարսից Մելիքշահին, ո-
» րում անուն էր Հասան, իսկ ըստ պատուոյ աս-
» տիճանին՝ Վզրուկ խօճայ: Եւ զկնի աւուրց
» քսան և ութից մեռանի և ինքն Մելիքշահն.
» զորմէ համբաւէր յոմանց դեղակուր 'ի կնոջէն
» լեալ. որ էր հեզ առ ամենեսեան և քաղցր
» բարուք յաւէտ առ ազգս քրիստոնէից: Եւ յետ
» մահուան նորա անպատմելի եղև խռովութիւն
» ամենայն ազգաց զամս չորս. զի եղբայր նորա
» Դըլդուշն և որդի նորա Բէքիարուխին՝ զայսոսիկ
» զամս մարտիւ պատերազմաց զբարեյարմարու-
» թիւն զամենայն 'ի բաց կորեցին[1], վասն ոչ
» ընդ փոյթ միոյ 'ի նոցանէ տիրելոյ. հոսմանց ա-

1 Կամ ընկեցին:

» ըեանց իբրև վուղխից լինէր, ոչ միայն զինակիր
» նահատակացն՝ այլ և առհասարակ ազանց և
» գաւառաց. և նեղութիւնք վշտաց սովու և գե-
» րութեան։ Եւ այսպէս բարիքն 'ի բաց վճարե-
» ցան ընդ խզման կենաց Թագաւորին. որոյ երկք
» և աշխատութիւնք Թագաւորականք՝ ուրոյն, և
» շահն և օգուտն՝ հասարակաց ամենեցուն, մե-
» ծամեծք և ընտրելիքն. մանաւանդ զխաղա-
» ղականն առեմ զկեանս և զանհակառակսն. զի
» սիրէր զազգս մեր այնքան՝ զի աղօթս հայցէր
» և օրհնութիւնս. յորմէ և անդ երբեմն չոգաւ
» հայրապետն [1]։ Ոչ, թէ միայն էր աշակերտեալ
» քրիստոսական կրօնից և կարգաց։ — Արդ 'ի
» քաղաքին՝ յորում նստաւ և Թագաւորեաց՝
» յԱսպահան մայր քաղաքացն Պարսից՝ և մե-
» ռանի անդ »։

Զարմանալի հանդիպութիւն. որչափ որ բարակ և ազնիւ ճաշակ ունէր Սարկաւագ և ազնիւ բաներու վրայ կ'ուզէր գրել, այնքան Թանձր և դժար ժամանակի և տիրապետութեան առեն հանդիպեցաւ. և փոխանակ բարեկիրթ Թագաւորաց գործերը գրելու՝ ստիպուեցաւ այն խոր Ասիոյ միջնաշխարհէն ելած ասպատակներուն գործերը նշանակել, ինչպէս որ հաճելով մը կ'անուանէ. «Սկիւթական ազգաց, ոչ ելլենախօ-
» հիցն՝ այլ բարբարոսացն՝ եղեալ մուտ յաշ-
» խարհս (մեր)»։ — Սակայն մեզի համար՝ որ գիպուածները չեմք կրնար փոխել՝ միշտ բաղդատելու էր գոնէ այն բարբարոսաց գործերն այլ լսել Եւսէբնախոհ պատմիչէ մը։

Այս Պատմութենէն զատ՝ զոր կրնամք անուա-

[1] Բարսեղ կաթուղիկոս, որ գնաց 'ի Պարսկաստան յամին 1089-90, առ Մելիքշահ, և խնդրեց և ընդունեցաւ Թեթևութիւն հարկաց քրիստոնէից և հանգստութիւն։

նել Թուրքաց պատմութիւն, և որ Ար. Լաստի-վարտեցւոյն պատմութենէն ետև պէտք է դասուի՝ ըստ ժամանակին, անցեալ դարուն վերջը գրող բանասէր մը կ'ըսէ, (ծԸ) թէ «Սարկաւագ » վարդապետն սուրբ Յովհաննէս՝ արար Եկեղե-» ցական Պատմագիրք ». այս բանիս վրայ հիներէն վկայութիւն մը չունիմ, միայն փափագիմ թէ յիրաւի գրած ըլլար, եւս առաւել թէ գտուած ըլլար. գուցէ թէ աս եկեղեցական պատմագիրքն՝ ըլլայ (ծԹ) Կանոնագիրք. վասն զի այսպիսի բան մ'այլ կ'ընծայուի Սարկաւագայ: Ասոնցմէ զատ կու յիշուին, Ի. Յաղագս չորից առաքինութեանց: Հարցումն վարդապետաց առ Սարկաւագ: Մեր ժամագրոց մէջ կարճառօտ աղօթք մը կայ Յիսուս Տէր ողորմեա քս, որոյ վերնագիրն է «Ի » սարկաւագ վարդապետէն ասացեալ ». սակայն այս աղօթքս մեր Սարկաւագ վարդապետէն աւելի առաջ այլ յիշուած ըլլալով՝ կամ ետքիններն սխալմամբ իրեն ընծայած են, և կամ ըսել է թէ այն աղօթքը սարկաւագին կու վայլէ ըսել եկեղեցւոյ մէջ: Այս այլ յիշեմ որ Սարկաւագ անուամբ ուրիշ անձինք այլ եղած են. որոցմէ մէկն է Հաղարծին վանքին առաջնորդն, ժամանակաւ յետոյ քան զմերն: Բայց թէ նա և թէ ուրիշք՝ գրուածք այլ թողած ըլլան՝ մեր սոփեստէսին գրուածքն իրենց իսկատիպ շնորհքն ունին, որով մէկէն կու ճանաչուին. և զարմանքն այս է՝ որ այնքան զանազան և տարբեր նիւթոց վրայ ըլլալով գրուածքն և այնքան պէսպէս ոճերով դարձուցած, դեռ ամենն այլ իսկութեան կերպ մ'ունին, ամենն այլ իրենց տեսակին մէջ ընտիր են. և կու յայտնեն հեղինակին մեծ, զօրաւոր բեղմաւոր և զանազանեալ հանճարը. որ և հաւանօրէն իմ յիշածներէս զատ ուրիշ շատ բաներ այլ արտադրած պիտի ըլլայ, Թողլու (իր ըսածին համեմատ) յիշատակ

. . . . . . . « ըղձնի անապական
Առ հանդերձեալըն ժամանակ »:
Գուցէ այն հանդերձեալ ժամանակն օր մը յայտ-
նէ քեզի, Հայկակ, այդ ցանկալի գրաւոր գան-
ձերը:

Սարկաւագայ աշակերտներէն այլ քանի մը միայն կու յիշուին. մէկն է վերոյիշեալն Սամուէլ Անեցի, ժամանակագիր պատմիչ. երկրորդ՝ նոյնպէս յիշեալն Կոնփ Սարգիս վարդապետ, որ գրած է մեկնութիւն աւետարանաց Յովհաննու և Ղուկայ, որոց մէջ իր վարպետին խօսքերն այլ կ'անցընէ. Գ. Երեմիա Անձրեւիկ, որուն անգամ մը վարդապետն լուռ կեցիր ըսելուն, իրեք տարի լուռ կեցաւ, կ'ըսեն, « ընդ միտս և ընդ Աստուծոյ խօ-
» սէր »: Դ, Ե, Զ. Խաչատուր, Գրիգոր և Յովհաննէս Անեցիք. որոց գործքն և գրուածքն անծանօթ են ինծի:

Իսկ իր ընկերակից վարդապետներէն նշանաւորք և իրեն բարեկամք՝ միանգամայն և հայրենակիցքն էին Դաւիթ Ալաւկայ որդի ըսուածն, որ կանոններ գրած է, և Գրիգոր Թութակէրի որդի, որք և իրմէ քիչ մ'ետև վախճանեցան: Այս երեքին վրայօք դէպք մը կու յիշուի, միանգամայն և Սարկաւագի վրայ եղած մեծ համարմունքն:

« Դէպս եղև զի յաւուր միում նստէին երեք այս
» արքս սքանչելի. եկն անդ այր մի շինական, և
» ասէ ցնոսա. Երանի՜ որ գիտէ 'ի ձէնջ թէ ո՞
» իմաստնագոյն իցէ: Զայս իբրև ծաղրական ա-
» սաց: Պատասխանի ետ Թոքակերի որդին և ա-
» սէ. Ես ասեմ քեզ. մինչդեռ էաք 'ի մերում աշ-
» խարհին՝ ես կարող էի և կարող. իսկ Սարկա-
» ւագս կարել միայն գիտէր. իսկ այժմ սա կարէ
» և կարէ, և բազում նկարս յաւելու 'ի վերայ:
» Զայս առակաբար վասն իմաստութեան նորա
» ասաց »:

Յաւալին է մեզի Սարկաւագայ վարուց և գործոց մասամբ անծանօթ մնալը, ինչպէս նաև իր վերջի տարիներուն և մահուան կերպն. և զարմանք է որ Յայսմաւուրաց մէջ չեմ հանդիպած անոր վարքին կամ յիշատակին, ինչպէս որ իրմէ ետքը եղող շատ վարդապետաց վարքն կան. գուցէ դեռ իր ապրած կողմերուն մնացեալ վանից և եկեղեցեաց Յայսմաւուրաց մէջ գտուի այս փափագածնիս: Միայն իրեն կենաց լրման Թուականը կ՚աւանդեն Սամուէլ և ուրիշ ժամանակագիրք. «Ի ՇՀԸ Թուին (1129) փոխեցաւ ՚ի Քրիստոս » մահուամբ՝ բ վարդապետն Սարկաւագ ՚ի Հաղ- » բատ »: Բարեբաղդութեամբ գտնէ այն ելլենախոհ և բարձրաձեմ գլուխը ծածկող քարն ծանօթ մնաց. յիշեալ վանքին Ս. Աստուածածին եկեղեցւոյ գեղեցիկ զանգակատան տակ՝ կու կարդացուի. ԱՐՁԱՆՍ ԱՅՍ ՍԵՄԱԿԱՆ Է ՍՈՓԵՍՏՈՍԻ ՍԱՐԿԱՒԱԳԻՆ: Այնպիսի նշանաւոր անձին կու վայլէր նշանաւոր արձանագիր մ՚այլ, որոյ նշանական բառն է Սէմական, զոր ոմանք կ՚ուզեն Սէֆական կարդալ. այլ կրնայ նոյն իսկ սեամ բառին ածանցն ըլլալ, նշանակելով Թէ այն քարն իբրև սեամ է, զոր կոխելով Սարկաւագ՝ ելած մտնէ յանմահութեան տաճարը: Ո՞ գիտէ Թէ արդեօք ինքն իսկ չէր պատուիրած այնպէս գրել: Սարկաւագի Թաղուած տեղն այն տեղ հին պզտի եկեղեցի մը կար, զոր դար մ՚եւս քակելով՝ շինեցին զանգակատունը, բայց ինչպէս կ՚երևի՝ չգպան գերեզմանին:

Երախտագէտ և զգայուն համազգիք մեր, իրենց պանծալի վարդապետաց և գիտնոց հանճարոյն և գրուածին համեմատ՝ մականուններ նուիրեր են. ինչպէս, Քէրտող (Մովսէպ), Փէլխոֆայ (Դաւիթք, Թէոդորոսք) Հռէտոր (Խոսրով), Վէրծանող (Մամբրէ), Իմաստասէր (Յովհաննէս Օձնեցի),

Համարող (Անանիա), Շնորհալի (Ներսէս Կլայեցին), և այլն. մեր Սարկաւագին այլ սեփականներ են Սոփեստէս կոչումը. յետ Յովհաննու Իմաստասէր կաթողիկոսի՝ այսպէս կոչում մը չէր տրուած մէկու մը 400 տարուան միջոց, մինչև յայս երկրորդ իմաստասէր Յովհաննէսս. անկէ ետև այլ մէկու մը տրուած չէ։ Սոփեստէս կամ Սոֆիստէս ըստ Յունաց՝ երբեմն իմաստասէր և յետոյ իմաստակ նշանակած է. մեր մէջ փիլիսոփայութեան հետևողք և այնպէս անուանողք կան քանի մը, բայց գլխաւորք այս իրեքն են՝ Անյաղթն, Օձնեցին, և մեր Սարկաւագն. իրեքն այլ նոյն գիտութեան մէկմէկ կոչմամբ աւելի սեփականեալ, մին Փիլիսոփայ, երկրորդն Իմաստասէր, երրորդս Սոփեստէս. որով յայտ է թէ ժամանակակիցքն այլ լաւ ճանչցեր և կու պատուէին Սարկաւագայ զարմանալի հանճարը, բազմապատիկ հմտութիւնը, խոր մտածութիւնը և ճարտար գրուածքը. միով բանիւ հին ընտիր հեղինակաց հետևողութիւնը, Ելլէնախոհութիւնը կարճ ըսելով. և անոր համար այդ մակդիրը տուին իրեն. և անով կ'որոշուի մինչև ցայսօր Հաղբատայ և Սանահնի տապանատանց տակ քնացող այն բարձրաճօճ գլուխներէն՝ որոց տեսչութիւնն վերին տուաւ թագեր և առաւ. իսկ ասոր՝ տուաւ իմաստութիւն, որ անթառամ և անմահ պահեց իրեն կենդանի օթևանը, Սարկաւագայ գլուխը։

## ԻԴ

## Ս. ՑԻՋԻՏԲՈՒՋԻՏ

9 *Նոյեմբ*. 553.

ԱՍՏՈՒԱԾԱՏՈՒՐ՝ *շնորհաւոր անունն՝ պանծալի և սիրելի է աստուածապաշտ ազգաց, աւելի ևս քրիստոնէից՝ ճշմարիտ աստուածապաշտից. և այլ աւելի՝ յարևելս, ուր Թուրք և պարսիկ լեզուաւ ալ յաճախ լսուին* Ալլահվէրտի *և* Խիւտատատ *անուանքն, որ* Աստուածատուր *նշանակեն։ Հայոց մէջ այլ այս անուանս որչափ գործածուած ըլլալն՝ յայտնի է մերայոց, նաև խանգարեալ և կտրատեալ այլափոխութեամբքն* Աստուատուր, Ատտուր, Ծատուր, Տատուր, *և այլն։ Կրօնք՝ հարկաւ կերպով մը կ'ազդէին մարդկան իրենց կենաց տուրքը՝ ոչ միայն ճանչնալ յԱստուծոյ՝ այլ և խոստովանիլ, անոր համար բնական էր որ իրենց զաւակներն այլ կանչէին Աստուծոյ տուրք կամ պարգև։ Այսպիսի բնական ազդման անտարակոյս օրինակը տուին բոլոր մարդկութեան՝ անոր նախածնողքն, երբ առաջին ծնեալ մարդուն (Կայենի) համար գոչեցին,* Ստացայ Տէր Աստուծով։ *Նոյն զգացմամբ շատ հեղ այլ Աստուծոյ մէկ մասնաւոր զօրութեանը կամ շնորհացը նուիրեցին մարդիկ իրենց ծնունդքը, ինչպէս որ Եբրայական աստուածապաշտ կրօնից մէջ էլ (Աստուած) վերջա-*

ցեալ անուանքն կու յայտնեն, Գաբրիէլ, Միքայէլ, Դանիէլ, Ուրիէլ, Ռաֆայէլ, և այլն։ Ըստ այսմ և հեթանոսք՝ որ Աստուծոյ վայլած և չվայլած զօրութիւններ և կրքեր անձնաւորելով բազմաստուած եղան, այն առանձին աստուածոց պարգև կամ նուէր սեպէին իրենց որդիքը. ինչպէս՝ (Թողլով զօտարս և) դալով մեր և մեր դրացի ազգաց՝ կու գտնեմք զանուանս Տրդատ, Միհրդատ, Զրուանդատ, Որմզդատ, և այլն, որք նշանակեն տուրք Տրի, Միհրայ, Զրուանայ, Որմզդի։ Այսպէս գեղեցիկ կերպով մ՚այլ սեփականեալ են նոր կրօնիցս որբազանեալ անուանակոչութիւնք, ինչպէս Քրիստոսատուր, Տիրատուր, Խաչատուր. որք մեր քրիստոնէութե բաւական հին դարուց մէջ այլ կու լսուին. ինչպէս նաև Աստուածատուր անուամբ եպիսկոպոս մը յառաջին կէս Զ դարու [1]։ Բայց այս դարուս կիսէն կու սկսի թէ մերազգեաց և թէ մերձաւոր և հեռաւոր արևելեայ քրիստոնէից մէջ՝ այս վսեմական անուան յաճախութիւնն, և շատ տեղ՝ սկզբնաւորութիւնն. պատճառաւ նահատակութեան մէկ անծանօթ և անկարծելի մարդու մը, որ զայս անունս իւրքնին ընտրեր առեր էր վրան, թէ և ուրիշ լեզուաւ և կոչմամբ. և որոյ յիշատակն հիմայ փառօք կատարուի մեր եկեղեցւոյ մէջ։

1 Ե և Զ դարուց մէջ կու գտուին աւելի ևս բացատրեալ անուանք առ Լատինս. ինչպէս Quodvultdeus կամ Quodvultdeo, (Աստուածահաճոյ կամ Զոր Աստուած կամի), Cumquodeus, Coddeus, (ընդ որում Աստուած), Deogratias (Աստուածաշնորհ, կամ փառք Աստուծոյ), Deusdedit, (Աստուած ետ), Deumhabet կամ Habetdeus (Աստուծունակ), Servusdei, (Աստուածապաշտ կամ ծառայ Աստուծոյ). ուսկից ծագեցան և իտալականքն Amadio, Bonadei, Donadei, Omodei.

Մեր հին պատմչաց հարևանցի յիշատակօք և Յայսմաւուրաց համառօտելովն՝ անշուշտ անծանօթ չէր քեզի այլ, Հայկակ, Ս. Աստուածատուր. բայց այն համառօտ յիշատակաց աղբիւր՝ սրբոյն վկայաբանութիւնն՝ որ դեռ չէր յերևան ելած մեր ազգային պատմութիւնը և Սրբոց վարքերը երկարօրէն գրողաց ժամանակն[1], այսօր կու գտուի իմ ձեռքս, սրբոյն ժամանակակից և չարչարակից անձի մը ձեռօք նախ գրուած[2], և ուրիշ ճարտար գրչով կոկած. ուսկից կ'իմանամք՝ որ անոր նահատակութեան օրն եղած է ստուգիւ այսօր, այսինքն 9 Նոյեմբերի 553 տարւոյն, (և ոչ 552 ինչպէս կարծուէր ինչուան հիմայ). միանգամայն և քանի մը ազգային պատմութեան և սովորութեանց կարևոր տեղեկութիւններ կու տայ գրուածս: Աստը հաստատութիւն ունիմք և ժամանակակից մեծանուն յոյն հեղինակի մը գըրուածոց միացորդը, նոյնպէս նոր գտուած, որ մեր պատմուէ և կերպով մը սրբոյս այլ պարծանք մը կրնայ սեպուիլ. և է նա Մենանդր՝ ժամանակին ամենէն ճարտար գրիչն, յորում դեռ յոյն ընտիր դասադրաց շնորհքն փայլի, և որ ծանօթ և նշանաւոր էր 'ի դրան կայսերաց Կ. Պօլսոյ: Այս ատեն ('ի կէս Զ դարու) դեռ երիտասարդ էր Մենանդր, և լսելով Աստուածատրոյ նահատակութիւնն 'ի Հայս՝ այնպէս սքանչացաւ և վառուեցաւ, որ ողբերգութիւն մը գրեց այն դիպուածին վրայ, ինչպէս ինքն կու յիշէ, և մեզի ցուցընել կու տայ անոր կորըստեանը վրայ. քիչ մ'այլ կու մխիթարէ անկորուստ հասցընելով մեզի իր

1 Հ. Միքայէլ Վ. Չամչեան: — Հ. Մկրտիչ Վ. Աւգերեան:

2 Ըստ Յայսմաւուրաց՝ սրբոյն բանտակից Ներսէս աբեղայն գրեց զայս:

ուրիշ կարձ գրուած մը՝ 'ի նոյն վկայն, զոր յետոյ յիշեմ քեզի, Հայկակ:

Բայց ինչո՞ւ արդեօք Աստուածատրոյ վկայութիւնն այնպէս մեծ զարմանք բերաւ և հռչակ ձգեց այն ատեն, որով հիմայ այլ արժանապէս հռչակելի է: — Ասոր պատճառն, բաց 'ի սրբոյն արիական և գեղեցիկ գործէն և խօսքերէն, մէկ մը նոյն իսկ իր ազգը կու սեպեմ, Պարսիկ ըլլալն, ազգ դժուարահաւատ 'ի քրիստոնէութիւն. մէկ մ' այլ այնպիսի ատեն և այնպիսի տեղ նահատակուիլն:

Տեղն է Դուինն, բոլոր Հայոց ոստանն կամ մայրաքաղաքն. ժամանակն այլ՝ եկեղեցւոյ հանդարտութեան և մարտիրոսութեանց դադարման ատեն մը: — Վասն զի, հոս (եկեղեցական և քաղաքական պատմուն մէկտեղ խառնելով) պէտք է յիշել, որ գրեթէ դար մը, կամ գոնէ 70 տարի էր՝ որ դադրեր էին 'ի Հայս հալածանք Պարսից, (որք տիրէին մեր աշխարհին մեծագոյն մասին), արդեամբք քաջին և առաքինւոյ Մեծին Վահանայ Մամիկոնոյ, որ յետ երկար և դիւցազնական պատերազմաց և յաղթութեանց՝ ստիպեց զարքայից արքայն Պարսից, ոչ միայն ազատ թողլու զՀայս իրենց կրօնից մէջ, այլ և յանձն առնլու անոնց վրայ փոխարքայ կամ մարզպան դնել իրենց ազգայիններէն. ինչպէս որ եղաւ նախ ինքն Վահան 25 կամ 30 տարւոյ չափ, յետոյ իր եղբայրն Վարդ 3 կամ 4 տարի. ուսկից ետև թէպէտ քանի մը տարի Սուրէն անուամբ Պարսիկ մարզպան մը կեցաւ, բայց նորէն իրեն յաջորդեց Հայ իշխան մը, Մժէժ Գնունին, որ 30 տարի (518-547) քաջութեամբ և խոհեմութեամբ վարեց իշխանութիւնը. և Յունաց ու Պարսից երկար հակառակութեանց և պատերազմաց մէջ՝ իր սահմանները (զարևելեան Հայս) պահեց 'ի խա-

*ղաղութեան. մինչև նոյն ինքն մեծանուն՝ բայց և խելայեղ և գոռոզ շահնշահն Խոսրով Անուշրւան, — զոր Պարսիկք գերագոյն և սիրելագոյն կը սեպեն քան զամենայն թագաւորս իւրեանց, նաև քան զԿիւրոս իսկ, — Խոսրով ինքն՝ որ ամեն բան և կարգ վեր վար կը շարժեր, չկրցաւ Հայոց մարզպանը մեղադրել: Թէպէտ պէտք է հոս զայս այլ խոստովանիմ, որ այս յիշեալ 70 տարուան միջոցս, այսինքն մեծին Վահանայ մարզպանութենէն մինչև 'ի նահատակութիւն Աստուածատրոյ՝ (485-553) մեր պատմութեան մթագոյն ժամանակներէն մէկն է. այս միջոցիս և գրեթէ բոլոր Զ դարուս մէջ ազգային պատմիչ մը չունիմք կամ չեմք գտած, որ մեր աշխարհին մէջ հանդիպածները մանրամասն իմացընէ մեզի:*

*Արդ յետ մահուան Մժեժայ, որ հանդիպեցաւ Յունաց և Պարսից կռուոց և վէճից ատեն, երկու մեծանուն տիրապետաց օրով, (Յուստինիանոս կայսեր և Խոսրովու) որովհետև արդէն քանի մը Հայ իշխանք (Արշակունիքն Յովհաննէս և իր որդին Արտաւան և կամսարականքն Ներսեհ, Հրահատ և Սահակ եղբարք, և այլք՝ անցեր էին 'ի կողմն Յունաց, և զԱփրիկէ ու զԻտալիա նուաճէին 'ի ծառայութիւն կայսերաց, զօրավարելով առանձին կամ ընդ ձեռամբ Բելիսարու և Ներսէսի պատրկի Հայկազնոյ), Խոսրով որ արդէն սկսեր էր ծուռ աչքով նայիլ քրիստոնէից վրայ, և կը նեղէր իր ձեռաց տակ եղողները, (ինչպէս որ մեր սրբոյս վկայաբանութիւնն այլ զայս վկայելով կը սկսի. « Ընդ ժամանակս թագաւորու-*
*» թեանն Խոսրովու որդւոյ Կաւատայ արքային*
*» Պարսից՝ առաւել զայրացեալ լինէր խոստովա-*
*» նութիւնն որ առ Քրիստոս, և ոչ սակաւք նա-*
*» հատակեցան յաշխարհին Պարսից և 'ի գրան*
*» արքունի ».) հարկաւ չէր կրնար բոլորովին*

վստահիլ Հայոց, և ծերունի Գնունւոյն (Մժեժի) պէս՝ հաւատարիմ համազգի յաջորդի մը յուսալ։ Ուստի ղրկեց պարսիկ մարզպան մը, զոր պատմիչք մեր Դենշապուհ կ'անուանեն. բայց մեր վկայաբանութիւն ցուցընէ զՆիխորական, որ գուցէ պատուանշան կամ ցեղական կոչում մ'է, իսկ առաջինն՝ ընիկ անուն. բայց յոյն պատմիչք այլ Նախորական անուամբ յիշեն զսա քանի մը տարի ետև։ Սա սկսաւ Պարսից առաջին մարզպանաց պէս գանուութեամբ նայիլ քրիստոնէից վրայ. և թէպէտ դեռ չէր համարձակեր Հայոց վրայ ձեռք ձգել, բայց ուրիշ ազգաց՝ որ հոն 'ի Հայս գտուէին՝ չէր խնայեր։

Այն ատենները Դուին մայրաքաղաքն Հայոց՝ ոչ միայն անոնց քաղաքական վարչութեան կեդրոնն էր, այլ նաև մեծ շահաստան մը վաճառաց, հնդկական, յունական և կովկասեան ճանապարհաց և կարաւանաց միջոց. և երկար խաղաղութեամբ այլ խիստ շատ հարստացեալ և պայծառացեալ։ Ամեն արևելեայ ազգէ մարդ գտուէր հոն. որոց մէջ բազմաթիւ էին և Ռոժիկ ըսուած ազգի մը վաճառականք, (որք հաւանօրէն էին հին Ռագաւի սահմաններէն, այսինքն է Ռէյ, Դեհրանի մօտ. վասն զի Պարսիկք Ռաղի կոչեն զՌագաւցիս, որ են Պարսից և Ասորեստանի միջոց)։ Ասոնցմէ աւելի էին Խուժիկք, որ կրօնիւք քրիստոնեայ, բայց շատոն նեստորական ըլլալով Հայոց շփոթութիւն և ատելութիւն պատճառէին. անոր համար Ներսէս կաթողիկոս և յաջորդքն ժողովքով ջանային զգուշացընել զՀայս, չկարենալով իշխանաբար վռնտել զԽուժիկս, որք երթալով շատնային և լրբանային։ մանաւանդ երբ Մանաճիհր անուամբ Ռաժիկ մը հաւատալով 'ի Քրիստոս և մկրտուելով ու Գրիգոր անուանելով նահատակեցաւ Նիխորականի հրամանաւ կամ

բանութեամբ (յամի 547-8)։ Կ՚երևի թէ Թու-ժիկքն կամ պատճառ եղած էին ատոր քրիստո-նէութեան, կամ իբրև իրենց ազգին մերձաւոր սեպելով մեծ ձայն և հռչակ հանեցին, եկեղեցա-կան և աշխարհական հանդէս և աղաղակ իրարու-խառնելով. և անոր մարմնոյն վրայ մատուռ մը շինելով, Դուինայ մէջ սկսան թէ հերձուածով և թէ անկարգութեամբ պաշտօն կատարել։ Այս բանս ոչ այնքան գայթակղութիւն՝ որքան զար-շութիւն և նախատինք կ՚ըլլար Հայոց. մանաւանդ որ հոն մօտ էր իրենց կաթուղիկոսն և կաթուղի-կոսարանն և գլուխք հայկական ազնուապետու-թեան. որք և ամենայն ուժով միաբանեցան հար-կեցուցին զմարզպանն այլ, և այն Թուժկաց ժո-ղովարանը հիմն ՚ի վեր աւրեցին։ — Այս վկայիս՝ (Գրիգորի Ռաժկի) որ յետ երկայն տարիներու նոր վկայ և առաջին օտար վկայ եղաւ ՚ի Հայս, պատմութիւնն կամ վկայաբանութիւնն մեզի դեռ հասած չէ, որով կարևոր դիպուած մը մթու-թեան մէջ կու մնայ. այսինքն այն Ռաժկին և Թուժկաց մէջն եղած կապակցութիւնն. սա-կայն իր առած Գրիգոր անունն և մեր տօնացուցին մէջ անցնիլն՝ վկայ են իր ուղղահաւատութեանը. մէկ մ՚այլ յայտնի կ՚երևի՝ որ հրապարակաւ և նշանաւոր կերպով մ՚եղած է նահատակութիւնն. այն այլ պատճառ եղած է ուրիշ աւելի հռչակա-ւոր նահատակութեան մը։

Ռաժկին վկայութեան տեղն որոշ չի յիշուիր, այլ այնպէս կ՚երևի թէ Նիխորականի բանակին մէջն էր և ճամբու վրայ՝ ՚ի Հայս գալու ատեն. և յայտնի այլ է որ մարզպանի մը բանակն բազմա-թիւ և դաս դաս մարդկանց ժողովք մ՚էր. անոր համար շատ հանդիսատեսք կային անոր վկայա-կան մահուան, ինչպէս նաև անոր քննութեան և դատաստանատուութեցը։ Հանդիսատեսաց ամե-

նէն աւելի զուարճացող գան, և ըստ մեզ ամենէն զզուելին՝ էր Պարսից կրակապաշտ մոգուց դաւն, որք մարզպաններն հետ կու գային՝ դարձեալ իրենց մոլորանք մեր այրարատեան սրբազան դաշտերը տխրեցընելու. և Թերևս իրենք գրգռեր էին զմարզպանն՝ այնպիսի տարաժամ զոհով մը իր մուտքն ՚ի Հայս նշանաւոր և տօնելի ընելու։ Բայց իրենց մէջ կար երիտասարդ մ՚այլ՝ մոգ և մոգի որդի, իբր 25 տարուան, որ իրենց դենին ամեն վարդապետութիւնը լաւ գիտէր, և յաջող ու խելացի ճանաչուէր. և հոս ոչ այնքան հաճութեամբ որչափ զարմացմամբ կեցեր, բարձրակամար յօնքերը խչուցեր, սրաձև թուխ մօրուքը ձեռքն առած լռած կու դիտէր և կ՚ափշէր. մանաւանդ երբ կու լսէր Ռաժիկ վկային անվախ և զըւարթ խօսքերը՝ չարաչար տանջանացը մէջ։ Եւ երբ անոր զոհը կատարուեցաւ, գրեթէ իրենն այլ սկսաւ. մոգութեան խաբէութիւնը և քրիստոնէութեան ճշմարտութիւնը և մեծութիւնը ճանչցաւ. այն օրէն ետև այլ երեսին գոյնն և յօնքերուն հպարտութիւնն գնաց. մանաւանդ երբ օր մը տարակուսի և տագնապի մէջ քնանալով՝ տեսաւ յերազի զինքը քրիստոնէից եկեղեցւոյ մէջ, ուր սպիտակազգեստ անձ մը զինքը կու շընորհաւորէր հօն գտնուելուն համար, և կու յորդորէր հետևելու քրիստոնէից։ Արթընցաւ և զըւարթացաւ երիտասարդ մոգն, որոյ անունն էր Մախոչ կամ Մախոժ, և հայրենեօք էր ՚ի Բերշապուհ գաւառէ Պարսից, ծննդեան գեղն այլ կոչուէր Քունարաստան. որոց ո՛ր կողմն ըլլալն հիմայ շատ ծանօթ չէ, և ոչ այլ շատ հետաքննելի. այլ աւելի իր կատարածին տեղը գիտել ախորժելի է։

Մախոժ զատուելով մարզպանին բանակէն՝ որ յԱյրարատ կ՚երթար, ճամբան փոխեց դէպ ՚ի

նահանգն Սիւնեաց . և առանց որոշ ամենուն յայտնելու մէկ և ինչ մնաց վրայ ըլլալը, սկսաւ գաղտուկ քննել և տեղեկանալ քրիստոնէութեան, որ այն (Սիւնեաց) կողմերը թէ աւելի համարձակ կը պաշտուէր և թէ աւելի գլխաւոր վարդապետներ ունէր, յաշակերտաց մեր երանելի քերթողահօրն Մովսէսի և Պետրոսի Սիւնեաց եպիսկոպոսի : Քանի մ' ամսէն գործաւ Մախոժ 'ի Սիւնեաց՝ իբրև կէս քրիստոնեայ, և եկաւ 'ի մայրաքաղաքն Դուին . ուր իր մօգ ըլլալը յայտնի ըլլալով պէտք էր որ մոգուց քով այլ գտնուի . ուստի մնաւ խառնուեցաւ 'ի դաս մոգուց Հայոց համակարգին . (այսպէս կ'անուանէր Պարսից թագաւորին կողմէն գրուած հարկաժողով պաշտօնեայն) : Թէ և մոգուց հետ կու կենար և անոնց պաշտամանց ներկայ կ'ըլլար Մախոժ, բայց սրտով ուրիշ տեղ էր . մարմնով այլ անոնցմէ հեռանալու և սրտին հետ միանալու համար յեկեղեցւոյ՝ առիթ մը միայն պէտք էր . առիթն այլ շատ չուշացաւ հանդիպելու :

Զրադաշտի հետևողք կամ մոգք՝ որչափ այլ 'ի սկզբան պարզ կրօնք մ'ունէին, այնչափ այլ անոր յիշատակները կամ տօները շատցուցին . տարւոյն ամէն օրերն այլ մէկմէկ ինչի կամ ոգւոյ նուիրած էր . իսկ ամսոյն առաջին օրն կամ ամսագլուխն՝ աւելի սրբազոյն սեպուէր և հանդիսիւ կու տօնուէր ատրուշանի (կրակարանին) դիմաց : Այսպէս երբ եկաւ իրենց մեհեկանի ամսագլուխն՝ ձմեռ ատեն (որ թուի թէ Միհր ամիսն էր, և իյնար 'ի սկիզբն 549 տարւոյն), համակարն իր ապարանից մէջ ատրուշանին դիմաց օրինական տօնը և կրակին նուէրը կատարել տուաւ : Այս նուէրը կենդանեաց զոհ չէր, ուրիշ հեթանոսաց ըրածին նման, այլ եղտա նիւթեր որ կրակին վրայ կու թափէին . զոր մեր պատմիչն աւշէղ կոչէ . « և ըստ

» ամրութեանն իւրեանց զոհս աղաէզ մատու-
» ցանէին հրոյն »։ Մոգերն այլ աստանկ առեն կը-
րակին դիմաց կենային՝ բերաններին մատնուար չի-
նուած երիզով մը կապած, որպէս զի շնչով այլ
չպղծեն սուրբ կրակը. ձեռուըներին այլ կուճա-
պլուխ գաւազան մը կամ ոստ կ'ըլլար, 'ի նշան
հրամայելու։ Այս ձևով և կերպով կեցեր էր
Մախոժ այլ միւս մոգուց հետ կրակին դիմաց. և
անշուշտ բերանակապին տակ առանց տեսնուելու
կու ծիծաղէր իրենց խայտառակ կրօնքին վրայ.
մանաւանդ երբոր ստատիկ պաշտօնատարութե-
չափէն աւելի սաստապէս մատուցին աղատ աղ-
տէզը. անյագ կրակն այլ իբրև լափելէն վերջա-
պէս կշտանալով սկսաւ ուռիլ, բոցերը բարձրա-
ցընել ինչուան սենեկին ձեղունը։

Մախոժի ծիծաղն ուրիշներուն 'ի լաց դարձաւ.
կրակն կատղեցաւ, բոցն աճեցաւ, բռնկեցաւ ձե-
ղունն, և յանկարծ հրդեհի ծուխն ծաւալեցաւ։
Շփոթեալ մոգերն՝ կապերնին քակեցին, զոհի նիւ-
թերը և գործիքը մէկդի քաշեցին, իրենց պաշտած
կամ պատուած կրակին չափազանց գործունէու-
թիւնն այլ սանձել կ'ուզէին, կ'աշխատէին, բայց
հնարք չեղաւ. անձրըկած՝ տարուշանէն դուրս
ընկած, և քիչ մ'առաջ կապած բերաններին հիմայ
կըցածնուն չափ մեծ բանալով սկսան օգնութեան
կանչել իրենց բոցածաւալ չաստուածը զսպելու։
Շշնկոց շփոթութիւնն ձայնձնեցաւ բոլոր քաղա-
քը. հազարապետն Հայոց, այսինքն ազգային կամ
քաղաքին ներքին կառավարութեան իշխանն՝ փո-
խանակ նիւթական հնարքի դիմելու, այսինքն ջրոյ,
որով կրակը մարելը՝ մեծ մեղք և յանդգնութիւն
կու սեպուէր Պարսից, և հետևաբար իրեն կամ
ազգին մեծ վնաս կրնար բերել, գրեթէ կու հար-
կաւորէր գերագոյն հնարքի կամ հրաշքի մը դի-
մելու. ուստի փութացաւ վազեց յեկեղեցին, ուր

կրօնից սրբութեան պաշտօնեայքն այլ իրենց տօնը կու կատարէին, և կ՚աղաչէր կու ստիպէր որ սուրբ խաչն առնուն երթան յաղթեն մարեն կրակը։ Փութացան քաջահաւատ պաշտօնեայքն այլ[1], առին իրենց և ամենայն աշխարհի փրկութեան գործին՝ սուրբ Խաչը. հասան կանգնեցին կնքեցին կատղած կրակին վրայ. և մէկէն «բոցն տարածեալ՝ շիջանէր առհասարակ»։ Բոլոր մեծ մայրաքաղաքն Պոլսին տեսաւ այս հրաշքը, քրիստոնեայ և հեթանոս հաւասար. ոչ ոք կրնար ուրանալ կամ զարմանքը ծածկել. ուստի և առանց վախի նոյն իսկ համակարին խաթունն՝ որ իր տանը և ընչից մոխիր դառնալը աչքին առջև կու տեսնէր, այս անակնկալ ազատութեան վրայ լի գոհութեամբ շնորհակալութիւն (և ընծայ) ղրկեց պաշտօնէից սուրբ եկեղեցւոյն և խաչին։

Սակայն եղածին վրայ ամենէն աւելի զարմացողն կամ զարմանքէն օգուտ առնողն եղաւ մեր Մախոժը. այսպիսի յայտնի հրաշք, և քրիստոնէից պարծանաց խաչին զօրութիւնը տեսնելով՝ այլ չդիմացաւ կամկար կարկած կենալու. խլեց բերանակապը՝ ձգեց կոխեց, ձեռքի մոգական ուռը զարկաւ՚ի գետին կոտրտեց. և վազելով եկեղեցւոյ պաշտօնէից մէջ՝ յափշտակեց սարկաւագին ձեռքէն բուրվառը, և քան զաղտեղն լիուլի լեցընելով խունկը՝ ամենայն ուժով կու շարժէր կու ճօճէր, անուշահոտ և պղծահալած ծուխը՝ հրդեհին բոցէն ու մուխէն ալ վեր բարձրացնել ջանալով։ — Եւ անշուշտ հաւատ այլ, թէ ոչ առ-

1 Յայսմաւուրքն կ՚ըսեն. «Եւ կաթուղիկոսն տէր Մով-
» սէս առեալ զքահանայսն ամենայն խաչիւ և աւետա-
» րանաւ, լուցեալ մոմեղէնօք և բուրվառօք և եկեալ ե-
» կաց». և այլն։ — Բայց անշուշտ այն ատեն դեռ Մովսէս չէր եղած կաթուղիկոս։

ստնէլին՝ այլ իմանալի ծուխն, աւելի 'ի սրտէն Մախոժի քան 'ի բուրվառէն՝ 'ի վեր քան զբարձրայարկս ապարանից համակարծին, նա և քան զկամթուղիկէ գմբէթս Պունայ, մինչև յերկինս՝ յորս հանգչի Աստուած: — Այս նոյն տաքութեամբ և վառեալ հաւատով բուրվառը դարձընելով պաշտօնէից՝ Ճամբայ դրաւ որ երթան իրենց եկեղեցին և իրեն համար այլ աղօթեն. «Խնդրեք յԱստուծոյ վասն իմ, զի և ես քրիստոնեայ եմ»:

Մէկ ժամուան մէջ ինչ այլ և այլ տեսարանք. քանի՜ զարմանք յերկրի և յերկինս. ինչ ուրախութիւն և պարծանք քրիստոնէից, և փառք քեզի, ո՛վ սքանչելի գործիք՝ Տէր Խաչ. որ երբեմն քան զամենայն գործիս դժպհի և չարաչար էիր, հիմայ քան զամենայն՝ ցանկալի և փրկարար. երբեմն անյուսից անգամ գծուծագոյն 'ի դառնութիւնս, հիմայ ամենէն վերջին և զօրաւոր յոյս սրտի. սրտի՝ որ աշխարհիս և կենաց ունայնութեանց և ապականութեանց մէջ թաւալելով, երբ կու հասնի անոնց վերջը, և երբ ոչ օգնութիւն և ոչ մխիթարութիւն մը կրնայ գտնել անոնցմէ կամ ուրիշ մէկէ մը, այլ և սոսկալի վախով կու պաղի՝ յաւիտենական դատաստանի և դատապարտութեան մերձաւոր յիշատակաւ, — յանկարծ նուազեալ աչաց վերջին լոյսը քու վրադ կ'ընկնի. և հաւատոց վերջին Ճգով տեսնելով 'ի քեզ կատարուած աստուածային գերագոյն հանդէսը և զոհը, վերջին քայլին հասած յոյսը պնդագոյն կու բռնէ. սիրոյ կայծակ մը կու ծագէ հոգւոյն վրայ, և զքեզ, ո՛վ աննման անգին գործիք, զքեզ՝ որ չնչին փայտի կտոր մը կ'երևիս, աւելի քան զհամատարած Ջրհեղեղին վրայ լողացող մարդակեցոյց լաստափայտը՝ մեծապէս և ամուր կամուրջ մը ձգելով երկու յաւիտենականութեանց խորանդունդ վհին վրայ, կ'անցնի 'ի կողմն փրկութեան

և անվախճան կենաց։... Ո՜հ. ինչո՞ւ՝ այս նիւթական կրակը մարելէն մեծ հրաշքդ՝ որ Մախոժի հոգւոյն աչքերը բոլորովին լուսաւորեց, ինչո՞ւ չբացաւ անոր ընկերաց մոգուց աչքն ալ, որք փոխանակ անոր պէս պայծառանալու, կարծես անոր լուսոյն աւելի սեւերես երեւցան. կրակին վախէն աւելի՝ Մախոժի քրիստոնէութենէն տագնապելով՝ իրենց չաստուածոյն աւելցուցած մոխրին գոյնն առին. և պահլաւերէն պապաջելով, մանաւանդ թէ սատանայօրէն բարբանջելով մոռցան, կոյրքն և ապերախտք, դեռ նոր տեսածնին. և այն գիշերը խառնակ ու խելառ խորհուրդներով կծուելով, երկրորդ օրը հազիւ լուսցած՝ գնացին մարզպանին մատնելու իրենց դասէն ելած և Քրիստոսի փարախը մտած Մախոժը։

Նիխորական, որ (ինչպէս իր վերջը ուրիշ աշխարհի մը մէջ ըրած գործոցն ալ կ'երեւի), մեծախօս բայց վատասիրտ մարդ մ'էր, մէկէն Մանաճհրի պէս զՄախոժ ալ յատեան կանչեց, և սկսաւ յանդիմանել. «Ա՜յ թշուառական, ընդէ՞ր
» զհայրենի մոգութիւնն թողուս, և յիմար և
» ուխտակորոյս լինիս։ — Պատասխանի ետ երա-
» նելին և ասէ. Ճշմարտիւ ասեմ, ով դատաւոր
» վասն իմ, զի 25 ամ ունիմ՝ որով ընդ վայր ա-
» ղանդաւորեցայ. իսկ այժմ ծանուցեալ զճշմա-
» րիտն Աստուած՝ 'ի հայրենի բազմաստուածու-
» թենէն հրաժարեցի. վասն որոյ ոչ այսուհետև
» կենցաղոյս պատրանք յայլոց հաւատոց անջա-
» տեսցեն զիս. քանզի հանգերձեալ եմ տանել
» հասելոց տանջանաց »։ Այս համարձակ և կըտրուկ խօսքերն փոխարէն՝ հրամայեց մարզպանն՝ որ ծեծ զարնեն Մախոժի երկու անգամ տասներկու. (որ կ'երեւի թէ Պարսից պատժողական օրինաց մէջ նշանակութիւն մ'ունի)։ Անկէ զատ՝ անոր վայելուչ հասակին և մոգութեանը զարդ մօրու-

քը և մազերը՝ կտրել տուաւ. ձեռք ու ոտքն այլ կապել տալով հրամեց որ ձգեն 'ի բանտ. ուր որ բաւական ատենէ վեր բանտուած էր իրեն պէս զրադեշտի աղանդէն հրաժարող և քրիստոնեայ եղած Ռուժիկ մը Ներսէս անուամբ, որ և յետոյ Մախոժի վարքը և նահատակութիւնը գրեց. (տես Յայսմաւուրաց վկայութեան.) իսկ հիմայ կու աւետեցընէր անոր « զաւուրս հաւատոյ, և զպատրաստ » քաւան. և այսպէս անպատրաստ պաշտօնէր զԱստուած » և աղօթէր »:

Նիխորական՝ թերևս Մախոժի նշանաւոր և մեծ ըլլալուն համար՝ չէր համարձակեր աւելի խիստ և յետին դատաստանաւ դատելու, կամ յարմարագոյն ժամանակի կու սպասէր: Բայց չյաջողեցաւ իրեն այս ժամանակը. վասն զի յետ կանչուեցաւ 'ի Խոսրովայ արքայէն Պարսից. և զՄախոժ թողլով 'ի բանտին՝ գնաց առ թագաւորն, ու քիչ ատենէն սպարապետ դրուելով Յունաց դէմ Լազիստանի պատերազմաց միջոց, հոն ղրկուեցաւ 60000 զօրօք. որոց մէկ երկու անգամ իր հպարտութեամբ և անհանճարութեամբն յաղթուելու պատճառ եղաւ, և գրեթէ բանակին քառորդը ջարդել տալով ասանց թշնամեաց ձեռօք մը հացընելու՝ քաշուեցաւ 'ի Վրաստան. ուսկից կանչուեցաւ 'ի Պարս, և իրեն խայտառակ զօրավարութեանը վարձք, չարաչար և աժգալի պատիժ մ'առաւ. սրտմտեալ թագաւորն՝ ողջ ողջ անոր կաշին հանել տուաւ, և տիկ ձևացընելով Տիզբոն մայրաքաղաքի ամենէն բանուկ հրապարակին մէջ կախել տուաւ:

Նիխորականի յաջորդ մարզպան եղաւ Նախողէփ, երեք տարի. որ և 'ի սկզբան իր նախորդին պէս յատեան քաշեց զՄախոժ, և քննելով ու նոյնպէս հաստատուն գտնելով զնա 'ի հաւատս Քրիստոսի՝ աւելի չարաչար ծեծել տուաւ, և եր-

կաթի չղթաներով կապել ու թողուլ 'ի բան-տին: Այս եռամեայ բանտարգելութեան միջոց Մախոժ անդադար աղաչանօք միրոնեցաւ իր բան-տակիցէն՝ (Ներսեսէ) որ և քահանայ էր, և Յայս-մաւուրքն աբեղայ կոչեն. և խնդրեց, որ ի-րեն անուն դնէ Յիզդբուզիտ, կամ ըստ Պարսիկ հնչման Եզդբուզիտ, որոյ բուն իմաստն է Աստու-ծոյ շնորհահատոյց կամ Աստուածափրկեցոյց, ինչպէս կ'ըսէ Յովհան կաթուղիկոս. կամ ինչպէս մեր վկայաբանն կ'ըսէ, յԱստուծոյ-փրկեալ, և կ'աւել-ցընէ թէ և Թարգմանի Աստուածատուր. վասն զի այս անուանս աւելի ծանօթ և իմաստին մօտ ըլլալով այսպէս անուանեցին Հայք և այսպէս կարդեցին 'ի տօնացոյցս. նոյնպէս կ'ընեն և օտարք՝ երբ ու-զեն՝ թարգմանաբար կոչել այս Պարսիկ անու-նը: — Կնքոյն և անուանն հետ երանելի մոգն փո-խեց իր ձեւն այլ. ինչուան այն ատեն իր սովորա-կան հագուստներովն էր, հանեց զանոնք, բաժ-նեց աղքատաց, և անոնց տեղ հագաւ մազեղէն, և բոպիկ ոտիցն այլ հողաթափ: «Եւ այսպէս » պահօք և աղօթիւք հսկէր, սաղմոսելով ան-» դադար, գեղեցիկ կրօնաւորութեամբ »:

Յետ երեք տարւոյ՝ Նախապետին տեղ եկաւ Փնաւշիկ ըսուած մարզպան մը, որ հակառակ գեղե-ցիկ կոչմանն՝ խառնակ և գաժան ձայներ լսեցուց. ուրիշներէն աւելի խստանալ սկսաւ քրիստոնէից վրայ իրեն համամիտ պաշտօնէիւքը, որոցմէ չա-րագոյնն էր ատենադպիրն: Սա լսելով Աստուա-ծատրոյ գիւղուածը՝ գնաց 'ի բանտ, և կէս յան-դիմանութեամբ և կէս խաբէութեամբ սկսաւ ը-սել. Միայն դու այդչափ խելացի գտուեցար՝ որ բոլոր Արեաց (Պարսից) աշխարհը բաւական չսե-պեցիր, և ելար գնացիր ուրիշի ծառայ ու գերի եղար: — Աստուածատուր պատասխանեց, թէ ծառայելն ամօթ չէ, այլ և բնական ամենուն. դու

որու որ կարօտիս՝ անոր ծառայ ես, կենդանիք մարդկան կու ծառայեն, մարդն այլ՝ Աստուծոյ. եւ երբեմն ապխտաբար ընդունայնութեան ծառայեցի, « Իսկ յորժամ գթացաւ յիս Աստուած՝
» կոչեաց զմտածութիւնս իմ՝ կապեաց 'ի սէր
» պատուիրանաց իւրոց, ներկեալ յուսով շնորհի
» իւրոյ. զոր ոչ կարացեն կենցաղոյս փորձու-
» թիւնքս փոփոխել»: Դպիրն փոխանակ իր ըն-զուխ ճարտարութիւնը թափելու, որով՝ իմացաւ թէ պիտի չյաջողի, բերը վերցընելով անգթաբար ծեծեց զմկայն. և յետոյ ուրիշ տանջանք և նեղութիւններ այլ տալ տուաւ. բայց ոչ բրով և ոչ բռնութեամբ կրցաւ յաղթել: Միայն թէ իր և նմաննեաց ըրածներն ձանձրացուցին զՀայս, որք և ազգովին բողոք խաւրեցին առ Թագաւորն Խոսրով, յիշեցընելով իր պապուն խոստմունքը՝ չնեղելու զՀայս վասն հաւատոց:

Խոսրով տուանց դժուարութեան լսեց Հայոց պատգամաւորաց. վասն զի կու վախէր որ չըլլայ թէ նեղանալով իրմէ գլուխ քաշեն և Յունաց կողմն անցնին, որոնց հետ արդէն թշնամութեամբ և կռուով էր: Խոստացաւ շուտով քննութիւն և արդարութիւն ընել. և յիրաւի, տուանց ուշացընելու խաւրեց 'ի Հայս երեք մեծ և խոհեմ իշխաններ, որք էին Նափոյ, ըստ պատուոյ աստիճանին կոչուած դրօշանդական. Խոյող՝ Թագաւորին հաւատարիմ սպասաւորաց մէկն, և Պէրող՝ Ոէոյ պալատին մոգպետն. որ և իրենց տիրոջ հրամանին համեմատ՝ անաչառ քննութեամբ դատելով՝ դատապարտեցին անիրաւ զրկահարները, և առաջուան պէս դիւրութիւն ըրին Հայոց, որ միամտութեամբ ծառայեն Պարսից Թագաւորին:

Սակայն այս դիւրութեան մասնակից չեղան Հայ չեղողք, մանաւանդ զրադեշտական կրօնքէն 'ի քրիստոնէականը դարձողք, ինչպէս էին Ցի-

զետրուղետ, Ներսէս, և անոնց բանտակից Աստր-
պատիկ մը Սահակ անուամբ: Այս երեքն այլ յա-
տեան կանչեցին եռապետքն քննիչք, քանի մը
անզգամաց մատնութեամբ դրդուած: Պերող՝
երբև պաշտօնեայ կրօնից՝ սկսաւ մէկ մէկ քննել.
« Դու ինչո՞ւ քրիստոնեայ եղար », հարցուց նախ
Ներսեսի: Նա այլ ըսաւ. Մայրս բուն քրիստո-
նեայ էր, զիս այլ քրիստոնէութեամբ մեծցուց:
— Հապա դո՞ւ. հարցուց Սահակայ: — Ես որ-
դայութեան առեննէս քրիստոնեայ եղած եմ, ը-
սաւ: — Կարգն եկաւ Աստուածատրոյ, որ ըն-
կերացը քննութեան ատեն՝ եռանեին կեցեր ցած
ձայնով «Տէր, մի՛ սրտմտութեամբ քով յանդի-
մանեսցես զիս » սաղմոսը կ'ըսէր. իր խօլ ըլլալը լա-
ւ գիտէին դատաւորքն, և իրենցմէ առաջ եղած քըն-
նութիւններն այլ լսելով՝ վախցան որ նորէն ի-
րենց կրօնքին նախատինք չհանէ անոր խօսքերէն
ամենուն դիմաց. ուստի զինքն առանձին կանչե-
լով և յանդիմանելով՝ ըսաւ մոգպետն. «Ա՛յ թը-
» շուառական, ընդէ՞ր զլուսաւոր դէնն թողեր, և
» նսեմաւոր քրիստոնէութեան հաւատացեր »:
Սուրբն պատասխանեց Թողած կրօնքին խայտա-
ռակութիւնը ցուցընելով, և ընդունածին սրբու-
թիւնը. և թէ «Քրիստոնէութեան միայն է կա-
» րողութիւն փրկել յաւիտենին 'ի մահուանէն»:

Յայտնի է որ այսպիսի գեղեցիկ պատասխա-
նեաց փոխարէն ծեծ ու վէրք պիտի ըլլար, և այլ
աւելին. վասն զի հրամեց լիրբ մոգպետն որ սըր-
բոյն պարկեշտ պարեգօտը պատռեն, կնկուղը
գետին զարնեն, գլուխը կոփեն, և մօրուքը փետ-
տեն: Ասանկ խղճալի կերպարանքով դարձուցին
զԱստուածատուր 'ի բանտ՝ իր երկու ընկերնե-
րովը. և երեք օրէն ետև նորէն յատեան բերին,
քննեցին ու նոյնպէս հաստատուն գտան: Ապա
չարաչար մոգպետն պատուիրեց որ երեքն այլ

ղատ տեղ սենեկի մը մէջ փակեն, ցորեկն անօ-թի թողուն ; իսկ բոլոր գիշերը ծխով մխով հեղ-ձամղձուկ ընեն զանոնք ։ Թէ և չմեռան, բայց շատ չարչարուեցան նահատակքն. սակայն խեղ-դուած ձայնով այլ չդադրեցան սաղմոսելէն մին-չև ցառաւօտ ։ Տասն օր այսպէս չարչարանօք մնա-ցին 'ի բանտին. վերջի առաւօտն որ էր Նոյեմբե-րի 9 և կիրակի օր, Աստուածատուր պատմեց ընկերացն՝ թէ այն գիշեր յերազին տեսաւ որ մէկն վարոցով ուժով մը զարկաւ գլխուն, ուս-կից արիւն կը վազէր երկու աչաց միջոցէն. բայց մէկէն երեք լուսաւոր անձինք վրայ հասան, վռն-տեցին վարոցաւոր մարդը, և իր գլուխը մարգար-տակեայ պսակ մը դրին ։ — Անշուշտ, ըսին ըն-կերքն, քու մարտիրոսութեան և պսակուելու ժամանակդ մօտեցեր է ։

Ոչ միայն մօտեցեր, այլ և հասեր էր օրն և ժամն. արդէն դահճապետն բանտին դուռը կու-փնտուէր. և ներս մանելով՝ նշան տուաւ Ցիզիտ-բուզիտ որ դուրս ելնէն ։ Չգիտեմ իր ընկերաց տրամութիւնն աւելի մեծ եղաւ իրմէ զատուել-նուն և մնալուն համար, թէ իր ուրախութիւնն՝ 'ի հանդէս նահատակութեան կանչուելուն հա-մար. անշուշտ երկու կողմէն այլ ոչ առանց ար-ցունքի տուին այն ողջոյնը և համբոյրը՝ որ երկրի և երկնից միջոց կախուած կապ մ'էր. ամենքն այլ փափագէին այն կապը բռնած վերանալ յեր-կինս, բայց միայն մէկուն հրաման եկած էր վե-րէն ։ Փութացաւ Ցիզիտբուզիտ բաժնուելու իր քրիստոնէութեան վարդապետին դրկէն, ('ի Ներ-սէսէ) որ քուշանեայ երկնաւոր վարդապետին Քրիստոսի) գիրկը հասնելու. և երթալուն ա-տեն՝ «Ի կարդալ իմում լուար ինձ՝ Աստուած», սաղմոսն ըսելով շուտով հասաւ յատեան դա-տաւորացն, որոց հետ նստեր էր չորրորդ մ'այլ,

կամ դահճապետն կամ նոր մարզպան մը [1]: Զորս դին պարապաձև բոլորած կենային մեծին Դուռնայ քրիստոնէից անհամար բազմութիւնն, որք իրենց կրօնից ազատութիւն ունենալով՝ անվախ եկեր էին տեսնելու օտարազգւոյն նահատակութիւնը. մէկէն հոգւոյ խնամութեամբ իրենց եկեղեցւոյն պայազատելու զնա:

Հրապարակաձև ատենին, կամ այն զարմանալի թատրոնին մէջ երեք փայտ կանգնած էր, երեք յենարան բունի օրհասականաց:... Գեղեցիկ ծառն և ամենապէտ փայտն՝ ասկէ աւելի պժգալի պաշտօն չէն կատարեր. բայց յետ որոյ այն գերագոյն Մէկին ատանկ փայտի մը վրայ կախուած անմահական կենաց պտուղ երեցաւ, այդպիսի փայտըն այլ շատ հեղ շատոց ցանկալի եղաւ, ինչպէս հիմայ այլ Աստուածատրոյ. որ և ուրախութե՟ իր յետին յենարանը ողջունելով, զուցէ պահ մը կարծեց, թէ ուրեմն իր երկու բանտակիցքն այլ վերջապէս իրեն ընկերակից պիտի ըլլան յաւիտենական ճամբուն մէջ: Իրաւ ունեցաւ երկու ընկերներ, բայց ոչ զՆերսէս և զՍահակ. այլ զնմանիս անոնց՝ որ իրեն նմանութեան նախօրինակին երկու կողմը կանգնեցան ՚ի Գողգոթա. — երկու յանցաւոր, երկու չարագործ, երկու մահապարտ: Այս Յիսուսի նմանակցութեան պատիւն այլ ունեցաւ Աստուածատուր. — Կու տեսնե՞ս այդ փայտը, կանչեց մոգպետն, ադոր վրայ պիտի մեռնիս չարաչար, եթէ յամառեալ մնաս մտացդ վրայ: — Ես հաստատուած եմ, ըսաւ սուրբն, ՚ի հաւատս Քրիստոսի, և ամենևին դառնալիք չունիմ. դու ընելիքդ կատարել տուր: —

1 Յովհաննէս կաթուղիկոս՝ Վշնաս-Վահրամ կոչէ զմարզպանն. « յորմէ բազում չարչարանս կրեալ . . . ՚ի » Դուին քաղաքի պատկի մարտիրոս պսակեան »:

Հրամեց Մոգպետն որ տանին զնա 'ի փայտն. Անտուածատուր ուրախութեամբ վազեց դահիճներէն առաջ, որք մերկացընելով զնա՝ կապեցին և կանգնեցին։

Շնորհակալ եղաւ Սուրբն՝ որ նաև այսպէս զգեստներէն կողոպտելով այլ՝ զինքը կու նմանցընէին իր տիրոջն 'ի խաչին։ — Մոգպետն՝ կամ յերրաւէ խնայելով, կամ սատանայութեամբ յաղթել ուզելով նահատակին, վերջին անգամ մ'այլ խաւրեց անոր՝ ըսելու, որ դեռ ժամանակ կար, բայց վերջին և կարճ ու անդարձ ժամանակիկ մը՝ զինքն ազատելու, եթէ հրաժարելով 'ի քրիստոնէութենէ՝ դառնայ 'ի հին մոգութիւնն։ — Սուրբն և ոչ պատասխանւոյ արժանի սեպեց այսպիսի դեսպանութիւնը։ Իր լռութիւնն լուծեց բռնաւորին արիւնալից հրամանը. և ահա սկսան դահիճքն սուր սլաքներով խոցոտել կողերը, և արեան անձրև մ'իջուցընել։...

Նոյն տաեն երկու յանցաւորներն այլ հանեցին 'ի փայտն. աջակողմեանն՝ նման Քրիստոսի խաչակցին, որոյ հաւատացեալ էր, և ազգաւ Թուժիկ, հաւատքով սրբոյն ոտքերը պագաւ, և անոր արիւնով թրջած հողը իր ծոցը կու լեցընէր. իսկ անզգամ դահճապետն անոր գլուխը կափելով շուտով հանել կանգնել տուաւ 'ի փայտէն, և նետով զարնել. որ և շուտով աւանդեց հոգին։ Ձախակողմեանն այլ նոյնպէս նմանող եղաւ իր հին կողմնակցին. անիրաւութեանցը վրայ մեծագոյն մ'այլ աւելցուց. Հրեայ էր ազգաւ. սկսաւ աղաղակել վայրախօս ստութ̃. Զիս «մի կորուսանէք. զմոգութիւն յանձն առնում»։ Դատաւորք մտիկ չըրին անխիղճ և անզեղջ ձայնին. կապեցաւ կախուեցաւ և կորաւ. ինքն իր դատապարտութեանը վկայելով։

Իսկ «Երանելին 'ի մէջ երկուց մահապարտացն՝

» 'ի բարձր տեղւոջ ողջակիզեալ յանդիման ա-
» րեգականն և ամենայն ժողովրդոցն. որ ունէր
» խորհուրդ զարմանալի, որ յիշատակեալ 'ի նա
» տերունեայն բանն՝ ըստ ճշմարիտ խոստմանն, թէ
» որ հաւատայ յիս՝ զգործսն զոր ես գործեմ և
» նա գործեսցէ, և մեծամեծս ևս քան զնոյնս. և
» Առաքեալն ասէ. Զորս յառաջն ճանաչէր՝ յա-
» ռաջագոյն հրաւիրեաց կերպարանակից լինել
» պատկերի Որդւոյ իւրոյ: — Եւ այսպէս քա-
» ջութեամբ վկայեաց սուրբն Յիզիտբուզիտ, 'ի
» ԻԴ ամին Խոսրովու Թագաւորին, որ օր երկու
» (էր) քաղոց ամսոյ, յաւուր կիւրակէի, յեր-
» րորդ ժամու »:

Ամօթապարտ դատաւորքն իբրև վերջին վրէժ՝ չթողուցին որ մէկէն վերցընեն Աստուածատրոյ մարմինը. բայց ոչ այլ շատ կրցան ուշացընել. հաւատացելոց խնդիրն և ձայնն բարձրացաւ. յաղթանակաւ իջուցին քրիստոնէացեալ մոգին մարմինը, և մեծ հանդիսիւ ու փառօք փոխեցին 'ի հանգիստ վկայից, իրեն արժանաւոր տեղ մը 'ի սուրբ տաճարին. որ և երկնափայլ լուսով պայծառացեալ՝ աւելի զուարճացուց զհաւատացեալս և ամաչեցուց զմոխրապաշտ մոգերը:

Այսպիսի պանծալի և շատ ատենէ վեր չլսուած նահատակութեան մը համբաւ, (որով և Յեզդ-բուզիտ անունը) [1] շուտով տարածեցաւ բոլոր արևելեան քրիստոնէից մէջ, և Յունաց կայսրու-

1 Այս անուանս մէկ հնագոյն գործածութիւն մը յայտնուեցաւ 'ի Չինաստան, գիտնոց և քրիստոնէութեան մէջ հռչակեալ արձանագրութեան մը վրայ, չինարէն և ասորերէն, պատմելով այն աշխարհին մէջ քրիստոնէութեան քարոզուիլը յամին 636. արձանն գրուած է յամին 781. ստորագրողներէն մէկն է Յեզդ-բուզիտ քահանայ, հայր Ադամայ արկաւագի, փոխանորդ արքեպիսկոպոսին:

թեան ընդարձակ գաւառները. ուրախացան մեր սուրբ կրօնից նոր և յայտնի յաղթանակին վրայ. բայց ամենէն բաղդաւոր սեպուեցան Հայք, անոր հանդիսարան ընծայելով իրենց մայրաքաղաքը, մայր եկեղեցին, և ինչուան հիմայ՝ տարեկան տօնախմբութիւն մը:

Նախայիշեալ Մենանդր պատմիչն՝ իր կորուսեալ և կտրատեալ պատմութեան մէկ պատառին մէջ՝ սրբոյն մէկ վերջի խօսքը կու յիշէ, երբ խաչին վրայ պրկուած էր, և երբ կու յորդորէին թողլու զքրիստոնէութիւնը՝ որ իրեն մահուան պատճառ պիտի ըլլար. Ես ոչ եթէ կը ցաւիմ, ըսաւ, այսպիսի կրօնք մը գտնելու, հապա ուշ գտնելուս համար: — Իսկ նոյն հեղինակին առ սուրբն նուիրեալ վերտառութենն, զոր և 'ի սկըզբանն յիշեցի, այս է.

Մոգ. ես երբեմն ի Պարս էի Ցիղիտոբուղիս,
Ի հեղեղանս մնոտխ ըղձյոյս իմ կառուցեալ.
Հուր ճարակէր զոսաանն իմ. յօգըն ճեպեցի.
Ճեպէր ի նոյն ու ամենազօր Քրիստեայ ծա-
ռայն.
Նա զըրանութիւն նուաճէր բոցոյն. իսկ ես
պարտեալ՝
Զաստուածայինըն յաղթուն ընկալայ պսակ:

Այսպէս օտար մը, Յոյն մը, բայց հաւատարիմ և ընտիր հեղինակ մը, Մենանդր, կարճ տողերով գեղեցիկ և թանկ վկայութիւն մը կու տայ՝ թէ Աստուածատրոյ յաղթական հաւատոցը, և թէ յաղթառիթ հաւատոց ամենազօր Քրիստոսի ծառայէն. որ թէ ոչ կաթուղիկոսն Հայոց՝ այլ Գրի-

*Նայ մէկ եկեղեցւոյն աւագերէցն էր. որ « զբըռ-նութիւն նուաճեաց թոցոյն » ՚ի Ճարակեըն ՚ի տան համակարին , և զաստուածոյինն յաղթանակեան պատէ-էջուց ՚ի գլուխ քրիստոսահրաւէր մօգէն Մախո-ժի , փոխելով զնա ՚ի Ցէրէփրեութէ , այն է Աս-տուածածնութ :*

# ԻԵ

# ԵՐԱԶ ՎԱՐԴԱՆ ԿԱՅՍԵՐ

## 3 *Յունիս*, 713.

*Սովորաբար քնացողքն կարծուին երազատես. բայց բարոյապէս խօսելով՝ աւելի շատ են արթնութեան ատեն երազ տեսողք, երբ չըլլալու կամ շատ անստոյգ ու դիպուածական կամ չափազանց բաներ կու մտածեն, կու յուսան, կ'ուզեն կամ կ'առնեն: Այսպիսի քուն կամ երազն այլ՝ գրեթէ բնական քնոյ և երազի պէս հասարակ է մարդկան, թէ և ոմանք քիչ ոմանք շատ տեսնեն. իսկ իր ազդեցութիւնն աւելի զօրաւոր է, իր բերած երբեմն ուրախութեամբն և շատ հեղ տխրութեամբը: Բան մ'երազել փափագով և յուսով՝ և գտնել զայն, մեծ բաղդ մեծ ուրախութիւն է. երազել և չգտնել՝ տխրութիւն է. առանց երազելու՝ գտածը կորուսանել՝ աւելի մեծ և ստոյգ տխրութիւն է. իսկ երազել և գտնել, յետոյ դարձեալ այն փափագած և գտածը երազի պէս կորուսանել՝ տխրութենէ ալ վեր է, ցաւալի ափշութիւն է: Այսպիսի է մեր պատմելու երազն ալ. որուն նըման սաստիկ՝ իրաւ քիչք երազած են, բայց շատեր կան որ ասոր կու նմանին, գոնէ երազին մէկ մասովը: Երկրաւոր փառաց և բաղդի յեղափո-*

խուլթեանց մեծագոյն օրինակ մը ցուցընելով՝ կըրնայ ամենուն խրատ ըլլալ Վարդան կայսեր երազն։

Այս Վարդանս ինքնին երազեալ՝ այսինքն մըտացածին կամ առասպելեալ անձ մը չէ․ այլ ստոյգ և պատմական, թէ ինքն և թէ իր գլխաւոր երազն․ քեզի ազգակից է, Հայկակ, և Յունաց Կոստանդնուպոլսի կայսերաց Թագակից, Ը դարուն սկիզբը։ Երբոր մեծին Կոստանդիանոսի ցեղին պայազատութիւնն հատաւ մահուամբ Փոքր Թէոդոսի և անոր քեռւոյն Մարկիանոս կայսեր, կայսերութիւնն զօրաւոր կամ բռնաւոր իշխանաց ձեռք ինկաւ, (աւելի Թրակացի իշխանաց) որք դար ու կէս տիրեցին․ ասոնց վերջինները Մօրիկ կայսր՝ ըստ մեր պատմչաց՝ Հայ էր, յՕշական գեղէ Արագածոտն գաւառի[1]․ ասոր յաջորդ Փոկաս սպաննելով անուանին Հերակլ կայսր՝ յափըշտակեց զԹագը և ժառանգեցուց իր ցեղին ամբողջ դար մը։ Բայց որովհետև թէ ինքն թէ իր նախորդաց շատերն յափշտակող եղեր էին, և իր յաջորդքն այլ անարժան և ժողովրդեան անսիրելի էին, Թագախնդրութիւնն կամ կայսերութեան փափաքն և կռիւն՝ սովորական բան մ'եղաւ զօրաւոր և ճարպիկ իշխանաց։

Ասոնց մէջ՝ եթէ ոչ շատութեամբ թուոյ՝ բայց շատութեամբ արդեանց և ուժոյ, նշանաւոր էին գրեթէ բոլոր Ե–ԺԱ դարուց միջոց՝ մեր համազգի Հայ իշխանաւորքն և զօրավարքն՝ Կ․Պոլսի ինքնակալաց ծառայութեան մէջ, ինչպէս յայտնի է ամենայն պատմագրաց․ սակայն զարմանք չէր եթէ իրենք այլ՝ ընէն Յոյն իշխանաց հետ՝ կայսերա-

1 Ըստ Յունաց՝ էր յԱրաբիսոս քաղաքէ Կապադովկիոյ, որ է 'ի Փոքր Հայս, և բուն ցեղն հռովմայեցի էր։

կան Թագին փոփոխագող կամ յափշտակող ըլլային. մանաւանդ որ շատ հեղ իրենցմէ առաջ՝ Թէ ազգային Թէ յոյն զօրքն և իշխանքն՝ իրենց կ'ընծայէին Թագը: Արդէն Հերակլի վերջին պայազատաց առեն մէկ երկու այսպիսի անձինք փորձ փորձեցին, Թէ և ոչ յաջողեցան. ինչպէս Շապուհ մը ամատունի կամ պարսիկ, որ երբեմն արևմըտեան Հայոց զօրավար կամ իշխան էր, և յամին 667 բ Կոստանդ (Թոռն Հերակլի) կայսերէն գլուխ քաշեց, բայց դիպուածով մը շուտով մեռաւ (ձիէն ընկնալով): Հետևեալ տարին Կոստանդը սպանողք իրենց կայսր ընտրեցին զՄծէծ. որ հաւանօրէն Թոռն էր մեր Մժէժ Գնունի զօրավարին, որ Հերակլի առեն քաջութեամբ և խոհեմութեամբ շատ անուանի էր. իսկ կայսր ընտրուած Մժէժն աւելի երևելի էր իր հասակին մեծութեամբ և գեղեցկութեամբն, որոյ համար ընտրեցին զսա սպանեալին հակառակորդքն, և խոստացան պաշտպանել. վասն զի ինքն Մժէժ կու հրաժարէր և յանձն չէր առնուր. և անոնց տիրատեցութեան ալ զոհ եղաւ. և ոչ տարի մը ակամայ կայսրութեան անունը կրելով Թագին հետ իր Թագադանգուր գլուխն ալ կորոյս (669), զոր Սիրակուսայէն (Սիկիլիոյ քաղաքէ) խաւրեցին 'ի Կ.Պօլիս առ որդին Կոստանդայ՝ Կոստանդին Դ: Այս Կոստանդին Թէ ծննդեամբ և Թէ արդեամբք արժանի ժառանգ էր աԹոռոյն, բայց անարժան հօրը նման՝ անարժան որդի մը յաջորդ ունեցաւ, այն է Յուստինիանոս Բ:

Ասոր անկարգութեանց, անգթութեանց, և անկրօնութեն չդիմանալով իր ժողովուրդն՝ գահընկէց ըրին (695), և տեղը նստուցին Ղեւոնդ պատրիկ քաջ զօրավարը, որ հայրենեօք էր յԻսաւրիոյ Կիլիկիոյ, և հաւանօրէն Հայ, ինչպէս էր անտարակոյս իրմէ ոչ շատ տարի վերջը ընտ֊

րուող և 25 տարի (717-741) կայսր եղող Լեւոն Իսաւրացին. (Թէպէտ վարքովն և գործքերովն իր նախորդէն՝ Յուստինիանոսէն՝ պակաս զզուելի չեղաւ)։ Ղեւոնդ թէ և սիրելի և արժանաւոր անձն, բայց իրեք տարիէն ետև (698) իրմէ բռնագուռնի մը ձեռք ընկաւ. Ապսիմար անունով Կոռիկոսցի մը տիրեց Կ.Պոլսոյ, և Ղեւոնդի քիթը կտրելով, (ինչպէս Ղեւոնդ ալ Յուստինիանոսին կտրեր էր) փակեց վանքի մը մէջ, և ինք զինքն անուանեց Տիբեր Բ։

Այսպէս կայսերութեան կամ թագին խաղալիկ եղած ատեն՝ մեր Վարդանն այլ իր կայսերական երազը տեսաւ։ Իր ինչ տոհմէ կամ տունէ ըլլալն յայտնի չէ, թէ և յոմանց Մամիկոնեան կարծուի. անշուշտ այն Հայերէն էր որ շատոնց Յունաց ծառայութեան մէջ մտեր և յառաջացեր էին. իր հայրն այլ յունական անուամբ Նիկեփոր պատրիկ կոչուէր. ինքն այլ զինուորութեան մէջ յառաջադէմ և ճարպիկ, լեզուանի և զուարթ մարդ մ՚ըլլալով՝ սիրելի եղած էր ճանչուորներուն. և աւելի այս ձիրքերուն ուժովը՝ քան թէ քնով կամ գինւով հարբած ըլլալով՝ երազ մը տեսաւ, (յամին 701) որ իր կենաց մեծ և իրական երազին պատճառն եղաւ։ Տեսածն էր, ինչպէս ինքն պատմէր, արծիւ մը որ գլխուն վրայ կու թռչըտէր. Անշուշտ ասիկայ նշան է, ըսաւ, որ օր մը ես կայսր պիտի ըլլամ։ Եւ ինչպէս որ կ՚երևէ՝ միայն զինուորական և աշխարհային բաներու հմուտ, աւելի հարկաւոր բաներու անհմուտ էր. գնաց անուանի եղած ճգնաւորի մը պատմելու և խորհուրդ հարցընելու. Ճգնաւորն, որ խաբուած կամ խաբեբայ մ՚էր, միանգամայն և մոլորամիտ միակամադաւան և երազագէտ մը, Վարդանայ փառահեղ կերպարանքէն յոյս առնելով որ իրաւ կրնայ օր մը կայսր ըլլալ, ինչպէս

վերոյիշեալներն․ Անտարակոյս է, ըսաւ, կայսր ըլլալդ․ բայց՝ (հայհոյանք մ՚ալ աւելցուց) այս պայմանաւ Աստուած քեզի կու տայ կայսերութիւնը՝ որ եկեղեցւոյ Զ ըսուած տիեզերական ժողովը ջնջես, այսինքն անոր հաստատած դաւանանքը։ Վարդան առանց առաջ ետև մտածելու, խօսք տուաւ, որ եթէ կայսր ըլլայ՝ այնպէս ընէ։ Եւ երազէն աւելի այն սուտ մարգարէին հաւատալով և վստահանալով՝ պատմեց իր մէկ բարեկամին՝ եղածը և ըլլալիքը․ բարեկամն՝ որ Ճգնաւորին պէս ցած մ՚էր, ապագայ անստոյգ կայսերէն աւելի՝ ներկայ ստոյգ կայսերէն վարձք առնուլը իրեն շահաւոր գտնելով՝ գնաց ասոր պատմեց լսածը։ Ապսիմար մէկէն բռնել տուաւ զՎարդան, և խեւի պէս ծեծելէն ետև՝ գլուխն ալ ածիլելով շըլթայի զարկած աքսորեց մինչև ՚ի Կեփալոնիա կղզի, Յունաստանի արևմտակողմը։

Վախնալու մահուանէ մը ազատելով՝ Վարդան՝ տասը տարի ատեն ունեցաւ իր երազին վրայ նոր նոր երազներ տեսնելու և դեռ յուսով սպասելու․ երբ իր աքսորուելէն քանի մը տարի վերջ Յուստինիանոս Ռինոտմետ, այսինքն Պնչատն (քիթը կտրած), կատղած գազանի պէս փախչելով իր արգելանէն՝ որ էր Քերսոն քաղաքն Ղրիմու, նախ Խազրաց ապաւինելով, ապա Բուլղարաց, և ասոնցմէ զօրք առնելով եկաւ պաշարեց առաւ իր հին թագաւորանիստ քաղաքը և թագը (705), բռնեց զԱպսիմար որ փախեր էր, և անոր նախորդ Ղևոնդ կայսեր հետ մէկտեղ բերելով, և ամէն խայտառակութիւն տալով՝ կրկեսին մէջ գետնի վրայ ձգեց կոխկռտեց, մինչդեռ յիմարած ժողովուրդն սաղմոսին խօսքը իրեն յարմարցընելով կու պոռչտար․ «Ի վերայ իժի և
» քարբի գնասցես դու, զառիւծն (Ղևոն) և
» զվիշապն (Ապսիմար) առ ոտն կոխեսցես»․ յե-

տոյ ուրիշ գազանաց ամփիթէատրոն մը տանել ու գլխատել տալու զանոնք։ Իսկ ինքն իր տեղ կերպարանաց ծածկոց մը հնարեց, ոսկեղէն քիթ մը. զոր՝ ամեն անգամ հանած ատեն, կ՚ըսեն, սոսկալի գազանական կատաղութիւն մը կ՚իմանար. և գազանէ աւելի անգութ և անկարծելի կոտորածներ ըրաւ՝ իր երկրորդ անգամ վեց տարի թագաւորութեանն ատեն։ Սատանայական ըմբոստութեամբ մը Աստուծոյ դէմ երդուած էր իր ամեն հակառակորդներէն վրէժ առնուլ. և ոչ միայն անոնց, հապա շատ անմեղաց ալ չարաչար տանջանք և մահ հասուց. արիւնոտ աչացն առջև կրօնք արքազան բան չէր երևեր։ Ոչ միայն կայսրութեան, այլ և մարդկութեան զզուանք և ցուցանք մ՚եղաւ, ուսկից ամենքն կու գանէին և կու դողային։

Յետ ջարդելու ջնջելու Կ.Պոլսի և անոր մօտ տեղերու մէջ իրեն թշնամի սեպածները, բոլոր ոխը դարձուց իր աքսորանաց տեղւոյն (Քերսոնի) բնակչացը վրայ. որովհետև հոն անոնց մէջ եղած ատեն միշտ կու սպառնար թէ երբ ազատութիւն գտնեմ՝ զձեզ պիտի չարչարեմ, անոնք ալ ուզեցին զինքը հալածել, և հազիւ թէ կրցեր էր փախչիլ անկէ։ Հիմայ բոլոր նաւերը ժողվեց, և զամենքը ստիպեց որ գան օգնութեան. ինչուան, կ՚ըսեն, 100,000 մարդ լեցուց նաւերուն մէջ և ղրկեց՚ի Քերսոն, գլուխ դնելով Ստեփանոս անուամբ գազանամիտ մարդ մը՝ զոր անողորմութեանն համար ամենքն (ἄσμικτος) կոչեկամ կատաղած կոչէին. պատուիրեց ասոր՝ Քերսոնի բնակչաց մէկն ալ ողջ չթողուլ, և անոնց տեղը աքսորածներով լեցընել։ Այս աքսորելոց մէկն ալ ըրաւ երազատես Վարդանը, Կեփաղանիա կղզիէն հանելով և հոս քշելով։

Թողունք հոս յիշել Քերսոնի մէջ եղած ահեղ

կոտորածը, և անկէ ապրած ու նաւով դէպ 'ի Կ. Պոլիս ղրկուած տղայոց և մարդկանց կորուստը նաւակոծութեամբ Սեւ ծովուն մէջ. որոց թիւը կ'ըսեն (դուցէ չափազանցօրէն) 63,000 էր, թէ և մեկտեղ սեպուին նաւաստիք և զօրականք. դիակնին հարիւրաւոր մղոններով հեռու ծովեզերքներ ծփալով զարնուեցան երկայն ատեն: Կառավարին Ստեփանոս՝ որ քան զՊնչատն նուազ կատղած էր, աչք գոցեր էր որ մաս մը 'ի բնակչաց Քերսոնի փախչին, և իրեն տեղ վերակեցու թողեր էր զԵղիա՝ կայսեր զինակիրը: Երբ այս փախչողներն լսեցին որ Ստեփանոս նաւակոծեալ խեղդեցաւ, սկսան դառնալ իրենց ամայի հայրենիքը. բայց գազանացեալ կայսրն այլ լսելով անոնց ապրիլը՝ նորէն զօրք խաւրեց վրանին. անոնք յետին յուսահատութեամբ զինուած, և Խազրաց օգնութեամբ՝ ջարդեցին կայսեր զօրքը, և միաբերան անէծք ու նզովք կարդալով այնպիսի հրէշի մը վրայ, ուզեցին զԵղիա (որ իրենց կողմը դարձեր էր) կայսր անուանել. սա վախնալով հրաժարեցաւ: Ահա այն ատեն միաբանեցան և կայսր կանչեցին ու դրին զՎարդան, անունն այլ փոխեցին 'ի Փիլիպպիկոս, զոր սխալ ըսելով և գրելով ոմանք՝ Փիլէպիկ անուանեն, ոմանք Փիլիպպոս, և ոմանք 'ի մեր պատմչաց այլ Փիլիկ: Այս բանս եղաւ 711 տարւոյն վերջերը. Վարդանայ երազն ստուգուեցաւ, բայց ոչ բոլորովին և ոչ կարծածին չափ երկայն և յաջող:

Այս վայրկենէն ետև Յուստինիանոս կայսեր անդադարելի կատաղութիւնն և տագնապը նկարագրել՝ գրեթէ անկարելի է. առջի գործքն եղաւ մեկէն վազել երթալ Եղիայի տունը. անոր երկու անմեղ երեխայ տղայքը իրենց մօր գրկին մէջ ինքն իր ձեռքով սպաննեց, մայրերնին այլ մահուանէ աւելի մեծ նախատանաց մատնեց. յե-

տոյ շուտով նոր նաւախումբ մը կազմեց՝ ամենայն պատերազմական գործիքներով լեցուց, Մօրոս անուամբ մէկու մը յանձնեց սաստիկ սպառնալեօք՝ որ երթայ հիմնայատակ ընէ զՔերսոն, և ոչ մանր տղայոց խնայելով. անանկ որ ոչ կենդանի մնայ, ոչ շէնքի նշան մը, այլ վարուցանի տեղ դառնայ: Մօրոս տիրոջը բաղձանաց համեմատ շուտով հասաւ 'ի Քերսոն, և սկսաւ պարիսպը ծեծել ու փլցընել. բայց յանկարծ Խազրաց գունդ մը վրան հասաւ, դադրեցուց: Մօրոս տեսնելով որ կամ տանցմէ պիտի ջարդուի, կամ յետ դառնալով կայսեր բարկութեան զոհ պիտի ըլլայ, ինքն ալ Քերսոնացւոց կողմը դարձաւ, միացաւ անոնց հետ. նոյն միջոցին Վարդան այլ Խազրաց կողմէն գալով նոր զօրագնդով մը՝ նորէն կայսերական պատուով ընդունուեցաւ: Յուստինիանոս կու զարմանար իր նաւերէն լուր մը չառնըլուն, և կասկածելով՝ անհամբերութեամբ մնացեալ զօրքը ժողվեց, գունդ մ'ալ 'ի Բուլղարաց օգնութիւն առաւ, և գնաց ցամաքէն մինչև 'ի Սինոպ: Հոնկէ տեսաւ որ նաւատորմիղն առագաստաբաց կու գայ դէպ 'ի մայրաքաղաքն. նաւ մը խաւրեց ընդ առաջ լուր բերելու. լուրն աս եղաւ՝ որ աքսորեալն Վարդան կայսր եղեր է և կու գայ Կ. Պօլսի վրայ:

Հոս վերջին անգամ Յուստինիանու ոսկի քիթն ընկաւ, և բոլորովին գազանացաւ. անհանգիստ և անդադար վազեց դէպ 'ի մայրաքաղաքն. բայց տեսաւ որ Վարդան իրմէ առաջ հասեր տիրեր է. նոյն երագութ̃բ դարձաւ 'ի Դամատրիս՝ որ Քաղկեդոնի (Գատը-քէօյ) և Նիկոմիդիոյ (Իզնիմիտ) մէջտեղն է. բայց հոն ալ Վարդանայ վախն և սուրն հասեր էր. վասն զի հոս խաւրեր էր զԵղիա, որ երբեմն իրեն տէրը պաշտպանող զէնքերը անոր դէմ դարձընէ: Եղիա տեսաւ որ այն իր կապտած

հին տէրն պատրաստուեր է պատերազմի. մօտեցաւ անոր Յոյն և Բուլղար զօրացը, իմացուց որ ինքն պատերազմի համար եկած չէ, այլ զիրենք ազատելու անանկ այլանդակ հրէշի մը ձեռքէ. և խոստացաւ նոր կայսեր շնորհքները. մէկէն իր կողմը դարձան դիմացի գունդերն ալ: Քրիստոնեայ կայսեր ուրիշ բան չմնաց՝ բայց յուսահատ փախուստ. սակայն շուտով վրայ հասաւ իր քաջ բայց տիրանենգ զինակիրն (Եղիա). մազերէն բռնեց քաշեց, և իր դաւաճան սրովը կտրեց այն գոռոզ գլուխը՝ որ 26 տարիէ վեր ահով դողով և անքաւ արեամբ լցուցեր էր զծով և զցամաք արևելեան ընդարձակ կայսերութեան. և խաւրեց առ Վարդան: Նոյնպէս սպանուեցաւ Յուստինիանոսի առաջին պաշտօնեայն և գլխաւոր պատրիկն Վարազբակուր, որոյ անունն յայտնէ որ ազգաւ Հայ կամ Վրացի էր:

Մօրոսի և Յովհան ծնծղուկ ըսուած մէկու մը յանձնուեցաւ՝ աւելի անգութ և սրտակտուր գործ մը. սպաննել զՏիբեր՝ զորդին Յուստինիանոսի: Իրաւ հրէշի մը ձագ էր սա՝ բայց դեռ անվնաս անմեղ ձագուկ մը, վեց տարեկան. զոր մամն (Անաստասիա) փախուցեր էր Ս. Աստուածածնի եկեղեցի մը, և վրան գլուխը սրբոց նշխարքներով լցուցեր էր. մէկ թաթիկովը խորանը բռներ տուեր էր, մէկալովը Քրիստոսի աշխարհակեցոյց խաչին կտոր մը. ինքն մամիկն ալ խորանին դռան առջև պահապան կեցած՝ վայրկենէ վայրկեան կու սպասէր սրտաթափ սև վայրկենին. և ահա անողորմ դահիճքն ներս թափեցան: Անաստասիա՝ վազեց ընկաւ պլլուեցաւ Մօրոսի ոտքերուն, լալով ճչալով ողորմութիւն կու կանչէր. բոլոր տաճարն, կրնամք ըսել թէ բոլոր բնութիւնն իսկ ողորմութիւն կու մուրար անմեղ գառնուկի մը համար. բայց այն օրերը՝ միայն

մարդկանց սրտէն վերցուեր էր ողորմութիւնն։ Մինչդեռ մամն Մօրուսի կու պաղատէր, անդին անուանեալ Ծնծղուկն՝ գիշատիչ անգղ դարձած՝ տղուն վրայէն սրբազան մասունքները վերցընելով, և կէս մ'ինքն իր վիզն անցընելով՝ քաշեց երեխայն ինչուան եկեղեցւոյն դուռը, աստիճաններուն վրայ ձգեց, մերկացուց, մորթեց. տարաւ թաղեց ուրիշ եկեղեցւոյ մը մէջ։ Անով մարեցաւ Հերակլեան ցեղն, ամբողջ դար մը ինքնակալելով վեց թագաւորներով. որոց վերջնոյն (Յուստինիանու) տպեղ գլուխն՝ յետ խայտառակուելու 'ի Կ. Պօլիս՝ ղրկուեցաւ մինչև 'ի Հռոմ. և հոն ալ ժողովրդեան ուրախութեան պատճառ եղաւ։

Այս ուրախութիւնը երկարատև չըրաւ Վարդան, ինչպէս կու յուսացուէր. վասն զի իր խոստմանը վրայ չարաչար հաւատարիմ կենալով՝ անհաւատարիմ եղաւ իր պատւոյն և կրօնից. սուտ ճգնաւորին ըսածին համեմատ ջանաց միակամեայց մոլորութիւնը ծաւալել յարևելք բոլոր. ուղղափառ եպիսկոպոսները հալածելով և մոլորեալներ դնելով տեղերնին. ժողովակ մ'ալ ընել և դատապարտել տուաւ Զ սուրբ ժողովը. և իր խելօք գիր մ'ալ գրեց 'ի Հռոմ առ սրբազան հայրապետն. զոր ամէնքն արհամարհելով մերժեցին, և ինչուան զէնք առնելով իր խաւրած զօրքը ջարդել կ'ուզէին, եթէ Ս. Պապն չարգելուր։ Միայն մէկ բարի հովուի մը հնայեց Վարդան. ասիկայ էր Ռուեննայի արքեպիսկոպոսն Փելիքս, զոր Յուստինիանոս կուրացուցեր և աքսորեր էր 'ի Քերսոն Վարդանայ հետ. որ պանդխտութեան և թշուառութեան ընկեր ունենալով զնա՝ սէր կապեր էր հետը. և երբ կայսր եղաւ՝ դարձուց իր աթոռը շատ ընծաներով. (որոց մէջ կար պզտիկ ոսկեղէն թագ մը՝ անգին գոհարներով զարդարած, որուն համար Հրեայ մը ըսաւ յետոյ Մե-

ծին Կարոլոսի՝ թէ բոլոր Ռաւեննայի չքնաղակերտ մայր եկեղեցիէն աւելի կ'արժէ)։

Իր երազին և երազահանին միայն հաւատացող և ինչուան կրօնքն ալ արհամարհող՝ 'ի հարկէ ուրիշ ազնիւ զգացմունքներ չէր կրնար ունենալ. պէտք չէ բնտռել, թէ արդեօք յիշեց Վարդան իր ծագումը, որ ցեղէ, որ ազգէ ըլլալը. և ըրա՞ւ բարիք մը իր նախնական հայրենեացը։ Ընդհակառակն կ'իմացընեն պատմիչք, որ նեղեց զՀայս, և շատ գաղթական հանել տալով 'ի Մեծ Հայոց՝[1] քշեց Դ և Դ Հայոց կողմերը, որ են Մալաթիա և Խարբերդ. որոց տիրելով Արաբացիք՝ ընդունեցան և տեղ տուին Հայոց. սոնք ալ յօժարութեամբ միաբանեցան զիրենք ընդունողաց հետ։ Թերևս ատով աւելի քաջալերուեցան Արաբացիք Փոքր Ասիոյ զանազան կողմերը կոխելու, ինչպէս Բուլղարք ալ ինչուան Կ. Պոլսոյ մօտ սահմանները աւրելու և այրելու։ Վարդան՝ ոչ իր անուան, ոչ իր պատուոյն և ոչ իր տաճի տուած յուսոյն համեմատ՝ քաջութիւն ցըցուց ասոնց դէմ. այլ կարծես թէ իր երազածը և չերազածը ստուգել ուզելով՝ ինք զինքը Թողուց բաղդին գիրկը, և միայն անոր ցուցած փափկութեանցը մէջ թաղուեցաւ։

Իր նախորդն (Յուստինիանոս) անչափ բռնաւորութեամբ և կոտորածներովը՝ անբաւ ստացուածք և հարստութիւն ժողովեր էր, որովք շատ քաղաքներ կրնային շինուիլ, և շատ բանակներ զինուիլ. Վարդան իր կայսրութեան մէկ ու կէս տարուանը մէջ՝ գրեթէ բոլորն ալ մսխեց, անչափ և անկարգ զեղխութեամբ, որովք շատ խայ-

1 Յայսմ. Հոռի Զ. վասն Յուստինիանու ասէ. «Հալածեաց զազգս Հայոց վասն ուղղափառ հաւատոց յիշխանութենէ իւրմէ. և ուրախացեալ Տաճկացն բնակեցուցին զնոսա 'ի Մելտենի, 'ի Միջագետս Ասորւոց»։

անառակութիւն, վիշտ և մեղք հասուց շատոնց. և եթէ դեռ արտաքին սիրուն կերպարանքը և ճարտար ու բանիբուն խօսուածքը պահած չըլլար, անշուշտ և ոչ այն 18 ամիսը կու թագաւորէր: Բայց ինքը մեծ յոյս ունէր՝ իր խաբեբայ մարգարէին վստահացած՝ որ երկայն տարիներ պիտի վայելէ կայսերութիւնը: Սակայն եթէ այն կարծեցեալ տարիներն այլ այդպէս վատութեամբ պիտի անցընէր, պէտք է մեր ազգութեան և մարդկութեան պատուոյն համար գոհ ըլլանք՝ որ յոյն պարապ ելաւ, և շուտով հասաւ իր երազին վերջը, կամ նոր և անակնկալ երազ մը. որ պատմութեան ամենէն հիացուցիչ և ահացուցիչ երևոյթներէն մէկն է, կենաց նշանաւորագոյն յեղափոխութեանց մէկն, բարոյականի զարմանալի դաս մը. յորում կրնամք բովանդակ մարդուս բնութիւնը կամ փափագները նկատել 'ի Վարդան և խրատ առնուլ:

Աշխարհիս մէջ անշուշտ շատերն փափագեր և երազեր են, բայց խիստ քիչ եղած են Վարդանի նման այսպէս յանկարծօրէն և այսչափ մեծ փառքի, իշխանութեան և բարեաց՝ հասնողք. երկու անգամ աքսորուած և շատ հեղ հազիւ մահուանէ ազատած, մանաւանդ անանկ բռնաւորի մը (Յուստինիանոսի) ձեռքէ, որուն զոհ եղան աւելի ապահովագոյն կեանքեր. և երկրիս ամենէն բարձր և փառաւոր գահոյքը վրայ նստած, որ այն ատեն դիպուածով մ'այլ (զոր վերն յիշեցի) անբաւ գանձով և հարստութեամբ լեցուած էր: Զատոնք՝ անկարծ բաղդ գտնողի մը պէս անկուշտ կերպով վայելելը բաւական չսեպելով, ուզեց Վարդան (մէկ քանի շատ անուանի եղած փափկակեաց և զեղխ մարդկանց նման) մէկ օրուան մը մէջ փորձել զգալ այն ամենայն բարիքը՝ որուն կրնայ բաղձալ մարդուս սիրտն և բնութիւնն,

միայն ներկայ կեանքը մտածելով. մէկ օրուան մը մէջ բովանդակել իր աշխարհական կայսերութեան կարելի փառքը և վայելքը: Այս եղաւ իր մեծագոյն երազն. որ ուզածին պէս սկսաւ, չուզածին պէս լմնցաւ:

Այն օրն էր Քրիստոսի Թուականին 713 տարւոյն յունիս ամսոյն երեքը, Հոգեգալստեան տօնին Նախընթաց օրն (շաբաթ), որ ոմանք Կ.Պօլիս քաղքին հիմնարկութեան օրն էր կ'ըսեն, և այն ժամանակի սովորութեան համեմատ Քաղաքին ծննդոց օրն[1]. բայց ըստ այլոց նոյն ինքն Վարդանայ ծննդոց տարեդարձ օրն էր: Այս օրս ուզեց իր աչուըց մէջ նշանաւոր ընել, և եղաւ ուզածէն շատ անդին. նշանաւոր բոլոր կայսերաց, դարուց, ազգաց և մարդկութեան աչուըց մէջ: Առտուն՝ քաղքին մեծ կրկէսը՝ (Աթ մէյտանը) զարդարել տուած ըլլալով՝ մեծահանդէս և փառազարդ կառարշաւ մ'ընել տուաւ 'ի զուարճութիւն աշխարհախումբ ժողովրդեան. յետոյ նոյնպէս մեծահանդէս և սխրալի հեծելութիւն[2] մը, յորում անշուշտ ինքն ալ իր անուան համեմատ՝[3] ահիպարանոց և սիգաշարժ և ոսկեզարդ երիվարի մը վրայ նստած, աւելի իր նախնեաց սեփական ճարպիկ նստուածքով և վազուածքովը կը զմայլեցընէր տեսողները, քան իր և իր ձիուն և իրեն անմիջապէս քովէն գացողներուն վրայի ակնախտիղ և մեծահարուստ զարդուց և սպառազինութեանց փայլմամբը. որովք՝ երկրիս երեսէն սահող արեւու մը պէս կ'անցնէր քաղքին մէկ ծայրէն մինչ 'ի մէկալ ծայրը. և շատ աշխարհակալները չըրած մեծութիւնը ցուցընելով՝ ինքն որ

1 Γενέθλιος τῆς πόλεως ἡμέρα.
2 Cavalcade, Տճ. Պինիշ:
3 Փիլիպպոս Ձիասէր ըսել է:

հողին աչքաւոր հագիւտ կրնար ըսուիլ, հազար հա
յաղթութեան և փռուած նշան գրօշներ օդուն
մէջ բարձրացուցած տանել կու տար. հազար
երաժիշտ, մեծամեծ և բարձրաձայն փողերով և
փանդռամներ՝ այնպէս կու թնդացընէին չորս դին,
որ կարծես թէ ոչ քաղքին հիմնարկութիւնը
հռչակել՝ այլ անոր հիմերը դուրս հանել կ'ու-
զեն.— փողերէն և փանդիռներէն աւելի կը տի-
րէր ուրախական և հանդիսական ձայն ժողովըր-
դեան, որ զիրար հրելով՝ իբր թէ առանց ոտքի
հեղեղաբար հեծելոց քովէն և ետևէն կ'երթային:
Այն օր Կ. Պօլիս նեղ եկաւ իր ժողովրդեան, կայ-
սերութիւնն՝ Վարդանայ սրտին:

Օրուան մէկ մասն փառաց փայլման և վայելից
նուիրելով, մէկալ մասն ալ փափկութեան վայ-
ելից պահուած էր: Վարդան նախ գնաց մտաւ
Զեւքսիպպեան ջերմուկք ըսուած բաղանիքը, որ
կայսերական պալատան և Ս. Սոփիայ եկեղեցւոյ
միջոցն էր: Ցետոյ կարգն եկաւ կերուխումի, ուր
երկայն ժամեր անցուց իր պալատան մեծամե-
ծաց հետ. և ինչ որ այնպիսի օրուան մը համար
կրնայ մտածուիլ և պատրաստուիլ՝ կար սեղա-
նոյն վրայ, 'ի հարկէ չափէն շատ և շատ աւելի.
ուր նստած ատենն՝ Վարդան դեռ Վարդան կայս-
րըն էր. սիրտն ամէնէն աւելի ուռած մեծցած,
թերևս քան զՆաբուգոդոնոսոր և զԲաղտասար
մեծափառք և մեծավայելք կարծելով զինքը. իսկ
անկէ ելած ատեն, աւա՜ղ, ոչ թէ արևելքի կայ-
սեր, ոչ թէ Մշոյ գեղի մը յետին Վարդանին շը-
նորհքն այլ չկար վրան, այլ կ'ամաչեմ ըսելու՝
թէ նուաստացեր էր քան զանբան. խռկած խան-
գրած տիկ մ'էր դարձեր, աւելի գինւով քաց-
խած քան կերակրով փքցած: Այսպէս լմնցաւ
ցորեկուան հանդէսն, երկննալով 'ի մէջ ջահե-
րու գիշերուան, որոյ մէկ հատիկ հարկաւոր վայ-

ելք պիտի ըլլար խոր և երկար քուն մը․ որու մէջ յիրաւի ընկաւ թաղուեցաւ Վարդան շատ խոր, թէ և ոչ շատ երկար։

Բայց ո՜վ մարդկային բնութիւն, այդպէս մեծապէս պատուեալ քու հաստողէդ յԱստուծոյ․ քու բարակ և հրեշտակամօտ ազնուութիւնդ՝ ի՛նչպէս կրնայ այսչափ թանձրանալ և կծպտատարւաց խոզի ու վարազի երևոյթ մ'առնուլ․ մանաւանդ թէ անոնց բարքն և ախորժակը՝ քան թէ կոշտ կերպարանքը։ — Ա՞յս էր քու երկայն ատեն երկնած երազդ, ո՛վ յանկարծաբաղդ կայսր Վարդան․ ա՞յս էր քու անդրածայրագոյն փառքդ և վայելքդ։ — Յառաջակեալ մարդիկ իրենց տառապանաց և օրական աշխատանաց ու տրտմութեանց՝ անոյշ դեղ մը մխիթարութիւն մը կու գտնեն գիշերուան քունը․ քեզի՝ այդ մէկ ցորեկուան վայելքդ ու մսխած գանձերդ՝ որ կրնար հազարաւոր ընտանիք երջանիկ ընել, քանի՜ ծանր ու տխուր պիտի ըլլայ․ — անոնք գոնէ այն ատեն տեսած սուտ երազներով պահ մը կու սփոփին, քու ստոյգ երազդ՝ քեզի որչափ անտանելի պիտի ըլլայ, երբ աղէկ մ'արթըննաս։․․ Արթընցի՛ր, ով վաճառաբաղդ Վարդան, ո՛վ կարճօրեայ կայսր․ վասն զի ահա քու վերջին խնճոյից տաճարիդ պատէն այլ բաղտասարեան ձեռք մը դուրս ելած՝ կու գրէ կայսրութեանդ, փափկութեանդ և ամենայն բարեացդ վերջ ու վախճան։ Կամ գոնէ, եթէ կրնաս, դարձեալ երազէ գլխուդ նոր գալիքը։ Մտիկ ըրէ պահ մը խղճիդ․ լսէ եկեղեցւոյ և ժողովրդեան մէջ ծածուկ փսփսուք մը, տհաճութիւն մը, գանգատ մը, սպառնալիք մը քեզի դէմ․ զգա՛ մեծամեծ իշխանաց դառնութիւնը և ոխը՝ իրենց և իրենց կանանց հասուցած անարգութեանդ համար․ տեսէ՛ այն պարկեշտ հաւատաւորաց սրտագոչ աղօթքէն՝ որ իրենց աստուածա-

նուէր կուսութեան և առանձնութեան ձմեռնե-րուդ վրէժը կը պահանջեն յերկնից։ Թ՛նդամ մէկ մը այն որոտմունքէն՝ որ Թրակիոյ վրայէն գոռա-լով՝ քեզի կու մօտենայ. հոն է Գէորգ Բորաք (գուցէ քեզի պէս տրւեցի մը), Վարազքակուրէ տեղ Օպսիկիոնի[1] կուսակալ եղողն, որ վրադ կու խաւրէ քու գահիճդ։ Եւ ահա այդ քու կենացդ և շատերու կենաց ամենէն մեծ և փափուկ օ-րուան հանդիսից մէջ՝ դողի կամ ցեցի պէս ծա-ծուկ կու մօտենայ քու երջանկութեան թելդ կրծելու կտրելու... արդէն պալատիդ չորս դին քննելով համարձակ մուտք գտաւ. վասն զի քու պահապաններդ այլ քեզի պէս գինով խելագա-րած՝ զքեզ թողեր՝ զինենք քնոյ կամ հեշտութե տուեր են... ահա հասաւ ինչուան քու ներքին սենեակներդ, քու ննջարանիդ, քու անկողնոյդ... Ո՛հ, հիմայ արթընցի՛ր ըսենք արդեօք, թէ քնա-ցի՛ր առանց բնաւ արթըննալու...։

Դեռ կու խռկար թանձր քնոյ և յօգնութեան մէջ աւաղելի կայսրն Վարդան. դեռ ինքն ներսէն ուրիշ երազ կու տեսնէր, դրսէն իր վրայ ուրիշ երազ կու տեսնուէր. և դեռ շատ ուշ սաստիկ ցնցումէ մը թօթուելով՝ բացաւ աչուըները... Ո՛վ ահաւոր վայրկեան, թէ և կարճ. այն մէկ ակնթարթի մէջ ո՛րչափ բաներ տեսաւ և իմացաւ. ի՛նչ նորանշան և կսկծալի երազ, մանաւանդ թէ 13 տարուան տաքուկ երազոց վերջ՝ ի՛նչ ցրտա-սարսուռ արթնութիւն։ Անկարելի անբացատրե-լի ափշութիւն, զարմանք, կիրք, վախ և այլափո-խութիւն. — մէկ վայրկենին մէջ՝ մէկ մը անցու-ցած օրը և քնոյն անկողինը յիշեց, մէկ մ'ալ տե-սաւ որ անկողնոյ տեղ՝ մեծ վերարկուի մը միջէն

1 Անուն կուսակալութեան՝ որոյ դաւառներն էին Փռիւգիա, Միւսիա, Բիւթինիա։

դուրս կ'ելնէ, (որով զինքը պիտի բերէր էր հոն Յուսիսս՝ Յորափոսի պաշտօնեայն.) — փոխանակ իր պալատան ջահերուն՝ այլանդակ լոյսեր կը շարժէին չորս դին. — փոխանակ ննջարանին՝ ընդարձակ ձիարձակարանը, ուր ինքն սկսեր էր այն օրուան մեծ հանդէսը. — փոխանակ իր սպասաւորաց՝ ձաւագէմ դահիճք. փոխանակ իր փափկութեան սպասուց՝ սոսկալի սուրեր։... Ի՞նչ, ո՞վ, ո՞ւր... ըսել չմնաց. երա՞ւ թէ սուտ, երա՞զ թէ արթնութիւն. ինչ նոր աշխարհ կ'երևի աչքերուս։... Եւ ահա նոյն իսկ վայրկենին սև և անբացատրելի վարագոյր մը՝ զամեն բան ծածկեց աչքերէն, եթէ դեռ կրնային աչք ըսուիլ անոնք՝ որ պահիկ մ'առաջ թանձրամած քնով գոցուած էին, հիմայ արեամբ և յաւիտենական մթութ̃ կղպեցան։... Երկու սայրասուր երկաթ՝ ջուխտակ կայծակներու պէս իջան զարկին, դուրս ցատքեցուցին բիբերը... Քանի մը կաթիլ չորցած արեան և երկու պժգալի վէրք լցին այն խարկած ու խաւարած փոսերը, որոնց երէկ առտուն բոլոր աշխարհիս մեծութիւնը և գեղեցկութիւնը քիչ կու գար. հիմայ անոնց ամեն զբօսանքէն և հեշտութիւններէն՝ հազիւ քանի մը դժուարածին արցունքի կաթիլ մնաց մխիթարանք։...

Այսպիսի ահեղ փոփոխութեան վրայ՝ կարծես թէ ինքնին դէպքն կամ պատմութիւնն այլ հիացած, լռեց ծածկեց, և ինչուան հիմայ չէ յայտնած այն վայրկենէն ետև մեր կուրացեալ կայսեր ինչ եղած ըլլալը. իրեն՝ ուրիշ կերպով, մեզի և բոլոր աշխարհիս ուրիշ կերպով խրատ և զարմանք թողլով այս նորանշան պատահարը, Փիլիկ Վարդանայ ստոյգ կարծած երազը, երազ կարծած ստուգութիւնը։

# ԻԶ

# Բ ՎԱՐԴԱՆ ԿԱՑՄԻ

## 19 Յուլիսի, 803

### Ա

Կոստանդնուպօլսի քիչ կամ շատ դիւրակեաց բնակչաց տեղափոխութեան կամ օդափոխութե՟ն սովորութիւնն՝ նշանաւոր բան մը, մանաւանդ թէ մաս մ'է իրենց կենաց. և այն քաղաքը Ճանաչողաց յայտնի է թէ ինչպէս աշնան միջին կամ ետքի հովերը փչելուն պէս՝ ցրուեալ բնակիչքն կը փութան կը ժողովին այն արևելից և արևմը-տից մեծ սրտաձև կենդրոնին մէջ. իսկ գարնան առաջին տաքուկ հովերուն՝ կ'ելլեն, իբրև թռու-լացեալ որոնք դուրս թափելով և բազմածիւղ երակաց մէջ մղուելով՝ գեղերը տուն տեղ բռնըռւե-լու և բնակելու: Վոսփորոսի երկու շրթանց վրայ եղած շէնքերն չբաւելով այնքան բազմութեան, կամ չյարմարելով ամենուն ախորժակին և պէտքին, շատերն այլ (մանաւանդ այս ետքի ատեններս) փոքրիկ նաւարկութեամբ մը կ'երթան Պրոպոնտոսի կապուտակ կողքէն (Մարմարայի) դուրս ցցուած զանազան տեսքով գեղեցիկ, անուշհոտ մանրիկ ու մեծկակ կղզեաց մէջ քանի մ'ամիս անցընելու, զբօսանաց ձայներով փախ-

ցընելու այն առանձնութիւնը՝ զոր գրեթէ հազար տարի եկեր ընտրեր էին հոն՝ շատ մեծամեծ և փոքր մարդիկ, այր և կանայք, ամուսինք և կուսանք, կայսերք և կայսրուհիք, բռնաւորք և բռնադատեալք։ Անոնց բազմաթիւ վանորէից և արգելանաց՝ (իրաւ հիմայ շատ քիչ՝ բայց) դուցէ դեռ բաւական նշխարք մնացեր են՝ յիշեցընելու հին աշխարհ հին քաղաքականութիւն մը, կամ տարբեր մտածութիւն և զգացմունք։ Յոյն կայսերաց ժամանակ գրեթէ այս կղզեաց ամեն դուր ու դար տեղուանքն այլ ծածկուած էին եկեղեցիներով և վանքերով, զոր կամ իրենց համար կամ իրենց ազօթողաց համար կու շինէին իշխանազունք. անոր համար ալ մինչև հիմայ Իշխանաց կամ Իշխանուհեաց կղզիք կ'ըսուին այս Մարմարայի արևելեան ափանց մօտ եղած տասնի չափ կղզեքն և կղզեակք, հանդերձ քանի մը ցամաք ժայռերով, որոց այլանդակ ձևերն, և նոյն իսկ մեծագոյն կղզեաց ապառաժներն, և ծովուն միջէն յանկարծօրէն իմն ցցուիլն՝ հին ատեն Քաղջաց կամ դիւաց բնակութեան յարմար կարծեցուցին զանոնք, անոր համար 'ի Նախնեաց Տէմոնիսեան կղզեք անուանէին. բայց քրիստոնէութիւնն հալածելով զդեւս և զքաջս՝ սրբազգնից բնակութիւն ըրաւ այն ծովակոծ անկոխ և անմատոյց ժայռերն այլ. ասկէ ետև համարձակեցան ոմանք յիշխանազանց՝ շինել հոն նաև իրենց առանձնական զբօսանաց կամ բնակութեան տեղեր. որք և այնչափ յարգի եղան՝ որչափ մեծ մայրաքաղաքին մօտ էին սահմանով, և հեռու անոր խառն 'ի խուռն աղմուկներէն և կիրքերէն։

Յայտ է տեղւոյն ծանօթից՝ որ այս կղզեաց մէջ (որոց չորսն միայն մեծկակ և բազմաբնակ էին) ամենէն մօտն 'ի ցամաք՝ Առաջին ըսուեցաւ 'ի Յունաց Πρώτα, որ և հիմայ այլ Πρώτη կ'ըսուի. իսկ

'ի Թուրքաց Գընալը կամ Գըզըլատա, իր գետնին
կարմրութեանը համար. և անկէ՝ բոլոր Իշխա֊
նաց կղզիներն ալ նոյն անուամբ կը կոչեն (Գըզըլ
ատալար). Քաղկեդոնէն (Գատըքէօյ) հազիւ չորս
հինգ մղոն հեռու ըլլալով՝ առաջին երևցողն է այն
փոքրիկ միջերկրեայ ծովուն ծփանաց վրայ՝ կըծ֊
կաձև ուռած և քառածայր տարածուած: Իր
հին շէնքերուն մէջ ամենէն առաջինն և նշանաւորն
էր մեծ վանք և արգելանք մը, շինուած 'ի սկիզբն
Թ դարու (801). ուր ընդ կամաւոր կրօնաւորաց՝
ակամայ կամաւ կու բնակէին և աքսորեալ իշխանք
և պաշտօնեայք կայսերաց, և երբեմն նոյն իսկ
կայսերք. բայց անկէ ալ քիչ առաջ կու յիշուի
ուրիշ վանք մը՝ զոր շիներ էր (Ը դարուն վերջե֊
րը) տէրութեան երևելի պաշտօնէից և զօրավա֊
րաց մէկն, և յանձներ էր աղօթասէր և հոգեսէր
անձանց. անոր քով իրեն համար ալ պահելով
պզտի երկիր մը, ուր իր ամենէն հանգիստ և զը֊
ւարճալի օրերը կ'անցընէր, գետինը մշակելով,
պարտէզ զարմանելով, երբ որ իր մեծամեծ պաշ֊
տօններն և պատերազմաց դադրելն պարապ ա֊
տեն թողուին. վասն զի կայսերութեան ասիա֊
կան Թեմից կամ նահանգաց մէկուն կողմնակալ
վերակացու էր. և ասքերը, անոնց ամենէն գըլ֊
ւորին, բուն Ակնէւէոյ (Անատոլիքոն) ըսուած նա֊
հանգին, որ կը բովանդակէր հինգ հին աշխարհ,
Լիկայոնիա (Ղոնիա), Փռիւգիա (Քէրմիան), Ի֊
սաւրիա, Պամփիւլիա, Պիսիդիա (Համիտ, Թէք֊
քէ). զինուորական կարգի մէջ ալ յառաջադի֊
մելով ճարտարութեամբ, քաջութեամբ և եր֊
կար արդեամբք՝ բոլոր արևելեան աշխարհաց ըս֊
պարապետ կամ միագլխապետ (մոնոստրադիգոս)
եղաւ, և կայսերութեան առաջին քաջ և անուա֊
նի զօրավար: Ասիկայ էր հայազգի իշխանն, (հա֊
ւանօրէն Մամիկոնէից ցեղէն) Վարդան պատրիկ՝
Թուրք կոչուած:

Այս կողման պատմիչները չեն խնայքներ պատմիչք, և այնչափ աւելի նշանաւոր է՝ որչափ որ դեռ Թուրքաց անունն հազիւ կը լսուէր յարևմուտս այն ատեն. Թերևս Արաբացւոց (կամ Խազրաց) հետ պատերազմի մ'առեն Թուրքի հետ կռուելով և յաղթելով այս անուանս առած ըլլայ: Նոյնպէս կը լսեն իր երկար ատեն նախանգաց կառավարութեան, և զօրավարութեան մէջ ըրած մեծամեծ գործքերը, որովք այնքան փառք, համբաւ և իշխանութիւն ժառանգեր էր, մինչև բոլոր Արևելից սպարապետ ըլլալ և խաղաղութեամբ պահել այն խիստ շատ անգամ խռոված աշխարհները. Թուի թէ ինքն էր այն Հայկական Թեմին (Արմենիակք, Արմենիաքոն) կառավարիչ Վարդանն՝[1] որ կը յիշուի յամին 772՝ ուրիշ Թեմակալ իշխանաց հետ Արաբացւոց յարձակման դէմ Խասուրիոյ մէջ (Թաշ-իլի). անկէ վերջը ընչուան 30 տարի ուրիշ յիշատակ չըլլար վրան, բայց 'ի մեծ և արժանաւոր վարուցը գովութենէ՝ որով իր իշխանակցաց մէջ երևելի եղաւ. մանաւանդ անանկ վարուց ապականութեան դարու մէջ, յորում նախ կայսերք անկրօնութեամբ և անկարգութեամբ հասարակաց գայթակղութիւն և իշխանաց համարձակութիւն կու տային 'ի չարիս: Վարդան՝ ոչ անոնց օրինակէն և ոչ իշխանութեան և յաղթութեանց մեծութենէն ուռեցաւ աւրուեցաւ. այլ արդարակորով, առատաձեռն, բարերար և բարեսէր բարքով՝ իր և սատիճանին պատիւը պահեց, և ամենուն սիրելի եղաւ, մանաւանդ զօրաց. որոց քաջութեան և հաւատարմութեան համեմատ առատ վարձք կու տար, առանց աչառութեան և ագահութեան. արդարութեամբն ամենուն պատկառելի, բարե-

[1] Լբ Պս ծԲ. 285:

պաշտօնութեամբն ալ փառահանալի անձ մ'եղած էր, և այնչափ աւելի յարգելի և սիրելի, որչափ զզուելի էին ժամանակակից կայսերքն իրենց պալատականօք և գործակալօք, մանաւանդ ամենէն ետքի կայսրն. որ պատճառ եղաւ Վարդանայ բաղդն և վիճակը փոփոխելու, և նոր պատմական տեսարան մը բանալու: Բայց այս բանս լաւ ճանչնալու համար՝ հարկաւոր է նախ Ը. դարու կայսերաց վրայ համառօտ տեսութիւն մը, սկսեալ մեր Վարդանայ համանուն կայսեր յաջորդէն:

Բ

Շատ ատեն չէ որ պատմեցի քեզի, Հայկակ, այդ երազատես Վարդան կայսեր վերջին աշխարհախրատ երազը և արթնութիւնն 'ի խաւարի. որուն ծածկուելէն վերջն՝ անմիջապէս երկրորդ օրը (Հոգեգալստեան՝) իր մտերիմն և տէրութեն դիւանապետն Արտեմիոս (որ գուցէ իրեն համազգի Հայ էր) կայսր ընտրեցաւ, և անունը յԱնաստաս փոխեց. և երկու և կէս տարի տիրելէն ետև՝ ծովային զօրքն Թէոդոս անուամբ աննշան մէկն ընտրեցին. Անաստաս ստիպեցաւ առանձնանալ և քահանայանալ. նոյնպէս տարիէ մ'ետև Թէոդոս ալ. վասն զի Կոնոն անուամբ Մարաշցի Հայ մը՝ կամ Իսաւրացի մը, որ զինուորութեան ատեն ինքզինքը Լեւոն անուաներ էր, Արմենիակաց թեմակալին՝ Արտաւազդայ՝ օգնութեամբ կայսր եղաւ 25 տարի (716-741). որուն յաջորդեց որդին Կոպրոնիմոս 35 տարի (741-775). ասոր ալ իր որդին Կոստանդին Խազիր (775-780). ասոր ալ որդին Կոստանդին Ե (Զ. Պորփիւրոժեն յամս 780-797). որք թէ և քանի մը ցանցառ լաւութիւն ցուցին, բայց պատկերամարտութեան աղանդով, ամբարշտութեամբ, սնապաշտութեք,

անգթութեամբ, հալածանօք և պէսպէս մոլորութեամբք՝ կայսերութեան և կրօնից նախատինք, և հպատակացն գարշելի և գանելի եղան. մինչև իրենց նախահօր Լևոն Իսաւրացւոյն մեռնելէն վերջը՝ Կոպրոնիմոսի բռնաւորաբար իշխել սկսած ատեն՝ զօրքն ապստամբեցան, և իր քեռայրը՝ վերոյիշեալ Հայկազն Արտաւազդը՝ կայսր ընտրեցին. որ տարի մը կայսերութեան ատեն՝ պատկերաց պաշտօնը նորոգեց և կայսերութեան ալ մեծ յոյս կու տար. բայց Կոպրոնիմեայ կուսակիցներէն յաղթուելով՝ դատապարտեցաւ 'ի բանտ և 'ի կուրութիւն, իր երկու կորիճ որդիքներովը: Կոպրոնիմոսի համանուն թոռն և վերջին Իսաւրացին (Կոստանդին Ե) ինն տարուան էր հօրը մեռած ատեն. անոր համար մայրն Եռինէ՝ եղաւ խնամակալ, և քիչ ատենէն բռնակալ. իրաւ եկեղեցւոյ հալածանքը դադրեցուց և պատկերները կանգնեց, բայց իր գահն ալ գոնէ իր որդւոյն գահէն աւելի բարձրացընել ջանալով՝ մայրութեան պատիւն և անունն ալ պղծեց. երկու անգամ իշխանութիւնը յափշտակելով և զորդին իբրև 'ի բանտի արգելական պահելով, ու խորամանկութեամբ զօրքերէն հաւատարմութեան երդումն պահանջելով. միայն Հայկական գունդն մերժեց կայսրուհւոյն անարժան խնդիրը և դէմ կեցաւ: Եռինէ անոնց վրայ խաւրեց իր գիշերապահ գնդին հայկազն զօրավարը՝ Մուշեղ Ալէքս, որ իր համազգեաց կողմն անցաւ և գլուխ կեցաւ. զայն տեսնելով մէկալ գունդերն ալ՝ միացան Հայոց հետ. Եռինէ սարսափած արձակեց իր կայսրորդին յարգելանէն, ուր ինքն արգելուեցաւ յորդւոյն. որ և իրեն հաւատարիմ եղող Մուշեղը՝ Հայոց գնդին զօրավար դրաւ. բայց մայրն (որ ամենայն կանացի նրբութեան, խորագիտութե̃ և փառասիրութեան օրինակ կրնայ ըլլալ, մինչև

'ի յետին անգթութիւն), նորէն անկնութեան հասաւ. որդւոյն սիրոյն ալ շահելով՝ ուրիշներուն այլ, բաց 'ի Հայոց գնդէն, որով իրարու թշնամի եղան։ Հայք իրենց թեմը քաշուելով յԱրմենիակք, որ է մասն Կապպադովկիոյ և Պոնտոսի) հոն եղող թեմակալ Թէոդորոսը մերժեցին և կամակորութեամբ զԱլեքս Մուշեղ կ'ուզէին. կայսրն թէպէտև երախտապարտ էր անոր, և արդէն Հայոց զօրավար դրեր էր, բայց վախնալով անոնց պահանջմունքէն, և մանաւանդ սուտ համբաւէն՝ (զոր գուցէ Եռինէ հնարել կամ հրաչակել տուեր էր), թէ զանիկայ կայսր դնել կ'ուզեն, բռնեց բանտեց զՄուշեղ, մազերը կտրել տուաւ (իբրև կրօնաւորի), յետոյ և կուրացուց անգթօրէն։ Այս բանիս վրայ իրաւամբ զզուեալ և զայրացեալ Հայք՝ ապստամբեցան. կայսրն երկու զօրավար խաւրեց վրանին բաւական գնդով. Հայք՝ զօրքերը ջարդեցին, զօրավարները բռնեցին կուրացուցին 'ի վրէժ աչաց Մուշեղայ. պէտք եղաւ որ Կոստանդին բոլոր կայսերութեան զօրքերը ժողովէ և խաւրէ Հայոց վրայ. որոց արիւնոտ աչքն՝ որ այնքան մեծազօր բանակը բանի տեղ չէին դներ, դժբաղդաբար ոսկւոյ փայլմունքէն շլացան. ոչ ամենքն, այլ մէկ մասն, որք և մատնութեամբ ետ կեցան իրենց ընկերներէն. ասոնք քիչուոր մնալով՝ պաշարուեցան կայսերական զօրաց բազմութենէն, և յետ երկար դիմակալութեան և երկու կողմէն կոտորածի, բռնուեցան ուժաթափ Հայք, գլխաւորնին գլխատուեցան, ոմանք աքսորեցան, մէջերնէն ամենէն յամառ և անհաշտները հազար հոգի կապուած բերուեցան 'ի Կ. Պօլիս, ուր մեծ կրկէսին մէջ նախատուելով՝ ճակատնին խարան զարկին՝ կրակէ գրով գրելով Հայ ապոփանք [1], և աքսորեցին 'ի Սիկիլիա

1. Ἀρμενιακὸς ἐπ'βουλος.

և ուրիշ կղզիներ․ իսկ իրենց մատնիչ ընկերներն ալ փոխադարձաբար յունական ապահովութեան մատնուելով՝ արժանապէս անվարձք մնացին․ ապա սրտմտած անցան Արաբացւոց կողմը, և սկըսան վազել աւրել կայսեր երկիրները։ — Կոստանդին ալ իր թեթևամտութեան և ապերախտութեան պատիժը գտաւ, թէ և շատ գժնդակ կերպով․ Մուշեղայ կուրացման հինգերորդ տարեդարձին օրը (19 օգոստոսի, 797) քարասիրտեալ մայրն Եռինէ՝ որդւոյն քնացած ատենը դահիճներ խաւրելով՝ աչուըները խարկել խաւարել տուաւ․ որոյ ցաւէն աւելի եղաւ իրեն նեղսրտութիւնն, անկէց ալ աւելի՝ մօրը նախատինքն, որ իր ամէն լաւ գործերն ալ ծածկեց, և իշխանասիրութիւնը բռնաւորութեան դարձընելով՝ ա՛լ աւելի ատելի ըրաւ զինքը․ մինչև հինգ տարի հազիւ կրնալով համբերել՝ արքունեաց պաշտօնակալ եօթն ներքինիք միաբանեցան ընդդէմ իրենց թագուհւոյն, և ձիւաղի մը ձեռքէ ազատիլ ուզելով՝ դրին կայսր մը, որ և ոչ Եռինեայ լաւ յատկութիւններէն մէկն ունէր։

Անիկայ էր Պիսիդիացի մը, ըստ ոմանց արաբացի ծագմամբ, Նիկեփոր անուամբ․ ցած, կծծի, տխմար մարդ մը․ բայց պատկերամարտ չըլլալուն համար՝ ոմանց գովելի երևցաւ․ սակայն քիչ ատենէն պալատականք և զօրականք իմացան իր արժէքը, երբ սկսաւ անոնց թոշակնին պակսեցընել, ստացուածքնին կերպ կերպ հնարքով յափըշտակել, և մնացածն ալ կողոպտելու նոր հընարքներ մտածել․ մոլութեանցը վրայ գոնէ առաջին կայսերաց ազնուական տոհմին շուք ու շնորհքն ալ չունէր․ անոր համար շուտով զզուելի եղաւ․ մինչև նոյն իսկ զինքն ընտրողքն ալ զըղջացան, և անոնցմէ մէկն կը պատրաստուէր դաւաճանելու, բայց իմացուելով՝ թունով սպա-

նուեցաւ: Տարի մը չանցած կայսերութեանը վը-
րայ՝ Քաղկեդոնի դրան քով ձիավարելու ատեն՝
ընկաւ և ոտքը կոտրեցաւ. Ժողովուրդն կը փա-
փաքէր որ մէջքը կոտրած ըլլայ, և գրեթէ փո-
փաքն իրաւ կարծուելով՝ ինչուան գրոխ գաւառ-
ները համբաւ թռաւ թէ Նիկեփոր մեռեր է.
սկսան ուրախութեամբ նոր և արժանաւոր կայսր
մը ընտրուել. և թէպէտ քիչ ատենէն Նիկեփորի
ողջութեան և առողջութեան լուրն իրենց կար-
ծիքը ցրուեց, բայց չկրցաւ փափաքնին փարա-
տել. մանաւանդ զօրաց, որ իրենց թոշակէն զըր-
կուելով՝ աւելի գրգռուած էին: Ասոնց մէջ այլ
աւելի զայրացողքն էին արեւելքի գունդերն. թե-
րեւս ոչ այնչափ իրենց եղած զրկմանն համար՝ որ-
քան կայսերութեան պատուոյն անարգանացը.
մանաւանդ որ իրենց մօտ, ներկայ և վերակացու
ունէին անանկ իշխան և վարիչ մը՝ որուն արթ-
նութիւնն, արիութիւնն և առատասրտութիւնն՝
մէկ կողմէն յանդիմանութիւն էր Նիկեփորի բա-
րուց, մէկալ կողմէն հրապոյր մը՝ փոխանակ ա-
նոր՝ կայսր ունենալու զսա ինքն, զՎարդան:

Գ

Կամաց կամաց հրապոյրն 'ի խորհուրդ դար-
ձաւ, խորհուրդն 'ի յորդոր, 'ի փորձ և 'ի գործ,
որուն միայն ինքն Վարդան կամակից և գործա-
կից չէր. որքան որ իր արդիւնքն և զօրաց սէրն
իրմէ աւելի արժանաւոր մը չէր գտներ 'ի կայս-
րութիւն, յոր արդէն իսկ թերեւս հրաւիրած կ'ըլ-
լային զՆիկեփոր ընտրողքն՝ եթէ իրենց մօտ ըլ-
լար Վարդան, կամ շատ չվախնային անոր արդա-
րութենէն. և որչափ ալ այս առաքինի զօրավարս
կ'ամըչնար Իսաւրացի տոհմէն ելեղ այսպիսի ա-
նարգ Պիսիդիացի մը արևելքի կայսր և իրեն հրա-

մանատար ունենալու, իր վեհանձնութեամբ և ազնուութեամբ ոչ միայն հեռու էր այնպիսի փառասէր մտածութենէ, այլ և 'ի հակառակելէ անոր հետ, զոր ազգն՝ թէ և անգիտութեամբ՝ ընդուներ էր, և սրբակրօն պատրիարքը մ'այլ (Տարասիոս) թէ և վախող օծեր էր 'ի կայսր: Զարհուրեցաւ արիասիրտ զօրավարն՝ երբ իր ինչուան այն ատեն հնազանդ զօրաց հրաւէրք և յորդորն լսեց 'ի կայսրութիւն, և դէմ կեցաւ. Թէպէտ չկրցաւ օտարաց յաղթողն՝ իր զօրաց ալ յաղթել: Միայն հոս զարմանալի և իրեն արժանաւոր գըտուեցաւ Հայկական գունդն. երբ ուրիշ ամեն թեմից գունդքն միաբան և միահաւան կու կանչէին կու ստիպէին զնա 'ի կայսրութն, Հայք՝ որ դեռ տասն տարի առաջ իրենց հաւատարմութեն համար առ Կոստանդին, անոր մօրը դառն ու պըժգալի վրէժխնդրութեան զոհ եղած էին՝ Ճակատուն վրայ այնպիսի նախատանաց դրոշմ մ'առնըլով, հոս փոխանակ աւելի արդար վրէժխնդրութեան՝ իրենց առաքինի համազգային և ուրիշներէն ընտրած կայսեր՝ չուզեցին կողմնակից ըլլալ, այլ անկէ առաջ օրինաւորապէս Ճանչցուած կայսեր հաւատարիմ մնալ: Այսպիսի թել թել մանուած պատահարներու մէջ մերայոց այս գործը՝ յիրաւի շատ զարմանաց և շատ մեծասրտութեան գործ մ'է. միանգամայն և մեծ խրատ և օրինակ մ'էր Վարդանայ՝ զգոյշ և հաստատ կենալու իր մտաց վրայ:

Արդարև շատ հեռի էր այս Թուրք Վարդանս այն Փիլիպպիկ Վարդանէն, որուն կերպարանաց Ճոխութիւնն և լեզուին Ճոռոմութիւնն՝ զինքը հանեցին 'ի գահ կայսերութեան. իսկ զսա զօրքերէն աւելի՝ անձնական արժէքն կը հրաւիրէին հոն, բայց առաքինութիւնն չէր համարձակեր: Ասոր վրայ կ'երևի մեր հին և մեծ, կորիճ ու կար-

մեր սուրբ Վարդանայ շնորհաց նշոյլն, և անոր բարակ խիղճն, գուցէ և խղճահարութիւնն, այլօրինակ կերպով մ'այլ՝ նաև իր սրտառուչ և եղերական բաղդն։ Կրակապաշտ Պարսիկ մոգերուն և Լուսաւորչի հաւատքը պահող ու պաշտպանող հայրապետաց ձայներուն մէջ գտուղին նման՝ ասիկայ այլ ընկաւ ընդ մէջ լռութեան Հայոց գնդին և յորդորանաց ու սպառնալեաց Յունաց գունդերուն, որք ինչուան սրակոտոր անխնայ առժամայն մահ կը կանչէին, եթէ չընդունէր ըզթագն կայսերական։ Վարդան յօգնեցաւ, դեգերեցաւ, տկարացաւ. գուցէ և վայրկեան մը իր մտածութեանց որոշման վերջի առաւօտն չծագած՝ Փիլոմելիոնի սոխակաց ամառնային անուշակ գիշերախօսութեանց հետ՝ ինքնակալութեան և աշխարհի հրամանատարութեան հրապուրական ծածուկ ձայն մ'այլ ազդեց սրտին։

Յուլիս ամսոյն առջի կէսն էր այն ատեն, և ինքն այդ յիշեալ (Փիլոմելիոն) քաղաքին մէջն էր, որ իր ընդարձակ թեմին չորս մեծ նահանգաց գրեթէ միջասահման է, Պիսիդիոյ, Իսաւրիոյ, Լիկայոնիոյ և Փռիւգիոյ, և այս ետքինիս սեփհական. իսկ հիմայ Համիտ գաւառի կամ Գարամանի նահանգին Աքշէհիր քաղաքն սեպուած է. որոյ քաղցրաձայն սոխակքն անուանի են, և կարծուի թէ անկէց գրուած է քաղքին հին յունական անունն, որ կը նշանակէ այս թռչնոց երաժշտապետը։

Վարդան դեռ տարակուսանաց պատերազմի մէջ էր. թէ և ակամայ կամ կիսակամ յանձն առաւ զօրաց բռնադատութիւնը, և անոնց ընծայած կայսերական պսակը. սակայն կը խորհէր՝ երբ կը մտածէր որ անով Կ.Պօլսի գահին վրայ փայլելու համար՝ պէտք էր հանել պատեանէն իր քաջայաղթ՝ այլ և խնայող սուրն. մինչև այն ա-

տէնը հայրենեաց, տերանց և իրաւանց դէմ եկող Թշնամեաց վրայ ցուցեր էր անոր փայլը և իջուցեր հարուածները․ Ինչպէս հիմայ՝ որ արդէն հասակին և կշտացած փառքին՝ հանգիստ կը վայլէր, Ինչպէս այն ահագին և վրէժխնդիր սուրը՝ իրեն փառք և պատիւ բերելու գործիք մ՚ընէ: Իրաւ կրնար ինքն ոչ միայն քան զՆիկեփոր՝ այլ և քան զշատս 'ի Նախորդաց և 'ի յաջորդաց նորա՝ արժանաւոր և օգտակար կայսր ըլլալ, գուցէ և պէտք էր քիչ տարի առաջ զինքն ընտրել, բայց Ինչպէս կրնար համարձակիլ ինքն սաանկ բանի համար՝ անպարտ արիւն մը Թափել և քաղաքական պատերազմի պատճառ ըլլալ: Հոս բանակներէ անվախ սիրտն՝ ինքն իր սուրէն սկսաւ դողալ․ և առ ժամ մը իր բոլոր գունդերուն՝ Վարդան կայսէր Երկա՛ր կեա՛նք կանչելն՝ բաւական չեղաւ խղճին ձայնը մարելու․ ուզեց գոնէ աւելի վստահանալի և վկայեալ խղճի մ՚ալ խորհուրդ հարցընել:

Այն կողմերը սրբութեամբ և իմաստութեամբ համբաւեալ ճգնաւոր մը կար, որ և հոգետեսութեան շնորհք ունէր, ըստ պատմչաց, գոնէ ըստ հաւատոց այն ատենուան Յունաց, որ այս հաղուատուր շնորհքը՝ շատերու կ՚ընծայեն․ և կ՚ըսեն Թէ երբ Վարդան եկաւ իրեն խորհուրդ հարցընելու՝ ճգնաւորն յայտ և համարձակ պատմեց իրեն գլխուն գալիքը․ և ոչ միայն իրեն՝ այլ և իրեն հաւատարիմ ընկերացը․ ըսաւ Թէ իրեն զինակիրն Լևոն՝ (Արծրունին) պիտի ըլլայ կայսր․ նոյնպէս միւս զինակիր կամ Թիկնապահն այլ՝ Փռիւգացի Թոթով Միքայէլն․ իսկ իր մեկայլ զօրավարն Թովմաս՝ նոյնպէս պիտի փորձէ, բայց պիտի չյաջողի կայսրութեան: Այս ամենն այլ ատենին կատարուեցաւ ստուգապէս, ինքն եԹէ ըսած էր և եԹէ չըսած․ բայց բանն այս է՝ որ

Վարդանայ վրայ ըրած մարգարէութիւնն՝ յաջող չէր։ Հայկազն անուամբ հռչակուելու կայսրն ոչ ինքն էր, ոչ իրմէ 90 տարի առաջ կայսերացեալ Փիլիկն Վարդան, և ոչ այն Վարդն՝ որ Եռինեայ որդւոյն Թագաւորած տարին (780) ուզեց Թագը կորզել, և չյաջողելով բռնուեցաւ, ծեծուեցաւ, հալածուեցաւ. այլ անոր որդին վերոյիշեալ Լևոնն՝ զինակիրն Վարդանայ։ — Թերևս այս անակնկալ նախատեսութիւնք աւելի խռովեցին շփոթեցին արդէն տագնապեալ սիրտը. և այն որ երբ միայնակ ըլլալով փառաց կեղակարծ հանդիսարանին մէջ՝ կու յուսար և կու յուսացընէր ինքն իրեն յաղթելու, հիմայ իրմէ նըւաստից և իրեն սպասաւորաց չկարծուած կայսերութեան հասնիլը և իր կարծուածին անյաջողութիւնը լսելով, կարծես թէ սրդողեցաւ, և իրեն մեծ նախատինք սեպեց. ուզեց հոս իր բուն կամքը խորտակել կարողութեան ուժովը։ Հոս իր խղճին ալ քաղաքականութեան ալ ուրացութիւն ըրաւ. և որ առաջ զմարդիկ և զբանակս տկար կու սեպէր զինքը համոզելու, և չէր ուզեր կայսր ըլլալ, հիմայ կարծես թէ ուզեց Աստուծոյ ալ յաղթել կայսր ըլլալ կարենալով։ — Բայց և ոչ իր խիղճը կրցաւ նուաճել երկար ատեն. և այս ինքն իր մէջ ըրած կռիւն և կամ վերջին յաղթութիւնն՝ իրեն վայելուչ և փառաւոր յաղթանակ եղաւ։

## Դ

Յուլիսի 19 էր, յամին 803, երբ անուանեցաւ ինքն Կայսր, որ և Բ Վարդան պիտի ըսուէր, եթէ այն վայրկենական ուրացութեանը վրայ ուզէր յամառիլ։ Ի մեծ խնդութիւն զօրացը՝ բա-

նակը շարժեց, երագ երագ դիմեց շիտակ դէպ 'ի մայրաքաղաքն կայսերական. հասաւ նստաւ անոր դիմաց Խրիւսոպօլեայ (Իւսկիւտար) պարըսպաց տակ. ութ օր հոն կեցաւ առանց զարնելու առնելու մտնելու այդ Վոսփորի ասիական ափանց առաջին քաղաքը. կու սպասէր և դիտէր որ դռները բանան և զինքը հրաւիրեն. կ'ուզէր փորձել Թէ զօրացը պէս բոլոր քաղաքացիք ալ կ'ընդունէի՞ն իր կայսրութիւնը, զոր՝ միտքը դրած էր առանց արեան և վնասու ստանալ, Թէ որ այնպէս յաջողէր բաղդն, որ անյուսալի էր: Կու զարմանային և զայրանային զօրքն՝ Վարդանայ դանդաղութեանը վրայ, եւս առաւել իր հաւատարիմքն, սպայքն և անձնապահքն, մանաւանդ գլխաւորքն Լեոնն և Միքայէլն. որք լաւ իմացան Թէ Վարդան առանց զարնելու որս ընել կ'ուզէ, և իր սովորական բարեսրտութեամբը ձեռք ձգել այնպիսի բան մը՝ որ անկարելի էր առանց բռնութեան և արեան. և Թէ այդպէս ուշանալն իրենց բաղդին և կենաց մեծ վտանգ է: Ոչ զՎարդան կրցան համոզել և ոչ իրենք համոզուեցան այնպիսի որոգայԹի մէջ մնալու. և գուցէ անոր տեղ՝ իրենց ապագայ կայսերութիւնը ապահովելու համար՝ Թողուցին զանիկայ, և Վոսփորոն զիրենք բաժնելով՝ ձգեց 'ի կողմն Նիկեփորի. որ իբրև աւետաւոր հրեշտակներ ընդունեցաւ զանոնք, և վախով կորացեալ գլուխը կանգնեց. երկուքն ալ մեծամեծ պաշտօն և իշխանութիւն տալէն զատ՝ մէկմէկ ալ Թագաւորավայել պալատ և երկիրներ տուաւ. և սկսաւ զօրք ժողվել Վարդանայ դէմ ելնելու: — Իսկ ասիկայ՝ որ եԹէ ուզէր գործել՝ ինչուան այն ատեն գուցէ գործն ալ վճարած կ'ըլլար, երբ տեսաւ որ փոխանակ մայրաքաղաքէն իրեն պատգամաւոր և հրաւիրակ գալու՝ զէնքի ձայներ կը լսուին, վերուց բանակը

'ի Խրիւսոպօլսոյ և տարաւ Պրուսայի մօտ Ոլիւմպոս լերան ոտքը գադրեցուց [1]:

Զօրքն գուցէ կարծէին թէ Վարդան նոր պատերազմական խաբէութեան հնարք մը կը մտածէ, բայց անհանգիստ կու սպասէին զարնուելու կայսերական զօրաց հետ, դեռ վստահ ըլլալով յաղթութեան՝ իրենց քաջ առաջնորդին վրայ: Իսկ նա իր սրտին մէջ սաստիկ և մեծամեծ պատերազմներ ունէր. ամիս մ'ատեն բաւականէն աւելի եղաւ իր տաքութիւնն իջեցընելու և նորէն առջի խիղճը բանեցընելու: Պատերազմ, յաղթութիւն, կայսրութիւն, շատ պզտիկ և չնչին կ'երևէին՝ կենաց վերջին ատենին և հանդերձեալ դատաստանաց և Աստուծոյ քննութեանց ու հատուցմանց առջև. որոց յիշատակաւ զարհուրած՝ կու մտածէր գոնէ իր խիղճն ու հոգին անվնաս ազատել այն վտանգաւոր վիճակէն՝ ուր կամայ ակամայ քշուեր եկեր էր. ամենէն դժարն էր զինքը քշող և սիրողները հաւանեցընել, այսինքն զօրքերը. որոնք եթէ իմանային միտքը՝ ոչ միայն գուցէ կատղած զանիկայ կտոր կտոր կ'ընէին, այլ և 'իրենք Նիկեփորի կատաղութեան զոհ կ'ըլլային. և ահա այս ետքինս էր Վարդանայ տագնապն. երկու դիէն սուր և արիւն կու տեսնէր, երկու կողմէ կու ստիպուէր մեծ գործ մեծ որոշմունք մ'ընելու:

Ահա հոս մեր Վարդանայ դիմաց այլ ձգուած էր այն Կեսարու բաղդավճիռ Ռուբիկոն գետոյ կամուրջն. «Դեռ կրնանք յետ դառնալ, բայց » մէկ մ'որ դա կամրջիկն անցնինք, այլ անկէ ետև » ինչուան վերջը զէնքով պէտք է առաջ երթալ»..: Կեցաւ, վերջի մտածութիւնն ըրաւ, նետեց իր նարտին քուէն, և կամուրջը... չանցաւ: Եթէ

1 Մալագինա ըսուած քաղաքի մը քով:

կարծութեամբ չէր պակաս քան զԿեսար՝ խոհեմութեամբն շատ աւելի եղաւ հոս. չփաթթեց իր մտաց աչքը և չեղաւ անոր պէս զահավէժ 'ի վիհս պատահարաց և վտանգաց [1], այլ իր առաջին մեծոգիութեամբ և իմաստութեամբն ու քրիստոնէական արիութեամբ՝ որ զյանդգնութիւնն այլ կը նուաճէ, և որ կրնար Կեսարու մ'ալ մեծարել տալ զՊոմպէոս, քանի մ'օր զինուորները յուսացընելով բարի վախճանի մը, ծածուկ մարդ խաւրեց առ Նիկեփոր, և խոստացաւ ազատել զնա ամեն վախէ և վտանգէ, միայն թէ ինքն ալ իրեն և իր բանակին ներումն տայ և անյիշաչար ըլլայ։

Այս պատգամաւորութիւնս՝ Նիկեփորի համար իր ամենէն վախնալու անձին ձեռքէն երկրորդ անգամ թագ ընդունիլ և կենաց ու կայսրութեան մէջ հաստատուիլ էր. անբացատրելի եղաւ զարմանքն և ուրախութիւնն։ Ապշածն՝ չէր կրնար հասկընալ՝ թէ այնպիսի հակառակորդ մը կրնա՞ր այդքան առաքինութիւն ունենալ։ Չէր գիտէր ինչ կերպով իր հաւանութիւնը, խոստմունքն և երդմունքը յայտնէ. և երանի թէ այնչափ սաստիկ յայտնութեան ձեռք չզարնէր, որ յետոյ երդմնազանցութեամբն վրան աւելի նախատինք և մեղք չբերէր։ Մէկէն հրովարտակ գրել տուաւ խոստմանց և ներմանց. և բաւական չսեպելով իր ձեռնագիրն և կնիքը, Տարասիոս պատրիարքին և ամենայն պատրկաց ալ ստորագրել տուաւ. դեռ այնչափն ալ բաւական չսեպեց վատասիրտն, այլ և իր վզէն կախած կենաց փայտին նշխարն ալ հանեց և խաւրեց Վարդանայ, իբրև անտարակուսելի և անդրժելի գրաւական, վկայ և ընծայ. որուն՝ թերևս միայն սա-

1 Ինչպէս կ'ըսէ Պլուտարքոս Կեսարու համար։

տանայ կարենար չհաւանալ. բայց պատմութիւն ցըցուց որ հոս Նիկեփոր այլ սատանայի հետ միահաւան է եղեր :

Վարդան իրմէ աւելի իր զօրաց կեանքն ապահովցընելուն վրայ գոհանալով, անոնցմէ զատուելուն հնարքը մտածեց. և մինչդեռ անոնք վաղուընէ վաղը կու յուսային Թշնամեաց վրայ վազելու, և վերջապէս իրենց տէրը տանելու հանելու 'ի գահ կայսերաց, նա իրենցմէ աւելի արթուն և անքուն կու սպասէր կու դիտէր ժամն ու վայրկեանը. իր 50 օրուան անուանեալ կայսերութիւնն՝ իրեն 50 տարւոյ ծանրութիւն տուած էր :

## Ե

Սեպտեմբերի 8ին Ս. Աստուածածնի ծննդեան տօնին գիշերն՝ իր բանակին շշնկոցը լսեր էր, քունը հանգչեցուցեր էր զզօրս և զզէնս. գիշերապահք իրենց վրանին դիմաց հանդարտ և անկասկած կեցեր էին. ասդին անդին վառած և պլպըլած ճրագք և կրակն՝ չէին կրնար բաւականապէս փարատել մթութիւնը, որուն մէջ հազիւ կրնար նշմարուիլ վիթխարի և դիւցահասակ լեառն Ողիմպոս՝ բանակէն մեծ վրանի մը պէս գիշերուան միջէն դէպ յերկինք քաշուած : —Վարդան՝ մէկ մը աչքն ասոր տալով, մէկ մը դէպ 'ի Մարմարայի ծովեզերքը տեսնուած լոյսերուն, և յետոյ դարձընելով իր բանակին վրայ՝ որ յուսոյ և քնոյ մէջ Թաթխուած դադրեր էր, պահ մը կեցաւ իր վրանին դռնէն դուրս, ուսկից հեռացուցեր էր պահապանները և միայն իրեն հաւատարիմ մնացող Թովմաս Թիկնապահին իմաց տուեր էր : Մտածեց իր և իրմով՝ մարդկային սրտի և կենաց բաղդն ու պատահարքը. մտածեց քանի մը ժամուան մէջ բազմութեան մարդկան

և բոլոր կայսերութեան մը կարելի փոփոխութիւնը․ մտածեց իր ապագայ կեանքը և Թողլու յիշատակը․ մէկ մ'այլ իր այնքան տարի վտանգաց և փառաց տարած զօրաց գունդերուն վրայ նայեցաւ, որոցմէ ասանկ անակնկալ և անպատրաստ կերպով մը պիտի զատուէր, և այլ պիտի չլսէր պատերազմի սրտաթունդ թմբուկն և ոտնատրոփ երիվարաց փռնչիւնն․ այլ ոչ յաղթութեանց նուագք և սաղաւարտից դալար պսակք․ այլ ոչ աւարներու և գերեաց բաժին... «Մնաք բարով, մնաք բարով․ Աստուած ձեզի օգնական և պահապան», ըսաւ, հառաչեց, հեռացաւ։... Իբրև գիշերախառն մենամարտութեան ելած՝ նախ յուշիկ մնջիկ սկսաւ ոտնփոխել դէպ 'ի հիւսիս, դէպ յեզերս Մարմարայի, միայն զԹոմմաս Թողլով ետևէն զինակիր գալու․ յետոյ հոգիւ բանակին պատնիշէն անցած օտար ճամբով՝ սկսաւ հրակայաքայլ յառաջել, փութալ հեռանալ անոնցմէ՝ որ միայն իրմէ հեռանալ չէին ուզեր․ և քսանի չափ մղոններ կարճ կարճ կտրելով հասաւ Մուտանիոյ ծոցոյն ծայրը Կեմլէյիկ քաղաքաւանը, որ այն ատեն Կիոս կոչուէր, ուսկից և ծովածոցին այլ Կիանեան խորշ, կամ Աստակեան ծոց։

Կիոսի քով Կատապոլիոն անուամբ գիւղաւան մը կար, և անոր մէջ Հերակլի անուամբ վանք մը․ Վարդան իր բանակը Թողլով՝ շիտակ այս վանքս իջաւ, վանահայրը կանչեց․ սա անոր դիւցազնեայ կերպարանքէն և սպառազինութենէն սարսափած կու կասկածէր․ բայց ա՛լ աւելի ափշեցաւ և տարակուսեցաւ երբ զօրավարն խնդրեց որ ընդունի զինքն իբրև կրօնաւոր, և շուտ մը ձևը փոխէ․ չկրցաւ վանահայրն ոչ մէկ կերպով հաւատալ և հաւանիլ։ Ուշանալ չէր ըլլար․ Վարդան՝ որ դեռ զէնքերը չէր Թողած, զինուորական և կրօնական քաջասրտութիւնը մէկ տեղ բանեցնե-

լով՝ քաշեց ուրիշներու գլխուն վախ տուող սուրը, և թերևս անոնց վրայ իջեցընելէն աւելի մեծ կորնչութեամբ՝ իր գլխուն վրայ հանեց, ինքն իրեն կորեց իր գիսակները, և իբր երախայրիք նոր և սրբազան կենաց՝ ընծայեց Աստուծոյ. ապա զէնքերը զրահներն ալ թափելով և իշխանական զգեստը թողլով՝ հագաւ թանձր պարեգօտ մը. և ամենայն քաղաքական և զինուորական զարդերէն և նշաններէն թեթևնալով՝ թռաւ Կեմէլիկի նաւահանգիստը, ուր արդէն հասած էր զինքն ընդունելու նաւն 'ի Նիկեփորէ ղրկուած. ցամաքեց մէջը, հրաման տուաւ որ շուտ շուտ թիավարեն, պատեն Պեսիդոնի հրուանդանը (Պօզպուռուն), և թողլով Նիկոմիդիոյ ծովածոցը՝ ուղղէն դէպ Իշխանաց կղզիները. մինչև 'ի հեռագոյնն, մինչև 'ի Բրոգա (Գընալը), իրեն հին և ծանօթ առանձնութեան զբօսարանն՝ Բրոգա, իր շինած վանատեղը և տնկած պարտէզը. ուր և ելաւ շատ աւելի ուրախ՝ քան եթէ Ոսկեղջիւրը (Սէրայպուռնու) կոխած ըլլար. «Այս է հանգիստ իմ», ըսելով:

Իր դաստակերտին բնակիչ վանականք և տեղապահք չէին կրնար հաւատալ տեսածնուն և լսածնուն, թէ իրենց խնամակալն, այն մեծ թեմակալն և սպարապետն Արևելից՝ այդ իրենցմէ խեղճ և գծուծ քուրջերով ծածկուած կրօնաւորն է. բայց նա լաւ իմացուց որ եթէ ձեռն և արուեստը փոխեր էր, և հիմայ անունն ալ կու փոխէ, փոխանակ Վարդանայ՝ Սաբա անուանելով զինքը, հոգին նոյն է. առաջ կարծր զինուց և զրահից տակ կակուղ քրիստոնեայ սիրտ մ'ունէր, հիմայ մաշկի և մազեղէնի տակ կորիճ նահատակի և ճգնաւորի սիրտ մը. առաջ զօրավարաց օրինակ էր քաջութեամբ և խելքով, հիմայ նոյն իսկ հին վանականաց և միանձանց, խստակրօն, զուարթ

և աշխատասէր վարքով. և յիրաւի, որուան կէսը յաղօթս և 'ի հոգևոր մտածութիւնս կ'անցընէր, կէսն այլ գետին բանելու և իր պարտէզը գործանելու: Փորձով ալ իմացաւ շուտով որ այսպէսի կեանք իրեն համար կայսերութենէն քաղցր և ցանկալի է, և եթէ աղաչանքով այլ նորէն իրեն տային տասն թագ՝ չէր ուզեր իր Բրոգայի առանձնական և մենական կենաց հետ փոխել. սուրէն և մականէն շատ աւելի թեթև և դիւրաշարժ էին իր բահն ու բրիչը. միով բանիւ խիստ շատ աւելի երջանիկ էր՝ քան իր հակառակորդն Նիկեփոր:

## Զ

Ասոր ազատութիւնն նորէն արթընցաւ՝ երբ ապահովութիւնը առացաւ. Աստուծոյ և մարդկանց վախուն դիմաց՝ կեղծաւորութիւնը և ստուտը միջնորդ ձգելով՝ իր ամեն խոստմունքն և ահաւոր երդմունքն ոտքի տակ առաւ: Նախ Վարդանայ կուսակից եղող կամ կարծուողները բռնել բանտել տուաւ և ամեն ստացուածքնին կողոպտեց. յետոյ Վարդանայ հարստութիւններն ալ յափշտակեց. միայն անոր զինուորները չնեղեց, վասն զի վրանին կողոպտելու բան մը չկար: Բայց ամենէն անիրաւ և ողբալի կողոպուտն, միանգամայն և ամենէն ցանկալին և թանկագինն՝ եղաւ իր շատ բարի և գթասիրտ հակառակորդին լուսաւոր և զուարթահայեաց աչքերն: Վարդան իր կամաւոր արգելանքէն քիչ օր վերջը՝ գիշեր մը, երբ գուցէ դեռ իր երկար աղօթքներն ալ չէր լմընցուցած, յանկարծ տանաձայն և շփոթ մը լսեց՝ իր ծովապատ մենանոցին մէջ. քանի մը այլանդակ լեռընցի Միկայոնացիք, զոր և ոչ մարդ՝ այլ մարդագայլս (Լիգանթրօփոս կոչէ պատմիչն),

որք Նիկեփորի հաւատարիմ և արժանաւոր դահիճքն էին, յանկարծ պղծելով և խառնելով տեղւոյն և ժամուն և անձին խաղաղութիւնը, բռնեցին իրենց տիրոջ նախանձորդ կարծուածը, և գազանօրէն խլեցին խաւարեցուցին այն աչքերը՝ որ միայն յերկինք վերցընելու, պարտիզկանը վըրայ իջեցընելու և երբեմն ծովուն վրայ պտըտցընելու պահեր էր՝ ամբողջ կայսերութենէ մը հրաժարողն. և մէկէն Թողուցին փախան կղզիէն. — Ինչուան քաղքէն և մարդկանցմէ ալ փախչել ուզելով կամ ձեւացընելով՝ ապաւինեցան 'ի մայր եկեղեցին՝ Ս. Սոփիա:

Հազիւ այս լուր լուրն հռչակուեցաւ, վանք, եկեղեցիք, պալատք, բոլոր քաղաքն շարժեցան գթով և բարկութեամբ. անէծք և նզովք Թափել սկսան կայսեր և գործակցացը վրայ. երանելի պատրիարքն Տարասիոս, պատուական պատրիկքըն՝ սրտակոտոր վազեցին արքունիքը, յիշեցուցին կայսեր իրեն երդմունքը և ստորագրութիւնը. Նիկեփոր երդում պատաւ եղաւ ծերակուտին դիմաց Թէ ինքն ամենևին այդպիսի բան չէր մտածած և կարծած. և Թէ ուրիշի Թշնամութե գործ է. պատուիրեց իրենց՝ որ երԹան բռնեն այն չարագործները՝ որ 'ի Ս. Սոփիա ապաւիներ էին, Թէպէտ և կանխեր անոնցմէ առաջ ուրիշ մարդ ղրկեր ու փախուցեր էր զանոնք յեկեղեցիէն. և անոնց տեղ քանի մ'ուրիշ մարդ բռնել քննել տուաւ, որ անմեղ ըլլալով՝ 'ի հարկէ անվնաս ալ արձակուեցան: Իսկ ինքն իր չաւատալի կեղծաւորութիւնը մինչև 'ի ծաղրածութիւն տանելով՝ եօԹն օր փակուեցաւ իր պալատին մէջ, մարդու չէր երևեր, միայն ողբոց և վայերու ձայներ կուլսեցըներ, զորոնք ձեւացընելու շատ աղէկ կրԹութիւն ըրած և վարպետ էր. միայն Թէ չկըցաւ մէկն ալ խաբել. այլ աւելի սաստկացաւ

իրեն դէմ եղած հասարակաց ատելութիւնն և անէծքն։

Որչափ պժգալի եղան Նիկեփորի գործն և ձայներն, այնքան զարմանալի և սրտառուչ եղաւ Վարդանայ լռութիւնն. ամենևին գանգատ մը, տրտունջ մը, հեծութ մը չհանեց, և գրեթէ միայն ինքն եղաւ որ չանիծեց զՆիկեփոր. նա և ոչ իսկ մեղադրեց զնա, հապա ինքզինքն յանցաւոր ճանչնալով՝ մինչև 'ի մահ ապաշխարողի վարք անցուց. և միշտ իր պակսութիւնը պատմելով, կ'ուզէր գերագոյն առաքինութեամբ մը՝ ծածկել կայսեր անիրաւութիւնը և անգթութիւնը. առաքինութի՛ւն այնքան հիանալի՝ որքան այնպիսի ապականեալ ժամանակի և արքունեաց մօտ փայլեցաւ։ Ճգնաւորութեան հոգին աւելի խոր և պինդ հագեր էր ներսէն, քան դրսաւանց մաշկեղէն մը ամառը, մազեղէն մը ձմեռը, որ էին իր բոլոր հագուստը. իսկ գլուխն և ոտքն միշտ բաց և բոպիկ։ Անոր նման կերակրին ալ, եթէ կրնար ըսուիլ կերակուր. ոչ միայն բերանը չդրաւ մսեղէն և կթեղէն, այլ և ոչ ձէթ և գինի, այլ միայն գարիէ հաց. այն ալ ինքն իր ձեռօք կու պատրաստէր և կ'եփէր մոխրի տակ. լուսազուրկ աչքերն չթողլով իրեն երկար ձեռագործ աշխատանք՝ մտաւոր աշխատութիւն աւելցուց, աղօթք և խոկմունք. որոցմով զմայլած՝ ոչ թագին, ոչ աշխարհիս և ոչ իսկ ամեն սրտի մխիթարիչ արեւուն կորուստը կ'իմանար։

Միայն մէկ հոգ, մէկ ցաւ, մէկ փափագ մ'ունէր դեռ սրտին գրգիռ. — ընտանիքն. վասն զի ունէր և դեռ ողջ էին կինն և զաւակներն։ Անոնց ցանկալի երեսաց տեսութենէն զրկուիլն չէր իր մեծ ցաւն. վասն զի գոնէ ձայներնին կրնար լսել և խօսիլ. այլ ինքն իր հոգւոյն խորէն ձայնը կ'ուզէր լսեցընել անոնց հոգւոյն, և կրցաւ։ Ուրիշ-

ներրէ աւելի ինքզինքն օրինակ ցուցընելով աշխարհիս ընդունայնութեան, և հանդերձելոց անփոփոխ վիճակին, այս կենաց ցաւերուն կարճութեանը, և այն կենաց անվախճան երանութեանը, զամենքն ալ հաւանեցուց իրեն նմանելու. Նախ տիկինն Դոմնիկ (կամ Տոմինիգա) յանձն առաւ քաշուելու 'ի վանս հաւատաւորաց, և ինքնին Վարդան փոխեց ամուսնոյն անունը, դրաւ Աթանասիա. իր մէկ դստրիկն ալ հետը մտուց 'ի հարսնարանն Քրիստոսի. յետոյ իր կտրիճ որդիքներն այլ հաւանեցուց, որք յօժարութեամբ սուրերնին այլ, ամեն ունեցածնին այլ ծախեցին բաժնեցին աղքատաց, և առանձնացան վանքերու մէջ՝ միայն հոգինին հոգալու:

## Է

Այսպէս երկրիս վրայ ապահովելով անոնց երկնաւոր վիճակը՝ որոնց որ պարտական էր հոգալու իբրև հայր և տանուտէր, անկէ ետև այլ աւելի ազատութեամբ և հանդարտութեամբ իր հոգին կ'ուժովցընէր և կու հասցընէր յաւիտենական նպատակին: Շատերն տեսան և կու զարմանային Սաբայի սրբութեանը վրայ. և ո՞վ կրնար կարծել թէ անիկայ էր Արևելքի քաջ ըսպարապետն՝ Թուրք Վարդան: Համբերատար հանդարտութիւնն և չարքաշ վարքն յաղթեցին իր ճգնութեանց խստութեանը, և երկարեցին կեանքը. մինչև լսեց ութ տարիէն ետև իր անիրաւ նախանձոտին՝ Նիկեփորի՝ խեղճ և չարաչար մահը, զոր գրեթէ ինքն պատճառեց իրեն և իր բոլոր բանակին, անխոհեմութեամբ յառաջ երթալով Բուլղարաց երկիրը, և ստէպ ստէպ ըսելով, թէ « Չեմ գիտեր՝ Աստուած թէ սատանան է զիս առաջ քշողը, բայց չեմ կրնար ետ կենալ ». մին-

չէ հասատ ձորադաշտի մը, որոյ երկու կողմը գո-ցեցին Բուլղարք՝ անտառներ ջարդելով և ծառէ պարիսպ քաշելով. ապա կրակ տալով անոնց, ի-րենք ալ զինուած յարձակելով՝ կայսրն ալ, մե-ծամեծներն ալ, բոլոր զօրքն ալ մէկ աւուր մէջ (25 յուլիսի 811) սրամահ և ծխամահ ջնջեցին։ Նիկեփորի գանկն Բուլղարաց Թագաւորին գինւոյ բաժակ եղաւ. բոլոր Բիւզանդիոն և կայսե-րութիւնն սգալով իրենց զօրաց և զաւակաց կո-րստեան վրայ՝ միայն Նիկեփորի կորուստն իրենց այրած սրտին մխիթարանք կու գտնէին. այնքան ատելի եղած էր անկուշտ ագահութեամբ և ան-հոգութեամբը։ Երկու տարի ետև (յորում տի-րեցին Ստաւրակ՝ որդի Նիկեփորի և Միքայէլ Կիւրոպաղատ), լսեց Վարդան իր առաջին զինա-կրին և նախայիշեալ Լևոնի Արծրունւոյ կայսր ըլլալը (813-820), ինչպէս լսեր էր հինգ տարի առաջ (808) ուրիշ հայազգւոյ և Լևոնի աներոջ՝ Արշաւրի փորձ փորձելն ընդդէմ Նիկեփորի, և ի-րեն պէս չյաջողելով՝ բռնուիլ ու աքսորուելն ոչ հեռաւոր վանքի մը մէջ ('ի Բիւթինիա)։

Այս դէպքերս իրեն սրտին մէկմէկ հարուածք եղան, իր ըրածը յիշելով և իբրև ընկերացը չար օրինակ մը տուած համարելով զինքը. անոր հա-մար նախախնամութեան կամաց և կարգաց թող-լով եղածը՝ ինքն իր ճգնութիւնները և հոգևոր եռանդն աւելցուց առանձնութեան իր ծովա-կոծ՝ բայց անվտանգ կղզեկին մէջ. որուն շրջա-պատ ալեաց ծփանքն և անուշ հովերն բաւական էին իրեն՝ մերձաւոր մեծ մայրաքաղաքին և բո-լոր աշխարհիս խառնաձայն կոծմունք և ծփմուն-քը ցածցընելու. մինչև որ ճշմարիտ և յաւիտե-նական Թագաւորութեան հրաւէրքն յափշտա-կեց զինքը յերկինք. ուր ընդ յիշատակելի սուրբս ճանչցան զնա Յոյնք. մինչդեռ իր յատուկ աղ-

գայնոց՝ Հայոց պատմիչաց մէջ և ոչ ճանչցուած է այս իրենց ամենէն երևելի զօրավարներէն, միանգամայն և սրբայացեալ ճգնաւորներէն մէկն, որ յիշուն օր այլ կրնար կոչուիլ Բ ՎԱՐԴԱՆ ԿԱՅՍՐ[1]։

1 Ցեռ Վարդանայ՝ իր առանձնութեան կղզին և գաստակերան Բրոգա՝ ուրիշ գահէ ընկած կամ մերժուած կայսերաց ալ արգելան և բնակարան եղաւ. որոց մէջ անուանի է իրեն և մեր ազգակիցն Ռոմանոս Ա. Լակապէն. որ յետ 25 տարի զանազան գործովք կայսերութեան՝ հոս քշուած և քաշուած՝ շատ գոհութեամբ և զղջատուութբ, գուցէ և իր հին նախորդ Վարդանը յիշելով ու անոր առաքինութեանը նմանիլ ջանալով՝ վախճանեցաւ (944)։ — Բ Ռոմանոս (Դիոժեն) կայսրն ալ՝ Ալփասլանէն դըժբաղդաբար յաղթուելէն ետև և դժբաղդաբար՝ իր ազգակցաց ապերախտութենէն մերժուած և կուրցած՝ հոս աքսորանքի մէջ քիչ օրէն կնքեց իր գանձացեալ կեանքը (1077)։

# ԻԷ

# ՆԵՏՈՂՔ Ի ՀԱՅՍ

## Ա

Հին աշխարհին հիւսիսային կողմերն՝ որ մինչև հիմայ ցրտութեամբ և երկար մթութեամբ ահ-արկու են, քանի որ աշխարհագրական գիտու-թիւնք չէին ընդարձակած՝ Անձանօթ աշխարհ կո-չուէին։ Բայց այս անծանօթ աշխարհս՝ մեր նա-խահարց վաղուցուն մտաց ոչ այնքան ահաւոր՝ որքան խորհրդաւոր կ'երևէր. և եթէ բարկ բո-րեասայ շունչն իրենց այլ երբեմն դպչելով՝ զգա-ցուցեր էր փչած երկրին բնութիւնը, անոնք դեռ անկէց այլ անդին կ'երևակայէին զարմանալի կամ ախորժելի երկիր և ազգ մը՝ Գերհիւսիսական, (ինչ-պէս կոչելի է թերևս Գերհիւսիսական գրուածն 'ի գիրս նախնեաց մերոց, որ է թարգմանեալ յու-նականն Իբէրվօրէի՝ Ὑπερβόρειοι)։ Այս անծանօթ երկրին բնակիչքն՝ սրբազան կու սեպուէին, միշտ աստուածոց և պաշտամանց նուիրեալք՝ զոհե-րով, երգերով, պարերով, ծաղկըներով պսա-կուած. և կ'ըսուէր, թէ հազարաւոր տարի ապ-րելէն վերջը՝ պսակ 'ի գլուխնին և քնար ձեռուը-նին բարձր հրուանդանէ մը վար կու գլորէին կու ծածկուէին յանդունդս ծովուն։

Այսպիսի զարմանալի եղած (կամ չեղած) ազգի միջէն այլ զարմանալի անձ մը ծանօթ և հռչակուած է 'ի Յունաց՝ իբրև մեծ իմաստասէր կամ բժիշկ, Աբարիս անուամբ. որոյ համար աւանդեցին ոմանք թէ քուրմ էր Ապողոնի, և նետի մը վրայ կռթընած կամ հեծած՝ անդադար ման կու գար երկիրս բոլորակը: Այս առասպելս՝ ըստ ոմանց արդի բանասիրաց թուի նշանակել Աւար ազգը (Αβάρεις), որ յարմար հայաձայն անուանն՝ աւարող և աւերող էր. և այն հիւսիսային ազգաց մէկն՝ որք առանց հաստատ բնակութեան՝ վրանօք տեղէ տեղ կու փոխադրէին, և զիրար կամ զօտարս քշէին իրենց հասարակ և սովորական զէնքովը՝ որ էր Նէտ. ըստ այսմ ամենքն այլ իրաւամբք կոչէին Նէտողք: — Մեր ազգին փառաց և պերճութեան ատեն երբ 400 իշխանք և տոհմապետք թագաւորին հետ կու բազմէին 'ի հանդիսի, անոնց մէկուն տոհմն կամ պայազատութիւնն այլ Նէտողք կոչուէր. բայց հաւանօրէն թուի գլխապետ նետաձիգ զօրաց, (ինչպէս ձիաւորացն այլ Ասպետ՝ որ և Բագրատունի), քան թէ Նետող ազգի մը գաղթական. որն այլ ըլլայ՝ մեր ազգին Նետողաց զէնքն պաշտպանական էր և ոչ թշնամական՝ իբրև այս հիւսիսային թափառիկ ազգաց:

Ըստ նկարագրութեան հին աշխարհագրաց և պատմչաց, վերոյիշեալ գերհիւսիսականքն՝ բևեռային շրջանակին մօտ բնակիչք կ'երևին. որոց հարաւային եզերքն՝ մինչև 'ի ծանուցեալ Կովկասային և Արեաց, Հնդկաց ու Չինաց աշխարհները եղած լայնածաւալ միջոյն՝ անուանէին Սարմատիա (յարևմտակողմն) և Սկիւթիա (յարևելակողմն): Այս ետքինս էր բնիկ Նետողաց ընդարձակ ասպարէզ թափառանաց. ուսկից 2000 տարի՝ հին և միջին պատմութեան ժամանակ՝ եղան

զանազան ազգեր՝ յարեւմուտք և 'ի հարաւ սա-պատանկելով: Շատ աղէկ սահմանագրէ այս աշ-խարհս՝ մեր հին աշխարհագիրն Մ. Խորենացի. «Սկիւթիա աշխարհք՝ որ են Աֆղանիստանք, այսինքն » Թուրքաստանք. ըստ հիւսիսոյ՝ Անծանօթ երկրաւ » (սահմանի), և ըստ մտից՝ Սարմատացւոց աշ-» խարհաւ (մինչև) առ Ամթլ գետով. 'ի հարաւոյ՝ » Վրկան ծովով և Արեօք և Հնդկօք, առ հարա-» ւային բաղկաւն Եմաւոն լերինն... իսկ ըստ ե-» լից կուսէ՝ սահմանի 'ի Ճենաց: Եւ ազգք են » նորա 44 » (կամ 43): Հիմակուան հմտագոյն քննադատք այլ յայս կարծիս են, թէ հին Սկիւ-թիա է Թուրքաստան աշխարհն, որ և Ազատ Թա-թարք կոչի հիմայ. իսկ Աֆղանիստան՝ հիւսիսային կամ արեւմտեան Թաթարստանի: Ես չեմ ուզեր քեզի հետ, Հայկակ, այս երկայն և ձղձգած խնդրոց մէջ մտնել. այլ միայն գլխաւոր և մեզի ծանօթա-գոյն ազգերը յիշել:

Բ

Մեր աշխարհագրին 43 կամ 44 ըսած ազգաց մէջ յանուանէ միայն (ըստ զանազան ձեռագրաց) երրորդ մասին չափ յիշէ, որոց մէջ նշանաւորք են Թոխարք, Մաղջուեք կամ Մասսագետացիք, Հոնք, Սաքեք կամ Սագաստան (Սոկաք կամ Սոկախանա հեղինակաց), Հեփթաղք, և այլն. Մեկալոնց հա-մար մէկ օրինակագիրն, որ անշուշտ յետոյ է քան զԽորենացին, կ'աւելցընէ. «Եւ զայլ ազգս ասէ » խուժական անուամբ, զոր չէ հարկ ասել. զի » այժմ այլ ազգ ոչ գիտեմք, բայց միայն զԲուղխն » ազգ՝ որ Ճարակի զերկիրն զայն»: Այս յետին ազգս, (զոր մեր աշխարհագիրն յիշէ նաև 'ի մէջ ասիական Սարմատաց՝ որ սահմանակից էին Սկիւ-թիոյ յարեւմտից), զոր և մեր ուրիշ պատմիչք

այլ յիշեն, Թուի իրենցմէ յետոյ յիշեալ Պու-խէրք ազգն Թուրքաստանի, որ արդարև ըստ վկայութեան արաբացի պատմիչաց՝ իրենց առհմակցաց մէջ ամենէն զօրաւորք և ահարկուք էին մինչև 'ի դարն ԺԲ. և համարին մերձաւորք Ունկուր Թուրքաց՝ նախահարց Ունգարացւոց, այսինքն Մաճառաց. արևմտեայք Պոգոտէր անուաներ են ղասոնք:

Թողլով այս ամեն ազգաց վրայ հետազօտական դիտեալքն, մէկ երկու բան ըսեմ. և նախ այս՝ որ ինչպէս հին ատեն Սկիւթիա ըսելով՝ ամեն հիւսիսային ազգերն իրարու հետ շփոթէին, այսպէս այլ քրիստոնեայ և արաբացի հեղինակք, մանաւանդ արևմտեայք, Թուրք անուամբ շփոթեն զանազան ժողովուրդներ նախայիշեալ աշխարհաց: Բայց ըստ ստուգագոյն և նոր աշխարհագրաց՝ Թուրքաստան կ'իմացուի Կասպից ծովէն ինչուան Թանկուտ կամ Չինաց արևմտեան սահմանը, իբրև 36 երկայնութեան աստիճանի միջոց արևմուտքէն արևելք, և Հ. լայնութեան 36-55 աստիճանաց մէջ: Բայց այս ընդարձակ երկրին մէջ այլ՝ բնիկ Թուրքաստան համարուի անմիջապէս Կասպից և Արալ ծովուց միջոցն, և այս եզերքնիս մէջ Թափուող երկու մեծամեծ գետոց լայնասփիւռ հովիտքն, որք հիմայ յարևելեայց կոչին Ճիհուն կամ Ջահուն և Սիհուն: Առաջինն՝ որ և հարաւայինն՝ կոչի և Ամու-տէրէա, և ըստ նախնեաց Ոքսոս, ըստ հին Պարսից և մերոցս՝ Վէհռոտ. երկրորդն՝ հիւսիսայինն՝ Սիր-տէրէա (Դեղին-ծով), և ըստ նախնեաց Եաքսարդ և յոմանց և՛ս Երասխ, որ բնականապէս աւելի անծանօթ էր նոցա քան զՈքսոս. մինչդեռ անոնք անմիջապէս ասկէ անդին եղող երկիրն այլ կ'անուանէին Անդր-Ոքսեան Transoxiana, յորմէ և Արաբացիք Թարգմանորէն անուանեցին Մաւէրա-ուն-նէհր, Յայնկոյս-գե-

տոյն, և եղծմամբ Մաւէր-էլ-Նահար. որ և յետոյ (յ՚ԺԴ դարու) Ճինկիզ խանի որդւոց մէկուն իշխանութեան բաժին ըլլալով՝ անոր անուամբ Ջեղաթայ կոչուեցաւ։ Այս ընդարձակ երկիրս՝ յանյիշատակ ժամանակաց՝ ճեմարան և շուարան է վրանաբնակ քան շինաբնակ, խաշնարած և ձիարած ազգաց, բարբարոսաց և աղեղնաւորաց. որոց նախահայրն անծանօթ է, թէպէտ և ըստ հին և նոր հաւանագոյն աւանդութեան՝ 'ի Թորգոմայ սերեալ են։ Ոմանք այլ 'ի Մագովգայ ասեն զասոնք. աւելի անհաւանական (ոմանց 'ի մերոց պատմըչաց ըսածն) թէ 'ի Քամայ ըլլան (Թուրքք)։

Իրենց տեղ տեղ խոպան և աղուտ, տեղ տեղ դալար և սիզաւէտ անհուն դաշտերուն և անապատներուն մէջ՝ հազարաւոր տարիներ կու թափառէին և կու թափառին այս ժողովուրդքս. հնագոյն ատեններ դէպ 'ի հարաւ ասպատակելով, Պարսից սահմաններուն վրայ. իսկ ասոնք՝ (որ իրենք զիրենք Իրան կոչէին) զբարբարականս այլ Թուրան կոչէին. և անհաշտ կռիւ ունէին անոնց հետ՝ իբրև ընդ որդիս չարին (Ահերմէնի)։ Պարսից շատ դիւցազանց քաջութեան ասպարէզն այս Թուրանս եղած է։

Ասոնք են արևմտեայ հին հեղինակաց Սկիւթացիքն. բայց իրենց ծանօթագոյն են՝ ասոնց երկրին հիւսիսակողման ազգերն. որք մէկմէկու ետևէ զիրար քշելով 1000 տարիէ աւելի միջոց՝ հիւսիսային կողմէն դէպ յարևմուտք և 'ի հարաւ կ՚ասպատակէին. յետոյ սկսան հարաւէն արշաւել։ Ի մարգարէից յիշեալ Գովգայ և Մագովգայ և Թոբելայ ազգերն այլ ասոնք են. յորոց (ըստ Միխայէլի պատմչի) Նաբուքոդոնոսոր և Կիւրոս օգնական զօրք վարձեցին, զորս և համարձակ Թուրք կ՚անուանէ պատմիչն. բայց այս անունս անծանօթ է հին օրինակագրաց. և թերևս յայսնի յի-

շուած չէ յառաջ քան զ՚Զ դար, (եթէ ՚ի յետնոց աւելցուած չէ այդ անունն՝ մեր Խորենացւոյն աշխարհագրութեան մէջ):

## Գ

Իսկ առ հինս և ՚ի պատմութեան ծանօթ եղած Սկիւթացւոց մէջ՝ Թերևս հնագոյնք են Ալանք. որ և մեր ազգային պատմութեան մէջ շատ ծանուցեալ և խնամիք Թագաւորաց մերոց Արշակունեաց. որոց ընծայեցին և շնորհագեղ դշխոյներ՝ զԱշխէն և Սաթէն (Սաթինիկ): — Ասոնց առհմանկից սեպուին Մազքութք, Քրիստոսէ վեց դար յառաջ յիշեալք. և Թատաղարք [1] վեց դար յետոյ այլ յիշեալք, և ճանաչին հիմայ Եւրոպիոյ հիւսիսային և միջին երևելի ազգաց նախահարք կամ հօրեղբարք, այսինքն Գոթաց և Տեռոնաց. որոց առաջին բնակութիւնն էր Ուրալ գետոյն վերնակողմը, և յետոյ Խըզըրը ազգի անապատները: Ասկից՝ Քրիստոսի Թուականէն քիչ ետքը յարձակեցան ՚ի Կովկաս, և անցան այն լեռները, Թափեցան մինչև ՚ի Հայաստան, և դաշնադրութեամբ ու խնամութեամբ յետ քաշուեցան. բայց դէպ յարևմուտք տարածուելով՝ հասան մինչև յԱզախու ծովն. և 400 տարուոյ չափ հիմկու Ռուսաց Ցայսկոյս-Կովկասեան ըսուած երկիրները գրաւելէն զատ՝ անդադար կ՚ասպատակէին ՚ի Վիրս, ՚ի Հայս, և ՚ի սահմանս կայսերաց. երբեմն ինքն իրենց շահուն համար, երբեմն այլ ուրիշ ազգաց օգնական, ինչպէս երբեմն և Հայոց՝ ընդդէմ Պարսից: Գունդ մը կամ տոհմ մը Մազքըթաց Կովկասէն ասդին մնացին Դարբանդայ հարաւակողմը, և մեր Արշակունեաց հետ այլ խնամեցան,

[1] Արտաքոյք հեղինակք կ՚անուանեն Թուղատեկրան:

և նաև 'ի Քրիստոս հաւատացին Տրդատայ ատեն. բայց յետ մահու նորա՝ մեր Լուսաւորչին Թոռը Գրիգորիսն այլ նահատակեցին, իրենց Սանեսան Թագաւորին հրամանաւ. Արևմտեայ Մազգութք Դ դարու մէջ անցան ինչուան 'ի Սպանիա և յԱփրիկէ. վասն զի իրենցմէ զօրաւորք զիրենք քըշէին, որ էին Հոնք. և Եւրոպիոյ մէջ Ե դարուն վերջերը, Ասիոյ մէջ՝ Ջին ետքերը՝ գրեթէ անյիշատակ եղան Ալանք:

Յաջորդ (Է) դարուն մէջ ծածկուի Հոնաց անուանն այլ, որ Ե և Զ դարուց մէջ ամենէն տիրողն էր, մանաւանդ իրենց վայրենի դիւցազին Աստիղասայ ատեն, 'ի կէս Ե դարու: Թէպէտ Հոնաց անուանն գրեթէ հազար տարի առաջ այլ յիշուի և կարդացուի (ըստ ոմանց) Պերսեպօլեայ բևեռաքանդակ արձանաց վրայ, այլ տեղերնին շատ որոշ չէ, կամ շատ կարծելի չէ՝ որ ըլլայ ինչուան Սեաւ ծովուն մօտերը. թէ և յետ ժամանակաց հասան այն կողմերը. մինչև մեր յետին պատմիչք կամ յուշագիրք ԺԳ-ԺԵ դարուց՝ Երկիր Հոնաց անուանեն զԼրիմն այլ: Հոնաց ցեղից մէջ մէկ գլխաւորն է Ոգուր կամ Ոնոգուր կոչուածըն, Հոն-Ոնգուր ըստ մեր հին պատմըչաց. որոց անուանի և մեծազօր հսկայի կամ ըմբշի մը հետ մենամարտեցաւ և յաղթեց Բաբիկ՝ հայրն Վասակայ ուրացողին. ինչպէս յառաջ քան զնա հըսկայն մեր Տրդատ՝ ընդ Կգուխհոնի թագաւորի նոցա (թերևս Գուգուր-Հոն) յերկրին Տարօնոյ, ուր հասեր էին արշաւանօք և մասնութեամբ: Շատ անգամ Ճորայ (Տէրպէնտ) պահակէն անցնելնուն համար յարձակելու յարևմուտս՝ այն անցքն ըսուեցաւ Հոնաց Դուռն. զոր և ատեն մը մեր զօրաւոր Արշակունի թագաւորք զգուշութեամբ ամրացուցած պահէին անոնց դէմ. յետոյ Աղուանից ձեռքն անցաւ, որոց անուամբ այլ կոչի:

Աստիզասայ Թագաւորութեան ատեն մեր Ս. Մեսրոպայ Աղուանից քարոզելովը ինչուան Կովկասեան լերանց անդին այլ լսեցուց Քրիստոսի աւետարանը, նաև իր աշակերտաց գործակցութեամբ. որոց ձեռօք հաւատաց 'ի Քրիստոս Հոնաց զօրավարն՝ որ յԱղուանս յարձակեր էր, և յետոյ իր ընտանեօքն և հետևողօք նահատակեցաւ հոն: Երկու դար և աւելի վերջը երբ Հոնք տկարացեր և Խազրաց նախիշխանութեան տակ ընկեր էին, դեռ իրենց հին մայրաքաղաքին մէջ՝ որ կոչէր Վարաճան և է հիմայ Թարգու՝ 'ի հիւսիսոյ Դարբանդայ, կունատէր Թագաւորնին կամ զօրավարնին՝ Ալփ անուամբ, որ և պատուով Լիթուէր[1] կոչէր, յորմէ և Լիթուէրութեան պատիւ (ինձ անծանօթ): Սա՝ իր երկրէն (զոր Անձագնեան աշխարհ Գողգայ՝ կոչէ ժամանակակից պատմիչ մեր)[2], ասպատակի ելաւ յԱղուանս. յետոյ հաշտելով թողուց որ եպիսկոպոս մը (Իսրայէլ Մեծկուննեաց) գայ իր երկիրը և քարոզէ զՔրիստոս (յամի 684). արդէն քսան տարի առաջ Հոնաց Թագաւորն խնամացեր էր Աղուանից իշխանապետին հետ:

Ասկէ ետև գրեթէ չեն յիշուիր Հոնք. այլ փոխանակ նոցա խօսքիս սկիզբը յիշեալ Աւարքն, զոր Թուրքք քշեցին (յամին 551) իրենց երկրէն՝ յՈւկորիոյ՝ որ է հիմկու Սիպերիոյ Վոկուլայ երկիրն, ուսկից ելեր էին և Հոնք: Բիւզանդացի պատմիչք ստէպ յիշեն զԱւարս և կ'ըսեն թէ Թուրքք Վարխոն անուանէին զանոնք, արդ մեր

1 Այս պատուանուանս նախ կու յիշէ Մովսէս Կաղանկատուեցի պատմիչն մեր յԷ դարու, և յետոյ Ղևոնդ պատմիչ յ'Ը դարու. «Ի գնդէն (Խազրաց) Խաթիր-Լիթ-» բերայ»:

2 Մ. Կաղանկատուեցի:

աշխարհագիրն այլ վերոյիշեալ Սկիւթացի ազգաց մէջ համրէ զԱլխոն և Վալխոն: Դարձեալ վկայեն ոմանք թէ Աւարք ազգակից և քուն Հոնք են, այլ իրենց Աւար անուն Թագաւորէն այսպէս կոչեցան: Կայսերաց երկիրը մտնելով կամաց կամաց յառաջ եկան մինչև 'ի գաւառս Դանուբայ, և իրենցմէ առաջ հոն հասնող Հոները նուաճեցին. բայց իրենց վրայ այլ հասան Բուլղարք ('ի Խազրաց վարեալք) և տիրացան այն կողմերուն՝ Ը դարուն մէջ և այլ ետքը, ուր և մինչև հիմայ մնան իրենց սերունդքն խառնեալ ընդ հռոմ ցեղի, և երկիրն այլ իրենց անուամբ ամենուն ծանօթ է:

Այս զօրաւոր և Սլաւեանց առհմակից Բուլղար ազգն այլ՝ յառաջ քան զայլ ամեն յիշուի մեր Հայոց պատմութեան մէջ, Քրիստոսէ դար մը կամ աւելի առաջ. իրենց հին հայրենիքն այլ ծանօթ է՝ Վոլկա գետոյն վերին կողմերը, որ և անոնցմէ առած է այս անունս. (Վոլկայն առ հինս Ռա կոչի և 'ի Թուրքաց Էթլ). ուսկից իջան ինչուան անոր բերանը և աւելի վար՝ Կովկասու հիւսիսակողմը. և ասկէց այլ քշուելով իրարմէ՝ գունդ մը կտրեց զԿովկաս լեռները և անցաւ յԱյրարատ, Բասենոյ կողմերը, իրենց Վունդ իշխանին առաջնորդութեամբ 'ի Վղընդուր ցեղէ, որոյ անուամբ բնակած տեղերնին ալ Վանանդ կոչեցաւ 'ի Հայս, մինչև հիմայ:

## Դ

Հոնաց անհետանալու կամ նուազելու ատեն յերևան եկան կամ նշանաւորեցան Սպիտակ Հոնք ըստ Բիւզանդացւոց, կամ Եփթաղիտք (սխալմամբ և Նեփթալիտք), որ են ըստ մեզ Հեփթաղք, նաև Թետալք կամ Թետալացիք. (Նոյն Թուրի և Տաղական կամ Իտաղական՝ թէ չիցեն Տահք, Dahae): Ասոնք

ուրիշ նշանաւոր անուն մ՚այլ ունին առ մերայինս, Քուշանք, որ է ըստ Չինաց Քուէյ-շուանկ. (արդեօք 'ի Քուշաց համարեալք որպէս Հնդիկք): Ժամանակին պատմիչք կամ յիշողք՝ Հոնաց տոհմակից և մերձաւոր կարծեցին զասոնք. ոմանք Թուրք ցեղ մը, ոմանք Հնդկա-սկիւթացի. իսկ նոր բազմահմուտ աշխարհագիր մը[1] երկար քննութեամբ կու հաստատէ՝ թէ Չինաց մօտ Դիպէթէն ծագեալ ժողովուրդ մ՚էր, և ըստ նոցա Եուէջի կամ Եուեչի կամ Ճուդ անուանեալ: Այս յայտնի է որ Հեփթալք Դիպէթի հիւսիսակողմը բնակէին նախ, որ է Թուրքաստանի հարաւակողմը. ուր՝ մերազգի բայց գաղղիագիր երևելի արևելագէտ մ՚այլ՝[2] արաբացի հին պատմիչներէ կու յիշէ Դոխալխալ Թուրք հզօր ցեղը, որոյ գլխաւոր քաղաքն էր Քուշան. և ըստ այսմ՝ Դիպէթի և Թուրքաց սահմանախառն երկիր և ազգ մը կ՚ըլլան սոքա. և 'ի պատմութեան Չինաց ինչուան Գ դար Քրիստոսէ առաջ յիշուին. և միայն անկէ դար ու կէս յառաջ գէպ յարևմտակողմն եկած են և տիրած Սոգդիանի և Բակտրիոյ, այն տեղի յոյն թագաւորութիւնը վերցընելով: Այս է մեր պատմչաց յիշածն այլ, թէ Արշակ՝ Թետալաց թագաւորին որդին՝ տիրեց Պարթևաց, և սոնց Բահլ քաղաքը՝ ըրաւ իրեն աթոռ. մէկ եղբայրը թողլով իրենց առաջին աշխարհին մէջ, որ է Թետալիա, միւս եղբայրն այլ (Վաղարշակ) թագաւորեցուց Հայոց: — Ասանկ հեռաւոր և անծանօթ կողմերէ ծագած են եղեր մեր քաջածանօթ և գերահռչակ Արշակունի թագաւորքն, Տրդատք և Տիգրանք: — Գ-Զ դարուց մէջ պայծառացան կամ հռչակեցան Քուշանք.

1 Վիվիէն Սէն Մարդէն:
2 Մուրատճա Տ՚Ոհսոն:

Հեփթաղք. բայց անկէ առաջ այլ բաւական նը- շանաւոր գործեր ըրած պիտի ըլլան, որ յ՚Գ դա- րու անոնց պատմութիւնն այլ գրուած և ծանօթ եղած ըլլայ Հայոց. վասն զի Զենոբ՝ ժամանակա- կիցն Ս. Գրիգորի Լուսաւորչի կ՚ըսէ. «Ընթեր- »ցիր զթագաւորութիւն Հեփթաղենիկայ (կամ Եւ- »թաղեայ), հելլենացի գրով, և կամ զթագաւո- »րութիւն Ճենաց, զոր գտանես յՍուռհայ քա- »ղաքի առ Բարդայ (կամ Բարդեձան) [1] պատ- »մագրի»:

Այս ատեններս՝ կամ քիչ առաջ՝ երբ Սասա- նեանք նուաճեցին զՊարթևս՝ մեր թագաւորն Խոսրով իբրև տոհմակից թէ անոնց և թէ Քու- շանաց՝ ասոնց դեսպան խաւրեց և դրդեց ընդ- դէմ Արտաշրի, բայց Քուշանք անփոյթ եղան. սակայն երբ Սասանեանք յաջողեցան և զօրացան՝ Քուշանք անոնց գլխահար եղան, և յափշտակե- ցին Պարթևաց երկիրը, ու հոն ՚ի Բահլ դրին ի- րենց գահը, ինչպէս յիշէ և Բուզանդ, պատմելով Շապհոյ պատերազմը ընդդէմ նոցա, և անոնց ձեռքէն ազատիլը՝ քաջութեամբ Դրաստամատ Հայ իշխանին, (որոյ վարձք եղաւ իր տէրը՝ Ար- շակ կոյր թագաւորը՝ բանտէն հանել և մխիթա- րել. և ապա անոր հետ կամ անոր վրայ անձնա- մահ ըլլալ): Կ՚ըսուի ՚ի մերոնց թէ Ս. Մեսրով- պայ քարոզութեամբն քրիստոնէացեալ այլազ- գեաց մէջ կային Հեփթաղք այլ, բայց տարակու- սական է այս: Մեր ոսկեգրիչ պատմիչք յիշեն անզգամ Յազկերտին պատերազմները ընդ Քու- շանաց, որոց մէջ գտուեցան մեր քաջ նախա- րարք և Մեծն Վարդան այլ. նոյնպէս անոր որ- դւոյն՝ Պերոզի սպանուիլն կռուի մէջ ՚ի Քուշա-

1 Եթէ, որպէս թուի՝ անուանի Ասորի Բարդածանն է աս, ՚ի վերջ կոյս Բ դարու գրած է այս պատմութիւնս:

նաց, յամին 488։ Դարձեալ ուրիշ պատմիչք այլ՝ յիշեն Վահրամ Չուպին Պարսից թագաւորին պատերազմները և Քուշանաց երկու թագաւորները նուաճելը (յամին 580), որ կոչէին Ծօգ և Պարեօկ։ Ի սկիզբն է դարու մեր Բազմայաղթ Սըմբատ մարզպանն կռուեցաւ և յաղթեց անոնց. մինչև ստիպուեցան խնդրել օգնութիւն 'ի Խազրաց, և եկան ասոնցմէ 300,000. բայց Սմբատ դիւրաւ ցրուեց զանոնք, անոնց հսկայ թագաւորին հետ մենամարտելով և սպաննելով։ Վերջին թագաւորն Սասանեանց Յազկերտ՝ հալածեալ յԱրաբացւոց ապաւինեցաւ 'ի Քուշանս, բայց չգտաւ օգնութիւն, և անոնց քով սպանուեցաւ ('ի Մերվ)։ Քուշանք Արաբացւոց այլ դէմ դրին նախ. բայց իրենց զօրաւոր դրացիներէն նուաճուելով, կամ անոնց հետ խառնուելով, անյիշատակ եղան է դարուն վերջերը։ Այս զօրաւոր ազգերն էին Խազիրք և Թուրքք. շատ պատմիչք այս երկք ազգերն այլ իրարու հետ շփոթեն, մանաւանդ զՀեփթաղս և զԹուրքս. ոմանք հին Հեփթաղաց այլ Թուրք կ'ըսեն, և ոմանք ինչուան ԺԱ դարու հասարակաց Թուրք կոչածն այլ Հեփթաղ կ'անուանեն [1]։ Միխայէլ Ասորի համարձակ կ'ըսէ. « Թետալիա՝ որ Թուրքաստան » կոչի », և Պարսից Արտաղ աշխարհին սահմանակից կու դնէ։

## Ե

Հեփթաղաց անհետանալէն ինչուան 'ի յառաջանալն Թուրքաց, որ է ըսել Է–Ժ դարուց միջոցն, տիրապետող Սկիւթացիքն եղան Խազիրք, որք և Խազրիկանք կոչէին 'ի մերոցս, ևս և Գխաստ-

1 Ինչպէս Կեդրենոս, յամին 1044։

րաց ազգ[1]. և շատ հին ատեն՝ ինչուան յԵրոդո-
տեայ յիշէին Ատածիրի և ասոր նման կողմամբ,
(Քրիստոսէ Ն դար առաջ) տոհմակիցք և սահ-
մանակիցք Հոնաց և Աւարաց և երբեմն անոնց
հետ համանուն: Արաբացի հին պատմիչ մը՝ Վը-
րաց տոհմակից կ'ըսէ զանոնք. ուրիշ մը սրբա-
գրելով զնա՝ ոչ Վրացի այլ Հայ են կ'ըսէ Խա-
զիրքն. իսկ Վիրք՝ իրենց երկրին վրայ առաջին
տապատակող ազգը Խազիրք կոչեն: Մեր պատ-
մութեան մէջ կու յիշուին 'ի սկիզբն Գ դարու,
յորում Վոլկայի վարի կողմերը բնակէին ասոնք.
և ուրիշ տոհմակից հզօր ազգ մ'այլ Բասիլք կամ
Բարսիլք. որոց յունարէն կոչումն Վասիլ՝ թա-
գաւորական նշանակէ. և այսպէս կարծի յոմանց
թարգմանաբար կոչուած յաշխարհագրութեան
Խորենացւոյն, Թագաւորական Սարմատք: Այս եր-
կուքս՝ Խազիրք և Բասիլք միաբանեալ յամի Տէր
212, անցան Կովկասու մեծ դռնէն (Ճորայ կամ
Դարբանդայ) և Կուր գետէն ասդին այլ վազե-
լով՝ կոխեցին ինչուան Հայոց սահմանները, Վնա-
սէպ Սուրհապ անուամբ թագաւորի մը առաջ-
նորդութեամբ. իսկ մեր թագաւորն Վաղարշ մեծ
պատերազմով վանեց զանոնք ինչուան նոյն Կով-
կասայ պահակէն այլ անդին՝ չափազանց վրէժ-
խնդրութեամբ. մինչև հալածեալքն իրենց բնիկ
սահմաններուն հասնելով և նոր օգնական ժող-
վելով՝ դարձան Հայոց վրայ, զՎաղարշ սպանե-
ցին, զօրքը ցրուեցին: Խոսրով Ա որդի և յաջորդ
Վաղարշայ՝ նորէն վրանին զօրք հանեց, հօրը
վրէժն առաւ. և այնպէս վախ ձգեց այն անվախ
ազգաց վրայ՝ որ ստիպուեցան իրենցմէ հարիւ-
րէն մէկ պատանդ տալ Խոսրովու. և նա քաջու-
թեան յաղթանակը հոն յունարէն արձանագրե.

1 Այսպէս անուանէ Մովսէս Կաղանկատուացի:

լով քարերու վրայ՝ դարձաւ, և բերած գերին բնակեցուց 'ի Հայաստան. ուր Բասլաց ազնուականաց հետ խնամութիւն ըրին Արաւեղեանք և Ալանք, նոյնպէս յայլազգեաց գաղթականք 'ի Հայս։

Խոսրովայ որդւոյ Տրդատայ ատենն այլ Բասիլք ուրիշ հիւսիսայնոց միաբանութեամբ յարձակեցան Կովկասէն ասդին. բայց քաջայաղթն և երագահասն Տրդատ՝ ընկաւ անոնց վրայ Ազուանից երկրին մէջ, և իր սրով թագաւորնին երկու կտոր ընելով՝ քշեց ասպատակը մինչև յերկիրն Հոնաց. և հօրը պէս անոնցմէ պատանդ և նիզակակից առնելով՝ առաւ Պարսից վրայ։ Անկէ ետև Բասիլք ինչուան 'ի Զ դար և այլ ետև՝ Վոլկայի եզերքը կու բնակէին, շրջակայ ազգաց և տոհմից տիրելով, մինչև հզօրագոյն և մեծագոյն և իբրև թագաւորաց թագաւոր կու անուէր իրենց գլխաւորն, և կ'ըսուէր Թուրքացի կոչմամբ Խաքան, կինն այլ Խաթուն։ Երկու ազգն այլ գրեթէ համապատիւ էին, բայց միայն ըստ աշխարհագրին մերոյ «Թագաւորն Հիւսիսոյ էր Խա-
» քանն, որ է Տէր Խազրաց, և գլխոյն թագուհի՝
» կին Խաքանայ՝ 'ի Բասլաց ազգէն»։ Խաքանին հզօրագոյն ցեղն աւելի այլ զօրացաւ և բռնացաւ Բասլաց վրայ՝ երբ Բուլխ Թուրքք՝ զոր նախ յիշեցի, մօտեցան իրենց. այնչափ որ ըստ հին և պատուական աշխարհագրին մերոյ՝ կու ստիպուէին Բասիլք ամրանալ 'ի Սև կղզին Վոլկայի բերանը, « 'ի հզօր ազգէն Խազրաց և Բուլխաց՝ ճարակե-
» լոց յելից և 'ի մտից, եկելոց անդր 'ի ձմերոց»։

Ե դարուն կիսէն ետև՝ (յամի իբր 462) Խազիրք իրենց բնիկ երկրէն (յՈւկորիոյ) քշուելով, այս Վոլկայի վարի կողմերը և ինչուան Կովկասու ստորոտը սփռեցան. արևելքի կողմէն այլ ինչուան 'ի սահմանս Թուրքաց. որոց հետ շատ մերձաւորութեամբն՝ 'ի Բիւզանդացւոց կոչէին Ա-

րնչէլեան Թուրքք, միանգամայն և առ 'ի խզանազանել յԵւրոպա անցնող և բնակող Կումանաց և Մաճառաց, զորս Արեւմտեան Թուրքք կոչեն: Մեր պատմիչք այլ ցուցընեն թէ զանազան խան կամ խաքան ունէին նոքա, բայց Ջեբ Խաքանն էր տէրն Խազրաց, զոր և կ'անուանեն Բագատոր Հեռնոյ. ասկէ օգնութիւն խնդրեց Հերակլ կայսր ընդդէմ Խոսրովու Պարսից Թագաւորի. և եկաւ իրեն օգնական Ջեբու Խաքանն՝ «որ երկրորդ էր Թագաւո- »րութեան Թագաւորին Հիւսիսոյ», իր Շաթ կամ Զաթ որդւովն[1]: Սա մտաւ յԱղուանս, և աղաչանօք կաթողիկոսին սոցա (Վիրոյի) արգիլեց սպատակը: — Ականատես ընկերն Վիրոյի՝ պատմիչն Մովսէս Կաղանկատուացի՝ շատ հետաքրքին և կարևոր տեղեկութիւններ կու տայ այս Խազրաց արքունեաց սովորութեան վրայ, զոր ուրիշ պատմըչի քով չես կրնար գտնել, Հայկակ: — Թէպէտ այս անգամ ապահով թողին Խազիրք զԱղուանս, բայց յետոյ դարձեալ զանազան անգամ յարձակեցան և նուաճեցին, մինչև հարկ եղաւ որ ը դարուն վերջերը՝ Աղուանք թէ սոնց հարկատու ըլլան թէ Արաբացւոց: Մահմէտի յաջորդքն արևելից մէջ իրենց ամենէն զօրաւոր դիմակաց գտան զԽազիրս. և թէպէտ Կովկասեան լեռներն իրարմէ կու զատէին անոնց սահմանները, բայց շատ հեղ կամ մէկն կամ մէկայլն կտրելով զպահակը կամ անցնելով

1 Այսպէս կ'ըսէ Մովսէս Կաղանկատուացի: Անկէ առաջ յամի իբր 600, երբ Քուշանք յաղթուեցան 'ի Սըմբատայ մարզպանէ, «խնդրեցին իւրեանց օգնական, կ'ըսէ » մեր Սեբէոս պատմիչն, 'ի Ճենէն Խաքանայ արքայէն կող- » մանցն հիւսիսոյ, և եկն եւ ամբոխ 300,000»: — Անկէ այլ առաջ Խորենացին աշխարհագրութեանը մէջ կ'ըսէ. « Թագաւորն հիւսիսոյ է Խաքանն, որ է տէր Խազրաց»:

ցան. մինչև պատմէն Ճանապարհորդք թէ Թ—Ժ դարուց մէջ անոնց թագաւորներն Հրեայ էին. և շատ նշանաւոր է առ բանասէրս՝ Ժ դարուն կիսուն մօտ դէպք մը (եթէ իրաւ է). Անդալուսիոյ ('ի Սպանիա) Աբրաքայի թագաւոր մ'ունէր հրեայ պաշտօնեայ մը Ռաֆ Խաստայի անուամբ, որ թղթով հարցուց և տեղեկութիւնուզեց Խազրաց թագաւորէն իրենց կրօնից և ծագման վրայօք. նա այլ պատասխանեց և իմացուց՝ որ Խազիրք են 'ի Թողարայ՝ յեօթներորդ որդւոյ Թորգոմայ, որոց առաջինն այլ կ'անուանէ Ակիոր՝ որ է մեր Հայկն, ըն Զանուր, թն Պուլղար, ժն Սաւիր (Սաբիրք), և այլն. և կ'ըսէ թէ Վոլկայէն գրեթէ մինչուան Դանուբ կու տիրէին: Իր նախորդաց մէկն աստուածային յայտնութեամբ ընդուներ էր հրէութիւնը, և ինքն (գրողն) Յովսէփ տասներկրորդ հրեայ թագաւորն էր Խազրաց: Ուրիշ կարևոր գիտելիք այլ կ'աւանդէ, զոր հոս յիշել աւելորդ կու սեպեմ, Հայկակ: Բիւզանդիոյ և Ռուսաց պատմութեան մէջ, որոց երկուքն այլ սահմանակցութեամբ գործեր ունեցան ասոնց հետ, մինչուան ԺԱ դարուն առաջին քառորդը կու յիշուին Խազիրք. և ըստ ոմանց՝ այն ատեն (կամ յամին 1016) Ռուսք բոլորովին նուաճեցին զԽազիրս: Ստուգիւ մէկ կողմէն Ռուսք երբեմն նեղեալք 'ի Խազրաց՝ կամաց կամաց զօրացան նաև տիրացան անոնց սահմանաց. մէկայլ կողմէն բուն տիրողք և անյիշատակ ընողք, և Սկիւթացի ազգաց գլխաւորութիւնը առնողք՝ յետ այնքան նախայիշեալ հզօր ու նետող և ասպատակող ժողովրդոց՝ եղան տաճկք Թուրքաց:

## Զ

Թուրք ազգն որ յետ ամենայն սկիւթական ազգաց հասաւ նախիշխանութեան և գերազանցեց քան զամենքը, թէ ընդարձակ թէ երկարատև աշխարհակալութեամբ և թէ քաղաքակրթութեամբ, ինչպէս 'ի սկզբան ըսի՝ 'ի հնուց առանձին զատ ազգ մը չէր ճանչցուած, այլ շատ զատանուն ազգք կամ ցեղք միաբանգամայն սեպուէին Սկիւթացի կամ Թուրք։ Հին պատմիչաց կամ աշխարհագրաց մէջ՝ Ե դարէն առաջ այս անունս որոշ գրուած չիգտուիր, այլ մօտ կամ ծռած ծեքած հնչմամբ մը. մինչև անկէ գրեթէ հազար տարի առաջ Երոդոտոսի յիշած Սկիւթացւոց նախահայր Տարգիտաւոն այլ՝ բանասէրք ճանչնան Թուրք կամ Թուրգոմ[1]։ Ըստ արևելագիտաց՝ Հնդկաց հին սանսգրիտ լեզուով գրոց մէջ Թուրուշգա կոչուի այս ազգս։ Զ դարէն ինչուան Ժ դար՝ առաւել կամ պակաս ծանուցեալ և յիշեալ է Թուրք ազգն. անկէ (Ժ դարէն) ետև քաջածանօթ եղած՝ իբրև աշխարհակալ ազգ մը. իսկ յետ ԺԴ դարու իբրև առաջին և տիրող ազգ արևմտեան Ասիոյ։ Ըսել է որ այս Թուրք ազգս՝ աշխարհիս ամենէն հին, նշանաւոր և բազմատարածման ազգաց մէկն է. և որուն բաղդին կամ սահմաններին ծայրն դեռ անծանօթ է, ինչպէս նաև իր իշխանութեան տակ ընկած շատ ազգաց այլ։ Նման այն գետոց՝ որոց

1 Ռաշիտ մեծ պատմիչ Թաթարաց 'ի ԺԴ դարու յիշէ Թուկրում անուամբ երկիր մը Պայքալ լճին արևելակողմը, զոր արևելագէտք սահման ստուգաբանեն։ Թուրքք՝ ինչպէս իրենց՝ այսպէս այլ Հայոց նահապետ ճանչնան զԹորգոմ, անոր համար այլ զմեզ և զիրենք հօրեղբօրորդի անուանեն։

հեռաւոր ակունքն ծանօթ, միջին ընթացքն ծածկուած կամ անորոշ մնան. շատ մանր վտակներ՝ որ անոնց մէջ կու թափուին կամ անոնցմէ կ'ելնեն՝ կարծուին թէ այն մեծ գետն են, և անոր անունը կ'առնուն. բայց ինքն գետն յետ երկար սահմաններ անցնելու՝ նորէն հեռու տեղ մը 'ի յայտ կու գայ՝ հզօր և լայն, և անկէ ետև ամենուն յայտ յանգիման յորդասահ կ'երթայ ու կ'երթայ։

Թուրքաց բնաւայրն ուր ըլլալն ըսի առաջ և ինչպէս կոչուիլն. նոյնպէս յիշեցի որ Թուրքք, Խազիրք և Հեփթաղք ստէպ շփոթին իրարու հետ 'ի պատմչաց. անոր համար թէ և Զ-Թ դարուց մէջ շատ հեղ յիշէն նոքա զԹուրքս, բայց չեմ գիտեր կամ չեմ ուզեր այսօր մանր պրպըտել, թէ անոնցմէ որն բուն Թուրք և որն օտար է. հաւանականն այս է՝ որ 'ի հնուց ժամանակաց Թուրքք առանձին ցեղեր և ժողովուրդներ բաժնուէին, և զանազան խաներ և խաքաններ ունէին, երբեմն ինքնագլուխ, շատ հեղ մեկու մը գերագոյն իշխանութիւն ճանչնալով, որ և Խաքանաց խաքան կամ Մեծ Խաքան կոչուէր. երբեմն այլ բոլորն մեկտեղ ուրիշ մերձաւոր հզօր ազգի մը հարկատու կամ հպատակ սեպուէին, ինչպէս էին Խազիրք և Հեփթաղք, (եթէ այս երկքիններս այլ չեն Թուրքի կամ Թաթարի խառնուրդ). որոց մերձաւոր են, (թէ ոչ նոյն այլ) Ճուճէնք կամ Ճուան-Ճուանք, և Թուին Ճուճէն յիշեալք 'ի մերոց նախնեաց, որոց տիրեցին Թուրքք 'ի կէս Զ դարու։

Թուրքք իրենց միջին դարուց առեն՝ ('ի Զ-Ժ դարս), Ուրալ գետէն ինչուան 'ի Տիպէթ և 'ի բնիկ Թաթարս տարածուած սեպուին զանազան ցեղերով, որոց գլխաւորքն կամ մեզի ծանօթագոյնքն են՝ այս յիշեալ միջոցիս (թէ և ոչ ամենքն

այլ մեկ առեն), սկսեալ 'ի հիւսիսոյ արեւմտից՝ (ուսկից և սկսան իրենց ծանօթանալ արեւմըտեայց), նախ Ուրալ գետոյն վերին կողմերը թափառող Պոլովցք՝ զորս համարեցանք մեր աշխարհագրին ըսած ահաւոր Բուշխ ազգը. յետոյ նոյն գետոյն (զոր արեւելեայք Եայըգ կամ Եայք կոչեն) վարի կողմերը և նաև անոր ու Վոլկայի միջոց՝ Փաչինէկք, զոր մերայինք և Բիւզանդացիք և այլք կոչեցին Պածինէկ, Պէծէնակ, և այլն [1]. և ըստ ոմանց նոյն են ասոնց հետ կամ մերձաւորհմք՝ Գանքարլը կոչուած Թուրքք: — Ուրալի ընթերքին արեւլակողմը, որ է ըսել Կազբից ծովուն հիւսիսա-արեւելեան կողմը՝ զանազան ցեղեր պիտի ըլլան, յորոց յիշեն Արաբացիք յ'Թ դարու զՀէֆէզ և Թէրքէղ: — Կազբից ծովուն և Արալայ ծովալճին միջոց ամենէն նշանաւոր ազգատոհմն է Ղուզ կամ Օղուզ կամ Կուզ ըսուածն, որ մերոց և արեւմըտեայց ծանօթ է Ուզ անուամբ. որք և ըստ ընթացից Սիհունի՝ երեք տոհմ կու զատուէին, 'ի Վերին, Միջին և Ստորին. բնական կազմուածով քան զուրիշ տոհմակիցս իւրեանց պզտիկ կամ կարճահասակ էին, այլ ուժով երբեմն գերազանցեցին քան զամենքն: Ասոնց մերձաւոր կամ սերունդ Թուրին Խուզեքք որ մինչև հիմայ ծանօթ են հոն: Ընդհակառակն իրենց սահմանակիցքն 'ի հարաւոյ արեւելից՝ Գուրցուքք՝ ամենէն մեծահասակք և զօրաւորք սեպուէին, միանգամայն և նախիշխանք, զի ասոնց էր Խաքանաց խաքանն. և թերևս ասոնց խաքանն էր իշխող ութ խաքանաց՝ Արսիլաս անուն (Արսլան?) յիշեալ 'ի Բիւզանդացւոց յամին 580: Ասոնց մեծ տէրութեան տևեց ինչուան յ'ԺԲ դար, յորում Չինաց գրակից Խի-

Այս անուանս՝ ըստ Թուրքաց՝ Պաճանաք, քննայր կու նշանակէ ըստ ոմանց, կ'ըսէ Համմէր:

թան աշխարհէն տէրն անկէ հալածուելով՝ եկաւ տիրեց այս Թուրքաստանի կեդրոն երկրին և անուանեց Գարա-Խիթայի. դար մը վերջը Ճենկիզ խան նուաճեց զայս այլ:

Բուն և առանց ուրիշ անուան յիշեալ Թուրքաց հզօր տէրութիւնն՝ Ձ դարուն կիսէն մինչև Ը դարուն կէսը քշած է, յորում նուաճեցին զանոնք՝ իրենց հիւսիսային արեւելակողմի բնակիչ Թուրքք: Ասոնց հիւսիսակողմը Թուլի Քիմաք ըսուած ցեղն. և հարաւակողմն կամ դէպ յարևելս՝ մեծ ցեղն Ույղուրք, խնամի Ղուզաց, որ և ցարդ յիշուին: Դար մը ետև զասոնք այլ նուաճեցին իրենց հիւսիսային արեւելեան կողմերը բնակող և ինչուան հիմայ հռչակեալ Խըրղըզք, յիշեալք 'ի Թ դարէ[1]. որոցմէ վար 'ի հարաւակողմն էին այն Գոկալկող տոհմն՝ որոց մայրաքաղաքը յիշեցինք Քուչան կոչեալ, որով և խառնուէին ընդ Հեփթաղաց և ընդ սահմանս Դիպէթ աշխարհի:

Արդ այս ամենայն ցեղից երկրին՝ որ մեծամասամբ անապատ է, հիմայ հիւսիսակողմը բըռնած են Խըրղըզք զանազան ցեղեր բաժնուած. աւելի վերնակողմն այլ Ռուսաց Օրէնպուրկի և ուրիշ նահանգներուն մէջ՝ բնակին Խազախք. իսկ վարի (հարաւային) կողմն է Խուարէզմ (հանդերձ Խուար անապատաւ) և Պուխարայի իշխանութիւնը. արևելակողմն այլ Թաթարաց մնացեալ իշխանութիւնք, զորս հիմայ Ռուսք կու նըւաճեն և գրեթէ կու վերցունի Թուրքաց և Թաթարաց անկախ ազատութիւնը՝ իրենց անհուն ազատ և անապատ երկիրներէն:

1 Մենանդր:

# Է

Դառնալով առ յիշեալ ցեղս Թուրքաց, ասոնց հնագոյնն և արեւմտագոյնն Փաչինէք՝ բնակէս առաջին ալ եղան 'ի ծանուցեալ և քաղաքավար աշխարհս մտնելու և բնակելու. Ժ դարուն կիսուն՝ արդէն ոչ միայն Վոլկա գետն անցած էին այլ և զՏնեպեր, և արդէն Աղախու ծովեզերքը բռնած ինչուան Դանուբայ կողմերը տարածուէին. Իրենց առջեւէն քշելով ինչուան Դանուբայ բերանը զՈւնգուր Հոնաց ցեղը, որ առաջնորդութեամբ Արբադայ՝ հաստատեց Մաճառաց տէրութիւնը. բայց իրենք այլ հալածուելով յՈւյզուր ցեղէն, և յետոյ (894) յՈւղզաց՝ օգնութեամբ Խազրաց, քշուեցան ինչուան Բրութայ և Սերեթայ հովիտները, և երթալով մօտեցան Բիւզանդացւոց սահմանաց. և իբրև բաւական ուժով տէրութիւն մը՝ շատ հեղ անոնց դաշնակցելով՝ օգնական եղան ընդդէմ այլոց Թուրքաց և Խազրաց, և ուրիշ պատերազմներու մէջ. երբեմն այլ ասոնց և Ռուսաց հետ՝ զՅոյնս նեղեցին մինչև ԺԱ դարուն վերջերը. յորում Ուզք բոլորովին նուաճեցին զՓաչէնէքս, ինչպէս նաև զԽազիրս, և տիրեցին դրեթէ բոլոր Վոլկայի և Դանուբայ միջոց՝ դէպ 'ի Կովկաս և 'ի Սև ծով սփռուելով: Յետին յիշատակ Փաչէնէքաց առ պատմիչս մեր հասնի 'ի սկիզբն ԺԲ դարու (1108), յորում Գող Վասիլ ասոնցմէ գունդ մը առաւ յօգնութիւն Պաղտուինեայ կոմսին Ուռհայու: Իսկ առաջին յիշատակ հզօր ցեղին Ուզաց՝ կ'ընէ պատմիչն Մեսրովպ, իբրև ընդ այլոց սկիւթական ազգաց Հոնաց և Մազքթաց՝ Պարսից օգնական եկած ընդդէմ Հայոց՝ Զիրաւայ դաշտին մեծ ճակատամարտին մէջ, յամին 372. բայց եթէ այն

տանէն չէ՝ յայս է որ պատմրչին տանէն 'ի Ժ դարու ծանօթ էր Ուզն, զոր յաջորդ դարուն մէջ շատ հեղ յիշէ և Մատթ. Ուռհայեցի, գեռ իբրև Պածինակաց հետ նիզակակից: Ուզաց իշխանութիւնն ԺԱ և ԺԲ դարուց մէջ զօրացաւ և տիրացաւ մինչև 'ի բանանալն Թաթարաց, և արևմտեայց այլ ծանօթացաւ, թէպէտ և պէսպէս անուամբք. վասն զի շատք 'ի միջին դարու Կոման անուանեն զանոնք, ինչպէս մեր Հեթում պատմիչն այլ. որ և վկայէ թէ շատ սպառազէն զօրք ունէին, և տարածեալ տիրէին Կազբից և Պոնտոս ծովուց միջոց՝ Կովկասայ ստորոտը լայնատիւա տափարակ երկրին, ուր և 'ի Քուպան գետոյ առին այդ անունը (կամ տուին անոր): Երկրին այդ տափակ բնութեանն համար Ռուսք անուանեցին զանոնք Բոլովցի, այսինքն դաշտային կամ դաշտաբնակ. զնոյն (խոպան գետին) նշանակէ չէղագայի Թուրք լեզուաւ Քոփչագ անունն՝ որով կոչէին սոքա. և զոր ԺԲ-ԺԴ դարու պատմիչք մեր գրեն Ղըփչաղ, Ղփչաղ, Խփչախ, և ստուգաբանեն 'ի Վրաց լեզուէ Ջուրտան, ըստ Միխայելի Ասորւոյ, «զի խփչն ձոր ասի, և չախն ամանն. որպէս »թէ յամանի կան 'ի ձորս (Կովկասայ), և ըստ »պիտոյից հանեն 'ի ժամանակս ժամանակս»: Կ'իմացընեն [1] այլ թէ առաջ այն երկիրն կ'ըսուէր Դաշտ Խազրաց, ինչպէս իրենց տանէն 'ի Տաճկաց այլ՝ Տէշտի-Քըփչաք. իսկ աւելի առաջ՝ ըստ Ստեփանոսի Օրբելեանց կոչուէր Աշխարհ Խայլանդրաց, զոր յիշէ հին հեղինակ մեր Եղիշէ: Արդ Ուզք-Կումանք-Քափչաքք նուաճելով զԽազիրս՝ խառնուեցան անոնց հետ. նաև ըստ Միխայելի՝ ոմանք քրիստոնեայ այլ եղան, և կ'օգնէին Հայոց և Վրաց: Ասոնք էին բուն մեծ և միջին մասն ազ-

1 Ստեփ. Օրբելեան:

դէն, որոց ակերեց 'ի կէս ԺԳ դարու Պայտու խան որդի Օխադայի որդւոյ Ճինկիզ-խանի, և անկէ ետև Թաթարաց անցաւ սկիւթական տիրապետութիւնն. յորոց հալածեալքն այս տեղէն՝ գացին իրենց արևմտեան ցեղակից եղբարց քով, որք Պածինակաց անուն բանակ էին և մինչև 'ի Թրակիա սփռէին. ոմանք այլ անցան գնացին ինչուան Ունկարաց երկիրը (Մաճառք), որոյ համար առանք այլ Կումանք կ'ըսուէին: Իսկ մէկ մասն այլ Ուզաց՝ մնացեր էր միշտ իր հին բնաշխարհին մէջ յարևելս, Թուրքեստանի և Ճիհունի սահմանները, և պահէր իր հին անունը. որ ըստ աւանդութեան նոցա ծագեալ է յՕղուզայ՝ որդւոյ Գարա-խանի՝ (իբրև վեցերորդ 'ի Նոյ նահապետէ). որք և դարձեալ կ'ըսեն անոր համար՝ թէ իր ազգականաց հետ կռուելով վասն աստուածպաշտութեան՝ իրեն հպատակեցները անուանեց Ույկուր, այսինքն օժանդակ, օգնող. և անկէ ծագեցաւ Ույկուր ցեղին անունն:

Ուզաց մէկ մասին դէպ յարևմուտս երթալն՝ թուի թէ իրենց գլացի ցեղերէն նեղուելուն համար եղած է. և մնացեալքն հարկաւ աւելի տկարացան. և յ'Թ դարուն ուրիշ շատ ցեղից հետ Խազրաց ինքնակալութեան տակ ընկած էին:

## Ը

Այս ատեններս Ղուզաց գլխաւոր ցեղապետաց մէջ անուանի էր Տէգագ կամ Թօքմաք. որ և ըստ աւանդութեան նոցա 33դ էր յԷֆրասիապայ Թուրանի (Սկիւթիոյ) հսկայ թագաւորէն, (որ հին Պարսից քաջաց գլխամարտն էր). Խազրաց բէկին կամ խաքանին այլ մեծ իշխաններէն մէկն էր. և կոչուէր ևս Թէմուր-Պալիղ, այսինքն Երկաթաղիղ, երկաթածայր նետ կամ երկաթա-

կայք աղեղ լաւ գործածելուն համար, (որ ըստ մեր ոճոյ ըսելու էր հապաղչըն կամ հապաղչիգ ա-ղեղնաւոր): Սա է Նախահայր առ մեզ Նախադրու-շակեալ կամ համբաւեալ աշխարհաւեր ՆԵՑՈ-ՂԱՑ: Սոլեզանը այես խստասիրտ կամ մեծասիրտ ըլլալով՝ գժտեցաւ Խազրաց խաքանին հետ և կ'ուզէր գլուխ քաշել. բայց միջնորդութեամբ բարեկամաց դարձեալ հաշտեցաւ և պատիւ գը-տաւ 'ի խաքանէն, որ Տեգազայ Սելջուկ որդին իր արքունեաց մէջ սնուցանել տուաւ. և երբ քիչ ատենէն Տեգագ մեռաւ՝ Սելջուկ անուանեցաւ զօրավար: Սա տեսնելով որ արքունի իշխանք վրան կու նախանձին, ինքնակամ թողուց արքու-նիքն այլ[1] և եկաւ (յամի 956 կամ 964) Սմրղան-տայ և Պուխարայի կողմերը, ու բնակեցաւ 'ի Ճանդ: Հոս մահմետական կրօնքն ընդունելով[2], սկսաւ ոչ միայն պաշտպանել կրօնակիցքը՝ այլ և հալածել նեղել այլահաւատները, և իրեն կող-մնակից շատցընել, որովք զօրացաւ և աթոռը հաստատեց 'ի Պուխարա. ուր և մեռաւ ՃԱ տա-րուն սկիզբները (ըստ ոմանց յամի 1020) 107

1 Մեր Կիրակոս պատմիչն՝ Սելջուկեանց բնավայրը կ'անուանէ «Սղնախն՝ որ է Խարշուխ լեառն, յորմէ Սալ-»չուխքն են»: Իսկ Միխայէլ Ասորի կ'ըսէ, «Ելին »Թուրքք յերկիրն Աչնոռղէ. այս եղև սկիզբն ելից »Թուրքաց»: Ուրիշ տեղ կ'ըսէ թէ յԱրաղայ աշխար-հէն՝ որ 'ի սահմանս Պարսից՝ ելան Սալջուկեանք բանա-դատեալք 'ի Մահմուտ Սուլտանէ:

2 Այս ատեններս ուրիշ Թուրք իշխան մ'այլ Ճիհու-նի և Սիհունի միջոցէն՝ Սողըր կամ Սեբեւ՝ մահմետա-կան կրօնքը ընդուներ էր, և իր նախնեաց սովորութիւն-ներէն քիչ մը հեռանալովն իր հետևողքն և ազգն՝ Թիւրք-իման (Թրքակրօն) (Թի—ր+ման) կոչուեցան, այսինքն Թուր-քի նման. և ատենցմէ մաս մը Խուարէզմի մէջ բնակեցաւ, մաս մ'այլ անցնելով յարևմուտս՝ եկաւ 'ի Հայաստան:

տարուան։ Իրմէ առաջ՝ բերդ մը պաշարելու ատեն՝ մեռեր էր իր անդրանիկ որդին Միքայէլ, երկու կտրիճ թողլով, Ջաֆըր պէկ և Տօղրուլ պէկ, զորս մեծցուց և կրթեց պապերնին։ Յետ անոր մահուան՝ այս երկու եղբարքն միաբանք և միասիրտք՝ սկսան աշխարհակալութեան. շատ պատերազմներով հալածեցին զԱլպէկին կամ Իլէք խանն Ամրդանայ։ Ըստ վկայութեան բազմաց՝ Մահմուտ Սապըքթէկին (Սէպէքթէկին) Ղազնէւեան սուլտանն՝ հրաւիրեց զանոնք Ճիհունը անցնիլ և Խորասանի սահմաններն գալու, թէ և շուտով զղջացաւ՝ տեսնելով անոնց ուժը. ոմանք այլ՝ (որ այնքան հաւանելի չէ) բանի և գերութեամբ բերաւ կ'ըսեն զանոնք։

Այսպէս աւանդեն և մեր Միխայէլ Ասորին, և Վահրամ Տիգրանայ որդին կամ Տիգրանակերտցի պատմիչ մը (առ Վարդանայ). այլ ստուգագոյն ևս Մխիթար Անեցին, որ « Յոլով աշխատ
» եղէ, կ'ըսէ (առ Վարդանայ) գտանել զորպէսն
» սուլտանացն՝ որ 'ի Թուրքաց, և գտի շնորհօքն
» Աստուծոյ այսպէս. Մահմուտն զոր ասացաք՝
» Սպքթանայ որդի... 'ի գնալն յօգնականութի
» ազգին՝ որոց գլխաւորն կոչիւր Խորղան Պօղըր-
» ղան (այսինքն Գատըրխան որդի Պօղրախանի,
» տէր Քաշկարայ, զոր նեղէր Իլէկ խանն), 'ի
» Ճանապարհին պատահէ բազմութեան ինչ Թուր-
» քաց (Սելճուկեանց), և 'ի դառնալն նոյն Ճա-
» նապարհաւ՝ մեծաւ յաղթութեամբ, առեալ
» զամիրայն նոցա զԱփաղու (որ է Բէկ կամ
» Բայղու որդի Սելճուկի), բերէ 'ի Խորասան և
» դնէ 'ի կապանս. և ազգ նորա (եղբարքն և եղ-
» բօրորդիք) եկեալ խնդրեցին... և ոչ ետուն։
» Իսկ նոցա բարկացեալ անցին ընդ Ջահան՝ ամե-
» նայն բանակօքն իւրեանց, և զանձինս 'ի մահ
» եդեալ կռուեցան և յաղթեցին, և առին զՆը-

» շաւորն, և կոտորեցին զզօրս Սուլտանին 'ի Դա-
» ղանղանն մօտ 'ի Մրմն...: Իսկ յառաջադէմն 'ի
» Թուրքացն՝ որում անուն էր Մուսէ Աղա (Մու-
» սա Բէկ) Սարչուքեայ որդի, ունէր հինգ եղ-
» բօրորդիս, որոց անուանքն Աքուսալիմ, Դա-
» ւութ, Զաղըբէկ, Աքուտալիփ, Տօղրիլ-բէկ,
» որ և առ զիշխանութիւն սուլտանութեանն», և
այլն: (Ըստ վերոյգրելայս՝ Զագր և Տօղրիլ՝ որդիք
են Միքայելի մեծ որդւոյն Սելճուգայ):

Ոչ այս պատմիչներս (Մխիթար և Տիգրան)
գտուին այսօր, և ոչ անոնցմէ հինն և մեծ իմաս-
տասէր գրիչն Յովհաննէս Սարկաւագ, որ նոյն
բաները քննութեամբ գրեր էր, և որոյ քանի մը
խօսքն մնացեր է (առ Սամուէլի Անեցւոյ). «Ըս-
» կիւթական ազգաց՝ ոչ հելլենախօսիցն այլ բար-
» բարոսացն՝ եղեալ մուտ յաշխարհս, որպէս ա-
» սեն, այսպիսի պատճառաւ: Ջոլովս նուա-
» ճեալ ազինս որ յայնմ ժամանակի Թագաւոր-
» քըն... և կրեալ ապա զընդդիմութիւն 'ի Հընդ-
» կականացն՝ ոչ սակաւ ժամանակս, հրաւիրեն
» յօգնառատ խոստմամբք պարգևաց զխուժա-
» դուժսն 'ի մարտակցութիւն. և մարտուցեալ
» նոքօք ժամանակ ինչ՝ ընկրկեր (Մահմուտ) զա-
» պըստամբն. և զի կամէր միւս անգամ գումա-
» րել 'ի մարտ՝ անդրէն դառնալ արգելոյր զե-
» կեալսն. և 'ի լինել պատապմանն՝ լքանէր զկեն-
» ցաղս արքայն: Իսկ Մեգացւոցն (որ Թուրն
» ըստ Մխիթ. Անեցւոյ՝ Մարաց Ոէ կամ Ոա-
» դաւ երկրին տեարքն) եղեալ դաշնադիր ընդ
» օտարսն՝ մերժեն զՊարսիկքն, և դրաւեն զիշ-
» խանութիւնն, որպէս ոմանք ասեն, Սկիւթա-
» ցւոցն, այլ որպէս վարկանիմ, Բակտրիացւոցն.
» (և սոքա) բառնան զյոլովից ազանց տէրութիս
» մեծամեծ պատերազմօք անզօրմաբար զամենե-
» սին սատակելով»: Նրբախօս վարդապետս կ'ե-

րեւ ըսել, թէ Ղազնէւան Պարսից հպատակքն՝ անանցմէ ապստամբելով՝ յօգնութիւն կոչեցին զՍկիւթացիս, զորս լաւ ևս էր ըսել Բակտրիացիս. վասն զի այն հին աշխարհին կողմերը՝ որ է Բահլ՝ նախ տիրեցին այս Սկիւթացի ըսուած Թուրքերն՝ սերունդք Սելճուկի զոր Սարչուկ կոչէ պատմիչս (Սարկաւագ)։ Ուրիշ մեր մէկ շարաբան պատմիչ մ'ալ՝ (Վահրամ Րաբուն 'ի վերջ կոյս ԺԳ դարու) ասոնց համար կ'աւանդէ.

« Ի հիւսիսոյ եղեն շարժեալ
Ազգ՝ որ կոչմամբ Թուրք անուանեալ.
Ի քսան և չորս ցեղս որոշեալ
Զիշխանութիւն Տաճկաց առեալ.
Թէպէտ յաղանդ նոցին դարձեալ,
Եւ կայսերաց յաղթող գըտեալ ». եւն, եւն։

Այսչափս բաւական սեպենք, Հայկակ, այս նոր տիրապետող Թուրք ցեղին՝ (Սելճուգեանց) ծագման վրայ, ճանչնալով մեր հին հեղինակաց ոմանց կարծիքն ալ, և ցուցելով անոնց գրոց կորստեան կամ մեր ձեռքը չհասնելուն վրայ. որով անոնց քով չգտածնիս՝ առ օտարս և ընիկ պատմիչս արևելեան ազգաց բնտրենք, մանաւանդ այն Նեստորեաց առաջին ասպատակին գլխաւորը և պատճառը, որ իմ այսքան երկայն խօսիցս և բարբարոս յիշատակաց պատճառ եղաւ։ Ուսկից և որոյ առաջնորդութեամբ եկած էին անոնք 'ի տունն Սեննեքերիմայ 'ի Վասպուրական երկիր, այսպէս կանուխ՝ յամին 1019 (ինչպէս որ պիտի պատմեմ քեզի ուրիշ օր մը), մինչդեռ ուրիշ և ոչ մէկ արևմտեան Ասիոյ կողմ մը լսուած էր Սելճուգեանց անունն և գործն։

# Բ

Սելչուգայ Թոռներն Ճիհունէն սաղին անցած տիրապետելով՝ կամաց կամաց սկսան դէպ 'ի հարաւ յառաջել, և Ղազնէեան Մահմուտի բուն սահմանաց՝ այսինքն Խորասանի մօտենալ. բայց դեռ ակնածելով անկէ, որ կամ իրենց բարերարն էր կամ կըրնար զօրաւոր Թշնամի ըլլալ: Սակայն աշխարհակալութենէ աւելի էր իրենց աւարառութեան փափագն, և ալ աւելի դրդուէր՝ լսելով արևմտեան աշխարհաց հարստութիւնը. զոր և ցանկութ̄ հեռուէն քննելով՝ ինչպէս որ 'ի բարձրէն որսը կու դիտէ բազէն, յանկարծ Նետողաց տոհմապետ բազէանուն Զագրպէկն այլ՝ Թեւերը Թօթափելով, հետը իր Թուղրլբէկէն զատ գունդ մ'այլ Թիւրքմէն առած, կապարճն ուսերուն վրայ ցըցած, աղեղն 'ի ձեռքն, նետերն առջևնէն Թռցընելով, կտրեց անցաւ Խորասանէն յերկիրն Մարաց, անկէ այլ յԱտրպատական և 'ի Հայս: Մինչև ուր երԹալն յայտնի չէ. բայց հասած կոխած է ինչուան Յունաց ինքնակալութեան արևելեան սահմանը, որ այն ատեն Հայաստանի մասն էր. և յանկարծահաս մրրկի մը պէս կարկտալով կոխած տեղը՝ կրցածը կորզեց խլեց, դիմացը կեցողները զարկաւ, ինչուան շատ բերդեր այլ անզգոյշ գտնելով՝ նուաճեց. և շրջան մ'ունելով նոյն աւարառութեամբ և աւերածութեամբ՝ դարձաւ յետս իր տեղը: Մահմուտ սուլտանն լսելով անոր իր երկրէն անցնիլը՝ դժարեր և պատուիրեր էր որ 'ի դարձին բռնեն զԲազէն. բայց այն խորամանկն ծպտելով օտար փետուրներով՝ (վաճառականի զգեստով), անցաւ Մահմուտի սահմաններէն և հասաւ 'առ եղբայրն իւր Տողրուլ 'ի Պուխարա:

Ահա անշուշտ այս աւարառու Բաղէին ասպատակութեան դարձին ատենն էր՝ քիչ մը վերջը քեզի պատմելու դէպքս Վասպուրականի մէջ յ՚առաջին մուտն Նետողաց 'ի Հայս. որոց ձիրաններէն փախաւ հնացեալ Արծունին Ասուր-Հայոց (Սենեքերիմ Արծրունի). և այլէկ ժամուն աճապարեց: Վասն զի նոյն տարին (1021) Ջագըրայ եղբայրն անուանին Տուղրիլ այլ արշաւանք մ՚ըրաւ 'ի Հայս, մինչև 'ի կենդրոն Այրարատեան աշխարհին՝ 'ի Դուին. թէ և ինքն ալ եղբօրը պէս շուտ դարձաւ, և թերևս անկէ աւելի ծեծուած. վասն զի Բագրատունեաց սպարապետն՝ քաջն Վասակ Պահլաւունի (հայր Գրիգորի Մագիստրոսի՝) հսկայ զօրավարի մը հետ ըմբշամարտելով՝ յաղթեց, սպաննեց, ցրուեց բանակը. ինքն ալ յետ յաղթութեանն դարանակալի մը ձեռօք սպանուած՝ նահատակ սեպուեցաւ: Պատմիչն՝ Մ. Ուռհայեցի՝ այս ասպատակողքս ոչ Սելճուկեան Թուրք՝ այլ Դելմիկ (Տիլէմ) կ՚անուանէ. այսինքն այն ժողովուրդն՝ որ Կազբից ծովուն արեւմտեան հարաւային եզերքը կը բնակէր՝ մօտ 'ի Գիլան, սահմանակից հին Կազբից Հայոց կամ Փայտակարան աշխարհի. որ և յիրաւի առանձին թագաւորութիւն կանգնեց ժ դարուն մէջ Խալիֆայից տէրութեան երկպառակութեան ատեն. սակայն Անոյ մօտ Մարմաշէն վանաց եկեղեցւոյ գեղեցիկ արձանագրութեանց մէջ՝ Վահրամ եղբայրն Վասակայ՝ կ՚ըսէ ասոր համար. «Նահա-
» տակեցաւ 'ի Թուրքաց պատերազմի»:

Այս գիպուածէս ետև 20 տարւոյ չափ Թուրքք, քաշուեցան յարևմտից, զարևելք սեպհականելով իրենց, վերցընելով Ղազնէւեանց տէրութիւնը և ուրիշ մանր թագաւորներ. Տուղրիլ անուանեցաւ սուլտան (1038), յետ մահու եղբօրն՝ Ջագըրայ. ամիրապետէն այլ առաւ պատիւ ու

հաստատութիւն իշխանութեանը․ այլա համարձակ դիմեց յարձմունս, և աւելի համարձակ ուշատ անգամ 'ի Հայս, ուր Բագրատունեաց տէրութիւնն այլ դադրեր էր։ Քսան տարուան միջոց (1042-1063) գրեթէ ամեն տարի մեր աշխարհէն մէկմէկ կամ նոյն կողմերը ասպատակեցին Թուրքք, և ահա անոնց ըրածն՝ լսելու ու չլսելու արժանի՝ ողբաբանէ Լաստիվերտցին, մամ՝ այլ Մատթէոս Ուռհայեցի․ զորս կրնաս աչքէ անցընել, եթէ սիրես դու այլ, Հայկակ, արեան ու կրակի վրայ արցունք թափել․ մանաւանդ եթէ Արիստակէսի հետ հանդիպիս 'ի Վաղարշաւան (1044), յԱրղնի և 'ի Թլխում (1046), 'ի Բասեն (1048-1050), յԱրծն (1049), 'ի Կարս (1053), 'ի Հարք (1055), յՕկոմի (1056), 'ի Բերկրի և յԱրճէշ (1054), 'ի Դ Հայս և Տայս (1054-1057) 'ի Միջագետս Հայոց (1057), 'ի Կամախ և Մելտենի (1058), 'ի Սեբաստիա (1060), 'ի Պաղին և Թլխում (1063)․ և այլն, և այլն։ Կըրնաս երբեմն այլ սրբել աչքերդ, տեսնելով ամուր քաղաքաց (Անւոյ, Կարնոյ և Մանազկերտի) ընդդիմանալն Թուրքաց․ եւ առաւել լեռնորդ Սասնեցոց արիաբար կռուելն 'ի Տարօն և անկից հալածելն զԹշնամին (1058)։ Սակայն այլ աւելի պիտի դառնացընեն զքեզ գործք Տուղրիլի եղբօրորդւոյն և յաջորդին, այն անէղ առիւծուն (Էլփ-Արսլան) որ ութ ինն տարուան մէջ (1064-72) թերևս հօրեղբօրը 20 կամ 30 տարուան մէջ ըրածները գերազանցեց չարաչար։

Անի՝ չքնաղագեղ քաղաքն քաղաքաց Հայոց՝ իբրև անճար սպանդ ոչխողխող եղաւ, ըստ Պատմըչին․ ոչ Մանազկերտ՝ որ իբրև քսան տարի առաջ դիմացեր էր երկար պաշարման և Տուղրիլի ամեն թնդաքար թաթաններուն, կրցաւ Ալփարսլանայ դէմ կենալ, և ոչ Հայոց և Յունաց միա-

բանեալ գունդքն՝ անար աշխարհաւեր բանակին
դէմ։ Կայսրն Կոստանդին Դուկեն՝ իբրև Հենն
Վաղերիանոս 'ի Տաղհոյ՝ բանտուեցաւ որս ընկաւ
ձեռանց առիւծանուն Սելջուկին, որ մանչելով
չորս կողմ կու յարձըկէր և աշխարհիս աւերը
փութացընէր, եթէ իր անկարծ և չարաչար մահն
այլ չփութար (1072), մանաւանդ անկէ ետքը
իր որդւոյն Մելիքք Շահին խաղաղասէր թագաւո-
րութիւնն (1072-1092). վասն զի սա թէ և հօրը
փափագը կատարեց՝ աշխարհակալելով մինչև ցեզր
ովկիանոս, (այսինքն Միջերկրական ծովուն Ա-
սորւոց), և մնաց հոն իր արեամբ կրակած սուրը,
սակայն դարձուց 'ի պատեանը, և բանաքարնուա-
ծնելոց՝ հայրաբար տիրապետեց։

Այս Ալփ-Արսլանայ գործոց յարմարի կամ
յարմարեալ է Ներսիսեան ըստուած գուշակու-
թիւնն, որ և թուականաւ այլ ըսէ թէ «Յարի-
» ցեն ազգն այն Նետողաց... իբրև լնուցու 700
» ամաց ժամանակ (յետ մահուան Ս. Ներսի-
» սի)... յարևելից աշխարհէն, բուռն կազմու-
» թեամբ ժիր և քաջ ասն և ձիոյ, սուսեր թև-
» ւոր ընդ մէջ ածեալ...։ Եւ նոքա բարկութ՟
» և ապականութեամբ աւերեսցեն զերկիր ըն-
» իւրով և սանձահարեսցեն զամենայն զարևելք
» և զհիւսիսի և զհարաւ և զարևմուտք, մինչև 'ի
» ծովն Յունաց, և զգեղեցիկ նաւահանգիստն.
» կոտորեսցեն զհազարս և զբիւրս, և զաթոռս
» թագաւորաց յերկիր կործանեսցեն. և 'ի նո-
» ցանէ դողասցեն ամենայն երկիր. զի 'ի Տեառնէ
» ուղղին զնացք նոցա 'ի վրէժխնդրութիւն աշ-
» խարհի ամբարշտելոց։ Որպէս արծուի ե[illegible]-
» գաթև սլասցին ձեպով ընդ երկիր, զի Տէր [illegible]-
» չեաց զնոսա յարևելից 'ի ծագաց արեգականն.
» և քաղաքք մի փակեսցին առաջի նոցա, և նե-
» տիւք սպառեսցեն զերկիր. արբուցանեն զնետս

» իւրեանց յարխունս ամենայն ազգաց հեռաւո֊
» րաց և մերձաւորաց։ Իսկ Նեղիչք քրիստոնէից
» ազգն արևելեան լխագիրկք և պնդաձիգք Նետո֊
» ղաց՝ ոչ քաղցիցեն և ոչ ծարաւեսցին և ոչ խոր֊
» շակահարք եղիցին վասն բերկրելոյ սրտից իւ֊
» րեանց և յաջողութեան գործոց իւրեանց։ Այլ
» ասպատակեսցեն ընդ երկիր. և ընթասցեն որ֊
» պէս կարապետք Նեռին». և այլն։ Յայտնագոյն
ևս Նշանօք յիշէ կարծեցեալ գուշակութիւնն ըզ֊
Տուղրիլ և զԱլփարսլան. «Բարկացեալ սրտմը֊
» տութեամբ Տէր... յարուցանէ յարևելից կող֊
» մանէ... Խորասանայ՝ Թագաւոր այլադէմ և
» այլալեզու , անուն Նորա Սուր և Թեթև և ըզ֊
» գաստ... ահեղատես և զարմանալի , ժպիրհ և
» սէգ և լիրբ և երկայնահեր. (և այլն).։ Եւ զկնի
» առաջին Թագաւորին այնորիկ՝ զոր յայտ արա֊
» րաք , Նստցի 'ի Նոյն ազգէն Նորին անուամբ եր֊
» կրորդ Թագաւորն , 'ի Նոյն յաթոռ յարևելից՝
» որ առաւելու չարեօք քան զառաջինն , սերմն
» ժանդ և որդի դառնութեան. Նա բարձցէ զքա֊
» հանայապետութեան և զԹագաւորութեան ա֊
» թոռ 'ի Հայաստան աշխարհէ. խստորեսցի յաջ
» և յահեակ , և կերիցէ զմարմին բազկի իւրոյ , և
» ոչ յագեսցի. այլ ինքն իւր ազգատոհմին ոչ
» խնայեսցէ. և է գազան սաստիկ և յափշտակող
» յայտնեալ , և արագաթև արծուի օրինակեալ
» զնա. և ունելով զբաժակ դառնութեան՝ ար֊
» բուսցէ զամենայն հասակ մարդկան։ Նա ըմ֊
» բռնեսցէ զոմն 'ի Թագաւորացն Յունաց 'ի սահ֊
» մանս Հայոց , մեծաւ յաղթութեամբ. (և այլն)..
» Եւ յետ այս բռնակալաց ,.. Նստցի այր խաղաղ֊
» արար... (Մելիք շահ) և խնամակալու քրիս֊
» տոնէից , բարեհամբաւ բարետեսակ». և այլն։

Այս կարկատեալ մարգարէութիւններէն ա֊
ւելի ազգու են մեզի մեր ժամանակակից պատմը֊

չէին (Լատոստիկմարտացոյն) զօրույթքն ողբաձայնք. »Ո՛ր » անդաւնդք անհնարինք քան զԹուրքաստան » կամ զեզերս երկրի խորագոյն է, յորս մեր գե- » րիքն հեռացեալ կորեան»..: Ուրիշ մերձաւոր մ՚այլ ժամանակաւ[1] կ՚ըսէ. «Ազգք Թուրքաց » տիրեցին աշխարհի ՚ի ծովէն արևելից (Կասպից) » մինչև ցծովն արևմտից, և ոչ մնաց ՚ի նոցանէ » մինչև ցքարանձաւ մի՝ որ ոչ մտանեաց Ա- » տուած ՚ի ձեռս նոցա». և այլն:

Ահա այս ատեն Նետողաց նետերէն փախչելով բազմութիւնք Հայոց՝ իբրև յաւիտենական մնաս բարով մը ըսին հայրենեաց և անոր սահմանաց, և հեռացան մինչև ՚ի միջավայրս Եւրոպիոյ, ՚ի Լե-հաստան, և այլն:

Յետ մահուան Մէլիք շահի՝ Սելճուկեանց իշ-խանութիւնն իրեք չորս ճիւղ բաժնուեցաւ. գըլ-խաւորն էր սուլտանն Պարսից՝ որ և տիրէր մեր աշխարհաց. երկրորդն՝ Սելճուկեանց նախ բնա-կած տեղերուն վրայ կ՚իշխէր, այսինքն Խուարէզ-մի. երրորդն եղաւ սուլտանն Իկոնիոնի, այսինքն Ղօնեայ, և ամենէն աւելի երկարատև եղաւ, գրե-թէ մինչև ՚ի վերջ ԺԴ դարու, և դրակից ըլլալով Ռուբինեան Թագաւորաց մերոց՝ իրարու հետ շատ գործ ունեցան. չորրորդն՝ սուլտանք Հալէ-պի և Դամասկոսի, որոց ՚ի կէս ԺԳ դարու (1260) տիրեցին ԹԱԹԱՐՔ:

Ժ

Այս ազգս (Թաթար) յետոյն եղաւ սկիւթա-կան ասպատակողաց, միանգամայն և ամենէն հե-տու հասնող, ամենէն հզօր կամ վայրագ, կամ լաւ ևս ըսել՝ ամենէն աւելի Նետող. այնպէս որ

1 Շարունակող պատմութեան Թոմ. Արծրունւոյ:

մերայինք տասը սեփականած են այդ կողմը, Ազգն Նետողաց. և Ներսեսեան գուշակութիւնք տանց վրայ խօսին յետ Սելջուկեանց: Թուրքաց ցեղակից և 'ի Թուրքաստանէ ելեալ դէպ 'ի յարևելս ծաւալեալ և շատ տոհմեր բաժնուած էին Թաթարք, որոց առաջին նահապետն կամ գաղթականի առաջնորդն՝ անծանօթ է. բազմաթիւ տոհմից գլխաւորներէն մէկն էր Մողոլ (Մոնկոլ ըստ Եւրոպացոց), որ և հին Պարթևաց ազգ մարտական կամ փոխառեալ կու նշանակէ. ուսկից յառաջ եկաւ աշխարհիս ամենէն աւերածու և բռնակալաց մէկն կամ առաջինն, Ճենկիզխան. որոյ արիւնաղին պատմութիւնն մեր այսօրուան տեսարանէն դուրս Թողունք. ԺԲ դարուն վերջերը իշխանութիւնը ձեռք առած՝ սկսաւ աշխարհակալութեան 'ի չորս կողմն, և տիրեց 'ի Չինաց մինչև 'ի Կիւլիկիա. 'ի հիւսիսոյ արևմտից այլ մինչև 'ի Ղրիմ, մինչև 'ի Ռուսս և 'ի Լեհս, իր նմանաբարոյ որդւովք և Թոռամբք. Նուաճելով և ջնջելով Պարսից Խուարեզմի Սելջուկները, որոց յետինն էր Ճելալէտտին սուլտան: Ասոր բաժինը ժառանգեց Հուլաղու խան (1258), Թոռն Ճենկիզայ. իր սերունդքն պայազատեցին տիրելով մեր աշխարհին և արևմտից՝ դար մը ժամանակ. յետ որոց արիւնկզակն Լէնկթիմուր գլուխ եղաւ նոր պայազատութեան, որ տևեց մինչև ցվերջ ԺԵ դարու. յորում (1499) Շահ Իսմայէլ Սէֆեան՝ Պարսից նոր Թագաւորութիւնը հաստատեց և Նետողաց բռնութիւնը վերջացաւ:

## ԺԱ

Բայց բուն անոնց տէրութեան յաջորդ եղաւ դարձեալ Թուրք տոհմ մը, որ մինչև ցարդ կումնայ մեծատարած իշխանութեամբ, բայց և քա-

ղօղքական օրինօք։ Այս Թուրք տոհմս ծագեալ 'ի հզօր Ուզուզ Թուրքաց, զոր նախ տեսանք, կոչէր Գայիխանըլը, Թերևս յանուն Գայի-խանի որդւոյ Թուրք-խանի՝ Թոռին Յաբեթի նահապետի, ըստ աւանդութեան նոցա։ Այս Գայի խանէն յորդւոց յորդիս ցեղաբանելով յիններորդ կ'ըլլայ Սիւլէյման շահ, որ կու տիրէր իր տոհմին՝ 'ի Մահան քաղաքի 'ի կողմանս Մէրուայ, ուր եկեր էին իր նախահարքն Սէլճուգայ հետ՝ իրենց խոր աշխարհէն։ Երբ Ճինկիզխան հալածեց զՃէլալէտտին՝ Սիւլէյման նախապատիւ եղաւ Խուարէզմի կողմի իշխանաց մէջ. բայց Թաթարաց ոտնակոխ չըլլալու համար՝ փախաւ չուեց բազմութեամբ իրեն հաւանելոցն, եկաւ նախ բնակեցաւ յաշխարհն մեր 'ի Հայաստան, 'ի կողմանս Խլաթայ. ուր շատ դարերէ 'ի վեր մահմէտական տէրութիւն մը հաստատուած էր. բայց Թաթարաց վախէն՝ անկէց ալ հեռացաւ անցաւ յարևմտեան Հայս, յիշխանութիւն Իկոնիոնի Սէլճուկեան սուլտանին՝ Ալայէտտին Քէյքապատայ, որ մարդասիրապէս ընդունեցաւ և տեղ տուաւ անոր 'ի սահմանս մեր հին Եկեղեաց գաւառին (Երզնկա). անկից եկաւ 'ի Ջահան գաւառ (Մարաշ)։ Յետ մահուան նորա՝ իր Էրդօղրուլ որդին նորէն դարձաւ 'ի Մեծ Հայս՝ 'ի Բասեն գաւառ, յետոյ դարձեալ 'ի Փոքր Հայս և 'ի Փ. Ասիա. ուսկից իր որդին Օսման՝ նախապետ համանուն մեծիշխան Թագաւորաց, և իր որդիքն՝ չորս կողմի տիրելով, և աւելի դէպ յարևմուտք երթալով՝ յետ դարու կիսոյ հաստատին և դրին իրենց աշխարհակալ իշխանութեան աթոռը՝ աշխարհիս ամենէն հզօր մեծ և գեղեցիկ քաղաքին մէջ, 'ի Կոստանդնուպօլիս, զոր կոչեցին և կոչեն Ստամպօլ մինչև հիմայ։

Հոս հին Աքարիսի նետն իր վաղուց կորուած կապարճը գտաւ, մտաւ։ Պայազատք պայազա-

*տայ Նետողաց՝ նոր զէնքերով իրենց ահը և զօրութիւնը հին աշխարհիս իրեք մասանց մէջ այլ տարածելով, (ուր մինչև հիմայ այլ կու տիրեն), երբ աշխարհակալութեանց եղերքն սահմանեցան, ՚ի քաղաքական կրթութիւնս դարձուցին իրենց ընթացքը, ըստ եւրոպական հրահանգեալ ազգաց, և դեռ այս անծայր ասպարիզին մէջ կու կշռեն քայլերնին։ Աշխարհիս խաղաղութեան և խռովութեան մէկ բաղդաշարժ քուէն՝ այս սկիւթական Թուրք տոհմին տրուած կ՚երևի ՚ի հնուց մինչև հիմայ, և գուցէ մինչև ՚ի հեռագոյն և յանծանօթ երբս ժամանակի. ինչպէս ուրիշ մեծազօր քուէ մ՚այլ՝ անոնց հին դրակից և մեծ մասին տիրող սարմատական Ռուս տոհմին։*

# ԻԸ

# ԱՌԱՋԻՆ ԱՍՊԱՏԱԿ ՆԵՏՈՂԱՑ Ի ՀԱՅՍ

1 *Յունիսի*, 1019.

## Ա

« Ժամանեցին մեզ աւուրք չարչարանաց, և
» գտին զմեզ նեղութիւնք անհնարինք... Ազգք
» օտարածնաց օտարացուցին զմեզ 'ի բնակու-
» թենէս մերմէ. և դարձան փառք մեր յապակա-
» նութիւն... Յաջորդք 'ի յաջորդաց փոխանակե-
» ցին, և նուազեաց արդիւն արծարծիչ շնչոյ կեն-
» դանութեան. հաստատունք յաշխարհի 'ի պան-
» դխտութեան իւրեանց պանդխտեցան երկրորդ-
» անգամ, և եղեն վտարանդիք 'ի ձեռանէ պան-
» դխտաց ապստամբաց. 'ի մերձեաց քակտեալք,
» զորս ոչ սուր սատակեաց, ցրուեցան զօրէն աս-
» տեղաց մոլորական կոչեցելոց...: Բարձան ու-
» րախութիւնք յերկրէ. լռեցին ձայնք քնարաց,
» լռեցին բոմբիւնք թմբկաց. բարձրացան աղա-
» ղակք լալեաց »:

Այս ի՞նչ ցաւագին ձայներ. ի՞նչ ակամայ գե-
րութիւնք և կամաւոր օտարութիւնք. ի՞նչ տըրտ-

մաուխթ լռութիւնք քնարաց և Թմբկաց: — Եւ ո՜վ մեզի այսօր, Հայկակ, մեր հայրենի քնարաց և Թմբկաց ջախջախանքը գուժէ, և լռութիւնը հուչակէ: — Ականատես վկայ մը, հայրենակէզ հոգի մը, ողջայուն և խոցեալ սիրտ մը, փափուկ և մաքուր գրիչ մը. մեկ հատիկ մնացեալ ձայն ողբարկու և պատմիչ ժամանակին՝ ՚ի մէջ մեր պատմըչաց Ժ և ԺԲ դարուց, միակ մնացեալ շաղկապ պատմիչ ԺԱ դարու. Արիստակէս Լաստիվերտցի. որ համառօտէ գլխաւորապէս «անցիցն անցելոց ՚ի
» յայլազգեաց ազգաց՝ որ շուրջ զմեօք են, ընդ աշխարհս
«Հայոց»: Մեկ մարդու կենաց ժամանակի չափ է իր պատմութեան միջոցն, 72 տարի. սկսեալ ՚ի 1001 Թուոյ. յորում՝ տեսնելու կամ չտեսնելու ծանր ծանր դիպուածք հանդիպեցան իր և մեր աշխարհին մէջ. — մեծամեծ և պժգալի փոփոխութիւնք, որոց ականատես ականջալուր և կարեկից ըլլալով, միակ մխիթարանք այրած և անշէջ սրտին գտաւ՝ տեսածը և կրածը գրչին, և անով յետնոց աւանդել:

Բայց որչափ որ եղածքն մեծամեծ և ծանր ըլլան, մարդ իր սրտովը կու կշռէ կու զգայ. և այսով իր զգացումն աւելի մեծ կ՚ըլլայ. գոնէ մեր Լաստիվերտցւոյն համար այսպէս եղած է. անոր համար եղածէն աւելի զգածը կու նկարագրէ. ընդարձակ տեսարանը՝ իբրև իր սրտին հայելւոյն մէջ բովանդակելով կու ցուցընէ. — աւելի ողբասացութիւն քան պատմաբանութիւն. — զոր և ինքնին շատ անգամ խոստովանի, և ուրիշ պատմըչի կարօտ կու սեպէ դիպուածքը. Իսկ ես, կ՚ըսէ, գրեցի «ոչ լիով, այլ միայն զնիշքն իրացն
» որ եղև և անց ընդ մեզ»: Դժբաղդաբար ինչուան հիմայ մենք այլ իրեն հետ «կարօտացաք
» հին ժամանակագրացն պատմութեան, զի ըստ
» պատշաճի և յարմարական բանիւք դրոշմես-

» ցեն... զանցելոցն զհանդիպուածս անսխալապէս
» որ ինչ եղեն »: Ոչ ոք իր ատեն կամ յետոյ ման֊
րամասն գրեր է այն բաները, մանաւանդ թէ գր֊
րեր՝ և մեզի չէ հասեր. որով պատմասէրք՝ թե֊
րևս 'ի զուր մեղադրեն զԱրիստակէս՝ փոխանակ
իրաց՝ մեզի լաց աւանդելուն համար:
Սակայն ո՞վ կրնայ իրաւամբք մեղադրել այն֊
պիսի սիրտ մը՝ այնպիսի վշտաշատ տեսարանաց
մէջ պաշարեալ. «'ի չորից կողմանց՝ յարևելից
» սուր, յարևմտից սպանումն, 'ի հիւսիսոյ հուր
» և 'ի հարաւոյ մահ ». սիրտ մը՝ որ երբեմն տե֊
սաւ իր ազգ ու հայրենիքը՝ բարգաւաճանաց և
պանծալի փառաց և ուժոյ մէջ, իբրև 'ի գեղեցիկ
առաւօտու և յերկնասարդական հասակի, և ա֊
պա տեսաւ յանկարծ երեկոյացեալ և ծերացեալ,
խաւարեալ և օրհասական: — Տեսաւ, ինչպէս ինքն
կ'ըսէ, «Զորք աթոռք թագաւորութեան ունէր
» Հայք, թող թէ զկիւրապաղատին (Տայոց) իշ֊
» խանութիւն և զոր 'ի Հոռոմոց ». ամենքն այլ
իշխաններով, գունագոյն դրօշներով և զինուորու֊
թեամբք զարդարեալ և զուարճացեալ. և յետոյ
ամենքն այլ մէկմէկու ետևէ քակեալ քանդեալ
քայքայեալ, պանդխտեալ յօտար աշխարհս.
տեսաւ Հայոց քահանայապետական աթոռը,
«հայրապետութիւն մեծ և նախանձելի ամենայն
» ազգաց »՝, իր ամենէն մեծ փառաւորութեան և
եկեղեցական բազմութեան մէջ (Պետրոս Գե֊
տադարձ ճոխասէր կաթողիկոսի ատեն), և յե֊
տոյ զնա այլ՝ իր յաջորդներն այլ՝ անտեղի և ան֊
հանգիստ թափառել յօտարաց երկրի և բանտու֊
թեան. — տեսաւ անապատները ծաղկեալ միան֊
ձանց բազմութեամբ, և յետոյ թագաւորանիստ
քաղաքներն անգամ անապատացեալ յիշխանաց
և 'ի զօրականաց. — տեսաւ զՀայաստան յղփա֊
ցեալ հարստութեամբ վաճառականութեան և

երկրագործութեան, բաւական ժամանակ աշխարհին հանդարտ մնալովը, և յետոյ՝ փանձեր բաժնողներն անգամ մուրացկան կամ բարբարական պոռոտիլ. — տեսաւ Հայաստանի յետին պարծանաց պսակ՝ հազարատաճարեան Անին՝ կրկին անգամ մատնեալ, անկեալ յօտար և բարբարոս ձեռս, և արեամբ ողողեալ. — տեսաւ իւր սեփական հայրենեաց պանծալի քաղաքը (Արծն), և իր ընտանի ծննդեան գեղաւանը (Լաստիվարտ) սրով և կրակով այնպէս մաշած, որ մէկումն հազիւ աւերակաց հետքը և սև անունը կու մնայ (Գուրս Արդ) յետ 800 տարուան, մէկայլին՝ ոչ հետքը և ոչ անունը. մինչև թէ և ուզեմք այլ ըստ խրատու պատմըչին, չեմք կրնար զթողեալն պատմել 'ի նմանէ՝ յաւերակացն ուսանել: — Տեսաւ իր համազգիները, նաև իր աստիճանակիցները, անասուններէ աւելի անարգ և խշխշալի կերպով մորթուած և մորթեզերծ եղած՝ նորատեսիլ վայրենի ասպատակաց ձեռքով: . . . Այսպիսեաց ականատեսի մը սրտաշարժ քան մատագաս գրիչը, ես չեմ կրնար մեղադրել. մանաւանդ որ իր յատակ վայելչաբանութեամբն, ազնիւ զգացմամբք և նըկարագրութեամբք, և իր իսկատիպ ոճովը՝ ոչ միայն նորօրինակ և աննմանակ պատմիչ մ՚ է մեր, այլ թերևս յետ մեր ոսկեղէն դարուն պատմըչաց՝ քան զամէն ուրիշներն աւելի համբոյր է և սիրելի ընթերցողաց: — Եւ ահա աս ինքն է որ այնպէս անսովոր կամ մարգարէախօս իմն ոճով ըրած է իր պատմութեան նախաբանը, զոր և ես քեզ նախաբանեցի, Հայկակ. և յորում՝ դեռ ախորժեմ և կարծեմ լսել Լաստիվարտացւոյն ակնարկած լըսեալ քնարաց յետին արձագանգը, և անթող թմբկաց թաքուցեալ բոմբիւնքը: . . . Ով կու յիշէ՝ կու լսէ. ով որ կ՚ապրի՝ կու յիշէ. թէ հարկ է ապրիլ՝ հարկ է և յիշել և լսել. գոնէ անծերա-

նալը յիշատակօք՝ լսել այն Ըմբշի Բոմբիւնը, առանց որոյ չկեան և չկան հայրենիք։...

Բ

Բայց ի՛նչ թմբուկ հայրենի, և ի՛նչ տաւիղ վայրենի, որ մեկզմեկ կու ջանային խափանել այն տանեն։ — Սկիւթիոյ անապատին բարբարոսաց արտակտուր տոպտոպայն՝ որ մեր աշխարհին հիմերը թնդացուց, դեռ ամենանուազ բզզիւն մը սեպուէր այն տիեզերադղորդ փողոյն ձայնէն առաջ, զոր զարհուրեալ նախնիք մեր համարէին տարուէ տարի լսել. և ոչ մեր նախնիք միայն, այլ գրեթէ ամեն քրիստոնեայք յարեւելս և յարեւմուտս՝ մեծ տագնապի մէջ էին այն տանեն. երբ 'ի գալստենէ Քրիստոսի Տեառն մերոյ հազար տարի նոր անցեր էր։ Ի հնուց կարծիք էր շատ հաւատացելոց՝ թէ անկէ ետև աշխարհիս վախճան պիտի ըլլայ. Յայտնութեան գրոց մէջ ըսուածն՝ թէ «կապեաց զսատանայ հազար ամ» լցուած ըլլալով՝ նորէն պիտի արձակի սատանայ և բռնանայ չարութեամբք 'ի վերայ երկրի. անծանօթ ազգեր 'ի ծագաց երկրի պիտի վազեն 'ի վերայ քաղաքացեալ ազգաց, և սրով ու աւերմամբ ջնջեն. և 'ի ժամանակի անդ բռնութեան բարբարոսաց, Նեռին և սատանայի՝ գայ պիտի Քրիստոս Աստուած, դադրեցընելու զժամանակ և զծնունդս ժամանակի, և երկիրս աւեր պիտի դառնայ։ Ըստ բազմաց կարծեաց ոչ 'ի ծննդենէն Քրիստոսի այլ 'ի խաչելութենէն կու համրուէր հազար ամն. և ահա մեր պատմիչին այլ կենաց ծաղկած տանենն էր այս ժամանակս. որ և առանց յայտնի երկար բանիւ այս ահաւոր ըլլալիքը յիշելու (զի և չեղաւ այլ), դարձեալ նոյն տարին կու սեպէ մեր աշխարհին չարեաց դուռը. մանաւանդ որ արե-

գական խաւարում մ'այլ հանդիպեցաւ ուրբաթ
օր մը[1] նոյն տարին (1033). «զոր տեսեալ բա-
» զումք 'ի գիտնոց՝ կարծեցին զոլ զծնունդ Նե-
» ռինն՝ զօրն զայն, կամ մեծամեծ չարեաց պու-
» շակ. որ եղև իսկ յաւուրս մեր, յորս պատմու-
» թիւն բանիս առաջնորդեալ տանի զմեզ, զոր
» տեսաք աչօք մերովք զաստուածասաստ հա-
» րուածսն», և այլն: Նաև պատմութեան վեր-
ջաբանին մէջ այլ կրկնէ. «զի յայնմ հետէ զոր
» յառաջագոյն ասացի, յորում թուական Հայոց
ՆՁԲ (1033) էր, մինչև ցայժմ՝ ուխտ սրբութեան
» և կարգք եկեղեցեաց քայքայեալ ապականե-
» ցան. և ոչ համբաւ խաղաղութեան կամ աւե-
» տիս բարեաց լուաք, և ոչ մի արձան յաղթու-
» թեան կանգնեցաւ, ոչ թագաւորաց և ոչ իշ-
» խանաց»: Ուրիշ պատմիչ մը համառձակ այլ
կու զրուցէ այն տարւոյն համար, թէ «Արձակե-
» ցաւ սատանայ 'ի կապանաց խաչելութեանն
» Քրիստոսի»:

Իսկ մերս՝ ուրիշ նշան կամ դիպուած մ'այլ
կու տայ այն հանդերձեալ մեծ ըլլալիքին. Երու-
սաղեմի կործանման ատեն հանդիպածին պէս կ'ը-
սէ, 'ի Հայաստան այլ մէկ անծանօթ մարդ մ'ե-

1 Պատմիչս կ'ըսէ «յամենայնի տարւոյ՝ յաւուր ուրբա-
» թու». ամսուն օրը չըսեր. ոչ հայկական հաստատա-
մարի հաշուով և ոչ շարժականով արաց ամսոյն մէջ նոյն
տարին արևու խաւարմունք կ'ըլլայ. հապա թէ որ մեր
ամիսներն այլ սկսինք համրել Հռոմայեցւոց ամսոց հետ,
այսինքն նաւասարդը յունուարին հետ, միայն այս կեր-
պով արաց ամիսն կու զուգի ընդ յունիսի, որոյ 29ին ուր-
բաթ օր յամի 1033 ստուգիւ արևն խաւարած է: Մխի-
թար Այրիվանեցի քաղոց ամսոյն 13ին կ'ըսէ այս խաւա-
րումը, սակայն այն օր այն տարի խաւարումն չկայ. ուրիշ
պատմիչք այլ քանի մը տարի ետև կու ձգեն խաւարումը:

րեւեցաւ նոյն ատենները, որ արեւելեան գաւառներէն գալով դէպ 'ի յորեւմուտք կ'երթար, Վանայ ծովուն հիւսիսային եզերքներէն մինչեւ յԵրզընկա՝ անդադար կանչելով. Եղո՛ւկ զիս, եղո՛ւկ զիս. (վա՜յ ինձ, վա՜յ ինձ). — կու հարցընէին թէ ո՞վ ես, ուստի՞ կու գաս, ինչո՞ւ կ'ըսես. ուրիշ պատասխան չէր տար, բայց նոյն եղուկը. մինչեւ ոմանք (զորս անմիտ կոչէ պատմիչն) խելաթափ սեպեցին զնա. «Բայց իմաստունքն ասէին, այդ » եղուկդ ամենայն երկրի լինելոց է »։

Այսպիսի դիպուածներ՝ եթէ շատ կամ աւելի կերպով մերազգեաց եւ մանաւանդ Թագաւորաց եւ իշխանաց միտքը շփոթեցին ու սրտերնին վախցուցին, առանձին ազգային աւանդութիւն մ'այլ ունէին պատճառ. այն էր՝ իրենց նախնեաց անիրաւ գործերը, եւ անոնց համար ժամանակին սուրբ եւ ընտիր անձանց յանդիմանութիւնը եւ սպառնալիքը. մանաւանդ Ս. մեծին Ներսեսի։ Սա նախատեսութեամբ գուշակեր էր Հայոց գլուխը գալիքը, եւ վերջի ժամանակներ ըլլալու բաները՝ աշխարհիս կատարածին մօտերը. նաեւ Նետող ազգի մը արշաւանքն 'ի Հայս, եւ բոլոր աշխարհս տակն ու վրայ ընել եւ ժողովուրդը ցրուելը։ Զայս կու յիշեն իր վարուց գրիչք, նա եւ ուրիշ պատմիչք այլ ԺԱ դարէն ետեւ. իր վարքը երկարօրէն գըրողն Մեսրոպ Երէցն այլ 'ի Ժ դարու՝ այնպիսի խօսքեր կ'աւանդէ Սրբոյն. սակայն իր գրոց հնագոյն օրինակաց մէջ (որչափ հանդիպեր եմ), չկան այն որոշակի խօսքերը՝ զոր յետին օրինակաց մէջ կարդամք՝ Սելջուկեան եւ Թաթար Նետողաց վրայ. եւ յայտնի է որ յետոյ աւելցուած են. կէս մը այս (ԺԱ) եւ յաջորդ (ԺԲ) դարուն մէջ, կէս մ'այլ յետ արշաւանաց Թաթարաց 'ի սկիզբն ԺԳ դարու. սրբոյն Ներսեսի ընդհանուր խօսքերը մասնաւորելով եւ յարմարցընելով Տուղ-

րիլեանց և Ճէնկիզեանց։ Սակայն ստոյգ է որ հասարակ եղած էր այն Ս. Հայրապետին սպառնալեաց վախն. և երբ այսպիսի նշաններ տեսնէին՝ մեկէն անոր խօսքերուն կատարուիլը կարծէին։

Այսպէս ըրին նաև ժամանակին Թագաւորք և ազգային գլխաւորքն, Յովհաննէս-Սմբատ Բագրատունին, որ Յովհան Կոզեռն վարդապետին ձեռքով քննել տուաւ և նոյն կարծեաց վրայ հաստատեցաւ. և Սենեքերիմ Արծրունեաց Թագաւորն՝ որ շատոնց նոյն վախին մէջ էր, և իրեն համար Քրիստոսի 1000 Թուականէն սկսած էր։ Առաջին նետ Նետողաց իրեն դիպաւ։ Զարմանքն այս է որ մեր պատմիչն՝ միայն տեղ մը անցողաբար և լռելեայն կու յիշէ այն դիպուածը՝ որ իր յետագայ ողբոց նախասկիզբն պատճառն է, և պատմութեան պէտքն այլ կու պահանջէր յիշելը։ Կ'երևի որ բաւական տեղեկութիւն չունէր Հայաստանի սահմանածայրը եղած բաներուն, նոյն իսկ Արծրունեաց մէջ. բայց դիպուածին տարին ստոյգ կու յիշէ, 1022ին հանդիպած բան մը պատմելու ատեն. « երկու կամ երեք ամօք յառաջ գործեցաւ », կ'ըսէ, Սենեքարիմայ հասած վտանգն. որ է 1019 ամն Քրիստոսի։

Գ

Մինչդեռ 'ի բաւական խաղաղութեան և շինութեան էր աշխարհնիս և սահմանակիցքն այլ, անակնկալ ատեն և կողմէ նոր և անծանօթ տապատակ մը սփռեցաւ Հայաստանի հարաւային արևելեան ծայրը, 'ի Վասպուրական աշխարհ, որոյ իշխան և Թագաւոր էր Սենեքերիմ Արծրունի. հասակաւ, պատուով և խելօք յառաջացեալ. սիրելի Վասլի կայսեր և պատկառելի իշխանաց Հայոց։ Այնպէս անկարծ, աննման, անշնորհք և

անգութ երեւցաւ այն խուժադուժ ազգն անօրինաց, որ ոչ այսչափ միայն կ'ըսէ պատմիչն, այլ և կարծէ թէ «օձք թեւաւորք հասին և կամէին ցոլա- »նալ ընդ ամենայն աշխարհ հաւատացելոց. այս »առաջին են արիւնարբու գազանացն»: Տարակոյս չկայ որ մեծ շփոթ և սարսափ ձգեցին թէ խաղաղաբնակ ժողովրդեան (որոց շէնքերը և վարուցանը կոխէին և կողոպտէին), թէ իշխանական և զինուորական դասուց, որք ոչ միայն անպատրաստ էին, այլ և «չէին բնաւ տեսեալ (այնպիսի) զօրք հեծելոց... այլակերպ, աղեղնաւորս և »հերարձակս իբրև զկանայս. և յայնժամ զօրքն »Հայոց չէին աւելի պատրաստ լինել ընդդէմ »նետիցն». կամ ինչպէս ուրիշ և գրեթէ ժամանակակից պատմիչ մը կ'ըսէ. «Նոքա ունելով »զբնութիւն արիւնարբու գազանի, զի են ազգք »ահաւոր տեսլեամբ. զի տեսիլ դիմաց նոցա զար- »հուրեցուցանէ զտեսողսն և ահաբեկ առնէ, և »բնակութիւն նոցա 'ի լերինս և 'ի դաշտս և յա- »նապատս, որպէս զվայրենի գազանաց. և են »շաղղակերք որպէս զգազանս. ոչ պատուեն զմե- »ծամեծս, ոչ խնայեն յալիս և 'ի հարկլս ծե- »րոցն, ոչ ողորմին երիտասարդին և աղայոյն, ոչ »խնայեն 'ի մանկութիւն ումեք, ազգ չար և գառ- »նացող»:

Այլազգեաց նետերն 'ի Վան և յՈստան չհասած՝ Սենեքերիմայ և իր եղբօր Դերենկայ զօրքերն խմբեցան ելան զանոնք յետ դարձընելու, առաջնորդ ունելով զՇապուհ՝ ծեր և փորձ սպարապետն Արծրունեաց, որ բանակ և պատերազմ վարելը իրեն խաղ ըրեր էր 'ի մանկութենէ. և սակայն հոս դժուարին և նոր խաղ մը տեսաւ. անճոռնի հերարձակ հեծեալք, և մանաւանդ լայնաձիգ հեռաձիգ աղեղանց նետեր, որ առջի բերան չէին թողուր Հայոց՝ իրենց մօտենալ ան-

գամ։ ... Ո՜հ. և Հայք էին երբեմն աղեղնաւորք, այլ և քաջաձիգ արք աղեղանց, որոց ազգահայրն ինքնին համարուի հնարող աղեղան յետ ջրհեղեղին, Հայկն հսկայ. և որոց զինուորութեան սեփական նշան իսկ՝ աղեղն և կապարճն էր. զոր և ինչուան հիմայ կու տեսնեմք իրենց հետ կռուող Հռոմայեցի կայսերաց դրամոց վրայ։ Բայց երբ այս Փռիւգացի գաղթականն՝ (Հռոմայեցիք) հին Ասքանազայ սերունդն կամ մերձաւորն՝ Լատինն տիրելով կամաց կամաց բոլոր Իտալիոյ, Յունաց, Փոքր Ասիոյ այլ տիրեց, իր աշխարհակալութեան գրեթէ յետին սահման ընելով մեր աշխարհը, հսկայակերպ Հայաստանի ուսէն վերուց անոր պարծանաց և ուժոյ զարդ՝ հարուստ կապարճը։ Հայաստան ոչ այնքան կողոպտուելով թողուց իր կորովի բազկաց խաղալիկ կամարը (աղեղը), որքան ընտրութեամբ փոխեց զայն՝ աւելի յարմար զինուց հետ, մօտէն կռուելու մօտեցող դիմամարտից դէմ։ Ինչուան այն ատեն՝ հիւսիսային և արեւելից ասպատակաց դէմ՝ անոնց գործած զէնքով կ'ընդդիմանար հեռաձիգ աղեղամբ. անկէ ետև տեսաւ որ արևմուտքն է իր գլխաւոր դիմակացն. Լուկուլ, Պոմպէոս, Կեսար, և Կրասոս սովրեցուցին իրեն նոր օրէնք կռուելու՝ սրով և փքնաւ։ Յետոյ Բիւզանդացոց դաշնակցելով կամ հետևելով՝ անոնց զինուորութեան օրէնքն և կերպերն առին Հայք, առանց բոլորովին թողլու իրենց նախնական և հայրենի թաչուն զէնքերը. սակայն քիչ գործածէին, և այն այլ՝ աւելի լեռնաբնակք կամ ընդդէմ լեռնաբնակաց։

## Դ

Արդ հիմայ այս նորատեսիլ Նետողաց հարուածներէն՝ նախ տագնապեցան մերայինք, յետոյ խիզախելով ուժով յարձակեցան հասան այլազգեաց այլանդակ բանակին. և սուր բանեցընելով՝ առատ արիւն հանեցին: Եթէ դաշտին վրայ ընկնողաց բազմութիւնն յայլազգեաց եղաւ, բայց վիրաւորելոց բազմագոյնն 'ի Հայոց, այն յանկարծահաս և հեռաձիգ նետերէն՝ որոց դէմ չէր կըրնար Տապուհ ուղածին պէս իր կարիճները քշել և քաշել. մանաւանդ որ իրեն արդելք կ'ըլլար մէկ նետ մը, կամ այն նետից նպատակ մէկ գլուխ մը, որ իր գլխէն այլ բարձր և Թանկ էր, Թէ և ոչ իրեն պէս խոհական և փորձ. աւելի տաք արիւնոտ և լի եռանդեամբ և յանդգնութեամբ: Սա էր Թագաժառանգն Արծրունեաց Դաւիթ. անդրանիկ 'ի մէջ չորս կտրիճ որդւոց Սենեքերիմայ: Հասակին և աստիճանին դրդումն, հօրը պատիւն և սէրն, և քաջութեան գինովցուցիչ մոլութիւնն՝ գրեթէ աչքերը գոցեր էին ընդդէմ վտանգաց, և բացեր միայն 'ի խնդիր վրիժուց և փառաց. խնուսիկ կամ արաբիկ երիվարին վրայ Թռչըտելով՝ սանձը Թողած, միայն սուրը մերկ վզերու և լայնչի երեսներու վրայ իջեցընելով՝ կու բանար ահեղ և վտանգաւոր ճամբայ մը, Թէ և անվախ քաջութեամբ, Թշնամեաց խառնակ գնդերուն մէջ. ու՛ր յիրաւի չէին կրնար ասոնք դիւրաւ նետ բանեցընել իրենց ճակտին և կռնըկին հասնող կտրըճին վրայ. բայց նա այլ չէր կրնար երկար տանել ողջ կամ անխոց մնալ: Տապուհ շուարած՝ իր զօրաց կարգը և Թշնամեաց անկարգութիւնն այլ մոռնալով՝ Դաւթի վրայ հոգալով կու կանչէր. «Թա-
» գաւոր, ետ դարձիր, այս իմ և քու տեսած սո-

» վորական պատերազմը չէ. նոր ու յանկարծա-
» հաս զէնքեր են. այս անիծեալ նետերուն դէմ
» բաւական պաշտպանութիւն չունի մեր զօրքը.
» և ահա մեծ մասն վիրաւորած է։ Մի այդպէս
» շատ առաջ նետուիր. ետ դարձիր Թագաւոր.
» մինչև որ հօրդ պատասխան պիտի տանք կամ
» դու կամ ես... Թող այս անգամ պահ մը յետ
» քաշուինք, նետերուն դէմ գնելու վահան հագ-
» նինք, և այնպէս քշենք գա գազանները»։ Քանի
անգամ այլ այսպէս յորդորեց եա կանչեց. Թիկ-
նապահ հասուց, Դաւթի աչքը արիւնով լեցուած՝
ականջներն աղեղանց կաշիներուն շաչիւնէն խըլ-
ցած՝ յամառած չէր ուզեր յետ դառնալ, մինչդեռ
որ թշնամիներուն երեսը իր երկրին սահմանէն
չդարձընէ։ Երբ տեսաւ Շապուհ՝ որ այլ ոչ խօ-
սելու տեղն կայ ոչ մտիկ ընել տալու, մէկն այլ
իր սպարապետութեան և մանաւանդ դայեկու-
թեան իրաւունքը (վասն զի Դաւթի և անոր եղ-
բարց դաստիարակ և կրթողն էր, և իր գրկաց մէջ
գգուեր էր անոնց մանկութիւնը), յառաջ քշեց
ձին, հասաւ արքայորդւոյն և անոր թիկնալոյն
կռնակին կուռն կոփ մը տալով ձիուն գլուխը ըրա-
նի դարձուց, քշեց իր զօրաց բազմութեան կող-
մը. բոլոր բանակն այլ կամաց կամաց յետ յետ
քաշելով, հանեց յայտնի վտանգէն, արիու-
թեան և խոհեմութեան պարտքերը միատեղ կա-
տարելով. որովհետև Նետողքն այլ իրենց կողմէն
յետ դարձան կորան. զորս հարկ ըլլայ մեզի յե-
տոյ բնաբռնել։

Սեննեքերիմ եղածը իմանալով՝ մէկ կողմանէ
շնորհակալ եղաւ Աստուծոյ և իր կորիւններուն,
բաւական փառօք դառնալնուն վրայ. մէկալ կող-
մէն մտածեց՝ որ եթէ թշնամիք այլ յամառէին
կամ նորէն ետ դառնային, երկար ատեն անոնց
դէմ գնելու ոյժ չունի, մանաւանդ թէ յոյս չու-

նի. և այս անյուսութեան գլխաւոր պատճառն այլ մեր նախայիշեալ Ներսիսեան գուշակութիւնն էր՝ Նետողաց յարձակման վրայօք։ Բոլոր օրը տարակուսանօք անցընելէն ետև, գիշերը (կ՚ըսէ պատմիչն) հասարակաց քնոյ և լռութեան ատեն՝ ինքն իր աշխարհէն և տանը հոգովը տքուն՝ գըրքեր իջուց և քննեց Ս. Ներսիսի խօսքերը, և տարեն յարմար գտաւ. արդէն սատանայն արձակուած էր ըստ կարծեաց նոյա։ Այն գիշեր ծեր և երկարահող Թագաւորն մէն մինակ իր տէրութեան սահմանը և բաղդը փոխեց. երկիրը թողլով Ժողովրդեան գոնէ մէկ մասը ազատել և յապահովել յանձն առաւ։ Արեւելեան այլազգի ազգաց և տարուէ տարի եղած նորանոր տէրութեանց դէմ դնելու զօրաւոր տէրութիւն՝ միայն Յունաց ինքնակալութիւնն կրնար ըլլալ այն ատեն, որ արդէն իսկ եօթն հարիւր տարի առաջ կռուեր էր ընդդէմ Պարսից և Արաբացւոց։ Ատենին Բիւզանդիոյ կայսրն էր մեծն և խոհեմն Վասիլ, որ շատ տարի առաջ (1001) Վրաց և Հայոց սահմանները կոխեր էր. և այն ատեն նախատեսութեամբ իմն Սենեքերիմ մեծարանաց դեսպան խաւրելով անոր դաշնագրութիւն ըրեր էր հետը. հիմայ այլ անոր վրայ վստահանալով՝ իրեն ճար գտաւ։ Ցեսին ճար. — երկիրը թողուլ Յունաց կայսեր, և անոր տէրութեան մէջ երկիր մ՚առնուլ, և հոն փոխադրուիլ իր որդւովքը և զօրականօք և ժողովրդեանէն գաղթիլ յանձն առողներով։ Ղրկեց իր սաքգլուխ անդրանիկը ՚ի Կ. Պօլիս, առ Վասիլ կայսր, ուրիշ 400 ազնուականներով, 1000 ձիաւորով և իր երկրին տէր Եղիշէ արքեպիսկոպոսով. 300 ջորւոյ բեռ այլ ընծաներով. զորս ընդունելով Վասիլ՝ կայսերաբար պատուեց իր պատուողները, ընծայողները՝ ընծայեց, և երկրի փոխանակութեան դաշնագրու-

թիւնն այլ կնքելով՝ դարձուց պատգամաւորները։

Հետեւեալ տարին (1021) ելաւ ծեր թագաւորն՝ անուանակիր և պայազատ հին Ասորեստանի մեծ Սենեքերիմ թագաւորին, տոհմապետն Արծրունեաց և Սասնեցոց, իւր ընտանեօք և ազգականաց մեկ մասամբ, բազմութեամբ իշխանաց և պաշտօնէից և 14,000 հեծելովք կամ կորիճ մարդով, որոց հետ 'ի հարկէ այր և կին, մեծ և փոքր հնգապատիկ աւելի բազմութիւն այլ պիտի ըլլար, դուցէ բոլորն իբրև 100,000 հոգի. Թողլու հին հայրենեաց հողը և նոր հայրենիք հիմնելու յերկիր օտար, ելթէ հնար է այս։... Շատ հեղ անկէ եւս այսպիսի գաղթականներ գնացին 'ի մեր բնիկ աշխարհէն՝ յօտար աշխարհս, ուր և ցարդ բնակին իբրև յիւրեանց աշխարհի. սակայն թերևս ոչ մի գաղթական անոր պէս հանդարտ և հանգիստ կերպով գնաց. ուրիշներն աւելի ըստիպմամբ և արտորնօք, ասիկայ աւելի մտածութեամբ և հաշուով։ Բայց հանդերձ այսու՝ ոչինչ պակաս ողորմելի։ — Թողուլ սկզբնական հողը, հազարամեայ շէնքեր և տուներ, հարց և նախնեաց կերպ կերպ յիշատակներ, եկեղեցիներ և գերեզմաններ. — մեծամեծ չարեաց սպառնացեալ վախով՝ երթալ յանծանօթ երկիր. նոր տեղ, նոր լեռներ և դաշտեր. — անծանօթ կամ օտար ազգաց մէջ բնակիլ և խառնուիլ. — իբրև յաւիտենական մնաս բարով մ'ըսելով այն ամենայն բանի՝ զոր բովանդակէ անունն Հայրենիք։... Ասպա չեմ տարակուսիր որ շատ սրտառուչ եղած պիտի ըլլայ այս Արծրունեաց գաղթումն և բաժանումն իրենց հին և բազմայիշատակ տեղէն. — շատ դառն եղած պիտի ըլլայ նոյն ինքն գաղթողաց գլուխ Սենեքերիմ թագաւորին, թողուլն իր հոյակապ գագկաշէն պալատն Ոստանայ ար-

քունկը, Աղթամարայ գղեակը, Վանայ բերդերը, և մանաւանդ հարց գերեզմանն, իւր դաստակերտ և կամ զարդարած հռչակաւոր Վանտն Վարագայ. ուր և յետին մխիթար պանդխտից և օտարացելոց, նաև յետ գաղթականութեանն՝ ուղեց (և բաղդ ունեցաւ) որ մարմինն թաղուի, և իր նախնեաց հետ ննջէ անոնց հաստարակաց բարձին վրայ. Թողլով ունայն գերեզման մը 'ի Ս. Նշան Սեբաստիոյ, զոր ընարեր էր իրեն երկրորդ Վարագ. և հոն դնելով Վարագայ մեծահռչակ սուրբ Խաչը, զոր հետը բերեր էր, և յանուն նորին կոչեց նորաշէն և մինչև ցայժմ անուանի վանքն այլ Ս. Նշան, մօտ 'ի քաղաքն Սեբաստիոյ։ Սեբաստիա՝ որ երբեմն գլխաւոր քաղաք էր Բ Հայոց նահանգին, հիմայ այլ եղաւ մայրաքաղաք և աթոռ Սենեքերիմայ նոր Թագաւորութեան. որոյ սահմանքը որոշ գծած չէ մեզի պատմութիւնն. այլ կ'ըսէ թէ Սեբաստիոյ հետ տրուեցան Արծրունեաց՝ Լառիսա և Ապարա ? քաղաքք և շատ գեղեր, որք չէին հաւասարեր[1] ոչ շատութեամբ և ոչ հարստութեամբ՝ իրենց թողած տեղւոյն. որ էր Վանայ ծովուն չորս բոլոր երկիրն. ուր միայն ծովուն եզերքը կամ մօտ՝ տասն քաղաքք կային, զոր և թուեն Յայսմաւուրք մեր. Վան, Արտամէտ, Ոստան, Հողց, Խիզան, Խլաթ, Մանազկերտ, Արծկէ, Արճէշ, Բերկրի. և տասնցմէ օրերով ճամբայ հեռու սահմանք՝ մինչև 'ի Ջուլամերկ ընդ հարաւ, Սալամաստ ընդ արևելս, և

1 Յաջորդ տարին (1022) քիչ մ'այլ ընդարձակեցան այն կալուածքն, երբ Դաւիթ՝ Վասլի դաւաճաններէն զատուելով՝ անոնց գլխաւորը (Նիկիփոր Փոկասը) սպաննեց, և 'ի կայսերէն պարգև ընդունեցաւ Կեսարիոյ սահմանները, զորս յետոյ ժառանգեց իր փեսայն՝ տարաբաղդ Բագրատունին Գագիկ Բ։

Երասխ գետ ընդ հիւսիս. ուր այն քաղաքաց հետ Թողուց Սենեքերիմ առ Յոյնս «գեօղս 4400 լայ- «նանիստ և արգիւնաւորս», և 70 կամ 72 բերդ: Միայն իրեն և իր ժողովրդեան, և իրենց նախնեաց անմահ արգեանց անմահ յիշատակ պահեց և չօտարացուց՝ հազարէն աւելի վանքեր, կամ ըստ ոմանց 900 փոքր աննշան վանքերը Թողլով՝ 115 մեծ և հռչակաւորներ՝ իբրև սեփական կալուած կնքեց իրեն, իր և տաճնոց տուրքերուն գործմանելու. որպէս զի վանականքն այլ՝ իբրև հաւատարիմ պահապանք օրբազան հայրենի գերեզմանաց և յիշատակաց՝ աղօթեն վասն հեռաւորաց և մերձաւորաց, վասն հանգուցելոց և հանգիստ խնդրող պանդխտելոց [1]:

Այս նոր օրինակ գաղթը և մանաւանդ անոր պատճառն՝ կ'երևի Թէ մեծապէս ազդեցին Սենեքերիմայ Թագակցաց, որոց գլխաւորն էր Շահնշահն Հայոց Յովհաննէս-Սմբատ Թագաւորն Բագրատունեաց. որ՝ երբ նոյն գաղթին տարին Վասիլ կայսր երկրորդ անգամ եկաւ 'ի Հայաստան, իրեն ընդ առաջ ղրկեց զկաթուղիկոսն Պետրոս, և անոր ձեռքով գաղտ կտակ ընել տըւաւ, յետ իր մահուանը կայսեր Թողլու իր Թագաւորական քաղաքը՝ Անի, և բոլոր իր վիճակը. զոր և կատարեց ու կնքեց կաթողիկոսն: Հետևանքն յայտնի է. — յետ 23 տարւոյ (1045) Սմբատայ տարաբաղդ յաջորդն՝ եղբօրորդին Գագիկ՝ ստիպուեցաւ Թողլու իր Թագաւորութեան աշխարհը, և Սենեքերիմեանց սահմաններուն քովերը պանդխտութեան տեղ առնուլ: Ոչ յետ

1 Ցայսմաւուրք յունիս ամսոյ մէկին նշանակեն այս գիպուածները, որոց մէկն միայն այս օր հանդիպած է. այսինքն կամ Նետողայց պատերազմն (որ հաւանագոյն Թուի), կամ Սենեքերիմայ գաղթելու օրն, իր երկրէն ելնելը, կամ Սեբաստիա մտնելը:

շատ ժամանակի՝ իր անուանակից Վանանդայ թագաւորին այլ նոյնպէս ըրաւ. թողուց Յունաց ըղԿարս, և առաւ երկիր մը մեկալինց մօտ։ Քիչ ատենէն ուրիշ թագաւորազունք և մեծամեծ իշխաններ այլ, ինչուան արևելեան Արցախոյ և հարաւային Սասնոյ ամուր երկիրներէն՝ գաղթական եկան, վերայիշեալ թագաւորաց սահմաններուն հարաւակողմը, Փռիւգիոյ և Կիւլիկիոյ տաւրոսական լերանց մէջ իրենց նոր հայրենեաց բոյնը հաստատելու, շատ դժուարութեամբ և աշխատանօք։ Սակայն այս եղբիններս՝ իշխանազունք և սոսկականք՝ աւելի բաղդաւոր եղան. վասն զի թէ և ջանքով սակայն կոխած տեղերնին հաստատ բռնեցին և տիրացան. մինչդեռ երեք թագաւորքն այլ իրենց սերունդներովն՝ գրեթէ հազիւ 50 կամ 60 տարիէն անհետացան, թէ իրենց և Յունաց հակառակութեամբն, և թէ զիրենք իրենց հայրենիքէն նետահալած ընող բարբարոսաց՝ այն նոր հայրենեաց երկիրներուն այլ տիրելով կամ անհանգիստ ընելովն..։

Հիմայ թէ ոչ մխիթարական՝ գոնէ հետաքրքրական է այս աշխարհավրդով Նեստողաց հետամուտ ըլլալն պատմական քննութեամբ. թողլով այսօր մեր անոնցմէ նետահարեալ հայրենեաց և փառազուրկ իշխանաց չէնքերը։ Եւ եթէ այս ցաւառիթ տեսարանէս աւելի ցանկալի մը չէ անոնց չարեաց առիթը քննելն այլ, սակայն պատմական տեսութեան մէջ՝ մեծ և կարևոր դէպք է Նեստողաց արշաւանքն, որ ոչ միայն մեր աշխարհը այլ և ուրիշ շատ աշխարհաց յեղափոխութիւն բերին, և թերևս ինչուան այս օրս այլ կարևոր կամ գլխաւոր կերպարանք մը կու տան քաղաքավարութեան ազգաց արևելից, մանաւանդ իմն նաև արևմտեայց։ Ասոր համար էր որ պատմեցի քեզի, Հայկակ, այդ Նեստողաց սկիզբը և առաջատակն 'ի Հայս։

# ԺԹ

# ԽՈՒԼ ԽԱՉԻԿ

## 1042.

## Ա

Զարհամարհենք պատկառաւոր կամ նուաստ անուն մը, Հայկակ. զի ոչ անուանքն՝ այլ գործոյն է մարդ. լաւն և քաջն միշտ հռչակեալ են իրենց լուռ գործոյն իսկ. անոնց գործոց չգիտցողքն են խուլ, թէ և ականջայ: Ո՛րքան ծանրացեալ և խլացեալ են մեր ականջքն այլ մեր հարց ու նախնեաց գովանի գործոց հռչակներէն, չունենալով՝ ոչ Լիւիոս մը երկարօրէն պերճաբար ազգին պատմութիւնը ճառող, ոչ Պլուտարք մը նշանաւոր մարդկան վարքը դատողութեամբ գրող, և ոչ անգամ արաբիկ գիշերախօս վիպասան մը. և «սակայն բազում գործք արութեան գտանին » գործեալ և 'ի մերում աշխարհիս, և արժանի » գրոց յիշատակի[1] »: Այլ նորէն և միշտ հարկ է մեզի դառնալ և շնորհակալ ըլլալ՝ մեր թէ հմտաբան և թէ հարևանցիկ, թէ ոճով և թէ անոճ պատմագրաց այլ, որ այն բազում արութեանց

1 Խորեն. գիրք Ա. գլ. Գ:

գործերէն գոնէ զոմանս աւանդեր են գրով. և ժամանակէն այլ՝ որ խնայեր և այս չափս մեզի հասուցեր է. զոր կրնամք դեռ հաճութեամբ պատմել և լսել, գուցէ երբեմն աւելազանցութեամբ այլ: — Այն հռչակելի գործերէն և հանդէսներէն մէկն այլ՝ այս դեռ ոչ շատ ծանօթ՝ հին Խաչկայ և իր որդւոցն ըրածն է:

Խաչկայ Խուլ կոչման պատճառն ինծի անծանօթ է, և ոչ այլ գտնեմ երկու ժամանակագրաց մէջ, որք մէկմէկէ առած յիշեն իր դէպքը. Մատթէոս Ուռհայեցի և Սմբատ Գունդստաբլ. առաջինն՝ գեղեցիկ և հաճոյ կոչում և ցեղ մը կ՚ընծայէ Խաչկայ՝ կարիճ ոճով մը, «Առիւծ ձիւնէ»[1]. իբր թէ՝ նա որ ազգաւ Արծրունի էր կամ յիշխանաց Արծրունեաց տէրութեան, ցեղով կամ անձամբ՝ արժանի էր առիւծ կոչուիլ. զոր անոր բնիկ մականունն կարծէ նոր պատմահայր մեր[2], ինչպէս նաև վերոկարգեալ մականունն այլ: Իսկ իր բուն անունն Խաչիկ՝ իրմէ դար և աւելի առաջ կրեր և Արծրունեաց դիւցազնն՝ Գագիկ Ա, նախասկիզբն Թագաւորաց Արծրունեաց, իբրև մկրտութեան անուն. որոյ հետ անոր բարձր և հզօր սիրտն այլ կրեր այս Խաչիկս, որ տեսաւ Արծրունեաց Թագաւորութեան վերջանալն՝ անձամբ և կամօք Սենեքերիմայ՝ Թոռին եղբօր Գագկայ, ինչպէս պատմեցի քեզ յամսասկիզբն յունիսի:

Այս բանաքեր և մեծ դիպուածս՝ որ Արծրունեաց գրեթէ երկհազարեան հին և պանծալի տոհմին խորտակումն բերաւ, տոհմապետ պայազատը վտարելով յօտարութիւն, դառն հարուած էր ամենայն մեծասիրտ տոհմակցաց կամ հպա-

1 Կ՚ըսէ նաև յաւելեր 'ի Վերոյն, զոր չեմ հասկանար. անշուշտ սխալ գրուած է:

2 Հ. Միք. Չամչեան, Պատմ. Բ, 923:

տակաց այն ցեղին՝ որ դար ու կէս Բագրատունեաց հետ Թագակապ բարձրագլուխ նազէր Հայոց ամեն տոհմից և իշխանաց մէջ։ Այս հարուածը սաստկագոյն զգացողաց մէկն էր Խաչիկ՝ Սենեքերիմայ տէրութեան իշխանացմէ, տէր Վասպուրականի հին Թոռնեան գաւառին, որ մօտ է Երասխ գետոյ և Նախճաւան և Գողթն գաւառներու. յորում անուանի և անշուշտ իշխանանիստ այլ էր ամուր բերդն Նկան, ուր շատ հեղ վտանգի ատեն կ'ապաւինէին տէարքն Արծրունեաց, և որ հիմայ անուամբն լուած՝ կարծուի ըլլալ Զօրս անուանեալ բերդին տեղն, այն որ մեր պատմութեան դիպուածէն ետև՝ ուրիշ աւանի մը (Հոշեան) անուամբ՝ Հոշեաննեաց դղեակ կամ Էշէկէ կոչուէր։

Յետ հեռանալուն Սենեքերիմայ մինչև 'ի Սեբաստիա՝ Խաչիկ իր Թոռնեան գաւառին մէջ մնաց այն սակաւաւոր իշխանաց հետ, որք աւելի ընտրեցին իրենց հայրենի հողուն վրայ կենալ կռուիլ ու մեռնիլ, քան օտարութեան յաջող կամ անյաջող բաղդը փորձել։ Անշուշտ Խաչիկ տեսած՝ բայց չէր զարհուրած առաջին Նետողաց սլաքներէն, և կու վստահէր իրեն և Շապուհ սպարապետին նմաններու հետ՝ անոնց դէմ ելնելու, եթէ Թագաւորն հաւանէր մնալ իր տեղը։ Բայց երբ նա բազմութեամբ իշխանաց և զօրաց հեռանալով՝ երկիրը բաց թողուց թշնամեաց առջին, և երբ ըստ դաշնադրութեանն՝ Յոյնք եկան տիրեցին Թագաւորական ամրոցաց, և անարի Վասիլ Արգիւրաս կատեպան եկաւ կայսեր կողմանէ, Խաչիկ դառնացեալ և զզուեալ՝ քաշուեցաւ իր գաւառը իր բերդը, կիսախոց առիւծու պէս մռնչելով ման գալով մտածելով ու դիտելով։

Յոյնք իրենց անծանօթ երկրին և անստոյգ ժամանակին յարմար կառավարիչ չգտնելով՝ անգա-

դար կու փոփոխէին ղրկած կուսակալնին 'ի Վասպուրական. այսպէս այն արծաթազօծ Արգիւր Վասիլը չկարենալով նուաճել զաշխարհը՝ յետ կանչուեցաւ, և տեղն ուրիշ ղրկուեցաւ. անկէ ետքը այլ (1023) Նիկեփոր Կոմինաս կամ Կոմիանոսն, որ չափազանց գործօնեայ գտնուելով ինչուան կայսերութեան այլ փափագեցաւ, անոր համար կուրութեան վարձք առաւ (1027), և տեղը եկաւ (1028) Ներքինին Նիկիտոս. յետոյ Կաւասիլաս և այլ աննշանք. մինչև եկաւ արժանաւոր և կորիճ անձ մը, այն ատենի Յունաց առաջին զօրավարն Գէորգ Մանիակ, Գուդելի որդի, և կողմնակալ Եդեսիոյ. բայց նոյն իսկ իր քաջութիւնն զրկեց մեր աշխարհը իր փառօք վարչութենէն, զինքն այլ իր պատուէն. վասն զի Յոյնք նեղեալք յԱրաբացւոց Ափրիկոյ՝ որ 'ի Սիկիլիա վազէին, քիչ ատենէն յետ կանչեցին զՄանիակ։

Այս ատեն Յունաց կայսր էր վատանշանն Միքայէլ Դ. Պափլագոնացին, որ սպաննելով իր նախորդ Ռոմանոս կայսրը՝ արիւնլուայ թագը յափշտակեր էր, և անոր հետ Հայոց թագին այլ նախանձելով կու սպասէր. վասն զի մեր այլ կէս իմաստուն կէս անիմաստ Յովհաննէս թագաւորն՝ Անի մայրաքաղաքին և իր թագին գերութեան գիրը տուած էր Յունաց կայսեր, զոր Ռոմանոս վեհանձնութեամբ և արդարամտութեամբ ուզեց յետ դարձընել. բայց անարժան չերիցու մը ագահութեամբ՝ նորէն անցաւ այս անարժան (Միքայէլ) կայսեր ձեռքը, որ բոլոր կեանքը անպատուութեամբ անցընելով ուզեց գոնէ մահը պատուական երևցընել. այն այլ թերևս մեր հեռաւոր Խաչիկ իշխանին անակնկալ գործակցութեամբը։ — Այս կայսր էր որ զՄանիակ խաւրեց (1035) կուսակալ Արծրունեաց երկրին, և նոյն տարին

յետ կանչեց՝ ու նաւախմբով զրկեց 'ի Սիկիլիա. պատուիրելով որ հետը բերէ իր կուսակալութեան մէջ գտուող կորիճներէն այլ:

Հաւանօրէն այս առթով (թէ ոչ աւելի առաջ) Խաչիկ՝ որ արդէն տարիքն առած էր, կամայ կամ ակամայ խաւրեց 'ի Կ. Պօլիս՝ իր երկու առջինեկ կորիճները՝ Հասան և Ճնճղուկ՝ 'ի դուռն կայսեր. որ զինուորական կարգի և պատուոյ մէջ յառաջանան, և թերևս օր մը լի փառօք և իշխանութեամբ դառնան, փոխանակ օտար յոյն կուսակալաց՝ իրենք իշխեն և վերակացու ըլլան իրենց հայրենի գաւառաց. ինչպէս որ յիրաւի ոչ շատ ժամանակ ետև՝ (1051) գրուեցաւ այլ Վասպուրականի Հայ կուսակալ և դուքս մը, մեծանուն և իմաստուն Գրիգոր Մագիստրոս: Ըստ յուսոյ հօրն իւրեանց և պատուոյ Հայ անուան՝ Հասան և Ճնճղուկ յաջող և քաջ գտնուելով յառաջադէմ եղան կայսեր քով և սիրելիք. և թերևս սոյն այս Ճգնող Ճնճղուկն է խորհրդակից և օգնական կայսերն, որոյ հետն էր Բուլղարաց պատերազմին մէջ, ուր միայն կրցաւ արութիւն մը ցուցընել Միքայէլ, և յետ որոյ դառնալով 'ի Կ. Պօլիս, խրատուք Ճնճղկան՝ զոր Կոմաս Ծինծուլուկ կոչեն Յոյնք, մտաւ իր շինած Անարծաթից վանքը, և հոն 1041 տարւոյն վերջը կնքեց խղճապարտ կեանքը:

## Բ

Խաչիկ 'ի բացակայութեան երկու կորիճներուն՝ կարօտը կ'առնուր իր վերջին կորիւնովը, ծերութեան յետին ծաղկովը. զոր թերևս երկրորդ հարսանեաց կողաբոյս մը ընծայեր էր իրեն. կայտառ և սիրունակ մանչ մը, որ այս ատեն տասնուհինգ տարուան գալարութեան հետ՝

ունէր մեծ հաստակի զարդարանք, ուժով և այրական կերպարանօք փայլելով հօրը սիրտը և յոյսը կը պարարէր։ Շատ հեղ հօրը ծալլած ծնկերուն վրայ նստած՝ լսեր էր իր պապերուն քաջագործութիւնները, Թուրքաց առջին արշաւանքը, և իրենց առհմային (Արծրունեաց) թագաւորութեան խեղճ վատարանդութիւնը. որուն հետ բաղդատելով անոր կանգնումն 'ի ձեռն մեծոգւոյն Գագկայ, և անոր նախնեաց այլ քաջութիւնները, զոր դար մ՚առաջ Թովմաս վարդապետն գրեր էր, աղուն պայծառ արիւնն երացելով լայնալանջ կուրծքէն՝ նոր կարծիր մը կու տար երեսացը. մանաւանդ երբ հայրն՝ կամ իր ապարանից աւագ աշտարակին պատուհանէն, կամ շրջակայութեան սարեն՝ սարէ մը ցուցընէր մինչուան հեռաւոր հորիզոնին եզերքը՝ Վասպուրական և Կորճայից լերանց արծաթագագաթ սարերը և արեւափառ սառնամանիքը, ուր որ իրենց թագաւորութեան սահմաններին աւարտածուէին։ Անշուշտ՝ տարւոյն աղէկ և յարմար եղանակին՝ Խաչիկ կ՚առնուր իր Իշխանիկը (վասն զի այսպէս կ՚անուանէր իր վերջինեկըն), կու հանէր 'ի հով և 'ի դաշտ, կու վարժեցընէր որսոց և զինուց՝ որք երթալով կու ծանրանային իր բազկացը, ոչ այնքան ծերութենէն՝ որքան երկար ատեն 'ի գործ չածելէն. և արդէն իր հայրենի սուսերք ու սլաքքն՝ ժամանակին ժանգոտ համն առեր էին. կապարճք իրենց աշխոյժ նետերն արգելած պահուէին, և կմբռաձև վահանքն անկոփ անգործ մնային. բայց եթէ երբեմն մաքրէին սրբուէին, կամ Խաչիկ և Իշխանիկ զբօսաբար իբրև քնարի զարնելով զանոնք հնչեցընէին նիզակի ծայրով։.. Ո՜րքան նուաղ, խաւանակ, աննշան հնչիւն. սակայն ինչեր չէր լսեր անկէ Խուլ Խաչիկն. ի՞նչ արձագանգք թնդային իր դեռ արծաթածամ ալեաց տակ այլ՝ չպաղած գլխուն

մէջ, իբրև ընդարձակ գոգաւոր սրահի մը մէջ։ — Մարդուս ամենէն ուշ ծերացող սիրտն է. Խաչկայ սիրտն ժրութեամբ՝ արեան և քրտանց մէջ սնած՝ հասակին և բաղդին հետ կռուէր հակառակէր, յառաջ ջինջ էր. և թէպէտ բռնադատեալ արգելեալ յորսոյ և յարենէ, բայց անարգել սիրտըն երբեմն իր մնացեալ անգործ ուժովը կումնչէր ու մռնչէր, երբեմն այլ անցեալ ուժոյն և կենաց վրայ հաչէր հառաչէր։ « Քանզի էր այր » քաջ և յաղթող պատերազմող, բայց ծերա- » ցեալ էր՝ և թողեալ զգործ պատերազմին, և » հառաչելով ապաշաւէր », կ'ըսէ պատմիչն։

Տարեաց տկարութեան և սրտի սաստկութեան պատերազմին շատ զօրաւոր կ'ըլլայ եռանդուն բնաւորութեան և գործունեայ պատերազմական անձանց մէջ. մանաւանդ եթէ այն կենաց խոնարհման ատեն իրենց վրայ ազդեցութիւն ընող դէպքեր այլ պատահին. կարծես թէ գեռ երկնից պարզ երեւութովն այլ՝ հեռուէն ծանր ու թանձր որոտմունքներ կու լսուին, կամաց կամաց կու մօտենան՝ գուշակելով մեծ մրրիկ մը, մեծ յեղափոխութիւն մը։ Այսպէս կ'երեւէր կ'ըլլար Խաչկայ. որոյ ականջէն աւելի դիտող միտքն՝ մեծամեծ խլրտմանց խլուրդութիւն լսէր։ 1042 տարուոյն սկիզբն էր. մէկ դիէն կը հնչէին երկայն շփոթ և կարեւոր ձայներ 'ի տանէ Բագրատունեաց, յետ մահուան Յովհաննու-Սմբատայ գանգաղ թագաւորին, և անոր աշխոյժ եղբօր Աշոտոյ թողած կորիզ Գագկայ ժառանգութիւնն ուշանալուն միջոց. երբ Պահլաւունին Վահրամ՝ ծեր հաւատարիմ և կորիզ սպարապետն՝ կու ջանար զնա թագաւորեցնել. և վիսաբարոյ վեստն Սարգիս՝ Յունաց մատնել Բագրատունեաց գահը. — մէկայլ դիէն կու հանէին երկրորդ անգամ հեռաւոր շառաչիւնք Նետողաց, յետ քսան տարուան

լուսութեան, Ցուղրէլ բէկին շարժելովը յարեւելից և արշաւելով դէպ յԱտրպատական, որոյ մօտ էր Խաչկայ գաւառն այլ։ Իսկ յարևմտից կու հաներ համբաւ մահու կայսեր Միքայէլի, որոյ գու-ռը գտնուէին եօթն ութ տարիէ 'ի վեր Խաչկայ կողմնէքն՝ Հասան և Ճնճղուկ, որոց հիմայ յետ դառնալու աւելի հաւանականութիւն կար, կամ մանաւանդ աւելի փափագ իրենց հօրը սրտին մէջ... ո՛չ, և այլ աւելի պէտք այլ կար, զոր չը-գիտէր ծերունին, այլ գուցէ կ'իմանար նախա-զգաց անպատյատրելի կրքով մը։

Գ

Այս՝ բազմաց և իր բաղձին կերպափոխութիւն մը բերել կրցող դիպուածքն, Թագաւորաց մա-հերն և շարժմունք արևելեան Նեառղ աշխարհա-կալին, հորիզոնին զանազան կողմերէն երևցող կասկածելի ամպերու պէս հեռուանց նկարէին Խաչկայ տեսութեան եզերքը. բայց իրեն փոթո-րիկն փրթաւ անկարծելի կէտէ մը, յանկարծե-լուկ ամպէ մը, նոյն իսկ Նկանայ սահմաններու մօտէն։ Շատ հեռ հեռագէտ աչքեր չէին տեսներ կամ զանց կ'ընէին մօտագոյն բաները, որ իրենց աւելի կարեւոր էին գիտելու։ Թոռնեւանայ սահ-մանակից են ուրիշներէ զատ՝ Պարսկահայոց աշ-խարհին Հեր և Զարեւանդ գաւառքն այլ, որ հի-մայ կ'ըսուին Խոյ ու Սալամաստ. մեր հին Թագա-ւորաց ժամանակէն 'ի վեր՝ այս երկու գաւառքն միշտ մէկ տեղ կու յիշուին, իբր մէկ իշխանի տակ (որ Շահապ կ'ըսուէր). նոյնպէս յիշուի այս պատմութեանս ատենն այլ, թէ և առանձնակ տիրող այլ ունէին (ինչպէս անկէ տասն տարի առաջ (1031) յիշուին[1] Հերայ տէրն Հիւսէին,

[1] Մատթ. Ուռհայեցի։

Սալմաստայ տէր՝ Կուպան): Արտաքացւոց աշխար-
հակալութեան առեն այս կողմերս ուանձին կու-
սակալ կամ բռնաւոր մը նուաճելով՝ յաջորդա-
բար կու տիրէր անոր ցեղն մինչև այս պատմու-
թեանս ժամանակ այլ, և շատ հեղ Արծրունի իշ-
խողաց մնաս կամ կռիւ կու հասցընէր:

Հիմակուան տէրն կամ տեարք Հերայ և Զա-
րևանդայ՝ կամ մերոյիշեալ քաղաքական գի-
պուածներէն զրդած, և կամ ուրիշ պատճառէ
մը, գուցէ և կասկած մ'առնելով Խաչկայ կորիճ
որդւոց դարձին 'ի Ցունաց, ուզեցին յանկարծ
արշաւանօք իրենց դրացի դեռ ազատ հայիշխան
երկիրը կոխել: Եւ յիրաւի ամենևին չկարծած
առեն՝ Խաչիկ զոյժ լսեց թէ թշնամիք 'ի Թոռ-
նեան թափեցան անթիւ բազմութեամբ՝ և սա-
պատակ կու սփռեն. եթէ քիչ մ'այլ ուշանան՝
ամեն տեղ աւար աւեր կ'ըլլայ: Հառաչեց ծեր
իշխանն դէպ յարևմուտս. Ո՞ւր էք Հասան և
Ծնձղուկ, ձեր ժառանգութիւնն ապահովելու և
ձեր հօր խոնարհած արևը չմարելու: Եթէ այն
հրեղէն հառաչանքն այլ հասնէր փայլական կամ
ելեկտրական ազդման պէս մինչև 'ի Պօլիս, սա-
կայն որդւոցն իրեն շուտով օգնութեան հասնե-
նելու հնար չկար: Բայց անկէ աւաղելին այն էր՝
որ ոչ թէ միայն հեռուէն՝ այլ և 'ի մօտէն օգնա-
կանք և զօրականք չկային այն կարևոր և յան-
կարծահաս ժամուն. Թերևս այլ աւելի աւաղելի
հաշուէր Խաչիկ՝ իր իսկ անցեալ հասակը և թու-
լացեալ թևերը. վասն զի ինչպէս ըսաւ պատմիչն
(Մատթէոս), և ինչպէս կրկնէ միւսն (Սմբատ),
«Ծերացեալ էր և պարապեալ 'ի բազում ժա-
» մանակաց»: — Բայց սիրտն միշտ երիտասարդ,
սիրտ հայրանախանձ, սիրտ հայկանման, որ սկիւ-
թացի նորանշան և նախագուշակ նշաններէն
անգամ՝ չզարհուրեցաւ, չթողուց չփախաւ իր

հարց սահմաններէն՝ նաև յետ հեռանալու իր Նի-
զակակից և պաշտպան Արծրունեաց. հիմայ հա-
սած վտանգը՝ իրեն յետին քաջութեան և պար-
տուց գործ ունէր. հազիւ վայրկեան մը մտածե-
լէն և աչքերը չորս դի պտըտցընելէն ետև, իր
ահեղ ձայնովը կանչեց, և գլխուն արծաթափայլ
ալիքն ծփացընելով չուրջ եկաւ իր նախնեաց
դարպասին մէջ. խլեց առաւ երիտասարդութեան
դաւաղանը՝ երկայնատէգ նիզակը, կոփեց դա-
դրած լռած պղնձակուռ վահանին. հաւատարիմ
պաշտպանակին հնչեց իր նետերու տարափով
ցնծացեալ ձայնը. զուարճացաւ Խուլ Խաչկայ
ականջն. և չորս դիէն՝ իրեն հաւատարմագոյն ան-
ձինք սկսան շարժիլ. և երբ մէկ մէկ իր կարճու-
թեան օրերուն տպաւորութիւնը կ'անցընէր
դողդոջուն մարմնոյն մասանց վրայ, կարծես թէ
մոգական դեղով մ'այլ զանոնք կու նորոգէր կ'ու-
ժովցընէր, կու մանկացընէր. սաղաւարտն 'ի գը-
լուխ դրած, սուրը փորձած և ձին ձայնած ա-
տեն՝ հին Յունաց և Հայոց դիւցազանց մէկն կ'ե-
րևէր: Ափսոս, որ անոր արժան զօրագունդ մը
ետևէն չեկաւ. այլ ընդդէմ հազարաւորաց այլ-
ազգեաց նահատակ ելան եօթանասուն կարիճք,
ինչպէս երբեմն Աշոտ Երկաթին հետ 'ի Սևան
կղզւոյ, կամ մեծին Վահանայ Մամիկոնոյ՝ ընդ-
դէմ Սասանեանց: Ասոնց և Խաչկայ պէս առաջ-
նորդին հետ՝ բաւական էին եօթանասունքն այլ,
որոց մէկն հարիւրի վրայ վախ կու ձգէր, և յան-
կարծակի հասնողներուն վրայ՝ աւելի անկարծա-
բար հասնելով՝ կու ցրուէր:

Խաչիկ՝ այն աննման և անհաւասար պատե-
րազմին մէջն՝ ցուցէ իր երիտասարդութեան ա-
տեննէն աւելի և նոր կերպով մը կու կռուէր.
Թուխ թուխ ամպոց մէջ ճերմակ ծխանման
ծուէններու պէս մէկ մը հոս մէկ մը հոն կ'երևէր

սրամտար երկմտարոմը, և լայն Թուրը փայլատակելով աջ ու ձախ կ'իջեցըներ. սրէն աւելի ձայնովը շփոթելով ու հալածելով զհէնս. որոնց աւելի շուտով հասնելու և ամէն դի փախչելու համար՝ իր արտորանացը դանդաղ կ'երևէր վարժ ու ճապուկ և հաւատարիմ ձին. և կարծես թէ տէրն աւելի շուտով իր անկարծելի ոյժը և արուեստը գտեր էր, քան թէ իր ռազմամուտ երկմտարն: Երբ կռուին կամ թշնամին մղելու ամենէն առաջ առեն Խաչիկ առաջ քշէր, ձին ականջները ցցած, աչքերը շեղած՝ վիզը յետ յետ դարձընելով անսովոր խրխինջ մը կու ձգէր, որուն մէջ՝ վաշ վաշ կարդալէն աւելի ձայն մ'այլ կար: Ակամայ կամօք Խաչիկ մէկ մը գլուխը ետև դարձուց... Անպատճառ չէր, ձին իր ախոռակցին հոտն և ձայնը կ'առնուր: Խաչիկ ալ նշմարեց տեսաւ անոր պզտիկ ընկերը, սպիտակ խնուսիկը. ան էր, անոր քալուածքն, անոր խրխինջալն, անոր զրահներն, անոր զարդերն, նշանն, ցցունքն, լուսնակըն... Բայց ամենէն աւելի աչք ու սիրտ առօղն՝ անոր կայտառ վերելեակն էր, փայլուն ասպետն, ծաղկահասակ պատանեակն, Խաչկայ արժանի համհարզն, հարազատ հօրամոյնն, իր որդեակն, Իշխանիկն:

Ճօճ նիզակն 'ի ձեռին, ձիուն գլխուն վրայ ծռած՝ անհամբեր կու մտրակէր կ'երագէր, անփորձ յանդգնութեամբ թշնամեաց մէջ կու նետուէր. առջի անգամ որսի մտնող բարակի պէս՝ ամեն կողմէն շարժողաց վրայ կանչելով, սպառնալով, զէնքերը շարժելով. ուսկից անշուշտ քանի մը մահացու կամ աղցու հարուածներ այլ թռան շփոթած այլազգեաց վրայ. Թերևս անոնց փոխարէնն այլ պիտի գար իր վրայ. երբ հասաւ՝ Խաչիկ, «Ա՛յ յանդուգն՝ խօսք չմտող տղայ, կանչելով. չպատուիրեցի՞ քեզի որ ամրոցէն դուրս

չեմնես. կ՚ուզեմ որ այսօրուան Թերես իմ եաքէ քաջութիւնս և յաղթութիւնս քու արեամբդ ծածկուի. և Թշնամեաց չբերած սուգը՝ գա՛ւ բերես քու հօրդ, քու տանդ և ամէն ազգիս»:... Այս և այսպիսի խօսքերով՝ պատերազմական ձեռքը աղուն կուրծքին դրած (որոյ այնպիսի ոյժը դեռ չէր փորձած Իշխանիկ), քշեց հանեց վրանէն դուրս, և նորէն 'ի տուն դարձընելով՝ խստիւ ապըսպրեց սպասաւորաց որ զգուշանան պահեն զնա:

Ինքն Թաթուլ դարձաւ իբրև երրորդ հանդիսի կամ նահատակութեան, նորէն հետամուտ ըլլալու Թշնամեաց, որ պահ մը հոգի առեր էին աղէկ շփոթութենէն սթափելով. այլ դարձեալ ծեր՝ բայց փորձ առիւծի մը վերջին ճգանց հանդիսուցան, որ գրեթէ միշտ իր հին ոյժը կու պահէ, թէ և վէրքը առնու մեռնի այլ, բայց յետ կամ 'ի վերայ Թշնամեացն: Հոս երկայն առեն կռուելով այլ՝ դեռ Խաչիկ ոչ օրհասական էր և ոչ վիրաւոր. այլ որ կողմն որ դառնար՝ ասպատակներն անկէ կու պակսէին ցրուըլալէն. որով յիրաւի աւելի կու յօգնէր Խաչիկ և չէր գիտեր ո՛ր դի դառնայ. մինչև տեսաւ որ հեռուն տեղ մը՝ փոթորիկէ փչուած ամպերու պէս վայրատեալ ասպատակներն՝ իբրև անհով խորշ մը գտնելով՝ կու դիմեն կու դիզուէին, պար կու գան, ամէն կողմէն դէնքերնին կ՚ուղղէին դէպ 'ի կեդրոն: Ինքն այլ դարձուց ձիուն գլուխը դէպ այն նոր փոթորկին վրայ, ու ամպէ ամպ ցատքող փայլակուն պէս հասաւ: Բայց կարմրուկ կայծակն երագ էր քան զփայլակն, իրմէ առաջ հասեր, շանթեր, վառեր, պարպեր էր իր կրակները, և ահա մարելու վրայ էր:... Հազիւ Թշնամեաց շըջապատ ճամբայէն հասաւ Խաչիկ, տեսաւ անոր մէջ արծաթափայլ զըրահազգեստ մը՝ որ իբրև խռովեալ ծովու եռեւէ եռև

համնող ալեաց պէս՝ մէկ մը վեր կու ցատքէր փայլէր, մէկ մը վար կու ցածնար կու ցնդէր. մանաւանդ թէ այն ալեաց խաղ ու ձայն եղած նաւակի մը պէս՝ մէկ մը գողգոջալով գնդղներուն գագաթը կ'ելնէր, մէկ մը թնդալով անդունդներու մէջ կու ծածկուէր։ Երբ վերջի անգամն և ամէն անգամներէն աւելի պայծառ ու զօրմուկ կերպով վեր երեցաւ, Խաչիկ որոշակի տեսաւ,... մէկ մ'այլ բան չտեսաւ. կորուս իր արեն այլ իր միտքըն այլ. իր ամէն բանն այլ կորուս։...

## Դ

Դառնանք Իշխանկան. երկրորդ անգամ հօրմէն արգիլուած ամրոցին մէջ, առջիններէն աւելի կու նեղէր կու դժարէր անգործ անհանգիստ մնալու. մանաւանդ որ մէկ մը պատերազմի համ այլ առեր էր, արեան կնունքն այլ ճակատին հասեր էր. տեսեր էր նոյն իսկ իր ծերունի հայրը՝ երիտասարդ առիւծ դարձած այնպիսի վտանգի ատեն. ինքն պատանեակ՝ պիտի չկարենա՞ր կրակոտ կորիւն մը դառնալ։.. Նոյն ինքն հայրն բերնով խստիւ արգիլած ատեն՝ միթէ գործով և օրինակով զինքն այլ աւելի չէ՞ր գրգռէր՝ այն ատելի թշնամեաց վրայ թափելու ունեցած ոյժն ու վրէժը։ Հայրն նեղացաւ, բարկացաւ, կրնար այլ աւելի այլ նեղանալ, զինքը պատժել, թերեւս կապել ու բանտել այլ, որ սովրի խօսք մտել, հանգարտ կենալ, վտանգէ ազատ մնալ. բայց եթէ յանկարծ, ո՜հ, Աստուած չթողու, հայրս՝ այն շուներէն պաշարուած՝ տկարանայ, ընկնայ, ըսպաննուի, ես ի՞նչ պիտի ըլլամ. ո՞վ անկէ ետև իրեն հնազանդիլս պիտի գովէ։ Մանաւանդ թէ գըտնենք այլ թէ թշնամեաց գերի չընկնամ, սակայն որու՞ քով կրնամ ազատ սեպուիլ. ո՞վ պիտի նայի

վըրաս, կամ՝ ո՞վ երեսս պիտի չզարնէ՝ այն հասա-կին և այն վտանգին մէջ հայրս մինակ թողուլս :.. Ի՞նչ պիտի ըսէ Հասան, ի՞նչ պիտի ըսէ Ծնծղուկ. ի՞նչ պիտի ըսեն մեր տան հաւատարիմքն, երբ վաղը դառնան յօտար աշխարհէն, և տեսնեն մեր տունն տեղն աւերած, և հայրս թշնամեաց ձեռ-քով մեռած. ու ես անոր որդի, անոնց եղբայր, անպաշտպան անընկեր թողած ալեւոր հայրս... Ես հօրս յետին յոյսն ու գաւազանն. ես Իշխանին՝ որոյ անունն յուսով յիշեն ամէն Թոռնեանցիք. ես թողո՞ւմ վտանգի մէջ հայրս ու նստիմ հոս... անկարելի, անկարելի :...

Այս և ասոնցմէ աւելին մտքով ըսած ատեն, մարմնով ալ անգործ չէր կենար. այլ լալով սպառ-նալով երդուընալով ըլլալու չըլլալու ինքզինքը նե-րէն նետեց իր ձերմակին վրայ. ու առջինէն աւե-լի մտրակելով երագելով հասաւ կռուոյ տեղը. ինչպէս հին ատեն Մամիկոնեան պատանեակն Ար-տաւազդ. և քանի մը կտրիճ հետևորդաց հետ՝ հօրը հասաւ և արժանի կու զարնէր կու զար-նուէր, շատ ախոյեաններ գետին կու փռէր: Ա-սոնց գիտնալու հայր և որդի իրարու կու մօտե-նային. բայց թանձր խումբ մը թշնամեաց իրենց մէջ պարիսպ կար: Այն խումբին մօտենալով էր որ Խաչիկ տեսաւ այն արծաթհատիկ սպառազէ-նը, որ չորս դին պատած թշնամեաց վրայ իր ա-մէն զէնքերը թափելէն ետև, մօտեցողներուն վրայ կոփեցըներ նետահար և ջախջախած վահանիկը. և երբ այն ալ փշրեցաւ՝ իր անզէն բազկունքը շուտ շուտ շարժելով կարծես աւելի կ'ուզէր թշնա-մեաց շողացած զէնքերը շփոթել, քան թէ իր վա-վըռուն ու արդէն ոչ անարիւն վարդ երեսները պաշտպանել: Ճանչցան թշնամիք այլ թէ ով և ինչպիսի կորիւն է դիմացնին եղողը. և անգութ սուր նիզակ տէգ տեղացին վրան :.. Յետ վահանին

Ջախջախեցան այն ջաղջուռ բազըկներն այլ, երբեւ լարկտուր անպիտան աղեղ՝ ուսերէն 'ի վայր կախեցան. և երբ ետքի անգամ Ճերմակ ձին ցատքելով իր հեծելոյն գլուխը բարձրացուց՝ մահուն հարուածն այլ շիտակ անոր վրայ հանելով աներևոյթ ըրաւ... Տեսաւ Խաչիկ Իշխանկայ վզէն վազած վարդարիւնը, և կատաղի թշնամեաց մէջ գլորիլը... Մի և նոյն վայրկեանին հայրական աղեաց սէրն ամեն բան շփոթեց ծածկեց իրմէ. անկասկած հասաւ սև գիշերն, գիշեր՝ որ այլ չիլուսանար. զէնքերն ձեռքէն, ինքն երիվարէն վար ընկաւ... Երբ հասաւ գտաւ զԻշխանիկ՝ արդէն երկուքին մարմինն այլ վէրքերով և արեամբ ծածկուած էին դաշտին վրայ. զէնքերնին զարդերնին թշնամեաց ձեռք ընկած. տաքուկ շունչերնին՝ հոգիներն էին իրարու հանդիպողքն: Աւեր ծերունին և մատաղ մանուկն՝ ծառի ու ծաղկի նման քովէ քով կտրած ընկած էին դաշտին վրայ. բայց հոգինին զուգափայլ լուսաթև թռան արդար հայրենասիրաց և նահատակաց երկնաւոր հանդիսարանը....

Թռի՛ր դու այլ դուժաւոր համբաւ, դանդաղ թևերդ սևով ու կարմրով ներկած. հասիր յեզերս Վոսփորոսի, երեցիր Հասանայ և Ծնճղկան. իմանան իրենց հօր և եղբօր սխրալի և տխրալի կատարածը......

## Ե

Հասաւ սգաւոր համբաւն 'ի մեծ քաղաքն կայսերաց. այն վիպասանից և ողբերգուաց հաճոյ՝ այլ կրողաց անհաճոյ ժամանակը, յորում Հասան և Ծնճղուկ իրենց երկայն պանդխտութեան վերջը տեսնելով և դառնալու պատրաստուելով, որչափ որ կու մօտենար ճամբորդութեան օրն՝

այնքան սրտերնին կու տագնապէր, կրկին կրեց՝ ուրախութեան և կասկածանաց մէջ. թէ արդեօք ինչպէս պիտի գտնեն իրենց ծերունի հայրը և տուն տեղը: Ճամբայ չընկած կու փափագէին նոր և վերջին լուր մ'առնուլ, որ և արդարև վերջին եղաւ. իրենց ամեն ակնկալեալ խնդութեանց վըրայ սփռեց սգոյ քօղը: Նաւահանգստին մօտ խորտակած նաւուն պէս եղաւ իրենց յոյսն ալ. և թէ ոչ պարապմամբ՝ այլ պատահմամբ նմանելով կըրնային ասոնք ալ ըսել մեր հին Թարգմանչաց հետ իրենց սպասող և սպանեալ սիրելեացն համար.
« Մինչ նոքա զմերն յուսային դարձ, և պատուա-
» սիրել մերով ամենիմաստ արուեստիւս և կա-
» տարելագոյն յարմարութեամբս, համայն և մեք
» փութապէս դիմեալք 'ի Բիւզանդիոյ՝ յուսայաք
» հարսանեաց պարել, անվեհեր երագութեամբ
» կրթեալք, և առագաստ ասել երգս. արդ փո-
» խանակ խրախճանութեանն 'ի վերայ գերեզմա-
» նի ողբս ասելով ողորմելի հառաչեմք. ուր և ոչ
» տեսութեանն ժամանեցաք աչաց նոցա կափուց-
» մանց, և լսել զվերջին բարբառն (Իշխանկան)
» և զօրհնութիւն » (Խաչկայ): — Ցանկալի հօր և եղբօր այսպէս անկարծ և ցաւալի զրկման վըրայ անհրաժեշտ տրտմութեան պարտքը հատուցանելէն ետև, Հասան և Ճնճղուկ թէ զգայունք և թէ կորիճք, երկտասարդական և զինուորական եռանդով բորբոքած աչուըննին և սրտերնին զայրացեալ դարձուցին յարևելք, իրենց չարեաց եկած կողմը. և յետ արտասուաց՝ արեան պարտք մ'ալ առին վրանին. ծանր ուխտ մը դրին. ցաւն 'ի վըրէժխնդրութիւն դարձուցին. սևով ծածկեցին իրենց վեստութեան զգեստները և սպայապետութեան սպառազինութիւնը. երդմունք ըրին՝ կամ այն սևու սգով խլնել իրենց արենակցաց հողը, կամ անոնց վրէժն առնլով 'ի թշնամեաց՝ փոխել ձևերնին:

Ծով ու ցամաքի մէջ վիճակ ձգեցին թէ որն աւելի շուտով զիրենք կրնայ հասցընել իրենց սիրոյ՝ ցաւոց և վրիժուց ասպարէզը։ Ո՛րչափ կու արնարնայրին Պոնտոսի գնդերն զիրենք սահեցընելու դէպ 'ի Տրապիզոն. ի՛նչպէս ակար կու գային արևմտեան հովերն՝ քշելու զնաւն արևուն ելած կողմը։ Նոյն իսկ իրենց հլու երիվարաց ոտքերն չէին երագ երագ արոփէր Խաղտեաց լեռներէն իջած և Հայոց Մեծաց լեռնադաշտակներու վրայ կոխած ատեննին։ Սակայն ճամբան շուտով կու կարճընար, անհամբերութիւնն էր որ շատ ուշ կարճըցաւ. ինչուան որ Երասխայ հովտաց և ձորոց ճամբաները թռնելով հասուց մեր զոյգ կարիճները այն գետոյն արևելեան դարձուածքին մօտերը։ Հայրենասահման սարերն երևցան. սրտերն մեծամեծ թունդ առին թունդ տուին. հայրենեաց հողը կոխուեցաւ։ Հասան և ծնծղուկ մտան 'ի Թոռնեան. մօտեցան 'ի Նկան. ճանչցան իրենց բերդին ճամբան, իրենց պատանեկութեան խաղուց և հրավարժութեան դաշտումարգը. երևցաւ հայրենի և ծնողական ապարանից աւագ աշտարակն։..

Այլ ո՛ւր էր իր կարմիր-կանաչ նշանակն. իր պարծանաց դրօշն... ինչո՞ւ չէին լսուեր իշխանական փողոց հնչմունքն և որսական եղջերաց վանգիւնքն. ո՞ւր ընկած լռէին Թոռնեանոյ դափն և թմբուկն։.. Չէին լսուեր ձայնք աւետաւորաց, ձայնք բարեաւ տեսութեանց. չէր լսուեր ձայն հօր, ձայն եղբօր. չէր հասներ՝ ոչ առիւծային բարբառն Խաչկայ, և ոչ անուշակ կանչիւնն Իշխանկան։... Ո՛վ սրտաթափ լռութիւն. ո՛վ աներթևեկ ճանապարհք. ո՛վ ամայութիւն հայրենեաց. և չար քան զամենայն՝ ո՛վ անմեծար գերեզմանք։.. Բոսջաց պէս ընկան. ինչո՞ւ դեռ անպատիւ մնան. թուէր թէ առանց վրիժուց պիտի

չկարնային խաղաղիկ 'ի հող՝ Խաչկայ կմախքն. և ոչ շուշանն վայրենի պիտի շարժէր իր բաժակներն Իշխանեկան հողմերաց վրայ, քանի որ անոնց նշանակը գերի ընկած էր յօտարութեան: Եթէ անհնար է անկեալ քաջաց արևը յետ դարձընել, միթէ չէ՞ր հնար յետ դարձընել անոնց արևէն ետքը ամենէն սիրելի բանը. զէնն ու զարդը:

## Ձ

Այսպիսի կրքերով միանգամայն խորադիտութեամբ առանց ժամանակ ծախելու՝ Հասան հայրենի իշխանութիւնը պայպաղատելով, կանչեց իրեն դրացի և առաջուց ծանօթ ու բարեկամ Քուրդ շէյխ մը, որուն վրայ վստահ էր. Թափեց դիմացը հազար կարմիր, — հայ քրտինքով շահած յունական գանձ, — հազար ոսկի. Ա՛ռ, ըսաւ, ու ասոնց տեղ ոչ զէնք ոչ զինակ[...] կ'ուզեմ քեզմէ խնծի օգնութեան ու վրէժխնդրութեան. հասպա խնծի դէմ մարդ ու թշնամի, դունդեր ու բանակներ. այնչափ որ սիրտս հանգչի, և հօրս ու եղբօրս արիւնը մարեմ: Գնա՛ պտըտէ՛ ձայնէ իմ երկրիս չորս կողմը. իմա՛ց տուր Հերայ անուեր բռնաւորին, արթընցու այլազգիները. Ի՞նչ ապաչեր դոդրեր էք, ըսէ. ինչո՞ւ չէք վազեր թալեր զԹոռնեան, քանի որ անտէր ու շուար մնացեր է. եկէք եկէք ու միանգամայն առէկն ու վրայ ըրէք Խաչկայ երկիրը, որ իրեն պէս անհետ կորսուի: — Յանկարծ գանձ գտած Քուրդն՝ մէջքը պնդեց հազար կարմրով շարած կամարը, թռաւ իր քալուկ ձիուն վրայ, ու երկայնաձօձ նիզակը ծռած՝ մոլեկան գիսաւորի պէս չորս սահման մանգալով կանչէր դրդէր ոտք հանէր այլազգիները զինել թալնել զԹոռնեան: Ամենէն աւելի Հերայ ու Սալմաստայ ասպատականներն, « Երթանք, ը-

» ալին, մէկ անգամով հիմնայատակ ընենք շէնքե-
» րը, այրենք աւրենք դաշտերը, յատակին հողն
» օդուն հանենք »: Ձայն տուին իրարու, մարդ մարդու ձի ձիու հասուցին, գունդեր բանակներ կազմեցին. 15000 զինեալք և հեծեալք խառն 'ի խուռն յարձակմամբ ահեղ սպառնալեօք հեղեղաբար Թափեցան 'ի Թոռնեան:

Լսեց, տեսաւ, զուարթացաւ Խաչկայ պայազատն. մռնչեց ինքն այլ առիւծաբար. ցատքեց իր կրակոտ երիվարին վրայ, բարձրացուց հայրենի դրօշը, հնչեցուց անգամ մ'այլ հայկական Թըմբկին խրոխտորոտ գոփիւնը:... Լսեցին, զարմացան, սոսկացան բիւրաւորքն ապստամբաց. և այլ աւելի ափշեցան՝ երբ ամայի և ոչնչանալու մօտ կարծուած Թոռնեանայ դաշտաց վրայ իրենց դէմ 5000 զինեալ ու հեծեալ հաստաբազուկ Հայեր տեսան, զորոնք՝ իբրև պղնձագամ կօշկացը կոփելովը՝ հողէն դուրս հաներ էր Հասան. որ և եղբօրն հետ սպառազինեալ, և դեռ սգոյ նշանն այլ զրահից հետ խառնելով Երասխայ և Գողթան հին դիւցազանց նման սիգալով վեր վար կու գայր իր գնդին մէջ: Հայոց անկարծելի պատրաստուԹիւը տեսնելով Թշնամիք այլ պատերազմի պատրաստիլ կ'ուզէին, երբ Հասան արտորալով երկու բանակաց մէջ մտաւ, ու գայլագին և տխրագին խառն և ահեղ ձայնով մը կանչեց, իմացուց որ իր հօր անպարտ արեան վրէժն առնուլ եկեր է, և կու հրաւիրէ անոր սպանողն իր դէմն ելնելու և մենամարտելու:

Հրաւէրն ընդունայն արձագանգ մը չտուաւ. այլ իսկոյն կարգ կարգ զինեալց ետեւէն մրրկէ փրԹած սև ամպի կտորի պէս՝ առաջ անցաւ բանակէն դուրս ցատքեց, Հասանայ դիմացն ելաւ հսկահասակ սեւ մը, որուն գոյնն և չափն աւելի վախ կու ձգէին քան սպառազինուԹիւնն. որոց

նման էր սիրտն այլ՝ խիստ և յանդուգն. ձայնն այլ կծու և սրտախոց, մանաւանդ Հասանայ, երբ կանչէր, Թէ Ես եմ հօրդ սպանողն. և ահա կու տեսնես ներքեւս իր ձին, ահաւասիկ իր Թուրն ու դրօշն. եԹէ կարիճ ես՝ մօտ ու առ։ Սուրիչնե-րու սոսկումն ազդեցին այս ձայնս ու տեսքն, բայց Հասանայ սրտմտուԹիւն ու վրէժ. տեսնելն՝ լսելն՝ և փայլական նման սև ամպին վրայ զար-նուիլն ու յերկու ճեղքելն մէկ ըրաւ. անանկ ու-ժով Թուրն իջուց սեաւ հսկային ուսին ու վզին միջոց՝ որ աջ ու ձախն իրարմէ բաժնուած երկու պատառ ընկան։ Հասան հօրը ձին ու զրահներն առած՝ դեռ կայծակնաԹափ աչքը դարձաւ իր բանակը։

Կարգն եկաւ Ծնծղկան, որ անհամբեր կ'ըս-պասէր իր մեծ եղբօր գործը վճարելուն. և նոր ոտնամուտքով դուրս ցատքեց իր գնդէն, անվախ ու համարձակ կանչելով իր տղայ եղբօր՝ Իշխան-կան խոշոր գազանը. որուն յանդգնուԹեան և արհամարհանաց չլսելով՝ մէկէն երևցաւ կորիճ Պարսիկ մը. Ահաւադիկ՝ կ'ըսէր, քու մալաղ եղ-բօրդ սպիտակ ձիուկն. ահա իր դրօշն ու նշանն, ահա իր զէնքերն. Թէ կորիճ ես եկ ու առ. ապա Թէ չէ՝ ես զքեզ խաւրեմ քու եղբօր քով։ . . . Այլ երկայն չկարցաւ ըսել և հայհոյել. վասն զի Իշ-խանկան նշանիկը տեսնելով Ծնծղուկ, զոր Թերեւս ինքն այլ անկէ առաջ կրեր էր, արեան և արցուն-քի գոլոշեօք աչքերին լեցուած՝ մտրակեց ձին, դրաւ ռումբը դէմ սրտի Պարսկին, հրեց Թափ անցուց, 'ի գետին փռեց իր եղբօր սպանիչը. և անոր ցատքըռտուկ սպիտակը ու զէնքն և զարդե-րը յափշտակելով դարձաւ խնդուԹեամբ Հասա-նայ քով։

Երկու եղբարք այլ իրենց ազնիւ հարազատաց վրէժն առնըլով, աւարներն յետ դարձնելով իէր

առաջին և երկրորդ յաղթանակն ըրած հաշուեցին. կու մնար երրորդ մ'այլ, իրենց երկրին և մարդկան միւսաներն այլ փոխարինելու: Արդէն Թշնամիք այլ այս բանիս յորդոր կու տային իրենց շփոթութեամբ և խուճապելովը. իրենց կողմէ երկու շահատակաց՝ Խափշըկին և Պարսկին ընկնալ և Թալնիլը տեսնելով՝ ոմանք փախչելու ոմանք կռուելու կու շարժէին, երբ Հայք յարձըկեցան վրանին. և Թէպէտ անոնք եռապատիկ առուելի էին Թուով, բայց չկըրցան Հասանայ և Ճնճղկան և անոնց նմանեաց յաղթել կամ երկար դէմ կենալ. Թոռնեանայ և Արծրունեաց վերիժուց օրն էր. քանի տարիէն վեր դադրած Թրերն Հայոց՝ չդարձան 'ի պատեան, մինչև 4000 այլազգի փռեցին 'ի փոշի. մնացեալներն այլ հալածելով հանեցին իրենց հայրենի սահմաններէն շատ հեռու:

Կատարեալ յաղթանակաւ դարձան Հասան և Ճնճղուկ, օրհնութեան և գոհութեան ձայներով. պանծալի հին Թմբուկն հայկական՝ կանաչներով պսակուած՝ խառնեց իր անընդհատ Թոպիւնն՝ 'ի չէն դարձող բարձրալինչ բարձրափունչ երիվարաց սրոփման և խրխնջման հետ. և երբ յառաջ քան իրարմէ զատուելով իւրաքանչիւր իր տան ճամբան բռնելը, վերջին անգամ մէկ տեղ հաւքած հանդիսացան 5000 հեծեալքն Հայոց, որոցմէ քիչեր ինկեր էին հայրենի հողուն վրայ. Հասան և Ճնճղուկ հասարակաց հանդիսին մէջ ամենուն շնորհակալելով և իւրաքանչիւրին վարձքը և արժանը տալով, ապա հանդիսապէս իրենց քաջութեան և սիրոյ ուխտն այլ ամբողջացուցին: — Քակեցին հանեցին հօր և եղբօր սպանման յուշարար սգոյ սեւ նշանները, և անոնց տեղ՝ Թշնամիներէն նոր յետ դարձուցած հարազատաց նշաններովն կապուեցան զարդարեցան. և փալար

Թաւփերով ու պայծառ ծաղկներով, և խաչիւ ու խնկով նորէն սրբեցին սարեցին Խաչկայ և Իշխան-կան գերեզմանները. ծաղկըներէն աւելի օրհնէնք թափելով անոնց վրայ՝ բերանով բիւրաւոր բազմութեան, որ անոնց բոլորը մատաղ և տղայ վայելեցին, և լեցուն սրտով ու ձեռքով դարձան 'ի տուն 'ի տեղ. երբ Հասան և Ճնճղուկ այլ Նկանայ աշտարակին ծայրը ազատաբար սաւառնեցին հայրենի դրօշն 'ի զբօսանս զովարար հովոց և զովացեալ սրտից։

## Է

Ո՞րչափ ատեն, քանի՞ տարի արդեօք այն անարգել հայրենի օդոց ծնունդքն (հովերն) խաղացին քծնեցան Արծրունեաց յետին պանծալի դրօշուն հետ, յետ քաջապէս և վայելչապէս կատարելոյ իրենց հօր և եղբօր և երկրին պահանջած վրէժը. — այս բարեբաղդ և փառաւոր եղբարքն՝ կըրցան դիմանալ Սելճուքեանց յարձակման դէմ. որք այս գործէն քիչ ետև՝ նորէն մտան 'ի Հայաստան և հեռահետէ տիրեցին գրեթէ բոլոր մեր աշխարհին։ — Անոնց բանութեան դէմ կռուելն՝ 'ի հարկէ անօգուտ և անկարելի էր Թոռնեանայ իշխանին. ինքն իրեն վայելուչ և հայրենի պատմութեան մէջ միշտ պանծալի գործն արձանացուց. որոյ փառաց անակնունելի կերպով մը վարձքն այլ համեմատ եղան, որ թերևս քեզի այլ ծանօթ չէ, Հայկակ։

Խաչկայ պայազատն Հասան՝ կ'երևի՝ թէ ոչ դաշնաց՝ գոնէ իր ամուր բերդին վրայ յամառեալ տիրեց և չիջուց դրօշն 'ի վայր. մինչև որ ինքնին իշխու Խաչկայ հետ հանգչելու 'ի քնարանս հարանց. իսկ իր պայազատ որդին՝ Առլըղոփող՝ ուրիշ հայ իշխանաց հետ պանդխտութեան ցուպն ա-

ռաւ, բայց անոնց պէս աննշան անտես չմնաց. այլ ինչուան Կիւլիկիոյ մայրաքաղաքին Տարսոնի, և միւս մեծ քաղաքին Մամեստիոյ՝ ուր և կողմնակալ եղաւ Ալէքս Ա. կայսեր առեն և անկէ առաջ. քաջութեամբն՝ ապահովցուց շէնցուց այն կողմերը, և բարեպաշտութեամբն շատցուց սրբազան շէնքեր, բարձանց վրայ և դաշտաց մէջ կանգնելով տաճարներ. ապահովութեան համար ընտրեց երկու անառիկ յարմար դիրքով բերդեր՝ Տօրոս լերանց դժուար կողմերը, զՊաղէռօն և զԼամբրօն. առաջինը՝ իրեն ընիկ տուն տեղ պատրաստեց, ամրացուց, և անոր տաճարին քով շինեց իրեն և իրեններուն համար յետին բնակարանն այլ, գերեզմանատունը: — Այս բանիս մեծ հոգ ունէին մեր նախնի պայազատք. ուր տեղ որ բունէին՝ նախ աղօթից տուն, և ապա անոր քով կամ մէջ՝ իրենց մահուան տունն այլ տնկէին: Իսկ երկրորդ բերդը տուաւ իր սիրելի պանդխտակից Նիզակակիցին, որ իրմէ աւելի հեռու հայ աշխարհէ մը ելեր եկեր էր, յԱրցախոյ աշխարհէն՝ Մայրեաց-Ջուրք ըսուած տեղէն. և էր իշխանն Օշին. Լամբրոնի հետ ընծայեց անոր իր հայրենի տունէն բերած անոր սրբազան պահպանակ Ս. Պետրոսի գլխաւոր առաքելոյն մասունքը, զոր հանգոյց Օշին շինած տաճարին մէջ 'ի Լամբրոն, զոր և նորոգեց ու ամրացուց. և ինքն այլ հոն դրաւ ու դտաւ իր գերեզմանը: Ասոր համանուն թոռն Օշին (որդի Հեթմոյ) հայր եղաւ հռչակաւոր Ս. Ներսիսի (Լամբրոնացւոյ): Իսկ Հասանայ որդին Աբլղարիպ այլ ննջեց 'ի Պապեռօն, առաջուց բաժնելով ժառանգութիւնը. կ'երևի թէ արու զաւակ չունէր. մէկ դուստրը հարսնացուց Դաւթի՝ Գագիկ Բ. Բագրատունեաց վերջին թագաւորին որդւոյն. միւսն այլ տուած կ'երևի Օշնի. վասն զի ասոր որդին Հեթում՝ զբերդն Պապեռօնի տուաւ իր

Սմբատ որդւոյն. ըսել է որ ինքն էր անոր մերձաւոր ժառանգն. զՏարոն այլ Ապլղարիպ առեր էր Օշնի փեսայ իշխանի մը:

Այս Հեթմոյ որդւոց անդրանիկ ճիւղն յաջորդաբար տէր եղաւ Լամբրոնի. երկրորդն այլ՝ Պապեռոնի. որոյ առաջին տիրացող յիշեալ Սմբատին էր Ռիթա դուստրը առաւ 'ի կնութիւն Ստեփանէի՝ Ռուբինեանց պայազատին, յորոց ծնաւ մեծն և առաջին Թագաւորն Լևոն. սոյն դստերն և ժառանգն Զապել դշխոյ՝ հարսնացաւ յիշեալ Սմբատայ Թոռան՝ Կոստանդին Մոզոնի (որդւոյ Վասակայ) որդւոյն հետ, որ է Հեթում Ա. և այսպէս միացան երկու ճիւղքն Պապեռոնեան և Լամբրոնեան, և երկու մեծ ցեղքն՝ Արծրունի և Բագրատունի, թէ և մայրենախառն: Այսպէս կերպով մը երկրորդ անգամ այլ, և գրեթէ մինչև 'ի հազար տարի վերջ, կատարեցաւ մեր խորին հայրենախօս պատմահօր մարգարէութիւնը (Խորենացւոյ), թէ այդ երկու մեծ ցեղերէն՝ 'ի Բագրատունեաց և յԱրծրունեաց՝ թագաւորներ պիտի ըլլան Հայոց յետ շատ ժամանակաց: Արդ Բագրատունի թագաւորութեանն առաջին հեղինակ եղաւ Աշոտ (887) երկրորդ՝ յետ 200 տարւոյ՝ Ռուբէն կամ Լևոն Ռուբինեան. իսկ Արծրունեաց՝ նախ Խաչիկ-Գագիկ, և երկրորդաբար մը՝ անձամբ Թոռանցն՝ մեր Թոռնեանցին ԽՈՒԼ ԽԱՉԻԿ[1]:

1 Մեծին Ներսիսի Նշխարաց գիւտին պատմիչն (որ թուի Յ. Երզնկացին) կ'ըսէ վասն «Ռուբէնի մեծի իշխանին, » որ էր 'ի զօրացն Բագրատունեաց և յազգէ Նոյին, և 'ի » տանէ և 'ի տոհմէ Արծրունեաց. որ և մեր պատկաւորն » Լևոն (Գ., որդի Զապելի և Հեթմոյ), զերկուցն ունի » Թագաժառանգ ազգաց զազգականութիւն»: Ըսել է որ այս Լևոնս երկու ճիւղով այլ յԱրծրունեաց էր:

# Լ

# ԵՐԶՆԿԱ

# ԵՒ ՅՈՎՀԱՆՆԷՍ ԵՐԶՆԿԱՑԻ

## Ա

Խորհրդաւոր հնութեան և յունութեն շնորհք ունող հայկական անուանց մէկն է Երիզա, որ մեր հայրենի երկրին քանի մը կողմերը յիշուելէն զատ՝ կու գտուի նաև Յունաց կողմերը. և Կիւլիկիոյ արևմտեան դրացի գաւառաց մէկուն մէջ կար Երիզա անուամբ եպիսկոպոսանիստ քաղաք մ'այլ: Նշանաւոր պատճառ և ծագում մը պէտք է ունեցած ըլլայ այս անունս, բայց ստուգութիւն անյայտ է ինծի, ևս և ո՛ր ազգէն ո՛ր լեզուէն ծագիլը, 'ի Հայո՞ց՝ (ինչպէս կ'ուզեմ կարծել՝ մեր երկրին հնութեանն և ազգաց չուարան ըլլալուն համար), եթէ դիպուածով յօտարաց 'ի մեզ մըտած. — վասն զի եթէ այս անուանս նախնական պատճառը սեպեմք երկրի նշանակութիւն մը, ոչ միայն մեր՝ այլ և արաբացի և գերմանական լեզուաց մէջ մեր Երէզ բառին համաձայն և համանիշ բառք կան: Յոյնք ունին առասպելեալ անձինք այլ Երէս կամ Երէզ անուամբ, ինչպէս խռովարար դիցուհի մ'այլ Էրէս՝ որ է ըստ նշանակութեանն և ըստ ձայնին հէռ (կռիւ, ատելու-

թիւն) և անշուշտ հեռի է Երիզայ անուանագրութենէն։ Բայց անունը թողլով և իրաց գալով կու գտնեմք որ այդ անունը կրող տեղեաց մէջ ամենէն նշանաւորն և մնայունն եղած է մեր Բարձր Հայոց աշխարհին և Եփրատ գետոյն նոր ձևացեալ եզերաց վրայ կանգնուած Երէզ աւանն, որ 2000 տարուան յիշատակաւ՝ այսօր այլ ծանօթ է ամենուն Երզնկա անուամբ քաղաք մը, Էրզընճեան ըստ Թուրքաց, կամ Երզընկեան, Էրզիռում կուսակալութեան վիճակաց մէկն հիմայ. իսկ մեր նախնեաց և տէրութեան ատեն գլխաւոր քաղաք Եկեղեաց հռչակաւոր գաւառին, որ շատ ծանօթ էր Յունաց Ակիլիսինի կոչմամբ, և Հատինաց՝ Ակիլիսենէ կամ Զելիսենէ։ Ո՛վ որ Փոքր Ասիոյ միջնաշխարհէն 'ի Հայս կ'երթար, կամ 'ի Հայոց՝ հոն, կ'անցնէր յԵկեղեաց և յԵրիզայ. ինչպէս որ Գ դարուն վերջը և Դին սկիզբը, Տըրդատայ և Լուսաւորչի գործոց և գնացից մէջ կու յիշեն ժամանակակից պատմիչք։ Բայց միայն ճամբու վրայ ըլլալուն համար չէր Երզնկայի շընորհքն, այլ և երկրին հանգամանաց, և ամենէն աւելի կրօնական դիպաց համար։

Եփրատ գետ Կարինէն իջնելով և Դերջանէն անցնելով դէպ 'ի յարևմտեան հարաւ կ'երթայ, երկու մեծ լեռնագօտեաց մէջ, որոց մէկն 'ի հարաւոյ կ'անջրպետէ իր զուգակից Մուրատ (Արածանի) գետոյ հովիտը, միւսն՝ յարևմտից Փոքր Հայոց գաւառները և գետերը. այս միջոցիս վրայ է Եկեղեաց կամ Երզնկայի գաւառն, արևմտեան հիւսիսէն դէպ 'ի արևելեան հարաւ տարածուած, մեծաւ մասամբ Եփրատայ աջ և հիւսիսային կողմը. ուսկից կ'ընդունի այն գաւառին գլխաւոր վտակը՝ հիմա Վաղէրփ ըսուած, որ պիտի ըլլայ Վասակէրփ կամ Վասակակէրփ, այս անուամբ աւանի մը քովէն անցնելուն համար, շինուած 'ի

Դ դարու, և անշուշտ անով գետակին հին անունը խափանած, որ էր Գայլ գետ, և որոյ եզերքն էր Երէզ աւանն, ինչպէս որ հիմայ այլ մօտ է անոր Երզնկա քաղաքն, թէ և հին և առաջին Երիզայ ընիկ յատակին վրայ չըլլայ։ Երբեմն քաղաքներ այլ տեղափոխութիւն կ'ընեն, մանաւանդ ուր որ շատ ժաժ և կործանումն կ'ըլլայ, ինչպէս հոս։ Երզնկայի գաւառն՝ Դերջանայ և Կամախայ մէջ՝ լուսնաձև կամ ձուաձև տարածուած է, իբրև 20 մղոն երկայնութեամբ և 7–8 մղոն լայնութեամբ. գետինն 4000 ոտքի չափ բարձր է ծովուն երեսէն. որով ձմեռը բաւական ցուրտ կ'ըլլայ, բայց շատ պակաս 'ի Կարնոյ, (ուր ինչուան 25° Րէօմ. զրոյէն վար կ'իջնէ ջերաչափն, իսկ հոս իբրև 10°). ամառն այլ աւելի տաք կ'ըլլայ. ինչուան 30° շուքի մէջ. և պէտք կ'ըլլայ որ բնակիչքն շրջակայ լերանց վրայ 'ի հով ելնեն. տապ թէ ոչ թէ տաքն և թէ քիչ մ'այլ ճապաղեալ ջուրեր՝ կըրնան ջերմով վնասել։ Համդերձ այսու Երզնկա դեռ բարեխառն և զուարճալի վիճակաց մէկն է 'ի Հայս, վայելուչ դիրքերով և տեսարաններով, միանգամայն և բարեբեր. որուն մէկ պատճառն այլ գետնին կազմութիւնն է, տակը կրակ, վրան ջուր. վասն զի հրաբղխային է կազմուածքն, ինչպէս յայտնի է և իր ժաժերէն այլ, ծծմբային ջերմուկներէն այլ. կ'արժէր որ երկրաբան և հանքաբան մը լաւ քննէր այս կողմերուս լեռները. որոնք հովտին շրջապատն առած՝ կարծես թէ անոր գեղեցկութեամբը կու զմայլին, իրենք ալ պակաս գեղեցիկ չըլլալով։ Հարաւային կողմէն կու տարածուին Տուժիկ լեռներն, տեղ տեղ կանաչ տեղ տեղ սև, երբեմն չոր երբեմն դալար կողերով, սիրուն ու ահաւոր տեսարաններով. փէշերնին դէպ 'ի հովիտը փռած են, վրանին բազմաթիւ գեղեր պար-

տխղայ և ծառաստանաց մէջ կու ծիծաղին, իբրև թէ ծաղիկ քաղելու ելած անձինք ըլլան. որոնց ետևէն լերանց հարաւային անտառածոյր գագաթներն երբեմն սև սև գմբէթներու պէս երկինք քաշուած կ'երևան, երբեմն թուխ ու կանաչ վարագուրի մը պէս Երզնկայի հորիզոնը կու չափաւորեն: Արևելքէն հեռուէն Բարձր Հայոց լեռներն ամպերու պէս երբեմն կ'երևան երբեմն կու ծածկուին. արևմուտքէն ալ հեռու չէ սրբազան Սեպուհն, որ կարծես թէ դեռ Լուսաւորչի վերջին շունչերը կը շնչէ Երզնկային վրայ, ուսկից առջի անգամ Հայաստանի վրայ քրիստոնէութեան շունչերն փչեր էր. հիւսիսային հեռու սահմաններէն ալ Գայլ գետն աճապարող ճամբորդի մը պէս գալով դէպ 'ի քաղքին արևմուտքը կը մօտենայ, բայց չի հասնիր այնչափ մօտ՝ որչափ կու հասնէր առկէ 2000 տարի առաջ. և անկէց ալ դէպ 'ի հարաւ երթալով՝ կը խառնի եդեմական Եփրատա գետոյն ծեր ու ծաղկած ծոցը, որ այս կողմերս Ֆրատ կու կոչուի, և բուն Երզնկայի մօտիկ՝ Սեւ ջուր կ'ըսուի յայլազգեաց: Այս ջուրս որ հովտին պտղաբերութեան մեծ օգնականն է՝ տնոր եղերքներէն առաջ կու գայ՝ լերանց սառբուկը քծնելով. ուր որ շատ տեղ քարոտ ճամբու պատահելով՝ երբեմն հանդարտօրէն իւր առաճման ընթելով այն գարերէն կ'անցնի ձիւնափըրփուր ալիքներով. երբեմն ալ սրդողածի պէս ուժ տալով կ'անցնի կը վազէ անոնց մէջէն, հետն ալ մեծ մեծ քարերու կտորներ՝ ոչ անախորժ դըղըրդմամբ մը՝ քշելով տանելով. ինչուան որ անոնցմէ ազատած երթայ իր գլխաւոր պաշտօնը կատարէ, հովիտը խմցընելով: Գետին՝ որ ներքէն հրաբղխի երկրի մը բարեյարմար տաքութիւնունի՝ գրեթէն ալ այս անուշ ջուրը գտնալով կը բանայ ծոցը ամէն տեսակ ընտիր պտուղներ բըղ-

խնլու, որոնք ինչուան Կարնոյ կողմերը և ուրիշ կողմեր ալ կը ղրկուին: Չեմ գիտեր թէ պտղոց տեսակն աւելի է հոս թէ ազնուութիւնն. բայց եւրքինս կը յաղթէ. ինչ որ կը բուսցընէ՝ ամեն ալ ընտիր է, խաղող, թութ, դեղձ, սալոր, տանձ, խնձոր, մեղրապտուղ, և այլն. ինչուան թզենի ալ. և թէպէտ ցորենի գաւառ չէ, բայց ունի պատուական ընդեղէններ ալ. հունձքն ալ կլիմային և պետնին ուժովը՝ կանուխ կու հասնին: Բայց պէտք չէ մոռնալ Երզնկայի պտղոց մէջ՝ իր համեղ փափուկ ծիրանեգոյն ծիրանն ալ, որ արևմուտքի աշխարհքներ պտղոց մէջ Հայկական անուամբ կու պատուի. անշուշտ այս հովտիս ծիրանն է որ Լուկուլլոսի և իր հռոմայեցի զօրքերուն ախորժակը զմայլեցուց, և հետերնին առած Իտալիա փոխադրեցին անոր կուտերը (թերևս Հայաստանէն շահած ամենէն մեծ աւարնին աս ըլլալով), և ինչուան հիմայ հոն Արմենիաքօ անունը կը պահէ: Մշակութիւնը հարիւրի չափ գեղերու յանձնուած է, որ վերոյիշեալ լերանց և հովտին մէջ սփռուած են. բայց վայելքին կշեռքն երբեմն Քիւրտերուն նիզակովը կու կշռուի: Այս ազգը հոս երկու ցեղ ունի, Պալապան և Շեխ-Հասան կամ Հիւսէյին ըսուած, որ ձմեռները կ'իջնեն շէնքի տակ, լաւ եղանակները լեռներուն մէջ կ'անցընեն իրենց հօտերովը, որոնց պարարտ արօտներ կան լեռնադաշտակներուն մէջ. գրեթէ անկախ ինքնագլուխ կը տիրեն այս կողմերուս. լերանց նեղ անցքերը բռնած՝ ճամբորդներէ անցքի հարկ կը պահանջեն. Լուսաւորչի ուխտաւորներն ալ՝ ուխտէն առաջ այս անհաճոյ հարկը պէտք է տան. բայց դեռ երջանիկ են որոնք որ նեղութեան քրտինքով արիւննին կը գնեն. վասն զի Քիւրտին նիզակը սուր է. անոր համար հիմայ շատ գեղեր անմարդաբնակ եղեր են:

## Բ

Դառնանք հիմայ քաղքին, որ հովտին արեւմըտեան անկիւնը նստած է, և գեղերուն պէս զըւարճալի տեսք ունի, կանաչութեամբ զարդարուած. տուներն ալ որ 3000էն աւելի են՝ բաւական վայելուչ են տեսքով: Բնակչաց իբրև երրորդ մասը մերազգիք են, մնացածքն մահմետականք: Քանի մը եկեղեցիներէն զատ Երզնկա նշանաւոր շէնք մը չունի, և ոչ հնութեան արժան, խիստ շատ անգամ երկրաշարժներէ կործանած ըլլալուն համար, որ ոչ հեթանոսութեան ատեն կանգնած շէնքերուն և ոչ քրիստոնէութեան առջի դարերուն սրբազան եկեղեցեաց խնայեցին:

Մեր պատմութեան մէջ Քրիստոսէ դար մը առաջ կու սկսի Երզնկայի անունն և փառքն. այն ատեններն Երէզ քաղաքաւան մ՚էր, Եկեղեաց գաւառին գլխաւոր տեղը: Արտաշէս Ա. մեր թագաւորն՝ որ Արամ հայկազուն նահապետէն ետև առաջին աշխարհակալ և ծովակալ եղաւ, Յունաստանի տիրած ատեն՝ հոն գտած տաճարներուն մէջ հարստութեամբ և ճարտարութեամբ երևելի կուռքերուն շատը՝ Հայաստան ղրկեց. ասոնց մէջ կար Արտեմեայ անդրի մ՚ալ, որ կու կարծուի այն հռչակաւոր անդրին՝ որուն համար հիներն կ՚առասպելէին թէ երկընքէն իջած էր և Ղրիմու Տաւրիդեան կողմերը կու պաշտուէր հազար տարիներով առաջ. Տրոյայ պատերազմէն ետև Ագամեմնոնի Յունաց առաջնորդին աղջիկը Եփիգենիա հոն փոխադրեցաւ Անահտայ ձեռքով, որ իր տաճարին մէջ ծառայութիւն ընէ. վերջը երբ իր Որեստէս եղբայրն ալ այն կողմերն ընկաւ նաւակոծութեամբ, մէկտեղ կուռքն առին փախան, եկան յԱրգոս Յունաստանի ու հոն

կանգնեցին, որով բոլոր Ցունաստանի մէջ մեծապաշտօն եղաւ: Հազար տարի անցնելէն ետև մեր Արտաշէս զաս ալ առաւ Յունաստանէն և ղրկեց 'ի Հայաստան. և դեռ հրամանչատուած ուր կանգնելուն վրայ, ինքը մեռաւ Ցունաստանի կղզեաց մէջ. զկուռքն ալ՝ Հայաստանի բերողներն ալ՝ Երեզի մօտիկ Անի ամրոցը պահեցին, հանդերձ յոյն քուրմերով՝ որ չէին ուզած անկէ զատուելու. Տիգրան Բ իր հօրը տեղ անցնելով, հրամեց որ Անիէն հանեն կուռքը և Երեզ աւանին մէջ կանգնեն: Հայք որ շատոնց Անահտայ ջերմեռանդն էին՝ իրենց դիցուհին կարծելով զան՝ մեծ յարգութեամբ սկսան պաշտել. Թագաւորներն ալ գաւառին շատ երկիրները՝ տաճարին կալուածք տուին. անոր համար բոլոր այն երկիրներն Անահիտական գաւառ ըսուեցան, և մեհեաններով ու քուրմերով լցուեցան. ամեն կողմէ նուէրք կու գար այս տաճարներուս: Այս նուիրաց հետ դիցուհւոյն նուիրած եզներ ալ կային, որոնցմէ ճերմակներն և ընտիրներն իրեն հաճոյագոյն զոհ սեպուած էին. ասոնց ճակատը ջահաձև խարան զարկած՝ որ ոչ ոք չդպչի՝ կու թողուին որ խումբ խումբ արածին Եփրատայ և Գայլի խոտաւէտ ափունքներն: Երեզի բնակչաց մեծ մասն և քովիններն՝ Անահտայ ծառայութեանը նուիրուած էին իբրև քուրմք և ծառայողք տաճարներուն մէջ՝ նուիրաբերաց և ուխտաւորաց, և տօները կատարելու՝ հանդիսիւ. գարնան և աշնան մէջ մեծահանդէս թափորով ջահերով կը պտըտցընէին կուռքը մեհենէն դուրս չորս դի. յատուկ Անահտայ մեծ տօնը Նաւասարդի 15ին կը կատարէին, 15 օր տարեգլխէն կամ Արամազդայ տօնէն ետև, որով կ'երևի ալ թէ Հայք եօթնօրեայ շաբաթական շրջան ունէին, և Արամազդէն վերջը Անահիտն էր իրենց մեծ աստուածն. ինչպէս որ Տրդատ

Թագաւորն ալ իր դիցամոլութեանն առեն մեղադրելով կ'ըսէր Լուսաւորչի. «Մեծի Անահտայ տիկնոջ, որ է փառք ազգիս մերոյ և կեցուցիչ. զոր Թագաւորք ամենայն պատուեն, մանաւանդ Թագաւորն Յունաց. որ է մայր ամենայն զգաստութեանց, բարերար ամենայն մարդկան բնութեան, և ծնունդ է մեծին արի Արամազդայ... որով կեայ և կենդանութիւն կրէ երկիրս Հայոց»: Այս խօսքերէն կու տեսնուի որ Հայոց Անահիտն սեպուած էր Աթենաս, մայր զգաստութեանց, ինչպէս Պղատոն ալ Տիմէի գրոց մէջ Աթենաս կը սեպէ զԱնահիտ՝ Նիիթ անուանելով եգիպտական կոչմամբ. բայց իմաստնոց մէջ շատ վէճ կայ Անահտայ վրայ, և հաւանական կ'երևի որ Հայոց հին Անահիտն՝ ու Տիգրանայ առենները՝ Ասորւոց դիցուհւոյն նման բնութեան սատուած էր, շատ տեղ ալ Յունաց Արտեմիս կամ իգական լուսին սեպուածն, երբեմն քոյր Միհր աստուծոյ, այսինքն արևու:

Երբոր Տրդատ Յունաստանէն գալով մտաւ'ի Հայաստան հալածելով զՊարսիկս, առջի պարտքը սեպեց Անահտայ պաշտօնը, զոր և կատարեց հանդիսիւ. և այլ աւելի պատիւ մ'ընելու համար՝ հրամմեց Գրիգորի որ այն առեն իր ծառայութեան մէջն էր և իրեն սիրելի, որ ուրախութեան սեղանին վրայէն ծաղկըներն առնու և նոր տերևներ ալ կարելով՝ տանի Անահտայ բագնին նուիրէ: Ահա այս հրամանիս վայրկեանն էր 'ի յաւիտենից գրուած մեր ազգին հոգևոր ծննդեանը: Ամէն Լուսաւորչի որդւոց պէտք է յայտնի ըլլան՝ այն հրամանէն ետքը պատահածներն, որով և աւելորդ ինծի հոս կրկնելն. միայն չեմ կրնար լռել իմ անձնական զուարճութիւնս երախտագիտական պարտքի մը պէս այս տեղս, ուր իմ հոգւոյս սերմն ալ 1500 տարի առաջ

ծլեր էր իմ Լուսաւորչիս շնչին մէջ. այս դաշտերս իր սուրբ արեամբն ոռոգուած էին. աւելի անոնց կաթիլներովն էր հոն գրուած գաւառ Լուսաւորչին՝ քան թէ գրոց աւանդութեամբ. հոն յղացաւ Հայոց հոգևոր անձնաւորութիւնը, որ 13 տարի Արտաշատու վիրապին մէջ երկնելով՝ ընծայուեցաւ Վաղարշապատու դաշտին մէջ։ — Ո՛րչափ փոխուած էր այն Տրդատն՝ երբոր երկրորդ անգամ Գրիգորի հետ 15 տարիէն ետև՝ եկաւ անահատական բագիններուն դիմաց, և զայն՝ որ մայր զգաստութեան կ՚անուանէր, ճանչնալով մայր մոլորութեան՝ հրամմեց ոչ ծաղկով ու տերևով պատուել, հապա մրճով ու բրչով փլցընել, մանաւանդ թէ Քրիստոսի խաչովն, և անոր տեղ կանգնել ճշմարիտ զգաստութեանց մօրն՝ Տիրամօրն աթոռը. և Նաւասարդի 15ը հաստատուեցաւ տօն Աստուածածնի, որ կ՚երևայ թէ վերափոխմանն ըլլայ, ինչպէս որ ընդհանուր եկեղեցին ալ նոյն օրերը կու կատարէ այս տօնս։ Իրաւամբ հոս պէտք է կանչել Անանիա հին վարդապետին հետ. «Օրհնեալ ես դու լուսանկար առագաստ,
» ուր շքեղաճոխ նազանօք զօրացար ՚ի վերայ պատ-
» կերացն դրօշելոց, և հարեալ խորտակեցեր զան-
» սուրբ պաճուճանս դիցանուէր և քաջապերճ
» պանծանաց Անահիտն տիկնոջ»։ Անշուշտ այս տաճարիս տեղն կանգնուեցաւ արժանապէս Աստուածամօրն եկեղեցին, զոր թէպէտ յայտնապէս չեն յիշեր մեր պատմիչք, այլ Պրոկոպիոս Յոյն պատմիչն կու վկայէ, թէ Ոսկեայ Կոմանայի տաճարական Անահտայ մեհենին տեղ՝ հիմայ եկեղեցի է. գիտեմք որ մեր Անահտայ անդրին ալ ոսկեղէն էր։

## Գ

Երզնկայի հին դարերուն դիպուածներուն մութի մէջ մնացեր են, ամենէն պայծառ ժամանակն է ԺԳ և ԺԴ դարերն: Թէ և ոչ փառաւոր և ուրախալի՝ բայց ամենէն նշանաւոր դէպք քաղաքիս կըրնան ըսուիլ իր ժաժերն և կործանմունքն. որոց առաջինն կու յիշուի յամին 1012, վերջինն 1784, միջոցն այլ 20 անգամէն աւելի, երբեմն գրեթէ բոլոր քաղաքը կործանելով, երբեմն մեծ կամ պզտիկ մաս մը, և իր բնակչայը գերեզման ընելով իրենց տուները. եթէ միայն նշանակուած մեռելոց թիւը գումարենք 200,000 կ՚ըլլայ. անշուշտ աւելի այլ կորած են հոն՝ ուրիշ չնշանակուած ատեններն այլ մէկտեղ. ըսել է որ Հայաստանի մէջ Երզնկա կու նմանի այն հարաւային Իտալիոյ գեղեցիկ քաղաքաց (որոնց գրեթէ զուգաստիճան է աշխարհագրական դրիւք լայնութեան), ուսկից չեն կըրնար հեռանալ տագնապեալ բնակիչքն. կու վախեն և կու սիրեն. որքան սաստիկ և դժնդակ է երկրին աներևոյթ երեսն, այնքան բարի և անուշակ դրսի երեսն: Մեր պատմիչներէն զատ՝ քանի մ՚արևմտեան կամ եւրոպացի ժամանակակից հեղինակք և ճամբորդք այլ կու յիշեն այս դիպուածներս. որոց գուցէ հնագոյնն է Ռուպրուքի Փռանկ և Փրանկիսկեան կրօնաւորն, զոր Պապն Հռովմայ դեսպան խաւրեր էր առ Ղանն Թաթարաց, և՛ի դարձին՝ յամին 1255 տեսաւ առջի տարին հանդիպած մեծ ժաժին ահաւոր նշաններն և աւերածները. որոնց տակ զատ յաղքատաց՝ 10,000 ունևոր մարդիկ թաղուած էին, կ՚ըսէ, և երեք օր ձիով անցնելով կու տեսնէինք զարհուրելի պատառածներ գետնին երեսը, և մեծամեծ քարակոյտներ՝ ուր լեռ-

ներէն փրթելով ծածկեր էին հորակները, այնպէս որ եթէ ժաժն քիչ մ՚այլ երկայն քշէր՝ տառուգիւ պիտի կատարուէր Եսայի մարգարէին բանն, «Ամենայն հորք լցցին և ամենայն բլուրք » խոնարհեսցին ». մեր յիշատակագիրք՝ 16,000 հոգի կորսուած կ՚ըսեն այս անգամուս : — Յամին 1471 այլ Յովսափատ Պարպարոյ Վենետկեցին անցաւ Երզնկայէն, և քաղաքին կէսը կործանած գտաւ՝ քանի մը տարի առաջ եղած սասանութենէն. մեր յիշատակագրաց մէջ այս թուականէն առաջ 1462ին եղածը կու գտնեմք, յորում 30,000 հոգի մեռան, կ՚ըսեն :

Ասոնցմէ երևելի և Միջին դարուց ամենէն մեծ ճանապարհորդն Մարգօ Բօլօ՝ աւելի լաւ ատեն մ՚անցաւ յԵրզնկայէ, յամին 1300, յորում չէն էր քաղաքն, Թաթարաց իշխանութեան տակ, Ներսէս եպիսկոպոսին ատեն, ինչպէս կ՚ըսէ. բընակչաց մեծ մասն Հայք էին. իրենց գլխաւոր ձեռագործն էր բամբակեայ խժապատ կտաւն, զոր ամեն տեղի նման կտաւներէն ընտիր կու սեպէ. miglior bocherame (կամ bocassini) del mondo, որ է Թուրքաց պօղասը կոչածն. և մինչև ցայժմ ատոնց մէջ անուանի է քաղքիս կտաւն, մինչև առակի պէս կ՚ըսեն [1]. Նոյնպէս կու գովէ Մ. Բօլօ քաղքին բաղնիքներն այլ՝ ուրիշ տեղերէն վեր դնելով : — Անկէ 14 տարի վերջը (1314) երեք Իտալացի Փրանկիսկեան քարոզիչք նահատակուեցան յԵրզնկա, և Հայ երեց մը թաղեց զանոնք պատուով. իսկ կաթուղիկոսն Հայոց պատուիրեց յիշատակել զանոնք յեկեղեցին. այսպէս կ՚աւանդէ անոնց ժամանակակից մէկ ընկերն. մեր պատմըչաց մէջ չկայ այս բանիս յիշատակն. այլ անոր տեղ և անկէ առաջ ուրիշ ազգային նը-

1 Եղլընճեանը գեղջ :

ման ցաւալի դիպուած մը, որ է սպանումն Սարգսի արքեպիսկոպոսի քաղաքին։

ԺԳ դարուն կիսէն սկսեալ կու յիշատակուի՝ այս անձս 30 տարի գովութեամբ, շատ բարի կարգաց և շինութեանց համար, որոց գործակից էր և իր որդին, վասն զի աշխարհի կարգ ալ մտեր էր. այս որդին էր Պարոն Յովհաննէս, քաղաքին ազգայնոց վերակացուն. Ժամանակին յիշատակագիր մը կ'ըսէ Սարգսի համար, «պատուեալ յԱս-
» տուծոյ, մեծարեալ յազգաց և յազանց և 'ի
» թագաւորաց մեծաց». այս մեծ թագաւորներն էին կայսերք Յունաց և Ղանք Թաթարաց, սուլտանն Իկոնիոնի և թագաւորք Հայոց։ Հուլաղու ղանին կողմանէ դեսպանութեամբ ղրկուեցաւ առ Միքայէլ Պալէոլոգ կայսր և անոր Դեսպինա (Տիրուհի) Մարիամ դուստրը տարաւ 'ի կնութիւն ղանին. Հուլաղու մեռած ըլլալով՝ (1266) որդին Աբաղա ղան առաւ զայն. և այս առթիւ կ'ըսուի թէ Սարգիս Անտիոքայ պատրիարքին հետ մէկտեղ մկրտեցին զԱպաղա, վասն զի առաջուց յանձն առեր էր քրիստոնեայ ըլլալ։ Քանի մը տարի ետև (1269) Սարգիս հիմնարկեց Ս. Փրկիչ մեծ և հոյակապ եկեղեցին, որուն գմբէթը կանգնեց 1274ին, և վրան այլ յաղթական խաչը։ Յաջորդ տարին երբ Երզնկայի քով հին Թիլ գիւղին մէջ գտուեցան մեծին Ներսիսի նշխարքն՝ Սարգիս բերաւ զանոնք և դրաւ իր նոր շինած եկեղեցւոյն մէջ, ուր և թողուց հայրապետին սուրբ աջը. իսկ ձախ բազուկը տարաւ հանգուց գետոյն անդին կողմը Տիրաշէն ըսուած վանքը. «Իմաստաբար
» և մեծ յուսով սրարեալ խոհեմականն տէր
» Սարգիս (կ'ըսէ ականատես վկայ մը, որոյ վրայ
» յետոյ պիտի խօսիմ), զի զերկոսեան բազուկսն
» և զձեռսն՝ առատատաձիր շնորհիւ լցեալ տեառն
» Ներսիսի՝ զերկրորդ մեր Լուսաւորչին՝ սահմա-

» ներ յերկուս կողմանս գետոյն, որպէս թէ տա-
» րածեալ ունելով զթեւսն հովանի գաւառին »։

Քանի մը տարի ետև (1279) Թաթարք ուրիշ կողմ զբաղած ըլլալով՝ Թուրքք առին Երզնկա քաղաքը, և ատելութ̃բ վրէժ խնդրելով սպաննեցին զՍարգիս և զՊարոն Յովհաննէս 38 գլխաւոր անձամբք։ Լսեց եկաւ շուտով Աբաղա ղան, տիրեց քաղաքին, հալածեց ատելիները, մխիթարեց Սարգսի մերձաւորները, պատուասիրեց անոր թոռները։ — Թաթարաց բարեկամութիւնն շատ երկար չտևեց՝ երբոր սկսան իրենք այլ տկարանալ, և Թուրք ցեղերն զօրանալ, որք ԺԴ դարուն մէջ տիրեցին այս քաղքիս և շրջակայից. առոնցմէ էր Թահէրդան կամ Թախրադան, որ անձնատուր եղաւ Թէմուր Լէնկի (1393), և առաջնորդ ու գործակից անոր աւերանացը, որոց մէկ գործն այլ եղաւ Սարգսի շինած հոյակապ Ս. Փրկիչ կաթուղիկէն քակել, հանդերձ ուրիշ եկեղեցիներով։ — ԺԴ դարուն մէջ Երզնկա զանազան տերանց կամ բռնաւորաց ձեռք ընկաւ, այսինքն Լէնկթիմուրի յաջորդաց, Աք և Գարագոյունլու Թուրքաց, և երբեմն երբեմն Պարսից և Օսմանեանց, մինչև այս ետքիններուս ձեռք նորէն անցնելով յամին 1514, մնաց մինչև հիմայ։

Եկեղեցական հանգամանօք այս քաղաքս Յունաց իշխանակալութեան ատեն աւելի ծաղկած էր, Զ դարէն սկսեալ, յորում Յուստինիանոս կայսր նորոգելով անուանեց Յուստինիանուպօլիս, և եպիսկոպոսի աթոռ եղաւ, որ և Յունաց ժողովքներուն մէջ ստէպ կու յիշուի. միայն թէ այդ Յուստինիանու նորոգած քաղաքն բուն հիմկու Երզնկայի հետ նոյն ըլլալն յայտնի չէ. վասն զի և ամենևին յունարէն արձանագիր մը գտուած չէ հոս, բաց 'ի քանի մ'անծանօթ նշանագիրներէ որ պարըսպաց քարերուն վրայ կ'երևին. ուր կան

նաև Սելջուգեանց (Գօնիայի սուլտանաց) քան-գանկք և նշանք: Իսկ մեր ազգային եպիսկոպոսնե-րէն քիչ կու յիշուին յԵրզնկա. նոյնպէս և եկե-ղեցիներէն, որք պէտք է բազմաթիւ եղած ըլլան մեր Արշակունի՝ քրիստոնեայ թագաւորաց ա-տեն. մանաւանդ որ ատեն մը վերջին թագաւո-րաց մէկն այլ հոս նստաւ. բայց պատմութեան մէջ Լուսաւորչի շինած Ս. Աստուածածին եկե-ղեցիէն վերջ մինչև Սարգսի շինած կաթուղիկէն՝ միայն Ս. Գէորգ եկեղեցի մը կու գտնեմ յիշուած յամի 1223:

Իսկ թէ կրօնական և թէ գիտնական անձանց մէջ երևելի կամ ինծի յայտնիներն՝ յԵրզնկա, ԺԴ-ԺԵ դարուց միջոցն ծաղկած են. որոց առա-ջին՝ նախայիշեալն Սարգիս արքեպիսկոպոս. անոր ժամանակակից Յովհաննէս Վ. Պլուզ կամ Ծործո-րեցի, Ստեփանոս Դ կաթուղիկոս՝ որ գերի բռնուե-ցաւ 'ի Հռոմկլայ յԵգիպտացւոց. Կոստանդին Եր-զընկացի բանաստեղծն. ԺԴ դարուն մէջ Մովսէս Վարդապետ Երզնկացի խրատագիր, Կիրակոս Վ. Գէորգ Վ. աշակերտ Յ. Որոտնեցւոյ, որ քաղաքին ա-զատութեանն համար աղաչաւոր երթալով առ Լէնկթիմուր՝ վախէն պալուղքն պատռեցան, և լալով ետ դարձաւ. — քիչ առաջ իր վարժապետն՝ մեծահռչակ Որոտնեցին՝ եկեր էր յԵրզնկա, և հոս ուրիշներէն զատ իրեն պէս և աւելի անուա-նի եղած Գրիգոր Տաթևացւոյն՝ վարդապետա-կան գաւազան տուեր էր. — ԺԵ դարուն վերջը Երզնկայի եպիսկոպոս էր Մարտիրոս մը, որ եր-կայն Ճամբորդութիւն մ'ըրած է յԵւրոպա՝ բայց շատ կարճ նշանակած է. Ալէքսանդր Զ Պապն ասոր գիր մը տուած է ընծայութեան, որուն օ-րինակն պահուած կայ: ԺԷ դարուն վերջն այլ Երզնկայի եպիսկոպոս էր յետոյ անուանի Աւե-տիք պատրիարքն Կոստանդնուպօլսի:

## Դ

Այսքան անձանց մէջ ամենէն յատուկ Երզնկացի կոչուածն, միանգամայն և ամենէն արդիւնաւորն գրականութ̄բ և գիտութեամբ՝ ըլլալով Պլուզն Յովհաննէս, կ'արժէ որ ոչ միայն քաղքին հետ աւելի պնդութեամբ կապուած ըլլայ իր յիշատակըն, այլ և մեր մտաց մէջ, Հայկակ. մանաւանդ որ գրագէտք մեր լեզուին յստակութեան կամ վայելուչ գրողաց վերջինը կու սեպեն զնա. արժանի է որ ամեն բանասիրաց սիրելի ըլլայ՝ այն բանասէրն՝ որ ուսմանց սէրը, հոգեկան կրթութեան եռանդն և խոհեմութիւնը հաւասար իրարու կապեր էր, որ բոլոր կեանքն իմաստութեան նուիրած՝ եղաւ ճարտար գրիչ, բանաստեղծ, քերական, ճարտասան, մեկնիչ, տոմարագէտ, քարոզիչ վարդապետ և աստուածաբան: Եւ առաւել սիրելի և յարգելի և գովելի է այն անձն՝ որ ազգին կարծեաց երկպառակութեան ատեն, դժուարին և դժբաղդութեան ատեն ալ, կրցաւ խոհեմութեամբ ճամբայ բանալ սիրով միաբանութեան առաջնորդաց եկեղեցւոյ: Արժանի էր հռչակելու այն վարդապետը՝ որ իր նախնի արժանաւոր հայրապետները ներբողներով և երգերով հռչակեց, միաբանակեցաց ժողովքներուն արթընցուց և զըւարթացուց, սուրբ եկեղեցիները սրբաբանութեամբ զարդարեց, հայ թագաւորաց արքունիքն ալ՝ պերճաբանութեամբ: Բայց ափսոս որ այսպիսի անձի մը վարքն ամբողջ ծանօթ չէ մեզի, հապա միայն իրեն գրոց և քանի մ'ալ ժամանակակցաց յիշատակարաններէն կրնամք տեղեկութիւն առնուլ իր արդիւնական կենացը:

Յովհաննու ծնած տարին՝ ինչպէս մեռածն ալ՝ յայտնի չէ, բայց հաւանական է թէ ծնած ըլլայ

իբր 1250ին, և մեռած 'ի 1326։ Զանազան մականուններ ունի այս վարդապետս, որոնց առաջին և սովորականն է Երզնկացի կամ Եզնկայեցի, Երզնկայ քաղաքը ծնած ըլլալուն համար. բաղդով աս վարդապետին բուն իր ձեռքով դրած մէկ գիրքը տեսայ, ուր գրեր էր «Նուաստ և տը-» կարոգի Յոհաննէս Եզնկայեցի սպասաւոր բանի», և այլն. ուր և տգէտ անձ մը՝ Եզնկայեցի բառին ետքի գրերը քերեր և Եզնկայ եպիսկոպոս ձևացուցեր էր։ Բուն ծննդեան տեղն է Աբկայ գեղն, ըստ աւանդութեան հիմակուան Երզնկացւոց։ Երկրորդ սովորական մականունն է Պըլուզ, որ կու կարծուի թէ կապուտաչուի ըլլալուն համար՝ ըսուած է, կամ մանաւանդ համակաւ պզտիկ ըլլալուն համար. Երզնկացիք հիմայ այլ պըլուզէն կ'ըսեն և ոչ պլուզէն[1]։ Երրորդ մականունն է Ծուրծուրեցի, երկայն ատեն Արտազ գաւառին Ծործոր գեղին Ս. Աստուածածնի վանքը բնակելուն համար, ինչպէս ինքն ալ կու վկայէ յիշատակարանի մը մէջ։ Հոս ալ նշանակել կամ դիտել տալ կ'ուզեմ, որ Կիրակոս Երզնկացին այլ Ծուրծուրեցի ըսուած է։ Չորրորդ մականուն մ'ալ կ'ընծայէ ձեռագիր շարական մը հին կարգաւորութեամբ գրուած գեղեցիկ դրով և աղէկ թանաքով, որուն գրերն նման են Յովհաննու ձեռագրին զոր վերն յիշեցի. և տեղ մը կայ հին գըրչով գրած այս պզտի յիշատակարանս. «Յովանէս Եզնկացւոյն է գիրս, մականուն Մաշածին». այս մականունս որ իր ժամանակը գրած կ'երևի իրեն ձեռնագիր շարականին վրայ, չեմ գիտեր ինչ պատճառաւ տրուած է իրեն, և ոչ ալ թէ Մաշածին՝ մաշած բառին սեռականն սեպելու է, թէ

[1] Ընդ հակառակն պօլօզ երկայն ըսել է. Խոստովանեցիք երկայնկեկ ռամիկ ծերուն այլ պօզփօլօզ կ'ըսեն։

մաշ և ծին բառերէն բարդած, ինչպէս կըրնայ ալ կարծուիլ։

Յովհաննէս անոնցմէ մէկն եղած է՝ որ կրնային ըսել Իմաստնոյն, և իրեն իսկ անուանակից և ազգակից՝ Հայոց մեծ Իմաստասիրին հետ, թէ Մանուկ էի մտավարժ և ոգւոյ բարւոյ դիպեցայ. կ՚երևի թէ ծնողքն ալ հոգ ունեցեր են պզտիկուց զինքը ուսման տալու. իր մէկ բաղդն ալ այս եղաւ որ իր հայրենիքը Լուսաւորչի լերան վանքերով շրջապատած էր, որոնց մէջ դեռ բաւական գրքեր և գրագէտներ կու գտուէին. և աւելի բաղդն ալ այս էր՝ որ իր տղայութեան ատեն՝ Երզնկա քաղքին քաղաքական իշխանն էր Յովհաննէս պարոնը, հոգևոր տեսուչն ալ էր՝ այն պարոնին հայրն Սարգիս արքեպիսկոպոսն, երկուքն ալ աշխարհաշէն և ջանասէր և ջանասիրաց ձեռք տուող։ Երզնկացին առջի ուսմունքներն ըրաւ Ս. Մինասու անապատ ըսուած վանքը, Սեպուհ լերան սրբազան շուքին տակ. վերջը անոր քովի վանքերն ալ պտըտելով՝ մեղուի նման քաղեց անոնցմէ ինչ որ իր իմաստասէր մտաց պատուական գտաւ. բայց անոնցմով գոհ չըլլալով՝ ելաւ հեռու տեղուանք ալ պտըտելու գիտութիւն ժողվելու համար։

Այն ատենները Հայոց մէջ ամենէն անուանի վարդապետ ճանչցուած էր Վարդան Արևելցին, և թէ Կիւլիկիոյ արքունիքը թէ արևելեան Հայաստանի մէջ պատկառելի եղած. այս բազմահմուտ և բազմագիր վարդապետս իր վերջին տարիները քաշուեր էր Հայոց և Վրաց սահմաններուն մօտ Հաղբատ և Սանահին հռչակաւոր վանաց մէջ տեղ՝ Կայենոյ ձոր ըսուած տեղը, ուր որ պզտի վանք մը կար, հոն նստեր և դեռ աշակերտաց դաս կու տար. Յովհաննէս ալ գնաց անոր քով, և կ՚երևի թէ ինչուան անոր մահը հոն

կեցաւ, և կ'անուանէ զինքն «Աշակերտ հոգելից հօրն և սուրբ վարդապետին Վարդանայ»: Յովհաննէս դարձաւ Երզնկայ, ուր յաջորդ տարին (1272) հոն մեծ դիպուած մը հանդիպեցաւ. այսինքն սրբոյ Մեծին Ներսիսի մարմինն գտուեցաւ, 640 տարուընէ վեր փլած Թիլ գեղին եկեղեցւոյն տակ, և Սարգիս արքեպիսկոպոսին ձեռքով փոխադրեցաւ յԵրզնկայ: Այս գիւտիս և փոխադրութեանն ոչ միայն ականատես կու կարծուի Երզնկայեցին, այլ և կ'երևի թէ ինքն է անոր պատմութիւնն ալ գրող և գեղեցիկ ճարտասանական ըսող` փոխադրութեան հանդիսին մէջ, ճառ մ'ալ արքեպիսկոպոսին հրամանաւն, ինչպէս որ գրուածքին ոճէն գուշակեն բանասէրք: Բայց տակէ յայտնի և փառաւոր յիշատակ մ'ալ Թողուց Եզնկացին Ս. Ներսիսի վրայ, «Որ զլոյսն անճառ» երգած շարականովն, որ ընտիր շարականաց կու հաւասարի` ազնիւ շարադրութեամբ և իմաստներով և վառվռուն եռանդեամբ. այս շարականս երգեց` երբոր Լևոն Գ Հայոց Թագաւորին լսելով Ս. Ներսիսի նշխարաց գիւտը` եկեղեցի մը նուիրեց այն մեծ հայրապետին:

Երզնկացին քանի մը տարի հայրենեաց սահմաններէն հեռացած չերևար. գուցէ Սարգիս արքեպիսկոպոսին քով կը ծառայէր, ինչուան անոր անպարտ սպանումը իր որդւոյն հետ մէկտեղ: Տարի մը ետև, 1280ին, Ս. Գրիգոր վանից միաբանքն` միաբանութիւնին նորոգելով` խնդրեցին իրմէ որ իրենց կանոններ գրէ. ինքն ալ գրեց «Կանոնք և սահման միաբանութեան եղբարց` որք » աստուածային սիրով միաբանեցան յեղբայրութիւն միմեանց` յԵզնկայ, 'ի ՉԻԹ...». և կու սկսի, «Բանն Աստուած որ բանիւ գոյացոյց զամենայն արարածս», և այլն: Այս յիշեալ վանքերուն մէկուն մէջ գտայ Փիլոնի Եբրայեցւոյ Ճա-

ւերուն թարգմանութիւնը՝ գրուած կիսկատար՝ Երզնկացւոյն համար։

Յաջորդ տարին ելաւ Յովհաննէս հեռու ճամբորդութիւն մ'ընելու, «Գնալ յաստուածային քաղաքն Երուսաղէմ 'ի տեսութիւն տնօրէնու- » թեան Քրիստոսի Աստուծոյ մերոյ», ինչպէս ինքն կ'ըսէ․ ճամբորդութիւնը Կիւլիկիայէն ըրաւ, որ հոն տեղի թագաւորական և հայրապետական ջանքով պայծառացած գիտութեանց ճաշակն ալ առնու։ Յակոբ կաթողիկոսն ուսումնասէր և խոհեմ անձն՝ սիրով ընդունեցաւ զՅովհաննէս, և ճանչնալով անոր տաղանդը՝ իրեն ուսումնարանին վերակացու դրաւ, քերականական և մեկնական ուսմանց․ և տեսնելով որ ինչուան անանկ քաջ մեկնիչ մը չըլլայ՝ անկարելի է համբակաց մեր նախնեաց չինած՝ յունարէնէն յարմարցուցած քերականութիւնը հասկանալ, աղաչեց իրեն որ այն քերականին դիւրահասկանալի մեկնութիւն մը գրէ, որովհետև թէպէտ շատերն իրմէ առաջ գրեր էին, բայց ամենքն ալ դժուար և մթին։ Յանձն առաւ Երզնկացին, թէպէտ չկրցաւ մեկէն կատարել։ Բայց իր համբաւն լսուեցաւ արքունեաց մէջ․ Լեւոն թագաւոր զինքը պատուեց, ինքն ալ իր հանճարոյն զուարճացուց արքունիքը։ Ռուբինեան թագաւորք Եւրոպայի թագաւորաց քանի մը սովորութեանց հետ՝ անոնց ասպետութիւնն ալ ընդուներ էին, որ իրենք Ձիաւոր կ'ըսէին, և Ս. Վլասի անունով ասպետութիւն մ'ալ հաստատած էին, նման Տաճարականաց և Մալթայի ասպետաց։ Երզնկացւոյն հոն եղած ատեն Լեւոն թագաւորին երկու որդիքն Հեթում և Թորոս, որք վերջը երկուքն ալ թագաւորեցին, կարճութեան հասակ հանելով՝ Ձիաւոր ընտրուեցան ուրիշ իշխանազանց և արքունի պաշտօնէից որդւոց հետ մեկտեղ․ այս քան-

դիսին մէջ Երզնկացին հրաւիրուեցաւ ատենա֊
կան ճառ մը խօսելու, և բնաբան դրաւ Առաքե֊
լոյն խօսքը, «Ամենայն անձն որ ընդ իշխանութե՟
է», և այլն. Ճառին սկիզբն է. «Ցարաժամ բազ֊
» ձանօք նորալուրն և նորատեսն և նորագործն
» սիրելի և ախորժական լինել», և այլն. Ես այս
ճառին դեռ վերնագիրն միայն տեսած եմ: Թա֊
գաժառանգն Հեթում՝ մանաւոր սէր կապեց
Երզնկացւոյն, զոր վերջը իր պարոնութեան կամ
թագաւորութեան ատենն ալ կրկին անգամ ընդ֊
ունեցաւ 'ի Կիւլիկիա: Իշխանք և եպիսկոպոսք
ալ ճանչցան և պատուեցին Երզնկացւոյն հան֊
ճարը: Սոյ մայր եկեղեցւոյն մէջ Քրիստոսի աս֊
տուածայայտնութեան օրը ճառ մը խօսեցաւ,
Անարզաբայ Գրիգոր եպիսկոպոսին առջև, որ եղաւ
վերջը կաթողիկոս. խօսեցաւ ուրիշ ճառ մ'այլ
բնաբան դնելով «Աքանչելի եղև գիտութիւն քո»,
և այլն: Նոյնպէս Կոռիկոսի Ստեփանոս վարդա֊
պետին հրաւիրանօքն ալ եկեղեցւոյ վրայ ճառ
մը խօսեցաւ: Այսպէս ուրիշ յիշատակներ ալ
թողուց 'ի Կիւլիկիա, որ որչափ իր իմաստուն ա֊
նուանը պատիւ են, այնչափ ալ իր իմաստութիւնը
ճանչցող և յարգող անձանց: Երանի՜ այն աննա֊
խանձ ժամանակին և բաղդին, որ հանճարն իր
արժանաւոր պատիւը և խրախոյսը գտեր էր Հա֊
յոց մէջ. երանի՜ այնպիսի իմաստուն վարդապե֊
տաց, այնպիսի իմաստասէր իշխանաց և իմաս֊
տայարգ եպիսկոպոսաց: Գրչագրի մը մէջ հան֊
դիպեցայ այս բանիս. «Յոհաննէս քահանայի ա֊
» շակերտի գրոց՝ 'ի բան քերականին որ ասէ. Ա֊
» նուն է մասն բանի հոլովական. ասացեալ՝ յոր֊
» ժամ դարձաւ յուխտիցն 'ի տեղի ուսմանն առ
» աշակերտակիցսն իւր, 'ի սուրբ վարդապետացն
» ժողովեալ բանից. Աստուածային ձեռին օ֊
» ծեալն», և այլն. — կըրնար կարծուիլ թէ մեր

*Երզնկացւոյն ըլլայ այս ճառս (որուն միայն քիչ մը սկիզբն գրուած էր)․ բայց յայտ է որ կամ աւելի առաջ երիտասարդութեան ատենին ըրած պիտի ըլլայ այս ուխտագնացութիւնս, կամ բնաւ ուրիշ Յովհաննէս մ՚է այս․ վասն զի Երզնկացին իր քերականի մեկնութեանը վրայ տուած տեղեկութեան մէջ ամենևին չի յիշեր այսպիսի բան մ՚այլ երբեմն գրած ըլլալը։*

## Ե

*Արդ մեզի ծանօթ և իր յիշած ճամբորդութենէն և Կիւլիկիայէն դառնալէն ետև՝ գնաց 1284ին ՚ի Տփղիս Վրաց մայրաքաղաքը, ուր Վրաց հետ Հայոց հին իշխանազանց մնացորդքն ալ կային․ Թէպէտ ինքն գրոց և գրագիտաց հետ կ՚ուզէր պարապիլ, բայց համբաւն իրմէ առաջ անցնելով՝ զինքն ընդունելի ըրաւ հոն տեղի բարեսէր իշխանաց և հայրապետաց ալ․ օր մը Քարիմատին [1] ըսուած Հայոց Ումեկ մեծ իշխանին շինած եկեղեցւոյն մէջ ներբող մը խօսեցաւ, որուն մէջ երկնից զարդուն նկարագրութիւն մ՚ալ ըրաւ․ Ումեկայ կտրիճ որդին Վաղթանգ՝ այնչափ զմայլեցաւ այս խօսուածքին՝ որ աղաչեց զԵրզնկացին առանձին գրուածք մը ընել երկնից վրայօք․ Տփղիսի Յովհ․ եպիսկոպոսն ալ վրայ տուաւ․ այն ատեն Երզընկացին ալ գրեց «Յաղագս երկնային շարժման», ևն, երկնային մարմնոց և անոնց շարժմանն վրայօք, այն ատենուան գիտունէ յարմար։ Այս բանս ինքնին հեղինակն կու պատմէ․ «Ախորժելի եղև (բանս » մեր) զուարթամիտ պատանոյն Վաղթանկայ, » որ էր որդի կրսեր հռչակաւոր անուն Պարոն*

1 Ինչուան հիմայ Տփղիս, որ է Թիֆլիզ, կու ցուցընեն Քարիմատենց եկեղեցին և անոնց տանը տեղը։

» Ոմէկին, և մայրենի ազգաւ Թոռն մեծ իշխանին
» Ջալալին՝ տեառն Խաչենոյ, որդի մօր բարե-
» պաշտի, որ էր Քրիստոսի օրինօքն զարդարեալ
» յոգի, և 'ի խնդիր բանիս յորդորող զորդի: Սա
» խնդրեաց 'ի մէնջ յաղագս Երկնի և Նորին շարժ-
» մանն. յոր հարկեալ յորդորեաց զտկարութիւս
» մեր մեծազգի եպիսկոպոսն տէր Յոհաննէս, ազ-
» նուական զարմից և բարետոհմիկ հարց ծնունդ.
» որ և շարժեալ 'ի սիրոյ և 'ի յուսոյ խնդրողաց,
» և ակն առեալ 'ի պատուոյ շնորհաշուք տեառն
» և գերապատիւ եկեղեցւոյ գլխոյն, 'ի նրբաշա-
» ւիղ և 'ի կորովամիտ բանից սուրբ հարցն և վար-
» դապետաց մերոց և իմաստախոհ արանց՝ պար-
» զեալ գրեցի համառօտ բանիւ և աշխարհական
» խօսիւք վասն դիւրահասկանալի լինել ընթեր-
» ցողաց »: Այս գրուածս կարդալով ուրիշ իշ-
խան մ'ալ Այլոց անուն՝ ուզեց որ աւելի զուար-
ճալի ոճով նոյն բաներուն վրայ դարձեալ գրէ.
Երզնկացին ալ հազար տող ոտանաւորով երկնից
նկարագրութիւն մ'ըրաւ և ընծայեց իշխանին:
Այս քերդուածին սկիզբն է.

« Յամենահրաշ գործս Արարչին որ գոյացան՝
Մեծ եւ ահեղ ըսքանչելիք ներգործեցան »:

ուր երբեմն կու նկարագրէ, երբեմն դիմաւորաբար կու խօսի երկնից հետ.

Ո՛վ սքանչելի ձեղուն յարկի այս մեծի տան,
Ի Բարձրելոյն բանէ ձըգեալ որպէս խորան...
Դու յարկ մեծին ձեւամբ չինեալ արքայական
Զահ ի բարձանց ի քեզ կախեալ անշիջական.
Դու անթառամ ծաղկանց լուսոյ մեծ բուրաստան՝
Որք յանդաստանս քո գեղեցիկ ծաղկագրեցան.

Ոչ պարտնոց քո լանջագեղ զարդարեցան,
Այլ բոլանդակ մարմին եւ անձըն չքեղա-
ցան ». և այլն։

երբեմն այլ արևուն վրայօք կ'ըսէ.

Այլ եւ զպայծառ լուսոյն աղբիւր միշտ հո-
սական՝
Ըզգեղեցիկ ակն աշխարհի լոյս ցուցական,
Զնա ի կամարըս քո բերես ջահ փայլական,
Որ զկերակուրն հըրոյ բաշխէ բնաւից պիտան.
Սա մեզ խըրատ որ ըստ օրէ քարոզական,
Ըզմահ եւ զկեանք օրինակէ դէմ յանդիման.
Առաւօտուն ծագմամբ՝ ըզծնունդըն մայրական,
Ի երեկոյին Թաղմամբ՝ ըզմուտն ի գերեզման.
Յարեւելից գեղով ծագէ փեսայանման,
Արագապէս զընթացս առեալ հըսկայական.
Զարեգական արդարութեան պատմէ ըզբան,
Զաննիւթ լուսոյն մեզ քարոզէ լոյսն եղական »։

Երզնկացին Վրաց կողմերէն կ'երևի թէ Հայոց այն ատեն անուանի վանքերուն այլ այցելութե ելած ըլլայ. և եթէ իր անուամբ և մականուամբ ուրիշ Ծործորեցի մ'այլ չկայ՝ իրենն է այն Ճառն որոյ խորագիրն է, «Յովհաննէս վարդապետի Ծոր-
» ծորեցոյն արարեալ՝ ի բանէն Եսայեայ՝ որ ասէ.
Հոգի Տեառն 'ի վերայ իմ». որոյ վերջաբանին մէջ շնորհակալ ըլլալով Աստուծոյ խնամոցն իր վրայօք վասն ծննդեանն և զարգացմանը, կ'աւելցընէ նաև ուսումնական վարժիցն համար. « և 'ի
» մասանցն ծնունդ և 'ի բանին ծնողութիւն և
» յերկուցս մասանց աշխատութեանցն արժա-
» նացայ կոչիլ, փչար և ցատագին մարմնոյն. և 'ի մէջ
» ծփման ալեաց ծովածուփ աշխարհիս և տրտմա-
» բեր կրից կենցաղոյս, առաջնորդեաց ինձ հո-
» գին և էառ առ ոտս բարիոք նաւուղղելի և ի-

» մաստուն կատարողապետի։ ... Եւ այսր ամե-
» նայնի պատճառ և առթող եղեալ և մեզ գետս
» Եփրատէս, անուանակիր որդւոյն Ամովսայ,
» հռչակեալս'ի տանս Թորգոմայ, որպէս նա յոր-
» դոյն Եբերայ»։ Այս վերջի խօսքերս կ'ակնար-
կեն յԵսայի Նչէցի, Սիւնեաց Գայլեձորոյ վա-
նաց մեծահռչակ վարժապետն, որ յամին 1284
նստեր էր յաթոռ առաջնորդութե̃, և 50 տարի
վարդապետեց. տարիքով եթէ պզտիկ այլ չէր,
գոնէ հասակակից պիտի ըլլար մեր Երզնկացւոյն.
բայց գուցէ անկէ առաջ վարդապետական պա-
տուոյ հասած էր, և այն անուանի վարժարանին
գլխաւոր ըլլալով՝ Թուի թէ Երզնկացին խոնար-
հաբար իրեն այլ վարդապետ կամ գոնէ ուսմանց
բարգաւաճող կը ցըցընէ զնա մեծարանօք։

Յամին 1287 հանդիպած Երզնկայի մեծ սասա-
նութեան ատեն՝ կ'երևի թէ Յովհաննէս անկէ
հեռու չէր, մօտակայ վանքերուն մէջ ըլլալով.
ուր յաջորդ տարին Սեպհոյ սուրբ Գրիգոր մեծ
վանքին մէջ դարձեալ իր պերճախօս լեզուն հան-
դիսացաւ։ Գեղեցիկ և շատ գովելի սովորութիւն
ունէին Լուսաւորչի լերան վանականներն և ուխ-
տաւորներն բազմութեամբ վարդապետաց և քա-
հանայից՝ ժողովելու այն մեծ վանքին մէջ, և տա-
րուէ տարի ներբողական ճառով պատուելու մեր
ազգին հոգւոյ անմահ Լուսաւորիչը. այն տարին
Երզնկացին խօսեցաւ «Յարազուարճ խնդութե̃
» բերկրեալ» ճառը, ուր Լուսաւորչի հետ իր
հայրենի գեղեցիկ գաւառին սիրոյն ալ փառուած,
և չորս կողմի բնութեան աղուոր տեսարաններով
միտքը նկարած, բանաստեղծութեան և ճարտա-
սանութեան շնորհքով զանոնք կը նկարագրէ,
մանաւանդ Սեպուհ լեռը և Մանեայ այրքն և բո-
լոր Դարանաղեաց լեռները։ Այս նկարագրու-
թեանց համառօտ և աշխոյժ և աւելի վսեմ բո-

վանդակութիւնն է «Լերինք ամենայն» ըսուած ընտիր շարականն, զոր ինքն երգած է. Թէպէտ ոմանք Խորենացւոյն կ՚ընծայեն զայս, և արժանի իսկ է, գրեթէ և հաւանական: Աւելի հաւանական է որ Երզնկացին երգած ըլլայ մէկալ երկայն այբուբենական շարականն, «Այսօր զուարճացեալ», Թէպէտ զայս ալ ոմանք Խորենացւոյն կ՚ընծայեն: Ներքողէն տասը տարի վերջը երգած է զայս: Կ՚երևի թէ Լուսաւորչի ներբողը խօսած տարին՝ խօսեցաւ անոր որդւոց և թոռանց վրայ ալ ճառ մը, որ առջինին հետ մէկտեղ տպագրեցաւ նախ ՚ի Կոստանդնուպօլիս, Թէպէտ յայտնի վկայութիւն մը չկայ թէ այն ճառն ալ իրեն ըլլայ: Ճառերէն զատ համառօտ պատմութիւն մ՚ալ կայ Լուսաւորչի՝ Երզնկացւոյն անունով, որոյ սկիզբն է. «ՅԱդամայ ԻԱ նահապետ Աբրահամ». և այլն:

Լուսաւորչի վանքերուն մէջ իր տղայութեան ուսումնարանը՝ Ս. Մինասը ընտրեց Երզնկացին, քիչ մը ատեն դադրելու և շատոնց խափանուած քերականութեան մեկնութիւնը գրելու. որով հետև Մշու Ս. Կարապետէն ալ Յովհաննէս անունով վարդապետ մը եկաւ նոյն բանը աղաչեց, աշակերտներն ալ յորդորեցին. վերջապէս ձեռք զարկաւ. և նախ ետևէ ըլլալով ժողվեց իրմէ առջի քերականի մեկնիչներն. արդէն Յովհաննէս Պարոնն անոնցմէ վեց հատ մէկ գիրք օրինակել տուեր էր. որք էին Մովսէս Քերթողահայր, Դաւիթ փիլիսոփայ, Բարսեղ վարդապետ, իրեք ալ անանուն, որոնց մէկն անշուշտ էր Ստեփանոս, մէկն ալ Թերևս Մամբրէ. իսկ Երզնկացին ասոնցմէ զատ գտաւ Համամ Արևելցւոյն և Գրիգոր Մագիստրոսի մեկնութիւններն ալ, Արիստակէս վարդապետին բառգիրքն և վերծանութեան կանոններն ալ ձեռքն ունէր. զայս ամէնքը քննելով՝

պարզ մեկնութիւն մը գրեց այն հին քերականին, զոր նախնիք կարծես թէ միայն յօգնեցընելու կամ սրելու համար գրած էին։ Անկէ զատ ուրիշ համառօտ քերականութիւն մը կամ քերականի մեկնութիւն մ'ալ հեղինակաբար գրեց, առանց առջի հեղինակաց վկայութիւնները բերելու և իրարու հազցընելու, ինչպէս էր առջինը։ Այս առաջին մեկնութիւնը զոր հեղինակն կ'անուանէ «առաջին» պտուղ յանապատի կենաց», և իբրև իր առաջին ոճով գրուած գիրքը կու սեպէ, ընծայեց իր երախտաւոր և սիրելի Բ Հեթում թագաւորին՝ երկրորդ անգամ Կիւլիկիա գացած ատենն, 1293ին։ Հոն գտուեցաւ նաև այն աշխարհին դժբաղդութեան ատեն, Եգիպտոսի Ալֆի սուլտանին ասպատակութեամբը, որուն համառօտ պատմութիւնն ալ գրած է քերականին յիշատակարանին մէջ։ Հեթումին առաջ իր պապն ալ և անուանակից Ա Հեթում՝ քերականի մեկնութիւն մ'ուզեր էր Վարդան վարդապետէն, այն ալ գրեր էր. այսպէս երկու մեծ թագաւորք՝ պապ և թոռն փափագող եղան քերականի մեկնութեան. և երկու մեծ վարդապետք՝ վարպետ և աշակերտ՝ գրեցին և ընծայեցին անոնց, և իրենց աշխատանքը նախ թագաւորական ձեռքերու վրայ դնելով՝ աւելի հաճոյ աւանդեցին մեզի։

Յովհաննէս ԺԳ դարուն վերջերը գնաց Հայաստանի Արտազ գաւառը, ուր Ս. Թադէոս առաքեալ Մործոր գեղին մօտ վանք մը շիներ էր Աստուածածնի անուամբ. ինքն ալ հոն թաղուելով Թադէի վանք ալ կ'ըսուէր տեղը. այս ատեն Զաքարիա եպիսկոպոսն էր նոյն վանքին ալ թեմին ալ առաջնորդն, և Մործորեցի կ'ըսուէր. ասիկա մեծ պատուով ընդունեցաւ զԵրզնկացին և սիրով կը պահէր քովը. ուր այն ալ իր ընտրուած հանդարտութիւն և իմաստութիւնը գտնելով՝ սիրեց

թէ տեղը և թէ տեղին գլխաւորը. երկուքն ալ մէկ սիրտ մէկ հոգի միաբանեցան թեմին հոգևոր և մտաւոր յառաջադիմութեան համար։ Հոգևոր իշխանութիւնն կը մեծարէր զիմաստութիւնը, ի-մաստութիւնն ալ կը պատուէր զհոգևոր իշխա-նութիւնը. խոհեմութիւնը զերկուքն ալ կը հա-ւասարեցընէր։

## Ձ

Երզնկացւոյն հոս բնակած ատենը երկու մեծ կրօնական դիպուած պատահեցաւ ազգերնուս. մէկն էր Կիւլիկիոյ Հայոց Թագաւորաց լատին ե-կեղեցւոյ հետ կրկին միաբանութիւնն. Գրիգոր Անաւարզեցի կաթողիկոս՝ Հեթում և Լևոն Թա-գաւորաց հաւանութեամբ Սսոյ մէջ ժողով մը գումարեց 1305ին, և ուրիշ վարդապետաց հետ հրաւիրեց Զաքարիա եպիսկոպոսն և իր հին բա-րեկամն Երզնկացին ալ՝ բայց իր մահը վրայ գա-լով՝ ասոնք չգացին. Նոյնպէս երբ Կոստանդին կա-թուղիկոս յաջորդեց զԳրիգոր և հրաւիրեց զա-սոնք՝ Յովհաննէս խոհեմութեան ճամբայ սեպեց չերթալը. ինչու որ Սիւնեաց արքեպիսկոպոսն Ուռպելեան Յովհաննէս որ միանգամայն գրեթէ իշխան էր իր երկրին՝ և մեծ ազդեցութիւն ունէր շրջակայ կողմերուն, կաթողիկոսին մտացը հաւա-նեալ չէր, ինչպէս որ գրով ալ իմացուց իր միտքը թէ կաթուղիկոսին և թէ Զաքարիայի։ Զաքարիա պատասխան գրեց շատ իմաստութեամբ և զգու-շութեամբ, համաձայն կաթողիկոսին մտացը. ա-սոր համար Ուռպելեանը գժարեցաւ։ Արդ որ-պէս զի այս դժարութիւնը աւելի չզայրանայ և ժողովրդեան խաղաղութիւնն ալ չխռովի՝ Զաքա-րիա և Երզնկացին միջին և զգուշաւոր ճամբայ սեպեցին՝ թղթով միաբանիլ կաթուղիկոսին հետ,

անձամբ չշարժիլ անդերնէն, որ Ռուսպելեանը
չգրգռեն։ Բայց տասը տարի վերջը՝ երբոր կա-
թուղիկոսն նորէն Աստանայի ժողովքը գումարեց
Օշին Թագաւորին հրամանաւ (1316), Երզնկա-
ցին իր ծերութեան ատեն վերջին անգամ գնաց
Կիւլիկիա՝ Զաքարիայի կողմէն ժողովքին ներկա-
յանալու, և հաւանելով անոր կանոններուն որ
կը հաստատէր զՍսոյ ժողովը՝ դարձաւ յԱրտազ։
Այս ճամբորդութիւնս Երզնկացւոյն մեծ գրա-
ւոր գործքի մ'ալ պատճառ եղաւ. վասն զի գը-
տաւ 'ի Կիւլիկիա Ս. Ներսէսի Շնորհալւոյ սկսած
Մատթէի աւետարանին մեկնութիւնը, որ ինչուան
եօթներորդ գլուխը մեկներ էր և անկատար թո-
ղեր. իբր 150 տարի վերջը Երզնկացին տեսաւ
Շնորհալւոյն բուն ձեռնագիրը, և յորդորուեցաւ
շարունակելու աւետարանին մեկնութիւն և գլուխ
տարաւ. ինչպէս ինքն իսկ կը պատմէ, նախ յի-
շելով թէ ինչպէս հանդիպեցաւ գրքին, և թէ ին-
չու կիսկատար մնացեր էր. և թէ «Թէպէտ ա-
» մանք նախ քան զմեզ ձեռնարկեցին գրել 'ի
» վերայ շարագրութեան նորին, սակայն ոչ էր
» կարգաւոր որպէս սրբոյն, այլ հատակոտոր ա-
» րարեալ զբանս առաջին մեկնողաց, նա և զբնա-
» բանութիւն աւետարանին տրտաքս մերժեալ,
» ուստի ոչ գայր դիւրաւ յիմացումն ընթերցո-
» ղացն։ Յաղագս որոյ ես նուաստս 'ի յետինս
» յորդիս Սիոնի ապիկար ոգիս Յովհաննէս Երզըն-
» կայեցի, սպասաւոր բանի, բնակեալ 'ի վիճակ
» սուրբ առաքելոյն Թադէոսի՝ 'ի վանս Ծործո-
» րու կոչեցեալ, ընդ հովանեաւ սուրբ Աստուա-
» ծածնիս. այլ և ժողովեալ առ մեզ բանասէր
» անձինք 'ի յուսումն կրթութեան աստուածա-
» շունչ տառից լսելութեան, յորոց յորդորմա-
» նէ և 'ի փափագելի խնդրոյ՝ եղեալ 'ի մտի ա-
» նել հաւաքումն մեկնութեան....։ Եւ արդ եղև

» գրութիւն սորա 'ի թիւ մարգարէութեանն աւետման
» մերոյ Յիսուսի Քրիստոսի 'ի ՌՑԺԶ. որոյ զօրու-
» թեամբ բուռն հարցուք զբանիւս ». և այլն:
Այս գիրքը գրելէն քիչ տարի ետև (1335ին) օ-
րինակող մը այսպէս կ'ըսէ, յետ խօսելու Ծնոր-
հալւոյն վրայ. « Նաև այլ ումն յետ այնքան ժա-
» մանակաց, զոր Հոգին շարժեաց, յաշխարհէն
» Դարանաղեաց 'ի նահանգէն Եկեղեաց, որ է շի-
» րիմ մերոյն հովուապետի և Լուսաւորչի Հայկա-
» զեանս զարմի, Յոհաննէս վարդապետ կոչեցեալ
» Ծործորեցի, յոյժ աշխատանօք և քրտնաջան
» վաստակօք կատարեալ զմեկնութիւն սորա, էր
» զոր 'ի հնոցն սրբոց ժողովեաց, և է զի 'ի յիւ-
» րում կորովամիտ իմաստութենէն համառօտեաց,
» խիստ պարզ և յստակ, դիւրին լսողաց, յա-
» ւարտ 'ի գլուխ եած. զոր Տէր Յիսուս հատուս-
» ցէ նորա ընդ հարիւրաւորքն և ընդ վաթսնա-
» ւորքն և ընդ երեսնաւորքն՝ վարձս բարեաց 'ի
» յանեղեկ աւուրն. ես և ծնողացն նորա և ու-
» սուցչաց նորա, որ այսպիսի պտուղ քաղցր մեզ
» ընծայեցին. և ամենեցուն վարձահատոյց լինի
» Քրիստոս, որ զՅոհաննէս վարդապետն Ծոր-
» ծորեցի սրտի մտօք յիշեն յԱստուած ողորմին
» և 'ի Հայր մեր որ յերկինս »:

## Է

Երկրորդ մեծ կրօնական դիպուածն այս էր, որ այն ատքի տարիներն՝ Լատինացւոց կողմանէ, առաջին անգամ Դոմինիկեան կամ Քարոզիչ ըսուած միաբանութիւնք եկան 'ի մեծ Հայաստան. որոնց գլխաւորն էր Բարթուղիմէոս անուանով հոգեսէր անձ մը, որ եպիսկոպոս ալ եղաւ. ասոնք բարեմտութեամբ սկսան աշխատիլ Հայոց և Լատինացւոց մէջ միաբանութիւն հաստատելու. և

այս բանիս միջոց մ'ալ սեպեցին լատին Ս. Հարց և վարդապետաց գրուածներն հայերէն թարգմանել. ասոր համար աշակերտներ ժողովեցին և սկըսան լատին լեզուն սորվեցընել. իրենք ալ հայերէնը կը սորվէին. թէպէտ երկուքն ալ անկատար սորվելով՝ ըրած թարգմանութիւննին ալ հայկաբանութեան համը կորսընցուց, և լատինաբանութեամբ աւրեց հայ լեզուն. մանաւանդ երբոր ազխտաբար հարկաւոր սեպեցին լեզուն ծռել՝ որպէս զի յամենայնի Լատինաց համաձայն ըլլայ ըսածնին և գրածնին. ասոնցմէ ելան Ունիթոր ըսուած կէս լատինածէս Հայ Դոմինիկեան կրօնաւորք Նախիջևան գաւառին մէջ, որոյ մէկ վիճակին անուամբ յետոյ կոչեցան և Ջահկեցիք, որոնց պատճառաւ եղած բարիքն և չարիքն ալ յայտնի է։ Բայց առջի բերան շատ խոհեմութեամբ կը վարուէին և մեծ օգուտ միաբանութեան կու խոստանային. զոր ճանչնալով Զաքարիա եպիսկոպոսն և իր սրտակիցն Յով. Երզնկացի՝ ընդունեցան զանոնք իրենց թեմը, և Երզնկացին չխնայելով իր ծերութեանը՝ հետևեցաւ լատին լեզուի, զուցէ Կիւլիկիա եղած ատենն ալ հետևած էր, օգնեց թարգմանութեան մեծահռչակ Ս. Թովմայի Աքուինացւոյ գործոց մէկ մասին, որուն ժամանակակից այլ էր Երզնկացին. վասն զի իր առջի անգամ Կիւլիկիա եղած ատեն վախճանեցաւ այս մեծ Սուրբս (յամին 1282). իսկ անոր գըրուածներէն՝ բաց յայլոց՝ Եօթն Խորհրդոց վրայ գրածն մահուանէն հազիւ 40 տարի ետև (1321) « Թարգմանեցաւ 'ի ձեռն սրբոյ ումեմն եպիսկո-
» պոսի, Տէր Բարդուղիմէոսի, որ է ազգաւ լա-
» տին, և քաղ(եցաւ) միջնորդութեամբ լուսա-
» միտ վարդապետին Յոհաննու Ծործորեցւոյ »։
Ասիկայ եղած կ'երևի իր ետքի գրաւոր աշխատութիւնն, բայց նշանաւոր աշխատութիւն մը։ Եր-

զընկացին միշտ ճշմարտութիւն և իմաստութիւն
և ազգին օգուտը գիտելով, այս բանիս մէջ ալ
միաբանեց զատոնք իր մաքին և սրտին մէջ. ոչ իբ-
րև զոմանս՝ ճշմարտութեան պատուող երևնա-
լով, առանց աջ ու ձախ նայելու՝ զազգն ոտքէ
տակ առող, և ոչ իբրև զայլս ազգասիրութիւն
պարծենալով՝ ազգին մէջ գտածը յամառութ̃
պաշտպանող: Առակ է թէ Իմաստուն մարդն իր
կարծիքը կու փոխէ. և երբ հաւատոց վրայ ըլլայ
ճանչցածն՝ ոչ միայն իմաստութիւն այլ և պարտք
է այնպէս ընելն: Այսպէս ըրաւ անշուշտ Երզըն-
կացին՝ 'ի Կիւլիկիա և յԱրտազ, տեսնելով և լսե-
լով քանի մը կրօնական խնդրոց պայծառ մեկ-
նութիւն, որոց հակառակը գտնելով երբեմն մեր
ազգային քանի մը մեծանուն վարդապետաց գը-
րուածով՝ օրինակել տուեր էր մէկտեղ, և յա-
ռաջաբան մը գրեր էր, յորում կ'ըսէ. « Յոլով
» ժամանակօք և աշխատութեամբ բազմաւ ստա-
» ցայ զայս երեք գիրքս (Անանիայի, Խոսրովկայ
» և Սարկաւագայ)... զոր և գտի ես յայլ և յայլ
» տեղի և ժամանակի, և ստացայ զերիս գիրսն. և
» 'ի նոցունց դարձեալ եստու գրել և առ միմեանս
» եդի, և արարի մի գիրս », ևն: Իր ինքնագիր օրի-
նակն է իմ ձեռքս անցածն, և գիրն կրնայ վայելուչ
գրութ̃ օրինակ ըլլալ, եթէ ոչ և իր հին վար-
դապետութիւնն: Որչափ այլ չափաւորութիւն և
խոհեմութիւն բանեցուցած ըլլայ՝ շատ դժար էր
որ Լատինաց մօտենալուն համար՝ ոմանց զգու-
շանալի և ատելի եղած չըլլար, կենօք և յետ մա-
հուն. արդէն վերոյիշեալ Մաթէի աւետարանի
մեկնութեան հին օրինակին մէջ, որ իր մահուընէ
քիչ տարի վերջ գրուած է, հակառակող ձեռք
մը ջանացեր է աւրել թէ Յովհաննու անունը,
թէ յիշատակարանին մէջ Լատին քարոզչաց վրայ
գովեստը և թէ գրոց մէջ քանի մ'անոնց վարդա-
պետութեան համաձայնութիւնը:

# Ը

Երզնկացւոյն ետքի տարիները մեծ երկրաշարժ մը եղաւ Արտազ գաւառը և Թադէի վանքն ալ կործանեցաւ։ Զաքարիա նորէն շինեց, և կ'երեւայ թէ չթողուց որ Երզնկացին հոնկէ հեռանայ, և հաւանական է թէ հոն ալ կնքեց իր բազմարդիւն կեանքը. Թէպէտ և որոշ յիշատակ մը չկայ մահուանը և իր թաղմանը վրայ։ Հաղբատայ վանքին գերեզմանատան մէջ անգիր գերեզման մը կը ցուցընեն ինչուան այսօր՝ Երզնկացւոյն է ըսելով. բայց ես ուրիշ տեղուանք ալ հանդիպած եմ աստնկ երևելի մարդկան երկու տեղ գերեզման, կամ տեղէ տեղ մարմինը փոխադրելուն համար, կամ սխալ կարծիքով։ Սուտ ալ որ եղած ըլլայ գերեզմանն՝ թէ և անգիր, աւելի փառաւոր յիշատակ և տապանագիր սեպելու է Մխիթար Ապարանեցոյն ըսածն, թէ «Քա-
» ջութեանն և սրբութեանն (Երզնկացւոյն) վկա-
» յեն ամենայն ծրագրեալ գրեանքն և մեկնու-
» թիւնք և սքանչելիք սուրբ գերեզմանոյն»։ Այս ծրագրեալ մատեանքն են վերի յիշածնիս, և անոնցմէ զատ շատ գրուածքներ. ինչպէս են «Խրատք հասարակաց քրիստոնէից». պարզ և ռամկաց դիւրահասոյթ ոճով, խրատական տաղեր աղաց և կրօնաւորաց համար. սքանչելի երգեր, ինչպէս են Զօրհնեալ փառսն՝ Յամենայն ժամ օրհնեմք զքեզ, և Այսօր ձայնն հայրական և Որդեական գանչի՝ Յանձառ լուսոյն, Աստուածածնի Վերափոխման վրայ այբուբենի կարգով տաղ մը, եւն։ Մեկնութիւն սաղմոսաց. Համառօտ հարանց վարք մը և խրատք, Քարոզք, Առակք, Քաղուածք վարդապետական բանից, և այլն, և այլն։ Մեծագոյնքէ մեկնութիւն. Քաղուած Անանիայի (Նարեկացւոյ) գրոց

ընդդէմ Թոնդրակեցւոց. Գողտանաբնեան Կաթողիկոսաց և Եղիսիոպոսաց (որ տարակուսական գըրուածք մը կ'երևի). գուցէ նոյնպէս ըլլան և իր անուամբ յիշուած Աշխարհացոյցն և Տրամաբանութիւնն. իրն է նաև Եօթն Խոփաճարակաց շարականն Յաւուրս վերջին ժամանակի: — Այս յիշեալ գրուածոց մէջ ամենէն յարգի և ընտիրներն կ'երևին Ճառերն կամ Քարոզքն, որ 30էն աւելի կան, ոմանք Սաղմոսաց վրայ, ոմանք Տօնից և եկեղեցական հանդիսից, յորոց ոմանս 'ի Կիլիկիա խօսած է, ոմանս իր հայրենիքը, և ոմանս ուրիշ կողմեր. յայտ է թէ շատն այլ գրած ըլլայ յԱրտազ, գուցէ և 'ի Հաղբատ:

Եթէ այս և եթէ ասոնց նման բազմապատիկ գրուածոցը, միանգամայն և առաքինի վարուցն համար, թէ իր աննախանձ ժամանակակիցներէ և թէ քիչ մը վերջիններէ մեծամեծ գովութիւք կու յիշուի Երզնկայեցին, և կ'ընծայուին իրեն այսպիսի մակդիրք. Րաբունի, Յոգնիմաստ հռետոր, Անյաղթ փիլիսոփայ, Լուսաւոր փիլիսոփայ, Պարոնէւի, Ընտրեալ, Սուրբ, և այլն. որոց անշուշտ յետինք և ներկայք այլ արժանի պիտի սեպէին զինքը, եթէ գործերն և գրուածներն աւելի ծանօթանային և հրատարակուէին: Փափագելի էր մեզ գիտնալ և Մխ. Այրիվանեցւոյն յիշած սքանչելիքն անոր սուրբ գերեզմանին. յուսալով այլ որ աւելի հաւատալի ըլլան քան Ղազար Ջահկեցի կաթուղիկոսին պատմածներն՝ անոր կենդանութեան ատեն ըրածին, չեմ գիտեր՝ որ գրուածքէ կամ աւանդութենէ առած. զոր և դու, Հայկակ, կրնաս կարդալ գոնէ իբրև աւանդութի, և կարծիք մը Անոյ կործանման պատճառին, որ սովորաբար 1319ին աւրուած կարծուէր մեծ երկրաշարժէն. բայց դեռ անկէ շատ տարի ետքն այլ բնակուած ըլլալուն վկայ են իր եկեղեցեաց

քանի մ՚արժանագրութիւնքն։ — Հիմայ մտիկ ըրէ Զահկեցւոյն պատմութեանը։

Բ

« Այս վարդապետս ազդմամբ սուրբ Հոգւոյն գնաց 'ի յԱնի՝ քարոզել և խրատել զնոսա, զի դարձցին 'ի մոլորութենէ և 'ի չար գործոց իւրեանց. մանաւանդ յաւագ եկեղեցին օթեցաւ զգիշերն. և ոչ ոք կալաւ փոյթ յանձին գնալ առ նա առ 'ի հարցանել և ողջունել զնա. այլ իբրև հնչեցուցին զժամն գիշերային՝ գնաց յեկեղեցին, և զյետին տեղին ետուն նմա. և նա կայր խոնարհութեամբ. և յարձակման ժամուն գնաց 'ի խուցն. և բնաւ ոչ ոք մօտեցաւ առ նա։ Իսկ 'ի ցերեկն իբրև զեղխեցին և արբեցան, ապա եկին մօտ վարդապետին։ Եւ զի հասակաւ կարճ էր երանելին, վասն որոյ եդին երկայն գրակալ, զի 'ի ձգտելն ծաղր արասցեն զնա. իսկ նա 'ի շնորհաց Հոգւոյն սրբոյ զամենայն ընթերցմունս 'ի բերան առեալ՝ առանց գրի անսխալ ասէր ստուգութեամբ։ Այլ 'ի տուէ և 'ի գիշերի խրատէր մեծաւ հոգաբարձութեամբ, և նոքա ոչ անսային բնաւ և ոչ դառնային 'ի մեղաց. վասն որոյ անկաւ մահ սաստիկ. զի աներևոյթքն իբրև մարմնաւոր երևելով՝ խոցոտէին յայտնապէս զմանկունս 'ի գիրկս մարցն և զայլս 'ի մահիճս, զոմանս 'ի մէջ քնոյն և զայլս 'ի յարթունս։ Իբրև տեսին քաղաքացիքն զպատուհասս եկեալ 'ի վերայ իւրեանց, յայնժամ կալեալ ըմբռնեցին զսուրբ վարդապետն և եդին 'ի բանտի 'ի նսեմ և 'ի ժահահոտ տեղի մի. ասելով, եթէ պատարագ արա և հաշտեցո ընդ մեզ զԱստուած՝ որպէս և ասացեր. ապա թէ ոչ՝ մեռանիս 'ի ձեռաց մերոց։ Իսկ նա պատասխանի ետ և ասէ. Ահա կրկին բարկացու-

ցիք զԱստուած. և նոքա ոչ անսային. և անձարացեալ յերկիւղէ նոցա՝ յանձն էառ մատուցանել պատարագ, և ելեալ գնաց յեկեղեցին. և յորժամ էջ 'ի սեղանոյն 'ի խնկարկել, յայնժամ ել հուր 'ի բուրվառէն և այրեաց արս չորեք հարիւր, որպէս 'ի հնումն Նաբաթ և Աբիուդ։ Եւ իսկոյն զղջացեալ անկան առ ոտս սուրբ վարդապետին, և հայցէին 'ի նմանէ զթողութիւն, և խոստանային դառնալ 'ի մեղաց իւրեանց։

» Եւ յետ սակաւ աւուրց սկսան կրկին գործել զչարիս և թաւալիլ 'ի յախտս պղծութեց։ Յայնժամ բարկացեալ Տէր առաքեաց գազանս չարս և այլակերպս, որ գային 'ի մէջ գիշերի երամակօք և մտանէին տանէ 'ի տուն. զպատանեակս և զմանկունս յափշտակեալ տանէին. և ելեալ առաւօտուն տեսանէին արտաքս տանց իւրեանց գիշատեալ, ոմանց զձեռս և ոմանց զոտս, ոմանց գլուխս, և ոմանք կիսամեռ անկեալ կային արիւնաթաթախ և դիաթաւալ։ Այլ և կին մի ունելով զմիամօր որդի՝ որ յափշտակեալ եղև 'ի գազանաց, գայ արտասուօք անկանի առ ոտս վարդապետին ասելով. Արդ օգնեա տառապելոյս, զի միամօր է ինձ. վասն զի պահեալ էի զամենայն պատուիրանս քո, և արդ պահեմ մինչև ցմահ։ Յայնժամ տեսեալ վարդապետին զհաւատս կնոջն նման Քանանացւոյն, յաղօթս եկաց առ Տէր. յայնժամ գազանքն որ զանդամս տղային յափշտակեալն էին՝ ակներև բերեալ եդին առաջի սրբոյ վարդապետին. և վարդապետն առեալ զանդամս տղային գնէր և շարէր և ձգէր իւրաքանչիւր տեղիսն. և սկսաւ աղօթել առ Աստուած այսպէս. Տէր Յիսուս, որպէս յարուցեր զմիամօր որդի այրւոյն 'ի Նային քաղաքի, նոյն զօրութեամբդ և ողորմութեամբդ յարո զսա և կենդանացո, վասն զի անմեղ է. այլ

և տեսցեն մերձ եղեալքն զզօրութիւնս քո և դարձցին 'ի չարեաց իւրեանց: Յայնժամ եռեաց կորատեալ մարմինն, կցեցաւ ոսկր առ ոսկր և կենդանացաւ, և դարձաւ հոգի մանկանն և յարուցեալ կանգնեցաւ: Իսկ որ շուրջն կային իբրև տեսին զսքանչելիսն՝ զահի հարեալ անկան առ ոտս վարդապետին և մեղայ գոչէին. և վաղվաղակի գնացեալ բերէին զգիտակուլս առաջի վարդապետին և աղաչէին զի յարուսցէ. իսկ սուրբ վարդապետն Յովհաննէս եկաց յաղօթս և գոչեաց ասելով. Ով ոք անմեղք են 'ի սոցանէ՝ եղիցի նոցա բժշկութիւն. ապա թէ ոչ՝ Աստուած վրէժխնդիր լիցի ըստ հաճոյից իւրոց: Յայնժամ դիմեցին զայլք 'ի վերայ նոցա յանկարծակի և պատառեցին ակներև զբազումս 'ի նոցանէ: Եւ 'ի տեսանելն զայս ամենայն ափշեցան ահիւ մեծաւ, և սկսան խստապէս մեղայ գոչել և դառնալ 'ի չար գործոց:

» Եւ յետ երից ամաց մոռացան զառաջին հարուածսն, և սկսան կրկին 'ի տիղմ թաւալիլ, ասելով, թէ առաջին հարուածքն 'ի պատահմանէ եղև, և ոչ վասն մեղաց մերոց: Եւ դարձեալ եկն վարդապետն Յովհաննէս, և սկսաւ քարոզել. և իբրև տեսին զնա զի կրկին յանդիմանէր զնոսա, բարկացան և սկսան ասել ընդ միմեանս, եթէ է մեր քակտիչ. և խորհեցան խորհուրդ նանիր, և արբուցին նմա թմրադեղս և թափեցին 'ի խելաց, և ապա մերկացուցին զնա և արկին 'ի վերայ սայլի, և այնպէս մերկ և խայտառակ 'ի մէջ քաղաքին շուրջ ածեալ մունետիկաւ ծաղր առնէին զնա. և ապա բերեալ կախեցին զամբիւղիւ 'ի դուռն աւագ եկեղեցւոյն, զի մտանողք և ելանողքն տեսցեն: Եւ յետ ժամուց ինչ անցելոց վարթեաւ 'ի թմրութենէ. և զգաստացեալ ետես զինքն այնպիսի կերպարանօք. սկսաւ յոգոց հանել և լալ դառնապէս: Եւ լուեալ զձայնն՝

իսկոյն իջուցին և բրածեծ արարեալ աքսորեցին զնա. պատուիրելով և ահացուցանելով, եթէ այսուհետև մի՛ տեսցուք զքեզ աստ, ապա թէ ոչ՝ չարաչար մեռանիս 'ի ձեռաց մերոց: Եւ տեսեալ զայս ամենայն վարդապետին Յովհաննու՝ ել 'ի վերայ բարձր բլրի միոյ և անէծ զքաղաքն. կըրկնեաց ծունր ասելով. Տէր, այլ ոչ լինիմ երաշխաւոր. այսուհետև զոր ինչ կամիս՝ այնպէս արա: Եւ յանկարծակի էջ սաստիկ բարկութիւն յԱստուծոյ, և սկսաւ քաղաքն շարժիլ և տապալիլ պարսպացն: Եւ զայն տեսեալ ամենայն ոք՝ ստէպ ընթացմամբ փոյթ ընդ փոյթ բուռն հարեալ 'ի ձեռաց ընտանեաց և զաւակաց իւրեանց՝ և տարադէպ ելեալ վտարեցան. թողլով զքաղաքն և զեկեղեցիս և զոսկեզօծ պալատս և զծաղկաւէտ դաշտս իւրեանց, որպէս փախստական»:

---

# ԼԱ

# ԼԵՒՈՆ ՎԵՐՋԻՆ

## 29 Նոյեմբեր, 1393.

### Ա

Ամենայն Հայազգի որ Բարիզու քով Ս. Դիոնեսիոսի աբբայարանի տաճարին այց ելնէ և իջնէ անոր տապանատունը, չիկրնար առանց մեծ և խոր մտադրութեան չտեսնել քնարեան մը թագաւորի, թագիւ, խաչիւ և առիւծով, և վահանաւ մը՝ յորում քանդակեալ են նշանք թագաւորութեան Հայոց և Երուսաղեմի և Լիւսինեան տան: Աչք մէկէն կու տեսնեն այս խորագիրս, Cy gist Lyon, Roy d'Arménie. (Աստ հանգչի Լեւոն թագաւոր Հայոց). և դարձեալ. Cy gist le très-noble et excellent prince Lyon de Lizingne, quint Roy Latin du royaume d'Arménie, qui rendi l'âme à Dieu, à Paris le XXIX jour de novembre, l'an de grace M. CCC. XX et XIII.
IIII

Այսինքն. Աստ հանգչի մեծատոհմ և մեծապայծառ իշխան Լեւոն Լիզինեան, հինգերորդ արքայ Լատին՝ թագաւորութեանն Հայոց, որ աւանդեաց զհոգին առ Աստուած, 'ի Բարիզ, 'ի 29 աւուր Նոյեմբերի, յամի փրկութեան 1393: Հոս

ուրուագրուած փոքրիկ[1] ծնօտածաղիկ անձն՝ էր յաջորդ և վերջին հաւահաւակ Հայկազանց և Իշխանազօր Հայաստանեայց. և աւելի այս նկատմամբ քան թէ իր անուանակցաց մէջ յետին ըլլալուն համար՝ կու վայելէ իրեն կոչուիլն ՎԵՐՋԻՆ։ Իր անունն այլ ըստ իմաստին կըրնայինք կերպարանել ծեր Առիւծ մը՝ վաստած թաթերը զինուց և վահանաց վրայ դրած և ընկած. բայց տախծաբար ընկած. որուն խորշոմեալ և կռնձեալ յօնքն ու կիսաբաց աչերն՝ ոչ անվախ իրեն նայել կու տան։

Լևոն Ե կամ Զ գտանեալ 'ի կարգի Ռուբինեան պարոնաց և թագաւորաց Կիլիկիոյ Հայոց, վերջինն եղաւ 150ի չափ Հայաստանեայց կամ ազգապետաց Հայոց, որոց կէսն թագաւորական պատիւ և անուն այլ կրեցին, կէսն առանց այդ անուան և թագի՝ մեր ազգին գլխաւորները եղան, կատարեալ 40 դարուց միջոց։ Այդչափ դեռ չձեւացեալ կամ չծաղկեալ կոկոնակերպ նախապետաց հետ, երբ մեր նախահայրն՝ Հայկն՝ եկաւ 'ի Նոյաբնակ երկրէն, Քամայ բռնաւոր թոռան հետ երթալու 'ի Սենաար, յաբեթական գնդի մը գլուխ կեցած, հաւատարմագոյն ժամանակագրութեան թուն էր 2625 տարի Քրիստոսէ առաջ. երբ Լևոն Զ Քամայ ցեղին պայազատական աթոռոյն իշխող Եգիպտացի սուլտանին դէմ՝ մինչեւ 'ի յետին հընարս կռուելով 'ի վերայ թագաւորութեան և անուան Հայոց՝ գերի ընկաւ, և բազմութիւնք Հայոց թողեալ զյետին հայրենիս՝ օտարական գնացին յարևմուտս, Քրիստոսի թուականն էր 1375. այս երկու թուոց գումարն կ'ընծայէ ալ ամբողջ 4000 տարի։ Չորս հազար տարի ազգէ

1 Թերևս փոքրկութեանն համար կամ գգուանաց Lyonet այլ կոչուէր 'ի Փռանկաց։

մը ինքնանուն և քիչ շատ ինքնիշխան պայազատութեան՝ 'ի մէջ հին և նոր ազգաց. — բաւական էր այդչափ ազգի մը համար՝ 'ի չափս Նախախնամողին ազգաց և ազանց, որ մարդկան ստեղծմանէն մինչև ցայսօր ձգուած ժամանակի միջակադաց կամարին մեծագոյն մասին վրայ՝ լարած և շարած է Հայոց ազգապետութեան գիծը, որոյ հաւասար շատ քիչ ազգաց գիծք կ'երևին: Այն գիծն՝ թերևս օտարաց համար աննշան և աղօտ է այսօր. բայց Հայ աչաց լուսանշոյլ և անջինջ գիծ մ'է. կարմիր-կանաչ կամար մը՝ որոյ գլուխն 'ի լեառն Մասիս, և վերջքն յամուրն Սիս. մէկուն քով Հայկն կանգնած, միւսոյն՝ Լևոն ընկած: Յառաջ քան զՀայկն՝ գէթ ժողովրդոց զանազանութիւն չկայ, չկան ազգք և լեզուք. յետ Լևոնի ամենայն ազգք և իշխանութիւնք՝ գէթ երեկուան բաներ են յաչս Հայոյն. Հայն իր ազգային ինքնիշխանութեանը վերցուելէն վերջն այլ, իբրև լեզու և կրօնք՝ ունի պայազատութիւն մը, ունի որոշ տեղի և բարակ գիծ մ'այլ ժամանակին կամարին վրայ. ունի գոնէ գէթ եկեղեցական հայրապետութիւն մը, որ կրնայ ձգել և յարատևել ըղհին Հայպետութիւնը, քանի որ լեռունն և ծէան միան 'ի վերայ երկրի. յուսամք թէ ցորչափ մնայ և երկիրս:

Լևոն Վերջին՝ Հայոց հարստութեան ետքինն ըլլալուն, իրմով գրեթէ մեր ազգն և աշխարհն այլ աննշան մնալուն համար, դարձեալ, իր օտար ցեղէ ըլլալովն և օտար երկրի մէջ վախճանելովն, և իշխանութեանն տանն փայլուն և փառօք յիշատակներ չթողլուն համար, չի կրնար մեծ սիրելութիւն մը ձգել ազգապանծ Հայոց վերայ. բայց իբրև Թագաւոր Հայոց, և սիրող և կսկող Հայ փառաց և անուան վրայ, իբրև քաջութեամբ և երկայնմտութեամբ և առ հարկի գերի ընկ-

նող. — Իբրև անարատ քաղաքավարութիւն ունող 'ի Թագաւորութեանն և յետոյ, եւ և իբրև ազնիւ, ողորմած, բարեպաշտ, հնարագէտ, մեծաց և փոքունց և Թագաւորաց և աղքատաց՝ սիրելի անձ մը, — միանգամայն և իբրև քիչ մը քօղաւոր խորհրդապատ (mysterieux) անձ մը, և տարօրինակ բաղդի հանդիպող մը, արժանի եղած է և ազգիս մտադրութեան և սիրոյն. հայկական յուշոյն մէջ խորատիպ անուանց մէկն է վերջինն Լեւոն:

Ընդհանուր պատմութեան կամ մարդկութենկատմամբ այլ նշանաւոր, կամ թէ աւելի որոշ ըսենք, նշանաբաղդ անձ մ'է Լեւոն. և բաղմատեսարան վիպասանութեան մը աւիթ ըլլալէն աւելի, կըրնայ մեծ բարոյական պատկեր կամ վարդապետութիւն մ'ընծայել շատ դաս մարդկան, եթէ ուզէ մէկն ուշիւ քննել և նկարագրել իր կենաց ծանօթ պարագաները: Լեւոն Ե ('ի կարգի համանուն Թագաւորաց մերոց Ռուբինեանց, և Զ 'ի կարգի պարոնաց և Թագաւորաց), այն տարաբաղդիկ իշխանաւորաց և աւագաց մէկն է՝ որ յետ ընկնալու իրենց բարձէն և բաղդէն, աւելի հանդիստ և հարուստ կ'ըլլան, և աւելի անուանի և յիշելի: Այս երկու յատկութիւններն այլ ունեցաւ մեր վերջին Թագաւորն իր տարագրութենէն ետև. Հռովմայ պապն, Սպանիոյ, Գաղղիոյ և Անգղիոյ Թագաւորք, իրենց երկիրներուն մէջ առատապէս տուին իրեն քաղաքներ, պալատներ, գանձեր, պատիւներ. և որչափ ապրեցաւ՝ միշտ իրենց բարձակից, եղբայր և համշիրակ սեպէին, և արքունի մեծամեծ հանդիսից մէջ վերագոյն աթոռներուն մէկը անոր կու տային: Ինչուան հիմայ թէ իր և թէ իրեն պաշտօնէից համար արուած շատ հրովարտակներ կու գտուին դիւանատանց մէջ. իր կենաց վերջի տարիներուն օ-

ճագիրը, մահը, կտակը, կտակին մուրհակները պահուած են. և յայտնի միեան գերեզմանն, մահարձանն և կիսանդրին[1], դրեթէ աւելի քան զամենայն Թագաւորաց մերոց։ Հոս միանգամ այլ կու տեսնեմք աշխարհիս ընդունայնութեան բարոյականը. որ շատ հեղ մեծամեծ մարդկանց՝ միայն կամ հազիւ և կամ ոչ իսկ գերեզմանը կու թողու յետնոց. այսպէս մեզի այլ մեր 4000ամեան հայկեանց յիշատակարանքը գրեթէ բոլորովին ծածկելով մեզմէ՝ անոնց վերջնոյն գերեզմանը միայն յերևանի թողած է, աշխարհիս ամենածանօթ քաղքին մէջ, 'ի խորհրդածութիւն իմաստասէր մտաց և քաղցրազգած սրտի։

## Բ

Որչափ ծանօթ է Լևոնի կենաց խաղաղ արևմուտքն, այնքան անծանօթ է արևելքն։ Իբրև տասնամեայ թագաւորութեանն ամեն ինչեր ըրաւ (բաց 'ի քանի մը դժբաղդութեանց), ինչո՞վ այդպէս ընտրելի և հաճելի եղաւ Հայոց. Թագաւորութենէն առաջ ի՞նչ կ'ընէր, ո՞ւր էր, որո՞յ որդի էր. — ամենն այլ դեռ անծանօթ են մեզի, բայց 'ի ցեղէն կամ տոհմէն։ — Յայտնի է քեզ, Հայկակ, որ մեր Կիւլիկիոյ իշխանքն նախ Պարոն կոչմամբ պայազատէին՝ սկսեալ 'ի Ռուբինէ ազգականէն Գագկայ վերջին Բագրատունեաց Թագաւորի, որոյ անուամբ և Ռուբինեանք ըսուեցան. և որոյ որդիքն ինչուան հինգ վեց պորտ, 140–150 տարի իշխանապետեցին, ինն կամ տասն անձինք, որոցմէ իններորդն՝ Լևոն Բ առաջին Թագաւոր եղաւ Հայոց, և արու զաւակ չունելով՝ ժառանգ և յաջորդ թողուց իր Զապել դուստրը.

1 Ի Թանգարանին Վերսայլի։

ասոր հետ պսակուեցաւ Հեթում Ա'ի ցեղէ Հեթ-մեանց, 'ի բնէ Արծրունի ցեղէն. և ասոր պայա-զատութիւնն այլ անեց իբրև 120 տարի՝ իրմով չորս ազգ և 8 կամ 9 պայազատ թագաւորք. ո-րոց վերջինն եղաւ Լևոն Դ կամ Ե, մեռեալ յամի 1341, չթողլով արու զաւակ: Թէ այս և թէ ան-րութեան ակարանալուն պատճառաւ (վասն մե-ծի թշնամութեան և անդադար պատերազմաց Եգիպտոսի սուլտանաց), ասկէ ետև Հայոց թա-գաւորութեան ժառանգութիւնն այլ, կարգն այլ շփոթեցան. և քանի մը տարի անյաջողու-թեամբ թագաւորեցին Լևոնի հօրաքեռորդիքն Կոստանդին-Յովհան (Ճուան) և Կուիտոն կամ Կի, որք 'ի հօրէ գաղղիացի էին 'ի Լիւսինեան տոհմէ (յորմէ էին և թագաւորքն Կիպրոսի և իշխանք Տիւրոսի). և իբրև անհաւատարիմք ազ-գային օրինաց Հայոց՝ 'ի մահ դատապարտեցան. և անոնց տեղ դրուեցաւ (1346) Կոստանդին Դ, որ թէ 'ի հօրէ և թէ 'ի մօրէ Հայոց թագաւորաց կողմնական ցեղերէ իջած էր. և թագաւորեց զգօ-նութեամբ դժար ժամանակի մէջ մինչև 'ի 1364-5: Իր երկու որդիքն կու յիշուին, Օշին՝ ծնեալ 'ի 1338 և Լևոն՝ յառաջ քան զ'1345: Ինչո՞ւ ասոնք չյաջորդեցին իրեն. — անտարակոյս կարճօրեաց մեռած պիտի ըլլան. կամ ըստ ոմանց՝ Լևոն թա-գաւորած է, այլ մեկէն Եգիպտացւոց դէմ պա-տերազմի մէջ բռնուած և թունով կամ խեղդով սպանուած՝ հաւատքը չուրանալուն համար: Այն-քան մթին մնացեր է այս բանս, որ շատ ժամա-նակագիրք և ոչ այս Լևոնի անունը գիտեն [1]. —

1 Սխալէն քանի մը նոր հայաքննին Եւրոպացիք՝ որք զԿոստանդին Դ լատինացի համարելով՝ հօրը Պաղտին կոչուելուն համար, այս երկբայական Լևոնը և մեր Լևո-նը կու նոյնացընեն. այսինքն զվերջինն Լևոն Զ որդի կ'ը-սեն Կոստանդնի Դ:

յայանի նշան մեծ չփոթութեան ժամանակին և անհանգիստ պատերազմաց և հալածանաց, որ յետ մահուան Կոստանդնի Դ՚ի մինչև 'ի Թագաւորութիւն մեր վերջին Լևոնին անեցին: Այն խառնակ միջոցին՝ Թերևս ուրիշներ այլ Թագաւորած ըլլան, ինչպէս յիշուի և Կոստանդին մը, որպէս Թէ Թոռն ('ի մօրէ) Ե Լևոնի և որդի Հեթմոյ իշխանի մը: Այսպիսի բռնաքարութեան առեն բնական էր որ Լուսինեանք այլ՝ Թէ 'ի վրէժ ազատման իրենց երկու երեք առհմակցացն, և Թէ իրաւամբք ժառանգութեան՝ ջանային Հայաստանի Թագը ձեռք ձգելու: Այսպէս այլ ըրաւ՝ ցեղին գլխաւորն՝ Պետրոս Ա Թագաւոր Կիպրոսի, որ քաջմութեամբ նաւուց եկաւ տիրեց ծովեզերեայց Կիւլիկիոյ և նուաճեց զշատս 'ի պարոնայց. յորոց ոմանք ասոր, ոմանք ուրիշներու կողմնակից կ'ըլլային. իսկ հայրապետն Հռովմայ (Ուրբանոս Ե) գրեց առ իշխանս և առ ուխտ եկեղեցւոյն Հայոց (1365, ապրիլ)[1] որ Թողլով զուրիշները՝ Թագաւորեցընեն զԼևոն այս (վերջին), զազգական Պետրոսի Թագաւորի. որ Թէ՛ իրաւամբք մերձաւոր էր Թագին և Թէ արդեամբք վարուցն: Հայք հպատակելով հարկին և խրատուն՝ Թագեցին զԼևոն, նոյն կամ յաջորդ տարին. որ ինչպէս իր տապանագրին վրայ կարդացինք 'ի սկզբան՝ ՀԻՆԳԵՐՈՐԴ Լատին Թագաւոր կոչուի Հայոց. ըսել է որ բաց 'ի Ժուանայ և Կուիտոնէ՝ երկու ուրիշ Լատինք այլ Թագաւորած են, որոց մէկն Թերևս սեպուհի իրենց Պէմոնդ եղբայրն, նոյնպէս սպանեալ 'ի Հայոց, միւսն այլ Պետրոս, և կամ Թէ Փիլիպպոս առաջին փեսայն Զապելի Թագուհւոյ, դստեր մեծին Լևոնի, որ նոյնպէս Հայոց և իր

1 Տես զնամակն 'ի Պատմ. Հայոց, Գ. 355:

խոստման անհաւատարիմ ըլլալով՝ բանտի մէջ մեռաւ։ Թողունք այս խնդիրը և գանք 'ի Լեւոն։

Զաս ոմանք 'ի մերոց փոքր պատմըչաց՝ կոչեն որդի Բրնչին, այսինքն (prince) իշխանին, — ո՞ր տեղւոյ... Անտարակոյս է Կիպրոսի Լուսինեան[1] Թագաւորաց հետ մերձաւոր ազգակցութիւնն, ինչպէս վկայեց Քահանայապետին Թուղթն վասն Պետրոսի Թագաւորին. որոյ որդին Յակոբ Ա (եղբայր Բ Պետրոսի) յետ մահուան Լեւոնի Զ՝ ինք զինքը Հայոց Թագաւոր անուանեց իբրև Երրորդ աստիճանի ժառանգ նորա։ Թէպէտ 'ի հօրէ Լատին կամ Գաղղիացի, հաւանելի է թէ 'ի մօրէ Հայ էր, ինչպէս Ծուանն և Կուխտոն. և կ'երևի թէ 'ի Կիւլիկիա այլ կեցած էր իր մայրենի արքայազարմ Հայոց քով, և ընտանի ու սիրող անոնց կարգաց, օրինաց և լեզուին. գոնէ Թագաւորութեան ատեն հայերէն օրինօք և պաշտօնէիւք կը վարէր.

1 Լուսինեան ազնիւ տոհմն (որ հիմայ մարած է) Գաղղիոյ Բուադուէ գաւառին Լուզինեան գիւղէն առած է անունը. հնագոյն տոհմապետն կու յիշուի 'ի Ժ դար։ Փըռանկաց ռամկին սնապաշտութեամբ կամ աւանդութեան կ'ընդունէին Մելիւզին անուամբ վհուկ մը կամ Յաւերժահարսն, որ իր հայրը սպաննելուն համար, կ'ըսեն, ամէն շաբաթ օր յօձ կը փոխուէր. իր երիկն Ռայիմոնտ՝ կոմսն Բուադուէի իմանալով այս բանս՝ արգիլեց պահեց զնա Լուզինեան բերդին մէջ, ուր մինչև հիմայ ճչացեր է կ'ըսեն։ Մեր Լեւոնի ժամանակակից Գաղղիացի մը Ժան տ'Առաս (Jean d'Arras) անուանի վիպասանութիւն մը գրած է (յամի 1387-1394) Mélusine կոչմամբ, յորում կու պատմէ Լուզինեան գիւղին սկզբնաւորութիւնը, Մելիւզինայ դէպքը, և իր երկու անդրանիկ որդւոց մէկուն Թագաւորելն 'ի Կիպրոս, միւսոյն՝ որ Կիւոն կ'ըսուէր՝ 'ի Հայս. սոքով անշուշտ կ'ակնարկէ 'ի Կուխտոնն Թագաւոր Հայոց. և ասոր որդւոց մէկն այլ, կ'ըսէ, երկայն ատեն Թագաւորեց 'ի Հայաստան, և վրան շատ մեծ բաներ կու պատմէ, որպէս թէ յաղթանակաւորից լաւն ըլլայ։

այսպէս հաւանօրէն Լևոնի կնոջն այլ՝ Մարիամ դշխոյն, որ Մաճառուաց թագաւորին ցեղէն էր, և ազգական Փիլիպպոսի Տարենտայ իշխանին՝ արևելքի կայսր անուանելոյն։

Գ

Լևոն թէ և հանճարեղ և առատաշահ մարդ էր, բայց Կիւլիկիոյ գրեթէ քայքայեալ թագաւորութիւնը յոտին պահելու համար՝ իրմէ վեր և իրմէ դուրս այլ ոյժ և հնարք պէտք էր, որ չգտուեցան. և գրեթէ անկարելի այլ էր այն նուազեալ թագաւորութիւնը կործանմանէ ազատել. վասն զի մէկէն աւելի զօրաւոր թշնամիք կամ հակառակք կային անոր։ Նախ այլազգեաց թշնամութիւնն, որոց գլխաւորք էին Եգիպտոսի և Ասորւոց սուլտանքն. ասոնց թշնամութիւնն կամ ոխութիւնն հին և արմատացեալ էր։ Կիւլիկիոյ դիրքն այս կողմանէս վտանգաւոր էր մեր Ռուբինեանց. որովհետև մէկ կողմէն դրակից ունէին (ատեն մը) Ղօնիայի հզօր սուլտանները, որ Փոքր Ասիոյ մեծ մասին տիրած՝ միայն մեր Հայոց Պարոններէն կ'արգիլուէին ինչուան Միջերկրականին եզերքը ձգելու իրենց իշխանութիւնը. մէկ այլ կողմէն՝ ինչուան այն ծովեզերքը կը հասնէր Եգիպտոսի սուլտանին զօրութիւնը, շատ հեղ Ասորւոց կողմէն, երբեմն այլ նաւով յարձակելով 'ի Կիւլիկիա։ Առաջին պարոնայքն և թագաւորքն մեր շատ հնարագիտութեամբ և քաջութեամբ դէմ կեցան Իկոնիացւոց, ինչուան որ Հեթում Ա յաջողեցաւ Թաթարաց ղանին օգնութեամբ տկարացընել անոնց իշխանութիւնն այլ, Բաղտատայ վախին այլ։ Եգիպտոսի կողմէն այլ բաւական ապահովութիւն ունէին մերքն, քանի որ Լատինք Երուսաղեմի կու տիրէին և Ասորւոց ու Պաղես-

տինա մէջ իշխանութիւններին կու պահէին. Իսկ երբ անոնք վերցուեցան, և Թաթարք այլ՝ կէս մը իրարու մէջ բաժնուելով, կէս մը մահմէտական կրօնքն ընդունելով՝ իրենց վախը և ուժը կորուսին, Եգիպտոսի սուլտանք երբեմն անոնց հաւասար դիմամարտ կ'ելնէին, երբեմն հաշտութիւն և միաբանութիւն կ'ընէին, որով մերոնց վիճակը կասկածելի կ'ըլլար: Իսկ երբ այս ԺԴ դարուն կէսէն եաև Թաթարք գրեթէ բոլորովին քաշուեցան յարևմտեան Ասիոյ, և Օսմանեանց նախահարքն սկսան յառաջ գալ հանդարտօրէն տիրապետելով, Եգիպտոսի սուլտանք հանդերձ Դամասկոսի սուլտաններով (որք երբեմն մէկ իշխանութեան տակ այլ կ'ըլլային), առաջին հզօր տէրութիւն եղան Ափրիկէի և Ասիոյ սահմանակից կողմերը, որոց մէջ կը փակուէր Կիւլիկիա:

Ասոր ամրութիւնն էր մէկ մը ծովն, մէկ մ'այլ ծովային քրիստոնեայ տէրութեանց օգնութիւնն և անոնց հեռաւոր նպաստն. բայց Հայք բաւական նաւային ոյժ չունենալով՝ շատ հեղ չէին կրնար այլազգեաց նաւատորմիղը վանել, անով շատ անգամ իրենց մեծ և ամուր նաւահանգիստն Այաս՝ անոնց ձեռքն ընկաւ և աւերեցաւ. Քրիստոնէից կողմէն այլ շատ օգնութիւն չգտան. վասն զի ոմանք (Վենետիկեցիք, Ճենովացիք) իրենց վաճառականութեան զբաղած և շատ հեղ իրարու հակառակորդ և թշնամի՝ մերոնց մեծ շահ մը չէին, թէ ոչ և վնաս. ոմանք այլ (ինչպէս Գաղղիացիք, Անգղիացիք) երբեմն սակաւ կ'օգնէին, զօրք խաչերել այլ խոստանային, բայց ոչ երբէք կրցան խաչերել, թէ ճամբու հեռաւորութեան համար, թէ իրարու մէջ կռիւ ունենալուն: Հին կորիզ Հիւրընկալ (Ոսպիթալը) և Տաճարական (Դամբլուն) տասպետքն այլ նուազեր էին, և ոմանք բոլորովին վերցուած հեռացած 'ի սահմա-

նաց Կիլիկիոյ․ կու մնար եկեղեցւոյ գլուխն, որ իբրև հայր հասարակաց քրիստոնէից կու գթար Հայոց վրայ․ մանաւանդ լաւ տեսնելով որ անոնց փոքր Թագաւորութիւնն էր բոլոր արևմտեան քրիստոնէութեան նախամարտիկն կամ նախապարիսպ պատուարն ընդդէմ անքրիստոնեայ տէրութեանց արևելից․ ուստի թէ եկեղեցւոյ և թէ արևմտեայ Թագաւորաց օգուտ էր Հայոց օգնական ըլլալն․ և այս բանիս համար ոմանք երկայն ճառեր և գրքեր այլ գրեցին այն ատեն առ Պապն և առ Թագաւորս․ որոց մէկն այլ սեպելու է մեր Հեթում Թագաւորազն պատմիչը։ Բայց ոչ Հայոց վերջին Թագաւորաց ստէպ ստէպ աղաչանքն և ղրկած դեսպաններն կրցան յարևմտից օգնութիւն մը գտնել, բաց 'ի սակաւ, խոստմունքէ և քաջալերութենէ, և ոչ Պապին առ նոսա տուած յորդորն, վասն վերոյգրեալ պատճառաց։ Որոց վրայ հարկ է աւելցնել քիչ մ'այլ կրօնական խնդրոց յուզմունքն Հռովմայ և Սսոյ մէջ, զոր զայրացուցին պէսպէս սխալ տեղեկութիւնք կամ աւելորդ պահանջմունք, յամառութիւնք և հակառակութիւնք։ Ազգերնուս թէ եկեղեցական և թէ քաղաքական գլուխքն՝ միաձայնութեամբ, տեսութեամբ կամ թղթակցութեամբ ընդ գլխաւորացն արևմտեայց՝ բաւական խելամուտ եղած էին, և իրենց կողմանէ դժարութիւն մը չէին տեսներ համաձայն միաբանութեան ընդ արևմտեայց՝ կարևոր խնդրոց վրայ, զորս արդէն շատ հեղ ժողովով այլ ընդուներ և հաստատեր էին․ բայց ոմանք 'ի կանխակարծ և անխելահաս իշխանաց և 'ի ժողովուրդէն՝ ոչ միայն դեռ խորշէին յօտարաց, մերթ անպատճառ մերթ պատճառաւ, այլ և իրենց գլուխներէն քաշուէին․ ինչպէս որ պատմութիւնն ցուցընէ դժնդակ դէպքերով այլ։ Մեր Թագաւորքն այլ ինքնիրեննուն բաւական ոյժ

չուննէին, երկիրնին մասամբ մը՝ պայազատական օրինօք՝ իշխանաց ձեռքն ըլլալով. Ա. Լեւոն ու Հեթում թագաւորաց կարողութիւնն և ճարտարութիւնն այլ չկար՝ որ ինչուան 60000 զօրք դումարեն և դէմ ելլեն թշնամեաց. ուստի պէտք էր հիմայ պաշտպանողական հնարքով 'ի թշնամեաց փախչիլ, կամ ապաւինիլ ամրոցներու մէջ, ինչպէս որ ըրաւ շատ հեղ մեր Լեւոնն այլ:

Ասիկայ բնական ապաւէն կամ օգնական մ'այլ կրնար ունենալ զթագաւորս Կիպրոսի, անոնց ազգականութեամբն. նոյնպէս Լատինացի ըլլալն և հաւատոց կողմանէ անկասկածութիւնն այլ մեծ օգուտ էր իրեն. բայց ժամանակն զայս այլ բանի չբերաւ. որովհետև այլազգիք Կիպրացւոց այլ թշնամի էին, Պետրոսի յարձակմանն համար իրենց երկիրներուն վրայ. որոյ վրէժն հանել ուզելով Եգիպտացիք՝ յարձակեցան (1366) երկու Լուսինեան թագաւորութեանց վրայ այլ (Հայոց և Կիպրացւոց). որք ոչ միայն իրարու՝ այլ և ոչ ինքն իրենց կրցան օգնել: Ոմանք կու սեպեն թէ այս Եգիպտացւոց 'ի Կիւլիկիա վազելուն պատճառն էր՝ որ բազմութիւն Հայոց թողուցին երկիրնին և նաւով փախան Յունաց կողմերը, 'ի Հռոդոս, 'ի Մելիտինէ, և այլն. Կիպրացիք այլ խրատով Ս. Պապուն ջանացին հաշտութիւն խօսիլ իրենց կղզին վազողներուն հետ. և այսպէս երկուքն այլ այս անգամ առանց շատ մեծ վնասու՝ յետ դարձուցին զթշնամին: Անկէ ետքն այլ Կիպրոս իր ծովապատ ամրութեամբն և իր թագաւորաց տարբեր վարչութեամբն ու արևմտեայց հետ հաւասարութեամբն կըրցաւ դեռ դար մ'ալ դիմանալ այլազգեաց դէմ. բայց Կիւլիկիոյ և Հայոց թագաւորութեան վախճանն մօտեցեր էր իրենց ոխերիմ թշնամեաց հարուածներով. որք գրեթէ ամեն տարի յարձակելով հոն՝ սրով և հրով կու

մաշէին կ'աւրէին զաշխարհքը, զիշխանս և բերդատէրս կու ցրուէին. Թագաւորն երթալով կու միայնանար, իշխանութիւնն և զօրքն կ'ամփոփուէին. կամաց կամաց կու մարմըրէր 300 տարուան ռուբինեանց ջահն. ուժով հով մ'այլ բաւական էր բոլորովին անցընելու զայն, և Քրիստոնէից անօգնական թողած նախապարիսպը՝ փլցընելու. որոյ հետ Հայոց Թագն և ազգապետութիւնն այլ պիտի ընկնէր ու ծածկուէր։

Սակայն պէտք է խոստովանիլ, մանաւանդ թէ հռչակել 'ի պարծանս Լևոնի և 'ի փառս ազգիս, որ եթէ իր կողմանէն այլ քիչ մ'անիմաստութեամբ և թուլութեամբ այն տկարութեանը և վտանգին հասաւ, բայց ոչ վատութեամբ և անճարակ յուսահատութեամբ Թագը և զէնքերը թողուց՝ իրմէ շատ ու շատ անգամ զօրաւոր թըշնամւոյն ձեռքը. և թէպէտ չեմ կըրնար այս փառաց հաղորդել բոլոր մեր ազգային Կիւլիկեցիս՝ որք արդէն սկըսեր էին ցրուիլ հեռանալ 'ի Կիւլիկիոյ (որպէս երբեմն իրենց նախնիքն 'ի Մեծ Հայոց, Սելճուկեանց յարձակման ատեն), սակայն՝ մէկ մասն երկըրցոց հաւատարիմ կեցաւ իր Թագաւորին, Թագաւորն այլ անոնց իրաւանց և ազգային պատւոյն։ Ոչ միայն պաշտպանողական հնարիւք, այլ և դէմադէմ պատերազմով զորնուեցան ընդ եգիպտական և դամասկացի բանակաց զանազան անգամ, բոլոր Լևոնի տասնամեայ թագաւորութեան ատեն. թէպէտ և մէկ կողմէն կու տեսնէին քաղաքներնուն այրիլը՝ կ'ապաւինէին բերդերու, անկէց հալածելու զթշնամին և նորէն բնակարաննին շինելու, և երբ բերդերն այլ կ'առնուէին, աւելի ամուր բերդեր ու լեռներ կ'ելնէին։ Այս կերպ կռուիլն, զիրենք ու զհայրենիքը պաշտպանելն՝ ոչ միայն Լևոնիս ատեն, այլ և անկէ առաջ, գուցէ թէ անկէ ետքն այլ

տեւեց. և անշուշտ կէս դար մը քշած ըլլայ Կիլի-կեան Հայոց կառուիլն և դիմանալն ընդդէմ դարա-կան սպառնացեալ յարձակմանց Եգիպտացւոց, մինչև իսպառ իրենց ցրուիլն ու նուաճիլն:

## Դ

Դիպուածներուն վրայ ցաւ մ'այլ սեպելու է այն ելքին և բոլոր ԺԴ դարուն մերայնոց հանգի-պածներուն չյիշուիլը յազգային պատմիչաց՝ կար-գաւ և ոճով: Մեր պատմիչաց պատուական շարն հոս կու դադրի. յետ Սմբատայ սպարապետի՝ որ Կիլիկիոյ և իր եղբօր (Հեթմոյ Ա) և անոր որդւոյն պատմութիւնը ժամանակագրօրէն հա-մառօտած է ցվերջին քառորդ ԺԳ դարուն, և յետ անոր շարունակողին, յետ Հեթմոյ պատմչին՝ որ մինչև 'ի ԺԴ դարուն առաջին քառորդը կու հաս-ցընէ զայն, չեմ գիտեր ազգային պատմիչ մը Կի-լիկիոյ տանն և Թագաւորաց գործոց, բաց 'ի քա-նի մը տարեգիրներէ և յիշատակարանաց, ու քա-նի մը հեռաւոր վարդապետաց (Մեծ Հայոց կամ Ղրիմու) կարճ ու խառնակ գրուածներէն. ո-րոնց նման խառն և հակասական են արևմտեայց գրուածքն այլ այս դիպաց նկատմամբ: Ցաւալի՛ նշանք անհանգստութեան և շփոթմանց ժամա-նակին ու ստէպ աւերման և աւարման Կիլիկիոյ: Թէպէտ ես չեմ յուսահատիր որ օր մը անծա-նօթ պատմիչ մ'այլ յերևան ելնէ այն կողմերէն, մեր յետին Թագաւորաց պայծառ կամ խաւար օրերը մեզի լաւ ևս յայտնելու:

Առ այժմ գոհ ըլլանք, Հայկակ, որ գոնէ քա-նի մը յիշատակագիրք և տարեգիրք մեզի կ'ա-ւանդեն՝ առանց երկար պարագայից, որ ինչպէս քանի մը նշանաւոր և կտրիճ ազգաց վախճանին պատահեր է՝ մեծ և ուժով պատերազմով մը

դէմ կենալ հզօր և բռնաւոր թշնամւոյ, և զէնքն 'ի ձեռին ընկնել ու նուաճիլ. և ինչպէս թերևս հանդիպեցաւ մեր հին Հայկազանց այլ, որոց յետինն Վահէ երբեմն նիզակակից Դարեհի ընդդէմ Մակեդոնացւոյն, և յետոյ «ընդվզեալ յԱ»ղեքսանդրէ՝ մեռանի»[1], այսպէս եղաւ մեր ռուբինեան հարստութեանն այլ. և ոչ որպէս զԱրշակունեացն՝ իշխանաց վատթար անձնագատութեամբ և տիրանենգութեամբ, կամ Բագրատունեացն՝ պէսպէս մատնութեամբք:

Ցիշատակագրաց զրուցքէն կ'երևի թէ Լևոն չորս հինգ այլ և այլ անգամ ու տարիներ զարնուած է Եգիպտացւոց հետ, և մեծ պատերազմ մ'եղած է յամին 1369, յորում Եգիպտացիք առաջնորդութեամբ եղբօր սուլտանին՝ Շահարօղլուի՝ Կիւլիկիոյ լերանց դժուար անցքերէն ներս մտան. Լևոն իրեն նիզակակից և սպարապետ զօրաց ունեցաւ անձ մը, որոյ անունն անգամ անծանօթ և անսովոր է բոլոր Կիւլիկեցւոց պատմութեան մէջ, և սովորագոյն է Վրահայոց ու մանաւանդ Օրբելեան տոհմին մէջ (ԺԱ–Դ դարերուն). — Լիպարիտ: Լիպարիտ յետին սպարապետ է Հայոց, վարդանանման քաջութեամբ և նահատակութեամբ. որ իր տէրոջ դիմաց Հայ հայրենեաց և թագին վրայ կռուելով մինչև 'ի յետին շունչն՝ յաղթութեամբ յառաջեց թշնամեաց խումբերուն մէջ, և հոն ծածկուեցաւ նետերու հարուածոց տակ. իր մահն՝ յաղթութիւնն այլ հետը տարաւ. հարկ եղաւ որ յետ քաշուի Լևոն իր բանակին մնացորդովը, և հաշտութեան պայմաններով՝ այն անգամ այլ յետ դարձընէ Լիպարիտայ սրէն ապրող թշնամին:

Ինչպէս այս պատերազմիս և ուրիշներուն դէպ-

1 Խորենացի, Ա, ԼԱ:

քերն այլ չիպատմեր մեզի ազգային գրիչն, այսպէս և Լիպարիտայ քաջագործութիւնքն ու հընարքն. պատմութեան մէջ փայլակի մը պէս կ'երևի և կ'անցնի Լիպարիտ, բայց նախախնամութենէ ծագեալ՝ պայծառ և բարեբաստ փայլակի մը պէս. բարեբաղդաբար պատմըչին համառօտութիւնը կամ լռութիւնը՝ երկբայութենէ և տարակուսէ կ'ազատէ և կու հաւատարմացընէ, կու հռչակէ, կ'անմահացընէ ազգային երգիչն. — օրհնեալ ըլլայ [1]. որ հետևեալ գովք կամ ողբս գրեր է՝ հայրենասէր, կորիճ և տեղ տեղ (միջին չորս տունքն) բանաստեղծական ոգւով: Հայկակ, կարդա՛, և գոհացիր:

Հոգւովըդ սուրբ ես եւ ամբիծ.
  Զքեզ էր ընտրեալ Տէր ի յերկնից.
  Պարծանք եղեր քրիստոնէից,
  Ո՛վ մեծ հըզօր քաջ Լիպարիտ:
Անձամբըդ քաջ Սամփսոն էիր.
  Յորժամ ձօշանըդ հագնէիր՝
  Թուրքն ի յահէդ դառնար մոխիր.
  Ո՛վ մեծ հըզօր քաջ Լիպարիտ:
Արեգական նըման պայծառ,
  Երեսըդ լոյս էր կամար.
  Բարքըդ բարի, խօսքըդ շաքար.
  Ո՛վ մեծ հըզօր քաջ Լիպարիտ:
Բնութեամբ բարի դէմ աղքատաց,
  Լըսող էիր վարդապետաց.
  Քո բանդ՝ յամեն երկիր գոված.
  Ո՛վ մեծ հըզօր քաջ Լիպարիտ:
Զանձնըդ տուեր վասն օրինաց.
  Մէն կանգնելով հազրի դիմաց.

1 Երգոյս հեղինակն է աշխոյժ երգիչն Յովհաննէս Թլկուրանցի, որ և Սսոյ կաթուղիկոս եղաւ ԺԵ դարուն վերջերը (1489-1525):

Քո սուրըդ շատ սրտեր եբաց·
Ո՛վ մեծ հըզօր քաջ Լիպարիտ:
Դու հազարաց դէմ պահապան·
Մարդ չէ տեսեր քեզնիկ նըման,
Այս հողածինքս որ յերկրի կան·
Ո՛վ մեծ հըզօր քաջ Լիպարիտ:
Սըսայ երկրիս աստղ լուսատու,
Կանգնող էիր յամէն ժամու·
Թուրքն ի յահէդ սարսէր մահու·
Ո՛վ մեծ հըզօր քաջ Լիպարիտ:
Այն չար պահիկն որ քեզ հասաւ՝
Քեզի օգնող չըկայր բընաւ·
Անձնըդ՝ կարմիր գոյն ներկեցաւ·
Ո՛վ մեծ հըզօր քաջ Լիպարիտ:
Զայն չարաչար մահն որ տեսար,
Կսկիծ է մօրն որ զուն ծընար·
Աւա՜ղ ըզքեզ բերան հազար,
Ո՛վ մեծ հըզօր քաջ Լիպարիտ:
Սըսայ երկրին պաղչա ու ծառ,
Գոյնք ի գունոց ծաղկունք որ կայր՝
Հառաչանօք առին զիրար·
Ո՛վ մեծ հըզօր քաջ Լիպարիտ:
Կաթողիկոս եւ վարդապետ,
Սուրբ քահանայք ամենն ի հետ՝
Տաս արտասուօք սրտերն երետ·
Ո՛վ մեծ հըզօր քաջ Լիպարիտ:
Հիւսիսային հողմըն հիմիկ՝
Սարգիս՝ յիշող եղաւ քեզնիկ[1]·
Դուն սիւն էիր Հայոց՝ մեզնիկ,
Ո՛վ մեծ հըզօր քաջ Լիպարիտ:
Է Աստուծոյ անունն օրհնած

1 Կու յիշէ Ս. Սարգսի համար շարականին բառն. « Աւետաւոր Հայոց մեծաց՝ դիմեալ 'ի մէջ երկրի 'ի հիւ-
» սիսոյ, հողմն հարաւոյ » . և այլն:

Որ անըսկիզբն եւ անվախճան,
Որ ուժ երետ քաջ Լիպարտին
Եւ զօրացոյց զիւր սուրբ ծառայն։
Ի սուրբ Սարգիս քաջին նըման,
Ի սուրբ Թորոս, ի սուրբ Վարդան
Քան ըզՄուշեղ այլ խիստ յաղթող
Քան ըզՏրդատ Հայոց արքայն։
Պատերազմիլ եկիր հափայն (?)։
Ամեն տարի տասն ու քըսան.
Ինքն ըզլթուման հալածանէր
Արիւն հանէր գետեր Ջիհան [1]։

## Ե

Լիպարիտայ նահատակութենէն երկու տարի ետև նորէն յարձակեցաւ սովորական թշնամին յանօգնական երկիրն Կիւլիկիոյ. Լևոն իր մնացեալ սակաւաւոր պարոններով և զօրքերով դէմ ելաւ իր պարտքը կատարելու, և գոնէ ուշացընելու կամ պակսեցընելու անոր չարիքը, երբեմն զարնուելով երբեմն փախչելով. մինչև ստիպեցան այլազգիք՝ ոմանք անոր ետևէն ընկնիլ և հալածել, և ոմանք անոր թագաւորական քաղաքը պաշարել. զոր և առին յետ երկար ընդդիմութեան և սով ձգելու, և շատ աւարով ու այրելով՝ քաշուեցան անկէ և ուրիշ քաղաքներէ ու բերդերէ։ Լևոն այլ ստիպուեր էր ա-

1 Կ'երևի թէ երգիչն դեռ կու շարունակէր. մենք այսչափ գտանք։ — Վերջի երեք տան չէնքն կամ ոճն տարբեր է առջիններէն, իբրև յորդորակ կամ վերջաբան։ Ետքի տան առջի տողի ետքի բառն անծանօթ է. իսկ իմաստն է, ամեն տարի տասն քսան անգամ պատերազմ կ'ընէր, բիւրեր կու հալածէր, և արիւն կու թափէր Կիւլիկիոյ ծանօթ Ջիհուն գետոյն պէս յորդառատ։

մուր տեղ մը տպաստանելու. ուր և պահուըտած մնաց, կամ 'ի գրնգէ թշնամեաց պաշարեալ, և կամ կասկածելով անոնց դարանակալութենէն։ Այս ծածկութիւն երկար և տարևոր ատեն քշած կ'երևի. և ուր և ինչ ըլլալն մինչև հիմայ իսկ անծանօթ մնացեր է. այնպէս որ այն ատեն՝ աներևոյթ եղած, կամ մեռած կորած կարծուեցաւ. մինչև նոյն ինքն թագուհին Մարիամ յուսահատած էրկանը կեանքէն, այրաբար և որբաբար սկսաւ մտածել աշխարհքին և ազգին փրկութիւնը։ Այնքան արժանացաւ տիկնութեան ազգի և մայր հայրենեաց ըսուելու, որքան որ դժուար առթի և ժամանակի մէջ կուջանար ապրեցընելու զազգն և զերկիրն։ Մարիամ այլ փառօք և քաջութեամբ եղաւ վերջին թագուհի Հայոց։ Խորհրդակցութեամբ հաւատարիմ իշխանաց՝ դեսպան ղրկեց զՅովհաննէս արքեպիսկոպոսն Սսոյ (որ սովորաբար արքունի քարտուղար էր) և զՄանուէլ ոմն ազնուազգի ասպետի որդի, առ Փիլիպպոս խնամին իւր 'ի Սիկիլիա, և առ սրբազան հայրապետն Հռովմայ Գրիգոր Ժ, իմացընելով Կիւլիկիոյ վտանգաւոր վիճակը և օգնութիւն խնդրելով. նոյնպէս Փիլիպպոս այլ գրեց առ Պապն աղաչելով որ հայրաբար հնարի օգնելու Հայոց թագուհւոյն։

Պապն տեսնելով արևմտեայ տէրութեանց խառն և խռովեալ վիճակը՝ տարակուսեցաւ. 'ի վերայ այսր ամենայնի անհոգ չեղաւ գրելու առ դուքսս Վենետկոյ և Ճենովայ, և առ կարգապետս ասպետաց Երուսաղէմի և Հռոդոսի, որ ձեռքերնէն եկածին չափ օգնեն Հայոց. նոյնպէս Անտիոքայ անուանեալ իշխանին այլ գրեց (որ այն ատեն Կիպրոսի թագաւորութեան խնամակալ էր), խնամ տանելու իրենց խնամի Հայոց թագուհւոյն. Փիլիպպոսի այլ իրատ տուաւ, որ

դրէ և յորդորէ զԼուսովկիկ Թագաւորն Մաճառաց՝ օգնելու իրենց ազգական Թագուհւոյն Հայոց։

Այս օգնութիւններէն աւելի ապահով օգնութեան ձեռքը մ'այլ մտածեր էին Հայք, որոց դեսպանն՝ արքեպիսկոպոսն Սսոյ՝ իմացուց Պապին. և էր արևմտեայ Թագաւորազանց մէկը փեսայացընել Մարիամայ, որ գոնէ իր հայրենի երկրին ոյժը՝ օժիտ բերէ Հայոց Թագուհւոյն։ Աստոր արժանաւոր գտուեցաւ Պապէն՝ զՈԹոն դուքսըն Պրունզուիքայ. որ կորիճ և լաւ անձ մ'էր, միանգամայն և ազգական շատ ազնուաց։ Գրեց առ սա Սրբազանն. իսկ արքեպիսկոպոսն Սսոյ՝ ուզեց անձամբ այլ երթալ խօսիլ հետը, որպէս զի եթէ չյաջողի՝ ուրիշ մ'ընտրէ և իմացընէ Թագուհւոյն։ ՈԹոն՝ ուրիշ ակնկալու Թագուհւոյ մը խոստացեր էր սիրտը, և փեսայացաւ Նէապօլսոյ դշխոյին. բայց Պապն դարձեալ իրեն յորդորական պարտք դրաւ՝ գոնէ յօգնութենէ չզրկելու զդշխոյն Կիւլիկիոյ։ Այս յորդորեալ օգնութեանց մէկն այլ չհասաւ Հայոց. Իտալիոյ երկու մեծ ծովազօր դքսութիւնքն՝ որք մերոնց մերձաւորութեամբ և վաճառականութեամբ ամենէն աւելի կըրնային յուսալի ըլլալ, իրարու հետ կռուելով՝ ոչ միայն ձեռք չտուին Հայոց, այլ և անոնց ամենէն մերձաւոր և բնական օգնականը՝ զԿիպրացիս այլ զբաղեցուցին, Վենետիկեցիք դաշնակցելով զանոնք ընդդէմ Ճենովացւոց։ Մարիամայ նոր փեսայ այլ պէտք չեղաւ. իր յանկարծ աներևութացեալ Թագաւոր ամուսինն յանկարծ այլ յերևան ելաւ, այն խորհրդաւոր վերջին Լևոնն՝ որպէս Արայն կամ Էրն հայկազուն 'ի մեռելոց վերադարձեալ. և անգամ մ'այլ մրրկապատ երկինքէ՝ արև ծագեց Կիւլիկիոյ։

Բայց այս արևս արդէն խոնարհեր և մօտեցեր էր 'ի մուտս։ Հազիւ երկու կամ երեք տարի այլ

մնաց Լևոն 'ի վերայ գահուն Հայոց, հոգալու իր տունը և երկիրը, և գրգելու իր մեծասիրտ զուգակիցն ու սերունդքը: Յամին 1375 եգիպտացի և գամասկացի գունդեր՝ առաջնորդութեամբ եղբօր սուլտանին՝ վերջին ուժերնին և վրէժնին թափեցին Լևոնեանց տան վրայ. առին զմայրաքաղաքն Սիս յետ երկար պաշարման: Ժամանակակից մը այսպէս յիշատակագրէ. « Ի ՊԻԴ (Թուին)
» բարկացաւ Աստուած 'ի վերայ քաղաքին Սի-
» սոյ, ու սպարեցին զբերդն սեպտեմբերէն, ու
» մինչուր 'ի յապրիլ ժզ̃ (6), ու տուին զբերդն
» օրն ուրբաթ, ոչ այլ իրաց՝ քանց 'ի սովյ. որ
» մարծպան մի ցորենի՝ ԳՃ (300) ԳՐ. չէր 'ի գըտ-
» վել. որ կերան կատու վ'էշ. ու այս սատ (սաստ)
» էր յԱստուծոյ. յաղագս ծովացեալ մեղաց մե-
» րոց մատնեաց զմեզ 'ի ձեռս թշնամեաց մերոց:
» Ո՛վ տեսնոյր զմեր խաչերոյն արհամարհանքն,
» ու զԱստուածաշունչ գրվոյն կորաել. զաւուրբ
» սեղանացն կործանելն...»:

Այս անգամ այլ Լևոն ելաւ թշնամեաց դէմ. բայց ոչ զԼիպարիտ ունէր սպարապետ և ոչ արևմտեան օգնական. վերջի անգամն էր որ հայկական գունդն նիզակ կանգնեց դէմ իր տանը կործանողներուն. յետնիզակին վահանը գրաւ կուրծքին՝ պարթևաբար յետ քաշուելով երեսն 'ի թշնամին, և ամրացաւ 'ի լերինս, 'ի տեղի հեռաւոր, օտար և անուրէք:

Վերջին Հայպետն և Թագաւորն այլ իր արքունի և զինուորական պարագը կատարելէն ետև, յայտնի մահուանէ փախչելով՝ 'ի բազմութենէ թշնամեացն, իր Թագուհեաւ և Փիննա (կամ Ֆիմի) դստերաւ և անոր փեսայիւ Կոսիկոսի Տահան կամ Տահառ իշխանաւ, քաշուեցաւ Տօրոսի լերանց ամրագոյն տեղը, 'ի բերդն Կապանոյ, որոյ կողմանքն հիմայ Կիւլէկ-պօղազը կոչէին. և ու-

րիշ անգամներուն պէս դէմ դնելով պաշարողաց՝ սպասեց կամ անոնց հեռանալուն, կամ ամեն պաշար և հնարք սպառելուն. և այս ետքինս եղաւ։ Յետ ինն ամիս չարակրութեամբ համբերելու, և յետ զամենայն ուտելի պաշար սպառելու, մինչև զմիս և զկաշի ձիոց, Լևոն՝ իր և ընկերացը կենաց խնայելու խոստմունք առնլով 'ի պաշարողացն, անձնատուր եղաւ իրեններովն՝ 'ի գերութիւն, 'ի կապանս, յօտարութիւն եգիպտական Գահիրէի և 'ի բանտ. այլ և 'ի նեղութիւն, 'ի սպառնալիս չարչարանաց և մահու, վասն չուրանալոյ զհաւատոն։

## Զ

Բայց թէ ինքն և թէ իւրքն իրենց արժանի հաստատութիւն և համբերութիւն ցուցին երկար տարիներ. զիրենք գերող իշխանն այլ՝ սուլտանութեան հասնելով և յիշելով խոստմունքը՝ մահուան սպառնալիքը վերուց. բայց ոչ բանտարգելութեան նեղութիւնը և տխրութիւնը, և ապագային անստուգութիւնը։ Քանի մը տարի Լևոն և Մարիամ վերջին Թագաւոր և Թագուհի Հայոց՝ իրենց նախորդաց և պաշտօնէից պակասութեան պարտքը քաշեցին. ամեն կորստեան մէջ անկորուստ պահելով սրտերնուն մեծութիւնը և սուրբ հաւատոց յոյսը, բարեպաշտութ͞բ կու մխիթարուէր յանմխիթարուէ անդ. ուրիշներէ զատ յիշելով թերևս իրենց նախնին՝ Գ. Լևոնը, որդին Ա. Հեթմոյ, որ նմանապէս պատերազմի մէջ գերի ընկնելով (հարիւր տասն տարի առաջ), յետոյ աղաչանօք և փրկանօք հօրն՝ ազատեր էր։ Բայց Թագուհին Մարիամ չտեսաւ իր սիրելեաց ազատութեան օրը, թէ և իրեն թոյլ տրուեցաւ բանտէն ելնելու. բանտին հետ կենաց կապն ալ կտրեցաւ.

հաւանօրէն գերութեան սրտմաշուքն չդիմացաւ, և դեռ Լևոն 'ի բանտի եղած ատեն՝ ինքն բոլորովին ազատեցաւ մահուամբ, և թաղեցաւ Գահիրէի Հայոց եկեղեցւոյ մը մէջ։

Լևոնի մնաց մէկ հատիկ մխիթարութին, միանգամայն և սրտի այրուք իր մանկամարդ դուստրն Փիննա, որ փոխանակ իր պալատան պատշգամներէն լսելու Միջերկրական ծովուն ալեաց զբօսանքը և հին կոռիկեան քարայրներուն զարմանալի ձայները, կու լսէր դաժան շղթայից շռնչելը։ Երիկն Շահան՝ քան զծնողսն աւելի իր սիրոյն ու հաստակին սրբազան պարտք սեպելով իր որոջին և աներոջ փրկութիւնը՝ հինգ տարիէն հնարք մը գտաւ բանտէն փախչելու, և Լևոնէն թղթեր առնելով՝ բերաւ առ թագաւորս արևմտից, թէ ոչ անոր երկրին և թագաւորութեանը՝ գոնէ գլխուն ազատութիւնը մուրալու։ Շահան թղթերուն հետ բերանացի պատմեց Հայոց թագաւորական տան քաշած վտանգները՝ սկսեալ իրենց գերութենէն, և ամենուն սիրտը կու շարժէր։ Բայց ամենէն աւելի Կղեմէս կամ Րոպէրդ դերապապն յԱւինիոն՝ վառուեցաւ 'ի ջանս փրկելու զԼևոն, և գրեց առ թագաւորս քրիստոնէից. յորոց պատրաստագոյնք գտան Սպանիացւոց թագաւորքն, Յովհաննէս՝ Կաստիլիոյ և Պետրոս Դ՝[1] Արագոնի. գրեցին առ սուլտանն Եգիպտոսի, փրկանք խոստացան և տուին։

Յետ եօթնամեայ գերութեանն՝ ազատութիւն գտաւ Լևոն. ելաւ 'ի բանտէ և յաքսորանաց

1 Մասլադրի Կիպրոսի պատմութեան մէջ Հրատարակեց (Գ, 759,) զթուղթ Պետր. Դ. առ սուլտանն, գրեալ յամի 1380, սեպտ. 3. սպանիարէն։ Նոյնն գրեց և առ զօրապետն Եգիպտացւոց. այս թուղթս այլ Հրատարակեց ուրիշ մը (Bofarull)։

(1382), և փութացաւ առաջին երախտեաց շնոր-
հակալեքը մատուցանել առ միակ պատճառն ա-
զատութեան, առ Ազատարարն ամենայն աշխար-
հի. և գնաց իբրեւ ներողամիտ 'ի սուրբ քաղաքն Երու-
սաղէմ, երկայն ատեն կենալով և պտըտելով
յուխտ սրբազան տեղեաց. և այն ատեն կրցա-
ծին չափ և յետոյ այլ առատ տրօք պատուեց
զանոնք. մանաւանդ որ, եթէ ստոյգ է աւանդու-
թիւնն, իր Թորոս անուամբ որդին (որ չյիշուիր
առաջ 'ի պատմութեան) մեռաւ հոն յԵրուսա-
ղէմ, և հայրն աւանդելով զնա այն սուրբ հո-
ղոյն, Ս. Յակոբայ Հայոց մեծ տաճարին հիւսի-
սակողմը եկեղեցի մ'այլ շինեց և յիշատակա
որդւոյն անուանեց Ս. Թորոս[1]: — Այս սրբա-
զան տեղերը և յիշատակքը այնքան սիրեց հե-
զահոգի տիկինն Փիննա՝ որ չուզեց անկէ հեռա-
նալ. Թերևս ըսաւ Լեոնի, Գնա յարեւմուտս, և
եթէ յաջողիս նորէն թագաւորութիւնդ ձեռք
ձգելու՝ ես այլ կու դառնամ. ապա թէ ոչ՝ Քրիս-
տոսի սուրբ տնօրէնութեան տեղեաց ապախին
մնալով՝ 'ի հասարակաց արքայութեան անոր և
քեզ հետ թագաւորեմ:

## Է

Սանկ մեծ և սրտառուչ պարտաւորութեամբ
մեկնեցաւ Լեոն միայնակ[2]. և դարձաւ իրեն բա-
րերար և բարեկամ մարդկանց այլ շնորհակալ
ըլլալու. նաւեց եկաւ նախ 'ի Կիպրոս իր մերձա-

1 Շինութեան թուականն կ'ըսուի ՊԼԵ, 1386:

2 Լեոն իր պանդխտութեան ատեն և իր վերջի տարի-
ներն այլ ինչուան 'ի Յունաց երկիրն ճանապարհորդած
է. արդեօք չէ՞ եկած անգամ մ'այլ իր դուստրը տեսնելու,
եթէ արդարև կ'ապրէր նա յԵրուսաղէմ:

ւոր մտերմաց տեսութեան։ Անշուշտ ոչ առանց խոր և խուլ հառաչանաց նշմարելով անկէ՝ իր երբեմն տասնամեայ տառապանօք թագաւորութեան աթոռը, Կիւլիկիոյ եզերքը. և դարձեալ հոմերական պանդխտին (Ոդիսեւսի) պէս՝ արտասուոտ աչքերը և ընթացքը յարևմուտս ուղղելով, սլացաւ նախ առ քահանայապետն[1] գորովանօք շնորհակալութեամբ. անկէց առ ազատութեան մեծագոյն միջնորդսն՝ Պետրոս թագաւոր Արագոնի, և Յովհաննէս Կասդիլիոյ։ Այս ազնիւ և մեծանձն թագաւորս՝ իբրև թագակից եղբայրաբար ընդունեցաւ զԼևոն, և յորդորեց այլ իր երկիրներուն մէջ արքայաբար ապրելու. և անոնց մէջ ազնուագոյն մասը, հիմակուան աշխարհին մայրաքաղաքը՝ գեղեցիկ Մատրիտը՝ տըւաւ Լևոնի ստացուած և աթոռ. բոլոր անոր շրջակայ սահմանաց այլ ազատաբար տիրելու՝ ցորչափ ապրի. և անուանեց զնա Տէր Մատրիտայ, Վիլլա-րէալայ և Անտուխարայ։ Մատրիտցիք իրեն շնորհաւորութեան և հպատակութեան նուիրակներ խաւրեցին (2 հոկտ. 1383). Լևոն ալ իշխանութեան հրովարտակ մը հանեց (19 հոկտեմբերի), և այն տեղի տիրութիւնը պահեց մինչ 'ի մահ. նորոգեց Մատրիտու արքունի պալատը, թէ և քիչ բնակեցաւ անոր մէջ։ Մինչև հիմայ պահուի 'ի դիւանս Սեկովիոյ քաղաքին Սպանիացւոց՝ հրովարտակ մը, զոր Լևոն տուաւ Մատրիտեցւոց նոյն քաղքէն (յամին 1389) շնորհելով անոնց խնդրած ազատութիւնները. իսկ Մատրիտցիք դարձեալ խնդրեցին իրմէ, ինչպէս

1 Այս ատեն Հռովմայ հայրապետն էր Ուրբանոս Զ. բայց յԱւինիոն այլ հակառակաթոռ պապ մը կար, Կղեմէս Է. Լևոն կ'երևի թէ նախ առաջինոյն՝ յետոյ երկրորդիս այլ եկաւ, բայց հաւան չէր այս երկպառակութեան։

Կաստիլիոյ Թագաւորէն այլ խնդրեր էին, որ յետ Լեւոնի՝ Մատրիտ նորէն Կաստիլիոյ Թագին դառնայ: Լեւոն ատոր համար այլ հրովարտակ մը գրեց յամին 1391: Կաստիլիայէն անցաւ 'ի Նաւարրա, յայցելութիւն Կարոլոսի Բ Թագաւորի, որ մէկ այլ Թագաւորաց պէս պատուով ընդունելով զԼեւոն՝ ընծայեց անոր արծաթէ գեղեցկաշէն աման մը (nef) մէջը 2000 Արականի ֆլորին դրած, 20 ֆլորին այլ տուաւ Լեւոնի նուիրակին. 15 այլ իրեն հետ եղող ծաղրածուին կամ ձեռնածուին (yuglar, jongleur)[1]:

Սպանիայէն 'ի Գաղղիա անցաւ Լեւոն (1385) առ Թագաւորն Կարոլոս Զ, թէ շնորհակալութեան իրեն խոստմանցը և բարեկամութեանը, և թէ հնարք և օգնութիւն բնտռելու նորէն Կիլիկիոյ գահը հաստատելու: Նոյն բանը խնդրեց և 'ի Րիքարտ Բ Անգլիոյ Թագաւորէն: Երկու Թագաւորքն այլ իրենց հաւասարի և եղբօր պէս ընդունեցան զինքը, բայց փոխանակ անոր օգնելու՝ իրենք կերպով մը իր օգնութիւնը և ճարտարութիւնը ուզեցին, իրենց երկուքին մէջ երկայն հակառակութիւնը և կռիւը դադրեցընելու համար, որով առաջուց այլ չէին կրցած օգնել անոր. Լեւոն բնական սրտաշահութեամբն, և իր անձնական կամ ազգային շահուն սիրով՝ ստէպ ստէպ երկու Թագաւորաց և մայրաքաղաքաց կուդիմէր. և անով շահեցաւ անոնց բաւական հաշտութիւն, իրեն այլ թէ ոչ հին Թագը՝ գոնէ Թագաւորական կեանք մը: Վասն զի ոչ պակաս քան զՅովհաննէս ընդունելութիւն ըրաւ Լեւոնի Կարոլոս այլ. որ և մեծ հարկինք մ'ըրաւ Հայոց Թագաւորին, իր տէրութեան բոլոր մեծամեծները

1 Ասոնք կու պատմէ Ցրուասար հին ժամանակագիրն փռանկաց:

հրաւիրելով։ Երբ տանք հետաքրքրութեամբ կու հարցընէին անոր գիպուածները, և արևելից վիճակը, մանաւանդ Յունաց կայսրութեան և Թաթարաց բռնակալութեան, և աւելի մտադրութեամբ այլ կու լսէին, Լևոն՝ թէ զանոնք հանեցընելու համար թէ ինքզինքը՝ լաւ և երկար տեղեկութիւն տուաւ Թաթարաց զանին և Եգիպտոսի սուլտանին վրայօք, և անոնց իրեն ըրած թշնամութեանը և աշխարհքը աւրելուն. նա և խոր ու լուսաւոր քաղաքական նախատեսութե̃ իմացուց՝ որ Յունաց տէրութեան վտանգը ոչ այնչափ այս մէկէն է կամ մէկայլէն, հապա երրորդէ մը՝ որուն այնչափ ծանօթ չէին. և էր նորահաստատ Օսմանեան պետութիւնն, որոյ գլխապետն Մուրատ-Պէկ (այսինքն սուլտան Մուրատ որդի Օրխանայ) շատ կտրիճ, զօրաւոր և խոհեմ մարդ էր. ուսկից զանն և սուլտանն (Եգիպտոսի) անգամ կու պատկառէին. իսկ նա դեռ կու խնայէր անոնց երկիրները կոխելու՝ իրեն հաւատակից ըլլալնուն համար։ Անշուշտ, կ'ըսէր, Մուրատ-Պէկ պիտի առնու զԿ.Պօլիս՝ եթէ չփութան արևմըտեայք իրենց միջի պատերազմները դադրեցընելու և շատ զօրք թափելու յարևելս. նոյնպէս այլ պապերուն երկպառակութիւնը վերցընելու, որ այլազգեաց այլ արհամարհելի կ'երևէր, և անով զարևմտեայս բաժանեալ սեպելով՝ չէին վախեր անոնցմէ։ Իսկ ինքն Լևոն այս վիճակիս մէջ շատ փափագելի կու սեպէր որ Մուրատ տիրէր իրեն երկրին (Կիլիկիոյ). վասն զի, կ'ըսէր, Մուրատ-Պէկ մեծահոգի և առատասիրտ մարդ է, միայն հպատակութիւն կ'ուզէ յիշխանաց, և կու թողու որ ամենքն իրենց երկրին տիրեն։ Այս այլ աւելցուց Լևոն, թէ Մուրատ-Պէկ միայն ըզՓրանկս կու սիրէ յարևմտեայց, և կու զուարճանայ երբ անոնց վրայօք լսէ, միշտ հարցընելով

ճանապարհորդաց: — Իսկ իր կորուսած թագաւորութեան վրայ՝ երբ նորէն հարցուցին, Լեւոն համարձակ իմացուց որ առանց արեւմտեայց օգնութեան անկարելի էր ձեռք ձգելը. և թէ միայն Կռուիկոս անառիկ բերդն ազատ մնացեր էր հոն Ճենովացոց ձեռքը[1]:

Այս խօսքերով և ուրիշ պատմութեամբք Լեւոն բոլոր ունկնդրաց սիրտը շահեցաւ. Թագաւորն ըսաւ մեծամեծաց թէ պէտք է պատուեմք և հանգիստ պահեմք զԹագաւորն Հայոց, ինչպէս իրեն և ինծի կու վայլէ. ինչուան որ յաջողութեն գտնեմք զօրօք և զինուք անցնիլ յարեւելք՝ և նորէն իր երկրին վրայ թագաւորեցընել զնա: Հրամայեց Կարոլոս որ հասարակաց գանձէն ամսէ ամիս 500 ֆր. տրուի Լեւոնի (այն ատեններուան ֆրանգն ոսկի էր). և հիմայ այլ մէկէն 5000 ֆրանգ, իրեն կահ կարասիքը պատրաստելու համար: Իրեն բնակութեան տեղ այլ Ս. Դիոնիսեայ արուարձանին մէջ Սէնդ-Ուան (Saint-Ouen Saint-Audoin) կամ Ս. Անտոն մեծ ապարանքն, որ և Noble maison անուանեցաւ: Այս եղաւ Լեւոնի հաստատ բնակութիւնն իր պանդխտութեան ատեն. յորում ամեն արքունի հանդիսից մէջ կու մտնէր կ'ելնէր, աւելի քան զաւելի սիրելի ըլլալով իր հիւրընկալաց:

Բայց իր գլխաւոր խնդիրը յաջողցընելու համար՝ պէտք էր Անգղիոյ Թագաւորին սիրտն այլ շահիլ. որուն՝ կ'երեւի թէ Անգղիացիք առջի բերան քիչ մ'ընդդիմացան, Փրանկաց դէմ ատելութեան և պատերազմին պատճառաւ. և պատմիչաց տարաձայնութենէն որոշ չիմացուիր՝ թէ առջի անգամ 1385ին վերջերը ինչպէս հոն գա֊

1 Որ էր 'ի Saint-Antoine փողոցին, և Թագաւորանիստ պալատին դիմաց:

ցեր և դարձեր է. բայց յաջորդ տարւոյն սկիզբները նորէն գնաց Գաղէէն 'ի Տուվր անցնելով. ուր Րիքարտայ հօրեղբարքն բանակով զօրաց պահապան կեցեր էին, և իրեն հետ մարդ գնելով խռուրեցին Թագաւորին: Րիքարտ առանձին ընդունելութենէն ետև՝ իր խորհրդականաց ժողովին ներկայացուց զԼևոն՝ անոր խնդիրքը լսելու համար. խորհրդականք կասկածելով որ Կարոլոսի Թելադրութեամբ եկած է նա՝ քիչ մը դժարեցան, և Կանդորբերեայ արքեպիսկոպոսն կերպով մը մեղադրեց իրեն՝ զինեալ մարդիկներով գալը: Րիքարտ իբրև Լևոնի սիրտն առնըլու համար շատ և Թանկ բաներ ընծայեց, զորոնք չընդունեցաւ Լևոն, բաց 'ի մատանիէ մը որ 500 ֆրանգ (ոսկի) կ'արժէր. շուտով դարձաւ 'ի Գաղղիա, ու պատմեց Կարոլոսի իր բանագնացութիւնը. զոր իբրև ինքն իր գլխուն հասարակաց բարւոյն համար ըրած էր, և ոչ 'ի խնդրոյ նորա, և այսպէս այլ իմացուցեր էր Անգղիացւոց: Կարոլոս իմանալով անոնց ծանրասրտութիւնը՝ սկսաւ նորէն պատրաստուիլ յԱնգղիա վազելու: — Բայց Րիքարտ նորէն խորհրդածելով՝ զիջաւ Լևոնի բարի խրատուց, և մէկէն հրովարտակ հանեց խօսելու հաշտութեան վրայ, վասն փառաց Աստուծոյ և գԹոյ մարդկութեան և վասն շնորհաց Լևոնի Թագաւորին Հայոց. (et auxi à les instanz prières et requestes, qui nous ont este faites par *notre cousyn, le roi d'Arménie*). և Լևոնի երախտեաց համար այլ տարեկան Թոշակ կապեց (1386 փետր. 3) 1000 լիրայ. իրեն բնակութեան տեղ մ'այլ: Որոց շնորհակալութեան և խնդրոց յաջողութեան համար՝ նորէն գնացեր է Լևոն 'ի Լոնտոն, ինչպէս Րիքարտոսի զանազան հրովարտակներն և գրերն կու յայտնեն. որոց մէկով (18 մարտի 1386) կու պատուիրէ՝ որ ազատ Թողուն ըղ-

Լեւոն 40 ձիաւորով և ուրիշ պաշտօնէիւք երթալ գալ իր երկրին մէջ․ Լեւոնի այլ կու գրէ (12 մայիս) որ ինչուան 100 ձիաւորով կարենայ պտըտիլ յԱնգղիա մինչև նոյն տարւոյն վերջերը․ դարձեալ հրովարտակաւ պատուիրէ (24 հոկտ.) որ հացարարապետն կամ տաճարապետն (magister hospitii) Լեւոնի՝ Յովհան Ռոսպեան Johannes de Rusp) կարենայ ազատութեամբ գալ հինգ մարդով՝ և վեց ձիերով, և՛ աղեղամբք և 24 փետրաւոր սլաքօք․ քանի մ'օր ետքն (28 հոկտ.) ուրիշ գիր մ'այլ, որ հացարարապետն կարենայ առանց մաքսի մտցընել 'ի Գաղղիոյ յԱնգղիա 150 սափոր գինի՝ Լեւոնի մարդկանց համար․ նոյնպէս գիր մ'ազատութեան Լեւոնի սենեկապետին համար (8 նոյեմբ.)։ — Թագաւորին հօրեղբայրն Կլոսդըրի դուքսն այլ մեծ պատուով և սիրով հիւր ընդունեցաւ զԼեւոն իր պալատին մէջ։

Լեւոն այս երկու թագաւորաց հաշտութեան համար կրցածն ընելէն ետև՝ պարապ ժամանակները ուրիշ կողմեր այլ կ'երթար, ինչպէս յիշեցինք 'ի Սեկովիա գտուիլն յամի 1389։ Նոյն տարին մեծ քաղաքական և արքունի հանդէս մ'եղաւ 'ի Բարիզ (20 օգոստ.) 'ի պատիւ Թագուհւոյն․ կոչնոց ատեն, յորում շատ արքայազուն հիւրք այլ կային, զԼեւոն բազմեցուցին Թագուհւոյն քով։

Ասոնք աղէկ, բայց Լեւոն իր գահուն վրայ չէր․ Գաղղիոյ և Անգղիոյ հաշտութիւնն այլ չյաջողեցաւ․ գոնէ շատ ուշ։ 1391ին մեծ ժողով մ'եղաւ յԱմիէն քաղաքի Գաղղիոյ վասն հաշտութեան․ ուր եկեր էին Անգղիոյ դեսպանքն, հօրեղբարք Թագաւորին․ հոն էր և մերս Լեւոն․ երկու ազգաց խնդրոյն վրայ խօսելէն ետև՝ Կարոլոս խօսեցաւ Լեւոնի Թագաւորութեանն համար այլ․ Անգղիացւոց դեսպանքն խոստացան զայն այլ յիշե-

ցրնել իրենց Թագաւորին։ Երկու տարի վերջը՝ (1393) գարնան առեն նորէն հաշտութեան պայմանադրութիւն կ՚ըլլար ՚ի Գալէ, իսկ բ Կարոլոս յԱպըվիլ էր. հոն եկաւ Լեւոն Ցունաց երկրէն դառնալով, ուսկից գալու առեն հեռուէն անգամ մ՚այլ, և վերջին անգամ, ՚ի մայրն մօտեցած որբու պէս, ողջուներ էր իր հայրենեաց և արքայութեան սահմանները (Կիւլիկիա), չիշխելով և յետ իբր 20 տարւոյ ոտքը ներս դնելու. վասն զի իմացաւ և իմացուց որ այլազգիք լցուեր են հոն, և Կոռիկոս բերդն միայն դեռ ազատ մնացեր էր ՚ի ձեռս քրիստոնէից։

Զայս լսելով նորէն վառուեցան շատ Գաղղիացիք՝ և զէնք ու նշան խնդրէին երթալու հոն յօգնութիւն Լեւոնի. և կու սպասէին ժամ մ՚առաջ հաշտութեան հռչակուելուն։ Եւս առաւել Լեւոն (անգէտ իր սպառեալ ժամանակին), քանի մ՚ամիս ետև նորէն փութացաւ գնաց ՚ի ժողովն դեսպանաց, որք էին երկերկու հօրեղբարք երկու Թագաւորացն, ՚ի Լօլինկէն՝ Գալէի մօտ։ Հոն վերջին սրտի Թելադրութեամբ խօսեցաւ իր և Հայոց Թագին վերականգնելուն համար։ Այս անգամ դեսպանքն և մանաւանդ Կլոսդըրի դուքսն՝ աւելի տաքութեամբ ընդունեցան Լեւոնի խնդիրքը, և աւելի հաւանականութեամբ խոստացան. Լեւոն այլ աւելի մեծայոյս դարձաւ. վասն զի հաշտութեան պայմանքն երկու կողմին այլ հաճոյ կ՚ըլլային. և քիչ ատենէն իրենց Թագաւորաց տանելով՝ ձեռնագրեցան կնքեցան, զինադուլ և հաշտութիւն ըրին գոնէ չորս տարուան համար։ Թ՚երևս երկու Թագաւորներէն աւելի այս հաշտութեան վրայ զուարճացողն՝ պիտի ըլլար անոր միջնորդն՝ Լեւոն, Թագաւորն և Թագատէրն Հայոց. բայց.... աւա՜ղ. գրեթէ հաշտութեանն հետ կընքուած էր և Լեւոնի կեանքն։

## Ը

Տարի մը և աւելի առաջ (1392 յուլիսի 20) Լեւոն իր կտակը գրեր էր Յոհան տը Ֆոլըվիլ Գաղղիոյ արքունի մուրհակաց գլխաւորին ձեռօք. յորում յետ յանձնելոյ զհոգին առ Աստուած՝ նախ կու պատուիրէր որ մարմինը թաղուի 'ի վանս նորահաստատ Կելեստինեան կամ Երկնային (Célestins) անուանեալ կրօնաւորաց 'ի Բարիզ. և եթէ անոնք չուզեն՝ ուրիշ վանք մը. և վրան պարզ ճերմակ զգեստ մը հագցընեն, գլուխն և ոտքն բաց թողլով. դագաղը վերցընեն 12 աղքատք, չորս այլ ջահակիր աղքատք, ամենքն այլ ճերմակազգեստ: Յետոյ կու պատուիրէր իր ունեցած պարտքերը վճարելու. և ապա զանազան գումարներ կու սահմանէր այլ և այլ եկեղեցեաց և վանից. իր թաղուելու եկեղեցւոյն այլ կու թողուր բոլոր իր մատրան սպասքը, որպէս զի իր հոգւոյն համար աղօթեն: Վերջը կու պատուիրէր որ մեռնելուն պէս՝ բոլոր այս պանդխտած երկիրներուն մէջ ունեցած ստացուածքը չորս հաւասար մասն բաժնուի. առաջինն տրուի աղքատաց և վերոյիշեալ բարեպաշտութեան տեղեաց. երկրորդ մասն տրուի իր թաղուելու եկեղեցւոյն, ուր ամեն օր իր հոգւոյն համար մէկ երկու պատարագ մատուցանեն. երրորդ մասն տրուի իր մէկ օտարածին որդւոյն՝ Կի կամ Կիւյոդ կոչուած, որ դեռ տղայ էր, և անոր դաստիարակութեան ծախքն հոգալէն ետև՝ երբ քսան տարուան ըլլայ՝ դրամագլուխն իրեն յանձնուի. իսկ եթէ նա քսան տարիէն առաջ մեռնի՝ աղքատաց տրուի: Իսկ ընչից չորրորդ մասն բաժնուի իր ամեն սպասաւորացը, ուր որ ըլլան: Եւ այս ամեն բանս կատարել կու յանձնէ իր սենեկապանին և հազա-

րապետութիւն։ Իսկ ընդհանուր կամ բարձր կտակակատար կ'աղաչէ որ ըլլան (բաց 'ի Գաղղիոյ Թագաւորէն), Թագաւորքն Անգղիոյ, Կաստիլիոյ և Արագոնիոյ, զորս իրեն համշիրակ (cousin) կ'անուանէ։

Ի 29 Նոյեմբերի 1393 տարւոյն՝ Բարիզու Դուռնէլ (Tournelles) ըսուած պալատին մէջ՝ պանդըխտութիւնն և կեանքը կատարեց Լևոն Զ, վերջին Թագաւոր Հայոց. և Թագաւորական պատուով ու հասարակաց սգով յուղարկեցաւ յեկեղեցի վանաց Երկնայնոցն, բարերարն բազմութեան կարօտելոց և բարեկամն Թագաւորաց։ Իր պաշտօնեայքն և սպասաւորքն ամենքն այլ Ճերմակ հագած՝ անոր որոշած աղքատներովն յուղարկաւոր գնացին. իրեն այլ Ճերմակ հագուցեր էին, ոչ իր ուզած խոշոր լաթովն, այլ արքունի բեհեզով. Ճերմակազարդ անկողնի վրայ դրած, գլխուն քով այլ դրած ոսկի Թագ մը։ Հին ատեններէ սովորութիւն էր Հայոց Թագաւորաց՝ ոչ միայն 'ի կեանս՝ այլ և 'ի մահուն սպիտակազգեստ երևիլ. այնքան գերազանց սեպուած էր Հայպետն առաջի ժողովրդեան։ Եկեղեցւոյն աւագ սեղանին քով կամարի տակ պատին մէջ հաստատած դրին Լևոնի գամբանը սև տապանաքարիւ, որոյ վերայ հանգուցին իր չափով արձանն Ճերմակ մարմարէ՝ արքայական նշաններովն։ Հոն 400 տարի հաւատացեալ ննջեցելոց քունը քաշելէն ետև, անցեալ դարուն եղերը Փրանկաց քաղաքական մեծ շփոթութեան ատեն, սրբապիղծ ձեռք՝ ինչպէս ուրիշ Թագաւորաց՝ այսպէս Հայոց վերջին Թագաւորին հանգիստն այլ խռովեցին. խորան և գամբան վեր 'ի վայր եղան. դարական խաղալացեալ ոսկերքն՝ ժամանակէն աւելի՝ բռնաբարութեան խաղալիկ եղան. Կիւլիկիոյ Թագաւորաց Թշնամի Գեօլէմէններուն չըրածը՝ աշ-

խարհիս ամենէն բարեկիրթ կարծեցեալ ժողովուրդն ըրաւ. այդքան իրարու մօտ են կիրք և կրթութիւն: Կենօքն հալածեալ, հանգիստ վախճանեալ, յետ մահուն այլ իր հալածանքը կրեց Լևոն: Բայց գարձեալ բոլորովին անբաղդ չեղաւ. . խնայիչ ձեռք ազատեցին իր դամբանը, և տարին Թանգարանի մը մէջ դրին, ուսկից յետոյ 'ի խաղաղանալ երկրին՝ Փրանկաց Թագաւորաց մնացեալ նշխարօք և տապանօք տարին զետեղեցին Ս. Դիոնեսիոսի հոյակապ վանաց տաճարին տակ, ուր որ ականատես եղած՝ քեզ այլ ցուցի, Հայկակ: Հոն է մինչև ցայսօր Հայոց Արքին Թագաւորէ Լևոնի մահարձանն իր սև անկողնովը, իր արքունի նշանօքն և արձանագրութեամբ, որպէս և տեսնես. բայց նշխարքն ո՞ւր...:

Լևոնի երկու գլխաւոր բարեկամքն և պաշտպանքն՝ Ռիքարտ Բ և Կարոլոս Զ՝ խնամով հոգացան անոր կտակը կատարելու. և իրենց վկայութիւններն կամ անդորրագիրքն այլ դեռ կուպահուին 'ի դիւանս: Ասկից այլ յայտնի կ'երևի այս երկու Թագաւորաց մեծարանքն և սէրն 'ի վերայ Լևոնի, և սաստ աչալուրջ, սիրելի և անձնանուէր բնաւորութիւնն. զոր սիրեմ ես, Հայկակ, համարիլ չքնաղագոյն կամուրջ մը Գաղէի վրայ ձըգուած ընդ մէջ Գաղղիոյ և Անգղիոյ, ուսկից անցուց Լևոն այս երկու մեծ և նախանձընդդէմ ազգաց խաղաղութիւնը: — Արդեօք այսպիսի բաղդ կամ փոխարէն մը պիտի ունենա՞յ Լևոնի սեփականեալ ազգն ուրիշ անգամ մ'այլ: — Փրանկաց Թագաւորն որ երկարակեաց եղաւ յետ Լևոնի, անոր թողած ղաւկին վրայ այլ խնամք ցըցուց, և իր մահուանէն տարի մ'առաջ (1421) հաճութեան թուղթ մը գրած է առ ժողով երեցանց Սուասոն քաղաքի՝ զԿիւյոդ իրենց եկեղեցւոյն կանոնիկոս ընտրելնուն համար. վասն զի այս ժա-

ուանդս Լեւոնի՝ եկեղեցական վիճակ ընտրեր էր, և յառաջ 'ի Պրի (Brie) սարկաւագապետ էր եղած [1]։

Իսկ Լեւոնի բուն հարազատն և միակ նշխար իր և Հայոց արքունի տան որբացեալ և այրիացեալ դուստրն Փիննա, ըստ աւանդութեան, վախճանեցաւ յԵրուսաղէմ, որպէս նուիրական տիրուհի՝ Հայ հայրենեաց սրբազան կրակին մոխրոց վրայ հսկելով, և սքանչելի խելամտութեամբ քան զչքնաղ հաւն փիւնիկ, այն անձինացեալ կայծակը խորհրդաբար խառնելով՝ Քրիստոսի կենդանաթաղ գերեզմանին անմահարար նշուլից հետ։

Այսպիսի են, Հայկակ, համառօտ յիշատակք Լեւոնի վերջնոյ։ Աւելորդ է մեզի հոս իրմէ ետև իր երկրին և ժառանգութեան անցքը քննել. այլ այսչափս հարկ է ըսել Հայոց թագաւորութեան վրայօք, որ Լեւոնի մահը լսելուն պէս՝ Յակոբոս Ա թագաւորն Կիպրոսի իբրև ազգական և ժառանգ Լեւոնի՝ պսակեցաւ անոր թագովն այլ, և անուանեց զինքը թագաւոր Կիպրոսի, Երուսաղեմի և Հայոց [2]. այս անունս անցաւ իր յաջորդաց այլ մինչև 'ի յետինն, որ է դշխոյն Կատարինէ՝ դուստր Գոռնարոյ Վենետիկեցւոյ. սա անժառանգ ըլլալով յամին 1489 տուաւ զկղզին 'ի Վենետիկեցիս, և ինքն այլ մեռնելով 'ի Վենետիկ (1510) իր գերեզմանին վրայ այլ թողուց ոսկեքանդակ գրով

1 Ըստ ոմանց երկու էին անհարազատ որդիքն Լեւոնի, մէկն եկեղեցական, միւսն զինուորական. բայց կտակն զմէկ միայն յիշէ։

2 Արդեօք զա՞, թէ մանաւանդ զնոյն ինքն զԼեւոն կ'իմանայ մեր նախ ծանօթութեան մէջ յիշեալ վիպասանն Լիւսինեանց, ըսելովն, թէ մինչև ցայսօր, (որ է 7 օգոստոսի, 1394, ինն ամիս յետ մահուն Լեւոնի), Հայոց թագաւորքն Լիւսինեանց նշանները և մականունը կրեն։

Հայոց տիկնութեան անունը։ Բայց իրմէ առաջ Յակոբոսի թոռն Յովհաննէս Գ Թագաւորին՝ օրինաւոր մանչ զաւակ չունենալով, յետ մահուան իր դուստրն Գարլոդդա՝ որ այրի մնացեր էր 'ի Թագաւորէն Փորդոգալի, վեց եօթն տարի Կիպրոսի (և անուամբ՝ Հայոց) Թագուհի եղած էր. և երբ Յակոբ Բ անհարազատ որդի Գ Յովհաննու հալածեց (1464) զԳարլոդդա, սա իր իրաւունքը տըւաւ (յամին (1482) առ Կարոլոս Ա դուքս Սաւոյայ Իտալիոյ. այս պատճառաւ տասը յաջորդքն և ժառանգք (որ հիմա Թագաւոր կոչուին Իտալիոյ) իրենց իշխանական պատուանուանց մէջ կու համրեն և զանուն Թագաւորի Հայոց։ — Հաւանական է որ աստնցմէ աւելի մերձաւոր ժառանգք կամ իրաւատեարք կային 'ի Կիւլիկիա 'ի ցեղէ Հեթմեանց և Կոստանդեանց. և Թերևս ոմանք փորձած այլ ըլլան իրենց իրաւունքը ցուցընել. այս անտարակոյս է որ շատ իշխանք և պարոնայք դեռ Լևոնէն դար մ'ետք այլ՝ ազատօրէն իրենց բերդերուն կու տիրէին [1]. ինչուան Սիս մայրաքաղաքն այլ նորոգուելով՝ գրեթէ անոնց ձեռքն էր. և անոնց հետ այլ պատերազմելով առաւ Տուլղատրցի կամ Զիւլգատրեան Շահսուար պէկն Մարաշու՝ յամին 1467. քանի տարի մը վերջը Օսմանեան սուլտանք տիրեցին մնացեալ բերդերուն և ամուր տեղերուն, բաց 'ի քանի մ'ամուր տեղեաց և հասարակութեանց Հայոց, որոց նոր և յետին դէպքն՝ հիմայ ծանօթ են ամենուն։

1 Վերոյիշեալ վիպասանն կ'ըսէ, թէ յետ մահուան պայազատին Գիւիտոնի՝ իր պայազատքն շատ նեղութեանց և սրածութեան տակ ընկան, և ինչուան հիմայ այլ կու տևէ. Et sachiés que ses hoirs ont eu depuys moult affaire, comme il appert encores au temps present, et en ont eu moult d'anuys et de pestilence, comme a apparu et encores appert.

Արեւմտեայք այլ փորձեցին կերպով մը իրենց խոստմունքը և պարտքը կատարել առ Լեւոն. երկու տարի յետ անոր մահուն՝ Յ. կոմս Նըվէրայ (Nevers) և ուրիշ ազատ Գաղղիացիք զօրագնդաւ գնացին յօգնութիւն Թագաւորին Մաճառաց, որ կու խոստանար նախ Յունաց օգնելու, և յետոյ Լեւոնի երկիրն այլ ազատելու. բայց Նիկոպօլեայ քով ('ի Բուլղարս) յաղթուելով 'ի սուլթան Պայէզիտայ (1395, հոկտ. 27), լռեցին ամենայն այդպիսի յոյսք և մտածութիւնք:

# ԼԲ

# ՖԻՄԻ

## 3 Դեկտեմբերի.

### Ա

« Ընկալ, ով աստուածասէր և գթասէր Հոգի, մեծդ
» ըստ մարմնոյ և բարգաւաճ ըստ ոգւոյ, ծիրանածինդ
» ՖԻՄԻ, զբաղձալին քո, երկամբք ձեռին մեղապարտիս
» Յովհաննու եպիսկոպոսի կրսերս եղբօր հօր քո. որով
» յԱստուած եւ յաստուածայինսն խոկասցիս միշտ. եւ
» տրտմեալ սրտի քո սփոփանս սովաւ տացես. գիտե-
» լով՝ զի անփական է մարդկան նըժդեհութիւն և պան-
» դըխտութիւն և փորձանք: Որոց անդորր տացէ ձեզ՝ որ
» ամենահնար է »:

Այս վայելուչ և սրտառուչ յիշատակարանս՝ զոր հոս իր սկզբնագրէն օրինակեալ տեսնես և կարդաս, Հայկակ, հանուած է Յովբայ և Սողոմոնի գրոց օրինակէ մը, մեզմէ 600 տարի առաջ գըրուած. զոր ես երբ առաջին անգամ կարդացի, երկար կանգ առի: Այն գրոց երկու մեծամեծ աննման և աստուածաշունչ հեղինակներն՝ (Յոբ և Սողոմոն) յիրաւի մտացս մեծ մասը կու գրաւէին, բայց անոր առաջին ստացողն՝ զսիրտս կու գրաւէր: Վասն զի ըստ անսուտ վկայութեան իր սրբազան և մերձաւոր անձին՝ այն ստացողն, այն

գրեթէ դեռ մեզի անծանօթ Ֆիմին՝ մեր անցեալ Թագաւորաց մէկուն, դուստր է եղեր, և իր կենաց ամէնէն զգալի երևոյթն այլ՝ փրփրեալ սէրքն. և ոչ այսչափ միայն, այլ և աստուածասէր և գթասէր հոգի մը՝ կու վառէ եղեր այն սիրտը։ Այսպիսի սրտի մը հանդիպիլ և զանց ընել՝ սիրտ չունենալ է։ Ձոր ու քար արձանի կտոր մը, դաստակ մը, մատ մը՝ իր փորուածքին ճարտարութեամբ կու յափշտակէ կրթուած աչք ու միտքը՝ առ ճարտարապետն և առ բուն գաղափար պատկերին. իսկ նշանակք այսպիսի սրտի մը՝ ո՞րքան աւելի սիրալի և սրբազան պիտի ըլլան զգաստ հայրենասիրաց. մանաւանդ եթէ գուշակեն որ այն սրտին տրամութիւնն՝ կենօքը չափ քշեր է, թէ և երկնաւոր յուսով կու քաջալերուի եղեր։

Ես չվախցայ և չեմ վախեր նաև Յոբայ մը քով կարեկցութեամբ և զարմանօք տեսնել այդպիսի Ֆիմիկ մը. վասն զի եթէ այն համբերողաց նախահօրն[1] ամէն տեսակ ցաւ ու զրկանք կրեց եօթը տարի, վերջը 170 տարի այլ վայելեց զբարիս երկրի՝ 'ի մէջ բազմութեան զաւակաց, թոռանց և թոռնորդւոց, զի « Տէր անձեցոյց զՅոբ... և ետ Տէր » կրկին քան որչափ ինչ էին յառաջագոյն Յո- » բայ 'ի յաճախութիւն... օրհնեաց զվերջինն Յո- » բայ քան զառաջինն. և էին խաշինք նորա ոչ- » խարք 14000, ուղտք 6000, լուծք եզանց 1000, » և այլն. և վախճանեցաւ ծերացեալ և լցեալ աւուրբք »։ Եւ եթէ իմաստունն Սողոմոն (առանց Յոբայ պէս վշտակրելու) լաւ ճանչցաւ և վկայեց թէ ամենայն ինչ ունայնութիւն ունայնութեանց է, սակայն չծածկեց այլ՝ թէ « զամե- » նայն զոր ինչ խնդրեցին աչք իմ՝ ոչ զրկեցի

1 Այսպէս անուանէ զՅոբ՝ իմաստասէր կաթուղիկոսն մեր Յովհաննէս։

» 'ի նոյանէ, և ոչ արգելլի զոխրա իմ յամենայն
» ուրախութենէ ». որոց մէջ թաթաւեալ թա-
ղեցաւ ինքն այլ։

Իսկ Ֆիմի... Այժ, և սա անոնց նման ծիրանա-
ծին էր, և Պէծ ըստ Տորինոյ, այլ և Քարգաւած ըստ
Ռէնոյ. Թագաւորական օրիորդ, մեծատուն և ի-
մաստուն. Թերևս ինքն այլ վայելեց 20 տարի մը՝
երկրաւոր մեծութիւն և բարիք, բայց այլ ՛աւելի
կրեց ցաւ ու չարիք, և որ մեծն է՝ ոչ յետոյ Յո-
բայ պէս կրկին աճեցաւ, և ոչ անոր և Սողոմոնի
պէս 'ի գահոյսն վախճանեցաւ. այլ անշուք և ան-
շփոթ մենարանի մը մէջ, միակ և յետին սփոփանս
վրդովեալ սրտին՝ գանելով այս իմաստութն և մեծա-
տուն Թագաւորայ գրքոյկը, զոր Լիր հօրեղբայրն
Յովհաննէս եպիսկոպոս՝ գրեց իր Յետին Էրկամէ+, և
զարդարեց պատկերօք և երանգօք և ընծայեց իր
Թոռնէլին։ Անշուշտ շատ հեղ կաթկըթած են հե-
զիկ և պայծառ մարգարիտք արտասուաց սգա-
ւոր թագուհին՝ այն կրկնակի խնկելի էջերուն վրայ,
որոց մէկին վրայ գրուած էր ահաւասիկ հոս կար-
դացածդ։

Թէպէտ և ոչ մեր պատմիչք և ոչ այս իր յի-
շատակագիր հօրեղբայրն՝ կու ծանուցանեն թէ
ինչ կեանք և ինչ կիրքեր ունեցաւ Ֆիմի, և ո՞ր էր
գլխաւոր պատճառ տրտմութեան սրտին. սա-
կայն միացեալ քանի մը հարևանցի և համառօտ
գրուածներէ՝ թէ մերոց և թէ մանաւանդ օտա-
րաց, փափագեցայ պրպտել անոր գաղտնիքը. և
այն կոտրտած յիշատակներէն՝ եթէ կարելի է՝
նորոգել կանգնել ընկած տրտմած ազնիւ սիրտ
մը, որոյ հանգստեան յիշատակը՝ այս օրուանս
(դեկտեմբերի 3ին) կու նշանակէ մեր Ռուբինեան
Թագաւորաց Յայսմաւուրքն՝ մէկ տողով մը։

## Բ

Արդ Ֆիմի[1] դուստր էր Զապէլի և Հեթմոյ, այն մեծատոհմ և մաքրակենցաղ ամուսնաց՝ որք կրնան ընծայուիլ յօրինակ Թագաւորաց. և որոց զաւակ ըլլալն իսկ մեծ փառք և բաղդ էր. բայց անոնց հոգւոյն և սրտին՝ քան թէ արեանը նմանութեամբը՝ աւելի մեծ եղաւ Ֆիմի. և ըստ այսմ՝ գերազանց իր հարազատաց մէջ այլ. որոց երեցագոյններէն մէկն էր, և հինգ քերց մէջ՝ ինքն երկրորդ, թէ և հարսնութեան վիճակաւ՝ դարձեալ ամենէն առաջ անցաւ: Վասն զի իր անդրանիկ քոյրն Զապլուն՝ իրմէ վերջը (1254) տրուեցաւ 'ի կնութիւն Պեմունդի Զի՝ Բրընձին (իշխանին) Անտիոքայ, որ նախապատիւ էր 'ի մէջ փռանկ իշխանազանց յերկրին Ասորւոց. իսկ Ֆիմի՝ երկու տարի այլ առաջ խնդրեցաւ և ընծայեցաւ 'ի հարսնութիւն Յուլիանոս Իզլինեան, և 'ի տիկնութիւն Սիդոնի: Այս երկուքին (տիրոջ և տեղւոյն) վրայօք՝ կ'արժէ նախ տեղեկանալ. մանաւանդ որ Ֆիմիի կենաց և կրից ծանօթ դէպքերը՝ գրեթէ միայն ասոնցմով կրնամք ժողվել:

Երբ առաջին անգամ Խաչակիրք սուրբ Երկրին տիրեցին (յամին 1099), մեծ պատերազմով մ'այլ զարկին այլազգիները՝ հին այլազգեաց պարծանք և հսկայ Գողիաթու հայրենեաց (Գէթ քաղքին) մօտերը, զոր ոմանք նոյն սեպէին Յունաց և Հռովմայեցւոց Յամնիա կոչած քաղաքաւանին հետ, որ և մինչև հիմայ Ճէպնէ կոչուի, և մօտիկ է 'ի Ռամլէա (հին Արիմաթեմ): Այս յետին քաղաքիս մօտ այլ երեք տարի վերջը պատերազմ մ'եղաւ, յորում ընկաւ և Գաղղիացի կոմսն

[1] Եւֆիմիա կամ Եւֆիմէ անուանն նուազականն է:

Ծարդրի՝ Ստեփանոս․ որոյ երկու որդիքն զրկուելով իրենց հայրենի կոմսութենէն, ՚ի Պաղեստին կու գնուորէին ընդ Խաչակրաց․ մինչև Փուլկ կամ Ֆուլք Թագաւորն Երուսաղեմի՝ անոնցմէ կրտսերին՝ որ Պոլիան (Պալտուին) կոչուէր՝ տուաւ ՚ի ժառանգութիւն նախայիշեալ Ցամնիա քաղաքաւանը, որ այն ատեն բաւական բարգաւաճ էր․ և անունը փոփոխուելով կոչուեցաւ Իպլէն կամ Իպլին, Իպըլէն, Էպուլին, և այլն։ Պալիան՝ քաղաքին անունը սեփականեց իրեն և իր տոհմին․ որ շատ զօրացաւ և աճեցաւ, տարածեցաւ բոլոր Փիւնիկիոյ եզերքը, և Կիպրոսի Թագաւորութեան մէջ․ անանկ որ գրեթէ ԺԳ-ԺԵ դարուց մէջ՝ հոն Լատինաց կամ Փռանկաց ամենէն հռչակաւոր տոհմն էր (յետ Լուսինեանց Կիպրոսի)։ Պալեանու որդւոց և թոռանց մէկն շինեցին կամ կարգաւորեցին Les Assises de Jérusalem ըսուած անուանի օրինագիրքը, որով կառավարէին Թագաւորք Երուսաղեմի և Կիպրոսի, իշխանք Լատինաց յարևելս, և նաև ըստ մասին՝ մերազգի Կիլիկիոյ Թագաւորք։ Պալեանայ պայազատքն իբրև հպատակք Երուսաղեմի Թագաւորաց՝ անոնցմէ ժառանգութիւն առին գրեթէ բոլոր Փիւնիկիոյ կամ Ասորւոց ծովեզերեայ քաղաքները և մանր իշխանութիւնները․ որոնք երբեմն Դամասկոսի, Հալէպու և Եգիպտոսի սուլտանաց ձեռքը կ՚ընկնէին, երբեմն Փռանկաց, այսինքն Թագաւորին Երուսաղեմի, և յետոյ Կիպրոսի։

Այս Թագաւորութիւնս՝ բաց իրեն սեփական վիճակներէն՝ չորս գաւառ կամ Պարոնութիւն ունէր, զոր պայազատութեամբ կու տար որու որ կ՚ուզէր։ Այս չորս[1] պարոնութեանց մէկն էր

[1] Միւս երեքն են․ Ա, Ցոպպէ և Ասկաղոն․ Բ, Գալիլեա․ Գ, Կրակ, Մոնրէալ, Հեբրոն։

Սիդոն քաղաքն ծովեզերեայ, որ բաւական ընդարձակ վիճակօվք. յորում էին Կեսարիա, Բեթսան և Պէյֆօրտ (Գեղեցիկ-բերդ) նշանաւոր ամրոցն: Այս մեր պատմութեան (Ա. Հեթմոյ թագաւորութեան) ատենը՝ Սիդոնի տէրութիւնն այլ անցեր էր Իպլինեան տոհմին, և տիրէր զօրաւոր իշխան[1] մը, Պալեան (Գ կամ Դ) որդի Յովհաննու՝ տիրոջ Պէրութի, (զոր կ'անուանէին le vieux sire de Berouth). որ և Կիպրոսի թագաւորութեան պայլ էր. Պալեան ալ անոր պայլ անուանեցաւ (1246ին, բայց տարիէ մը մեռաւ, 1247): Իր այրին Մարգարիտա որ Յովհ. Պրիենայ (Երուսաղեմի թագաւորին) եղբօր դուստրն էր, կու հոգար թէ տէրութիւնը և թէ իր մանչ պայազատ որդին Յուլիան կոչուած: Պալեանայ մէկ հօր եղբօրորդին կոմսն Յովհան Իպլինեան[2] Յոպպէի տէր էր, և շատոնց առած էր 'ի կնութիւն՝ Հեթմոյ քոյրը՝ Մարիամ. զոր մեր յիշատակագրաց մէկն փռանկաբար կոչէ Կոմս-Մարի գոնտէս Ճաֆան (Marie countesse de Jaffe). Իսկ Պալեանայ պայազատն և տէրն Սիդոնի Յուլիան՝ առաւ զՖիմի. ինչպէս յետ քիչ ժամանակի՝ Տիւրոսի տէրն այլ (Սրոյ տէրն՝ ըստ մեր պատմըչաց) Ամաւրի Լիւսինեան՝ առաւ 'ի կնութիւն զՋապլօն՝ դուստր Գ Լևոնի, որդւոյ Հեթմոյ և եղբօր Ֆիմեայ: Գրեթէ ԺԳ դարուն կէսը բոլոր Ասորւոց նշանաւոր քաղաքաց և տէրութեանց տիկնայք՝ Հայոց նոր թագաւորութեան օրիորդներն էին. ոչ միայն 'ի Փիւնիկէ, այլ և

1 Փրետերիկոս Բ Գերմանիոյ կայսրն՝ իբրև թագաւոր Երուսաղեմի, այն թագաւորութեան բոլոր տէրութեանց վրայ իրեն երեսփոխան դրեր էր այս Պալեանը:

2 Անիկայ է վերջին և բուն կարգադրող Երուսաղեմեան օրինագրոց:

բարձրագոյն գաւառաց վրայ, յԱնտիոք, 'ի Կիպրոս, և մինչև 'ի Բիւզանդիոն:

Սաոնյմէ էր և Ցիմի, իբրև 14 տարեկան, երբ (1251) պատանին Յուլիան պայազատն Սիդոնի և իր խնամակալ մայրն Մարգարիտ՝ խնդրեցին զնա իրենց հարս. որ և շատ հաւանօրէն՝ առաջին հարսն եղաւ իր հօր աղջունի դարպասէն, երբ մեծ շինութեան և փառաց մէջ էր այն աղջունիքն. երբ չորս կարիճ և մեծիշխան եղբարք Թագաւորին Հեթմոյ՝ Թէ և Թիկունք էին անոր, և երկուք այլ ալօթիւք օգնէին, (Բարսեղ արքեպիսկոպոսն Դրազարկու, և կրսերն Յովհաննէս Բարոն), և ամենուն վրայ հսկէր՝ հինաւուրց եղենոյ պէս հովանանալով՝ ծեր և առոյգ արքայահայրն Կոստանդին: Յուլիանու և Ցիմիի պսակին պայմաններն, այսինքն օժտին վերաբերած խնդիրքն և դաշինքն՝ բաղդովլի պահուած գտուեցաւ Մալթայի ասպետաց դիւանաց մէջ և հասաւ մեզի, այն առեննուան Փռանկաց լեզուով գրուած. միայն ստորագրութիւնն հայերէն կարմրագիր գրած մեր Թագաւորին իսկական ձեռօքն, ՀԵԹՈՒՄ ԹԱԳԱՒՈՐ ՀԱՅՈՑ, և իր աղջունի կախեալ կնքովը վաւերացած, ինչպէս որ կ'ըսէ այլ թղթին վերջը. E por so qui cestes lettres soient fermes é estables, ci avons escrit l'escrit de nostre main vermoil é sayelé de notre ceau pendant. Դաշնագիրքն էին մէկ կողմէն ինքն Հեթում Թագաւոր, մէկալ կողմէն տիկինն Սիդոնի և իր տիրորդին (la gentille dame de Sayette, dame Margarite, é le gentil seignor de Sayette Sire Julian). Իսկ խոստակատարք կամ վըկայքն էին Հիւրընկալ կամ Երուսաղեմի ասպետաց Կարգապետն՝ Գուլիելմ. Ճաղ-նէօֆ (frère Guilliam de Castelnov), և Հեթմոյ քեռայրն Յոհան Իպլինեան (gentil cunte de Jafe sire

Johan d' Ibilin)։ Իսկ պայմանքն էին, որ Հեթում տայ իր դուստրը (notre filie damoiselle Fémie) առ Յուլիան, և օժտի համար 25000 սառակինեան-բիզանդ ոսկի՝ Աքքեայի կշռով (xxv. m. besans sarrazinas au pois d'Acre), որոց մէկն կ'արժէր չորս խաչակնիք բիզանդ Հայոց (quatre besans de nos staurat por un besant sarrazinas)։ Այս հայկական ստակը (ստաւրադ-խաչակնիք) Թուի թէ մանրիկ ոսկի մ'էր, իսկ սառակինեան բիզանդն 10-12 Ֆրանգ մը կ'արժէր ըստ ոմանց դրամագիտաց. որով Զիմեայ օժիտն 300000 Ֆրանգի մօտ կ'ըլլայ [1]. որուն երրորդ մասն՝ որ է 8000 բիզանդ (96000 Ֆր.), գոհարեղէն, մարգարիտ, և ոսկւոյ ու արծաթի զարդեր պիտի տար հայրն, իր օրիորդը խաւրած ատեն. իսկ մնացեալ 17000ն այլ զուտ ստակով պիտի վճարէր, պսակը կատարելէն ետև։ Հարսնածուք այլ պիտի պարտաւորէին այն կանխիկ տրուած օժիտը՝ յօգուտ հարսին պահել կամ դարձընել 'ի կալուածս. և ամենևին ազատ Թողուլ զքամբիշը ուզած տեղը կենալու կամ երթալու, հետը ուրիշ մարդ չդնելով՝ բայց երեք ձիաւոր։ Եւ 'ի հաստատութիւն բանին՝ Յուլիան և Մարգարիտ, իրենց ազգականքն և պատուաւոր մարդիկ՝ պիտի ստորագրէին, և իրենց կապարէ կնքովը կնքէին

[1] Լևոն Ա. Թագաւորն՝ իր Եռդեֆիմի կամ Ստեֆանի դուստրը՝ Երուսաղեմի (Յովհան) Թագաւորին կին տալու ատեն՝ անոր հարսանեաց պատրաստութեան համար միայն 'ի Հիւրընկալ ասպետաց 30000 սառակինեան բիզանդ ոսկի փոխ կամ փոխնորդ առեր էր։ — Ըստ ոմանց սառակինեան ոսկին կ'արժէր ֆր. 9, 50։ Ասոր աժէքովն էր գրեթէ Բիւզանդացի ոսկին այլ. կայր և Բիւզանդ կոչուած արծաթ ստակ՝ ոդեփոն կոչուած. և կըրնայ ըլլալ թէ Հեթմոյ խաչակնիք Բիզանդն ալ արծաթ ըլլայ, թէ և այդ մեծութեամբ արծաթ դեռ չէ գտուած։

պայմանագիրը։ Այս ընելէն ետև պիտի կատարուէր հարսանիքն ’ի տանի Խաչվերացին, ’ի սեպտեմբերի, կամ անկէ ետև։

Թերևս գիտեցիր, Հայկակ, որ փեսային մայրն կու յիշուի, իսկ հարսին՝ ոչ։ Մինչդեռ իր նազելի դստերաց առաջին հարսնութեան խօսք կ՚ըլլար, մայրն՝ Զապել դշխոյն՝ փոխադրեցաւ յերկնային առագաստն, վախճանելով ’ի սկիզբն 1252 տարւոյ, որուն վերջերը կատարեցան հարսանիքն Ֆիմեայ[1]։ Արդեօք առիկայ առաջին հարուած մը չէր օրիորդին, և պատճառ մը տրտմութեան սըրտին, այդ և հարսնութեան պատմուճանները յիրար շփոթելով։... Սակայն թողունք որ հայրն և հարազատքն սրբեն աչուըները, և «քաջալերեաց քոյր մեր» ըսելով՝ յուղարկեն փառօք իր տիկնութեան տեղը. մենք այլ մօտենանք այս տեղւոյս ծանօթանալու։

Գ

Հիմակուան Ասորւոց երկրին մեծ և բանուկ նաւահանգստէն (Պէյրութ) իբրև 45 մղոն մը վար դէպ ’ի հարաւ՝ ծովեզերքը պզտի հրուանդանի պէս երկընցած երկրին վրայ՝ շինուած և ծանօթ է Սայտէ քաղաքն, որ վերոյիշեալ պայմանագրին մէջ Սայէտ կոչուի։ Հին Ասորիք և Եբրայեցիք Ծայտան կոչէին, ինչպէս մեր Ս. Գրոց մէջ այլ գրուած կայ, Ծուր և Ծայդան, որք ըստ Յունաց և Լատինաց Տիւրոս և Սիդոն կ՚ըսուէին, և ստէպ յիշուին ’ի հին և ’ի նոր կտակարանս, և ճանաչուին իբրև երկու հարազատ քորք և տիկնայք բովանդակ Միջերկրականի արևելեան ծով-

1 Ասոր վկայէ և Վենետկեցի ժամանակագիրն Սանուտոյ։

ափանց։ Տիւրոս՝ Թէպէտ և աւելի նշանաւոր և մեծ էր և Թագուհի ծովուց կոչուէր 'ի հին ժամանակս, սակայն դուստր էր Սիդոնի, որ շատ դարեր մինակ ծաղկելէ վերջը ծնաւ զՏիւրոս. և ինքն մայրն ծովային քաղաքաց Փիւնիկիոյ՝ աշխարհիս հնագոյն վաճառական քաղաքաց մէկն էր. վասն զի Նոյ նահապետին Թոռան՝ Քանանու՝ անդրանիկն Սիդոն՝ շինեց զայն և իր անունը դրաւ, որ նշանակէ ձուկն կամ ձկնորս։ Եթէ 'ի սկըզբան՝ Վենետիկոյ պէս ձկնորսաց ապաստանարան մ'էր, քիչ ատենէն վաճառականութեան մայրաքաղաք եղաւ. և երբ իր դուստրն՝ Տիւրոս՝ գերազանցեց այդ յայսմ մասին, դեռ ինքն մայրն Սիդոն ծաղկէր։ Ոչ միայն վաճառականութեամբ՝ այլ և ճարտարապետական արուեստով անման էր, մօտն ունենալով Լիբանանու հին և անսպառ մայրիները. որոցմէ կարածը և կարող ու կոկող կու խաւրէր ինչուան առ Սողոմոն, Աստուծոյ տաճար, և իրեն պալատ շինելու համար։ Նաև Տիւրոսի մէջ տիրէր հարստութեամբ. «Եւ իշ» խանք քո (Տիւրոսի) բնակիչք Սիդոնացւոց»[1]։ Սիդոն կրնար ինքզինքը պաշտպանել այլ. ոչ միայն 'ի ծովէ ամուր բերդով և զօրօվը, այլ և 'ի ցամաքէ. և մինչուան Աստուծոյ ժողովրդեան՝ Իսրայելացւոց՝ ձեռքէն այլ ճողոպրեց զինքը. «Եւ » Ասեր ոչ եբարձ... զբնակիչսն Սիդոնի»[2]. վասն զի Յեսու Նաւեայ այս (Ասերայ) ցեղին վիճակեր էր զՍիդոն, զոր Մեծ[3] անուանէին այն ատենն այլ. և իրմէ շատ առաջ՝ Յակոբ նահապետն իր Զաբուղոն որդւոյն սահմանները մինչուան հոն կ'ընդարձակէր. «Զաբուղոն յեզերս ծովու բնա-

1 Եզեկիէլ, Իէ։
2 Դատաւ. Ա. 31։
3 Յեսու ԺԹ. 28։

» կեացէ... և ձգեսցի մինչև 'ի Սիդոն »[1]: Հրէայք միշտ պատկառանքով և նախանձով կու նայէին անոր գոռոզութեանը ու զօրութեանը վրայ և կու սպառնային մարգարէից բերնով ( Եզեկիէլ և Եսայի ). և ինչուան զծովն՝ որուն առաջին իշխողն եղաւ՝ իրեն դէմ կ'ուզէին գրգռել. «Յամօթ » լեր, Սիդոն, ասէ ծով »[2]: Այսպէս ծովն քաղաքին, քաղաքն ծովուն սատարելով և իշխելով, Սիդոն կրցաւ հազարով տարիներ աներձաբար կանգնիլ իր բարձրաւանդակին վրայ, լցուիլ ծովու և ցամաքի վաճառօք, և անոնց արգասեօքը յղփանալ և չփանալ, նման ուրիշ մեծահարուստ շահաստան քաղաքաց, որոց նման այլ զեղծման և անիծից տեղ մը դարձաւ: Մինչև ինքնին Տէրն ծովու և ցամաքի և Աստուածն մեր, իր մարդկօրէն անօրէնութեան աւեն՝ ոտքով կոխելով անոր սահմանները, և վարդապետութեանը մէջ ուրիշ գոռոզ քաղաքներ խրատելով կ'ըսէր. «Եթէ 'ի » Տիւրոս և 'ի Սիդոն եղեալ էին զօրութիւնքն՝ » որ 'ի ձեզ եղեն՝ վաղու ես արդեօք խորգով և » մոխրով ապաշխարեալ էր »[3]: Բայց թերևս նոյն երկրպագելի ոտքերն էին՝ որ ազատեցին ըզ-Սիդոն հիմնայատակ կործանմանէ կամ ծովուն ալկաց մէջ ծածկուելէն:

Արդարև նախախնամեալ քաղաքաց և տեղերուն մէկն կ'երևի ինծի Սիդոն, և ( ոչ միայն Փիմեայ, այլ ) ասոր համար է որ չեմ կրնար շու-

1 Ծննդոց ԽԹ, 13: — Կ'ըսեն թէ այս Զաբուղոն նահապետն՝ և Սոփոնիա մարգարէն՝ թաղուած են 'ի Սիդոն: Քաղքին մօտ քարայրի մը կող շատ գերեզմաններ փորուած են, որոց մէկը հին փիւնիկեցի թագաւորի մը՝ յամին 1855 բերին 'ի Բարիզ:

2 Եսայի, ԻԳ:

3 Մատթ. ԺԱ, 21:

տով հեռանալ անկէ · զոր ոչ Թոռունք Յակոբայ, ոչ Յեսու և ոչ Թագաւորք Հրէից կրցան նուաճել · Նաբուքոդոնոսոր 13 տարի աշխատելով՝ երբ չկրցաւ առնել Տիւրոսի, անոր հետ Թողուց Սիդոնն այլ · մեծն Աղեքսանդր՝ բռնագոյն քան զԲաբելացւոց բռնաւորն՝ առաւ քանդեց ամայացուց զՏուր, բայց չդպաւ Ծայդանի · գոռոզ դուստրը՝ աւազի և ալեաց մէջ խղդեց, զմայրը շոյեց շինեց, դարձընելով անոր իր հրաժարած և մշակ դարձած Թագաւորը (Աբդողոնիմ) : Իրմէ ետքը Յունաց, Հռոմայեցւոց, Արաբացւոց և Թուրքաց ձեռքէն անցնելով՝ Խաչակրաց ատեն այլ դեռ չէն քաղաք մ'էր, եղեռնափայտէ պալատներով · և երբ սոցա ձեռքն ընկաւ՝ (յամին 1111) Եւստաքիոս Կառնիէ անուամբ Փռանկ ասպետի մը տրուեցաւ, ուսկից անցաւ Իպլինեան տոհմին, ինչպէս առաջ ըսի · և թէ սոցա ատեն և թէ վերջը, թէ և շատ փոփոխութիւն կրեց, բայց միշտ բաւական բանուկ մնաց · ինչպէս ինչուան հիմայ այլ՝ Դամասկոսի հետ վաճառականութեամբ բաւական չէն ու բազմամարդ է :

Դ

Ահա այս քաղաքիս և անոր երկրին տիկին եկաւ Ծիմի · որոյ գալուստն թէ և 'ի սկզբան շնորհաւոր եղաւ, բայց քիչ ատենէն Սիդոն իր տիկնոջ այլ բազմաց այլ սգաւոր եղաւ : Շատ տարի չէր (1250) որ այլազգիք կոխեր և աւրեր էին զանիկա, երբ Ծիմեայ գալուն սկսաւ նոր ոգի առնուլ և ծաղկիլ · վասն զի մէկ կողմէն ասոր հայրն՝ Թագաւորն Հայոց Հեթում՝ անոր պաշտպան կենար և գանձերովը կու ճոխայընէր · ուրիշ կողմէ՝ անակնկալ բարեբաղդութեամբ՝ աւելի մեծ ազգի մեծ Թագաւոր մը եկաւ օգնական Սիդոնի,

և ազնուապէս պատուագիր անոր ախնոջը․ գե֊րագոյնն և սիրելագոյնն Թագաւորաց Փռանկաց Սուրբն Լուդովիկ, որ նախ 'ի Կիպրոս եղած ատենն (1248-9), ծանօթացեր էր ընդ Հեթմոյ։ — Այն ատենուան Թագակրաց մէջ չկայ մէկն քան զՀե֊թում՝ նմանագոյն Լուդովիկի՝ զգօնութեամբ, քա֊ջութեամբ և առաքինութեամբ վարուց։ Լուդովիկ յետ արշաւանացն յԵգիպտոս և պատերազմին և գերութեանն և ազատելուն, դառնալով Ասո֊րւոց կողմերը՝ Ցիմիի հոն եկած տարին (1252), և յաջորդ տարին այլ անգործ չկենալով, սկսաւ այն երկրին բոլոր ծովեզերեայ քաղաքները նո֊րոգել և ամրացընել․ այսպէս կ'ընէր և Սիդոնի այլ․ որոյ տէրն՝ Յուլիան իր ուրիշ իշխանակցաց նման՝ պատիւ կու սեպէր անանկ մեծ Թագաւորէ մը օգնութիւն և պաշտպանութիւն գտնելը։ Հոս անտարակոյս իր նորահարսն տիկինն այլ՝ Ցիմի՝ պատուեց զՍուրբ Թագաւորն Փռանկաց և անոր դշխոյն՝ որ իր սկեսրին անուամբ Մարգարիտա կոչուէր։ Երկու տարի անոր այցելութեամբը՝ գտաւ իրեն նոր հայր մը․ կրցաւ քննել ու զննել այն ուքանչելի անձին վրայ՝ ինչ որ իր հօրը և մօր Զապելի վրայ քիչ կամ շատ տեսեր էր 'ի տղայու֊թեանն․ և ինքն գեռ դալար և կակուղ հասակաւ և սրտով՝ կու տպաւորէր 'ի հոգին՝ անոր ընտիր ընտիր առաքինութեանց կերպարանքը․ և ան֊շուշտ անոր իմաստութենէն աւելի կու զարմա֊նար բարեպաշտութեանը վրայ, որ ուր այլ ըլ֊լար՝ անխափան իր աղօթքները և կանոնական ժամերը կատարէր։ Թերևս տեսաւ այլ Սուրբ Թագաւորին ձեռքը սաղմոսիկ մը, որ յԵգիպտո֊սի բանտին մէջ՝ բոլոր ստացուածքներէն և գրքե֊րէն մէկհատիկ ստացուածք մնացեր էր, և անով իր գերութիւնը կու մխիթարէր․ Թերևս անկէ շարժեալ և ինքն գիւրագգած տիկինն Ցիմի՝ երբ

տրամութեան հարուածներն առաւ՝ նոյնպիսի մխիթարանք մը խնդրեց, և ընկալաւ իր ճաղձաղէն՝ երկաթէ ձեռքին իր հօրեղբօրը։ Ո՞վ գիտէ, քանի՜ քանի՜ անգամ Սիգոնի ապարանից եկեղեցւոյն կամ մատրան մէջ՝ սուրբ ծիրանաւոր արքային հետ ծիրանածին տիկինն Ֆիմի 'ի ծածուկ իջած՝ Աստուծոյ երկրիս վրայ կատարած ամենէն անհեղահրաշ խորհրդեան (պատարագի) առջև, հրաթևեալ սրտերնին կու բարձրացընէին յերկնից յերկինս։...

Փափագելի էր մեզի այլ հիմայ հեռուանից այսպիսի հանդիսից մէջ գտուիլ յերկար. բայց սուրբ և բարի Թագաւորն՝ յերկար չէր կենար մէկ տեղ մը. անդադար մէկ մը հոս, մէկ մ'ի Տիւրոս կու փութար, անկէ յԱքքէս և'ի Յոպպէ։ Այս ետքի քաղաքս եղած ատենը՝ յամին 1253, գոյժ հասաւ իրեն, թէ թշնամիք կու սպառնան Սիգոնի. Սիգոն պաշարուեր է, Սիգոն առնուեր է. արիւն և կրակ կու լափեն զՍիգոն։... Արդեօք ի՞նչ եղաւ մատղաշ բամբիշն. ո՞ւր փախաւ, ո՞ւր ամրացաւ Ֆիմի. և եթէ սուր և հուր չհասան այլ իրեն, հապա վախն ու գութն ինչե՞ր չեն հասցըներ։ — Փութա՛, վազէ, սուրբ Թագաւոր, գուցէ հասնիս ու հալածես այն անօրէնները՝ որ քու իսկ դեռ նոր դրած շինութեան քարերդ կու քանդեն... Թո՛ղ հիմայ անոր հօրաքրոջը ապարանքը (Յոպպէի կոմսուհւոյն), և փութա՛ զինքն ազատելու. անոր թշնամիքն՝ քու այլ թշնամիքդ են. և թերևս աւելի քուկդ՝ քան թէ անոր. կարծեմ թէ քու վրէժդ կ'ուզեն անկէ առնուլ. և փոխանակ քաջ հաւուդ՝ տկար վառեկի մը հետ կու զարնուին։

Յիրաւի թշնամեաց այս արշաւանքս կերպով մը Ս. Լուդովիկի համար էր. և կերպով մը Լուդվիկ պարտական էր պաշտպանութեան Սիգոնի և

անոր տիրոջ ու տիկնոջը (Ցիմեայ)։ Վասն զի պէտք է գիտնաս, Հայկակ, որ երբ Ս. Թագաւորն գերութենէն դարձաւ՝ հաշտութեան դաշինք գնելով զինքը գերող Եգիպտոսի սուլտանին հետ, (որ արեւելեան քրիստոնէից ամենէն մեծ և ահաւոր թշնամին էր), ուրիշ այլազգի իշխանք և սուլտանն Հալէպի և Դամասկոսի՝ նախ սմքեցան. վերջը այս եղքերն՝ սկսաւ գաղտուկ գրգել զԼուգմէկ՝ որ միաբանի իրեն և քրիստոնէայ իշխանաց հետ, ու Եգիպտոսի սուլտանին դէմ ելլէն։ Սուրբ և հաւատարիմ Թագաւորն մերժեց անոր վատ և խարդախ խորհուրդը, և քանի որ Մսրայ սուլտանն իր դրած դաշինքը կը պահէ, ես այլ պարտական եմ, կ'ըսէր, պահելու իմ խոստմունքս։ Տեսաւ Հալպայ սուլտանն (Մէլէք-էլ-Նասր Եուսուֆ) որ մէկ կողմէն Եգիպտոսի սուլտանն՝ դաշանցը համար յետ՝ պիտի կենայ քրիստոնէից վնասելէն, մէկալ կողմէն Փռանկաց Թագաւորն՝ Թէ և չիպատերազմիր՝ բայց քրիստոնէից երկիրները կ'ամրացընէ. իսկ ուրիշ և իրեն աւելի մօտիկ կողմէն՝ Թագաւորն Հայոց՝ Թաթարաց հետ բանագնաց կ'ըլլայ. արդէն անոր եղբայրն Սմբատ գունդստապլ դարձեր էր մեծ ղանին քովէն, և հիմայ ինքն Հեթում կու պատրաստուէր երթալու, և իրեն ու քրիստոնէից օգնական բերելու Թաթարաց անդիմանալի զօրութիւնը, որոյ առաջին հարուածը՝ այն քրիստոնէից մօտ տեղուանքը՝ ինքն Հալէպի սուլտանն պիտի առնուր։

Արդ երբ յուսահատեցաւ նա Սուրբ Թագաւորը հրապուրելէն՝ ոխացաւ անոր, և ինչպէս ամեն վատ կ'ընէ՝ դարձաւ իր հրապուրածին դէմ, ու դարձընել ջանաց զԵգիպտոսի սուլտանն այլ, որոյ դէմ կ'ուզէր ինքն երթալ։ Երկու անիրաւքն այլ գտան զիրար. բայց Մէլէք-էլ-Աշրաֆ-Մուսա

(Մարայ սուլտանն) աւելի խստապահ կամ աւելի խորամանկ էր, անդէն չշարժեցաւ, սակայն գաղտուկ հաւանութիւն տուաւ ընկերին. այն ատեն Նասր ձայն տուաւ իր սահմանաց մէջ և մօտերը բնակող Թիւրքմէնից. ու իւրև իր երկու թշնամի բարեպաշտ թագաւորաց վրէժը մէկէն առնուլ ուզելով՝ յանկարծակի վազեց Սիդոնի վրայ, որ Դամասկոսէ (Շամ) հազիւ մէկ երկու աւուր ճամբայ հեռու է, խսկ 'ի Յոպպէէ (Եաֆա), յԱնտիոքայ և 'ի Սսոյ, ուր զօրաւոր իշխանքն քրիստոնէից՝ Լուդվիկ, Հեթում և Պեմունդ գտուէին՝ շատ աւելի հեռու։

Անակնկալ և ահաւոր եղաւ տապատակն ու աւերակն. Սիդոն դեռ բաւական ամրութիւն չունէր. կոխան եղաւ թշնամեաց, որք անոր ցամաքային բերդն այլ առին աւրեցին. վազեցին նաև ծովային բերդին վրայ, ուր անշուշտ ապաւիներ էր և տիկինն Տիւր. բայց հոս՝ ծովն ամրջցաւ և չամրջցուց զՍիդոն, հապա մանաւանդ յիշեց և կատարեց իր հին խօսքը. «Ո՞չ երկնեցի և ո՛չ ծնայ » և ո՛չ սնուցի երիտասարդս, և ո՛չ բարձրացուցի » կուսանս»[1]. որոց մէջ հիմայ բարձրագոյն բաղձած դեռ կուսագեղ տիկինն Սիդոնի, ծովուն ալիքներէն աւելի՝ աղօթիւքը կու պաշտպանէր բերդին։ Ցետ քաշուեցան արիւնարբու և աւերածու թշնամիքն, բայց չարաչար նշաններ թողլով իրենց գազանութեանը. 800 հոգի սրակոտոր եղած սփռած էին Սիդոնի մէջ և ճամբուն վրայ, 400 հոգի այլ երկաթի զարնուած և գերի վարած[2], շատ չէնքեր այլ աւերած։

Ասոնց մէջ չեմ տարակուսիր որ Տիւրի իրեն

1 Եսայի, ԻԳ։

2 Ըստ ոմանց 2000 գերի այլ Հարդեցին քշելու ատեններին։

պալատէն աւելի կու սիրէր մատուռ մը՝ քաղքին արևելեան դրան քովերը՝ որ Շամայ Ճամբուն վրայ կու նայի. մատուռ մը՝ զոր Նախնի քրիստոնէից բարեպաշտութիւնն կանգներ և դարուց դար աւանդութեամբ պահէր ու պատուէր. մատուռ մը՝ որ և հիմայ այլ կեցած պատուի, թէ և փոփոխեալ 'ի մզկիթ, Նէպի-Սէրան կոչուած: Այս շէնքս այն տեղն է շինուած՝ ուր 1200 տարի յառաջ քան զՅիսուս՝ իրեն համաւեռ Փիւնիկեցի մը, մայր մը, մեծ տրտմեալ սիրտ մը՝ կեցեր կու լար ու կանչէր, կ'ուզէր բժշկել իր սրտին սիրուն կտորը, չարաչար տանջուած ու լլկուած աղջիկը. — շատերն լսեցին ձայնն ու լացը, և ոչ ոք կրցաւ օգնել. և միայն կրցողն այլ չուզեց: Առաքելն ամենեցուն՝ այն ատեն հոն մարդկօրէն քալելով կ'անցնէր. լսեց ու չլսելու զարկաւ... Բայց ո՛վ զօրութիւն հաւատոց, ո՛վ մեծութիւն սիրոյ, դու գրեթէ աստուածային հնարից այլ յաղթեցիր: Ասորի կինն ճանչցաւ զՔրիստոս. և պահանջեց ինչ որ իր ցաւոց և անոր ողորմութեանը կու վայլէր. «Ողորմեաց ինձ, որդի Դաւ-
» թի, դուստր իմ չարաչար այսահարի»[1]. Քրիստոս լռութեամբ կ'երթար. կինն ետևէն առջևէն աղաղակելով կ'արգելուր. Քրիստոսի աշակերտներն կ'աղաչէին, կինն առաջ անցնելով գետին կ'ընկնար, «երկիր պագանէր նմա և ասէր. Տէր,
» օգնեա ինձ»: — Քրիստոս կ'ըսէր թէ ինքն Իսրէլից բժշկութեան համար ղրկուած է, ուր Աստուծոյ ընտրած որդիք սպասուած էին, և թէ որդւոց պատրաստուած հացը՝ չէր վայլեր շուներու տալ: — «Այո՛ Տէր», խոստովանեցաւ մեծահամբեր և մեծիմաստ կինն, այո Տէր, բայց «եւ շունք 'ի փշրանաց սեղանոյ մանկանցն կե-

1 Մատթ. ԺԵ:

» րակրին » : — Ո՛հ, ներէ ինձի այլ ըսելու՛, ով
Տէր մեր, որ կարծեմ հոս քու գթութեանդ ա-
ւելի դժար եկաւ համբերելն, քան թէ այն ա-
ռատակալ կնկան՝ իր ցաւոցը. և այլ չէիր կրնար
ուշանալ կանչելու, « Ո՛վ կին դու, մեծ են հա-
» ւատք քո. եղիցի քեզ որպէս և կամիս: Եւ
» բժշկեցաւ դուստր նորա 'ի նմին ժամու » : —
Ահա այս գերապանծ գործվալի տեսարանին տեղն
էր, ուր իսկապէս և մարմնապէս կեցաւ Ա-
տուածն մեր Քրիստոս, և ուր կինն Փիւնիկ Ասո-
րի՝ ընկաւ իր ոտքը. այս տեղս էր կանգնած այն
մատուռն և հիմկու մզկիթն, ըստ բարեպաշտ և
հաւանելի աւանդութեան. և ուր հաւատացելոց
հետ ստէպ այցելութեան և աղօթից կու գար՝
Փիւնիկին հաւատոց և ցաւոց ժառանգն Յիսի. և
հիմայ այլ անշուշտ իր քաղքին և ժողովրդեան
կոտորածոց վրայ կոտրտուելով՝ մայրօրէն ցա-
ւակցութեամբ սրտանց կ'աղաղակէր առ Փրկիչն,
« Տէր, օգնեա՛ ինձ » :

Ե

Հոս մարդասէր Տէրն մեր յօգնութիւն կամ 'ի
մխիթարութիւն հասուց զՀուդվիկ, որ գտնէ ա-
ւելի մեծ վտանգէ ազատեց զՍիդոն. անշուշտ իր
գալստեանը կանխածով՝ փութացեր փախեր էին
Թշնամիքն 'ի Պանէաս ( կամ 'ի Կեսարիա Փիլիպ-
պեայ, ըստ աւետարանին). ուր գունդ մը քա-
ջաց խուարեց հալածեց զանոնք և քաղաքը առաւ:
Իսկ ինքն կու շտապէր դալ 'ի Սիդոն. որոյ հա-
րուածէն եւս քանի մ'օր անցեր էր, և դեռ ան-
թաղ մնացեր էին սպաննեալքն. և արդէն սկսեր
էին գերեզմանի մէջ տանելու կերպարանքին փո-
խուիլ: Զկրցաւ սուրբ Թագաւորն արտասուքը
բռնել. և նախ իր հետն եղող Ս. Պայլին Նուի-

ռակին՝ գերեզմանի երկիր մը օրհնել տուաւ, վերջը դարձաւ իրեններուն՝ հրամեց որ թաղեն։ Անոնք՝ որ աւելի թշնամի ջարդել փափագէին քան թէ ընտանի թաղել, և իրենց առաջնորդին սիրտը չուզէին, պժգացին պղուեցան, երեսնին յետ դարձուցին. վասն քան զՄարթա՝ ըսելով, թէ «Հոտեալ իցէ, քանզի չորեքօրեայ է»։ Այն ատեն Լուդվիկ իր սիրոյ և սրբութեան սքանչելի գործոց մէկն հոս ցուցուց. ձիէն վար ցատքեց և առջի հանդիպած դիակը վերուց շալկեց թագաւորական թիկանցը վրայ, և իբրև խուրձ մը դեղնած ցորենոյ պարկի մէջ դնելով՝ տարաւ ինչուան գերեզմանոցը, իջուց փոսին մէջ, թաղեց, ծածկեց, կնքեց կաթիլ մ՚արտասուօք։ Հինգ օր այսպէս աշխատեցաւ մեռելակրութեան. ոչ միայն առանց զանելու, այլ նահատակաց մարմին սեպելով՝ կրելու ատեն ծոմ կու պահէր և յարգութեամբ կ'իջեցընէր զանոնք իրենց քնարանը։ Այս օրինակէս զարմնուած զօրքն և վարձկանք՝ հետևեցան իրենց տիրոջը։ Ծովածին Սիդոնի բարձրացեալ երիտասարդքն և կուսանքն՝ վերջապէս հանգչեցան 'ի հայրենի հող մահուն։

Ուրիշ գեղեցիկ և համանման գործ մ'այլ ըրաւ այն մեծ և եղբայրասէր թագաւորն 'ի Սիդոն. տեսնելով որ իր նորոգութիւններն նորէն աւրուեր են, քաջալերեցաւ աւելի ամուր շինելու. և հոս այլ իրեններուն օրինակ տալով ժրութեան՝ հասարակ մշակի պէս սկսաւ կիր ու ծեփ շաղուել և քարերը կրել, պատերը հիւսել։

Այն ձմեռուան (1253-4) դրեթէ մեծ մասն հոս 'ի Սիդոն անցուց Լուդվիկ. և դեռ կ'ուզէր կենալ և շէնքերը պսակել, երբ իրեն այլ յանկարծ հասաւ տրտմագին հարուած մը։ Օր մը յանկարծ Յոպայ երեք բարեկամացը պէս եկան իրեն՝ իր խոստովանահայրն, Պօղոսին Նուիրակն

և Տիւրոսի արքեպիսկոպոսն. իմացուցին զմահ իր մօրը, Պլանշ դշխոյի, զոր և թագաւորութեանը տեղակալ դրեր էր, սովորականէ աւելի կու սիրէր և յարգէր: Խիստ սաստիկ ցաւ զգաց, բայց սրբութեամբը ծածկեց. և մէկէն ընկաւ իր մատրանը մէջ՝ ուր լսեց այս գոյժը, գոհացաւ զԱստուծոյ՝ որ այնքան ատեն իրեն պարգևեր էր այնպիսի մայր մը. և հանգստեան պաշտօն ընել տալէն ետև՝ փութացաւ ժողովեց մարդիկը, և ուրիշ ատենի թողլով սուրբ Երկրին ազատութեան հոգը, տուաւ վերջին ողջոյնը իր ասպնջական տիրոջ և տիկնոջ, և ամենայն քրիստոնէայ իշխանաց և բազմութեան հաւատացելոց. որք ետևէն գացին մինչև յԱքքեա, և մեծ տրտմութեամբ յուղարկեցին նաւով 'ի Կիպրոս, ուսկից նաւեց դարձաւ 'ի Գաղղիա:

Այս դիպուածս համառօտիւ յիշէ մեր ժամանակագիրն (Մաղաքիա) ՉԲ. (1253-4) «Ուէ տէ Ֆրանցն (Լոյզ կամ Լուիզ) վերստին շինեաց զՍ-» Սայտայ և գնաց յաշխարհ իւր». Ինչպէս յառաջ այլ Յոպպէի համար յիշէ. «ՉԱ (1252-3). «Ուէ տէ Ֆրանցն շինեաց զՃաֆն»:—Հիմակուան Սայտայի բարձրագոյն մասին վրայ կիսաւեր մեծ աշտարակ մը կայ. մնացորդ շինուածոց կամ նորոգութեանց Ս. Լուդվիկի:

Պէտք չէ տարակուսիլ՝ որ Լուդվիկի երթալուն վրայ ամենէն աւելի ցաւողաց մէկն եղաւ Ֆիմի, որոյ գթառէր սրտին այս այլ կակուղ հարուած մ'էր. և այնչափ աւելի էր հոգն ու վախն՝ որչափ որ նոյն տարին իր հայրն Հեթում թագաւոր այլ եղաւ գնաց երկար ճամբով 'ի Թաթարստան. ուսկից ինչուան որ իր տեղը դարձաւ դադարելու՝ տարիներ անցան: Բայց այն քանի մը տարիները, (և մինչև 'ի 1260 տարին) անվտանգ կ'երևին. վասն զի 'ի Հայս կառավար և պահա-

պան կեցեր էր Ֆիմիի պապն, մեծախնելք Թագա-ւորահայրն Կոստանդին, իր մեկայլ կարիճ որդւոցն. ուրիշ կողմանէ այլ Թաթարաց գալուն վախն կու զսպէր զայլազգիս՝ որ քրիստոնէից աւելի վնաս չհասցընեն, որպէս զի իրենք այլ աւելի վնաս չկրեն։

## Զ

Այս տարիներուս մէջ ծլեցաւ ծաղկեցաւ Ֆիմի իր զաւակօքը, որ երեք միայն յիշուին. երկումանց, զորս Յովհան իր հօր և հօրեղբօր անուամբ կոչեց, և մէկ աղջիկ՝ զոր իր մօրն անուամբը։ Ասոնց անուանքն այլ իրենց մօրը հետ վայելչաբար և փաղաքշաբար նշանակուած կու գտնեմ արքայեղբօր Յովհաննու ձեռօք, իր ընծայած նախայիշեալ գրքին մէջ. ահաւասիկ.

« Զիմաստութեամբ լցեալն և զամենայն բարեձեւու-
» թեամբ զարդարեալն, զսիրողն Աստուծոյ և զպատա-
» ւորն ամենայն ծառայից նորա, զարքածին բամբիշն Ֆի-
» մի, և զաստուածապարգև զաւակսն նորին՝ զՊօլին
» և զՃօսան և զհեզանազն Մամուն[1], յիշեցէք 'ի Քրիս-
» տոս Աստուած ». և այլն։

Մարկրուն հեզանազ դստրիկն Ֆիմեայ՝ հարս գընաց Կուխտոնի կամ Կիրայ՝ Ժիպլէի տիրոջ, որ է հինն Գեբաղ Ս. գրոց կամ Բիբլոս Յունաց, հիմայ Ճէպէլէ կամ Ճէպայիլ կոչուած[2], որ այն ատեն Իտա-

1 Մամուն Մարգարիտ անուան փաղաքշականն է։

2 Պերութէն վեց եօթն ժամ հեռու դէպ 'ի հիւսիս, ծովեզերքը։ — Այս Կի՝ Մարկրունի էրիկն՝ յամին 1282 հրամանաւ Տաճարականաց կարգապետին փորձեց առնուլ զՏրիպօլիս քաղաքը, և անոնց մատնութեամբը չկըրցաւ առնուլ. և գրեց այս դիպուածին պատմութիւնը՝ որ կու պահուի խնչուան հիմա։

լճնայ պէս փռանկ տէրութիւն մ՚էր. այն ատրանց մէկուն դուստրը կին առաւ Պալեան՝ անդրանիկն Ֆիմիի, և երկու աղջիկ ունեցաւ. որոց մէկն անուանեց իր սիրելի մօրն անուամբ Ֆիմի, որ յետոյ եղաւ կին Հէռնոյ մարաջախտի. (սա էր Թոռան Հեթմոյ՝ եղբօր Ս. Ներսէսի Լամբրոնացւոյ):

Աւելորդ է ինծի խօսքով խորհրդածելն՝ որ Ֆիմի իրեն մեծ հօր ըրեր էր իր զաւակաց (Թերևս և Թոռանց) կրթութիւնը, և կու ջանար զանոնք այլ իրեն պէս զարդարել ամենայն բարեձևութեամբ. իրեն պէս ընել սիրող Աստուծոյ և ծառայից նորա: Այս բաները թէ և հօրեղբօր մը բերնով և ձեռքով գրուած են իրեն համար, սակայն գրողին սուրբ և բարձր աստիճանն և վարքն վկայ՝ որ ճշմարտութեամբ պատշաճած են անոր. և կու յայտնեն՝ որ այն ատենուան բազմաթիւ մանր տէրութեանց տիկնայց մէջ առաջիններէն մէկն էր (և մեզի ծանօթից մէջ առաջինն) Ֆիմի, իմաստութեամբ և բարեպաշտութեամբ արդարև լցեալ և զարդարեալ: Ու ասոնք էին մեծ զէնք և դեղք հարուածոց և տրտմութեան դիւրազգած և գթասէր սրտին. իր ծնողաց և Ս. Լուդվիկի օրինակներն՝ իրեն կենդանի հայելի մ՚էին նմանութեան. և Թերևս անոնց այլ՝ ամեն բանէ աւելի՝ հանդիպած փորձանքներն և վիշտերն եղան մեծ առիթք բարեպաշտութեան և սրբութեան: Ամենուն, բայց աւելի իշխանազանց և մեծատանց համար հարկաւոր կու ճանչնայ մեր սուրբ կրօնքըն՝ այսպիսի հարուածներ, որ զիրենք ցնցելով՝ քակեն աշխարհիս ունայնութեանց և պաճուճանաց կպչուն փափկութիւններէն, և լաւագոյն կենաց և աշխարհի ստոյգ և անանց բարեացը փափաքեցընեն: Գուցէ նուազ կ՚ըլլար 'ի Զապել, 'ի Հեթում, 'ի Լուդվիկ և 'ի մերս Ֆիմի՝ այս սուրբ

փափագս, եթէ վճառերնին այլ պակաս ըլլային։ Ուրեմն անվախ բնտրենք քննենք թէ ուրիշ ինչ փորձանք ու ցաւեր եկան աստ․ մանաւանդ թէ թողունք որ գան, և այլ աւելի փորեն խորցընեն, բարակցընեն և զարդարեն այն ազնիւ սիրտը։

# Է

Ցիմիի քանի մը տարի հանգստեան միջոցը՝ մեծամեծ քաղաքական դիպուածք եղան յարևելս․ հայրն՝ Հեթում՝ դարձաւ 'ի Թաթարաց․ մեծ (Մանգու) խաքանին եղբայրը՝ ահաւոր Հուլաղու ղանը՝ բիւրաւոր զօրք ետևէն բերելով, որ քանի մը տարուան մէջ՝ քրիստոնէից նեղութիւն տուող բռնաւորները և տէրութիւնները ջնջեց․ նախ Հաշիշի կամ Աւճազակաց ըստուած բռնաւորը․ յետոյ Պաղտատու հին և մեծ ամիրապետութիւնը (1258)․ վերջը (1259-60) Սիգոնը աւեր և արիւն դարձընող Հալպայ և Շամայ սուլտանը (Մէլէք-էլ-Նասըր), բռնեց և գերի ղրկեց 'ի Պարսկաստան․ ու անկէ նուաճած երկիրները դարձուց տուաւ Հեթմոյ և աստ փեսային՝ Անտիոքայ իշխանին։ Մնաց միայն Եգիպտոսի զօրաւոր սուլտանն․ աստ վրայ այլ կու պատրաստէր յարձըկելու՝ Հայոց և Լատինաց օգնականութեամբ, երբ հասաւ իր եղբօր (Մանգու ղանի) մահուան լուրն, ու փութացաւ Հուլաղու դառնալ յարևելս մեծ ղանին ընտրութեան համար․ — արևմտեան կողմերուն (յԱսորւոց երկիրը) պահապան թողլով զօրք՝ Քիթբուղա կամ Քէթուպօղա-նոյեն զօրավարը։ Աստ համար մեր Հեթում Պատմիչն կ'ըսէ թէ, Քրիստոսի երկրպագութեան եկող մոգուց ցեղէն էր․ և բարի ու քրիստոնէասէր ըլլալով՝ սկսաւ խաղաղութեամբ կառավա-

ըեւ իրեն յանձնուած կողմերը [1]: Դժբաղդաբար քրիստոնէից կողմէն եղած անխոհեմութիւն մը՝ մեծ շփոթութեան և մնասու պատճառ եղաւ, և նոր ցաւոց՝ մեր Սիգոնի տիկնոջ։ Վասն զի այս տէրութեան երկրին մէկ մասն՝ որ ինչպէս առաջ յիշեցի, Պելֆորդ կ'ըսուէր [2], Տամայ երկրին սահմանակից էր, և բնակչաց մէկ մասն այլ Թուրք էին, որք հիմայ զսպուած 'ի Թաթարաց՝ ասոնց տուրք կու տային. և անշուշտ ութ տարի առաջ Սիգոնի վրայ ասպատակողաց ընկեր էին։ Հիմայ Սիգոնացի և Պելֆորդեցի տաքգլուխ մարդկանցմէ ոմանք՝ կամ հին վրէժն առնըլու համար, կամ նոր աւար մը գտնելով՝ այս Թուրքաց գեղերն ու արտերը կոխեցին, աւրեցին, ոչ տանց սպանութեան անզղացեաց, որոց մէկ մասն այլ իրենց ստացուածով և անասնովը գերի քաշեցին։ Մօտերը ձիաւոր Թաթարաց պզտի գունդ մը կար Քիթբուղայի քեռորդւոյն կամ եղբօրորդւոյն հրամանին տակ. մէկէն վազեց այս կարիճս Սիգոնացոց ետևէն, պատուիրելով որ գերին և աւարը թողուն. անոնք իրենց անշահ յաղթութեան և աւարներուն վայելմամբ տաքցած և գինովցած, աւելի մեծ յանդգնութեամբ և կուրութեամբ Թաթարաց այլ դէմ դարձան, և քանի մը հոգի ըսպաննեցին. անոնց հետ մէկտեղ կարիճ առաջնորդնին այլ։

Դեռ Թաթարաց բարկութեան և վրէժխնդրութեան փորձն առած չէին քրիստոնեայք. Քիթբուղա՝ հօս ոչ անարդար խրատամբք քալեց կո-

1 Քէրայիդ Թաթարաց ցեղէն էր, որոց մէջ շատոնց մտեր էր քրիստոնէութիւն։ — Տ'Ոհսոն։

2 Ցանուած բերդաւանին, որ հիմայ Թուէ Քէլ-ըն-էշ-Շէքիֆ, Լիբանան լերանց հարաւային ստորոտը, Նահր-էլ-Լիտանի (Լէոնդ) գետոյն եզերքը։

խեց աւրեց Սիդոնացւոց սահմանները, և նոյն իսկ քաղաքն այլ առաւ. նորաշէն պարսպաց մեծ մասը քակեց, ցամաքին բերդը փլուց, դէպ 'ի ծովային բերդը դիմողներէն մէկ քանին այլ սպաննեց. բայց այս բերդս ծովով շրջապատած և պաշտպանած ըլլալով՝ չկրցաւ առնուլ։ Հոն փարձեալ ապաստանած տիկինն Ցիմի՝ որսորդէ փախած և ծառին բարձրագոյն ճիւղերուն մէջ պահուըտած թռչնոյ պէս կու սարսէր սարսափէր. և թերևս ազատելու հնարք չէր տեսներ, թէ որ անակնկալ դիպուած մը չհեռացընէր անկէց զԹաթարս։

Հուլաղուի հեռանալը և թողած Թաթարաց քիչուորութիւնը լսելով Եգիպտոսի սուլտանն Քուդդուզ՝ յարձակեցաւ 'ի Պաղեստին. Քիթբուղա՝ ցրուած զօրքերը ժողվելով՝ դէմն ելաւ. հասան իրարու՝ Նապլուսայ (Սամարիոյ) մօտ Այն-Ճալութ (Աղբիւր Գողիադայ) ըսուած տեղը. սաստիկ եղաւ պատերազմն. Քիթբուղա մեծ քաջութեամբ կռուեցաւ և աւելի մեծ կորճութեամբ մեռաւ։ Թաթարներն՝ որ առաջի անգամ էր որ կու յաղթուէին, հալածեցան Ասորւոց երկրէն դուրս, որուն տիրեցին Եգիպտացիք, բաց 'ի քանի մը ծովեզերեայ քաղաքներէ, որոց մէկն այլ էր կիսաւեր դժբաղդ Սիդոնն։

Ասոր տէրն Յուլիան՝ որ տասն տարի չեղած՝ երկու երեք անգամ տեղւոյն աւերիլը տեսաւ, հիմայ այլ երկու կողմէն մեծ վտանգի մէջ գտնուելով՝ թէ յԵգիպտացւոց և թէ 'ի Թաթարաց, և նորէն ոչ Ս. Լուդովիկի մօտաւոր գալստեան յոյս ունենալով, և ոչ աներոջը (Հեթմոյ), առանց ասոր խորհուրդ հարցընելու՝ յուսահատական հընարք մը մտածեց, որոշեց, կատարեց։ Սիդոնն այլ Պէլֆորդն այլ իրենց սահմաններովը ծախեց Տաճարական ասպետաց. «Ճուլիան Սայտայու, » տէրն՝ ծախեաց Դամփլուն զՍայթաէն և զՊիա-

» ֆորդն », կ'ըսէ մեր ժամանակագիրն: Այս բանիս վրայ շատ դժարեցաւ Թագաւորն Հեթում՝ Թէ Ցուլիանոս և Թէ անոր երկիրը գնող ասպետաց, որք կերպով մը իր դատեր իրաւանց այլ կ'անիրաւէին: Անշուշտ Հեթում իրաւունք ունէր, բայց Ցուլիան այլ իր գլխին ճարը հոգալու ստիպուէր. մանաւանդ որ ուրիշ իրեն նմաններէն այլ կային նոյնպէս մտածողք: Իրմէ քիչ մը վերջը (1261) իր ազգակիցն Գալիան՝ տէրն Արսուֆայ (որ նոյն Փիւնիկիոյ եզերքը Եաֆայի մօտ ուրիշ ամուր քաղաք մ'է) իր երկիրը ծախեց Հիւրընկալ (Հոսպիտալի) ասպետաց: Քանի մը տարի ետև (1268) Պիպարս Փնտուխտար սուլտանն Եգիպտոսի առաւ զՊէլֆորդ բերդաքաղաքը. նոյն տարին առաւ և զԱնտիոք այլ, որոյ տիկինն էր քոյրն Ցիմեայ:

Այս ամէն դիպուածքս մէկմէկ հարուածք և տուխթք էին տրտմութեան իր սրտին. և մանաւանդ երկու տարի առաջ (1266) հանդիպած կսկծալին, իր եղբօր՝ Թորոսի՝ սպանուիլն յԵգիպտացւոց՝ պատերազմի մէջ, և միւս եղբօր Լևոնի (գ) գերութիւնը, ու հօրը մեծ տառապանքը՝ ինչուան որ ազատեց զնա: Այս ցաւալի տարիներուն մէջ՝ Ցիմի անշուշտ ապաստանած էր իր հօր Թագաւորութեան երկրին մէջ, և անոր սգակից կ'ըլլար, հետզհետէ կրելով և իմանալով ինչ որ «սեփական է մարդկան, նժդեհութիւն և » պանդխտութիւն և փորձանք »: Թէպէտև քիչ մը վերջը բոլոր Կիլիկիոյ և իր արքունի ընտանեաց հետ ուրախացաւ՝ ազատութեամբ Լևոնի (1268), բայց եղբայրը գտնելով՝ դրեթէ հայրը կորուս. վասն զի Հեթում զորդին Թագաւորեցընելով՝ ինքն հրաժարեցաւ 'ի Թագէ և յաշխարհէ, և կրօնաւորելով՝ քիչ ատենէ մեռաւ, (28 հոկտեմբ. 1270): Նոյն օրերը հասաւ և Ս. Լուդվի-

կի մահուան լուրն, որ երկու ամսով յառաջ վախճաներ էր (25 օգոստ.)։ Այսպէս գրեթէ երկու հօր սուգ ու ցաւ մէկտեղ կրեց Ֆիմի։ Անոնցմէ առաջ վախճաներ էին իր հօրեղբարց մէկ քանին, և աւելի առաջ (1262) անոնց նահապետական հայրն՝ Կոստանդին։

Բայց իր սրտին մերձագոյն և մտանակից անձն, իր ամուսինն՝ Սիգոնը ծախելէն 15 տարի ետև «Մեռաւ Ճոսլիան, Սայտայոյ տէրն» (1275) ըստ ժամանակագրին. այն տարին՝ որ Կիւլիկիոյ մէջ սաստիկ սով և մարդամահ այլ եղաւ[1]։ Յուլիան իր տեսած և կրած փորձանքներէն և գուցէ իր կնոջ և աներոջ բարեպաշտութեննէն յորդորուելով՝ կամաւ թողեր էր իր աշխարհային փառքը. նախ Տաճարական ասպետաց կարգը մանելով, յետոյ Եղբորդութեան ըստուած կրօնական կարգը, յորում և մեռաւ Աքքեա քաղքին մէջ, իր այրւոյն սրտին մեծագոյն վէրք և տրտմութեան առիթ թողլով։

## Ը

Այլ միթէ նուազ կսկիծ եղած էր անոր մայրենի սրտին՝ կորուստ իր կրսեր և կայտառ որդեկին. Ի՞նչ լայն և խոր պատառուածք բացաւ այն ազնիւ սրտին մէջ՝ տարաժամ և տարադէպ լուր մը, թէ քու ջաջուռ ու Ճօճուն Ճուանդ չկայ... մարեցաւ անոր լուսաւոր արևակն։ Արդարև ջուրք մարեցին, ընկղմեցին, խեղդեցին զՃուան. — անոնց մէջ լուացուելուն կամ լողալուն ատեն, թէ անոնց վրայէն անցնելուն։ — Գիտցածնիս այս է, որ օր մը Ֆիմեայ աչքև բերուեցաւ փռուեցաւ Ճուան երկայն հասակը, գետէն հանած շու-

1 Վահրամ։

շանաց շալակի մը պէս.— Ջրերն՝ որ իր այնքան շնորհքը քաղեր կըլեր էին, անշուշտ մէկ կակուղ և խանաւ շնորհք մ'այլ դեռ Թողեր կամ տուեր էին կերպարանացը. զոր փոխանակ կէս ծածկելու՝ բոլորովին բաց Թողուին գագաթէն վար կախուած քամուած ու մէկ փունջ եղած խարտեաշ գիսակներն... դեռ ամեն բան լման և նոյն կու տեսնէր Ֆիմի՝ իր ձուանին վրայ. միայն չշարժելէն և իր վիզը չպլլուելէն հաւատաց մայրն՝ որ որդին անշնչացեր... մեռեր է. « Եւ եղև զաղխա նորա »:...

Թողունք այս ահագալի տեսարանը, որ եԹէ սրտակտուր է ամեն հանդիպողի, ի՞նչ պիտի ըլլայ մօր մը սրտին և Ֆիմիի պէս մօր մը:... Հոս ձեռուընիս կու կապուի, շըԹունքնիս կու փակուին. հոս՝ արդարև միայն մխիԹարանք ու անդորր կըրնայ տալ այն՝ Որ ամենահնարն է: Իջի՛ր արդ հիմայ, ո՛վ բարի հօրեղբայր, իջի՛ր քու Բարձրբերդի սուրբ դիտանոցէդ, և բեր քու Թոռնէիդ այդ Ամենահնարին ներշնչեալ սուրբ պատգամները, բեր քու ձեռագիր գրքոյկդ, և փորձով ծողովոյլն ու փորձանօքն Յոբայ՝ սփոփէ այդ իրաւացի տրտմեալ սիրտը: Ահաւասիկ մէկ յիշատակարան մ'այլ արքայեղբօրն Յովհաննու առ Ֆիմի, նոյն գրոց մէջ, ոտանաւոր չափով[1]..

Յաստուածային սէրըն հարեալ
Սա՝ որ հըրով նորին վառեալ,
Որ եւ ըզտուռս այս ըստացեալ
Բամբիշըն մեծ՝ Ֆիմի կոչեալ.
ՀեԹմոյ քաջի նա՛դուստըր լեալ,
Որ էր ալքայ Հայոց օծեալ.

1 Որդ անագլուխ տառերն կազմեն Յոհաննէսս անէմ:

Անցաւոր զայս ծանուցեալ,
Անանց Թագին այն բաղձացեալ.
Նորափետուր սովաւ պըճնեալ
Լի լապտերօք ընդառաջեալ.
Նոր փեսային է հարսնացեալ,
Մըտից դրախտին արժանանալ:
Եղկելիս սովաւ թախծեալ
Երկամբք մատանցս ըզսա ստանալ.
Սակս որոյ ի մի գործ սկըսեալ
Փոքր ինչ յայլոց օժանդակեալ:
Ստացողք վերջոյ եւ որք օգտեալ՝
Հայցեմք բարի մասըն մեզ տալ. և այլն:

Այն տարին որ Ցիմի այրեցաւ՝ իր աւելի բարձրիշխան քոյրն այլ՝ Զապլօւն՝ այրի մնաց մահուամբ բրնձին Անտիոքու՝ Ջ Պեմունդի ,(1275, մայիս 11), որոյ տղահասակ որդւոյն (Է Պեմունդի) խնամակալ եղաւ ինքն մայրն. և հաւանօրէն 14 տարի ետքը տեսաւ իր և անոր տէրութեան բոլորովին վերջանալը, երբ Քէլաուն կամ Քալիլ Աշրաֆ սուլտանն Եգիպտոսի՝ առաւ զԱնտիոք ու վերուց անկէ քրիստոնէից 200 տարուան պայազատութիւնը: — Իրեք տարի վերջը (1291) մեկայլ Զապլօւնն այլ (իրենց եղբօր՝ Գ Լեւոնին դուստրն) տիկինն Տիւրոսի՝ զրկեցաւ իր տիկնութենէն. վասն զի երբ Եգիպտացիք առին զԱքքեա՝ քրիստոնէից ամենէն ամուր ապաստանարանը, անոր պաշտպան ասպետքն փախան ապաւինեցան մեր Ցիմկայ հին ապաւէնը, 'ի ծովային բերդն Սիդոնի. բայց երբ Թշնամիք նաւերով մօտեցան անոր, անկէց այլ փախան գնացին 'ի Կիպրոս: Այս բաներուս ականատես Պատմիչն Հեթում՝ կ'ըսէ. «Աշրաֆ էառ զԱքքա 'ի քրիստո-
» նէիցն և Թողին քրիստոնէքն առանց պատերազ-
» մի զՍուր (Տիւրոս), զՍայտէ (Սիդոն), զՊէ-

»րութ. և յայսմ ամի ընջեցաւ քրիստոնէութիւնն »'ի Սէհլէն[1]»: Ուրեմն Ցուլիանու և Ֆիմեայ թողլէն 31 տարի եւս այլ՝ դեռ ատպետաց ձեռքն էր Սիդոնի ծովապատ ամրոցն. և այս տարի յետ ուրիշ քաղաքաց և բերդից՝ մատնեցաւ այլազգեաց ձեռքը. Թէպէտ և անոր պայազատքն իրենց օտարութեան մէջ այլ պահէին իրենց կորուսած տէրութեան անունը. և ինչուան գրեթէ հարիւր տարի վերջ այլ՝ (1368) կու յիշուի Փիլիպ Իպլէնեան տէր Սիդոնի, որ 'ի Կիպրոս բնակէր, և հաւանօրէն Ցուլիանու և Ֆիմեայ տոհմէն էր:

Թշնամիք՝ որ շատ անգամ յարձակեր և վռընտուեր էին 'ի Սայտայէ, հիմայ պարապ և անպահապան գտնելով՝ քարերէն և աշտարակներէն առին վրէժնին, փլցընելով և թափելով՝ երբեմն զանոնք ծիծաղող և երբեմն ծեծող ծովուն ծոցը. որ և մահաձայն մռնչմամբ մաս մը ծածկեց, մաս մը ալիքներէն դուրս թողուց մինչև այսօր, 'ի տեսիլ նաւողաց յափունս Փիւնիկիոյ: — Այսպէս եղաւ վախճան տէրութեան առաջին և հնագոյն ծովամայր քաղաքին, որոյ վերջին գահանիստ տիկինն եղեր էր Ֆիմի:...

## Թ.

Արդեօք հասա՞ւ իր ականջին այն սրտաթափ պարապաց փլչելուն դղրդմունքն, և ալէկոծեալ ծովուն խոխոջալն այն աւերակաց մէջ. արդեօք իր խորացեալ սրտէն հնչեց արձագանգ մը 'ի պատասխանի ծիւրեալ և ծորեալ Ծայդանին ծփանացը՝ այն անծերանալի ծովուն կոհակացը մէջ: — Եթէ ոչ մռնչումն և կոծումն ծովուն և Ծայ-

1 Այսինքն 'ի ծովեզերքէն, որ արաբերէն սահէլ կ'ըսուի:

գանայ՝ սակայն անշուշտ եղածին համբաւն հասաւ հնչեց ու ընկաւ Ֆիմիի ընտրած նոր և յետին ապաստանարանի մը ամրագոյն պարսպաց տակ։

Այս ապաստանարանս էր զոր շատ Թագաւորք և անԹագք ընտրեցին իբրև մէկ հատիկ ամրոց սրտի և հոգւոյ՝ ընդդէմ ամենայն մրրկաց, խռովութեանց և աշխատութեանց աշխարհի. ուր ոչ շատ տարի առաջ՝ նոյն ինքն իր հայրն Հեթում այլ, յետ 45 տարւոյ երկար և բազմագիպուած թագաւորութեանն՝ եկեր էր իր մեծ և յոգնած սրտին յետին մխիթարութիւնը և հանգիստը գտնելու։ — Այս ապաստանարանս էր հաւատաւորաց վանք մը՝ զոր ընտրեց, գտաւ և մտաւ Ֆիմի այլ, յետ իր այնքան նժդէհութեանն, պանդխտութեանն և տանջանաց. և ոչ այնքան տըրտմութեամբ տուաւ իր ծովակոծ Ծայդանի ապարանից՝ որչափ ուրախութեամբ տուաւ բոլոր աշխարհիս ծովածուփ կենաց՝ մնաք բարովը, ըսելով. «Ամենայն զբօսանք ձեր և ալիք ձեր անցին » ՚ի վերայ իմ». և քաշուեցաւ ՚ի խորշն խաղաղութեան, լռիկ սրբիկ սպասել ամենէն վերջին և ամեն բան վերջացընող դիպուածին. մինչև որ Ճգնողական վարուքն «հանգեաւ ՚ի Քրիստոս տի- » կինն Ֆիմի, կրօնաւորն, քոյրն Լևոն Թագաւո- » րի». ինչպէս կ'ըսեն արքունական Յայսմաւուրք. ՚ի մէջ բազմաթիւ տիկնայց Ֆիմեաց՝ սեփականելով ասոր՝ կրօնաւոր կոչումը։...

Հանգեաւ...։ Ո՛հ, որքան խոր է այս հնչումս, և որքան քաղցր իր ազդեցութիւնն այնպիսի սրտի մը, որ յերկար ալէկոծուած ՚ի ծովու կենցաղոյս՝ եկեր նստեր է մէկ կրօնական առանձնութեան մը մէջ՝ իր մնացեալ օրերուն հանգիստը ընտրելու, և աւելի մեծ և անվերջ հանգստեան մը փոխադրուելու։... Հանգեաւ ուրեմն այն քու

նրբազգած սրտիկդ, ով տիկին Սիդոնի, որոյ փափկութեանդ՝ շատ խիստ և փշոտ էր աշխարհքս և անոր վայելքն. արդարև մեծոգի ես եղեր դու, իմաստութեամբ լցեալ, սիրող Աստուծոյ և սպասաւոր նորա. երանի՜ քեզ: — Ո՜հ. ինչո՞ւ դու այլ չհետևեցար այս քու հօրքրոջդ՝ ով տիկին Տիւրոսի՝ գոռոզդ Զապլուն, և յետ իրեն պէս գահդ կորսընցընելու՝ ուրիշ գահից և բարձից ետևէ ընկնալով, ոչ թէ միայն այսպիսի խաղաղ և երջանիկ հանգիստ մը չգտար, այլ և անանկ կատարած մ'ունեցար՝ զոր յիշելն իսկ պժգալի է [1]:

Բայց երբ, և ո՞ւր հանգեաւ, և ո՞ւր արդ հանգչի մերս Ֆիմի:... Պատմութիւնն ձայն չի տար: Բայց ինձ հաւանական կ'երևի՝ թէ իր պարկեշտ նշխարքն այլ՝ իր բարեպաշտ ծնողացը քով (Զապէլի և Հեթմոյ՝) խաղաղեցան 'ի դամբանս Դրազարկ վանաց. ուր՝ ինչպէս իրմէ առաջ՝ դեռ վերջն այլ եկան ընկան հանգչեցան թագով ու սաղաւարտով յոգնած գլուխք: Ափսո՜ս, որ ժամանակն և թշնամութիւնն կամ ջնջեց կամ ծածկեց զանոնք. Քէօլէմէնք և Գարամանք ոտնակոխ ըրին և զտապանատունն թագաւորաց և վարդապետաց Հայոց՝ զԴրազարկ:

1 Զապլուն անդրանիկ դուստր Գ Լևոնի՝ եղբօր Ֆիմեայ՝ հարսնացաւ Ամաւրեայ Լուսինեան, որ իր եղբօր (Հենրի) թագաւորութիւնը (Կիպրոսի) յափշտակեց. բայց քիչ ատենէն սպանուեցաւ. Զապլուն իր զաւակօքը ղըրկուեցաւ 'ի Հայս, առ եղբայր իւր Օշին թագաւոր. բայց ժառանգութեան համար շատ վէճերու և հակառակութեանց պատճառ եղաւ երկու թագաւորութեանց մէջ: Երբ Օշին մեռաւ և իր տղայ որդին Լևոն Ե թագաւորեց, իր խնամակալն Օշին Պայլ բանտեց զԶապլուն իր անդրանկաւն (Հիւկ), և սպաննեց (1323) բռնութեամբ կամ նեղութեամբ: Զապլունի որդիք են նաև Ճուան և Կյի (Գուիտոն) թագաւորք մեր, և Պեմունդ, ամենքն ալ սպանմամբ մեռած (1343. 1345):

Ո՜հ. արդեօք դեռ հիմայ այլ այն մեր յետին հայրենի երկրին վրայ՝ այնչափ պսակով նազող գլխոց հետ, քարեղէն բարձի մը վրայ՝ 600 տարուան քունով՝ կու հանգչի՞ քու թանկագին գըլուխդ այլ, Ցիմի ։ — Արդեօք կռնճմըռած կողերով Կուկլկայ կայնին [1], կամ մշտնջենաւոր եղերամօր պէս երկրամածեալ հողմատանջ եղևինն Տաւրոսի՝ այնքան աւերակաց մէջ միայն անաւեր աճելով, դեռ կու պաշտպանէ՞ն քու նշխարքդ ծածկող տապանաքարը. — և այն քարին վրայ՝ արդեօք սրատես լուսինն իր դողդոջուն ճառագայթներովը կրնա՞յ դեռ կարդալ մամռապատ արձանագիր մը, օրինակ իմն.

Ի կափարում խաչապահակ փոքուս վիմի
Կայ մեծոգի եւ հեզ տիկին Սայատայ՝ Ցիմի ։

— Եւ արդեօք այն լուռ քնարանին վրայ տարուէ տարի թափած տերևներուն նման, դեռ ցամքած թաղանթ մը մնացե՞ր է՝ այն կակուղ և կարմրուկ սրտին, զոր այնչափ անմեղ արտմութիւնք բարակ ճամբաներով փորեցին ու խորեցին, և երկնաւոր մխիթարութիւնք՝ լայնեցին ու լցուցին. — այն սրտին, զոր եթէ փորձանք երկրի՝ իջուցին 'ի գահէ և 'ի փառաց, երկինք՝ բարձրացուցին մօտ իր սրբակեաց ծնօղացը և Ս. Լուդվիկի. — այն սրտին, որ իր արենակցաց և անուանակցաց մէջ՝ ամենէն մաքուր և սիրուն յիշատակ մը թողլով, պարտական կ՚ընէ զհայ հայրենիս՝ իր գալութեց մէջ անմոռաց պահելու և զյետին տիկինն Սիդոնի՝ Զապելածինն ՑԻՄԻ ։

[1] Լեռ և բերդ մօտ 'ի պահակն կամ 'ի լեռնանցս Կիւլիկիոյ, որ հիմայ կոչի Կիւլէկ-պօղազը ։

# ԼԳ

## ՎԵՐՋԱԲԱՆ

## ԱՌ ՀԱՅԿԱԿ

Ահա վերջին խորոյկն է որ կու մնայ մեր հայրենական հսկման վառարանին անկիւնը, ով Հայկակ. և այս ճաթռտող ու վառվռուն մախրիկս՝ վաղը առտու պիտի գտուին ցուրտ մոխիրք. և այնպէս մնան, մինչև որ տարւոյն երեք եղանակներն ալ դառնան լրանան, և նորէն գայ չորրորդն: Եւ երբ նորէն դառնայ գայ այս եղանակս, արդեօք մենք ալ նորէն պիտի գտնե՞նք զիրար՝ մեր վառարանին քով:....

Ահա գարնանաբեր լուսնին նորարծարծ ճառագայթներն՝ պատուհանաց ապակիներէն ներս ցայտելով, կու հրաւիրեն զմեզ բանալ փականքը, ելնել դուրս, տեսնել նորէն զբնութիւն: Բնութի՜ւն նորոգեալ, իբրև իր ստեղծմանը առաւօտուն, իբրև առաջին իրիկունը, յորում նոր վառած լուսնին ճաճանչից տակ՝ կու հանգչէր խաղաղիկ, ինչպէս սպիտակազգեստ մօր մը շղարշից մէջ՝ անդրանիկն անուշաքուն:....

Այլ մինչդեռ հոս այսպէս պայծառ ծագէ և ծիծաղի լուսնակս, միթէ երկրիս ուրիշ կողմեր ալ չե՞ն թաղուած թաթղուած մթութեան մէջ: Միթէ երկրիս քրոջ՝ ծիածանալ ծովուն ծուփ

ծուփ ծոցերուն մէջ՝ չկա՞ն ալէկոծ նաւեր՝ որ անդունդէ անդունդ սահելով՝ գոնէ ինկնելու վըհէն յատակը տեսնելու համար՝ տառղիկ մը լուսիկ մը կու մուրան վերէն, և չեն տեսներ։...

Այսպէս է կենաց ընթացքն. երբեմն լոյս և երբեմն մութ. և միշտ հարկ է երթալ, ինչուան որ հասնինք արարչագիր կէտը։ — Սակայն ով որ զերկիրս յատակ մը կու ճանչնայ այն տաճարին՝ որոյ վերնայարկն է երկին, միշտ անխռով կ'երթայ, խաղաղ կ'ապրի։

Քանի որ սրտի սենեակն չիտակ է, և հոգւոյն կարմիր կանթեղն վառ է, յաջող է մարդուս։

Մեր խարոյկն կու մարի. լուսնակն ալ կու ծածկի կու մաշի։ Սիրալիր սիրտն անսպառ է։ Անմահութեան ակնկալու հոգին՝ երջանիկ է։

Հաւատարիմն Աստուծոյ և իր անձին՝ հաւատարիմ է և հայրենեաց։ Անհաւատարիմն հայրենեաց՝ չէ հաւատարիմ և իր հոգւոյն և ոչ երկնից։ — Ամենէն սուրբ և ազնիւ գործ և աշխատանք երկրիս վրայ՝ երկնից և հայրենեաց համար եղածներն են։ Թէպէտ և զանազան են հասակք և վիճակք, այլ ամէնքն ալ ըստ չափու և ըստ վիճակի իւրեանց՝ պարտական են երկնից և հայրենեաց։...

Ահա կու հնչէ հասարակ գիշերուան պահն։... Մեր միայնախօսութեանց ժամերն անցան. կու սկսին ժամք գործոց և աշխատութեանց։ Վաղն, նոր օր, նոր գարուն, 'ի նոր կեանս կու հրաւիրէ զքեզ, Հայկակ։

Նորաբողբոջ բնութեան մէջ բացուած՝ նոր կոկոն մարդկութեան, ծաղիկ Հայութեան, ակոյգ հասակաւ ձեւացեալ, արդ կու վայլէ որ ձեռնաս քաղաքական կենաց. վիճակ մը ընտրելով, և գործ մը կատարելով յերկրի, յօգուտ ընտանեաց և հայրենեաց, և հաճոյ երկնից։

Հարկ է որ մնաս բարով ըսենք իրարու, անմոռաց պահելով մեր հայրենեաց Յուշիկքը: Առնում ես իմ հասակիս ցուպը, և իջնեմ բլրէս վար. առնուս դու ալ հասակիդ յարմար աշխատութեան գործիդ, օրհնել տաս երկնից, և ելնես դէպ 'ի վեր, 'ի բլուրն կենաց: — Արդ սուրբ հոգիք նախնեաց մերոց՝ քեզ բարեխօս և պաշտպան. հայրենեաց շաւղէն՝ անշեղ ըլլայ քու վիճակիդ ճամբան. բաղդդ՝ յերկրէս յերկինք հասնի անխափան:

Սակայն ինչ ալ որ ըլլայ քու վիճակդ կամ գործդ, յիշէ Հայկակ, որ գործն՝ իրմով չէ ազնիւ կամ մեծ, այլ ընողն է որ կ'ազնուացընէ կու սրբացընէ զգործը: — Առանց գործողի՝ գործք մեռեալ սոսկ անուն մ'են. մարդս՝ զանունը բան կ'ընէ, բանը գործ, գործը՝ կենդանութիւն, և զկենդանութիւնն՝ անմահութիւն:

Յաջողութիւնն շատ հեղ երկնից շնորհք մ'է. բայց առանց երկրիս վրայ աշխատելու՝ վերէն յաջողութիւն չիջնէր: Մանաւանդ թէ յաջողութիւնն պատրաստ է իբրև զարև և զանձրև. բայց եթէ ագարակն սերմանուած չէ՝ ինչ բուսցընեն երկնից շողն ու ցօղն:

Մարդս փոքրիկ արարած մ'է, բայց ոտքերն երկրիս ամեն կողմն ալ կըրնան կոխել. երկու ձեռքովը կըրնայ ծայրէ 'ի ծայր աշխարհակալել. սըրտին՝ պզտիկ կու գայ տիեզերաց սահմանն. միտքն՝ անսահմանութեան մէջ ճամբայ կու բանայ. հոգին՝ կու տիրէ երկնից. սէրն՝ կու հասնի Արարչին առջև, և կ'ըսէ. Ահաւասիկ եմ:

Փոքրիկ արարածն այն մարդ՝ մեծ աշխարհք մ'ալ է ինքնին. վասն զի Աստուծոյ գաստակերտ է, Աստուծոյ պատկեր է, թէ և աղաւաղեալ. և ունի սկզբնատըպին զօրութիւնը:

Արարչագործ մատանց բարձրագոյն կերտուած-

քըն՝ չեն Այրարատեան կատարքն կամ պազաթն Եմաւոնի, այլ ուսերուդ վերև կանգնած իմաստից տաճար՝ գլուխդ է. բարձր և բարակ բանուած։ Չկայ ծաղիկ արժանաւոր այդոր պսակ ըլլալու. ոչ ոսկին և արծաթ՝ 'որ հողէ կ'ելնեն, ոչ ծիրանի ծովերէ խպսած բուստ և մարգարիտք։ Ո՛հ. գեղեցիկք են մայիսի առաւօտուն ցօղակաթ վարդակարմիր փնջիկքն այլ՝ գալար ճակտի մը բոլորած. սակայն շատ աւելի պայծառ է ամօթզածութեամբ խայծեալ երեսն. և աւելի ազնիւ՝ անոր վրայ շարուած աշխատութեան կայլակներն։

Կենաց կարևոր և վայելուչ պիտոյքը լեցընելէն աւելորդ երկրաւոր շահք և վաստակք՝ անարգ և անիրաւ են այնպիսի գլխոյ մը, որ երկնից և հայրենեաց մաքուր իմաստներովը լցուած է։

Եթէ քաղաքական կեանք օրինաւոր են 'ի վերայ երկրի, անհրաժեշտ պարտք են և հայրենեաց ջանքն։...

Լալով կու ծնանիմք, խաղով կու մեծնամք. աշխատութեամբ պէտք է մարդ ըլլանք. մէկ ձեռքով մեզի, մէկ ձեռքով մեզի նմանեաց օգնեմք. սիրով կենակցինք, պատուով ապրինք, յուսով ծերանամք, գոհութեամբ մեռնինք. սրբութեամբ աւանդենք փչողին՝ մեր շունչը. Թաղուինք օրհնութեամբ. մնամք 'ի հայրենիս՝ հայրենեաց չափ, և յերկինս՝ Աստուծոյ չափ։...

Ահա ազգք և ազինք, մերձ մօտ և հեռի, Հայկակ, ամենքն զբաղած են իրենց հայրենի ագարակը շէնցընելու. և անդրանիկն ազգաց՝ մեր ազգն՝ կըրնա՞յ ըլլալ յետամնաց։... Մարդ, սիրտ ունող մարդ՝ չի կըրնար լսել զայս՝ առանց սոսկալու, թող թէ Հայ մարդ։

Ա՛ռ և դու ուրեմն, ո՛վ Հայկակ, քու մխճակիդ յարմար աշխատութեան գործիդ, վերցո՛ւր

յերկինք, օրհնել տուր. և աշխատէ: Աշխատէ յերկրի, միտքդ յերկինս, սիրտդ հայրենեացդ վրայ:

Առանց երկնից օրհնութեան՝ չի յաջողիր գործ հայրենեաց 'ի վերայ երկրի: Զոր երկինք չօրհներ, 'ի զուր օրհնեն և հայրենիք. և զոր չեն օրհներ հայրենիք՝ նա չօրհնուիր և յերկնից:

Կու բուսնի և սերմն առաքինութեան, կու ծածկէ դաշտեր. սպասէ, և կու տեսնես փուշ և տատասկ:

Սիրոյ սերմինն՝ թէ և կորդացեալ երկրի մ'աւանդուի, անխռով և ամուր արօրին տակ, քրտնաջան մշակին համբերութեամբ, վերջապէս կու ծլի, ծաղկի, պտղաբերէ և սնուցանէ:

Եւ մշակն մշակաց, որուն ագարակն է բոլոր աշխարհս, պատուիրեց մաճակալին [1], շիտակ գծել ու քշել, և ետև չնայիլ. երթալ յառաջ, և շիտակ երթալ: Ո՜հ. երթալ և լալով, եթէ հարկ է, երթալ և ցանել. կու հասնի օրն ալ խնդալով հնձելու, որաններով շալկած, ծաղիկներով պսակուած դառնալու [2]:

Ճշմարիտ հայրենասիրութիւնն չէ ասուպ կամ փայլակ մը յանկարծ երևցող և անցնող. ոչ հուր մոլի և թափառիկ, և ոչ կայծակն անկուշտ այրող լափող. այլ հանդարտ ջերմութիւն մը, յստակ լուսով, անստգիւտ խղճով:...

Ո՜վ անձնուրաց ոգի, բարեխնդիր հայրենասիրութիւն. դու պատրաստէ, վառէ սրբէ զսիրտ Հայկակայ: Քեզմով վառուած սիրտն՝ անխայթ և անմուխ լոյս կ'արձակէ. և եթէ խարկի մըրկի սիրտն, և անցնի երկնաւոր մասամբն, երկնունակ մասն՝ մնայ 'ի վերայ հայրենեաց, որպէս հոտ մըշկի և կնդրըկի:

1 Ղուկաս, Թ. 62:  2 Սաղմոս ՃԻԵ. 6:

Եւ շատ սեղաններ, շատ տապաններ, շատ քարեր ու հողեր կան 'ի Հայաստան, ուսկից դարէ դար և անդադար կու ծխէ հոտն անուշութեան, հոտն հայրենեաց. զոր չեն կրնար ջնջել ոչ զէնք և ոչ քէնք:

Վասն զի մեր առաքինի և ճշմարիտ, ընկերասէր, ազգասէր, որդեսէր և հայրասէր Նախնիքն, այն երկրին վրայ իրենց պարկեշտ նշխարքը թողլով, անմահութեան շունչով վերէն անոր վրայ միշտ կու շնչեն և կու շշնջեն:

Շնչեցէք ով շունչք մտաբացք, սրտարծարծք, հոգեվառք. շնչեցէք հոգիք Գրիգորեանց, Ներսիսեանց, Սահակեանց, Մովսիսեանց, Ղեւոնդեանց, Վարդանանց, Վահանանց, Սմբատայց, Աշոտոց, Լեւոնեանց և Հեթմեանց. սուրբ թագաւորք, հայրապետք, վարիչք և վարդապետք Հայոց, շնչեցէք յերկնից յերկիր: Խառնուի ձեր երկնաւոր շունչն՝ յերկրաւոր շունչ Հայկակայ. որ երբ հասնի աւանդելու իր վերջին շունչն ալ, եթէ հանդարտ ու հեզիկ, և եթէ հրահատ ու հառաչաձայն, հաւասարապէս խառնուի ձերիններուն հետ:

Եւ երբ իր օրական և տարեկան շրջաններուն պէս՝ երկիրս իր բազմադարեան շրջանն ալ աւարտելով՝ դադրի և կոտրի, և նոր երկրի մը հրաւիրակ փողն հնչէ, այս հին լուծեալ և լքեալ երկրիս վերջին արձագանգաց միջէն՝ վերջնագոյն արձագանգ մ'ալ ըլլայ քուկդ, սուրբ սէր հայրենեաց:...

Եւ, ո՛հ, թէ այն խորին և լռին արձագանգաց՝ նուաղ վանգին մ'ըլլա՛ր այս իմ քեզի նուիրածս, Հայկակ, ՑՈՒՇԻԿՔ ՀԱՅՐԵՆԵԱՑ ՀԱՅՈՑ:

# ՑԱՆԿ

# ՈՒՂՂԱԳՐԵԼԻՔ

| ԷՋ | ՏՈՂ | | |
|---|---|---|---|
| 165 | 5 | *մտացող* | *մտածող·* |
| 303 | 24 | *հաճելով* | *տհաճելով* |
| 438 | 28 | *պահուէին* | *պահէին* |
| 514 | 8 | *օժիտ* | *վարձանք* |
| 516 | 27–8 | *մխիթարուէր* | *մխիթարուէին* |
| 571 | 31 | *երկնաւոր* | *երկրաւոր* |

